*Պատկերազարդ Մատենադարան*

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԱՐԵՒԵԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

ԶԱՐԴԱՐԵԱԼ ԱՅԼԵՒԱՅԼ ՊԱՏԿԵՐՕՔ ԵՒ ԿԵՆԴԱՆԱԳՐՕՔ

ՀԱՏՈՐ Ա.

ՀՐԱՏԱՐԱԿԵԱՑ

Ա. ՄՕՄՃԵԱՆ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԱՄԵԱՆ

1879

# ԱՌ ԸՆԹԵՐՑՈՂՍ

Պարտ եւ պատշաճ համարիմք մի քանի բացատրութիւններ տալ աստանօր՝ սոյն գործոյս հրատարակութեանը վերաբերեալ ինչ ինչ կէտերու մասին, անտեղի մեղադրանքէ զերծ լինելու եւ ընթերցողաց վստահութիւնն անեղծ պահելու համար :

Աւելորդ է ըսել թէ ո՛րչափ յանդգնութիւն էր այսպիսի մեծահատոր մատենի մը բազմածախս հրատարակութեանը ձեռնարկել, մանաւանդ զի հասարակութեան վստահութիւնն արդէն կարի իսկ խախտեալ էր՝ թերթ առ թերթ հրատարակութեանց մասին քանիցս խաբուած լինելով :

Այլ մեք առաջնորդ ունելով մեզ այն սկզբունքն թէ՝ անյողդողդ եւ յարատեւ կամք եւ ջանք միշտ յաղթող են ամենայն դժուարութեանց, ձեռն արկաք ի լոյս ընծայել ի հայ բարբառ զսոյն պատմութիւն տաճկառուսական պատերազմին, չարաղէտ ծնունդ հանրածանօթ Արեւելեան խնդրոյն, յորում բազմադիմի հակառակամարտ շահուց պայքար մը հարիւրաւոր տարիներէ ի վեր շարունակէ, եւ որ միշտ յղի է անհասանելի եւ դժուարալոյծ խորհուրդներով՝ նման այն առեղծուածին զոր առաջարկէր առիւծակին հրէշն Սփինքս :

Այսու նախ մեք փութացինք խրախուսել զարգոյ հասարակութիւնն, վստահ գոլով որ փոխադարձաբար նա եւս չպիտի զլանայ իւր ընդունելութեամբն քաջալերել զմեզ մեր սոյն դժուարին ձեռնարկին մէջ :

Միայն եթէ կայ կէտ մը որոյ մասին կարելի է խոստմնազանց համարուիմք յաչս ոմանց, այն իսկ է՝ մէն մի թերթ փոխանակ կրկին պատկերով զարդարելու, ինչպէս յայտարարած էինք յառաջագոյն, մէկ պատկերով հրատարակելն մեր : Այս մասին ցաւ է մեզ ըսել թէ՝ տեսնելով որ գործոյն ամբողջն առաւել եւս պիտի ստուարանայ եւ վախճանն յապաղի, եւ այլ անյաղթելի պատճառանօք զորս ի սկզբան չէինք ի հաշիւ առած, մեր նախնական յայտարարութեան հաւատարիմ մնալու պարծանքէն զրկուեցանք :

Գալով թարգմանութեան, որ բոլորովին ազատ կերպիւ եղած է, արդարեւ, ըստ մեր յայտարարութեան, Ա. ԼԸ ՖՕՌ-Ի գործն սկսանք թարգմանել, սակայն ի վերջոյ, բարեկամաց ոմանց խնդրանօքն, որոշեցինք հրատարակել «ՌՈՒՍՔ ԵՒ ԹՈՒՐՔՔ» մակագրով ի Փարիզ հրատարակեալ երկհատոր պատմութիւնն, որ սոյն պատերազմին վրայ գրուածոց մէջ առաջինն եւ կատարելագոյնն է, եւ նոյնին թարգմանութիւնն եւս յանձնեցինք Գ. Խ. Ուղուրիկեանի, որոյ՝ յայնմ ունեցած յաջողակութիւնն ակներեւ է:

Միանգամայն խոստովանիմք թէ մեր ազգայնոց համար անօգուտ եւ ձանձիր համարուած մասերն, որպիսիք են ռազմագիտական ընդարձակ տեսութիւնք, մանրապատում տեղագրութիւնք, կենսագրութիւնք եւ այլք, որոց երկարութիւնն եւ յաճախութիւնն ստէպ ընդհատէին պատմութեան ընթացքն, կրճատել եւ կամ բոլորովին բառնալ յարմար դատեցանք:

Արդ՝ արժանաւոր վարձատրութիւն համարիմք մեզ, եթէ մեր այսքան վաստակոց եւ զոհողութեանց փոխարէն, յարգոյ հասարակութիւնն եւս իւր լիուլի վստահութեամբն եւ բարեյօժար ընդունելութեամբն խրախուսէ զմեզ ի նմանատիպ հրատարակութիւնս, զոր մտադրած եմք ի լոյս ընծայել «ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ» յորջորջմամբ:

Ա. ՄՕՄՃԵԱՆ

7 Նոյեմբեր 1879

Պէշիկթաշ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ ԲՆԱԳՐԻՆ



Ի վերջ կոյս ամին 1876՝ Ռուսիա համախմբած էր Ռումանիոյ սահմանագլխոց մօտ բանակ մը 270,000 մարդէ բաղկացեալ՝ Նիկոլա մեծ դքսին հրամանատարութեան ներքև, որպէս զի Թուրքիոյ քրիստոնէից վիճակին բարւոքումն յառաջ բերելու համար եւրոպական տէրութեանց սկսած բանակցութեանց զօրութիւն տայ:

Կոստանդնուպօլսոյ դեսպանաժողովն ի դերև ելնելով, Լօնտրայի դեսպանական դիւանագիրն (փրօթօքօլ) օսմանեան կառավարութեան կողմանէ մերժուելով, Ռուսիա այնպէս համարեցաւ թէ իւր պատիւն կը պահանջէր զինու զօրութեամբ յարդիւնս ածել այն բարենորոգմունքն զորս Եւրոպա կարող չէր եղած դիւանագիտական միջոցներով ձեռք բերելու:

Ցամին 1877 ապրիլ 20ին՝ Ռուսիոյ կայսրն մեկնեցաւ Փէթէրսպուրկէն՝ ի Քիշնեվ համախմբեալ բանակին քով երթալու համար:

Ապրիլ 23ին՝ ռուսական բանակին յառաջապահքն Ռուսիոյ և Ռումանիոյ մէջտեղ Փրութի վրայ ձգեալ կամրջէն անցան և սոյն վերջին իշխանապետութեան երկիրը մտան:

Ապրիլ 24ին՝ Աղէքսանդր կայսրն Քիշնեվ հասած լինելով՝ իւր զօրաց յայտարարութիւն մ'ուղղեց յորում ըսաւ. «Բոլոր խաղաղական միջոցները բանեցուցած եմք, սակայն Դրան խրոխտ յամառութիւնն կըստիպէ զմեզ բռնադատական միջոցներով գործելու: Թուրքիա հարկադրած է զմեզ ի զէն դիմելու:»

Այսպէս պատերազմ հրատարակուած էր Ռուսիոյ և Թուրքիոյ մէջ: Այս պատերազմն երկարատև և զարմանալի արկածներով լի եղաւ: Այժմ անոր պատմութիւնը պիտի ընեմք յենլով միշտ պաշտօնական գրութեանց վրայ, բաղդատելով զատոնք այն տեղեկութեանց հետ զորս ականատես վկայք հրատարակած են թէ լրագրաց և թէ գրոց մէջ:

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԱՐԵՒԵԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

## Գլուխ Առաջին

### ՕՍՄԱՆԵԱՆ ԿԱՅՍԵՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՌՈՒՍԻԱ

#### ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՃԿԱՌՈՒՍԱԿԱՆ ՀԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԱՑ

Երկու ազգաց մէջ պատերազմ մը ծագած ժամանակ՝ իրաց կացութեան վրայ ստոյգ եւ կատարեալ գաղափար մ'ունենալու համար՝ հարկ է անգամ մ'աչքէ անցընել նոցա պատմութիւնը, եւ տեսնել թէ ինչ է այս անվերջանալի պատերազմաց եւ թշնամութեանց պատճառը ։

Ի սկզբանէ՝ Տաճիկք Պաղտատի Խալիֆային անձնապահ զինուորներ կը լինին, յետոյ հետզհետէ յառաջանալով՝ մինչեւ առաջին նախարարութեան պաշտօնին կը հասնին, եւ ժամանակէ մը վերջը այլ եւ այլ ժառանգական իշխանութիւններ կազմելով՝ 9րդ դարէն մինչեւ 16րդ դարն՝ զանազան ժամանակներ՝ Պաղեստինը, Ասորիքը, Եգիպտոսը, Պարսկաստանը եւ Միջին-Ասիան կը կառավարեն ։

1307ին Մոնկոլեանք Տաճկաց երկիրներուն վրայ արշաւելով՝ տաճկական իշխանութիւնը բոլորովին անհետանալու վրայ էր, երբ Մեծն Օսման՝ կայսերութիւնը հիմնելով Տաճկաց իշխանութիւնը կը վերականգնէ, յորմէ հետէ Օսմանցիք մեծամեծ յաղթութիւններով շարունակ յառաջ կը խաղան՝ մինչեւ որ վերջնական կերպիւ տեղ մը կը հաստատուին ։

1355ին Եւրոպա կ'անցնին. սակայն Լէնկթիմուր ահեղ զօրութեամբ Օսմանցւոց վրայ արշաւելով՝ անոնց յառաջխաղացութիւնը կը կասեցնէ ։ 1415ին մինչեւ Սալցպուրկ եւ Պավիէրա կը մտնեն. 1449ին Բիւզանդիոնի կայսերութեան մայրաքաղաքը պաշարելով՝ 1453 մայիս 29ին Կոստանդնուպոլսոյ կը տիրեն։ 1480ին պահ մը Օթրանթը կը գրաւեն, եւ ահեղ զօրութեամբ Իտալիոյ դէմ կը սպառնան։ 1522ին Երուսաղէմի Ս. Յովհաննու ասպետաց ձեռքէն Հռոդոս կղզին կ'առնուն։ 1526ին Հունգարիոյ մէկ մասին կը տիրեն. 1529ին դէպ յԱրեւմուտք յառաջ խաղալով՝ Վիէննայի պարսպաց տակ բանակ կը դնեն ։ Սուլթան Սիւլէյման երեսուն թագաւորութեանց վրայ կ'իշխէ՝ 8,000 մղոն ընդարձակութեամբ ծովեզերք մ'ունենալով իւր վեհապետութեանը ներքեւ ։ Սուլթան Սիւլէյման՝ Ֆրանսուա առաջնոյն գրած մէկ նամակին մէջ հետեւեալ տիտղոսները տուած է իւր անձին. «Կայսր կայսերաց, իշխան իշխանաց, բաշխիչ աշխարհի թագաւորութեանց, ոգի Աստուծոյ ի վերայ երկրի, ինքնակալ Սեւ ծովու եւ Սպիտակ ծովու, Ասիոյ եւ Եւրոպիոյ ։»

Դար մը վերջը՝ Սլաւոնեան եւ Դրանսիլվանեան Օսմանցւոց տիրապետութեան տակ կը մնեն, որք պահ մը զինքերնին վար դնելէ յետոյ՝ դարձեալ կըսկսին իրենց յաղթութիւնները շարունակել, եւ Բոսնիոյ քանի մը գաւառները եւ Բանտիան կը գրաւեն :

Բայց 16րդ դարէն վերջը օսմանեան իշխանութիւնը կըսկսի տկարանալ :

Նոր կայսրութիւն մը կը ծնի, կը զօրանայ, եւ վերջ կուտայ Օսմանցւոց յաղթութեանց :

Ալէքսիս Զարը Տաճիկները Սլաւեան երկրէն վանելով՝ մինչեւ Ազովու ծովը կը քշէ զանոնք :

1697ին՝ Սուլթան Մուսթաֆա Զէնթայի պատերազմին մէջ յաղթուելով՝ Անգլիոյ միջնորդութեամբը Քառլովիցի հաշտութեան դաշնագիրը կը կնքէ ( 1699 ) : Այս առաջին անգամն էր որ Զարի մը ստորագրութիւնը կ'երեւէր եւրոպական դաշնագրաց մը մէջ, որոյ պայմանացն համեմատ՝ Օսմանցիք Սաւա, Ունա եւ Տնիեսթէր գետերէն անդին անցան, Ազովն ու Թայլանը ռուսական նաւահանգիստներ եղան, եւ Հունգարիոյ մէկ մասն ալ Աւստրիոյ իշխանութեան անցաւ :

1711ին՝ Կարոլոս ԺԲ. Շուէտի Թագաւորին թելադրութեամբը, որ փախչելով օսմանեան երկիրն ապաստանած էր, Սուլթան Ահմէտ Գ. Ռուսիոյ դէմ պատերազմ կը հրատարակէ, եւ Փրութ գետին մօտ շարաշար յաղթելով Մեծին Պետրոսի՝ Ազովու նաւահանգիստն ետ կ'առնու :

Մինչդեռ Աւստրիա Տաճկաստանի հիւսիսային սահմանագլխոց վրայ անընդհատ արշաւանքներ ընելով Բ. Դուռը կը նեղէր, միւս կողմանէ Ռուսք Քրիմ կը մտնեն, եւ անմիջապէս յետոյ Մոլտաւիան կը գրաւեն :

Աւստրիա վերջապէս յաղթուելով՝ Գաղղիոյ միջնորդութեամբն հաշտութիւն կը խնդրէ, եւ Սուլթան Մահմուտ Ա. կը փութայ նպաստաւոր դաշնագիր մը կնքել ի Պելկրատ 1739ին, որով Վալաքիան, Սերվիան եւ Պելկրատ օսմանեան իշխանութեան կ'անցնին վերստին :

Այնուհետեւ Տաճկաստան երեսուն տարի խաղաղութեամբ անցուց, վասն զի Ռուսիա իւր ուշադրութիւնը Սեւ ծովէն աւելի Պալթիկ ծովուն եւ Բոլոնիոյ վրայ դարձուցած էր. սակայն եւ այնպէս՝ Ռուսիա Բոլոնիոյ գաւառներն հետզհետէ գրաւելով եւ Թուրքիոյ մօտենալով՝ պատերազմը դարձեալ մօտալուտ կ'երեւէր :

Մուստաֆա Գ. վտանգն զգալով՝ իմաց տուաւ Կատարինէ Բ. կայսրուհւոյն որ ռուսական զօրքը Բոլոնիայէն դուրս հանէ. սակայն կայսրուհին անմիջապէս երկու զօրաբանակ սպառազինելով՝ մին ի Քրիմ եւ միւսն ի Դանուբ կ'ուղարկէ, եւ ռուսական նաւատորմն ալ Պալթիկ ծովէն ելնելով՝ Ճիպրալթարի նեղուցէն Միջերկրական ծովը կը մտնէ, եւ Չէշմէի ծովածոցին մէջ օսմանեան նաւատորմիղն ամբողջապէս կ'այրէ կը ջնջէ :

Սուլթան Ապտ-իւլ-Համիտ Ա.՝ Սուլթան Մուստաֆայի յաջորդը՝ չկրնալով դիմադրել Ռուսաց զօրութեան, հաշտութիւն կ'առաջարկէ, եւ 1774 յունիս 10ին՝ Քայնարճիի հաշտարար դաշնագրոյն համեմատ՝ Ռուսիա Սեւ ծովու մէջ ազատ նաւարկութիւն ընելու իրաւունք կըստանայ, եւ Քէրչն եւ Ենի-Գալէն, Պուկ եւ Տնիեսթէր գետոց բերանները, եւ մեծ եւ փոքր Գապարտան Ռուսիոյ կ'անցնին :

Այնուհետեւ Ռուսիա վերջին ծայր չափաւորութիւն ցոյց կուտայ. Պեսարապիան, Մոլտաւիան, Վալաքիան, Վրաստանը Մինկրէլին Սուլթանին կը վերադարձնէ. սակայն այս գաւառները թողլով՝ ետ չը կենար քրիստոնէից վրայ ունեցած պաշտպանութեան իրաւունքէն, զոր Բ. Դուռը հանդիսապէս ճանչցած է դաշնագրոյն եօթներորդ յօդուածոյն տրամադրութեանը համեմատ, թէ՝ «Բ. Դուռը կը խոստանայ հաստատապէս պաշտպանել քրիստոնէից կրօնքն եւ եկեղեցիները . . .» Ասկէ զատ՝ մասնաւոր արտօնութիւններ

եւս կը չնորհէ Դանուբեան իշխանութեանց եւ օսմանեան տէրութեան հպատակ բոլոր յունադաւան քրիստոնէից ։

Սակայն շատ չանցած՝ Կատարինէ կայսրուհին փառատիրութեամբ լցուած՝ Ղրիմը, սեցնելու համար պատերազմ կը հրատարակէ Ռուսիոյ դէմ ։ Ռուսական բանակը մեծ յաղթանակաւ յառաջ կը խաղայ, Պուլղարիա կը մտնէ, Դանուբեան իշխանութիւնները կը գրաւէ, եւ Կոստանդնուպոլ-



ՄԻԼԱՆ ԻՇԽԱՆ ՍԵՐՎԻՈՅ

Վրաստանը եւ Իմէրէթը կը գրաւէ, զորս Բ. Դուռը կըստիպուի Ռուսիոյ թողուլ ըստ Կոստանդնուպոլսոյ դաշնագրութեան (1784 յունուար 8) ։

1788 ին Ռուսք վերստին սկսած էին դէպ ի Հարաւ յառաջ խաղալ ։ Սուլթան Սէլիմ Գ. թշնամւոյն արշաւանքները կասոյ կը մօտենայ։ Սակայն անդ՝ Սուլթանէն զատ ուրիշ թշնամի մը՝ եւրոպական դեսպանագիտութիւնը կը գտնէ իր դէմը, որ Ռուսաց յաղթութեանց վրայ իրար անցնելով՝ Դրան օգնութեան կը դիմէ, եւ կըստիպէ զկայսրուհին հաշտութիւն կնքելու . սորա համեմատ Ռուսիոյ իշխանու-

թեան կ'անցնին Տաւրիոյ գաւառը եւ Գուկ եւ Տնիեսթէր գետոց բերաններ, ուր Ռուսք անմիջապէս Օտէսայի պարիսպները կը կանգնեն ։

Տասն եւ ութերորդ դարուն վերջերը՝ Սերվիա եւ Յունաստան սկսան խլրտիլ իրենց ազատութիւնն եւ անկախութիւնը ձեռք բերելու համար ։

Աղէքսանդր Ա. դարձեալ պատերազմ հրատարակեց, եւ Տաճկաց նաւատորմը բնաջինջ ըրաւ Թէնէտոսի առջեւ ։ Սուլթան Սէլիմ Գ. Եաշի դաշնագրութեամբն յանձըն առած բարենորոգմունքը գործադրելու ձեռնարկած էր իւր իշխանութեանը ժամանակ, սակայն գահընկէց լինելէն յետոյ՝ Մուստաֆա Դ. իրեն յաջորդելով, Տաճկաց հին կուսակցութիւնը կառավարութեան գլուխն անցաւ վերստին եւ սկսաւ չարաչար նեղել քրիստոնեայս։ Սուլթան Մուստաֆա Դ. երկու ու կէս ամիս թագաւորելէն յետոյ գահընկէց կը լինի եւ քիչ ժամանակէն կը մեռնի ։ Իւր եղբայրը՝ Սուլթան Մահմուտ Բ. իրեն յաջորդելով՝ անմիջապէս հաշտութիւն կը կնքէ Ռուսաց հետ՝ Մոլտաւիան եւ Կովկասիան Ռուսիոյ թողլով եւ Սերվիան իրեն պահելով ։

1819ին Յոնիական կղզիներն օսմանեան իշխանութենէն կ'ելնեն ։

Երկու տարի յետոյ՝ Ռուսաց Սթռօկօնով դեսպանը Կոստանդնուպոլսէն կը մեկնի ։ Պատերազմն դարձեալ մօտալուտ էր. բայց այս անգամ եւս դեսպանագիտութիւնը կը յաջողի անոր առաջքն առնել ։ Ռուսաց կայսրն Աղէքսանդր Ա. 1823 օգոստոսին՝ Աւստրիոյ Ֆռանսուա կայսեր հետ Չէրնովիցի մէջ տեսակցութիւն մ'ընելէն, եւ Լէմպէրկի մէջ Պ. Տը Նէսէլրոտի եւ Պ. Տը Մէթէրնիքի միջեւ տեղի ունեցած խորհրդակցութիւններէն յետոյ, Բ.Դուռն իրմէ պահանջուած բոլոր զիջումները կ'ընդունի ․ Վալաքիոյ եւ Մոլտաւիոյ մէջ ունեցած զօրքն ետ կը քաշէ, եւ 1824 հոկտեմբեր 11ին՝ ռուսական նորընտիր դեսպանին իր վկայագիրները Սուլթան Մահմուտի կը ներկայացնէ ։

Ռուսք՝ տեսնելով որ Յոյնք ազատութեան յուսով եւ հայրենեաց սիրով լեցուած երկար եւ յամառ կռիւներով շարունակ կը կռուէին, Յունաց ազգին օգնութեան դիմելու ջերմ փափաք մը կը յայտնէին ։

Հինգ տարի շարունակ Տաճկաց եւ Յունաց մէջ արիւնահեղ պատերազմներ լինելէն յետոյ՝ վերջապէս Ուէլինկթըն դուքսն եւ Նէսէլրոտ կոմսն որոշեցին այն խնդիրը ձեռք առնել՝ արիւնհեղութեան վերջ տալու համար ։ Ուստի 1826 ապրիլ 15ին պայմանագիր մը ստորագրեցին, որ հաշտութեան դաշնագրոյ մը իբր հիմն պիտի բռնուէր, եւ կը պարունակէր հետեւեալ երեք պայմանները.

1° Ինքնօրինութիւն Յունաստանի.

2° Տարեկան հարկ մը տալ օսմանեան տէրութեան ։

3° Յունաստանի մէջ գտնուած Տաճկաց կալուածներն Յունաց ծախել ։

Բ. Դուռը մերժեց այս պայմանագիրը ․ սակայն այն ժամանակներն Աղէքսանդր Ա. մեռնելով, իւր յաջորդը՝ Նիկողայոս կայսրըն Ագ-քէրմանի դաշնադրութեամբը, առանց յունական խնդիրը լուծելու, Պուքրէշի դաշնագրոյն պայմանները վերահաստատեց 1826ին, որք էին՝ կէս անկախութիւն Մոլտաւիոյ, Վալաքիոյ եւ Սերվիոյ, եւ Տարտանէլի մէջ ազատ նաւարկութիւն ռուս վաճառականական նաւուց ։ Սակայն Բ. Դուռը Յունաստանը ձեռքէ հանել չուզելուն՝ Գաղղիա, Անգղիա եւ Ռուսիա այլ եւս չհանդուրժելով քրիստոնէից կրած այնքան կոտորածոց, 1827 յուլիս 6ին դաշնադրութիւն մը կնքեցին ի Լօնտրա իրենց միացեալ զօրութեամբքն ի նպաստ Հելլենացւոց միջամտելու համար ։ Եւ ահա ասկէ յառաջ եկաւ Նաւարանի նաւամարտը՝ որ խիստ աղէտաբեր եղաւ օսմանեան տէրութեան (1827 հոկտեմբեր 19) ։

Յաջորդ տարին՝ Ռուսք թէ Ասիոյ եւ

թէ Եւրոպայի կողմէն մեծամեծ յաղթութիւններ ընելով յառաջ քալեցին, եւ հասան մինչեւ ի Կարին եւ յԱդրիանուպոլիս։ Ցայնժամ եւրոպական տէրութիւնք սկսան իրար անցնիլ. անմիջապէս հաշտութեան առաջարկութիւններ եղան. ռուսական բանակն Ադրիանուպոլիս կանգ առաւ, եւ 1829 սեպտեմբեր 14 ին՝ յիշեալ քաղաքին մէջ կնքուած դաշնագրով Ռուսիոյ պահանջումներն ընդունուեցան։

1828—1829ի պատերազմը ճիշդ ներկայ պատերազմին կը նմանի։ Այն ատեն եւս զինուորական գործողութիւնք եւրոպական եւ ասիական Տաճկաստանէն սկսան։ Ռուսք՝ Սեաւ ծովն իրենց ձեռքն լինելով՝ գլխաւոր գործողութեանց կեդրոն ընտրեցին Տօպրուճան, եւ երկու տարիէն հազիւ կրցան Էտիրնէ հասնիլ, սակայն Ասիոյ կողմէն աւելի արագութեամբ յառաջ քալեցին։ 1830 ին Մոռան Տաճկաց ձեռքէն ելնելով՝ Յունաստանի թագաւորութիւնը կազմուեցաւ։

Այնուհետեւ Բ. Դուռը տեսնելով որ այլ եւս կարողութիւն չունի դիմադրելու, Զարին գիրկը դիմելով իւր դարաւոր թշնամին իրեն դաշնակից կ՚ընդունի, եւ երբ Սուլթան Մահմուտ՝ Եգիպտոսի Մէհէմմէտ-Ալի փաշային դէմ կը պատերազմէր, Ռուսիա 15,000 զօրաց բանակ մը օգնութեան ղրկելով՝ սոյն դաշնակցութիւնը կը նուիրագործէ։ Ի փոխարէն՝ Զարն ալ իւր կամացը հլու իշխաններ կը կարգէ Դանուբեան իշխանութեանց վրայ, եւ արեւելեան քրիստոնէից վրայ ունեցած պաշտպանութեան իրաւունքը վճռական կերպիւ կը հաստատէ։

1833 յուլիսի 8 ին Հիւնքեար-Իսկէլէսի կնքուած դաշնագրութեան մը համեմատ, Բ. Դուռը եւ Ռուսիա մշտնջենաւոր բարեկամութիւն ուխտեցին միմեանց, եւ խոստացան ամեն պարագայից մէջ իրարու օգնել։ Սակայն գաղտնի պայման մը կար, զոր եթէ Բ. Դուռը չկատարէր, սոյն դաշնակցութենէն զրկուած պիտի համարուէր, այն է թէ՝ Բ. Դուռն որ եւ է պատճառաւ թոյլ չպիտի տար օտար ռազմանաւուց Տարտանելի նեղուցէն ներս մտնելու։ Այս դիւանագիտական յաղթանակը Ռուսիոյ համար պատերազմական յաղթութեանց չափ կ՚արժէր։

Ուստի Բ. Դրան եւ՝ բաց ի Գաղղիոյէն՝ միւս Եւրոպական տէրութեանց հետ համաձայնութեամբ, Վալաքիոյ եւ Մոլդաւիոյ խռովութեանց ժամանակ, ռուսական զօրաբանակ մ՚այս երկու գաւառները գրաւեց։ Բայց 1849 մայիս 1 ին Պալթա-Լիմանի դաշնագրութեամբը Զարն այս երկու գաւառաց մէկ մէկ օսբօտար (իշխան) կարգել եւ նորանոր արտօնութիւններ շնորհել տալով գոհ եղաւ։

Այս դաշնագրութիւնը կնքուելէն անմիջապէս յետոյ՝ Զարը տժգոհութիւն յայտնեց Դրան՝ Հունգարիոյ ապստամբութեան մասնակցող փախստականները հիւրընկալելուն համար, վասն զի Աւստրիա ռուսական բանակաց օգնութեամբը միայն կրցած էր զսպել զայն։ Նիկողայոս կայսրըն առաջարկեց Բ. Դրան որ Հունգարացի փախստականներն արտաքսէ իւր երկրէն. բայց նորընտիր Սուլթան Ապտ-իւլ-Մէճիտ բացէ ի բաց մերժեց սոյն առաջարկութիւնը, որով իւր նախորդին հաստատած քաղաքականութիւնը խզած եղաւ։ Չորս տարի ետքը նորանոր տըրտունջներ սկսան երեւան գալ. Գարատաղ ապստամբեցաւ, Բ. Դուռը մասնաւոր արտօնութիւններ շնորհեց լատինական եկեղեցւոյ, եւ չէր ուզեր պաշտօնական դաշնագրով մը հաստատել յունական եկեղեցւոյ իրաւունքները, ինչպէս որ կը պահանջէր Մէնչիքօվ դեսպանը. ահա այն ժամանակ տէրութիւնք սկսան կծու լեզուաւ գրուած ծանուցագիրներ ղրկել իրարու։

Ռուսական բանակը Փրութ գետն անցաւ, եւ սկսաւ Ղրիմի մեծ պատերազմը. բայց այս անգամ Գաղղիա եւ Անգղիա զինու զօրութեամբ օգնեցին Տաճկաց, եւ

թէպէտ մեծամեծ յաղթութիւններ վաստըկեցան, սակայն Տաճկաստան չկրցաւ իւր ամբողջութիւնը պահել սոյն պատերազմէն յետոյ, որ յետ երկար եւ քըրտնաջան խորհրդակցութեանց՝ Փարիզի դաշնադրութեամբը վերջացաւ (1856 մարտ 30ին Ն. Տ.)։

Սոյն դաշնագրով վեց մեծ տէրութիւնք՝ Գաղղիա, Աւստրիա, Անգլիա, Պրուսիա, Ռուսիա եւ Սարտենիա՝ հանդիսապէս կը խոստանան օսմանեան կայսրութեան անկախութիւնն եւ երկրին ամբողջութիւնը պահպանել, սորա հակառակ գործողութիւն մը ընդհանրական շահու խնդիր մը նկատելու պայմանաւ։

Այս դաշնագրէն զատ՝ Աւստրիա, Անգլիա եւ Գաղղիա մասնաւոր դաշնադրութիւն մ'ալ կնքած էին 1856 ապրիլ 15ին, որ հետեւեալը կը պարունակէր.

Յօդ. 1°— Դաշնագիր մեծ տէրութիւնք՝ միատեղ եւ առանձինն՝ օսմանեան տէրութեան անկախութեանն եւ ամբողջութեանը կ'երաշխաւորեն՝ 1856 մարտ 30ին Փարիզ կնքուած դաշնագրոյն տրամադրութեանցը համեմատ։

Յօդ. 2°— Յիշեալ դաշնագրոյն հակառակ գործ մը իբրեւ պատերազմի պատճառ մը պիտի համարին ներկայ դաշնագիրն ստորագրող տէրութիւնք։ Սոքա հարկ եղած միջոցներուն վրայ համաձայնելով Բ. Դրան հետ՝ իրենց նաւային եւ զինուորական զօրութիւնները գործածելու մասին անյապաղ պիտի խորհրդակցին իրենց մէջ։

1830էն Սուրիոյ մէջ անկարգութիւնք եւ արիւնհեղութիւնք տեղի ունենալով, եւրոպական տէրութիւնք անմիջապէս միջամտեցին, բայց ոչ թէ գործակատարներ ղրկելով ի Կոստանդնուպոլիս՝ այլ զինուորութեամբ։ Սակայն Փարիզի դաշնագրոյն հակառակ չվարուելու համար՝ Սուլթանին հաւանութեամբն եւրոպական զօրաբանակ մը ղրկեցին Սուրիոյ մէջ խաղաղութիւնը վերահաստատելու։ 1861 յունիս 5ին՝ միջամտող տէրութեանց զինուորներն ետ քաշուեցան Սուրիայէն։

Մինչեւ 1871՝ 1856ի դաշնադրութիւնը յարգուեցաւ. բայց Գաղղիոյ կրած պարտութեանցը պատճառաւ՝ Ռուսիոյ կառավարութիւնն ազատ ասպարէզ գտնելով՝ Փարիզի դաշնագիրն այլ եւս դադարեալ հրատարակեց, անշուշտ Պրուսիոյ աջակցութեամբը՝ որոյ երկրակալական դիտմանցը հաճութիւն ցոյց կուտար։ Յայտնի է որ Կորչաքով իշխանին շրջաբերականը նոյեմբեր ամսոյն մէջ գրուած է, ճիշդ այն պահուն յորում Մէց անձնատուր կը լինէր, եւ Գաղղիա իր երկիրը գրաւող օտարին դէմ ինքզինքը պաշտպանելու կարողութիւն չունենալով՝ չէր կարեր այլ եւս եւրոպական գործոց միջամտելու զբաղիլ։

Ռուսիոյ յիշեալ շրջաբերականը մեծ յուզմունք պատճառեց Եւրոպիոյ մէջ. եւ Անգլիացիք անմիջապէս սկսան պատերազմ պահանջել, բայց այս պատերազմական եռանդը շուտ մարեցաւ։

Լորտ Կրանվիլ եւ Կորչաքով իշխանն իրարու ծանուցագիրներ ղրկելէ յետոյ՝ քանի մը տէրութեանց ներկայացուցիչք յունուար 3ին Լոնտրայի մէջ ժողով մը ըրին։ Գաղղիա իրեն եղած հրաւէրը մերժեց, վասն զի եւրոպական տէրութեանց միութեանը մէջ մնալու ժամանակը տակաւին չէր եկած իրեն համար, եւ իւր կրած պարտութեանցը պատճառաւ հարկադրուած էր կատարելապէս չէզոք եւ ձեռնպահ կենալու։

Լոնտրայի դեսպանաժողովն այնպիսի արդիւնք մ'ունեցաւ զոր դիւրին էր գուշակել. Անգլիա առանձին մնալով ստիպուեցաւ առաջարկեալ ամեն խնդրոց վրայ ալ զիջում ընել, եւ 1871 մարտ 13ի դաշնադրութեամբն՝ Ռուսիա ձեռք անցուց այն իրաւունքները զորս դաշնագիր տէրութիւնք զլացած էին իրմէ 1856ի դաշնագրով։

Ահա այն օրէն սկսաւ Արեւելեան խընդիրը նոր կերպարանք մ'առնուլ։

# Գլուխ Երկրորդ

## ՀԱՐԿԱՏՈՒ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԻՒՆՔ ՕՍՄԱՆԵԱՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ

### ԳԱՐԱՏԱՂ

*Քիչ ազգեր կան որք իրենց անկախութիւնն այնքան քաջութեամբ պաշտպանեն որքան Գարատաղցիք ։*



ՆԻՔՕԼԱ Ա. ԻՇԽԱՆ ԳԱՐԱՏԱՂԻ

*ԺԴրդ. դարէն ի վեր պատմութեան մէջ անկախ իշխանապետութեան մը խօսքը կայ, որ ուրիշ բան չէր բայց եթէ արդի Գարատաղը՝ Հերսէկի եւ Ալպանիոյ մէկ մասն ալ միասին։ Գարատաղ մինչեւ ԺԴրդ. դար մասնակցած չէր միջին դարու տիրանաչեղ պատերազմաց. բայց Սերվիոյ մէկ կՃարին պարտութեանը վրայ բազմաթիւ անկախ ընտանիքներ Գարատաղի լեռներն ապաստանելով՝ զանոնք իրենց հայրենիք ընտրեցին, եւ այն ատենէն սկսաւ անընդհատ պատերազմներ տեղի ունենալ մինչեւ ցայսօր Տաճկաց եւ Գարատաղցւոց մէջ ։*

Գարատաղցիք առաջին անգամ Վենետիկցւոց դէմ ուղղեցին իրենց թշնամութիւնները։ 1404ին՝ Սթրաշիմիրով իշխանը տեսնելով որ Տաճկաց կողմանէ Շքոտրայի վրայ լինելիք յարձակման մը դէմ չպիտի կրենայ պաշտպանել զայն՝ Վենետիկցւոց ծախած էր սոյն նաւահանգիստը ։ Բայց Վենետիկցիք անով գոհ չլինելով՝ անակնկալ յարձակմամբ Պուտվան եւ Անդիվարին եւս գրաւեցին ։ Գարատաղցիք քանի տարի չափ կատաղի պատերազմներ մղելէ յետոյ՝ յիշեալ քաղաքներն ետ առին Վենետիկցւոց ձեռքէն, թէպէտեւ միեւնոյն ժամանակ ստիպուեցան Տաճկաց դէմ եւս կռուելու՝ որք Սերվիոյ անկախութեան վերջին ապաստանարանը նուաճելու համար՝ 1410ին Գարատաղի դէմ պատերազմի մտած էին ։

Պալսա իշխանին մահուանէն յետոյ, որ Գարատաղի իշխող առաջին գերդաստանին վերջին սերունդն էր, Տաճկաստանի հարկատու Սերվիոյ իշխանն անոր յաջորդութեան իրաւունքն յետս պահանջեց, բայց Գարատաղցիք՝ որ վերջին աստիճան կը սիրէին իրենց ինքնօրինութիւնը, իշխանին այս պահանջումը մերժեցին եւ ընտրութեամբ իրենց կամքը յարգել տուին ։ Իրենց գլխաւորներէն մին՝ Իվան Չրնոյեվիչ մանաւորապէս նշանաւոր հանդիսացած լինելով այս գործոյն մէջ՝ Գարատաղի ինքնակալ իշխան կամ վոյվոտա կարգեցաւ ։

Սա՝ վաթսուն երեք անգամ Տաճկաց դէմ պատերազմելով միշտ յաղթող հանդիսացաւ, պատերազմելով միեւնոյն ժամանակ Վենետիկցւոց եւ Հէրսէկցւոց հետ, որոց մերթ յաղթեց եւ մերթ յաղթուեցաւ անոնցմէ, բայց առանց երբէք վհատելու եւ միշտ վառ պահելով իւր զօրաց եռանդը, որով Գարատաղի հիմնադիրն եւ հօգին համարուած է ։ Ռամիկներն այնպէս կը կարծեն թէ՝ Իվան Չրնոյեվիչ չէ մեռած, եւ Պառպառուսին պէս այրի մը մէջ քնացած է, ուսկից օր մը դուրս պիտի ելնէ Տաճիկներն Եւրոպայէն արտաքսելու համար ։

1490ին իւր որդին Ճուրան իրեն յաջորդելով՝ անմիջապէս Սուլթան Պայազիտ Բ.ի դէմ պատերազմ բացաւ, յորում Օսմանցիք յաղթուեցան ։

Այն ատեն սկսաւ պատերազմական նոր շրջան մը՝ յորում Տաճկաց եւ Գարատաղցւոց կատաղութիւնքն հետզհետէ սաստկացան ։ Ճուրան իւր կնոջը հետ Վենետիկ քաշուելով, պետութեան գաւազանն ազգին հաճութեամբը եպիսկոպոսաց ձեռքն անցաւ ։

Ասոնց իշխանութեան ժամանակ ալ նշանաւոր պատերազմներ անպակաս եղան, եւ իրենց քաջագործութիւններովն հետզհետէ ապահովեցին այն քաջարի ժողովրդեան գոյութիւնը, զոր կը կառավարէին մէկ ձեռքերնին խաչ բռնած եւ միւսը սուր ։ 1604ին՝ Ալի փաշա որ անյաղթելի համարուած էր՝ երկար ժամանակ պատերազմելէն յետոյ ստիպուեցաւ Շքոտրան թողլով ետ քաշուելու ։ 1612ին Մէհմէտ փաշա՝ որ Տաճկաց առաջին զօրավարը կը սեպուէր, Գարատաղցիներէն յաղթուեցաւ ։ Սոյն պարտութենէն տարի մը յետոյ՝ իւր յաջորդն Արսլան փաշա՝ 60,000 զօրօք Գարատաղի դէմ պատերազմի ելաւ. բայց խել մը ձախող կռիւներէ ետքը՝ ստիպուեցաւ ետ քաշուելու ։

Հակառակ այս անյաջողութեանց, Բ. Դուռն ամենեւին չվհատելով՝ 1623ին օսմանեան տէրութեան հարկատու հրատարակեց զԳարատաղ, եւ 55,000 հոգւոյ ժողովուրդ մը նուաճելու համար՝ 80,000 զօրաց բանակ մը ղրկեց Սիւլէյման փաշայի հրամանատարութեամբը. սա ամենայն սաստկութեամբ յարձակեցաւ Գարատաղցւոց վրայ, եւ քանի օր պատերազմելէն յետոյ ստիպուեցաւ ետ քաշուիլ իւր նախորդացը պէս ։

Պատերազմը վերջանալու վրայ էր՝ երբ 1688ին Վենետիկոյ հասարակապետութիւնը, որ Վիէննայի երկրորդ պա-

չարումէն եւքը Տաճկաց դէմ ունել պատերազմ մը մղելու համար Աւստրիոյ դաշնակից եղած էր, հրաւիրեց զԳարատաղ որ ինքն ալ մասնակցի այն կռւոյն։ Պոլտանովիչ իշխանն ամենայն սիրով ընկա-



ՎԵՀ. ՍՈՒԼԹԱՆ ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ Բ.

լաւ այս առաջարկութիւնը, եւ Վենետիկոյ հասարակապետութիւնը պէտք եղած զէնքը, ռազմամթերքը եւ զօրքը տալով՝ Գարատաղցիք սկսան դարձեալ ամենայն սաստկութեամբ շարունակել պատերազմը, յորում Օսմանեան զօրքերն բոլորովին յաղթութեան ի Մոքրինա՝ Քասթէլնովոյի մօտ։

Սուլէյման փաշա իւր կրած պարտութեանը վրայ սաստիկ զայրացած՝ աշխարհաբանակ մը կազմեց մէկ ճակատամարտով մը եւ եթ Գարատաղցիներն ու Վենետիկցիները զարնել ջնջելու համար. եւ արդարեւ այս անգամ Օսմանցիք յաջողեցան յաղթութիւն մը վաստկելու։

Սակայն Գարատաղցիք ամենեւին չվհատեցան այս անյաջողութենէն, եւ երբ տե-

սան որ Օսմանցիք չկրնալով իրենց բանակին մէջը եղածը հոգալ՝ ստիպուեցան Գարատաղի սպրդաւեր լեռները թողուլ ու ետ քաշուիլ, անմիջապէս սիրտ առին եւ աւելի մեծ եռանդով նորանոր պատերազմներու պատրաստուեցան ։ 1702 ին Ծննդեան գիշերը՝ Գարատաղցիք բոլոր Մահմետականներն թրէ անցնելով՝ ապստամբութեան դրօշը նորէն պարզեցին ։ Հէրսէկլի Օսմանեան հրամանատարն իր կրօնակցաց վրէժը լուծելու համար՝ բազմաթիւ զօրաբանակաւ մը Գարատաղ մտաւ . բայց սա եւս իր նախորդացը պէս մեծամեծ կորուստներ կրելով ետ քաշուեցաւ ։ Երբ 1711 ին Մեծն Պետրոս յայտարարութիւն մը հրատարակելով՝ բոլոր Եւրոպական Տաճկաստանի Քրիստոնեաները Մահմետականաց դէմ ապստամբելու հրաւիրեց, Գարատաղցիք մեծաւ ուրախութեամբ ընկալան այս հրաւէրը . բայց Ռուսիոյ Զարն անմիջապէս հաշտութիւն կնքելով Բ. Դրան հետ, ապստամբ լեռնականք առանձին մնացին ամբողջ Օսմանեան բանակին դէմ ։ 1712 ին՝ Օսմանցիք 100,000 էն աւելի զօրօք՝ այնքան արիւնահեղ կոտորածներով հռչակաւոր հանդիսացող լերանց վրայ յարձակեցան, բայց այս անգամ եւս յաղթութիւնը Գարատաղցւոց մնաց ։ 1756 ին Օսմանցիք դարձեալ պատերազմ հրատարակեցին Գարատաղի դէմ, եւ դարձեալ ապարդիւն եւ անյաջող ետ քաշուեցան ։

1766 ին՝ Սուլթան Մուսթաֆա Գ. 180,000 զօրօք այս փոքրիկ երկրին վրայ արշաւեց երեք տարբեր կողմերէ ։ Գարատաղցիք չորս կողմանէ պաշարուելով՝ ռազմամթերքնին անմիջապէս հատաւ, այնպէս որ մէկ փամփուշտը մէկ տուգաղի կը ծախուէր ։ Ցանդուգն ձեռնարկ մ'երկիրն ազատեց. 500 հոգի ամենայն քաջասրտութեամբ Օսմ. զօրաբաժնի մը վրայ յարձակելով՝ ջարդ ու կոտոր ըրին զանոնք, եւ անոնց զէնքերն ու վառօդը ձեռքերնէն առին ։ Այս յաջողութեան վրայ բոլոր Գարատաղցիք սիրտ առին եւ ամբողջ երկիրն ոտք ելնելով՝ Օսմանցւոց բանակատեղին դիմեց, եւ 20000 մարդ սպաննելով՝ 3000 ձի, 13,000 վրան եւ մեծաքանակ կարասիք առին ։ Այսպէս ազատեցաւ Գարատաղ մեծ վտանգէ մը ։

Այս պատերազմին հետ կը վերջանայ Գարատաղի հին պատմութեան շրջանը ։ Վերոյիշեալ խռովալից ժամանակաց վրայ քանի մը տարի խաղաղութեամբ անցնելէն յետոյ, 1785 ին Օսմանցիք՝ Պետրոս Ա. Վլատիքային բացակայութենէն պատեհ առիթ գտնելով յանկարծ Գարատաղի վրայ յարձակեցան, զոր այնքան դարերէ ի վեր կը ցանկային իրենց լծոյն տակն առնուլ ։

Շքոտրայի կառավարիչ Մէհէմմէտ փաշա՝ Վլատիքային բացակայութեանը՝ եւ մանաւանդ Գարատաղցի գլխաւորաց վէճերուն շնորհիւը կարող եղաւ առանց կռուոյ մինչեւ Զէթինեէ յառաջ խաղալ ։ Գարատաղ այսպէս անպաշտպան եւ անօգնական մնալով յուսահատութեան մատնուած ատեն՝ իսկոյն Պետրոս Ա. Ս. Բէդէրպուրկէն արտորնօք հասնելով՝ երկրին պաշտպանութեան դրօշակը պարզեց, հանդիսաւոր կերպիւ Գարատաղի ինքնօրինութիւնը հրատարակեց, եւ երկրին սահմաններէն դուրս վանեց Տաճիկները ։

Յաջորդ տարին՝ Աւստրիոյ Յովսէփ Բ. կայսրը եւ Կատարինէ Ռուսաց կայսրուհին Տաճիկներն Եւրոպայէն արտաքսելու համար պատերազմ հրատարակած ըլլալով Բ. Դրան դէմ, հրաւէր կարդացին Վլատիքային որ ինքն ալ մասնակցի պատերազմին ։ Պետրոս Ա. փութաց իսկոյն սոյն հրաւէրն ընդունելու, եւ Աւստրիա պէտք եղած զօրքն ու ռազմամթերքը տալով՝ Գարատաղցիք 50,000 Տաճիկ իրենց դէմը զբաղեցուցին, որով յիշեալ տէրութիւնք իրական օգուտներ շահեցան այս պատերազմէն ։ Բայց դժբաղդաբար այս անգամ եւս՝ ինչպէս ուրիշ ժամանակներ՝ մնացան Գարատաղցիներն հաշտութեան դաշնագ-

րոյն մէջ առնլու որ կնքուեցաւ 1791 օգոստոս 4 ին ։

Այս նոր պատերազմը մեծ ճակատամարտով մը վերջացաւ ։ Պետրոս Ա. Վլատիքան Տաճկաց վրայ յարձակած եւ յաղթած ըլլալով անոնց՝ Մէհմէտ փաշա 30,000 ենիչէրեաց գլուխն անցաւ եւ արշաւեց Գարատաղի անմատչելի լերանց վրայ. բայց 6000 Գարատաղցիք լաւ մը սպառազինուած՝ Քրուզի կիրճը Տաճկաց դալըստեանը կսպասէին։ Այս կռուին երեք օր տեւեց, յորում Օսմ. բանակը բոլորովին ջնջուեցաւ, եւ մարդ մ'անգամ չազատեցաւ այս աղետալի պատերազմէն՝ որոյ նմանը չկայ թերեւս պատմութեան մէջ։ Սոյն կռուոյն մէջ Գարատաղցւոց ձեռքն ինկած 15 դրօշակները տակաւին կեցած են Չէթինեէի մէջ. ասկէ զատ 26 Տաճիկ զօրապետներ սպաննուեցան, եւ Մէհմէտ փաշա գերի բռնուելով գլխատուեցաւ ։ 1830 ին՝ Պետրոս Ա. մեռնելով՝ իրեն յաջորդեց իւր եղբօրորդին՝ Պետրոս Բ։ Ասոր օրովալ Գարատաղցիք մեծամեծ յաղթութիւններ վաստկեցան, բայց երբեմն երբեմն ալ յաղթուելով՝ 1830 էն մինչեւ 1850 շատ երկիրներ կորուսին։

Մեծ եպարքոս Մահմուտ Րէշիտ փաշա առաջարկած ըլլալով Վլատիքային որ Սերվիոյ նման դիրք մը ընդունի Բ. Դրան գերիշխանութեանը տակ՝ Սքութարիի լճին եզերացը վրայ քիչ մ'երկիր տրուելով իրեն, Վլատիքան մերժեց այս առաջարկութիւնը ըսելով թէ՝ ցորչափ որ իւր հպատակները կարող ըլլան ինքզինքնին պաշտպանել, ինքը պէտք չունի ո եւ է պաշտպանութեան ։ Մեծ եպարքոսը համոզմամբ չըկրցածը բռնութեամբ ձեռք բերելու համար՝ պատերազմ բացաւ Գարատաղի դէմ. բայց այս անգամ եւս Օսմանցիք յաղթուելով ետ քաշուեցան ։

Ասկէ վերջն ամեն տարի մեծամեծ պատերազմներ տեղի ունեցան։ 1839 ին՝ Պուսաթլիյա պէյը բոլորովին յաղթուեցաւ. 1840 ին՝ Օսմանեան բանակները հետզհետէ քան ճակատամարտներ տալով՝ ապարդիւն ետ քաշուեցան ։ 1842 ին՝ Գարատաղցիք յաղթող հանդիսացան Կրահովայի մէջ. 1844 ին Տոլեանի մէջ. 1847 ին Վիրպազարի մէջ. 1849 ին Բուչքայի մէջ ։ Եւ սակայն հակառակ այս ամեն յաջողութեանց՝ Գարատաղի երկիրն երթալով կը պակսէր, նախ Լէսէնտրիա եւ Վրանճինա կղզիները, յետոյ Շատարի նահանգը, եւ վերջապէս Կրահովան Օսմ. իշխանութեան անցան ։

Իրաց այս միջոցին Պետրոս Բ. մեռնելով՝ իւր եղբօրորդին՝ Տանիլօ իրեն յաջորդեց 1851 ին ։

Բ. Դուռն ազդարարեց նորընտիր իշխանին որ դայ իւր հպատակութեան մեծարանքը մատուցանել Սուլթանին. բայց Տանիլօ իւր նախորդացը պէս արիութեամբ մերժեց այս ազդարարութիւնը, որոյ վրայ նորէն պատերազմ ծագեցաւ Տաճկաց եւ Գարատաղցւոց մէջ։ Այս անգամ ապստամբք դժուարին կացութեան մէջ ինկան, վասն զի՝ երկպառակութիւնն ու անմիաբանութիւնը կը տիրէր մէջերնին։ Հօմէր փաշա որ այն ատեն Պոսնիոյ բանակին հրամանատարն էր՝ յաջողեցաւ իւր կողմը շահել Բիրէրիի նահանգին բնակիչները, ուր կը գտնուի՝ Սքութարիէն եկող Օսմ. զօրաց դէմ Գարատաղի մուտքը պաշտպանող Շապլիաքի բերդը։ Այս կերպով Օսմանցիք անմիջապէս գրաւեցին սոյն բերդը. բայց Գարատաղցիք իրենց յատուկ յանդգնութեամբն անակնկալ յարձակմամբ վերստին ետ առին զայն Տաճկաց ձեռքէն։ Մթին գիշեր մը երեսուն հոգի ապառաժներէն վեր ելնելով՝ անկէ ալ բերդին պարսպացը վրայ ելան եւ յարձակեցան պահակագնդին վրայ, որն որ յանկարծակիի գալով իւր քնոյն մէջ՝ առանց դիմադրութեան անձնատուր եղաւ։ Սակայն Տանիլօ Բ. Դրան հետ գործը խաղաղութեամբ կարգադրելու վրայ ըլլալով՝ Շապլիաքի բերդը եւ քաղաքը պարպել տուաւ, հետը տանելով միայն ի յիշատակ

այս դիւցազնական քաջագործութեան՝ Տաճկաց 5 թնդանօթները, որոնք մինչեւ այսօր տակաւին պահուած են Չէթինէի հին պալատին մէջ :

Սակայն Օսմանցիք ետ չկենալով իրենց յառաջադրած խորհրդէն՝ 1853 տարւոյն սկիզբները Էօմէր փաշա 30,000 մարդ համախմբեց Սքուդրի եւ Բոտկորիցայի մէջ տեղը՝ գործողութեանց կեդրոնը կազմելով. Անթիվարիի կառավարիչը 8000 հոգւով Սութորմանի կիրճէն պիտի մտնէր . եւ Սէլիմ պէյ զօրավարը Վիրպազարը պիտի գրաւէր 10,000 մարդով: Բացի ասոնցմէ՝ իւրաքանչիւրը 18000 հոգիէ բաղկացեալ երկու զօրաբանակ եւս կազմ եւ պատրաստ կեցած էին Գարատաղի հիւսիսային արեւմտեան կողմը, մին Նիքսիչի՝ եւ միւսը Վէլէնիի վրայ քալելու համար:

Տանիլօ 10,000 պատերազմիկ միայն ունէր Տաճկաց այս ահեղ զօրութեանը դիմադրելու համար : Այս անհաւասարութիւնը կարելի է որ չափազանց երեւի, բայց թէ որ անգամ մը մարդ յիշէ թէ ուրիշ ժամանակներ եւս Գարատաղցիք իրենցմէ խիստ աւելի բազմաթիւ զօրութեանց դէմ մեծամեծ յաղթութիւններ տարած են, կրնայ հասկնալ թէ ինչ հանդարտութեամբ եւ վստահութեամբ ընկալան այս պատերազմը :

Եւ արդարեւ դէպքերն ալ հաստատեցին իրենց յոյսը. վասն զի քիչ օրուան մէջ Օսմ. բանակին երկու թեւերն ալ յաղթուելով ցրուցան եղան : Գարատաղցիք թէպէտեւ բաւական յաջողութիւններ ձեռք բերին, սակայն եւ այնպէս երկիւղ կար թէ մի գուցէ Տաճկաց բազմութեանը եւ յամառ յարձակմանցը ներքեւ ընկճին վերջապէս : Բարեբաղդաբար շատ չանցած Աւստրիոյ շնորհիւն ազատեցան . վասն զի Վիէննայի դահլիճը՝ Հունգարիոյ մէջ յեղափոխութիւնն արծարծելու պատճառ բռնելով զԲ. Դուռն , սպառնալեօք պահանջեց որ Օսմ. զօրքերը հեռանան Գարատաղէ սահմաններէն. ուստի Դուռը հրաման ըրաւ Էօմէր փաշայի որ ետ քաշուի :

Սակայն այն մեծ փոթորիկը որ քիչ ժամանակէն պիտի պայթէր Արեւելից մէջ՝ արդէն սկսած էր որոտալ : Քաղաքական հորիզոնը մթնցած էր. Բ. Դուռն իւր զօրքերը կը ժողվէր, եւ Եւրոպական տէրութեանց կողմանէ իրեն տրուած գերը կատարելու կը պատրաստուէր :

Օսմ. զօրաց ետ քաշուելէն յետոյ՝ Տանիլօ սկսաւ իր երկրին քաղաքական կազմակերպութեանն աշխատիլ: Ցա՛ ազգային վաղեմի աւանդութիւնը ջնջելով՝ չուզեց կղերական ըլլալ, եւ իբր տիրող իշխան իւր անկախ վեհապետութիւնը ճանաչել տուաւ Եւրոպիոյ :

Իւր որդին հօրը քաղաքականութեանը հետեւեցաւ , եւ իւր իմաստուն ու հայրենասիրական կառավարութեամբը կարող եղաւ վերջնական կերպիւ Եւրոպական ազգաց կարգը դասել իւր ժողովուրդը :

Գարատաղ բարձրաբերձ ժայռերու այլանդակ շեղջակոյտ մ'է, որոց գլխաւորներն են Ցեռնակոռա (Սեաւ լեռ) եւ Պէրտա լերինք: Գարատաղի մէջ ամենեւին կանոնաւոր ճանապարհ չկայ , դուրսէն յարձակում մ'եղած ժամանակ՝ գնդաձիգ եւ ձիաւոր զօրքերը չեն կրնար անցք մը բանալ յառաջ խաղալու համար : Երբ զօրագունդ մը Գարատաղցւոց ետեւէն իյնայ , անմիջապէս կը շրջապատուի ամենափոքր կիրճի մը մէջ, եւ ա՛լ չկրնար անկէ դուրս ելնել:

Կարծես թէ բնութիւնն իսկ օտարին դէմ կը կռուի. ամեն ինչ զէնք կըլլայ, եւ ամեն ոք զօրք : Կանայք եւ տղայք ժայռերը վար կը գլորեն Տաճկաց գլուխները ջախջախելու համար, եւ շատ անգամ եւս փամփուշտներն հատած ժամանակ՝ Սեաւ լերին քարերը փամփուշտի տեղ գործածած են :



## ՍԵՐՎԻԱ

Սերվիա՝ անուանալէս Բ. Դրան հպատակ սահմանադրական կառավարութեամբ իշխանապետութիւն մ'էր ներկայ պատերազմէն առաջ՝ Սերվիոյ հպատակ տէրութեան մէկ մասէն միայն կազմուած։

Եօթներորդ դարուն մէջերը Հերակլիոս Արեւելից կայսեր իշխանութեանը ժամանակ՝ Կարպաթեան լեռները բնակող Սէրբ անուամբ Սլաւ ժողովրդեան մէկ մասն եկաւ Մակեդոնիոյ մէջ բնակութիւն հաստատեց, ուսկից հետզհետէ տարածուելով Պուլկարիա, Պոսնիա եւ Խըրուաթիա՝ վերստին շէնցուցին այն երկիրներն որք Աւստրացւոց արշաւանքներէն բոլորովին աւերակ դարձած էին։

1100 թուականին Սերվիացիք Արեւելեան կայսրութեան գերիշխանութիւնը ճանչնալով՝ առանձին անկախ տէրութիւն մը հաստատեցին Նէմանիչեանց հարստութեանը հիմնադիր՝ Պէլի Ուրոշի իշխա-



ՀԵՐՍԷԿՑԻ ԱՊՍՏԱՄԲՔ

նութեանը տակ։ Այս հարստութիւնն երկու հարիւր տարի տեւեց միշտ զօրաւոր եւ պատուաւոր կառավարութեամբ ։

1336ին Ստեփաննոս Տուշան կայսր հրատարակեցաւ։ Ասոր իշխանութեան ներքեւ էին այն ատեն Պոսնիա, Գարատաղ, Խըրուաթիա, Տալմացիա, Ռաշիա, Իլիրիա. Սերվիա, Պուլկարիա, Մոլտաւիա եւ Վալաքիա. Թրանսիլվանիա եւ Սլաւոնիա հարկատու էին անոր, եւ Բիւզանդիոնի մայրաքաղաքը մեծ երկիւղի մէջ էր ։ Այս մեծազօր կայսրը յիշեալ մայրաքաղաքին տիրելու պահունվախճանեցաւ 1358ին, որ ատեն Օսմ. ազգին առաջապահները սկսած էին Տարտանելի Ասիական եզերացը վրայ երեւիլ եւ Եւրոպիոյ վրայ արշաւել։ Մեծն Ստեփան իւր մեռնելու պահուն մեծ սխալ մը գործած էր Սերվիական տէրութիւնն իւր աւատառու իշխանացը մէջ բաժնելով. վասն զի իւր մահուանէն վերջը սոցա մէջ երկպառակութիւն լինալով՝ Սերվիոյ զօրութիւնը տկարացաւ, որոյ շնորհիւ Օսմանցւոց արշաւանքներն ալ դիւրացան ։

1389ին Օսմանցիք չարաչար յաղթելով Սերվիացւոց՝ սոսկալի հարուած մը տուին Սերվիական իշխանութեան ։

Հնգետասաներորդ դարուն մէջերն ամբողջ Սերվիա՝ բաց ի Պելկրատէն Օսմանեան իշխանութեան տակ անցաւ, եւ վեշտասաներորդ դարուն սկիզբներն այս քաղաքն ալ առին Օսմանցիք ։

Այնուհետեւ Սերվիա Օսմանեան գաւառ մ'եղաւ, մինչեւ որ երեք դար շարունակ ընդունայն արիւնհեղութեամբք ապառելէն ետքը՝ յաջողեցաւ վերջապէս իւր ազգային անկախութիւնը ձեռք բերել ։ 1790ին, 1798ին, 1804ին եւ 1807ին հետըզհետէ ապստամբեցաւ. այս վերջին ապստամբութիւններն արծարծողն ու վարողը Գարա Ժորժ հռչակաւոր ապստամբապետն էր, որն որ այն ատենէն կարող պիտի ըլլար իւր երկրին անկախութիւնը հաստատել եթէ Ռուսիա առանձին չթողուր զինքը ։

Վերջապէս՝ 1815ին Միլօշ Օպրէնովիչ վերստին ոտք հանեց իւր հայրենակիցները, եւ այս անգամ Սերվիա իւր ազատութիւնն ստացաւ, որն որ 1827ին Աքքիրմանի՝ եւ 1829ին Ադրիանուպօլսոյ դաշնադրութեամբքը նուիրագործեցաւ, Բ. Դրան տարեկան հարկ մը վճարելու եւ նորակազմ իշխանապետութեան մէկ քանի քաղաքացը մէջ իբրեւ պահապան Օսմ. զօրախումբեր կենալու պայմանաւ ։

Այս թուականէն Սերվիա ներքին երկպառակութեանց ասպարէզ եղաւ, վասն զի Գարա Ժորժի եւ Միլօշ Օպրէնովիչի սերունդքը Սերվիոյ գահուն թեկն ածելով՝ սկսան իրարու հետ մրցիլ, վերջիններն ուղղակի սլաւականութեան տակ՝ իսկ առաջիններն արտաքին ազդեցութենէ բոլորովին անկախ ինքնօրինութեան մը կողմն ըլլալով ։

Ահա այս կացութեան մէջ էր Սերվիա, երբ 1856 մարտ 30ին Փարիզի դաշնադրութիւնը կնքուեցաւ ։ Ահաւասիկ Սերվիական իշխանապետութեան վերաբերեալ՝ յիշեալ դաշնագրոյն պարունակած պայմանները ։

28երորդ յօդուածը կը տրամադրէ որ Սերվիա դարձեալ հպատակ մնայ Բ. Դրան ըստ նախկին դաշնադրութեանց՝ որոնք նոյն թուականէն սկսեալ դաշնադիր տէրութեանց հաւաքական երաշխաւորութեանը տակ պիտի դրուին, եւ իւր անկախ ու ազգային վարչութիւնը, եւ կրօնից, օրէնսդրութեանց, վաճառականութեան եւ նաւարկութեան մասին ունեցած կատարեալ ազատութիւնը պահէ ։

29 յօդուածոյն տրամադրութեանը համեմատ՝ Բ. Դուռն ըստ նախկին պայմանադրութեան Սերվիոյ մէջ պահապան զօրք կեցնելու իրաւունքը պիտի պահէ, եւ ո եւ է զինեալ միջամտութիւն մը տեղի չպիտի ունենայ Սերվիոյ համար՝ առանց կանխաւ համաձայնութիւն մը գոյանալու երաշխաւոր տէրութեանց մէջ ։

Իրաց այս վիճակը 1867ին միայն փոխ-

ունեցաւ, երբ Բ. Դուռը՝ Պելկրատի միջնաբերդին եւ Սերվիոյ մէջ գտնուող խել մը բերդերէն մէջ պահապան զօրք կեցընելու իրաւունքէն կամովին հրաժարեցաւ։

— Արդի Սերվիոյ հարաւակողման լեռնոտ մասը «Հին սերվիա» կը կոչուի, որովհետեւ մինչեւ Տաճկաց աշխարհակալութեանը ժամանակ՝ այդ երկիրը Սերվիոյ տէրութեան մէկ մասն էր, եւ անկէ վերջն ալ գրեթէ միայն Սերվիական ժողովուրդներ կը բնակէին հոն, որոնք 1690ին եւ 1737ին՝ երբ Աւստրիացիք գրաւեցին իրենց գաղթել, Իսլամ Ալպանիացւոց արշաւանացն ազատ ասպարէզ թողլով։

Ալպանիացւոց յիշեալ երկիրը մտնելէն վերջը՝ իրենց հայրենիքը մնացող Սերվիացւոց մեծագոյն մասն Իսլամութեան դարձաւ, այնպէս որ Հին Սերվիոյ մէջ «Օրթոտոքս» կրօնքին վերաբերող շատ երկիր, սկսան Հունգարիոյ գաւառները քիչ բնակիչ կայ, եւ այն ալ հետզհետէ աւելի պակսելու վրայ է։

# Գլուխ Երրորդ

## 1875 ՕԳՈՍՏՈՍԷՆ ՄԻՆՉԵՒ 1876 ՅՈՒԼԻՍ

### ԾԱԳՈՒՄՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ԵՒ ԶԱՆԱԶԱՆ ԿՌՈՒՆԵՐ ՏԱՃԿԱՑ ԵՒ ԱՊՍՏԱՄԲԱՑ ՄԷՋ.

Երկար ժամանակէ ի վեր Հերսէկցիք դժգոհութեամբ կը տանէին Օսմ. իշխանութեան լուծը. եւ երբեմն երբեմն արտաքին խորհրդներէ թելադրուած՝ ապստամբութիւններ կը յարուցանէին, զորս մեծ դժուարութեամբ կարող կըլլար զսպել Բ. Դուռը։

1875 Յունիս 5ին՝ կայսերական զօրաց համար Մոսթարէն պաշար տանող կարաւան մը կողոպտուեցաւ՝ ապստամբութիւն յարուցանել ուզող խումբ մը խառնվարարաց կողմանէ, եւ ուրիշ գիւղի մը մէջ ալ երեք Տաճիկ ոստիկաններ սպանուեցան գիւղացիներէն տէրութեան տուրքերն հաւաքած ատեննին։

Օսմանցիք այս ապստամբական խլրտումները տեսնելով սկսան առաւել խստութեամբ վարուիլ Հերսէկցւոց հետ. ասոր վրայ սահմանափակ ապստամբութիւնն անմիջապէս տարածուեցաւ, այնպէս որ յուլիս 15ին միջոցները Մոսթարէն մինչեւ Աւստրիական սահմանագլուխը՝ ամբողջ գաւառը հրոյ եւ սրոյ մատնուած էր։

Ամսոյն 16ին Սելիմ փաշա Նեվեսինիի լեռնադաշտը մտնելու համար՝ ստիպուեցաւ ապստամբաց հետ կռուոյ բռնուելու. սակայն ուժգին դիմադրութեան մը հանդպելով անմիջապէս ետ քաշուեցաւ։

Այն ատեն Օսմանցիք աւելի ազդու միջոցներու դիմեցին ապստամբութիւնը նուաճելու եւ Հերսէկի մէջ Օսմ. տիրապետութիւնը հաստատ պահելու համար։

Յուլիս 23ին Տապարի՝ եւ 24ին Նեվեսինիի մէջ ապստամբաց եւ Օսմ. զօրաց միջեւ տեղի ունեցած առաջին կռիւներն ապստամբ լեռնականացն պաստաւոր եղան, որոնք յաղթող հանդիսացան նաեւ Սթոլայի մօտ եւ Նարէնթայի հովտին մէջ կատարուած խել մը կռուոց մէջ։

Յուլիսի վերջերն ապստամբաց բազմաթիւ հրոսակներ Թրէպինեէի շուրջը համախմբելով՝ չորս կողմանէ պաշարեցին զայն, ուր 3 վաշտ Օսմ. հետեւակազօրք կը գտնուէին։ Ապստամբք կարի խիստ պէտք ունէին այս բերդաքաղաքին՝ զայն իրենց գործողութեանց խարսխավայր եւ պարէ-

նի համբարանոց ըլլալու համար, եւ գըլխաւորապէս ատրպատական Գարատաղի հետ համաձայնութեամբ գործելու նպատակաւ։ Սոյն քաղաքն ընդամենը միմիայն չըջապատ պարիսպ մ'ունի՝ որնոր հազիւ քիչ մը ժամանակ կրնայ դիմանալ թշնամւոյն յարձակմանցը։

Ապստամբք Տուցի վանքը ընդհ. բանակատեղի ընտրեցին իրենց, եւ մեծ փութով ամրացուցին զայն։

Ամբողջ Օգոստոս ամիսը Թրքայինեէի չըջակայ լերանց վրայ մանր կռիւներ տեղի ունեցան, եւ թէպէտ բերդին պահապան զօրքերն յաճախ դուրս յարձակումներ ըրին, սակայն չկրցան պաշարումը վերցընել։ Ապստամբք՝ Տրինոյի եւ Զարնիայի Օսմ. պահակներէն զատ՝ Սթոլացն եւ Լիւպինեէն եւս պաշարեցին։

Ցոյնժամ Բ. Դուռն համոզուելով որ ապստամբութիւնն ահագին եւ իրական վտանգներ կսպառնայ իրեն դէմ, փութաց խիստ շոգենաւներով զօրք ղրկել ի Քլէք։ Օգոս. 4ին Նէճիպ փաշայի հրամանատարութեամբը 2 վաշտ զօրք՝ 1000 հոգի ղրկեց. 7ին քանի մը վաշտ եւս գացին անոնց ետեւէն. քիչ մը վերջը Հիւսէյին փաշա 2 վաշտ զօրօք եւ 6 թնդանօթով Քլէք հասաւ. վերջապէս 16ին եւ 17ին Ահմէտ Համտի փաշա 2 վաշտ եւս տարաւ, որով ամբողջ զօրաց թիւն եղաւ 4200 հոգի։ Տէրվիշ փաշա յիշեալ զօրաց ընդհ. հրամանատար կարգուելով՝ պատրաստուեցաւ երթալ Թրքայինեէի եւ Նիքսիչի պաշարումները վերցնելու։

Սորա հրամանացը համեմատ՝ Նէճիպ փաշա Օգոս. 16ին Սթոլացէն Տարրայի եւ Ֆաթնիցայի ճամբով Գլէքի վրայ պիտի քալէր, եւ սոյն քաղաքին չըջակայներէն ապստամբները վանելէ վերջը Նիքսիչի պաշարումը պիտի վերցնէր. եւ Օգոս. 14ին Հիւսէյին փաշա 2 վաշտով եւ 6 թընդանօթով Բոսքովոլի ճամբով ուղղակի Թրքայինեէի վրայ յառաջ պիտի խաղար, որոյ ետեւէն ալ պիտի երթար Օգոս. 17ին Համտի փաշա 2 վաշտով։

Նոյն միջոցին Բ. Դուռն ետ կանչելով Տէրվիշ փաշան, անոր տեղը Սէրվէր փաշան կայս. գործակատար կարգեց ապըստամբեալ գաւառաց մէջ։ Սէրվէր փաշա Օգոստոսի վերջը Հէրսէկ հասնելով՝ պաշտօնական յայտարարութիւն մը հրատարակեց որով կը խոստանար զանազան բարենորոգումներ գործադրել։

Ապստամբաց գլխաւորները սոյն առաջարկութեան վրայ վիճաբանելու համար՝ Թրքայինեէէն վեր Թրքայինիցայի վրայ Քոսիէրովոյի վանքը ժողովք ըրած ատեն, յանկարծ Օգոս. 29ին՝ Հիւսէյին փաշա Թրքայինեէ հասնելով առանց կռուոյ առաւ զայն։ Հետեւեալ օրը Տուցի վանքն ալ Օսմանցւոց ձեռքն անցնելով՝ ապըստամբք դէպ ի Զուպցի եւ Սութորինա քաշուեցան, եւ Հիւսէյին փաշա 4 ու կէս վաշտով եւ վեց թնդանօթով ամրոցը գրաւեց. Իսկ Նէճիպ փաշայի զօրաբաժինը չը կրցաւ մեծ յաջողութիւն մը ձեռք բերել. վասն զի՝ թէպէտեւ յաջողեցաւ Օգոստոս 20ին Նիքսիչը պարենաւորել, բայց քիչ մը վերջ ստիպուեցաւ սակաւ առ սակաւ Սթոլացի վրայ ետ քաշուիլ, եւ հազիւ մեծ դժուարութեամբ կրցաւ միանալ Հիւսէյին փաշայի հետ։

Սեպ. 1ին Օսմանցիք հետեւեալ կացութեան մէջ էին. Հիւսէյին փաշա 2200 հոգւով եւ 6 թնդանօթով Թրքայինեէ կը կենար. Նէճիպ փաշա 2000 մարդով եւ 3 թնդանօթով Գլէքէն Սթոլացի վրայ կը քաշուէր. 1300 զօրք Նիքսիչի բերդը կը պահպանէին. 300 հոգի այլ եւ այլ մանր ամրութեանց մէջ բաժնուած էին. 60 հոգիէ բաղկացեալ հեծելազօրաց վաշտ մը Ֆօչայի մէջ կը գտնուէր, եւ Համտի փաշա 1000 մարդով Քլէքէն Թրքայինեէ տանող ճամբան կը բռնէր՝ Սէլիմ փաշա 850 հոգւով եւ 3 թնդանօթով Մոսթար կը կենար. եւ վերջապէս Շէվքէթ փաշա 2400 հետեւակ եւ 300 ձիաւոր զօրք Օգոստոս 31ին Քլէք հասած էր։ Ուստի Օսմանցիք

Սեպտ. 1ին՝ 10500 հետեւակազօրք, 4 վաշտ հեծելազօրք եւ 12 թնդանօթ ունէին Հէրսէկի մէջ ։

Այսքան զօրաց դէմ 8—10000 ապստամբք կային՝ որոնք թէպէտեւ կատարելապէս չէին զինուած՝ սակայն լաւ կը ճանչնային երկիրն եւ անմատչելի դիրքերու մէջ պատսպարուած էին ։

Օսմանցիք Թրէպինեէն դրաւելէ ետքը՝ Պիլէքի ճամբով Կաչքօ երթալ ուզեցին ուր երթալու վրայ էին նաեւ Նարէնթայի հովտէն եկող ուրիշ կայսերական զօրախումբեր։ Ահմէտ Համտի փաշայի նպատակն էր՝ Նարէնթայի հովտին եւ Թրէպինեէն մինչեւ Մէթօքիա երկնցող գըծին մէջտեղը գտնուած երկիրը նուաճել, եւ յետոյ դէպ ի հիւսիս Ֆօչայի կողմն երթալ։

Այս յառաջադիծը խիստ ընդարձակ ըլլալուն՝ Լիւպինեէն Կաչքօյի վրայ՝ եւ Թրէպինեէն Պիլէքի վրայ միահաղոյն ըլլալիք շարժումը չյաջողեցաւ ։ Սեպ. 5ին Օսմանեան երկու բանակաթեւերն ալ յաղթուեցան, մին Տապարի լեռնադաշտին վրայ եւ միւսը Չէրքէլիցայի հովտին մէջ, եւ ստիպուեցան Սթոլացի եւ Թրէպինեէի վրայ ետ քաշուիլ ։

Թրէպինեէի բանակաթեւը 2 վաշտ զօրք եւս օգնութեան առնելով՝ նորէն յառաջ քալեց, եւ փոքր կռուէ մ'ետքը՝ Հոկ. 11ին Պիլէք հասաւ. բայց Նիքսիչ դարձեալ պաշարուած մնաց ապստամբներէն, որոնք Տուկոյի կիճին մէջ եւ Կաչքօյի բարձանցը վրայ գտնուած մէկ քանի կարեւոր դիրքերն ալ գրաւեցին։ Օսմանցիք Զուպցիի մէջ ունեցած պահականոցներնին վերըստին պարենաւորած եւ մէկ ու կէս վաշտ զօրք ղրկած էին անոնց օգնութեան, բայց զանց ըրած էին միեւնոյն զգուշութիւնները Սութօրինայի մէջ եւս կատարել ուր ապստամբք մեծ զօրութեամբ ամրացած էին։



ԱՊՍՏԱՄԲԱՊԵՏ ԼԱԶԱՐ ՍՈՉԻՑԱ

Ահա այս կողմէն սկսաւ իր արշաւանքը Գորաստացի Բէքօ Բաւլովիչ՝ որն որ ապստամբաց ամենայանդուգն եւ ամենայաջողակ գլխաւորաց մին էր։ Սոյն ապստամբապետը՝ սեպտեմբեր 18ին Բակուվայէն կայսերական զօրաց համար պաշար տանող սայլերու վրայ յարձակելով՝ մեծ կորուստ տուաւ Օսմանեան զօրաց։ Յետոյ դէպ ի Բլէք յառաջ խաղալով՝ 28ին Բլէքի եւ Վիցիչի մէջտեղը գտնուած ճամբուն վրայ դարձեալ մթերաբարձ սայլերու վրայ յարձակեցաւ. բայց այս անգամ պահանորդ զօրաց կողմանէ ետ մղուեցաւ։

Այսու ամենայնիւ ապստամբութիւնն արդէն հասած ըլլալով մինչեւ Նարէնթայի հովիտը՝ դէպ ի Կոնէլա եւ Վիցիչ, Հէրսէկի մութասարըֆն ստիպուեցաւ մէկ ու կէս վաշտով դէպ ի այն կողմը քալել ամենայն արագութեամբ։

Հոկտեմբերի սկիզբը Բէքօ Բաւլովիչ դարձաւ Բօբովրօլեէի կողմն երթալու, Սէրվէր փաշայի հրատարակած յայտարարութեան վրայ վստահելով՝ կառավարութեան հնազանդութիւն յայտնող մէկ քանի տեղերը վերստին ապստամբութեան գրգռելու համար։ Միեւնոյն պահուն Շէվքէթ փաշա ալ 7 վաշտով եւ մէկ հեծելագնդով Թրէպինեէէն ելաւ, եւ նոյնպէս Բօբովրօլեէի կողմը սկսաւ քալել։

Բէքօ Բաւլովիչ Օսմանցւոց այս շարժումն իմանալով՝ ճարտարութեամբ մը Շէվքէթ փաշայի առջեւէն խոյս տալով Նորին Ջուպզի քաշուեցաւ, ուր առջի պէս՝ Թրէպինեէն Ռակուզա տանող ճամբուն վրայ պաշարաբարձ սայլերու վրայ յարձակիլ սկսաւ վերստին։ Ապստամբք՝ Թրէպինեէն մինչեւ Քասթէլնովօ գտնուող մանր ամրոցներն այնքան սաստկութեամբ պաշարեցին՝ որ Կրաալի զօրակայանին հրամանատարն Հոկտեմբեր 21 ին իմաց տուաւ Թրէպինեէ որ եթէ անմիջապէս օգնութիւն չղրկուի իրեն՝ ինքն ալ պիտի ստիպուի անձնատուր ըլլալ ապստամբաց։

Այս լուրն Թրէպինեէ հասնելուն պէս՝ Հոկտեմբեր 21 էն 22 լուսնալու գիշերը Օսման փաշա 4 վաշտով եւ մէկ թնդանօթաշարով ճամբայ ելաւ Կրաալի զօրաց օգնութեան երթալու եւ Ջուպզիի մէջ բարեկարգութիւնը վերահաստատելու համար։ Շատ չանցած՝ Զիչէվօյի մէջ Լիւպիպրաթիչ 300 հոգւով իւր դէմն ելաւ, սակայն չկրնալով դիմանալ Օսմանցւոց ուժգին յարձակմանը՝ մինչեւ Քրուշէվիցա քշուեցան, ուր հակառակ Տաճկաց ռումբերուն անմիջապէս նոր դիրք մը բռնեցին եւ հոն ամրացան։

Օսման փաշա չկարենալով ապստամբներն իրենց դիրքերէն վանել՝ Կրաալի վրայ քաշուիլ սկսաւ։ Բէքօ Բաւլովիչ որ ճիշդ այս շարժմանը կսպասէր՝ Օսմանեան սպարտասեալ զօրաց անցնելիք ճամբուն վրայ դարանամուտ եղաւ, եւ խիստ կարճ հրացանակռուէ մ'ետքը՝ սուրին առինի եկան տաճկաց հետ։

Օսմանցիք մեծ կորուստ կրելով Կրաալի թնդանօթաց կրակին տակ փախան եւ բերդին մէջ մտան ամրացան։ Իսկ Բէքօ Բաւլովիչ դէպ ի հիւսիս Տուկայի կիրճը դիմեց արագութեամբ։

Լազար Սոչիցա որ խել մը քաջագործութեամբք նշանաւոր հանդիսացած էր՝ բազմաթիւ խմբով մը Տրինայի վերին մասը բռնած կը կենար։

Պոսնիոյ մէջ ալ արդէն ապստամբութիւնը ծաւալած էր, բայց տակաւին զինուորական գործողութիւն մը տեղի չէր ունեցած։

Նոյեմբերի սկիզբը՝ Մեծ Նպարքսան ապստամբութեան հետզհետէ տարածուելուն վրայ վերջին աստիճան յուզուելով եւ Օսմանեան բանակին կրած պարտութիւններն Ահմէտ փաշայի անկարողութեանը տալով՝ Րէուֆ փաշան Պոսնիոյ կուսակալ կարգեց։ Ասկէ զատ տեսնելով որ մինչեւ ցարդ գործածուած ռազմագիտական եղանակաւ զօրքերը չարունակ կոտրուելու ենթակայ են, պատերազմական նոր յատակագիծ մը պատրաստել տուաւ, ըստ որում բանակաթեւոց թիւն աւելի պիտի ստուարացուէր, եւ ապստամբներէն պաշարուած տեղերն անմիջապէս պիտի պարենաւորէին։

Րէուֆ փաշայի հրամանաւ վեց թնդանօթով 10 վաշտ զօրք Կաչքօյի մօտ համախմբելով՝ Շէվքէթ փաշայի հրամանատարութեանը տակ դրուեցան՝ երթալ Կորացքօյի պաշարումը վերցնելու համար, որուն հաղորդակցութիւնը բոլորովին կտրուած ըլլալով՝ սովը սկսած էր սաստկանալ բերդին մէջ։

Բէքօ Բաւլովիչ Տաճկաց նպատակն իմանալուն պէս՝ փոքրաթիւ խումբ մը թողլով իւր պաշարած ամրոցին առջեւ, ինքն երեք հազար հոգւով Պիէլա Տոլիվայի մէջ դարանի կեցաւ եւ թշնամւոյն գալստեանը սպասեց։

Նոյեմբեր 10 ին Օսմանցիք ապստամբաց առջեւ հասան, որոնք երեկոյեան դէմ Լէպէրշնիքի լերանց ետին զառիվայրի մը վրայ քաշուեցան. եւ Օսմանցիք նոյն գիշերը Պիէլա Տոլիվայի մէջ ռազմադաշտին վրայ բանակեցան։

Ապստամբք գիշերը նորանոր զօրութիւններ ստացած ըլլալով՝ երբ հետեւեալ առաւօտուն Շէվքէթ փաշա Լէպէրշնիքի կիրճերը գրաւել ուզեց՝ այնպիսի ուժգին դիմադրութեան մը հանդիպեցաւ

որ բազմաթիւ մարդ կորսնցնելէ ետքը՝ ստիպուեցաւ Կորայգզօ երթալը ետ թողուլ, եւ հրաման ըրաւ Մէթաքսիայի վրայ քալելու ։

Ութոքեյի մօտ, Քլէքէն Նէվէսինի գացող ճամբուն վրայ, Գիլէքի շրջակայքը եւ Տապարի բարձանցը վրայ ապստամբաց բազմաթիւ հրոսներ երեւցան նոյեմբերի սկիզբները, նոյնպէս ալ Թաքցայի վերին հովտացը մէջ զանազան կռիւներ տեղի ունեցան Օսմանեան զօրաց եւ ապստամբաց մէջ ։ Տալմացիոյ հիւսիսային սահմանագլուխն աւստրիական երկրին մօտ՝ Կրապի մէջ մեծկակ կռիւ մ'ալ տեղի ունեցաւ, սակայն Գիհաչի շրջակայ բնակչաց կողմանէ մեծ օգնութիւն մը չգտաւ ապստամբութիւնը ։

Մուահթովիչի այս յաջողութիւնն ապստամբութիւնն աւելի կրկնապատկեց. ամեն կողմանէ նորանոր զօրութիւնք, ռազմամթերք, ստակ եւ ուտեստ սկսան հասնիլ ։ Կորայգզօյի պաշարումն աւելի սաստկացաւ, մինչեւ որ՝ նոյեմբեր 20ին պաշարմնին հասնելով՝ բերդին հրամանատարն անձնատուր ըլլալ առաջարկեց ամբողջ պահակազօրքն իրենց զէնքերովը ազատ դուրս ելնելու պայմանաւ. բայց ապստամբք չընդունեցան այս պայմանը ։

Շէվքէթ փաշայի արշաւանաց անյաջողութենէն յետոյ՝ Րէուֆ փաշա ազդու միջոցներ ձեռք առաւ Կորայգզօն եւ Նիքշիչը պարէնաւորելու համար ։

Գոսնիոյ մէջ պատրաստ գտնուող բոլոր զօրագնդերը դէպ ի Հէրսէկ ճամբայ ելան. սկսան ամեն կողմ կամաւոր զինուորներ գրել եւ կարելի եղածին չափ անկանոն զօրաց բանակը ստուարացնել ։

Կայսերական բանակը փոխադրութեան համար գրաստի մեծ պէտք ունենալով՝ Գոսնայէն եւ Տաճկաստանի ներսերէն ձիեր եւ ջորիներ բերել տրուեցաւ Քլէքի ճամբով, եւ Օսմանեան զօրքերը Մէթաքսիայի մօտ համախմբեցան նոյեմբերի վերջերը ։

Ամսոյն 27ին Րէուֆ՝ փաշա 10 վաշտով, 16 լեռնային թնդանօթով եւ ուտեստ ու ռազմամթերք բարցած 1500 գրաստով Ռամիսոյի առջին հասաւ ։

Ապստամբք՝ Տաճկաց այսպէս ահեղ զօրութեամբ յառաջ խաղալը տեսնելով, եւ միւս կողմանէ ալ ճամբաները ձիւնէն ծածկուած ըլլալով, եւ թերեւս իրենց գլխաւորաց անհամաձայնութեանը պատճառաւ՝ Օսմանեան զօրաց վրայ յարձակելու դիտաւորութենէն ետ կեցան. եւ երեք խումբի բաժնուելով՝ Լազար Սոչիցա Բիվայի մօտերը կեցաւ, Բէքօ Բաւլովիչ դէպ ի Գիլէք ճամբայ ելաւ, եւ երրորդ խումբն ալ Ջինիվիչի հրամանատարութեամբը դէպ ի Կաչքօ ուղեւորեցաւ ։

Այն ատեն Րէուֆ փաշա յաջողեցաւ Կորայգզօն պարէնաւորելու, եւ դեկտեմբեր մէկին Մէթաքսիայէն, Քովիթօյէն եւ Գիլէքէն անցնելով՝ իր ամբողջ զօրութեամբը Թրէպինեէի վրայ քալեց, ուր հասաւ դեկտեմբեր 4ին ։

Ապստամբք՝ չուզեցին Օսմանեան զօրաց ընթացքն արգելուլ, բայց Բէքօ Բաւլովիչ՝ Բլանայի հիւսիսակողմը 3 վաշտէ բաղկացեալ Օսմանեան ջոկատ մը ետեւէն հասնելով, որն որ Սթոլացէն Ցաթնիցայի ճամբով Գիլէքի վրայ կուգար, մեծ կորուստ տուաւ անոնց՝ հակառակ Գիլէքի պահակագնդին դուրս ըրած յարձակմանը ։

Այս միջոցին Հէրսէկի մէջ գտնուող ամբողջ Օսմանեան զօրութիւնն էր 35 վաշտ կանոնաւոր եւ րէտիֆ զօրք. այս զօրութեանց գրեթէ կէսը Թրէպինեէի մէջ կը գտնուէր, որպէս զի ծովուն մերձաւորութեանը պատճառաւ Տրիէնով-Ռակուզայի ճամբով՝ որն որ մեծ կարեւորութիւն ունէր Տաճկաց համար, անմիջապէս նորանոր ուտեստ եւ ռազմամթերք հասցնելու դիւրութիւն ունենան ։

Օսմանցիք եւ ապստամբք՝ երկու կողմն ալ յետին ծայր նեղութեանց մէջ էին. ձիւնէն ծածկուած անանցանելի ճամբաներու մէջ շարունակ կռուելով՝ ալ ամե-

նեւին ոյժ եւ կարողութիւն չէր մնացած վրանին ։

Նիքսիչի ամրոցը՝ որն որ վեր երկնցած աշտարակներով շրջապատ պարիսպ մը եւ փոքրիկ միջնաբերդ մը միայն ունէր պաշտպանութեան համար, սեպտեմբեր ամսէն ի վեր ապստամբներէն պաշարուած էր, որոնք Տուկայի կիրճին մէջ քանի մը մանր ամրոցներ եւս ձեռք անցընելով՝ առաւել եւս սաստկացուցին պաշարումը, այնպէս որ պահակազօրքն ու բնակիչքն իրենց ապրուստը ճարելու համար տաժանելի դժուարութիւններ կը կրէին ։

Արդէն նոյեմբերի սկիզբները սովն այնքան սաստկացած էր Նիքսիչի մէջ՝ որ Շէվքէթ փաշայի արշաւանաց անյաջողութեանը վրայ՝ ալ այնպէս կարծուեցաւ թէ շատ չանցած բերդակալք անձնատուր պիտի ըլլան։ Րէուֆ փաշա ամենայն յաջողութեամբ Կորացքօն պարէնաւորելէ յետոյ՝ փոխանակ ուղղակի Նիքսիչի վրայ քալելու դէպ ի Թրէպինեէ ճամբայ ելնելէն քանի մ'օր ետքը՝ պաշարեալք քանիցս դուրս յարձակումներ ընելով՝ երբ տեսան որ թշնամին մեծ զօրութեամբ գրաւած է Տուկայի կիրճը, Ութէշի լեռը եւ Մէթոքիայէն Գրութոց տանող ճամբան, ստիպուեցան անձնատուր ըլլալ ապստամբաց։

Րէուֆ փաշա՝ դեկտեմբեր 14ին 7 վաշտով դէպ ի Բօբովօբօլեէ արշաւանք մ'ընելէն յետոյ՝ ամսոյն 19ին՝ պարէն եւ ռազմամթերք բարցած բազմաթիւ գրաստներով դէպ ի Պիլէք յառաջ խաղաց. մի եւ նոյն ժամանակ Մէհմէտ փաշա ալ 10 վաշտով Կաչքօյէն ելնելով՝ սկաւ Գօրիթօյի վրայ քալել Զրուիցայի ճամբով։ Րէուֆ փաշայի նպատակն էր Տուկայի կիրճը գրաւել Նիքսիչը պարենաւորելու համար։

Դեկտեմբեր 18ին ապստամբք հետեւեալ դիրքերը գրաւած էին. Գրութացի եւ Թաքցայի միջեւը՝ վերին Պանեանիի վրայ կը կենային իրենց խումբերովը Բէքօ Բաւլովիչ եւ Մաքսիմ Պաճէվիչ. դէպ ի Բլանայի եւ Գրութացի կողմերը Պոկոտան Ջիմոնիչ, եւ Լազար Սոչիցա ալ Կոլիայի մօտ։ Հէրսէկի ապստամբաց ամբողջ զօրութիւնն էր 6000 հոգի։ Անկէ զատ Բերովոբոլեէի, Կրէոշիի եւ Գուքովիչի մօտ 4000 հոգի եւս ժողովուած էին Միլէնթիչ, Մուսիչ եւ Լիւպիպրաթիչ ապստամբապետաց հրամանատարութեանը ներքեւ։ Ջուպցիի մէջ Մուխօ Ռատոնիչ քանի մը հարիւր հոգւով կը կենար, եւ Լուքա Բէթքովիչ ալ փոքրաթիւ խմբով մը՝ Ռակուզայէն Թրէպինեէ տանող ճամբան բռնած էր։

Րէուֆ փաշա դեկտեմբեր 21ին Գորիթօյի մօտ հասաւ, եւ իր հետն ունեցած ամբողջ պարէնը Մէհմէտ փաշայի զօրաբաժնին հսկողութեանը տակ թողլով՝ ինքն իւր մնացեալ զօրքերովը՝ ընդամենը 18 վաշտ՝ Գրութացի վրայ քալեց Տուկայի կիրճը զինու զօրութեամբ գրաւելու համար ։

Ապստամբք խոկոյն պատերազմական ժողով մ'ըրին. ոմանք կուզէին անմիջապէս Տաճկաց վրայ յարձակիլ Գրութացի մէջ. ոմանք ալ կարծիք կը յայտնէին թէ պէտք է թող տալ տաճկաց կրճին մէջ մտնել վերջը զանոնք կողէն զարնելու համար ։

Ապստամբապետք չկրցան համաձայնիլ իրենց մէջ. վասն զի մեծագոյն մասը կ'առաջարկէր որ իրենց բոլոր զօրութիւնը Ջլոսթուփի դիրքին մէջ ժողովեն Տաճկաց յարձակմանը սպասելու համար. բայց Լազար Սոչիցա եւ Պոկոտան Ջիմոնիչ չուզելով սպասել՝ Օսմանեան բանակին վրայ յարձակեցան դեկտեմբեր 24ին. իսկ Բէքօ Բաւլովիչ առանց անոնց օգնելու՝ կըռւոյն միջոցին իւր 2000 մարդովը Բլանայի վրայ քալեց, եւ հոն բազմաթիւ ոչխարաց հօտ մը յափշտակելով՝ ստորին Հէրսէկ վերադարձաւ ։

Հէրսէկցի ապստամբապետաց այս երկպառակութեանց եւ անհամաձայնութեանցը շնորհիւ, Օսմանեան բանակն առանց ընդդիմութեան կիրճէն ներս մտաւ ։

Րէուֆ փաշա կիրճը գրաւելէ ետքը՝



ԱՂԵՔՍԱՆԴՐ Բ. ԿԱՅՍՐ ՌՈՒՍԱՑ

պաշարի կարաւանը յառաջ քշել տուաւ, եւ ուղղակի Նիքսիչ երթալով՝ հետը ունեցած բոլոր պարէնը հոն թողուց եւ յետոյ դէպ ի Թրէպինեէ ճամբայ ելաւ ։

Դեկտեմբերի վերջերը Րէուֆ փաշա ետ կանչուեցաւ առողջութիւնը խանգարուած ըլլալուն, եւ Ահմէտ Մուխթար փաշա Պոսնիոյ եւ Հէրսէկի զինուորական հրամանատար կարգուելով՝ դեկտեմբեր 27 ին Պլէք հասաւ, եւ անկէ Թրէպինեէ գնաց ։

Այս միջոցին ապստամբք գլխաւորապէս Ռուկուպոյէն Թրէպինեէ տանող ճամբուն վրայ ժողովուած էին ։ վասն զի այն կողմէն կրնային Տաճկաց կարաւանները գրաւել ։

Պրոթացի ձախորդ կռուէն յետոյ՝ լեռնականք որ մանր խումբերու բաժնուած

աստ անդ կը շրջէին՝ յունուար ամսոյ մէջ դառնալ ժողովեցան Բոռոմբոլէէի եւ Զուպցիի մէջ, եւ Լիւպիպրոթիչն ազատած ըլլալով՝ Բէքօ Բաւլովիչը Հերսէկի մէջ գլխաւոր հրամանատար հրատարակեցին։

Յունուար 18էն մինչեւ 26՝ Բէքօ Բաւլովիչ արիւնահեղ կռիւ մ՚ընելով Տանկաց հետ՝ յաջողեցաւ Ռակուզայի ճամբան գրաւել։

Յունուար 18ին՝ Հիւսէյին փաշա 5 վաշտով, 6 թնդանօթով եւ 500 անկանոն զօրօք Թրէպինեէէն մեկնելով Զարնիայի ամրոցն երթալու համար՝ Կլուհա Սմոքվայի մօտ ուժգին յարձակում մը կրեց ապստամբաց կողմանէ, եւ յաղթուելով ցիրուցան փախան Օսմանեան զինուորք՝ զէնս ապստամբք հետզհետէ բռնելով կապանքէին։

Յունուար 26ին՝ Մուխթար փաշա 10 վաշտով եւ 12 լեռնային թնդանօթով Թրէպինեէէն մեկնեցաւ՝ Ռակուզայի ճամբան գրաւող ապստամբները զարնել ցրուելու համար։

Բէքօ Բաւլովիչ Օսմ. զօրապետին շարժումն իմանալով՝ նախ եւ առաջ խորհեցաւ Կլուհա Սմոքվայի գիրքին մէջ Տանկաց սպասել. բայց Լազար Սոչիցա՝ որ Պիլէքի եւ Թրէպինեէի մէջ տեղը կը կենար, իրեն օգնել չուզելուն՝ Բէքօ Բաւլովիչ ալ դէպ ի Դուքովից ուղեւորեցաւ իւր բոլոր զօրութեամբը։ Յունուար 28ին՝ Մուխթար փաշա 15 վաշտով Դուքովիչի վրայ քալեց. իսկ ապստամբք՝ պարէններին եւ ռազմամթերքնին հանելով՝ դարձեալ մանր խումբերու բաժնուեցան՝ որոց ոմանք դէպ ի հիւսիս Կրէպչի քաշուեցան, ոմանք ալ դէպ ի հարաւ Զուպցի եւ Սութորինա։

Ահա այսպէս առանց կռուոյ յաջողեցաւ Մուխթար փաշա ապստամբութիւնը զսպելու։

---

ԴԻՒԱՆԱԳԻՏԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ

Հերսէկի ապստամբութիւնն ուրիշ բան չէր բայց եթէ արեւելեան նոր պատերազմի մը յառաջաբանը, եւ արդէն իսկ յայտնի էր թէ շատ չանցած՝ Սերվիոյ, Գարատաղի եւ այլոց եւս կռուոյն ասպարէզը նետուելուն պատճառ մը պիտի ըլլար։ Ուստի Փարիզի դաշնագիրն ստորագրող Եւրոպական տէրութիւնք օգտակար դատեցին սոյն խնդրոյն միջամտել, եւ իրենց միջնորդութիւնն առաջարկել Բ. Դրան այս վտանգաւոր կռիւն՝ նոյն իսկ իւր ծագած պահուն՝ արգիլելու յուսով։

Պաշտօնական գրութիւններէն բացայայտ կերեւի թէ նոյն ինքն Ռուսիա նախաձեռն եղած է այս դիւանագիտական գործոյն։

1875 Օգոստոս 20 թուականաւ՝ Գաղղիոյ արտաքին գործոց նախարար՝ Տըքազ դուքսը Ս. Բէթրպուրկի Գաղղիական դեսպանին գրութիւն մը գրկած է՝ որոյ հետեւեալ մասը արժան կը համարիմք յառաջ բերել հոս.

«Ժոմինի սեպուհն իւր նամակին մէջ կատարեալ յստակութեամբ կը յայտնէ թէ Ռուսիա՝ այն գործառնութեանց մէջ որոց աջակցիլ կը հրաւիրէ զմեզ, կը կամի հեռի կենալ բարոյական ներգործութեան մը սահմանները անցնող եւ Թուրքիոյ ներքին գործոցը միջամտութիւն մը համարուող ո եւ է ընթացքէ։ Խնդիրը մի միայն դեսպանագիտական միջոցներ ձեռք առնելու վրայ է, ապստամբութիւնը սահմանափակելու եւ խաղաղեցնելու՝ եւ ընդհանուր խաղաղութեան նպատակաւ վտանգաւոր տագնապ մը յառաջ բերելէն արգիլելու համար։ Տէրութիւնք սոյն խնդրոյն մէջ գտնուող ամեն կողմանց ալ պիտի դիմեն՝ ապստամբաց, Գարատաղցւոց, Սերվիացւոց ինչպէս նաեւ Բ. Դրան։ Պ. Ժոմինի՝ այս բարենպատակ ծառայութեանց խաղաղասիրական հանգամանքը լաւ մը ցոյց տալու համար, Պ. Օ-

քունէֆի ինձ կարդացած պաշտօնագրոյն մէջ կը սնգէ որ՝ բոլոր տէրութիւնք աջակցին առ այն, եւ այս ալ ամենուն միաբանութեամբն ըլլայ։»

Ըստ այսմ Եւրոպական տէրութիւնք միաբանութեամբ գործելու համար համաձայնութիւն մը գոյացուցին իրենց մէջ.

Կ. Պոլիս կեցող օտար տէրութեանց դեսպանները՝ իրենց ստացած հրահանգացն ի պատասխանի՝ Օգոստոս 25 ին իրենց տէրութեանց հաղորդեցին նախնական խորհրդակցութեանց մէջ որոշուած յայտագիրն՝ որոյ իմաստը հետեւեալն էր.

«Տէրութեանց պատուիրակներն ապստամբաց քով երթալով պիտի հասկցնեն անոնց որ ամենեւին օգնութիւն մը պիտի չըլլայ իրենց ոչ օտար տէրութեան մը եւ ոչ դրացի իշխանապետութեանց կողմանէ, եւ եթէ տեղական վարչութեան դէմ գանգատներ ունին ընելու՝ պէտք է որ իրենց կողմանէ հաւատարիմ մարդիկ ղրկեն Բ. Դրան գործակալին մօտ՝ որն որ մասնաւորապէս Կ. Պոլսէն պիտի ղրկուի ժողովրդեան տրտունջները լսելու համար։

«Այս բարձրաստիճան պաշտօնատարը իրեն հաղորդուած պահանջմանց մէջ ինչ որ իրաւոր բան որ ըլլայ ամենայն հաճութեամբ պիտի ընդունի, եւ իրաւացի գանգատներուն համար պէտք եղածը պիտի տնօրինէ։ Տէրութեանց հիւպատոսք գործերնին կատարելնուն պէս՝ իրենց պաշտօնատեղին պիտի վերադառնան առանց Օսմանեան իշխանութեանց եւ ապստամբաց միջեւը ուղղակի տեղի ունենալիք բանակցութեանց վերջնական արդեանցը սպասելու։»

Վերոյիշեալ որոշման համեմատ՝ Եւրոպական տէրութեանց կողմանէ հրահանգ տրուեցաւ իրենց հիւպատոսաց սոյն պաշտօնը կատարելու համար։

Հերսէկցիք յանձնաժողովէն պահանջեցին որ զինադադար մը կնքուի եւ Եւրոպական տէրութեանց կողմանէ բացորոշ միջամտութիւն մ'ըլլայ. սակայն միւս կողմանէ ալ կը ջանային քանի մը կարեւոր դիրքեր ձեռք անցընել, հետեւաբար Օսմանեան զինուորական իշխանութիւնք հարկադրուեցան կռիւը շարունակելու։

Այս պատճառաւ Եւրոպացի պատուիրակները չկրնալով իրենց պաշտօնն իգլուխ հանել՝ իրենց առած հրահանգին համեմատ տեղերնին վերադարձան, եւ Սեպտեմբեր 24 ին հետեւեալ հեռագիրը յղեցին իրենց տէրութեանց։

«Պաշտօննիս չյաջողելով ետ դարձանք։ Պէտք էր որ Օսմանեան զինուորական իշխանութիւնք աւելի յարգ տային մեր գործոյն. իրենց զինուորական գործողութիւնքն ի հարկէ պատճառ կըլլան գործերնիս վերջացնելու։ Որքան ապստամբք որ կրցանք տեսնել՝ ամենքն ալ գիւղացի մարդիկ էին՝ որոնք ոչ կանոնաւոր զէնք մ'ունէին եւ ոչ ալ զինուորական կազմակերպութիւն։»

Ասոր վրայ Աւստրո-Հունգարիոյ հիւպատոսը խորհուրդ առաւ որ զինադադար մը կնքուելով՝ Օսմանեան գործակալն եւ Եւրոպացի պատուիրակները Մոսթար հաւաքուին, եւ ապստամբաց գլխաւորներն ալ հոն կանչելով՝ հաշտութեան պայմանացը վրայ վիճաբանին։

Սակայն Բ. Դուռն այս առաջարկութիւնն անընդունելի գտնելով՝ բոլորովին մերժեց զայն, որոյ վրայ թշնամութիւնք վերստին սկսան Տաճկաց եւ ապստամբաց մէջ։

Այսու ամենայնիւ՝ Բ. Դուռը հիմնական բարենորոգումներ գործադրելու հարկը կզգար, եւ այն՝ ոչ միայն Հերսէկի եւ Պոսնիոյ՝ այլ եւ բոլոր գաւառաց մէջ. ուստի Մահ[illegible]ու Նէտիմ փաշա որ դեռ նոր պաշտօնի անցած էր, Հոկտեմբեր 3 ին հետեւեալ յայտարարութիւնը հրատարակեց։

«Վեհ. Սուլթանին ամեն հպատակներն՝ առանց խտրութեան Ն. Կ. Վեհափառութեան անդուլ հոգածութեանն ու անըսպառ բարեգթութեանը առարկայ են։ Անոնք որ հպատակութեան պարտուց դէմ կը մեղանչեն եւ ապօրինութիւն կը գոր-

ծեն, անոնք միայն պիտի զրկուին կայսերական բարձր խնամոց բարիքներէն եւ յանցանքն ալ իրենց վրայ պիտի իյնայ ։

Վեց. Սուլթանին հայրական հոգածութիւնն այս անգամ եւս նորէն յայտնի եղաւ կայսրութեան պարկեշտ եւ խաղաղ երկրագործ ժողովրդոց նկատմամբ ։

Ա.— Հրաման եղաւ որ այդ երկրագործ ժողովուրդներն անմիջապէս ազատին տասանորդի տրոց յաւելուած քառորդէն, որ անկէց առաջ հաստատուած էր ։

Բ.— Մինչեւ 1289 թուականը դիզուած անվճար տուրքերն (պաքայէ) յիշեալ երկրագործ ժողովրդոց շնորհուեցան ։

Հրաման եղաւ որ գանձուն տումարներէն ջնջուին այդ անվճար տրոց արձանագրութիւններն, եւ հրատարակութեամբ ծանուցուին ։ Այս տնօրէնութեան ենթակայ չեն վարձակալները (միւլթէզիմ), երաշխաւորներն ու կառավարութեան այլ դասերը ։

Գ.— Տէրութեան հպատակ այլ եւ այլ հասարակութիւնք ներկայացուցիչ պիտի ունենան գաւառաց վարչական խորհուրդներուն մէջ՝ իրենց ընտրած եւ վստահութիւննին իրօք վայելող անձանց միջոցաւ. եւ այս անձանց յայտնած օրինաւոր եւ բանաւոր կարծիքները լուրջ նկատողութեան պիտի առնուին ։

Դ.— Գաւառաց կազմական օրինաց համեմատ՝ գաւառներէն Կ. Պոլիս պատգամաւորութիւններ գալու եւ գաւառաց տարեկան ընդհանուր ժողովներուն խնդիրները Բ. Դրան ներկայացնելու սկզբունքն՝ որ ժամանակէ մը ի վեր անգործադրելի թողուած էր, վերստին պիտի գործադրուի։ Իւրաքանչիւր հասարակութեան յարգն ու համարումը վայելող պատուաւոր անձինք խմբովին պիտի հրաւիրուին վիլայէթներէն եւ միւթէսարըֆութիւններէն ։ Թէ այս ճամբով եւ թէ ուրիշ միջոցաւ առնուած տեղեկութիւններն հիմ պիտի ըլլան ընդհանուր բարեկեցութեան զարգացման եւ յառաջդիմութեան համար ի գործ դըրուելիք բարենորոգմանց ։

Ե.— Յատուկ գործակալներ ու քննիչներ պիտի նշանակուին, ըստ հարկին, տրոց բաշխումն ու հաւաքումն ըստ օրինաց եւ արդարութեան կատարուելու համար ։ Հրամաններ ղրկուեցան ամեն գաւառներն, որպէս զի այս տնօրէնութիւնները գործադրուին ։

Բ. Դուռն հողային բերոց տասանորդներն հաւաքելու համար արդարութեան վրայ հիմնեալ եւ ժողովրդոց գոհութիւնն ապահովող դրութիւն մը հաստատելու համար պէտք եղած միջոցները խորհելու եւ պատրաստելու ձեռնարկած է այս միջոցիս ։ Ասկէ զատ՝ սակերուն եւ հարկերուն հաւաքմանը համար միակերպ եղանակ մը խորհելու վրայ է ։ Վերջապէս որոշած է հետզհետէ իրացնել այս բարենորոգումներն, ինչպէս նաեւ ոստիկանական զինուորութեան վերակազմութեանը վերաբերեալ բարենորոգումները։

Աստուածային նախախնամութիւնն երկար կեանք պարգեւէ մեր Օգոստափառ եւ առատաձեռն Վեհապետին՝ ի փառս Օսմ. Կայսրութեան եւ ի բարօրութիւն իր հպատակաց ։

Տպագրական դիւան 21 Սեպտ. 1875»

Այս միջոցին Հերսէկի եւ Պոսնիոյ ապստամբութիւնը՝ դրսէն եկած թէ մարդոց եւ թէ ռազմամթերաց շնորհիւ հետզհետէ զօրանալով՝ մինչեւ Սերվիոյ սահմանագլուխներն եկած հասած էր, միւս կողմանէ ալ սերվիական կառավարութիւնը իր զինուորական կազմակերպութեանը կ'աշխատէր ամենայն փութով ։ Ուստի մեծ տէրութիւնք ապագայ նորանոր եւ աւելի վտանգաւոր խառնակութեանց եւ արիւնհեղութեանց առաջքն առնելու համար՝ փութացին ազդարարութիւն մ'ուղղել Սերվիոյ կառավարութեան, ինչպէս որ Տըքազ դուքսին առ Բ. Դուռն ղրկած հեռագրէն կերեւի.

«Ս. Բէթէրսպուրկէն լուր առի թէ՝ Ռուսիոյ կառավարութիւնը հրաւիրեր է



ՊՈՒԼՂԱՐ ԳԻՒՂԱՑԻՔ

*Վիէննայի դահլիճը որ առաջարկէ Բոլոր երաշխաւոր պետութեանց հաւաքական ազդարարութիւն մ'ուղղել ի Պելկրատ, որոյ իմաստը հետեւեալը պիտի ըլլայ.*

*«Եթէ սերվիական իշխանութիւնը յարձակողական ընթացք մը բռնէ Դրան դէմ՝ Փարիզի դաշնագրութեան երաշխաւոր տէրութեանց անհնար պիտի ըլլայ Օսմանեան զօրքերը սերվիական երկիրը դրաւելէ արգելուլ։»*

*Բ. Դուռն վախնալով որ մի գուցէ եւրոպական տէրութիւնք Թուրքիոյ ներքին գործոց միջամտելու ըլլան, ժամ առաջ ապստամբեալ գաւառները հանդարտեցնելու եւ արիւնհեղութեանց վերջ տալու փափաքով՝* 1875 *դեկտեմբեր* 12 *ին կայսերական նոր հրովարտակ մը հրատարակեց, որով կատարեալ եւ հիմնական բարենորոգումներ գործադրել կը խոստանայ։*

*Սակայն հիւսիսային երեք կայսրութիւնք անբաւական համարելով այս խոստացեալ բարենորոգումները՝ եւ մասնաւորապէս Ռուսիա Թուրքիաբնակ քրիստոնէից վրայ իւր պաշտպանութեան իրաւունքն ի գործ դնել ուզելով՝ Աւստրիոյ եւ Գերմանիոյ հետ համաձայնութեամբ նոր հիմնագիծ մը պատրաստելու կ՚զբաղէր, յորում իրաց կացութեան մէջ մուծանելիք բարեփոխութիւնքը ցոյց պիտի տրուէին ։*

*Երից կայսրութեանց քարտուղարք՝ այս մասին իրենց մէջ բանակցութիւններ ընելէ յետոյ՝ վերջապէս Աւստրիոյ արտաքին գործոց նախարարին՝ Անտրաշիի ստորագրութեամբը ծանուցագիր մը ուղղել որոշեցին առ Բ. Դուռն, զոր Գաղղիոյ, Անգղիոյ եւ Իտալիոյ հաղորդելով անոնց ալ հաւանութիւնը եւ աջակցութիւնը ստացան ։*

*Անտրաշիի ծանուցագրոյն մէջ ցոյց տրըուած բարենորոգմունքը հետեւեալ հինգ պայմաններէն կը բաղկանային .*

1°. *Կրօնից ազատութիւն .*

2°. *Տրոց վարձակալութիւնը ջնջել .*

3°. *Ապստամբեալ գաւառներէն հաւաքուած ուղղակի տուրքերն՝ երկրին ժողովրդոց վիճակին բարւոքմանը գործածելու համար երաշխաւորութիւն տալ.*

4°. *1875 դեկ. 12 ի ֆէրմանին մէջ պարունակեալ բարենորոգումներն ապահովելու համար խառն քննիչ յանձնաժողով մը կազմել.*

5°. *Մահմետականաց պէս Քրիստոնէից ալ արտօնութիւն տալ կալուածոց եւ հողի տէր ըլլալու .*

*1876 յունուար 31ին՝ Աւստրո-Հունգարիոյ դեսպան Զիչի կոմսը սոյն ծանուցագիրը Բ. Դրան հաղորդելէ ետքը՝ Ռուսիոյ եւ Գերմանիոյ դեսպանները Մեծ Եպարքոսին գացին Աւստրիոյ առաջարկութիւնները պաշտպանելու համար. վերջին ալ Գաղղիոյ, Անգղիոյ եւ Իտալիոյ դեսպանները յայտարարեցին արտաքին գործոց պաշտօնեայ՝ Րաշիտ փաշայի թէ իրենց կառավարութիւններն յիշեալ ծանուցագրոյն մէջ Փարիզի դաշնագրութեան հակառակ բան մը չգտնելով՝ պէտք է որ Բ. Դուռն ալ ընդունի զայն. եւ ընդունած ըլլալուն համար ալ գրաւոր պատասխան մը ուզեցին Բ. Դրնէն ։*

*Սուլթան Ապտիւլ Ազիզ փետրուար 12ին Անտրաշիի ծանուցագիրն ընդունելով՝ անոր մէջ յիշատակուած հինգ առաջարկութիւններն նոր ֆէրմանով մ՚ալ հրատարակեց։ Ասկէ զատ ընդհանուր ներողութիւն շնորհեց ապստամբաց, եւ Աւստրիոյ ու Ռուսիոյ դեսպանաց միջնորդութեանը շնորհիւ տասներկու աւուր զինադադար մ՚ալ կնքուեցաւ ։*

*Բարենորոգմանց գործադրութեանը համար քննիչ խառն յանձնաժողով մը կազմուեցաւ. սակայն ապստամբք յայտարարեցին թէ՝ մինչեւ որ Բ. Դուռն Հերսէկի եւ Պոսնիոյ մէջ համախմբած քառասուն վաշտ զօրքը ետ չքաշէ եւ իրենց վեց պահանջումները չընդունի՝ զէնքերնին վար չպիտի դնեն ։*

*Ապստամբաց վեց պահանջումները հետեւեալքն էին .*

1°. *Տաճիկ աղաներուն ունեցած գետիններուն մէկ երրորդ մասը իրենց թողուլ ։*

2°. *Քանդուած տուները վերստին շինուելու տէրութեան ծախիւքը, եւ կորսուած անդական եզներն ու երկրագործական գործիքները կառավարութեան կողմանէ հատուցուլ ։*

3°. *Երեք տարի տասանորդի տուրքէ ազատ մնալ.*

4°. *Կանոնաւոր զօրքերն իրենց երկրէն դուրս ելնել, եւ Թուրքիա՝ Նիքսիչ, Սթոլաց, Ֆօչա, Թրէպինեէ, Բիօկլի եւ Մոսթար բերդաքաղաքներէն զատ ուրիշ տեղեր զօրք կեցնելու իրաւունք չունենայ . եւ աւստրիական ու ռուսական գործակալներ վերոյիշեալ պայմանաց գործադրութեանը վրայ հսկեն.*

5°. Բնիկ տաճկաց վրայէն զէնքերն առնուլն.

6°. Նրաշխաւորութիւն տէրութեանց.

Բ. Դուռն ապստամբաց այս առաջարկութիւնները մերժելով՝ բանակցութիւնք խզուեցան եւ ալ խօսք մը չեղաւ Անտրաշիի ծանուցագրոյն վրայ։

Ապստամբք՝ որոնք Մուխթար փաշայի ջանիւք ցիրուցան ըլլալով լեռները քաշուած էին, մեծաքանակ ուտեստ եւ ռազմամթերք համբարելով եւ նորանոր կամաւորներ զինուորելով՝ յաջորդ գարնան կռիւը վերստին շարունակելու պատրաստութիւններ կը տեսնէին։

Սերվիա ալ՝ Օմլատինայի գաղտնի ընկերութեան ջանիւքն ու թելադրութեամբը պատերազմասիրական գաղափարներով վառուած՝ գաղտնաբար յառաջ կը մղէր իւր զինուորական պատրաստութիւնները,

Աւստրիական կառավարութիւնն՝ իւր սահմանագլխոց վրայ կատարուած դէպքերուն նկատմամբ ուրիշներէն աւելի ուղղակի շահ ունենալով՝ առանձինն նոքէն աշխատեցաւ ապստամբները համոզելու որ զէնքերնին վար դնեն. սակայն ապստամբապետք անդրդուելի մնացին իրենց յամառութեանը վրայ։

Ապրիլի մէջ թշնամութիւնք վերստին սկսան աւելի մեծ սաստկութեամբ, վասն զի Սերվիայէն եւ Գարատաղէն բազմաթիւ կամաւորներ հասնելով ամեն օր՝ ապստամբաց խումբերը երթալով կստուարանային,

Այս միջոցին ցաւալի դէպք մ'ալ պատահեցաւ Սելանիկի մէջ, որն որ եւրոպական տէրութեանց վրայ խիստ գէշ տպաւորութիւն մ'ըրաւ Թուրքիոյ նկատմամբ։

Մայիս 3 ին՝ Գաղղիոյ եւ Գերմանիոյ հիւպատոսները՝ խառնակյոյզ խուժանին կողմանէ սպաննուեցան Սելանիկի մէջ ցերեկ ժամանակ։

Ցանցաւորաց շատն անմիջապէս ձերբակալուելով՝ դատաստանին տեսնուելէ յետոյ՝ քաղաքին հրապարակին վրայ կախուեցան, եւ սպաննեալ հիւպատոսաց ի պատիւ յուղարկաւորութեան փառաւոր հանդէսներ կատարուեցան։

Մայիս 11 ին՝ Ռուսիոյ կայսրը Կորչաքօֆ իշխանը հետն առած՝ իւր մօրեղբօրը՝ Գիյեօմ կայսեր տարեկան այցելութեան եկած ըլլալով՝ միեւնոյն օրը Անտրաշի կոմսն ալ Պերլին եկաւ։ Նա որովհետեւ Արեւելեան խնդիրն հետզհետէ ծանրակշիռ կերպարանք մ'առնելով՝ հիւսիսային երից կայսրութեանց ուշադրութիւնը գրաւած էր վերջին աստիճան, ուստի Գերմանիոյ Աւստրո-Հունգարիոյ եւ Ռուսիոյ արտաքին գործոց նախարարք՝ Պիզմարգ իշխանը, Անտրաշի կոմսը եւ Կորչաքօֆ իշխանը սոյն խնդրոյն վրայ խորհրդակցելու համար ժողովք մ'ըրին Պերլինի մէջ, եւ Բ. Դրան մօտ հաշտարարութեան նոր ջանք մ'ալ ընելու հարկին վրայ անմիջապէս համաձայնելով՝ Պէրլինի յիշատակագիրը պատրաստեցին՝ որն որ կը կարծուի թէ Կորչաքօֆ իշխանին գրչէն ելած է։

Այս յիշատակագիրը՝ որ 1876 մայիս 13 թուականը կը կրէ, խիստ կարեւոր եւ հետաքրքրական գրութիւն մ'ըլլալուն՝ հարկ կը համարիմք զայն ամբողջապէս յառաջ բերել.

«Տաճկաստանէն այն աստիճան վրդովիչ լուրեր կը հասնին՝ որ տէրութիւնք կը հարկադրուին իրենց միաբանութիւնն առաւել եւս ամրապնդելու։

«Երեք կայսերական արքունիք յարմարադէպ դատեցին միմեանց հետ համաձայնիլ այս կացութեան վտանգաց առաջքն առնլու համար՝ աջակցութեամբ միւս քրիստոնեայ մեծ տէրութեանց։ Ըստ իրենց կարծեաց՝ Տաճկաստանի իրաց ներկայ վիճակն երկու կարգ տնօրէնութիւններ կը պահանջէ։

«Նախ քան զամենայն հարկաւոր կը թուի իրենց որ Եւրոպա ընդհանուր միջոցներ խորհի՝ արգիլելու համար այնպիսի պատահարաց վերադարձն՝ որք ծագեցան Սելանիկի մէջ, եւ կըսպառնան ե-

րեւան գաւառներու Զմիւռնիոյ եւ Կոստանդնուպօլսոյ մէջ։ Վասն որոյ կը կարծեն թէ մեծ տէրութիւնք պարտին համաձայնիլ թէ ինչ տրամադրութիւններ ձեռք առնելու են իրենց ազգայնոց եւ Օսմանեան կայսրութեան քրիստոնեայ բնակչաց ապահովութիւնը պահպանելու համար՝ այն ամեն կէտերուն վրայ ուր վտանգի ներքեւ է։

«Կը թուի թէ այս նպատակին կարելի է հասնիլ ընդհանուր համաձայնութեամբ ռազմանաւեր ղրկելով վտանգի տակ գըտնուող տեղերն, եւ այն նաւերուն հրամանատարաց տուելիք զուգընթաց հրահանգներ որոշելով, որք պիտոյ կըլլան՝ երբ պարագայք իրենց կողմանէ պինդ զօրութեամբ գործակցութիւն մը պահանջեն՝ բարեկարգութիւնն ու անդորրութիւնը պահպանելու համար։ Սակայն եթէ Պոսնան եւ Հերսէկը խաղաղեցնելով այդ վրդովմանց սկզբնապատճառն բարձուելու չըլլայ, սոյն արդիւնքը թերի կերպիւ ձեռք կը բերուի։»

«Առանց քաղաքական ներկայ վիճակին փոփոխութիւն մը տալու, սոյն երկիրներուն ժողովրդոց վիճակին իրական բարւոքումն ձեռք բերելու համար՝ անցեալ դեկ. 30 ի պաշտօնական գրութեամբ նախաձեռնութիւն մ'ընելով՝ մեծ տէրութիւնք արդէն այս մասին միաբանած են։ Տէրութիւնք այս կրկին նպատակաց համապատասխանելու սահմանեալ բարենորոգմանց հիմնագիծ մը խնդրեցին Դռնէն։ Դուռն այս խնդրանաց հաւանելով՝ հաստատ դիտաւորութիւն յայտնեց այն բարենորոգմունքը գործադրելու, եւ ի պաշտօնէ հաղորդեց զայն դաշնկիցներուն։

«Ուրեմն ասքա եւս բարոյական իրաւունք մը ստացան այս խոստման գործադրութեանը հսկելու, եւ պարտականութիւն մը սնդելու՝ որպէսզի ապստամբք ու պատըսպարեալք այդ խաղաղարար գործոյն օգնեն մաքառմանց վերջ տալով եւ իրենց բնակարանները վերադառնալով։

«Թէպէտեւ այս խաղաղարարութեան հիմնագիծն ըստ սկզբան ընդունուեցաւ ամեն կողմանէ, սակայն երկու խոչնդոտներու պատահեցաւ։ Ապստամբք յայտնեցին որ անցեալէն փորձառու ըլլալով՝ չեն կրնար Դրան խոստմանցը վստահիլ, եթէ Եւրոպայի կողմանէ նիւթական հաստատուն երաշխաւորութիւն մը չտրուի։ Դուռն ալ իր կողմանէ յայտնեց թէ քանի որ ապստամբք զինեալ կ'ապստամբեն իւր երկրին վրայ եւ պատսպարեալք իրենց հայրենիքը չվերադառնան, իրեն համար նիւթապէս անհնար է երկրին նոր կազմակերպութիւնը կատարել։ Այժմ թշնամութիւնք վերստին սկսած են։ Այս ութամսեայ մաքառմանց յառաջ բերած յուզմունքն Տաճկաստանի ուրիշ մասանց վրայ ալ ծաւալած է։ Մահմետական հասարակութիւնք սա հետեւութիւնը հանած են թէ Դուռն առ երեսս հաւանած էր Եւրոպայի դիւանագիտական գործոյն, եւ ի ներքուստ դիտաւորութիւն՝ չունէր խոստացեալ բարենորոգմունքն անկեղծաբար գործադրելու։ Ասով վերստին կը զարթնուն այն կրօնական եւ քաղաքական կիրքն՝ որք Սելանիկի ողբալի արկածներն յառաջ բերելու պատճառ եղան մասամբ մը, եւ ասով երեւան կու գայ սպառնալից ծայրայեղ գրգռութիւն մը Օսմանեան կայսրութեան ուրիշ մասանցը վրայ։ Անտարակուսելի է նաեւ որ այս մոլեռանդութեան պայթիւնը Պոսնիոյ եւ Հէրսէկի՝ ինչպէս նաեւ մերձակայ իշխանապետութեանց մէջ անդրադարձ ազդեցութիւն մը կունենայ. վասն զի այդ տեղեաց քրիստոնէից վրայ սաստիկ տպաւորութիւն մ'ըրած ըլլալու է խաղաղ քաղաքի մէջ՝ տեղական անզօր իշխանութեանց աչացն առջեւ՝ ցերեկ ժամանակ Եւրոպացի հիւպատոսաց սպանութեան դէպքը, այն պահուն յորում յորդոր կը կարդացուի այդ քրիստոնէից որ յանձնեն ինքզինքնին՝ երկարատեւ եւ կատաղի կռիւներով դրդռեալ Տաճկաց կամացը։

«Եթէ այս կացութիւնն , երկար տեւէ՝ վտանգ կայ նոյն իսկ այն ընդհանուր հըրդեհին բորբոքումը տեսնելու, որոյ առաջքն առնլու համար էր ճշդիւ որ մեծ տէրութիւնք միջնորդեցին ։

«Ուրեմն բոլորովին խիստ հարկ է այնպիսի երաշխաւորութիւններ առնել՝ որ տէրութեանց եւ Դրան միջեւն որոշեալ միջոցներուն անկեղծ եւ կատարեալ գոր-



ՊՈՒԼՂԱՐ ԱՊՍՏԱՄԲՔ ԻՐԵՆՑ ԹՆԴԱՆՕԹՆԵՐՈՎԸ ԳԵՐԻ ԻՆԿԱԾ

ծադրութեանը մասին ամենեւին տարակոյս չթողու։ Ամեն ժամանակէ աւելի այժմ անհրաժեշտ է Սուլթանին կառավարութեանը վրայ ծանրակշիռ ազդեցութիւն բանեցնել մտադիւր ընելու համար՝ այն լրջաբար գործի ձեռնարկելու, որպէս զի Եւրոպայի առջեւ ըրած խոստմունքը կատարէ ։

«Այս ճանապարհին մէջ առաջին քայլ մ'ընելու համար, երեք կայսերական արքունիք կառաջարկեն որ մեծ տէրութիւնք՝ իրենց միաձայնութեան բոլոր ազդողութեամբը պնդեն Դրան մօտ որ երկամսեայ զինադադար մը կնքելու համար։

«Այսչափ միջոցի մէջ միանգամայն կարելի է ազդեցութիւն բանեցնել ապըստամբաց եւ պաշտպանեալց վրայ՝ զիրենք վստահեցնելու համար Եւրոպայի արթուն հոգածութեանը. մերձակայ իշխանապետութեանց վրայ՝ յորդորելու համար որ այս հաշտարար գործոյն արգելք չըլլան. եւ վերջապէս Օսմանեան կառավարութեան վրայ՝ ստիպելու համար զայն որ իւր խոստմունքը կատարէ։ Այս կերպիւ կարելի է ճանապարհ բանալ Դրան եւ Պոսնացի ու Հերսէկցի ապստամբաց միջեւն ուղղակի բանակցութեանց, հիմն բռնելով այս յայտնած խնդիրն՝ որք յարմար դատուած են միհաբանութեան հիման կէտեր ըլլալու.

«Այդ կէտերն հետեւեալքն են.

1°— Տուներնին եւ եկեղեցիներնին նո-

րէն շինելու համար պէտք եղած նիւթերը տրուելու են վերադարձող պատսպարեալոց. եւ անոնց ապրուստն հայթայթուելու է մինչեւ որ կարող ըլլան իրենց աշխատութեամբն ապրիլ ։

2°. Եթէ նպաստից բաշխումը Տաճիկ գործակալին յանձնուի, բարենորոգմանց ճշգրիտ գործադրութիւնն ապահովելու եւ քննելու համար դեկտեմբեր 30 ի ծանուցագրոյն մէջ նշանակուած խառն յանձնաժողովոյ հետ ձեռք առնուելիք միջոցներուն վրայ համաձայնելու է Տաճիկ գործակալը։ Քրիստոնեայ Հէրսէկցի մը նախագահելու է այդ յանձնաժողովոյ՝ որ պիտի բաղկանայ երկրին երկու կրօնքները հաւասարմաբար ներկայացնող բնիկներէ. սոքա եւս ընտրուելու են՝ երբ գինադադարի ատեն թշնամութիւնք ընդհատին ։

3°. Ո՛րեւիցէ ընդհարման առաջքն առնելու համար՝ Կոստանդնուպօլսոյ մէջ խորհուրդ տրուելու է մէկ քանի որոշուելիք կէտերու վրայ տաճիկ զօրքն համախմբելու, գէթ մինչեւ որ միտքերն հանդարտին .

4°. Քրիստոնեայք զէնքերնին պահելու են Մահմետականաց պէս.

5°. Տէրութեանց հիւպատոսք կամ պատուիրակք հսկողութիւն ընելու են առհասարակ բարենորոգմանց գործադրութեանը վրայ, եւ մասնաւորապէս պատսպարելոց իրենց հայրենիքը վերադառնալուն պատկանեալ խնդրութեանց վրայ ։

«Մեծ տէրութեանց բարեսէր եւ ջերմ աջակցութեամբն եւ զինադադարին շնորհիւ՝ եթէ կարելի ըլլայ խաղաղութիւն մը ձեռք բերել այս հիմանց վրայ եւ անմիջապէս գործադրել՝ պատսպարեալները վերադարձնելով եւ խառն յանձնաժողովն ընտրելով՝ խիստ մեծ քայլ մ՚առնուած պիտի ըլլայ դէպ ի խաղաղութիւն ։

«Սակայն՝ եթէ զինադադարն անցնի եւ առաջադրեալ նպատակին հասնելու համար տէրութեանց ջանքերն անյաջող մնան, երեք կայսերական արքունեաց կարծիքն այն է թէ՝ հարկ պիտի ըլլայ իրենց դիւանագիտական գործոյն համաձայնութիւն տալ միաբանութիւն մը գոյացնելով այն ազդու անօրէնութիւններն ընելու մասին, որք հարկաւոր պիտի ըլլան ընդհանուր խաղաղութեան շահուն համար՝ որպէս զի չարեաց առաջքն առնուի եւ ծաւալումն արգիլուի ։ »

Գաղղիա եւ Իտալիա ընդունեցան այս յիշատակագիրը, բայց Անգղիա մերժեց՝ առարկելով թէ այդ դրութիւնը կերպով մը կը քաջալերէ ապստամբները ։

Այսու ամենայնիւ որոշուեցաւ որ Պերլինի յիշատակագիրն ընդունող տէրութեանց՝ Գերմանիոյ, Ռուսիոյ, Աւստրիոյ, Գաղղիոյ եւ Իտալիոյ դեսպանները Բ. Դրան ներկայացնեն զայն մայիս 30 ին. սակայն 29 ին գիշերը անակնկալ յեղափոխութիւն մը տեղի ունենալով Կ. Պօլսոյ մէջ՝ հարկ եղաւ քանի մ՚օր ուշացնել այս գործողութիւնը ։

Բ. Դուռը՝ Անգղիոյ բռնած ընթացքէն քաջալերուելով, ինքն եւս մերժեց սոյն դրութիւնը, որով Պերլինի յիշատակագիրն ալ Անտրաշիի ծանուցագրոյն քով գնաց։

## ԿՈՏՈՐԱԾՔ ՊՈՒԼՂԱՐԻՈՅ

Այն ատենները Պուլղարիոյ մէջ ապստամբութիւն ծագած ըլլալով՝ Օսմ. կառավարութիւնը հարկադրուեցաւ խիստ միջոցներ ձեռք առնուլ. այս պատճառաւ բաւական արիւնհեղութիւնք տեղի ունեցան Պուլղարիոյ մէջ, որով Թուրքիոյ նկատմամբ Անգղիոյ ցոյց տուած պաշտպանութիւնն ալ իսկոյն խախտեցաւ ։ Տիզրայէլիի պաշտօնէութեան հակառակ կուսակցութիւնը Պուլղարիոյ դէպքը պատճառ բռնելով՝ ամեն ջանք ի գործ դրաւ սոյն պաշտօնէութիւնը տապալելու համար։ Այս բանը թէպէտեւ ամենեւին չյաջողեցաւ, սակայն Պ. Տիզրայէլի ալ (որ այժմ Լորտ Պիքընսֆիլտ կը կոչուի) ստիպուե-

ցաւ իւր քաղաքականութիւնը բարեփոխել հասարակութեան կարծեաց ճնշմանը ներքեւ ։

Պուքրէշի եւ Պելկրատի սլաւ ընկերութեանց գործակալներն վերջին դէպքերէն օգուտ քաղելով շարունակ ապստամբութեան կը գրգռէին պուլղար ժողովուրդը ։ Վերջապէս 1876 ապրիլ ամսոյն մէջ՝ Բազարճըքի մօտերը Օթլուք եւ Սթրիճլիցա գիւղերուն մէջ ապստամբական շարժում մը ծագեցաւ. սակայն Օսմանեան իշխանութեանց անհոգութեանը պատճառաւ՝ Հէրսէկի ապստամբութեան պէս պուլղարական ապստամբութիւնն ալ տարածուեցաւ ։

Ապստամբք իրենց մէջէն մէկը թագաւոր ընտրեցին, եւ դպրոցի վարժուհի մ'ալ թագուհի. Պուլղարիոյ թագաւորութեան նշանն եղող ոսկի առիւծով զարդարուած գլխարկներ ո գիտէ ուսկից բերուելով ապստամբաց բաժնուեցան ։ Փայտէ թնդանօթներ շինուեցան, եւ ամէն կողմ ծանուցում եղաւ թէ Պալքաններուն մէջ պահուըտող քառասուն հազար Ռուսք՝ մէկ նշանի մը կսպասեն ապստամբաց օգնութեան հասնելու համար ։ Յառաջարարք կը յայտարարէին ժողովրդեան թէ՝ ով որ իւր տունն այրէ՝ վերջը մարմարինէ պիտի շինուի ։

Պուլղարաց շատերն այս երեւակայական եւ անհեթեթ խօսքերուն անսալով ապստամբաց հետ միացան. եւ օր մ'ալ հինգ հարիւր հոգի մէկէն վերոյիշեալ երկու գիւղերուն վրայ յարձակելով՝ բոլոր Տաճիկ բնակիչներն՝ այր եւ կին՝ ամենքն ալ սպաննեցին, եւ ուրիշ խումբ մ'ալ Փիլիպէի երկաթուղւոյն վրայ քալելով Պելովայի կայարանը քանդեց աւերեց ։

Պուլղարիոյ մահմետականք եւ Օսմանեան կառավարութիւնը սոսկալի զարհուրանաց մէջ ինկան. առաջինները կարծեցին թէ բոլոր պուլղարներն ոտք ելնելով որչափ Տաճիկ կայ զամենքն ալ պիտի սպաննեն. իսկ վերջինը կը վախնար թէ մի գուցէ ապստամբութիւնը մինչեւ Կ. Պոլսոյ դռները հասնի ։

Մեծ եպարքոս Մահմուտ փաշա իսկոյն անկանոն զօրքեր ղրկեց Պուլղարիա՝ մէկ հարուածով մը այս վտանգաւոր ապստամբութեան վախճան տալու համար ։ Կըսեն թէ ապստամբները ցրուելու համար քանի մը հազար զօրք բաւական էին. սակայն մեծ եպարքոսն տասն հազար պաշը պօզուք թափեց Պուլղարիոյ վրայ, որոնք երեք ամիս շարունակ ապստամբաց հետ զարնուելով՝ շատ արիւնհեղութիւնք եղան Պուլղարիոյ մէջ ։

Անգղիացի քննիչ պաշտօնակալաց ըսածին նայելով՝ 12000 մարդ կայ սպաննուած. իսկ լրագիրք հրատարակեցին թէ 60000 ի հասած է. սակայն Կ. Պոլսոյ Գաղղիական դեսպանին տեղեկագիրը 15—20000 ի կը հանէ սպանելոց թիւը ։

Երբ պուլղարք այսպէս իրենց ապստամբութեան պատիժը կը կրէին, անդին համայն սլաւ ժողովուրդք սոսկումով եւ զայրութով կը լեցուէին. մինչեւ իսկ տէրութիւնք սկսան կարեկցութիւն ցոյց տալ պուլղարաց նկատմամբ։ Եւրոպական դեսպանագիտութիւնը՝ Հէրսէկէն եւ Պոսնայէն զատ՝ Պուլղարիան եւս իւր պաշտպանութեանը տակ առաւ ։

Եւրոպիոյ պահանջած բարենորոգմանց եւ Օսմանեան կառավարութեան՝ առանց իւր արժանապատուութեանը դպչելու՝ տալիք արտօնութեանցը մէջ այն աստիճան անհամեմատ տարբերութիւն մը գոյացաւ՝ որ գործերուն խաղաղական վախճան մը առնալը գրեթէ անհաւատալի եղաւ ։

Սերվիա եւ Գարատաղ անհաւասար կըռւոյ մը արկածիցը մէջ նետուելէ ետքը՝ Ռուսիոյ քաղաքականութիւնը գործերն այն վիճակին բերաւ հասուց՝ որ այլ եւս իւր դիտած ժամն հասած ըլլալով՝ ռուսական բանակներն արեւելքէն ի Հայաստան եւ արեւմուտքէն ի Դանուբ յառաջ խաղալ սկսան ։

### ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ Ի Կ. ՊՈԼԻՍ

*Մահմետական հասարակութեան խելացի մասը եւ մասնաւորապէս սօֆթաները սոսկումով կը տեսնէին որ Օսմանեան կայսրութիւնն սակաւ առ սակաւ կործանման անդունդը գահավիժելու կը մօտենար։ 1876 Մայիս 11 ին առաջին անգամ յեղափոխութիւն մը հանելով մեծ եպարքոս Մահմուտ Նէտիմ փաշան վար առնել տուին. սակայն այսչափը բաւական չէր. վասնզի չարիքը աւելի բարձրէն գալուն՝ աւելի արմատական միջոց մը պէտք էր Թուրքիոյ փրկութեանը համար։*

*Մայիս 30 ին առաւօտուն կանուխ՝ Վոսփորի մէջ կեցող Օսմանեան ռազմանաւերէն եւ ցամաքային մարտկոցներէն սկսաւ ուժգին կերպով թնդանօթներ արձակուիլ։ Անմիջապէս փողոցները մունետիկներ ելան, եւ Ապտիւլ Ազիզի գահընկեցութիւնը ու Սուլթան Մուրատոյ գահակալութիւնը աւետելով, ժողովրդեան՝ այս թնդանօթաձգութենէն զգացած մտատանջութիւնը փարատեցին ։ Դաւադրութեան գաղտնիքն այնքան աղէկ պահուած էր՝ որ մարդ չէր գիտեր թէ այսպիսի յեղափոխութիւն մը տեղի պիտի ունենար, յեղափոխութիւն մը՝ որում կը փափաքէր համայն Թուրքիա .*

*Այս նշանաւոր դէպքին մէկ քանի հետաքրքրական պարագաները աւելորդ չեմք համարիր յառաջ բերել աստանօր ։*

*Մայիս 26 ին՝ Օսմանեան նախարարք առաջարկեցին կայսեր որ իւր անձնական գանձուն համար վար դրած վեց միլիոն ոսկին պետութեան գանձուն յանձնէ. սակայն Ապտիւլ Ազիզ, որոյ հարստութիւնը 9-10 միլիոն ոսկւոյ չափ կը կարծուէր, բացէ ի բաց մերժեց Նախարարաց այս առաջարկութիւնը։*

*Ասոր վրայ պատերազմական գործոց Նախարար՝ Հիւսէյին Ավնի փաշա, եւ մեծ եպարքոս՝ Մէհէմէտ Րիւշտի փաշա՝ որոնք ժամանակէ մ՚ի վեր մտքերնին դրած էին Սուլթանը գահէն վար առնուլ, ըստ օրինաց Օսմանեան ազգին, Շէյխ-իւլ-իսլամին հարցում մ՚ուղղեցին հասկնալու համար թէ՝ կրօնքը հրաման կուտա՞յ թէ ոչ իրենց այս խորհրդոյն ։*

*Հասան Խայրուլլահ էֆէնտի « Այո » վճիռ արձակեց ։*

*Հիւսէյին Ավնի փաշա՝ կրօնից պաշտպանութեամբը՝ անմիջապէս սկսաւ հարկ եղած պատրաստութիւնները տեսնել։ Զինուորական հրամանատարաց հրահանգներ տրուեցան որ Տօլմա Պաղչէի պալատը ցամաքէն պաշարելու համար պատրաստ կենան իրենց զօրքերովը , եւ զրահաւորաց մակոյկներն ալ հրաման առացան ծովուն կողմի դռները պահպանելու ։*

*Ինչպէս որ յայտնի է՝ այս դաւադրութիւնը ամսոյն երեսունին գիշերը պիտի գործադրուէր . բայց Մուրատ էֆէնտի 29 ին՝ երկուշաբթի օրը միայն իմացաւ։*

*Ամսոյն ճիշդ երեսունին՝ Ապտիւլ Ազիզ տեսնելով որ բազմաթիւ զօրք բարձած նաւ մը պալատան առջին խարիսխ նետելու վրայ է, կսկսի շփոթիլ , եւ Հիւսէյին փաշան պալատը կանչել կուտայ։ Հիւսէյին փաշա պատասխան կը ղրկէ թէ պատերազմական գործոց պաշտօնատունը կարեւոր գործեր ունենալով չկրնար գալ։ Իրիկունը նորէն կանչել կուտայ՝ նա ալ այս անգամ կը պատասխանէ թէ հիւանդ է, եւ վախնալով որ մի գուցէ գործն երեւան ելնէ , արտորնօք մեծ եպարքոսին կը դիմէ դաւադրութեան գործադրութիւնը փութացնելու համար ։*

*Մէհէմէտ Րիւշտի փաշա անմիջապէս պատերազմական գործոց պաշտօնատունը հըրաւիրեց այս գաղտնեաց տեղեակ եղող բոլոր նախարարներն ու բարձրաստիճան անձինքն , եւ զօրաց ու զրահաւորաց հըրաման ղրկեց կանխաւ իրենց ցոյց տըրուած տեղերը երթալ կենալու ։*

*Միւս կողմանէ ալ Հիւսէյին Ավնի փաշա ուղղակի Մուրատ էֆէնտիի տունը գնաց, եւ վեց հարուածեան րեվօլվըր մը*

ձեռքը բռնած անոր ներկայանալով՝ «ժամանակն եկաւ, պէտք է որ հետս գաս.» ըսաւ ։ Իշխանն երկչոտ բնութիւն մ'ունենալուն՝ կը վարանէր այս խօսքին վրայ. բայց Հիւսէյին փաշա մահն աչքն առած ըլլալով՝ սկսաւ բարկութեամբ խօսիլ։ Այն ատեն Մուրատ էֆէնտի վախնալով՝ փաշային հետ դուրս ելաւ եւ Սերասքերի Դուռն եկաւ, ուր մտնելուն պէս՝ հոն ներկայ գտնուող մեծամեծք իբրեւ Սուլթան ողջունեցին զինքը ։



ՉԷՐՆԱՅԵՎ ՁՕՐԱՊԵՏ

Պատերազմական խորհրդոյ նախագահ՝ Րէտիֆ փաշա գիշերուան ժամը եօթնին Տօլմա Պաղչէի պալատը գնաց՝ այս կատարուած յեղափոխութիւնը Ապտիւլ Ազիզի իմացնելու։ Ապտիւլ Ազիզ խոր քնոյ մէջ ըլլալով՝ ներքինապետը արթնցուց զայն, եւ կայսերական սահակի հրամանագիրն անոր տուաւ, որ էր. «Վեհ. Կայսեր Էջտարէոֆը հրաման եղած է քեզ որ ընտանեացդ հետ պալատէն ելնես եւ Թօփ Գափուի պալատն երթաս։»

Ապտիւլ Ազիզ չափէ դուրս կատղելով սկսաւ ձեռքին եկածը կոտրել խորտակել, բայց ներքինապետը պալատին առջեւ խռնուած զօրքերը ցուցընելով , «Որչափ դիմադրութիւն ընես անօգուտ է , ըսաւ, վասն զի պալատը չորս կողմանէ պաշարուած է։» Այս խօսքին վրայ գահազուրկ վեհապետն իսկոյն հանդարտեցաւ , եւ գլուխը խոնարհեցնելով՝ «Աստուծոյ կամքն ըլլայ» մրմնջեց ։

Յետոյ մայրն ու որդիքն արթնցնել տուաւ, եւ ամենքնին ալ ծովեզերքը սպասող նաւակը գացին. սակայն Ապտիւլ Ազիզ նաւակը մտած ժամանակ նորէն կատաղութիւնը բռնելով՝ «Եթէ գիտնայի, պոռաց, այն Մուրատին ինչ տեսակ տունկ ըլլալը՝ թունով կը ջրէի զինքը ։»

Այս եղելութենէն հինգ օր ետքը՝ լուր եղաւ թէ Ապտիւլ Ազիզ՝ որ Թօփ Գափուի պալատէն Չրաղանի պալատը փոխադրուած էր, մկրատով մը արմկին երակները կտրելով ինքզինքն սպաններ է իր փակուած սենեկին մէջ։

Նորընտիր վեհապետն ալ իր նախորդացը պէս մեծամեծ խոստումներ տուաւ. սակայն իր սուլթան հրատարակուած գիշերուան եւ Չերքէզ Հասանի ոճրագործութեան դէպքերն խիստ գէշ տպաւորութիւն ըրած ըլլալով իր վրայ՝ արիւնը խանգարեցաւ, խելքը ցնորեցաւ եւ անբուժելի եղաւ իր այս հիւանդութիւնը ։

Այս պատճառաւ երեք ամիս ետքը՝ գահէն վար առնուելով՝ իր եղբայրը ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ Բ. կայսր հրատարակեցաւ։

# Գլուխ Չորրորդ

## 1876 ՅՈՒԼԻՍԷՆ ՄԻՆՉԵՒ 1877 ԱՊՐԻԼ

### ՊԱՏԵՐԱԶՄ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ ՍԵՐՎԻՈՅ ԵՒ ԳԱՐԱՏԱՂԻ ՀԵՏ

Սուլթան Մուրատ գահակալելուն պէս՝ ընդհանուր ներում շնորհուեցաւ ապստամբաց եւ վեց շաբթուան պայմանաժամ տրուեցաւ յանձնառու ըլլալու համար։

Յառաջագոյն շնորհեալ բարենորոգումները Հէրսէկի եւ Պոսնիոյ մէջ գործադրելու կրկին խոստում եղաւ ։ Սակայն ապստամբք՝ որ տէրութեանց կողմանէ Անտրաշիի ծանուցագրով ներկայացեալ այն նախկին խոստմանց հաւատացած չէին, այս անգամ աւելի կասկած ունենալով՝ յանձնառու չեղան ։ Այսու ամենայնիւ՝ ժամանակ մը առանց կռուոյ անցաւ, որովհետեւ Տաճկաստանի կողմանէ թշնամութիւնք դադրած ըլլալէն զատ՝ ապստամբութեան պարագլուխք կը սպասէին տեսնել թէ ինչ պիտի ընեն Գարատաղ եւ Սերվիա ։

Ապստամբութեան սկիզբէն ի վեր՝ այս երկու իշխանապետութիւնք այնպիսի երկդիմի ընթացք մը բռնած էին, որ յայտնի կ'ըլլար թէ չպիտի կրնային այլեւս երկար ժամանակ դիմադրել իրենց հպատակաց յուզմանն ու խլրտմանը ։ Սերվիայէն ու Գարատաղէն բազմաթիւ կամաւորներ սահմանագլուխն անցնելով ապստամբաց հետ միացած էին, եւ գրեթէ անոնց կէսը կը կազմէին։ Տաճիկներն՝ Նիքսիչի մօտ իրենց կրած ձախողուածոց պատճառը բացատրելու համար՝ կ'ըսէին թէ Գարատաղցիներէ բաղկացեալ ամբողջ վաշտեր տեսած էին ապստամբաց մէջ ։

Յունիս 8ին մեծ եպարքոսն հետեւեալ հեռագիրն ուղղելով երկու իշխանաց՝ բացատրութիւն կը պահանջէր անոնց պահեստի զօրաց զինուելուն վրայ.

«Դուռն անտարբեր աչօք չկրնար դիտել այս օրերս կատարուած սպառազինութիւնքն։ Մեր մէջ եղած բարեկամութիւնը չաւրուելու համար, կստիպուիմ բացատրութիւններ խնդրել այդ սպառազինութեանց նպատակին վրայ ։»

Միլան իշխանը ջանաց իր վարմունքը արդարացնել ըսելով թէ՝ իր ձեռք առած բոլոր միջոցներն ալ սոսկ պաշտպանողական էին ։

«Իշխանապետութեան երկրին վրայ պաշը-պօզուգներուն, Չէրքէզներուն եւ Առնաուտներուն զէն ի ձեռին ըրած արշաւանքն եւ յարձակմունքն երբէք դադրած չեն մինչեւ ցարդ, կըսէ Միլան իշխանը իւր պատասխանագրոյն մէջ, եւ տեղի տուած են որ կառավարութիւնս արդարացի տրտունջներ ըրած է գաւառի ընդհանուր կուսակալին եւ մինչեւ անգամ Բարձրագոյն Դրան։ Սոյն տրտունջներուն վրայ՝ կայսերական կառավարութիւնդ որոշած է անոնց քննութիւնը Ֆայիզ պէյի յանձնել եւ իմ կառավարութեանս հրաւէր կարդալ գործակալ մ'ընտրելու։ Այս հրաւիրանաց վրայ Օրէսքօվիչ գնդապետը պաշտօն առաւ զմեզ ներկայացնելու։ Վստահութեամբ կը սպասեմ այդ պաշտօնին արդեանցը, որով յայտնի պիտի ըլլայ թէ ո՛ր կողմանէ եղեր է այն յարձակումը որ յիշուած է Ձեր վսեմութեան գրութեան մէջ։ Ի սկզբան հասնող վրդովիչ տեղեկութեանց վրայ սահմանագլուխն ղրկուած զօրքն ետ կանչուեցաւ առջի օր։ Սերվիական զօրք չկայ այժմ եւ ոչ ուրեք, բացի պաշտպանողական աշխատութեանց զբաղեալ մարդոցմէ։ Այսու ամենայնիւ՝ կայսերական բանակն իւր բռնած դիրքերէն չխախտիր, երկաթէ անուրով մը կը շրջապատէ զՍերվիա, եւ հասարակաց միտքը շարունակ կը վրդովէ երկիւղներով, որոյ պատճառաւ վաճառականութիւնն եւ ձեռարուեստք ընդհատեցան բոլոր երկրին մէջ։ Վերջին վեց շաբթուան միջոցին ապստամբութեան մինչեւ Սերվիոյ շրջակայքը տարածուիլը տեսնելով, մեր սահմանագլխոց գաւառները հրդեհ եւ աւարառութիւնք գործող անկիրթ հրոսակաց արշաւանաց մէջ մնացած ըլլալով եւ Սերվիոյ դէմ սպառնացող կայսերական բանակին կացութիւնը դիտելով՝ Ազգային ժողովը հարկ դրաւ իմ կառավարութեանս վրայ երկրին ապահովութեանը հսկելու, եւ այս նպատակաւ իմ տրամադրութեանս յանձնեց պէտք եղած միջոցները։»

Գարատաղի իշխանն ալ խիստ քաղաքավարական խօսքերով տրտունջ յայտնեց՝ իւր սահմանագլխոց վրայ զօրք գումարուելուն դէմ։ Բ. Դուռն ալ պատասխանեց ըսելով թէ՝ իշխանին չափաւոր վարմունքը կը գնահատէ եւ անտես չընելով պիտի փոխարինէ յարմար ժամանակին։ Ուստի այնպէս կարծուեցաւ թէ Օսմանեան դիւանագիտութիւնը Գարատաղի հետ լաւ վարուելով՝ պիտի ջանար խզել Նիքիթա իշխանին եւ Սերվիոյ կառավարութեան մէջ տեղ եղած գաղտնի դաշնագիրը.

Սակայն պատերազմի պատրաստութիւնք դադրեալ յառաջ տարուեցան ժիր գործունէութեամբ։ Պելկրատի մէջ ազգային փոխառութիւն մ'եղաւ։ Առձեռն պատրաստ դրամ ունենալու համար՝ բոլոր պաշտօնատարաց ամսականները զեղչուեցան. կանայք իրենց գոհարներն ու թանկագին զարդերը նուէր ըրին, լուր ելաւ թէ Սերվիա երդուեալ է Օսմանեան կայսրութիւնը ջնջելու, պատերազմն անխուսափելի եղաւ, եւ տէրութեանց բոլոր ազդարարութիւնք չյաջողեցան Սերվիացիներն հանդարտեցնելու։

Զէրնայեվ ռուս զօրապետին սերվիական զօրաց գլխաւոր հրամանատար ընտրուիլն ալ Եւրոպայի մէջ ընդհանուր մտատանջութիւն պատճառեց։ Այս զօրապետը որչափ ալ որ Զարին երեսէն ինկած մէկն էր, սակայն եւ այնպէս ռուս մ'էր. եւ Սերվիոյ այս ձեռնարկած գործն իւր ունեցած զօրութեանց նայելով՝ այնքան մեծ բան մ'էր, որ կը կարծուէր թէ Ռուսիոյ կողմանէ օգնութիւն պիտի ըլլայ իրեն, ինչպէս որ ապագայ դէպքերն այս ենթադրութիւնը հաստատեցին. վասն զի Ռուսիոյ կողմանէ անուղղակի կերպիւ անընդհատ դրամ եւ մարդ կը ղրկուէր Սերվիոյ օգնութեան։ Սերվիա Տաճկաստանի բուն կացութեան ինչպէս նաեւ իւր իսկ կացութեան վրայ սխալ տեղեկութիւններ առած էր. Տաճկաց տարի մը կռուելով ապստամբութեան յաղթել չկարենալէն.

այնպէս համոզուած ըլլալու էին Սերվիացիք թէ Օսմանեան կայսրութիւնն ոչ դրամ ունէր ոչ զինուոր, եւ թէ մէկ քանի հազար ապստամբաց հետ գլուխ ելնել չը կրցող տէրութիւն մը՝ կանոնաւոր զօրաց յարձակման չպիտի կրնար դիմադրել ։

Սերվիոյ կառավարութեան կողմանէ Կ. Պոլիս ղրկուած պատուիրակ մը յունիսի վերջերը մեծ եպարքոսին վերջնագիր մը յանձնեց, որ պատերազմի յայտարարութիւն ըսել էր։ Այն գրութեան հետեւեալ մասերն արժան կը համարիմք յառաջ բերել աստանօր.

«Կայսերական զօրաց մեծամեծ շարժումներ կըլլան դէպի Սերվիոյ սահմանագլուխները։ Հիւսէյին Աւնի փաշայի խորհուրդը կը սկսի գործադրուիլ, որ ուրիշ բան չէր՝ բայց եթէ զՍերվիա աւարի տալ պաշը-պօզուգներու, Չէրքէզներու, Առնաուտներու եւ մինչեւ անգամ Ասիոյ խորերէն բերուած Քիւրտերու՝ վայրագ ջոկերներ արձակելով։ Այդ արիւնարբու հրոսակները մեր սահմանագլխոց մօտ գումարուելով՝ կազմ եւ պատրաստ են իշխանապետութեան երկիրներուն վրայ նորոգելու այն զարհուրելի տեսիլներն որոց հանդիսավայր եղաւ Պուլղարիա ։ Այս վտանգին մերձենալուն վրայ՝ մասնաւոր պատուիրակ մը Կոստանդնուպոլիս ղրկելէ ետ կենալու ստիպուեցայ, եւ ժամանակ չկորսնցնելու համար՝ պարտաւորեցայ ուղղակի Ձեր Բարձրութեան դիմելու, որպէս զի միաբանութիւն մը ձեռք բերեմք՝ որում կը փափաքիմ ամենայն անձկանօք ։

«Ահա, Բարձրաշուք Տէր, այս միաբանութեան հասնելու համար է որ կը պարտաւորիմ Ձեր ուշադրութիւնն հրաւիրել սոյն համաճարակ հրդեհին ծագման վրայ՝ որոյ օր ըստ օրէ աւելի ընդարձակիլը կը տեսնեմք ։

«Պոսնայի եւ Հէրսէկի քրիստոնեայ ժողովուրդք՝ բնիկ պէյերուն բռնութիւններէն եւ վարչութեան անդամոց զեղծմունքէն ճարերնին հատնելով՝ մերթ ընդ մերթ զէնք ի ձեռին կը բողոքեն առ հասարակ իբր անհանդուրժելի ճանչցուած իրաց վիճակի մը դէմ ։

«Այս մէն մի շարժմունք միայն ծայրայեղ գրգռութիւն պատճառելով՝ նոր դըրգում մը կուտան ժողովրդոց մոլեռանդութեան, նորանոր պարտականութիւններ դնելով Բարձրագոյն Դրան վրայ՝ կը ստիպեն զայն զսպողական միջոցներ ձեռք առնուլ, եւ նոր վտանգ կը հանեն եւրոպական խաղաղութեան դէմ ։

« Այս կացութիւնը չկրնար եւ ոչ ումեք նպաստաւոր ըլլալ, բայց վնասակար է մանաւանդ Սերվիոյ իշխանապետութեան՝ այն երկիրներուն մերձակայ ըլլալուն եւ ամեն տեսակ շահեր վտանգի ներքեւ գտնուելուն պատճառաւ ։

«Կատարեալ անդորրութեան ժամանակներու մէջ անգամ սերվիական կառավարութիւնն առիթ ունէր շարունակ Բարձրագոյն Դրան գանգատելու՝ որ Պոսնայի տեղական իշխանութիւնք խոչնդոտներ կը հանեն այն ամեն կերպ յարաբերութեանց դէմ՝ զորս ունէին Սերվիացիք այդ գաւառաց ժողովրդոց հետ ։ Մեր վաճառականներէն, արուեստաւորներէն կամ երկրագործներէն անոնք որ իրենց անձնական գործոց համար հոն կերթային, կանոնաւոր անցագիր ալ եթէ ունենային՝ կը բանտարկուէին, կը խոշտանգուէին, կը կողոպտուէին եւ մինչեւ անգամ կը սպաննուէին շատերը, եւ բոլոր ասոնք կըլլային այնպիսի պատրուակներով՝ զորս Պոսնայի իշխանութիւնք երբէք չեն կրցած հաստատել ։

«Պոսնայի եւ Հէրսէկի մէջ ճանապարհորդող մեր իշխեցելոց ազատութեան, ընչից եւ կենաց դէմ բռնուած վարմունքն սոյն վերջին ժամանակաց մէջ յոյժ նուազեցուցին եւ աննշան բան մ՚ըրին Սերվիոյ վաճառականութիւնն՝ որ ժամանակաւ բաւական ճոխ էր այն տեղեաց մէջ ։

«Բայց Սերվիա միայն այս կողմանէ չէ

որ կը վնասուի երբ ապստամբական շարժում մը կը ծագի կայսրութեան այն գաւառաց մէջ որ իրեն կից են ։ Իշխանապետութեան ժողովրդոց զգացած բարոյական հակազդեցութիւնն միշտ յոյժ աղետաբեր եղած է. յայնժամ բոլոր շահերը կը վնասուին, բոլոր կիրքերը շղթայազերծ կըլլան, եւ իմ կառավարութիւնս խիստ տագնապալից կացութեան մը մէջ կը գտնուի ։ Ամեն բանէ զուրկ ապաստարելոց բազմութիւն մը կը լեցուի Իշխանապետութեան մէջ՝ բեռ ըլլալով հասա-



ԱՀՄԷՏ ԷՑՈՒՊ ՓԱՇԱ

րակութեան եւ Պետութեան ։ Ցարձակմունք կը յաճախեն մեր սահմանագլխոց վրայ, մեր պահակները կը սպաննուին. աւարառու հրոսակներ՝ շատ անգամ հետերնին ունենալով կանոնաւոր զօրաց ջոկատներ՝ մինչեւ մեր գիւղերը կը մտնեն, եկեղեցիները կը կողոպտեն, յանկարծ կը յարձակին մեկուսի շինուած տանց վրայ եւ անասունները կը տանին՝ անցած տեղերնին հրդեհ եւ սպանութիւն գործելով ։ Այս ասպատակութիւնք մեր ժողովուրդները կը ստիպեն ի զէն դիմելու՝ կեանքերնին եւ ինչքերնին պահպանելու համար ։ Արտորէից աշխատութիւնք բարձիթողի կըլլան, վաճառականութիւնը կը դադրի եւ ամենեւին վարկ չմնար ։»

Ի վերջ գրութեան՝ Միլան իշխանը խելքէ մտքէ չանցած միջոց մը կառաջարկէր ապստամբութիւնը խաղաղեցնելու համար.

«Այդ միջոցն է, կըսէր, Կայսրութեան եւ Իշխանապետութեան համանգամայն յատուկ եղող շահերուն ի նպաստ գործածել Սերվիոյ զօրութիւնքը ։ Ապստամբ ժողովրդոց համասեռ գտնուող տարրերէ բաղկացեալ սերվիական բանակն անշուշտ գրկատարած պիտի ընդունուէր բնակչաց մեծագոյն մասին կողմանէ ։ Ուրեմն կը յայտնեմ Ձեր Բարձրութեան որ՝ Կայսրութեան եւ Իշխանապետութեան շահուց նպաստաւոր իրաց վիճակ մը յառաջ բերելու համար Սերվիոյ զինուորական զօրութիւնքն գործածելով միմեանց աջակցելու նպատակաւ՝ որոշեցի այս խորհուրդը կատարել ։»

Միլան իշխանին այս առաջարկութիւնն ուրիշ բան չէր բայց եթէ Պոսնան եւ Հէրսէկն իւր երկրին կցել ։ Այսպիսի գրութեան մը պատասխան չէր կրնար տրըւիլ, ինչպէս որ չտրուեցաւ ալ ։ Գարա-

տաղի իշխանն իւր յարձակողական դիտումներն աւելի անկեղծութեամբ յայտնեց ըսելով. «Դիտելով որ վտանգներն հետզհետէ մեծնալով իրաց բնութեամբ իմ երկրիս վրայ գալ կը սպառնան, նկատելով որ իմ օգնութեանս իրաւամբ կարօտ գտնուող գաւառներն անվերջանալի պատերազմաւ աւերակ կը դառնան, անյապաղ վերջնական որոշում մ'ընելու բացարձակ հարկ մը կը տեսնեմ։»

Միլան իշխանն՝ որ մէկ քանի օրէ ի վեր Ալէքսինացի ընդհանուր զօրանիստը կը գտնուէր, յուլիս 1 ին իւր ժողովրդեան յայտարարութիւն մ'ուղղեց՝ որով կը յայտնէր թէ Տաճկաստան զինքն ստիպած էր պատերազմ ընելու, եւ Պոսնացիները Հէրսէկցիները, Գարատաղցիները, Պուլղարներն ու Յոյները իրեն պիտի օգնեն։ Սակայն Յոյնք սլաւաց հակառակ տարր մ'ըլլալով՝ ամենեւին օգնութիւն չըրին, եւ Պուլղարք կոտորածներէն ահաբեկ եղած ըլլալով՝ տեղերնէն անգամ չշարժեցան։ Սերվիացիք պէտք էր որ նախատեսէին այս բաները։ Իսկ Տաճիկք վտանգին մեծութիւնը դիտելով 120,000 մարդ թափեցին Սերվիոյ սահմանագլխոց վրայ։

Յուլիս 2 ին սերվիական զօրքը սահմանագլուխն անցաւ Նիշի դիմացէն։

ՅԱՂԹՈՒԹԻՒՆՔ ԳԱՐԱՏԱՂՑԻՈՑ ԵՒ ՊԱՐՏՈՒԹԻՒՆՔ ՍԵՐՎԻԱՑԻՈՑ

Սքանչելի դիւցազնական ջանիւք՝ Գարատաղ կարող եղաւ 20000 մարդ զինել եւ յարձակիլ արիաբար երկու կէտերու վրայ, այն է՝ հարաւէն դէպ ի Փոտկորիցա եւ հիւսիսէն դէպ ի Մոսթար։ Տաճիկները նախ յանկարծակիի եկան, սակայն շուտով յետս մղեցին յարձակողները, եւ կռիւը կեդրոնացաւ Փոտկորիցայի, Մէտոնի եւ Նիքսիչի բերդերուն շուրջը։ Գարատաղցիք այս լեռնային կռիւներուն մէջ թէպէտեւ գրեթէ միշտ յաղթական կելնէին, սակայն մեծամեծ առաւելութիւններ եւ օգուտներ չը կըրցան ձեռք բերել իրենց այն յաղթանակներովը։ Ոչ Տաճիկները կրնային իրենց երկիրը մտնել, ոչ ալ իրենք կրնային անոնց բանակները ճեղքել անցնիլ, որովհետեւ սակաւաձեռն էին եւ իրենց լեռներէն դուրս բան մը չէին կրնար ընել։

Ամենէն նշանաւոր կռիւը Գուչիի մօտ եղաւ օգոստոս 13 ին։ 5000 Գարատաղցիք յարձակեցան 28 վաշտ կանոնաւոր զօրաց, 3000 Չէյպէքներու եւ 5000 պաշը-պօզուգներու վրայ, եւ անոնցմէ 4700 մարդ սպաննեցին։

Սակայն այս յաջողութիւնները չկրցան փոխարէն մ'ըլլալ Սերվիացւոց իրարու վրայ կրած պարտութեանց՝ որով Պելկրատի ճանապարհը տաճկական բանակին առջեւ բացուեցաւ,

Բաղդախնդիր Չէրնայեվ զօրապետն՝ որ 1900 մարդով Թիւրքիստանի 40,000 բնակիչ ունեցող Թաշքէնտ քաղաքն առած ըլլալուն համար համբաւաւոր եղած էր, եթէ իւր տրամադրութեան ներքեւ գտնուած զօրութիւններն եւ Տաճկաց ոյժը լաւ հասկցած ըլլար, հետեւեալ պատերազմի յատակագիծն ընտրելու էր, որմէ լաւագոյն մը չկար իրեն համար։ Բոլոր ոյժը մէկ կէտի վրայ ժողվելու էր, որովհետեւ իւր հրամանաց ներքեւ գտնուած 80—90000 մարդոց մէջ հազիւ 15000 լաւ կրթեալ կանոնաւոր զօրք կար եւ մնացեալներն թերավարժ ազգապահ զօրք էին, Պոսնան եւ Հէրսէկը Տաճկաստանի մնացեալ մասին կցող տեսակ մը պարանոցը այն է՝ Նովի Պազարը գրաւելու էր, այս կերպիւ այն երկու գաւառաց մէջ գտնուած տաճիկ զօրաց հաղորդակցութիւնքը խզելու էր բոլորովին, եւ Գարատաղցւոց հետ ձեռք ձեռքի տալով Տաճկաց դէմ գործելու էր։ Ապստամբ ժողովուրդներն այսպէս կրնար բոլորովին ազատել, եւ անոնցմէ զինուոր առնլով իւր բանակն ստուարացնել։

Չէրնայեվ փոխանակ այսպէս ընելու,

չորս բանակ կազմեց սոյն 80—90000 Սերվիացիներէն, եւ զանոնք զատելով դրկեց՝ մին արեւելք՝ Լէշեանին զօրապետին հրամանատարութեան տակ՝ ի Զայչար, միւսն արեւմուտք՝ Ռանքօ Ալիմպիչի հրամանաց ներքեւ՝ ստորին Տրինայի ափանց վրայ, երրորդն հարաւային արեւմուտք՝ Ցախ զօրապետին առաջնորդութեամբն՝ Եավօրի կողմը, եւ չորրորդոյն ալ ինքն սկսաւ Սօֆիայի վրայ քալել յանդգնաբար։ Պատերազմին սկսելէն տասն օր ետքը՝ Զայչար առնուեցաւ Օսման փաշայի ձեռօք. Ալիմպիչ չյաջողեցաւ Պիէլինայի վրայ ըրած յարձակմանը մէջ. Ցախ՝ Եավօրի կողմն յաղթուեցաւ եւ վիրաւորուեցաւ, եւ նոյն ինքն Չէրնայեւ յետս մղուեցաւ սերվիական երկրին վրայ՝ Ապտիւլ Քէրիմ փաշայի՝ այն է՝ պատերազմի պաշտօնէին ձեռօք, որ եկած էր տաճկաց բանակին հրամանատարութիւնը ստանձնելու ։

Չէրնայեւ այն ժամանակ կրցաւ ստուգել թէ իւր զօրաց յատկութիւնքն պատերազմէն առաջ կարծուածին չափ չեն եղեր, այլ յոյժ ստորին։ Պատերազմին սկիզբները սերվիական գումարտակները վեհ արիութեամբ կը փայլէին, բայց անկարելի էր նկարագրել այն խառնակութիւնն որ կը տիրէր անոնց կարգերուն մէջ, ինչպէս նաեւ հրամանաց փոխանցման եւ մատակարարութեան գործոց մէջ։

Առաջին պարտութիւններէն յետոյ՝ այն խառն ամբոխը տակաւ առ տակաւ պակսեցաւ, զինքը խրախուսող խանդը չիջաւ յանկարծ, իւր գլխաւորին տաղանդին վրայ ունեցած վստահութիւնը կորոյս, ափշեցաւ Տաճկաց բազմութեանն ու զօրութեանը վրայ, իւր անզօրութիւնն ու ապիկարութիւնը զգալով՝ վհատեցաւ, անյօժար մտաւ կռուոյն ասպարէզը՝ յուսահատ շահատակութեան հրով վառեալ չըլլալով, եւ մէկ քանի հարիւր ռուս կամաւորաց գալստեանն ու Չէրնայեւի յոխորտանացն հակառակ՝ ակներեւ եղաւ թէ Սերվիոյ բանը լմնցած էր։

Դէպ ի Պելկրատ տանող ամենէն դիւրին բնական ճանապարհն է Մօրավայի հովիտը՝ որ երկու հաւասար մասերու կը բաժնէ զՍերվիա։ Մուտքը պահպանուած է երկու կարգ պաշտպանողական ամրութիւններով՝ որք են Ալէքսինաց բերդաքաղաքն եւ Տէլիկրատի ահեղ պատնէշները։ Այս կրկին ամրութիւնք Մօրավայի աջակողմեան եզերաց վրայ են։

Սոյն հզօր պատուարը խրամատելու փորձ մ'ընելէ առաջ, Ապտիւլ Քէրիմ փաշա ուզեց ապահովել իւր աջակողմն՝ որոյ վրայ Լէշեանինի զօրախումբերն անդադար յարձակում կընէին։ Սորա բանակին եւ Չէրնայեւի հաղորդակցութիւնքն այն ճանապարհով կըլլային որ Ալէքսինացէն Զայչար կը տանի Թիմօքի հովտին մէջէն, եւ կանցնի Քնիազէվաց բերդաքաղաքէն։ Ուստի որոշուեցաւ Քնիազէվացն առնուլ։

Օսման փաշայի յանձնուեցաւ Լէշեանինն արգելուլ Զայչարը գրաւող զօրօք, եւ Նիշի բանակն երկու գնդի բաժնելով՝ Քնիազէվացի վրայ քալեց։

Յուլիս 28էն 29 լուսնալու գիշերը՝ առաջին գունդն Ահմէտ Էյուպ փաշայի հրամանատարութեամբն յարձակողական շարժում մ'ըրաւ դէպ ի Կրամատա՝ որ Սերվիոյ սահմանագլխոյն վրայ քաղաք մ'է։ 29ին կէս օրին յառաջապահ զօրքն Հաֆըզ փաշայի հրամանաց ներքեւ վանեց թշնամին իւր բոլոր դիրքերէն։ Սերվիացիք յայնժամ Տէրպէնտի վրայ քաշուեցան. հետեւեալ օրն Տէրպէնտն ալ թողլով մեկնեցան տաճկաց մօտենալուն վրայ։ Նոյն օրը՝ Սիւլէյման փաշա միւս գնդին գլուխն անցած Սերվիա մտաւ Փանտիրօլօյի (Պանտէրալը) կողմէն, եւ 31 ին միանալով Ահմէտ Էյուպ փաշայի գնդին հետ՝ եօթն ժամ կռուեցաւ եւ Թիմօքի աջակողմեան ափանց վրայ եղած բոլոր բարձունքը գրաւեց։

Հետեւեալ երկու օրերը հանգիստ ընելու թողլ տրուեցաւ զօրաց՝ որք քաջաբար

կռուած էին, եւ գետն անցնելու պատրաստութիւններ տեսնուեցան։ Օգոստոս 5ին՝ կռիւը վերստին սկսաւ, Սերվիացիք նորէն յաղթուեցան, եւ Քնիաժէվացը թողլով փախչելով, Տաճիկք ներս մտան։

Տաճկաց այս յաղթութեանը վրայ տասն եւ հինգ օրի չափ կռիւ չեղաւ, միայն զօրաց շարժումներ եւ համախմբութիւններ կըլլային, որովք 100000ի հասաւ Մորավայի հովտին մէջ գումարեալ Տաճիկ զօրաց թիւն։ Թշնամութիւնք վերստին սկսան ամսոյն 18ին։ Ահմէտ Էյուպ փաշա 50,000 մարդով յարձակեցաւ սերվիական բանակին ձախ թեւոյն վրայ՝ լեռներու մէջ երկու օրի չափ քալելէ յետոյ։ Սոյն միջոցին տաճիկ զինուորն ականերեւ ապացոյց մը տուաւ իւր զարմանալի տոկուն կազմութեան՝ օրն ի բուն քալելով, լոկ ջուր խմելով, մէկ քանի հատ սոխ ուտելով, Սպանիացի զինուորէն աւելի խոնջութեան դիմանալով։ Ահմէտ Էյուպ փաշա յաջողութեամբ կռուեցաւ օգոստոս 20ին, 21ին, 22ին եւ 23ին, բայց 24ին նոր եւ աւելի սաստիկ ճիգ մը թափելէ յետոյ՝ մեծ կորուստ կրեց եւ ստիպուեցաւ կանգ առնուլ։ Այս բանը Սերվիացիք երեւելի յաղթութիւն մը կրցան համարել իրենց համար։

Այնուհետեւ Տաճկաց յատակագիծն յայտնի կերպիւ փոխուեցաւ։ Ալեքսինացն յարձակմամբ գրաւելէ յուսահատելով՝ որոշեցին Մորավայի ձախ եզերքէն շրջան մ'ընել եւ ուղղակի դէպ ի Պելկրատ խաղալ, առանց Ալեքսինացի եւ Տէլիկրատի վրայ ճիգ թափելու։ Այս գործողութիւնը մէկ քանի տեսակ վտանգներ ունէր, հարկ էր Ահմէտ Էյուպ փաշայի գունդը աջակողմեան եզերքէն ձախ եզերաց վրայ անցընել, եւ կողմնակի խաղացք մ'ընել այնպիսի ճանապարհէ մը որ բաւական դէշ էր տաճկական թնդանօթաց համար անգամ. սոյն ճանապարհը թշնամւոյն մօտէն կանցնէր, եւ անկէ զատ ուրիշ չկար։ Հարկ էր նաեւ որ այս շարժումը կատարուած ժամանակ՝ Չէրնայեւ չկասկածէր չիմանար։ Ուստի կեղծ ցոյցերը շարունակուեցան աջակողմեան գետեզրին վրայ ամսոյն 25ին, 26ին, 27ին, 28ին եւ 29ին։

Այս յարձակումներէն եւ ոչ մին կատարելապէս յետս մղուեցաւ, եւ սակայն կերեւի թէ մինչեւ վերջը Սերվիացիք չը կասկածեցան թէ գետին աջ եզերաց վրայ իրենց դիմացը տասն եւ հինգ կամ քսան հազար զօրք միայն կար, զորս Ալի Սայիպ փաշա Նիշէն բերելով Էյուպ փաշայի տեղն անցած էր. մինչդեռ այս վերջինն ալ Սուփօվացի վերի կողմէն նաւակամուրջներ ձգելով՝ ձախ եզերքը կանցնէր։ Քիչ մը յետոյ Ալի Սայիպ փաշա ալ անցաւ Մորավայէն, իւր գունդն յառաջ վարեց, եւ երկու Մորավաներուն ձեւացուցած եռանկիւնը գրեթէ ամբողջ գրաւեց։ Խիստ զարմանալի է Տաճկաց բանակին այս շարժմանց վրայ Չէրնայեվին տեղեկութիւն առած չըլլալը։

Օգոստոս 30ին եւ 31ին՝ Բէշթայէն եւ Կոստանդնուպոլսէն տրուած հեռագրաները Եւրոպայի կը ծանուցանէին զանոնք՝ մինչդեռ ինքը կուրաբար անշարժ եւ հանդարտ կը կենար։

Սակայն վերջապէս սեպտեմբեր 1ին՝ մտատանջութիւն մը ցոյց տուաւ՝ գետին ձախ եզերքը տաճիկ զօրաց համախմբութիւններ ըլլալուն վրայ, եւ տեսնելով որ ստորին Մորավայի կողմը իրմէ առաջ անցնելու եւ Տէլիկրատի հետ ունեցած հաղորդակցութիւնքը կտրելու կը սպառնան՝ որոշեց սերվիական բանակին մեծագոյն մասը գետին ձախակողմն անցընել եւ ջանալ Ահմէտ Էյուպ փաշայի յառաջխաղացութիւնն արգելուլ։ Օսմանեան գունդերը լաւ տեղեր բռնած էին, եւ յետս կոյս դարձան Չէրնայեվի յարձակման դէմ դնելու համար։ Սոքա լայն կիսաբոլոր մը կը ձեւացնէին Մորավայի դիմաց, մինչդեռ Սերվիացիք կռնակնին դէպ ի նոյն գետը դարձուցած էին։ Ճակատամարտն սկսաւ ռմբաձգութեան կատաղի կռուով մը յո-



ԴԵՍՊԱՆԱԺՈՂՈՎ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ

բուռ տաճկաց Թնդանօթները մեծ դըժուարութեամբ եւ մեծ կորուստով կրցան գերազանց հանդիսանալ եւ սերվիական Թնդանօթաց կրակը մարել։ Ասոր հակառակ՝ սերվիական հետեւակազօրը չկրցաւ տոկալ՝ որքան ջանք որ ըրին անոնց հրամայող բազմաթիւ ռուս սպայք, եւ ճակատամարտին նոր սկսած ժամանակն անգամ ամբողջ գումարտակներ ցիրուցան եղան, երբ տակաւին իրենց դէմ սաստիկ յարձակում մը չէր եղած։ Ցուպրուտ ճակատամարտին՝ բոլոր հետեւակազօրաց մէջ անհաւասարապէս ինկաւ, եւ խիստ քիչ գունդեր կարգաւ ետ քաշուեցան կռուոյն ասպարէզէն։ Միայն Թնդանօթները մինչեւ վերջը լաւ բանեցան։

Կերեւի թէ Տաճիկներն նոյն երեկոյին հասկցած էին իրենց յաղթութեան որքան մեծ ըլլալը, եւ երբ անկէ օգուտ քաղելու պատրաստուեցան՝ Կոստանդնուպոլսէն հրաման հասաւ Ապտիւլ Քէրիմ փաշայի առժամանակեայ կերպիւ թշնամութիւնքը դադրեցնելու։ Դիւանագիտութիւնը նոր փորձ մը կընէր խաղաղութիւնը հաստատելու։

ՆՈՐ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՔ

Օգոստոս 24ին՝ Միլան իշխանն որ խիստ վհատեալ դարձած էր տասն օրէ ի վեր Փարաչինի զօրանիստէն, իւր քով կանչել տուաւ տէրութեանց ներկայացուցիչները եւ յայտնեց անոնց թէ՝ «Սերվիական կառավարութիւնն երաշխաւոր տէրութեանց բաղձանաց համակերպիլ ուզելով՝ եւ Բարձրագոյն Դրան ու Իշխանապետութեան մէջ վերստին լաւ յարաբերութիւններ հաստատուելուն փափաքելով՝ իրենց միջնորդութիւնը կը խնդրէ՝ թշնամութիւնները դադրեցնելու համար։

Բ. Դուռն՝ որոյ յաղթական զօրքն օր ըստ օրէ կը յառաջանար դէպ ի Սերվիոյ մայրաքաղաքը, Միլան իշխանին խնդրանքն իրեն բացուած խօսքերուն շատ ականջ չկախեց։ Հուսկ ապա Փարիզի դաշնագիրն ստորագրող տէրութեանց ուղղեալ յիշատակագրով մը յայտնեց թէ ինչ պայմաններով կը հաճի խաղաղութիւն կնքելու։ Այս պայմանները շատ խիստ երեւցան Սերվիոյ, որովհետեւ Տաճկաստանի անմիջական գերիշխանութեան ներքեւ կը դնէին զՍերվիա։

Առաջին երեք պայմաններն հետեւեալքն էին.

1°. Սերվիոյ իշխան եղող անձը պարտի մայրաքաղաքս գալ՝ իւր հպատակութեան մեծարանքը մատուցանելու համար Վեհափառ Սուլթանին.

2°. Այն չորս բերդերն՝ որ 1283ին (1867) հրովարտակաւ Սերվիոյ իշխանին պահպանութեանն յանձնուած էին միայն եւ դարձեալ կայսերական կառավարութեան ստացուածքը կը մնային, վերստին պիտի յանձնուին կայսերական զօրաց. եւ այս մասին՝ 1832 սեպտեմբեր 8ի ատենագրութեան տրամադրութեանց պէտք է ճշդիւ համակերպիլ.

3°. Ազգապահ զօրք պիտի չըլլայ. իշխանապետութեան մէջ բարեկարգութիւնը պահպանելու համար պէտք եղած զօրաց թիւը 10,000ը պիտի չանցնի, որք երկու չար Թնդանօթ միայն պիտի ունենան։»

Բ. Դուռը կը խոստանար թշնամութիւնները դադրեցնել՝ տէրութեանց պատասխանն առնելուն պէս։ Միանգամայն գաղտնաբար կը հրամայէր Ապտիւլ Քէրիմ փաշայի որ իւր զօրաց յառաջխաղացութիւնը կասեցնէ։

Այս միջոցին առաջին անգամ ռուսական քաղաքականութիւնը զինեալ միջամտութեան գաղափարներ երեւան կը հանէ։ Զարը մասնաւոր նամակ մը գրելով Աւստրիոյ կայսեր՝ կառաջարկէ միահաղոյն գրաւել Հէրսէկը, Պոսնան եւ Պուլղարիան՝ աւստրիական եւ ռուսական զօրօք. սակայն այս խորհուրդը չկատարուեցաւ։

Սեպտեմբեր 25ին՝ Կոստանդնուպոլսոյ

անգղիական դեսպան սըր Հէնրի Էլիօթ Լօրտ Տէրպիի ստորագրութեամբ գրութիւն մը մատոյց Բ. Դրան, որոյ մէջ եղած առաջարկութեանց տէրութիւնք հաւանութիւն տուած էին.

«Տաճկաստանի առաջարկած հաշտութեան պայմաններն անընդունելի են, հաճեցէք ուրեմն իբրեւ իրաւախոհութեան հիմունք առաջարկել հետեւեալ պայմաններն.

1°. Սերվիոյ եւ Գարատաղի նախկին վիճակներն կատարելապէս պահուելու են.

2°. Դուռն՝ վեց տէրութեանց եւ իւր կողմանէ ընդունուած ատենագրութիւն մը ստորագրելու է, որով պարտականութիւն պիտի ստանձնէ Պոսնայի եւ Հէրցէկի համար տեղական ինքնօրինի վարչութեան դրութիւն մը հաստատելու, այսինքն՝ տեղական օրինաց այնպիսի դրութիւն մը որով ժողովուրդք համարատուութեան իրաւունք մը ստանան իրենց պաշտօնատարաց վրայ, եւ երաշխաւորութիւններ՝ իշխանութեան չարաչար գործոց եւ զեղծմանց դէմ։ Բնաւ հարկատու Պետութիւններ կազմելու բան չկայ։

3°. Նմանօրինակ երաշխաւորութիւններ պիտի շնորհուին Պուլղարիոյ ընդդէմ վարչութեան զեղծմանց։ Այս երաշխաւորութեանց մանրամասն հանգամանաց վրայ յետոյ աւելի ընդարձակ բացատրութիւններ պիտի տրուին.

4°. Անմիջապէս զինադադար մը կնքելու է բացորոշ կերպիւ։

Բ. Դուռն ինն օր խորհրդածելէ յետոյ՝ Լօրտ Տէրպիի գրութեան պատասխանեց ծանուցանելով թէ Ծերակոյտ մը պիտի հաստատէ՝ յորում ամեն գաւառներէ ներկայացուցիչներ պիտի ընտրուին, ուստի ինքնօրինութեան բառն աւելորդ կերեւի իրեն՝ երբ գաւառաց շնորհուելիք բարենորոգմանց հիմնագծին մէջ. ատենագրութիւն մը ստորագրելով երաշխաւորութիւն տալու խնդրոյն գալով՝ անօգուտ կը դատէ զայն, եւ անոր տեղ իւր անկեղծութիւնը բաւական կը համարի։ Իսկ գալով զինադադարի խնդրոյն՝ Թերեւս Օսմանեան նախարարք այս մասին ալ որոշում մ'ըրած էին, բայց իրենց պատասխանին մէջ բառ մ'անգամ չէին ըսած անոր նկատմամբ։

Եւրոպական տէրութիւնք գոհ չեղան ասով, եւ Ռուսիա բացէ ի բաց առաջարկեց բռնութիւն բանեցնել Բ. Դրան դէմ։ Մորավայի հովտին մէջ կռիւը վերստին սկսած ըլլալով, Ռուսաց կայսրը Լիվատիայէն հետեւեալ գրութիւնն ուղղեց իւր դեսպանաց.

«Կայսերական կառավարութիւնս չկրնար անտարբեր աչօք դիտել Պալքանեան թերակղզւոյն մէջ եղած արիւնհեղութիւնը։ Կայսրը կ'առաջարկէ երաշխաւոր արքունեաց այդ արիւնհեղութիւնն արգելուլ եւ երկու կողմանց անմիջապէս վեց շաբթուան զինադադար մ'ընդունել տալ, որպէս զի նոյն միջոցին դահլիճք առկախ խնդրոց վերջնական կարգադրութեան վրայ խորհին։»

Միանգամայն Ռուսական կառավարութիւնը կայսեր նախկին առաջարկութիւնը ձեռք առնլով՝ կը թելադրէր որ տէրութիւնք Վոսփորի նեղուցը նաւատորմիղներ մտցնելով կամ Պուլղարիան ռուսական զօրօք ու Պոսնան աւստրիական զօրօք գրաւելով գործ մը տեսնուի։ Սակայն տէրութիւնք՝ նորանոր կնճիռներու ծնունդ տալու եւ ընդհանուր խաղաղութեան դէմ սպառնացող միջոցներէ վախնալով՝ սոյն երկու առաջարկութիւններն ալ մերժեցին իբրեւ կարի վտանգաւոր։

Անգղիական դահլիճը սըր Էլիօթի հրահանգ ղրկեց որ գէթ մէկ ամսուան զինադադար մը խնդրէ, եւ եթէ մերժուելու ըլլայ՝ ծանուցանէ թէ Անգղիա այնուհետեւ չպիտի օգնէ Դրան։ Ի պատասխանի՝ Դուռը վեցամսեայ զինադադար մ'առաջարկեց եւ բարենորոգմանց յատակագիծ մը հրատարակեց՝ որով երեսփոխանական ժողով մը եւ Ծերակոյտ մը կը հաստատէր ելեւմտից հաշուեկշիռն եւ տուրքերը

քուէ արկելու պաշտօնով. տրոց բովանդակ դրութիւնը պիտի վերաքննուէր ու փոխուէր, գաւառական վարչութիւնը նորոգ կազմաւորութիւն մը պիտի ստանար. ասանցմէ զատ ուրիշ մեծամեծ բաներ խոստացող անօրէնութիւններ ալ կային։

Ռուսիա բացէ ի բաց մերժեց այս զինադադարն՝ որն որ տարօրինակ երկդիմութիւն մ'ունէր։

«Ձեմք կարծեր որ վեցամսեայ զինադադար մը մեր փափաքած տեւական խաղաղութիւնը հաստատելու համար պիտանի կամ նպաստաւոր ըլլայ, կըսէ Կորչաքօվ իշխանին մէկ գրութիւնը Լօնտրայի ռուսական դեսպան՝ Շուվալօվ կոմսին ուղղեալ։ Անկարելի է մեզ Սերվիոյ եւ Գարատաղի վրայ ճնշում բանեցնել սակայն որ իրենց դժուարին կացութեան այդքան երկարաձգման հաւանին։ Վերջապէս կը կարծեմք որ բոլոր Եւրոպայի զանձային եւ առեւտրական կացութիւնը որ արդէն խիստ անհանդուրժելի եղած է՝ առաւել պիտի ծանրանայ այդպիսի յապաղմամբ։ Պնդելու եմք որ չորս կամ վեց շաբթուան զինադադար մ'ըլլայ։»

Այս բանակցութեանց միջոցին Սերվիոյ մէջ կատակախաղ մը կը խաղացուէր՝ որ աշխարհի ծաղրը շարժեց թէ զայն հնարող զօրավարին, թէ գործադրող բանակին եւ թէ սոյն խաղին առարկայն եղող իշխանին վրայ։ Չերնայեւ՝ որպէս թէ տասը քսան յաղթութիւնք տարած եւ թագաւորներ կարգելու իրաւունք մը ստացած էր, իւր սպայից գլխաւորները գումարելով՝ արքայական թագ ընծայել տուաւ Միլան իշխանին, եւ նա ալ ընդունեցաւ այս ծաղրելի առաջարկութիւնն՝ ճիշդ սոյն պահուն յորում իւր իշխանապետութեան գոյութիւնն անգամ վտանգի ներքեւ էր։



## ՊԱՐՏՈՒԹԻՒՆ ՍԵՐՎԻԱՑԻՈՑ Ի ՃՈՒՆԻՍ ԵՒ ՌՈՒՍԱԿԱՆ ՎԵՐՋՆԱԳԻՐ

Վեցամսեայ զինադադարը մերժուելով, Ապտիւլ Քէրիմ փաշա պատերազմը վերըստին սկսաւ աւելի սաստկութեամբ, որովհետեւ թշնամութեանց դադարումը բաւական ժամանակ տուած ըլլալով՝ կըրցած էր նոր յարձակմանց պատրաստութիւններ տեսնել։

Չէրնայեւ իւրեն բանակակեդրոն ըրած էր Ճունիսն. իւր բանակին ձախ թեւը Տէլիկրատի կը յենուր, եւ աջ թեւը Հօրվաթօվիչի հրամանատարութեան ներքեւ՝ Քրուշէվացի։ Այս ճակատամարտը ամենէն արիւնահեղն եղաւ եւ տեւեց երեք օր այսինքն հոկտեմբերին 19 որդ, 20 որդ եւ 30որդ օրերը. սոյն կռուոյն մէջ 10000 մարդիկ ինկան, եւ Տաճիկք՝ թշնամւոյն բանակակեդրոնին մօտ գտնուած ամրութիւնները գրաւեցին. Այն ատեն Ապտիւլ Քէրիմ փաշա իւր քով կանչեց՝ Տէրվիշ փաշայի հրամանատարութեան տակ Նիշի մէջ գտնուող բոլոր զօրքը, եւ հոկտեմբեր 29 ին՝ Ճունիսի վրայ յարձակեցաւ. Այս նոր ճակատամարտին արդիւնքը վճռական եղաւ։ Հօրվաթօվիչ Չէրնայեւէն անջատուելով եւ տաճկաց բազմութեան ներքեւ ընկճուելով՝ ետ քաշուեցաւ Քրուշէվացէն՝ որ կրակի տրուեցաւ։ Չէրնայեւ գէպի Տէլիկրատ քշուելով՝ վախցաւ որ Տաճիկներն իւր ետեւը կանցնին կողմնական շրջան մ'ընելով, եւ ձգեց այդ դիրքն՝ որ Մօրավայի հովտին բանալին է։ Ալէքսինաց բոլորովին պաշարուելով՝ անձնատուր եղաւ. Սերվիացիք՝ ռուս սպայից կողմանէ իրենց դէմ եղած նախատինքէն եւ իրենց տրուած հարուածներէն զայրանալով՝ առանց կըռուելու փախան, թնդանօթաձիգ զօրքն ալ խոյս տուաւ՝ առանց անգամ մը թընդանօթ արձակելու. Պատերազմին ծանրութիւնը գրեթէ միայն ռուս կամաւորաց վրայ մնաց՝ որք դիւցազնաբար ինքզինքնին կոտորել տուին։

Ապտիւլ Քէրիմ փաշա կրնար այլ եւս առանց կռուոյ Պելկրատ իջնել Մորավայի հովտէն, վասնզի Սերվիա Օսմանեան յաղթական զօրաց ոտից ներքեւ ընկճուած էր։ Սակայն Ռուսիա՝ որոյ ժողովուրդքն երկար ժամանակէ ի վեր համակրական գաղափարաց ծաւալմամբ վառուել բորբոքեալ էին եւ երկու երեք հազար կամաւորներ ղրկած էին Միլան իշխանին, չէր կրնար թողուլ որ սերվիական ազգն կործանի ։

Հոկտեմբեր 30 էն 31 լուսնալու գիշերը՝ Կոստանդնուպոլսոյ ռուսական դեսպան Իկնաթիեվ զօրավարը Կորչաքօվ իշխանին կողմանէ հետեւեալ հեռագիրն ստացաւ.

«Դուռն անմիջապէս երկամսեայ զինադադար մը ընդունելու է առանց սպայմանի, եւ անյապաղ հրաման ղրկելու է իւր զօրապետաց որ թշնամութիւնները դադրեցնեն. Եթէ քառասուն եւ ութ ժամու մէջ գոհացուցիչ պատասխան մը չտրուի, Իկնաթիեվ զօրավարը յարաբերութիւնները խզելով՝ իւր բոլոր դեսպանական մարդոց հետ մէկտեղ Կոստանդնուպոլսէն մեկնելու է ։»

Իկնաթիեվ զօրավարն այս հրամանն ստանալուն պէս՝ վերջնագիր մը յանձնեց Բ. Դրան, որոյ մէջ հետեւեալ խօսքերը կային .

«Երաշխաւոր տէրութիւնք՝ Սերվիոյ եւ Գարատաղի իշխանապետութեանց մէջ նախ քան զպատերազմն եղած վիճակին պահպանութիւնը իբր խաղաղութեան հիմն բռնելու մասին համաձայնած ըլլալով, Օսմանեան զօրաց այժմու զինուորական գործողութիւններն անօգուտ արիւնհեղութիւն ըսել են ։

«Այս վերջին աւուրց մէջ կատարածն առանց արդիւնք մը յառաջ բերելու՝ մարդկային զգացմունքը վիրաւորելու չափ մեծցած ըլլալով՝ եւ կարճատեւ զինադադար մը կնքելու մասին եղած բանակցութիւնք յամր կերպիւ յառաջ երթալուն՝ կայսրն՝ իմ վեհափառ տէրս չկրնար այլ եւս թոյլտուութիւն ընել այսպիսի կատարածի մը ։

«Ուստի ստորագրելոյս յանձնարարութիւն եղած է յանուն Նորին Վեհափառութեան Բարձրագոյն Դրան յայտարարել որ՝ եթէ ներկայ ծանուցագիրս մատուցուելէն յետոյ երկու անգամ քսան եւ չորս ժամ անցնի եւ բոլոր պատերազմողաց հետ միանգամայն վեց շաբթուան կամ երկամսեայ իրական եւ անպայման զինադադար մը չկնքուի, եւ անմիջապէս բոլոր զինուորական գործողութիւնները դադրեցնելու համար՝ Օսմանեան զօրաց հրամանատարներուն ազդու հրամաններ չտրուին, կայսերական դեսպանատան բոլոր պաշտօնատարաց հետ մէկտեղ Կոստանդնուպոլսէն մեկնելու պիտի պարտաւորիմ ։»

Ստորագրեալ
ԻԿՆԱԹԻԵՎ

Դուռն իսկոյն զիջաւ եւ երկամսեայ զինադադար մը ստորագրեց՝ որ ապա մինչեւ մարտ ամիսն երկարեցաւ ։

---

## ԴԵՍՊԱՆԱԺՈՂՈՎ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ

Հոկտեմբեր 5 ին արդէն անգղիական դահլիճն առաջարկած էր Թուրքիոյ մէջ ծագած խնդիրները դեսպանաժողովով մը լուծել, որում մասնակցելու էին 1856 ին Փարիզի դաշնագիրն ստորագրող եւրոպական վեց տէրութիւնք ։ Սակայն ասոնք՝ վախնալով որ այսպիսի դիւանագիտական գործոյ մը մէջ նետուելով ապագային իրենց գործելու ազատութիւնը կը կորուսանեն՝ զանց ըրեր էին սոյն առաջարկութիւնը։ Լորտ Տէրպի վերստին ձեռք առաւ զայն՝ որն որ այս անգամ աւելի լաւ ընդունելութիւն մը գտաւ Ռուսիոյ բռնած գրից պատճառաւ ։ Եւ արդարեւ օր ըստ օրէ աւելի յայտնի կըլլար որ՝ եթէ դիւանագիտական միջոցաւ քրիստոնէից վիճակը չբարւոքէր, պատերազմն անխուսափելի էր ։

Նոյեմբեր 12ին Ռուսիոյ կայսրն Մոսկուայի մէջ ազնուականաց եւ քաղաքապետական ժողովոյ անդամոց ըրած ընդունելութեան միջոցին հետեւեալ ատենաբանութիւնն ըրաւ .

«Շնորհակալ եմ ձեզ , Պարոնայք, այն զգացմանց համար զոր արդի քաղաքական պարագայից մէջ կամեցաք ինձ յայտնել : Կացութիւնն այսօր աւելի պարզուած է , եւ ես պատրաստ եմ այժմ հաճութեամբ ընդունել ձեր ուղերձն :

«Յայտնի է ձեզ թէ Թուրքիա հաւանութիւն տուաւ անմիջապէս զինադադար մը կնքելու, զոր ես պահանջեցի Սերվիոյ եւ Գարատաղի մէջ անօգուտ արիւնհեղութեան վերջ տալու համար։ Գարատաղցիք՝ ինչպէս ամեն ժամանակ՝ նոյնպէս եւ այս անհաւասար կռուոյն մէջ ճշմարիտ դիւցազուններ հանդիսացան : Դժբաղդաբար անկարելի է միեւնոյն գովեստները Սերվիացւոց եւս ընծայել , թէեւ իրենց զօրագնդերուն մէջ մեր կամաւորներն իսկ կը գտնուէին՝ յորոց բազումք սլաւեան դատին համար իրենց արիւնը թափեցին :

«Գիտեմ թէ համայն Ռուսիա ինձ նման մեծապէս կը կարեկցի մեր համակրօն եւ համացեղ եղբարց տառապանաց. սակայն ըստ ինձ՝ Ռուսիոյ ճշմարիտ շահերն ամենէն աւելի սիրելի են մեզ , եւ կը փափաքիմ մինչեւ ցյետին վայրկեան ռուսական պատուական արիւնը խնայել .

«Ահա այս բանին համար է որ շարունակ կը ջանամ խաղաղական միջոցներով՝ Պալքանեան թերակղզւոյն բոլոր քրիստոնեայ ժողովրդոց վիճակին իրական բարւոքում մը ձեռք բերելու . Խաղաղութեան պայմաններն սահմանելու համար՝ վեց մեծ տէրութեանց ներկայացուցիչներէն բաղկացեալ դեսպանաժողով մը պիտի գումարի այս օրերս Կոստանդնուպօլսոյ մէջ :

«Իմ գլխաւոր բաղձանքս այն է՝ որ ընդհանուր միաբանութիւն մը ձեռք բերեմք։ Բայց թէ որ այս համաձայնութիւնը չգոյանայ, եւ եթէ տեսնեմ որ իրական երաշխաւորութիւններ չեմք ստանար այն բաներուն գործադրութեանը համար, զորս Դռնէն պահանջելու իրաւունք ունիմք , հաստատ դիտաւորութիւն ունիմ առանձինն գործելու , եւ հաւաստի եմ որ այս պարագայիս մէջ համայն Ռուսիա պիտի ընդունի իմ հրաւէրս , երբ ես հարկ դատեմ եւ երկրին պատիւը պահանջէ այդ հրաւէրն ընել : Վստահ եմ նաեւ որ ինչպէս ամեն ժամանակ նոյնպէս եւ յայնժամ Մոսկուա օրինակ պիտի ընծայէ ամենուն : Աստուած օգնէ մեզ՝ այս սրբազան պաշտօննիս ի կատար հանելու. »

Հետեւեալ օրն ալ Կորչաքօվ իշխանը շրջաբերականաւ մը կը ծանուցանէր տէրութեանց որ Ռուսիա իւր բանակին մէկ մասն ի զէն կոչելով՝ նիւթապէս կը նուիրագործէր Թուրքիոյ քրիստոնէից նկատմամբ եղած այս համակրական ցոյցերը :

Կորչաքօվ նոյն գրութեան մէջ ըսելէն յետոյ թէ՝ Ռուսիոյ կառավարութիւնը տէրութեանց միջեւ գոյացած միաբանութեամբը ճշմարիտ եւ հաստատ արդիւնք մը յառաջ բերելու համար ձեռքէն եկածն ամենեւին զանց չպիտի ընէ , հետեւեալ կերպիւ կը շարունակէր.

«Մինչդեռ տարիէ մ'ի վեր դիւանագէտք կը խորհրդակցէին Եւրոպայի միահաւան կամքն իրագործելու համար, նոյն միջոցին Դուռն ալ պատեհութիւն գտած է Ասիոյ եւ Ափրիկէի խորերէն ամենէն անկիրթ Իսլամ զօրաց մինչեւ յետին կարգերը ժողվելու, մահմետականաց մոլեռանդութիւնը գրգռելու եւ բազմապատիկ զօրութեան ներքեւ՝ իրենց գոյութեանը համար մարտնչող քրիստոնեայ ժողովուրդներն ընկճելու։ Եւրոպայի զայրոյթ պատճառող սոսկալի կոտորածներուն հեղինակներն տակաւին անպատիժ մնացած են, եւ այժմ նոցա օրինակաւ այս բռնութեան եւ խժդժութեան գործերն Օսմանեան կայսրութեան բովանդակ երկրին վրայ կը տարածուին եւ շարունակ տեղի կու-

նման զայրացեալ Եւրոպայի աչաց առջեւ։»

«Այս կարծեաց՝ վէհ. Կայսրն հաստատապէս որոշած ըլլալով իւր ձեռքէն եկած բոլոր միջոցներով մեծ տէրութեանց միաբանութեամբն ցոյց տրուած նպատակին հետամուտ լինել եւ հասնիլ, հարկ դատեց իւր բանակը շարժման վիճակի մէջ դնել։

«վէհ. Կայսրն պատերազմ չուզէր, եւ կարելի եղածին չափ պիտի աշխատի զայն արգիլելու։»

Իսկ ձեռքէն եկած բոլոր միջոցներով քրիստոնէից վիճակն ապահովելու համար էր որ Ռուսիոյ Աղեքսանդր Բ. Զարն վեց բանակագունդ կը համախմբէր Քիշնեվի մէջ։ Այս խօսքէն յայտնի կըլլար թէ Զարը պատերազմին իսկ աչքն առած էր. ուստի այս աշխարհը պատահականութեան առաջն առնլու համար՝ հարկ էր բոլոր խաղաղարար միջոցները գործածել։ Վասն որոյ երաշխաւոր տէրութիւնք կամայ ակամայ ընդունեցան Անգղիոյ առաջարկած խորհուրդն, եւ 1876 դեկտեմբեր 23ին՝ Դեսպանաժողովն իւր առաջին նիստն բրաւ Կոստանդնուպոլսոյ մէջ։

Տէրութեանց լիազօր փոխանորդներն էին.

Տաճկաստանի կողմանէ՝ արտաքին գործոց նախարար՝ ՍԱՖՎԷԹ փաշա եւ Պերլինի դեսպան՝ ԷՏՀԷՄ փաշա.

Գերմանիոյ կողմանէ՝ ՎԷՐԹԷՐ սեպուհն.

Աւստրիոյ-Հունգարիոյ կողմանէ՝ ԶԻՉԻ կոմսն եւ ՔԱԼԻՑ սեպուհն.

Գաղղիոյ կողմանէ՝ ՊՈՒՐԿՈՒԱՆ կոմսն եւ ՇՕՏՕՐՏԻ կոմսն.

Մեծին Բրիտանիոյ կողմանէ՝ ՍԱԼԻՍՊԸՐԻ մարքիզն եւ սըր ՀԷՆՐԻ ԷԼԻՕԹ.

Իտալիոյ կողմանէ՝ ՔՕՐԹԻ կոմսն.

Ռուսիոյ կողմանէ՝ ԻԿՆԱԹԻԵՎ զօրապետն ։

Օսմանեան կառավարութիւնն շատ դժուարաւ հաւանած էր Դեսպանաժողովոյ մանակցելու։ Կոստանդնուպոլսոյ ժողովուրդը արդէն յեղափոխական գաղափարներով գրգռուած էր Ապտիւլ Ազիզի եւ Մուրատի գահընկեցութիւններէն ի վեր, ուստի նախարարք վերջին աստիճան կը վախնային Եւրոպայի կամացը ի եւ է զիջում մը կամ զիջանելու ցոյց մ'ընել՝ զի մի դուցէ ազգային զգացմունքը վիրաւորուէին։ Ժամանակաւ Սուլթանին եւ նախարարաց հաւանութիւնը միայն բաւական էր բանակցութիւն մը յաջողութեամբ ի գլուխ հանելու համար, բայց այժմ այնպէս չէ։ Գաղղիոյ դեղին գրոց մէջ հրատարակուած եւ 1877 յունուար 10 թուականը կրող նամակի մը մէջ Շօտօրտի կոմսը կըսէր թէ՝ «Տաճկաց հին կուսակցութեան ինչպէս նաեւ Նորատի Թուրքիոյ կողմնակիցներուն, բանակին եւ կրօնական դասուն մէջ ստուգիւ անկեղծ փափաք մը յառաջ եկած է նախորդ իշխանութեան օրովն եղած ստորնութեանց վերջ տալով կայսրութիւնը վերականգնելու, եւ տեսակ մ'ալ հպարտակաց կարծիք գոյացած եւ արագ յառաջադիմած է, որ ցարդ Արեւելից մէջ անծանօթ բան էր։»

Նորատի Թուրքիոյ կուսակցութիւնը որ Սուլթանին քով գերազօր ազդեցութիւն մ'ունէր՝ կարծեց թէ ամեն կողմն ալ կրնայ հաշտեցնել Դեսպանաժողովոյ պահանջկլիքներն յառաջագոյն շնորհելով. Դեկտեմբեր 13ին՝ սոյն կուսակցութեան պարագլուխն՝ Միտհաթ փաշա մեծ եպարքոս անուանեցաւ Մէհէմմէտ Րիւշտի փաշայի տեղ, եւ դեկտեմբեր 23ին՝ այն է ճիշդ Դեսպանաժողովոյ առաջին նիստն եղած օրը՝ նորընտիր կառավարութիւնը սահմանադրութիւն մը կը հրատարակէր որով Ծերակոյտ մը եւ Երեսփոխանական ժողով մը կը հաստատէր. վերջապէս արեւմըտեան Եւրոպայի այլ եւ այլ սահմանադրութեանց նմանողութեամբը շինուած օրէնքներ կը շնորհէր Օսմանեան ժողովրդեան։

Լիազօր փոխանորդաց բոլոր ջանքերն անօգուտ եղան, եւ չկրցան համոզել զԹուրքիա՝ Եւրոպայի կամքը գոհացնելու.

Այն սահմանադրութիւնն շտապաւ յօրինող դիւանագէտք տէրութեանց պահանջմունքը գուշակած էին եւ իւրաքանչիւրին դէմ մէկ մէկ յօդուած կրնային հանել որ հակառակ էր տէրութեանց պահանջած բանը տալու. զոր օրինակ, երբ խնդրուեցաւ որ Գարատաղի գրաւած երկիրներն անոր ստացուածքն ըլլան հաշտութեան դաշնագրով մը. «Սահմանադրութեան դէմ է այդ,» պատասխանեցին Օսմանեան պատուիրակները, որովհետեւ առաջին յօդուածը կըսէ թէ՝ «Օսմանեան կայսրութիւնն անբաժանելի ամբողջութիւն մը կը կազմէ. որոյ եւ ոչ մէկ մասը կրնայ զատուիլ մը եւ իցէ պատճառաւ ։»

Եւրոպացի պատուիրակք հուսկ ապա խնդրեցին որ Բ. Դուռն կանխաւ տէրութեանց հաւանութիւնն առնլով՝ Պուլղարիոյ, Պոսնայի եւ Հէրսէկի կուսակալներն ինքն անուանէ, եւ տէրութեանց կողմանէ երկու համարաւոր յանձնաժողովներ դրկուին՝ նոր կանոնագրութեանց գործադրութեանը հսկելու համար։

Այս երկու առաջարկութեանց վրայ՝ յունուար 18ին Բ. Դուռը մեծ ժողով մը գումարուեցաւ, ուր ներկայ գտնուեցան բոլոր նախարարք, բարձրաստիճան պաշտօնատարք եւ զանազան կրօնական հասարակութեանց գլուխներն ։ Մեծ եպարքոս Միտհատ փաշա իրաց կացութիւնը բացատրելէ յետոյ՝ դեսպանաժողովոյ վերոյիշեալ երկու վերջնական առաջարկութիւնները ժողովոյն ներկայացուց, որք բոլոր ժողովականաց կողմանէ միաձայնութեամբ մերժուեցան ։

Այս մերժողական որոշման համեմատ՝ Օսմանեան պատուիրակք յայտարարեցին թէ՝ «Այն երկու առաջարկութիւններն ալ Սահմանադրութեան հակառակ են,» առաջնոյն համար եօթներորդ յօդուածը մէջ բերելով՝ որ Սուլթանին վեհապետական իրաւունքը կորոշէ. եւ երկրորդին համար ալ առարկելով թէ՝ կայսրութեան անկախութեան սկզբունքին դէմ է եւ կառավարութիւնն իւր հպատակաց դէմ դաւաճանութիւն ընելու կասկածի տակ կը ձգէ։

Այսպէս Օսմանեան կառավարութիւնը տէրութեանց բոլոր պահանջմունքը մերժեց, թէպէտեւ եւրոպացի պատուիրակներն վիճաբանութեանց միջոցին խիստ շատ նուազեցուցին զանոնք, եւ Սահմանադրութեամբ խոստացեալ բարենորոգմանց գործադրութեանն համար որ եւ իցէ երաշխաւորութիւն զլացաւ տալ ։ Ուստի եւրոպական տէրութեանց լիազօր փոխանորդք մեկնելէ զատ ուրիշ գործ չունէին. յունուար 20ի նիստը վերջինն եղաւ, եւ տէրութիւնք իրենց դեսպանները ետ կանչեցին Կոստանդնուպոլսէն՝ հասկցնելու համար Թուրքիոյ որ այլ եւս իրենցմէ օգնութիւն մը սպասելու չէ՝ ինչ որ պատահի,

Դեսպանաժողովոյ անյաջողութեանն հակառակ՝ Սերվիոյ հետ բանակցութիւնք շարունակուեցան, եւ փետրուար 28 ին խաղաղութիւնը կնքուեցաւ պատերազմէն առաջ եղած վիճակը պահելու պայմանաւ։ Ընդ հակառակն Գարատաղ չկըրցաւ համաձայնիլ Դրան հետ՝ որ առաջին անգամ գումարուած Օսմանեան խորհրդարանին որոշմանցը համեմատ՝ չուզեց տեղ տալու գիջանիլ. եւ այն պահուն յորում Ռուսիա կը պատրաստուէր Թուրքիոյ դէմ պատերազմ բանալու՝ Դուռն իւր ետեւն այնպիսի թշնամի մը պահեց՝ որ իւր բանակին բաւական ստուար մէկ մասը իր դէմը պիտի զբաղեցնէր ։

### ԴԻՒԱՆԱԳԻՐ (ԲՐՕԴՕՔՕԼ) ԼՕՆՏՐԱՅԻ

Ռուսիա շատ յառաջ նետուած ըլլալով՝ չէր կրնար գոհ ըլլալ այնպիսի սահմանադրութիւն մը հրատարակուելէն՝ որոյ գործադրութեանը համար ամենեւին երաշխաւորութիւն տրուած չէր, կայսրը հրապարակաւ խոստացած էր Թուրքիոյ քրիստոնէից վիճակը բարւոքել. ձմեռ ժամանակ իւր բանակին մէկ մասը ի զէն կոչած էր. համասլաւեան գաղափարաց ծաւա-



ՄԻՏՀԱԹ ՓԱՇԱ

լուծն իր հպատակաց մէջ մնալու կարծեաց յուզումն պատճառած էր զոր անկարելի էր զանց ընել, եւ ռուս ժողովրդեան պատիւը կը պահանջէր որ ամէն ջանք գործածէ՝ ինչպէս որ յայտարարած էր։

Սակայն վերջին դիւանագիտական փորձ մ՚ալ ընել որոշուեցաւ Ցարին Թէլադրութեամբն՝ որ բոլոր բանակցութեանց միջոցին տէրութեանց հետ կատարեալ համաձայնութեամբ ընթանալէ յետոյ՝ առանձինն գործելու չսկսած՝ կը բաղձար այդ վերջին ապացոյցն ալ տալ թէ ճարը հատած ըլլալուն համար միայն պատերազմի կը ձեռնարկէ։ Յունուար 21 ին Կորչաքով իշխանը տէրութեանց շրջաբերական մ՚ուղղելով կը հարցնէր թէ՝ Դրան այս մերժման դէմ ինչ ընելու մտադիր են՝ իրենց կամաց գործադրութիւնն ապահովելու համար։

Այս շրջաբերականին անմիջապէս պատասխան չտրուեցաւ։ Անգղիա որոշեց իր կարծիքն այն ժամանակ յայտնել, երբ կարելի ըլլայ Կոստանդնուպոլսոյ կառավարութեան մէջ եղած նոր փոփոխութեանց արդիւնքը տեսնել։ Սոյն միջոցին Անգղիացւոց մէջ բաւական համակրական կարծիք մը կը դիտանար վերստին ի նպաստ Թուրքիոյ։

Ռուսական կառավարութիւնը՝ վեց շաբաթ սպասելէ յետոյ՝ դիւանագիր մը պատրաստելու ձեռնարկեց, որոյ ծրագիրն մարտ 11ին Անգղիական դահլիճին ներկայացուելով՝ ըստ սկզբան ընդունուեցաւ։

Երաշխաւոր վեց տէրութեանց դեսպաններն՝ մարտ 31 ին Լօնտրայի արտաքին

գործոց պաշտօնատունը գումարուեցան՝ անոր բնագրին վրայ վիճաբանելու համար։ Սոյն ընդունած դիւանագրին ամենէն կարեւոր մասը հոս կը դնենք.

«Այն տէրութիւնք՝ որք Արեւելից մէջ խաղաղութիւնը վերահաստատելու գործոյն ձեռնարկեցին միահաղոյն, եւ այս նպատակաւ Կոստանդնուպոլսոյ դեսպանաժողովին մասնակցեցան, կը ճանչեն որ իրենց յառաջադրած նպատակին հասնելու ապահովագոյն միջոցն է՝ նախ քան զամենայն՝ իրենց մէջ բարեբախտաբար հաստատուած միաբանութիւնը ամրապնդել, եւ կրկին հաստատել ի միասին թէ միակամ կը բաղձան որ Թուրքիոյ քրիստոնեայ ժողովրդոց վիճակը բարւոքի եւ Պոսնայի, Հէրսէկի եւ Պուլղարիոյ մէջ մուծանելիք բարւոքմունքն ի գործ դրըուին՝ զորս Դուռն ընդունած է ինքն իր ձեռօք կատարելու պայմանաւ։

«Տէրութիւնք՝ Սերվիոյ հետ կնքուած հաշտութիւնը կ'ընդունին։

«Իսկ գալով Գարատաղի՝ կը բաղձան որ հաստատ եւ տեւական խրատախոհութիւն մը ձեռք բերելու համար՝ Գարատաղի սահմանագլուխներն յարդարուին, եւ Պոյանայի լճին վրայ նաւարկելու ազատութիւն տրուի անոր։

«Տէրութիւնք՝ Դրան եւ երկու իշխանապետութեանց միջեւ եղած կամ ըլլալիք կարգադրութիւններն իբրեւ քայլափոխ մը կը համարին դէպ ի խաղաղութիւն՝ որում կը բաղձան միահաղոյն։

«Հրաւէր կը կարդան Դրան այդ խաղաղութիւնն ամրապնդելու՝ բարեկարգութեան պահպանութեանը համար անհրաժեշտ սոսկ եղածին չափ զօրք պահելով եւ իւր բանակները ըստ խաղաղութեան ժամանակի նուազեցնելով, եւ կարելի եղածին չափ կարճ միջոցի մէջ՝ այն գաւառաց անդորրութեանն ու բարեկեցութեանը համար հարկաւոր եղած բարենորոգմունքը գործադրելով, որոց վիճակին վրայով Դեսպանաժողովն այնքան զբաղեցաւ։ Տէրութիւնք կը ճանաչեն որ Դուռն ինքզինքը պատրաստ ցոյց տուած է այն բարենորոգմանց մէկ կարեւոր մասը գործադրելու։

«Մասնաւորապէս կընդունին 1876 փետրուար 23 Թուականաւ Դրան գրած շրջաբերականն եւ այն յայտարարութիւններն՝ զորս Օսմանեան կառավարութիւնն ըրած է թէ՛ Դեսպանաժողովոյ մէջ եւ թէ՛ յետոյ իւր դեսպանաց միջոցաւ։

«Դրան այս բարի տրամադրութիւններն եւ զանոնք անմիջապէս գործադրելու մասին ցոյց տուած յայտնի փափաքը տեսնելով՝ տէրութիւնք կը կարծեն որ իրաւունք ունին յուսալու թէ՝ Դուռն այժմու հանդարտութենէն օգուտ պիտի քաղէ ազդու կերպիւ այն տնօրէնութիւնները գործադրելու համար, որք՝ Եւրոպայի խաղաղութեան իբր անհրաժեշտ պիտանի՝ ամեն կողմանէ համանգամայն պահանջուած իրական բարւոքումը յառաջ բերելու սահմանուած են քրիստոնեայ ժողովրդոց վիճակին նկատմամբ, եւ թէ Դուռն երբ անգամ մը այս ճանապարհին մէջ մտնէ, պիտի հասկընայ որ իւր պատիւն ու շահը կը պահանջեն անկեղծ եւ ազդու կերպիւ յարատեւել յայնմ։

«Տէրութիւնք մտադիր են՝ իրենց Կոստանդնուպոլսոյ եւ տեղական գործակատարաց միջոցաւ՝ ուշի ուշով հսկել Օսմանեան կառավարութեան խոստմանց գործադրուելու եղանակին։

«Եթէ իրենց յոյսն անգամ մ'ալ ի դերեւ ելնէ, եւ եթէ Արեւելից հանդարտութիւնը մերթ ընդ մերթ վրդովող խառնակութեանց վերադարձն արգիլելու եղանակաւ՝ Սուլթանին հպատակաց վիճակը չբարւոքի, տէրութիւնք պարտք կը համարին յայտարարել որ իրաց այդպիսի վիճակ մը թէ՛ իրենց մասնաւոր շահուց եւ թէ՛ առ հասարակ Եւրոպայի շահուց չկրնար յարմարիլ։ Այսպիսի պարագայի մէջ՝ իրենց կը վերապահեն միաբանութեամբ

խորհիլ այն միջոցներն զորս ամենէն աւելի յարմար պիտի դատեն քրիստոնեայ ժողովրդոց բարօրութեան եւ ընդհանուր խաղաղութեան շահերն ապահովելու համար ։

Տուեալ ի Լոնտրա, յ31 Մարտի 1877

Ստորագրութիւնք

ՄՈՒՆՍԹԸՐ. — ԳԱՑՍԹ.
Լ. Տ'ԱՐՔՈՒՐ. — ՏԷՐՊԻ.
Լ. Ֆ. ՄԷՆԱՊՐԷԱ. – ՇՈՒՎԱԼՈՎ.»

Ասկէց կը տեսնուի թէ տէրութիւնք որչափ պակսեցուցած էին իրենց պահանջմունքը՝ Դրան կողմանէ իւր հպատակ քրիստոնէից տրուելիք երաշխաւորութեանց մասին։ Այլ եւս համարատու յանձնաժողովներ դրուելու խօսքը չէին ըներ, որոյ պատճառաւ Կոստանդնուպօլսոյ Դեսպանաժողովոյն մէջ անհամաձայնութիւն ծագած էր։ Օսմանեան կառավարութեան խոստմանց գործադրուելու եղանակին վրայ՝ դեսպանաց եւ հիւպատոսաց միջոցաւ հսկելու իրաւունքը իրենց վերապահել միայն բաւական կը համարէին ։ Ասկէ աւելի նուազ պահանջմունք ընել անկարելի էր, որովհետեւ իրօք Եւրոպա քսան տարիէ ի վեր դադրած չէ առաւել կամ նուազ ազդու կերպիւ Թուրքիոյ քրիստոնէից վիճակին վրայ հսկելէ ։

Բ. Դռնէն խնդրուածն էր միայն նուիրագործել՝ երկար ժամանակէ ի վեր կատարուող հսկողութիւն մը. սակայն Դուռը՝ իւր անկախութեան իրաւանց համեմատ չընդունեց օտար տէրութեանց հսկողութիւնը ։ Դեսպանական դիւանագրոյն դէմ՝ ապրիլ 9 թուականաւ գրած պատասխանին մէջ՝ իբր անկախ կառավարութիւն իւր ներքին գործերն իւր ձեռօքը վարելու իրաւունքը պահանջեց։

Ահաւասիկ իւր պատասխանագրոյն մէկ կարեւոր մասը .

«Երբ դիւանագիրը կըսէ թէ՝ «Տէրութիւնք մտադիր են իրենց Կոստանդնուպօլսոյ դեսպանաց եւ տեղական գործակատարաց միջոցաւ ուշի ուշով հսկել Օսմանեան կառավարութեան խոստմանց գործադրուելու եղանակին,» երբ կը յաւելու ըսել թէ, «Եթէ իրենց յոյսն անգամ մ'ալ ի դերեւ ելնէ, եւ եթէ Արեւելից հանդարտութիւնը մերթ ընդ մերթ վրդովող խառնակութեանց վերադարձն արգիլելու եղանակաւ՝ Սուլթանին հպատակաց վիճակը չբարւոքի, տէրութիւնք պարտք կը համարին յայտարարել որ, իրաց այդպիսի վիճակ մը թէ իրենց մասնաւոր շահուց եւ թէ առ հասարակ Եւրոպայի շահուց չկրնար յարմարիլ ։ Այսպիսի պարագայի մէջ՝ իրենց կը վերապահեն միաբանութեամբ խորհիլ այն միջոցներն՝ զորս ամենէն աւելի յարմար պիտի դատեն քրիստոնեայ ժողովրդոց բարօրութեան եւ ընդհանուր խաղաղութեան շահերն ապահովելու համար,» յայտնի է թէ տեղի կուտայ կայսերական կառավարութեանս ամենէն օրինաւոր բողոքանաց ու բացէ ի բաց դիմադրութեան։

«Թուրքիա՝ իբրեւ անկախ պետութիւն չկրնար ինքզինքն այլոց հսկողութեան ներքեւ ճանաչել, այդ հսկողութիւնը հաւաքական ըլլայ կամ ոչ ։ Ազգաց իրաւունքով եւ դաշնագրութեամբք կանոնաւորեալ յարաբերութիւններ ունենալով ուրիշ բարեկամ տէրութեանց հետ՝ չկրնար իբր պաշտօնական հսկող մարմին ճանաչել օտար գործակատարներն կամ ներկայացուցիչներն՝ որք իրենց ազգայնոց շահերն պաշտպանելու պաշտօնն ունին,

«Վերջապէս՝ կայսերական կառավարութիւնս չհասկնար թէ արդարութեան եւ քաղաքակրթութեան անարժան ըլլալու ինչ բան գործած է որ աշխարհիս մէջ նմանը չտեսնուած այդպիսի նուաստացուցիչ վիճակի մը մէջ ձգուի։»

Բ. Դրան ըրած այս արդարացի բողոքոյն դէմ՝ Ռուսիոյ պատասխանն ուրիշ բան չեղաւ՝ բայց եթէ պատերազմ յայտարարել Թուրքիոյ դէմ.

# ՊԱՏԵՐԱԶՄՆ ԱՐԵՒԵԼԵԱՆ

## Գլուխ Հինգերորդ

### ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԶՕՐՈՒԹԻՒՆՔ ՌՈՒՍԱՑ

#### ՀԱՄԱԽՄԲՈՒԹԻՒՆ ԶՕՐԱՑ Ի ՔԻՇՆԵՎ

1876 Նոյեմբեր 15 թուականաւ կայսերական հրամանագիր մը վեց բանակագունդ կազմել կը պատուիրէր Ռուսիոյ հարաւային արեւմտեան կողմը՝ Օտէսայի, Խարքովի եւ Քիեվի զինուորական շրջանակաց մէջ գտնուող զօրաբաժիններով։ 9 եւ 10 թուանշաններն կրող երկու բանակագունդք՝ Խրիմի եւ Օտէսայի զինուորական շրջանակը պաշտպանելու պիտի յատկանային. Մնացեալ չորսն ալ՝ որք 7, 8, 11, 12 թուանշանները կը կրէին, Պեսարաբիոյ մէջ պիտի համախմբուէին եւ գործող բանակը պիտի կազմէին. Սակայն դէպքերն այնպէս բերին որ 9երորդ եւ 10երորդ բանակագունդք միւս չորսին հետ միացան եւ իրենց տեղ նոր զօրք դրուեցաւ։ Պատերազմի ժամանակ իւրաքանչիւր գունդ 36000 մարդէ մաղկացեալ ըլլալով՝ գործող բանակին զօրաց թիւը այս կերպով 216000ի հասաւ։ Քիշնեվ բանակակեդրոն ըլլալ որոշուած էր, եւ Զարին եղբայրը՝ Նիքօլա Նիքօլայեվիչ իշխանն ընդհանուր հրամանատար անուանուած էր։

Զօրքը կարճ միջոցի մէջ դրօշակի տակ կոչելու եւ զինուորական շարժումներն արագութեամբ կատարելու համար՝ 1866 ի պատերազմին ժամանակ Բրուսիոյ կառավարութեան ըրած տնօրէնութիւններն ամենակատարեալ կերպիւ յաջողելուն վրայ՝ Ռուսիոյ պատերազմի Նախարարը հրամայած էր մանրազննին հետազօտութիւններ ընել այս այլ եւ այլ գործողութեանց վրայ։ Անկէ ի վեր չինուած բազմաթիւ երկաթուղիներն այն կերպիւ գծուեցան որ զինուորական գործողութիւններն կարենան արագաբար կատարուիլ. Մասնաւոր յատակագիծներ պատրաստուեցան իւրաքանչիւր շրջանակի համար, եւ երկու ուղեցոյցներ չինուեցան՝ մին ամառուան՝ եւ միւսը ձմեռուան համար։ Այս ուղեցոյցներուն մէջ ցոյց տրուած էին ջոկատներուն հետեւելիք ճանապարհները, կայարանները, ժամանման օրը, ժամը եւ մինչեւ իսկ վայրկեանը, այն կայարաններն ուր զօրաց տաք կերակուր պիտի տրուէր, եւ վերջապէս երկաթուղւոյ այն ճիւղերն ուր պիտի փոխադրուէին զինուորք։

Այս կանխազգոյշ տնօրէնութեանց շնորհիւ՝ Քիշնեվի մէջ զօրաց համախմբութիւնն ամենամեծ արագութեամբ կատարուեցաւ. սակայն պէտք է ըսել որ զօրքերն դրօշակի տակ կոչող հրամանագրին հրատարակութենէն տասն եւ հինգ օր յառաջ՝ պատրաստի բանակին զինուորներն սկսած էին ճանապարհ ելնելու։ Յիշեալ զօրախումբք աշնան մէջ կատարուած զինուորական մեծ կրթութիւններէն յետոյ՝ իրենց սովորական ձմեռնային զօրանիստները դարձած չէին եւ երկաթուղեաց մօտ գտնուած քաղաքներուն մէջ կեցած



ՆԻՔՕԼԱ ՄԵԾ ԴՈՒՔՍ, ԸՆԴՀ. ՀՐԱՄԱՆԱՏԱՐ ՌՈՒՍԱԿԱՆ ԲԱՆԱԿԻՆ

էին։ Ուստի՝ հոկտեմբերի վերջերին առաջին նշանը տրուելուն պէս կրցան ճանապարհ ելնել։ Ամեն մէկը յիսուն մարդ պարունակող 16 կամ 20 կառքերէ բաղկացեալ շարքեր կէս ժամն անգամ մը Քիշնեվ կը հասնէին. այնպէս որ հոկտեմբեր 31ին 20000 մարդ, երկրորդ օրը 18,000 եւ երրորդ օրը 12000 մարդ եկաւ ի Քիշնեվ։ Կառախումբ մը կայարանը մըտնելուն պէս՝ սպասելու սրահներուն մէջ հաստատուած քաղաքական եւ զինուորական պաշտօնատարք եկող զինուորները պատրաստուած օթեւաններուն մէջ բաժնելով կը տեղաւորէին։

Զօրաց այս շարժումը որ պահ մը ընդհատուած էր՝ վերստին սկսաւ յիշեալ կայսերական հրամանագրին հրատարակուելէն յետոյ, որով պատրաստի զօրաց մնաց-

ծայ մասն եւ բոլոր պաշտօնի զօրքը շարժուն վիճակի մէջ դրուեցան ։ Պաշտօնի զօրաց շարժումն այնպիսի կանոնաւորութեամբ մը կատարուեցաւ զոր բոլոր պատերազմագէտ մարդիկ գովեցին։ Հինգ օր ետքը՝ այսինքն Նոյեմբեր 18ին պաշտօնի զօրաց մեծագոյն մասը գումարուած էր, իսկ տասն եւ եօթն օր վերջը՝ ամենքն ալ գումարուած էին։ Ուշ մնացող զինուորները ձիւնաբեր փոթորիկներու պատճառաւ արգելուեր էին։ Մէկ քանի կուսակալութեանց մէջ գետերուն սառուցքին վրայէն տախտակներ ձգելու ստիպուեր էին ոտքով անցնելու համար, եւ կամ սառուցքը կոտրեր էին նաւակով անցնելու համար։ Ասկէց զատ պէտք է դիտել որ Ռուսիոյ հարաւային կողմը խիստ շատ տարածութիւն ունեցող ընդարձակ տեղեր ամենեւին երկաթուղի չկայ ։

Պատերազմին հրատարակուելուն վրայ ամբողջ Ռուսական զօրքն ուրախութեամբ լցուած էր, որովհետեւ իբր խաչակրաց պատերազմ մը նկատել սորվեցուցած էին իրենց երկար ժամանակէ ի վեր։ Այս ուրախութիւնն այն աստիճանի հասած էր որ՝ մէկ քանի զօրապետներ սոսկ զինուորներու վիզը փաթթուէր էին իրենց սրտերնուն յուզմունքէն։ Ասկէ յայտնի կըլլայ թէ ռուսական բանակին մէջ ալ որչափ մոլեռանդութիւն կայ ։

Պեսարապիոյ բնակիչք՝ թէպէտ եւ մեծ մասամբ ռումէն են եւ մէջերնին խիստ քիչ սլաւ կայ, սակայն լաւ ընդունելութիւն կընէին այն անհամար զօրաց ։ Թուրքիոյ եւ Ռուսիոյ միջեւ ծագելիք պատերազմի մը խնդիրը՝ սահմանագլխոց մօտ բնակող ժողովուրդներն սաստիկ մտատանջութեան մէջ ձգած եւ բոլոր առուտուրներն խափանած էր. ուստի այս անստոյգ վիճակէն ազատելու համար՝ կուզէին որ ամեն բան ժամ յառաջ լմննայ ։

Պեսարապիոյ մէջ չորս քաղաք միայն կայ քիչ շատ կարեւորութիւն ունեցող, որք են՝ Քիշնեւ 96000 բնակչօք, Ագքերման 33000, Պէնտէր 22000, Թիրասփօլ 9600, Մնացեալ տեղերը պարզ գիւղեր են հովիտներու մէջ շինուած, որովհետեւ բլուրներու վրայ ջուր չգտնուիր ։ Բնակչաց տուներն ընդհանրապէս մէկ՝սենեակէ բաղկացեալ բաներ ըլլալուն, պէտք եղաւ զօրաց համար ընդարձակ բնակարաններ շինել։ Եւ որովհետեւ հարկ էր զօրքը կարելի եղածին չափ սահմանագլխոց մօտ կեցնել՝ Բէթհէրապուրկէն յառաջ քալելու հրամանն հասնելուն պէս սահմանագլուխն անցնելու համար, ուստի Փրութ գետին մօտ ամենէն յարմար տեղերն որոշուեցան եւ մեծ փութով հիւղակներ շինուեցան ։ Ահա այսպէս մէկ ականթարթի մէջ ճշմարիտ զինուորական քաղաքներ կանգնեցան Ռումանիոյ սահմանաց մօտ 60 կամ 80 հազարամէթր երկայնութեամբ տեղ։

Այսպէս 200,000 մարդէ բաղկացեալ բանակ մը հաստատուեցաւ Օսմանեան գաւառի ( սանճագ ) մը չափ ընդարձակ տեղի վրայ, ուր նկարագեղ համազգեստներով խազախներ մէկ կայանէն միւսը կը դիմէին ձիարշաւ՝ հրամաններ տանելու համար։ Այս բանակատեղւոյն վրայ գաղափար մ՚ունենալու համար, պէտք է երեւակայել այն կառաւաններու երկայնաձիգ շարքերն որք ամեն կողմ պարէն եւ փայտ կը կրէին, այն գումարտակներն՝ որք յաճախ անցահանդէսներ կընէին, այն զօրաց կարգերն՝ որոց թուխ գոյնը սպիտակ ձեան վրայ աւելի աչքի կը զարնէր, այն կառախումբերն՝ որք անդադար իրարու յաջորդելով՝ ահագին քանակութեամբ դիզուած ապրանք կը բերէին ամեն օր ի Քիշնեւ՝ ոչ միայն զօրաց ձմրան պաշար հայթայթելու՝ այլ եւ յաջորդ գարնան տեղի ունենալիք պատերազմի մը պէտք եղածը պատրաստելու համար, շոգեկառաց շչիւնները, սայլակառաց ճռնչիւնը, զօրաց դասակներու կանոնաւոր քայլափոխին կամ ձիոց սմբակին ներքեւ սառնապատ գետնին թնդիւնը, այն գոյնզգոյն ամբոխներն՝ որոց մէջ թեթեւաշարժ եւ անխոնջ ռումէն

գիւղացին, ծանրաշարժ ուղղարն եւ շահախնդիր հրեայն ռուս զօրաց բազմութեան հետ կը խառնուէին, այն ահագին առաստակներն (սամավար) որոց մէջ թէյը շարունակ կ'եռար զօրաց բաժնուելու համար՝ որպէս զի տաքնան, բանակին հացարարոցն՝ որ տասնի չափ մեծ հնոցներէ բաղկացած էր եւ որոց մէջ հազարաւոր զինուորներ բանակին տրուելիք հացը կը շաղուէին եւ կ'եփէին երգ երգելով. վերջապէս այն խոտի ահագին մթերքներն՝ որ Քիշնեւէն տասներեք հազարամէթր հեռի՝ քաղաքի մը կերպարանք առած էին, եւ որոց մէջ հարիւրի չափ մեքենաներ այդ քառասուն միլիոն լիպրայի չափ խոտը կը ճնշէին եւ հակ կը շինէին պահուելու կամ ուրիշ տեղ փոխադրուելու համար։

Քիշնեւի օդը ձմեռուան մէջ չափազանց ցուրտ կըլլայ, եւ ջերմաչափը զրօյէն մինչեւ երեսուն աստիճան վար կիջնէ, որովհետեւ այդ քաղաքն այնպիսի կէտի մը վրայ շինուած է՝ ուր Ռուսիոյ լայնածաւալ դաշտերուն վրայէն անցնելով ցրտացեալ հողմունք կուգան Կարպաթեան լերանց երկայնութեանը զարնուելով կը մրրկին. Կլիմային այսպիսի ցրտութեան եւ ձմեռ ժամանակ՝ ամենամեծ արագութեամբ զօրք բնակեցնելու մասին եղած թերութեանց հակառակ՝ զօրաց առողջապահական վիճակը շարունակ գոհացուցիչ եղաւ, որովհետեւ ռուս զինուորական իշխանութիւնք խիստ կանոնաւոր կեանք մը վարել կուտային անոնց. առատ եւ առողջարար կերակուր կը բաշխուէր, ըստ բաւականի քնանալու թոյլ կը տրուէր եւ զինուորական շրջագայութիւններ կըլլային՝ որով զինուորներն իրենց գործունէութիւնը կը պահպանէին, եւ երկար ժամանակ քալելէ յառաջ եկած խոնջութեանց կը վարժուէին սակաւ առ սակաւ։

Ուստի պատերազմի հրատարակուած ժամանակ հարաւային բանակին զինուորը առոյգ, կազմ, եռանդուն եւ ի կախ արշաւելու. անհամբեր գտնուեցաւ։

### ԲԱՂԿԱՑՈՒԹԻՒՆ ՀԱՐԱՒԱՅԻՆ ԲԱՆԱԿԻՆ

Ռուսական բանակին իւրաքանչիւր գունդըն 36,000 մարդէ բաղկացեալ ըլլալով, եւ հետեւակազօրաց երկու բաժին, կանոնաւոր հեծելազօրաց մէկ բաժին եւ անոնց համեմատ ալ թնդանօթաձիգ զօրք պարունակելով, հարաւային բանակին մէջ ընդ ամէնը 168,000 հետեւակազօրք 12,000 թնդանօթաձիգ կային։ Ըստ կանոնի՝ իւրաքանչիւր գունդ 108 թնդանօթ ունենալու էր՝ որով ամբողջին թիւն ըլլալու էր 648. սակայն ամենէն հաւաստի տեղեկութեանց նայելով՝ այդչափ չկար, այլ 500ի չափ միայն։ Ասոնցմէ զատ՝ պաշարման խոշոր թնդանօթներ կային 100 հատի չափ։ Հարաւային բանակն ունէր նաեւ Տօնաքի խազախաց տասներկու գումարտակ՝ իւրաքանչիւրն մէկ մէկ հետեւակազօրաց բաժնի յատկացեալ, եւ 12—15 հազար Կովկասեան խազախներ որոցմէ կը բաղկանայ «օհօթնեէ» (պուգախառնեալ) ըսուած գունդն որ կը կոչուի նաեւ լրտես զօրաց գունդ։ Կային նաեւ 10,000ի չափ արուեստաւոր զօրք (այսինքն՝ ճարտարագէտ զօրք, կամրջաձիգք, երկաթուղի շինողներ, հեռագրական թելեր հաստատողներ եւ պաշարման թնդանօթաց մարտկոց շինողներ։) Ռուսիա՝ մինչեւ ցարդ Թուրքիոյ դէմ ըրած պատերազմներուն մէջ՝ այսքան ահարկու բանակ երբէք չէ ղրկած ի Դանուբ։

Ռուս հետեւակազօրը դիմադրութեան մասին ունեցած քաջութեամբը շատ հռչակաւոր է, բայց միեւնոյն արիութիւնը չունի յարձակման ատեն։ Ռուսական կառավարութիւնը մէկ քանի տարի է ի վեր զինուորական մեծ վերակազմութիւն մը պատրաստելով՝ փոյթ ունեցած է իւր զօրաց այդ բնաւորութիւնը փոխել եւ տալ անոնց այն աշխոյժը, այն առաձգական զօրութիւնը եւ նախայարձակ ըլլալու անվեհերութիւնը զոր չունին։ Առաջներն ազնուական տոհմէ կամ միջին դասէ գտնուող մարդիկ եւ ազատական արուեստներ ու-

նեցող երիտասարդք, այսինքն՝ ազգին ամբողջ խելացի մասը զերծ էր զինուորական պարտաւորութենէ՝ որ միայն գիւղացւոց վրայ կը ծանրանար։ Ուստի Նիքոլա կայսեր ժամանակ քսան տարի պէտք էր նորեկ զօրքը կատարելապէս կրթելու համար, որովհետեւ խեղճ գիւղացին թէպէտեւ հլու էր եւ ուզած կողմերնին կը տարուէր, սակայն տգէտ եւ կարճամիտ ըլլալուն՝ իրմէ պահանջուած բանին վրայ գաղափար չունէր եւ յաճախ կրթութիւններ ընելով ու ծեծ ուտելով՝ հազիւ երկար ժամանակէ յետոյ կը սորվէր զինուորութիւնը։

Աղէքսանդր Բ. կայսեր ժամանակ զինուորական ծառայութեան տեւողութիւնը հետզհետէ կարճացաւ եւ այժմ վեց տարի է միայն՝ 1874էն զինուորութիւնը պարտաւորիչ ըլլալէն ի վեր։ Այսօր ամեն կարգի մարդիկ ի զէն կը կոչուին, տգէտ զինուորները կարդալ կը սորվին եւ նախակրթական գիտելեաց կը տեղեկանան իրենց գումարտակներուն մէջ, եւ անտարակոյս այս տնօրէնութիւնները զինուորաց մտաւորական աստիճանը մեծապէս բարձրացնելով՝ զգալի փոփոխութիւններ յառաջ բերած ըլլալու են անոնց մտացը մէջ։

Հետեւակազօրաց համազգեստը գաղղիացի զինուորին համազգեստին շատ կը նմանի, ի բաց առեալ տաբատին գոյնը։ Ասոնք Կոստանդնուպօլսոյ մէջ Փրէրներու գոլեջներուն աշակերտաց դրած գլխարկին ձեւով փեղոյր մը կը դնեն. մէկ կարգ կօճակներով մեկնոց մ'ունին եւ ստորոտները մեծ կօշիկներու մէջ մուծուած տաբատ մը, այս զգեստներուն ամենուն ալ գոյնը մութ կանաչ է։ Ունին նաեւ մոխրագոյն լօդիկ (եաղմուրլուգ) մը՝ զոր սովորաբար փաթթելով ուսընդանութ կը կրեն։

Ռուս հետեւակազօրաց մեծագոյն մասը Պէրտանի հրացանով զինեալ է՝ որ արտաքուստ շասփօ ըսուած հրացանին կը նմանի, բայց գործածութիւնն աւելի դժուար է։ Պէրտանի հրացան չունեցող զօրաց Թրինքի հրացան տրուած է՝ որ հին հրազէն մ'է տիպաւոր հրացանի փոխուած։

## ՀԵԾԵԼԱԶՕՐՔ ԵՒ ԽԱԶԱԽՔ

Ռուսիոյ կառավարութիւնը միշտ ջանք ըրած է հեծելազօրն ամենագերազանց վիճակի մը մէջ պահելու, սա սկզբամբ թէ՝ Անգղիոյ համար ծովային զօրութիւնն ինչ որ է՝ նոյնն ըլլալու է հեծելազօրը Ռուսիոյ համար։ Ասոր պատճառն երկրին անհուն տարածութիւնն է. երկաթուղին եւ հեծելազօրը միայն կրնան առաջքն առնուլ այն չարեաց որ հեռաւորութենէ յառաջ կուգան։ Ռուսիոյ խոպաններուն (չէօլ) եւ մանաւանդ Ուքրէնայի մէջ տեսակ մ'ազնիւ եւ կորովի ձիեր կան որոնցմէ պատերազմական գործոց նախարարը կրնայ շարունակ լաւ ձիեր ընտրելով բանակին պակասը լրացնել։

Հեծելազօրաց տասն եւ եօթը բաժիններն այնպէս կազմակերպուած են որ՝ իւրաքանչիւրն կրնայ ինքնիրեն իբրեւ ամբողջ գունդ մը առանձինն գործել ի հարկին։ Ամեն մէկ բաժին ունի վեց շարք թնդանօթ որ ձիերու վրայ կը բեռցնեն, թէ հեծեալ եւ թէ հետիոտս պատերազմելու վարժ վիշապազօրաց գումարտակ մը, նաեւ մէկ գումարտակ տիգաւոր (հիւլան) եւ մէկ գումարտակ թեթեւազէն (հիւսար) կը պարունակէ՝ որք բուն այրուձին (սուարի) կը կազմեն եւ թշնամւոյն հետ զարնուելու կը գործածուին. ասոնցմէ զատ կայ նաեւ Տօնսքի խազախներու գումարտակ մը՝ որոց լըրտեսութեան մասին ունեցած յարմարութիւնը շատ ժամանակէ ի վեր հռչակաւոր եղած է։

Այս Տօնսքի խազախներն՝ 1814ի եւ 1815ի պատերազմաց պատկերներուն մէջ տեսնուածին պէս՝ տակաւին իրենց երկայն մազերն երկուքի ճեղքելով զատ զատ կը հիւսեն եւ իրարու կը կապեն գլխունուն վրայ։ Ասոնք գրեթէ անկախ՝ տեսակ

մը զինուորական գաղթականութիւն կազմած են երկար ժամանակէ ի վեր՝ Տոն եւ Վօլկա գետերուն եւ Կովկասու. միջեւ գտնուած խոպաններուն մէջ ։ Ժամանագիւղապետի աստիճանէն վեր եղող պաշտօնատարներն ալ այժմ կայսեր կողմանէ կընտրուին . այսպէս յուշիկ յուշիկ մտան կայսրութեան զինուորական եւ քաղաքա-



ՔԱՊԱՐՏԱՑԻ ԳՈՒՄԱՐՏԱԿԷՆ ԶԻՆՈՒՈՐ ՄԸ

կաւ իրենք կընտրէին իրենց մեծ ու փոքր բոլոր պաշտօնատարներն, բայց արդի կայսեր օրով՝ կառավարութիւնն զանոնք հատուածներու բաժնելով կանոնաւոր բանակին մէջ մտցուց, եւ իրենց գատաւորի ու կան օրինաց իշխանութեան ներքեւ ։

Ռուս հետեւակազօրաց չունեցած յատկութիւններն՝ խազախներն գերազանց կերպիւ ունին, այսինքն՝ աշխոյժ , դիւրաշարժութիւն եւ համարձակութիւն ։

Խազախք ընդհանրապէս բարձրահասակ են, հետեւակազօրաց պէս մինչեւ ծունկերնին կօշիկներ ունին եւ Աժտէրխանի (Աստրաքան) մուշտակէ գլխանոց մը կը դնեն գլուխնին։ Լայն քղանցքով եւ մէջքերնուն փակած երկայն Թիկնոց մը կը հագնին, եւ նեղ գօտիով մը կը սեղմեն զայն մէջքերնուն վրայ, այս գօտիին մէջ երկայն ատրճանակ մը կը խօթեն եւ դանակ մը կը կախեն անկէ. Սուրերնին՝ ուսերնուն վրայէն անցած Թրակապէ մը կախուած է եւ հրացաննին ալ բուրդը դուրս դարձած անասնոյ մորԹէ պահարանի մէջ պահուած է, ինչպէս Պօլսոյ մէջ չէրքէզներու վրայ երբեմն կը տեսնեմք։ Խազախք երկայն նիզակ մ'ալ ունին զոր առաջուց ի վեր կրելու սովորած են. Ձիոց Թամբին վրայ տեսակ մը քառակուսի բարձիկ կը դնեն՝ որով ձի նստած ժամանակնին կենդանին իրենց սրունից մէջ սեղմելու կստիպուին։ Ձիերնին փոքր են եւ ոսկրերնին դուրս ցցուած, պոչերնին եւ բաշերնին խիստ Թաւ։ Խազախներն կարճ կոԹով եւ երկայն ու նուրբ փոկով խարազան մ'ունին [illegible] կոչուած՝ զոր երբէք ձեռքերնուն չեն ձգեր եւ որով անդադար ձիուն կը զարնեն։ Կենդանին նիհար ու տկար կ'երեւի, սակայն խաբուելու չէ. մէկ աւուր մէջ կրնայ հարիւր հազարամէԹր տեղ երԹալ եւ երկրորդ օրը վերստին սկսիլ։

Ռուս հեծելազօրաց այս յատկուԹեանց մէկ օրինակը՝ Գաղղիոյ պատերազմական գործոց նախարարն յիշած է երեսփոխանական ժողովոյ մէջ. Կայսեր ուղեկից ըլլալու յատկացեալ երկու հեծելագունդ, 11 երորդ հատուածին (Փըրդա) մէկ սանը (լիվա) եւ խազախներու Թնդանօթակիր ձիոց մէկ խումբը՝ Քիշնեւէն Օտէսա երեք աւուր մէջ հասած են, այսինքն՝ 180 հազարամէԹր երկայնուԹեամբ ճանապարհ առած են այնպիսի հով մը փչած ժամանակ՝ որ Օտէսայի մէջ երկու հողմաղացք աւերեր եւ 150 տանց յարկը Թըռուցեր էր, եւ այնպիսի գետնի մը վրայէն քալելով՝ որ բոլորովին ծածկուած էր սառոյցով։ Այս Ջօկատն իւր տեղն հասած ժամանակ՝ Նիքօլա Մեծ Դուքսը տեսեր է որ մարդոց կերպարանքը բնաւ չէր աւրուած, եւ առոյգ ու լաւ վիճակի մէջ ըլլալով՝ իրենց պատերազմական յատկուԹեանց բոլորն ալ պահեր էին։

## ԳՈՒՆԴ ԼՐՏԵՍ ԶՕՐԱՑ

Սոյն լրտես զօրաց զուգախառն գունդը ռուսական բանակին յատուկ է, ասոնց մէջ Թէպէտ եւ Տօնաքի խազախներ կը գտնուին, սակայն մարդոց մեծագոյն մասը Կովկասիայէն եկած են եւ ռուսաց լեզուաւ Ինօրօդցի (այլացեղ) կը կոչուին, այսինքն Թէ՝ սլաւ չեն։ Կովկասեան գումարտակներն իրենց կազմակերպուԹիւնն ստանալէն ի վեր՝ այս առաջին անգամն էր որ իրենց երկրէն դուրս կելնէին, եւ եւրոպական բանակին մէջ սոցա ներկայուԹիւնը խիստ տարօրինակ եւ եզական տեսարան մը կը կազմէր։

Ասոնց հագուստը գրեԹէ բոլորովին չէրքէզներու ազգային հագուստին կը նմանի. երկայն ու մուԹ կապոյտ պատմուճան մը կը հագնին մէջքերնուն փակած, որով գումարտակներուն ընդհանուր տեսքը չքեղ եւ սքանչելի բան է։ Երկու փամփըշտանոց ունին համազգեստին կուրծքին կարուած, ինչպէս բոլոր խազախներուն՝ նոյնպէս եւ ասոնց ձեռքը Պէրտանի հրացան տրուած է, Թուրերնին քովերնին կախուած է արծաԹազօծ օղակներով եւ գլուխնին ալ ահագին գլխանոց մը կայ վրան կարմիր պատած։ Ձիերնին պարզ երասանակ մ'ունին, ասպանդակներն խիստ կարճ են ըստ ասիական ձիոց, եւ մարդոց ոտքը լիԹան չկայ։ Վայելչագեղ նկարներով զարդարուած բակեղէԹներ (հէյպէ) կախուած են ձիերուն Թամբէն, դրօշները ազգային գոյներով նկարակերտուած են խիստ այլանդակ ձեւերով, եւ չափէ դուրս

երկայն են, գրօշակալներն ալ երեք ու կէս մէթրի չափ կան ։

Ռուսիա՝ որ Եւրոպայի եւ մանաւանդ Ասիոյ մէջ միլիոններով մահմետական հպատակներ ունի, շատ կը վախնար որ պատերազմը կրօնական կռուոյ մը կերպարանքն առնելով՝ ապստամբութեան կը մղէ այն ժողովուրդներն որոց մեծ մասը դեռ քիչ ժամանակէ ի վեր նուաճուած է ։ Ուստի երբ մահմետական չէրքէզներն առաջարկեցին որ իրենք եւս պատերազմի մըտնեն՝ ուրախութեամբ ընդունուեցաւ իրենց այս առաջարկութիւնը, որովհետեւ անոնց՝ գրօշակներու տակ ներկայութիւնը մեծապէս պիտի նպաստէր այն գաւառներն հանդարտեցնելու ուր կրօնական զգացումը կրնար խլրտմունք յառաջ բերել, եւ այս կռիւը իբր լոկ քաղաքական կռիւ մը ցոյց տրուելով՝ մահմետականութեան դէմ սպառնալիք մը չի պիտի համարուէր, քանի որ մահմետականք ալ կը մասնակցէին անոր ։

Պատերազմասէր ոգին անհաւատալի եռանդով մը պահուած էր այն ահարկու լեռնականաց ներսիդին, զորս Ռուսիոյ կայսերք նուաճելու համար հարիւր տարիէն աւելի աշխատած են. 1876 ին աշնան մէջ երբ պատերազմին առաջին տարաձայնութիւնները լսուեցան՝ Թէրէքի նահանգին Օսէթիներն եւ Ինկուշներն խնդրեցին զէնք առնուլ, ուստի որոշուեցաւ գումարտակ մը կազմել որ պիտի կոչուէր Թէրէքի լեռնականաց գումարտակ ։ Իսկոյն մեծ ու փոքր ներկայացան այնքան բազմութեամբ որ տասն գումարտակ կրնար կազմուիլ, եւ շատ դժուարաւ համոզուեցան թէ անկարելի էր այդքան մարդ մէկտեղ զինուորագրել ։

Յիշեալ գումարտակը տասն օրուան մէջ հաւաքուեցաւ ։ Իւրաքանչիւր ձիաւոր իւր ծախիւք հագուած եւ սպառազինեալ ներկայացաւ իւր ձիուն վրայ հեծած ։ Իբր պարզ զինուորներ ծառայող այն կամաւորաց մէջ ազնուական չէրքէզներ ալ կային քսան՝ քսան եւ հինգ հազար ֆրանք եկամուտ ունեցող ։ Այնուհետեւ կառավարութեան գանձը սկսաւ հոգալ անոնց ծախքը. իւրաքանչիւրն ամսական քսան ֆրանք կընդունէր ուտելիքն եւ ձիոյ խարն ալ մէկտեղ ։ Եւ որովհետեւ ռուս զինուորին տրուած հաճարի հացին սանք վարժուած չէին, ցորենի հաց կը տըրուէր իրենց ։ Քսան եւ հինգ սպայից երկուքը միայն ռուս էին, Մնացեալներուն մեծ մասը կարդալ չէին գիտեր, բայց զինուորական արուեստին բնածին ճաշակ մը ունենալով լաւ հրամայել գիտէին ։

Տեսնելու բան էր այս քաջարի մարդոց միամտաբար ցոյց տուած ուրախութիւնն՝ երբ Պեսարապիոյ մէջ Պէրտանի հրացաններ տրուեցան իրենց՝ կայծքարաւոր դէշ հրացաններուն տեղ ։ Այս առթիւ մեծ հանդէս մը կատարեցին եւ «ջիջինա» ըսուած իրենց ազգային պարը պարեցին բոլորակաձեւ իրարու քով շարուելով. այս բոլորակը կազմող մարդոց ուսերուն վրայ ուրիշ մարդիկ կանգնելով եւ ասոնց վրայ ալ դարձեալ ուրիշներ ելնելով՝ կենդանի բուրգ մը կը ձեւացնէին եւ եղանակաւոր կերպիւ կը դառնային ։ Հետեւակներէ եւ ձիաւորներէ խումբեր կազմուեցան՝ որք նպատակ մը դնելով հեռուէն՝ կը ջանային քալելով կամ ձիավարելով հանդերձ՝ իրենց զէնքերը լնուլ, նշան առնուլ, պարպել եւ նպատակին զարնել ,

Իրենց մոլլաներն ալ գումարտակին հետ մէկտեղ կը քալեն եւ միւս ձիաւորաց ըրածը կընեն ։ Անոնք իրենց կրօնական պարտականութեանց հետ մէկտեղ բժշկութիւն ալ ունին, եւ թոյլտուութիւն կըլլայ իրենց՝ լեռնականները խնամելու թեթեւ հիւանդութեան մը ժամանակ, երբ օրինաւոր բժշկի մը ներկայութեան հարկ չտեսնուիր ։ Իրենց գլխաւոր դեղերն են ոչխարի ճարպ եւ կենդանեաց փորոտիքէ շինուած ծեփելիք. իրենց քով կը գտնուին նաեւ գոյնզգոյն սպեղանիներ, օծանելիքներ, բժշկական խոտեր եւ մաս-

նաւոր բաժանք։ Վէրք դարմանելու մասին անոնց գործածած միջոցներն արտաքին են միայն, եւ երբ չական պայման կը պահանջեն որ հիւանդին քնանալու թոյլ չտրուի։ Այս նպատակաւ վիրաւորելոյն բարեկամներն եւ ընկերներն փոփոխակի անոր քով կը սպասեն եւ կը սկսին զինքն անընդհատ զբօսցնել երգերով եւ պարերով։ Երբ հիւանդին վրայ քուն կոխելու ըլլայ, կը սկսին մօտերնին գտնուած բաներուն վրայ թմբուկի պէս զարնելով ձայն հանել, եւ սրընձի սաներն եւ կոնքերը հնչեցնել։ Ասիական բժիշկներն անոր համար թոյլ չեն տար վիրաւորելոյն քնանալու՝ որպէս զի արիւնը գլխոյն զարնելովը կաթուածահար չըլլայ. եւ հիւանդութիւնն աղէկի դարցած ժամանակին միայն թոյլ կուտան քնանալու, այն ալ առջի բերան քիչ եւ ապա հետզհետէ աւելի՝ ապաքինութեան աստիճանին համեմատ։

Թէրէքի գումարտակին վրայ ըսուած այս խօսքերը կրնան գաղափար մը տալ լրտես զօրաց գնդին մնացեալ մասին վրայ։ Ռուսք մեծամեծ ծառայութիւններ կակընկալէին անոնցմէ, եւ կայսրութեան Պաշտօնական լրաբեր անուն թերթն հետեւեալ կերպիւ կը սահմանէ այս գնդին պաշտօնը․

« Լրտես բառն ինքնին ցոյց կուտայ թէ ինչ է այդ զօրաց պաշտօնը զինուորական գործառնութեանց ժամանակ։ Ասոնք գուցէ ամենէն առաջ պիտի մտնեն թշնամւոյն երկիրը, եւ խիստ հաւանական է որ ամենէն առաջ իրենք պիտի զարնուին թշնամւոյն հետ։ Ասոնց պիտի յանձնուի պահպանութեան համար կողմնական արձակամարտ խումբեր կազմել եւ ռուսական բանակին յառաջակողմն եւ երկու քովերը, եւ նաեւ թշնամեաց բանակին յետակողման եւ երկու քովերուն վրայ, միով բանիւ ասոնք պիտի լրտեսեն (կուլաթի) թշնամւոյն գրաւած բոլոր երկիրը։ Ասոնք ռազմագիտական մեծ միութեան մը մէջ չեն մտներ իբրեւ բաղկացուցիչ մասն, վարչական եւ ռազմագիտական տեսութեամբ եւ ոչ մէկ բանակագնդի յարեալ են, ինչպէս են կանոնաւոր հեծելազօրաց հատուածներն. այլ բոլորովին ազատ ամբողջ մը կը կազմեն գործառնութեանց բանակին մէջ առնուած։ Ուստի ասոնց շարժմունքն մասնաւոր անկախութեան յատկութիւն մը պիտի ունենան։ Պատերազմի տեսարանին այս ինչ կամ այն ինչ կէտին վրայ զինուորական որոշեալ ձեռնարկութեանց աջակցելէ զատ, այդ լրտես զօրաց դասակներն մասնաւորապէս արձակամարտ խումբերէ բաղկացեալ ըլլալուն՝ բանակին համար իբր յարաբաց սրատես աչք մը եւ միշտ լարուած սուր ականջ մը, պիտի ըլլան։ Ամեն օր եւ ամեն ժամ թըշնամւոյն համար սպառնալիք մը պիտի ըլլան եւ միշտ պիտի վրդովեն զայն՝ յանկարծակի երեւան ելնելով եւ նոյնպէս յեղակարծ եւ արագաբար աներեւոյթ ըլլալով քաջագործութիւն մ'ընելէ յետոյ։»

Լրտես զօրաց գնդին հրամանատարն էր Աքօպէլեվ զօրապետն՝ որ գիւղացւոյ մը որդի եւ նշանաւոր մարտադէտ մատենագիր մ'է, եւ իր արժանեօքն հասած է այն բարձր աստիճանին զոր այսօր ունի բանակին մէջ։

## ԿՈՎԿԱՍԵԱՆ ԲԱՆԱԿ

Կովկասեան աշխարհն՝ յորում կը բովանդակին համանուն լերանց համբաւաւոր շղթային երկու զառիթափներն, Ռուսիոյ զինուորական բաժանմանց մէջ առնուած չէ։ Տասն եւ մէկ կուսակալութիւն, երկիր կամ նահանգ (1) կը պարունակէ այլեւայլ մեծութեամբ, որոց ամենուն բնակչաց թիւը չորս ու կէս միլիոն է։ Ասոնք տեսակ մը փոխարքայի հրամանատարութեան

(1) Որք են՝ կուսակալութիւնք Տփղիսու, Քութայիսի, Երեւանայ, Պաքուի, Ստավրօփոլի, Եղիսաբեթփոլի կամ Գանձակայ. նահանգք Տաղստանի, երկիրք Խազախաց, Քուպանի, Թէրէքի, գաւառք Սուխում գալէի և Չէռնօմօրսքի խազախաց։

ներքեւ են որ Տփղիս կը նստի եւ պաշտօնատէս կը կոչուի Նամէստնիք (տեղակալ) կայսեր։ Այժմու Նամէստնիքնէ Աղէքսանդր Բ. կայսեր եղբայրն՝ Միքայէլ մեծ դուքսը (վէլիքի քնեազ)։

ի հարկէ չունի ռուսական կնիք, եւ տարօրինակ կերպարանք մը, մասնաւոր բարք եւ սովորութիւններ ստացած է, որք խառնուրդ մ'են սլաւ ժողովրդոց ունեցածներուն եւ բնիկներուն յատուկ եղածներուն։



ԿՈՍՏԱՆԴԻՆ ՄԵԾ ԴՈՒՔՍ, ԸՆԴՀ. ՀՐԱՄԱՆԱՏԱՐ ՌՈՒՍԱԿԱՆ ՆԱՒԱՏՈՐՄԻՆ

Կովկասեան բանակն Գաղղիացւոց ափրիկեան բանակին շատ կը նմանի ։ Իւր մէջ՝ բնիկ ցեղերէն բազմաթիւ մարդիկ պարունակելուն, իւր թուոյն մէկ երկրորդէն աւելին անկանոն զօրքէ բաղկացեալ ըլլալուն եւ շարունակ բնիկ ժողովրդոց հետ յարաբերութիւն ունենալուն, այդ բանակն

Այս բանակին մէջ տեսակ մը զինուորական անհօգութիւն կը տիրէ՝ որ՝ նոր երկրի մը մէջ առաջին անգամ եղած հաստատութեան եւ պատերազմի երկարատեւ վիճակի մը բռնի հետեւութիւնն է, որովհետեւ Կովկասի բոլորովին նուաճումն 1870ին եղած է։ Հոն հագուստի մասին

խատութիւնն միւս բանակաց մէջ եղածին պէս չէ, եւ շատ սպայք կան որ իրենց համազգեստը թողլով չէրքէզներու նկարագեղ հագուստը կը հագնին։

Այս կողմի զօրաց յատուկ սովորութիւններէն մէկն ալ չէրքէզներէն առնուած է, եւ կըսուի Քունաչեսթվօ՝ թաթարաց Գօնագ բառէն առնուելով, որ երկու գումարտակաց մէջ կամ երկու վաշտերու համակարգ դասակաց մէջ տեսակ մը եղբայրակցութիւն ըսել է՝ որ իրարու հետ փոխադարձաբար լաւ վարուելէ եւ իրարու աջակցութիւն ընելէ կամ համակրութիւն ցոյց տալէ յառաջ կուգայ։ Օրինակի համար՝ եթէ գումարտակի մ'առաջին վաշտն երկրորդ վաշտին գտնուած տեղը գայ, կանոն է որ այդ երկրորդին զինուորներն առաջնոյն թողուն իրենց համար պատրաստուած կերակուրը, ի պահեստի ունեցած լաւ պարէններնին՝ երկար ժամանակ քալելով յոգնած եղբայրներնուն կուտան եւ այն օրն ցամաք հացով կը շատանան։ Ռուս զինուորը պարտիզպանութեան համար մասնաւոր սէր մը ունենալով՝ տեղ մը բանակած ժամանակ քիչ մ'երկիր հերկելով իւր սիրած բանջարները կը մշակէ, մանաւանդ կաղամբը՝ որ իւր կերակրոց գլխաւորը եւ շչի ըսուած ապուրին կազմող մասերէն մէկն է։ Ասոր համար օր չըլլար որ մէկ գումարտակէն միւսը իբր եղբայրակցութեան նուէր չղրկուին այդ բերքերն։ Քապարտայի գումարտակը կողովներով սոխ կը ղրկէ Քուբայի գումարտակը կազմող իւր բարեկամաց, եւ փոխարէն՝ Քուբայի գումարտակն ալ տակառներով կաղամբ կը ղրկէ Քապարտինսքեաններուն՝ այսինքն Քապարտացւոց։ Ամեն բանի մէջ այսպէս են, եւ երբ գումարտակ մը խար չունենայ կամ իւր կազմածոց մէկ մասը կորուսանէ կռուոյ մէջ, այսպիսի բարեկամութեամբ կամ Քունաչեսթվօյով միացեալ կամ Գօնաքդաշ եղող գումարտակն անոր պէտքը կը հոգայ։ Կառավարութիւնն ալ լաւ աչօք նայած է միշտ այս հետաքրքրական սովորութեան՝ որ բանակին մէջ զինուորական նախանձայուզութիւնը կը պահպանէ, եւ յաճախ աղբիւր է ամենէն ազնիւ եռանդագին զգացմանց։

Պաշտօնապէս հրաման տրուելէ շատ առաջ սկսաւ Կովկասեան բանակին զօրաց ի զէն կոչուիլը։ Տաճկական սահմանագլխոց մօտ եղած Ախալցխէ եւ Ալէքսանտրօփօլ (Գիւմրի) բերդաքաղաքներուն մէջ զօրաց ստուար համախմբութիւններ ըլլալն՝ 1876ի սեպտեմբերին առաջին օրերն կը ծանուցուէր։ Տարիէլի կիրճն՝ որ Կովկասու մէջէն անցնող միակ ճանապարհն է, ամեն օր ծածկուած էր դէպ ի հարաւ գացող զինուորաց խմբերով, թնդանօթաց շարքերով եւ շարժուն հիւանդանոցներով, եւ այն ժամանակէն կը հասկցուէր թէ պատերազմ պիտի ըլլար։

Նոյեմբեր 13ին որոշուեցաւ որ սահմանագլխոց վրայ կեցած զօրախմբերով գործառնութեանց գունդ մը կազմուի երեք ջոկատներու բաժնուած, մին հիւսիսային կողմը Ախալցխէի մէջ՝ Տէվէլ զօրապետին հրամանատարութեան տակ, երկրորդն հարաւային կողմը Երեւանայ մէջ՝ Տէր Ղուկասով զօրապետին հրամանատարութեան տակ, եւ երրորդն ալ ասոնց մէջ տեղը՝ Ալէքսանտրօփօլի մէջ՝ այրուձիոյ զօրապետ Լօրիս Մէլիքովի հրամանաց ներքեւ՝ որում յանձնուած էր բանակին ընդհանուր հրամանատարութիւնը։ Ալէքսանտրօփօլի ջոկատն թուով միւս երկուքէն շատ մեծ պիտի ըլլար, միանգամայն հրաման եղած էր չէրքէզներու դրուժինաներ կազմել։ Տրուժինա կըսուին այն անկանոն զօրաց գունդերն որք միայն բնիկներէ կը կազմուին։ Տրուժինայի մը զօրութիւնը սահմանի տակ չէ, բայց ընդհանրապէս գումարտակի մը կը հաւասարի։

Կովկասու մէջ ամեն ժամանակ եօթն հատուած հետեւակազօրք կան՝ որոց մին ռմբաձիգ զօրքէ բաղկացեալ է։ Գործառնութեանց գունդը նախ չորս հատուած

միայն կը պարունակէր, բայց Լօրիս Մելիքով զօրապետին ստիպելուն վրայ մեծապէս ստուարացաւ, եւ պատերազմի սկսած ժամանակ, այսինքն՝ 1877 տարիի վերջերը վեց հետեւակազօրաց հատուած կը պարունակէր, այն է 106,000 մարդ, նաեւ 7 սահ հետեւակ որսորդ զօրք կամ 4,468 մարդ, 9 սահ դնդաձիգ զօրք 432 թնդանօթով՝ այսինքն 15,000ի չափ մարդ, 1 հատուած հեծելազօրք (Կովկասեան միլիշապազօրք) կամ 2,176 մարդ, 150 հատ պաշարման թնդանօթներ, եւ 7—8 հազար արուեստաւոր, այսինքն՝ խրամահատ, ճարտարագէտ, կամրջաձիգ, եւ հեռագրական թելեր հաստատող զօրք։ Պէտք է յաւելուլ նաեւ անկանոն զօրաց բաժինն՝ որ կը պարունակէր Կովկասեան խաղախներու մէկ խառն հատուած կամ 3,498 մարդ, 27 գումարտակ Քուպանի խաղախներ՝ 24,138 մարդ, 14 գումարտակ Թէրէքի խաղախներ 8,694 մարդ, 7 չարք թնդանօթ ձիու վրայ (5ը Քուպանի եւ 2ը Թէրէքի) այսինքն՝ 2,373 մարդ եւ 56 թնդանօթ, 6 վաշտ Քուպանի հետեւակ լրտես զօրք՝ 4,452 մարդ, 1 դումարտակ Տաղստանի անկանոն հեծելազօրք՝ 894 մարդ, 1 գումարտակ Քութայիսի անկանոն զօրաց բաժիններն որ 15,000 ի չափ մարդէ կը բաղկանային, որով բոլոր գործառնութեանց բանակին թիւը կելլար 115,000 հետեւակ, 45,000 ձիաւոր, 17,000 թնդանօթաձիգ եւ 7-8 հազար արուեստաւոր զօրք 488 դաշտային թնդանօթներով։

Գործառնութեանց բանակին մէջ պատերազմի պատճառաւ պակսելիք մարդոց տեղը լրացնելու եւ թէ տաճիկ լրտեսներու ձեռօք ապստամբութեան գրգռուող մահմետական հասարակութիւնները զսպելու նպատակաւ՝ Կովկասու մէջ իբր պահեստի զօրք կը կենային 1 հատուած Կովկասեան հետեւակազօրք, Օրէնպուրկի կուսակալութենէն բերուած 2 հատուած հետեւակազօրք, ի զէն չկոչուած պահեստի զօրաց բաժինները, մթերանոցներու զօրախմբերն, նաեւ 80 վաշտեր կամ տեղական ջոկատներ, ասոնք ամենը մէկէն այնպիսի թիւ մը կը կազմէին զոր կառավարութիւնը կրնար դիւրաւ 150,000ի հասցնել։

ԱՆԿԱՆՈՆ ԶՕՐՔ

Լեռնային երկրի մը մէջ գործելու սահմանուած Կովկասեան բանակին այնքան շատ ձիաւոր զօրք պարունակելն կրնայ զարմանալի համարուիլ։ Այդ զարմանքը պիտի դադրի երբ մտած է մարդ թէ՝ այն բանակին ձեռօք նուաճեալ բնիկ լեռնականք՝ որք այնուհետեւ ռուսական օրինաց ներքեւ պիտի զսպուէին, գրեթէ ամենքն ալ հեծեալ կը կռուին, եւ թէ այս պատերազմին հանդիսարան եղող տաճկական գաւառաց բնակիչներն, այսինքն՝ Լազերն եւ Քիւրտերն լաւ ձիաւորներ են։ Սակայն այն լեռնային երկիրներուն մէջ չեն կրնար ըլլալ հեծելազօրաց այն գեղեցիկ յարձակմունքն որ ճակատամարտի մը բաղդը կ'որոշեն, եւ այն տեղեաց ձեւը թոյլ չտար զօրաց արձակ խաղացք ընելու, բայց կանոնաւոր պատերազմի անկարելի է այնպիսի թշնամւոյ մը դէմ որ աշխարհիս մէջ գտնուած ամենէն քաջազարմ ձիերէն մէկուն վրայ հեծած կը կռուի, այնպիսի թշնամւոյ մը դէմ՝ որ գրեթէ չբռնուիր, որ յանկարծ կողմնակի կը յարձակի զօրաց առաջքի մը վրայ, կարաւաններուն հաղորդակցութիւնը կը կտրէ, ետ մնացողները կը յափշտակէ, յանկարծակիի բերելու հնարքը կը բանեցնէ եւ այն բոլոր վարպետութիւնները կընէ որոց առաջին պայմանն արագութիւնն է, այնպիսի թշնամւոյ մը դէմ՝ որ գրեթէ կաներեւութանայ իրեն վրայ յարձակում եղածին պէս, եւ վերստին կերեւի եւ կը նեղէ այդ յարձակումը դադրածին պէս։ Վասն որոյ Ռուսիա ստիպուած էր կարելի եղածին չափ բազմացնել այն խաղախներու

խումբերն ղորս չէրքէզներու դէմ հանած էր եւ այս անգամ եւս Օսմանեան Հայաստան կը ղրկէր ։

Եթէ խազախը չըլլար՝ Ռուսիոյ կայսերք երբէք չպիտի կարենային Կովկասեան ժողովրդոց հետ գլուխ ելնել՝ որոց դէմ եղած երկարատեւ կռիւներուն մէջ երբ քիչ մը տեղ կ՚առնուէր, իսկոյն խազախներու «ձանիցա» կամ բերդաքիւղ մը կը հաստատուէր հոն։ Այս խազախներն խիստ քիչ անգամ կը յաղթուէին՝ Ամերիկայի Կարմրամորթ վայրենեաց ըրած կռիւներուն նմանող այս ընդհարմանց մէջ, յորս նրբամտութիւն եւ խորամանկութիւն բանեցընելով՝ կովկասեան ցեղերուն տեղերը կը գրաւէին ։

«Խազախաց գումարտակներն, կըսէ Պ. Էտուարդ Տիւլօրիէ իւր Ռուսիոյ Կովկաս անուն գրուածքին մէջ, բուն գլխաւոր մասը կազմած են այն ախոյեաններուն որք կայսրութեան ամեն մասերէն գալով վազեցին ի Կովկաս, եւ այն բազմութիւնը ջեռուցանող խմոր մ՚ եղած են եւ օրինակ ու մղումն տուած են անոնց։ Այն անընդհատ կռուոց մէջ կանոնաւոր բանակին եւ ոչ մէկ զօրքն կրնար անոնց պէս մրցիլ լեռնականաց հետ արագութեամբ, արթնութեամբ եւ խորամանկութեամբ ։ Իբր յառաջակաց եւ միշտ զգոյշ պահակներ՝ իրենց «ձանիցա»ներուն մէջ հաստատած են այն ամրութեան գիծերն՝ որոց դէմ լեռնականք բախելով խորտակուեցան եւ որովք շրջապատեցան իբրեւ պողովատեայ ցանցո վ մը ։

Ռուսական տիրապետութենէն խոյս տալու համար՝ 1864ին 200,000 չէրքէզներու իրենց երկրէն մեկնելէն ի վեր՝ այլ եւս ամրացեալ «ձանիցա»ներ չհաստատուեցան ։ Դրսէն եկած գաղթականք բաց գիւղերու մէջ կը զետեղուին՝ որոց չորս կողմերն արտեր են, երկիրը խիստ արգասաբեր ըլլալով հերկուելու միայն պէտք ունի առատ հունձք տալու համար, եւ խազախներն իրենց ժամանակն մերթ զինուորական կրթութեանց եւ մերթ գիւղական աշխատութեանց յատկացնելով՝ այն տեղերն ալ կայսրութեան միացեալ մասերուն կը նմանեցնեն՝ բնիկ ժողովրդոց հետ խառնուելով եւ խնամութիւն հաստատելով ։

Սոյն ժողովուրդք դիւրաւ կրնան նաեւ կայսրութեան միւս ժողովրդոց հետ նմանութիւն ստանալ ։ Թէրէքի լեռնականներուն ռուսական դրօշակաց ներքեւ զինուորութիւն ընելու մասին ցոյց տուած փոյթն ուրիշ նահանգաց մէջ ալ տեսնուած է։ Կովկասեան զօրաց վրայ խօսած ժամանակնիս յիշուած Տաղստանի եւ Քութայիսի գումարտակներն, Լօրիս Մելիքով զօրապետին բանակն ստուարացնող փոխձինաներուն 15,000 զօրքն միայն բնիկներէ բաղկացեալ են, եւ սոյնցմէ զատ խազախներուն եւ կանոնաւոր զօրաց մէջ ալ կը գտնուին այդ բնիկներէն, որոց համար զօրութիւնն իրաւունք եւ արդարութիւն ըսել է, ինչ որ ըլլայ՝ Աստուծոյ նախասահմանութեամբն է, եւ այսպէս հաւատալով կը խոնարհին եւ յանձնառու կըլլան, վասն որոյ Ռուսաց զինուորութիւն ընելէ չեն խորշիր ։

Ռուսական հանճարն խիստ ճարտար եւ դիւրաթեք է, անխոնջ քաղաքականութեամբ ամեն հնարք կը բանեցնէ ազգային մեծմութեան մէջ ընկլուզելու համար այն օտար տարրերն որ իւր աշխարհակալութեանց մէջ իրեն դէմ կելնեն։ Անգղիացւոց եւ իրենց Հնդիկ հպատակաց մէջ անանցանելի պատուար մը կանգնող արհամարհոտ գոռոզութիւնը ցոյց չտալով իւր նուաճած ցեղերուն, ռուսական կառավարութիւնն ամեն ասպարէզ կը բանայ անոնց առջեւ թէ ընկերական ըլլայ թէ մասնաւոր կամ հրապարակային ։ Կը ջանայ իւր տիրապետութիւնը մեղմացնելով անոնց յիշել չտալ իրենց անկախութիւնը կորուսած ըլլալնին, եւ կը յաջողի այս մասին։ Այսպիսի ճարտար եւ իմաստուն դրութեամբ հաստատուած է այն հսկայական կայսրութիւնն՝ որ Պալթիկ



ՊԱՇԸ ՊՕԶՈՒԳՆԵՐ

ծովէն մինչեւ Խաղաղական Ովկիանոս կը տարածուի եւ գրեթէ երկրիս ցամաքին մէկ վեցերորդ մասը կը գրաւէ ։

Կովկասու բնիկներն այստեղ լաւ ընդունելութիւն կը գտնեն կայսերական դրօշակաց ներքեւ, եւ անոնց ազնուական ընտանիքներէն մարդիկ կը գտնուին բանակին մէջ ։ Ահա այստեղ ռուս ազնուա-

պետականաց մէջ կը յիշուին Մատաթով, Արղութինսքի, Տալկարուքի, Գեհպութով իշխանները՝ որք հայ են. Թարխանով եւ Եուսուփով իշխանները՝ որոց յորջորջանաց այս սլաւեան ձեւին տակ՝ մահմետականաց Թարխան եւ Եուսուֆ անունները կը ծածկուին, եւ Օրբէլեան ու Տատեան իշխանները՝ որ վրացի են. Նմանապէս վրացի մ'է Ճավճավաձէ իշխանն՝ որ գործառնութեանց բանակին մէջ հրամանատարութիւն մ'ունէր. եւ վերջապէս այս կանոնին իբր ակներեւ ապացոյց ըլլալու համար՝ բանակին ընդհանուր հրամանատար Լորիս Մելիքով զօրապետն ալ սլաւ մը չէ, այլ Լորիսեան նախկին հայ իշխանաց սերընդէն մէկն է՝ որ 1854 ին եւ 1855 ին Կարսի պաշարման ներկայ գտնուած է իբր տեղակալ գումարտակի, եւ սքանչելի կերպիւ կը ճանաչէ այն տեղուանքը։

## ՊԱՀԵՍՏԻ ԶՕՐՔ ՌՈՒՍԻՈՅ ԵՒ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ ՌՈՒՍԱԿԱՆ ԶՕՐՈՒԹԵԱՆՑ

Կովկասու մէջ եղած պահեստի զօրքն 150,000 մարդ հաշուեցինք. 1877 Մարտ 3ի Թուականաւ հրամանագիր մը Եւրոպական մասին մէջ ի զէն կոչած էր 25 հատուած հետեւակազօրք եւ 11 հատուած հեծելազօրք՝ որք բաժնուեցան կայսեր Թիկնապահ զօրաց գնդին, ռմբաձիգ զօրաց գնդին եւ 1, 2, 3, 4, 5, 6, 13, եւ 14 թիւերը կրող գնդաց մէջ։ Ասոնց գումարն 350 կամ 400,000 ի կը հասնէր։ Պէտք է նաեւ յաւելուլ ասոնց վրայ՝ Սէմէքա զօրապետին հրամանատարութեան տակ Ագքիրմանէն մինչեւ Կերչ՝ Սեւ ծովու ափունքը պաշտպանելու համար դրուած 80,000 մարդիկը։ Բովանդակելով կը տեսնուի որ Ռուսիա պատերազմի ձեռնարկելու համար՝ հետեւեալ թուով զօրք հանած էր.

| | | |
|---|---|---|
| Գործառնութեանց բանակ | | |
| Եւրոպայի կողմը | 220,000 | մարդ |
| Ծովափանց պաշտպանութեան յատկացեալ զօրք | 80,000 | » |
| Պահեստի զօրք | 400,000 | » |
| Գործառնութեանց բանակ | | |
| Ասիոյ կողմը | 185,000 | » |
| Պահեստի զօրք | 150,000 | » |
| Համագումար | 1,035,000 | « |

Այս գումարներն ի հարկէ կատարելապէս ճիշդ չեն, մանաւանդ պահեստի զօրաց մասին, վասն զի շատ անգամ կը պատահի որ թղթի վրայ ցոյց տրուածին չափ զինուորներ չեն գտնուիր գնդերուն մէջ։ Սակայն այդ թուանշաններն ճշմարտութենէ շատ հեռի չեն, եւ Ռուսիա անկէ աւելի զօրք կրնար հանել 82,000,000 բնակիչ ունենալով՝ որոց 60 միլիոնին համար միայն զինուորական ծառայութիւնը պարտաւորիչ է։

# Գլուխ Վեցերորդ

## ՕՍՄԱՆԵԱՆ ԶՕՐՈՒԹԻՒՆՔ

### ԹԻՒ ՕՍՄԱՆԵԱՆ ԶՕՐԱՑ

*Եւրոպական բանակք մեծ ու մնայուն բաժանումներ ունենալով, ինչպէս են բանակագունդ, հատուած (Ֆըրգա), սահ (Լիվա) որք որոշեալ թիւ մը կը ներկայացընեն, կարելի կըլլայ բանակի մը զօրութիւնը մէկէն հաշուել. սակայն Օսմանեան բանակին մէջ այսպիսի բաժանմունք չըլլալով, շատ դժուար է տանիկ զօրաց ճիշդ թիւը գտնել։ Օսմանեան զօրախմբոց բաղկացութիւնն ու թիւը սարօրինակ եւ միշտ փոփոխական է, բայց եւ այնպէս կարելի է մերձաւոր համագումար մը դընել՝ վաշտերը, հեծելազօրները եւ թնդանօթաչարքերը հաշուելով։ Ըստ կանոնի՝ իւրաքանչիւր վաշտ (թապուր) հազար մարդէ բաղկացեալ ըլլալու է, սակայն սերբիական պատերազմէն յետոյ՝ շատին մէջ 500 հոգի միայն կար. այնուհետեւ անընդհատ զօրաժողով ըլլալով, իւրաքանչիւր վաշտի մարդոց թիւը միջին հաշուով 800-850ի հասաւ։ Ըստ կանոնի՝ իւրաքանչիւր հեծելազօր 250 ձիաւորէ բաղկացեալ ըլլալու է, սակայն իրապէս վրայ թուելով՝ ամեն մէկուն մէջ 70 կամ 75 այրուձիէն աւելի չկայ. իսկ թնդանօթաչարք առ հասարակ անթերի են։ Տաճիկք միշտ մասնաւոր մտադրութիւն մ'ունեցած են թնդանօթի համար, եւ անոնց երեքէն մեծ յառաջադիմութիւններ ըրած են հնգետասաներորդ եւ վեշտասաներորդ դարուց մէջ։ Առաջին սուլթանաց օրով ձուլեալ այն ահագին հրետաներն (գուլէվրինա) որք տակաւին կը տեսնուին Տարտանէլի ափանց վրայ; կրնան այժմու խոշոր թընդանօթներուն հետ համեմատիլ մեծութեան կողմանէ։*

*Դանուբեան բանակին ընդհանուր հրամանատարն էր Սէրտարը էքրէմ Ապտ-իւլ Քէրիմ փաշա եւ բանակակեդրոնն էր Շումնու բերդաքաղաքն։ Բանակին երեք գունդի կը բաժնուէր, առաջինն ի Ռուսճուք, երկրորդն ի Շումնու եւ երրորդն ի Վիտին եւ ի Նիշ։ Օսմ. բանակը հետեւակազօրաց 231 վաշտէ եւ 96 հեծելազօրէ կը բաղկանար, որով ընդ ամենն 210,000 մարդ, 8,000ձի եւ 318 դաշտային թնդանօթ ունէր, ճարտարապետական զօրքն ալ ի միասին հաշուելով։ Ասոնցմէ զատ Թուրքիա Եւրոպայի մէջ 50,000 զօրք ունէր, որք քսան հազար Գարատաղցւոց եւ 5 կամ 6 հազար ապստամբաց հետ պատերազմելու զբաղած էին. 12—15 հազար զօրք ալ Թեսալիոյ եւ Եպիրոսի մէջ համախմբուած էին՝ յունական սահմանագլխոց վրայ հսկելու համար։*

*Ասիոյ բանակին ընդհանուր հրամանատարն էր միւշիր Մուխթար փաշա եւ բանակակեդրոնն էր Էրզրում։ Այս բանակն ալ 90—95 վաշտ կը պարունակէր, այսինքն 75—80 հազար մարդ՝ որք կը կենային Պաթում, Արտահան, Կարս եւ Էրզրում բերդաքաղաքաց մէջ։ Կանոնաւոր հեծելազօրքն ալ 3,000 այրուձիոյ չափ էր եւ 574 հատ մնայուն կամ բերդի թնդանօթէ զատ՝ 100ի չափ ալ դաշտային թնդանօթ կար։ Բոլոր այս զինուորներն Հէնրի Մարթինիի արագաձիգ հրացանաւ զինեալ էին որ խիստ լաւ զէնք մը կը հա-*

մարուի։ Ասոնցմէ զատ պէտք է նաեւ թուել մուսթահֆըզներն՝ որ 32 էն մինչեւ 40 տարեկան մարդիկ էին եւ այն աղգապահ զօրքն՝ որոց կազմութիւնը նոր հրամայուած էր եւ 40էն մինչեւ 50 տարեկան մարդիկ էին, նաեւ այն կամաւորաց գունդերն որ 18 էն մինչեւ 20 տարեկան երիտասարդներէ կը բաղկանային. միով բանիւ՝ ընդհանուր զօրաժողով մ՚էր եղածը։ Ասոնցմէ զատ կային նաեւ անկանոն հեծելախումբեր որք բաղկացեալ էին 100 կամ 120,000 պաշը պօզուքներէ։

## ՏԱՃԻԿ ԶԻՆՈՒՈՐ ԵՒ ՍՊԱՅ

Այս թուանշաններէն յայտնի կըլլայ որ տաճկական զօրութեանց ստուար մասը Դանուբի մօտ համախմբեալ էր եւ թուով գրեթէ հաւասար էր յարձակող բանակին զօրութեան։ Սակայն զօրաց մէկ մասը զինուորական կրթութենէ զուրկ ըլլալուն եւ առ հասարակ սպայից անհմտութեանը պատճառաւ՝ տաճկական բանակը չէր կըրնար ռուսական բանակին հետ համեմատիլ։

Օսմանեան հետեւակազօրը պատրաստի (Նիզամ) բանակի զինուորներէն եւ պահեստի (րէտիֆ) զօրաց երեք կարգերէն կը բաղկանայ. քսանէն մինչեւ քսանեւվեց տարեկան երիտասարդք պատրաստի կամ մնայուն բանակը կը կազմեն, պահեստի զօրաց առաջին կարգն ալ քսանեւվեցէն մինչեւ քսանեւինն տարեկան մարդիկը կը պարունակէ՝ որ Հէրսէկի ապստամբութեան առաջին ամիսներուն մէջ ի զէն կոչուեցան։ Ուստի ասոնք երկու տարիէ ի վեր զէնքի տակ էին եւ պատրաստի զօրաց հետ ի միասին բանակին ամենէն տոկուն մասը կը կազմէին։ Տաճիկ զինուորն երբ լաւ կրթուած ըլլայ՝ աշխարհիս ամենէն աղէկ զինուորներէն մէկն է։ Սա՝ անդըրդուելի կերպիւ պինդ կը կենայ եւ ժուժկալութիւնն իրեն կրօնական պարտք մը կը համարի։ Եօթեւտասներորդ դարուն մէջ արդէն Մօնթէքուքուլլի անոր համար ըսած էր թէ՝ «Արի, ժուժկալ եւ համբերող է ։» Զուարթութեամբ ամեն նեղութեան կը համբերէ՝ անօթութեան, խոնջութեան եւ բազումօրեր քալելու։ Սերվիոյ պատերազմէն յետոյ՝ երբ տաճիկ զինուորներն Կոստանդնուպօլիս կը դառնային, իրենց դէմքը դժգոյն էր եւ աչքերնին խորն իջած, համազգեստնին կռնակներնուն վրայ ծուէն ծուէն եղած, ոտքերնին գէշ տրեխներու (չարըգ) մէջ, սրունքնին գոյնզգոյն ցնցոտիներով փաթթուած՝ որք բզիկ բզիկ եղած տաբատներնուն տեղը կը բռնէին։ Բայց եւ այնպէս այդ զինուորներն շողշողուն զէնք եւ գոռոզ կերպարանք ունէին իրենց կապերտներուն ներքեւ՝ արդարեւ պատերազմի համար ծնած մարդիկ ըլլալով, եւ առանց ժամանակ մը հանգիստ ընելով ինքզինքնին գտնելու՝ միեւնոյն եռանդեամբ ճանապարհ կելնէին դէպ ի Դանուբ կամ յԱսիա նոր թշնամւոյ մը դէմ կռուելու։ Եւ իրենց այս արիութիւնն իրենք ալ գիտնալով՝ իրենց բոլոր գործերուն մէջ այնպիսի արժանապատուութիւն մը եւ դիւրազգածութիւն մը ցոյց կուտան՝ որով սպայք եւս կստիպուին մեծ ակնածութեամբ եւ մեղմութեամբ վարուիլ անոնց հետ։ Տաճկական բանակի մը այցելութիւն ընող Եւրոպացիք զարմացած են այն հանդարտութեան վրայ որով սպայք եւ ենթասպայք նորահաս զինուորները կը կրթեն եւ կը խրատեն. խիստ քիչ անգամ հայհոյանք կը լսուին։ Դանակոծութիւնը խստիւ արգիլեալ է եւ այս արգելքին հակառակ գործելու դէպք մը պատահած չէ երբէք։ Տաճկաստանի մէջ քսան եւ ութը տարիէ ի վեր պաշտօն վարող հունգարացի սպայ մը կըսէր թէ՝ իր գլխաւորաց կողմանէ երբէք թշնամանիչ խօսք մը լսած չունի, եւ եթէ սպայ մը բարկութեան ժամանակ հայհոյէ, զինուորք այս հայհոյանքը իրենց դէմ մեծ նախատինք կը համարին։

Պատրաստի զօրքն եւ պահեստի զօրաց առաջին կարգը բանակին երկու երրորդ մասը հազիւ կըկազմեն, իսկ մնացեալներն միեւնոյն զինուորական յատկութիւնները չունին։ Պահեստի զօրաց երկրորդ կարգը (29էն մինչեւ 32 տարեկան մարդոցմէ բաղկացեալ) Սերվիոյ եւ Գարատաղի դէմ պատերազմ բացուած ժամանակ ի զէն կոչուած էր, եւ ասոնց ամենուն ալ բոլորովին շարժման վիճակի մէջ դրուիլն 1877ին եղած է. ուստի թերավարժ էին։ Երրորդ կարգն ալ՝ ո եւ իցէ պատճառաւ մը երբէք ոչ պատրաստի զօրաց մէջ եւ ոչ պահեստի զօրաց երկու կարգերուն մէջ մտած ըլլալով՝ բոլորովին անվարժ մարդոցմէ կը բաղկանար, այս կարգը 1876ին Նոյեմբեր ամսոյ մէջ ի զէն կոչուեցաւ՝ երբ Ռուսիա իւր բանակը շարժման վիճակի մէջ դրաւ։ Ուստի յայտնի է որ վստահութիւն չէր կրնար ըլլալ այս երկու կարգի մարդոց վրայ. անոնցմէ շատերն ընտանեաց տէր եւ իրենց հեռաւորութիւնն գործերնուն աւրուելուն պատճառ ըլլալով՝ մեծ դժկամակութեամբ ճանապարհ կելնէին եւ իրենց երկիրը տեսնելու տենչանօք կախտանային յետոյ. Փոքր Ասիայէն նոր եկած զինուորք չեն կրնար անտրտում մտածել թէ՝ օսմանեան կայսրութեան այն մասին մէջ որոյ բնակիչներն գրեթէ բոլորն ալ մահմետական են՝ շատ գիւղեր գրեթէ անմարդի մնացած են, եւ ասոր համար իրենց երկրին մէջ երկար ժամանակ տագնապ մը պիտի տիրէ։

Արդի պատերազմական դրութեան մէջ անհատն ինքնին քաջ ըլլալովը հանդերձ՝ մեծ գործ մը չկրնար տեսնել, միայն կազմակերպեալ խումբերն են որ կրնան օգտակար ըլլալ, ուստի բանակի մը սպայից կարգերն են որ զայն զօրաւոր կընեն։ Արդ տաճկական բանակին մէջ սպայից կարգերն յոյժ թերի են. ուստի այս ալ տկարութեան երկրորդ պատճառն է։

Զինուորական հմտութեան մասին բաւական յառաջդիմութիւններ եղած են։ Դուռն որ քրիստոնէութիւնը ձգող բազմաթիւ Եւրոպացւոց պաշտօններ տուած է՝ քրիստոնեայ մնացող սպայից ալ մէկ քանի տարիէ ի վեր հրամանատարութիւններ կուտայ իւր նախկին դժկամակութիւնը թողլով, զոր օրինակ՝ անգղիացի Նաւապետ Հօպարթ փաշա նաւատորմին հրամանատար կարգեալ է։ Ասիոյ բանակին սպայակոյտի գլուխ Ֆէյզի փաշա՝ Կարսի նախկին պաշարման ժամանակ՝ Ուիլեըմս գումապետին ընկերակից գտնուող Թօլման անուն անգղիացի մ'է. Իրենց երկրէն տարագրեալ հունգարացի եւ լեհ զօրապետներ ալ կը գործածուին՝ 1832ին եւ 1864ին պատահած լեհաց ապստամբութիւններէն եւ 1848ին հունգարական ապստամբութենէն ի վեր, ինչպէս են լեհ Համտի փաշա եւ հունգարացի Մահմուտ փաշա։ Նոյն իսկ տաճիկ սպայից մէջ առաջուանէն աւելի հմուտ անձինք կան, ինչպէս են Վիէննայի դպրոցին աշակերտներէն Ապտ-իւլ-Քէրիմ փաշա եւ իւր սպայակոյտի գլուխ՝ Նէճիպ փաշա որ Պրիւսէլի դպրոցին աշակերտներէն է, եւ Մուխթար փաշա որ Կոստանդնուպոլսոյ զինուորական դպրոցէն ելած է։ Դժբաղդաբար սոյնպիսիք հազուագիւտ են օսմանեան բանակին մէջ։

Ասոնցմէ կը հետեւի թէ տաճկական բանակը չէր կրնար լաւ գործիք մ'ըլլալ յարձակման։ Այն երկարատեւ գնացքն եւ այն շարժմունքն զոր հարկ է ընել յարձակողական ռազմագիտութեան մէջ, իբր անխուսափելի հետեւութիւն՝ այնպիսի խառնաշփոթութիւն մը յառաջ պիտի բերէին որով տաճկական զօրքն անյարմար պիտի լինէր որ եւ իցէ գործ տեսնելու։ Ընդհակառակն պաշտպանողական դիրք մը բռնուած ժամանակ՝ սպայից կողմանէ նախաձեռնութիւն ըլլալու պէտք չմնար եւ իրենց ապիկարութեանը պատճառաւ զօրաց արժէքն ամենեւին չոչնչանար եւ արիութիւնն ու պնդակազմութիւնն կրնան

կարգապահութեան անդը բանել, ուստի բանակին բաւական ահարկու հակառակորդ մը կը հանդիսանայ։ Ըստ այսմ՝ Աբտուլ-Քէրիմ փաշա իր յառաջապահը պատրաստած էր, որպէս զի զօրաց գլխաւորական յառաջութիւնքն իրենց կատարեալ արդիւնքն ունենան.

ԱՆԿԱՆՈՆ ԶՕՐՔ (ՊԱՇԸ ՊՕԶՈՒԳ)

Որ եւ իցէ Մահմետական որ անգործ կենալէ կը ձանձրանայ՝ կառնու իր հրացանն ու ձին եւ եթէ ձի չունի՝ հատ մը կը ճարէ եւ ահա կըլլայ պաշը պօզուգ։ Պատերազմի ժամանակ պաշը պօզուգներն իբր թէ այն գործն ընելու յատկացեալ են զոր ուրիշ երկիրներու մէջ անկանոն հեծելազօրք կընեն, զոր օրինակ՝ Խազախներն։ Բայց բնաւ չեն կրնար համեմատիլ Ռուս լրտես զօրաց հետ։

Պաշը պօզուգներուն զինուորագրութիւնը կամաւոր է։ Դրան կատարելապէս հնազանդ չըլլալով՝ կանոնաւոր բանակին զինուոր չտուող ցեղերէն է որ ասոնք կը ժողովին, ուստի իրենց մեծ մասն բաղկացեալ է Արաբներէ, Սիւրիացիներէ, Առնաւուտներէ, Քիւրտերէ, Լազերէ, Չէրքէզներէ եւ Փոմաքներէ՝ այսինքն՝ Մահմետական Պուլղարներէ։ Իւրաքանչիւրն ըստ իր հաճոյից կը հագուի եւ կը զինուի, որով մարդ կրնայ երեւակայել թէ ինչ այլանդակ հանդերձներ կը կրեն, եւ անշուշտ աշխարհիս ամենէն հետաքրքրական զինուց հաւաքածոյք կրնան կազմուիլ՝ այն այլ եւ այլ ժամանակաց յատուկ եւ այլ եւ այլ ձեւերով զէնքերն որովք յոտից ցգլուխ կը բեռնաւորուին. Սակայն ասոնց կարգերուն մէջ մէկ տեսակը կայ որ միւսներէն աւելի յաճախ կը տեսնուի, այսինքն՝ այն ծերհար մարդիկն որոց չոր ջղուտ սրունքը կարճ անդրավարտեաց եւ երկայն բարձրապաններու (թօզլուգ) մէջ առնուած են, որոց նեղ յունական բաճկոնակն բրդէ լայն գօտիով մը մէջքերնուն վրայ սեղմուած է, եւ որոց գլուխը ծածկող փաթթոցին ահագին խոշորութենէն իրենց կրօնական եռանդը կրնայ չափուիլ։ Գօտիներնուն մէջ մուծեալ ահարկու դանակներ եւ երկայն ատրճանակներ կատարեալ կընեն այն աւազակի կերպարանքը.

Ասոնց թիւը 100,000ի հանեցին տաճկերէն լրագիրները, սակայն ասոնք մեծ օգնութիւն մը չպիտի կրնային ընել կանոնաւոր բանակին՝ աւարառութեան մէջ միայն աչքերնին բաց ըլլալով։

# Գլուխ Եօթներորդ

## ԾՈՎԱՅԻՆ ԶՕՐՈՒԹԻՒՆՔ ԵՐԿՈՒՑ ՊԱՏԵՐԱԶՄՈՂԱՑ

### ՆԱՒԱՏՈՐՄԻՂՔ ՏԱՃԿԱՑ ԵՒ ՌՈՒՍԱՑ

Ռուսիոյ եւ Թուրքիոյ իրարու դէմ հանած ցամաքային զօրութիւնը թուելէ յետոյ՝ հարկ է նաեւ սոյն երկու տէրութեանց նաւատորմիղներուն վրայ մէկ քանի խօսք ընել համառօտիւ, որովհետեւ ծովային զօրութիւնն այս պատերազմին մէջ մեծ գործ մը տեսնելու հանգամանքը չունէր եւ այս մասին Թուրքիոյ ունեցած գերազանցութիւնը չէր կրնար մեծ փոփոխութիւն մ'ընել իր ցամաքային զօրութեան ստորնութեանը։ Ապտ-իւլ-Ազիզի ըրած մեծածախս յիմարական զարդերուն առաջինն էր զրահաւոր նաւեր գնել. իր այս մոլութեան յագուրդ տալու համար՝ հարիւրաւոր միլիոններ վատնած էր։ Գաղղիոյ կամ Անգլիոյ մէջ նոր տեսակ զրահաւոր մը հնարուածին պէս՝ իսկոյն հատ մը կապսպրէր եւ այդ հետզհետէ շինուած նաւերն կուգային իր Տոլմա-Պաղչէի պալատան պատուհաններուն դիմացը կը շարուէին եւ այլ եւս չէին հեռանար։ Սուլթանը մեծ հաճոյք կզգար ժամերով այն գեղեցիկ խաղալիքներն դիտելէ՝ զորս հիանալի մաքուր վիճակի մը մէջ պահել կուտար եւ չէր ուզեր որ մեծ ծովերն ելնեն, զի մի գուցէ փորձանք մը պատահի։

Ապտ-իւլ-Ազիզի այս հաճոյից երեսէն՝ Թուրքիա այսօր աշխարհիս երրորդ կարգի ծովային զօրութիւնն է եւ նաւախումբ մ'ունի 6 կրկնայարկ (ֆրքաթօն) 9 միայարկ (քօրվէթ) եւ 2 ջրասուզակ (մօնիթօր) զրահաւորներէ բաղկացեալ 140 թնդանօթով։ Այս զրահաւորներն միջին հաշուով 9 կամ 10 հազար տակառաչափ կը կշռեն եւ իրենց պատկողանոցաց միջին մասանց վրայ 30 հարիւրամէթր թանձրութեանց երկաթի ծածկոյթ մ'ունին։ Ասոնց թնդանօթներն ալ 750 հազարակրամ ծանրութեամբ ռումբ կարձակեն։ Այս նաւերն գեղեցիկ յարձակողական գործիներ են, եւ կարելի է ըսել թէ չափազանց գեղեցիկ, վասն զի Թուրքիա աշխարհի բոլոր ծովերուն վրայ շրջագայելու յարմար այսպիսի նաւերու պէտք չունի, որովհետեւ Միջերկրականի ծովուն մէջ սահմանափակեալ են առ հասարակ իր շահերն։ Ապտ-իւլ-Ազիզի անմտաբար ըրած մսխողութիւնը հոս աւելի յայտնի կ'ըլլայ, վասն զի կարելի էր նուազ ծախիւք ստանալ կայսրութեան պէտք եղած նաւատորմիղ մը։ Վերոյիշեալ նաւերէն զատ՝ Անգլիոյ մէջ երկու մեծ զրահաւորներ ալ շինուելու վրայ էին պատերազմին բացուած ժամանակները, որոնք մին երբ լմնցաւ՝ Անգլիա չէզոքութեան սկզբունքն յարգելով՝ թոյլ չտուաւ մեկնելու։

Օսմանեան նաւատորմին նաւապետներուն ամենքն ալ մահմետական են, միայն մեքենավարներն Անգլիացի են։ Ասոնք ծովային կրթութեան մէջ թերութիւններ ունին՝ խիստ քիչ ճանապարհորդութիւն ըրած ըլլալով. բայց փոխարէն զինուորական կազմակերպութիւնը բաւական զարգացեալ է՝ երկար ժամանակ Վոսփորի ջուրերը կեցած ըլլալնուն համար։ Գաղղիացի սպայից տեղեկագիրներն միաբան կը հաստատեն թէ՝ օսմանեան նաւախմբին մէջ պատերազմի պատրաստուելու հրամանը տրուելուն պէս՝ նաւաստիք իրենց

գործն ամենայն ճշդութեամբ եւ արագութեամբ կը կատարեն, եւ խիստ լաւ գիտեն թնդանօթները բանեցնել։ Մէկ քանի անգղիացի սպայք ալ կան, ինչպէս է ընդհանուր հրամանատար Հօպարթ փաշա. իսկ տաճիկ սպայք պէտք եղած գիտութիւնը չունին։

Ռուսիոյ ծովային զօրութիւնը թուով ստորին է օսմանեան ծովային զօրութենէն եւ աւելի պաշտպանողական գործ մը տեսնելու սահմանեալ է քան թէ յարձակողական, որովհետեւ երեք զրահաւոր նաւեր միայն ունի Ռուսիա՝ ծովերուն բացն ելնելու կարող։ Երեք տարիէ ի վեր ռուսական կառավարութիւնը նոր նաւ չշինել տուած չէ՝ տեսնելով որ ուրիշ տէրութիւնք մեծամեծ ծախք կ'ընեն եւ կը ջանան իրենց նաւատորմիղներուն մէջ արդիւնացուցանել՝ նաւերն զրահաւորելու եւ զրահները խորտակելու արուեստին ամեն տարի եղած յառաջադիմութիւններն։ Կսպասէր որ նաւերու նոր եւ ընտիր տիպարներ հնարուին որք այնքան քիչ ժամանակի մէջ անպիտան համարուելու տեսակէն չըլլան. սակայն պատերազմի բացուելուն գրեթէ առանց ծովային զօրութեան գտնուեցաւ։ Իւր նաւատորմին մնացեալ մասն երկու պահակալ զրահաւորներէ, ութ եզերապահ զրահաւորներէ, տասներկու փոքր ջրասուզակներէ եւ Փոփովկա ըսուած երկու բոլորաձեւ նաւերէն կը բաղկանայ։ Երկու պահակալ զրահաւորներ միջակ նաւեր են եւ եզերապահներն ահագին բաներ չեն։ Տնեբրի գետաբերանն եւ Նիքօլայեվի նաւահանգիստը պաշտպանելու սահմանեալ նաւերուն ջրամուխ մասը կարելի եղածին չափ նուազ ընել պէտք ըլլալով, Փոփով ծովակալն այն բոլորշի նաւերն հնարած է որ իւր անուամբը Փոփովկա կըսուին, եւ որոց մեքենայն 3,000 ձիու ոյժ ունի։ Այս նաւերն այնպէս չըլլըրջուն են որ կարելի է զանոնք ուզուած կողմը դարձնելով տեղի մը նշան առնուլ առանց թնդանօթները դարձնելու, եւ ռումբ արձակել։ Այսու ամենայնիւ այս տարօրինակ հսկայներն իբրեւ ջրածուփ բերդեր միայն կրնան համարուիլ՝ գետերն եւ քիչ խորութիւն ունեցող նաւահանգիստներն եւ նաւակայքն պաշտպանելու սահմանեալ։ Ասկէ զատ ուրիշ գործ չունին եւ չեն կրնար ունենալ։

Սակայն Ռուսիա նաւ մ'ունի Բիօթր Վէլիքի (Մեծն Պետրոս) անուամբ, որ իւր արտաքոյ կարգի զօրութեամբը կարող է կշռոյն նժարը հակեցնել քիչ մը դէպ ի ռուսական ծովային զօրութեան կողմը։ Այս նաւն խիստ ահարկու եւ առանց կասկածի զրահաւոր մ'է՝ յորում արդի գիտութեան բոլոր կատարելագործութիւնք միացեալ են եւ Բէթէրսպուրկ շինուած է։ 10,000 տակառաչափ կը կշռէ, մեքենայն 10,000 ձիու զօրութիւն ունի եւ զրահն 50 հարիւրամէթր թանձրութիւն ունի։ Վերնայարկին վրայ երկու զրահաւոր աշտարակներ կան՝ որոց իւրաքանչիւրին մէջ երկու պողովատեայ թնդանօթներ զետեղուած են 31,000 քաշ (օգգա) ծանրութեամբ։ Նաւին ջրամուխ մասը կարելի եղածին չափ նուազ ընելով Պալթիկ ծովուն մէջ բանեցնելու համար՝ նաւին շատ երկայնութիւն տալ եւ մեքենայն խիստ հզօր ընել պէտք եղած է, միով բանիւ խիստ ահարկու պատերազմական նաւ մ'է։

Ռուսիոյ ծովային զօրաց ամեն կարգերն ալ իբր մեծ արժէք ունեցող կը նկատուին, մանաւանդ թնդանօթաձիգներն յոյժ համբաւաւոր են ճարտարութեան մասին։ Նաւատորմին ընդհանուր հրամանատարն է կայսեր եղբայր՝ Մեծ Դուքսն Կոստանդին։

## ՇՔԹԱԿՆԵՐ (ԹՕՐՓԻՅԼ)

Սեւ ծովու մէջ Ռուսիոյ ունեցած նաւերն են մէկ քանի լրատար նաւ, երկու կամ երեք ջրասուզակ եւ երկու Փոփովկա, այսինքն՝ բոլորովին աննշան զօրութիւն մը։ Ուստի այս փոքր նաւախումբն Տնեբրի

գետաբերանին աւազակոյտներուն յետակողմն ապաստանելով դուրս չելնելէ զատ ուրիշ գործ չկրնար ընել, որով Օսմանեան նաւատորմն միակ իշխող կըլլայ այն ծովուն վրայ պատերազմի ժամանակ ։

նաւաստիներով եւ գործաւորներով՝ իբրեւ պատերազմական նաւահանգիստ։ Զատոնք ինչպէս պաշտպանելու է։ Նիքոլայեւ զերծ եւ ապահով է գրեթէ ամեն յարձակմունքէ՝ ցամաքին մէջ գետեզերքին վրայ ըլ-



ՍԸՐ ՀԷՆՐԻ ԷԼԻԸԹ

Բայց Ռուսիա Փոթիէն, Կերչէն եւ փոքր նաւահանգիստներէն զատ երկու կարեւոր նաւահանգիստներ ալ ունի, որոց մին է Օտէսա 200,000 բնակչօք՝ իբրեւ առեւտրական նաւահանգիստ, եւ միւսն է Նիքոլայեւ 45,000 զինուորներով, պաշտպա-լալով. բայց Օտեսա բաց նաւահանգիստ մ'ունի եւ յարձակողը կրնայ ամեն դիւրութիւն գտնել ռմբակոծութեան համար։

Արդի գիտութիւնն նոր գործիք մ'ընծայած է Ռուսիոյ՝ իւր նաւահանգիստները պաշտպանելու համար՝ առ ի չգոյէ նա-

ւուց, այս գործիքն է չքթակն[1] (Թօրփիյլ) որ թէպէտեւ կատարելապէս փորձուած չէր, բայց ամենամեծ արդիւնք կը յուսացուէր անկէ։ Ռուսք իրենց պաշտպանել ուզած տեղերուն վրայ խիտ առ խիտ չքթակներ զետեղած էին։

Պաշտպանողական չքթակն Ամերիկայի միացեալ նահանգաց ներքին պատերազմին ժամանակ յաջողութեամբ գործածուած է առաջին անգամ, իսկ յարձակողական չքթակն աւելի նորագիւտ է։ Պաշտպանողական չքթակը վառօթով լի մետաղեայ անօթ մ'է որ ծովուն յատակը ծանօթ տեղ մը կը զետեղուի եւ որուն դիրքն ալ ճշդիւ կորոշուի։ Ասոնք ընդհանրապէս զուգահեռական գծերու վրայ կը շարեն, եւ այս գծերուն պաշտպանել ուզուած տեղերուն ձեւը կուտան, եւ իրարու այնքան մօտ կը դնեն որ անոնց փոխադարձ ներգործութեան սահմաններուն մէջ անջրպետ չմնար։ Իւրաքանչիւր չքթակէն մինչեւ ծովեզերք ելեկտրական թել մը կ'ըլլայ։ Այս կերպիւ պաշտպանեալ անցքէ մը անցնելու համար՝ երբ նաւախումբ մը կը մտնենայ եւ երբ նաւերէն մին չքթակի մը վրայ հուգայ՝ ծովեզերքին վրայ գտնուող դէտն ելեկտրական գործիքը կը բանեցնէ եւ չքթակը իսկոյն պայթելով կայծակի արագութեամբ իւր գործը կը տեսնէ. Նաւին տակը մէկ քանի մէթր տրամագծով լայն ծակ մը կը բացուի, որով կսկսի մէկ քանի րոպէի մէջ ուղղակի վերէն վայր սուզիլ նաւաստիներով հանդերձ։ Ջրին մէջ տեղն ինքնիրեն առ կախ կեցող չքթակներ ալ կը գործածուին երբեմն, բայց այս տեսակն ինչպէս թշնամեաց նոյնպէս եւ բարեկամաց համար վտանգաւոր ըլլալով անապահով է եւ քիչ կը գործածուի։

Յարձակողական չքթակներն երկու տեսակ են. մէկ տեսակը ղեկ մ'ունի եւ խողովակի մը մէջէն անցնելով ուղղութիւն մը կ'առնու եւ միեւնոյն ուղղութեամբ կերթայ ղեկին շնորհիւ եւ իր մէջ գտնուած ճնշեալ օդին միջոցաւ երկու պտուտակներու դառնալովը արագ ընթացք մը կը ստանայ. միւս տեսակն՝ մէկ ժամու մէջ 18 մղոն սուրող թեթեւ նաւակներու առաջակողմը զետեղուած կըլլայ, որոյ վրայ կեցող յանդուգն նաւաստիններն կը վարեն զայն եւ թշնամեաց նաւերուն բախել կուտան։ Թօրնիքրօվ անուամբ անգղիացի մը սոյն համար յատուկ նաւակներ հնարած է որք նմանը չտեսնուած արագութեամբ կը սլանան։

Թօրնիքրօվի հնարած նաւակներն իրենց տեսած գործոյն նայելով շատ սուղ չեն եւ 80,000 Ֆրանքի կը ծախուին։ Երեք մարդիկ կը բաւեն թէ նաւակը եւ թէ չքթակը բանեցնելու։

Երբ զրահաւոր նաւերու խումբ մը նաւահանգստի մը մտնենայ ամբակոծելու նպատակաւ, եւ կամ անցքէ մ'անցնիլ փորձէ, անտեսանելի ծովախորշերու մէջ պահուած եւ կամ աւազուտ ծովափանց վրայ քաշուած Թօրնիքրօվի նաւակներն իսկոյն ծովուն մէջ կը յառաջանան բազմութեամբ, վասն զի աժան ըլլալով կարելի է ուզուածին չափ շատ ունենալ, եւ կը յարձակին այն նաւախմբին վրայ որ փախչելու ալ հնարքէն զուրկ է։ Իւրաքանչիւր նաւակ մէկ մէկ նաւու վրայ կը յարձակի։ Անշուշտ շատ նաւակներ կը կորնչին այս կռուոյն մէջ, բայց վնասը փոքր է։

Եթէ անոնցմէ մին յաջողի, 12 կամ 14 միլիոն Ֆրանք արժող նաւ մը իւր վրայ գտնուած 600 ի չափ մարդոցմով մէկտեղ կիջնէ ծովուն յատակը։ Այս տեսակ յարձակմունք աւելի գիշեր ժամանակ եւ կամ օդը մութ եւ միգապատ եղած միջոցները կրնան ըլլալ. բայց կորովի եւ հաստատամիտ մարդիկ պէտք են։ Մեծ զրահաւորներն ասոնց դէմ պաշտպանելու միջոցներ կը փնտռուին, բայց մինչեւ

[1] Այս անունը Գաղ. Թօրփիյլ ըսուած ձկան անունէն առնուած է։ Այս ձուկը տեսակ մ'ելեկտրական զօրութիւն ունի՝ այնպէս որ իրեն մօտեցող ձեռք կամ ձուկ իսկոյն կը թմրեցնէ։

ցարը. գտնուածներն անբաւական են ։ Ասոնք էին այն պաշտպանողական միջոցներն զորս Ռուսք ունէին Սեւ ծովու մէջ, եւ ասոնց մատուցած ծառայութիւնն յետոյ պիտի տեսնուի պատերազմին պատմութեան մէջ ։

# Գլուխ Ութերորդ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ

### ԴԵՍՊԱՆԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՆՑ ԽԶՈՒԵԼՈՒՆ ՊԱՐԱԳԱՅՆԵՐԸ

Դրան կողմանէ դիւանագրոյն տրուած պատասխանին թուականէն երեք օր յառաջ՝ Կորչաքով իշխանն Բէթէրսպուրկի անգղիական դեսպան Լորտ Լօֆթիւսի հետ տեսակցութիւն մ'ունենալով՝ բացէ ի բաց յայտարարած էր որ իւր կառավարութիւնը տաղտկացած էր այլ եւս բանակցելէ եւ պատրաստ էր պատերազմի սկսելու, եթէ Թուրքիա Եւրոպական դիւանագիտութեան ըրած վերջին ջանից ընդդիմանար ։ «Ռուսիա չկրնար, ըսաւ, այլ եւս երկար ժամանակ համբերել իւր վրայ արդէն ծանրացող դրամական մեծ բեռներուն ։ Բանակին շարժման վիճակի մէջ դրուելովը ամեն օր 750,000 րուպլի ծախք կ'երթայ, եւ այս այսպէս մէկ քանի ամիս կայ որ կը տեւէ ։ Ուստի Ռուսիա չպիտի հաճի բանակցութեանց թելն վերստին ձեռք առնուլ, որք կրնան տակաւին շատ ամիսներ երկարաձգիլ՝ առանց արդիւնք մ'ունենալու ։ »

Ռուսիա այսքան յառաջ նետուած լինելով՝ պատերազմ հրատարակելէ զատ ուրիշ բան չէր կրնար ընել դիւանագրոյն մերժմանը դէմ ։ Սակայն վերջին յոյս մ'ալ կը մնար խաղաղութեան բարեկամաց. վասն զի Լոնտրայի ռուսական դեսպան՝ Շուվալով կոմսն այն գրութեան կցեալ յայտարարութեամբ առաջարկած էր որ Օսմանեան լիազօր փոխանորդ մը ղրկուի Բէթէրսպուրկ՝ երկու տէրութեանց միանգամայն զէնքերը վար դրուելու մասին բանակցութիւններ ընելու համար ։ Ուստի այս կերպիւ վերջին միջոց մ'ալ կը մնար գործը խաղաղութեամբ կարգադրելու, սակայն Թուրքիա զայն ալ մերժեց իւր արժանապատուութեան վայելուչ խրոխտութեամբ մը ։ Անգղիոյ կողմանէ ղրկուած նոր դեսպանին՝ Գ. Լայարտի խրատներն չկրցան յաղթել Դրան հաստատամտութեան ։

Անկէ վերջը պատերազմն անխուսափելի երեւցաւ ։ Ապրիլ 11ին՝ կայսրն ընկերակցութեամբ կայսրուհւոյն՝ ըստ սովորութեան նախագահելով այն կոչունքին՝ որ Թիկնապահ սպայից գումարտակին տօնախմբութեանն առթիւ կը տրուէր, ներկայ գտնուող սպայից հետեւեալ խօսքերն ըսաւ.

«Պարոնայք, իմ ամենասիրելի եղբայրս Նիքօլա խոհեմութեամբ վարուելու խօսք կ'ընէ ինձ ։ Բայց ալ լմնցած է, ժողովրդեանս կամացն եւ իմ քրիստոնէական պարտաւորութեանս կը զիջանիմ ։ Դուք նորա վեհ առաջնորդութեամբն պիտի երթաք մարտնչիլ յունական խաչին համար Պուլղարիոյ նահատակաց երկրին վրայ, եւ ես հոս պիտի մնամ բարձրելոյն Աստուծոյ պաղատելու համար որ իմ սուրբ Ռուսիոյ զէնքերն օրհնէ ։ »

Միեւնոյն պահուն ազդ եղաւ թէ՝ կայսրն պիտի մեկնէր Քիշնեւ երթալու

համար եւ բանակն Ռումանիա մանելէ ա-
ռաջ պօրաՀանգէս մ'ընել պիտի տար։ Սր-
դէն բանակն ալ սկսած էր յառաջխաղալ,
զօրախմբերը իրենց ձմերոցներէն մեկնած
էին, Հեծելազօրն Պեսարապիոյ Հարաւային
կողմը կը Համախմբուէր Դանուբին կարելի
եղածին չափ մօտ՝ պատերազմի յայտարա-
րութիւն ըլլալուն պէս ռազմագիտական
կէտերը շուտով գրաւելու Համար . Հե-
տեւակազօրն ալ գումարուած էր Ռումա-
նիա տանող այլ եւ այլ ճանապարհներուն
բերանը, այսինքն՝ Խօթունի, Սքուլանիի
Ունկէնիի մէջ . Թնդանօթներուն ամենն
ալ այս վերջին կէտին վրայ բերուած էին
Ռուսիոյ եւ Ռումանական իշխանապետու-
թեան միջեւ գտնուած միակ երկաթուղ-
եաւ փոխադրուելու Համար ։ Պատերազմն
որ Բեթէրսպուրկի մէջ ապրիլ 12 ին պաշ-
տօնէից խորհրդով որոշուած էր՝ այսպէս
արդեամբ Հրատարակուած ըսել էր ։

Օսմանեան կայսրութեան երկիրներուն
մէջ գտնուող ռուսական Հիւպատոսներն
իսկոյն Հրաման առացան մեկնելու։ Ապրիլ
15 ին՝ Էրէքլէք անուն շոգենաւն եկաւ
ռուսական դեսպանատան մարդիկը տա-
նելու։ Իկնաթիեւ զօրապետին մեկնելէն
ի վեր գործակատար կարգեալ Պ. Նէլի-
տով պատրաստութիւններ տեսաւ մեկ-
նելու ։ Նոյն ամսոյն 22 ին՝ կայսերական
Աըչօնօֆ անուն զբօսանաւն իրեն վերջին
Հրահանգներ բերաւ որոց պարունակու-
թիւնն արդէն երկար ժամանակէ ի վեր
գուշակուած էր։ Պ. Նէլիտով Գերմանա-
կան դեսպանատունը փոխադրել տուաւ
իր դեսպանատան տումարներն եւ կայ-
սեր Հզօր դաշնակցին Հսկողութեանը
յանձնեց ։ Պ. Նէլիտովի արկղերն եւ կա-
րասեաց կապոցներն իր բնակարանին
պարտէզէն գաղտնի դուրս Հանուելով
նաւը տարուեցան՝ ուշադրութենէ զերծ
մնալու եւ ամբոխին խռնուելուն պատ-
ճառ չտալու Համար։ Ապրիլ 23ին առաւօ-
տուն՝ Ռուսիոյ դեսպանատան առաջին
թարգման՝ Պ. Օնու Դուռը գնաց եւ Սաֆ-
վէթ փաշայի Հաղորդեց վերջին ծանու-
ցագիր մը կամ յայտարարութիւն մը՝
որով յարաբերութիւնք պաշտօնապէս կը
խզուէին եւ որոյ իմաստն այս էր թէ՝
կայսերական կառավարութիւնն Հաշտու-
թեան բոլոր միջոցները բանեցուցած եւ
Դուռն ալ յամառ ընդդիմութիւն մ'ը-
րած ըլլալով նորա բոլոր պէկուցմանց,
խնդրանաց եւ խրատուց , ուրիշ ը-
նելիք չունէր Նորին կայսերական վե-
Հափառութիւնն բայց եթէ՝ դեսպանա-
կան յարաբերութեանց խզուած ըլլալն
յայտարարել. ուստի եւ որոշած էր յետս
կոչել Օսմանեան կառավարութեան երկրին
մէջ գտնուած բոլոր ներկայացուցիչներն
եւ Հիւպատոսներն ։

Քանի մը ժամ յետոյ Էրէքլէքն եւ զբօ-
սանաւն արագութեամբ Վոսփորի ջրերն
Հերձանելով կը Հեռանային ռուսական դես-
պանատան բոլոր մարդոցմով , մինչդեռ
նոյն ապարանքին վրան առջեւ ալ մեծ եւ
խառնաձայն ամբոխ մը կը խռնէր՝ զոր ոս-
տիկանաց խումբ մը Հազիւ կրնար զսպել։
Իւրաքանչիւր ոք կուզէր պալատան վրայ
կեցած կայսերական զինանշանին վար ա-
ռնուիլը տեսնել ։ Այն երկգլուխ արծուն
անգամ մ'ալ այնպէս աներեւոյթ եղած էր
1853 ին յուլիս ամսեան մէջ, եւ շատ Բե-
րացիներ քսան եւ չորս տարի առաջ պա-
տաՀած այն նշանաւոր դէպքը կը յիշէին։
Երկու մեթրի չափ բարձրութեամբ պղն-
ձաձոյլ երկգլուխ արծուին խոշաբարձ բո-
լորշի թագ մը կը կրէ, եւ ձախ ճանկը
կարկամեալ կը յենու երկրագնդի մը վրայ
եւ աջովը մական մը կը բռնէ . միանգա-
մայն անոր երկու ստից ճիրաններէն ա-
ձակուած կայծակնացայտ բոցեր կ'երեւին։
Կէս օրը չորս ժամ անցած էր՝ երբ ութ
բեռնակիրք պալատան տանիքին վրայ ե-
րեւցան եւ սկսան փութով աշխատիլ այն
պտուտակներն եւ գամերն Հանելու՝ ո-
րովք Հոն Հաստատուած էր ձարերուն սէգ
արծուին։ Այս աշխատութիւնն երկար ժա-
մանակ տեւեց եւ ամբոխն Հետզհետէ կը

ստուարանար՝ որոյ մէջ շատ յուններ եւ եւրոպացիներ կը նշմարուէին որք մօտակայ վաճառանոցներուն տէրերն կամ գործակալներն էին, նաեւ մեծ փաթթոցով տաճիկ կարդացողներ, իրենց զօրանոցները դարձող խոնջեալ զինուորներ եւ տէվրիշներ։ Այս խառնաշփոթ ամբոխն տարբեր կան արծիւն՝ տանիքէն անջատուած եւ հաստ չուաններէ կախուած ծանր ծանր եւ մեծաշուք վար իջաւ եւ աներեւոյթ եղաւ։ Նոյն պահուն վանդակադրան քովերն եղած երկու ձուլածոյ սիւնակներուն վրայ երկու մարդ ելնելով՝ մոմապած կտաւէ պահարանով մը պատեցին այն եր-



ՂԱԶԻ ԱՀՄԷՏ ՄՈՒԽԹԱՐ ՓԱՇԱ, ԸՆԴՀ. ՀՐԱՄԱՆԱՏԱՐ ԱՍԻԱԿԱՆ ԲԱՆԱԿԻՆ

զգացմամբ ոգեւորեալ էր, մահմետականք բոլորովին ատելութեամբ լցուած էին, իսկ քրիստոնեայք մտատանջութեան մէջ ինկած՝ յիշելով այն ժողովրդային գաւառմներն եւ սպառնալիքն որովք նշանաւոր եղած են բոլոր տաճկական պատերազմաց սկզբնաւորութիւնքը։ Սակայն խառնաձայն մրմունջ մ'ելաւ իսկոյն այն բազմութեան մէջէն, եւ ամենուն աչքը նորէն պալատին վրայ դարձաւ։ Ուսակու պղնձի մանրակերտ արծիւներն որ հոն զետեղեալ էին. յետոյ դուռը գոցուեցաւ եւ փարագոյրներն իբրեւ արտեւանունք իջան ծածկեցին պալատան պատուհաններն՝ որոց մէջէն ջահերուն բոցերը կը ցոլային դեսպանաժողովոյ շքեղ նիստերուն ժամանակ, եւ այն լայնատարր շէնքը լուռ. եւ անմարդի մնալով՝ նմանեցաւ հսկայի մը որ ի քուն կը մնէ։

Մինչեւ այն ատեն դիւանագիտական

յարաբերութիւնք խզեալ էին միայն . իսկ հետեւեալ օրը պատերազմի յայտարարութիւնը Կոստանդնուպոլիս հասաւ ։

## ԶՕՐԱՀԱՆԴԷՍ Ի ՔԻՇՆԵՎ ԵՒ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԿԱՅՍԵՐ

Աղէքսանդր երկրորդ կայսրն՝ որ ապրիլ 20ին Բէթէրսպուրկէն մեկներ էր երեք օր ճանապարհորդելէն յետոյ Գիրսուլա հասաւ՝ ուր հանդիպեցաւ հարաւային բանակին առաջին զօրախմբոց։ Իրեն կ'ընկերանային գահաժառանգ մեծ դուքսն, պատերազմի նախարար Միլութին զօրապետն եւ Իգնաթիեվ զօրավարն ։ Սպայակոյտը զինքը դիմաւորելու գնաց, եւ Գիրսուլայէն սկսելով կայսրը զննեց մինչեւ Ունկէնի իր ճանապարհին վրայ եղած բոլոր զօրախումբերն . բայց Քիշնեվ դառնալով զօրքը չզննեց եւ հոն կանգ չառաւ , որովհետեւ հոն պիտի դառնար եւ օթեւանէր ամսոյն 24ին ըլլալիք մեծ հանդիսին ներկայ գտնուելու համար։

Գիրսուլայի մէջ ըսաւ սպայից . « Երբ թշնամւոյն հանդիպիք , քաջ եղիք , ձեր գնդերուն պատիւը պահպանեցէք ։ Ձեր մէջ պատերազմ չտեսնող նորատի զօրք կան. կը յուսամ որ նոքա եւս չպիտի կասին, եւ պիտի ջանան արիութեան մէջ հաւասարելու իմ հին զօրացս։ Կը փափաքիմ որ շուտով դառնաք փառօք լցեալ։ Մնացէք բարեաւ, պարոնայք։» Եւ զօրաց դառնալով ըսաւ . «Մնացէք բարեաւ, որդեակք իմ։» Թիրասփոլի մէջ իւր խաղաղութիւն սիրելը եւ քաներկու տարի իշխանութիւն վարելէն յետոյ առաջին անգամ հակառակ վարուելու ստիպուած ըլլալը բացայայտեց ըսելով, «Շատ կը դժկամակէի զձեզ պատերազմի ղրկելու եւ կարելի եղածին չափ կ'ուշացնէի այս վայրկեանը՝ ձեր արիւնը թափուելուն համար վարանելով ։ Բայց քանի որ Ռուսիոյ պատիւը վտանգի տակ է, համոզեալ եմ որ պիտի կարենաք զայն պաշտպանել մինչեւ անգամ եթէ մէկ հոգինիս մնայ։ Աստուած հետերնիս ըլլայ։» Ամեն տեղ զօրքն եռանդագին տեսաւ եւ իրեն ամենամեծ գոհունակութիւն ազդեց անոնց կերպարանքն ու վարմունքը ։

Քիշնեվ՝ որ ուրիշ ժամանակ տխուր, նսեմ եւ ցեխոտ քաղաք մ'է, մէկ քանի օրէ ի վեր մեծ փութով պատրաստութիւններ առած էր իւր վեհապետն ասպընջականելու համար . տուները բռով ծեփուած էին եւ փողոցները մաքրուած, քաղաքապետական խորհուրդն աճապարանօք բերել տուած էր Օտեսայէն այն արծաթեայ պնակն՝ որոյ վրայ հաց եւ աղ պիտի մատուցանէր կայսեր ըստ վաղեմի սովորութեան սլաւաց ։ Երբ կայսրը քաղաքը մտաւ կէս գիշերուն՝ բոլոր եկեղեցեաց զանգակներն սկսան հնչել եւ կայարանէն մինչեւ իրեն համար պատրաստեալ բնակարանը գտնուած ճանապարհին վրայ՝ տներն լուսավառութեամբ, դրօշներով եւ ծաղկանց պսակներով զարդարուած տեսաւ ։

Ընդհանրապէս կը կարծուէր թէ՝ կայսրը պատերազմ հրատարակելու համար ամսոյն 29ին պիտի սպասէր՝ որ իւր ծննդեան վաթսուներորդ տարեդարձն էր, եւ 24ին՝ որ իւր անդրանիկ որդւոյն՝ Նիքոլայի մահուան տարեդարձի օրն էր, մինչեւ այն ատեն եղածին պէս՝ աղօթք եւ մաղթանք պիտի կատարուէր միայն , բայց հարկն այնպէս պահանջեց որ ասոնց եւ ոչ մին եղաւ։

Հետեւեալ առաւօտուն լուր ելնելով թէ կայսրը մեծ զօրահանդէսը այն օրը պիտի ընէ , Քիշնեվ քաղաքին բոլոր հասարակութիւնն՝ հրէից թաղին աղտեղի եւ նեղ փողոցներէն անցնելով Գրիսխովայի հովիտը կը խռնէր՝ ուր զօրաց մէկ մասն արդէն գումարեալ էր։ Այս հովիտը խիստ լաւ ընտրուած տեղ մ'էր բլուրի մը զառիթափին վրայ, յորում բանակին կառքերն մէկզմէկէ ետեւ շարուած էին աստիճանաւ իբրեւ շրջատեսարանի մը մէջ ,

եւ հանդիսականք կրնային մէկ նայուածքով ամեն բան տեսնել։ Առջի օրէն օդը բացուած էր, այն առաւօտուն սքանչելի օդ մը կար եւ արեգակն լուսաճաճանչ կը փայլէր. այլ եւ այլ համազգեստներն, զինուորաց հիանալի շարքերն, շողշողուն սուիններն, թնդանօթաց յղկեալ պղնձատէն ցոլացող լուսոյ լայնածաւալ շառաւիղներն վէհ տեսարան մը կը կազմէին համանգամայն, եւ անոր չորս կողմէն շրջակայ բլրոց ծիրը կերեւէր՝ զորս գարնան առաջին ոստերն կանաչագեղ դալարեօք կը զարդարէին։ Ժամը տասն ու կէսին կայսրն հասաւ գահաժառանգ մեծ դքսին հետ, եւ զօրաց ճակատը կենալով անցահանդէս մ'ընել տուաւ։ Կայսեր դէմքը խիստ տժգոյն էր եւ վրդովեալ ու այլայլեալ։ Զրոյց մը կայ թէ՝ Նիկողայոս կայսրը մեռնելէն կամ ըստ ոմանց ինքզինքն սպաննելէն առաջ՝ Խրիմու պատերազմին ձախողութեանց վրայ յուսահատեալ՝ իւր որդին (այժմու Աղեքսանդր կայսրը) քովը կանչելով՝ երդում ընել տուած է թէ իւր իշխանութեանը ժամանակ ամենեւին պատերազմ չընէ։ Այս զրոյցը թէպէտեւ վաւերական չէ, սակայն շատ ընդհանրացած է։ Արդեօք այս երդումը միտքն եկաւ, որոյ դէմ դըրժած էր պարագայից ազդեցութեամբը։ Արդեօք պարզապէս պատերազմին սոսկումն էր որ իւր ի բնէ խաղաղասիրական ոգին տխրութեամբ կը պատէր։ Արդեօք Ռոմանովի (1) տոհմին աւանդութիւնն էր որ կը տանջէր իւր միտքը. վասն զի Ռուսիոյ մէջ խիստ ընդհանրացած աւանդութիւն մը կայ, որպէս թէ՝ Ռոմանովի սերնդէն ոչ ոք կրցած է եւ պիտի կարենայ վաթսուն տարի ապրիլ։ Եւ ստուգիւ ալ իւր նախորդներն՝ Պօղոս Ա. Աղեքսանդր Ա. եւ Նիկողայոս վաթսուն տարեկան չեղած մեռան։ Այժմու կայսեր քոյրը՝ Մարիամ մեծ դքսուհին նոյնպէս յիսուն եւ եօթն տարեկան մեռաւ 1876ին։ Մեծ դքսուհին մեռած պահուն՝ այս աւանդութիւնը յիշեցուցեր է իւր եղբօրը, եւ կըսեն թէ՝ իւր հոգեվարք քրոջը հետ ըրած այս տեսակցութիւնը անհնարին տպաւորութիւն մ'ըրաւ Աղէկսանդր Բ. կայսեր վրայ։ (1)

Կայսրը մէկ ժամ զօրաց զննութիւնն ընելէն յետոյ՝ կանգ առաւ բլրակի մը վրայ որ բոլոր հովտին վրայ կը նայէր. վար իջաւ ձիէն եւ բոլոր սպայակոյտն ալ նոյնպէս ըրաւ։ Թմբուկք աղօթքի եղանակը նուագեցին, զինուորները դլխարկնին հանեցին ինչպէս նաեւ ամբոխն, եւ յանկարծ ընդհանուր լռութեան մէջ ձայն մը լսուեցաւ։ Քիշնեւի եպիսկոպոսն էր որ կայսեր քով կեցած եւ քահանայական զգեստներն հագած՝ հետեւեալ պատերազմին յայտարարութիւնը կը կարդար.

«Մեր հաւատարիմ եւ ամենասիրելի հպատակներն գիտեն թէ որչափ մեծ խնամք նուիրած ենք միշտ Թուրքիոյ հարստահարեալ քրիստոնեայ ժողովրդոց վիճակին։

«Սոցա վիճակը բարւոքելու եւ երաշխաւորութեան տակ առնլու մասին մեր ունեցած բաղձանաց համօրէն ռուս ազգը մասնակից եղած է, եւ այսօր յօժարութիւն ցոյց կուտայ նորանոր զոհողութիւններ ընելու՝ Պալքանեան թերակղզւոյն քրիստոնէից կացութիւնն հանդուրժելի ընելու համար։

«Մեր հաւատարիմ հպատակաց արիւնն եւ ինչքը միշտ սիրելի եղած են մեզ։

«Մեր բոլոր իշխանութեան միջոցին ըրած գործերնիս կ'ապացուցանեն թէ ինչ յարատեւ հոգածութիւն ունեցած ենք խաղա-

(1) Ռոմանով էր կայսր Ռուսիոյ որ թագաւորեց 1613էն մինչև 1645.

(1) 1876 ապրիլ 29 ին՝ կայսրն իւր վաթսուներորդ տարին մտած էր և տակաւին ամենևին մեռնելու նշան չկար վրան. ուրեմն այս աւանդութիւնը սուտ ելաւ այս անգամ:

յարաբերութիւնք խզեալ էին միայն . իսկ հետեւեալ օրը պատերազմի յայտարարութիւնը Կոստանդնուպոլիս հասաւ ։

---

## ԶՕՐԱՀԱՆԴԷՍ Ի ՔԻՇՆԵՎ ԵՒ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԿԱՅՍԵՐ

Աղէքսանդր երկրորդ կայսրն՝ որ ապրիլ 20ին Բէթէրսպուրկէն մեկներ էր երեք օր ճանապարհորդելէն յետոյ Պիրսուլա հասաւ՝ ուր հանգիպեցաւ հարաւային բանակին առաջին զօրախմբոց։ Իրեն կ'ընկերանային գահաժառանգ մեծ դուքսն, պատերազմի նախարար Միլութին զօրապետն եւ Իկնաթիեվ զօրավարն ։ Սպայակոյտը զինքը դիմաւորելու գնաց, եւ Պիրսուլայէն սկսելով կայսրը զննեց մինչեւ Ունկէնի իւր ճանապարհին վրայ եղած բոլոր զօրախումբերն . բայց Քիշնեվ գտնուող զօրքը չզննեց եւ հոն կանգ չառաւ , որովհետեւ հոն պիտի դառնար եւ օթեվանէր ամսոյն 24ին ըլալիք մեծ հանդիսին ներկայ գտնուելու համար։

Պիրսուլայի մէջ ըսաւ սպայից . « Երբ Թշնամւոյն հանդիպիք , քաջ եղիք , ձեր գնդերուն պատիւը պահպանեցէք ։ Ձեր մէջ պատերազմ չտեսնող նորաւոր զօրք կան. կը յուսամ որ նոքա եւս չպիտի կասին, եւ պիտի ջանան արիութեան մէջ հաւասարելու իմ հին զօրացս։ Կը փափաքիմ որ շուտով դառնաք փառօք լցեալ։ Մնացէք բարեաւ, պարոնայք։» Եւ զօրաց դառնալով ըսաւ . «Մնացէք բարեաւ, որդեակք իմ։» Թիրասփոլի մէջ իւր խաղաղութիւն սիրելը եւ քաներկու տարի իշխանութիւն վարելէն յետոյ առաջին անգամ հակառակ վարուելու ստիպուած ըլլալը բացայայտեց ըսելով, «Շատ կը դժկամակէի զձեզ պատերազմի ղրկելու եւ կարելի եղածին չափ կ'ուշացնէի այս վայրկեանը՝ ձեր արիւնը Թափուելուն համար վարանելով ։ Բայց քանի որ Ռուսիոյ պատիւը վտանգի տակ է, համոզեալ եմ որ պիտի կարենամք զայն պաշտպանել մինչեւ անգամ եթէ մէկ հոգին իսկ մնայ։ Աստուած հետերնիս ըլլայ։» Ամեն տեղ զօրքն եռանդագին տեսաւ եւ իրեն ամենամեծ գոհունակութիւն ազդեց անոնց կերպարանքն ու վարմունքը ։

Քիշնեվ՝ որ ուրիշ ժամանակ տխուր, նսեմ եւ ցեխոտ քաղաք մ'է , մէկ քանի օրէ ի վեր մեծ փութով պատրաստութիւններ տեսած էր իւր վեհապետն ասպնջականելու համար . տուները բռով ծեփուած էին եւ փողոցները մաքրուած, քաղաքապետական խորհուրդն աճապարանօք բերել տուած էր Օտեսայէն այն արծաթեայ սնակն՝ որոյ վրայ հաց եւ աղ պիտի մատուցանէր կայսեր ըստ վաղեմի սովորութեան սլաւաց ։ Երբ կայսրը քաղաքը մտաւ կէս գիշերուն՝ բոլոր եկեղեցեաց զանգակներն սկսան հնչել եւ կայարանէն մինչեւ իրեն համար պատրաստեալ բնակարանը գտնուած ճանապարհին վրայ՝ տներն լուսավառութեամբ, դրօշներով եւ ծաղկանց պսակներով զարդարուած տեսաւ ։

Ընդհանրապէս կը կարծուէր թէ՝ կայսրը պատերազմ հրատարակելու համար ամսոյն 29ին պիտի սպասէր՝ որ իւր ծննդեան վաթսուներորդ տարեդարձն էր, եւ 24ին՝ որ իւր անդրանիկ որդւոյն՝ Նիքոլայի մահուան տարեդարձի օրն էր , մինչեւ այն ատեն եղածին պէս՝ աղօթք եւ մաղթանք պիտի կատարուէր միայն , բայց հարկն այնպէս պահանջեց որ ասոնց եւ ոչ մին եղաւ։

Հետեւեալ առաւօտուն լուր ելնելով թէ կայսրը մեծ զօրահանդէսը այն օրը պիտի ընէ , Քիշնեվ քաղաքին բոլոր հասարակութիւնն՝ հրէից թաղին աղտեղի եւ նեղ փողոցներէն անցնելով Պրիսխովայի հովիտը կը խռնէր՝ ուր զօրաց մէկ մասն արդէն գումարեալ էր։ Այս հովիտը խիստ լաւ ընտրուած տեղ մ'էր բլուրի մը զառիթափին վրայ, յորում բանակին կարգերն մէկզմէկէ ետեւ շարուած էին աստիճանաւ իբրեւ շրջատեսարանի մը մէջ,

եւ հանդիսականք կրնային մէկ նայուածքով ամեն բան տեսնել։ Առջի օրէն օդը բացուած էր, այն առաւօտուն սքանչելի օդ մը կար եւ արեգական լուսաճաճանչ կը փայլէր. այլ եւ այլ համազգեստներն, գինուորաց հիանալի շարքերն, շողշողուն սուիններն, Թնդանօթաց յղկեալ պղնձատէն ցոլացող լուսոյ լոյնածաւալ շառաւիղներն վեհ տեսարան մը կը կազմէին համանգամայն, եւ անոր չորս կողմէն շրջակայ բլրոց ծիրը կերեւէր՝ զորս դարնան առաջին ծաղիկներն կանաչագեղ դալարեօք կը զարդարէին ։ Ժամը տասն ու կէսին կայսրն հասաւ գահաժառանգ մեծ դքսին հետ, եւ զօրաց ճակատը կենալով անցահանդէս մ՚ընել տուաւ։ Կայսեր դէմքը խիստ տժգոյն էր եւ վրդովեալ ու այլայլեալ։ Զրոյց մը կայ թէ՝ Նիկողայոս կայսրը մեռնելէն կամ ըստ ոմանց ինքզինքը սպաննելէն առաջ՝ Խրիմու պատերազմին ձախորդութեանց վրայ յուսահատեալ՝ իւր որդին (այժմու Աղէքսանդր կայսրը) քովը կանչելով՝ երդում ընել տուած է թէ իւր իշխանութեանը ժամանակ ամենեւին պատերազմ չընէ ։ Այս զրոյցը թէպէտեւ վաւերական չէ, սակայն շատ ընդհանրացած է ։ Արդեօք այս երդումը միտքն եկաւ, որոյ դէմ դըրժած էր պարագայից ազդեցութեամբը ։ Արդեօք պարզապէս պատերազմին սոսկումն էր որ իւր ի բնէ խաղաղասիրական ոգին տխրութեամբ կը պատէր ։ Արդեօք Ռոմանովի (1) տոհմին աւանդութիւնն էր որ կը տանջէր իւր միտքը. վասն զի Ռուսիոյ մէջ խիստ ընդհանրացած աւանդութիւն մը կայ, որպէս թէ՝ Ռոմանովի տերնէն ոչ ոք կրցած է եւ պիտի կարենայ վաթսուն տարի ապրիլ ։ Եւ սատուգիւ ալ իւր նախորդներն՝ Պօղոս Ա. Աղէքսանդր Ա. եւ Նիկողայոս վաթսուն տարեկան չեղած մեռան ։ Այժմու կայսեր քոյրը՝ Մարիամ մեծ դքսուհին նոյնպէս յիսուն եւ եօթն տարեկան մեռաւ 1876ին։ Մեծ դքսուհին մեռած պահուն՝ այս աւանդութիւնը յիշեցուցեր է իւր եղբօրը, եւ կըսեն թէ՝ իւր հոգեվարք քրոջը հետ ըրած այս տեսակցութիւնը անհնարին տպաւորութիւն մ՚ըրաւ Աղէկսանդր Բ. կայսեր վրայ։ (1)

Կայսրը մէկ ժամ զօրաց գննութիւնն ընելէն յետոյ՝ կանգ առաւ բլրակի մը վրայ որ բոլոր հովտին վրայ կը նայէր. վար իջաւ ձիէն եւ բոլոր սպայակոյտն ալ նոյնպէս ըրաւ ։ Թմբուկք աղօթքի եղանակը նուագեցին, զինուորները դլխարկնին հանեցին ինչպէս նաեւ ամբոխն, եւ յանկարծ ընդհանուր լռութեան մէջ ձայն մը լսուեցաւ ։ Թիշնեֆ եպիսկոպոսն էր որ կայսեր քով կեցած եւ քահանայական զգեստներն հագած՝ հետեւեալ պատերազմին յայտարարութիւնը կը կարդար.

«Մեր հաւատարիմ եւ ամենասիրելի հպատակներն գիտեն թէ որչափ մեծ խնամք նուիրած ենք միշտ Թուրքիոյ հարստահարեալ քրիստոնեայ ժողովրդոց վիճակին։

«Սոցա վիճակը բարուոքելու եւ երաշխաւորութեան տակ առնելու մասին մեր ունեցած բաղձանաց համօրէն ռուս ազգը մասնակից եղած է, եւ այսօր յօժարութիւն ցոյց կուտայ նորանոր զոհողութիւններ ընելու՝ Պալքանեան թերակղզւոյն քրիստոնէից կացութիւնն հանդուրժելի ընելու համար։

«Մեր հաւատարիմ հպատակաց արիւնն եւ ինչքը միշտ սիրելի եղած են մեզ։

«Մեր բոլոր իշխանութեան միջոցին ըրած գործերնիս կ՚ապացուցանեն թէ ինչ յարատեւ հոգածութիւն ունեցած ենք խաղա-

(1) Ռոմանով էր կայսր Ռուսիոյ որ Թագաւորեց 1613էն մինչև 1645.

(1) 1876 ապրիլ 29 ին՝ կայսրն իւր վաթսուներորդ տարին մտած էր և տակաւին ամենեւին մեռնելու նշան չկար վրան. ուրեմն այս աւանդութիւնը սուտ ելաւ այս անգամ:

ղութեան բարիքները Ռուսիոյ վայելել տալու համար․ Հերսէկի եւ Պուլղարիոյ մէջ պատահած դառն արկածից ժամանակն անգամ՝ շարունակ այդ զգացումը կրած եմք․

«Ամեն բանէ առաջ՝ մեր նպատակ դրած եմք Արեւելեան քրիստոնէից կենցաղոյն բարւոքումը ձեռք բերել՝ խաղաղական բանակցութեանց միջոցաւ եւ մեր դաշնակից ու բարեկամ մեծ տէրութեանց հետ միաբանութեամբ․

«Երկու տարի անդադար ջանք ըրած եմք Դրան ընդունել տալու համար այն բարենորոգմունքն՝ որք կրնան Պոսնայի, Հերսէկի եւ Պուլղարիոյ քրիստոնեայները պաշտպանել տեղական իշխանութեանց կամայնոյ վարմունքէն․ Դրան կողմանէ՝ առաջի բոլոր Եւրոպայի հանդիսաւոր կերպիւ տրուած նախկին խոստմունքէն կը հետեւէր մի միայն թէ՝ այդ բարենորոգմունքը պիտի գործադրուին․

«Սակայն բաղձացեալ նպատակին հասնելու մասին անյաջող եղան մեր ջանքերն՝ որոց միւս կառավարութիւններն ալ միահաղոյն կը մասնակցէին՝ դիւանագիտական միջոցաւ քանիցս առիթում բանեցնելով․ Դուռը դարձեալ անդրդուելի մնաց եւ քրիստոնէից ապահովութեանն համար որ եւ իցէ երաշխաւորութիւն բացորոշ կերպիւ մերժեց տալ, եւ Կոստանդնուպոլսոյ դեսպանաժողովոյն վերջին որոշումներն ալ չընդունեցաւ․

«Դուռն համոզելու համար ամեն հնարաւոր եղած հաշտարար միջոցներն փորձել փափաքելով՝ առաջարկեցինք միւս դահլիճներուն մասնաւոր դիւանագիր մը խմբագրել՝ Կոստանդնուպոլսոյ դեսպանաժողովոյն որոշած էական պայմանները բովանդակելով, եւ Դուռն հրաւիրել այս միջազգային դրութիւնն ընդունելու՝ որ մեր խաղաղասիրական պահանջմանց վերջին սահմանը ցոյց կուտայ․ Բայց մեր ակնկալութիւնն ի դերեւ ելաւ․ Դուռը չզիջաւ քրիստոնեայ Եւրոպայի միաձայն բաղձանաց, եւ դիւանագրոյն որոշմանցը չհաւանեցաւ․

«Այսպէս ամեն հաշտարար ջանք ի գործ դրած ըլլալով՝ Դրան խրոխտ յամառութեան պատճառաւ կը հարկադրուիմք աւելի վճռական գործոց ձեռնարկել․ Արդարութեան եւ նոյն իսկ մեր արժանապատուութեան զգացմունքը զայս կը պատուիրեն մեզ․ Դուռն իւր մերժմամբը կը ստիպէ զմեզ զինու զօրութեան դիմելու․

«Մեր դատին արդարութեանը վրայ մեծապէս համոզեալ եւ աստուածային շնորհաց ու օգնութեան վրայ խոնարհութեամբ վստահ ըլլալով, կը ծանուցանեմք մեր հաւատարիմ հպատակաց թէ՝ այժմ հասած է այն վայրկեանը զոր գուշակած էինք Մոսկուայի մէջ այն խօսքերն արտասանած ժամանակնիս՝ զորս համայն Ռուսիա միակամ ոգւով ընդունեցաւ․

«Այն ատեն դիտաւորութիւն յայտնած էինք միւս տէրութիւններէն անկախ կերպիւ գործելու՝ երբ մեք հարկ դատէինք եւ Ռուսիոյ պատիւը պահանջէր զայն․

«Ահա այսօր Աստուծոյ օրհնութիւնը հայցելով մեր քաջարի զօրաց վրայ՝ հրաման կուտամք իրենց Թուրքիոյ սահմանագլուխն անցնելու․

«Տուեալ ի Քիշնեւ՝ յերկոտասաներորդ (1) աւուր ամսեանն Ապրիլի 1877 տարւոյ Թուականութեան Փրկչին եւ քսան երկքերորդ ամի իշխանութեան մերոյ․

ԱՂԷՔՍԱՆԴՐ»

Քիշնեւի եպիսկոպոսն հազիւ կէսը կարդացած էր այս յայտարարութեան, եւ ահա հեծկլտանօք լալու ձայն մը լսուեցաւ եւ ամեն մարդ սկսաւ չորս կողմը նայիլ տեսնելու համար թէ ով է լացողը․ Կայսրն էր այն՝ որ՝ ականատես վկայի մը ըսածին

---

(1) Ըստ Հ. Տոմարի ։ Պատմութեանս մէջ գտնուած Թուականներն ընդհանրապէս ըստ Ն. Տոմարի նշանակուած են:



ՇՈՒՄՆՈՒՅԻ ՕՍՄԱՆԵԱՆ ԲԱՆԱԿԱՏԵՂԻՆ

նայելով՝ կուլար մանկան պէս, վասնզի իւր ըրած բոլոր ջանից հակառակ՝ պատերազմն հրատարակեալ էր։

Յետոյ Զքեզ Աստուած փառաբանեմք աղօթքն երգուեցաւ։ «Երկրպագեցուք ի ծունր անկեալ» ըսուած ժամանակ, կայսրն ամուր ձայնիւ հետեւեալ հրամանը տուաւ. «Վաշտեր, ի ծունր.» եւ 30,000 մարդիկ ծունր կրկնեցին եւ եպիսկոպոսին օրհնութիւնն ընկալան։ Կրօնական արարողութենէն յետոյ՝ կայսրն՝ իւր եղբայրը՝ Նիքոլա մեծ դուքսն ընդգրկեց եւ մէկ քանի անգամ համբուրեց զինուորաց առջեւ։ Յետոյ ընդհանուր հրամանատարին կողմանէ զօրաց ուղղեալ օրակարգն կարդացուեցաւ իւրաքանչիւր վաշտի, իւրաքանչիւր հեծելադասու եւ իւրաքանչիւր թնդանօթաձիգ զօրաց խմբի մէջ։ Այս գրութեամբ Նիքոլա մեծ դուքսն կայսեր յայտարարութենէն աւելի բացորոշ կերպիւ կը յայտնէր թէ՝ ինչ շահ կակնկալէր Ռուսիա իւր ձեռնարկելիք այս պատերազմին մէջ։ Եւրոպա կը վախնար որ աշխարհակալութեան նպատակաւ չըլլայ այս պատերազմը. բանակին ուղղեալ օրակարգն բացայայտ պատասխան մը կուտար այդ մտատանջութեանց.

«Սպայք, ենթասպայք եւ զինուորք իմ հրամանացս տակ կարգեալ բանակին, հրաւիրեալ եմք վեհապետին կամքը եւ մեր հարց սուրբ կտակը գործադրելու։ Ոչ թէ աշխարհակալութեանց համար կընթանամք այլ մեր թշնամանեալ եւ հարստահարեալ եղբայրները եւ Քրիստոսի հաւատքը պաշտպանելու համար։ Յառաջ. սուրբ է մեր դատը եւ Աստուած ընդ մեզ է։»

Մեծ դուքսն իւր խօսքն աւարտեց ըսելով իւր զօրաց թէ՝ սահմանագլուխն անցնելուն պէս՝ երկար ժամանակէ ի վեր Ռուսիոյ բարեկամ դանուող պետութեան մը երկիրը պիտի մտնէին եւ կը պատուիրէր որ Ռումէններուն կատարեալ բարեկամութիւն մը ցոյց տան, անոնց սովորութիւններն յարգեն եւ իբրեւ եղբայր վարուին անոնց հետ։ Այս պատուէրներն՝ ինչպէս յետոյ պիտի տեսնուի, ճշդիւ գործադրուեցան։

Կայսրն վերստին ձի հեծնելով, զօրախումբք սկսան կարգաւ անոր առջեւէն անցնիլ։ Իւր մասնաւոր ուշադրութիւնը գրաւեցին Տօնքի հրացաններով զինեալ պուլղար կամաւորաց երկու վաշտեր՝ որք այնպիսի կարգաւ ու ճշդութեամբ կը շարժէին որ կրնար պատիւ բերել որ եւ իցէ կանոնաւոր գնդի մը։ Ասոնք տաճկաց խժդժութիւններէն ազատելու համար Ռուսիա փախչելով ապաստանող գաղթականներ էին, ըստ մեծի մասին՝ ուսանողներ՝ որոց մէկ քանին արդէն չքանշաններ ընդունած էին Սերվիայէն՝ ուր արդէն անգամ մը պատերազմած էին տաճկաց դէմ։ Ամենքն ալ ուրախ եւ պատրաստ էին իրենց հայրենիքը դառնալով ազատութիւն տանելու, եւ ասոնք գլխաւոր մասը կազմեցին գնդի մը՝ որ ապա Սթօլէթով զօրավարին հրամանատարութեան տակ կազմակերպուեցաւ եւ ստուարացաւ։

Այս անցահանդէսը ցոյց տուաւ թէ Ռուսիա որչափ ջանք ըրած էր 1853 էն ի վեր Եւրոպայի միւս զինուորական տէրութեանց հաւասարելու համար. Բոլոր զինուորք կատարելապէս վարժուած էին խոնջութեան եւ կարգապահութեան։

Կայսրը հրաժեշտի մէկ քանի խօսքեր ըրաւ սպայից, եւ զինուորք այլեւս կարգապահութեամբ զսպուած չըլլալով՝ ազատ ասպարէզ տուին իրենց զգացմանց, Իրենց սաղաւարտներն, փեղոյրներն եւ զէնքերն յօդս ձօնեցին, կանայք եւ մանկունք ծաղիկներ սփռեցին եւ կայսերական խումբն մեկնեցաւ հանդիսարանէն, մինչ զինուորաց կողմանէ եռանդագին ցոյցեր կ՚ըլլային եւ մեծաձայն աղաղակներ եւ պայթիւններ օդը կը թնդացնէին։

Մէկ քանի գումարտակ զօրահանդէսէն ելած ժամանակնին ուղղակի Ռումանիա խաղացին։ Միւսներն իրենց բանակատեղիներն դարձան՝ ճանապարհ ելնելէ առաջ մէկ քանի ժամ հանգստանալու համար։

## ՏԱՃԿԱՍՏԱՆ ԱՆԱԳԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ ՄԻՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ԿԸ ԴԻՄԷ

Նոյն օրն՝ այսինքն ապրիլ 24ին Բէթէրսպուրկի օսմանեան գործակատարէն կը խնդրէր որ Ռուսիայէն հեռանայ եւ Կորչաքով իշխանն տէրութեանց շրջաբերական մ'ուղղելով կը բացատրէր թէ ինչ պատճառներու համար իւր կառավարութիւնն որոշած էր պատերազմի ձեռնարկելու։ Դրան կամացը վրայ Եւրոպայի կողմանէ հաւաքաբար եղած ճնշման փորձերուն իբր նիւթական նուիրագործութիւն մը կը նկատէր պատերազմը, եւ կը յայտարարէր թէ Ռուսիա ոչ թէ միայն ի դիմաց իւր կը գործէ, այլ նաեւ ի դիմաց այն բոլոր կառավարութեանց որ Կոստանդնուպոլսոյ դեսպանաժողովոյն մասնակցեր եւ Լոնտրայի դիւանագիրն ստորագրեր էին.

«Կայսրն որոշած է այսօր այն գործին ձեռնարկել յոր միաբանութեամբ հետամուտ լինելու հրաւէր կարդացած էր մեծ տէրութեանց։ Ուստի իւր բանակաց հրաման տուած է Տաճկաստանի սահմանագլուխն անցնելու։ Այսպիսի գործ մ'ընդունելով՝ մեր վեհափառ տէրը կը կատարէ այն պարտականութիւնը զոր Ռուսիոյ շահն իւր վրայ կը դնէ, որոյ խաղաղաբար զարգացման արգելք են Արեւելից մշտատեւ վրդովմունքն։

«Նորին վեհափառութիւնն համոզեալ է թէ այսպէս գործելով՝ Եւրոպայի զգացմանց եւ շահուց համեմատ կը վարի միանգամայն։»

Ակներեւ կերեւի թէ Դրան կառավարութիւնը տարօրինակ սխալ գաղափարներ ունէր։ Կը կարծէր որ Ռուսիա պատերազմ ընելու պատրաստ եւ մտադիր չէր։ Օսմանեան նախարարք բոլոր մահմետական ազգաց ունեցած այն համոզմանը մէջ պինդ կը կենային որպէս թէ Տաճկաստան Ռուսիոյ հետ պատերազմի բռնուած ժամանակ՝ մէկ քանի երաշխաւոր տէրութիւններ կամ գէթ Անգղիա իրեն օգնելու կը փութան եւ առատաբար իրենց ոսկիներն ու զօրքը կը նուիրեն։ Բոլոր ազդարարութեանց հակառակ՝ Ծըրիմու պատերազմին յիշատակներով պաշարեալ՝ ճիշդ դատողութիւն մը չէին ըներ ընդհանուր քաղաքական կացութեան վրայ որ առաջինէն տարբեր ընթացք բռնելու հարկ կը դնէր թէ տէրութեանց եւ թէ՛ իրենց վրայ։ Գ. Լայարտ իրենց քանիցս կրկներ էր որ եթէ Անգղիա միջոցներ ձեռք առնլու ստիպուէր, այն ալ ոչ Թուրքիոյ շահուն համար՝ այլ միայն իւր շահուց համար պիտի ընէր։ Բայց անոնք չէին ուզեր հաւատալ թէ Անգղիա առանձին կը թողու զիրենք, եւ մերժեցին նաեւ տէրութեանց միջնորդութիւնը խնդրելու խորհուրդը Փարիզի դաշնագրոյն ութերորդ յօդուածին համեմատ՝ որ է.

«Եթէ բարձրագոյն Դրան եւ միւս դաշնադիր տէրութեանց մէկուն կամ մէկ քանիին մէջ յարաբերութեանց խզուելուն երկիւղ տուող անհամաձայնութիւն մը ծագի՝ Բարձրագոյն Դուռն եւ այն տէրութեանց իւրաքանչիւրն զինու զօրութեան դիմելէ յառաջ՝ պիտի նային որ միւս դաշնադիր տէրութիւնք իրենց միջնորդութեամբն այդ տագնապին առաջքն առնլու միջոցները կարենան ունենալ։»

Պատերազմի յայտարարութիւնն Ապտիւլ-Համիտի խորհրդականաց աչքը բացաւ վերջապէս, մէկէն ի մէկ ցոյց տալով անոնց թէ ինչ անդունդի մօտ կամաւ մերձեցած էին։ Ուստի ջանացին այն վերջին միջոցն ալ փորձել խաղաղաբար այս կացութենէն զերծանելու համար, եւ ռուս զօրաց Ռումանիոյ մէջ ոտք դնելէն մէկ քանի ժամ յետոյ շրջաբերական մ'ուղղելով տէրութեանց միջնորդութիւնը խնդրեցին, զոր ցայն ժամ արհամարհած էին։ «Բարձրագոյն Դուռն այսու իւր համոզումը կը յայտնէ, ըսուած էր այն գրութեան մէջ, թէ բարեկամ տէրութիւնք առ օսմանեան կայսրութիւնն իրենց ունեցած բարեսէր հոգածութեան զգացմանց հա-

ւստարիմ մնալով՝ այս դիպող առիթը չպիտի փախցնեն մեծ պատերազմի մը ծագումն արգիլելու համար։»

Բայց արդէն ռուսական բանակներն սահմանագլուխն անցեր էին. այլեւս ոչ ոք կրնար զանոնք կասեցնել, եւ տէրութիւնք այդ բանին վրայ չմտածեցին անգամ, որովհետեւ շատ ուշ էր։

Օսմանեան կառավարութիւնն ինքն ալ շուտով հասկցաւ զայս, եւ երկու օր յետոյ նոր շրջաբերականաւ մը պատերազմը յանձն կառնուր իբրեւ կատարուած իրողութիւն մը եւ պատասխանատուութիւնը կը ձգէր Ռուսիոյ վրայ։ Ահաւասիկ այդ շրջաբերականին ամբողջ բնագիրը, որ կը բացայայտէ թէ տաճիկ նախարարներն ինչ զգացմանց անսալով այնքան դէմ կեցան.

«Ռուսիա՝ օսմանեան կայսրութեան դէմ պատերազմ հրատարակելով եւ մեր ասիական գաւառաց մէջ եւ Սուլթանին երկիրներուն ամբողջարար մէկ մասը կազմող իշխանապետութեան մը՝ մէջ ըրած արշաւանօքն թշնամութիւնքն սկսելով, դժնդակ վախճան մը կուտայ այն վրդովմանց եւ քաղաքական դժուարութեանց որով Արեւելք կը յուզի երկու տարի է ի վեր։

«Եւրոպա որ մարդասիրական հոգածութեամբ եւ իւր իսկ անդորրութիւնն ապահովելու դիտաւորութեամբ այս սարսափելի պատահականութիւնն արգելուլ ջանաց եռանդագին եւ յարատեւ ջանիւք, անշուշտ իրաւունք ունի քննելու իւր ճգանց անյաջողութեան պատճառներն, եւ որոշելու թէ երկու տէրութիւններէն որուն վրայ կը ծանրանայ պատերազմին եւ նորա աղետից պատասխանատուութիւնն։ Սուլթանին կառավարութիւնն եւս պարտականութիւն մ՚ ունի այս հանդիսաւոր ժամուն՝ իւր ժողովրդոց եւ բարեկամ տէրութեանց աչաց առջեւ դնելու՝ արդի կացութիւնն յառաջ բերող քաղաքական դիպաց եւ իւր իսկ գործոց ճշգրիտ պատմութիւնը։

«Արտաքուստ եկած յեղափոխական տարրերով յուզեալ երկու գաւառք՝ 1876 տարւոյն մէջ յայտնի ապստամբած էին Սուլթանին օրինաւոր իշխանութեան դէմ, եւ այս չարիքն համասլաւեան գրգռիչ ընկերութեանց դժնեայ ազդեցութեամբն կսպառնար միւս գաւառաց մէջ ալ ծաւալելու, եւ կայսրութեան ամենէն հանդարտ ժողովուրդներն աղետից եւ կործանման մատնելու։

«Երկիցս բարեկամ տէրութիւնք ջանացին խաղաղեցնել այն գաւառներն. նախ հիւպատոսաց միջնորդութեամբն՝ որ ուրիշ արդիւնք չունեցաւ բայց եթէ Եւրոպայի բաղձանաց դէմ սլաւեան դաւաճանութեան գլուխներուն արհամարհանքն երեւան հանել. երկրորդ՝ բարենորոգմանց հիմնագծով մը զոր Վիէննայի դահլիճն առաջարկեց եւ որ Բարձրագոյն Դուռն ընդունելէն յետոյ՝ ապստամբաց կողմանէ մերժուեցաւ։

«Այս յարձակմանց դէմ դնելու համար՝ ինչպէս նաեւ թող չտալու համար որ ներքին պատերազմին չարիքն ընդարձակին ուրիշ գաւառաց մէջ, կայսերական կառավարութիւնն ազգային բոլոր զինուորական զօրութիւնները գործածեց եւ այս հայրենասիրական մեծ ջանիւք կրցաւ յաղթել ապստամբութեան, պահպանել կայսրութեան ամբողջութիւնն եւ զԵւրոպա զերծանել Արեւելից ընդհանուր վրդովման անխուսափելի հակազդեցութենէն։

«Ուրեմն Տաճկաստան թէ առ ինքն եւ թէ առ Եւրոպա ճշմարիտ պարտականութիւն մը կատարած է զինուելով բարեկարգութիւնն վերահաստատելու եւ Եւրոպայի անդորրութիւնն անվթար պահելու ինչպէս նաեւ խաղաղութիւնը պահպանելու համար։ Կայսերական կառավարութեան հոգածութեանն ուրիշ ոչ նուազ կարեւոր պարտականութիւն մը կը մնար, այն է անցելոյն սխալներն ուղղել, երկրին ազատական օրէնսդրութեամբք օժտել եւ պետութեան վարչութիւնքը վերակազմել

եւրոպական քաղաքակրթութեան սկզբանց համեմատ։ Այս կառավարական եւ վարչական վերածնութեան գործն՝ որ հիմն ունի իրեն Վեհափառ սուլթանին շնորհած սահմանադրութիւնն՝ կը կատարուի այս պահուս Վեհապետին կամաց ինչպէս նաեւ այս գործոյն կատարելապէս անձնուէր նախարարաց կամաց կօգնեն երկրին տրամադրութիւնքն՝ որ սահմանադրական բարենորոգումն ուրախութեամբ եւ երախտագիտութեամբ ընկալաւ, եւ օսմանեան խորհրդարանը կազմող երկու ժողովոց ջանքն եւ աշխատութիւնքն կը նպաստեն յայն։

«Սակայն Եւրոպա նոյն իսկ իրեն համար յիրաւի վտանգաւոր համարած իրաց վիճակի մը վերջ տալէ յոյսը կտրած չէր։ Հաշտութեան ճանապարհին մէջ վերստին իրեն հետեւելու մասին Սուլթանին կառավարութեան յօժարութեանը վրայ վստահ լինելով, Կոստանդնուպօլսոյ մէջ դեսպանաժողով մը գումարել առաջարկած էր՝ որ առաջուց կարգադրեալ հիմանց վրայ Բարձրագոյն Դրան հետ համաձայնութեամբ պիտի ջանար գտնել խաղաղութեան վերահաստատութեան վերջնական պայմաններն։ Բաւական է յիշել որ մեծ տէրութիւնք՝ Բարձրագոյն Դուռն ի բաց թողլով՝ միմեանց հետ խորհրդակցելէ յետոյ՝ դեսպանաժողովոյ հիմնագծին մէջ նոր տարրեր մուծին հակառակ Անգղիոյ առաջարկած հիմանց՝ որոց կայսերական կառավարութիւնն հաւանած էր. բաւական է յիշել թէ օսմանեան պատուիրակներն՝ ներքին վարչական խնդրոց վրայ վիճաբանութիւններ բացուելու մասին Բարձրագոյն Դրան ունեցած դժկամակութեան հակառակ Եւրոպայի բաղձանաց զիջանելով՝ ամենակատարեալ գոհացուցիչ ապահովութիւններ՝ եւ կարելի է ըսել ամենէն համոզիչ ապացոյցներ տուին վարչական բարենորոգմանց մասին. բաւական է յիշել վերջապէս որ այս կէտին վրայ՝ ինչպէս նաեւ Հարկատու նահանգները խաղաղելու ընդհանուր պայմանաց վրայ համաձայնութիւն մը գրեթէ գոյացած էր, եւ եթէ դեսպանաժողովն այս ձեռք բերուած արդեանց եւ ոչ մին հաստատելով վերջացաւ, պատճառը Բարձրագոյն Դրան մերժումն էր՝ զոր ընդդէմ կը հանէր տէրութեանց իւր վրայ դնել ուզած երաշխաւորութեան երկու պայմաններուն։ Արդ՝ եթէ ակներեւ ճշմարտութիւն մը կայ զոր Թուրքիոյ թշնամիք իսկ ժխտած չեն, այն ալ սա է թէ այդ երկու պայմաններն կը հարուածէին կայսրութեան անկախութիւնը եւ միջազգային իրաւանց ամենէն նուիրական սկզբունքն, եւ բացէ ի բաց կ'եղծանէին 1856ի դաշնագրոյն պայմաններն՝ որ ստորագրող տէրութեանց կ'արգելու Թուրքիոյ ներքին վարչութեան միջամտել որ եւ իցէ կերպիւ։

«Ըստ այսմ՝ Կոստանդնուպօլսոյ դեսպանաժողովոյ անյաջողութիւնն ուրիշ հետեւանք ունենալու չէր՝ բայց միայն մեծ տէրութեանց տեղի տալ որ վստահութեամբ սպասեն Բարձրագոյն Դրան ըրած բարոյական խոստմանց արդասիքն եւ օսմանեան սահմանադրութեամբ հաստատեալ վարչական նոր եղանակին արդիւնքն տեսնելու։ Եւ արդարեւ կայսերական կառավարութիւնս աշխատութեան ձեռնարկած էր ոչ թէ միայն իւր սահմանադրական դրութեան սկզբանց գործադրութեանն նուիրելով ինքզինքը, այլ նաեւ ինքնակամ բանակցութեան մտնելով Սերվիոյ եւ Գարատաղի հետ, որպէս զի այդ երկու իշխանապետութեանց եւ վեհապետական արքունեաց մէջ խաղաղութիւնը վերահաստատուի։

«Իւր աշխատութեան այս վերջին մասն կատարուելու վրայ էր։ Սերվիա խաղաղացեալ էր, եւ Բարձրագոյն Դրան կողմանէ Գարատաղի ցոյց տրուած բարեսէր տրամադրութիւնք կերեւէր թէ պիտի յաղթէին այն դժուարութեանց՝ որ այդ իշխանապետութեան անընդունելի պահանջմունքէն յառաջ կուգային։

«Կայսերական կառավարութիւնն իւր գործոյն կատարման մէջ ուրիշ բանէ չէր կրնար ազդուիլ, բայց եթէ պատերազմի մը ժամանակ պէտք եղածին չափ զօրք պահելու հարկէն եւ զէն ի ձեռին խաղաղութեան վիճակին ծանր բեռանց տոկալու պէտքէն։

«Ուստի կը մտածէր զէնքը վար դնել. բայց պարագայից խստիւ պատուիրած այս որոշումը գործադրելէ առաջ հարկ էր որ Եւրոպա անտարբեր չմնալով՝ Թուրքիոյ բարեսիրաբար աջակցէր, որպէս զի օսմանեան բանակին զօրաց ցրուիլն անխոհեմութեան կամ անզգոյշ շտապման գործ մը չըլլայ։

«Այն ինչ Բարձրագոյն Դուռն կը պատրաստուէր այս խաղաղասիրական բանակցութեան զԵւրոպա հրաւիրելու, եւ ահա Բէթէրսպուրկի դահլիճն նախաձեռնութիւն մ'ընելու հարկը տեսած էր, որպէս զի՝ ոչ թէ միաբանութեան համար՝ այլ կայսերական կառավարութեան վրայ ըլլալիք ճնշման մը համար նոր փորձ մը լինի։

«Այս բոլորովին անակնկալ դիւանագիտական հնարքէն յառաջ եկած է Լօնտրայի դիւանագիրն՝ որ յետ վիճաբանութեանց ստորագրուած է՝ առանց կայսերական կառավարութեան հրաւէր մ'ըլլալու որ քննութեան առնու անոր տրամադրութիւնները եւ մինչեւ անգամ առանց իւր կարծիքն առնուելու։ Այն պատճառներն՝ որ զԲարձրագոյն Դուռն ստիպած էին Կոստանդնուպօլսոյ դեսպանաժողովոյն ծրագրին մէկ քանի յօդուածները մերժել, կը հարկադրէին զինքն Եւրոպայի նոր որոշմունքը զանց ընելու՝ որք աւելի անընդունելի եղած էին Ռուսիոյ կողմանէ եղած մասնաւոր յայտարարութեանց պատճառաւ։ Իւր պատույն եւ անկախութեան հոգածու եւ ոչ մի կառավարութիւն կըրնար ընդունել իրեն ներկայացեալ այդ հիմնագիծն. եւ Սուլթանին կառավարութիւնն՝ իւր ուզածն ստանալու համար զէնք առնլու պատրաստ զօրաւոր թշնամւոյ մը դէմ մերժում մը հանած ժամանակ անոր իւր վրայ յարձակելը դիտելով, բայց ազգին երեսփոխանաց միակամ զգացմունքն իրեն զօրավիգ ունենալով, չվարանեցաւ իւր ներքին ինքնիշխանութեան լրութիւնը պահպանել։

«Այդ պատասխանատուութիւնը դժբաղդաբար կատարուեցաւ։ Ռուսիա ի զուր փորձելով օտարին հսկողութեամբն օսմանեան կայսրութիւնը տկարացնել եւ նուաստացնել, այսօր զինուք հետամուտ կը լինի իւր փառասէր քաղաքականութիւնը ի գլուխ հանելու։ Ռուսիա իւր դէմը պիտի գտնէ ամբողջ ժողովուրդ մը՝ որ զինեալ է երկիրը պաշտպանելու, իւր հայրենի երդը պահպանելու, իւր վեհապետին իրաւունքը եւ իւր հայրենեաց անկախութիւնը անվթար պահելու համար։

«Բայց այս անողորմ կռուոյն սկսած պահուն՝ անոր ելքն ինչ որ ալ ըլլայ՝ հարկ է որ կայսրութեան բոլոր ժողովուրդք հասարակաց փրկութեան համար՝ այսօր գահուն շուրջը համախմբեալ՝ իրենց կրած տառապանաց եւ իրենց երկրին վրայ գալու սպառնացող նորանոր աղէտից պատճառները ճանաչեն. Հարկ է վերջապէս որ թէ յաղթութեան եւ թէ պարտութեան մէջ օսմանեան կառավարութիւնը զերծ ըլլայ արդի պատերազմի պատասխանատուութենէն։ Վասն որոյ կայսերական կառավարութիւնս պարտ կը համարի հաստատել թէ Հերսէկի, Պոսնայի՝ ինչպէս նաեւ պուլղարներուն բնակած կուսակալութեանց քրիստոնեայ ժողովուրդներն Ռուսիոյ կողմանէ կազմաւորեալ եւ վարձեալ համասլաւեան մասնաժողովներու դրդմամբ վտարանջեցին, թէ Սերվիա եւ Գարատաղ Ռուսիոյ ուղղակի հրաւիրանօքն վեհապետական արքունեաց դէմ զէնք առին. թէ Ռուսիոյ օգնութեամբը միայն կրցան կռուոյն մէջ տոկալ եւ թէ երկու տարի է ի վեր կայսրութեան այն մասն հարուածող բոլոր չարիքն յառաջ եկան Ռուսիոյ յայտնի կամ գաղտնի՝

բայց միշտ ներկայ ներգործութենէն։

«Թող այժմ գիտէ Եւրոպա այն աւերածներն զոր Ռուսիոյ քաղաքականութիւնն արդէն ըրած է Թուրքիոյ մէջ, թող զննէ եւ դատէ անկողմնակալութեամբ այն կարծեցեալ վնասներն՝ զորս պատրուակ ըրած է ընդհանուր խաղաղութիւնը վրդովելու եւ երկու մեծ պետութիւններ պատերազմի արհաւրաց մէջ ընկղմելու համար, եւ թող իւր վճիռն հասարակաց խնդիրը հանդարտեցնէ։

«Թուրքիոյ վրայ յարձակողն՝ ինչպէս մահմետական ժողովրդոց նոյնպէս եւ քրիստոնեայ հասարակութեանց թշնամին է. վասնզի պատիր բանիւք զանոնք ներքին պատերազմի հրաւիրելով՝ անոնց խոստացած բարիքէն՝ աւելի չարիք պատճառած է եւ կը պատրաստէ։

«Ռուսիա կը համարձակի ըսել թէ քրիստոնեայները պաշտպանելու համար զինեալ է, եւ այս՝ այնպիսի պահու մը յորում ազատ երկրի մը փափաքած կատարելագոյն սահմանադրութիւնը բոլոր օսմանեանց հաւասարութեան սկզբունքը կը հրատարակէ, այնպիսի պահու մը՝ յորում այդ սկզբունքը կը նուիրագործի եւ Բ. Դրան համար անկարելի կըլլայ դէշ կամ աղէկ ներքին քաղաքականութեան գործ մ՚ընել՝ որմէ օգուտ կամ վնաս չառնեն միանգամայն Սուլթանին իշխանութեան ներքեւ ապրող մահմետական կամ ոչ մահմետական ամեն անհատք։

«Կայսերական կառավարութիւնն, «նայեցէք եւ դատեցէք» ըսած է Ռուսիոյ, ինչպէս նաեւ Եւրոպիոյ միւս տէրութեանց. եւ այս աննենգ ու անկեղծ խօսքին դէմ պատերազմի յայտարարութեամբ մը պատասխանած է Ռուսիա՝ Փարիզի դաշնագրոյն ութերորդ յօդուածին համեմատ առանց Եւրոպայի միջնորդութեան դիմելու, առանց տէրութեան ժամանակ եւ միջոց ձգելու որ այդ խաղաղարար գործը կատարեն, որոյ մասին կայսերական կառավարութիւնս իւր պարտականութիւնը կատարած ըլլալը կը յայտնէ։ Վերջապէս Ռուսիա քաղաքակիրթ պետութեանց այսպիսի պարագայի մէջ յարգած բոլոր կանոններն արհամարհելով՝ Բէթէրսպուրկի օսմանեան գործակատարին պատերազմի յայտարարութիւնը ծանուցած է, մինչդեռ՝ միանգամայն Բարձրագոյն Դրան հետ իւր յարաբերութիւնները կը խզէր իւր Կոստանդնուպոլսոյ գործակատարին միջոցաւ. բայց պատերազմի յայտարարութիւնն եղած օրուան առջի գիշերը կայսրութեան երկիրը ասպատակած էր։

«Պատմութիւնը պիտի արձանագրէ սա անլուր իրողութիւնը թէ՝ այս լուսոյ, քաղաքականութեան եւ արդարութեան դարուն մէջ հուր եւ սուր տարած է մեծ տէրութիւն մը իւր դրացի կայսրութեան երկիրը, անոր համար որ այդ կայսրութիւնը միջազգային յանձնառութիւններն, ազգաց իրաւանց յաւիտենական կանոններն, իւր ներքին վարչութեան անկախութիւնն եւ մանաւանդ իւր ժողովրդեան եւ վեհապետին պատիւն ու շուքն ուրիշին յարգանաց առարկայ եղած տեսնել կ՚ուզէր, ինչպէս որ ինքն ուրիշինը կը յարգէր։ Այս նուիրական սկզբունքն պաշտպանելու եւ ամենէն աւելի յանցապարտ ձեռնարկութեան մը դէմ դնելու համար է որ օսմանեան բանակն յարձակողին դէմ պիտի ելնէ։

«Իւր օգոստափառ վեհապետին շուրջն համախմբեալ ամբողջ ազգն՝ արդարագոյն դատի մը յաղթանակելուն վրայ վստահ, ամեն զոհողութեանց յօժար, ամեն տառապանաց յանձնառու, պատրաստ է պատերազմելու եւ շահատակ ըլլալու իւր անկախութեանը համար.

«Թող բարձրեալն Աստուած պաշտպանէ արդար իրաւունքը։»

Այս պարզ եւ արժանաւոր լեզուն, այս հաստատամիտ ոգւով ներշնչեալ խօսքերն քիչ մը համակրութիւն շարժեցին Թուրքիոյ վրայ՝ որ անկէ ուրիշ բան չէր կրնար ակնկալել Եւրոպայէն։

## ՉԷԶՈՔՈՒԹԻՒՆ ՏԷՐՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄ ՍԱՀՄԱՆԱՓԱԿԵԱԼ

Տէրութիւնք յաջողած չըլլալով պատերազմին առաջքն առնուլ՝ գոնէ ջանացին որ չընդհանրանալով Ռուսիոյ եւ Թուրքիոյ մէջ սահմանափակեալ մնայ եւ այս մասին աւելի յաջողեցան ։

Կառավարութիւնք հետզհետէ ծանուցին խիստ չէզոքութիւն մը պահելու դիտաւորութիւն ունենալնին. նախ Գաղիա՝ ամսոյն 23 ին իւր դեսպանաց շրջաբերական մը գրելով. ապա Իտալիա՝ ամսոյն 29 ին, եւ ապա Աւստրիա-Հունգարիա՝ մայիսի 4ին. իսկ Գերմանիա լուռ կեցաւ։

Ապրիլ 30ին Լոնտրայի պաշտօնական լրագիրն Անգղիոյ չէզոքութեան յայտարարութիւնն եւս կը հրատարակէր. սակայն հետեւեալ օրը՝ մայիս 1 ին Լորտ Տէրպիի կողմանէ Կորչաքով իշխանին շրջաբերականին տրուած պատասխանն այն յայտարարութեան յառաջ բերած լաւ ազդեցութիւնը ջնջեց ։ Անգղիացի դիւանադպրին նամակն այնքան ցամաք կերպիւ գրուած էր, եւ Ռուսական շրջաբերականը տող առ տող այնպիսի կծու կերպիւ կը հերքէր եւ ակներեւ դժկամակութիւն մը ցոյց կուտար՝ որ պահ մը կարծուեցաւ թէ Անգղիա պատերազմի պիտի ձեռնարկէր։

«Ռուսիոյ կայսրը, կ՚ըսէր Լորտ Տէրպի, իւր իսկ հաշուոյն համար Թուրքիոյ դէմ գործելով եւ առանց իւր դաշնակցաց խորհուրդ հարցնելու ի զէն դիմելով՝ մինչեւ ցարդ չխանգարուած եւրոպական միաբանութենէն անջատուած է, եւ միանգամայն խոտորած է այն կանոնէն որոյ հետեւելու խօսք տուած էր հանդիսաւոր կերպիւ։

«Անկարելի է այդպիսի գործոյ մը հետեւանքը գուշակել ։ Նորին վեհափառութեան կառավարութիւնը կամաւ զանց պիտի ընէր այս մասին դիտողութիւններ ընել։ Բայց քանի որ կերեւի թէ Կորչաքով իշխանն Եւրոպայի բոլոր կառավարութեանց ուղղեալ յայտարարութեան մը մէջ հասկցնել կուզէ որ Ռուսիա թէ միւս տէրութեանց եւ թէ Մեծին Բրիտանիոյ շահուն համեմատ կը գործէ, ուստի ինքն ալ հարկ կը համարի առաջի հանուրց յայտարարել բացորոշապէս՝ թէ ռուսական կառավարութեան որոշումը ոչ իւր աջակցութիւնն եւ ոչ իւր հաւանութիւնն ընդունելու հանգամանքն ունի։ »

Սակայն փոքր ինչ մտածմամբ շուտով յայտնի եղաւ որ չափազանց մեկնութիւն մը տրուած էր այս յայտարարութեանց իմաստին ։ Անգղիոյ ցամաքային բանակն աննշան բան մ՚էր եւ իւր աջակցութիւնը Թուրքիոյ համար վճռական չէր կրնար ըլլալ՝ պատերազմին հանգամանաց նայելով, եւ գուցէ պարապ տեղն այնպիսի պարտութեանց ենթակայ պիտի ըլլար որք իւր ազդեցութիւնը կրնային նուազեցնել։ Իւր քաղաքագէտներն գործնական ուղղախոհութիւն մ՚ունենալով այսպիսի բան մը չէին ըներ ։ Լորտ Տէրպիի պատասխանն պարզապէս ըսել կուզէր թէ անգղիական կառավարութիւնն ալ կ՚անջատուէր Եւրոպական միաբանութենէն, իւր գործելու ազատութիւնը վերստին ձեռք կը բերէր, եւ իւր շահերը պաշտպանելու համար՝ միջամտելու իրաւունքն իրեն կը վերապահէր։ Մէկ քանի օր յետոյ հասարակաց խորհրդարանին մէջ Պ. Կլատսթընի մէկ առաջարկութեանը վրայ վիճաբանութիւն մը բացուելով, բոլորովին հասկցուեցաւ թէ Անգղիա հաստատ դիտաւորութիւն ունէր չէզոք մնալու, ցորչափ որ Հնդկաստանի ճանապարհն ուղղակի սպառնալեաց ենթակայ չգտնուէր ։

# Գլուխ Իններորդ

## ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՅԱՌԱՋ ԲԵՐԱԾ ՏՊԱՒՈՐՈՒԹԻՒՆՆ ԵՐԿՈՒ ԱՇԽԱՐՀԱՑ ՄԷՋ

### ՌՈՒՍԻՈՅ ՄԷՋ



ԱՊՏ-ԻՒԼ-ՔԷՐԻՄ ՓԱՇԱ, ԸՆԴՀ. ՀՐԱՄԱՆԱՏԱՐ ՕՍՄԱՆԵԱՆ ԲԱՆԱԿԻՆ

*Կրնայ ըսուիլ թէ՝ երկու տարիէ ի վեր մամլոյ եւ մասնաժողովոց միջոցաւ եղած գաղափարաց ծաւալմամբն ուժգին գըրգռեալ հասարակաց կարծիքն էր առաւել՝ զՌուսիա պատերազմի մղողն՝ քան թէ կայսրն, որոյ խաղաղասէր ոգին ճանչցըւած է։ Ուրեմն զարմանք չէ եթէ հասարակութիւնն պատերազմի յայտարարութեան լուրն եռանդագին սրտով ընդունեցաւ։*

*Ազնուապետական մեծ գերդաստաննե-*

րէ բազմաթիւ երիտասարդք՝ որոց մէջ էր նաեւ Փարիզի ռուսական դեսպանատան քարտուղար՝ Ցէրեցէրէլեվ իշխանն, խնդրելով իրենց անունները գրել տալին պատերազմին մասնակցելու համար, եւ շատերը գացին Կովկասու բանակն՝ որ միշտ ռուս երիտասարդաց երեւակայութիւններն սաստիկ հրապուրած է, վասն զի կարելի է անդ անկախութիւն մը վայելել եւ բազմարկածեան կենցաղ վարել, վասն զի անդ տիրող բարքն եւ հաղուստներն հետաքրքրական են, եւ Փուշկին ու Լէրմոնթով մեծանուն բանաստեղծք՝ իրենց երգերովն այդ բանակն հռչակաւոր եւ յանկուցիչ ըրած են։ Պատերազմին յառաջ բերած տպաւորութիւնն քայանդ ուրիշ ցոյց մ՚ալ տեղի ունեցաւ ապրիլ 29 ին ի Բէթէրսպուրկ։ Թէաթռ-Մառի անուն թատրոնին մէջ ներկայացուեցաւ «Կեանք վասն կայսեր» ըսուած ռուսական օփէրային որ Կլինքա հեղինակին գործն է։ Ներկայացումէն առաջ, ըստ նուիրական սովորութեան, բոլոր դուսանք եւ երաժիշտք տեսարանին վրայ համախմբեալ՝ «Պօժէ, ձարիա խրանի,» (Տէր, պահեա զկայսրն) երգը նուագեցին, որ Ռուսաց ազգային երգն՝ Մարսէյյէզն ըսել է։

Երկու հազար հանդիսականք՝ այր եւ կին առ հասարակ ոտք ելան ըստ ռուսական սովորութեան, յարգական լռութեամբ մտիկ ըրին, յետոյ երգին վերջին մասը կեցցէներու եւ ծափահարութեանց որոտումով մ՚ընդունեցան։ Հանդիսականաց շատերը՝ Տաճկաստանի սահմանագլխոց վրայ հայր, զաւակ, եղբայր ունէին, եւ այս ցոյցը մասնաւոր արտաշուրծ ձեւ մը կ՚առնուր պարագայներէն։ Ազգային երգը երեք անգամ կրկնուեցաւ, եւ կեցցէներու եռանդագին աղաղակներն երեք անգամուն ալ անպակաս եղան։ Բացման երգը կը պարունակէր հետեւեալ խօսքերը.

Ես պատրաստ եմ մեռանիլ
Վասն Ռուսիոյ եւ ձարին։

Այս խօսքերը վերստին ծափահարութեամբք ողջունուեցան՝ որք ներկայացումն ընդմիջեցին, եւ ամբողջ ցայգահանդիսին միջոցին, հասարակութիւնն միեւնոյն ընդունելութիւնն ըրաւ ներկայ կացութեան մասին եղած ակնարկութեանց։ Վերջընթեր պատկերին՝ Սուսանին գիւղացւոյն ձեռօք ազատեալ կայսեր յաղթութեան վրայ ժողովրդեան մէջ տօնախմբութիւն լինելու միջոցին՝ հանդիսականք «Երգը, երգը» աղաղակեցին։ Ներկայացումն վերստին ընդմիջեցաւ, եւ երգը բազում անգամ կրկնուեցաւ։ Հանդիսականներէն անդամ երգողներ կային։ Նուագախաղը վերջանալէն յետոյ, դարձեալ պէտք եղաւ երգը երգել, եւ կեցցէները նորէն սկսան գոռացնել թատրոնը։

Կայսրը մինչեւ մայիսի երկրորդ օրը Քիշնեվ կեցաւ, եւ ամեն օր անցահանդէս ընել կու տար քաղաքէն անցնող զօրաց, որք դէպ ի սահմանագլուխ կ՚երթային։ Ամսոյն 3ին Օտէսա գնաց ամրութիւններն եւ նաւահանգստին մէջ կեցած նաւատորմիղը զննելու համար։ Կայսեր ներկայութեանը չքթակի փորձեր ըրին, որք մեծ արդիւնք չունեցան. երեք չքթակ պայթեցուցին, եւ նաւակ մը՝ որ ուղղուած կէտին վրայ բերուած էր որպէս զի օդն ելնէ, չքթակին վրայէն անվնաս անցնելով՝ իւր ընթացքը շարունակեց։

Զարն Օտէսայէն ալ մեկնեցաւ Բէթէրսպուրկ երթալու համար, սակայն Քիեվ եւ Մոսկուա քաղաքները կեցաւ այն տեղի բնակչաց ուղերձներն ընդունելու համար, որովք իրենց խնդակցութիւնը կը յայտնէին պատերազմ հրատարակած լինելուն համար։ Մոսկուա՝ որ իբր Ռուսիոյ նուիրական մայրաքաղաքն մնացած է, կեդրոնն է՝ ուրկէ համասլաւեան գաղափարաց ծաւալումն կ՚ընդհանրանայ համայն կայսրութեան մէջ, մինչեւ իսկ աննշան եւ խեղճ գիւղերու մէջ Տաճկի եւ մահմետականի դէմ ատելութիւն ներշնչելով։ Ճիշտ խօսելով, պատերազմն ընողը Մոսկուան էր։ Ուստի կայսը պատերազմ

հրատարակելուն համար մասնաւոր պատիւներու առարկայ պիտի լինէր անդ, Պաշտօնական տեղեկագիր մը զանոնք նկարագրելու համար տարօրինակ բացատրութիւն մը գործածելով, կ'ըսէ թէ կեցցէներու ձայներն գլխու պտոյտ կը պատճառէին ։

Մոսկուայի քաղաքապետն՝ ինքնակալին աղ եւ հաց մատուցանելուն յետոյ, ճառ մը ուղղեց անոր, յորում ժողովրդեան զգացումները կը բացատրէր։ Այս գրութիւնն՝ թէեւ ռուսական ճաշակով յօրինուած է եւ արեւմտեան տէրութեանց պաշտօնական ճարտարախօսութիւնը չունի, բայց արժանի է յառաջ բերուելու .

«Տէր արքայ, դու զմեզ պատերազմի կոչեցիր եւ Ռուսիա ցնծաց։ Դու ահարկու ձեռնարկութիւն մ'ազդարարեցիր Ռուսիոյ, եւ նա տօն կը կատարէ։ Դու կ'երեւիս վերստին հին մայրաքաղաքիդ պարըսպաց մէջ, եւ օդը կը դղրդի օրհնութեան աղաղակներով։ Երբէք քու ժողովուրդդ այնչափ գորովանօք եւ երախտագիտութեամբ ընդունած չէր զքեզ՝ որչափ այս պահուն յորում քու հրաւիրանացդ ձայնոյն ոտք կ'ելնէ ։

«Վեհ եւ նուիրական է այս վայրկեանն։ Ի ձայն քո, ով Զար, Ռուսիոյ խիղճն ազատ կը բաբախէ, վասն զի գիտէ ժողովուրդդ որ Ռուսիոյ սուրը դու կը քաշես, դու՛ որ ինքնակալաց ամենէն խաղաղասէրն ես, ոչ թէ պատերազմական փառաց՝ այլ՝ յանուն Քրիստոսի, մեր թշուառ եղբարց համար . վասն զի ոչ նուաճելու եւ ոչ աւերելու համար է որ կը զրկես մեր քաջարի գումարտակներն Դանուբի անդին կողմը, այլ ազատութիւն եւ բարեբաստութիւն սերմանելու եւ ցեղիւ ու կրօնիւք մեր քոյրերն եղող ժողովուրդքն նոր եւ բարեկարգ վիճակի մը կոչելու ։ Երբէք պատերազմ մ'աւելի արդար եղած չէ քան զայս, երբէք երկնային շնորհն այսչափ մաքուր եւ այսչափ չքնաղ գործի մը համար խնդրուած չէ։ Ռուսիա աղերս մը միայն կ'ուղղէ առ Աստուած որ օգնէ իրեն արժանաւոր ըլլալու այս գործին մինչեւ վերջը, եւ զինքն բարի վախճանի մը առաջնորդելու՝ թշնամեաց որոգայթներուն եւ կեղծ իմաստութեան չարանիւթ թելադրութեանց հակառակ։ Դու յամեցիր այս պատերազմին նշանը տալու, գթալով պատերազմին զոհերուն, եւ խնայելու համար ռուսական արիւնն, որ՝ ինչպէս ըսիր, շատ թանկագին է քեզ։ Այս սիրավէտ խօսքերուն մէջ մօտակայ յաջողութեան առհաւատչեայ մը կ'ուզեմք տեսնել։ Ռուսական արիւնը պարապ տեղ չպիտի թափուի։ Մոսկուայի ձայնը Ռուսիոյ ձայնն է։ Կրնաս վստահիլ քու Ռուսիայիդ վրայ, հզօր Զար։ Ուրախացիր այն փորձերուն համար, որոց ժամանակին եկած է ահա Ռուսիոյ . իւր քաջութիւնն իբր լծակ, իւր սէրն իբր զրահ ի գործ ածելով եւ իւր զօրութիւնը ճշմարտութենէն առանալով, սքանչելիք պիտի գործէ։»

Այս ճառն՝ արեւմտեան ազգաց ականջներուն տարօրինակ կերպիւ հնչող ուժգին ասացուածներով լի է, եւ Ռուսաց կրօնական ամենախորին զգացումն ակներեւ կը փայլի անդ։ Պէտք չէ մոռնալ որ ռուսական կառավարութիւնը կրօնքն իբր լծակ մը կը գործածէ, թէպէտ յայտնի չըներ զայս իրեն հպատակ զանազան մահմետականաց, որոց համոզմանց չուզեր դպչիլ։ Եռանդուն քրիստոնեայ ժողովրդոց համար խաչակրաց արշաւանք մ'էր այս քան թէ Տաճկաց դէմ պատերազմ մը ։

Ի նպաստ վիրաւորելոց օժանդակ ընկերութեան՝ Մառի իշխանուհւոյն կողմէն հասարակաց առատաձեռնութեանն ուղղեալ հրաւէրն աւելի յայտնի կերպիւ ցոյց կուտայ այս կրօնական զգացումը .

«Վիրաւորելոց եւ հիւանդաց պէտքն մեծ եւ բազմապատիկ պիտի լինին . բայց գիտեմ նաեւ թէ որչափ մեծ եւ խորին է առ ընկերն եղած սէրն եւ գթութեան ոգին ռուս ժողովրդեան մէջ։ Մանաւանդ այսօր որ մեր քաջակորով բանակը կոչ-

ուած է՝ մեր հարստահարեալ եղբարց ազատութեան համար Թշնամւոյն դիմադրաւելու, հաւատա՛ եմ որ նուէրներն պակաս չպիտի լինին եւ ազգային զգացումն նոր եռանդ մը պիտի ստանայ ամէն կարգի մարդոց եւ մեր ընդարձակ հայրենեաց բոլոր գաւառներուն մէջ։ Իւրաքանչիւր ընծայ բարեգործութիւն մը պիտի լինի. ժ եւ է նուէր. փոքր կամ մեծ, Աստուծոյ առջեւ հաւասար արժէք պիտի ունենայ, ի վկայութիւն գթութեան զգացման՝ որ զմեզ ամենքս ի Յիսուս Քրիստոս կը միացնէ ։ »

Ամբողջ երկիրն եռանդագին սիրով ընդունեցաւ այս յայտարարութիւնը ։ Մոսկուա քաղաքն իսկոյն մէկ միլիոն ռուբլի ստորագրեց, Բէթէրսպուրկ՝ մէկ ու կէս, եւ նոյնպէս Ռուսիոյ բոլոր քաղաքապետութիւններն իրենց կարողութեան համեմատ հետզհետէ նպաստ քուէարկեցին ։ Մասնաւոր անձ մը՝ Պետական խորհրդոյ անդամ Եաքովլեւ՝ 50,000 ռուբլի տուաւ։ Ցուսուփով իշխանն ամբողջ կառաշարք մը պատրաստեց իբր հիւանդանոց, եւ խոստացաւ անոր ծախքն հոգալ մինչեւ պատերազմին վերջը։ Ջեմք կրնար մի առ մի յառաջ բերել յիշատակաց արժանի բոլոր օրինակներն։ Մոսկուայի դպրոցներուն աշակերտներն՝ պատերազմի մէջ մեռնող զինուորականաց որդւոց համար թոշակներ յատկացուցին ։ Ամեն աստիճանի կանայք, ազնուականէն սկսեալ մինչեւ պարզ գեղջուկն, Դանուբ կամ Կովկաս գացին հարիւրներով՝ ինքզինքնին պատերազմին զոհերուն նուիրելու համար ։

Վիրաւորելոց օժանդակ ընկերութիւնն առաջին օրէն սկսեալ մեծագումար դրամագլխոց տէր լինելով, անմիջապէս իւր կազմածները պատրաստեց փոխադրուած կերպիւ ։ Ռուսիա երեք մասերու բաժնուեցաւ, առաջին՝ սահմանագլխոց մասն՝ որ անկելանոցներ ունէր փոխադրութիւնն անկարելի եղող վիրաւորելոց համար, քիչ մ'աւելի հեռի՝ ուրիշ մաս մը՝ թեթեւ կերպիւ վիրաւորելոց համար, եւ վերջապէս երկրին ներսի կողմն, ուրկէ վիրաւորեալք եւ հիւանդք, որքան որ կարելի էր, պիտի ղրկուէին իրենց հայրենի գաւառները։

Յայտնի է թէ վէրքը դարմանելու եւ փտութենէ ազատ պահելու համար սառը մեծ կարեւորութիւն ունի։ Ուստի ահագին քանակութեամբ սառ հայթայթուեցաւ, եւ հազարաւոր քիլօկրամ՝ Ունկէնիի, Քօռնէչլթիի, Քիփոխանիի եւ Քիշնեվի մէջ դիզուեցաւ ։

Այս մասնաւոր ցոյցերով, մասնաւոր առատաձեռն նուէրներով՝ որոց մասնակից կ'ըլլային այր եւ կին, ծեր եւ տղայ, համայն Ռուսիա փութաջանութեամբ կ'աջակցէր պատերազմի ձեռնարկութեան .

## ԹՈՒՐՔԻՈՅ ՄԷՋ

Թուրքիոյ մէջ պատերազմն խիստ ցուրտ ընդունելութիւն գտաւ, թէեւ լրագրաց սուտ ու մուտ յօղուածներովն խաբուած ռամիկ ամբոխն պատերազմի կը փափաքէր, թէ եւ սօֆթաներն մզկիթներու մէջ երեսի վրայ ինկած աղօթելով մեծաձայն կը խնդրէին զայն ամեն օր, թէ եւ ամբարտաւանութեամբ փքացեալ մեծատուններն պատերազմին ծագման վրայ տհաճութիւն մը չէին ցուցներ ։ Մեծ եպարքոս Էտհէմ փաշայի եւ արտաքին գործոց նախարար Սաֆվէթ փաշայի պէս լուսաւորեալ անձինք եւ այլք՝ որ ըստ բաւականի տեղեկութիւն ունէին իրենց երկրին միջոցներուն վրայ, պատերազմի փափաքող չէին այնքան՝ Եւրոպայի կողմանէ ինքզինքնին լքեալ տեսնելով ։

Օսմանեան կայսրութեան մէջ զօրութիւն մը միայն կար որ կրնար դիմադրութիւնն ամուր ընել, այն ալ կրօնական նախանձայուզութիւնն էր ։ Նոյն ինքն Վեհ. Սուլթանն Աբտ-իւլ-Համիտ օրինակ տա-

լով իր բարեպաշտական գործերը կը բազմապատկէր եւ ամեն օր մզկիթ կերթար։

Միանգամայն ոստիկանութեան կողմանէ մէկ մէկ հրամանագիր բաշխուելով էֆէնտիներուն մզկիթներու մէջ կարդացուե-

նախխիստ պարտականութիւններէն մէկն է։

«Ուստի ցաւօք կը տեսնեմք որ ժամանակէ մ՚ի վեր շատ հաւատացեալներ զանց կ՚ընեն զայն։ Երբ մինարէներէն մուէզզիններն աղօթքի կը կանչեն ճշմարիտ հաւատաց-



ԿԱՐՈԼՈՍ ՀՕՀԷՆՑՕԼԼԷՌՆ ԻՇԽԱՆ ՌՈՒՄԱՆԻՈՅ

ցաւ, եւ յորդոր եղաւ հաւատացելոց որ կրօնական պարտականութիւնքն բարձի թողի չընելով վերստին գործադրելու փոյթ տանին․

«Օրը հինգ անգամ նամազ (աղօթք) ընելը, կ՚ըսէր այդ հրամանագիրը, սիւննէթին (հրաման մարգարէի) պատուիրած ամե-

ենլներն, շատեր կանգ կ՚առնուն մզկիթներուն բակը եւ նարտ, գնտակ, թուղթ եւայլն կը խաղան։ Հարկ է որ այսպիսի գայթակղութիւն մը վերջ առնու եւ հաւատացեալք կրօնական ուղիղ եւ յարգելի աւանդութեանց վերադառնան։ Ուստի մուէզզինին ձայնը լսելուն պէս՝ մզկիթ

երթալու եւ աղօթից ժամանակ չխաղալու հրաւէր կը կարդամք հաւատացելոց։»

Կանայք անգամ ստիպուեցան՝ քաղաքակրթեալ ազգաց մերձաւորութենէն յառաջ եկած նոր սովորութեանց վերջ տալու, կառավարութեան կողմանէ հրատարակուած հետեւեալ հրամանագրին վրայ.

«Ոմանք ի տաճիկ կանանց, մոռնալով իրենց արժանապատուութիւնն, սահմանեալ սովորութեանց եւ կանոնաց անյարմար հագուստներով կը պտըտին փողոցներն ու շուկաները։ Սոքա՝ փոխանակ միակերպ մութ գունով ֆէրաճէի, ամենափայլուն եւ տարբեր տարբեր գոյներով ֆէրաճէներ կը հագնին. Փոխանակ հաստ կտաւէ եաշմաքի բարակ շղարշէ եաշմաքներ կը կապեն։ Փոխանակ վաղեմի պարզ եւ դեղին ֆօթինն հագնելու, եւրոպական ձեւով ծաղրելի եւ դժուարակիր կօշիկներու մէջ կը սեղմեն իրենց ոտքը։ Հարկ է որ Թուրք կանանց կրած այս անպարկեշտ կերպարանքն շուտով վերնայ։ Հետեւաբար Վեհ. Սուլթանին հրամանաւն՝ ոստիկանութեան պաշտօնեայն կ'ազդարարէ որ ամենախիստ միջոցներ ձեռք առած է, որպէս զի պարկեշտ մարդիկ այս գայթակղական կերպարանքը տեսնելով չվշտանան։

«Վասն որոյ՝ ոստիկանութեան նախարարն Տի-ֆէՐՐԷՆՃԷՐ (գաղտնի գործակալ) յատկացուցած է, մասնաւորապէս փողոցներն ու շուկաներն հսկողութիւն ընելու։ Ապօրինաւոր հագուստ կրող ո՛ եւ է տաճիկ կին՝ Սօֆճի խանին, Զուգուր խանին եւ այլոց մէջ պտըտած ժամանակ, եթէ Տի-ֆէՐՐԷՆՃ մ'անոր հանդիպի, եւ կամ տաճիկ կնոջ մը՝ կերպասի վաճառատուն մը կամ ուրիշ խանութ մը մտնելը տեսնէ, այն գործակալին պարտքը պիտի լինի յիշեալ կնոջ ծառայներէն նորա անունն ու բնակարանն իմանալ. իսկ եթէ կինն առանձին լինի, գործակալը հեռուանց անոր ետեւէն պիտի երթայ մինչեւ տունը, եւ անդ վերոյիշեալ տեղեկութիւնը պիտի առնու։ Ոստիկանութեան նախարարն՝ օրինազանց կնոջ անունը գործակալէն իմանալուն պէս, պիտի փութայ ազդարարել նորա ընտանեաց՝ յորդորելով որ այլ եւս չթողու անոր դուրս ելնել առանց կանոնին պահանջած հագուստն հագնելու։ Ո՛ եւ է տաճիկ կին՝ եթէ առաջին անգամ ազդարարութենէն վերջը դարձեալ ապօրինաւոր հագուստով բռնուի, տուգանաց պիտի դատապարտուի։»

Սակայն ժողովուրդը նեղութեան մէջ էր։ Կոստանդնուպօլսոյ մէջ երկու տարիէ ի վեր տիրող տագնապին պատճառաւ վաճառականներէն շատերն սնանկացած էին։ Քաղաքական կացութենէն կամ գործոց դադարումէն յառաջ եկած երկիւղներուն եւ ընդհանուր թշուառութեան վրայ կ'աւելնային նաեւ գողութիւններն, հրդեհներն, հիւանդութիւններն, ուտելեաց սղութիւնն եւ սովի մը սպառնալիքն այս մեծ մայրաքաղաքին մէջ, որ իր արուարձաններովը մէկտեղ 1,500,000ի չափ բնակիչ կը պարունակէ։ Կառավարութիւնն առձեռն պատրաստ գտնուած ցորենը կը գրաւէր՝ Ռուսճուգ, Վառնա, Թուլչա, Սիլիսթրէ, Նիկոպօլիս, Նիշ, Վիտին քաղաքները պարենաւորելու համար։ Տասնի չափ յոյն վաճառականներ՝ այս կացութենէն օգուտ քաղել ուզելով՝ Ամերիկայի եւ Թրեէսթէի ցորենններն ու ալիւրն հրապարակէն գրեթէ ամբողջ գնելով իրենց մթերանոցներուն մէջ կը կուտէին վերջը սուղ գնով ծախելու համար, վասն զի ասոնց գինը արագապէս կը բարձրանար օր աւուր։ Ցայնժամ հացին գինն ալ սոսկալի կերպիւ բարձրացաւ։ Սակայն այս անգամ օսմանեան կառավարութիւնն ամենամեծ գործունէութիւն եւ ամենագովելի եռանդ ցոյց տուաւ այս զարհուրելի կացութեան դարման տանելու համար։ Եարնէյի, Սամսոնի, Սինոպի, Ինէպոլուի եւ Պրուսայի գաւառներէն արմտիք բերելու թոյլտուութիւն եւ մաքս չառնելու հրաման ըրաւ։ Այս կերպիւ ոչ միայն սովուն առաջքն

առնուեցաւ, այլ նաեւ ուտելիքներն կանոնաւոր գին մը ստացան․ Ցորենի գնոյն բարձրանալէն շահագիտութիւն ընել ուզող յոյն վաճառականք միայն ի դերեւ ելան իրենց ակնկալութեան մէջ, բայց ոչ ոք գթաց անոնց վրայ ։

# Գլուխ Տասներորդ

## ՄՈՒՏ ՌՈՒՍԱՑ Ի ՌՈՒՄԱՆԻԱ

### ՌՈՒՄԱՆԻԱ ԵՐԿՈՒ ՍՈՒՐԵՐՈՒ ՄԷՋ

Երբ աշխարհացոյց տախտակն աչքէ անցընեմք՝ պիտի տեսնեմք որ Եւրոպայի կողմէն Ռուսիա բուն Տաճկաստանի դաւառաց հետ սահմանակից չէ․ Ընդհակառակն՝ 1856էն առաջ այս երկու երկիրներուն սահմանագլուխներն իրարու կից էին ստորին Դանուբի կողմէն․ բայց միւս տէրութիւնք՝ ճարերու յարձակմանց դէմ պատուար մը կանգնելու նպատակաւ, ռուսական Պեսարապիայէն անջատեցին գետին քովէն կտոր մը տեղ, եւ Ռումանիոյ կցեցին զայն, որ Ռուսիոյ եւ Տաճկաստանի մէջ լիբր խորոց մ՚եղաւ եւ զանոնք իրարմէ բաժնեց։ Այս պատուարն անանցանելի ընելու համար այնպիսի զինուորական զօրութիւն մը գտնելու էր անդ՝ որ զայն արտաքին յարձակմանց դէմ պաշտպանելու կարող լինէր․ ուրեմն 1856ի դաշնագրին սոյն տրամադրութիւնը խաբուսիկ բան մ՚էր, քանի որ տկար իշխանապետութիւն մը միայն կար անդ՝ որ հազիւ հինգ միլիոն բնակիչ ունէր ։

Եւրոպական եւ ոչ մէկ երկիր Թերեւս Ռումանիոյ չափ յաճախ եւ սոսկալի կերպիւ ոտնակոխ չէ եղած պատերազմաւ ։ Իւր դժբախտութեննէն է որ հիւսիսային կողմէն բոլորովին անպատսպար է, որով հետեւ Ռումանիա՝ գրեթէ Ռուսիոյ դաշտաց շարունակութիւնն եւ դէպ ի հարաւ տանող բնական ճանապարհն է։ Հռովմայեցի կայսերք ջանացին այդ ճանապարհը փակել ահագին պատուարով մը՝ որ Կարպաթեան լեռներէն սկսեալ մինչեւ Սեւ ծով կը հասնէր եւ շատ տեղեր ալ երկրորդ պատուարաւ մ՚ամրացած էր․ բայց այս ահագին ամրութիւնն օգուտ մը չունեցաւ։ Քրիստոսի Թուականին առաջին դարերուն մէջ՝ Եւրոպայի վրայ արշաւող ժողովրդոց շատերն՝ ինչպէս Գութք կամ Գոթացիք, Սլաւք, Հոնք, Ավարք եւ Թաթարք այդ պարիսպն անցան, եւ երկու հարիւր տարիէ ի վեր է որ Ռումանիա՝ օսմանեան կայսրութեան վրայ յարձակող ռուսական բանակաց անցուդարձի ճանապարհն եղած է ։

«Ռումանէացին չի մեռնիր,» կ՚ըսէ առած մը։ Եւ արդարեւ զարմանալի կենսական ոյժ մը ցոյց տուած է նա մինչեւ ցարդ ։ 105 Թուականին՝ Հռովմայեցւոց Տրայիանոս կայսրը՝ արդի Ռումանիոյ Դակ կոչուած նախկին բնակիչները գրեթէ բոլորովին բնաջինջ ընելէ յետոյ, հռովմայեցի լէգէոններ ղրկեց այն երկիրը, որպէս զի մարդաբնակ լինի վերստին․ դար մը յետոյ՝ բազմաթիւ Կեղտք կամ Գաղատացիք եկան այս գաղթականութիւնն ստուարացուցին եւ իրենց անուամբն յորջորջեցաւ Կալաց քաղաքն (Կալլաթիի․ այսինքն՝ Գաղատացւոց։) Այս երեք տարերաց, այսինք՝ Դակերուն կամ Դակիացւոց, Հռովմայեց-

ւոց եւ Կելտաց Մնացորդք իրարու խառնուելով, Ռումէն ժողովուրդն յառաջ եկաւ։ Սոցա գոյութիւնն երկար ժամանակ անծանօթ մնացած էր։ Երբ բարբարոսք այն կողմերն արշաւեցին՝ անոնց բազմութեան ներքեւ անյայտ եղաւ այդ ժողովուրդն եւ անունն եւս չյիշուեցաւ. բայց սաով իւր անհատականութիւնն անվթար պահեց։ Թէպէտեւ միւս լատին ժողովուրդներէն բոլորովին անջատուած էր եւ ամէն կողմանէ օտարականներու մէջ մնացած ու սեղմուած, սակայն եւ այնպէս իւր նախահայրերէն ընդունած լատին լեզուն եւ իւր ազգայնութիւնն ու յիշատակներն իբր անգին բաներ պահպանեց։ Տակաւին այս դարուս սկիզբներն, ռուս մատենագիրք՝ Ռումանիան իբր սլաւեան երկիր մը կը համարէին. բայց Դանուբի հովտին մէջ երեսուն տարիէ ի վեր կատարուած նշանաւոր դէպքերն վերջապէս ուշադրութիւն հրաւիրեցին անոր բնակչաց վրայ. եւ հարկ եղաւ ճանաչել թէ Ռումէնք՝ Սերվիացւոցմէ, Պուլղարներէն եւ Ռուսերէն կը տարբերին, ինչպէս նաեւ իրենց միւս դրացիներէն՝ Յոյներէն, Տաճիկներէն եւ Հունգարացիներէն։ Ցեղին վրայ գիւղացին տակաւին նախնի հռոմէացի աշխարհակալաց փառացը վրայ կը պարծի, եւ ինքզինքն Հռոմայ պատրիկներուն (պէյզատէ) սերնդէն կը համարի։ Բնական է նաեւ դանուբեան դաշտը բնակող մարդոց՝ ինչպէս նաեւ լեռնականաց շնորհքն եւ դիւրաշարժութիւնը տեսնել, հասկնալու համար թէ ասոնք որչափ կը տարբերին հիւսիսային մարդոցմէ եւ հարաւային ժողովրդոց կը մերձենան։

Ռումանիոյ անկախութիւնն երկար եւ տաժանելի աշխատութեան մ'արդիւնքն եղաւ։ Վալաքիոյ իշխանապետութիւնն հաստատուեցաւ 1247ին, իսկ Մոլտաւիոյ իշխանապետութիւնն 1300ին։ Իրենց դրացի ազգաց, այսինքն՝ Թաթարաց, Լեհաց, Հունգարացւոց եւ Տաճկաց հալածանացը չդիմանալով, այս երկու իշխանապետութեանց առաջինն՝ 1391ին եւ 1460ին, իսկ երկրորդն՝ 1511ին եւ 1529ին Տաճկաց հետ դաշնագրեր կնքեցին, որովք օսմանեան պետութիւնը կը խոստանար ամեն յարձակմանց դէմ պաշտպանել զիրենք տարեկան հարկ մ'ընդունելու պայմանաւ։ Այն ժամանակէն սկսան ահա սուլթաններն Ռումանիոյ վրայ գերիշխանութիւն ունենալ։ Մինչեւ 1876 այս տարեկան հարկը վճարուեցաւ, որ վերջերս 920,000 ֆրանքի կը հասնէր։ Այս դաշնադիրներուն տրամադրութեան համեմատ՝ իշխանապետութիւնք իրենց յատուկ օրէնօք պիտի կառավարուէին, ազգին կողմէն ընտրեալ իշխաններն ազատ էին պատերազմ հրատարակել, հաշտութիւն կնքել եւ կամ դաշնակցիլ ուրիշ ազգաց հետ, վերջապէս եւ ոչ մէկ պատճառաւ Դուռն անոնց ներքին գործոց չպիտի միջամտէր։ Բայց այս իրաւանց դէմ գործուեցաւ շատ անգամ, երկիրը մաս մաս բաժնուեցաւ, Աւստրիա Պուքովինան առաւ, եւ Ռուսիա՝ Պեսարապիան։

1861ին՝ Վալաքիոյ եւ Մոլտաւիոյ երկու իշխանապետութիւնք՝ ի մի ձուլուելով, Ռումանիա անունն ստացան։ Ռումանիա սահմանադրական վարչութեամբ կը կառավարուի, եւ իրեն գլուխ ունի Բրուսիոյ թագաւորական ընտանեաց մէկ անդամը, այն է՝ Կարոլոս Հօհէնցօլլէռն իշխանը, որ ժողովուրդը լաւ վարելով՝ իւր օտարազգի լինելն անոնց զգալ տուած չէ, եւ իւր ազգութեամբն հզօր տէրութիւն մ'իրեն դաշնակից ունենալով, մեծամեծ բարիք մատուցած է մերթ ընդ մերթ իշխանապետութեան։

Ռումանիոյ պետական անձինք թէպէտ եւ արտաքուստ Գերմանիոյ պաշտպանութեան կը դիմեն, սակայն եւ այնպէս չեն ուզեր նաեւ որ նորա ազդեցութիւնը ժողովրդեան մէջ թափանցէ։ Մանաւանդ գիտելով որ՝ Ռումանիացիք տկար ժողովուրդ մը լինելուն՝ իրենց վերականգնումը միաբանութեան մէջ կը կայանայ, եւ ըստ

այնմ նախանձայոյզ ըլլալով՝ մեծ փութով հսկողութիւն կ՚ընեն որ ազգային բարքը չայլայլի, եւ գերմանական ու սլաւական գաղափարներն չտարածուին ազգին մէջ ։

Այս ամենէն դիւրաւ կը հասկցուի թէ Ռումանիա մեծ եռանդ մը ցոյց չտուաւ տեսնելով որ Ռուսք կը պատրաստուէին վերստին գրաւել իրենց երկիրը ։ Իրենք

Փրութ գետին միւս եզերքէն՝ տեսակ տեսակ աղէտք յաճախ մուտ գտած է իրենց մէջ, ժանտախտ, մաղձացաւ, դաշտային մարախներու յարձակումն, ասպատակութիւնք, եւ այս ցաւոց մէկ արձագանքն է այն անէծքն՝ զոր ռումաներէն երգ մը (*) պերճախօսութեամբ կը թափէ այն գետակին վրայ ։



ՍՈՒԼԻՆԱՅԻ ԳԵՏԱԲԵՐԱՆԸ

րնաւ բան մը շահած չէին այն ամեն պատերազմներէն՝ որոց ճակատատեղին եղած էր ամենէն առաջ Ռումանիա, նաեւ շատ անգամ ալ կորուստներ ըրած էին։

Ռումանիա ի սկզբանէ մտատանջութեան մէջ էր՝ Ռուսիոյ եւ Թուրքիոյ մէջ պատերազմ ծագած ժամանակ իրեն համար յառաջ գալիք տագնապալից կացութեան

(*) Փրութ, գետակ անիծապարտ,
Ծաւալէիր իցիւ թէ հարթ՝
Նըման պըղտոր ջրհեղեղին.
Ափունք զափունս չը տեսնէին
Եւ պատասխան մի չառնոյր ձայն՝
Ջուրցդ ի վերոյ տարածեալ լայն
Չըլլար աչաց զիրեար տեսնել .
Եւ երբ մարախք գան անցանել՝
Յանկոյս ջըրոյդ թող կորնչին.
Ժանտ ցաւք յայիսդ թող սուզանին.
Երբ թշնամիք երկրին անցնին՝
Թող մեր ափանց մօտ հեղձանին :
Խրոխտապանծ եւ դու Փրութ,
Իցիւ զանոնք տանէիր շուտ
Մինչ ի Դանուբ, ծովուն ի ջուրս,
Եւ դըժոխոց մինչեւ ի դուռս :

վրայ։ 1856 մարտ 30 ի դաշնագրոյն մէջ սա պէս ըսուած էր, « Յօդ. 22. — Վալաքիոյ եւ Մոլտաւիոյ (Ռումանիա) իշխանապետութիւնք՝ Բարձրագոյն Դրան գերիշխանութեան ներքեւ եւ դաշնադիր տէրութեանց երաշխաւորութեան տակ պիտի շարունակեն վայելել այն առանձնաշնորհութիւններն եւ ապահարկութիւններն զորս ունին ։ »

1858 օգոստոս 19 ի Փարիզի պայմանագրոյն երկրորդ յօդուածն ալ գրեթէ նոյնը կը տպաւորէր։ Դեսպանաժողովոյ գումարման միջոցին, 1876 դեկտեմբեր 26 ին՝ Ռումանիոյ առաջին նախարարին եղբայրն, Պ. Պրաթիանօ, Կ. Պոլիս գալով Սալիզպըրի մարքիզին հետ տեսակցութիւն մ՚ունեցաւ, յիշեց անոր վերոյիշեալ երկու տրամադրութիւններն եւ յայտնեց թէ հարկ էր Ռումանիոյ չէզոքութիւնը պաշտպանել։ Բայց անգղիացի լիազօր փոխանորդն պատասխանեց թէ ամենեւին չէր յուսար որ տէրութիւնք այս մասին նիւթական միջոց մը ձեռք առնուն, եւ աւելցուց թէ՝ ըստ իւր կարծեաց՝ այս չէզոքութեան վրայ տէրութիւնք խօսք անգամ չեն կրնար ընել, վասն զի Ռուսք չպիտի մտիկ ընեն եթէ պատերազմը ծագելու ըլլայ ։

Ռումանիոյ կառավարութիւնն այս պատասխանէն չվհատելով՝ քանի մ՚օր յետոյ՝ դեկտեմբեր 31 ին Դեսպանաժողովոյ յիշատակագիր մը ներկայացուց, որով կը հարցնէր թէ մեծ տէրութիւնք պիտի զլանային արդեօք իրենց «երաշխաւոր» անուան համեմատ վարուելով՝ Ռումանիոյ խոստացուած երաշխաւորութիւնն իրականապէս գործադրել։ Տէրութեանց բանակներն, ըսուած էր յիշատակագրոյն մէջ, թէպէտեւ Ռումանիոյ հողէն այնքան հեռու ալ գտնուին որ ի պահանջել հարկին իրօք օգնութեան հասնելն անկարելի լինի, բայց եւ այնպէս սոյն օրինակ խոստման մը բարոյական զօրութիւնը կարող պիտի ըլլայ իրենց վրայ յարձակողները կասեցնել եւ զիրենք պաշտպանողները քաջալերել։ «Երբէք չէ եղած, կըսէր նաեւ, որ տէրութիւն մ՚առանձինն զինու զօրութեամբ համարձակի դրժել այն խոստմանց զորս ըրած է ուրիշ շատերու հետ հաւաքաբար։» Ռումանիոյ կառավարութիւնը կը խնդրէր ի վերջոյ որ երկիրն, իւր աշխարհագրական դիրքին պատճառաւ, չէզոք հրատարակուի, ինչպէս եղած էր Զուիցցերիա 1815 ին, եւ ապա Պէլճիքա ։ Ուստի կ՚առաջարկէր Դեսպանաժողովոյ որ հետեւեալ երկու որոշմունքն ընդունի.

1°. Դեսպանաժողովոյ լիազօր պատուիրակք բարեհաճին Ռումանիոյ քաղաքական վիճակն նուիրագործել՝ ռումանական երկրին մշտնջենաւոր չէզոքութիւնն մասնաւոր կերպիւ երաշխաւորելով.

2°. Երբ երաշխաւոր տէրութիւններէն մին եւ Բ. Դրան միջեւ պատերազմը ծագի, միւս տէրութիւնք բարեհաճին ցոյց տալ Ռումանիոյ թէ ինչ ընթացք բռնելու է, եւ մասնաւոր երաշխաւորութիւն մը շնորհել անոր՝ որպէս զի իւր իրաւունքը, իւր չէզոքութիւնն եւ երկրին ամբողջութիւնն յարգուին։»

Դեսպանաժողովն մերժեց խորհրդակցիլ այս երկու առաջարկութեանց վրայ ։

Այսպէս՝ Եւրոպա չուզելով ազդու միջոցներով պաշտպանել զՌումանիա, սա ալ՝ անօգնական մնալով՝ պարտաւորեցաւ տեղի ունենալիք պատերազմին մէջ իւր քաղաքական անհատականութիւնն յարգել տալու միջոցներն իւր ձեռօք հայթայթել ։ Վերջապէս Տաճկաստան ստիպեց զինքն որ վերջնական որոշում մ՚ընէ ։ Պ. Լայարտի խորհրդով՝ Սաֆվէթ փաշա Ռումանիոյ կառավարութեան ծանուցագիր մը ղրկեց, որով ռուսական զօրաց համախմբութիւնքն եւ իշխանապետութեան երկրին վրայ արշաւելու երկիւղը ցոյց տալէ յետոյ՝ կ՚ազդարարէր նմա որ իբր Տաճկաստանի հարկատու, բանակցութեան մտնէ Բ. Դրան հետ իւր երկրին պաշտպանութեանն համար ։

«Ինչպէս որ Փարիզի դաշնագրոյն 26րդ յօդուածն եւ 1858 ապրիլ 19ի պայմանագրոյն 8րդ յօդուածին 3րդ հատուածն կը նախատեսեն, կ'ըսէր օսմանեան նախարարն իր գրութեան մէջ, ըստ այնմ' յանուն Վեհ. Սուլթանին կը հրաւիրեմ Ձեր բարձրութիւնն որ Բ. Դրան հետ խորհրդակցութեան մտնէ, որպէս զի մօտալուտ պատահական վտանգաց առջեւ Ռումանիոյ պաշտպանութիւնն ապահովելու մասին յարմար եղած զինուորական միջոցներն ձեռք առնուին միաբանութեամբ։ Ձեր Բարձրութեան պատասխանին կ'ըսպասեմ միայն' այս մասին հարկ եղած հրահանգներն հաղորդելու համար Սէրտարը-էքրէմ Ապտ-իւլ-Քէրիմ փաշայի, որ իբր ընդհանուր հրամանատար օսմանեան զօրաց Դանուբի վրայ կը գտնուի, եւ որուն հետ ի հարկին' Ձեր Բարձրութեան զինուորական իշխանութիւնք կրնան համաձայնիլ։»

Ի՞նչ կրնար ընել Ռումանիա։ Բան մը միայն, այսինքն' ինչ որ ըրած է պատմական նախկին ժամանակներէն ի վեր. զօրաւորին կողմն անցնիլ, որպէս զի յաղթականին զոհ չերթայ։ Չէր կրնար ինքզինքը Տաճկաց պաշտպանութեանն յանձնել, տեսնելով որ անկարելի էր օսմանեան բանակին քան եւ չորս ժամու մէջ Դանուբն անցնելով մինչեւ Փրութ հասնիլ' Ռուսաց արշաւանաց դիմադրելու համար։ Միթէ յիմարութիւն ըրած չէր ըլլար եթէ իր զինու զօրութեամբն Ռուսաց դէմ դնելու ջանար։

Պարտաւորեցաւ ուրեմն Ռուսաց ներս մտնելուն զիջանիլ' իբրեւ ճակատագրին մէկ անխուսափելի հրամանին, եւ բանակցիլ անոնց հետ որպէս զի ժողովրդեան վիճակն ապահովէ եւ Ռուսաց անցքը կարելի եղածին չափ ծանր չնստի իրեն։ Արդարեւ իշխանութեան գլուխն եղող հայրենասէրք սիրով չընդունեցան զայս, բայց ստիպուած էին. եւ պէտք չէ պարսաւել զանոնք բռնած ընթացքնուն համար, վասն զի ազատ չէին ուրիշ կերպիւ շարժելու։

## ՊԱՅՄԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ Ի ՄԷՋ ՌՈՒՍԱՑ ԵՒ ՌՈՒՄԱՆԻԱՑՒՈՑ

1877 Ապրիլ 16ին' Ռումանիոյ ընդհանուր հիւպատոս' Պ. Տիմիթրի Սթուրթսայուհը եւ իշխանապետութեան արտաքին գործոց նախարար' Պ. Քօկալնիչէանօ' Պուքրէշի մէջ պայմանագրութիւն մը կընքեցին որ հետեւեալ չորս յօդուածներէն կը բաղկանայ.

Յօդ. 1°. Ռումանիոյ Բարձրաշուք իշխան' Կարոլոս Առաջնոյն կառավարութիւնը կը խոստանայ Տաճկաստանի վրայ քալող ռուսական զօրքն ազատ թողուլ որ Ռումանիոյ երկրէն անցնին եւ բարեկամ բանակի մ'արժանավայել ընդունելութիւն մ'ընել անոնց։ Ռուսական բանակին պէտքն հոգալու եւ փոխադրութիւններն ընելու հարկ եղած ծախքն բնականաբար կայսերական կառավարութեան կողմանէ պիտի վճարուին.

Յօդ. 2°. Որպէս զի ռուսական բանակին Ռումանիոյ հողէն անցնելովն ո եւ է վտանգ մը կամ անպատեհութիւն մը չըպատահի անդ, համայն Ռուսաց Վեհ. կայսրը կը խոստանայ ռումանական պետութեան քաղաքական իրաւունքը պահպանել եւ յարգել տալ ըստ ներքին օրինաց եւ դաշնագրոց, ինչպէս նաեւ Ռումանիոյ արդի ամբողջութիւնը պահել եւ պաշտպանել.

Յօդ. 3°. Թէ ռուսական զօրաց անցնելուն եւ թէ տեղական իշխանութեանց հետ անոնց ունենալիք յարաբերութեանց վերաբերեալ մանրամասնութիւնք' ինչպէս նաեւ այդ նպատակաւ ըլլալիք կարգադրութիւնք մասնաւոր պայմանագրոյ մը մէջ պիտի նշանակուին' որ երկու կառավարութեանց պատուիրակներու կողմանէ պիտի կնքուի եւ ներկայիս հետ պիտի

վաւերանոյ ու գործադրութեան զօրութիւն ստանոյ միանգամայն.

Յօդ. 4°. Ռումանիոյ Բարձրաշուք Իշխանին կառավարութիւնը կը խոստանոյ ներկայ պայմանագիրս՝ ինչպէս նաեւ նախորդ յօդուածոյն մէջ յիշուած պայմանագիրն ռումանական օրինաց պահանջմանց համեմատ (խորհրդարանին մէջ) վաւերացնել տալ եւ անոր պայմաններն անմիջապէս գործադրելի ընել ։

Պատճառաբանութեանց մասին մէջ ըսուած էր թէ՝ Ռումանիոյ անբռնաբարելիութիւնն յարգել փափաքելուն համար էր որ Ռուսիա այն պայմանագրութիւնը կը կնքէր ռումանական իշխանապետութեան հետ ։

Այսր կից պայմանագիր մը վերոյիշեալ չորս յօդուածոյ գործադրութեանը վերաբերեալ մանրամասնութիւնները կը կարգադրէր հետեւեալ կերպիւ .

Ռումանիա Ռուսաց կը շնորհէր՝ երկաթուղեաց, ելեկտրական հաղորդակցութեանց, ճանապարհաց, թղթատարութեանց եւ հեռագրաց գործածութիւնը. անոնց թոյլ կուտար նաեւ երկրին բոլոր բերքերէն իրենց պաշարն հայթայթել ։ Փոխադրութեանց մասին՝ Ռումէնք ինչ արտօնութիւններ որ ունէին երկաթուղեաց ընկերութեանց մօտ նոյնը պիտի վայելէին նաեւ Ռուսք ։

Բանակին վիրաւորեալներն եւ հիւանդներն Ռուսաց շինած հիւանդանոցներուն մէջ պիտի խնամուէին, բայց ոչ ի Պուքրէշ եւ ոչ ըստ կարելւոյն մարդաշատ քաղաքներու մէջ ։ Ռուսական հիւանդանոց չգտնուած տեղուանք հիւանդները ռումանական հիւանդանոցներու մէջ պիտի խնամուէին պէտք եղած ծախքը վճարելու պայմանաւ ։

Ի հարկին՝ Ռումանիա նաւակներ եւ նաւեր պիտի ճարէր Ռուսաց՝ կամուրջներու շինութեան համար ։

Ռուսական բանակին պիտոյքն առանց անցագրի եւ տրոց ներս պիտի մտնէին ։

Վերջապէս՝ ռումանական իշխանութիւնք՝ դասալիք զինուորներն ձերբակալելու համար պիտի օգնէին ռուսական իշխանութեանց ։

Ռումանիոյ պետական անձինք սխալ մը կարծեցին թէ՝ Բ. Դուռն այս պայմանագիրն ըստ պահանջման հարկին կնքուած գրութիւն մը պիտի նկատէր, որով իբր թէ ռումանական իշխանապետութեան դիտաւորութիւն չպիտի վերընծայուէր իւր հրատարակած չէզոքութեանը դրժելու ։ Բայց այս կարծիքը ցնորք մ'էր։ Ռումանիա պատերազմող ազգաց միոյն այնքան ծառայութիւն մատուցանելով եւ կերպով մը կրցածին չափ անոր օգնելով՝ բնականաբար միւսին իրաւունք կուտար թշնամական դիրք մը բռնելու ։ Օսմանցիք թերեւս խոհեմութիւն ըրած կըլլային՝ Ռումանիան բացէ ի բաց իրենց թշնամի չնկատելով, եւ այսու տեղի չտալով որ 100,000 հոգի եւս աւելնայ ռուսական բանակին վրայ. բայց պէտք է գիտնալ որ օսմանեան կառավարութիւնն իրաւունք ունէր՝ ապրիլ 16 ի պայմանագրով իրեն դէմ պատերազմ հրատարակած տէրութիւն մը համարելու զՌումանիա ։



## ՌՈՒՍԱԿԱՆ ԶՕՐՔՆ ՌՈՒՄԱՆԻԱ ԿԸ ՄՏՆԷ

Պայմանագիրն ստորագրուած պահուն՝ որոշուած էր որ ապրիլ 29 ին գործադրութեան դրուի նա։ Շատերն այնպէս կը կարծէին թէ ռուսական բանակն այդ թուականին Փրութ գետէն պիտի անցնէր, վասն զի ռումանական խորհրդարանն ամսոյն 26 ին նիստ ընելու հրաւիրուած ըլլալով՝ ժամանակ պիտի ունենար կառավարութեան որոշումներն վաւերացնելու ։ Սակայն Նիքոլա մեծ դուքսն՝ օսմանեան թնդանօթակիր նաւերուն Դանուբի վրայ ըրած շարժումները տեսնելով, վախցաւ որ իւր ուշանալէն Մոլտաւիոյ եւ Վալաքիոյ միջեւ եղած յարաբերութիւնք կը կարուին

տաճկաց ձեռօք, ուստի որոշեց իւր բանակին յառաջխաղացութիւնն չտապել:

Ամսոյն 23 ին՝ առաջին ռուսական ջոկատներն Փրութէն անցան Ունկէնիի մօտ՝ ուր ռուսական եւ ռումանական երկաթուղիք կը կցին:

Այս գետը Կալիցիոյ Կարպաթեան լեռներէն կը սկսի եւ Կալացէն 18 քիլոմէթր վար Դանուբ գետը կը թափի. երկայնութիւնն է 820 քիլոմէթր, բայց հակառակ այսչափ երկայնութեան՝ ոչ այնչափ խորունկ է եւ ոչ այնչափ արագընթաց: Ջրոց նուազութեան ժամանակ՝ 30 մէթրէն աւելի լայնութիւն չունենար Ունկէնիի առջեւ: Գետին վրայէն անցնելու համար երկաթաձոյլ նեղ կամուրջ մը կար՝ որ գետին մէջ տեղ չինուած քարորմի մը վրայ հաստատուած է եւ որոյ վրայէն երկաթուղին կ՚անցնի:

Նոյն օրը զօրապետ մը, բանակին մատակարար վարչութեան երկու անդամք եւ խումբ մը զինուոր այս ճանապարհէն Եաշ հասան, եւ կուսակալին ապարանքն երթալով՝ իմաց տուին բանակին գալուստը. յետոյ զօրաց համար առձեռն պատրաստ գտնուած օթեւաններու ցուցակը չինեցին, եւ պատերու վրայ փակցնել տուին հետեւեալ յայտարարութիւնը՝ զոր ընդհանուր հրամանատար մեծ դուքսն Նիքօլա ռումանական ժողովրդեան կ՚ուղղէր.

«Վեհ. Կայսեր հրամանաւն այսօր ձեր երկիրը կը մտնէ իմ հրամանատարութեանս ներքեւ գտնուող բանակն որ տաճկաց դէմ պատերազմելու կերթայ: Արդէն շատ անգամներ Ռումանիա մեծ ուրախութեամբ ընդունած է ռուսական բանակները: Կը յայտարարեմ ձեզ թէ իբր բարեկամ կուգամք եւ ձեր աղէկութիւնը միայն կ՚ուզեմք: Կը յուսամք թէ ձեր ազգն ալ նոյն ազնիւ զգացումները կը կրէ ինչ որ ձեր նախնիք ցոյց տուած են ռուսական բանակաց՝ ամեն անգամ որ Տաճկաստանի դէմ պատերազմելու գացած ենք: Օգոստափառ եղբօրս՝ Կայսեր հրամանաց համեմատ, պարտ կը համարիմ ծանուցանել ձեզ թէ ռուսական բանակին անցքը կարճատեւ պիտի ըլլայ եւ ամենեւին նեղութիւն չպիտի պատճառէ ձեզ, վասն զի ռումանական կառավարութիւնն իբր բարեկամ կառավարութիւն մը կը նկատեմք: Ուստի կը հրաւիրեմ զձեզ որ սովորական գործերնուդ պարապիք եւ աշխատիք որ մեր բանակն իւր պիտոյքն հոգալու կարող ըլլայ:

«Հարկ եղած ամեն միջոցներն ձեռք առած եմ որպէս զի բանակին համար առնուած բոլոր բաներուն գինն անմիջապէս վճարուի զինուորական գանձէն: — Գիտէք թէ ինչ աստիճան կարգապահութիւն կը տիրէ կայսերական բանակին մէջ. վստահ եմ որ սա իւր պատիւն անարատ պիտի պահէ ձեր մէջ, եւ ոչ ուրեք ձեր հանգիստը պիտի վրդովէ, եւ պիտի յարգէ ձեր օրէնքն, սովորութիւնքն եւ ստացուածքն:

«Ռումանիացիք, մեր նախահարք իրենց արիւնը թափած են ձեր ազատութեան համար, ուստի կարծեմ իրաւունք ունիմք մեք ալ օժանդակութիւն խնդրել ձենէ այն բանակին համար որ ձեր երկրին մէջէն պիտի անցնի՝ միմիայն Տաճկաստանի թըշուառ քրիստոնէից օգնութեան հասնելու նպատակաւ, որոց տառապանքն Ռուսիոյ եւ ամբողջ Եւրոպայի գութը շարժեցին:»

Մինչ Եաշի գրաւման լուրը ռումանական կառավարութեան կը հասնէր, միւս կողմանէ՝ ռուսական Պեսարապիոյ սահմանակից գաւառաց կուսակալք կը ծանուցանէին թէ Ռուսաց բանակն ուրիշ երկու տեղերէ ալ ներս կը մտնէր, այսինքն՝ Պէսթիմաքէն որ Լէովա քաղաքին դիմացն է, եւ Թաշպաքէն: Հաւաստի կ՚երեւի թէ Ռուսաց Ռումանիա մտնելն ծանուցանելու համար պաշտօնական գրութիւն մը չղրկուեցաւ Պուքրէշ՝ ուր ըստ պայմանագրոյն կը կարծուէր թէ ամսոյն 29 ին ներս պիտի մտնէին, այսինքն՝ ռումանա-

կան խորհրդարանին նիստ ընելէն երեք օր յետոյ։

Նախարարաց խորհրդոյն նախագահ՝ Գ. Գրաթիանօ սարսափած մնաց այս դէպքին վրայ՝ որ պայմանագրոյն բոլոր պատասխանատուութիւնը միայն իւր վրայ կը ձգէր, եւ ժողովրդեան մէջ ալ սաստիկ յուզումն տիրեց։ Բայց հարկ եղաւ պարագայից տեղի տալ սոյն միջոցին, ինչպէս եւ ամեն ժամանակ հարկ կ՚ըլլայ․ կառավարութիւնն երաշխաւոր տէրութեանց սոսկ բողոք մ՚ուղղելէն յետոյ՝ պէտք եղած տնօրէնութիւններն ըրաւ՝ Ռումանիոյ իրաւունքը պահպանել եւ իւր չեզոքութիւնը յարգել տալու համար. որովհետեւ տակաւին կը յուսար չեզոք մնալ։ Եւ որպէս զի ժողովոց գումարմանէն առաջ մի գուցէ՝ ազգը կռուոյ մէջ նետելու պատճառ տուող ընդհարում մը պատահի, ուստի սահմանագլխոց մօտ գտնուած ռումանական զօրաց հրաման տրուեցաւ երկրին ներսերը քաշուելու եւ ռուսական զօրաց երեւան ելած տեղերն անոնց առջեւը բաց թողլու։

Ռուսիոյ սահմանակից գաւառաց կուսակալներն ալ հրաման ստացան որ՝ ներս մտնող զօրաց հրամանատարներուն կողմանէ պահանջմունք եղած ժամանակ՝ իրենք միջամտութիւն չընեն իբրեւ կեդրոնական իշխանութեան գործակատարներ, այլ իբրեւ ոստիկանութեան սոսկ պաշտօնատարներ վարուին հասարակութիւնն ընդհարումներէ եւ տհաճոյ դէպքերէ պահպանելու համար, եւ քաղաքապետական իշխանութեանց թողուն՝ զօրաց հրամանատարներուն առջեւ գրաւեալ վիճակաց ներկայացուցիչներն ըլլալու պաշտօնը։

Վերջապէս՝ Դանուբի եզերքը բնակող ժողովրդոց ազդարարութիւն եղաւ որ սահմանագլուխներէն հեռի գտնուած գիւղերու մէջ քաշուին իրենց ունեցածներովն եւ ընտանեօքն հանդերձ։

Սակայն ոչ ընդհարում մը եւ ոչ տհաճոյ դէպք մը պատահեցաւ։ Ռումէն ժողովուրդն՝ որ՝ Ռուսաց ժամանակաւ իրենց երկրէն անցնելու միջոցին՝ անոնց երեսէն անչափ տառապանք կրած ըլլալն կը յիշէր, այս անգամ ոչ ուրախութիւն մը եւ ոչ մինչեւ անգամ համակրութիւն ցոյց տըւաւ կայսերական զօրաց։ Բայց երկար ժամանակ այսպէս պաղ չկեցաւ. որովհետեւ շուտով հասկցաւ թէ անցած էին այն ժամանակներն յորս ռուսական զօրաց անցած տեղերն չարաչար աւարառութիւնք եւ անկարգութիւնք կը պատահէին, եւ ապտակներն ու խարազանի հարուածներն պակաս չէին ըլլար։ Այս երկու ազգերն փոխադարձաբար իրարու զարմանք պատճառեցին իրենց ըրած յառաջդիմութեամբք։

Աղէքսանդր երկրորդ կայսեր ժամանակի Ռուսք չէին նմաներ Նիքօլա կայսեր ժամանակի Ռուսաց, ինչպէս նաեւ նորն Ռումանիա չէր նմաներ 23 տարի առաջ եղած Մօլտօվալաք իշխանապետութեանց։ Ռուսք խոստովանեցան թէ երբէք չէին կարծեր որ այնչափ քիչ ժամանակի մէջ այսքան զարմանալի յառաջդիմութիւններ կրնայ ընել երկիր մը՝ դպրոցներու, ճանապարհաց եւ երկաթուղեաց մասին, ինչպէս նաեւ մշակութեանց բարելաւեալ ըլլալուն եւ բարեկեցութեան առ հասարակ առաւելեալ գտնուելուն կողմանէ։ Գրաւեալ քաղաքաց բնակիչներն եւս եւ մանաւանդ երկաթուղեաց գործակալներն՝ որք ամեն աստիճանի սպայից հետ շարունակ յարաբերութիւն ունէին եւ որոց մէջ շատ Ալզասցիներ կը գտնուէին, իրենց վկայութիւնը տուին զօրաց կատարեալ կարգապահութեան մասին՝ որ հին ռուսական բանակաց նայելով Եւրոպայի մէջ տարածուած գաղափարաց հակառակ՝ չունի այն պաղութիւնն որով գերմանական բանակին սպայից եւ իրենց ստորակարգելոց յարաբերութիւնք այնքան խիստ եւ դժնդակ կըլլան։ Փոխադարձ վստահութիւն մը եւ բարեսիրութիւն մը կը տիրէր սպայից եւ զինուորաց մէջ, եւ բնակչաց

հետ անոնց բռնած վարմունքին անըստգիւտ ըլլալն միաձայն վկայութեամբ հաստատուեցաւ։ Այս կերպիւ անկեղծ համակրութիւն մը յառաջ եկաւ երկու ազգաց մէջ։ Ռուս սպայք որ կատարեալ քաղաքավարութիւն մը ցոյց կուտային՝ ճըշգիւ կը վճարէին այն չափազանց գիներն զորս ամեն տեսակ ապրանաց համար մանրավաճառք կը պահանջէին պարագաներէն օգուտ քաղել ուզելով։ Բանակին անցքն որ նախ աղէտք մը կը համարուէր՝ յարմար առիթ մը նկատուեցաւ յանժամ առատ ֆօլ վաստկելու։ Ռումանիա տարիէ մը ի վեր դրամական սովալի տագնապի մը մէջ էր. ռուսական գանձէն տեղացած այս մանանայն գուցէ կատարեալ կործանումէ մ'ազատեց զայն։



## ՊԱՐՊՕՇԻ ԿԱՄՐՋԻՆ ԳՐԱՒՈՒՄՆ

Ռուսական զօրախումբք իրենց առջեւ չորս հաղորդակցութեան ճանապարհներ ունէին. նախ՝ Եաշէն Կալաց տանող երկաթուղին որ Ռոմանէն եւ Թէքուչէն կ'անցնի, երկրորդ՝ այն արահետն որ ռուսական սահմանագլխոյն վրայ գտնուած Աքուլիանիէն կըսկսի եւ Եաշէն ու Վասլուիէն անցնելով՝ Պըրլաթի մէջ երկու ճիւղ կը բաժնուի որոց մին Ֆօքշանէն եւ Պուչէոյէն կ'անցնի եւ ուղղակի Պուքրէշ կը տանի, եւ միւսն ալ Կալաց. երրորդ՝ Քիշնեւէն Կալաց տանող ճանապարհն որ Լէովայէն եւ Ֆալչիյէն կ'անցնի եւ Ռէնի ու Իսմայիլ տանող ճիւղեր ունի, չորրորդ՝ ծովեզերաց զուգահեռական գտնուող այն ճանապարհն որ Աքքիրմանէն Քիլիա եւ Իսմայիլ կը տանի Թաթար Փունարէն անցնելով։ Մոլտաւիան Վալաքիոյ հետ տեսակ մը պարանոցով կցուած է որ 60 կամ 70 հազարամէթր լայնութիւն ունի՝ եւ Դանուբի ու Կարպաթեան լերանց շղթային մէջ սեղմեալ է, եւ որոց մէջէն Սէրէթ գետը կ'անցնի։ Ուստի մէկ իշխանութենէն միւսը տանելու համար՝ բոլոր հաղորդակցութեան ճանապարհներն ի հարկէ դէպ ի այս պարանոցը գալով այն գետէն կ'անցնին։ Պըրլաթէն Պուչէօ տանող ճանապարհն Թէքուչի մօտ կամուրջ մ'ունի, եւ միւս բոլոր ճանապարհներն Կալացի վարի կողմը կը միանան Պարպօշի կամրջին մօտ որ հաղորդակցութեանց բանալին է այսպէս։

Այս պարզ բացատրութիւնն բաւական է հասկցնելու թէ ռազմագիտական ինչ մեծ կարեւորութիւն մ'ունի այն հանրաւոր կամուրջը։ Եթէ Տաճիկները զայն գրաւէին, Ռուսք՝ Ռումանիոյ մէջ իրենց խաղացքը Թէքուչի կամրջէն միայն կրնային շարունակել, որ մեծ բանակի մը համար բոլորովին անբաւական է։

Օսմանեան զօրապետք Պարպօշի կամուրջը կործանելու միտք ունենալու էին, զգուշութիւն մը՝ որ զինուորական գիտութեան նախագիտելեաց կարգէն էր։ Այդ կամուրջն երկաթէ շինուած է խողովակի ձեւով եւ տասն կամարի վրայ հաստատուած՝ 246 մէթր երկայնութեամբ. այս կամարներէն ութն՝ 19 մէթր բացուածք ունին եւ միջին երկուքն 47 մէթր բացուածք, այնպէս որ մէջ տեղի կամարակալն ուրելով 94 մէթրի չափ բացուածք մը յառաջ կու գայ՝ որով խիստ դժուարին կ'ըլլայ նորոգութիւնն։ Թնդանօթի մէկ քանի հարուածներ բաւական էին այդ կամուրջը քայքայելու։ Հաշիւ եղած է որ 1877 ի տարօրինակ ողողմունքն՝ Սէրէթի գետաբերանին երկու կողմն 40 հազարամէթր տարածութեամբ անանցանելի ճահիճներ ձեւացուցած ըլլալով, մէկ երկու ամիս Ռուսք չպիտի կրնային նաւակամուրջ հաստատել. եւ Պարպօշի կամրջին մէջ տեղի մասը նորէն շինելու համար ամսէ մ'աւելի պիտի աշխատէին։

Ռուսական բանակին խաղացքն ամիս մը յապաղելովն՝ անկարելի պիտի ըլլար անոր Դանուբն անցնիլ ջրոց նուազութեան ժամանակ՝ որ ամեն տարի կը պատահի մայի-

ւն յետոյ եւ յուլիսի յորդմունքէն առաջ, գործողութեանց սկզբնաւորութիւնն օգոստոս ամսոյն պիտի մնար, այն տարւոյն պատերազմը բոլորովին ապարդիւն պիտի ըլլար, գուցէ ամբողջ տարի մը պիտի վատնուէր եւ այսպէս դիւանագիտութեան ժամանակ պիտի տրուէր վերստին գործի ձեռնարկելու ։

Օսմանեան զօրապետներն կը ճանաչէին սակայն Պարպօշի կամրջին կարեւորութիւնն՝ զոր աւերելու համար Կալացի մօտ կեցող Օսմանեան զրահաւոր նաւատորմին հրահանգներ տրուեցան եւ պէտք եղած մասնաւոր վառօդն հայթայթուեցաւ ։ Դժբաղդաբար կամուրջն օդն հանելու հրամանը մայիս 25ին հասաւ նաւատորմին՝ որ երբ ուզեց զայն գործադրել՝ Ռուսներն ամուր կերպիւ հաստատուած գտաւ հոն եւ ստիպուեցաւ ետ դառնալ ։

Սքօպէլեվ զօրապետ եւ իւր համբաւաւոր լրտես զօրքն Նիքօլա Մեծ դքսին հրաման առած էին շտապաւ երթալով այն ռազմագիտական կէտը գրաւելու ։ Ամսոյն 23 ին առաւօտուն Սքօպէլեվ Լէովայի մօտ Փրութէն անցած էր, եւ հետեւեալ օրն երեկոյին՝ 150 հազարամէթր տեղ ընթանալէ յետոյ՝ Պարպօշ հասնելով առանց արգելքի հաստատուած էր հոն իւր անխոնջ հեծելազօրաց հետ մէկտեղ ։ Ռուսներ Տաճկաց կողմանէ ըլլալիք յարձակման մը նախազգոյշ գտնուիլ ուզելով՝ մէկ քանի հողէ մարտկոցներ շիներ էին անդ՝ կամուրջը պաշտպանելու եւ թող չտալու համար որ Տաճկաց նաւատորմը մօտենայ. խազախք իրենց հետ բերած թեթեւ թնդանօթներն հոն զետեղեր էին , Քիչ ժամանակէն յետոյ՝ երկաթուղեաւ պաշարման խոշոր թնդանօթներ հասեր էին, նաեւ փոքրիկ թնդանօթակիր նաւեր՝ զորս ջուրն իջուցեր էին, եւ չքթակներ՝ որ Սէրէթ գետին բերանը եւ մինչեւ իսկ Դանուբի յատակը զետեղուեր էին, եւ բազմաթիւ զօրք՝ որ Ցիկլինայի սարահարթին վրայ հաստատուեր էին ։ Այս սարահարթն 48 ժամու մէջ պատնիշափակ բանակատեղի փոխուեր էր հողէ մեծ մարտկոցներ շինուելով ուր 8 եւ 16 հարիւրորդամէթր տրամագծով բերան ունեցող թնդանօթներ դրուեր էին ։ Մէկ երկու աւուր մէջ այդ դիրքն անառիկ եղեր էր ։

Երբ Տաճկաց ջրասուզակ զրահաւորներն ամսոյն 23ին կամրջին դիմացն երեւցան , Ռուսք իսկոյն ետ դարձուցին զանոնք թնդանօթի հարուածներով. այս պատերազմին մէջ առաջին ռմբաձգութիւնն էր այս ։

Նոյն պահուն եթէ Տաճիկք մեծ ջանք մ՚ընէին կամուրջը կործանելու՝ գուցէ կը յաջողէին , բայց օսմանեան նաւատորմին հրամանատարն՝ թշնամին այնքան կանուխ իւր դէմը գտնելուն վրայ շուարելով՝ դարձաւ Մաչինի թնդանօթաց կրակին տակ ապաստանելու ։



## ԶԵՏԵՂՈՒՄՆ ՌՈՒՍԱԿԱՆ ԶՕՐԱՑ ՅԱՅԼԵՒԱՅԼ ՏԵՂԻՍ ԵՒ ԱՆՋՐԵՒՔ ԵՒ ՈՂՈՂՄՈՒՆՔ

Տաճիկներն՝ ստորին Դանուբի վրայ Մաչին, Իսաքչա եւ Թուլչա բերդաքաղաքաց տէր ըլլալով՝ հոն տեսակ մ՚ամուր բանակատեղ ունէին որ շարունակ սպառնալիք մ՚էր Ռուսաց հաղորդակցութեան գծերուն համար . ինչ որ ջրասուզակ զրահաւորներն չէին կրցած ընել՝ ստուար ջոկատ մը կրնար ընել զայն Կալացէն կամ Իսաքչայէն գետն անցնելով՝ որ բաւական դիւրութիւններ ընծայող երկու կէտեր են , կրնար Ռումանիա մտնել, երկաթուղին աւրել, ճանապարհներն կտրել , Պարպօշի կամուրջն օդն հանել, եւ արշաւող բանակին յետակողմն անցնիլ կողմնական շրջան մ՚ընելով ։ Ուստի Ռուսք պարտաւորեալ էին ռումանական գետեզերքն ամուր կերպիւ գրաւել եւ մարտկոցներով պաշտպանել՝ թող չտալու համար Տաճկաց որ իրենց նաւատորմին օգնութեամբն յանկարծական արշաւանք մ՚ընեն, եւ ազատ պահելու

համար իրենց հաղորդակցութիւններն պատերազմին մինչեւ վերջը ։

Բանակին ձախ թեւը կազմելիք զօրաց զետեղումն ամենամեծ արագութեամբ կատարել հարկ եղաւ, եւ ասոր առաջին հետեւանքն էր Պարպօշի կամրջին դրաւումը։ Թաթար-Փունարի շրջակայներն սահմանագլխոց մօտ համախմբեալ 7 րդ գնդին մէկ մասն ամսոյն 25ին Իսմայիլ եւ

թիւններ չինուեցան Կալացի վերի կողմէն մինչեւ Իպրայիլ, եւ վարի կողմէն մինչեւ Սաթունովօ՝ Իսաքչայի դէմ ։ Գետին եզերքն՝ Իպրայիլէն վեր եւ Սաթունովօյէն վար՝ անանցանելի ճահիճներով ծածկուած են։ Առաջներն բնաւ չէր կարծուեր որ Ռէնի տանող դէշ ճանապարհներն պաշարման թնդանօթաց փոխադրութեան համար կրնան օգտակար ըլլալ. սակայն



ԼՕՐԻՍ ՄԷԼԻՔՕՎ, ՀՐԱՄԱՆԱՏԱՐ ԿՈՎԿԱՍԵԱՆ ԲԱՆԱԿԻՆ

Քիլիա մնաց. 26ին Ռէնի գրաւեալ էր, եւ 27ին՝ Շաքովսքոյ իշխանին հրամանատարութեան տակ գտնուած ամբողջ 11րդ գունդն Կալաց եւ Իպրայիլ քաղաքներուն մէջ կը բանակէր ։ 8րդ գունդն ալ քիչ ժամանակէն ասոնց քով եկաւ, եւ մէկ քանի օրուան մէջ 60,000 էն աւելի մարդիկ գումարուելով՝ ստորին Դանուբի ձախ եզերքն ամբողջ գրաւեցին ։ Իսկ Տաճիկք անշարժ կեցան. սակայն Ռուսք անոնց անշարժութեան նայելով մեծ աշխուժով գործելէ ետ չկեցան ։ Կարգ մը ամրու-

այս զարմանալիքն ալ կատարուեցաւ ։ Մարտկոցներուն վրայ առժամանակեայ կերպիւ զետեղեալ դաշտային թնդանօթաց տեղ մէկ գիշերուան մէջ մեծաչափ թնդանօթներ դրուեցան՝ որոնք երկաթուղեաւ Կալացէն բերուած էին։ Պատերազմի յայտարարութենէն 8 օր յետոյ, Ռէնիի դիմաց՝ Դանուբի յատակն կարգ կարգ չքթակններ զետեղուած էին, որով անկարելի էր օսմանեան զրահաւորաց այդ կողմէն անցնիլ, եւ Տօպրուճայի դիմաց՝ Դանուբի եզերքն կարգ մը ամրութիւն-

ներով պաշտպանեալ էր՝ որովք բոլոր պատերազմին ժամանակ գործող բանակին հաղորդակցութիւնք կատարեալ ապահովութիւն մը պիտի ունենային ։

Մայիս 8 թուականաւ կայսերական հրամանագիր մը՝ պահեստի զօրաց 4րդ, 13րդ եւ 14րդ գունդերն գործող բանակին հետ միացուց որոյ թիւն այսպէս 350,000 ի հասաւ ։ Այս երեք գունդերն՝ ինչպէս նաեւ 9րդն, 10րդն եւ 12րդն Ռումանիա մտան Սքուլիանիէն Ֆօքչան եւ Լէովայէն Կալաց տանող ճանապարհներէն ։ Մայիսի առաջին օրերն՝ ասոնց յառաջապահներն Ֆօքչան հասան, յետոյ Պուչէս, յետոյ Բլօէշթի, յետոյ Ճուրճէվօ. բայց ամբողջն իւր տեղն հասնելու համար ամսէ մը աւելի պէտք եղաւ ։

Այս զօրաց խաղացքին այսքան յապաղման գլխաւոր պատճառներն երկու էին. փոխադրութեան դժուարութիւնք եւ գարնանային անձրեւաց արտաքոյ կարգի յորդութիւնն ։ Ռումանիոյ ունեցած հաղորդակցութեան ճանապարհներուն ինչ բանի պիտանի ըլլալն արդէն յայտնի էր. զօրաց եւ դաշտային թնդանօթաց համար կրնային գործածուիլ այն փոքր ի շատէ աղէկ ճանապարհներն որ Ռուսիայէն դէպ ի Դանուբ կ՚իջնէին, իսկ կազմածոց, մթերաց եւ խոշոր թնդանօթաց համար՝ երկաթուղին ։

Այս երկաթուղւոյ գիծն իշխանապետութեան մէջէն կ՚անցնի դէպ ի երկայնութեանը, եւ բազմաթիւ մանուածապատ շրջաններ կ՚ընէ որոց օգուտը ապացուցեալ չէ տակաւին ։ Անկից զատ Ռուսիոյ երկաթուղեաց երկաթի ձողակներն իրարմէ այնքան բացութիւն ունին՝ որչափ չունին Եւրոպայի միացեալ մասանց երկաթուղիներն. եւ այս բանն սլաւասէրք ընել տուած են իբր պարծենալու բան մը Ռուսիոյ համար. Ուստի ռուսական երկաթուղեաց կառքերն եւ կազմածներն միայն Ռուսիոյ մէջ կրնան գործածուիլ. հետեւաբար Ռումանիա ղրկուած բոլոր նիւթերն Ունկէնիի մէջ ռուսական կառաշարքերէն ռումանական երկաթուղեաց կառքերուն մէջ փոխադրել հարկ եղաւ ։ Անկից կրնայ հասկցուիլ այն մէկ քանի հիւղերէ բաղկացեալ գիւղին մէջ տիրած խառնաշփոթութիւնն որ յապաղման պատճառներէն մէկն էր. Այլ եւ այլ կտորներէ բաղկացեալ մակոյկներու զատ զատ մասերն, կամրջի կազմածներ, խարիսխներ, պարաններ, պաշար, ռազմամթերք, պաշարման խոշոր թնդանօթներ, ռումբք, շարժուն հիւանդանոցներ, վրաններ իրար խառնուած էին Պեսարապիոյ այն խեղճ գիւղին փոքրիկ կայարանին մէջ ։

Ռումանական երկաթուղեաց ընկերութիւնն քիչ կառք ունէր եւ շոգեկառք աւելի քիչ ։ Պատերազմի նախարարն ստիպուեցաւ կառք եւ շոգեկառք գնել Աւստրիոյ եւ Գերմանիոյ մէջ. եւ հարկ եղաւ զանոնք ռուսական կառաց վրայ դնելով Ունկէնի բերել, ուր բազմաթիւ վաշտեր զանոնք իջուցանելու եւ կտորներն իրարու ագուցանելէ յետոյ՝ ռումանական երկաթուղեաց վրայ հանելու զբաղեալ էին ։ Մեծ դժուարութեամբ կարելի եղաւ օրն հինգ կառախումբ ճանապարհ հանել ։ Սակայն տարերքն ալ Ռուսաց հակառակ ըլլալով միշտ կարելի չեղաւ զանոնք կանոնաւոր կերպիւ բանեցնել ։ 1877ի գարունն այնչափ անձրեւայոյզ եղաւ որոյ նմանն երբեք տեսնուած չէր 1865 էն ի վեր ։ Առաջին անգամ խազախներուն Փրութն անցնելուն հետեւեալ օրն՝ բոլոր գետերն յորդեցան, Թիսմի մէջ 500 տուն ողողեցաւ, եւ ամբողջ Քրէմէնչուկ ջրերուն տակ ծածկուեցաւ ։ Այս երկու քաղաքաց մէջ եղած երկաթուղւոյ կամուրջներն աւրուեցան, եւ Քիշնեւը Ռուսիոյ հետ յարաբերութեան մէջ դնող երկու գծերն մէկ քանի օր ընդհատեալ մնացին ։

Պատերազմի նախարարն Միլիւթին՝ բանակը վերակազմելու ժամանակ մասնաւոր ուշադրութիւն մը տուած էր կամրջաձիգ զօրաց գնդին եւ կազմածոց, եւ կարող

եղած էր երկու հարիւրէն աւելի կամուրջ շինելու համար պէտք եղած նաւակներն եւ տախտակներն պատրաստել բանակին համար։ Այսու ամենայնիւ երրեմն անբաւական եղան ասոնք։ Փրութ գետն որ 30էն մինչեւ 40 մէթր լայնութիւն ունի Լէովայի մօտ՝ 4000 մէթրէն աւելի լայնցած էր մայիսի սկիզբները։ Այսպիսի պարագայից մէջ անհնար կ'ըլլար կամուրջ ձգել, ուստի այն կէտին վրայ խմբեալ զօրքն ստիպուեցաւ սպասել։

Ունկէնիէն մինչեւ Եաշ 20,000 մէթրի չափ տեղ երկաթուղին մէկ քանի անգամ ջրերու տակ ծածկուեցաւ ամբողջ։ Ալեաց բռնութեանը չէին դիմանար այն թումբերն որ Եաշի կայարանը պահպանելու համար կը շինուէին, եւ քիչ մնաց որ կայարանն ալ ալիքի կործանէր։ Կառաշարք կարծես լճի մը մակերեւութին վրայէն կ'ընթանային։ Հարիւրաւոր զինուորներ նաւակով տեղէ տեղ կ'երթային եւ ջրին մէջ իջնելով՝ որ իրենց սրունից մինչեւ կէսը կը հասնէր, կ'աշխատէին մաշած կամ հինցած երկաթներն եւ պահանգներն նորոգելու, կամ ողողման պատճառաւ ցածնալու վրայ գտնուող հողաթումբն յարդարելու, եւ կամ ջրերուն տակ կիսով չափ ծածկուած հեռագրական ձողերուն վրայ նոր թելեր հաստատելու։

Դանուբի մօտ աւելի գէշ էր։ Սէրէթի գետախառնունքին կողմերն այնպէս ողողեալ էին որ գրեթէ ծով մը ձեւացած էր հոն, եւ Պարպօշի բանակատեղին բարձունքէն աշխարհիս վրայ նմանը չտեսնուած տեսարան մը կ'երեւէր։ Մարդու աչք առածին չափ տեղ՝ հարաւային կողմէն ջուր կը տեսնուէր, եւ Արեւելեան կողմէն մեծ մասամբ ողողեալ Տօպրուճայի ծայրն կ'երեւէր. ռումանական գետեզերքը ծածկող ջրերէն վեր բարձրացած բոլոր բլուրներուն վրայ զինուորք մարտկոց շինելու կ'աշխատէին. հետեւակներ եւ խազախներ իրենց բանակատեղ կը պատրաստէին. Հեռուէն Իպրայիլ, Կալաց եւ Ռէնի իբրեւ նոր Վենետիկ ջրերէն վեր կը բարձրանային, եւ այն հայելւոյն վրայ երկաթուղիք եւ ճանապարհք գծեր կը ձեւացնէին՝ յաճախ ալեաց տակ ծածկուած, եւ կառաց երկայն շարքեր կարծես թէ կը ծովէին այն ամայութեան մէջ։

Ահա ասոնք էին այն պատճառներն որով այնքան յապաղեցաւ ռուսական բանակին Ռումանիա մտնելն եւ Դանուբի եզերաց վրայ սփռիլն։

Մայիս 5ին ռուսական բանակին ձախ թեւը զետեղելու գործն աւարտեալ էր, եւ Նիքօլա մեծ Դուքսն զայն աչքէ անցընելու համար Քիշնեվէն մեկնեցաւ։ Իպրայիլի, Կալացի եւ Ռէնիի մօտ շինուած մարտկոցները զննեց եւ կատարելապէս գոհ եղաւ։ Իպրայիլի մէջ գտնուիլը լրտեսի մը միջոցաւ իմացուած ըլլալով՝ օսմանեան ջրասուզակ զրահաւորներն քաղաքին վրայ 15 ռումբ նետեցին։ Երբ ընդհանուր հրամանատարն զինուորներէն գոհ եղաւ, զինուորաց իրենց գլխաւորին վրայ ունեցած վստահութիւնն ալ աւելցաւ այս զննութեան վրայ, որովհետեւ բարեգուշակ գործունէութիւն մը ցոյց կուտար։ Կէս գիշերէն յետոյ՝ տակաւին երկար ժամանակ իւր սենեկին պատուհաններէն լոյս կ'երեւէր։ Առաւօտեան ժամը 5ին դարձեալ կառք նստաւ իւր զննութիւնը շարունակելու համար. Ռէնիի եւ Կալացի միջեւ գտնուած կայաններն մէկ աւուր մէջ աչքէ անցուց. միւս օրն ալ Կալացի, Պարպօշի եւ Իպրայիլի միջեւ գտնուած դիրքերը զննեց, եւ երեկոյին Եաշ դարձաւ հետեւեալ օրն Քիշնեվ հասնելու համար։

# Գլուխ Տասնեւմէկերորդ

## ՍԿԻԶԲՆ ԹՇՆԱՄՈՒԹԵԱՆՑ

### ՎԱՐԱՆՈՒՄՆ ՏԱՃԻԿ ՋՕՐԱՊԵՏԱՑ

Դանուբի վրայ չկայ անցք մը, կը գրէր Գ. Ֆոն Մօլթքէ 1835ին, որ օսմանեան ամրոցով մը պահպանեալ չըլլայ: Արդարեւ սահմանագլխոց երկայնութեանը շինուած բերդաքաղաքներն տասն եւ վեց հատի չափ կան. սակայն մինչդեռ յարձակողական գործիքներն մեծապէս յառաջացան՝ հռչակաւոր բրուսիացի զօրապետին այդ խօսքն ըսելէն ի վեր, Տաճկաց պաշտպանողական միջոցներն գրեթէ առաջուան պէս մնացած էին. ուստի Դանուբի գիծը պատերազմ բացուած ժամանակ այնչափ զօրաւոր չէր որչափ էր քառասուն տարի առաջ:

1876 տարւոյն վերջերն՝ երբ պատերազմն մօտալուտ երեւցաւ, Բ. Դուռն յանձնաժողով մը կազմեց՝ Վառնա, Շումնու, Սիլիստրէ, Ռուսճուգ եւ Վիտին բերդաքաղաքներն մանրախոյզ կերպիւ քննելու համար: Տաճիկներն անհոգութեամբ այս ամրութիւններն երեսի վրայ թողած էին. ժամանակ անցնելով պատրակներուն (փառափէ) ձեւերն աւրուեր եւ հարթուեր էին անձրեւաց պատճառաւ, անոնց զառիկողերն (թալիս) եւ խրամներուն յատակն անպիտան խոտերով ծածկուած էին, եւ զառիվերակներն (ռամբ) բոլորովին անհետ եղեր էին: Գործաւոր պակաս չէր եւ դիւրին էր անհրաժեշտ եղած նորոգութիւններն ընել պատեհ ժամանակի մէջ. բայց յանձնաժողովն տուեց թէ ամրութիւններն այնպիսի տեղեր շինուած էին որ չերտաւոր թնդանօթաց դէմ դնելու մասին անյարմար էին այլեւս, զի ենթակայ էին բարձրէն եկած հարուածի: Պարիսպներուն վրայ պատսպարաններ չկային թնդանօթներն եւ թնդանօթաձիգ զօրքն հորիզոնական հարուածներու դէմ պաշտպանելու համար, ոչ ալ նկուղներ կամ ներքնախորշեր կային մարդոց, մթերաց եւ ուտելեաց համար եւ ոչ ալ ծածուկ ուղիներ: Վառօդ շատ կար, սակայն գործիքներն գէշ էին եւ նաեւ անբաւական: Թշնամւոյն զօրութենէն ստորին ըլլալու այնպիսի պատճառներ էին ասոնք՝ որոց դէմ մէկ երկու աւուր մէջ դարման ընել անկարելի էր, վասն զի հարկ էր ի հիմանց փոփոխել ամրութեանց բովանդակ դրութիւնը: Այսու ամենայնիւ՝ ամենամեծ գործունէութեամբ ըստ կարելւոյն դարման տարուեցաւ:

Տկարութեան ուրիշ մէկ պատճառն ալ այս էր որ՝ Տաճիկներն այլեւս ռումանական ափանց չէին իշխեր, մինչդեռ Մօլթքէի վերոյիշեալ խօսքն ըրած ժամանակ կ'իշխէին: Աջակողմեան եզրն միայն իրենց ձեռքն էր. բայց այս բանն այնչափ վնասակար չէր իրենց որչափ առջի բերան կ'երեւի: Արդարեւ աջակողմեան եզրն լեռնային, սեպացեալ եւ հետեւաբար խիստ դժուարամատոյց է. ձախ եզրն ընդհակառակն հարթ, ճախճախուտ եւ ամեն կողմանէ թշնամւոյն առջեւ բաց է, եւ շատ կղզեակներ ձեւացած են ծայրէ ի ծայր: Տաճկական քաղաքներն բլուրներու վրայ շինուած եւ կամ ծործորի մը մէջ պահուած եւ պաշտպանութեան շատ յարմար են տեղեաց բնական ձեւերուն պատճառաւ: Այս քաղաքաց իւրաքանչիւրին դիմաց՝ ձախ ափանց վրայ ռումանական քաղաք մը զետեղեալ է՝ ի հնումն երկրին ապահովութեան եւ ի նորումս առեւտրական պիտո-

յից համար հաստատեալ. որովհետեւ անոնցմէ շատերն գետաբերաններէն քիչ հեռի կը գտնուին ։ Երկու ափանց ռազմագիտական հանգամանաց տարբերութիւնն ակներեւ է. Տաճկաց կողմն ամենայն ինչ յարմար է պաշտպանութեան համար եւ մինչեւ իսկ յարձակման, քանի որ Քռուփի թնդանօթներն այնքան հեռի ռումբ կ'արձակեն։ Ռումանիոյ կողմն ընդհակառակն բան մը չկայ յարձակման կամ պաշտպանութեան յարմար, միայն երկու կէտերու վրայ՝ Քալարաշի եւ Քալաֆաթի մօտ ջրոց ողողմունքէն յառաջ եկած փոքրիկ բլուրներ Վիտինն եւ Սիլիսթրէն ռմբակոծելու դիւրութիւն կուտան ։

Իբր պաշտպանութեան գիծ Դանուբի մեծ կարեւորութիւն ունենալն իւր լայնութենէն է, որով ամեն եղանակի եւ ամեն պարագայից մէջ խիստ վտանգաւոր գործողութիւն մը կը լինի բանակի մը համար անկէ անցնիլն։ Այս լայնութիւնը մեծապէս կը փոփոխի, ջրոց աճման եւ նուազութեան մէջ եղած տարբերութեան պատճառաւ, այնպիսի գետի մը վրայ որ յաճախակի մինչեւ եօթն մէթր կը բարձրանայ։ 1877ի գարունը տարօրինակ կերպով անձրեւայոյզ ըլլալով՝ գուշակելի բան էր թէ գետին լայնութիւնը սովորականէն աւելի պիտի մնար բովանդակ տարւոյն մէջ, որով Ռուսաց դէմ ելնելիք դժուարութիւններն պիտի ծանրանային։ Գետին գլխաւոր բազուկն սովորաբար 7 կամ 8 հարիւր մէթր լայնութիւն ունի, բայց երկրորդական բազուկներուն լայնութիւնն ալ հաշուելով 2,500 էն մինչեւ 4,000 մէթր կըլլայ։ Ջրոց բարձրացած ժամանակ՝ Դանուբն այնպիսի տեղեր կ'ունենայ ուր մէկ եզրէն միւսն ինն կամ տասն հազարամէթր հեռաւորութիւն մը կը տեսնուի ։ Գլխաւոր կէտերուն լայնութիւնը հոս կը նշանակեմք ուրկէ բանակ մը կրնայ անցնիլ. Վիտինի եւ Քալաֆաթի մէջ 1,300 մէթր, Պէքէթի եւ Օրասովայի մէջ՝ 1,900 մէթր, Թուռնօ-Մակուրէլլի եւ Նիկօպօլիի մէջ տեղ՝ աւելի լայն, Քալարաշի եւ Սիլիսթրէի մէջ 1,000 մէթր միայն. այս կողմերն՝ Դանուբի ամենէն նեղ տեղն այս է. երեւակայելու է սակայն թէ բանակ մը ինչպէս կրնայ անցնիլ՝ այսպիսի երկայնութեամբ նաւակամուրջներ չինելով թշնամւոյն թնդանօթներուն ներքեւ ։ Կալացի մօտ՝ ուրկէ Ռուսք 1809ին անցան, կղզի



ՐԷՏԻՖ ՓԱՇԱ, ՆԱԽԱՐԱՐ ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԳՈՐԾՈՑ

մը կը բարձրանայ եւ գետն երկու ճիւղ կը բաժնէ, որոց մին 240 մէթր եւ միւսը 450 մէթր լայնութիւն ունի ջրերուն նուազութեան ժամանակ. իսկ դետն յորդելու միջոցին՝ այն կղզին եւ եզերքն ամբողջ կ'ողողեն եւ անցնիլն անկարելի կ'ըլլայ գրեթէ։ Իսաքչայի եւ Սաթունօվօյի մէջտեղ՝ բուն գետին հոսանքն մէկ հազարամէթր ցածութիւն չունի. բայց այնպիսի ճահիճներ կան մօտերն որով անմատչելի կ'ըլլայ։ Ռուսք՝ 1828ին այս կէտէն անցնելու համար պատրաստեցան եօթն հազարամէթր երկայնութեամբ թումբ մը շինելու։ Իսաքչայէն անդին գետն երեք ճիւղերու կը բաժնուի, որոց մին միայն՝ այսինքն Սուլինայի (Սիւննէ) ճիւղն նաւարկելի է, 1856ին հաստատեալ ճարտարագիտաց միջազգային յանձնաժողովոյ աշխատութեանց եւ խնամոց շնորհիւ։ Առ հասարակ ջրոց այսպէս երեքի բաժնուելովն գետի մը անցքը կը դիւրանայ. բայց Դանուբի այն ճիւղերուն մէջ գտնուած կղզիներն այնպիսի տեղեր են յորս մեծկակ գունդ մը չկրնար առանց մեծ վտանգի յառաջանալ։ Անհուն անտառ մը ձեւացած է այնպիսի բարձր եղէգներու՝ որոց յարաշարժ կատարներուն վրայէն հազիւ կը նշմարուին առագաստաւոր նաւաց կայմերն կամ շոգենաւաց ծխոյ սեւաթոյր ցցունքն։ Ահագին բազմութեամբ ամեն տեսակ վայրի կենդանիներ գտնուելով այն ճախճախուտ եւ վնասակար կըղզեաց մէջ, այն տեղեաց բնակութիւնը մարդոց համար վտանգաւոր է։ Խրիմու թաթարաց գաղթականութիւն մը՝ որ այս դարուն սկիզբներն հոն եկած հաստատուած էր, ստիպուեցաւ հեռանալ յետոյ օդին սոսկալի վատառողջութեանը պատճառաւ։

Վերջապէս հետեւեալ տեղեկութիւնը լաւ եւս պիտի հասկցնէ Եւրոպայի գըլխաւոր գետոյն մեծութիւնը։ Հաշուեալ է որ Քիլիայի, Սուլինայի եւ Սուրբ Գէորգայ երեք ճիւղերն սովորաբար մէկ րոպէի մէջ 66,000 խորանարդ մէթր ջուր կը հոսեցնեն։ Ճիշդ Փարիզի մօտ Սէն գետին հոսեցուցած ջրոյն 22 անգամն է այս, որովհետեւ մէկ րոպէի մէջ 3,300 խորանարդ մէթր ջուր կը հոսեցնէ Սէն գետը։

Վերոյիշեալ բոլոր անցքերն պահպանուած են բերդաքաղաքներով, եւ այն բոլոր բերդաքաղաքներուն տեղերն դիմացի եզերքէն բարձր են, բաց ի Վիտինէն եւ Սիլիսթրէէն, որք այն ժամանակ միայն իրենց կատարեալ արժէքը կը ստանան՝ երբ Ռումանիոյ կողմը Գալաֆաթի եւ Գալարաշի մէջ կամրջագլուխներ հաստատուին Վիտինէն եւ Սիլիսթրէէն բարձր դտնուող բլուրներուն մօտ՝ որոց վրայ վերը խօսուեցաւ։ Պատերազմի յայտարարութեան յետագայ երկու շաբաթներուն մէջ Տաճիկներն արգելք մը չունէին այս երկու կէտերը գրաւելու։ Բարեբաղդաբար՝ այն մէկ քանի աւուրց միջոցին, յորս Կարոլոս իշխանն չէզոք մնալ կը յուսար, առանց ռումանական զօրաց մնացած էր Գալաֆաթ որ խիստ ամրացեալ քաղաք մ'է, բայց Տաճիկք չգիտցան այս առթէն օգուտ քաղել։

1853ին՝ Օսմանեան զօրապետք այդ պակասութիւնը չգործեցին, եւ Իօմէր փաշա Փոքր Վալաքիոյ մէջ նշանաւոր յաղթութիւններ տարաւ Ռուսաց դէմ՝ այն կամուրջը գրաւած ըլլալուն շնորհիւ, ուր 20,000 մարդ պարունակող պատնիշափակ բանակատեղ մը հաստատած էր։

Օսմանեան զօրաց ընդհանուր հրամանատար Ապտ-իւլ-Քէրիմ փաշա կ'երեւի թէ սոսկ պաշտպանողական նպատակաւ պատրաստեր էր իւր յատակագիծը. Հարկ է ըսել որ իւր զօրաց սակաւութիւնն այսպէս ընելու կը ստիպէր զինքն, թէեւ որ եւ իցէ կերպիւ նախաձեռնութիւն մը չընելն ալ ջատագովելի բան մը չէ։ Իւր բանակին թիւը 210,000ի կ'ելնէր։ Եթէ բերդաքաղաքները պահպանելու յատկացեալ զօրաց թիւն անկէ հանուի, կը տեսնուի որ 100,000էն աւելի

պատերազմիկ զօրք չունէր իւր ձեռաց ներքեւ։ Ռուսք աւելի շատ զօրք ունենալով սա հնարքն ալ բանեցուցին որ իրենց մի կէտերու վրայ զօրք համախմբելն բնաւ յայտնի չըրին, այնպէս որ Ապտ-իւլ-Քէրիմ ջանալով գուշակել թէ ուրկէ յարձակում պիտի ընեն, մէկ քանի անգամ փոփոխեց իւր բանակին կարգը։

Ի սկզբան պատերազմին լուր ելած էր թէ Ռուսք Վիտինի շրջակայներէն Դանուբն անցնիլ պիտի փորձեն, թէեւ այդ կէտն ամենէն աւելի հեռի կը գտնուէր իրենց պաշարի կեդրոնէն։ Տօպրուճայի ճանապարհներուն վրայ արշաւող բանակի մը շարունակ նեղութիւն պատճառելու կարող օսմանեան նաւատորմին Սեւ ծովուն մէջ ներկայութիւնն, մինչեւ Վիտինի կողմերն հաղորդակցութեանց արագութիւնն ապահովող երկաթուղւոյ մը գոյութիւնն, եւ սերվիական սահմանագլխոց վրայ ու Պուլղարիոյ մէջ Ռուսաց տեսնելիք լաւ ընդունելութեան հաւաստիքն ճշմարտանման կ'ընէին այն տարաձայնութիւնն. ուստի Ապտ-իւլ-Քէրիմ իւր բանակին ստուար մասն Վիտին խմբած էր՝ որ այսպէս ահեղ բանակատեղի մը փոխուեցաւ, եւ Ռահօվա, Նիկօպոլի եւ Զիշթով քաղաքներն մեծապէս ամրացած էին։

Ռուսաց ըրած առաջին շարժմանց վրայ օսմանեան բանակակեդրոնն հասնող լուրերն մեծ տատամսութիւն մը պատճառեցին։ Թշնամին այնքան ամուր կերպիւ Կալացն, Իպրայիլն եւ ստորին Դանուբն գրաւած ըլլալով՝ Տօպրուճա մտնելու խորհուրդը բոլորովին թողած չէր ուրեմն։ Սոսկ ցոյց մ'էր միթէ այս, կամ թէ ընդհակառակն այն տեղին վրայ պիտի ըլլար գլխաւոր ջանքն, ինչպէս եղած էր 1828ին։ Ընդհանուր հրամանատարն կ'ուզէր իւր աջակողմը զօրացնել առանց իւր ձախակողմն անզօր թողլու. բայց չափազանց քիչ էր իւր զօրքն, եւ անդադար Կոստանդնուպոլսէն նոր զօրութիւն կը խընդրէր, սակայն կառավարութիւնը չէր կրնար իւր ուզածը տալ։

Դաշտերուն մէջ ժողովուրդ չէր մնացած այլ եւս, եւ քաղաքաց բնակիչներն իրենց վատ անտարբերութեամբ ցոյց կուտային թէ օսմանեան նախնի ցեղին յատուկ պատերազմասէր ոգին այլ եւս չէր մնացած։ Լէհ եւ Հունգարացի կամաւորաց գունդ մը՝ որոց թիւն մինչեւ 45,000ի հանել կը յուսացուէր, հազիւ մէկ քանի հարիւր մարդ կրցաւ ունենալ գերմանացի ձիապանի մը հրամանատարութեան տակ, որ Արթուր Պէյ անունն առած էր։ Կոստանդնուպոլսոյ բնակիչներն քանիցս իրենց ուղղեալ հրաւիրանաց չանսացին, եւ այն խուժանն՝ որ առջի բերան շահախնդրութեան ոգւով ի կռիւ կը դիմէր, Սերվիոյ պատերազմին ժամանակ մասամբ իւիք ջարդուեր էր իբր պաշը պօզուգ կռուելով, եւ մայրաքաղաք դարձող մէկ քանիներն ալ երկար ժամանակէ ի վեր մեկնած էին դէպ ի Դանուբ։ Պատերազմի նախարարն ստիպուեցաւ Կոստանդնուպոլսոյ մինչեւ ցայնժամ վայելած առանձնաշնորհութիւնները դադրեցնել. ոստիկանք մայրաքաղաքին փողոցներուն մէջ զօրք ժողվել սկսան, բոլոր ամուրի գործաւորներն զինուոր գրուեցան, եւ այսպէս կարելի եղաւ 40,000 մարդիկ խմբել։ Մարդիկ, եւ ոչ զինուորներ։ Այս զօրաց հագուստին համար դրամ պէտք էր եւ դրամը գտնելն աւելի դժուար էր։ Մըզկիթներուն մէջ եղած ոսկեղէն եւ արծաթեղէններն դրամի փոխուեցան. բռնի փոխառութիւն մ'ընել որոշուեցաւ, եւ բոլոր պաշտօնատարաց ամսականներէն զեղչումն եղաւ։

Այս դժուարութեանց պատճառաւ Դանուբի օսմանեան բանակը չկրցաւ նոր զօրութիւն ստանալ, եւ ընդհանուր հրամանատարն ստիպուեցաւ պատրաստ ունեցած զօրօքն միայն ռուսական բանակը կասեցնելու ջանալ։

«Նա որ հաստատ նպատակ մը կը դնէ

քրեն, կ'ըսէ լաւ կերպիւ Գ. Ֆօն Ռիւսթով՝ իւր Չինաստանեան [illegible] դարու անուն գրուածքին մէջ՝ բանակի հրամանատարներու վրայ խօսելով, աւելի դիւրութիւն կ'ունենայ մեծաթիւ զօրք բերելու գլխաւոր կէտի մը վրայ։ Ընդհակառակն նա որ կը սպասէ թշնամւոյն գործելուն, աւելի դժուարին կ'ընէ այս խնդիրը։ Արդարեւ մեր ընտրած գլխաւոր եւ հաստատ նպատակին քով միացեալներն երկրորդական են, եւ անոնց յատկացուելիք զօրքն ըստ չափու համեմատութեան պիտի ըլլան։ Բայց եթէ թշնամւոյն գործելուն սպասել ուզեմք, այն ժամանակ բազում պատահականութիւնք համազօր կրնան երեւիլ, եւ մենք ալ ըստ այնմ մեր զօրութիւնները պիտի բաժնեմք այն հաւասար կարեւորութիւն ունեցող պատահականութեանց դէմ դնելու համար։ Ասկէ է մանաւանդ յարձակողականին առաւելութիւնը պաշտպանողականին վրայ։ Ցիրաւի՝ թէեւ կ'ըսուի շատ անգամ որ պաշտպանութեան մէջ զօրքը ցրուելու պէտք չըլլար, սակայն եւ այնպէս գրեթէ միշտ հարկ կ'ըլլայ ցրուել։ »

Ապտ-իւլ-Քէրիմ առաւել եւս դժուարութեան մատնուած էր՝ 650 հազարամէթր երկայնութեամբ գիծ մը պաշտպանելու հարկէն։ Ռումանիոյ մէջ ուժգին յարձակում մ'ընելու կուսակից գտնուող Աhմէտ Էյուպ փաշա, այն է Դանուբի բանակին հրամանատարն իւր կարծեաց կը հակառակէր որով Ապտ-իւլ-Քէրիմ առաւել եւս կը վարանէր, մերթ կարծելով որ Ռուսք Տօպրուճայի վրայ պիտի յարձակին եւ մերթ հաւատալով թէ նոքա նախ վերին Դանուբի վրայ պիտի զարնուին. երկար ժամանակ երկմտեցաւ այսպէս մերթ Տօպրուճա զօրք ղրկելով, ապա յետս կոչելով, մերթ Վիտինէն վաշտեր բերել տալով եւ ապա հակառակն հրամայելով, վասն զի՝ Գ. Ֆօն Ռիւսթովի ըսածին պէս, կարեւորութիւն ունեցող եւ իրեն հաւասար հաւանականութիւն ընծայող պատահականութեանց դէմ դնել ուզելով՝ մտատանջութեան մէջ էր։ Ի վերջոյ յատակագիծ մը որոշեց որ եթէ լաւագոյն չէր, գոնէ խելքի մօտ էր։ Երկու դիտող դունդ կազմեց, մէկը Վիտին եւ միւսն այն եռանկեան մէջ զոր կը ձեւացնեն Ռուսճուգ, Շումնու եւ Սիլիսթրէ, եւ իւր բանակն այսպէս երկուքի բաժնեց։ Բանակին մէջ գտնուող բոլոր Չէրքէզ ձիաւորներն եւ Դանուբի ու Էտրնէի կուսակալութեանց բոլոր ոստիկաններն խմբուելով լրտես զօրաց դունդ մը կազմուեցաւ, որոց արձակ խումբերն հրաման ստացան Դանուբի եզերքն անդադար շրջագայելու։ Նաեւ Դանուբի երկայնութեանը հսկող խմբակներ զետեղուեցան իրարմէ կէս կէս ժամու չափ տեղ հեռի։ Հսկող խմբակները կը սպասէին տնակներու մէջ՝ որք 7 կամ 8 մէթր բարձր ցիցերու վրայ շինուած էին, եւ ուր սանդուղքով մը միայն կարելի էր մտնել, զոր պահանորդք կրնային յարձակման ժամանակ ներս առնուլ։ Այս պահանորդաց թիւն ընդհանուր հրամանատարն երեսունի հասուցած էր։

Հեծելազօրաց խումբերն եւ հսկող խմբակներն թշնամւոյն ամենափոքր շարժմունքը պիտի ազդարարէին, եւ երբ Ռուսք գետէն անցնելու դիտաւորութիւն ցոյց տային, սպառնացեալ կէտին վրայ անմիջապէս զօրք պիտի ղրկուէր Վիտինէն կամ Շումնուէն մօտաւորութեան համեմատ։

Ռուսաց առաջին ջոկատներուն Դանուբի եզերաց վրայ փութով ժամանումն ռազմագիտական պատճառ մ'ունէր։ Արդարեւ Թուրքերն կրնային Մաչինէն Ռումանիա մտնել, երկաթուղին աւրել, Գարպոշի մօտ Սէրէթ գետին վրայ ձգուած կամուրջը փառօղով օդն հանել, եւ առաջին օրէն Ռուսաց համար անկարելի ընել իրենց բանակը պարենաւորելն։ Սակայն Տաճիկք երեւան չելան, եւ տակաւին թնդանօթ մը չարձակուած՝ մեծ սխալ մը գործեցին այսպէս, որոյ հետեւանքը պատերազմին մինչեւ վերջը իրենց վրայ պի-

տի ծանրանար ։ Չորս ամիս առաջ հասկըցած էին որ պատերազմ պիտի ըլլար , ուստի ժամանակ ունէին այնպիսի դիւրին ձեռնարկութիւն մը պատրաստելու յորում միայն մէկ քանի խիզախ եւ հաստատամիտ անձանց պէտք կար ։ Եթէ օրինաւորութենէ չեղիլ չէին ուզեր մինչեւ վերջը , կրնային Ռուսաց Փրութէն անցնելու պահուն իրենք եւս գործելու սկսիլ, այն պարզ, բանաւոր եւ դիւրին ձեռնարկութիւնն ի գլուխ հանելու համար առ առաւելն երեք չորս ժամու մէջ ։



ՆԻԿՈՊՈԼԻՍ (ՆԻՑՊՈԼԱԻ)

նէին։ Յիրաւի նոքա ուրիշ երկու յատակագիծ ալ կրնային ունենալ, սակայն ասոնց մին, այն է՝ Ռէնիի մօտէն կամ Կալացի եւ Իպրայիլի շրջակայներէն Տօպրուճա մտնելն, անտեղութիւն մ'ունէր. այս դաշտն հաղորդակցութեան ճանապարհներէ զուրկ եւ ճախճախուտ տեղ մ'ըլլալով, բանակի մը շարժմունք ընելն դժուարին բան մը պիտի ըլլար անդ, մանաւանդ որ օդն ալ վատառողջ էր եւ տենդը կըրնար զօրաց մէջ մեծ կորուստ ընել։ Ասկէց զատ օսմանեան նաւատորմն Սեւ ծովու վրայ գերազօր լինելով՝ կրնար Տօպրուճայի մէջ բանակի մը ծովու ճանապարհով պարէնաւորուիլն արգելուլ, վասն որոյ անյարմար էր այս պատերազմին ժամանակ այն յատակագիծն զոր պրուսիացին Ֆօն Մօլթքէ ցոյց կուտար 1829ին, ըսելով թէ Ռուսք Տաճկաց հետ երբ որ ալ պատերազմին՝ միշտ Տօպրուճան գլխաւոր գործողութեանց տեսարան պիտի ըլլայ։ Միւս յատակագիծն ալ Ռուսճուգի կամ

Դանուբի միւս ծայրն ալ՝ այն է Վիտինի կողմը Տաճիկներն ուրիշ անհեթեթ սխալ մ'ալ կը գործէին։ Գալաֆաթի դիրքն Վիտինէն աւելի բարձր ըլլալով , օսմանեան զօրքն գետն անցնելու եւ այն տեղն գրաւելով ամրացնելու էր , որով Վիտին ծր եւ է յարձակման դէմ ապահով կրնար ըլլալ ։ Շատ հաւանականութիւն կար որ Ռուսք՝ իրենց զօրութեան մեծ մասն այս կողմն համախմբելով Դանուբը պիտի անց-

Սիլիստրէի կողմէն գետն անցնիլն էր. բայց այսու գործողութեանց ամենէն դժուարին ասպարէզն ընտրած պիտի ըլլային Ռուսք, թէպէտեւ իրենց թուական առաւելութեամբն կրնային այս յառակագիծը գործադրել։ Ուստի ի սկզբանէ յայտնի կ'երեւէր թէ Ռուսք այս երկուքն ալ չպիտի ընդունէին, եւ Ռուսճուգէն վեր դէպ ի Քալաֆաթի կողմն իրենց ուշադրութիւնը պիտի դարձնէին։ Մինչ ռուսական բանակ մը տաճկական զօրքը պիտի արգելոյր այն եռանկեան մէջ զոր կը ձեւացնեն Ռուսճուգ, Շումնու եւ Վառնա, միւս կողմէն ուրիշ բանակ մ'ալ Քալաֆաթի շրջականներէն գետն անցնելով՝ Սօֆիայի ճանապարհը պիտի կրնար բռնել եւ ուղղակի Խաչալ Էտրնէի վրայ՝ առանց մեծ դիմադրութեան հանդիպելու։ Ռազմագիտական տեսութեամբ եւ Ռուսիոյ հանած զօրաց թուոյն նայելով, այս յառակագիծն իբրեւ ամենէն պարզ եւ ճշմարտանման կ'երեւէր, եւ ստուգիւ ամենէն աւելի արդիւնաւոր կրնար ըլլալ Ռուսաց համար։ Անշուշտ Սերվիա Ռուսաց խօսքէն դուրս չպիտի ելնէր, որք կրնային ըստ հաճոյս զայն կռուոյն մասնակից ընել կամ չէզոք պահել, նաեւ իրենց պարէնն ու մթերքն անկէ բերել տալ։ Այսպէս Տաճկաց շահը կը պահանջէր Քալաֆաթը գրաւելով ամրացնել, վասն զի այս կողմէն Ռուսաց արշաւանքը կրնային արգելուլ կամ գէթ դժուարացնել, Էտրնէ եւ անտի Կոստանդնուպոլիս տանող ամենէն ապահով ճանապարհն ամուր կերպիւ պահպանել, որով Ռուսք ալ կըստիպուէին առաջին երկու յառակագիծներէն մէկն ընտրել, այսինքն՝ կամ այն Տօպրուճա բռուած ճախճախուտ եւ դժուարակոխ տեղէն անցնիլ որուն օդն ալ վնասակար է, եւ կամ այն չորս ամուր բերդաքաղաքներէն ձեւացեալ քառանկեան վրայ ճակատէն յարձակիլ, զոր օսմանեան բանակն կրնար զօրաւոր կերպիւ պաշտպանել։

Սակայն՝ ինչպէս Մաչինի նոյնպէս եւ Վիտինի կողմէն Թուրքերն անշարժ կեցան։

Օսմանեան բանակին ընդհանուր հրամանատարն որոշած էր պաշտպանողական դիրք մը բռնելով թողուլ Ռուսաց զօրքն՝ որ մեծ կորուստ ընելէ յետոյ եթէ Դանուբը կարենան անցնիլ եւ Տօպրուճա մտնել, այն տեղի օդին վնասակարութեանը պատճառաւ տենդէ եւ այլ հիւանդութիւններէ կոտորին։ Ուստի հրաման ըրած էր որ այն տեղեաց բնակիչներն մեկնին իրենց բոլոր ունեցածներովը, եւ բան չձգեն։ Գաւառաց կառավարիչներն Ռուսաց մօտեցած ժամանակ քաղաքներն եւ գիւղերն հրակի պիտի տային, եւ Մաչինի, Իսաքչայի եւ Թուլչայի մէջ միայն զօրք պիտի մնար։ Այս հրամանը Թուլչա հասածին պէս՝ տէրութեանց հիւպատոսներն կառավարչին ապարանքը գացին բողոքելու, բայց նա պատասխանեց միայն թէ իրեն տրուած հրամանները կատարելու պարտաւոր է։ Տէրութեանց Կոստանդնուպոլսոյ ներկայացուցիչներն այս մասին Սաֆվէթ փաշայի դիմեցին, բայց չկըրցան յաջողիլ հրամանն ետ առնել տալու։ Գայմագամ մը տրուեցաւ Եւրոպացւոց մեկնելուն. մայիս 15 էն յետոյ օսմանեան իշխանութիւնք եւ ոչ մէկուն ապահովութեան եւ ընչից համար պատասխանատու պիտի ըլլային։ Կոստանդնուպոլսոյ գաղղիական գործակատարն Փէյբէլ անուն նաւը ղրկեց գաղղիացիներն առնուլ տանելու համար, Անգղիան ալ Քօֆուրայս անուն նաւը ղրկեց։ Գերմանացւոց եւ Աւստրիացւոց շատերն ալ Ռումանիա անցնելով իրենց հայրենիքը դարձան։ Տօպրուճայի մէջ այնպիսի սարսափ մը կը տիրէր որ խեղճ մարդիկ, կանայք եւ մանկունք իրենց ունեցած թանկագին բաներն հետերնին առած՝ փողոցներուն մէջ կը թափառէին որ կողմ երթալնին չգիտնալով։

Այս խառնակութեանց վրայ շատերն Տօպրուճայի մէջէն անցնելով Բիւսթէնճէ

երթալու տեղն՝ ճամբան ճահիճներուն մէջ կորնչելով մեռան ։



ԴԱՆՈՒԲԻ ՎՐԱՑ ՆԱՒԱՐԿՈՒԹԵԱՆ ԽԱՓԱՆՈՒՄՆ

Ռուսական զօրաց Դանուբի եզերքն հասնելուն առաջին արդիւնքն եղաւ նաւարկութիւնն բոլորովին խափանել գետին վրայ։ Այն ահագին հոսանքն՝ որ 750,000 քառակուսի հազարամէթր ընդարձակութեամբ տեղերէ ջուր կ'ընդունի, առաջին կարգի առեւտրական ճանապարհ մ'է զոր Աւստրիոյ եւ Գերմանիոյ կենսական շահն կը պահանջէ բաց պահել։ Դանուբի երեք բերաններն տիղմերով գոցուած էին 1856էն յառաջ ։ Փարիզի դաշնագրոյն 25րդ յօդուածով հաստատեալ եւրոպական յանձնաժողով մը, որ դաշնագիրն ստորագրող տէրութեանց կողմանէ անուանեալ անդամներէ կը բաղկանայ, Դանուբի բերաններուն իբր տէր եղաւ եւ նմանը չտեսնուած արտօնութեամբ մը՝ ճշմարիտ վեհապետութիւն մը սեպհականեց իրեն սակաւ առ սակաւ։ Այն կողմերն աւազակներէ մաքրելէ յետոյ գործի ձեռնարկեց, եւ նաւարկութեան յատկացուց Սուլինայի գետաբերանն։ Երեք տարուան մէջ ձախ գետեզրին վրայ թումբ մը շինուեցաւ 4,631 անգղիական ոտնաչափ երկայնութեամբ, որ մինչեւ ծովուն բացը բաւական տեղ երկայնեցաւ վրան կանթեղակիր աշտարակով մը. Հարաւային գետեզերքին վրայ ալ ուրիշ թումբ մը շինուեցաւ 3,000 ոտնաչափ երկայնութեամբ ։ Այս կերպիւ Դանուբի խորութիւնն 16 ու կէս կամ 17 ոտնաչափի հասաւ, մինչդեռ առաջ 8 ոտնաչափէն աւելի չկար ։ Ասոնց համար 2,200,000 ֆրանք ծախք գնաց ։ Գետին պտոյտ ըրած տեղերն ալ ջրանցքներ շինուեցան։ Ասով նաւարկութիւնը շատ յառաջացաւ եւ 400 կամ 500 տակառաչափ առնող հարիւրաւոր շոգենաւներ սկսան ամեն կողմ բանիլ գետին վրայ ։

Ուստի այս գետին վրայ շահ ունեցող տէրութիւնք բանակցութեան մտան որպէս զի գետին չէզոքութիւնն ընդունել տան երկու պատերազմողաց ։ Բայց այս բանակցութիւնք հազիւ թէ սկսած էին, Տաճկաստան յայտարարեց թէ Դանուբը պաշտպանութեան գիծ մը համարուելով, ծովու վրայ չէզոք տէրութեանց վաճառականութեան վերաբերեալ կանոններն չեն կրնար գործադրուիլ անդ ։ Հետեւաբար օսմանեան զօրաց հրամանատարն՝ զինուորական գործողութեանց համար յարմար տեսած տնօրէնութիւններն ընելու իրաւունքն իրեն վերապահեց , եւ անմիջապէս այդ իրաւունքն ի գործ դրաւ նաւարկութեան խափանումը վճռելով ։ Նմանօրինակ տնօրէնութիւն մ'ալ Ռուսք ըրին ։

Ցայնժամ Աւստրիա-Հունգարիա յայտարարութիւն մը ղրկեց Բէթէրսպուրկ եւ Կոստանդնուպոլիս։ Գետին նաւարկութիւնը խափանելու մասին պատերազմողաց ունեցած իրաւունքը չժխտեց . բայց բողոքեց նաեւ երկարատեւ խափանման մը դէմ որ կրնար իր վաճառականութիւնը ջնջել, եւ յետագայ այնպիսի տնօրէնութեանց դէմ՝ որով իրաց հաստատեալ վիճակը կրնար փոփոխիլ ։ Դանուբի եւրոպական յանձնաժողովն ալ ուզեց երկու պատերազմող տէրութեանց ճանչցնել՝ գետին նաւարկութիւնն ապահովելու համար եղած շինութեանց անբռնաբարելի ըլլալն, բայց ռուս եւ օսմանեան պատուիրակներն Կալացի մէջ մայիս 7ին ըլլալիք գումարման ներկայ գտնուիլ չուզելով, եւ գաղղիացի ու անգղիացի պատուիրակներն Ռուսաց կողմանէ փակեալ այն նաւահանգիստը չկրնալով մտնել, գումարումը տեղի չունեցաւ ։

Ասոր հետեւանքն եղաւ որ 200ի չափ ռումանական կամ յունական ցորենաբարձ նաւեր Դանուբի վրայ Տաճկաց կողմանէ գրաւեցան պատերազմին յայտարարութենէն յետոյ 15 աւուր մէջ։ Ջրասուզակ

գրահաւորններուն առաջին գործն այս եղաւ ։ Պարէն չունեցող բերդաքաղաքներուն բաշխուեցաւ այն բռնուած նաւերուն մէջի ցորենը, եւ այս մասին եղած բողոքներուն դէմ Տաճկաց կողմանէ պատասխան տրուեցաւ թէ՝ իրենք չէին ուզեր այն նաւերուն Ռուսաց ձեռքն անցնիլը, որք կրնային գետերուն վրայ կամուրջ շինելու գործածել զանոնք ։



## ԴԱՆՈՒԲԻ ՋՐԱՀԱԻՈՐ ՆԱՒԱՏՈՐՄԻԿՆ ՑՈՒԻ ՀՐԱՄԱՆԱՏԱՐՈՒԹԵԱՆ ՆԵՐՔԵԻ

Դանուբի օսմանեան նաւատորմիկին առաջին գործն եղաւ այսպէս Դանուբի վրայ բանող առեւտրական նաւերն գրաւել, որոց տէարքն դաշնագրաց վստահելով ապահովութեան մէջ կը կործէին զիրենք ։

Դանուբի նաւատորմիկն հետեւեալ նաւերէն բաղկացեալ էր ․

1. Հինգ գրահաւոր թնդանօթակիրներէ, Ֆեթհի-Բուլենտ, Պէյքի-Շէվքէթ, Ծեորիա, Սամանտրա եւ Փերթեւիյէ անուն, որոց իւրաքանչիւրն անագախառն պղնձէ ձուլեալ փոքրաչափ թնդանօթէ մը զատ՝ երկու հատ ալ Արմսթրօնկի թնդանօթ եւ 37 նաւազ ունէր ։

2. Չորս պտուտակաւոր փայտեայ նաւերէ, Ալէքս, Վառնա, Շէվքէթնիւմա եւ Սիւննէ անուն. որոց իւրաքանչիւրն, վերնայարկին մէջտեղը գտնուող մեծաչափ թընդանօթէ մը զատ, երկու քովերը չորս հատ ալ փոքրաչափ թնդանօթներ եւ 40 նաւազ ունէր ։ Ալէքս նաւն երկու թնդանօթ միայն ունէր, մին յառաջակողմն եւ միւսն յետակողմն. այս վերջինը Արմսթրօնկի պողպատեայ թնդանօթ մ'էր բերանէն լըցուող ։ Այս նաւաց մնացեալ թնդանօթներն անագախառն պղնձէ էին ։

3. Երկու երկաթապատ թնդանօթակիրներէ, Շէմսի եւ Նըսրէթ անուն, որոց իւրաքանչիւրն եօթն մարդ ունէր եւ մէկ փոքրաչափ թնդանօթ յառաջակողմեան վրայ ։

4. Վեց փոխադրութեան նաւերէ, որոց իւրաքանչիւրին մէջ երկու թնդանօթ եւ 15 մարդ կար ։

5. Մէկ լրատար նաւէ, Արքատի անուն, որ չորս թնդանօթ եւ 28 մարդ ունէր ։

6. Երկու գրահաւոր ջրասուզակ նաւերէ, Հըֆզը-Ռահման եւ Լութֆը-Ճէլիլ անուն ։

Պատերազմի յայտարարութենէն յետոյ, նաւատորմիկն աւելի հզօր ընելու համար, Հէյպէթ եւ Սեյֆի անուն երկու ջրասուզակ գրահաւորներն ալ զրկուեցան, որք Կոստանդնուպօլսոյ նաւարանը շինուած էին, նաեւ երկու թնդանօթակիր նաւեր ․ ասոնց հրամանատարն էր փոխ-ծովակալ Մուսթաֆա փաշա ։ Այսպէս օսմանեան նաւատորմիկն բաղկացնող նաւաց թիւն քսան եւ չորսի հասաւ ։

Այս նաւատորմիկին ընդհանուր հրամանատարն էր անգղիացին Հօպարթ փաշա, որ Անգղիոյ մէջ եռայարկ նաւի հրամանատար էր եւ Ամերիկայի պատերազմին ժամանակ համբաւաւոր եղած իւր յանդգնութեամբն, որով « պաշարումն խզող » մականունն ստացած էր ։ Այն պատերազմէն յետոյ Թուրքիոյ ծառայութեանը մտած էր, բայց իւր անունն անգղիական նաւատորմի արձանագրութեանց մէջէն աւրուած չըլլալով, Բրիտանական կառավարութենէն կանոնաւոր կերպիւ կէս թոշակ կը ստանար, այսինքն 10,000 ֆրանք ։ Անգղիոյ կառավարութեան կողմանէ չէզոքութեան յայտարարութիւն ըլլալէն յետոյ, ստիպուեցաւ իրեն որ երկու ազգաց մէկուն միայն ծառայէ ։ Ցանգղիա ծովային ատեանին մէջ յառաջ երթալն երկար ժամանակի կարօտ բան ըլլալուն՝ եւ Թուրքիոյ կողմանէ իրեն մեծագումար ամսական տրուելուն, Հօպարթ փաշա Դրան ծառայութեան մէջ մնալ ընտրեց եւ իւր անունն աւրել տուաւ անգղիական արձանագրութեանց տետրակէն, մանաւանդ որ պատիւ եւ պար-

ծանք կ'ակնկալէր այնպիսի պատերազմէ մը յոր կը մտնէր տաճկական նաւատորմը թուով անհամեմատ առաւել զօրութեամբ, եւ ինքն ալ կը սիրէր դիմագրաւ ըլլալ վտանգի ։

Հօպարթ փաշա ամենամեծ վստահութիւն ունէր զրահաւոր նաւատորմիկին ապագային վրայ, եւ հռչակել տուած էր թէ անով պիտի կրնար Դանուբի անցքն արգելուլ Ռուսաց ։ Իւր համոզմանցն նաւաստիներն մասնակից ընելու՝ նաեւ Պարոլօչի ձախողուածէն պատճառեալ գէշ տպաւորութիւնը ջնջելու համար, մեծ ճարտարութեամբ ձեռնարկու եղաւ այնպիսի քաջագործութեան մը որ սահմանեալ էր Տաճկաց երեւակայութիւնները վառելու եւ նաւաստիներն համոզելու թէ ինքը կրնայ անվտանգ շրջագայիլ Դանուբի վրայ։

Ահաւասիկ այս քաջագործութեան սըրտայոյզ պատմութիւնն, որ մէկ քանի անգղիական բարեկամ լրագիրներու ղրկուեցաւ եւ ապա բոլոր Եւրոպայի լրագրաց մէջ հրատարակուեցաւ .

«Դանուբի վրայ Հօպարթ փաշայի կողմանէ ընդդէմ Ռուսաց եղած դիմագրաւութեան գործոյն պատմութիւնը սրտայոյզ բան մ'է ։

«Կ'ըսեն թէ իւր նաւն Ռուսճուքի մօտ խարսխեալ կեցած ժամանակ, օսմանեան իշխանութիւնք իմացան որ Ռուսք Կալաց հասեր էին եւ շքթակներ կը զետեղէին ։ Հօպարթ փաշայի խորհուրդ տրուեցաւ իր շոգենաւը Դանուբի մէջ թողուլ եւ Վառնայի ճանապարհաւ Կոստանդնուպոլիս դառնալ. բայց նա այս տեսակ խորհուրդներն արհամարհելով յայտարարեց թէ աւելի կ'ընտրէ իւր նաւովն մէկտեղ օդն ելնել քան թէ անկէ բաժնուիլ։

«Գիշերը վրայ հասնելուն՝ ամեն բան պատրաստել տուաւ դէպ ի Սեւ ծով յառաջանալու համար, արհամարհելով Ռուսաց բոլոր թշնամական դիտաւորութիւններն. ծխնելոյզէն ծուխ չելնելու համար՝ հրատ (եղած կրակ) վառել տուաւ իւր նաւուն կաթսայներուն տակ, եւ միւս պէտք եղած բոլոր պատրաստութիւններն ըրաւ ։ Սա եւս ըսեմք հոս որ Րէթիմօ խիստ արագընթաց շոգենաւ մ'է եւ մէկ ժամու մէջ շոգւոյ զօրութեամբ կրնայ 15 մղոն տեղ առնուլ ։

«Երբ Հօպարթ փաշա ճանապարհ ելաւ իւր յանդուգն չահատակութիւնն ընելու համար, Դանուբի հոսանքն այնպէս արագ էր որ մէկ ժամու մէջ գոնէ 5 մղոն կ'առնոյր։ Կալացի մօտեցած ժամանակ տեսաւ որ մեծ թնդանօթներով զինեալ ռուսական մարտկոցներ գետին վրայ կը նայէին, եւ կարող կ'երեւէին ջրին երեսը գտնուող ամենայն ինչ ընկլուզելու . Թող այն շքթակներն, որոց ջրերուն տակ զետեղուած ըլլալը կը գրուցուէր ։

«Մութը կոխելէն անմիջապէս յետոյ՝ «Ճրագները մարեցէք» հրամանը տրուեցաւ, եւ շոգենաւն արագ սրանալ սկսաւ ջրերուն վրայէն։ Քիչ ժամանակէն հասաւ մարտկոցներուն դիմաց. Ռուսաց լապտերներն, խոշոր թնդանօթներն եւ բազմաթիւ զինուորներն յայտնի կը տեսնուէին դիմագրաւող Րէթիմօյի վրայէն ։ Յանկարծ ռումանական եզերքէն փամփուշտ մ'արձակուեցաւ ռուս թնդանօթաձիգներուն իմաց տալու համար Հօպարթ փաշայի գալուստն։ Ուրիշ փամփուշտներ ալ հետզհետէ արձակուեցան . յետոյ հրամանատարութեան ամուր ձայն մը լսուեցաւ որոշակի, չեփորայք հնչեցին եւ թմբուկներն զարնուեցան ռուսական զօրքն իրենց տեղերը կոչելու համար ։

«Հօպարթ փաշա մէն մի վայրկեան անցնելուն կը կարծէր որ այն խոշոր թընդանօթներէն կրակ պիտի թօթափի իսկոյն եւ պիտի խորտակէ զինքն, որոց դէմ այնքան ասպետական խիզախութիւն ցոյց կուտար. բայց որոշած ըլլալով ճիգ թափել այն մեծ վտանգին համեմատ զոր կ'արհամարհէր, իւր նաւը գետեզերքին մօտեցուց, այնպէս որ մինչեւ մարտկոցները 40 մէթր հեռաւորութիւն չէր մնա-

ցած. եւ ապաքէն այնքան մօտեցաւ որ ռուս թնդանօթաձիգներն չկրցան իրենց թնդանօթները բաւական ծռել՝ լաւ նշան առնլու համար ։

«Իւր նաւն արագաբար կը սրանար, եւ ընդ հուպ ամեն վտանգ անցաւ ։

«Հօպարթ փաշա երբ համոզուեցաւ որ այլ եւս թշնամիէն վախնալու բան մը չունէր, Րէֆիճօյի նաւաստեաց հրաման տուաւ ռուսական բանակատեղին մէջ ռումբ մը արձակելու այն Արմսթրօնկի թնդանօթով որուն ռումբը 40 լիպրանոց է. այս հրամանն արագաբար ի գործ դրուեցաւ եւ ռումբն ռուսական վրաններուն մէջ տեղ պայթեցաւ ։

«Ասոր յառաջ բերած արդիւնքն ի հարկէ յայտնի չէ, բայց Տաճկա-Ռուսական պատերազմին մէջ Դանուբի վրայ առաջին անգամ տրուած թնդանօթի հարուածն էր այս ։ Հօպարթ փաշա յետոյ Կոստանդնուպոլիս հասաւ ուր ջերմ խնդակցութեամբք ողջունեցաւ ։»

Շատ անձինք գտնուեցան, մանաւանդ Կոստանդնուպոլսոյ մէջ, որք ժխտեցին այս պատմութեան ստուգութիւնը ։ Արդարեւ անոր ամբողջութեանը մէջ չափազանցութիւն մը կայ որ կասկած կը զարթուցանէ. շատ մանրամասնութիւնք ճիշտ չեն յայտնապէս, եւ անցած տեղերուն նկարագրութիւնն որքան անորոշ ըլլալն աչքի կը զարնէ։ Րէֆիճօյի նաւուն Դանուբէն իջնելու ժամանակ, այսինքն ապրիլի 26 ին կամ 27ին, ոչ այնքան ռուսական զօրք կար եւ ոչ այնքան մարտկոցներ գետին երկայնքը։ Սակայն այս կէտն բաւական լուսաբանեալ չըլլալով, անկարելի է այժմէն այլոց պէս ըսել եւ պնդել թէ Հօպարթ փաշա Ռուսճուգէն երկաթուղեաւ Վառնա երթալով անկէ դէպ ի Կոստանդնուպոլիս մեկներ է ։

Այսու ամենայնիւ՝ տաճկական նաւատորմին հրամանատարութեան մէջ գերազօր ազդեցութիւն մ'ունենալու մասին Հօպարթ փաշայի սնուցած յոյսն ի դերեւ ելաւ բոլորովին՝ մայրաքաղաք հասնելուն պէս։ Սուլթանն անձամբ նպաստաւոր էր իրեն, բայց նորա շուրջը գտնուողները մեծապէս հակակիր էին բոլոր օտարականաց, մինչեւ անգամ Հօպարթի պէս Անգղիացւոց։ Պատերազմի նախարարն Րէտիֆ փաշա յանձնապաստան խրոխտութեամբ կ'ուզէր բանակին եւ նաւատորմին մէջէն արտաքսել ամեն ազգէ քրիստոնեայ սպաները։ Նա կը կարծէր թէ Տաճիկներն կարող էին իրենք իրենց գործը տեսնելու եւ բաւական։ Բանակին ընդհանուր հրամանատար Ապտ-իւլ-Քէրիմ փաշա աղէկ աչօք չէր նայեր Հօպարթ փաշայի, որոյ յանդուգն դիտաւորութիւնքն հակառակ էին իւր խոհեմութեան, եւ կը խնդրէր նաեւ որ Դանուբէն հեռի տեղ մը ղրկուի։ Վերջապէս Հօպարթ փաշա ինքնին իւր վիճակին դժուարութիւնները բազմապատկեց իւր պահանջմամբքն ։ Կ'ուզէր տասն տարուան համար պայմանադրութիւն մ'ընել տարին 200,000 ֆրանքով։ Անշուշտ ունէր այդ արժէքն, բայց օսմանեան գանձուն համար մեծ գումար մ'էր, եւ կառավարութիւնն երկար ժամանակ վարանեցաւ անոր հրամանատարութիւն տալու ։ Օր մը զինքը վերստին Դանուբ ղրկելու խօսք կ'ըլլար, ապա Օտէսայի վրայ ռմբակոծութեան առաքելու, եւ կամ Կովկասու ծովափանց վրայ գործող նաւախմբին հրամանատար ընելու. հուսկ յետոյ անգործ թողուեցաւ, եւ Դանուբի նաւատորմիկը կորոյս այսպէս՝ իրեն լաւ հրամանատարութիւն ընելու կարող միակ անձն ։

Այսու ամենայնիւ Րէֆիճօյի պատմութիւնն ակնկալեալ արդիւնքն յառաջ բերաւ, եւ մէկ քանի օր ջրասուզակ զրահաւորներն ռումանական ափանց մօտ երթեւեկելով յաճախ ռմբաձգութիւններ ըրին առանց նպատակի եւ պատճառի, որմէ յայտնի եղաւ թէ տաճիկ նաւաստիներն իրենց վրայ մեծ վստահութիւն ստացած էին։ Մայիս 2ին երեք զրահաւոր Իպ-

բայիլը ռմբակոծեցին. Հետեւեալ օրն չորրորդ զրահաւոր մը Ռէնիի դէմ կրակ ընել սկսաւ եւ 60 ռումբ արձակեց. Նմանապէս Օլթէնիցա քերծ չմնաց անոնց հարուածներէն։ Արդէն պատմեցինք թէ Նիքօլա մեծ դուքսն Իպրայիլի գիրքը գնած ժամանակ իր վրայ ալ նշան առնուեցաւ լըրտեսի մը ցոյց տալովը։ Այն ժամանակէն տեսնուեցաւ որ Տաճկաց ռումբերուն շատերն չէին պայթեր ։ Թէպէտ նաւատորմին ռազմամթերքն Անգղիայէն կուգային, եւ Տաճկաստանի վրայ Անգղիացւոց ունեցած համակրութիւնքն անտարակուսելի են ամենուն համար, սակայն կը թուի թէ Անկլօ-Սաքսոն ցեղն բարեկամութեան համար շահասիրութիւնը չթողոյր ։

Այս ռմբակոծութեանց վրայ Դանուբի գետեզերաց ժողովուրդներն սկսան հեռանալ եւ դէպ ի Ռումանիոյ ներսերը քաշուիլ, եւ նաւատորմիկն անվրդով յառաջ տարաւ իւր աւերիչ գործն։ Սաթունովօյի մօտ գտնուող Թերապոնտայ վանքն քանդեցաւ, այն որ Ռուսաց ցանկալի էր՝ Նիքօլա կայսեր 1828ին հոն ըրած բնակութեանն համար ։ Մէկ քանի խաղաղ ռումէններ ռումբերէն սպաննուեցան. բայց զրուցուածին չափ չարիք չպատահեցաւ։ Իպրայիլի, Կալացի, Ռէնիի եւ Իսմայիլի մէջ շինուած առաջին մարտկոցներուն վրայ աճապարանօք զետեղեալ թընդանօթներն չէին կրնար խոշոր ռումբեր արձակելով երկաթապատ նաւերուն զրահները ծակել ։ Պահ մը կարծուեցաւ թէ նաւատորմիկը կրնայ գետին վրայ իշխել։ Բայց երբ մայիս 8ին Ռուսաց խոշոր թընդանօթներն հասան եւ գործի սկսան, այն ժամանակ իրաց կերպարանքը փոխուեցաւ բոլորովին, եւ հասկցուեցաւ թէ որքան անհաւասար պիտի ըլլար կռիւն եթէ Տաճիկներն յիմարաբար դիմադրաւ լինէին ։

Անտարակուսելի է որ եթէ անմիտ խարդաւանութեանց պատճառաւ Հօպարթ փաշա Դանուբէն հեռի չմնար, Ամերիկ[illegible] մէջ գետային պատերազմի կատարեալ փորձառութիւն ստացած ըլլալովն՝ ջրասուզակ զրահաւորներուն այնպիսի գործ մը պիտի տեսնել տար, որ չպիտի նմանէր ապիկար տաճիկ նաւաստեաց տեսած գործին։ Այս նաւերն ամեն բանէ առաջ աւրելու էին իրենց մօտն եղած բոլոր այն հաղորդակցութեան միջոցներն որք կրնային թշնամւոյն օգտակար ըլլալ, հետեւաբար Պարպօշի կամուրջը քանդելու էին, Դանուբի մօտ Ռուսաց դիրքն ամրացնելու սահմանեալ մարտկոցներու շինութիւնն եւ գետին յատակը շքթակներ դնելն արգիլելու էին, իրենց ճգանցն հակառակ զետեղեալ պաշարման թնդանօթներուն հետ ապարդիւն կռուոյ մը չբռնուելով եւ մեկուսի կենալով, այն ժամանակ միայն կռուելու էին երբ թշնամին գետէն անցնիլ փորձէր որով եւ իրենց գործն կրնար արդիւնաւոր ըլլալ ։

Բայց նաւատորմիկն փոխանակ այսպէս ընելու՝ թոյլ տուաւ Ռուսաց որ անդորրութեամբ գետին յատակը շքթակներ զետեղեն եւ անվրդով պատնէշներ կանգնեն. Տաճիկներն վայրապար քանդելէ եւ կործանելէ հաճոյք մը զգալով՝ միայն այն տանց վրայ ռումբ կ'արձակէին որք իրենց վնաս մը չունէին, եւ երբ Ռուսաց խոշոր թնդանօթներն սկսան որոտալ, այն ժամանակ միայն ուշադրութիւն ըրին անոնց եւ ջանացին անոնց կրակը մարել ։ Ծովու վրայ նաւախումբ մը կրնայ ռմբակոծելիք կէտին շուրջը լայն կիսաբոլոր մը ձեւացընել եւ ցիր ու շարժուն նշաւակներ միայն ընծայել թշնամւոյն որոյ հարուածներ կուտայ ի մի կեդրոն. այս կերպիւ կրկին առաւելութիւններ կը ստանայ ։ Գետի վրայ նաւերուն այսպէս իրարմէ բացուիլն եւ հեռանալն անկարելի է, եւ ծովու վրայ եղած գործոյն հակառակը կըլլայ. Թշնամին կրնայ իւր մարտկոցներն առա[illegible] գետափանց վրայ եւ համանգամայն [illegible] ռումբ արձակել ուր կամ-

կէ նկուն եւ անյարմար կը գտնուէր այսպիսի կռուոյ մը, իրեն առ թշնամին հասուցած վնասն եւ անոր կողմանէ իրեն եղած վնասն բոլորովին անհամեմատ ըլլալով։ Երբ պատնէշ մը քանդէր, մէկ գիշերուան մէջ կրնայ նորոգուիլ. բայց երբ զրահաւոր մը իւր մեքենային մէջ ռումբ մ'ընդունելով օդն ելնէ կամ ընկղմի, ռազմագիտական ամբողջ միութիւն մը եւ երկու երեք միլիոն ֆրանք անդառնալի կերպիւ կը կորսուին։

Տաճիկ հրամանատարներն իրենց տգիտութեամբն յանձնապաստան ըլլալով չհեռացան դարձեալ Կալացի եւ Իպրայիլի առջեւէն եւ ցոյցեր ըրին։ Շէֆքէթ անուն թնդանօթակիր նաւուն մէկ անիւը ջախջախեցաւ, եւ հարկ եղաւ շոգենաւի մը ետին կապելով զայն Ռուսճուգ տանիլ. ուրիշ նաւու մ'ալ մեքենայն ծանր կերպիւ վնասուեցաւ։ Այս դէպքերն վերջապէս մտածութիւն պատճառեցին եւ իսկոյն նաւատորմիղն երեք խումբի բաժնուեցաւ. տասնի չափ նաւեր Դանուբի գետաբերաններուն մօտ մնացին՝ Ռէնիի դիմաց գետին մէկ եզերքէն միւսը դրուած շղթաներուն շարքէն արգիլեալ ըլլալով, հինգ հատ ալ Մաչինի առջեւէն անցնող Դանուբի մէկ ճիւղին մէջ ապաստանեցան, ուր Ռուսք զանոնք պաշարեցին վերի կողմէն եւ վարի կողմէն մարտկոցներ հաստատելով, մնացեալներն ալ շարունակեցին վերին Դանուբի մէջ երթեւեկել, ուր Ռուսաց թնդանօթներն սակաւիկ մի յետոյ հասան։

Մաչինի առջեւէն անցնող Դանուբի ճիւղին վրայ արգիլեալ նաւերուն մէջ էին Լութֆը-Ճէլիլ եւ Սէյֆի ըսուած ջրասուզակ զրահաւորներն, որք խորտակուելով գետին մէջ ընկղմեցան։

[illegible] տափն
[illegible] յոյսն ի դերեւ

## ԼՈՒԹՖԸ-ՃԷԼԻԼ ԵՒ ՍԷՅՖԻ ԶՐԱՀԱՒՈՐԱՑ ԲՆԱՋԻՆՋ ԸԼԼԱԼՆ

Լութֆը-Ճէլիլն իրեն յար եւ նման Հիֆզը-Ռահմանին հետ մէկտեղ՝ 1868ին Գ. Արմանի՝ Պօրտոյի նաւակերտարանին մէջ շինուած էր, եւ իւրաքանչիւրին համար երկու միլիոն ֆրանք գացած էր։

Ասոնք նախ ծովու վրայ բանելու սահմանեալ ըլլալով կայմ ունէին, եւ այն ժամանակ միայն Դանուբի նաւատորմիղին հետ միացան իբր զօրավիգն երբ պատերազմն անխուսափելի երեւցաւ։ Լութֆը-Ճէլիլ՝ Հիֆզը-Ռահմանի պէս 70 մէթր երկայնութիւն ունէր եւ իր աշտարակներուն մէջ 18 հարիւրորդամէթր տրամագիծ ունեցող բերանով երկու թնդանօթ կը պարունակէր, նաեւ 17 հարիւրորդամէթր չափով թնդանօթ մը աջակողման վրայ։ Իւր պատկողանցին վրայ 11 կամ 12 հարիւրորդամէթր թանձրութեամբ զրահներ կային, եւ աշտարակներն 12 կամ 13 հարիւրորդամէթր թանձրութեամբ զրահով պատած էին։ Բայց իր ժամանակին բոլոր նաւերուն պէս վերնայարկին վրայ զրահ չունէր, որ հարկաւոր է անպատճառ ապահովութեան համար, մանաւանդ գետի մէջ, քանի որ բարձր տեղեր զետեղեալ թնդանօթներէ ռումբ կրնայ արձակուիլ նաւուն վրայ։ Այս թերութիւնն էր որ Լութֆը-Ճէլիլէ կորստեան պատճառ պիտի ըլլար։ Իսկ Սէյֆի անուն ջրասուզակ զրահաւորն Կոստանդնուպոլսոյ նաւարանին մէջ շինուած էր ինչպէս ըսուեցաւ։

Իպրայիլի մարտկոցներուն կրակէն պատսպարուելու համար Մաչինի առջեւ ապաստանող հինգ ջրասուզակ զրահաւորներն՝ մէկ քանի անգամ փորձեցին իրենց կեցած տեղէն ելնելով գետին գլխաւոր բազուկին մէջ մտնել, բայց այնպիսի սաստիկ եւ կեդրոնացեալ կրակ մը թափուեցաւ ամեն անգամուն իրենց վրայ որ ստիպուեցան ետ դառնալ։ Այնուհետեւ [illegible]ան իրենց կայանէն չհեռանալու եւ կա-



46

ՍԷՑՖԻ ՋՐԱՀԱՒՈՐԻՆ ԽՈՐՏԱԿԻԼՆ ԵՒ ԸՆԿՂՄԻԼՆ

րելի եղածին չափ օգուտ քաղելու այն տեղւոյն առաւելութիւններէն ։ Գիլասուր ճիւղին եւ Մաշինի ճիւղին իրարու կցըուած տեղը կղզի մը կը ձեւանայ Կէչէօ-տօրօղ անուամբ. այս կղզւոյն ծայրը մինչեւ Իսրայիլի դիմաց հասնելով նաւերուն համար բնական պատուար մ'է՝ որոյ ետեւը կուգային ամեն օր եւ քաղաքին դէմ մէկ երկու անգամ թնդանօթ կ'արձակէին ։

Իսրայիլի մէջ մնացող բնակիչներն՝ որք ռմբակոծութեան վարժուելով եւ հուսկ ապա զայն իբրեւ հանդէս մը համարելով ամեն օր բազմութեամբ տեսնելու կ'երթային, մայիս 11ին տեսան որ Լօ-Րֆը-Ձէ-լիլն կղզւոյն ծայրին ետեւէն ելեր էր եւ կռուոյ կը պատրաստուէր՝ իւր ծխնելոյզն իջուցանելով եւ պահելով, իւր պատուհաններուն պահպանակներն խոնարհեցնելով եւ իւր աշտարակաց բերաններն բանալով ։ Ռուսական մարտկոցներն կրակ ընել սկսան եւ ջրասուզակ նաւուն դէմ 41 ռումբ արձակեցին առանց վնաս մը հասցնելու ։ Իրարմէ այնքան հեռաւորութեամբ եղած կրուոյ մը մէջ, երկաթի զրահներն կրնային դէմ դնել 20 հարիւրորդամէթրի չափ երկայն այն ահագին ռումբերուն դէմ՝ որ իրենց վրայ քիչ մը կողմնակի կ'իյնային ։ Զրահաւորին անդրադարձութիւն չէր ըներ. Ռուսաց կրակ ընելու սկսելէն ի վեր՝ կըրկին կրկին նշաններ ըրեր էր միւս չորս զրահաւորաց, որք դէպ ի կղզւոյն ծայրը մօտենալով սկսի դառնային այն տեղէն ու յառաջ քալէին եւ անշուշտ յիշեալ հարուածող զրահաւորին քով սկսի չարժէին՝ թշնամեաց դրից դէմ սաստիկ թընդանօթաձգութիւն մը սկսելու համար ։

Բայց Ռուսք իրենց սխալանքը ճանչցեր էին, եւ նպատակնին փոխելով ջանացին զուգորդաձեւ ռմբաձգութեամբ մը զրահաւորին վերնայարկն հարուածել ։ 10 թիւ մարտկոցէն 14 անգամ ռմբկէն (հավան թօփու) պարպուեցաւ առանց արդեանց ։ Հնգետասանեկորդին՝ Սամօյլօ փոխ-նաւապետն ինք ուզեց նշան առնուլ ։ Ռումբն ինկաւ ուղղակի այն տեղւոյն մօտ ուրկէ մեքենայն երկու աշտարակաց միոյն հետ հաղորդակցութիւն ունի ։ Նախ՝ թեթեւ պայթիւն մը լսուեցաւ եւ ապա՝ սաստիկ պայթումն մը ։ Զարհուրելի փայլ մը ցոլացաւ նաւէն եւ յետոյ ծխոյ ահագին ամպ մը բարձրացաւ ։ Նաւն յերկուս ճեղքուեցաւ, վերնայարկն եւ անոր ներքնակողմն գտնուած բոլոր բաներն խորտակեցան եւ օդն ելան՝ մեքենայի բեկորներ, ռումբեր եւ մարդկային մարմնոյ մասունք ։ Յետոյ զրահաւորին երկու կողերն մերձեցան, մին մէկ կողմէն եւ միւսն միւս կողմէն. տաճկական գետափանց վրայ տասնի չափ ծայրատեալ թշուառներ տեսնուեցան եւ սակաւիկ մի յառաջ նաւին եղած տեղն ջրէն վեր՝ միայն մեծ կայմին ծայրը տեսնուեցաւ որ Տաճկաց կարմիր դրօշն կը կրէր վրան սպիտակ կիսալուսնով մը ։

Պայթումէն յետոյ՝ միւս օսմանեան նաւերն խոյս տուին եւ մակոյկ մ'անգամ չղրկեցին Լօ-Րֆը-Ձէլիլի այն մէկ քանի նաւաստիներն ազատելու համար, որք ջրասուզակին բեկորներուն մէջ կը լողային ։ Իսրայիլի մէջ հրամանատարութիւն ընող Սալով զօրապետն՝ արկածին պատահած տեղւոյն վրայ երեք շոգեշարժ մակոյկ ղրկեց, մեծ դքսին թիկնապահներէն Սթրուքով զօրապետին եւ ուրիշ երկու սպայից հրամանաց ներքեւ ։ Մէկ մարդ միայն կարելի եղաւ ազատել՝ որ ծանր կերպիւ վիրաւորեալ էր եւ չարժուն հիւանդանոցի մը մէջ փոխադրուեցաւ ։ Տուպասով փոխ-նաւապետն՝ որ մակոյկներէն մէկուն մէջ կը գտնուէր, այս արկածին զոհերուն օգնելու համար գետին մէջ երթեւեկած ժամանակ՝ մօտեցաւ այն կայմին որոյ ծայրը ջրէն դուրս կ'երեւէր եւ ահագին կարմիր դրօշն հանեց վրայէն ։

Երբ դրօշն գետեզերքն հասաւ, որոտաձայն կայթիւններով ողջունեցաւ որք հեռապհետէ տարածուելով մինչեւ քաղաքին

մէջ լսելի եղան։ Իպրայիլի հասարակութիւնն ցնծութեան աղաղակներով իւր հրճուանքն յայտնեց, վասն զի գիտէր արդարեւ թէ Լութֆը-Ճէլիլն՝ Դանուբի օսմանեան նաւատորմիղին ամենէն ահեղ գրահաւորն էր, եւ կը յուսար թէ այլ եւս բոլորովին զերծ էր ռմբակոծութեան մը երկիւղէն։ Քաղաքային իշխանութեանց անդամներն եւ վաճառականաց կողմանէ պատուիրակներ մարտկոց գացին իրենց երախտագիտական զգացմունքն եւ խնդակցութիւնն յայտնելու համար։ Երեկոյին՝ ի պատիւ Սամօյլօ փոխնաւապետին խնճոյք տրուեցաւ եւ Իպրայիլի բնակչաց կողմանէ նուէր մ'եղաւ անոր։

Լութֆը-Ճէլիլ, որ տաճկերէն «Աստուածային շնորհք» ըսել է, 219 նաւազ ունէր։ Ռուսաց ձեռօք ազատուած վիրաւորեալ անձէն զատ, Նէճիպ պէյ անուն նաւապետն եւ ութ նաւաստիք՝ շրջակայններն յածող Չէրքէզներու ձեռօք ազատեցան եւ մնացեալներն կորսուեցան։ Ռուսաց մեծ ուրախութիւն պատճառեց Տաճկաց կրած այս առաջին ձախորդութիւնն։ Սամօյլօ փոխ-նաւապետն եւ թնդանօթը բանեցընող երեք հոգիք Նիքօլա մեծ դքսէն շքանշան ստացան։

Օսմանեան միւս չորս գրահաւորներն այնուհետեւ ռուսական մարտկոցներուն չմօտենալով, Մաչինի առջեւէն անցնող Դանուբի ճիւղին մէջ մնացին եւ դուրս չելան։ Ասոր վրայ Ռուսք մտածեցին երթալ անոնց վրայ յարձակիլ նոյն իսկ իրենց ապաստանարանին մէջ։ Իպրայիլի առջեւ կեցող նաւատորմիղին նաւաստիներն ամեն օր բարձրաձայն կը խնդրէին որ թոյլ տրուի իրենց երթալ յարձակմամբ գրաւել զանոնք։ Բայց ձեռնհաս իշխանութիւնք չէին ուզեր, զի այսպիսի ձեռնարկութիւն մը կրնար կորուստ պատճառել շատ մարդոց։ Ասկէ զատ՝ սա եւս կը մտածէին թէ օսմ. գրահաւորներն անկարող էին փախչիլ եւ ջրոց նուազութեան ժամանակ անպատճառ պիտի խրէին։ Սակայն ջրերն փոխանակ նուազելու բարձրացան, եւ Տաճիկներն փրկութեան յոյս մ'ունեցան։

Այն ժամանակ ռուս սպայք եւ նաւաստիք վերստին թախանձել սկսան. այս անգամ գիջումն եղաւ եւ թոյլ տրուեցաւ որ ուզածնուն պէս ընեն։ Տուպասով փոխ-նաւապետն որ Լութֆը-Ճէլիլ դրօշը բերեր էր, իւր Սամօյլօ ընկերին յաջողութեանը վրայ ազնիւ նախանձով մը վառեալ՝ միտքը դրած էր այնպիսի յարձակում մ'ընել որ յանդգնութեամբ՝ Քանարիսի հրձիգ նաւակներուն համբաւաւոր շահատակութեանց կը հաւասարի։
Իւր այս խորհուրդն հաղորդեց իւր բարեկամաց՝ Շէսթաքով եւ Փէթրով փոխ-նաւապետներուն եւ Փէրսին եւ Պահլ անուն երկրորդական փոխ-նաւապետաց։ Ռումանիացի քաջ սպայ մը՝ Մուրճէսքօ հազարապետն, որ Գաղղիոյ մէջ կրթեալ է, ուզեց անոնց ընկերանալ։

Թօրնիքրօֆի մակոյկներն նկարագրած եմք, ինչպէս նաեւ այն հանճարեղ միջոցն որ կը գործածուի ինքնաշարժ չքթակ մը խողովակաւ մ'ուղղելու համար։ Կ'երեւի թէ այս նորագիւտ գործիքներն չկային տակաւին այն նաւերուն վրայ որոց կտորներն Ռուսք երկաթուղեաւ բերեր եւ այս ագուցանելով Դանուբ իջուցեր էին. որովհետեւ վերոյիշեալ յանդուգն սպայք հին գործիքներով իրենց քաջագործութեան ձեռնարկեցին։ Երեւակայելու է պղնձէ գլանաձեւ անօթ մը՝ գրեթէ հարիւր հազարակրամի չափ հասարակ վառօդով լցուած, որ կրնայ մինչեւ տասն ոտնաչափ խորութեամբ ջրոց մէջ առկախ մնալ։ Մակոյկի մը յառաջակողմն քառասուն ոտնաչափ երկայնութեամբ ձող մը կը զետեղուի եւ անոր ծայրը կը դըրուի չքթակն։ Այսպիսի գործիքով մը թըշնամի նաւ մը հարուածել փորձելն մահն աչք առնուլ ըսել է։ Եթէ թշնամւոյն թնդանօթի եւ հրացանի հարուածներն

վրիպին, չքթակին պայթումը՝ որոյ ներգործութեան սահմանին մէջ կը գտնուի ի հարկէ մակոյկն, կրնայ գրեթէ անվրէպ կորուստ պատճառել անոր։ Բայց այսպիսի բաներէ վախցող եւ ընկրկող մարդիկ չէին այն արի երիտասարդները, որոց եւ ոչ մին, բաց ի Մուրեէսքօ հազարապետէն, 25 տարեկան կար։ Որքան մեծ էր վտանգն այնքան նաեւ մեծ էր իրենց ստանալիք փառքն ։

Այս արշաւանքն կը լինէր տասն մէթրի չափ երկայն չորս հատ փոքրիկ մակոյկներով՝ որոց իւրաքանչիւրին յառաջակողմը մէկ թնդանօթ կար։ Մայիս 25ին կէս գիշերով նաւատորմիղին մեկնեցաւ փոխ-նաւապետ Տուպասովի հրամանատարութեան ներքեւ՝ հետեւեալ կարգաւ. առջեւէն կ'ընթանար Թօէնէռ անուն մակոյկն 9 մարդոցմով՝ Շէյօթաքով փոխ-նաւապետին հրամանատարութեամբ. անոր ետեւէն կ'երթար Ցուէէվնէ 14 մարդոցմով փոխ-նաւապետ Տուպասովի հրամանատարութեամբ, որոյ մէջ էր Մուրեէսքօ հազարապետն. յետոյ կարգաւ կ'երթային Ենէյէռ եւ Ցուէէնէռ անուն մակոյկներն՝ իւրաքանչիւրն 9 մարդոցմով, միւսներուն իբր զօրավիգն։ Մէն մի մակուկի յառաջակողմը չքթակ մը կար ։

Ասոնք ճանապարհ ելան առանց աղմկի, զի նաւաստիք չգիտէին այս արշաւանաց նպատակն, որ խիստ գաղտնի պահուած էր կասկած չտալու համար Դանուբի եզերաց վրայ Տաճկաց ունեցած բազմաթիւ լրտեսներուն ։

Նաւատորմիղն ինն հազարամէթր տեղ ճանապարհ առաւ։ Երկինքն ամպամած էր, բայց աղջամուղջ չկար, որովհետեւ լուսնոյ լոյսն էր. ուստի շատ հեռուէն սպայք իրենց դիտակներովն տեսան գրահաւորներն որք հետզհետէ մեծ կ'երեւէին քանի որ կը մօտենային անոնց։ Գետեզերաց ցած եւ ամայի լինելուն պատճառաւ գրեթէ թափուր երեւցող հորիզոնին վրայ՝ երեք ջրասուզակներ միայն կը նշմարուէին, եւ ափունքն կարծես թէ միակերպ սահելով խոյս կուտային նաւաստեաց աչաց առջեւէն՝ իբրեւ արջնաթոյր ահագին ժապաւէնի մը հանգոյցներն։ Չորրորդ գրահաւորն անշուշտ աւելի հեռի էր ։

Յանկարծ շարժում մը տեղի ունեցաւ Ցուէէլէ անուն մակուկին մէջ. տարօրինակ սուր տեսութիւն ունեցող նաւաստի մը գրահաւորներն տեսած լինելով պարզ աչօք՝

— Զրահաւորներն, գոչեց։

— Լռութիւն, հրամայեց Տուպասով փոխ-նաւապետն ։

Այս երկու բառէն զատ՝ ալ ուրիշ ձայն մը չլսուեցաւ մինչեւ կռուոյն ժամանակը։ Այս կերպիւ մօտեցան Սէյֆի գրահաւորին որուն 60 մէթր կը մնար։ Փէթրով փոխ-նաւապետն այն ժամանակ ժամացոյցը նայելով տեսաւ որ երկուք ու կէսն էր ։

Ռուս սպայք կ'ըսեն թէ գետափանց վրայ գտնուող անհամար գորտերուն խառնաձայն եւ անընդհատ կարկաչն արգելք եղաւ թշնամւոյն՝ իրենց մակոյկներուն հանած դղրդիւնը լսելու ։

Սակայն Տաճիկ պահանորդ մը գոչեց.

— Ով է այն .

— Սէօք ճօգամ (սուս, ատամ) պատասխանեց տաճկերէն Տուպասով փոխ-նաւապետն թշնամին խաբելու համար ։ Բայց պահանորդն այսպին գէշ արտասանութեանը նայելով՝ կրակ ըրաւ զօրաց ձայն տալու համար ։

Տագնապ կար այս պահուս։ Հարկ էր շուտ գործել, մանաւանդ որ երեք գրահաւորներն սկսան կարկտի պէս գնտակ եւ ռումբ տեղալ այն չնչին լաստափայտերուն վրայ որ իրենց դէմ կը խիզախէին։ Ռուսք իրենց նշաւակ ընտրեցին Սէյֆի անուն գրահաւորն զոր Հըֆզը-Ռահման կը կարծէին։

Ցուէէլէ անուն մակոյկն պտուտակին մէկ քանի անգամ դառնալովն յառաջ երթալով՝ իւր չքթակն արձակեց գրահաւորին կողին դէմ՝ յառաջակողման եւ փորին միջեւ։ Զարհուրելի թմբիւն մը լը-

ուեցաւ։ Շքթակն պայթեր եւ Նաւուն վրայ վարէն վեր ծակ մը բացեր էր ուղղաձիգ՝ ուր կը յորձէին գետին ջրերն։ Բայց ջուրն միանգամայն՝ բորբոքեալ վառօդին ծխոյն ծաւալական ուժովը յետս մղուելով՝ ահագին ալիք մը կը յորուցանէր, եւ այս ալիքն միահաղոյն մակուկին վրայ խուժեց, մինչ անհուն բոց մը երկինքն կը լուսաւորէր։ Խառնիխուռն իրարու վրայ ինկած մարդոց մէջ Նետեց կոհակն Մուրեէսքօ հազարապետն եւ հրամանատարն. բայց այս վերջինն իսկոյն ոտք ելնելով գոչեց.

— Մեքենոյն յետս։

Մեքենավարն որ լծակը չէր թողած, իւր ճմլեալ ձեռօքն դարձուց զայն եւ շոգին, եւ Նաւակն գրեթէ բոլորովին մխրճած՝ մէկ քանի անգամ պտուտկեցաւ։ Մակուկին վրայ ամենքն ալ կը կարծէին թէ պիտի ընկղմի։ Մուրեէսքօ հազարապետն Նետուեցաւ մեքենային մօտ մեքենավարին օգնելու համար, մինչդեռ Տուպասով աչքերն զրահաւորին վրայ կը յառէր անշարժ։ Տաճիկ Նաւաստիներն այս դժոխային յարձակմունքէն զարհուրեալ. կը մռնչէին եւ իրենց բոլոր զինուքը կրակ կ'ընէին. գնտակներն մակուկին երկաթեայ պահպանակին վրայ կը տեղային ինչպէս կարկուտ տապակւոյ մը վրայ։ Եէնէա անուն մակուկին յետակողմն գնտակէ մը բացուեցաւ. Փէրսին երկրորդական փոխ-Նաւապետն առանց կառուատեղէն հեռանալու հոն կեցեր էր, բայց ուրիշ գնտակ մ'ալ եկաւ իւր մակուկին ցռուկն տարաւ եւ մակոյկն ջրով լցաւ։ Այն ժամանակ դէպ ի օսմանեան ափունքն երթալով եւ ցամաքն ելնելով՝ հոն պարպեց իւր Նաւակին ջրերն եւ շտապաւ իւրովսանն Նորոգեց զայն։

Սակայն Տուպասով տեսնելով որ Սէյֆին խիստ յամր կերպիւ կը սուզի, գոչեց.

— Լաւ չսուզէր։ Կարգը ձերն է այժմ, Շէսթաքով։

Ցայնժամ Քսէնիա մակոյկն, որ այս հրամանին կ'սպասէր՝ զրահաւորին վրայ յարձակեցաւ միեւնոյն յիմարական յանդգնութեամբ եւ զայն մէջ տեղէն հարուածեց՝ այն կողմէն ուրկէ Ծարէվիչն զարկեր էր։ Նաւուն կողին վրայ երկրորդ բացուածք մը բացուեցաւ շքթակին պայթումէն, եւ Նաւն ամիջապէս վերուստ ի վայր սուզեցաւ։ Անոր բեկորներն Քսէնիայէ վրայ թօթափեցան. դուռ մը երկրորդական սպայի մ'ուսին վրայէն քերելով անցաւ առանց անոր վնաս մը հասուցանելու, տախտակ մը գնաց պտուտակին մէջ մխեցաւ եւ արգելք եղաւ անոր դառնալուն, բայց միւս մակոյկներն անոր օգնութեան հասան։

Այսպէս՝ երկու միլիոն Ֆրանք արժող եւ 219 Նաւաստի ունեցող զրահաւոր մը խորտակելու համար՝ տասն վայրկեան բաւական եղեր էր չորս հատ փոքրիկ մակոյկներու, որոց մէջ 41 Նաւաստի եւ 6 սպայ կային։ Ռուս սպայք այս յաջողութենէն քաջալերեալ՝ կը բաղձային իրենց աւերիչ գործն շարունակել. բայց ժամը գրեթէ երեքն էր եւ արշալոյսն սկսեր էր ծագիլ, ուստի երկու զրահաւորներն կընային իրենց մակոյկներն ջուրն իջուցանելով զինուորներով լնուլ իրենց վրայ յարձակելու համար։ Սակայն այս դաղափարն օսմ. հրամանատարներուն միտքը չեկաւ, եւ ռուսական Նաւատորմիկն Իպրայիլի ճանապարհն բռնեց անվրդով կերպիւ, մինչ ետեւէն գնտակ եւ ռումբ կը տեղար ինչպէս բոլոր յարձակման միջոցին։ Ստուգիւ զարմանահրաշ դիպուածով մը՝ որմէ յայտնի կը լինի տաճիկ Նաւաստեաց պակուցումն այս տարօրինակ եւ անակնկալ յարձակման երեւոյթն, Ռուսաց եւ ոչ մին վիրաւորեր էր մինչեւ անգամ թեթեւ կերպիւ։ Նաւաստիք սքանչելի վարմունք մը ունեցած էին, վասն զի բոլոր կռուոյն ժամանակ հանդարտ եւ լուռ կեցած էին իբրեւ կրթութեան մէջ։

Երբ լուսցաւ, մարդիկ Իպրայիլէն ի զուր դիտակներով դիտեցին. անկարելի եղաւ տեսնել այն երկու զրահաւորներն որք խոյս

տուեր էին եւ Մաչինի առջեւէն անցնող Դանուբի ճիւղին մէջ աւելի յառաջ գացեր էին, ուր ջրոց նուազութեան պատճառաւ մէկ քանի օր յետոյ խրեցան։ Տուպասով, Փէյրսին եւ Պաշլ կրցան անմիջապէս կռուոյն տեղը դառնալ եւ ընկղմեալ զրահաւորին դրօշն առնուլ որ տակաւին ջրէն վեր կը ծածանէր։

Զորս մակոյկներուն նաւաստիներն Իպրայիլի մէջ իբրեւ դիւցազունք ընդունելութիւն գտան։ Նիքօլա մեծ դուքսն իւր սեղանն հրաւիրեց Տուպասովն եւ Շէսթաքովն, որք Ս. Գէորգայ կարգին չքանշանն ընդունեցան որ խիստ քիչ անգամ կը տրուի, Մուրեէնքօ հազարապետն՝ Ս. Վլատիմիրի կարգին չքանշանն ընդունեցաւ, երկրորդական փոխ-նաւապետ Փէրսին՝ Ս. Ստանիսլաւոսի կարգին չքանշանն, եւ Պաշլ Ս. Աննայի կարգին պատուանշանն։ Ցարէվիչ եւ Քսէնիայի բոլոր նաւաստեաց խաչ տրուեցաւ, եւ միւս երկու մակոյկներուն նաւաստեաց մէն մի խմբին երկու խաչ։

Ռուսական լրագիրք մեծ խանդով խօսեցան այս նոր քաջագործութեան վրայ, որով ստուգիւ ծովային կռւին նոր կերպարանք մը կը ստանար։ «Ի՞նչ կ'ապացուցանեն, կ'ըսէր Ռուսքէ Միր (Ռուսական Աշխարհ) լրագիրն, նաւատորմին այն երկու փոխ-նաւապետաց քաջագործութիւնքն, եթէ ոչ՝ ռուս նաւաստեաց բարոյական յատկութեանց մեծ արժէքն, այն զրահաւորաց անշահութիւնն՝ որ եւրոպական հրապարակին վրայ երկու հազար միլիոն հին երկաթի արժէքն ունին միայն, եւ զրահաւոր նաւատորմիղներուն վախճանն։ Անգղիացիք չեն ուզեր իրենց աչացն հաւատալ։»



## ԴԱՆՈՒԲԻ ՎՐԱՅ ԹՆԴԱՆՕԹԻ ԿՌԻՒՆԵՐ

Մինչ տաճկաց թնդանօթակիր նաւերն ճախակողմեան գետափանց ժողովուրդներն աչաբեկ կ'ընէին, օսմանեան բերդաքաղաքներն ալ կռուոյն մասնակցելով իրենց դէմ եղած ռումանական քաղաքաց վրայ ռումբ կը տեղային։ Մայիս 7 ին Վիտին կը սկսէր կրակ ընել Գալաֆաթի դէմ, որ իսկոյն անոր պատասխանեց, եւ Ռումանիա այսպէս կամայ ակամայ պատերազմող եղաւ։ Ցայնմ հետէ իւր մարտկոցներն տաճկական մարտկոցներուն դէմ սկսան կռուիլ գետափանց բոլոր երկայնութեանը վրայ՝ Թուռնուլի, Ճուրճէվօյի, Օլթէնիցայի եւ Գալարաշի մէջ։ Ապրիլ 16ին պայմանադրութեան համեմատ՝ Ռուսք մայիս ամսոյ մէջ քիչ քիչ գրաւեցին Դանուբի ձախակողմեան եզերքն մինչեւ Ալութայի գետախառնուրդն, եւ Ռումանիացիք Փոքր Վալաքիոյ մէջ համախմբեցան անոնց մնած տեղերէն ետ քաշուելով։

Ռուսք՝ ռումանական թնդանօթաց տեղ պաշարման խոշոր թնդանօթներ զետեղեցին, եւ քիչ ժամանակէն դէմ ընդ դէմ կռիւ մը բացուեցաւ, որ ամեն առաւօտ կը սկսէր ի մէջ Վիտինի եւ Գալաֆաթի, Պէքէթի եւ Օրասովայի, Թուռնու-Իգլայի եւ Նիկոպոլսոյ, Սլոպոծիա-Ճուրճէվօյի եւ Ռուսճուգի, Օլթէնիցայի եւ Թուրթուքայի, Գալարաշի եւ Սիլիսթրէի, Եալօմնիճայի եւ Հրասովայի մէջ, ինչպէս նաեւ Մաչինի առջեւ ապաստանող զրահաւորաց եւ Իպրայիլի մէջ։

Վառօդոյ այս ահագին վատնումն հեռագրական գործակալներն եւ լրագրաց թղթակիցներն ուրախացոյց, որ վեց շաբաթէն աւելի միջոցի մէջ՝ բան մը պիտի չունենային գրելիք, եթէ իրարանցում եւ աղմուկ պատճառող այսպիսի յառաջամարտներ չլինէին։ Երկու կողմէն ալ քիչ վնաս եղաւ։ Այս թնդանօթի կռիւներուն մէջ Ռուսք երեք նպատակ ունէին, իրենց ռմբերուն բուն որչափ հեռաւորութեամբ ձգուիլն փորձել՝ պատեհ ժամանակին օգուտ քաղելու համար, Տաճկաց դիրքերն զննել եւ անոնց տկար կողմերն գտնել եւ մանաւանդ այն հրոյ եւ ծխոյ քողին ետեւ ծածկել իրենց զօրաց շարժմունքն։

Ռուսաց իբրեւ ցոյց ըրած այս թնդանօթաձգութիւնքն Դանուբի ամեն կէտերուն վրայ միեւնոյն սաստկութիւնն ունէին, եւ Տաճիկներն չէին կրնար հասկնալ թէ նոցա բանակը ուր կը համախմբէր. եւ ստուգիւ այս համախմբութիւնն ամենամեծ գաղտնապահութեամբ կատարուեցաւ, այնպէս որ Ռումէնք անգամ՝ որոց առջեւէն կ'անցնէին բոլոր գնդերն, չէին գիտէր թէ ուր կողմ կը ղրկուէին ։

Դանուբն անցնելու փորձեր ալ եղան ։ Մայիս 10ին՝ Մաչինի գայմագամին կողմանէ Ռուսճուգի բանակակեդրոնն հեռագիր մը հասաւ որ կ'ըսէր. Ռուսք գետն անցան. ըսէք թէ ինչ ընեմք ։ Թշնամին կ'աւերէ եւ կը յափշտակէ ։ Այս հեռագիրն ղրկուելէն յետոյ՝ կառավարիչն խոյս տուեր էր, եւ երբ Ռուսճուգէն մանրամասն տեղեկութիւն ուզուեցաւ, հազիւ երկու ժամէն յետոյ՝ Մաչինի ոստիկանութեան գլխաւորն պատասխան մը գրեց եւ իմացուց թէ՝ իրօք՝ թշնամին նաւակներով գետէն անցնիլ փորձեր էր եւ Տաճկաց արիութեամբն ետ մղուեր էր ։

Այս իրարանցումին պատճառ տուող իրողութիւնն հետեւեալն է ։

Մաչինէն վար գետին մէկ քանի այլ եւ այլ ճիւղերը կը միանան, եւ այն կողմը Դանուբի աջակողմեան եզերքէն դէպ ի գետն երկայնեալ լեզու մը կայ՝ որ լրագրաց մէջ յաճախ յիշուած Կեչէթ անուն կղզւոյն դիմացն է ։ Ահա այս լեզուին վրայ է Կէչիտ գիւղն եւ ոչ թէ կղզւոյն վրայ ։ Ամեն ազգի վաճառականք եօթն կամ ութ հատ մթերանոցներ կառուցած են անդ՝ Պրայիլի նաւահանգստին մէջ եղած ծախքերէն ազատելու համար ։ Տաճիկներն չորս թնդանօթներ զետեղած էին այս մթերանոցներուն քով՝ որք ամեն կողմանէ ճահիճներով շրջապատեալ բլրակի մը վրայ շինուած էին ։ Երբ Դանուբի ջրերն բարձրացան եւ տեսնուեցաւ որ ճահիճներն անմատչելի լճի մը պիտի փոխուէին, տաճիկներն վախցան որ թշնամին իրենց թնդանօթներն անկէց կ'առնու կը տանի, ուստի Մաչին փոխադրեցին զանոնք ։ Պրայիլէն մարդիկ այս բոլոր գործողութիւնները կը տեսնէին, եւ Ռուսք որոշեցին այն բարձիթողի եղած դիրքն գրաւել՝ ի հարկին կամրջագլուխ մը եւ ամրութիւններ շինելու համար անդ ։ Այս յատակագծին գործադրութեան դէմ արգելք մը չելաւ, եւ 1,000ի չափ մարդոցմէ բաղկացեալ ջոկատ մը գետն անցաւ, բայց այս ջոկատին հրամանատարն այն տեղեաց զննութիւնն ընելով՝ համոզուեցաւ որ ճահիճներուն պատճառաւ անկարելի էր այն տեղը կենալ, ուստի ջոկատն Պրայիլ դարձաւ ։ Մէկ քանի օր յետոյ խազախներն Կէչիտ կղզին մտան, անդ գտնուող պաշը-պօզուգները վանեցին եւ թնդանօթներ զետեղեցին ։ Այս դիրքը գիւղին դիրքէն աւելի նպաստաւոր էր եւ կրնար միեւնոյն օգուտներն ունենալ ։ Պէտք եղած ժամանակ կարելի էր փոքր շոգենաւներ ղրկել այն տեղ, որոց կտորներն Ռենիէն Պրայիլ բերուելով ագուցուեր էին, եւ այսպէս այն տեղի զօրաց օժանդակել ։

Նմանօրինակ ուրիշ գործողութիւն մ'ալ ըրին Ռուսք ։ Ճուրճէվոյի եւ Ռուսճուգի մէջ տեղ կղզի մը կայ զոր Էօմէր փաշա 1854ին զանց չէր ըրեր գրաւել, եւ այնու կարող եղած էր ռուսական զօրքն Ճուրճէվոյէն վանել ։ Ռուսք այս փորձառութեամբ տեղեակ ըլլալով՝ իսկոյն նոյն կէտը գրաւեցին այն տեղուանքն հանելնուն պէս ։ Բազմաթիւ ջոկատներ ղրկուեցան այն տեղ, եւ արագաբար ամուր մարտկոցներ կանգնեցին եւ այլ ու այլ հողակոյտներով եւ կողմնական հողախուտակներով ամրացուցին զանոնք ։ Կ'ըսուի թէ Ապտիւլ-Քէրիմ փաշա ամեն օր Ռուսճուգի պարապաց վրայէն՝ իբրեւ սոսկ հետաքրքիր անձ մը կը դիտէր այն մարտկոցներուն շինութիւնն ։

# Գլուխ Երկոտասաներորդ

## ՄԱՐՏԱԿՑՈՒԹԻՒՆ ՌՈՒՄԱՆԻՈՅ

### ՉԷԶՈՔՈՒԹԻՒՆՆ ԱՆՀՆԱՐ ԿԸ ԼԻՆԻ

Ռուսական զօրաց Ռումանիա մտնելէն յետոյ՝ մէկ քանի օր ռումանական կառավարութեան ցոյց տուած վարմունքն իր անդամոց ցաւալի տատամսութիւնն կը յայտնէ, ինչպէս նաեւ անոնց՝ մէկ մը ակընկալութեան եւ մէկ մը վհատութեան մէջ իյնալն. Օր մը կը յուսային չէզոք մնալ երկու հակառակորդաց մէջտեղ, եւ այն ժամանակ ի պաշտօնէ Դրան կը ծանուցանէին թէ Ռումանիա դիտաւորութիւն չունի Տաճկաստանի հետ իր յարաբերութիւններն խզելու, եւ պիտի շարունակէ հարկ տալ եւ իբրեւ հարկատու՝ իր պարտականութիւններն կատարել. Բայց քիչ մը ժամանակ յետոյ կը ստիպուէին ճանաչել թէ չէզոքութիւնն անհնար էր: Թուրքիոյ ըրած գրգիռներն եւ հանապազօրեայ յարձակմունքն, ժողովրդեան մէջ այս պատճառաւ յառաջ եկած զայրոյթն, եւ ռուսական բանակին մերձաւորութեամբն բորբոքեալ ազգային ոգեւորութիւնն չէզոքութեան կը հակառակէին, եւ իրենք այնուհետեւ յայտնի Ռուսաց կ'օժանդակէին: Լրագիրներ եղան որ զանոնք ամբաստանեցին իբրեւ նենգաւոր եւ երկդիմի. բայց Ռումանիա ակամայ դիպաց հոսանքին մատնեալ լինելով, զարմանալի բան չէ, եթէ միշտ չէ ունեցած այնպիսի որոշ քաղաքականութիւն մը, ինչպէս կրնայ պահանջուիլ ինքնիշխան տէրութենէ մը:

Ռումանական խորհրդարանն ապրիլ 26ին գումարեցաւ, եւ առաջին նիստն բացուեցաւ Կարոլոս իշխանին մէկ պատգամագրովն, որ խորհրդարանէն կը խնդրէր կառավարութեան համար ընթացք մ'որոշել: «Մինչեւ որ որոշում մ'ընէք, կ'ըսէր, կառավարութիւնն Ռուսաց առջեւ միշտ զգոյշ դիրք մը կը պահէ եւ պիտի պահէ, եւ սահմանադրական պետութեան մը մէջ այս միայն ներելի է գործադիր իշխանութեան:» Իշխանը կը ծանուցանէր միանգամայն թէ երաշխաւոր տէրութիւնք Ռումանիան առանձինն թողած էին եւ դիտաւորութիւն կը յայտնէր ամեն պատահականութեանց դէմ դնելու: «Բոլոր Ռումանիացւոց հայրենասիրութեան պիտի ապաւինիմք, կ'ըսէր, եւ ի հարկին հայրենեաց զաւակներու բազուկներն գործածելու պիտի դիմեմք:»

Երկու օր յետոյ՝ խորհրդարանն ապրիլ 16ին պայմանադրութեան վիճաբանութիւնն սկսաւ, եւ այն ժամանակ հասկցուեցաւ թէ ժողովրդեան զգացումն ինչ էր: Ճշդիւ խօսելով՝ ժողովոյ մէջ պատերազմասէր կուսակցութիւն չկար. Ընդդիմադիր փոքրամասնութիւնն անպատճառ անգործ մնալու կողմն էր. կառավարական փոքրամասնութիւնն կ'ուզէր գործելու յանձնառու լինել՝ ի հարկէ միայն ստիպեալ: Խիստ սաստիկ եղան վիճաբանութիւնք եւ իրենց տխրութեամբն՝ դրեթէ վեհ: Ամեն գիտողութեանց, քննադատութեանց եւ կշտամբանաց նախարարք ուրիշ պատասխան չէին կրնար տալ եւ չը տուին բայց եթէ՝ «Ճակատագրին հրամանն է այս, ուրիշ բան անկարելի եղաւ մեզ:» Ընդդիմադիր մասն խստութեամբ ստիպեց զիրենք որ Ռումանիոյ տկարութիւնը ցոյց տան՝ իրենց հանած վարմունքին իբրեւ միակ բանաւոր պատճառն եւ պնդեն յայտնի: Երեսփոխան մը նկատելով թէ Փարիզի դաշնագիրն ստորագրող տէրութեանց

հաւաքական երաշխաւորութեան տեղ՝ միակ տէրութեան մը՝ այն է Ռուսիոյ պաշտպանութիւնն անցընող պայմանադրութեան մը համար քուէ չպիտի տայ, Պ. Քօկալնիչէանօ պատասխանեց ցաւագին․ «Ըրինք ինչ որ մարդկօրէն կարելի էր՝ մեր չէզոքութիւնն երաշխաւորել տալու համար։ Ոչ միայն խնդրեցինք զայն, այլ նա-



ՋՕՐԱՊԵՏ ՄԷՀՄԷՏ ԱԼԻ ՓԱՇԱ

եւ ժողովէն, եթէ կրնամ այս նուաստացուցիչ բառը գործածել։ Ո՛չ ոք ուզեց մեզ մտիկ ընել։ Փարիզի դաշնագիրն պատռուածէ, բայց ոչ մեր ձեռօք։ Երկու յարձակմանց առջեւ կը գտնուիմք, այսինքն՝ պաշը-պօզուքներու արշաւանաց եւ վայրագ ծայրայեղութեանց, եւ միւս կողմանէ՝ Ռուսաց արշաւանաց՝ որք մեր երկիրը

կը մտնեն յանուն քաղաքակրթութեան եւ մարդասիրութեան։ Տեսէք ինչ որ կը պատահի Դանուբի եզերաց վրայ եւ ինչ որ կը լինի Փրութի ափանց վրայ . . . եւ ընտրեցէք։» Միեւնոյն երեսփոխանն յիշելով որ նախնի Ռումանիացիք հազար անգամ աւելի նախամեծար կը համարէին Տաճկաց կողմն անցնիլ քան թէ Ռուսաց, Պ. Պրաթիանօ գոչեց . «Եւ ո՛չ մէկ տէրութիւն եկած է Տաճկաստանը պաշտպանելու, եւ դուք կ'ուզէք որ մեք պաշտպանեմք։»

Ուրիշ երեսփոխան մը ցոյց տուաւ թէ՝ Տաճկաստանի դէմ թշնամական նշանակութիւն մ'ունի այն պայմանագիրն որոյ վաւերացումն կ'առաջարկուի խորհրդարանին։ «Մեր հրատարակած չէզոքութիւնը ծաղրելի է, ըսաւ, քանի որ Ռուսաց հետ իբրեւ բարեկամ եւ Տաճկաց հետ իբրեւ թշնամի կը վարուիմք։ Տէրութիւններէն եւ ոչ մին վշտացնելու էինք, եւ ոչ անոնցմէ մէկուն օգնելու։ Մեր ըրածը չէզոքութիւն չէ, կեղծեալ պատերազմի յայտարարութիւն մ'է ընդդէմ Տաճկաստանի, եւ Ռուսիոյ հետ դաշնակցութիւն մը որոյ դրժումն կը լինի։ Դաշնակցութիւն ընել ներելի չէ տկարաց, մանաւանդ այնպիսի դաշնակցութիւն մը զոր բռնութիւնն հարկ կը դնէ ընել։» Այս խօսքին եւ ոչ մէկ նախարար պատասխան տուաւ. իւրաքանչիւրն անշուշտ կը ճանաչէր ի սրտէ անոր ճշմարտութիւնն եւ յոյս չունէր որ Տաճիկք յարգեն այն չէզոքութիւնն զոր Ռումանիացիք իսկ՝ իբրեւ չէզոքութիւն ճանաչել կը վարանէին։

Պայմանագրոյն վաւերացումը կատարուեցաւ 25ի դէմ 79 քուէով։

Այս քուէարկութեան ինչ ստիպողական պէտքէ յառաջ եկած ըլլալն երեսփոխաններէն մին շատ լաւ եւ ուղիղ համառօտեց հետեւեալ կերպիւ. «Ներկայ կացութիւնս միայն սա երկու բաներէն մին ընել կը ներէ մեզ, ըսաւ Պարոն Իսմայէլ. կամ մեր երկիրը մտնող թշնամւոյն հետ դաշնակցիլ եւ կամ անոր հետ իբրեւ թշնամի վարուիլ։ Եթէ առաջինն ընեմք, մեր քաղաքական կազմակերպութիւնը կրնամք պահել եւ մնալ այնպէս ինչպէս որ եմք, մեր իրաւունքն յարգող մեծ ազգ մ'ունենալով քովերնիս. եթէ երկրորդն ընեմք, դիմադրութիւն ընելու անկարող եւ տկար լինելով՝ գուցէ պիտի տեսնեմք մեր օրէնքն բարձի թողի եղած, մեր կառավարութիւնն ջնջուած, մեր լեզուն եւ մինչեւ անգամ մեր ազգութիւնն ի կորուստ մատնուած։ Ահա ասոր համար, պայմանագրոյն ի նպաստ քուէ պիտի տամ։»

Ինչպէս կը տեսնուի, պատերազմասէր եռանդն եւ տրամադրութիւն չկար, այլ կատարուած իրողութեանց հպատակութիւն եւ ոչ այլ ինչ։ Սթուրծա երեսփոխանը՝ Տաճկաց ձեռօք մէկ քանի ռումանական նաւակներու գրաւման մասին կառավարութեան հարցումն ընելով, նախարարութիւնը պատասխան տալն յետաձգեց, եւ ժողովն միաձայն հաւանութեամբ այս խնդիրն ի բաց թողուց իբրեւ անպատեհ։ Փափաք կար դրդուիչ վիճաբանութիւններէ խորշելու, ինչպէս նաեւ այն ամեն առիթներէն որք կրնային պատշաճ համարուած ձեռնպահութիւնն թողլու պատճառ լինիլ։

Մէկ քանի օր այս խաղաղասիրական զգացմունքն ամբողջ ժողովրդեան մէջ տիրեց։

Մայիս 2ին, խորհրդարանն՝ ի պատասխանի պայմանագրոյն մատուցուելիք ուղերձի մը իւր հաւանութիւնն տուաւ, յորում վստահութիւն յայտնուած էր թէ կառավարութեան ուշիմութիւնն եւ հայրենասիրութիւնը պիտի կրնային դրացի երկիրներուն հետ որ եւ իցէ ընդհարմանց առաջքն առնուլ։ Տաճկաց դէմ ժողովրդեան ունեցած հին ատելութիւնն երկար ժամանակէ ի վեր մարած էր. երկու քաղաքակրթութիւններն Դանուբ գետին միջոցաւ անջատեալ լինելով եւ իւրաքանչիւրն իւր երկրին վրայ ազատ զարգացումն ստանալով՝ պատճառ չունէին գի-

բար առնլու ։ Նաեւ իշխանապետութիւնն դրամական խեղճ վիճակի մէջ էր։ Ուստի շարժառիթ մը չկար որով Ռումանիա Ռուսաց հետ միանալու մղուէր։

Մայիս 2ին Դուռն տէրութեանց շրջաբերական մ'ուղղեց, որոյ մէջ ապրիլ 16ի պայմանագիրն իբրեւ պատերազմի յայտարարութիւն մը կը նշանակէր եւ կերպիւ իւիք իշխանին կառավարութիւնն իւր իրաւունքէն զրկեալ ցոյց կու տար։

«Սոյն պայմանագրին հրատարակութիւնը, կ'ըսէր, այնպիսի կացութիւն մ'երեւան հանած է որոյ վրայ Բարձրագոյն Դուռն չէր կասկածեր անգամ, եւ որով ամենածանր պատասխանատուութիւն մը կը մնայ այն կառավարութեան վրայ որ իւր բոլոր պարտականութիւններն մոռնալով՝ առանց վարանելու օտարին հետ ամօթալի կարգադրութիւններ ըրած է, նպատակ ունենալով կայսրութեան երկիրներուն գրաւումը դիւրացնել, միանգամայն երկրին շահերն, գերիշխան կառավարութեան վստահութիւնն եւ այն ակնկալութիւններն ի դերեւ հանելով զորս համայն Եւրոպա կը տածէր Միացեալ Իշխանապետութեանց վրայ ։ Այսպիսի յայտնի նենգութեամբ արատեալ գործերու պատիժն տալու համար որքան խիստ դատաստան ըլլայ քիչ է ։

«Թէեւ իշխանին պատգամագիրն կը հաւաստէ թէ Ռուսիա Պուքրէշ քաղաքը չմտնելու խօսք տուած է, սակայն եւ այնպէս իշխանն եւ երկրին օրինաւոր իշխանութիւններն իբրեւ թշնամւոյն ձեռքը մատնեալ պիտի նկատուին Բարձրագոյն Դրան կողմանէ, եւ հետեւաբար իբրեւ օրինաւոր իշխանութեան ձեռքէն բնաւ յափշտակեալ պիտի համարուին այն գրութիւններն եւ որոշմունքն որք պիտի ըլլան եւ վեհապետական արքունեաց հետ իշխանապետութեանց ունեցած յարաբերութեանց պիտի դպչին ուղղակի կամ անուղղակի կերպիւ ։»

Թուրքիոյ այս վարմունքն կ'արդարանայ երբ մտածուի թէ չէր կրնար չբողոքել ապրիլ 16ի պայմանագրին դէմ, ապա թէ ոչ յաւէտ պիտի կորուսանէր իւր վեհապետական արդար իրաւանց զօրութիւնն ։

Տաճիկներն ապրիլ 28ին Օլթէնիցա անուն փոքրիկ քաղաքն ռմբակոծեցին ուր ոչ ռումանիացի եւ ոչ ռուս զինուոր մը կար, եւ Դանուբի վրայ գտնուած բոլոր վաճառական նաւերն գրաւելէ զատ՝ աւարի տուին Պէքէթը, Զիոքանէշթին, Բալաբաշն եւ ուրիշ քանի չափ գիւղեր Դանուբի եզերաց վրայ ։ Այս հանապազօրեայ յարձակմանց պատճառաւ Ռումանիոյ մէջ հասարակաց կարծիքն շուտով հակառակ կողմը միտեցաւ, եւ պատերազմ ուզող կուսակցութիւն մը գոյացաւ, որոյ հիմնագիծն երկրին ժողովրդեան անհուն մեծամասնութեան կողմանէ ընդունուեցաւ հայրենասիրական ծայրահեղ եռանդեամբ։ «Ռումանիացիք, կ'ըսէին այդ կուսակցութեան անդամներն, արդէն քաղաքակիրթ ազգաց մէջ իրենց արժանաւոր տեղն գրաւած են այնպիսի ջանիւք որով Եւրոպայի բոլոր անշահասէր ժողովրդոց եւ կառավարութեանց համակրութեանն արժանացած են ։ Բայց իրաւամբ բայաներուն կարգը պիտի իջնեն՝ եթէ իրենց երկրին ամբողջութիւնն եւ իրենց կանանց եւ զաւակաց պատիւն պահպանելու հոգն այժմ այլոց թողուն։ Ճակատագիրն ուզած է որ երկիրն իւր աշխարհագրական դիրքովն պատերազմի տեսարան լինի։ Երկիրն կամայ ակամայ իբր թշնամի պիտի նկատէ զանոնք որ Ռուսաց վրայ հասնելու համար՝ ռումանական քաղաքներն կը ռմբակոծեն ։ Յայտնապէս Ռումանիացւոց պարտքն է այդ քաղաքներն պաշտպանել ։

«Այժմեան պարագայներն վճռական են մեր ժողովրդեան համար ։ Պահանջել իրմէն որ երկրին սահմանագլխոց դէմ առաջին անգամ սպառնալիք եղած ժամանակ զէնքն վար դրած անշարժ մնայ, սա

թանը պահանջել է որ ուսանի ինքզինքն արհամարհել։

«Նոր պատմութիւն մը կը սկսի ռումանական ժողովրդեան համար՝ առաջին երեսին վրայ այսպիսի արատ մը անջնջելի պիտի ըլլայ։

«Եւրոպայի մէջ պիտի ըսուի թէ մեծաբանութիւն է այսպէս խօսել, եւ թէ մեր երկիրն լաւ չկրնար պաշտպանուիլ՝ եթէ մեր բանակին 80,000 զինուորներէն զատ ուրիշ զօրավիգն չունենայ։ Բայց Եւրոպա երբ պահանջած ունի մենէ որ մեր երկրին չէզոքութիւնն մեք առանձինն պաշտպանեմք, եւ այդ դիւցազնական յիմարութիւնն ըրած չըլլալնուս համար միթէ խստիւ պիտի դատուիմք։ Այսու ամենայնիւ, մեք առանձինն և մեր ձեռքն եղած միջոցներով միայն պիտի կռուիմք երկրին այն մէկ մասին մէջ զոր պիտի պաշտպանեմք եւ զինուց բաղդն անդ պիտի փորձեմք։ Այսպէս արեամբ մկրտուիլն միայն կը պակսէր այս երկրին եւ այն ալ պիտի ըլլայ։»

Այս վերջին խօսքերն Փոքր Վալաքիոյ համար էին, որոյ մէջ ռումանական կառավարութիւնն, ապրիլ 16 ի պայմանագրին մէկ գաղտնի տրամադրութեան համեմատ, չպիտի թողուր որ ռուսական զօրք մտնէ։

Մայիս 3 ին՝ կառավարութիւնն Տաճկաց հակառակ միտումներ սկսաւ ցոյց տալ, եւ ապրիլ 23 ին պարպուած Քալաֆաթի դիրքն վերստին գրաւելու հրաման տրուեցաւ ռումանական զօրաց։ Մայիս 5 ին կարելի եղաւ հասկնալ թէ պատերազմասիրական գաղափարներն որքան յառաջդիմութիւն ըրած էին ժողովրդեան միտաց մէջ։ Պատերազմի նշանը Ծերակոյտն տուաւ որ՝ ի պատասխանի իշխանին պատգամագրին քուէարկութեամբ ընդունուած ուղերձին մէջ այսպէս կը յայտարարէր.

«Ո՛չ, Ծերակոյտն քաջ խորհող եւ կըշռող ժողով մը լինելով՝ երբէք յանդուգն եւ վտանգաւոր քաղաքականութիւն մը բռնելու խորհուրդ չպիտի տայ, ոչ ալ մանաւանդ մեր զօրաւոր դրացիներէն միոյն վրայ յարձակելու, որք այսօր կը պատերազմին. եթէ այսպէս ընէ, ոչ միայն պարսաւելի գործ մ'ըրած կը լինի, այլ նաեւ աններելի թեթեւամտութիւն մը։

«Բայց եթէ մեր հայրենի երկրին դէմ յարձակման սպառնալիք լինին, եթէ մեր հայրերէն ժառանգութիւն մնացած մեր ստացուածքն յափշտակուին եւ մեր իրաւունքն ոչնչանան, յայնժամ մեր անտարբերութիւնն ազգադաւ ոճիր մը կը լինի։» Եւ կը յաւելու ըսել. «Մեր նորահաս բանակն՝ այնքան դիւցազանց սերնդէն դտնուող Կարոլոս Առաջինն իրեն գլուխ ունենալուն վրայ պանծալով, պիտի կարենայ իւր պարտականութիւնն կատարել։» Վառօդին հոտն կըսկսէր ուղեղներն գրգռել, եւ չորս օր յետոյ իշխանն ընդունելութիւն մ'ընելով Ծերակուտի դիւանին անդամոց, որոց յանձնուած էր այն ուղերձն իրեն մատուցանել, աւելի որոշ կերպիւ մը պատասխանեց.

«Տեարք անդամք Ծերակուտի, ապրիլ 14 թուականաւ պատգամագիրս գրելս ի վեր՝ կացութիւնն յոյժ առաւել ծանրակշիռ կերպարանք մ'առած է, պատերազմն որում ոչ փափաքած եմք եւ ոչ պատճառ եղած՝ մեր զօրաւոր դրացեաց մէջ ծագած է, եւ մեր երկիրն արդէն անոր ցաւալի արդիւնքն զգալու սկսած է։ Թէ եւ մեր կողմանէ տակաւին հրացանի հարուած մը տրուած չէ, սակայն մեր քաղաքներն եւ գիւղերն որք արդէն կիսովին աւերակ եղած են՝ աւերակ կը դառնան։

«Ուրիշ ազգաց հետ ըրած մեր վաճառականութիւնն՝ մինչեւ անդամ Դանուբի վերին մասին մէջ՝ բոլորովին ոչնչացած է, վասն զի, ազգաց իրաւանց հակառակ, օսմանեան զրահաւորներն մինչեւ մեր նաւահանգիստները կը մտնեն եւ նաւեր կը գերեն ու կ'այրեն առանց նայելու թէ ինչ դրօշ կը կրեն։ Իպրայիլի եւ Ռէնիի պէս պարիսպ չունեցող քաղաքներ ռմբակոծուեցան, նոյն բանն եղաւ նաեւ Օլթէնիցայի

ուր ռուսական բանակին մէկ փոքրիկ խումբն անգամ չկար. ռմբակոծութեան նոր սպառնալիք մ'եւս եղած է անոր դէմ։ Մեր երկրին մէկ քանի կէտերուն վրայ՝ Զերքէզներու եւ պաշը-պօզուգներու հրոսակներ արշաւած են։ Տակաւին երեկ՝ պաշը-պօզուգներու գունդ մը Դանուբն անցնելով Ժիուլ գետակին վրայ Պէքէթի նաւահանգստին մէջ գտնուող նաւերն այրեց եւ տներն աւերեց։

«Ինչպէս կը տեսնէք, Տեարք անդամք Ծերակուտի, մեք՝ որ ոչ յարձակիլ եւ ոչ գրգիռ ըլլալ կ'ուզէինք՝ յարձակման ենթակայ եղած կը տեսնեմք զմեզ, եւ մեր երկրին վրայ պատերազմի կը գրգռեն զմեզ։

«Կառավարութիւնս, այս յարձակողական դիրքը տեսնելով հանդերձ, չկրցաւ թողուլ այն խոհեմ եւ ազդու ընթացքն զոր Օրէնսդիր Ժողովներն իրեն յանձնարարեցին։ Եւ սակայն ցաւով կը տեսնեմ որ մեր չէզոքութիւնը չպիտի յարգուի։ Եթէ այս բանն ալ լինի, պիտի ստիպուիմք զօրութիւնը զօրութեամբ վանել, վասնզի ամեն բանէ առաջ մեր պարտականութիւնն է մեր սահմանագլուխները՝ պաշտպանել։

«Եւ այն ժամանակ՝ համոզեալ եմ որ մեր նորահաս բանակն իւր նախնեաց օրինակին հետեւելով պիտի կրնայ իւր քաջութեամբն ապացուցանել թէ արժանաւոր յաջորդն է այն ռումանական բանակաց որք դարերով քրիստոնէական քաղաքակրթութիւնն պաշտպանեցին Արեւելից դրանց առջեւ։»

Ասկէ աւելի յայտնի կերպիւ կարելի չէր ցոյց տալ թէ պատերազմն ծագելու մօտ էր։ Իշխանն արդէն առաջին օրէն ի վեր պատերազմի կուսակցութեան յարած էր, եւ ուրախութեամբ կը տեսնէր այն առիթն որով իւր նոր հայրենեաց ազատութիւնն կատարեալ պիտի լինէր եւ իւր հարկատու իշխանապետութիւնն անկախ թագաւորութեան մը պիտի փոխուէր։



## ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ ՌՈՒՄԱՆԱԿԱՆ ԲԱՆԱԿԻՆ

Իշխանը ժամանակ չկորոյս խօսքը գործի փոխարկելու համար, եւ հետեւեալ օրն, այսինքն մայիս 10 ին, հրամանագիր մը կ'ստորագրէր, որով ռումանական բանակն երկու գնդերու բաժնուելով՝ իւր գերագոյն հրամանատարութեան տակ կը դրուէր։ Այս հրամանագիրն հետեւեալ խօսքերով կը սկսէր. «Մեր չորս կողմը հետզհետէ կատարուող եղելութիւններն այնքան ծանր եւ սպառնալից կը լինին, որ մեր պարտքն է Ռումանիոյ համար անոնցմէ յառաջ գալիք վտանգներն վանելու կարող վիճակի մէջ դնել զմեզ։»

Այս հրամանագրով պատերազմի նախկին նախարար Սլանիցիանօ գումարպետն (միրալայ) ընդհանուր սպայակուտի գլուխ կ'անուանէր, Լուփու զօրապետն՝ առաջին գնդին հրամանատար, եւ Ալէքսանտր Ռատովիցի՝ երկրորդին հրամանատար։ Սպայք սակաւաթիւ լինելով, խորհրդարանն այս մասին դարման մ'ընելու համար օրէնք մը քուէարկեց, որով օտար տէրութեան մը ծառայող ռումանիացի սպայք պիտի կրնային վերստին ռումանական բանակին մէջ ընդունուիլ այն աստիճանաւ զոր ստացած էին դուրսը։ Միանգամայն զինուորական ճեմարանին առաջին կարգի աշակերտներն սպայի պաշտօն ընդունեցան ժամանակէն առաջ։

Ռումանական զօրութիւնք չորս տարբերքէ կը բաղկանան, որք են՝ Մնայուն բանակ, երկրապահ զօրաց բանակ, քաղաքապահ զօրք եւ ազգապահ զօրք։ Զօրաժողովը վիճակարկութեամբ կը լինի։ Ամեն տարի քսանեւմէկ տարեկան երիտասարդք վիճակարկութեան կը մտնեն։ Առաջին կարգի թիւերը քաշողներն՝ Մնայուն բանակին մէջ կը մտնեն, երկրորդ կարգի թիւերը քաշողներն՝ երկրապահ զօրաց բանակին մէջ, եւ վերջիններն՝ ազգապահ եւ քաղաքապահ զօրաց մէջ։ Մնայուն եւ երկրապահ զօրաց բանակներուն մէջ զինուորու-

թեան տեւողութիւնն ութ տարի է։ Ութ տարին անցնելէն յետոյ, մարդիկն՝ եթէ գիւղացի են՝ ազգապահ զօրաց մէջ կը մտնեն, եւ եթէ քաղաքացի են՝ քաղաքապահ զօրաց մէջ. եւ այս վերջին բանակներուն մէջ ծառայութիւն ընելու պարտաւոր են ամեն մարդիկ, մինչեւ որ քառասուն եւ վեց տարեկան լինին։

Մնայուն բանակն կը պարունակէ ճակատամարտիկ հետեւակազօրաց 8 դումկամ գումարտակ, հետեւակ որսորդ զօրաց 4 վաշտ, երկու գումարտակ Ռօսիօր (Հիւսար) ըսուած հեծելազօր եւ 6 գումարտակ սովորական հեծելազօր, մէկ գասակ կամրջաձիգ զօրք, մէկ վաշտ ճարտարագիտական զօրք, մէկ վաշտ ջրհանակիր, նաեւ հետեւակ եւ ձիաւոր ոստիկանաց խմբերն, եւ այլն, ընդ ամենն 20,000 մարդ եւ 3,500 ձի։

Երկրապահ զօրաց բանակն կը բաղկանայ հետեւակազօրաց (դօրօբանց) մէկ վաշտէ, ձիաւոր ոստիկանաց (քալարաշ) մէկ դասէ. եւ թնդանօթաձիգ զօրաց մէկ խմբէ, իշխանապետութեան 33 գաւառաց իւրաքանչիւրին մէջ. Այս բանակն՝ մնայուն զօրաց բանակին պէս կրնայ շարժուն վիճակի մէջ դրուիլ եւ համախմբուիլ թէ զինուորական մեծ կրթութեանց եւ թէ պատահական պիտոյից համար երկրին ամեն կէտերուն վրայ։

Երկրապահ բանակին կազմակերպութեան սկիզբն հնգետասաներորդ դարուն մէջ եղած է։ Նմա պէտք է վերագրել այն յաջողութիւններն զոր Ռումանիացիք ձեռք բերած են Տաճկաց, Լեհաց եւ Հունգարացւոց դէմ իրենց ըրած պատերազմներուն մէջ. Անով Ուլահ-Պուղտանի իշխանապետութիւնն կարող կը լինէր 80,000 զինուորէ բաղկացեալ բանակ մը հանել, ինչպէս հաւաստի կը տեսնուի պատմութեան այլեւայլ ժամանակաց մէջ։

Ազգապահ եւ քաղաքապահ զօրքն երկու կարգ կը պարունակեն. առաջին կարգը կը բաղկանայ 21էն մինչեւ 29 տարեկան անձերէն որք վիճակարկութեամբ դրօշակի տակ կոչուած չեն, երկրորդ կարգը կը պարունակէ 29էն մինչեւ 46 տարեկան եղող մարդիկն՝ որք մնայուն եւ երկրապահ զօրաց բանակներէն անցած են, ինչպէս նաեւ առաջին կարգին մէջ իրենց ծառայութիւնը լրացնող անձինքն։ Այս երկու կարգաց իւրաքանչիւրն երեք մասերու կը բաժնուի. Առաջին մասին մէջ են ամուրի եւ կամ առանց զաւակի այրի մնացող բոլոր ազգապահ զինուորներն՝ առանց տարիքի նայելու։ Երկրորդին մէջ են զաւակ չունեցող ամուսնացեալ բոլոր ազգապահ զինուորներն. Վերջապէս երրորդին մէջ են զաւակ ունեցող ամուսնացեալ կամ այրի ազգապահ զինուորներն. Երկրապահ զօրաց պէս ազգապահներն ալ վաշտ մը եւ հեծելադաս մը կը կազմեն իւրաքանչիւր գաւառի մէջ.

Ճակատամարտիկ հետեւակազօրաց եւ ճարտարագիտական զօրաց համազգեստներէն զատ՝ որ գաղղիական համազգեստներուն կը նմանին, ռումանական զօրաց հագուստներն տարօրինակ ձեւեր ունին եւ Եւրոպայի միւս ազգաց մէջ գործածուածներուն չեն նմանիր։ Բանակին ընտիր մասն կազմող որսորդ զօրքն վայելուչ կերպիւ կը հագնին մէկ բաճէն (վառէօզ) եւ մէկ թուխ տաբատ որոյ ծայրերն ռուսական ձեւով կիսամոյկերու (տըմի-պօթ) մէջ մուծուած են. այս կիսամոյկերն ամբողջ ռումանական բանակին մէջ կը գործածուին եւ անհրաժեշտ պիտանի են երկրին ցեխոտ ըլլալուն պատճառաւ։ Այս կերպարանաց տարօրինակձեւ մը տուող մասն՝ այն փոքրիկ բոլորշի կաճէ (քէչէտէն) փեղոյրն է՝ որոյ մէկ կողմը ցցունք մը կայ.

Բայց ամենէն աւելի հետաքրքրականն Տօռօպանցներուն համազգեստն է՝ որ նախնի ազգային հագուստին գրեթէ ճիշդ նմանութիւնն է. ասոնք ոտքերնին օփանէէ ըսուած տրեխներ կը կրեն, որոյ գործածութիւնն կը տեսնուի ստորին Դանուբի կողմն եղած գրեթէ բոլոր երկիրներուն

մէջ։ Այս տրեխներն ոտից ձեւով կըտրուած անաղաղ (սէփիլէնմէմիշ) կաշիի կտորէ մը կը բաղկանան, եւ այս կտորը ներքան մը կը կազմէ որոյ եզերաց վրայ իրարու մօտ ծակեր բացուած ըլլալով՝ մէջէն կաշիէ նուրբ խրացք .(չարըգ պաղը) անցած են որ ոտից յօդուածին եւ սրունից ստորին մասին չուրջը կը փաթթուին։ Այս զօրաց սրունքն սպիտակ բրդէ տափատով ծածկեալ են, եւ մարմինն ալ շապկի ձեւով եւ թեւեր ունեցող սպիտակ բաճկոնով (պըուզ) մը՝ զոր ռումանական պչրասիրութիւնն միշտ մաքրափայլ կը պահէ։ Գլխանոցի տեղ ալ Աժտէրխանի մուշտակի նմանող ոչխարի մորթէ ձագաւլան կը կրեն, որ Փռիւգական գլխանոցի ձեւն ունի եւ որոյ ծայրն դէպ ի մէկ կողմը ծռած է։ Իշխանին շարամանեալ զինանշաններն եւ հնդկահաւի փետուրներ այս եզական եւ գիւրակիր գլխանոցին զարդերն են։

Մնայուն եւ երկրապահ զօրաց բանակներն շարժուն վիճակի մէջ դրուած էին 1877 ապրիլ 12էն սկսեալ։ Այս տնօրէնութեամբ գրեթէ 80,000 զինուորէ բաղկացեալ բանակ մը պատրաստուելու էր, բայց առ ի չգոյէ զինուց եւ դրամի՝ կ'երեւի թէ կառավարութիւնն 50 կամ 60 հազարէն աւելի մարդ չէր կրցած գումարել, որք երկուքի բաժնուելով հաւասարապէս՝ երկու գնդեր կազմեցին. ուստի այս գնդերուն իւրաքանչիւրն գրեթէ 25,000 պատերազմիկներէ կը բաղկանայ։ Բոլոր այն զինուորներն արագաձիգ հրացաններով զինեալ են. Մնայուն բանակին զօրքը Փիպօտիի հրացանով՝ եւ երկրապահ զօրքն՝ Տրէյզի հրացանով։ Ազգապահ զօրքն՝ որ բնաւ չեն կրնար ճակատիլ օտար տէրութեան մը հետ պատերազմ եղած ժամանակ, միոցաւոր հրացաններ (չաքմաքլը թիւֆէնք) միայն ունին, եւ իրենց գործն է միայն երկրին ներքին ապահովութեան հսկել։ Թնդանօթներն անագախառն պղնձէ են, եւ մէկ քանին ալ պողպատէ է՝ բրուսիական ձեւով։ Զինարանին մէջ կան նաեւ գաղղիական ձեւով բերանէն լեցուող 100 հատ չերտաւոր թնդանօթներ անագախառն պղնձէ, եւ պաշարման թնդանօթաց թիւն աւելցած է մօտերս այլեւայլ մեծութեամբ 80 հատ Գռուփի թնդանօթներով։

Երբ առաջին անգամ Ռումանիոյ վրայ խօսեցանք, ըսինք որ բնաւ եւ ոչ մէկ ազգ անուանարկ եղած չէր անոր չափ աշխարհի վրայ։ Իւր զինուորական համբաւոյն բնականաբար շատ վնաս հասած է այն առակ եղած արհամարհանաց պատճառաւ, որմէ բնականաբար կարելի է ըստ բաւականի հասկցուիլ թէ ինչպէս Տաճկաստան այնքան խստութեամբ վարուած է անոր դէմ։ Ի զուր սոյն ազգը քանի անգամ իւր քաջութիւնն ապացուցած էր նախկին պատերազմաց մէջ Միքայէլ Քաջի պէս անուանի գլխաւորաց հրամանատարութեան ներքեւ. ի զուր Թրանսիլվանիոյ Ռումէնք՝ 1849 ին Հունգարացւոց դէմ դիւցազնաբար կռուած էին, բոլոր աշխարհ իբր առած մը կ'ըսդունէր թէ Ռումանիացին անկարող է արի ըլլալու եւ իբր զինուոր կռուելու։ Ուստի որքան զարմացան եւրոպական լրագրաց թղթակիցներն՝ երբ ի մօտոյ կրցան քննել իշխանութեան բանակը։ Մէկը չեղաւ որ այս մասին իւր զարմանքը չյայտնէր։ Մնայուն բանակին զօրքն անստգիւտ կանոնաւոր շարժմամբ իւր շրջանները կ'ընէ. երկրապահ բանակին զինուորներն կրթուած եւ պատրաստուած չըլլալով հանդերձ՝ իրենց շարժմունքն նշանաւոր ճշգութեամբ կը կատարեն. հեծելազօրք՝ ի մանկութենէ ձիավարելու սովորած լինելով՝ յոյժ լաւ կերպարանք ունին, եւ ձիերն որոց շատն Հունգարիայէն եկած է՝ ռուսական բանակին ձիերուն չափ կ'արժեն, որ քիչ բան չէ, թնդանօթներն ալ կատարեալ կերպիւ մաքուր պահուած են։

Այս լաւ վիճակին պարծանքն նոյն ինք Կարոլոս Հօհէնցօլէռն իշխանին վերագրելի անկ է, որ իւր ազգատոհմին մէջ ժառան-

գական եղած զինուորականութեան ճաշակուն իր բանակին կազմակերպութեանն աշխատած է ։ Բայց պէտք է նախ խոստովանիլ որ մնաց փոքր ինչ մշակութիւն բաւական էր Ռումանիացւոց մէջ զարգացընելու համար լաւ զինուորի մը պէտք եղած բարեմասնութեանց շատերն, յորոց զանոնք զուրկ համարելն գրութիւն մ'եղած էր ։ Ստուգիւ սոսկ մէկ բանի համար պարսաւելի են անոնք, այսինքն՝ այն կանացի պչրասիրութեան համար որ ազգին յատկանիշն եղած ունակութիւններէն մին է, անձնական չափազանց խնամոց համար, եւ ժապաւէններու, փայլուն իբաց, դարգմանակներու եւ բոլոր աչքի զարնող անապարծական բաներու մասին իրենց ունեցած սաստիկ մոլութեանը համար։ Սպայից հանդերձներն այնպէս ոսկեճամուկ են որ երբեմն դժուարին կը լինի իրենց համազգեստին գոյնն որոշել ։ Բայց անդարմանելի թերութիւն մը չէ այս, եւ վերոյիշեալ թղթակիցներուն զարմանաց իրաւացի ըլլալն դիւրաւ կը հասկըցուի։ «Ռումանական բանակին վրայ ափշեցայ, կ'ըսէ անոնցմէ մին, եւ այժմ որ անոր այլ եւ այլ գնդերուն զննութիւնն ըրած եմ, համոզեալ եմ որ նա կռուատեղին վրայ քաջ պիտի լինի ։» «Զինուորք, կ'ըսէ ուրիշ մէկը, գեղեցիկ, կորովի, ժուժկալ եւ անձնուէր են։» «Սպայք, կ'ըսէ երրորդ մը, իրենց արուեստը լաւ գիտեն։ Պատերազմական կազմածներն պակասութիւն մը չունին։ Թնդանօթներն եւ տայլերն ճշմարտիւ սքանչելի են գեղեցկութեան կողմանէ։» Չորրորդ մը կը հաւաստէ թէ՝ պատերազմի յայտարարութենէն մինչեւ բուն թշնամութեանց սկըզբնաւորութիւնն երկար ժամանակ անցած ըլլալով, մեծ օգուտ յառաջ եկած է այն նորահաս բանակին համար։» Ռումանական զօրքն լաւ ոգեւորեալ է։ Նորեկ զինուորներն այս վերջին աւուրց յառաջամարտերուն մէջ վարժուած լինելու են . կ'երեւի որ վստահութիւն ստացած են թէ ինքզինքնուն եւ թէ իրենց գլխաւորներուն վրայ, առ որս յայտնի ակնածութիւն ցոյց կուտան։ Երկրապահ բանակին հետեւակազօրքն ամեն օր հետզհետէ կը վարժուին հրահանգներով՝ որոց այս առաւօտ ականատես եղանք ։ Յայտնի է որ այս վերջին շաբաթուց երկարատեւ սպասողական դիրքն օգուտ յառաջ կը բերէ ռումանական բանակին։»

Այս խօսքերէն կարելի է սա եզրակացութիւնն հանել թէ բանի տեղ չդնելու հակառակորդներ չէին այն 50,000 Ռումանիացի զինուորներն՝ զորս Տաճիկք կամաւ իրենց դէմ հանեցին ։



## ՌՈՒՄԱՆԻԱ ՊԱՏԵՐԱԶՄ ԿԸ ՀՌԱՏԱՐԱԿԷ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ ԴԷՄ ԵՒ ԻՒՐ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՅԱՅՏԱՐԱՐԷ

Ռումանական զօրք Գալաֆաթ մայիս 3ին գրաւեալ էր . 9ին՝ Վիտինի թնդանօթներն այն բերդաքաղաքին դէմ ռումբ արձակած լինելով, ռումանական թնդանօթներն ալ Տաճկաց դէմ կրակ ըրին ։ Այսպէս արդեամբ պատերազմի սկզբնաւորութիւն եղած էր Տաճկաստանի դէմ. կառավարութիւնն եւ ժողովուրդն կը փափաքէին այս բանին՝ արժանապատուութիւն չբերող երկդիմի կացութենէ մ'ազատելու համար։ Գործը միայն կը մնար պատերազմին բացումը պաշտօնապէս հրատարակելու ։ Խորհրդարանը մայիս 11ին գիշերը նիստ մ'ընելով՝ միաբանութեան սկսաւ Սթօլոյեանու երեսփոխանին ըրած գրաւոր մէկ հարցմանը վրայ՝ որ Դանուբի ափանց վրայ եղած քաղաքներուն Տաճկաց կողմանէ ռմբակոծուելուն դէմ ըլլալիք տնօրինութեանց կը վերաբերէր։ Այն ժամանակ կառավարութիւնն ինքնին նախաձեռնութիւն մ'ըրաւ Դրան հետ յարաբերութիւնները բոլորովին խզելու ։ «Տաճկաստան ինքնին, ըսաւ Պարոն Քօկալնիչեանօ, իւր թնդանօթներովը բաժանումն խնդրեց . մեք իրեն չեմք զլանար

զօյս, ուստի մեր Թնդանօթներով պատասխան տուինք անոր ․» Եւ մինչխի ճարտասանական շարժուածքով մը՝ որ բուռն ծափահարութեանց տեղի տուաւ, ըստ նաեւ պատերազմը ջատագովելով, «Երբ Լէոնիդաս Թերմոպիլէի մէջ ինկաւ, չարգիլեց Պարսից արշաւանքը, բայց գէթ իւր բոսորագոյն արեան մէջ ծածկեց հայրենեաց պատիւը ․ Քանի որ իւր նախկին հայրենեաց համար սուր գործածող իշխան մ'ունինք մեզ գլուխ, ապահով եղիք որ նա իւր նոր հայրենեաց համար պիտի կրնայ քաշել իւր սուրն ։ Մեր նորահաս բանակն եւս ցոյց պիտի տայ թէ պատերազմի ժամանակ աւելի լաւ զէնք գործածել գիտէ քան թէ խաղաղութեան միջոցին։» Երեսփոխան մը պատասխանեց թէ Ռումանիա դրամ եւ դաշնակից չունենալով՝ հարկ չկար պատերազմ հրատարակելու ։ «Ռումանիա, պատասխանեց նախարարաց խորհրդոյ նախագահ Պ. Պրաթիանո, լաւ բանակ մը եւ լաւ սպայներ ունի. կրնայ ապացուցանել թէ ունի կենսական զօրութիւն ։ Նա պարտի ինքզինքն պաշտպանել քանի որ Դրան կողմանէ իրեն վրայ յարձակում եղած է։»



ՍԻԼԻՍՏՐԷ, ՕՍՄԱՆԵԱՆ ԲԵՐԴԱՔԱՂԱՔ

Այս եղաւ նաեւ խորհրդարանին կարծիքը, որ 29 ի դէմ 58 քուէով հետեւեալ օրակարգն ընդունեց եւ այսպէս կառավարութեան լիազօր իշխանութիւն տուաւ պաշտպանութեան գործը պատրաստելու․

«Խորհրդարանս կատարելապէս գոհ լինելով արտաքին գործոց նախարարին տուած բացատրութիւններէն,

«Նկատելով որ Տաճկաստան իւր յայտարարութեամբք եւ Ռումանիոյ դէմ ըրած յարձակմամբք խզած է այն վաղեմի կապերն որ զմեզ իրեն կը միացնէին, եւ պատերազմող եղած է Ռումանական պետութեան դէմ․

«Նշանակութեան արժանի համարելով կառավարութեան ըրած այն յայտարարութիւնը թէ ռումանական թնդանօթն արդէն պատասխան տուած է Տաճկաստանի կողմանէ եղած պատերազմի յայտարարութեան .

«Ազգային ժողովս կը ճանաչէ թէ նոյն իսկ օսմանեան կառավարութիւնը հարկադրած է զՌումանիա պատերազմող լինելու ։ Օտարին յարձակման դէմ կառավարութեան բռնած դիրք կը հաւանի ։ Երաշխաւոր մեծ տէրութեանց բարձր արդարամտութեան զգացմանց կ'ապաւինի, այն տէրութեանց՝ որք, Փարիզի դաշնագրին ստորագրուելէն ի վեր, իրենց հովանաւորութեան ներքեւ առին Ռումանիոյ քաղաքական անհատականութեան զարգացումն ։

«Կատարեալ վստահութիւն ունենալով կառավարութեան կորովութեանն ու հայ-

ընտանիրութեանը վրայ, համաձայն է անոր հետ այս մասին թէ, ամեն գժուարութեանց հակառակ, իւր բոլոր ջանքն ի գործ դնելու է եւ ամեն միջոց բանեցընելու է ռումանական պետութեան գոյութիւնը պահպանելու եւ ապահովելու համար. իւր գործառնութեանց մէջ իրեն նպատակ ունենալով, խաղաղութիւն կընքուած ժամանակ, Ռումանիոյ համար քաղաքական որոշ կացութիւն մը ձեռք բերել, եւ միանգամայն՝ անկախութիւն ստացող ազգին համար կարելի ընել իւր պատմական պաշտօնին կատարումն։»

Արտաքին գործոց նախարար Պ. Քոկալնիցէանօ անմիջապէս ծանոյց Եւրոպայի թէ Ռումանիա պատերազմի վիճակն յանձն առած է։ Մայիս 14 թուականաւ շրջաբերականի մը մէջ պատմեց այն դէպքերն որք ստիպած էին իշխանին կառավարութիւնը Ռուսիոյ հետ միանալու, յիշեց չէզոքութիւն պահելու համար Ռումանիոյ յաճախ ըրած ճգունքն, Կոստանդնուպոլսոյ Դեսպանաժողովոյն դիմելն, երաշխաւոր տէրութեանց ի զուր ուղղեալ բողոքներն, եւրոպական դաշնագրօք նուիրագործեալ կապերը չխզելու մասին Դրան տուած ապահովութիւնն, եւ յայտարարեց թէ Ռումանիա կ՚ընդունի Տաճկաստանի դէմ պատերազմող լինել, քանի որ Տաճիկներն կրկին կրկին յարձակմունք ըրած, Դանուբի ձախակողմեան ափունքն առ հասարակ ռմբակոծած, Կոստանդնուպոլսոյ ռումանական գործակատարը դուրսնէ ձգելով նախատինք ըրած եւ մայիս 2ի շրջաբերականաւ Ռումանիոյ դէմ սպառնացած են։

Ի վերջոյ կ՚ըսէր Նախարարն թէ Ռումանիա՝ իր վրայ եղած յարձակումը զինու զօրութեամբ վանելու համար, ստիպեալ էր հարկ եղած միջոցներն ձեռք առնուլ, այսինքն թէ՝ բացէ ի բաց պատերազմող կը լինէր ընդդէմ Տաճկաստանի։

Այս կերպիւ՝ կացութիւնն վերջապէս բացորոշ հանգամանք մը ստացած լինելով, Ռումէնք՝ Ռուսաց առջեւ իրենց բռնած զգուշաւոր վարմունքը թողուցին, եւ կերպիւ մ՚անոնց հրաւէր կարդացին ապրիլ 16էն պայմանագրին 18րդ յօդուածը զանց ընելու, որով Պուքրէշ մտնելն արգիլուած էր կայսերական զօրաց։ Օր մը՝ Կարոլոս իշխանին ամուսինը՝ Եղիսաբէթ իշխանուհին իմանալով որ ռուսական հեծելազօրաց գումարտակ մը մայրաքաղաքին մօտէն եւ Շօսէ ըսուած ճեմավայրին ծայրէն պիտի անցնէր, կառքով հոն գնաց։ Բոլոր քաղաքացիք անոր հետեւեցան, երկու ազգերը զիրեար պատուեցին եւ գումարտակին գլխաւորն՝ իշխանուհւոյն կողմանէ իրեն եղած մեծարանաց համար ջերմ շնորհակալութիւն յայտնելէ յետոյ, հրաման տուաւ նուագածուաց խմբին որ զօրաց կարգերէն ելնելով իշխանուհւոյն ընկերանայ մինչեւ իւր պալատին դրան առջեւ։ Յիշեալ յօդուածն անգործադրելի եղաւ տակաւ առ տակաւ, Պուքրէշ ռուս սպայներով լցուեցաւ, եւ քիչ ժամանակէն ռումանական կառավարութիւնն ինքնայօժար առաջարկեց ռուսական սպայակոյտին՝ բառնալ այն տնօրէնութիւնն, որ սահմանեալ էր՝ իշխանապետութեան նախ պահել կարծած չէզոքութիւնը նուիրագործելու, եւ որ այլեւս անտեղի էր, քանի որ նոր կացութիւն մը յառաջ եկած էր։

Նիքօլա մեծ դուքսն որ մայիս 14ին իւր բանակակեդրոնը Քիշնեվէն Փլօյէշթի, այսինքն՝ Պուքրէշի հիւսիսային կողմը մէկ քանի հազարամէթր հեռի փոխադրած էր, հետեւեալ օրն Ռումանիոյ մայրաքաղաքը մտաւ ուր ջերմագին ընդունելութիւն մը գտաւ։ Կայսեր եղբայրն՝ ռումանական եկեղեցւոյն գլխաւորին հետ ունեցած խօսակցութեան մը միջոցին, որ Արեւելեան քրիստոնէից մէջ քաղաքականութիւնն ու կրօնքն իրարու զուգող խորհրդաւոր ոգւով ներշնչեալ էր, նուիրագործեց այն դաշնակցութիւնն որ խողութեանց բերմամբն երկու կառավարութեանց մէջ հաստատուած էր։

— Ռումանական եկեղեցին անդորր եւ բարգաւաճեալ է, փա՛ռք Աստուծոյ, հէ՞, հարցուց իշխանն ։

— Փառք Աստուծոյ. թէ եւ չար եմք, սակայն երկինք մեզ կ'օգնէ, ըսաւ մեծաւորը ։

— Երկինք երբէք չքաներ օգնութիւն հայցող արարածներն. Աստուածային արդարութիւնը միշտ տառապելոց կ'օգնէ եւ զանոնք կը պահպանէ ։

— Ռուսիա այսօր գերծիքն է այն արդարութեան. կ'ըղձամք որ յաղթանակէ ։

— Պէտք յաղթանակէ Ռումանիոյ հետ ի միասին, յայտարարեց մեծ Դուքսը.

— Աստուած լսէ, պատասխանեց մեծաւորն զանի օրհնելով ։

Մեծ դուքսը նախաճաշ մ'ըրաւ Կարոլոս իշխանին հետ եւ Փլոյէշթի դարձաւ ։ Մէկ քանի օրէն վերստին Պուքրէշ պիտի դար աւելի հանդիսաւոր պարագայից առթիւ ։

Ռումանիա Թուրքիոյ հետ պատերազմ ընելու յանձնառու լինելով՝ զինքն այն տէրութեան հետ միացնող հպատակութեան բոլոր կապերը կը խզէր ։ Ուստի իւր բռնած նոր դիրքէն տրամաբանօրէն ծագող հետեւութեանց անսալով՝ որոշեց պաշտօնապէս յայտարարել իւր անկախութիւնը ։

Մեծամասնութեան պարագլուխն Գ. Ֆլէվա՝ մայիս 11ի քուէարկութեամբ կառավարութեան շնորհուած արտօնութիւններն ինչպէս գործածուած լինելուն վրայ հարցում ընելով մայիս 21ին, Գ. Քօկալնիչէանօ պատասխանեց վերն համառօտեալ շրջաբերականը կարդալով, եւ խորհրդարանը՝ ներկայ գտնուող 81 անդամներէն 79 քուէարկուաց միաձայն հաւանութեամբ հետեւեալ օրակարգն ընդունեց, որ տեսականապէս կը նուիրագործէր Ռումանիոյ ազատութիւնը.

«Խորհրդարանս՝ ապրիլ 29ի քուէարկութեան գործադրութեանը մասին կառավարութեան տուած բացատրութիւններէն գոհ լինելով, կը նշանակէ աստանօր թէ՝ Բարձրագոյն Դրան հետ յարաբերութեանց խզումն, Ռումանիոյ եւ Թուրքիոյ մէջ պատերազմն եւ Ռումանիոյ բացարձակ անկախութիւնը պաշտօնական նուիրագործութիւն ստացած են, եւ երաշխաւոր տէրութեանց արդարութեանը վրայ վստահ լինելով իւր օրակարգին կ'անցնի.»

Ռումանական խորհրդարանն «երաշխաւոր տէրութեանց արդարութեանը վրայ վստահ լինելով» խօսքն իւր այս գրութեան կցելովն այնպիսի վարպետութիւն մը ցոյց կուտայ՝ զոր սերվիական կառավարութիւնը բնաւ ունեցած չէր այսպիսի պարագայից մէջ ։ Ինչպէս Սերվիա՝ նոյնպէս եւ Ռումանիա տէրութեանց պաշտպանութեամբը միայն կ'ապրի եւ իւր գրութիւններն այն ժամանակ արժէք կը ստանան երբ տէրութիւնք հաճին վաւերացնել զանոնք ։ Փոխանակ թագաւորի ունայն չքանունն առնլու, Կարոլոս իշխանն՝ իւր կառավարութեանն առաջնորդող երկու հայրենասիրաց խորհրդովն բաւական համարեց կարելի եղած օգուտն քաղել միայն կացութենէն, եւ [illegible] իշխան մնաց առժամանակեայ կերպիւ, սպասելով որ Եւրոպա բարեսրտութեամբ վաւերացնէ իւր Պետութեանց (Մոլտաւիոյ եւ Վալաքիոյ) անկախութիւնն եւ թոյլ տայ զանոնք թագաւորութեան փոխելու.

Օտար երկիրներու մէջ գտնուող ռուսական գործակատարաց միջոցաւ՝ մէկ քանի օրէն յետոյ՝ Ռումանիոյ անկախութեան հրատարակութիւնը ծանուցուեցաւ տէրութեանց, եւ բանակցութեանց առարկայ եղաւ անմիջապէս կառավարութեանց մէջ, որք աւստրիական կառավարութեան կարծիքն ընդունեցան, այն է թէ՝ Ռումանիոյ քաղաքական կացութիւնը միջազգային դաշնադրութեամբ բացորոշ կերպիւ սահմանեալ լինելով, որ եւ է փոփոխութիւն չէր կրնար ընդունուիլ, եթէ նոյն օրինակ վաւերացումն չստանար։ Հետեւա-

բար խնդրոյն կարգադրութիւնն յետաձգուեցաւ մինչեւ տաճկա-ռուսական պատերազմին վախճանը ։ Այսու ամենայնիւ, Ռումանիա ինքզինքն անկախ հրատարակելով, իրագործութիւնը ձեռք բերած էր, որոյ ետեւէն շատ անգամ իրաւունքն ալ յառաջ կու գայ եւ կը նուիրագործի ։

Ստուգիւ դիւանագիտութիւնն եղած բաներուն աւրելու միտում չունի ընդհանրապէս, եւ բան մը տեւական լինելու համար պէտք եղած առաջին պայմանն այս է որ այն բանը գոյութիւն ունենայ ։

Ռումանական պատմութեան ամենամեծ օրը պիտի մնայ 1877 մայիս 22 ի օրը, յորում անկախութեան սկզբնաւորութեան հանդէսը կատարուեցաւ, եւ բարեյաջող դիպուածով մը հանդիսին վեհութիւնն կրկնապատկեցաւ երկու ուրիշ տօնախմբութեանց ալ նոյն օրը պատահելովը, որոց պատճառաւ ամեն տարի մեծ բազմութեամբ կը լցուի Պուքրէշ քաղաքն, այսինքն՝ Կարոլոս Հօհէնցոլլէռն իշխանին (Քարլ ֆոն Հօհէնցոլլէռն) յիշխանութիւն բարձրանալուն տարեդարձի հանդէսն եւ Մօշի տօնավաճառն՝ որ երկրին տօնավաճառներուն ամենէն ծանօթն է ։

Առաւօտուն 101 անգամ թնդանօթ արձակուելով ժողովրդեան ծանուցուեցաւ թէ Կարոլոս իշխանն այնուհետեւ վեհապետական պատուոյ արժանաւոր էր ։ Ծերակուտին եւ Խորհրդարանին դիւանաց անդամներն իշխանին ապարանքը գնացին եւ մատուցին անոր նախորդ աւուր քուէարկութեան արդիւնքը, եւ Ծերակուտի նախագահն՝ Պ. Տէմէթր Պրաթիանօ անոր հետեւութիւնները բացատրելով՝ արտասանեց այն խօսքն զոր բոլոր Ռումանիացիք մէկ քանի օրէ ի վեր իրենց սրտէն կ'ըսէին. «Քիչ ժամանակէն, ըսաւ, Եւրոպա մեզ հետ պիտի ողջունէ ձեր Բարձրութիւնն իբրեւ մեծ Թագաւոր Ռումանիոյ ։» Իշխանն խիստ յուզեալ պատասխանեց թէ կը տեսնէր այն բաղձանաց իրագործութիւնն՝ որում հետամուտ եղած էր այն երկիրն հաններէն ի վեր, եւ վստահութիւն յայտնեց թէ Եւրոպայի արդարութիւնը չպիտի եղծանէր այս նոր կատարուած գործը ։ Քիչ ժամանակէն Փլօյէշթիէն հասաւ Նիքօլա մեծ դուքսն՝ որ անշուշտ կը փափաքէր իւր ներկայութեամբն յիշեցնել թէ Ռումանիա ինքնիրեն հասած չէր այն վիճակին, եւ խմբովին մայր եկեղեցին գնացին Զքեզ Աստուած գովաբանեմք աղօթքը լսելու համար ։ Մեծ բազմութիւնն կ'ընկերանար անոնց եւ տներն ըստ պարագային զարդարուած էին տեարց ինքնայօժար կամօքը ։ Պաշտօնատուներուն խաղխամքն (չէպէքի) արեւելեան գորգերով ծածկեալ էին, եւ դրանդիք զարդարուած էին իշխանին եւ իշխանուհւոյն պատկերներովը՝ որք ծաղկապատ շրջանակներու մէջ կ'երեւէին ։

Օրն ի բուն՝ զուարթ քաղաքն Պուքրէշ, որոյ հասարակութիւնն կրկնապատկեալ էր երեք տօնախմբութեանց հրապուրանօքն, տեսակ մ'արբեցութեան մէջ էր որ հարաւային ժողովրդոց պէս աղմկալից ցոյցերէ ախորժանք զգացող ցեղի մը համար յոյժ ներելի է ։ Ամենէն լուրջ մարդիկն՝ նոյն պահուն սովորական եղած «բարի լոյս, ով անկախ մարդ» խօսքն ըսելով իրարու կը մերձենային, չկրնալով ժուժալ իրենց ասկէ զգացած զուարճութեան. Ռումանիացի տիկնայք՝ այն պաշտելի արարածներն որք ամերիկեան գեղանի դաղթածիններուն շնորհքն՝ Սպանիոյ եւ Իտալիոյ ամենագեղեցիկ տիպարներուն հանգամանացը հետ կը զուգորդեն իրենց անձանց վրայ, կ'իջնէին իրենց կառքերէն եւ կը խառնուէին այն խմբերուն հետ որ բոլոր քառուղեաց մէջ Հօռա ըսուած ազգային պարը կը պարէին, եւ ծառոց ներքեւ յանպատրաստից շինուած հազար եւ մէկ փոքրիկ գինետանց մէջ՝ Ռումէն գիւղացիներ, ռազմիկ զինուորներ եւ Տօռօպանցներ ի միասին զուարթաբար կը խմէին, եւ ամենէն աւելի մօտ գտնուած բանակատեղերէն փախչող խաղալիկներու

հետ եղբայրաբար կը վարուէին աստ անդ։ Սակայն իշխանին եւ իւր ժողովրդեան ցոյց տուած այս անխառն ուրախութեան զուցէ հաղորդ չէին եւ ապագային համար մտատանջութիւն մ'ունէին այն մէկ քանի ռումանիացի հայրենասէրներն, որք կեանքերնին մաշեցուցած էին այս կատարուած բաները պատրաստելու համար։ Շատ խօսք զրուցուեցաւ գաղտնի դաշնագրութեան մը վրայ, որով Ռուսիա յանձըն կ'առնուր. 1°. Ռումանիոյ անկախութիւնը ճանաչել տալ տէրութեանց, եւ իշխանապետութիւնը ժառանգական թագաւորութիւն մ'ընել տալ. 2°. Ստիպել Տաճկաստանի դէմ. 3°. 70,000 զինուորներէ բաղկացեալ բանակ մը դնել իշխանին հրամանատարութեան ներքեւ, բայց միշտ ռուսական բանակին ընդհանուր հրամանատարին հրամանաց համեմատ շարժելու պայմանաւ. 4°. ռուսական բանակին թոյլ տալ այնուհետեւ իւր երկրին վրայէն անցնելու՝ որչափ ժամանակ որ Ռուսիա Տաճկաստանի հետ պատերազմի։ Բայց կ'երեւի թէ այսպիսի պարագայից մէջ լրագրաց մէջ եղած նոյնատեսակ տարաձայնութիւններէն աւելի արժէք չունէր այս լուրն։ Կը թուի թէ Ռումանիա ուրիշ երաշխաւորութիւն չունէր Ռուսիոյ անկեղ-



ՃՈՒՐՃԷՎՕ, ՌՈՒՄԱՆԱԿԱՆ ՔԱՂԱՔ

որ Տաճկաստան Ռումանիոյ թողու Դանուբի գետաբերաններուն մէջտեղ գտնուած երկիրն եւ տաճկական Տօպրուճան՝ որոյ սահմանը պիտի լինէր հիւսիսէն Սուրբ Գէորգայ ջրանցքն եւ հարաւէն Չէռնավօտա— Քէօսթէնճէի երկաթուղւոյ գիծն. 3°. Ազգապահ զօրքը զինելու համար ռումանական նախարարութեան 200,000 հրացան յանձնել՝ պատերազմէն յետոյ Ռումանիացւոց ստացուածք մնալու պայմանաւ։ Ի փոխարէն, Ռումանիա եւս խոստացած է եղեր. 1°. Ռուսիոյ թողուլ ռումանական Պեսարապիան, այսինքն այն տեղերն որ Ռէնիէն սկսեալ մինչեւ Սեւ ծով կը տարածուին եւ Փարիզի դաշնագրութեամբ Ռումանիոյ հետ միացած են. 2°. Պատերազմ հրատարակել Տաճկաստա-ծութենէն զատ, եւ ինքն իր ձեռօք նախկին դաշնագրութիւններն լուծած լինելով՝ անշուշտ չէր կրնար եւ ոչ մէկ դրութիւն յառաջ բերել՝ այն տէրութեան կողմանէ ապագային իրեն նկատմամբ վնասակար ն եւ է ձեռնարկութեան դէմ բողոքելու համար։ Թէ եւ Ռուսք՝ իշխանին կառավարութեան ակնածութիւն ցոյց կուտային, սակայն այս կէտը դարձեալ անորոշ էր եւ կացութեան վրայ կերպիւ մը գէշ ազդեցութիւն յառաջ բերելու հանգամանքն ունեցող անծանօթ պարագայ մ'էր, մանաւանդ զի Ռումանիոյ երկրատեւ գրաւումը հուսկ ապա երկու ցեղերուն մէջ ի հարկէ այնպիսի սրտնեղութիւններ յառաջ պիտի բերէր՝ որոց ազդեցութիւնը դժուար էր հաշուել եւ

որոց առաջին նշաններն արդէն կ'երեւէին։ Ապաքէն ապրիլ 16 ի պայմանագրին մէջ այնչափ խոստմունք կային որքան անկարելի էր կատարել. ռումանական իշխանութիւնք խիստ հարեւանցի քննութեամբ մերձաւորապէս հաշիւ մ'ընելէ յետոյ, յանձն առած էին այնքան քանակութեամբ արմտիք մատակարարել որքան չկրցան տալ։ Երկիրը մէկ քանի տարիէ ի վեր հաճար (շավտար) տուած չէր, որ ռուս զինուորին ուտելեաց գլխաւոր մասն է, եւ ձիոց համար քիչ գարի կար։ Նաեւ Ռուսք ամեն տեղ շատ բան պահանջելով, Ռումէն գիւղացիները կը ձանձրանային։

Բայց ամենէն ծանր դժուարութիւնն՝ կառավարութեան ձեռօք նոր կազմուած բանակին ինչ գործ յանձնելու վրայ էր։ Երկու հակառակ շահեր կային իրարու դիմաց։ Ռուսիա չէր ուզեր իւր յաղթութեանց ազդեցութիւնը նուազեցուցանել օգնական մ'առնելով իրեն, որքան ալ փոքր պետութիւն մը լինէր. միւս կողմանէ՝ Դանուբի աջակողմեան ափանց վրայ կռիւ եղած ժամանակ ձախ ափանց վրայ անգործ մնալն նուաստութիւն մը կը համարուէր պատերազմասէր կուսակցութեան ամենէն եռանդուն անդամոց կողմանէ, որք կը փափաքէին արեամբ նուիրագործել Ռումանիոյ իրաւունքներն, եւ նոյն իսկ Կարոլոս իշխանն՝ իւր բանակին ուղղած մէկ յայտարարութեան մէջ ըսած էր. «Ձեր դրօշակն նոյն իսկ հայրենեաց պատկերն է ձեր մէջ. ուրեմն հետեւեցէք անոր ուխտաբար. եւ երբ խաղաղութեան սարդենիներն վերստին ծաղկին, հայրենիք երախտագիտութեամբ իւր ախոյեաններուն անուանքը պիտի արձանագրէ ազգային անկախութեան շէնքին ճակատը։» Օր մը լուր կ'ելնէ թէ՝ Նիքօլա մեծ դուքսն կ'ուզէր ռումանական զօրքն հատուած հատուած ընելով իւր սպայից հրամանատարութեան տակ կացուցանել պարզապէս, եւ իւր զօրաց հետ խառնել. ուրիշ օր մ'ալ կ'ըսուէր թէ Ռուսք չէին ուզեր իրենց ետեւ թողուլ այնպիսի բանակ մը տարտամ կացութեան մը մէջ. եւ բոլոր այս տարաձայնութիւններն՝ որք բոլորովին սուտ էին, որովհետեւ ռումանական բանակին գործակցութեան խնդիրն Աղեքսանդր կայսեր Ռումանիա եկած ժամանակ պիտի կարգադրուէր, այն վրդովիչ տարակոյսները կը յայտնեն զորս կացութիւնն յառաջ կը բերէր։

Մէկ քանի օրէ յետոյ՝ Կարոլոս իշխանն որ կրակի գիծ ելնելու բաղձանօք կը տոչորէր, Փոքր-Վալաքիոյ այցելութիւն մը ընելու գնաց, ուր առաջին զօրագունդն ամբողջ համախմբեալ էր արդէն, եւ երկրորդն ալ առժամանակեայ կերպիւ Գուքրէշի եւ Ծուրճէվօյի մէջ գումարուած լինելով տակաւ տակաւ կը հասնէր։ Զննեց Գալաֆաթի ամրութիւններն որոց նորոգութիւն կը լինէր երեք շաբաթէ ի վեր, եւ որոց համար Ռուսք խոշոր թնդանօթներ տուած էին, եւ յիմարական յանդգնութեամբ մը յառաջ քալեց ընդդէմ ռմբակոծութեան, որով իւր զինուորաց վրայ բարոյական ամենամեծ ազդեցութիւն գոյացաւ։ «Իշխանը, կ'ըսէ ականատես մի, թնդանօթաց իւրաքանչիւր շարը զննելով եւ սպայից հրաման տալով որ որոշեալ նշանը տրուելուն պէս՝ իրենց թնդանօթներով կրակ ընեն, մեր ամենուս հետ ի միասին ելաւ եկաւ 1° թիւ թնդանօթաշարին քով։ Մեծ անխոհեմութիւն մ'էր այս, վասն զի շուրջ ժամէ ի վեր Վիտինի պարապաց դիմացէն կ'անցնէինք, եւ մեր խումբը տեսանելի էր փայլուն համազգեստներուն պատճառաւ. եթէ Տաճիկ թնդանօթաձիգներն ուզէին՝ իշխանն, իւր սպայակոյտն, ռումանական բանակին բարձրաստիճան սպայից շատերն եւ վեցի չափ դաղղիացի, անգղիացի եւ աւստրիացի թղթակիցներն մէկ հարուածով բառնալ, ամենադիւրին բան մ'էր այս անոնց համար. մէկ քանի անգամ ռմբարտակ արձակելու էին 1° թիւ թնդանօթաշարին վրայ որոյ մօտ կը գտնուէինք մենք քա-

ռասուն հոգւոյ չափ, մէկզմէկէ աւելի երշիկ եւ խաշոյք (սէօյիշ) ուտելու եւ լափելու եռեւէ լինելով, վասն զի ժամանակն ուշ էր եւ շատ անօթի էինք ։

«Երեք ումբարտակ ինկաւ, առաջին երկուքն՝ թնդանօթաչարէն տասն մէթրի չափ հեռի, եւ երրորդը՝ ճիշդ թնդանօթներուն մէջտեղը, եւ պայթեցաւ . մեք ծռեցանք եւ մէկերնուս մազ մը չեղաւ, միայն փոշին քիչ մը գալաւ մեզ ։ Իշխանը ցնծութեանցագին աղաղակ մ'արձակեց , զոր կը թուի թէ միւս եզերքէն թնդանօթաձիգները լսեցին, վասն զի վերստին երկու անգամ չկանհուն լսելի եղաւ, եւ երկու ռումբարտակներ մեր գլխոյ վրայէն անցնելով՝ մեր ետեւէն յիսուն մէթրի չափ հեռու՝ եկեղեցւոյն առջեւ ինկան ։»

Այս շրջագայութեան ժամանակ եւրոպական լրագրաց թղթակիցներն ռումանական զօրաց վրայ տարածուած գաղափարաց սուտութիւնը կրցան դատել. Կարոլոս իշխանը կատարելապէս գոհ լինելով Գուքրէշ դարձաւ, եւ սպասեց որ իւր բանակին կատարելիք գործը վերջնական կերպիւ որոշուի ։ Եթէ իւր բանակն Փոքր Վալաքիոյ մէջ մնար, կրնար երկիրը պաշտպանել ․․ եւ իցէ թշնամւոյ դէմ. եթէ Դանուբն անցնէր, կրնար արժանաւոր կերպիւ պատերազմող հանդիսանալ ռուսական գնդերուն քով ։

# Գլուխ Երեքտասաներորդ

## ՏԵՍԱՐԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՅԱՍԻԱ

### ԵՐԵՔ ԳԼԽԱՒՈՐ ՑԵՂԵՐ

### ՀԱՅՔ

Ամեն երկրի մէջ երկու տարրեր կը գտնուին, որ ներս մտնելու պատրաստուող զօրապետին յատակագծին մէջ նկատողութեան առնուելու են, այսինքն՝ բնակչաց տրամագրութիւնքն եւ երկրին ռազմագիտական հանգամանքն ։ Ուստի՝ հարկ է մեզ նկարագրել Ասիոյ մէջ պատերազմի տեսարան եղող երկրին բնակչաց այլ եւ այլ ցեղերուն բարքն եւ իղձերն, ինչպէս նաեւ Հայաստանի սարահարթը կազմող լեռներէն ձեւացած պաշտպանողական գծերուն արժէքը ։ Այս աշխատութիւնն անհրաժեշտ հարկաւոր է , քով տեղեկութեամբ կռուոյն այլ եւ այլ պարագայները զննելու եւ այն տեղական ազդեցութիւնները դնահատելու համար, որք կրնան պատերազմին ընթացից ուղղութիւն մը տալ կամ գէթ փոփոխութիւն մը ։

Այս հետազօտութիւնն հետաքրքրական է ։ Հայաստան այնպիսի տեղ մ'է, ուր խառաքանչիւր քայլափոխ դասական յիշատակ մը կը զարթուցանէ ։ Ըստ Աստուածաշունչ գրոց՝ անդ էր դրախտն. անդ դադարած է Նոյեան տապանն. անդր գնացին Արգոնաւորդք (¹) ոսկեգեղմն որոնելու ,

(¹) Թեսալիոյ Աթամաս Թագաւորն՝ իւր Ինով անուն կնոջմէն գրգռուելով, առաջին կնոջմէն ունեցած իւր երկու որդիքն՝ Փրիքսոսն և անոր քոյրն՝ Հելլէն մեռցնել կ'ուզէր :

Այն միջոցին որ այս երկուքն տաճարի մը մէջ պիտի մորթուէին, երկնային ամպ մը զանոնք ծածկեց և ոսկի

մեր պտղատու ծառոց շատերն՝ այն ժամանակաւ բերդի հովիտներէն եկած են, եւ գլխաւորապէս կեռասն անկէ բերուած է որկրամոլին Լուկուլլոսի ձեռօք. եւրոպական պարտիզաց արքայական հաւն՝ փասիանըն Փասիսի ափունքէն եկած է. Բիւրք (1) իրենց համբաւաւոր նահանջին ըրած ժամանակ այն լեռներէն անցած են, եւ մեր բոլոր դասական յիշատակներն միթէ չեն զարթնուր Պոնտոսի արքային՝ հռչակաւորին Միհրդատայ՝ եւ կամ Հայաստանի արքային՝ մեծին Տիգրանայ անուամբն։

Ռուսական սահմանագիծն՝ Սեւ ծովէն սկսեալ մինչեւ Արարատ լեռը կը տարածուի տաճկական սահմանագլխոց երկայնութեանը՝ երկու բոլորակային աղեղներ ձեւացնելով, առաջինը՝ գոգաւոր եւ միւսը՝ կորնթարդ, եւ երկու կուսակալութեանց կցեալ է, այն է՝ Տրապիզոնի եւ Կարնոյ, որք Ռուսաց յարձակողական դրից պատճառաւ բնականաբար պատերազմի տեսարան լինելու սահմանեալ են, ինչպէս արդէն եղած էին 1829ի եւ 1854ի տաճկա-ռուսական պատերազմաց ժամանակ։

Տրապիզոնի կուսակալութեան այն մասն ուր առաջին գործողութեանց ձեռնարկեցին Զարին զօրախումբքն, գրեթէ միայն Լազերէ բնակեալ է։ Սոյն մասին վրայ յետոյ պիտի խօսիմք։

Կարնոյ կամ Էրզրումի կուսակալութիւնն ընդարձակ նահանգ մ'է, որ հին Հայաստանէն Տաճկաստանի ձեռքը տակուին մնացած մասը կը պարունակէ եւ 1,200,000ի մօտ բնակիչ ունի։ Քրիստոնեայ բնակչաց թիւը գրեթէ հաւասար է մահմետականաց թուոյն, եւ իրենց անհուն մեծամասնութիւնն որ 580,000ի չափ հոգիէ կը բաղկանայ, մեր լուսաւորչական Հայ հասարակութեան կը վերաբերի։ Մահմետականաց մեծամասնութիւնն Քիւրտերէ բաղկացեալ է՝ որք 357,000ի չափ կան։ Մնացեալներն Թուրք, Պարսիկ կամ Թաթար են։ Թուրքերն ծանօթ են մեր ընթերցողաց, Պարսիկներն՝ Վանայ նախկին Փաշալըգի մէջ ցրուած լինելով, ռուսական բանակին գործողութեանց շրջանակէն դուրս են։ Թաթարք խիստ սակաւաթիւ են, գրեթէ 25 կամ 30,000. ուստի յայտնի էր որ այս պատերազմին մէջ ազդու գործ մը չպիտի կրնան ունենալ։ Սոքա Թէրէքմէն եւ Գարագալփաք կը յորջորջուին, եւ հաւանական է որ հնգետասաներորդ դարու մէջ Հայաստան արշաւող Թաթարաց յաջորդներն լինին. Կ'երեւի թէ սոքա իրենց մահմետական հաւատքին մէջ շատ ջերմ չեն, եւ Ռուսաց դէմ որ եւ իցէ նախապաշարմունք չունին, վասն զի Տաճկաց երկիրներուն վրայ Ալէքսանդրապօլի գնդին դէմ ելած առաջին մարդիկն վաշտ մը Գարագալփաղներ էին, որք կու

գեղմով (ճափաղը) խոյ մ'երևան ելաւ, և զանոնք վրան առնլով Կողքիս տարաւ:

Սև ծովուն կրճէն անցնելու ատեն՝ Հելլէ ալեաց մէջ խեղդուեցաւ, և անոր համար նոյն ծովը Հելլեսպոնտոս կոչուեցաւ, այն է՝ արդի Տարտանելի նեղուցը:

Փրիքսոս՝ Կողքիս հասածին պէս՝ ոսկեգեղմն Արիսի (պատերազմի աստուած) նուիրեց, և նա ևս սոյն գեղմին պահպանութիւնը՝ չորս հրաշունչ ցուլերու և թեւաւոր վիշապի մը յանձնեց:

Այն ատենները՝ Թեսաղիոյ Իոլքոս քաղաքին Եսոնի թագաւորն՝ իւր Պէլիաս եղբօրմէն գահընկէց եղած էր: Եսոնի Յասոն որդին՝ 20 տարու եղածին պէս՝ գնաց իւր Պէլիաս հօրեղբօրմէն իւր հայրական ժառանգութիւնը պահանջելու: Պէլիաս՝ երիտասարդին խնդիրքը կատարել չուզելով՝ իւր քովէն հեռացնելու համար առաջարկեց անոր որ՝ եթէ ոսկեգեղմն առնլով իրեն բերէ, թագաւորական գահը անոր կը վերադարձնէ: Յասոն այս առաջարկութիւնն ընդունեցաւ և Յունաստանի երևելի դիւցազուններն, յիսունէն աւելի, հետն առնլով՝ Աթենասայ ցոյց տուած օրինակին համեմատ շինուած Արգոս անուն յիսնաթի նաւ մը հեծաւ և ճանապարհ ելաւ դէպ ի Կողքիս՝ Քրիստոսէ 1219 տարի յառաջ. այս նաւուն անունով՝ սոյն դիւցազուններն Արգոնաւորդք կամ Արգեայ նաւորդք ըսուեցան:

Այս պատմութիւնը նախնի առա պելախառն վէպերէն մին է:

(1) Կիւրոսի Երիտասարդին և իւր եղբարց միջև պատերազմ ծագած լինելով՝ Տասն հազար Յոյնք օգնութեան գնացին անոր ի Բաբելաստան, Քրիստոսէ 401 տարի յառաջ. սոցա ի Յունաստան վերադարձն կոչուեցաւ, նահանջ Բիւրուց կամ Տասն հազարաց:

դային անձնատուր լինելու եւ Զարին ծառայութեանը մտնել խնդրելու ։

Հայոց եւ Քրտաց վրայ մանաւորապէս ճառելէ առաջ, հետաքրքրական կը համարիմք՝ Հայաստանի մէջ գտնուած ուրիշ



ՊԱՅԱԶԻՏ ԵՒ ԼԵԱՌՆ ԱՐԱՐԱՏ

ցեղի մը մէկ քանի տող խօսք նուիրել, որոյ արժանի է իւր անհեթեթ բարուց համար։ Եէզիտիները սատանայն կը պաշտեն. սոցա աղանդն սոսկումն կ'ազդէ հաւասարապէս Պարսից, Տաճկաց եւ Քրիստոնէից ։ Եէզիտիներուն դէմ ձեռք առնուած խիստ միջոցներն բարեբաղդաբար փոքր ի շատէ փոխեցին նոցա բարքը, որովհետեւ մեծ Շէյխ անուամբ չար ոգին պաշտելով՝ կը կարծէին թէ արտօնութիւն ունէին աստուածային եւ մարդկային օրինօք արգելեալ բոլոր բաները ընելու ։ Պատճառելով թէ Աստուծոյ բարութիւնն անսահման է, անօգուտ կը համարին աղօթք ընել անոր, սատանային համար պահելով միայն իրենց յարգանքն, որմէ յամենայնի կը վախնան . շատ կը զգուշանան զայն անիծելէ, եւ սոսկմամբ միայն կ'արտասանեն անոր անունը ։ Եէզիտիներուն ծագման վրայ որոշ բան մը գիտցուած չէ՝ Նոքա քաջ եւ յանդուգն են եւ տակաւին իրենց աւազակի սովորութիւններն մեծ երկիւղ կ'ազդեն Մէլազկերտի (Մանազկերտ) եւ Պուլանըգի (Խոռխոռունիք) գաւառակներուն մէջ, ուր

երբեմն մեծ կարաւաններն եւ հայաբնակ գիւղերն կը կողոպտեն եւ հունձքը կը յափշտակեն ։ Ասոնք իրենց զգեստներէն կը ճանչցուին, որ ընդհանրապէս մութ գունով են եւ կարմիր բրդով համակ ասղնագործեալ, ինչպէս նաեւ իրենց դեղին եւ սեւ փաթթոցէն, սոքա բազմաթիւ են Սիփան-Տաղը բռնած լերան շրջակայները՝ Վանայ լճին հիւսիսային կողմը ։

Քաղաքակրթութեան ազդեցութիւնն այսօր առաւելապէս կը թափանցէ Հայաստանի մէջ՝ թէ այն համազգեաց միջոցաւ որք Կոստանդնուպօլսոյ մէջ նիւթական եւ մտաւորական կարողութեամբք զարգացեալ են, եւ թէ ռուսական Հայաստանի մէջ բնակող Հայոց ձեռօք ։

Վերջին տարիներս , զգալի լինելով որ ազգի մ'երջանկութիւնն եւ փրկութիւնն ուսմամբ եւ դաստիարակութեամբ միայն կարելի է ձեռք բերել, յառաջադիմական եռանդագին շարժում մը սկսած է Հայոց լուսամիտ մասին մէջ, եւ՝ իրենց գաւառաբնակ համազգեաց մէջ ձրիապէս եւ անձնուիրաբար ուսումն եւ ընթերցանութիւն տարածելու գովելի նպատակաւ այլ եւ այլ քաղաքաց մէջ ընկերութիւններ կազմուած են, որոց յօժարակամ կը մասնակցին Թուրքիոյ, Ռուսիոյ, Անգլիոյ եւ այլ հեռաւոր երկիրներու մէջ գտնուող Հայք՝ իրենց մեծադումար նուէրներովն ։

Բայց մեծ մասն եւ մանաւանդ ծերունիներն հակառակ կ'երեւին այն սովորութեանց փոփոխութեան, որք մուտ գտած են իրենց կացութեան պահանջմամբքը , թէ եւ այդ կացութիւնն այս վերջին ժամանակաց մէջ զգալի կերպիւ բարւոքած է ։ Հին գաղափարաց կուսակիցներն տարօրինակ խաբէութեան մ'ենթակայ գտնուելով՝ կը կարծեն թէ կրօնից մասին պէտք եղած յարգանքն իրենց համար կարելի կ'ընէ մերժել ծր եւ իցէ բարենորոգումն՝ իբրեւ վիշում մը տարուս ոգւոյն ։ Հայք սակայն՝ երկրին ծայրայեղ աղքատութեան պատճառաւ այնպիսի դժնդակ կեանք կը վարեն՝ որ զայն առաւել եւս տխուր ընող նախապաշարմանց չնջուիլն ցաւալի է ։ Ամեն աստիճանի անձանց տղայք հազիւ իրենց մանկական տիոց աւարտը կը հասնին եւ պատանի կը լինին , վարժարանին մէջ իրենց սկսած հարեւանցի ուսմունքը կ'ընդհատին , ծնողաց կարողութիւնն առ հասարակ խիստ աննշան լինելով՝ զաւակներնին կը ստիպուին իրենց պէտքն ինքնին հոգալու կարելի եղածին չափ շուտով ։ Մէկ երկու տարի արուեստից մէջ նեղութիւններ քաշելով աշակերտութիւն ընելէ յետոյ, իրենց հաշւոյն գործի կը սկսին ։ Եւ որովհետեւ առ ի չգոյէ դրամի իրենց առուտուրն ի հարկէ սահմանափակ կը լինի եւ ձեռարուեստից եւ երկրագործութեան արտադրութիւնքն փոքր ինչ շահ միայն կը բերեն , ուստի քիչ մարդիկ հարուստ կը լինին եւ շատեր իրենց կեանքը կ'անցնեն կարօտութեան դէմ շարունակ մաքառելով ։

Այս թշուառութեան վրայ գաղափար մը ստանալու համար բաւական է մէկ երկու գիւղ տեսնել ։ Եթէ ոչ քաղաքաց գէթ գիւղօրէից մէջ տակաւին մեծ է այն ըստորերկրեայ բնակութեանց թիւն , որոց վրայ արդէն Քսենոփոն զարմացմամբ խօսած է ։ Շատ գիւղեր ճանապարհաց եզերքը բլրոց զառիթափներուն վրայ այնպէս շինուած են որ՝ տանիքներն հարթ հաւասար լինելով ճանապարհին հետ՝ գետնին հորիզոնական շարունակութիւնն են եւ զառիվայրին հետ սուր անկիւն մը կը ձեւացնեն , այս շէնքերուն ետեւի կողմը ճանապարհին տակ լինելով՝ միւս կողմն՝ այն է շէնքին միակ ճակատն որմ մ'է եւ տանիքն այդ որմին վրայ յեցեալ է ։ Ասկէց կը հետեւի որ գիւղի մը քովէն մարդ կ'անցնի առանց անոր գոյութեանը վրայ կասկածելու, մանաւանդ ձմեռ ժամանակ երբեմն կը պատահի որ, կըսեն , ճանապարհէն խոտորող ուղեւորք ծխնելոյզներուն (օճագ) գետնին երեսն եղած ծակերուն մէջ կ'ընկնին ։

Հայք՝ ժիր գործունէութեամբ, հաւատարմութեամբ, վաճառականութեան մասին ունեցած յարմարութեամբ եւ հըմտութեամբ նշանաւոր հանդիսացած են Տաճկաստանի բոլոր ժողովրդոց մէջ։

Հայոց ցեղին նախնի յատկութիւններն լաւ եւս պահած է Կարնոյ կուսակալութեան մէջ գտնուող Հայ հասարակութիւնն, որոյ մէջ առեւտրոյ սէրն այնքան զարգացած չէ մինչեւ ցարդ. կը թուի թէ հովուական եւ մշակական կեանքն աւելի կը յարմարի անոր։ Հայք լեռնական ցեղերուն բնազդմունքն եւ յատկութիւններն ունին. աշխատութեան մասին տոկուն եւ շահասէր լինելով՝ եւ ոչ մէկ ձեռնարկութենէ կը կասին եւ երկրին աղքատութիւնն առաւել անմիտ վարչութեան մը վերագրելու է քան թէ նոյն իսկ բնակչաց։ Թէ եւ գիւղացիք տգէտ եւ աղքատ են, սակայն ճանապարհորդք ամենէն յետին գիւղին մէջ այնպիսի հիւրասիրութիւն մը կը տեսնեն որոյ փափուկ եղանակը դժուարաւ մտքէ կ՚ելնէ։ Միով բանիւ Հայ ազգը մեծապէս սիրելի է ամեն անոնց որ զինքն իւր հայրենեաց մէջ ճանչցած են։

Հայոց Հայրապետն կամ Կաթողիկոսն Էջմիածին կը նստի Երեւանայ մօտ ռուսական Հայաստանի մէջ։ Զարերուն իշխանութեան ներքեւ՝ որուն շատերն հագիւ վաթսուն տարիէ ի վեր հպատակած են, Ռուսիաբնակ Հայք իրենց քաղաքական բարեմասնութեանց պատճառաւ աճեցական զօրութիւն մը ստանալով, իրենց դիւրաթեք հանճարոյն եւ իրենց տեսած բաներն իւրացնելու մասին գերազանց յատկութիւն մ՚ունենալոյն, շուտով առաջին տեղը գրաւած են Անդրկովկասեան նահանգները բնակող ժողովրդոց բազմութեան մէջ։ Եթէ բազմաթիւ չեն տեղւոյ մը մէջ, միւս բնիկ ազգութեան վրայ գերազօր կը հանդիսանան իրենց ուշիմութեամբն։ Եթէ տեղւոյ մը հասարակութիւնն իրենցմէ բաղկացեալ չէ, կարգ մը կը ձեւացնեն անդ՝ եւ ճշդիւ այնպիսի միջակ կարգ մը՝ որոյ նմանը չկայ Վրաց մէջ։ Սեղանաւորութիւն, վաճառականութիւն, մինչեւ անգամ ճարտարագործութիւն եւ ազատական արուեստք իրենց կը պատկանին եւ կամաւ բժիշկ, փաստաբան, դատաւոր եւ լրագրատէր կը լինին։

Ազատութեան հետ իրենց նախնեաց քաջութիւնն ալ ստացած են՝ ինչպէս նաեւ զէնք գործածելու սէրը։ Կովկասեան զօրախումբք հարիւրէն աւելի Հայ սպայ կը պարունակէին հետեւակազօրաց մէջ, քառասունէն աւելի թնդանօթաձիգ զօրաց մէջ եւ երեսունէն աւելի հեծելազօրաց մէջ։ Ռուսիոյ լաւագոյն զօրապետներէն մէկ քանին Հայոցմէ է, ինչպէս են Պէհպութով իշխանն՝ Պէչ-Կէտիքլէրի եւ Քիւրէք-Տէրէյի յաղթականն ընդդէմ Տաճկաց. Մատաթով իշխանն՝ ընդդէմ Պարսից, եւ Արղութինսքի իշխանն, որոյ համար կառավարութիւնն այսօր արձան մը կը կանգնէ։ Նաեւ Փոքր-Ասիոյ մէջ գործող բանակին ընդհանուր հրամանատար Լօրիս Մելիքով եւ Երեւանայ գնդին հրամանատար Տէր Ղուկասով զօրապետներն միթէ Հայ չեն, ինչպէս արդէն ըսած եմք։

Ազատութեան ուրիշ մէկ արդիւնքն ալ. Ռուսիաբնակ Հայք իրենց հարստութիւնն եւ ինչքն ուզածնուն պէս անդորրութեամբ գործածելու տէր լինելով, կը կորուսանեն այն ագահութիւնն, որ իրենց դոյքը ծածկելու եւ գաղտնաբար վայելելու ստիպող հարստահարութիւններէն յառաջ եկած էր տաճկահայոց մէջ։ Երեսուն միլիոն ռուպլի հարստութիւն ունեցողներ կան այժմ, ինչպէս է Պ. Միրզոյեվ։ Այս մեծ դրամատէրց ամենքն ալ ինքզինքնին կը նուիրեն ազգային դաստիարակութիւնը զարգացնելու, եւ Տփխիսու լրագրաց մէջ յաճախ կը կարդացուի թէ այսինչն կամ այնինչն 100,000 200,000 ռուպլի տուեր է դպրոցի մը հիմնարկութեան համար։ Հետեւեալ թիւն ուրիշ ամեն բանէ աւելի

ճարտարախօս է. Կովկասու բոլոր տեղակալութեանց մէջ այժմ Հայք 276 նախակրթարան ունին 372 ուսուցիչներով եւ վարժուհիներով եւ 10,721 աշակերտներով։ Խիստ գոհացուցիչ է այս՝ 600,000 հոգիէ բաղկացեալ հասարակութեան մը համար՝ որ գրեթէ նոր ծնունդ առած է մտաւորական կենօք ։ Եւ յառաջդիմութիւնն հետզհետէ կ'առաւելու. վիճակները գումարներ կը յատկացնեն, մանաւոր անձինք հանգանակութիւններ կ'ընեն նոր դպրոցներ բանալու համար ։

Ի սկզբան պատերազմին կարելի էր երեւակայել թէ տաճկական Հայաստանի ժողովուրդն ինչ զգացմամբ պիտի ընդունէր Զարին զինուորներն, որոց կ'առաջնորդէին ցեղիւ եւ կրօնիւք Հայ զօրապետներ։ Այդ բանակին հաստատամիտ օժանդակներ գտնել կը յուսար Հայաստանի մէջ, սակայն հասարակութիւնն թէպէտեւ չօգնեց ռուսական զօրաց , բայց թշնամութիւն ալ ցոյց չտուաւ անոնց ։

Հայերէն խիստ շատ բան պահանջուեցաւ Օսմ. բանակին պիտոյիցն համար ։

## ՔԻՒՐՏՔ

«Օսմանեան կայսրութեան մէջ, կը գրէր Գ. ֆոն Մոլթքէ 1838ին, այնպիսի ընդարձակ երկիրներ կան ուր Դրան իշխանութիւնը չքանիր, եւ ստոյգ է որ Սուլթանն մեծ աշխարհակալութիւններ ունի տակաւին կատարելիք նոյն իսկ իւր պետութեան մէջ ։ Այսպէս է պարսկական սահմանագլխոց եւ Տիգրիսի մէջ տեղ գտնուած լեռնային երկիրը. այս գետին եւ Եփրատայ մէջ եղած երկայնաձիգ դաշտերն անջրդի անապատ մը կը ձեւացնեն , ուր ոչ ծառ կայ եւ ոչ հաստատուն բնակութիւն ։ Մէկ քանի աւերակներ կը վկայեն թէ մարդիկ այն տեղերը բնակելու փորձ ըրած են, բայց Արաբացիք՝ անդ ո՛ր եւ իցէ գաղթականութեան մը հաստատուելուն դէմ կը կենան. Նոքա միայն իրենց վրանները կը կանգնեն այն անապատին մէջ ։

« Տիգրիսն անցնելուդ պէս՝ հեշտագուարճ բլուրներ հետզհետէ կը բարձրանան, մինչեւ որ ամբարձաձիգ լեռ մը կը ձեւանայ ։ Սարերը ծածկուած են թեղօշներով ( մէշէ ) եւ լայն տերեւներով, (չինար). հովիտները լի են ձիթենիներով, թզենիներով, ընկուզիներով, նռնենիներով, որթերով եւ վարդասարդերով. Թեթեւ կերպիւ հերկուելով թուխ երեւցող գետնին ակօսներուն մէջ սերմանեալ ցորեանն խիստ առատ բերք կուտայ , եւ մարդոց չգործած տեղերն ալ բնութիւնը ամենագեղեցիկ արօտներ կը կազմէ՝ բիւրաւոր երփնազան ծաղիկներով պճնեալ. եւ մերձակայ սարերուն շուրջը գիզուած ամպերն ամեն երեկոյ անձրեւելով կը զովացնեն զանոնք։ Ձիեր, ոչխարներ, կովեր, այծեր խիստ լաւ կը բուին անդ. Լերանց մէջ գետնին երեսը տեղ տեղ աղ կայ, եւ իմ գիտցածս՝ երբէք բնապատում մը չէ զննած անոնց մէջ եղած միւս գանձերն ։

«Եթէ այսպիսի ճոխ եւ գերազանց երկրի մը երեք չորրորդ մասն անմշակ կը մնայ, ասոր պատճառն որոնելու է բնակչաց ընկերական տխուր վիճակին մէջ ։ Քիւրտը դրեթէ ամեն մասամբ հակառակն է իւր դրացի Արաբաց, միայն մէկ բանով անոր կը նմանի, այսինքն աւարառութենէ հաճոյք զգալով ։ »

Բրուսիացի հռչակաւոր սպայն այս տեղեկութիւնները խմբագրած ժամանակ կ'ընկերանար մասնաւոր զօրախմբի մը որ ճիշդ՝ Քիւրտերը հպատակութեան բերելու սահմանեալ էր ։ Յետոյ ուրիշ անգամներ ալ այսպիսի զինուորական գործողութիւններ եղան, սակայն բարւոքումն յառաջ չբերին երկրին մէջ։ Պատմական ժամանակներէ ի վեր՝ այն ցեղը նոյնը մնացած է աւարառու եւ անզուսպ։ Ստուգիւ կարելի է այժմու Քիւրտերուն յատկացնել այն նկարագրութիւնը զոր Քսենեփոն կ'ընէ անոնց նախնեաց՝ Կորդուաց վրայ զոր Կարդուկք կը կոչէ, այն քաջ վայրենեաց վրայ՝ որ Պարսից մեծ թագաւորին ահա-

գին բանակին կողմանէ՝ Միջագետաց մէջ Ցունաց կրած մնասէն աւելի մնաս եւ կորուստ տուին անոնց, այն եօթն տաժանելի աւուրց մէջ, յորս Բիւրք իրենց երկրէն անցան ։ Պարսիկք ի զուր ջանացին զիրենք նուաճել, 20,000 հոգիէ բաղկացեալ բանակ մը որ անոնց երկիրը մտաւ՝ համաշխինշ կորստեան մատնուեցաւ կիրճերուն մէջ ։

Քիւրտերն որք առանց օր եւ իցէ տուրք վճարելու մէկու մը՝ իրենց ուզածին պէս կեանք վարելէ զատ ուրիշ քաղաքական իղձ չունին, պղատոնական կերպիւ այսինքն խօսքով միայն կախումն ունին Տաճկաստանէն։ Էրզրումի կուսակալութեան վարչութեան պաշտօնատարք որք Կոստանդնուպօլսէն կուգան՝ չեն յանդգնիր, կ'ըսէ Գ. Ժօրժ Բէռօ իւր [illegible] անուն գրոց մէջ, չնչին հարկէ մը զատ ուրիշ բան խնդրելու անոնցմէ. սոքա երբեմն կը վճարեն, երբ իրենց գլխաւորք խաղաղասիրութեան դիտումն ցոյց տան եւ չուզեն իրենց առեւտրական յարաբերութիւններն ընդհատել դաշտային ժողովրդոց հետ։ Եթէ ընդհակառակն լեռնականք չլսելու զարնեն եւ ըմբոստ երեւին, խիստ քիչ կը պատահի որ Տաճիկները պնդեն իրենց պահանջմանց վրայ, ապա թէ ոչ դաշտերը կ'աւերեն արագ ասպատակութեամբք, եւ բոլոր մերձակայ ճանապարհաց վրայ անցորդները կը կողոպտուին եւ նիզակաւ եւ հրացանաւ զինեալ խիզախ ձիաւորներ կարաւանները կը կասեցնեն ։

Քսենոփոն կը պատմէ թէ՝ Հայաստանի Սատրապութիւնը (Նախարարութիւն) Կորդուաց (Կարդուկ) երկրէն բաժնող Կենտրիտէս ([1]) գետին երկայնութեանն՝ հայկական գետեզերքն անընակ եւ ամայի էին իւր ժամանակը՝ սահմանէն մինչեւ մէկ աւուր ճանապարհ ներս գիւղ մը չէր կրնար չինուիլ երբեք այն սահմանագլխոց բաժնին մէջ, ուր անդադար կը յածէին աւարառու Կորդուաց հրոսակներ։ Գրեթէ մինչեւ ցարդ նոյնը կը լինի Պարսկաստանի եւ Տաճկաստանի մէկ քանի դաւառաց մէջ որոցմէ վեր կը բարձրանան Քիւրտիստանի սարերն։ Ատրպատականի (Ազէրպէյճան) եւ Լուրիսթանի մէջ գիւղ կայ որոյ բնակիչքն չարունակ իրաւանցում ունին։ Գիւղն ամրացեալ է, եւ տարւոյն մէջ ժամանակ ժամանակ պահապանք յայտներ անդուլ կը դիտեն չրջակայ դաշտը։ Եթէ հեռուստ փոշին մրրկելով վեր ելնէ եւ Քիւրտ ձիաւորաց կարմիր բաճկոնակներ եւ ահագին փաթթոցներ ընդնշմարուելու պէս լինին, յանկարծ աշտարակի մը վրայէն նշան մը կը տրուի որոտընդոստ ձայնիւ եւ իսկոյն իրարանցումով մը՝ արտերուն մէջ ցրուեալ աշխատաւորներ շտապաւ ամեն կողմանէ վազելով ներս կը մտնեն. անոնց վրայէն կը գոցուի այն կաղնիէ երկաթանիգ ծանր դուռն որ գիւղին միակ մուտքը փակելու կը գործածուի։ Երբ յետոյ Քիւրտերը կը հասնին, գրեթէ ամենքն ինքզինքնին պատսպարած են. բայց ամեն անգամ մէկ քանի ուղտք կամ կանայք կը մնան դուրսը որք չեն կրցած ժամանակին փախչիլ, ինչպէս նաեւ հօտեր՝ զորս անկարելի եղած է տաւաղել, հասուն ցորեաններ եւս կը մնան որք գերանդւոյն կը սպասեն։ Աւարառուք աճապարանօք կը հնձեն այն դաշտերու բերքն, որոց սերմանքն ուրիշները ձգած են։ Ջիոց թամբերուն վրայ կը կապեն ծանր եւ երկրաքարշ որայներ, յետոյ մութը չկոխած կը մեկնին դէպ ի իրենց լեռներն, արտասուաթոր գերեալներն եւ բառաչող ու մայող հօտանները վարելով իրենց առջեւէն ։

Այս աւազակներն խեղճ քրիստոնեայները կողոպտելու համար մասնաւոր սովորութիւն մ'ունին՝ որոյ մասին անգղիական հիւպատոս Գ. Թէյլըր՝ Արտաքին գործոց Նախարարին կը գրէր 1869 ին մարտ ամսոյն մէջ.

([1]) Այս անունը Կորդուաց աշխարհին Կտրաճունկաց գաւառը կը յիշեցնէ ։

«Քիւրտը դրամ կորզելու մասնաւոր եղանակ մ'ունի. ակռային մէկը կը լուծէ եւ քրիստոնէի մը հետ կռիւ կը հանէ. այս կռւոյն մէջ ի հարկէ կիրարու հարուածներ կը տրուին։ Քիւրտն իւր գլխաւորին կը գանգատի, ակռայն ցոյց կուտայ, եւ կ'երդնու որ քրիստոնէին զինքը հարուածելէն ինկած է այդ ակռայն։ Գլխաւորն որ գիւղին դատաւորն է միանգամայն, եթէ քրիստոնէին կողմանէ յառաջագոյն կաշառք առած չլինի անպատճառ կը պարտաւորէ զայն տուգանք մը տալու, որ կը զանազանի՝ կարծեցեալ յարձակողին ենթադրեալ հարստութեանց համեմատ։ Համոզիչ լրին, յանցանքն ապացուցանող բանն՝ այն է հին ակռայն այս տեսակ շատ դատերու համար կը գործածուի պէտք եղած ժամանակ, եւ երբեմն բարեկամի մ'ալ կը տրուի որ նոյն նպատակաւ կը գործածէ զայն։ Այս հանրացեալ սովորութիւնը ծնունդ տուած է՝ Հայոց մէջ հասարակ եղած այն առածին թէ՝ Քիւրտին ակռայն իւր ծոցն է։»

Ձմեռ ժամանակ Քիւրտերն դաշտի մէջ կը բնակին սեւ այծի մազէ շինուած վրաններու ներքեւ։ Իրենց երկրին սաստիկ եւ երկարատեւ ցրտերուն դէմ այսպիսի բնակարան մ'ինքնին անբաւական լինելով՝ կը ստիպուին նոքա անտառներուն եզերաց վրայ կարելի եղածին չափ ինքզինքնին պատսպարել։ Երբեմն ստորերկրեայ բնակարաններու մէջ ալ կը բնակին։ Ամառը շնիկ աստեղ օրերը (յուլիս 23 էն մինչեւ օգոստոս 23) լեռներու մէջ կ'անցընեն իրենց հօտերովը։ Քանի որ ձիւնն հալելով դալարագեղ մարգերն երեւան կուգան, նոքա աւելի բարձրերը կ'ելնեն։ Վրանները եւ կարասիները եզներուն եւ ձիերուն կռնակը կը դրուին, խեղճ կանայք գետնաքարշ կը տանին տնական անօթներն եւ տղայքը, սակայն արք միայն իրենց ծխախոտը կը կրեն։

Միթէ կը կարծուի որ յանդուգն աւազակներն եղբայր են խեղճ Հայոց զօրս կը կողոպտեն։ Արդարեւ մեզ պէս հնդիկ եւրոպական ցեղին միեւնոյն ճիւղին կը վերաբերին, բայց մահմետական եղած լինելով երբէք գերի եղած չեն այն աշխարհակալաց եւ ոչ մէկուն, որք ասիական Տաճկաստանէն անցան։

Մահմետական լինելով հանդերձ՝ պահած են դարձեալ իրենց վաղեմի սովորութեանց մէկ քանիները, թէ եւ այդ սովորութիւններն անհամաձայն են իրենց նոր կրօնից պատուիրանացն հետ։

Կանայք չեն սքողեր երեսնին եւ չեն երկնչիր օտարականաց եւ մինչեւ անգամ քրիստոնէին բացադէմ երեւելու։ Յիրաւի ծնողք կը հսկեն որպէս զի՝ իրենց կանոնաւոր դէմքովն միւսներէն տարբերող գեղեցիկ աղջկունք դիւրաւ արանց տեսանելի չլինին։ Ոմանց քիթը ծակած եւ ծակին մէջ օղակ մ'անցած է, եւ շատերուն ձախ ռնգին վրայ արծաթեայ փոքրիկ գնդակ մը կայ որոյ վրայ գոհարներ (Ֆիրուզէ թաշը) յեռեալ են։ Այս զարդուց գործածութիւնն ընդհանուր է Քիւրտիստանի մէջ։ Կանայք գիւղի մը մէջ եղած բոլոր արծաթակերտ բաներն իրենց մազերուն վրայ կը կրեն։

«Զիս հիւրընկալող մարդուն աղջկանն ընծայեցի, կ'ըսէ Գ. ֆոն Մոլթքէ, դրամոց ամբողջ հաւաքածոյ մը, երկուքնոց՝ երեքնոց՝ հինգնոց դահեկաններ, որոցմէ շատ մը կարելի է գնել մէկ քանի ֆիօրինով. նորատի աղջիկն այն ժամանակ իբրեւ հարուստ ժառանգորդ մը համարեցաւ իւր ցեղին մէջ։»

Արք խիստ նկարագեղ հագուստ մ'ունին։ Մէջքերնին կը կապեն բրդէ լայն ցըփսի մը որոյ ծալքերուն մէջ կը զետեղեն իրենց ատրճանակներն եւ դաշոյնները։ Ձիաւորք կարմիր կաշիէ մոյկեր կը հագնին որոց սրունքն փոթ փոթ է։ Հետեւակներն՝ ծայրը սուր եւ վեր դարձած կիսամոյկեր կամ մուճակներ (եարըմ չիզմէ) կը հագնին զօրս խրացքով իրենց ոտից կը կապեն։ Բաւական զարմանալի բան մ'է

որ գաղղիական Նախկին սրածայր կօշիկներուն նմանող այս տեսակ ոտքի ամաններն արդէն պատկերացեալ են այն հինաւուրց բարձրաքանդակաց վրայ, զորս Ասորեստանեայք թողած են այն տեղերուն մէջ։ Աշխարհիս վրայ եղած գլխանոցներուն ամենէն խոշորն է Քիւրտերունը որ շաքարի կոնի (քէլլէ շէքէր) ձեւ ունի եւ կայծէ շինուած է, որոյ շուրջը աչքի զարնող գոյներով բամպակէ՝ բրդէ կամ մետաքսէ ցփսիններ կը փաթթուին։ Որքան երեւելի լինի մարդ մը, այնքան աւելի ցփսի կը փաթթէ իւր գլուխը, եւ շատ անգամ բոլորովին այլանդակ կը լինի մեծերուն գլխանոցին խոշորութիւնը, քսան կամ քսանեւհինգ ցփսիէ բաղկացեալ լինելով։

Քիւրտերուն քաղաքական վարչութիւնն Եւրոպայի միջին դարու տանուտէրական դրութեանը կը նմանի։ Քիւրտերն հպատակեալ են բազմաթիւ գլխաւորներու, որք իշխանութեան կը հասնին թէ իրենց զարմին իրաւամբքն եւ թէ իրենց անձնական արժանեօքն։ Այս գլխաւորներն իրենցմէ վեր իշխանութիւն մը չեն ճանաչեր Դրան իշխանութենէն զատ, եւ այն ալ երբեմն միայն կը ճանաչեն՝ երբ ուրիշ կերպ չեն կրնար ընել։ Ժամանակաւ Քիւրտիստանի սարերը ծածկեալ էին ամրոցներով որք ճշմարիտ արծուի բոյներու կը նմանէին, եւ անոր գլխաւորներն դաշտաց վրայ կը խոյանային իրենց հրոսակներով, եւ ապա ետ դառնալով իրենց աւարը կը տանէին եւ կը պահէին անդանոր։ Քառասուն տարիէ ի վեր Տաճկաց զօրքն այն մարտկոցներուն մեծ մասը քանդած են. բայց երկիրը տակաւին նուաճեալ չէ։

Իրաց այս վիճակին կը հետեւի թէ Քիւրտերն կէս մը միայն մահմետական լինելով, կրօնական մոլեռանդութիւնն անոնց երեւակայութեան վրայ ազդեցութիւն չունի, եւ միւս կողմանէ նոքա Տաճկաց դէմ շարունակ թշնամութիւն ընելով՝ յօժարութիւն ցոյց չեն տար՝ պատերազմի դաշնակից լինելու անոնց, այդ պատերազմը քրիստոնէից դէմ եղած ժամանակ անգամ։ Յայտնի է որ իրենց երկրին վրայ կատարելապէս անկախ ապրիլ է նոցա բաղձանքն։ Եթէ իրենց ազատութեան դէմ ուղղակի սպառնալիք չլինի, իրենց շուրջը կատարուող դէպքերին անտարբեր աչօք դիտելու տրամադիր են։ Ռուսիա Քիւրտիստանի մէջ երկար ժամանակէ ի վեր յարաբերութիւններ հաստատած լինելով՝ կարող եղած էր ձիաւորաց հրոսակներ կազմել ոսկւով, ինչպէս ըրած էր Փասքէվիչ 1829ին։ Երբ Էրզրումի կուսակալն անոնց երկրին մէջ զօրաժողով մը ըրաւ, եւ այն կարծեցեալ կամաւորներն Արտահան ղրկեց որպէս զի այն տեղի պահակազնդին օժանդակեն, նոքա՝ Ռուս զօրքը տեսնելնուն պէս՝ փախան եւ իրենց հայրենիքը դարձան։

Պատերազմի տեսարանին վրայ բնակող երեք ժողովրդոց երկուքն առնլով՝ սոցա առաջինն՝ որ է ամենէն բազմաթիւն՝ աղէկ աչքով կը նայէր Ռուսաց. միւսն անտարբեր էր պատերազմին արդեանցը։ Երրորդն միայն՝ որ ամենէն տկարն էր՝ թշնամի էր, այսինքն Լազք՝ որոց վրայ այժմ պիտի խօսիմք։

## ԼԱԶՔ

Այն ժայռերու խառն շեղջակոյտն յորս Լազք կը բնակին Ճորոխի հովտին եւ ծովուն միջեւ՝ անմատոյց է ամեն կողմանէ, ինչպէս պիտի տեսնուի յետոյ երկրին ռազմագիտական նկարագրութեան մէջ։ Ասոր համար է որ նոքա մերձակայ ժողովրդոց հետ առանց խառնուելու, հնոյն Կողքիսի բնակչաց տիպարն անվթար պահած են, եւ պատմական ժամանակներէ ի վեր գեղեցկութեան տիեզերական համբաւ մը վայելող կովկասեան ցեղին ամենագեղեցիկ ներկայացուցիչներն են։ Իրենց մորթին սպիտակութիւնը, մազերուն նըրբութիւնը, իրենց դէմքին գծերուն պատկերակերպ կանոնաւորութիւնն եւ հասա-

ցլին վայելչութիւնն համբաւեալ են Արեւելից մէջ, եւ Կոստանդնուպոլսոյ ճոխ կանանոցներուն մարգարիտներն են իրենց կանայքն՝ որք Կովկասու միւս ազգաց կիներէն առաւել նախամեծար են։

Լազք՝ Արեւելեան ազգաց պարեգօտներուն եւ լայն զգեստներուն տեղ, հագուստ մ'ունին որ լաւ եւս կը յարմարի լեռնական կենաց։ Մեր տաբատին նման տաբատ մը կը հագնին եւ շապկի ձեւով բաճկոնակ մը, ուստի կատարեալ կերպիւ արձակ շարժմունք կրնան ընել։ Նաեւ իրենց գլխանոցը բաւական է զիրենք ուրիշներէն տարբերելու համար. փաթթոյի եւ գդակի տեղ բրդէ տեսակ մը կնգուղ (գուգուլէթա) կը կրեն Կովկասեանց պաշլըխին նման, այսինքն փռիւգական գլխանոցի պէս բան մը, որոյ ծայրերն գլխոյն վրայ դէպ ի վեր տնկուած լինելով, տարօրինակ եւ դիւրակրելի ծածկոյթ մը կը ձեւանայ։ Վրաց պէս՝ Լազք կուրծքերնուն վրայ փամփշտանոցներ ունին որ իրենց զգեստուց պէս զարդարեալ են ոսկեթել եւ արծաթադործ ժապաւէններով։ Պղնձէ զարդերով պճնեալ իրենց գօտւոյն կ'անցընեն ատրճանակներ եւ կարճ երկաթով [illegible] ըսուած լայն դաշոյնը, զոր Հայաստանի եւ Կովկասու բնակիչք մեծ Խանջարէն առաւել նախամեծար կը համարին։ Նմանապէս կարճ ցրկիճները կամ հրահարները (գարապինա) նախապատիւ կը համարին, որք Արեւելից մէջ գործածուող երկայն հրացաններէն աւելի յարմար են դարանամուտ կռիւներու եւ լեռնային պատերազմի։ Լազերն՝ թէեւ անուանական կերպիւ Դրան հպատակ են դարերէ ի վեր, սակայն մինչեւ 1846 տարին անկախ ապրած են իրենց սեպաձեւ լերանց կողերուն վրայ շինուած փայտեայ նկարագեղ տնակներու մէջ։ Այն թուականին Խալիլ Րիֆաթ փաշայի հրամանատարութեամբ զինուորական խումբ մը մտաւ իրենց երկիրն եւ Սուլթանին իշխանութիւնը ճանչցուց անոնց։ Բայց երբ Տաճկաց զօրքը մեկնեցաւ, լեռնականք վերստին սկսան առաջուան պէս ապրիլ բուն իսկ իրենց գլխաւորաց կառավարութեան ներքեւ եւ, միայն թեթեւ հարկ մը կը վճարեն։ 1876ին օսմանեան կառավարութիւնը Սերվիա ղրկած գումարտակներուն հետ մուծանելու համար Լազիստանէն զօրք ժողովելու դիտաւորութիւն յայտնած լինելով քիչ մնաց ապստամբութիւն մը պիտի ծագէր, եւ հարկ եղաւ այդ խորհուրդը մէկ կողմ թողուլ, վասն զի Լազերն կ'ըսէին թէ իրենց երկրին մէջ միայն զինուորութիւն ընելու իրաւունքն ունին։

Պէտք չէ հետեւցնել ասկէ թէ՝ Քիւրտերուն պէս Լազերն ալ այս պատերազմին անտարբերութեամբ կը նկատէին։ Ջերմեռանդ մահմետականներէն սոքա, ասկէ զատ Ռուսաց դէմ ատելութեան այլեւայլ պատճառներ ունին։ Նախ Մինկրէլի եւ Վրաստանի իրենց քրիստոնեայ ազգակիցներն Ջարերուն դրօշից ներքեւ զինուորութիւն կ'ընեն, եւ դարաւոր կռիւներով գրգռեալ եւ ցեղի ու լեզուի յարակցութեանց պատճառաւ սաստկացեալ հակառակութիւն մը կը ներշնչեն անոնց, եւ երկրորդ՝ ռուսական գունդ մ'իրենց երկիրը մտնելով կը գործէ եւ ուղղակի իրենց ազատութեան դէմ կը սպառնայ։ Ուստի Պաթումի պաշտպանութեան յատկացեալ տաճկական բանակին բազմաթիւ կամաւորներ տուին, որոց քաջութիւնն ընդ հուպ պիտի գովեմք, երբ այն նաւահանգստին շուրջն եղած գործողութիւնները պատմեմք։

## ՌԱԶՄԱԳԻՏԱԿԱՆ ՀԱՆԳԱՄԱՆՔ

Ռազմագիտութեան վրայ երկրի մ'արտաքին ձեւակերպութեան ազդեցութիւնն եւ ոչ ուրեք այնքան զգալի է՝ որքան Հայաստանի մէջ։ Այս երրորդ պատերազմն է որ կը լինի Ռուսաց եւ Տաճկաց մէջ, եւ երրորդ անգամ զինուորական գործողութիւնք միեւնոյն կերպիւ կը կատարուին՝ բաց ի մէկ քանի մանրամասնութիւններէ։

Երեւակայելու է ահագին՝ լեռնադաշտ մը որոյ վրայ սարերու խառն շեղջակոյտ մը կը բարձրանայ, զոր կը պարփակեն ա-



ՄԵԾ ԴՈՒՔՍՆ ՄԻՔԱՅԷԼ, ԿՈՒՍԱԿԱԼ ԿՈՎԿԱՍՈՒ

րեւմտեան կողմէն Լազիստանի լեռներն, հիւսիսէն՝ Կովկաս, արեւելքէն՝ Արագածի կամ Ելակէօզի շղթայն, հարաւային արեւելեան կողմէն՝ Արարատ, եւ հարաւային արեւմտեան կողմէն՝ Տաւրոսի շղթային արեւելեան ծայրն ։ Այս լեռնադաշտէն ըսող ջրոց մէջ տեղ բաժանման վայր մը կամ կէտ մը կայ, որոյ կեդրոնն է Կարին քաղաքն ։ Այդ կէտէն Եփրատ եւ Տիգրիս գետերը կը սկսին եւ ապա կ'երթան կը թափին Պարսկային ծովածոցը, Ե-

րասխ եւ Կուր՝ Կասպից ծովը, Ճորոխն եւ Գըզըլ ու Եէշիլ ըրմաքներն՝ Սեւ ծովը ։ Ջրոց այդ բաժանման կէտին տէր եղողն իրօք Ասիոյ բոլոր արեւմտեան մասին կ'իշխէ ։ Բաւական է գետոց ընթացքին հետեւիլ՝ Միջագետք, Վրաստան կամ Պարսկաստան իջնելու համար ։

Կարին այս դրից պատճառաւ իւր ստացած մեծ կարեւորութեամբն ամեն պատերազմի մէջ գլխաւոր առարկայն եղած է ռուսական գործողութեանց ։ Եւ որովհետեւ Զարին իշխանութեան ներքեւ գտնուող տեղեաց եւ այդ քաղաքին մէջ եղած երկիրն շատ ելեւէջներ եւ խիստ քիչ ճանապարհներ ունի, ասկէց կը հետեւի թէ արշաւող բանակներուն ամենքն ալ պարտաւորեալ են միեւնոյն ճանապարհներէն երթալ, եւ իրենցմէ առաջ այն տեղուանքը քալող բանակներուն յատակագծին հետեւիլ ։ Տեսնեմք որոնք են այս ճանապարհներն ։

Բազմաթիւ աշխարհացոյցներու եւ մինչեւ անգամ այս մասին հեղինակութիւն ունեցող Քիփէրթի աշխարհացոյց տախտակներուն վրայ՝ ճանապարհ մը դծուած կը գտնուի Լազերուն բնակած ծովահայեաց երկրին երկայնութեանը՝ Պաթումէն մինչեւ Տրապիզոն ծովուն մօտէն ։ Ճշմարտութիւնը կը պահանջէ ըսել որ սոսկ աշխարհագրական ցնորք մ'է այս ։ Ցիշեալ երկիրը Ճէնքէլիսթան կը կոչուի, որ Պարսկերէն անտառային երկիր ըսել է. Օփ ալ կը յորջորջի Ովփիսի անուամբն, զոր կուտային հինք այն տեղերուն . բայց Տաճիկներն որ հմտութեամբ պարծենալու մոլութիւնը չունին, պարզապէս կ'ըսեն թէ այն անունն ո՛-ֆ բացադանչութենէն յառաջ եկած է, զոր ճանապարհորդք ամեն օր կ'արձակեն ճանապարհին նեղութեանց պատճառաւ ։ Այս հետաքրքրական ստուգաբանութիւնը բաւական կը հասկցնէ թէ Լազիստանի շաւիղներն աւելի այծերու քան թէ մարդոց համար են, եւ ճիշդ է այս ։ Ծովեզերքը շատ տեղ սեպաձեւ է եւ ուղխինահոս վտակներն որք ծովը կը թափին՝ խոր ձորեր կը ձեւացնեն անդ, որոց շատին միջեւ բնաւ հաղորդակցութիւն չկայ ։ Այսպիսի բաւղի մը մէջ սակաւ ինչ մեծ գունդ մը յառաջացնելն՝ խիստ յիմարական գործ է ։

Ասոր փոխարէն՝ այն երկիրը կարծես թէ նմանութիւն մը պահած է դրախտին, զոր աւանդութիւնն այն տեղեաց մօտերը կը դնէ. ծառաստան մ'է այն գրեթէ, ուր պրակագեղ կ'ուռճանան ընկուզիք, թըզենիք, շագանակենիք, խնձորենիք, ծիրանիք, դեղձք, նարնջենիք, կիտրոնիք, միով բանիւ՝ բարեխառն երկիրներու ամեն պտղաբեր ծառեր, որք միմեանց հետ կը շաղապատին՝ ամեն ուրեք իւր խիղբերը տարածող վայրի որթին գրասանդներովը ։ Բայց որչափ ալ գեղեցիկ լինի այն երկիրն, դարձեալ կ'ըսեմք թէ բոլորովին անյարմար է զինուորական գործողութեանց, եւ Պաթումի դէմ յառաջացող գունդն գրեթէ անել ճանապարհի մէջ կը գործէ ։ Ճորոխի հովիտն՝ որոյ ընդարձակ տարածութիւնն առջի բերան այնպէս կարծել կուտայ թէ յարձակում ընելու համար յարմար ճանապարհ մ'ունի, անանցանելի է սակայն բանակի մը համար ։ Սահմանագլուխները ձեւացնող լերինք՝ որ 2,500 կամ 3,000 մէթր բարձրութիւն ունին եւ մեծ մասամբ ծածկեալ են եղեւիններով եւ ուրիշ ծառերով, դիւրամատչելի չեն, եւ դժուարակոխ շաւիղներ եւեթ կան անդ, յորս ձիւնը յունիս ամսոյ մէջ միայն կը հալի բոլորովին ։ Այս լեռներն անցնելէ յետոյ՝ Տիտի-Աճարիի չքեղ հովիտները կ'երեւին, յորս տեղ տեղ բաւական լաւ ճանապարհներ կան, բայց միայն Ռուսք կը ճանաչեն ճշդիւ այն տեղերն եւ անոնց արտաքին ձեւակերպութիւնն. Ռուսաց նորանոր խուզարկութեանց ծանօթ եղած մասերը կը յայտնեն թէ այն տեղեաց մէջ անցուկ կիրճեր եւ դէշ կածաններ միայն կան ։ Ճորոխի հովտին ներսերը բնաւ անցանելի ճանապարհ մը չկայ. այս գետը մինչեւ Արդուինն նաւարկելի է . Արդուինէն վեր մինչեւ

Բաբերդ կամ Գայլուրթ բերրի երկրի մը մէջէն կ'անցնի որոյ օդը վնասակար է ճահիճներու պատճառաւ ։ Բաբերդէն վեր երկիրն առապար է եւ բանակաց համար բոլորովին անմատոյց ։

Այսպէս՝ Տաճկա-ռուսական սահմանագլուխն երեք մասի բաժնելով, հիւսիսային մասին վրայ զինուորական մեծ գործողութիւն մը անկարելի է. նոյնը պիտի ըսեմք նաեւ հարաւային մասին համար, որ Արարատ լեռնէն սկսեալ մինչեւ Անւոյ աւերակները կը տարածուի, որ ժամանակաւ Բագրատունի Թագաւորաց բնակութեան տեղին էր, Ալէքսանտրոփոլէն քիչ հեռի՝ դէպ ի հարաւակողմը. բայց այս մասն այնքան դժուարին չէ զինուորական գործողութեանց համար։ Դաւրէժէն Կարնոյ ճանապարհաւ Կոստանդնուպօլիս տանող մեծ արահետն որ ժամանակաւ խիստ լաւ էր՝ Արարատ լերան ստորոտէն շրջան մը կ'ընէ իրօք, բայց մեծ դժուարութիւններ ունի լերանց շղթային մէջ եղած անցքն, ուրկէ անպատճառ հարկ է անցնիլ, եթէ ուղղակի Երեւանէն Պայազիտ երթալ եւ այն ճանապարհին վրայ ելնել ուզուի, Ասկէ զատ՝ Դաւրէժէն Կոստանդնուպօլիս տանող ճանապարհն բազմաթիւ խոչընդոտներ ունի զորս առիթ պիտի ունենամք քննելու՝ երբ Տէր Ղուկասով զօրապետին գնդին յամրաբար յառաջ խաղալուն վրայ խօսիմք։ Վերջապէս այս գիծը կեդրոնէն շատ հեռի կը գտնուի. ուստի բանակի մ'արշաւանաց համար չկրնար բաւական ընդարձակ խարիսխ մը լինել ։ Ալէքսանտրոփոլէն Կարս եւ անտի ի Կարին տանող ճանապարհաց վրայ լինելիք գործողութեանց յատկացեալ գլխաւոր գնդին ձախ կողմը յարձակումներէ զերծ պահելէ՝ եւ Վանայ լճին շրջակայ լերանց մէջ բնակող Քիւրտերը զսպելէ զատ ուրիշ պաշտօն չկրնար ունենալ այդ հարաւային կէտին վրայ գործող ջոկատն ։

Բարձր Հայոց մէջ մտնելու համար սահմանագլխոց միջին մասը միայն կը մնայ մեծ բանակի մը, այն՝ որ Կուր գետոյն հովտին եւ Անի քաղաքին մէջ տեղն է ։ Այս կողմանց միւս հովիտներուն պէս այս հովտին մէջ ալ դիւրամատչելի ճանապարհ չկայ, միայն ջրվէժներ, գահաւանդներ (ուչուրում) եւ քարափունք կը տեսնուին, եւ հաղորդակցութեանց համար աւելի խոչընդոտներ կը գտնուին քան թէ դիւրութիւններ ։ Բայց Կուր գետոյն ուղղահայեաց ճանապարհ մը կայ որ Ախալցխէէն (Ախլցխա) Արտահան կ'երթայ, եւ Արտահանի մէջ երկու ճիւղ կը բաժնուի, որոց մին դէպ ի Կարս եւ միւսն Օլթիի ճանապարհաւ դէպ ի Կարին կը տանի ։ Ախալցխէէն սկսեալ ճանապարհն օձապտոյտ շրջաններ կ'ընէ ալեձեւ, անտառախիտ եւ վախուտ (ուչուրումլու) ըլուրներու մէջ տեղէն, յորս ձիւնն ընդհանրապէս մինչեւ յունիս ամսոյ կէսը կը մնայ։ Տէվէլ զօրապետին գունդը մեծ նեղութիւններ կրեց անդ։ Արտահանի ճանապարհին կէս եղած տեղն՝ Ըլկարի կիրճն խիստ սեպացեալ զառիվեր մ'ունի, որոյ դժուարութիւնները կ'առաւելուն գետնին կաւային լինելովն. դէպ ի Արտահան իջնող զառիվայրն աւելի դիւրութիւններ ունի, եւ բերրի ու մշակեալ է այն սարահարթն ուր այս քաղաքը շինուած է ։

Սակայն՝ Կարնոյ վրայ ուժգին յարձակում մ'ընելու համար, Արտահան չկրնար գործողութեանց խարիսխ լինել, որովհետեւ Օլթի եւ անտի Կարին տանող ճանապարհն երեք անգամ Կուր գետէն կ'անցնի եւ բազում ելեւէջներ ունի խորաձոր եւ առապարին կիրճից մէջ, ուրկէ խիստ դժուար է թնդանօթ անցընել եւ ուր բանակ մը չկրնար արձակ շարժմունք ընել ։ Հայաստանի բովանդակ այս մասն Ալպեան լերանց նման վեհ տեսիլ մ'ունի իւր ահեղ ապառաժներովն, ամրոցաց աւերակներովն եւ փրփրադէզ ջրվէժներովն։ Ընդհակառակն՝ Արտահանէն Կարս տանող ուղին այս կողմի լաւագոյն ճանապարհաց մին է, եւ պիտի տեսնուի յետոյ թէ Լօ-

ռիս Մէլիքօվ, ինչպէս կրցած է այն ճանապարհին միջոցաւ Արտահանի տիրել ։

Արտահանէն եւ Պայազիտէն ի Կարին տանող երկու ճանապարհներն՝ մեծ բանակի մ'անցքին իբր անյարմար ի բաց թողլով, Ալէքսանտրոփօլէն ի Կարս եւ անտի ի Կարին տանող ճանապարհը միայն կը մնայ այժմ զննել, որ ուժգին յարձակում մ'ընելու համար արդարեւ յարմարութիւն ունի։ Ախալցխէ՝ որ Արտահանի դէմ գործելու սահմանեալ գնդին սկզբնակէտն է, ծովուն երեսէն 1,030 մէթր միայն բարձրութիւն ունի, եւ Երեւան՝ որ Պայազիտի վրայ քալող գնդին սկզբնակէտն է, 930 մէթր միայն, իսկ Ալէքսանտրոփօլ 1,550 մէթր բարձրութիւն ունի ծովուն երեսէն եւ Հայաստանի բարձր լեռնադաշտին վրայ շինուած է, այնպէս որ անկէ մեկնող գունդ մը 300 մէթրէն աւելի վեր չպիտի ելնէ ։ Ուստի յարձակողական դրից յարմար եւ ամենէն աւելի զօրաւոր կէտն աստ է։ Այս առաւելութեանց զատ ճանապարհը խիստ լաւ է, ոչ լերանց կիրճեր եւ ոչ գետերու անցք կան՝ որ իրենց դժուարութեամբքն արգելուն դաշտային թնդանօթաց եւ մինչեւ անգամ պաշարման թնդանօթաց փոխադրութիւնը, եւ չորս օր բաւական է բանակի մը՝ Կարսի պարսպաց առջեւ հասնելու համար ։

Կլիմայէն յառաջ եկած դժուարութիւններէն զատ ուրիշ խոչընդոտներ չկան այս ճանապարհին վրայ։ 1828ին մինչդեռ պատերազմն արդէն Փրութի մօտ ապրիլ 25ին սկսած էր, ասիական բանակը ձեան կոյտերէ արգելեալ չկրցաւ Ախուրեան (Արփա-չայ) գետակն անցնիլ յունիսի 14էն առաջ։ 1877ին օդը Դանուբի վրայ խիստ հակառակ էր Ռուսաց, բայց Ասիոյ մէջ ընդհակառակն նպաստեց եւ կարելի եղաւ պատերազմն սկսիլ անդ վեց շաբաթ առաջ։

Կարսի բերրի եւ լաւ մշակեալ դաշտին վրայ գարունն ապրիլ ամսոյ մէջ կ'սկսի ։ 1829ին մայիս ամսոյն վերջերը՝ Ռուսք մեծ նեղութիւն քաշեցին ձիւներուն, հեղեղասաստ անձրեւներուն եւ փոթորիկներուն պատճառաւ, եւ պատերազմը յուլիս 2ին միայն սկսաւ։ 1877ի մայիս 19ին՝ տակաւին ձեամբ ծածկուած էր Սօղանլը լեռն, ուրկէ կանցնի Կարնոյ ճանապարհն, եւ այս քաղաքին շուրջն եղած լեռնային ուղիներն յուլիսի մէջ միայն կը բացուին բոլորովին ։

Ամառը խիստ տաք կը լինի եւ յուլիս ամսէն մինչեւ սեպտեմբեր ամիսը կը տեւէ. աշունը բռնաշունչ փոթորիկներ կը բերէ, ձմեռը շուտ կը հասնի եւ ամենասաստիկ կը լինի։ 1828ին Ռուսք Կարսն, Արտահանն եւ այն ժամանակ Տաճկաց ձեռքն եղող Ախալցխէն գրաւելէ եւ Տաճիկները մինչեւ Սօղանլը—տաղին միւս կողմը վանելէ յետոյ, չկրցան աւելի յառաջ տանիլ իրենց յաջողութիւններն . Նոյեմբերի սկիզբները ստիպուեցան ձմեռնային զօրանիստները մտնել, որք զուարճալի չեն՝ Բարձր Հայոց մէջ ·

Կարսէն անդին ճանապարհն երկուքի կը բաժնուի Պէնքլի-Ահմէտի մէջ . այս երկու ճանապարհներն որ իրարմէ շատ հեռի չեն՝ գրեթէ զուգահեռական կերպիւ կ'անցնին Սօղանլը-տաղի երկայնութեանն , որոյ կատարն 2,856 մէթր բարձր է ծովուն երեսէն, եւ Քէօփրիւ-քէօյիւ մօտ իրարու կը կցին Բասենու դաշտէն քիչ մը հեռի ։ Եէնի-քէօյէն եւ Քըզըլ-քիլիսէէն անցնող հիւսիսային ճանապարհը քսան երկու ժամ կը տեւէ, եւ հարաւային ճանապարհն որ Մժնկերտէն ( ըստ Տաճկաց՝ Մէշինկէրտ ) կ'անցնի՝ տասն եւ ութ ժամ։ Այս վերջինն երկու քովը ժայռերով փակեալ ճանապարհ մ'է որ խորաձոր կիրճի մը մէջէն կ'անցնի, եւ կիրճն շրջապատեալ է ձեան կոյտերով որք օգոստոս ամսոյ մէջ միայն կը հալին ։ Ջրերու յատակը ծածկող ճահիճներն եւ ճանապարհն նեղցնող ծառերն եւ ժայռերն են որ սեպացեալ զառ ի թափներէն աւելի արգելք կը լինին այս կրկին անձից վրայ ։ Սօղանլը-տաղն անց-

նելէ յետոյ՝ խոչընդոտ մը չմնար. ճանապարհն Հասան-ղալէէն եւ Տէվէ-պօյնուի դիւրամատչելի կիրճէն անցնելով՝ կ՚երթայ մինչեւ Կարին։

Խօսքերնիս համառօտելու համար ըսենք որ Տաճկական-Հայաստանի ճանապարհները՝ բացուած հովահարի (եէլփազէ) մը ճիւղերուն կը նմանին, որոց ամենուն միացած տեղն է Կարին։ Մէն մի ճանապարհի վրայ ամրոց մը կայ ռուսական սահմանագլխոց դիմաց. Արտահան՝ հիւսիսային, Կարս՝ միջին, եւ Պայազիտ՝ հարաւային ճանապարհներուն վրայ։ Այս բերդաքաղաքները գրաւել կամ գոնէ գնդով մը պաշարել, զանոնք պաշտպանող տաճկական բանակին յաղթել, զօրութեանց մեծագոյն մասը Կարսի ճանապարհին վրայ բերել եւ Կարնոյ վրայ քալել, ահաւասիկ պարզ յատակագիծ մը զոր Ռուսք ամեն անգամ կը պարտաւորին ընդունել ի հարկէ բանադատել։

Նախորդ պատերազմաց պատմութիւններէն կը տեսնենք որ այս գործողութեանց ընթացքն միշտ միեւնոյնն եղած է. Ալէքսանտրոփօլէն Կարս եւ անկէ Կարին տանող մեծ ճանապարհէն գլխաւոր բանակը կը քալէ, անջատ գնդեր Պայազիտի եւ Արտահանի դէմ կը գործեն, եւ երկրորդական ջոկատներ Ռիոնի հովտին մէջ կը գումարին՝ առաւել Տաճկաց արշաւանաց դէմ դնելու նպատակաւ քան թէ յարձակում ընելու։

Ինչպէս պիտի տեսնուի, ներկայ պատերազմին մէջ եւս ճիշդ միեւնոյն յատակագծին հետեւութիւն եղած է.

# Գլուխ Չորեքտասաներորդ

## ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ ՅԱՍԻԱ ՄԻՆՉԵՒ ԿԱՐՍԻ ՊԱՇԱՐՈՒՄԸ

### ՌՄԲԱԿՈԾՈՒԹԻՒՆ ԾՈՎԵԶԵՐԱՑ

Ասիոյ կողմն առաջին անգամ Տաճկաց թնդանօթներն որոտացին։ Ապրիլ 24 ին զրահաւոր նաւեր Նիքօլայա կամ Սուրբ Նիկողայոսի (Տաճկերէն՝ Շէվքէթիլ) ամրոցին դիմացն երեւցան, զոր Ռուսք սահմանագլխէն քիչ մը հեռի բարձրացուցած են ծովուն եզերքը. այս նաւերն սկսան ամրոցը ռմբակոծել առանց դիմադրութեան մը հանդիպելու։ Հետեւակազօրաց մէկ վաշտ միայն կար անդ, որոյ ունեցած ութ հատ հին տեսակ գնդընկէցներն չէին կրնար մրցիլ զրահաւոր նաւաց կատարելագործեալ թնդանօթներուն հետ։ Զինուորները դարանափորներուն մէջ քաշուեցան եւ թոյլ տուին Տաճկաց որ ուզածնին ընեն. սոքա եւս այն օրն 150 անգամ թնդանօթ պարպեցին։ Մէկ քանի հրձիգ փամփուշտներ եւս արձակեցին, բայց ուր որ հրդեհը ծայր տուաւ, պահակներն մարեցին շուտով, վասն զի ուրիշ գործ չունէին ընելու՝ այլ միայն նայիլ որ այն փամփուշտներն արդիւնք մը չունենան։ Սակայն ասոր համար մարդիկն երեւան ելնելու ստիպեալ լինելով, իրենցմէ ստորին աստիճանի երկու սպայ եւ երեսնի չափ զինուորք սպաննուեցան կամ վիրաւորեցան։

Տաճկաց զրահաւորներն հետեւեալ օրն եւս երեսնի չափ ռումբ արձակեցին, եւ ապրիլ 28ին ամրոցին եւ շրջակայից վրայ անձրեւի պէս ռումբ տեղացին։ Եթէ հարուածներուն շատն ի դերեւ չելնէր, պատուարներէն քար քարի վրայ չպիտի մնար.

այսու հանդերձ՝ որմերն այնպէս սարսեցան եւ խախտեցան որ պահակազօրքը հեռագրաւ թոյլտուութիւն խնդրեց ամրոցը պարպելու։ Հրաման եկաւ որ անպատճառ անդ մնան, բայց ո՛ գիտէ ինչ պատճառաւ օսմ. զրահաւորներն ամրոցին առջեւէն հեռանալով, պահակազօրքը մահուանէ ազատեցան ։

Տաճկաց նաւախումբն՝ այս աննշան եւ խեղճ ամրոցին դէմ գրաւած ժամանակ, ծովեզերեայ կարեւոր բերդաքաղաք մ'եւս կը ռմբակոծէր, այն է Փոթի, որ Շէվքէթիլի հիւսիսային կողմն՝ Տփղիս տանող երկաթուղւոյ գծին գլուխն է Սեւ ծովուն վրայ ։

Փոթի Անդրկովկասեան գաւառաց նաւահանգիստն լինելով հանդերձ՝ իւր այս անուանն արժանաւոր տեսիլ մը չունի ։ Տասն եւ հինգ տարի առաջ քան խրճիթէ բաղկացեալ գիւղակ մ'էր. այսօր 3,000 բնակիչ ունի ։

Փոթիի վրայ պատմութիւն մը կայ զոր Տաճիկները կը սիրեն յեղյեղել. սոյն պատմութեան նայելով՝ անոր այսպիսի անակընկալ բաղդի մը հանդիպելուն եւ քաղաք մը լինելուն պատճառն է եղեր այն մէկ սխալն զոր 1828-1829ի պատերազմէն յետոյ Էտրնէի մէջ կնքեալ դաշնագիրն ընդօրինակողները գործեցին։ Երկու կայսրութեանց նոր սահմանագիծը պիտի լինէր Ճորոխ (Չօրուգ կամ Չարուխ) մեծ գետն՝ որ Պաթումի հարաւային կողմէն ծովը կը թափի. սոյն պայմանաւ Ռուսք այդ նաւահանգիստը պիտի ստանային, որ լաւագոյններէն մին է Սեւ ծովուն մէջ ։ Ընդօրինակողներն՝ փոխանակ ր տառին լ դրին, եւ մէկ գրչասխալով ռուսական սահմանագլուխն ըրին Չօլուգ գետակն, որ Պաթումի հիւսիսային կողմն եւ անկէ չորս փարսախ հեռի ծովը կը թափի, սոյն քաղաքին եւ Փոթիի մէջ տեղէն ։ Պաթում այս կերպիւ Տաճկաստանի ձեռքը մնացեր է։ Ռուսք այն կողմի գաւառները մտնելու համար ստիպուեր են՝ կարելի եղածին չափ նուազ ծախիւք՝ դարման տանիլ Փոթիի դրից մեծամեծ անտեղութեանցը, եւ այսպէս կովկասեան երկաթուղւոյ գծին գլուխն եղած էր Փոթի ։

Ինչեւիցէ, Ռուսաց վարչութիւնը քաղաքին մէջ տեղը գտնուող մթերանոցները լցուցեր էր մեծաքանակ պաշարօք եւ ռազմամթերօք՝ Պաթումի վրայ քալելու սահմանեալ գնդին համար ։ Ուստի Նիքոլայա կամ Շէվքէթիլ ամրոցին ռմբակոծութենէն շատ աւելի տագնապ կը պատճառէր Փոթիի ռմբակոծութիւնը ։

Պատերազմբացուելէն մէկ քանի օր առաջ՝ ընդհանուր հրամանատարին մէկ յայտարարութիւնը կը ծանուցանէր թէ անկարելի է Փոթիի նաւահանգստին մերձենալ ծովուն մէջ երկու շարք չքթանկներ զետեղեալ լինելուն, եւ հասարակութիւնը կը յորդորէր որ բնաւ երկիւղ մը չունենայ թէ կենաց եւ թէ ստացուածոցն համար ։ Այսու ամենայնիւ Տաճկաց նաւախումբը կրցաւ բաւական մօտենալ՝ քաղաքին մեծ վնաս պատճառելու չափ, որովհետեւ Լազ լուզորդներն վերցուցեր էին այն չքթանկներն որ նաւերը պիտի արգելուին ։ Այս քաջ մարդիկն՝ բոլոր մոլեռանդ արեւելեանց պէս կեանքն արհամարհելով, նաեւ ի մատաղ տիոց ծովու վարժուած եւ լողալու մէջ խիստ ճարտար լինելով սոյն կողմի բոլոր մարդոց պէս, չէին վարաներ երթալու այն տեղերն ուր կը կարծուէր թէ չքթանկներ կային ։ Երկու մարդ կը նստէր տեսակ մը թեթեւ նաւակի մէջ, իւրաքանչիւրն իւր ձեռքը թիակ մ'ունենալով. մին՝ ծովուն յատակը կ'իջնէր եւ կը զննէր, աւերիչ գործիքը բռնող պարանները կամ ելեկտրականութիւնն հաղորդող թելը գտնելուն պէս՝ նախ պարանը կը կտրէր, յետոյ իւր ընկերոջը քով գալով, երկուքը մէկտեղ կը քաշէին մեղմով չքթանկը նաւակին ետեւէն եւ մինչեւ ծովեզրը կը տանէին ։ Նաւակը խիստ թեթեւ լինելով ջրին վրայ, շատ վախ չկար թէ չքթանկը կը պայթի . այն մարդիկն իրենց ձեռօք

գտնուած եւ ջրէն հանուած խուրջանչիւր չքթակի համար՝ տասն օսմանեան ոսկի վարձք կ'ընդունէին, նաեւ անոր արժէքին կիսուն չափ դրամ։ Այսպէս Փոթիի առջեւ զետեղեալ չքթակներն մէկ երկու աւուր մէջ վերցուեցան։ Քաղաքն անդադար ռմբակոծուեցաւ ապրիլ 27 էն մինչեւ մայիս 3։ Պաշտօնական լրերն աննշան վնասներ միայն ծանուցին, բայց ականատես վկայից ըսածին նայելով, բաւական ծանր վնաս եղաւ. բազմաթիւ հասարակային շէնքեր եւ մասնաւորաց տներ հրդեհեցան, եւ եթէ ռմբակոծութիւնը շարունակուէր, կրնար Ռիոնի բանակին գործողութիւնները վտանգել. բայց Շէվքէթիլի առջեւ ինչ որ եղաւ՝ նոյնն եղաւ նաեւ Փոթիի դիմաց. օրին մէկն առաւօտուն քաղաքացիք՝ երբ քներնուն ելան, տեսան որ նաւախումբն աներեւոյթ եղեր էր։

Հաւանական է թէ Տաճիկներն արդէն կը խորհէին սոյն ձեռնարկութեան վրայ՝ զոր պիտի ընէին Սօխում-գալէի դէմ եւ որոյ վրայ յատուկ գլխոյ մը մէջ պիտի խօսիմք, եւ հաւանական է թէ իրենց նաւային զօրութիւնքը կը հաւաքէին այս նպատակաւ։



## ՌՈՒՍԱԿԱՆ ԲԱՆԱԿՆ ԶՈՐՍ ԳՈՐԾՈՂ ԳՆԴԵՐՈՒ ԲԱԺՆՈՒԱԾ. ՃԱՐՏԱՐՈՒԹԻՒՆ ԼՈՌԻՍ ՄԷԼԻՔՈՎ ԶՕՐԱՊԵՏԻ

Եթէ Ասիոյ կողմը պատերազմն հետաքրքրական կը լինէր, ոչ թէ ծովափանց վրայ տաճկական նաւատորմին ըրած ապարդիւն ձեռնարկութիւններէն էր, այլ միմիայն այն բանակին գործողութիւններէն՝ զոր Ռուսք ձմեռուան մէջ բազում ջանիւք համախմբած էին, մանաւանդ որ մինչեւ այն ժամանակ Հայաստան մտած բանակներէն շատ աւելի ստուար էր այն։

Նախորդ պատերազմաց ժամանակ Ասիոյ մէջ գործողութիւնք երկրորդական կարեւորութիւն մը միայն ունէին. կռիւը գլխաւորապէս Դանուբի վրայ կը լինէր մեծ ջանիւք. Այս անգամ Ռուսք՝ կամ աշխարհակալութեան գաղտնի խորհուրդ մ'ունենալով եւ կամ ուրիշ անիմանալի պատճառաւ մը, Ասիոյ մէջ այնքան ահեղ զօրութիւն խմբեցին եւ պատերազմն այնքան արագութեամբ մղեցին՝ որ կարծես թէ սոյն կռուոյն մէջ իրենց առաջադրած նպատակն աւելի Ասիոյ կողմն էր քան թէ Եւրոպայի։

Իրենց գործող բանակին թիւն 180,000 ի մօտ հաշիւ ըրած եմք. Նախընթաց գլխոյ մը մէջ յառաջ բերուած ռազմագիտական պատճառներով՝ ռուսական զօրքն չորս գնդերու բաժնուեցաւ, որոց վրայ մանրամասն տեղեկութիւնք հրատարակուած չեն, բայց անոնց զօրութեանց մերձաւորագոյն թիւերն հետեւեալներն են.

Գունդ Ռիոնի, 30,000 մարդ, զօրապետ Օխլօպժիօ։

Գունդ Ախալցխէի, 35,000 մարդ, զօրապետ Տէվէլ։

Գունդ Երեւանայ, 40,000 մարդ, զօրապետ Տէր Ղուկասով։

Գունդ Ալէքսանտրոփոլի, 60,000 մարդ, զօրապետ Լօռիս Մէլիքով։

Այս զօրութեանց դէմ Տաճիկները 40,000 մարդ ունէին, 430 հազարամէթր երկայնութեամբ սահմանագլխոց վրայ ցրուեալ, Պաթում, Արտահան, Կարս, Կաղզուան եւ Պայազիտ բերդաքաղաքաց մէջ, նաեւ 30,000 զինուորէ բաղկացեալ պահեստի բանակ մը Կարնոյ մէջ։ Տաճկաց զինուորական վարչութիւնը չկրցաւ գուշակել թէ թշնամին որչափ կարեւոր զօրութեամբ պիտի յարձակի, եւ երբ առաջին գործողութիւններէն յայտնի եղաւ արշաւող բանակին ինչ զօրութիւն ունենալը, այն ժամանակ եւս չկրցաւ իր առաջին սխալն ուղղել։ Ընդհանուր հրամանատար Մուխթար փաշա առանց դրամի եւ օգնութեան մնաց, ըստ իր կամաց գործելէ զատ միջոց չունենալով, եւ այս կերպիւ՝ խիստ շատ անգամ ցաւալի տա-

տամսութիւններէ զատ ուրիշ բան ցոյց չտուաւ ։

Ռուսական չորս գնդերուն գերագոյն վարչութիւնը Միքայէլ մեծ դքսին ձեռքն էր, բայց Լօռիս Մէլիքօվ զօրապետն էր իրօք ընդհանուր հրամանատար, որոյ այս պաշտօնին հասնիլն շատերուն նախանձը շարժած էր ռուսական բանակին մէջ։ Եթէ երիցագոյն եղողին նայուէր, ստուգիւ շատ զօրապետներ անկէ աւելի իրաւունք ունէին այդ պատիւն ստանալու. բայց կայսրն՝ աւելի անձնական արժանեաց նայելով ըրած էր իւր ընտրութիւնն։

Լօռիս Մէլիքօվ զօրապետն Հայ է, եւ երկրին վաղեմի փոքր իշխանաց միոյն սերընդէն է, ինչպէս իւր անունն եւս ցոյց կուտայ։ Լօռիս Տփղիսու կուսակալութեան մէկ գաւառն է. Մէլիք կամ Մէլէք պարսկերէնի եւ արաբերէնի մէջ իշխան կամ թագաւոր ըսել է, եւ հայերէնի մէջ եւս կը գործածուի. օֆ կամ ով, ինչպէս որ ուզուի ուղղագրել, վերջաւորութիւն մ'է, զոր օտարականք իրենց անուան կը կցեն ռուսական ձեւ մը տալ ուզելով։ Լօռիս Մէլիքօվ 53 տարեկան է։ Կովկասու նախկին պատերազմաց մէջ մտած ելած եւ 1855ին Կարսի պաշարման ներկայ գտնուած է իբրեւ հեծելազօրաց գումապետ։ Երբ Կարս առնուեցաւ, Մուրավիեվ զօրապետը զինքն այն քաղաքին հրամանատար անուանեց։ 15 տարի յետոյ՝ երբ Կովկասեան գաւառները վերջնապէս խաղաղեցան Միքայէլ մեծ դքսին ժամանակ, Լօռիս Մէլիքօվ զօրապետն Վլատիկովկաս զրկուեցաւ իբրեւ կառավարիչ։ Ապա առողջութիւնը դարմանելու համար թոյլտուութիւն մը ստանալով, Փարիզ գնաց եւ ժամանակ մը Վիզպատ բնակեցաւ ։ Անդ տեսնուեցաւ կայսեր հետ, եւ պատերազմի յայտարարութենէն յետոյ Վիզպատէն կանչուեցաւ՝ ասիական բանակին գլխաւոր պաշտօնն իրեն յանձնուելու համար ։

Ռուս զինուորականաց շատերն միանգամայն մէկ մէկ դիւանագէտ են, եւ այս անհրաժեշտ հարկ է ասիական պատերազմի մէջ՝ արեւելեանց վարպետութեանը դէմ խորամանկութիւն բանեցնելու եւ օգուտ քաղելու համար այն շահուց կռիւներէն, զորս ցեղերու խառնուրդն եւ փառասիրական բարձակռուութիւններն իրենց հակառակորդաց մէջ կը յարուցանեն. նաեւ ի նպաստ Ռուսիոյ ժողովրդոց համակրութիւն յառաջ բերելու միջոցները գտնելով գործադրելու համար՝ այսպէս լինել հարկ է։

Երբ կեդրոնական Ասիոյ հեռաւոր եւ ամայի երկիրներուն մէջ արշաւող խումբ մը կը յառաջանայ եւ աշխարհի քաղաքակիրթ մասին հետ արագ հաղորդակցելու միջոցներէն զուրկ կը գտնուի, հրամանատար զօրապետին պատասխանատուութիւնը տասնապատիկ կ'առաւելու, եւ հարկ կը լինի անոր ոչ միայն իբր բանակի հրամանատար յատկութիւններ ցոյց տալ յաղթելու համար, այլ նաեւ վարչութեան տեղեակ լինել, որպէս զի իւր զինուորները խնամէ, եւ իբրեւ դիւանագէտ վարուիլ՝ բնակչաց մէջ համախոհներ գտնելու եւ իւր յաղթութիւններէն օգուտ քաղելու համար։

Լօռիս Մէլիքօվ զօրապետը՝ Ռուսիոյ մէջ յառաջ եկած այս տեսակ նշանաւոր մարդոց կարգը դասուելու արժանի է ։ Ռուսերէնէ եւ գաղղիարէնէ զատ՝ հայերէն, տաճկերէն, թաթարերէն եւ պարսկերէն կը խօսի, եւ ոչ ոք անկէ աւելի տեղեակ է ասիական Տաճկաստանի գործոց ։ Եթէ Քիւրտերը եւ Գարափափաղներն աւելի Ռուսաց քան թէ Տաճկաց օժանդակելու յօժարութիւն ցոյց տուած են, այս արդիւնքն իւր վարպետութեան շնորհիւն յառաջ եկած է ։ «Սոյն նպատակին հասնելու համար խիստ ճարտար կերպիւ վարուած էր, կ'ըսէ Տփղիսու Պաշտօնական լրաբերն։ Պատերազմի յայտարարութենէ առաջ վտանգաւոր ջոկերուն ամենէն ազդուանձանց հետ բանակցութեան մտաւ։ Կարող եղաւ անոնց հաճոյանալ յորդորանօք, փաղաքշանօք, նուէրներով, եւ մանաւանդ

զիրենք իբրեւ զինուոր Զարին ծառայութեանը գործածելու եւ փոխարինութիւններ ընդունել տալու խոստմամբ։ Այս կերպիւ հնազանդեցան գրեթէ բոլոր վաչկատուն Ջոկաց գլխաւորներն եւ անոնցմար։ Նկարագեղ հագուստներով զարդարուած Քիւրտ եւ Գարափափախ ձիաւորներ իւր շուրջն ունեցող ռուսական սպայակոյտն այնպիսի տեսիլ մը կ'ընծայէ՝ որմէ աւելի տարօրինակ բան երեւակայել



ԶՕՐԱՊԵՏ ՏԷՐ ՂՈՒԿԱՍՈՎ, ՀՐԱՄԱՆԱՏԱՐ ԵՐԵՒԱՆԱՅ ԳՆԴԻՆ

մէ օժանդակ զօրք գումարուեցաւ։ Լօռիս Մէլիքով զօրապետն այն պատերազմասէր մարդոց սիրտը շահած էր բոլորովին, մասնաւոր խումբ մը կազմելու թոյլտուութիւն ընելով անոնց՝ իրեն ուղեկցելու համար։ անկարելի է։ Զօրապետն վստահութիւն ցոյց տալով կը դգուէ այն միամիտ պատերազմասէր մարդոց անձնասիրութիւնն, որք ձեռքերնուն եկածը կ'ընեն գովեստից եւ վարձուց արժանանալու համար։ »

Ընդհանուր հրամանատարն ոչ նուազ ճարտարութիւն բանեցուց Հայաստանի խաղաղասէր բնակչաց սիրտը շահելու համար։ Իւր թելադրութեամբը Միքայէլ մեծ դուքսն յայտարարութիւն մը հրատարակեց, որմէ ժողովուրդք իմացան թէ հանդարտ մնալով կրնային կատարեալ ապահովութիւն մը վայելել թէ իրենց անձանց եւ թէ ընչից համար։ Զօրաց հրաման եղած էր որ գիւղ մը մտած ժամանակնին՝ տեղացւոց լեզուաւ գրուած այն յայտարարութեան մէկ օրինակը յանձնեն գիւղին մեծին։ Անոր պիտի տրուէր նաեւ արտօնագիր մը, յորում ըսուած էր թէ գիւղին բնակիչք հպատակութիւն յանձն առած լինելով, իրաւունք ունէին ռուսական օրինաց պաշտպանութեանը դիմելու, եւ իրենց դէմ որեւիցէ թշնամական կամ կամայական վարմունք մը բռնողներն խըստիւ պիտի պատժուէին։ Այս գորովալիր զգացման աւելի զօրութիւն մը տալու համար՝ հրաման եղաւ այն գիւղերը քանդելու, որոց բնակիչքն զօրաց դէմ թշնամութիւն ընէին կամ լեռները փախչէին։

Այս առաջին տնօրէնութեան իբր հետեւութիւն՝ Լօռիս Մէլիքով զօրապետը երկրորդ տնօրէնութիւն մ'ալ ըրաւ, որ էր բնակչաց կանխիկ վճարել զօրաց պէտք եղած բոլոր բաներուն գինն. արդէն Փասքէվիչ այս դրութեան հետեւեր եւ շատ լաւ արդիւնք տեսեր էր։ Գլխաւոր հրամանատարն սահմանագլուխն անցնելէ առաջ, տեղեկութիւններ հաւաքեց նպարներուն ընթացիկ գնոցը վրայ, եւ ցուցակ մը պատրաստեց, որոյ համեմատ զինուորք պարտաւորեալ էին տեղացւոց բերած ուտելեաց գինը վճարելու։

«Որ եւ իցէ պահանջ, կ'ըսէր նաեւ Պաշտօնական Լրաբերն, սպայի մը ներկայութեամբը տեղի պիտի ունենայ, որ իր գլխաւորաց կողմանէ լիազօր արտօնութիւն առած լինելու է. ուրիշ կերպիւ եղած ամեն պահանջ գողութիւն մը համարուելով, խիստ պատիժ մը պիտի սահմանուի։ Եթէ բնակիչք իրենց ձեռքը պահուած ուտեստները վաճառել չուզեն, սպայք իշխանութիւն ունին բռնի պահանջմունք ընելու. շտեմարանները եւ նկուղները պիտի զննուին եւ ուտեստները պիտի գրաւուին, որոց գինը ժողովրդեան պիտի վճարուի սակագնոյն համեմատ։ Այս գները սահմանուած են ամենայն խղճամտութեամբ. մինչեւ իսկ կը պատահի որ բնակիչք Աղեքսանդրուպոլի վաճառանոցներուն մէջ իրենց բերքերուն փոխարէն ինչ գին որ կըստանան՝ անոր կրկինը կ'առնուն զօրաց կողմանէ պահանջ եղած ժամանակ.

«Գիւղի մը մէջ զօրաց ջոկատ մը մտնելուն պէս, բնակիչք կը փութան ծախու հանելու հաց, կաթ, պանիր եւ հաւ, միով բանիւ ինչ բան որ իրենց համար աւելորդ է եւ կ'ուզեն ձեռքէ հանել։ Զօրքն անդ բանակելուն պէս, մօտը վաճառանոց մը կը բացուի իսկոյն ուր մեծ առուտուր կը լինի։ Տաճիկները մեր դրամից հաշիւը շուտով սորված են, եւ որովհետեւ բերուածէն աւելի վաճառք կ'ուզուի միշտ, ուստի շուտով կը ծախուին այդ բաներն ի մեծ գոհունակութիւն վաճառողաց, որք ի քթթելական մեծ շահ ընելով ուրախ զուարթ իրենց տները կը դառնան։»

Շատ մեծ եղաւ այս քաղաքականութեան արդիւնքը. վասն զի երբ Ռուսք ոսկի եւ արծաթ վճարելով ծախք ընել սկսան առատաձեռնութեամբ, տեղացիք կրցան ռուսական վարչութիւնը գնահատել։ Կարնոյ կուսակալն մեծ եպարքոսին գրութիւն մ'ուղղելով, այս յառաջ եկած տպաւորութիւնը լաւ բացատրեց հետեւեալ սքանչելի խօսքովը. «Ռուսաց վարմունքը մահմետականաց հայրենասիրութիւնը կըսպանանէ։»

Վերջապէս ընդհանուր զօրապետն իւր իմաստութեան իբրեւ վերջին ապացոյց, իւր կրօնքն իսկ գործիք ըրաւ ներգործութիւն բանեցնելու համար։ Պատերազմն սկսելէն մէկ քանի օր առաջ՝ Երեւանայ մօտ Էջմիածնայ վանքը գնաց իրեն պէս

Հայ՝ քսան եւ ութ բարձրագոյն սպայից հետ, հաղորդութիւն առին անդ եւ իրենց զէնքն օրհնել տուին Հայ հասարակութեան պատկառելի գլխոյն ։ Դրան հպատակ Հայոց մէջ այս լուրն իմացուելով, աննկարագրելի խանդ մը յառաջ եկաւ։

Թշնամւոյն երկրին վրայ ռուսական զօրաց լաւ ասպնջականութիւն մը պատրաստելու համար ինչ որ մարդկօրէն կարելի էր ընել, զօրապետն ըրաւ ամենայն ճարտարութեամբ եւ իմաստութեամբ ։ Ապրիլ 24 ին Կովկասու կառավարիչ Մեծ դուքսն՝ գործող բանակին հետեւեալ յայտարարութիւնն ուղղեց .

«Սպայք, ենթասպայք եւ զինուորք Կովկասեան բանակին .

«Կայսեր վեհապետական կամքը՝ հայրենեաց շուքն եւ արժանապատուութիւնը զինու պաշտպանելու կը կոչէ զձեզ ։

«Ձեր ետեւն ունիք Կովկասեան բանակին փառաւոր անցեալն, եւ ձեր առջեւն՝ ձեր հարց եւ եղբարց արեամբ շառագունեալ դաշտեր եւ լեռներ .

Օ՜ն յառաջ՝ Աստուծով, վասն հայրենեաց եւ մեծի վեհապետին մերոյ .

«Գլխաւոր հրամանատար կովկասեան բանակին, ընդհանուր սպարապետ

ՄԻՔԱՅԷԼ»

Եւ չորս բանակագունդք սահմանագլուխն անցան ։

---

## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ ԵՐԵՒԱՆԱՅ ԳՆԴԻՆ

Պատերազմ հրատարակուած ժամանակ, Երեւանայ գունդն Իկտիրի մէջ բանակեալ էր, սահմանագլխէն 26 հազարամէթր հեռի եւ Պայազիտէն եւս գրեթէ 50 հազարամէթր, որոյ վրայ պիտի քալէր ամենէն առաջ ։

Տաճիկներն երկար ժամանակ պնդեցին թէ այս գունդն Արարատայ շղթայէն անցած չէր եւ թէ Պարսկաց երկրէն անցնելով հասեր էր Պայազիտի առջեւ ։ Սոքա մեծ սխալ մը գործեցին սահմանագլխոց նեղ անցքերը չպաշտպանելով, որմէ աւելի դիւրին բան չկար. սակայն Տաճիկ սպայք երկիրը զննելու նեղութիւնն ստանձնել չէին ուզած ։

Մեծ եւ փոքր Մասեաց մէջ տեղ գտնուած նեղ անցքէ մը զատ ուրիշ անցք չէին ճանաչեր. այս ճանապարհն եւս դժուարակոխ ժայռերու վրայէն կ'անցնի, եւ ամենէն աղէկ տեղերէն հազիւ երկու մարդ քովէ քով կրնայ քալել ։ Գետինն ամեն ուրեք ծածկեալ է՝ դարերէ ի վեր պաղած հրաբխոյ ( լավա ) կոյտերով եւ քրէական նիւթոց կղկղանօք . ուստի յոյժ դժուարատար է, եւ թնդանօթներ ունեցող խմբի մը համար բոլորովին անկարելի բան է այսպիսի ճանապարհէ մ'անցնիլ, Տաճիկներն՝ անոր այսպէս անանցանելի լինելն՝ ինչպէս նաեւ Պարսկաստանի չէզոքութիւնն հաւաստի կերպիւ գիտելով, պահակազօրաց փոքր խումբ մը ձգած էին Պայազիտի մէջ, որք պատերազմի ժամանակ պէտք եղած կերպիւ քաղաքին պարիսպները նորոգելու անգամ չհոգացան եւ կատարեալ անփութութեամբ կըսպասէին տեսնելու թէ ինչ պիտի լինի .

Ռուսք չէին ուզեր Արարատ լերան կիրճը մտնել եւ ոչ դժուարութիւններ հանել իրենց դէմ Պարսկաց երկրէն անցնելով, քանի որ պէտք մը չկար ։ Արարատ լերան արեւմտեան կողմն ուրիշ շատ աւելի դիւրանց ճանապարհ մը կար, զոր երկար ժամանակէ ի վեր պատրաստել տուած էին մասնաւոր ջոկատներ ղրկելով այս գործոյն համար ։

Տէր Ղուկասով զօրապետն՝ որ Լօռիս Մէլիքովի պէս ազգաւ Հայ է եւ Կովկասու մէջ համբաւաւոր եղած է՝ Շամիլի վերջին պատսպարանն եղող Կունիփ ամրոցին վրայ եղած յարձակման ժամանակ իւր ցոյց տուած վարմունքովն , պատերազմի յայտարարութիւնն երբ իմացաւ , իւր յառաջապահ զօրքը ճանապարհ հանեց ապրիլ 27ին դէպ ի Պայազիտ, եւ այն

գիշերը Զընկըլ լերանց մէջ անցուց: Գնդին միացեալ մասն երկու խմբի բաժնուելով՝ հետեւեալ օրն ճանապարհ ելաւ եւ նոյն օրը մինչեւ սահմանագլուխն հասաւ. աջակողմեան խումբն Գուճագի մէջ բանակեցաւ կարաւանաց ճանապարհին վրայ, եւ ձախակողմեան խումբն՝ Օրկայի կամրջին մօտ:

Այս երկու կէտերն այն կրճին բերանն են, ուրկէ բանակը Արածանւոյ (Մուրատ Սույը) հովիտը պիտի իջնէր. ապրիլ 29 ին զօրքն այդ կիրճը մտաւ: Հակառակ այն նախապատրաստական աշխատութեանց որոց վրայ վերը խօսուեցաւ, ճանապարհներն այնպէս գէշ էին՝ որ զօրքն այն օրը հազիւ տասն եւ հինգ հազարամէթր տեղ քալեց եւ թնդանօթաց ու կարասեաց փոխադրութիւնն անլուր դժուարութեանց հանդիպեցաւ: Զինուորք պարտաւորեցան անձամբ սայլերուն լծիլ եւ կամ անոնց ետեւէն հրել: Այս բաները զուարթութեամբ ըրին, որովհետեւ պատերազմի ընդհանուր ցնծութիւն մը կը պատճառէր: Դասակներուն առջեւէն Փէսէլնիքները (երգեցիկ զինուորք) կ'երգէին եւ ապա բոլոր զօրքն միաբերան ծայրայանգը կ'եղանակէր եռանդուն կերպիւ:

Տէր Ղուկասով զօրապետն անձամբ յառաջապահ զօրաց քով գնաց Զընկըլ լերանց մէջ. անդ գտաւ Ճէլալի Քիւրտերուն ջոկին գլուխը զոր Պայազիտի կառավարիչն ղրկեր էր:

Այս կառավարիչն զինուորական անձ մ'էր, բայց ո՛չ իւր հրամանատարութեան ներքեւ գտնուող զօրաց եւ ոչ Պայազիտի կիսաւեր ամրութեանց վրայ վստահութիւն ունէր. մեծաբանութեամբ Ռուսաց երկիւղ ազդել կը ջանար, եւ անոնց կ'ազդարարէր որ իւր պարտքն էր մինչեւ վերջին ինքզինքը պաշտպանել:

Տէր Ղուկասով զօրապետն, այս յայտարարութենէն յետոյ, ուրիշ տեղեկութիւններ ալ առաւ, իբր թէ Տաճիկներն հաստատ դիտաւորութիւն ունէին Պայազիտը պաշտպանելու. ուստի ապրիլ 29 էն 30 լուսնալու գիշերը, երբ յառաջապահ զօրքն Գարապուլաղ հասաւ՝ սահմանագլխէն վեց հազարամէթր հեռի Տաճկաց երկրին վրայ, Տէր Ղուկասով խումբ մը զօրք ղրկեց բերդաքաղաքին շուրջը զննելու համար:

Երեւանայ գնդին սպայակուտի գլուխ Ցիլլիփով գումարտին հրամանատարութեամբ եւ ուրիշ աւագ սպայից, թընդանօթաձիգ զօրաց տեղաչափներու (թօփօկրաֆ) գնդին ընկերակցութեամբ, Սունճայի երկրորդ գումարտակէն երկու հեծելադասակ ապրիլ 30 ին կէս գիշերն երեք ժամ անցնելով ճանապարհ ելան, որպէս զի արեւը ծագած ժամանակ քաղաքին առջեւ հասնին, որ յառաջապահ զօրաց բանակած տեղէն տասն եւ ութ հազարամէթր հեռի էր:

Արշալուսոյն՝ ջոկատն Սամսու լեռնէն դուրս ելնելով դաշտն իջաւ եւ ընդ հուպ Տաճկաց հետեւակ եւ ձիաւոր զօրաց մէկ քանի խմբակները տեսաւ. սոքա Պայազիտ բերդաքաղաքէն երեք հազարամէթր հեռի Զանկաձոր գիւղին բացը զետեղեալ էին: Ջոկատն այն տեղերը զննելով եւ պաշտպանողական ամրութիւններ չըտեսնելով, Զանկաձորի մօտեցաւ գնտակ հասնելու չափ տեղ, երբ արդէն արեւը ծագեր էր: Տաճկաց յառաջապահներն անմիջապէս, առանց հրացան արձակելու, քաշուեցան այն ապառաժուտ սարերուն ետեւ, որք Պայազիտը կը շրջապատեն Արեւմուտքէն եւ Արեւելքէն:

Ջոկատը՝ Զանկաձորը գրաւելէն յետոյ, Տաճիկ զօրաց երկու վաշտ տեսաւ թընդանօթի ռումբ մը չհասնելու չափ բացէն, որք միջնաբերդէն ելնելով լեռնային ճանապարհէ մը կ'երթային դէպ ի Ալատաղ ըսուած լեռները՝ Պայազիտի հարաւային արեւմտեան կողմը: Սոքա Պայազիտի 2,000 պահապան զինուորներն էին, որք խոյս կուտային առանց պաշտպանողական ցոյց մ'անգամ ընելու: Պայազիտի փաշան՝ Ալի Քէմալի եւս մէկ քանի շաբաթէն յե-

տոյ՝ իւր կանայքն եւ բոլոր ինչքն հետն առած, Տրապիզոն հասաւ ։ Այս յարգելի Տաճիկն այսպէս ըրեր էր, լաւ համարելով թշնամիէն մինչքան հեռի գտնուիլ որքան տարածութիւն ունէր Հայաստան ։ Երբ իրեն հարցուեցաւ թէ ինչ ըրեր էր կառավարութեան գրամարկղն, պատասխանեց թէ Ռուսաց ձեռքն անցած էր ։

Տաճիկ զօրաց մեկնելէն յետոյ, քաղաքապետական ժողովոյ անդամներն խոստացան Ռուսաց՝ երկու ժամէն քաղաքն իրենց յանձնել. բայց այդ երկու ժամը չանցած, քաղաքին ժողովուրդն իմաց տուաւ թէ հպատակութիւն յանձն կ՚առնու. եւ ծագած խռովութիւններն եւս քաղաքապետական ժողովոյ ձեռօք զսպուեցան, երբ ռուսական ջոկատին հրամանատարը՝ բարեկարգութիւնը վերահաստատելու համար խազախներ ղրկելու սպառնալիք ըրաւ ։

Տէր Ղուկասով զօրավարն՝ Ցիլիփիով գումարտակէն այս կացութեան վրայ տեղեկութիւն առնլով, Պայազիտի վրայ քալեց յառաջապահ զօրաց հետ ։ Երեւանայ դնդին գլուխն Ջանկաձոր հասնելով, Պայազիտ երեւելեաց, Հայոց եկեղեցականներուն, մահմետականաց իմամներուն եւ հասարակութեան կողմանէ ողջունեցաւ ։ Փաշային մէկ նամակն յանձնուեցաւ իրեն. Ալի Բէյմալի անոր մէջ կ՚ըսէր թէ քաղաքին բնակիչներն եւ հիւանդ զինուորականներն ռուսական զօրաց վեհանձնութեանը յանձնած էր ։ Զօրավարն այս նամակը ժողովրդեան առջեւ բարձրաձայն կարդալէն յետոյ, յայտարարեց թէ ռուսական բանակը զինեալ թշնամեաց դէմ միայն կը պատերազմէր, ուստի անպաշտպան բնակիչները սիրով պաշտպանէր ։

Ռուսք Պայազիտի մէջ 12 թնդանօթ եւ 50 հիւանդ գտան, նաեւ մեծաքանակ պաշար, գլխաւորապէս ալիւր եւ բրինձ ։ Հիւանդանոցին բժիշկն որ Տօքթօր Հօֆման անուամբ աւստրիացի մ՚էր, հիւանդաց քովէն չէր բաժնուած ։

Ռուսք ամեն բանէ առաջ փոյթ տարին պատուարները նորոգելու եւ անոնց վրայ լաւ թնդանօթներ զետեղելու, այնպէս որ քաղաքն անակնկալ յարձակմամբ առնուելու երկիւղէն զերծ գտնուեցաւ։ Հետեւեալ օրն, այն է մայիս 19ին, Տէր Ղուկասով զօրավարին ձեռամբ Քօվալէվսքի փոխգումապետն հրամանատար կարգեցաւ քաղաքին եւ միջնաբերդին, եւ յանձնարարութիւն եղաւ իրեն քաղաքապետական ժողովոյ մէջ բազմելու, վասն զի ներքին վարչութեան համար հարկ տեսնուած էր այդ ժողովը պահպանել ։ Նոյն օրը քաղաքին հրապարակին վրայ մեծ զօրահանդէս մ՚եղաւ խազախներու, որոց փողահարքն Ռուսաց ազգային երգը նուագեցին, մինչ Զարերուն երկգլխի մեծ արծիւն կառավարչին ապարանիցը վրայ կը բարձրանար ։ Այս գրաւման հանդէսը սաստիկ տպաւորութիւն մ՚ըրաւ ժողովրդեան վրայ ։

Պայազիտի գրաւման կարեւորութիւնն այն ժամանակ միայն ճշդիւ կարելի է հասկնալ, երբ քաղաքին տեղագրական դիրքը քննուի. Ռուսիոյ, օսմանեան կայսրութեան եւ Պարսկաստանի սահմանաց գծին հարաւային ծայրն Տաճկաստանի մէկ մասը կայ դէպ ի արեւելք երկայնցած ։ Մեծ եւ փոքր Մասեաց զառիթափներէն դէպ ի հարաւ հոսող ջրերն անձուկ հովտի մը մէջէն կ՚իջնեն, որոյ վերին կողմը Տաճկաստանի կը վերաբերի եւ ստորին կողմը Պարսկաստանի ։ Այս հովիտն քաղաքական եւ վարչական կապով մը միայն կցեալ է Հայաստանի, բայց աշխարհագրական տեսութեամբ բաւական բարձր կիրճ մը զայն կը բաժնէ ։

Պայազիտ որ այս հովտին մէջ կառուցեալ է եւ օսմանեան գաւառի մը գլխաւոր տեղին է, երբեմն մեծ կարեւորութիւն ունէր իբր առեւտրական կայան Պարսկաստանի եւ Հայաստանի մէջ. Հայք Դաւրէժ կ՚երթային Հնդկաստանի եւ Պարսկաստանի վաճառք գնելու եւ ապա

Խոյի եւ Ասպուռագի ճանապարհաւ Պայազիտ կը բերէին ։ Պայազիտէն այս վաճառքն յետոյ Կարին եւ Տրապիզոն կը տարուէր, ուրկէ Կոստանդնուպոլիս եւ Սեւ ծովու եզերաց քաղաքները կը ղըրկուէր։ Իրաց այս վիճակը փոխուեցաւ այլ եւ այլ պարագայից բերմամբ ։ Տաճկաստան՝ իւր մաքսային բարձր սակագինները չփոխելով, տեղի տուաւ որ Արեւելեան վաճառաց Հայաստանի մէջէն փոխադրութիւնը նուազի ։ Ռուսիա՝ ընդհակառակն մաքս չպահանջելով, յորդոր եղաւ որ բոլոր վաճառականութիւնն Երեւանայեւ Եղիսավէթփօլի ճանապարհաւ լինի։ Ասկէ զատ՝ վաճառք շատ աւելի արագ կը ղրկուին իրենց սահմանեալ տեղերը՝ Ռուսիոյ մէջէն, որովհետեւ լաւ ճանապարհ մը շինուած է Երեւանէն Տփղիս, եւ Տփղիսէն Փոթի երկաթուղի մը կայ։ Պարսկաստան շինուած գեղեցիկ օթոցներն ինչպէս նաեւ Խորասանի խոշորագոյն (գալա) գորգերն որ երբեմն Տրապիզոն կը տարուէին, այս օր այլ եւս չեն երեւիր անդ, եւ Պայազիտ իբրեւ առեւտրական կայան ունեցած արժէքը կորոյս ։

Զինուորական տեսութեամբ քիչ կարեւորութիւն ունի Ռուսիոյ դէմ եղած պատերազմի մը ժամանակ, որովհետեւ խիստ բարձր տեղ մը շինուած լինելով՝ անոր եւ Հայաստանի մնացեալ մասին մէջ յարաբերութիւնները կարելի է դիւրաւ ընդհատել ։ Սակայն Ռուսաց համար սա առաւելութիւնն ունի որ կրնայ գործողութեանց խարիսխ մը լինել Վանայ լճին շուրջը Թափառող Քիւրտերուն դէմ, եւ Երեւանայ գունդը կողմնական յարձակումներէ կը պահպանէ, ուստի Տաճիկները գէթ փորձ մ'ընելու էին զայն պաշտպանելու ։ Բայց բան մ'եւս կայ ըսելու. այլ եւ այլ ռազմագէտ անձինք կարծիք յայտնած են թէ Մուխթար փաշա՝ այնպիսի անջատ, կարկառեալ եւ վտանգաւոր դիրք մը լքանելով լաւ բան մ'ըրած է, զի արդէն շատ ընդարձակ գիծ մ'ունէր պաշտպանելու ։ Սակայն պիտի յաւելումք ըսել պարզապէս որ՝ իրողութիւններէն կը հետեւի թէ այս լքումը չկրնար իբրեւ վարպետութիւն մը համարուիլ Տաճկաց զօրապետին համար, վասն զի Պայազիտի գրաւումն անակնկալ յարձակման մ'արդիւնքն եղած կ'երեւի մեզ ։

Պայազիտ ժամանակաւ չքեղ քաղաք մ'էր եւ 50,000 բնակիչ կը պարունակէր, բայց այսօր 1,300 այր մարդ միայն ունի, որոց 800ը Թիւրք եւ 400ը Քիւրտ են եւ մէկ փոքր մասն ալ Հայ ։ Այս բնակչաց մարմնական եւ մտաւորական կարողութիւնները խիստ վատթարացեալ են. Տաճիկ զօրաց այս քաղաքը պարպելէն յետոյ, մինչեւ որ Ռուսաց զօրքն եկաւ զայն գրաւեց, անլուր անկարգութիւններ տեղի ունեցան անդ . տեղական իշխանութեանց կողմանէ լքեալ հիւանդներն կողոպտուեցան բնակչաց ձեռօք, որք ուրիշ բազմաթիւ անկարգութիւններ եւ աւարառութիւններ եւս ըրին. տէրութեան բոլոր մթերանոցներուն մէջ եղած բաները յափշտակուեցան, հասարակաց շէնքերն, փաշային ապարանքն եւ ուրիշ տներ աւարի տրուեցան ։

Տէր Ղուկասով զօրապետը՝ քաղաքը գրաւելէն յետոյ, յառաջապահ զօրքն անդ թողլով՝ իւր բանակին ստուար մասն Արծափի մէջ զետեղեց, որ Պայազիտի հիւսիսային արեւմտեան կողմն է եւ անկէ 22 հազարամէթր հեռի . աջակողմեան խումբը՝ Շինչեվ փոխ-գնդապետին հրամանատարութեան ներքեւ Միսունի եւ Քարուճի մէջ Թողուեցաւ, գլխաւոր ջոկատէն մէկ քանի հազարամէթր հեռի ։ Ցորդ անձրեւներ տեղալով եւ լերանց կիրճքն հեղեղներով ծածկուելով, Երեւանայ գնդին զօրքն շատ օր այդ տեղերը մնաց, եւ գրաւեալ երկրին վարչութիւնը կազմակերպելու փոյթ տարուեցաւ սոյն միջոցին։ Տէր-Ղուկասով զօրապետն՝ Լօռիս Մէլիքօվ զօրապետին հրահանգացն համեմատ, այս մասին ամենայն ջանք ի գործ

դրաւ. Կոմկասու երկիրն եւ բնակչաց բարքն լաւ ճանաչող եւ տեղական լեզուներէն դէթ մին գիտցող գործակալներ միայն կարգեց։ Քաղաքին շուրջը բազմաթիւ Քիւրտեր գտնուելուն համար, անոնցմէ մին գաւառին քաղաքական կառավարիչ անուանեց, այն է Ջիվլիճի օղլու (ըստ ոմանց՝ Շէվիչ օղլու) անուամբ մահմետական մը։ Այսպէս ժողովրդոց ամենալաւ ապացոյց մը կը տրուէր թէ Ռուսք կրօնական պատերազմ չէին ըներ։

Երեւանայ գունդն՝ Պայազիտի մէջ 2,000 հոգի իբր պահապան թողլով, մայիս 8ին ճանապարհ ելաւ։ Անցաւ գրեթէ ամայի տարահարթէ մը, ուր գետնի վրայ շատ տեղ սմպատակի մեծամեծ կտորներ գտնուելով, անցքը շատ դժուարաւ կը լինէր. Հասաւ Տիատինի առջեւ ուր 15 կամ 18 հազար բնակիչք կան՝ ըստ մեծի մասին Քիւրտ, եւ գրաւեց զայն առանց դիմադրութիւն մը տեսնելու։

Տիատին ռազմագիտական մեծ կարեւորութիւն ունի, որովհետեւ Վանայ լճին շրջակայ բարձր սարերէն անցնելով համանուն քաղաքը տանող հեշտագնաց ճանապարհը Տիատինէն կ՚անցնի։ Այդ ճանապարհաւ, որմէ զատ ուրիշ չկայ, Հայտէրանը Քիւրտերուն բնակած տեղերը կարելի է մտնել եւ զանոնք զսպել։ Տէր Ղուկասով զօրապետը կրցաւ անմիջապէս յօգուտ իւր՝ գործածել զայն. երբ իմացաւ որ տասն եւ հինգ հազար Տաճիկներէ, պաշը-պօզուգներէ եւ Քիւրտերէ բաղկացեալ ջոկատ մը Վանայ լճին շուրջը կը գումարուի, Պայազիտը պահպանող զօրաց վրայ յարձակելու եւ իւր գնդին հետ ունեցած հաղորդակցութիւններն ընդհատելու դիտաւորութեամբ, Ամիլօխվարով իշխանին հրամանատարութեան ներքեւ խաղախներու ստուար խումբ մը ղրկեց զանոնք ձրուելու համար։ Քիւրտերն սասանեցան սոյն խիզախ ձիաւորները տեսնելով, որ այն լեռնային ճանապարհին երկու կողմն եղած զարհուրելի զահաւանդներուն քովերէն սուրալով կ՚արշաւէին. չհամարձակեցան անոնց դիմադրելու եւ ցրուեցան. ուստի խաղախներու խումբը ստիպուեցաւ իւր տեղը դառնալ՝ առանց թշնամւոյն հետ զարնուելու։

Սակայն խաղախներուն ըրած այս արշաւանքը բարոյական ազդեցութիւն մ՚ունեցած էր։ Տաճկաց զօրքն՝ այլեւս Վանայ շուրջն համախմբուելու դիտաւորութենէ ետ կենալով, Գարա-Քիլիսէի մօտ պատնիշափակ բանակատեղի մը մէջ զետեղեալ օսմանեան եօթն վաշտերուն քով գնացին լերանց մէջէն քալելով, եւ այսպէս ռուսական զօրախմբէն առաջ անցան Արածանւոյ դաշտին մէջ։ Տէր Ղուկասով զօրապետն այս արդիւնքը տեսնելով եւ այլեւս աներկիւղ լինելով, ստուար ջոկատ մը թողուց Տիատինի մէջ Վանայ ճանապարհին վրայ հսկելու համար, եւ ինքն յառաջ խաղաց։

Երեւանայ գունդն այնուհետեւ Արածանւոյ հովտէն իջնել սկսաւ։ Ճանապարհը դիւրանց էր իւր առջեւն, թէեւ տեղ տեղ Ալպեան լերանց կրճիցը նման անձուկ վայրերէ կ՚անցնէր. այս կողմերն աւելի բերրի եւ մարդաշատ էին։ Գունդն երկու աւուր ճանապարհ առնլով, Սուրբ Յովհաննու կամ Իւչ-Քիլիսէի վանաց մօտ հասաւ. դրօշակի ներքեւ գտնուող Հայք կրցան գալ տեսնել այն վանքն զոր Սուրբն Գրիգոր՝ Լուսաւորիչն Հայաստանեայց հիմնած է յամին 312 յանուն Սրբոյն Յովհաննու Մկրտչին։ Տաճիկներն շտապաւ Իւչ-Քիլիսէէն ետ քաշուեր էին ցորենի մեծաքանակ մթերք թողլով անդ։

Ռուսք տասներկու աւուր չափ Սուրբ Յովհաննու վանաց մօտ մնացին։ Պայազիտէն 50 հազարամէթր միայն հեռի կը գտնուէին, սակայն հարկ եղաւ այդչափ ժամանակ վատնել՝ բանակին անցած դէշ ճանապարհաց եւ դժուարուտ կրճից մէջէն իրենց կազմածները փոխադրելու համար։ Տէր Ղուկասով զօրապետն այս միջոցին պաշար հաւաքեց եւ զննել տուաւ այն

տեղերը ուրկէ իր գունդը պիտի անցնէր։ Մայիս 26 ին եղած զննութենէ մը հասկցուեցաւ թէ Տաճիկներն երեք բանակատեղ ունէին Գարա-Քիլիսէի, Ալաշկերտի եւ Աղ-խանի մօտ․ ասոնց մէջ ընդ ամենը 12 վաշտ կար, այսինքն 10,000 մարդ առ առաւելն եւ սակաւաթիւ Քիւրտ ձիաւորներ։ Մուխթար փաշա իր աջ թեւը կազմելու եւ Պայազիտէն Կարին տանող ճանապարհը պահպանելու համար այսչափ զօրութիւն միայն կրցած էր գումարել անդ։ Տաճիկներն՝ իրենց տկարութիւնը զգալով, բաւական կը համարէին հետըզհետէ նահանջել, քանի որ Ռուսք կը յառաջանային։ Երեւանայ գունդն յունիս 4 ին Գարա-Քիլիսէ մտաւ այնպէս՝ ինչպէս մտած էր Պայազիտ մէջ, առանց հրացան մը պարպելու․

Գարա-Քիլիսէ հայաբնակ մեծ գիւղ մ'է, որոյ շուրջը Տաճիկները մէկ քանի ամրութիւններ շինած էին, բայց ջանք մը չըրին զանոնք պաշտպանելու․ Սորա տաճկերէն անունն որ Սեաւ Եկեղեցի ըսել է, մէջը սեւ ամպատակի կտորներէ շինուած եկեղեցի մը գտնուելուն համար տրուած է։ Գարա-Քիլիսէի աջ կողմը լերանց մէջ կիրճ մը կայ, ուրկէ կ'անցնի Շահ-եօլու (արքունի ճանապարհ) ըսուած ուղին որ Կողզուանէն անցնելով Կարս կը տանի։ Ալէքսանտրոփոլի մէկ ջոկատն Կողզուանը գրաւած լինելով, Երեւանայ գունդն իր առաջին նպատակին հասած էր, որովհետեւ գլխաւոր գնդին հետ հաղորդակցութիւն հաստատելով՝ կրնար այնուհետեւ իր շարժմունքն անոր հետ միաբանութեամբ ընել։

Արածանւոյ գեղեցիկ դաշտին բերանն է Գարա-Քիլիսէ․ յորդաբուխ աղբիւրներ եւ բազմաթիւ հեղեղներ լեռներէն կ'իջնեն եւ ամեն ուրեք կենդանութիւն կը սփռեն։ Երկիրը բերրի եւ բաւական լաւ մշակեալ է։ Տէր Ղուկասով զօրավարին ուզած տեղն էր այս, ուր կրնար Կարսի շուրջն եղած գործողութեանց արդեանց սպասել եւ լաւ կազմութիւն մը տալ իր բանակին, որ մէկ ամիսէ աւելի ժամանակ անցուցած էր 115 հազարամէթր տեղ երթալու համար Պայազիտէն մինչեւ Գարա-Քիլիսէ, թէ եւ բնական արգելքներէն զատ ուրիշ արգելք չունէր դիմացն․ ուստի Տէր Ղուկասով զօրավարն հոս մտաւ եւ ընդհուպ Ալաշկերտն եւ Ջէյտէքհանը գրաւեց․



## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ ԱԼԷՔՍԱՆՏՐՈՓՈԼԻ ԳՆԴԻՆ

Ցորմէ յետէ Ալէքսանտրոփոլ՝ կամ ըստ Տաճկաց Կիւմրի քաղաքն Էտրնէի դաշնագրով Ռուսաց ձեռքն անցած է, սոքա այնպիսի բերդաքաղաք մ'ըրած են զայն, որ կրնայ խիստ ամուր համարուիլ Եւրոպայի մէջ, եւ իբրեւ անառիկ նկատուիլ Արեւելից մէջ։ Այս քաղաքն առաջուան վրայ մեծցած է նաեւ, եւ 17,000 բնակիչ կը պարունակէ։ Կարեւորութիւն ունենալուն պատճառն իր ռազմագիտական դիրքն է, եւ ոչ թէ իր շրջակայ տեղեաց ճոխութիւնն, վասն զի դժուար է երեւակայել աւելի տխուր, ապալեր եւ անբեր երկիր մը՝ քան այն լեռնադաշտն ուր այս քաղաքը կառուցեալ է․ Տուներն Ալէքսանտրոփոլի մօտ արդէն հազուագիւտ են․ մէկ քանի հատ կայ քաղաքին մէջ, բայց վարը դաշտին մէջ բնաւ չկայ․ Քաղաքին մերձակայ բլուրի մը վրայ եղած գերեզմանատունէն ամայի հորիզոն մը միայն կը տեսնուի․ չկան տունկեր եւ հետեւաբար անասուն ալ չգտնուիր։ Ազազուն եւ անբոյս տեղեր միայն կը նշմարուին եւ աստ անդ դանդաղամած ջրոյ լճակներ․ Ալէքսանտրոփոլի ստորոտէն անցնող գետակին տրուած Արփա-չայ անունը կը նշանակէ Գարեաց գետ․ բայց այս անունն անցեալ արգասաւորութիւն մը միայն կ'ապացուցանէ, որոյ հետքն այլ եւս մնացած չէ։ Արարատայ շղթային զառիթափներուն վրայ եղած անտառներն ջնջուած լինելով, մշակութիւնն եւս ոչնչացած է․



ԴԱՐԱՆԱԿԱԼՈՒԹԻՒՆ ԽԱԶԱԽԱՑ

վտակները ժամանակաւ յորդաջուր էին, բայց այսօր նուազ ջրով կը հոսին անբեր ափանց մէջէն։ Ահա այս անապատին վրայ Ռուսիա՝ 1876-1877ի ձմեռուան մէջ, 60,000 էն աւելի մարդ գումարած եւ սնուցած էր, որք սոյն բարձանց օդոյն սաստիկ խստութիւնն արհամարհելով, քաղաքին հիւսիսակողմն եւ հարաւակողմն զետեղեալ ճամբարներու (օրտուկեահ) մէջ անցուցին այն եղանակն։ Լօռիս Մէլիքով զօրապետին բանակակեդրոնն Ալէքսանտրոփոլի մէջ էր։

Երբ Փարիզի դաշնադրութենէն յետոյ Ռուսաց եւ Տաճկաց երկիրներուն մէջ սահմանագիծ մը հաստատուեցաւ, Արփա-չայն կամ Ախուրեան գետն իբր բաժանման գիծ որոշուեցաւ։ Ձախակողմեան ափունքը Ռուսիոյ տրուեցան, եւ աջակողմեան ափունքը՝ Տաճկաստանի։ Կամրջաձիգ զինուորներն ապրիլ 24ին առաւօտուն կանուխ սկսան հետեւակազօրաց եւ թնդանօթաձիգ հետիզօրաց համար երկու կամուրջ հաստատել այն հեղեղին վրայ, մին Ալէքսանտրափոլէն վար, եւ միւսն Պահատըր գիւղին մօտ։ Առաջինն շինուեցաւ եօթն ժամու մէջ, եւ երկրորդն՝ որ քառասուն մեթր միայն լայնութիւն ունէր, երկուք ու կէս ժամ չտեւած՝ աւարտեցաւ։

Արեւը ծագելու ժամանակ՝ հեծելազօրաց առաջին բոյլերն սկսան այլեւայլ տեղերէ համանգամայն անցնիլ Արփա-չայէն։ Այս ձիաւորները լրտես զօրաց գնդի մը կը վերաբերէին, Դանուբի բանակին մէջ Սքօպէլեվ զօրապետին հրամանատարութեան տակ եղած գնդին նման կազմակերպեալ, որոյ վրայ արդէն խօսած եմք։ Այս գունդն ունէր երկու հատուած, իւրաքանչիւրն 5,500 մարդէ բաղկացեալ, նաեւ 16 թնդանօթ։ Վրացի եւ Չէրքէզ կամաւորներէ եւ խազախներէ կազմեալ էր Դանուբի բանակին մէջ եղած գնդին նման։ Գիլտաուր հրամանատարն էր Չէվչէվածէ անուն մընկրէլ իշխանն, որ՝ երբեմն Շամիլի ձեռքը գերի մնացած համբաւաւոր զօրապետին որդին է։ Հեռագրաց մէջ յաճախ յիշատակեալ է այս անունը պատերազմին ժամանակ, վասն զի լրտես զօրաց գունդը խիստ կարեւոր գործ մը կը տեսնէր սոյն պատերազմին մէջ, յորում աւելի մանր կռիւներ եղան քան թէ ճակատամարտներ. ամեն օր հարկ կը լինէր անակնկալ յարձակմանց դէմ զգոյշ գտնուիլ, գիւղերուն բնակիչները զսպել, երկրին մէջ աստ անդ գտնուած պահակները զարնել, արշաւող խմբին վրայ կողմնակի յարձակումն ընող հրոսակները ցրուել, թշնամւոյն հետ արագութեան մասին մրցիլ՝ կարեւոր կէտ մը գրաւելու համար, ամեն կողմ շրջագայիլ մարդոց եւ ձիոց ուտեստը հաւաքելու համար, շարունակ յարաբերութիւնները պահպանել բանակին այլեւայլ ջոկատներուն մէջ. այս ամենը լրտես զօրաց գնդին գործն էր, եւ զարմանալի բան չէ, եթէ այսպէս բազում նպատակներու յատկացեալ լինելով՝ յաճախ լսելի ըրած է իւր քաջագործութիւնները։

Սոյն պատերազմը ցոյց տուաւ՝ Նիքօլա կայսեր ձեռօք վիշապազօրաց գումարտակներուն մէջ մուծեալ եւ Ռուսաց միայն յատուկ եղած այն գրութեան օգուտներն, որ յետոյ բոլոր հեծելազօրաց մէջ մուտ գտաւ։ Միշտ պատեհ ժամանակին պէտք եղած տեղն հասնելու մասին խիստ յամրընթաց կը նկատուի հետեւակազօրն այնպիսի պատերազմի մը մէջ ուր իրարմէ շատ հեռի կէտերու վրայ գործել հարկ է. սակայն պարագայներ կը լինին յորս հետեւակազօրն եւս պիտանի է, ինչպէս կիրճից մէջէն եւ գետերէ անցնելու, գիւղեր պաշտպանելու եւ անտառներու մէջ կռիւ ընելու համար։ Արդ ըստ կանոնագրին՝ Ռուս հեծելազօրքը հետիոտս կռուելու վարժ լինելով՝ թէ հետեւակազօր ունենալու պէտքը լրացաւ եւ թէ ժամանակին զանոնք հարկ եղած տեղը բերելու անհնարութիւնը վերցաւ. ուստի Հայաստանի մէջ խազախք իբրեւ կատարելապէս

վարժ հետեւակներ գործեցին ։ Տեղ մը հետիոտս կռուիլ պէտք եղածին պէս, իսկոյն չորս հեծելադասակներէն երեքին խազախներն ձիէն վար կ'իջնեն, արձակամարտ զօրաց պէս կը ցրուին եւ կըսկսին կրակ ընել իրենց արագաձիգ ընտիր հրահարներովը։ Ձիոց վրայ հեծեալ մնացող խազախները պատրաստ են կամ արձակամարտներուն տեսած գործի արդիւնքէն օգուտ քաղել եւ կամ նոցա օգնել եւ պաշտպանել զանոնք՝ ձի հեծնելու ժամանակ ։

Գործող գնդին ուղեկցելու թոյլտուութիւն ստացող օտարականք սքանչացան նաեւ խազախին անբաժան ընկերն եղող ձիուն խելացութեանը վրայ։ Ձին կարծես թէ իւր տիրոջը միտքը կը հասկնայ։ Եթէ թշնամին յանկարծակիի բերել պէտք լինի, խազախին կազմածներուն մէջ շշուկ հանող բան մը չգտնուիր. Թուրը կաշեայ պատեանի մը մէջ կամփոփէ եւ հրացանը՝ մորթէ պահարանի մը մէջ, ձին կարծես թէ բնածին ազդմամբ այս լռութիւնը կը հասկնայ, եւ սմբակ չունեցող կենդանւոյ մը նման առանց ձայն հանելու կը սողոսկի կ'անցնի։ Դարանամուտ լինել պէտք եղածին պէս՝ խազախը մատով ձիուն կը դպչի եւ նա խոտերուն մէջ կը պառկի եւ ժամերով անշարժ կը մնայ։ Երբեմն խազախք թշնամւոյն մօտ կարգաւ կը շարուին՝ ձիերնին պառկեցնելով մէկ գծի վրայ դէպ ի երկայնութեան, եւ այսպէս ամրութիւն մը կը կազմեն որոյ ետեւը պահուելով հրացան կը պարպեն ։

Դառնամք այժմ Աղէքսանդրոփոլի գնդին գործողութեանցը վրայ խօսելու ։

Հեծելազօրաց խմբերուն գլխաւորները Տաճկաց երկիրը մտնելնուն պէս, իրենց առած հրահանգաց համեմատ թշնամութեանց սկզբնաւորութիւնն ազդարարեցին՝ իրենց դէմ մը գտնուող պահակ զօրաց. սոցա գրեթէ ամենքն անձնատուր եղան առանց դիմադրութիւն ընելու, միայն Աղէքսանդրոփոլի հիւսիսային կողմն եւ անկէ 16 հազարամէթր հեռի Ճէլէպ-կէչիտի ըսուած տեղւոյն դիմաց՝ օսմանեան վիշապազօրք (թէ հետիոտս եւ թէ ձիով կռուող զինուոր) դիմադրութեան փորձ մը ըրին եւ խազախ մը սպաննեցին. բայց իրենք եւս՝ չորս մարդ կորուսանելով զէնքերնին վար դրին ։ Վաթանի չայի Քուրդիններ եւս Թըլինըզ գիւղին մօտ տեսնուեցան. Նիժնի-Նովկորոտի վիշապազօրաց յառաջապահ լրտեսներն ցիր ու ցան ըրին այս փոքրիկ խումբը եւ անոնցմէ երկու մարդ սպաննելով եւ մին վիրաւորելով մնացեալներն հալածեցին ։ Սոյն կռւոյն մէջ Տաճկաց կանոնաւոր հեծելազօրէն 96 մարդ եւ 6 սպայ գերի բռնուեցան լրտես զօրաց ձեռօք եւ Աղէքսանդրոփոլ ղրկուեցան ։

Երբ այս առաջին գերիներն Աղէքսանդրոփոլ հասան առաւօտեան ժամը 7 ին, այն ժամանակ միայն իմացան բնակիչք՝ թէ զինուորք ճանապարհ ելած էին։ Պահատըրի կամուրջն աւարտելուն պէս՝ Կովկասեան հատուածին ամբակաձիգ զօրաց երկու սահերն (լիվա) անկէ անցնելով՝ Կարսի ճանապարհը բռնեցին ։ Քիչ ժամանակէն Լօռիս Մէլիքով զօրապետն անձամբ հասաւ գումարման տեղին ուր համախմբեալ էր գնդին մնացեալ մասը, հանդիսաւոր կերպիւ պատարագ մատուցուեցաւ, կայսերական յայտարարութիւնը զինուորաց առջեւ կարդացուեցաւ, ինչպէս նաեւ սահմանագլուխն անցնելու հրամանագիրն, եւ բոլոր զօրախումբք սկսան յառաջ խաղալ եռանդագին աղաղակներով ։

«Արփա-չայի հովիտն, կ'ըսէ ականատես մն ապրիլ 30 թուականաւ Փօլիթիշէ Քօրըէսփօնտէնցէ ուղղեալ նամակի մը մէջ, լի էր սայլերով, թնդանօթներով, պարենի եւ ռազմամթերաց կառքերով, հետեւակազօրաց եւ հեծելազօրաց խմբերով, որք առերեւոյթ խառնաշփոթութեան մը մէջ կ'երեւէին, բայց իրօք կատարեալ բարեկարգութեամբ կը յառաջանային ։ Իւրաքանչիւր գումարտակ հետզհետէ կը շար-

մէր, տառոլջապահական արգելանին (քառանթէն) առջեւէն կ'երթար, ուր կը գըտնուէր գնդին հրամանատարն, եւ մէկ քանի ժամ յառաջ հաստատուած կամրջէն անցնելով թշնամւոյն երկիրը ոտք կը դընէր։ Կամրջէն դուրս ելնելուն պէս՝ զօրքն իր առջեւն ունէր սեպացեալ զառիթափ մը. Ալէքսանդրոփոլի բնակիչները հազարներով կուգային եւ զինուորաց կ'օգնէին, սայլերն եւ թնդանօթները զառիթափներէն վեր հանելու համար։ Անչափ էր Հայոց խանդը, որք հարիւրներով սայլերուն կը լծուէին, թնդանօթաց հաստարաններուն (թօփ-գունտադը) կը յենուին, անիւներուն ետեւէն կը մղէին, չուանները կը քաշէին՝ ցնծութեան աղաղակներով անհագին բեռներ վեր հանելով։ Միանգամայն խրամահատք աւելի հեշտագնաց անցք մը կը պատրաստէին ։

Ցանկարծ Կարսի ճանապարհին վրայ այլանդակ հագուստներով հեծելազօրաց խումբ մը տեսնուեցաւ, որ դէպ ի Ալէքսանդրոփոլ կ'ընթանար ։ Տաճկաց ձեռօք նոր կազմեալ եւ ղարափափաղներէ բաղկացեալ հեծելագաս մ'էր այն. այս ղարափափաղներն կուգային ճերմակ Զարին (Զաղան խան [1]) հպատակելու եւ զինուորութիւն ընելու ։ Լօրիս Մէլիքով զօրապետն խիստ լաւ ընդունելութիւն ըրաւ անոնց եւ հաւանեցաւ իրենց առաջարկութեանը, ինչպէս յետոյ եւս օսմանեան բանակէն փախչող բոլոր բնիկներն ընդունեցաւ։ Այս անկիրթ հրոսակներն ստուգիւ մեծ օգուտ չունեցան ռուսական բանակին համար ։ Իրենց զէնքերն պակասաւոր եւ հին բաներ լինելով, լաւ սպառազինեալ տաճիկ հեծելազօրաց հետ չէին կրնար մրցիլ. ուստի առաջին անգամ ուրիշ բանի չգործածուեցան բայց եթէ սպայից կամ բեռնաբարձ կառաց ուղեկցելով պահպանութիւն ընելու։ Սակայն Ռուսք քիչ քիչ ուսան զանոնք վարել՝ մերձակայ գիւղերէն ուտեստ ճարելու համար ։ Այս տեսակ գործերու մէջ խիստ յաջողակ էին սոքա. հաւ, որթ եւ ամեն տեսակ նպար վարպետութեամբ կը ճարէին կը գտնէին պահուած տեղերէն, ուր այնպիսի բաներ գտնուիլն ուրիշները մտքերնուն հազիւ կ'անցընէին ։ Աւարառութիւն ընելու մեծ միտում ունեցող այս մարդոց մէն մի խմբին Ռուս սպայ մը յատկացուեցաւ, որպէս զի նոքա իրենց կամայական գործերով մի գուցէ բնակչաց նեղութիւն տան։

Քանի որ պատերազմն երկարեցաւ այս բարբարոս զօրաց բաժինն հետզհետէ ստուարացաւ, ուստի պահապանաց խմբին գլուխ՝ Քիշմիշեվ գումարապետին հրամանատարութեան տակ դրուեցան։ Այս սպայն խիստ տաժանելի կացութեան մը մէջ կը գտնուէր, ամենամեծ նեղութիւն եւ դըժուարութիւն կը քաշէր իր ստորակարգեալները կարգապահութեամբ զսպելու համար, եւ երբեմն չէր կրնար գլուխ ելնել ։ Այս մարդոց վարմունքն ռուսական զօրաց համբաւոյն փոքր ի շատէ արատ բերաւ եւ յաճախ խուչընդոտ եղաւ այն զգուշաւոր քաղաքականութեան՝ որով Լօրիս Մէլիքով կ'ուզէր երկրին բնակչաց համակրութիւնը գրաւել Ռուսիոյ վրայ. սակայն այլ եւ այլ դիւրիմանալի պատճառներով չուզուեցաւ ճանապարհ տալ անոնց։ Եթէ Զարին ծառայութենէն արտաքսուէին, պիտի աճապարէին արդարեւ դարձեալ Սուլթանին ծառայութեանը մտնելու եւ Տաճկաց սակաւաթիւ հեծելազօրուն օժանդակ լինելու. կամ եթէ իրենց երկիրը դառնային, բանակին յետակողման վրայ յարձակելու պիտի ելնէին չարունակ, եւ զօրաց բաւական մեծ խմբեր հարկ պիտի լինէր անջատել զանոնք զսպելու համար, որով Ռուսաց յարձակողական շարժմանց արագութեան դէմ արգելք պիտի ելնէր ։ Այս ամեն բաները քաջ կշռելով, լաւ եւս կը թուէր զանոնք չթողուլ՝ առանց յառաջ գալիք անտեղութեանց նայելու ։

(1) Ռուսիոյ կայսրն այս անուամբ կը ճանաչուի բովանդակ արեւելեան աշխարհաց մէջ :

Ալէքսանտրոփոլի գունդն առաջին օրը խիստ քիչ ճանապարհ ըրաւ ։ Բանակ մը մէկ երկու աւուր մէջ փորձառութիւն մը առանալու է կանոնաւոր եւ հետեւաբար արագ խաղացք ընելու համար . օդն ալ շատ գէշ էր․ բոլոր օրն անձրեւ եկաւ, ցուրտ եւ բանաշունչ հով մը կը փչէր, եւ ճանապարհները ցեխոտ էին ։ Գունդը Մօլլա-Մուսայի մէջ օթեվանեց սահմանագլխէն վեց ու կէս հազարամէթր միայն հեռի ։ Զինուորք՝ գիւղէն անցնող վտակի մը եզերքը՝ անձուկ հովտի մը մէջ բանակեցան, սպայակոյտն հողակերտ տնակներու մէջ իջեւանեց, որոց մէջ տեղն էր գնդին հրամանատարին բնակութեան յատկացեալ տնակն, եւ ըստուգիւ այն ժամանակ միայն սպայակոյտն սկսաւ գործ տեսնել, կ՚ըսէ վերոյիշեալ ականատես անձն. «Անդադար կ՚երթեւեկէին բանբերներ, օժանդակներ (միւլազիմ), զինուորներ, տեղացիներ, թարգմաններ, այլ եւ այլ գնդէ սպաներ, գրագիրներ, խաղախներ եւ տէնշիքներ (սպայից սպասաւորք). ասոնց ամենուն խօսքերն եւ աղաղակներն կը խառնուէին սուսերաց եւ խթանաց շաչիւններուն հետ։ Այն իրարանցումին մէջ, այն ախոռի հոտ բուրող մթնոլորտին մէջ, երկու ճրագներու դողդոջուն լուսոյն՝ տեղեկագիրք կը հասնէին, այլեւայլ կարգադրութիւններ կը լինէին, հրամաններ կը ղրկուէին եւ հեռագրեր կը քաշուէին ։ Գեղջուկ սեղաններու վրայ՝ պատերու վրայ՝ ծնկի վրայ եւ կամ ընկերոջ մ'ուսին վրայ թուղթ դնելով՝ գրել հարկ կը լինէր ։ Ամենուրեք աշխարհացոյցք, յատակագիծք, թուղթք եւ գրութիւնք կը տեսնուէին ։

«Թնդանօթ մը պարպուելով՝ զօրաց նշան տրուեցաւ հանգիստ առնլու. Նուագածուք օրօր մը նուագելով զօրքն իմիասին երգեց գեղգեղաձայն, եւ պատերազմին այս առաջին օրն տարաժամելով՝ անդորրութիւնը տիրեց բանակին վրայ։

«Հետեւեալ օրն առաւօտուն ձիաւորք Տաճիկներէն 177 հոգի գերի բռնած բերին, որք Մօլլա-Մուսայէն Ալէքսանտրոփոլ ղրկուեցան ։

«Առաւօտեան ժամը հինգին ամեն պատրաստութիւն տեսնուած էր վերստին ուղեւորելու համար։ Յառաջապահք հեռացան մեծ ճանապարհին վրայէն երթալով, հետեւակազօրն սկսաւ խաղալ երկու կողմն արձակամարտ խմբեր ունենալով ։ Գումարտակներուն միջեւն եղած բաց տեղերէն ծանր թնդանօթներն կը յառաջանային, եւ Տաղստանի անկանոն ձիաւորաց կարմիր գլխանոցներն կամ պաշլըքներն կը շողշողային գումարտակներուն ետեւէն ։ Ամբողջ ջոկատն յամր եւ խոհեմ կերպիւ դէպ ի յառաջ կը շարժէր ։

«Գնդին հրամանատարին ուղեկից խումբը կըսպասէր այն հիւղին մօտ որոյ դրանն առջեւ օժանդակներն, բանբերներն եւ աւագ սպայք խռնեալ էին. Մեծ դքսին կողմանէ Հայոց ուղղեալ յայտարարութիւնը կարդացուած ժամանակ, տեղացիք բազմութեամբ եկած մտիկ կ՚ընէին։ Դրօշակիր թաթար մը թարգմանութիւն կ՚ընէր եւ յայտարարութեան իմաստը կը մեկնէր տաճկերէն լեզուաւ. աւագ սպայ մ'եւս գիւղերուն երեւելեացը կը բաշխէր այն յայտարարութեան օրինակներէն։»

Սայլերն եւ կառքերն խիստ բազմաթիւ լինելուն համար, անկարելի էր արագ յառաջ խաղալ։ Գունդն՝ երկու առաջքի բաժնուած՝ ապրիլ 25 ին 8 հազարամէթր եւ 26 ին 10 հազարամէթր տեղ միայն կրցաւ ճանապարհ ընել ։ Ուրաքանչիւրն չորս կորովի ձիերէ քաշեալ բեռնաբարձ կառաց շարքն՝ կարծես թէ անվերջանալի էր։ Ապրիլ 26ին բանակն անցաւ Գարսչայը ըսուած գետակէն. վասն զի այս գետակն, որ Կարսի բերդին քովէն հոսելով Արփա-չայ գետը կը թափի, եւ սոյն քաղաքէն Ալէքսանտրոփոլ տանող ճանապարհն գիրար կը կտրեն ։ Այս գետակին ափունքը դիւրամատոյց են. հե-

ծելազօրքն եւ թնդանօթաձիգներն հունէ (կէչիտ) մ'անցան, հետեւակ զօրաց մէկ մասն եւս նոյնպէս ըրաւ՝ տաքատներն հանելով եւ ուսիններուն ծայրէն կախելով. Մնացեալ զօրքն՝ ինչպէս նաեւ կառքերն եւ սայլերն 40 մէթրի չափ երկայնութեամբ կամրջէ մ'անցան, զոր Գուլմէրինկ հազարապետը փութանակի շինած էր Ծամուզլուի մօտ։

Այս գիւղին մէջ կը բնակին Կովկասու լեռներէն գաղթեալ Օսք։ Սոցա մեծերն աղ եւ հաց մատուցին Մէլիքօվ զօրապետին եւ շատ ծանօթներ եւ ազգականներ տեսան զօրաց մէջ։ Զինուորք եղբայրաբար վարուեցան բնակչաց հետ, որք բանակին պարէն կը բերէին, եւ կամուրջը կանոնաւոր վաճառանոցի մը կը նմանէր։ Թէեւ մեծ դքսին յայտարարութեան օրինակներէն մերձակայ Շահնատար գիւղն ալ ղրկուած էր, սակայն եւ այնպէս անոր բնակիչներէն շատեր խոյս տուած էին. Մէլիքօվ զօրապետն հրամայեց անոնց տները քանդել. այս հրամանը կատարուեցաւ յետին ծայր խստութեամբ. պահանորդներ գրուեցան այն տանց առջեւ՝ որոց բնակիչները փախած չէին, եւ գիւղին մնացեալ մասն հիմնայատակ եղաւ՝ օրինակ լինելու համար։

Հետեւեալ օրն բանակը կոնդ առաւ Գուրադ-տէրէյի մէջ, այն նշանաւոր ճակատատեղին վրայ, ուր 1854 ին Ռուսաց սակաւաձեռն խումբ մը յաղթեց Տաճկաց, որք իրմէ քառապատիկ աւելի բազմաթիւ էին։ Այս գիւղին մէջ գլխաւոր հրամանատարին ներկայացան՝ մինչեւ երեսուն հազարամէթր հեռի գտնուած հայաբնակ եւ յունաբնակ գիւղերուն եկեղեցական դասն, որ քահանայական զգեստներով, դրօշակներով եւ Սրբոց պատկերներով եկած էր աղ եւ հաց մատուցանելու։ Ժողովուրդն ամեն ուրեք կը հպատակէր, մինչեւ անգամ մահմետականներն։ Մէլիքօվ զօրապետն տեղացի ականաւոր անձանց հետ յօժարութեամբ կը խօսակցէր եւ անոնց լեզուաւը հարցումներ կ'ընէր, այնպէս որ խօսակցութեան մէջ տեղեկութիւններ կըստանար Տաճկաց զօրութեանց որչափ լինելուն ու քայքայուելուն վրայ։ Ռամիկներն եւս դիւրաւ կրնային անոր քով մօտենալ. նա կ'ընդունէր զիրենք մարդասիրութեամբ, իրենց պահանջմանց ունկն դնելով իրաւունքնին կը վճռէր, եւ փոքրիկ ճառ մը կը խօսէր զոր յետոյ բովանդակ Հայաստանի մէջ կրկնեց։

«Ռուսաց կայսրը, կ'ըսէր զօրապետն, ձեզ դէմ պատերազմ չըներ. նա ամենեւին դիտաւորութիւն չունի ձեր լեզուին, կրօնից եւ սովորութեանց դպչելու։ Օրինակի համար՝ ինձ նայեցէք, գիտէք որ ցեղիւ Ռուս չեմ, Հայաստանեայց եկեղեցիէն եմ եւ իմ մայրենի լեզուս հայերէնն է։

«Արդ՝ այսու ամենայնիւ՝ հրամանատար եմ Ռուսաց Զարին զօրաց, զի Զարը գիտէ իւրաքանչիւրն յարգել իւր ծառայութեանցն եւ արժանեացն համեմատ, առանց նայելու թէ յունադաւան է կամ Հայ կամ մահմետական։ Մեր բանակին մէջ շատ մահմետական, չէրքէզ կամ թաթար զօրապետներ կան։ Խաղաղ եւ անդորր ապրեցէք. աներկիւղ ինքզինքնիդ դործերնուդ նուիրեցէք, եւ ոչ ոք պիտի դպչի ձեր կրօնից եւ սովորութեանց։ Դատաւորնիդ իւր պաշտօնին վրայ հաստատեցի, նա դատերնիդ պիտի տեսնէ ձեր օրինաց եւ սովորութեանց համեմատ ինչպէս կ'ընէր առաջ։ Բան մը միայն կը խնդրուի ձենէ, այն է չդիմադրել մեր վարչութեան եւ թշնամութիւն չընել մեր զօրաց դէմ։»

Մինչեւ այն ժամանակ բանակին անցած երկիրն Շիւրէ-Կէլի գաւառակին կը վերաբերէր, որոյ գլխաւոր տեղին է Հաճիվէլի։ Լօռիս Մէլիքօվ զօրապետն իմանալով որ 6 վաշտէ բաղկացեալ Տաճկաց խումբ մը այն կէտին վրայ գումարուած էր, իւր բոլոր ձիաւորներն այնտեղ ղրկեց, բայց Տաճիկներն՝ զարնուելու հրաման մը

չունենալով, եւ շտապաւ դէպ ի Կարս ետ քաշուելով, այս քաղաքին եւ սահմանագլխոց մէջ տեղ գտնուած բոլոր երկիրը պարպեցին։ Ամսոյն 27 ին, մինչդեռ Ռուսաց հետեւակազօրքն Գուրաղ-տէրէյի մօտ կանգ կ'առնոյր, հեծելազօրն եւս Հաճիվէլիի մէջ կը բանակէր։ Հետեւեալ օրն այս վերջին տեղւոյն մէջ հաստատուեցաւ Ռուսաց վարչութիւնը։ Շիւրէ-Կէլի գաւառակը 76 գիւղ եւ 10-12 հազար բնակիչ ունի, որոց երեք հինգերորդն հայ է. ուստի ժողովրդեան մեծագոյն մասն ռուսական իշխանութեան հաստատուիլն իբրեւ բարիք մ'ողջունեց։

Զօրաց ստուար մասն ամսոյն 28ին Գուրաղ-տէրէյէն Զայիմ գնաց, որ Կարսի հիւսիսային արեւմտեան կողմէն 20 հազարամէթր հեռի է Կարսի գետակին հովտին մէջ։ Լօռիս Մէլիքով զօրապետն իւր բանակակեդրոնն այն տեղ հաստատելով՝ մէկ քանի օր անցուց որպէս զի գործողութեանց խարիսխը կազմակերպէ, բանակին հաղորդակցութիւններն եւ պարենի ու ռազմամթերաց փոխադրութիւնները կարգադրէ։ Կովկասու հետ յարաբերութիւններն ապահովելու համար հեռագրական դիծ մը, եւ տեղ տեղ բաւական ամուր կայաններ եւ մթերանոցներ հաստատել տուաւ։ Միանգամայն շարժուն հիւանդանոցներ բանալ եւ Կարսի պաշարման յատկացեալ խոշոր թնդանօթներն եւ ճարտարագիտական կազմածներն որ Աղէքսանդրոփոլի մէջ էին, բերել տուաւ։ Պատերազմի մտնող տաճիկ զօրաց թուոյն վրայ ունեցած տեղեկութիւններն թերի լինելով՝ 27 հեծելադաս լրտես զօրօք եւ 16 թնդանօթով Չէվչէվածէ իշխանը ղրկեց՝ զննութիւններ ընելու Կարսի հարաւային արեւմտեան եւ հարաւային կողմերն՝ ապրիլ 28 ին, 29 ին, եւ 30 ին։ Եւ որպէս զի Կարսի պահապան զօրքն իւր ուշադրութիւնը սոյն խմբին շարժմանց վրայ չդարձնէ, որոյ մէկ քանի ջոկատները գնդէն մինչեւ 100 հազարամէթր եւ աւելի պիտի հեռանային անակնկալ յանդգնութեամբ, գլխաւոր հրամանատարին կողմանէ հրաման եղաւ որ երկու վաշտ հրադնդաձիգ զօրք՝ իրենց հետ առնլով Տաղըստանի գումէն (ալայ) մէկ հեծելադասակ եւ չորս թնդանօթ, երթան ցոյց մը ընելու բերդաքաղաքին շրջակայները։ Այս ջոկատը մօտեցաւ Կարսի՝ 6 հազարամէթր մնալու չափ, եւ առանց իրեն դէմ ելնող մը տեսնելու՝ իւր բանակատեղը վերադարձաւ։

Այս միջոցին խիզախ լրտես զօրքն այսր անդր կը յածէին Կարսի հարաւակողմն՝ առանց դէմերնին մէկը տեսնելու։ Կովկասու պաշարաց կեդրոններուն եւ ռուսական բանակին մէջ եղած հաղորդակցութիւնքն մէկ քանի օր ընդհատել բաւական էր այն անբեր սարահարթին վրայ՝ Ռուսաց զօրքը սովալլուկ ընելու համար. սակայն եւ այնպէս Տաճիկք եւ ոչ ուրեք երեւելով՝ անըմբռնելի էին թշնամւոյն համար։ Կարծես թէ լքեալ երկիր մ'էր այն սարահարթն։

Չէվչէվածէ իշխանին հեծելազօրն՝ Խանքէօյի մէջ բանակելէն յետոյ, ապրիլ 29 ին խաղաց դէպ ի Վլատիկարս, որ Գարս-չայը անուն գետակին եզերքն է եւ Կարսի հարաւային արեւմտեան կողմն՝ անկէ 10 հազարամէթր հեռի. այսպէս անցան Նոքա բերդաքաղաքին միւս կողմն։ Վլատիկարսի մէջ՝ որ 1855 ին Մուրավիեվ զօրապետին բանակակեդրոնն եղած է, այս խումբն կայսեր ծննդեան տարեդարձին տօնախմբութիւնը կատարեց, յետոյ մեկնեցաւ անկէ եւ 47 հազարամէթր տեղ երթալէն յետոյ՝ Կարս բերդաքաղաքին Կարնոյ հետ ունեցած հաղորդակցութեանց ճանապարհին վրայ կանգ առաւ եւ ընդհատեց այն հաղորդակցութիւններն։ Մէկ քանի ջոկատներ աւելի հեռի գնացին. մին, մինչեւ Լաճկերտ եւ Զալիճա հասնելով, Կարսի եւ Կարնոյ մէջ եղած հեռագրական գիծն աւրեց 10 հազարամէթրի չափ տեղւոյ վրայ։ Բայց յետոյ խորամանկ

խաղալիներն՝ փոխանակ հեռագրաթելն աւրելու, Տաճիկները խաբելու գործածեցին զայն։ Օրին մէկը Կարնոյ մէջ ուրախութեամբ եւ զարմանօք տեսնուեցաւ որ Կարսի հետ հեռագրական հաղորդակցութիւնք վերստին հաստատուած էին։ Տաճկաց սպայակոյտն զքանչացած՝ կարծեց թէ այս որդիւնքը ժողովրդեան եւ բանակին կորովութեամբն յառաջ եկած է ։ «Ով ես դու» հարցուց հեռագրաւ ։ Պատասխան եկաւ. «Մուսթաֆա վէլէտի Օսման։» Սպայակոյտն՝ ասոր վրայ բոլորովին անկասկած լինելով, փութաց սոյն Մուսթաֆային բազում տեղեկութիւններ հաղորդել այն բաներուն վրայ որ գլխաւոր հրամանատարին արգելք կը լինէին պաշարեալ քաղաքին օգնութեան հասնելու, նաեւ նորա բանելիք յատակագծին եւ ճանապարհ հանուած պաշարի կարաւաններուն վրայ։ Բնականաբար խաղալիներն այս պաշարները ձեռք անցուցին ։ Հուսկ ապա, հեռագրատան գործակալներէն մին տեսնելով որ հեռագրաւ եկած խօսքերն թերի էին տաճկերէն լեզուի եւ շարադրութեան մասին, Ռուսաց խորամանկութիւնն երեւան ելաւ ։

Մալամա գումապետին հրամանատարութեան տակ չորս հեծելադասէ բաղկացեալ ուրիշ ջոկատ մը յառաջացաւ մինչեւ Վէրիչան՝ Սօղանլը-տաղի ստորոտն, եւ միւսներէն աւելի բարեբաղդ գտնուելով կրցաւ թշնամին տեսնել. ութ վաշտէ բաղկացեալ ջոկատ մը իւր առջեւէն խոյս կուտար դէպ ի Կարին։ Տաճկաց բանակին հրամանատար Մուխթար փաշա ինքն իսկ այն խմբին մէջն էր, որ Կարսէն կը հեռանար, զի մի գուցէ պաշարուելով ներսը մնայ։ Սօղանլը-տաղի մօտ Տաճիկք՝ տեսնելով որ Ռուսք իրենց ետեւէն հասնելու մօտ էին, իրար անցան, իրենց նահանջը խառնիխուռն փախստեան փոխուեցաւ եւ կարաւաններն, փամփշտի արկղերն եւ 100ի չափ ալ կանոնաւոր զօրք ձգեցին ճանապարհին վրայ. Ռուսք զանոնք գերի բռնելով՝ հետեւեալ օրը թող տուին, վասն զի խիստ տկար էին նոքա եւ ձիաւորաց ընթացից արագութեանն արգելք կը լինէին. Հուսկ յետոյ, ապրիլ 29ին երեկոյեան ժամ 11ին՝ Մուխթար փաշա կանգ առնել տուաւ իւր զօրաց, որ 75 հազարամէթր տեղ քալած լինելով՝ յոյժ խոնջեալ էին. ետ դարձուց զանոնք եւ լաւ դիրք մը գրաւել տուաւ անտառի մը մէջ Վէրիչանի մօտ ։

Մալամա գումապետն որոյ զօրքն սակաւաթիւ էր, պատշաճ չդատեց այլ եւս զանոնք հալածել կամ յարձակիլ անոնց վրայ, եւ Տաճկաց գլխաւոր հրամանատարն կրցաւ անդորրութեամբ իւր նահանջը շարունակել դէպ ի Կարին ։

Ռուսաց այս արշաւանաց նպատակն էր Կարսի շրջակայները լրտեսել, ուստի հեծելազօրն՝ իւր այս նպատակին հասած լինելով, ամսոյն 30ին Խան-քէօյ դարձաւ, եւ այս զննութեան մէջ Ռուսք մէկ սպանեալ եւ հինգ վիրաւորեալ ունեցան. Այն օրը կռիւ մ'եղաւ որ քիչ մնաց լրտես զօրաց վերադարձն սխալի արգելոյր, եւ կրնար Ռուսաց համար ձախող լինել՝ եթէ Տաճիկներն իրենց գործը գիտնային։ Մէլիքով զօրապետն՝ Զէվչէվածէ իշխանին յանդուգն խաղացքին վրայ մտատանջութիւն զգալով, ապրիլ 29ին Հէյման փոխզօրապետին հրամանատարութեան ներքեւ խումբ մը կազմած էր 12 վաշտ հետեւակ զօրօք, թնդանօթաձիգներով եւ ձիաւորներով հանդերձ. այս խումբն՝ գիշերը Խալիֆ-օղլուի մէջ անցընելով, հետեւեալ օրը դէպ ի Խան-քէօյ յառաջացաւ։ Ապրիլ 29ին Տաճիկ մը չեկաւ խմբին դէմ. բայց 30ին մինչդեռ Վիզին-քէօյի կը մօտենար, որ Խան-քէօյէն երեք չորս հազարամէթր հեռի է, յանկարծ անոր դէմ սաստիկ հրացանութիւն մը սկսաւ։ Առաւօտուն 8 վաշտ Տաճիկ զօրք Կարսէն դուրս ելնելով, ճանապարհն եւ քովի ափափայքը (ապառաժ տեղուանք) գրաւեր էին ։

Ռուսք եթէ ուզէին իրենց խաղացքը

շարունակել, Տաճիկները վանելու էին այն տեղերէն։ Հէյման զօրապետն թնդանօթներն յառաջ տանել եւ սարերուն դէմ կրակ ընել տուաւ. Տաճիկք մացառներու մէջ աղէկ մը պահուած անդրադարձութիւն ըրին։ Ռուսաց ամբակաձիգներն երկիցս ջանացին զանոնք վանել եւ երկիցս ետ մղուեցան։ Գիշերը վրայ հասնելուն՝ Ռուս հրամանատարն ետ քաշուելու նշան տուաւ, օգուտներն այսպէս իրենց ձեռօք կորուսին։

Երկրորդ օրն Զէվչէվածէի խումբն Վիզին-քէօյը գրաւեց անարգել, հետեւակ զօրաց 12 վաշտերն Զայիմ դարձան, եւ այսպէս Ռուսաց զօրքն հետեւեալ կերպիւ բաժնուած գտնուեցաւ. Կարսի հիւսիսային արեւմտեան կողմն եւ անկէ քսան հազարամէթր հեռի Զայիմի եւ Ենի-քէօյի




ՀԷՅՄԱՆ ԶՕՐԱՊԵՏ

վախնալով որ Կարսէն նոր զօրք գալով իր խումբը կը պաշարէ։ Ուստի Ռուսաց այս խումբն Վիզին-քէօյի յետակողմն եւճանկէ մէկ ու կէս փարսախ հեռի դնաց բանակեցաւ։ Տաճիկ սպայք՝ ամենեւին ջանք չըրին սոյն առաւելութենէն օգուտ քաղելու. փոխանակ ճանապարհին վրայ ամրանալու եւ ռուսական բանակին մնացեալ մասին հետ հեծելազօրաց հաղորդակցութիւնը կտրելու, Տաճիկները նոյն երեկոյին Կարս վերադարձան եւ իրենց համար նպաստաւոր եղած կռուոյ մը բոլոր մէջ կը գտնուէր բոլոր հետեւակախումբն՝ հանդերձ իր թնդանօթաձիգներով, երեք գումարտակ ձիաւոր զօրօք եւ մէկ շար խաղալի թնդանօթներով. Կարսի հարաւակողմն տասն հազարամէթր հեռի՝ Վիզին-քէօյի մէջ էր ձիաւորաց մնացեալ մասն՝ լրանս զօրաց դնդին թնդանօթաձիգներովն հանդերձ։ Մայիս 1 էն մինչեւ 15՝ բանակն այս տեղերը մնաց եւ սոյն միջոցին իր յետագայ գործողութեանց պատրաստութիւնները տեսաւ։ Անդադար Ալէքսանտրոփոլի ճանապարհին վրայ եր-

թեւեկող կարաւաններու միջոցաւ պաշար մթերուեցաւ, հաղորդակցութիւնք ապահովեցան, օսմանեան կառավարութեան ձեռօք այլ եւ այլ կէտերու վրայ հաւաքեալ մեծաքանակ ցորենի պաշարներն գրաւեցան եւ գտնուած բոլոր խոտն հասարակութեան ձեռքէն ծախու առնուեցաւ։ Օդն եւս նպաստաւոր չէր զինուորական գործողութեանց. պատերազմի սկիզբէն ի վեր ցուրտ եւ անձրեւայոյզ էր եւ սառնաբեր հով մը կը փչէր։ Մայիս 6ին երկինքը բացուեցաւ, օդը տաքցաւ եւ Կարսի սարահարթին ճանապարհներն սկսան ցամաքիլ։

Սակայն Ռուսք այս միջոցին բոլորովին անշարժ չմնացին. բաց ի Կաղզուանայ գրաւումէն, զոր այժմ պիտի պատմեմք, Կարսի հիւսիսակողմն այլեւայլ զննութիւնք եղան, որոց վրայ ընդ հուպ պիտի դառնամք խօսելու եւ հասկցնելու թէ զննութեանց արդիւնքն ինչ վճռական ազդեցութիւն ունեցաւ Արտահան բերդաքաղաքին վիճակին վրայ.

## ԳՐԱՒՈՒՄՆ ԿԱՂԶՈՒԱՆԱՅ

Լօռիս Մէլիքով զօրապետին գլխաւոր մտածութիւններէն մին էր կարելի եղածին չափ շուտով յարաբերութեան մտնել Տէր Ղուկասով զօրապետին հետ։ Իրաւամբ մտատանջութիւն կը պատճառէր իրեն Երեւանայ գնդին կացութիւնը, որովհետեւ նա յառաջ կը խաղար յոյժ դժուարուտ եւ նեղ անցքեր միայն ունեցող երկրի մը եւ այնպիսի ամայութեանց մէջ, ուր Քիւրտերու հրոսակներ կ'ասպատակէին, որովհետեւ Արարատայ ստուար շղթայն գործողութեանց խարսխէն եւ Ռուսաց երկիրներէն կ'անջատէր զայն։ Տէր Ղուկասովի գունդը նահանջելու համար գէշ ճանապարհ մը միայն ունէր, եթէ ձախողութեան մը հանդիպէր գուցէ մեծ աղէտքի մը պիտի փոխուէր այդ ձախողութիւնն. ուստի Մէլիքով զօրապետին առաջին հոգածութիւններէն մին եղաւ այն Արքունի ճանապարհը (Շահ եօլու) գրաւել որոյ վրայ խօսեցանք, զի այն ճանապարհաւ միայն կրնար փոխ-զօրապետին օգնութեան երթալ պէտք եղած ժամանակ։ Այս նպատակաւ որոշեց Կաղզուանը գրաւել, որոյ մէջէն կանցնի՝ այն ճանապարհն Երասխ գետին եզերացը վրայ։

Երկու խմբերու յանձնուեցաւ այս գործն. առաջինն իջաւ մինչեւ Կողբ՝ Երեւանայ նահանգին մէջ, եւ անտի սկսաւ Երասխայ հովտին մէջէն դէպ ի վեր ելնել՝ այնպիսի ճանապարհէ մը որ գրեթէ անընդհատ կիրճի մը մէջէն կ'անցնի։ Այս խումբն բաղկացեալ էր մէկ վաշտ հետեւակ զօրքէ եւ խաղախներու տասն հեծելադասակէ երկու լեռնային թնդանօթներով հանդերձ, եւ գումապետ կոմս Կրապպէի հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր։ Երկրորդն՝ որ միայն հեծելազօրէ կը բաղկանար, Վիզինքէօյէն մեկնելով եւ Խարէն անցնելով գնաց գրաւեց Երասխայ եզերքն գտնուած այն միակ կամուրջն, ուրկէ Կարսի պահակազօրքը կրնար Կաղզուանայ օգնութեան երթալ, թէ եւ այն պահակազօրաց կողմանէ այսպիսի բան մը հաւանական չէր, զի ձեռներիցութիւն չունէին եւ սպառնացեալ կէտէն վաթսուն հազարամէթր հեռի կը գտնուէին։

Երկու խմբերն մայիս 6ին Կաղզուանայ առջեւ հասան երկու կողմանէ, եւ առանց կռուոյ քաղաքը մտան։ Մուխթար փաշա Տաճիկ փիշապազօրաց ջոկատ մը դրկած էր այն տեղ, զինուց գործածութիւնը բնակչաց ուսուցանելու եւ պաշտպանութեան գործը կարգադրելու համար, բայց տեղւոյն դայմագամը Ռուսաց յառաջ քալելուն լուրն առածին պէս՝ վարչական խորհուրդը (մէճլիս) գումարեց եւ փիշապազօրաց հրամանատարն եւս կանչեց. այս քաջերն միաբանութեամբ որոշեցին թէ կարելի եղածին չափ շուտով Կարին փախչելով ապաստանելէ զատ ուրիշ ընելիք չունէին։ Ճանապարհին վրայ աւազ

սպայ մ'ելաւ դէմերնին որ իրենց օժանդակելու համար ղրկուած էր, զայն եւս դիւրաւ համոզեցին իրենց հետ փախչելու։

Տեղական իշխանութեանց կողմանէ այսպէս երեսի վրայ ձգուած բնակիչք իրենց երեւելիներն Ռուսաց քով ղրկեցին հպատակութիւն յայտնելու համար, եւ Կարսէն եկած զօրքն ու ռազմամթերքն յանձնեցին անոնց ինքնայօժար։ Անմիջապէս Կաղզուանայ մէջ ռուսական փորձութիւն մը եւ քաղաքական պաշտօնատարներ հաստատուեցան, որպէս թէ այլ եւս Սուլթանին ձեռքը չպիտի անցնէր այն տեղն. Նոր գայմագամ մը դրուեցաւ եւ երբ թէ Ռուսաց գալուստը շնորհաւորելու համար 4 ու կէս ղրուշէն 1 ղրուշի իջաւ աղուհացին (գայա թուզու) գինն, որ պետութեան կողմանէ բանեցուցուած հանքէ մը կ'ելնէր։ Կաղզուանայ գաւառակին մէջ 8,000 բնակիչ կայ գրեթէ, կէսը քրիստոնեայ եւ կէսը մահմետական. ամենքն ալ առանց դժգոհութեան ընդունեցան ռուսական տիրապետութիւնն։ Արդէն շատ ժամանակ կայ որ Տակիտոս Հայաստանի բնակիչները կը կշտամբէր թէ «ոչ» ըսել չեն գիտեր.

Մայիս 7ին երկու զօրախումբք քաղաքին մէջ մաս մը զօրք թողլով իբրեւ պահակ, Վլիզին-քէօյ դարձան ի միասին, եւ այսպէս Երեւանայ գնդին հետ հաղորդակցութիւնք հաստատուեցան։

## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ ԱԽԱԼՑԻԽԷԻ ԳՆԴԻՆ. — ԽԱՂԱՑՔ Ի ՎԵՐԱՅ ԱՐՏԱՀԱՆ ԲԵՐԴԱՔԱՂԱՔԻՆ

Հայաստանի ռազմագիտական հանգամանաց վրայ խօսած ժամանակնիս Ախալցիխէէն Արտահան տանող ճանապարհ մը նկարագրեցինք, որ միւս ուղիներէն աւելի կարճ է, բայց զինուորական գործողութիւններն այնպիսի ժամանակի մը մէջ սկսան՝ յորում այն ճանապարհն անմատոյց եղած էր ձիւներուն պատճառաւ, որք մինչեւ յունիս ամիսն լերանց անցքերը կը խափանեն։ Ուստի Ախալցիխէի գունդն՝ Արտահանի վրայ խաղալու համար՝ այն ճանապարհէն չգնաց, այլ իջաւ Ախալքալաքի ըսուած ռուսական բերդաքաղաքն եւ Տաճկաց երկիրը մտաւ ուրիշ ուղիէ մը որ գարնան ժամանակ միւսէն աւելի դիւրանց է՝ անոր պէս բարձր լերանց մէջէն չանցնելուն համար, եւ որոյ վրայ չէինք խօսած։ Այսու ամենայնիւ զօրքը դարձեալ մեծ նեղութիւն քաշեց, վասն զի գետինը թանձր ձիւնով ծածկեալ էր, սաստիկ ցուրտ մը կար, խիստ բռնաշունչ հողմունք կը տիրէին առաջին տասն եւ հինգ աւուրց մէջ.

Ախալցիխէի գունդն՝ ապրիլ 28ին սահմանագլխէն անցնելով՝ եկաւ Փաքիրէ-խաթունի մօտ բանակեցաւ, ուր մնաց տասն եւ հինգ օրի չափ. Յառաջապահ զօրքն որ խազախներու երկու գումարտակէ եւ թնդանօթաձիգ զօրաց մէկ հատուածէ կը բաղկանար, հասաւ նոյն միջոցին Ջալխաթան՝ Արտահանէն քսան հազար մէթրի չափ հեռի։ Տէվէլ զօրավարը Փաքիրէ-խաթունի մէջ պէտք եղած միջոցները ձեռք առաւ՝ հաղորդակցութիւններն եւ զօրաց պարէն հայթայթելն ապահովելու համար, հարկ տեսնուած տեղերն եւս արձակամարտ զօրաց ջոկատներ ղրկեց, որպէս զի պաշարման թնդանօթաց փոխադրութեանը համար ճանապարհ պատրաստեն։

Ջայիմի մօտ բանակեալ գլխաւոր գնդին հետ հաղորդակցութիւն հաստատելու դիտմամբ՝ Տէվէլ զօրավարն այն կողմը 75 ձիաւոր ղրկեց, որ Մէլիքով զօրավարին բանակակեդրոնն հասան մայիս 1ին։

Ախալցիխէի գնդին սպայակուտի գլուխ Մաքէյեվ գումապետն Էօմէր-աղայի ճանապարհաւ դէպ ի Ջայիմ ուրիշ զննութիւն մ'ըրաւ։ Անոր հետ գնացող սպայից մին՝ Էնվալիտ Ռիւս լրագրին նամակ մը ղրկելով հետեւեալ խօսքերը կ'ըսէ այս արշաւանաց վրայ. «Կարսի մօտ բանակեալ գլխաւոր գնդին եւ մերինին միջեւ յարաբերութիւն հաստատելու համար, մայիս 11ին

առաւօտեան ժամը 5ին ճանապարհ ելանք, խաղախներու երեք հեծելազօրաւոր առնլով մէկտեղ։ Եօթանասուն վերսթ (1) տեղ պիտի երթայինք առանց թնդանօթի՝ խիստ դժուարակոխ եւ խորտաբորտ ճանապարհէ մը, որ սեպացեալ զառիթափներու վրայէն կ'անցնէր լեռներու մէջէն, տեղ տեղ ընդհատեալ էր անձրեւներէն յորդեալ հեղեղներով, եւ ձեամբ ծածկուած՝ այնպէս որ մեր ձիերը մինչեւ կուրծքերնին այն ձեան մէջ կը թաղուէին։ Բաց ի ասոնցմէ՝ մերթ անձրեւ մերթ ձիւն եւ մերթ կարկուտ կը տեղար. օդին այսպիսի գէշութեան հակառակ՝ բանակակեդրոնն հասանք առանց թշնամին տեսնելու։ Մեր դէմը ելնող մէկ քանի զինեալ մարդիկն (հաւանականաբար պաշը-պօզուգներ էին), անմիջապէս զէնքերնին վար դրին։ Անցանք գրեթէ Կարսի պարսպաց ներքեւէն, այնպէս որ հրացանի մը գնտակին հասած տեղւոյն կիսուն չափ հեռաւորութիւն մնացած չէր. սակայն թշնամին ամենեւին անհանգիստ չըրաւ զմեզ։

«Վերադարձն աւելի դժուարին եղաւ. ստիպուեցանք ուրիշ ճանապարհ մը բռնել Զըլտըր լճին եզերքէն, ուր գիշերը վրայ հասնելով՝ պարխիններու մէջ մնացինք։ Մինչեւ Զուրզում խիստ մեծ նեղութիւն կրեցինք, մեր խոնջեալ ձիերն դժուարաւ կը յառաջէին մութ տեղը խորտաբորտ գետնի մը վրայ. սառամանիքի փոթորիկ մը կը տիրէր, եւ լճին կոհակները կուգային ճանապարհին վրայ կը թափէին եւ մինչեւ ձիոց կուրծքը կ'ելնէին։ Մեր անձկութիւնն աւելի եղաւ, երբ ճանապարհէն մոլորեցանք, այս պատճառաւ մէկ երկու ժամ կորուսինք։ Կէս գիշերուն միայն կրցանք Զուրզում հասնիլ եւ հողակերտ տնակներուն մէջ մինչեւ որ բաւական լաւ տուն մը գտանք, շատ դժուարութիւն քաշեցինք։ Այս առաւօտ (մայիս 3) 15 վեց վէրսթ եւս ճանապարհ ընելով բանակատեղն հասանք։»

(1) Մէկ վէրսթն 1060 մէթր կամ 1/4 ժամ է։

Տէվէլ զօրապետը մայիս 5ին Արտահանի ամրութիւնները զննեց. իւր սպայակոյտին հետ մէկտեղ Կուլիավէրայի ամրոցէն մօտէն անցաւ, այնպէս որ թնդանօթի գունդ մը կրնար հասնիլ, բայց Տաճիկներն ուշադրութիւն չըրին անոր։ Ռուս զօրապետն այս զննութենէն յետոյ՝ համոզուելով թէ իւր ձեռքը գտնուած միջոցներով չպիտի կրնար բռնի գրաւել Արտահանը չվճապատող հզօր ամրութիւններն, իմաց տուաւ զայս Մէլիքօվ զօրապետին, որ բարեյաջող դիպուածի մը բերմամբն որոշեց իսկոյն օգնութեան երթալ անոր։

## ԼՕՌԻՍ ՄԷԼԻՔՕՎ ԶՕՐԱՊԵՏՆ ԱՐՏԱՀԱՆԻ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ԿԻՄԱՆԱՅ

Կարսի հարաւակողմը Զէվչէվանէ իշխանին ըրած զննութենէն յետոյ, կը մնար նաեւ սոյն բերդաքաղաքին հիւսիսակողմը զննել։ Մայիս 6ին ռուսական խումբ մը յառաջացաւ այնչափ որ թնդանօթի ռումբ մը կրնար հասնիլ անոր. բայց հրացանի պարպելու առիթ չունենալով ետ դարձաւ։ Հետեւեալ օրն ուրիշ խումբ մը եւս կը կազմուէր զննութեան համար, բայց սա առաջնոյն չափ բարեբաղդ չեղնիր։ Այս խումբն՝ որ կայսեր շքադիրներէն միոյն՝ Շէրէմէթիեվ զօրապետին հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր եւ կը բաղկանար Թվէրի վիշապազօրաց գումարտակէն եւ Մօզտօքի գումարտակներուն երեք հեծելազօրականներէն, Այնալըյէն մեկնելով գնաց մինչեւ Թօփանըք եւ Զուգուր. տաճիկ զօրաց հատուած մ'անոր հանդիպեցաւ Զուգուրի մօտ։ Պարաէգլի մօտ (Պարտիզացիոր գաւառին մէջ) հաստատուած տաճկական բանակակեդրոնէն անջատեալ էր այս հատուածն, որոյ թուով առաւել գտնուելուն համար՝ Ռուսաց խումբը պատշաճ չհամարեց դիմադրաւել եւ աւելի հեռի երթալ, ուստի ետ դարձաւ։

Կարսի հիւսիսային կողմը եւ անկէ տասն

հազարամէթր հեռի Պէյտիկ-չայը անուամբ վտակ մը կայ որ Կարսէն անցնող գետակին մէջ կը թափի։ Ռուսական խումբն ետ դարձած ժամանակ այս վտակին հովտէն անցնելով, ճանապարհին վրայ տաճիկ զօրաց չորս վաշտերու հանդիպեցաւ։ Ռուսաց մէկ հեծելազասն, եւ երկու հեծելազասակներուն մարդիկն իրենց արագաձիգ հրացաններով սոսկալի կրակ մ'ընել սկսան բորդ. մասն տապաստ անկաւ, կըսուի։ Գաղղիական ընտանիքէ մը սերեալ Թուլուզ-Լօթրէք հազարապետն ալ սպանուեցաւ, ինչպէս նաեւ ուրիշ աւագ սպայք. ուստի Ռուսք ստիպուեցան ետ քաշուիլ, հետիոտս պատերազմող մարդիկ շտապաւ ձի հեծան եւ բոլոր խումբը կողմնական շրջան մ'ընելով սրարշաւ գնաց՝ դարձեալ Զայիմի ճանապարհին վրայ ելնելու.



ՏԱՄԱՏ ՄԱՀՄՈՒՏ ՓԱՇԱ

հետիոտս Տաճիկներն ետ քաշուելով, Ռուսք կարծեցին թէ իրենք յաղթող են եւ անոնց ետեւէն անկան, բայց Տաճկաց ըրածը կեղծ ցոյց մ'էր, որոնք վտակին մօտ զետեղեալ թնդանօթներուն կրակին մօտեցնել կուզէին զանոնք։ Այս թնդանօթները ծածկելու համար յառաջակողմն շարուած Տաճիկ զօրքն մէկէն բացուեցաւ, անոնց ռմբերն շփոթութիւն ձգեցին Ռուսաց կարգերուն մէջ եւ մեծ կորուստ պատճառեցին. Թվէրի վիշապազօրաց գեղեցիկ եւ համբաւաւոր գումարտակին մէկ հինգե-

Այս ձախողութեան փոխարէն՝ Ռուսք առաւելութիւն մ'ունեցան այլուր, որ առ երեսս աննշան կերեւի։ Սոցա ետ քաշուած ժամանակ, անկանոն զօրքէն հինգ հոգի Տաճկաց փոքրիկ խմբի մը հանդիպեցան եւ անոնց վրայ յարձակելով գերի բռնեցին. Խմբին գլխաւորին վրայ նամակ մը գտնուեցաւ, զոր Արտահանի հրամանատար Հիւսէյին Սապրի փաշա իւր մեծին կը գրէր, այն է՝ Կարսի հրամանատարին. սորա մէջ մանրամասն տեղեկութիւններ կային Արտահանի կացութեան վրայ, ամ-

րութեանց տկար կողմերը ցոյց տրուած էին, ինչպէս նաեւ այն մօտաւորութիւններն զոր Հիւսէյին Սապրի փաշա ունէր պահակագնդին այլեւայլ տարերքէ բաղկացեալ լինելուն պատճառաւ ։ Լօռիս Մէլիքօվ զօրավարն այս թանկագին տեղեկութիւններն ստանալով, յանդուգն խորհուրդ մը յղացաւ անմիջապէս այն բերդաքաղաքը գրաւելու, իւր զինուորներուն կենացը այնքան չխնայելով, վասն զի պիտի կրնար առավ վաստկիլ կանոնաւոր պաշարման մը համար պէտք եղած ժամանակը ։ Այս եղանակին կատարելապէս համաձայն է նաեւ ռուսական բանակին մէջ եղած աւանդութեանց ։ Անմիջապէս սուրհանդակ մը ղրկուեցաւ Տէվէլ զօրավարին՝ իմաց տալու համար թէ Զայիմէն իրեն օգնական զօրք պիտի գայ ։ Նոյն կէտին մայիս 10ին Հէյման զօրավարին հրամանատարութեան տակ խումբ մը մեկնեցաւ, որում կ'ընկերանայր անձամբ Լօռիս Մէլիքօվ զօրավարն ։ Նոյն գունդը կը բաղկանար Երեւանայ եւ Տփղիսու գումարտակներէն, խրամահատ զօրաց առաջին վաշտին մէկ մասէն, հետեւակ թնդանօթաձիգ զօրաց երեք խմբակէ (պաթարեա) հանդերձ թնդանօթներով, Թվէրի վիշապազօրաց գումարտակէն, Մօզտօքի առաջին գումարտակէն, խազախ թնդանօթաձիգներու մէկ հատուածէ, Ալէքսանտրոփոլի անկանոն ձիաւորաց գումարտակին մէկ դասակէն եւ Գարափափագներու մէկ հեծելազատակէ. ընդամենն տասն եւ հինգ հազարի չափ մարդ ։

Օդը բացուեր էր չորս օրէ ի վեր, ճանապարհներուն ցեխերը չորցեր էին, եւ խումբն արագ ընթանալով՝ մայիս 13ին 55 հազարամէթր տեղ առած եւ Փանքիսի մօտ Ախալցիխէի գնդին հասած էր ։ Տէվէլ զօրավարին բանակակեդրոնը Պաքիրէխաթունի մէջ էր տակաւին, բայց իւր զօրաց մէկ մասը Արտահանի մօտ Էօլչէքի եւ Զաղիթանի մէջտեղ կը գտնուէր արդէն, եւ մէկ մասն ալ Կուր գետոյն աջակողմեան ափանց վրայ, ուր ճարտարագիտական զօրքն կամուրջ մը կը շինէր Ուրթի մօտ ։

Ճարտարագիտական զօրաց խմբէն Գուլմէրինկ գումարտակն մայիս 12ին եկաւ Արտահանի ամրութիւնները զննելու. Լօռիս Մէլիքօվ զօրավարն եւս նոյն բանն ըրաւ հետեւեալ օրն, եւ Կուլիավէրտիի ամրոցին երկու հազարամէթր մնալու չափ մօտենալով, ճիշտ անոր դիմաց գտնուող սարի մը վրայ հասաւ, երկու վէրսթ հեռի այն ամրոցէն ։ Այս երկու կէտերուն բարձրութիւնն իրարու հաւասար էր, անոնց վրայ տակաւին ձիւն կը գտնուէր եւ ամրոցին թնդանօթներուն քովի հողակուտակները դեռ սառնապատ էին. ձեան թանձր խաւ մը կը ծածկէր Կիւլկիւն լեռն, որ Կուր գետոյն միւս ափանց վրայ է, ինչպէս նաեւ այն շղթայն որոյ մէջէն կը բարձրանայ այս լեռն ։ Կուլիավէրտիի պատուարներուն վրայ Տաճկաց բազմութիւն մը կը տեսնուէր, որք հետաքրքրութեամբ եկած էին Ռուսաց զօրքը դիտելու եւ անոնց ինչ ընելիքը հասկընալու համար ։ Մեծ ամրոցին առջեւն եղած ուրիշ փոքր ամրոցի մը վրայ եւս կը տեսնուէին Տաճիկ զինուորներ ։ Ռուսք բերդապահ զօրաց ամենափոքր շարժմունքն անգամ կարող էին իրենց դիտակներովը նշմարել ։

Նոյն օրը զինուորական խորհրդոյ մը մէջ որոշուեցաւ Արտահանի դէմ լինելիք գործողութեանց յատակագիծն, եւ մայիս 14ին Լօռիս Մէլիքօվ զօրավարն Էօլչէք գնաց՝ Ախալցիխէի գնդին զօրահանդէս ընել տալու համար ։

---

## ՅԱՐՁԱԿՈՒՄՆ Ի ՎԵՐԱՅ ԿՈՒԼԻԱՎԷՐՏԻ ԱՄՐՈՑԻՆ

Արտահան հին քաղաք մ'է որ Արշակունեաց ժամանակ արդէն կար, եւ կը կարծուի թէ Պտղոմէոսի յիշած Արտանիսն է ։ Կուր գետոյն երկու ափանց վրայ շինուած է՝ այն լերանց ստորոտն որ Ար-

տահանի ձորը կը փակեն արեւելեան կողմէն։ Ծովուն երեսէն 5,500 ոտնաչափ բարձրութիւն ունեցող այս ձորն՝ որ Կուր գետոյն հովտին վերին մասն է, քսան հազարամէթր երկայնութիւն եւ տասն երեք հազարամէթր լայնութիւն ունի։ Հայաստանի ամենէն արգաւանդ եւ օդաւէտ տեղերէն մին է այս ձորն։ Արտահանի մօտ Կուր գետն քառասուն կամ յիսուն մէթր լայնութիւն ունի։ Լերանց միջէն անցնող չորս մեծ ճանապարհներ կան որ Պաթում, Ախալցխէ, Կարս եւ Էրզրում կը տանին, եւ որոց վրայ կառք կը բանի։ Ժամանակաւ Արտահանի ամրութիւնները կը բաղկանային քաղաքը շրջապատող մէկ որմէ եւ մէկ հին միջնաբերդէ. բայց հինգ տարիէ ի վեր կարեւոր աշխատութիւններ եղած են անդ Անգղիացի ճարտարապետաց ձեռօք եւ ասոնց համար ամենեւին զոհողութիւն մը չէ խնայուած Տաճկաց կողմանէ։ Ռուսաց այն քաղաքն առնլու ժամանակ՝ ամրութիւններն խիստ հզօր էին եւ ստուար, անոնց առաջակողմն կամարակապ չէնքեր կային եւ այս ամենուն մէջ բազմաթիւ մեծաչափ թնդանօթներ։ Հետեւեալ ամրոցներն Արտահանի պաշտպանողական շինութիւնքը կը կազմէին։

Եագալը-Թապեա ամրոցն, որ արեւելեան կողմն է եւ հինգ թնդանօթ ունի, մին՝ 6 բթաչափ տրամագծով, երկրորդը՝ 4, 8 բթաչափ, երրորդը՝ 3, 8 բթաչափ, մնացեալ երկուքը լեռնային թնդանօթներ էին։

Սինքէր ամրոցն, որոյ ճակատն արեւելեան կողմը կը նայի եւ որոյ առաջն ուրիշ ամրութիւններ կան, ունէր տասն եւ հինգ թնդանօթ, չորսն՝ 6 բթաչափ տրամագծով (ասոնց երկուքը Քռուփի պողովատեայ թնդանօթներ էին եւ երկուքն՝ անագախառն պղնձէ), երկուքն՝ 4, 8 բթաչափ տրամագծով եւ անագախառն պղնձէ, չորսն՝ 3, 8 բթաչափ տրամագծով եւ պողովատէ, իսկ մնացեալ հինգն ռմբկէններ էին, որոց միոյն բերանն 8, 8 բթաչափ տրամագիծ ունէր եւ չորսն՝ 5, 8 բթաչափ։

Գար-Թապեա ամրոցն՝ որ առաջնոյն մօտն է, ունէր չորս թնդանօթ, մին՝ 6 բթաչափ տրամագծով եւ միւսն՝ 3, 8 բթաչափ, մնացեալ երկուքն՝ 5, 8 բթաչափ տրամագծով բերան ունեցող ռմբկէններ էին։ Այս վերջին երկու ամրոցներուն քով կային դաշտային թնդանօթաց մարտկոցներ։

Գայա-պաշը ամրոցն՝ որ դարանակներով (պասթիոն) ահագին շինուած մ'է, ունէր քսան թնդանօթ, որոց եօթն 6 բթաչափ տրամագծով ռումբ կ'արձակէր, եւ երկուքն՝ 8, 8 բթաչափ տրամագծով ռմբկէններ էին։

Ձըգըն-ամրոցն՝ որոյ ճակատն արեւմըտեան կողմը կը նայէր, թնդանօթ չունէր։

Բոլոր այս ամրոցներն լաւ դիրք ունէին. բայց սա գէշութիւնը կար որ երկու երեք հազարամէթր հեռի եւ աւելի բարձր գտնուող սարերէն կարելի էր ռումբ արձակել անոնց վրայ։ Տաճիկներն դարման տարեր էին այս մասին՝ ամենէն աւելի կարեւորութիւն ունեցող սարերուն վրայ հզօր ամրութիւններ շինելով, ինչպէս են Կուլիավէրտի եւ Ռամազան-օղլու։

Ռամազան-օղլու ամրոցն՝ քարաշէն եւ կամարակապ՝ ունէր տասն երեք թնդանօթ, երկուքն՝ 6 բթաչափ տրամագծով, չորսը՝ 4, 8, երկուքը՝ 3, 8. մնացեալներն ռմբկէններ էին, երկուքն՝ 8 . 8 բթաչափ տրամագծով եւ երեքն՝ 5, 8։ Տաճիկ ճարտարապէտներն եւ Արտահանի պահակազօրքն այս ամրոցին կ'ապաւինէին ամենէն աւելի։

Կուլիավէրտի ամրոցն՝ որ սոյն անուամբ ճանչցուած բարձանց վրայ շինուած է եւ քովն ունի ամրոցիկ մը եւ պատնէշներ, վեց գնդընկէցներով զինեալ էր, որոց ութը հասարակ թնդանօթներ էին (երկուքը 4,8 բթաչափ տրամագծով, չորսը՝ 3, 8 եւ երկուքը լեռնային), երկուքն ալ ռըմբկէններ էին, 8, 8 եւ 5, 8 բթաչափ։

Ինչպէս կը տեսնուի՝ ամենէն տկար կողմը հարաւային կողմն էր ։ Եագալը-Թափեա, Գար-Թափեա եւ Սինքէր անուն ամրոցներն աննշան բաներ էին։ Տաճիկները կարծելով թէ միայն Ախալցխայի եւ Ախալքալաքի ճանապարհներէն յարձակումն կրնայ լինել, միւս կողմերն անզօր թողեր էին եւ պաշտպանողական շինութիւններ կուտած էին՝ հիւսիսային արեւելեան եւ հիւսիսային կողմերն միայն ։ Թէ Արտահան քաղաքը շրջապատող պատուարներուն վրայ եւ թէ անջատ ամրոցներուն մէջ ընդ ամենն 95 թնդանօթ կար, որոց մէջ կը գտնուէին բազմաթիւ Քռուփի թնդանօթներ, հինգ բթաչափ տրամագիծ ունեցող բերանով երկու թնդանօթներ եւ քսան եւ չորս հարիւրորդամէթր տրամագծով ռումբ արձակող հինգ ծովեզերեայ թնդանօթներ։ Այս թնդանօթները Պաթումէն բերելու համար տարապայման ճիգ թափուած էր ։ Արտահանի մէջ ութ ամսուան ուտեստ կար եւ պահանորդք 10,000ի չափ էին։ Դիտակ անձանց կարծեացը նայելով՝ բերդաքաղաքը կրնար մէկ կամ մէկ ու կէս ամիս դիմանալ մինչեւ անգամ այնպիսի թշնամւոյ մը դէմ որ թուով շատ առաւել էր բերդապահ զօրքէն ։ Երեք օր ի՞նչպէս բաւական եղած էր զայն գրաւելու համար ։ Ասոր պատճառն ի՞նչպէս բացատրելու է ։ Քաղաքին հարաւային կողման ամրութեանց հոգ չտարուիլը, բերդապահ զօրաց մէջ պատրաստի եւ պահեստի բանակին զինուորներէն զատ՝ նորեկ Քիւրտեր խառն գտնուիլը, եւ բերդաքաղաքին հրամանատարին ապիկարութիւնն երեք պատճառներ էին որ այս ամօթալի անկումն յառաջ բերին ։

Հիւսէյին Սապրի փաշա ցաւալի օրինակ մ'է տաճկական այն հին սովորութեան, որով ապիկար անձ մը՝ բարձրաստիճան պաշտօնատարի մը հաճոյ լինելովն՝ կրնայ որեւիցէ հրամանատարութիւն առնուլ բանակին մէջ ։ Պատերազմի նախարար Հիւսէյին Աւնի փաշայի շնորհիւ, որ 1876ին Չէրքէզ Հասան ցերեկ ժամանակ սպաննեց նախարարաց խորհրդոյն մէջ, երեք ամսոյ մէջ հետզհետէ գումապետ, ռահապետ եւ հատուածապետ եղաւ, վերջապէս փաշան իւր քոյրերէն մին անոր կնութեան տուաւ։ Այս կերպիւ նախկին բարապանն հրամանատար եղած էր Արտահանի, ուր քաջութիւն ցոյց տուած է, բայց զինուորական արուեստին տեղեակ չէր բնաւ ։ Իւր սպայակոյտին գլուխն էր Ահմէտ աղա գնդապետն։ Արտահանի ամենէն կորովի ախոյեանը գտնուեցաւ Քաֆթար պէյ անուն գնդապետ մը, որ ըստ ոմանց Չէրքէզ եւ ըստ ոմանց Հունգարացի էր ։

Առ հասարակ մարտագիտաց կարծիքն այս էր որ՝ նախ Ռամազան-օղլու ամրոցին վրայ յարձակում մ'ընելով սկսելու էր պաշարման գործողութիւնը . բայց ատով շատ ժամանակ եւ շատ մարդ պիտի կորսուէր։ Ուստի Լօռիս Մէլիքով զօրապետն որ Հիւսէյին Սապրի փաշայի նամակէն ճիշդ տեղեկութիւններ առած էր, մերժեց այս յատակագիծն եւ իրեն առաջին նպատակ ընտրեց Կուլիավէրտի բարձունքը ։ Գիտէր որ մասնաւորապէս Ախալցխայի եւ Ախալքալաքի ճանապարհաց վրայ ռումբ արձակելու համար շինուած Կուլիավէրտի ամրոցին հարաւային կողմը դէշ վիճակի մէջ էր, եւ եթէ անոր յետակողմէն արագ յարձակում մը ընէր եւ Տաճկաց ժամանակ չտար՝ այն տկար կողմը զօրացնելու, գուցէ մեծ յաջողութիւն մը կրնար ձեռք բերել։ Ասկէց զատ՝ Կուլիավէրտի առումն Ռամազան-օղլու ամրոցին առման չափ բարոյական մեծ ազդեցութիւն յառաջ պիտի բերէր, եւ բերդաքաղաքին հարաւային եւ արեւելեան կողմերէն միահաղոյն լինելիք գործողութեանց համար կրնար իբր ամուր խարիսխ ծառայել, ուստի Կուլիավէրտի վրայ յարձակումն ընել որոշուեցաւ ։

Մայիսի 14 րդ եւ 15 րդ օրերն անցան՝ պաշարման թնդանօթաց հասնելուն սպա-



ՀԷՅՄԱՆ ԶՕՐԱՊԵՏԻՆ ԽՈՒՄԲԸ ՍԻՆՔԷՐ ԱՄՐՈՑՆ ՅԱՐՁԱԿՄԱՄԲ ԿԸ ԳՐԱՒԷ

սելով, որք մեծ դժուարութեամբ կը բերուէին Ախալքալաքէն։ Գլխաւոր հրամանատարն այս երկու աւուրց մէջ իւր զօրքը սփռեց զետեղեց բերդաքաղաքին չուրջը ։ Հէյման զօրապետին հրամանատարութեան տակ գտնուած խումբը մայիս 14ին դնաց զետեղեցաւ Արտահանի հարաւային կողմը Կիւրճի-պէկ գիւղին մօտ՝ Գուրտօսանի եւ Էլակէօզի միջեւ ։ Լօռիս Մէլիքով Ախալցխէի գնդին մէկ մասը այն տեղ ղրկեց իբրեւ զօրամիգ, որովհետեւ ամենէն աւելի անդ պիտի ճիգ թափուէր։ Ախալցխէի գնդին զօրաց մնացեալ մասն՝ Տէվէլ զօրապետին հրամանատարութեան տակ զետեղուեցաւ Էօլչէքի եւ Կուլիավէրտիի մէջ ։

Թնդանօթաձիգ եւ ճարտարագիտական զօրաց գլխաւորներն՝ մայիս 15ին զննութիւններ ըրին եւ գնդընկէց դնելու տեղերն որոշեցին. պաշարման թնդանօթներն ալ նոյն օրը հասան, ուստի կարելի եղաւ զանոնք եւս զետեղելու պատրաստութիւնները տեսնել ։

Յարձակման համար պէտք եղած կարգադրութիւններն երեկոյին զօրաց իմաց տրուեցան։ Կուլիավէրտի ամրոցն եւ քաղաքը ռմբակոծելու համար, գիշերանց մարտկոցներ շինելու եւ առաւօտուն կրակ ընել սկսելու պատուէր կը տրուէր Հէյման զօրապետին։ Տէվէլ զօրապետին եւս յանձնարարութիւն եղած էր Կուլիավէրտիի բարձանց վրայ քալելու, եւ արտօնութիւն կը տրուէր իրեն որ յաջողութիւն ձեռք բերած ժամանակ, առանց մէկուն հարցնելու, ամրոցին վրայ յարձակումն ընէ, միայն թէ այն միջոցին ձախ կողմի զօրաց նշան տայ մէկ քանի օդաթռիչ փամփուշտ արձակելով։ Ամրոցն ռմբակոծող բոլոր թնդանօթներն յառաջագոյն որոշեալ ուրիշ կէտերու վրայ կրակ պիտի ընէին այն նշանը տրուելուն պէս ։ Սակայն այս ռմբակոծման համեմատ արշալուսոյն անկարելի եղաւ ռմբակոծութիւնն սկսիլ, վասն զի 9 բթաչափ տրամագծով ռումբ արձակող պաշարման թնդանօթները զետեղելու գործն շատ ժամանակի կարօտ բան էր ։ Տէվէլ զօրապետն հրաման ընդունեցաւ հիւսիսային արեւելեան կողմէն կրակ ընելու, որպէս զի թշնամին իւր ուշադրութիւնը չդարձնէ հարաւային կողմն եղած բաներուն վրայ . զօրապետն իսկոյն այս հրամանը գործադրել սկսաւ եւ Տաճիկներն անդրադարձութիւն ըրին՝ անդադար թնդանօթներ արձակելով Կուլիավէրտի ամրոցէն ։

Լօռիս Մէլիքով զօրապետն առաւօտեան ժամը եօթնին միջոցներն՝ գնաց թընդանօթներն աչքէ անցընելու, եւ անոնցմէ ոմէկը տեղափոխել եւ քանի մը հարիւր մէթր յառաջ տանել տուաւ։ Հուսկ ապա, ժամը 8ին բոլոր թնդանօթներն իրենց տեղերը դրուած լինելով՝ օդաթռիչ փամփուշտ մ՚արձակուեցաւ ի նշան յարձակման, եւ տաճկական ամրութեանց դէմ քառասուն թնդանօթներ որոտալ սկսան։ Այնուհետեւ ռմբաձգութիւնք կանոնաւոր կերպիւ իրարու յաջորդեցին երկերկու վայրկեան միջոց տրուելով, եւ սոսկալի արդիւնք յառաջ եկաւ մէկ քանի ժամուան մէջ. դարանափորները բացուեցան, պատերը ռմբարտակներէն ծակեցան, զօրանոցները քանդուեցան եւ ռուսական թնդանօթաց զօրութիւնն երեւան ելաւ, ինչպէս նաեւ անոնց անվրէպ ռմբաձգութիւնն։ Սինքէր, Գար-թապեա, Եաղալը-թապեա եւ Կուլիավէրտի ամրոցներէն անդրադարձութիւն եղաւ . բայց թշնամին անոնց կրակը քիչ քիչ մարելով՝ Տաճկաց ռմբաձգութիւնն հետզհետէ կը տկարանար, քանի որ օրը կը տարաժամէր։ Ռամազան-օղլուի ամրոցէն ալ մէկ քանի ռմբարտակ արձակուեցաւ՝ անշուշտ պարապ չմնալով գործ մը տեսնուած լինելու համար, որովհետեւ այս ամրոցին ռմբաձգութեան սահմանէն դուրս էին ռուսական մարտկոցներն ։

Ռուսաց թնդանօթներն մեծ կորուստ տուին Տաճկաց . ընդ հակառակն՝ Տաճ-

կաց թնդանօթներն քիչ մնաս պատճառեցին Ռուսաց, թէեւ լաւ նշան կ'առնուէր։ Տփղիսու լրագիրներէն միոյն թղթակիցն այս մասին հետեւեալ դիտողութիւնը կ'ընէ, որոյ մէջ անշուշտ քիչ մը չափազանցութիւն կայ. «Պէտք է ըսել որ Տաճկաց թնդանօթաձիգներն լաւ նշան կ'առնուին, բայց պարագայ մը կայ որում չեմ կրնար լաւ վերահասու լինել. երկու ժամու մէջ մեր մօտը քսան երեսուն ռմբարտակ պայթեցան, մէկ քանիներ ալ մեր գլխոց վրայէն անցնելով եւ մենէ քիչ մը հեռի անկանելով հազար կտոր կը լինէին, սակայն այս ռմբարտակներն՝ եւ ոչ մէկը սպաննեցին կամ վիրաւորեցին, ոչ մարդու դպան եւ ոչ ձիու։ Խազախի մը մօտ՝ որ իւր ձիուն երասանակէն բռնած կեցեր էր, տեսայ որ ռմբարտակ մ'անկաւ, խազախը կքեցաւ, եւ ռմբարտակը պայթելէն յետոյ՝ մարդն անմիջապէս ելաւ կանգնեցաւ ողջ առողջ ։»

Սակայն Տէյվէլ զօրապետն արեւը ծագելէն առաջ Կուլիավէրտիի բարձանց վրայ յարձակիլ սկսած էր։ Ինչպէս արդէն ըսուեցաւ՝ նա երկու պաշտօն ունէր ; Նախ՝ Կուլիավէրտիի բարձանց տիրել եւ այս բանն ընելու համար հարկ էր իրեն գրաւել այն բանակատեղը զոր Տաճիկք ունէին լերան կողին վրայ՝ եւ զայն պաշտպանող պատնէշներն, երկրորդ՝ արիասիրտ Քաֆթան պէյի հրամանատարութեան ներքեւ չորս վաշտ Տաճիկ զօրօք պաշտպանեալ Կուլիավէրտիի ամրոցին վրայ յարձակիլ, եթէ պատշաճ համարէր ։

Ռուսաց զօրքն հետեւեալ կարգաւ զետեղեալ էին .

1°. Ամիրաճիպով գումապետն՝ Ելիսավէթփօլի (Եղիսաբեթուպօլիս) գումարտակին երեք վաշտերովն եւ թնդանօթաձիգ զօրաց 19րդ սահին 3րդ թնդանօթաշարին 2րդ բաժնիւն հանդերձ՝ Կուլիավէրտի գիւղին մօտն էր, համանուն բարձանց ստորոտէն երկու հազարամէթր հեռի։ Տէյվէլ զօրապետն այս Ջոկատին հետը կը գտնուէր։

2°. Մաքէյեվ գումապետն Պաքուի գումարտակէն երկու դասակ եւ թնդանօթաձիգ զօրաց 39րդ սահին 3րդ թնդանօթաշարին մէկ բաժինն հետն ունենալով՝ առաջնոյն ձախակողմը կը գտնուէր՝ այնպիսի տեղւոյ մը մէջ, ուրկէ կարելի էր Կուլիավէրտիի բարձանց լայնութեանը շինուած տաճկական պատնէշներուն դէմ ռումբ արձակել, ինչպէս նաեւ անոնց գագաթանը վրայ հաստատուած ամուր ճամբարին դէմ, զոր երկու վաշտեր գրաւած էին լեռնային թնդանօթաց մէկ շար ունենալով հետերնին ։

3°. Փօլթավայի խազախաց դումարտակէն երկու դասակներ՝ Քուպանի խազախներուն ձիու վրայ ունեցած թնդանօթաց 5րդ շարին մէկ բաժինն հետ առած Ախալքալաքի ճանապարհին վրայ էին՝ յարձակող խմբերուն յետակողմն եւ աջակողմը պաշտպանելու համար։

4°. Օրլուս հատուածապետն (ժէնէրալ-մաժօր) Պաքուի գումարտակին մէկ վաշտովն, թնդանօթաձիգ զօրաց 19րդ սահին 6րդ թնդանօթաշարին մէկ բաժնիւն եւ Թէրէքի խազախաց 2րդ գումարտակովն հանդերձ՝ Կուր գետէն պիտի անցնէր Ուր գիւղին մօտ, եւ Ռամազան-օղլու ամրոցին դէմ ցոյց մ'ընէր։

Ելիսավէթփօլի գումարտակին մէկ վաշտըն եւ խրամահատ զօրաց մէկ դասակն թնդանօթաձիգ զօրաց 19րդ սահին 6րդ թնդանօթաշարին մէկ բաժինն մէկուսի կը սպասէին պէտք եղած ժամանակ միւսներուն օգնութեան երթալու համար ։

Զինուորք ոչ մախաղ ունէին եւ ոչ տառատ. իւրաքանչիւրին քով երկու լիպրա կոկուած հաց (փէքսիմէթ) եւ մէկ ու կէս լիպրա միս կար ։ Մեծ ուշխուժով ոգեւորեալ էին ամենքն . հիւանդներն իրենց հիւանդութիւնը չէին յայտնած յարձակման աջակցելու համար . վիրաւորք անկելանոցէն խոյս տալով՝ յարձակող խմբերուն մէջ սպրդեր էին , եւ զինուորաց կարգերուն մէջ խնդալից բացագանչու-

թիւն մը կը լսուէր. «Վերջապէս պիտի կրնանք Տաճիկները առնել։»

Տէվէլ զօրավարին հրամանաւ, Ամիրաճիպով գումարտակին խումբը ժամը վեց ու կէսին պատերազմի կարգաւ շարուեցաւ, եւ Մաքէյեվ գումարտակին հրամանատարութեան տակ գտնուած խմբին մէկ թնդանօթաշարը կրակ ընել սկսաւ. սորա ռմբաձգութիւնն այնպէս լաւ էր որ Տաճկաց լեռնային թնդանօթներուն մէկ շարին կրակը մարեց, մինչ ասոնք Ռուսաց առաջին խմբին դէմ կրակ կը թափէին թոյլ չտալու համար որ զառիթափներէն վեր ելնեն։

Ամիրաճիպով գումարտակին զօրքն հազիւ թէ ռումբ հասնելու չափ մօտեցան Տաճկաց, սոցա հետեւակազօրն եւ թնդանօթաձիգներն սաստիկ կրակ մ'ընել սկսան զառիթափներուն մէջտեղերը շինուած պատնէշներէն՝ ինչպէս նաեւ ամրոցներէն. Ռուսք շարունակեցին իրենց յառաջխաղացութիւնն սեպացեալ զառիթափներէն ծանր ծանր վեր ելնելով, եւ պատնէշներուն առաջին գծին առջեւ հասան։ Եղիսավէթփոլի գումարտակէն զինուոր մը՝ որ գրեթէ տղայ մ'էր, զօրաց կարգէն դուրս խոյանալով եւ Տաճկաց հրացաններն իրեն դէմ ուղղեալ տեսնելով՝ գոչեց. «Ետեւէս եկէք, բարեկամք, գնտակ մը պիտի զետեղեմ սա Տաճկին գլխոյն մէջ։» Ասոր վրայ իր դասակին բոլոր զինուորներն անոր հետեւեցան։ Կռուէն յետոյ, Ամիրաճիպով իշխանն այս զինուորը Լօռիս Մէլիքով զօրավարին ներկայացուց, որ իր գումարտակին առջեւ զինքն համբուրելով, Սուրբ Գէորգայ կարգին խաչանշանը կախեց անոր կուրծքին վրայ.

Զինուորներն հողէ պատուարէն վեր ելնել սկսան յորդառանդն աշխուժով։ Ասոր վրայ Տաճիկ ոսպայք պարապներուն վրայ խոյացան Ալլահ գոչելով, որպէս զի զինուորներն իրենց օրինակին նային եւ դիմադրեն, բայց ասոնք չկրցան տոկալ յարձակման եւ խոյս տուին պարկէններէն (խէնտէք)։ Ռուսք գրաւեցին նմանապէս ամրութեանց երկրորդ գիծն, եւ ժամը 10ին Եղիսավէթփոլի գումարտակը Տաճիկները վանեց վերջին պարկէնէն եւ Կուլիավէրանի բարձունքը գրաւեց մէկ ու կէս հազարամէթրի չափ սեպացեալ զառիթափէ մը վեր ելնելով, մինչ նոցա թնդանօթներն եւ հրացաններն իրենց դէմ կրակ կը տեղային։

Տէվէլ զօրավարն իր զօրաց հանգիստ տուաւ տասն վայրկենի չափ, եւ ապա սոքա աջակին աղաղակներով խոյացան Տաճկաց բանակատեղին վրայ եւ գրաւեցին։ Տաճիկները շտապաւ ետ քաշուելով, մէկ մասն Արտահան մտաւ եւ մէկ մասը Կուլիավէրանի ամրոցը։ Այս առաջին յաջողութենէն յետոյ՝ աւելի դժուար գործ մը կար ընելու։ Ռուսաց գրաւած տեղէն 600 քայլաչափ հեռի՝ խոր հեղեղատի մը միւս կողմը Կուլիավէրանի հզօր ամրոցը կը բարձրանար, որում հարկ էր տիրել։ Հարաւային կողմը զետեղեալ գընդընկէցներն արդէն այն ամրոցին թնդանօթներուն բաւական վնաս հասուցեր եւ պատուարներուն մէկ մասը քանդեր էին, բայց տակաւին անոր մէջ գտնուած թնդանօթներուն կիսովը կարելի էր կրակ ընել, եւ հրացանի գնտակներու տարափ մը կը տեղար այն սարահարթին վրայ՝ ուր Եղիսավէթփոլի գումարտակը խիստ տաժանելի կացութեան մը մէջ էր անպատըսպար գտնուելով, մանաւանդ որ արձակամարտ խմբակներու բաժնուիլ հարկ էր Տաճկաց անդրադարձութիւն ընելու համար, եւ անկարելի էր լերան վրայ թնդանօթներ հանել սեպացեալ զառիթափներուն պատճառաւ։ Սակայն Քուպանի 3րդ թնդանօթաշարին մէկ բաժինը կարելի եղաւ սարահարթին վրայ հասցնել՝ իւրաքանչիւր թնդանօթին կրկնապատիկ թուով ձիեր լծելով. ասով Ռուսք սկսան կրակ ընել։ Բայց հազիւ թէ մէկ երկու անգամ ռմբաձգութիւն ըրին, թնդանօթի

մը քով գտնուած բոլոր մարդիկն եւ բազմաթիւ ձիեր սպաննուելով՝ հարկ եղաւ կրակը դադրեցնել։

Տէվէլ զօրապետն յարձակում ընելու վրայ գտնուելուն Լօռիս Մէլիքով զօրապետին իմաց տալու համար բանբեր սպայ մը ղրկեց, միանգամայն հրաւէր կը կարդար անոր որ հարաւային կողմէն Հէյման զօրապետին խումբն յառաջ վարելով՝ իր ջոկատին գործողութեանն օգնէ․ այնուհետեւ չուզեց յապաղիլ եւ իր զօրքը Տաճկաց կրակին ներքեւ ձգել, ուստի հրաման տուաւ յառաջ խաղալու։ Ամիրաճիպով գումապետին զօրքն բերդին դէմ յարձակեցաւ, եւ այս երկու սպայք օրինակ տալով իրենց զինուորաց՝ ամենէն առաջ պարտակներուն վրայ ելան։

Մինչ Տէվէլ զօրապետին խումբն այսպէս հիւսիսային կողմէն կը յարձակէր, հարաւային կողմէն ալ Հէյմանի խումբը կը յառաջէր։ Երբ բանբեր սպայն հասնելով յարձակման հրամանը բերաւ, այս խումբն արդէն կազմ եւ պատրաստ էր։ «Հէյման զօրապետը, կ՚ըսէ Տփղիսու վերոյիշեալ լրագրին թղթակիցը, ձի հեծնելով Պաքուի եւ Երեւանայ գումարտակներուն գլուխն անցաւ յարձակելու համար։ Սոքա երկու վէրսթէն աւելի տեղ քալեցին թշնամեաց թնդանօթներուն կրակին ներքեւ, որք կրնային անոնց վրայ երկաթի կտորներ տեղալ մօտենալնուն պէս, փոխանակ ռմբարտակ արձակելու՝ ինչպէս կ՚ընէին անոնց յառաջ քալելու ժամանակ։

«Մեր թնդանօթաց հիւսիսային կողմն այնպիսի տեղ մը կը գտնուէի, ուրկէ յարձակման միջոցին պատահած ամեն բաները կրնայի տեսնել։ Զօրքն իբրեւ արձակամարտ ցրուեալ արագ յառաջ կը խաղար. խիտ առ խիտ կարգերով մէկ խմբակ միայն կար, որոյ վրայ ամենէն աւելի կրակ կ՚ընէր թշնամին, որովհետեւ բազմաթիւ մարդոցմէ բաղկացեալ էր այս խմբակն, յորում Հէյման զօրապետին մօտ պարզեալ խրոխտապանծ դրօշակն Տաճկաց ուշադրութիւնը կը գրաւէր։ Կուլիավէրտ ամրոցէն շարունակ կրակ կը տեղար մեր թնդանօթներուն վրայ․ բայց երբ յարձակողք սարերուն ստորոտը հասան, դադրեցաւ այն կրակը։ Մեր թնդանօթներն եւս լռեցին, որպէս զի մեր զօրքը չհարուածի։ Այս միջոցին վերջին աստիճան յուզեալ էինք. կը կարծէինք թէ Տաճիկները պահ մը դադար առնելով՝ ռմբարտակի տեղ երկաթի կտորներ տեղալու կը պատրաստուէին. Բարեբաղդաբար մեր ենթադրածին պէս չեղաւ։ Նոյն պահուն Ելիսավէթփօլի գումարտակն՝ ինչպէս յետոյ իմացանք՝ արդէն յարձակեր էր ամրոցին դէմ, եւ պաշարեալք չէին կրնար մեր թնդանօթաց ուշադրութիւն ընել։

«Ելիսավէթփօլի գումարտակն արդէն ամրոցին մէջ մտած էր, երբ Երեւանայ եւ Պաքուի գումարտակներն եւս հարաւային կողմէն ներս մտան։»

Տաճկաց զօրքն՝ որ երկու կրակի մէջ մնացած էր եւ առաւօտէն ի վեր սարսափելի ռմբաձգութեան մը ենթակայ գտնուելով եւ մեծ կորուստ կրելով խիստ վհատեր էր, այսպէս քսանապատիկ աւելի բազմաթիւ զօրաց յարձակմանը չդիմացաւ եւ խոյս տուաւ իսկոյն՝ Ռուսաց զօրքը խրամներու մօտ տեսնելով. մինչեւ անգամ թնդանօթներուն գամ չզարկաւ եւ չկցեց փախչելու աճապարելէն։ Հիւսէյին Սապրի փաշա որ օգնութեան կուգար Արտահանէն, փախստականներուն հանդիպեցաւ ճանապարհին կիսուն մօտ. եւ պարտաւորեցաւ անոնց հետ մէկտեղ քաղաքին մէջ ապաստանիլ։ Տաճկաց թընդանօթաձիգ զօրքը միայն՝ որ ըստ մեծի մասին վաղեմի զինուորներ էին, չհեռացան իրենց տեղերէն եւ դիւցազնաբար անկան թնդանօթներուն վրայ. յաւարտ կռուոյն, բերդին խրամներն եւ մարտկոցներուն յատակը ծածկուած էին անոնց դիակներովը։

Լօռիս Մէլիքով զօրապետն քիչ ժամա-

նակէն յետոյ իր սպայակոյտին հետ մէկտեղ մտաւ ամրոցին մէջ։ Ջինուորք եռանդագին ընդունելութիւն ըրին նմա՝ որոտաձայն աղաղակներով եւ գլխարկներն օդին մէջ վեր նետելով. Հրամանատարն շնորհակալ եղաւ նոցա՝ արիաբար վարուելնուն համար, եւ ըսաւ թէ « ամենէն առաջ իրենք կ'ուրախացընէին զկայսրն եւ զՌուսիա » Եւ Միքայէլ մեծ դքսին կողմանէ՝ Սուրբ Գէորգայ կարգին խաչանշաններէն մէկ մէկ հատ բաշխեց այն տեղ՝ ամենէն աւելի նշանաւոր հանդիսացող զինուորներուն։

Ամրոցին մէջ առին թնդանօթ, բազմաթիւ զէնք, փամփուշտներով լի 2,000ի չափ արկղ եւ մեծ քանակութեամբ վառօդ եւ ռումբ գտնուեցան։ Պաշտօնական լրագրաց ըսածին նայելով՝ Ռուսք այս բաները ձեռք բերելու համար 118 մարդ միայն կորուսած էին, որոց մէջ 20 մեռեալ միայն կար։ Վիրաւորելոց մէջ կը գտնուէր Մաքէյեվ գումապետն, որ յարձակման միջոցին գնտակէ մը զարնուելով խրամին մէջ անկած էր։ Տաճիկներն աւելի մեծ կորուստ կրեցին, վասն զի ամբարտակներէն շատ վնասուած էին։

Ամիրաճիպով գումապետն ամրոցին մէջ վաշտ մը թողուց, եւ ապա բոլոր զօրքն իրենց բանակատեղը դարձան։

---

ԱՌՈՒՄՆ ԱՐՏԱՀԱՆ ԲԵՐԴԱՔԱՂԱՔԻՆ

Ռուսք Կուլիավէրտիի բարձունքը գրաւելով՝ ամուր խարիսխ մը ստացած էին Արտահանի դէմ գործելու համար։ Ռուսաց թնդանօթներն այնուհետեւ կրնային քաղաքին վրայ նայող սարերէն ռումբ արձակել, եւ Արտահանն առնելու համար այլ եւս ժամանակին սպասելու միայն կը մնար բանը։

Հետեւեալ օրն՝ այն է մայիս 17ին պատգամաւոր մը ղրկուեցաւ Հիւսէին Սաբրի փաշայի, պահանջելու համար որ քաղաքն յանձնէ. բնակչաց եւս հրաւէր մը կ'ուղղուէր անձնատուր լինելու. սակայն Տաճիկները մերժեցին։ Ռամազան-օղլու ամրոցն այնպիսի կերպիւ մը շինուած էր որ քաղաքը ռմբակոծել անկարելի էր անկէ. Լօրիս Մէլիքով զօրապետը զայս տեսնելով՝ որոշեց առ ժամանակ մի զանց ընել եւ չկռուիլ այն ամրոցին դէմ, միայն քաղաքին եւ միւս ամրութեանց վրայ կրակ ընել յարմար դատեց, որոց դէմ ուժգին յարձակում մը պէտք լինէր, երբ թնդանօթաց կատարեալ արդիւնքը տեսնուէր։ Կարելի եղածին չափ քիչ մարդ կորուսանելու համար, նախ որոշուեցաւ որ ամսոյն 17ին՝ ամբողջ օրը քաղաքը ռմբակոծելով անցնի, եւ յարձակումը 18ին միայն լինի, բայց պարագաները կարելի ըրին աւելի կանուխ ձեռք զարնել այս գործոյն։

Ռուսաց զօրքը մայիս 17ին հետեւեալ կարգաւ շարուած էր.

Տէվէլ զօրապետը Կուր գետին ձախ եզերքն անցեր էր Ռամազան-օղլու ամրոցին դէմ ցոյց մ'ընելու համար. Հէյման զօրապետին խումբն (Երեւանայ եւ Պաքուի գումարտակներն՝ ռմբաձիգ զօրաց առաջին եւ երկրորդ թնդանօթաշարերն իր հետ ունենալով) Կուլիավէրտիի բարձունքը կը գրաւէր. Տփղիսու գումարտակն եւ պաշարման թնդանօթներն Էլակէօզի մօտ էին, ձախ կողմը Կուր գետին ափանց վրայ կը գտնուէր Շէրէմէթիեվ զօրապետին հեծելազօրը։ Բոլոր թնդանօթներն իրենց նախկին տեղերէն աւելի յառաջ տարուեր էին։

Ամսոյն 16էն 17ը լուսնալու գիշերն եւ 17ին մինչեւ ռմբակոծութիւնն սկսած ժամանակ Տաճիկք բան մը չըրին. այս միջոցին Հէյման զօրապետին խումբը կարող եղաւ պատուարներ (սիփէր) կանգնել իր թնդանօթներուն առջեւ։ Ճարտարագիտական զօրաց առաջին վաշտին չորրորդ դասակն՝ Երեւանայ գումարտակին զօրաց աջակցութեամբն եւ Պուլմէրինկ գումապետին վերակացութեամբն, այս աշխա-

տուԹիւնը կատարեց արագաբար եւ մեծ խնամով ։ Աստանօր տեղն է կրկնելու Թէ Սապրի փաշա վատուԹիւն ցոյց չտուաւ, բայց միայն տարօրինակ ապիկարուԹիւն մը։ Կուլիավէրտոխի դէմ եղած յարձակման պատրաստուԹիւններուն արգելք լինելու համար ինչպէս որ չէր կրցած բան մ՚ընել, նոյնպէս չկրցաւ այս Թնդանօթներուն զետեղումն եւս արգելուլ, որ դիւրին բան էր իրեն համար՝ բազմաԹիւ Թնդանօթներ ունենալուն ։

Կէս օրէն երեք ժամ յետոյ բոլոր մարտկոցներէն միանգամայն ռմբաձգուԹիւնն սկսաւ, որոյ արդիւնքն ընդհուպ կարելի եղաւ նշմարել ։ Ուրոյն ամրոցներուն հողէ պատուարներն աւրուեցան, Արտահանի պարիսպը խրամատեցաւ. ռուսական բանակին ձախակողմեան ծայրին դիմաց գտնուող Տաճիկ զօրքը մեծապէս խանգարուեցաւ. բերդապահ զօրաց մէկ մասն ետ քաշուեցաւ ։ Ժամը չորս ու կէսին՝ Լօռիս Մէլիքով զօրապետն Հէյման զօրավարին քով ղրկեց Միշչէնքօ փոխ-գնդապետը՝ հարցընելու համար Թէ այն օրը յարձակումն ընելը պատշաճ կը դատէ՞ր այսպիսի պարագայի մը մէջ. գրեԹէ նոյն պահուն Հէյման զօրապետը բանբեր մը կը ղրկէր գնդին հրամանատարին միեւնոյն հարցումն ընելու համար, հետեւաբար որոշուեցաւ յարձակումն անմիջապէս սկսիլ՝ օրը տարաժամեալ լինելուն չնայելով ։ Հէյման զօրապետին խումբը Սինքէր եւ Գար-Թապեա անուն ամրոցներուն դէմ պիտի քալէր, եւ ձախ Թեւն՝ քաղաքին հարաւային արեւմտեան կողմը Կուր գետին ափանց վրայ բարձրացած եւ նուազ կարեւորուԹիւն ունեցող երկու փոքրիկ ամրոցներուն վրայ պիտի յարձակէր ։

Կուլիավէրտոխի բարձանց զառիվայրին վրայ գտնուած հեղեղատներուն մէջէն Հէյման զօրապետն իւր հետեւակազօրն յառաջ վարեց, որպէս զի Տաճիկներն անոր շարժումները չտեսնեն ։ Ռուսք այսպէս զառիԹափներէն վար իջան հետեւեալ կարգաւ. Երեւանեայ գումարտակին առաջին, երկրորդ եւ չորրորդ վաշտերն եւ պահեստի ճարտարագիտական զօրաց առաջին վաշտին չորրորդ դասակն աջակողմեան հեղեղատէն իջաւ, Պաքուի գումարտակին երկու վաշտերն եւս ձախակողմեան հեղեղատէն ։ Այս զօրքն իբրեւ արձակամարտ ցրուած յառաջ կը քալէր եւ յետոյ պիտի խմբուէր այն ամրոցներուն առջեւ զորս պիտի ջանային գրաւել։

Հէյման զօրավարն այս զօրաց գլուխն անցնելով՝ արագ յառաջխաղացուԹեամբ մը տիրեց այն բլրոյ որ Սինքէր ամրոցին դիմացի կողմը կը բարձրանան. այս բարձրաւանդակաց վրայէն զօրքն սկսաւ ամրոցին դէմ սաստիկ կրակ մ՚ընել, եւ ապա արիուԹեամբ յառաջ նետուեցաւ, կապարեայ գնտակներու եւ երկաԹի գնտերու տարափի մը ներքեւ իրենց սուիններն դէպ յառաջ բռնած ։ Տաճիկները վերջին անգամ մ՚եւս հրացաններն պարպելով՝ խառնիխուռն խոյս տուին ամրոցէն դէպ ի Կուր գետին կամրջաց կողմը։ Երեւանեայ գումարտակին վաշտերն անոնց ետեւէն պնդեցան գետին երկայնուԹեանը, մինչ ձախակողմեան եղերաց ամրուԹեանցն եւ սարերուն վրայ գտնուող Տաճիկ զօրքն սաստիկ կրակ մը կը տեղար Ռուսաց վրայ իւր հրացաններով ։

Ձախակողմեան Թեւը կազմող զօրախումբք՝ Կովկասեան գնդին սպայակուտի գլուխ Տուխոլվաքի զօրապետին հրամանատարուԹեամբ՝ յարձակեցան այս միջոցին այն փոքրիկ ամրոցներուն վրայ զոր վերը յիշեցինք, եւ անոնց տիրելէ յետոյ՝ Տաճկաց ետեւէն քաղաքին մէջ մտան ։ Սակայն կռիւ մը սկսաւ այն ժամանակ Արտահանի նեղ փողոցներուն մէջ. Հարկ եղաւ Տաճիկները տներէն վանել հրացանի հարուածներով եւ երբեմն սուիններով ։ Սապրի փաշա ինքզինքն պաշտպանեց արիուԹեամբ. իւր տանը մէջէն՝ որ ամրակառոյց չէնք մ՚էր, յուսահատ դիմադրուԹիւն մ՚ըրաւ. սպայակուտի գլուխ Ահմէտ

տղան սպաննուեցաւ իւր մօտ քաջութեամբ կռուած ժամանակ, բայց անկանոն եւ նորեկ զինուորները խոյս տալով՝ սոցա եւս ետեւէն փախան նաեւ ընտիր զինուորներն։ Կռուոյն ժխորին եւ մթութեան մէջ բազմաթիւ Տաճիկներ գետամոյն եղան՝ ձախակողմեան եզերքն անցնիլ ուզելով։

Նոյն հետոյն Շէրէմէթիեւ զօրապետին հեծելազօրն եւ խազախ Թնդանօթաձիգներուն մէկ մասը վազեցին, եւ կամրջաց մօտը կանգ առնլով՝ անոնց վրայէն անցնելու եւ փախչելու աճապարող Տաճկաց դէմ մէկ քանի անգամ ռմբաձգութիւն ըրին, որով սոքա վերջին ծայր սարսափի եւ իրարանցումի մէջ ինկան։

Սակայն քաղաքին այն մասէն՝ որ աջակողմեան գետեզրին վրայ էր եւ Ռուսաց ձեռքն անցած էր, Հէյման զօրապետին խումբն յառաջ խաղալով՝ Կուր գետին խորաձոր հովտին մէջ իջաւ. անտի պիտի յարձակէր գնտակներու տարափի մը ներքեւէն միջնաբերդին եւ սեպացեալ գետափանց վրայ, ուր միայն երկու կամրջէ կարելի էր անցնիլ, որոց մին կիսաւեր էր։ Երեւանայ, Գարսի եւ Տփղիսու գումարտակներուն զինուորներն իրար խառնուեր էին՝ քիչ մ'առաջ կռուոյն սաստկացած միջոցին, մինչ իրենք Տաճիկները կը հալածէին։ Հէյման զօրապետն իւր զօրքն ետ կանչեց, եւ երկու հարիւր մարդ ժողովելով՝ կամրջաց միոյն վրայ խոյացաւ եւ Կուր գետին դիմացի ափունքը գրաւեց։ Նորա այս արիութեանը համար Լօրիս Մէլիքօվ զօրապետն զինքն այն կռուոյն դիւցազն անուանեց իւր տեղեկագրոց մէջ։ Երեկոյեան ժամը ութին՝ ամեն բան վերջացաւ, եւ գլխաւոր հրամանատարը կրցաւ հետեւեալ հեռագիրը ղրկել ի Տփղիս. «Արտահանի պատնէշներն եւ արտաքին ամրոցներն, վաթսուն (1) թնդանօթ, ահագին քանակութեամբ պաշար եւ մթերք, ինչպէս նաեւ Տաճիկ զօրաց տասն եւ չորս վաշտերու բանակ մը եւ միջնաբերդն յոտս Նորին կայսերական վեհափառութեան են անկեալ։»

Ժամն իննին, զօրքը քաղաքին մէջէն անցաւ եւ պատուարներուն չորս կողմը պտոյտ մ'ըրաւ, մինչ նուագածուք Տէր պահեա ցարը երգը կ'եղանակէին։ Բոլոր ամրութեանց վրայ ռուսական դրօշակ պարզուեցաւ։ Ռամազան-օղլու ամրոցին դէմ յարձակում եղած չէր, որ հզօր եւ ընդարձակ լինելով՝ կրնար երկար ժամանակ դիմանալ. բայց Տաճիկներն այնքան սարսափած էին որ առանց զայն պաշտպանել ուզելու՝ պարպեցին եւ փախան։

Լօրիս Մէլիքօվ զօրապետն այն գիշեր քաղաքին մէջ թողուց Երեւանայ գումարտակն Թօլսթօյի գումարպետին հրամանաց ներքեւ, եւ բերդաքաղաքին առժամանակեայ հրամանատար անուանեց Միւշէնքօ փոխ-գումարպետն. Մնացեալ զօրաց եւս հրաման տուաւ իրենց բանակատեղը դառնալու, որք այս հրամանը կատարեցին առաւօտեան ժամն երեքէն մինչեւ չորս։ Այրուձին փախստականները հալածեց մինչեւ ութ հազարամէթր տեղ, բայց աղջամուղջն արգելք եղաւ անոր՝ այս արշաւանքն աւելի յառաջ տանելու։ Տաճիկներն այնպէս ցրուեցան որ սպայք հազիւ կրցան մէկ քանի մարդ ժողովելով Արտանուշի եւ Ճորոխի հովտին ճանապարհէն Բաթում բերել. Քիւրտերն՝ որ ամենէն առաջ փախուստ տուեր էին, իրենց տները վերադարձան, եւ Սապրի փաշա Էրզրում գնաց ուր իբրեւ դաւաճան բանտարկուեցաւ։

Ռուսք կը խոստովանին թէ ամսոյն 10ին եւ 17ին եղած կռիւներուն մէջ իրենցմէ 1 սպայ եւ 68 զինուորք սպաննուեցան, եւ 10 սպայ, 348 զինուորք վիրաւորեցան։ Ռուսք իրենց ունեցած կորուստները կը ծածկեն պաշտօնական տեղեկագրաց մէջ. այս բանն յաճախ նշանակելու առիթ ալ ունենամք։ Սապրի փաշայի խօսքին նայելով՝ Տաճիկներն անոնցմէ 5,000 մարդ

(1) Արտահանի մէջ եղած Թնդանօթաց ճիշդ թիւն էր 95:

ապաննեցին. բայց այս երկու Թուանշաններն ալ ճշմարտութենէ հեռի են։ Տաճիկ զօրաց 1,750 դիակ Թաղուեցաւ ամսոյն 18ին, 19ին եւ 20ին, եւ շրջակայ դաշտենուէր ձախակողմեան գետեզերաց ամրութիւնները պաշտպանող Միրլիվա Ալի փաշա։ Ռուսք Արտահանի մէջ 92 Թնդանօթ գտան, (Տաճիկներն անոնցմէ 3ը



ԿՈՒՐԻԱՑԻ ԿԱՄԱՒՈՐ ՁԻՆՈՒՈՐ ՄԸ

րուն մէջ բազմաթիւ դիակներ ալ մնացին անթաղ։ Ահմէտ աղա եւ Արտահանի ամրութիւնները շինել տուող երկրաչափներէն մին մեռեր էին։ Ռուսք 1,000 հոգւոյ չափ ալ գերի բռնեցին, որոց մէջ կը գըտպայթուցեր էին,) Նաեւ մեծաքանակ զէնք, մթերք, ուտեստ եւ խրամ բանալու գործիք։ Ռուս ճարտարապետք բերդաքաղաքին ամրութիւնները զննելով եւ գնահատելով՝ ըսած են Թէ 12 կամ 15 միլիոն

ֆրանք ծախք եղած լինելու է անոնց համար :

Մայիս 12ին՝ Լօրիս Մէլիքով զօրավարն իւր զօրաց յայտարարութիւն մ՚ուղղեց, որով անոնց ստացած յաջողութեանցը համար խնդակցութիւնը կը յայտնէր եւ շնորհակալ կը լինէր՝ Նորին վեհաշուք բարձրութեան՝ Կովկասեան բանակին ընդհանուր հրամանատար Միքայէլ մեծ դքսին կողմանէ։ «Մեր զօրքն, ըսաւ, Կովկասեան բանակին նախկին փառաց արժանաւոր հանդիսացած են այս երկու աւուրց մէջ, լաւ կրթեալ եւ զինեալ լինելով՝ անայլայլելի հանդարտութիւն մը, եւ անդրդուելի արիութիւն մը ցոյց տուած են իրենց սպայից առաջնորդութեամբն։»

Հետեւեալ օրը քաղաքական վարչութիւն մը հաստատուեց երկրին մէջ ռուսական դրութեամբ։ Արտահան՝ թէեւ 3-4,000 է աւելի բնակիչ չունէր, սակայն տաճկական գաւառի մը գլխաւոր տեղին եղած էր. այս գաւառն եօթն վիճակներու բաժնուեցաւ, որք են Փոցղով, Չըլտըր, վերին եւ ստորին Արտահան, Զարիշատ, Շիւրէկէլ եւ Բալգուման։ Փոփքօ զօրավարն գաւառին կառավարիչ անուանեցաւ եւ Քոմարով գնդապետն՝ Արտահանի բերդապահ զօրաց հրամանատար։

Ռուսական զօրքն երեք օր հանգիստ առնլով՝ մեկնեցաւ ապա դէպ ի Կարս երթալու համար։

Արտահանի առումն մեծ խրախանցում պատճառեց։ Պայազիտ քաղաքին Ռուսաց ձեռքն յանձնուելուն պատճառաւ՝ հասարակաց կարծիքն արդէն գրգռուեալ էր Կոստանդնուպոլսոյ մէջ։ Արտահանի առումն այս զայրոյթը սաստկացուց. քիչ մնաց յեղափոխութիւն մը պիտի ծագէր, բայց մէկ քանի օր յետոյ կեղծ լուր մը ելնելով՝ իբր թէ Տաճիկները քաղաքն ետ առած են, մտքերը փոքր ի շատէ հանդարտեցան։ Սակայն տաճկական բանակին մէջ բարոյական գէշ ազդեցութիւն մը յառաջ եկած էր. զինուորք այլեւս իրենց գլխաւորաց վրայ վստահութիւն չունեցան այնքան. ընդհակառակն ռուսական բանակը նոր եռանդ մը առաւ։ Զինուորական տեսութեամբ եւս՝ ոչ նուազ կարեւոր հետեւութիւններ ունեցաւ այս քաղաքին առումն։ Ախալցխայի գունդն այնուհետեւ ազատ էր իւր շարժմանց մէջ. ուստի դնաց Ալէքսանդրապոլի գնդին զօրավիգ լինելու, որպէս զի Կարս լաւ մը պաշարուի, եւ այս քաղաքին հաղորդակցութիւնը կտրեց Պաթումի հետ. Մուխթար փաշա ստիպուեցաւ Սօղանլը-տաղի գծէն ետ քաշուելու, եւ այսպէս Կարս՝ Կարնոյ հետ ալ ունեցած հաղորդակցութիւններէն զըրկուեցաւ եւ քիչ մը յետոյ ռուսական զօրօք շրջապատեցաւ բոլորովին։

Սօղանլը-տաղն Հայաստանի մէջ՝ Տաճկաց երկրորդ պաշտպանողական գիծը կը ձեւացնէր որ ի բնէ խիստ ամրացեալ է, եւ անոր կրճից նկարագրութիւնը զոր ըրած եմք, կրնայ գաղափար մը տալ թէ ինչպիսի յարմարութիւն ունէր այն գիծն դիմադրութիւն ընծայելու։ Եթէ Տաճիկք զայն պաշտպանէին, երկար ժամանակ պիտի կ՚առեցնէր Ռուսաց զօրքը։ Բայց իւր ռազմագիտական արժէքը կը նուազէր երբ ճախակողմէն Արտահանի եւ աջակողմէն Պայազիտի ամրութեանց միջոցաւ պաշտպանեալ չլինէր։ Արդ՝ այս երկու քաղաքները թշնամւոյն ձեռքն էին։ Մուխթար փաշա եթէ ուզէր՝ Սօղանլը-տաղի գիծը կրնար չլքանել. երկու ստուար ջոկատ զետեղելու էր Արտահանէն եւ Պայազիտէն Կարին տանող երկու ճանապարհներուն վրայ, եւ իւր զօրքը ցրուելու էր 70 հազարամէթր երկայնութեամբ գծի մը վրայ։ Իւր հրամանաց ներքեւ ունեցած զօրախումբքն սակաւաթիւ էին եւ չէին կրնար գիմանալ, ուստի անհնար էր զանոնք անջատել. ապա ուրեմն որոշեց Սօղանլը-տաղը թողուլ առանց կռուոյ, որպէս զի մի գուցէ Ախալցխայի գունդն իւր յետակողմն անցնի. աւելի կարճ պաշտպանողական գիծ մ՚ընտրեց եւ գնաց իւր

բանակակեդրոնն հաստատեց Զիվինի մօտ որ Սօղանլը-տաղի ետեւն է։ Ասոր կրնար պահպանել՝ Արտահանէն, Կաղզուէն եւ Պայազիտէն Կարին տանող երեք ճանապարհներն. բայց այլ եւս չէր կրնար մեծ օգնութիւն մ'ընել Կարսի պահակ զօրաց։

Մինչդեռ Ախալցխայի գնդին մեծագոյն մասն Ալէքսանդրոպոլի գնդին հետ կը միանար Կարսի պարսպաց ներքեւ, միւս մասը գնաց զննութիւն մ'ընելու Արտահանէն Կարին տանող ճանապարհին վրայ, ուրկէ Ռուսք կրնային Մուխթար փաշայի յետակողմն անցնիլ, ինչպէս որ փաշան վախցեր էր։ Ռուսք հասան մինչեւ Փէննէք՝ ուր իրենց բանակակեդրոնը հաստատեցին, եւ Օլթին եւս գրաւեցին քիչ մը ժամանակ։ Արտահանի առումն եւ տաճիկ զօրաց արագ նահանջն ժողովրդոց մէջ այնպիսի սարսափ մը յառաջ բերեր էին, որ Օլթիի բնակիչք իրենց մէկ քանի երեւելիները Ռուսաց քով ղրկեցին, տեսնելով որ քաղաքական կամ զինուորական պաշտպանութենէ զուրկ են, վասն զի տեղական կառավարութեան անդամները փախած էին։ Սոյն երեւելիք խնդրեցին որ իրենց քաղաքին մէջ պահակ զօրք դրուի՝ այն կողմերն ասպատակող Քիւրտերու հրոսակներուն կողմանէ յափշտակութիւն մը չլինելու համար։ Խմբին հրամանատարը տեսնելով որ Օլթին գրաւելէն ոչ օգուտ եւ ոչ շահ կայ, բնակիչները գոհ ընելու համար հետեւակ զօրաց վաշտ մը ղրկեց՝ ինչպէս նաեւ երեք կամ չորս հեծելադաս՝ երկու դաշտային թնդանօթներով հանդերձ։ Երբ սոքա քաղաքը մտան, ժողովուրդը զիրենք կոյթիւններով ընդունեցաւ։

Սակայն Ռուսաց լրտեսները մէկ քանի օր յետոյ իմաց տուին որ Շահին փաշայի հրամանատարութեամբ տաճիկ զօրաց ութ վաշտ եւ մէկ քանի հեծելադասք կը մօտենան՝ թնդանօթաց մէկ շարով հանդերձ. ասոր վրայ Օլթիի պահակազօրքն շուտով Փէննէք քաշուեցաւ՝ քաղաքին մթերանոցին մէջ գտնուած երեք հազար հրացանները ջախջախելով եւ գետը նետելով՝ ինչպէս նաեւ ռազմամթերքն, ուտեստները բնակչաց բաշխելով, միով բանիւ Տաճկաց այն տեղ թողած բոլոր պիտոյքը բնաջինջ ընելով։



ԿԱՐՍ ՌՈՒՍԱԿԱՆ ԶՕՐՕՔ ԿԸ ՊԱՇԱՐՈՒԻ

Մինչդեռ Ալէքսանդրոպոլի գնդին մէկ մասն Արտահանի առման աջակցելու կ'երթար, միւս մասը Կարսի պարսպաց մօտ կը մնար Գօմարով (1) զօրավարին հրամանատարութեան ներքեւ, պաշտօն ունենալով սոյն բերդաքաղաքին հիւսիսային եւ արեւելեան կողմնքը զննել եւ յաճախ արշաւանք ընելով՝ պաշարող բանակին առժամանակեայ տկարութիւնն յայտնի չընել բերդապահ զօրաց։

Մայիս 12ին առաջին զննութիւն մ'եղաւ յաջողութեամբ Կարսի գետակին աջակողմեան ափանց վրայ։ Կարսի զօրաց դուարին մէկ մասը Ջոկատին ձեռքն անցաւ։ Մայիս 15ին հեծելախումբ մը մինչեւ Արտահանի շրջակայքը գնաց Լօռիս Մելիքով զօրապետին հետ հաղորդակցութիւններն պահպանելու համար։ Մայիս 16ին կարեւոր ընդհարում մ'եղաւ։ Նոյն ինքն Գօմարով զօրապետն, Կարսի ամրութեանց հիւսիսային արեւելեան կողմը զննութիւն մ'ընելու համար, Մնկրէլիի ռըմբակաձիգ զօրաց գումարտակին գլուխն անցեր էր՝ հետն առնլով նաեւ կամաւորաց խառն վաշտ մը, դաշտային թնդանօթաց երկու շար, Տաղստանի անկանոն ձիաւորաց սահն, Ալէքսանդրոպոլի անկանոն ձիաւորաց գումարտակէն երկու դասակ եւ Գարափափագներու մէկ հեծելադասակ։

Այս խումբը՝ Զայիմի բանակատեղէն մեկնելով՝ նախ գնաց դէպ ի Գարատաղ

(1) Գօմարով գումապետ մ'ալ կար որ Արտահան բերդաքաղաքին հրամանատար կարգեցաւ։ Այս երկուքն իրարու հետ շփոթելու չէ։

եւ այն լերան սարերէն միոյն վրայ կանգ առաւ։ Բերդաքաղաքին մարդոց դուռը Գարատաղի եւ Հաֆըզ-փաշայի ամրոցներուն դիմացը կ'արածէր. զօրավարը ջոկատ մը ղրկեց այն կենդանիները բռնելու եւ բերելու համար։ Այս ջոկատին դէմ եկան հազարի չափ վիշապազօրք որ այն առաւօտ հասած էին Սօղանլը-տաղէն. սոքա Հաֆըզ-փաշայի ամրոցէն յանկարծ դուրս ելնելով կատաղութեամբ յարձակեցան Ռուսաց վրայ եւ ստիպեցին զանոնք աճապարանօք ետ քաշուելու։ Չէլօքայեվ զօրավարին հրամանատարութեան տակ գտնուած Տաղստանի երկրորդ գումարտակին երկու դասակներն այն ժամանակ հրաման առացան տաճիկ վիշապազօրաց վրայ կողմնակի յարձակում մ'ընելու, եւ անագորոյն կռիւ մը եղաւ։ Տաճիկները բազմաթիւ էին եւ Ռուսաց մեծ կորուստ կուտային իրենց յոգնահար հրացաններով։ Տաղստանցիք մէկ քանի անգամ անոնց վրայ յարձակեցան սուինով, բայց չկրցան ետ մղել։

Կէս օրն երկու ժամ անցած՝ Տաճկաց հեծելազօրուն օգնութեան հասան ութ վաշտ հետեւակ զօրք թնդանօթներով հանդերձ, Գարատաղի եւ Հաֆըզ-փաշայի ամրոցներէն դուրս ելնելով։ Նոյն պահուն Վրաստանի ռմբակաձիգ զօրաց գումարտակն եւ Սիէվէրսքի վիշապազօրաց գումարտակը թնդանօթաց ձայնն առած լինելով, Զայիմի բանակատեղէն կուգային երկու չար թնդանօթներով հանդերձ։ Այս նոր զօրութեանց շնորհիւ Բօմարով զօրավարը կրցաւ դէմ դնել Կարսէն դուրս ելնող զօրաց։ Խաղախներու երկու գումարտակներ եւս Խալիֆ-օղլուէն սրարշաւ վազեցին թնդանօթաց ձայնն առնելով, եւ յանկարծ յարձակեցան տաճիկ հեծելազօրուն վրայ, որ աճապարանօք նահանջեց դէպ ի հետեւակ զօրաց կողմն. սոքա եւս ետ քաշուեցան եւ Հաֆըզ-փաշայի ամրոցին մօտ պատսպարուեցան։

Նոյն պահուն Չէլօքայեվ զօրավարն մեծ կորուստ կրող Տաղստանցւոց կարգերուն առջեւէն կ'անցնէր եւ խնդակցութիւն կը յայտնէր նոցա արիութեանը համար, երբ գնտակ մը յանկարծ եկաւ մխեցաւ իւր կողին հինգերորդ եւ վեցերորդ ոսկերաց մէջ եւ ինքն ձիէն անկաւ։ Զայիմի բանակատեղը փոխադրուելով՝ վիրաբուժական գործողութիւն եղաւ երեք անգամ իւր վրայ առանց յաջողութեան։ Ամսոյն 23ին մեռաւ եւ ճիշդ այն տան մէջ ուր՝ 1854ին Պէշ-կէտիքլէրի պատերազմէն յետոյ՝ Օրպէլեանի (Ուռպէլեան) իշխանը մեռեր էր։ Ազդու կամք մ'ունեցող մարդ մ'էր Չէլօքայեվ՝ Վրաստանի վաղեմի գերդաստանէ մը սերեալ Կովկասու սպայից շատին պէս։ Ռուսաց խումբն՝ որմէ 2 սպայ եւ 20 ձիաւոր սպաննուած էին եւ 4 սպայ ու 57 ձիաւոր ալ վիրաւորեալ կային, գրաւած տեղւոյն վրայ մինչեւ գիշեր մնալէն յետոյ, Զայիմի բանակատեղը դարձաւ անվրդով։ Տաճիկներն աւելի շատ կորուստ ըրած էին։

Կարսի շուրջն եղած գննութեանց վերջինն էր այս։ Երբ Լօռիս Մէլիքով զօրավարն Ախալցիխէի գնդին մեծագոյն մասն եւ Տէվէլ զօրավարը հետն առած Զայիմի բանակատեղը վերադարձաւ, որոշեց բերդաքաղաքը բոլորովին պաշարել՝ Մուխթար փաշայի Զիվինի մօտ քաշուած լինելն պատեհութիւն համարելով։ Բանակը երեք ջոկատներու բաժնուեցաւ Լօռիս Մէլիքով, Հէյման եւ Տէվէլ զօրավարաց հրամանատարութեան տակ, եւ բանակակեդրոն եղան Մէզիրէ՝ Կարսի հիւսիսային արեւելեան կողմն, Արտաւան՝ հիւսիսային կողմն, եւ Արտօութ՝ հարաւային արեւմտեան կողմն։

Մուխթար փաշա վերջին փորձ մ'ըրաւ Կարսը պաշարմանէ ազատելու եւ կամ գէթ Ռուսաց շարժմունքը խանգարելու համար։ Մայիս 30ին 4,000 ձիաւոր բերդաքաղաքին օգնութեան ղրկեց Մուսա փաշայի հրամանատարութեան տակ, որոց շատը Չէրքէզ էին։ Այս ջոկատն որ հետեւակազօր չունէր իւր հետ, Սօղանլը-տաղն

անցնելէ յետոյ՝ երեկոյին Պէնկլի-Աղձէտ հասաւ, այսինքն այն տեղն ուր երկու ճիւղերու կը բաժնուի Կարսէն Կարին տանող ճանապարհն ։

Լօրիս Մէլիքօվ զօրավարն՝ որ Արտօսթ կ'երթար, այս հեծելազօրուն գալուստն իմանալով, իսկոյն պատուիրեց Չէվչէվածէ իշխանին որ զայն ցրուէ։ Արագ զօրաց խիզախ գլխաւորն առաւ իւր հետ ձիաւորաց Զրդ. հատուածն եւ Տաղստանի Զրդ. գումարտակն՝ տասնեւվեց հատ թնդանօթով, եւ կէս գիշերուն Պէնկլի-Աղձէտ հասաւ։ Զօրքն երեք խմբերու բաժնելով գիւղը պաշարեց բոլորովին ։ Չէրքէզներն՝ որ պահնորդներ չէին դրած իրենց չուրջը, յանկարծակիի եկան, սակայն եւ այնպէս յուսահատ դիմադրութիւն մ'ըրին, եւ գլխաւորապէս հատու զինուք երկար ժամանակ կռուելէ յետոյ փախան։ Այս կռուոյն մէջ Նիժնի-Նօվկօրոտի վիշապազօրաց գումարտակին Զրդ. հատուածը նշանաւոր եղաւ իւր քաջութեամբն ։

Մեծ եղաւ Չէրքէզներուն կորուստը եւ այնպէս ցիր ու ցան եղան՝ որ 400 ձիաւոր միայն դարձաւ Զիվլին. փախստականները քիչ քիչ ժողովեցան յետոյ։ Մուսա փաշա իսկ աներեւոյթ եղած էր։ Այս ձախողութիւնը խիստ զգալի եղաւ օսմանեան բանակին համար որ գրեթէ զուրկ էր ձիաւոր զօրքէ, եւ իւր ունեցած ձիոց մեծագոյն մասն եւս կորոյս այսպէս ։

Մուխթար փաշա այլեւս փոյթ չտարու Սօղանլը-տաղի միւս կողմն անցած բաներուն վրայ, եւ Կարս անօգնական մնաց։ Լօրիս Մէլիքօվ զօրավարն ամրութեանց չուրջը պաշարման գիծ մը նշանակեց 45 հազարամէթրի վրայ, զոր խստիւ պահպանել տուաւ 43 հեծելագնդերով. այնուհետեւ պաշարելոց անկարելի եղաւ բոլորովին դրսի հետ հաղորդակցութիւն ընել։ Կովկասու կուսակալ եւ գործող բանակին գերագոյն հրամանատար Միքայէլ մեծ դուքսն Մէկլիրէի բանակակեդրոնն երթալով՝ պաշարման գործողութիւնները մեծ եռանդեամբ յառաջ վարել տուաւ եւ ամբակոծութիւնն սկսաւ ընդհուպ։

Կարս քաղաքն՝ որ համանուն գաւառին (սանճագ) գլխաւոր տեղին է, Կարս-չայը գետակին եզերքը կառուցեալ է՝ անդ ուր այս գետակը դաշտէն գալով հովտի մը մէջ կը մտնէ եւ գրեթէ ուղղորդ բարձրացեալ քարափանց մէջէն կը հոսի ։

Կարս չորս մասէ կը բաղկանայ, այսինքն քաղաքէն եւ երեք արուարձաններէ, որք են՝ Պայրամ-փաշա՝ աջակողմեան ափանց եւ Գարատաղ լերան հարաւային զառիթափին եւ ստորոտին վրայ, Օրթա-գափու՝ որ ամենէն բազմամարդն է եւ հարաւային կողմը կը գտնուի աջակողմեան ափանց վրայ, Տէմիր-փաշա՝ որ ձախակողմեան ափանց վրայ է քաղաքին եւ Օրթա-գափուի դիմաց, որոց հետ հաղորդակցութիւն ունի երեք քարաշէն կամրջաց միջոցաւ ։

Քաղաքն եւ արուարձաններն սարահարթի մը վրայ են, որ բազում ելեւէջներ ունի եւ երկու անհաւասար մասերու բաժնուած է Կարսի գետակին խորայատակ հովտին միջոցաւ. այս սարահարթին վրայ կան նաեւ ուրիշ բաւական խոր հեղեղատներ, հարաւային արեւելեան կողմը գետինն աւելի ցած է, եւ դաշտ մը կը ձեւացընէ որ Կարսի շրջակայից խոնարհագոյն տեղն է ։

Քաղաքէն վեր Կարսի գետակին եզերքն առաւել կամ նուազ դիւրամատոյց են. իսկ քաղաքէն վար այնպէս սեպացեալ են՝ որ մինչեւ անգամ առանձինն մարդիկ չեն կրնար մինչեւ ջրոյն քով իջնել ։

Այն գետակին աջակողմեան ափանց վրայ, սարահարթին արեւելեան մասն՝ հարաւային արեւելեան դաշտէն բաժնուած է Գարատաղ ըսուած լերամբք, որոց զառիթափներն տակաւ առ տակաւ կը խոնարհին հիւսիսային եւ արեւելեան կողմերէն, մինչդեռ Ալէքսանդրափոլի ճանապարհին մօտ հարաւային զառիթափներն առապար եւ սեպացեալ են։ Այս սարա-

հովիթն մէկ քանի բարձրաւանդակներ ունի գետակին ձախակողմեան ափանց վրայ։ Հիւսիսային կողմն են Չաղմաղ ըսուած բարձունքն, արեւմտեան եւ հարաւային կողմերը կը գտնուին Թըղ-Թէփէսի եւ Զօրագ ըսուած բլուրներն. Սարահարթին միջավայրէն դէպ ի հիւսիսային արեւմտեան կողմը կը ձգի խոր եւ առապար ձորակ մը՝ ուրկէ Կարսի գետակին հետ խառնուող փոքրիկ վտակ մը կ'անցնի։ Դիմացի կողմն դէպ ի հարաւային արեւելք՝ լայն հովիտ մը կը տարածուի, որ քիչ խորութիւն ունի, միայն Կարսի ձորոյն հետ միացած տեղերն սեպացեալ են։

Շրջակայքը չկայ աւելի բարձր սար մը թնդանօթի ռումբ մը հասնելու չափ մօտ եւ Կարսի ռազմագիտական մեծ արժէքն ասկէ է։ Գետին երթալով կը ցածնայ եւ սարահարթը շրջակայ բոլոր տեղերէն բարձրութեամբ գեր ի վերոյ է։

Ժամանակաւ Կարսի ամրութիւնքն՝ բուն քաղաքը շրջապատող եւ տեղ տեղ աշտարակներ ունեցող հին որմէ մը եւ գետափանց մօտ ժայռի մը վրայ շինուած միջնաբերդէ մը կը բաղկանային։ Այս վաղեմի պատուարներն այլեւս անօգուտ են արդի թնդանօթացկատարելագործութեանը նայելով։ Վասն որոյ մէն մի պատերազմէ յետոյ՝ Տաճիկները փոյթ տարած են Կարսի ամրութիւնքն աւելցնելու, եւ բոլոր սարահարթը քիչ քիչ անոնց մէջ առնուած է. Սոյն վերջին տարիներս, մանաւանդ 1863էն ի վեր օսմանեան կառավարութիւնն ընդարձակ եւ հզօր կերտուածներ կանգնել տուած է անդ։

Աստանօր հարկ է նշանակել որ Կարսի եւ շրջակայից ապառաժուտ գետինն այս տեսակ աշխատութեանց համար մեծ դժուարութիւններ կ'ընծայէ. բոլոր հողակոյտներուն համար պէտք եղած հողն ուրիշ տեղէ կը բերուի եւ փոխադրութիւնը շատ դժուար է՝ բազում ելեւէջներ ունեցող այսպիսի խորտաբորտ երկրի մը մէջ։ Օսմանեան կառավարութիւնն այս դժուարութեան նայելով եւ տեսնելով որ շատ բանուորի պէտք կայ այն ամրութիւնները շինելու համար, տարապարհակ աշխատութիւն պահանջելու միջոցը ձեռք առած է եւ բաւական ծախք եւս ըրած։ Այս վերջին տարիներուն մէջ շարունակ շինութիւններ եղած են ապրիլ ամսէն մինչ հոկտեմբեր ամիսն. գործաւորք 3-4 ղուրուշ օրական կ'ընդունէին։

Քաղաքը շրջապատող այլեւայլ կէտերուն համեմատական արժէքը ճշդելու եւ նոր ամրութեանց յատակագիծը շինելու մասին՝ Տաճիկները մեծ օգուտ քաղած են 1854 ի պատերազմին ժամանակ եղած փորձառութենէն, այն պատերազմին՝ յորում Ռուսք Կարսը պաշարեցին եւ յարձակմամբ առին։ Այն ժամանակ շինուած դաշտային ամրութեանց տեղերուն վրայ կը բարձրանան արդի ամրութեանց շատերն եւ գրեթէ միեւնոյն անուններն կը կրեն։

Կարսի պատնիշափակ բանակատեղը կը բաղկանայ Նորոգեալ միջնաբերդէն եւ տասն երկու ուրոյն ամրոցներէ։ Քաղաքը շրջապատող որմը կիսաւեր էր եւ պաշտպանողական արժէք մը չունէր. Ուրոյն ամրոցներուն շարքն երկու մասանց կը բաժնուի, որք են աջակողմեան գետափանց ամրութիւնք եւ ձախակողմեան ամրութիւնք. սոնք բաժնուած են իրարմէ այն ձորով որոյ մէջէն կը հոսի Կարսի գետակն։ Երկու գետափանց ամրութեանց շատերն, թէեւ այսպիսի արգելքով բաժնուած են իրարմէ, սակայն եւ այնպէս կրնան օգնել իրարու։

Աջակողմեան գետափանց կերտուածներն կամ ամրութիւններն էին.

Արապ-Թապեասը կամ Գարա-փափագ ըսուած ամրոցն որ միջնաբերդէն 2,130 մէթր հեռի՝ հիւսիսային արեւելեան կողմը շինուած է Գարատաղի բարձրաւանդակներուն միոյն վրայ։ Անկանոն ձեւ մ'ունի եւ յետակողմը քարաշէն զօրանոց մը կայ։ Այս ամրոցին ձախակողմն Կարսի գետա-

կին բարձր քարափանց վրայ հաստատուած է. Թնդանօթներին հովտին մերձակայքը կը ռմբակոծեն եւ մեծ նպաստ կը մատուցանեն ձախակողմեան գետափանց վրայ գտնուած եւ Ինկիլիզ-Թապեասը ըսուած ամրոցին որմէ վեր կը բարձրանայ Արապ-Թապեասըն ։ Այս ամրոցին աջակողմեան երեսին զուգահեռական գտնուող ուրոյն միջնացանկ (քուաթին) մը կայ ։ Բովանդակ ամրոցին շուրջը հողակոյտեր եւ որոկներ (կլաւի) կը գտնուին, որոց ետեւէն թնդանօթաձիգ եւ հետեւակ զօրքն ռումբ եւ գնտակ կրնան արձակել, սակայն ոչ խրամ կը գտնուի եւ ոչ պատսպարան ։

Գարատաղի ամրոցն՝ որ կը բարձրանայ առաջնոյն հարաւային արեւելեան կողմն եւ անկէ 1,200 մէթր հեռի, կը բաղկանայ մէկ դարանակէ, երկու միջնացանկերէ եւ ասոնց յետակողմը գտնուած 21 ոտնաչափ բարձրութեամբ մէկ մարտկոցէ ։ Սոյն ամրոցն թնդանօթաձիգ եւ հետեւակ զօրաց համար որոկ մ՚ունի, սակայն խրամ չունի՝ ժայռերը պեղելն անհնար լինելուն ։

Հաֆըզ-փաշայի ամրոցն՝ որ առաջինէն 1,720 մէթր հեռի շինուած է սարահարթի մը վրայ, կանոնաւոր դարանակներով ուղղանկիւն քառանկեան ձեւ մ՚ունի. գլխաւոր պատուարին եւ ամրածածուկ ուղւոյն վրայ կողմնական պատսպարաններ կան ։ Հարաւային արեւելեան մարտկոցին առջեւն 210 մէթր հեռի շինուած է Եագալը ըսուած ծայրապատնէշն, որոյ ճակատն 70 մէթր երկայնութիւն ունի ։

. Գանլը ամրոցն՝ որ առաջինէն 2,740 մէթր հեռի է, կը բաղկանայ երկու ուրոյն ամրոցիկներէ եւ մէկ կիսալուսին (պայտաձեւ) փոքրիկ կերտուած է որոյ յետակողմը զօրանոց մը կայ . ունի դարանակներ եւ ուրոյն կիսալուսին պատնէշներ ։ Ամրածածուկ ուղւոյն վրայ պատսպարաններ կան ։ Խրամին երկայնութիւնն 12 ոտնաչափ է եւ խորութիւնը վեց ոտնաչափ ։

Սեւարի անուն ամրոցն՝ որ առաջնոյն արեւմտեան կողմն է 1,550 մէթր հեռի, 1855ին տեսնուած ամրոցին տեղը շինուած է ։

Ձախակողմեան գետափանց ամրութիւններն էին .

Ձիմ կամ Թէք-Խարապէ ըսուած մարտկոցն՝ որ Կարսի ձորոյն՝ քաղաքէն վեր գտնուած մասը ռմբակոծելու սահմանեալ է, հողէ շինուած է եւ խրամ չունի ։ Գարատակէն 37 քայլաչափ հեռի՝ յառաջակողմն որոկ մը կայ շինուած ։

Վէլի-փաշայի ամրոցն՝ որ Ձիմ ըսուած ամրոցէն 1,030 մէթր եւ միջնաբերդէն 885 մէթր հեռի է, շրջափակ կերտուած մ՚է, որոյ երեք կողմանց վրայ դարանակներ կան, եւ չորրորդ կողման վրայ որ միջնաբերդին կը նայի՝ զօրանոց մը եւ պատուար մը կայ . խրամն 21 ոտնաչափ լայնութիւն եւ 7 ոտնաչափ խորութիւն ունի ։ Հետեւակազօրաց համար որոկ մը շինուած է յառաջակողմն ։

Ինկիլիզի ամրոցն՝ որ առաջինէն 1,700 եւ Արապ-Թապեասը ըսուած ամրոցէն 1,300 մէթր հեռի է, կանոնաւոր ձեւ մ՚ունի եւ հարաւային արեւելեան կողմէն ելք մը ։ Այս ամրոցն հողաբլուր չունի եւ միայն հետեւակ զօրք կրնայ պաշտպանուիլ ։ Խրամին լայնութիւնը 21 ոտնաչափ է եւ խորութիւնը 7 ոտնաչափ ։

Մուխլիսի ամրոցն՝ որ առաջնոյն հիւսիսային արեւելեան կողմն է 1,100 մէթր հեռի եւ Արապ-Թապեասը ամրոցէն 1,080 մէթր հեռի, նոր շինուած է. ձեւն անկանոն է եւ յետակողմը բաց ։ Սեպաձեւ քարաժայռի մը վրայ շինուած է՝ Կարսի ձորոյն մէջէն Ջագմագի սարահարթին մերձակայքը ռմբակոծելու համար ։ Մուխլիսի ամրոցէն 230 մէթր հեռի բարձրաւանդակի մը կատարին վրայ ուրիշ ամրութիւն մը պիտի շինուէր Գօլթուգ անուամբ, եւ երկուքը մէկտեղ ամբողջ մը պիտի կազմէին, բայց չշինուեցաւ ։

Լազ-Թէփէսի կամ Ջագմագի ամրոցն՝ որ բարձր եւ սեպացեալ սարահարթի մը վրայ շինուած է, բոլոր շրջակայից վրայ

կը նայի ։ Երեք մարտկոցէ կը բաղկանայ եւ որոկ մ'ունի՝ որոյ ետեւէն հետեւակազօրն հրացան կրնայ արձակել ։

Թըղ-Թէփէսի ամրոցն՝ որ առաջնոյն հարաւային կողմն է՝ 1,200 մէթր հեռի՝ եւ անկէ յետոյ կը դառնի բարձրութեան մասին, դարանակներով ամրոցիկ մ'է առանց որոկի. խրամին լայնութիւնը 9 ոտնաչափ է եւ խորութիւնն՝ եօթն ։ Մարտկոց մը՝ որոյ ճակատն եւ կողմերն 62 մէթր երկայնութիւն ունին, այս ամրոցին պատուարէն 15 մէթր հեռի ժայռի մը վրայ կը բարձրանայ անոր հիւսիսային արեւելեան կողմն, եւ շրջակայիցը վրայ կը նայի ։ Այս մարտկոցին անունն է Այ-Թապեա ։

Թահմազի ամրոցն՝ որ առաջինէն 530 մէթր հեռի է, ունի դարանակներով երկու ճակատներ որք իրարու հետ հաղորդակցութիւն ունին ։

Այս ամրութեանց շարքը պաշտպանողական գիծ մը կը կազմէ, որոյ տարածութիւնը 18 հազարամէթրէն պակաս չէ ։

Իչ-գալէ ըսուած միջնաբերդն՝ որ Կարսի ձորոյն սեպացեալ քարափունքը ձեւացնող Գարատաղի բարձանց արեւմտեան ծայրը շինուած է, 280 մէթր երկայնութեամբ տեղ կը գրաւէ այս լերանց կատարին վրայ. տակը քարէ եւ վրան աղիւսէ շինուած բարձր որմէ մը կը բաղկանայ, որոյ ամենէն երկայն կողմը դէպ ի քաղաքը կը նայի եւ ներքնամուտ բութ անկիւն մ'ունի, մինչդեռ հակառակ կողմն ուղիղ գծի վրայ է ։ Ներքնամուտ անկեան երկու կողմանց վրայ երկու կիսաբոլոր աշտարակներ կան. անոնցմէ զատ երկու աշտարակներ եւս կան ներքին կողմն, եւ դուռ մը միայն կայ հարաւային արեւելեան կողմէն ։ Այն միջնաբերդն ամենէն աւելի արեւելեան կողմէն դիւրամատչելի է. այն քարափունքն որոց վրայ կը բարձրանայ՝ սեպաձեւ են արեւմտեան եւ հիւսիսային արեւմտեան կողմերէն. քաղաքին կողման զառիթափն ալ առապար է, բայց վրան ճանապարհ մը կայ շինուած ։

Յարձակողական եւ պաշտպանողական տեսութեամբ Կարսի պատնիշափակ բանակատեղը զննելով՝ հետեւեալ եզրակացութիւններն յառաջ կուգան ։ Անոր առաւելութիւններն են 1°. շրջակայ երկրին վրայ նայող բարձանց նպաստաւոր ձեւն. 2°. ամրոցաց թնդանօթներուն փոխադարձ եւ զօրաւոր կերպիւ իրարու օգնելն. 3°. ապառաժուտ գետին մը, որ խրամ բանալու մասին բազում արգելք կը յարուցանէ ։

Անպատեհութիւններն են. 1°. պաշտպանողական գծին խիստ տարածեալ եւ Կարսի ձորոյն ընդհատեալ լինելն. 2°. շատ ամրոցներուն խրամ չունենալն. 3°. հող չը գտնուելով՝ պարտակները նորոգելու դժուարութիւնը. 4°. մէկ քանի ամրոցաց խրամներուն առջեւ պատնէշներ չգըտնուիլն. 5°. բերդապահ զօրքը բնակեցնելու եւ պաշարները պահելու համար պէտք եղած դարանափորներուն անբաւականութիւնը. զօրանոցները միայն 3,000 մարդ կրնային առնուլ եւ մթերանոցները 800,000 քիլօկրամ ցորեան միայն կրնային պարունակել՝ որ բերդապահ զօրաց չորս շաբթուան ուտելիքն ըսել էր. 6°. գրեթէ բոլոր ամրոցներուն մէջ ջուր չգտնուիլն եւ Կարսի գետակէն ջուր փոխադրելու դժուարութիւնը. 7°. տակը դարանափորներով պատսպարաններ չգտնուիլն եւ հողէ շինուած պատսպարաններուն սակաւաթիւ լինելն. վերջապէս թնդանօթաց կրակին դէմ փառօղանոցներուն ալ լաւ պատսպարեալ չլինելն ։ Կարսի պաշտպանութեան համար մեծ դժուարութիւն մը կրնար համարուիլ նաեւ քաղաքին հասարակութիւնն, որ 12,000 հոգիէ բաղկացեալ էր եւ պաշարման ժամանակ բերդապահ զօրաց պարէնին մէկ մասը կը սպառէր ։

Կարսի պատնիշափակ բանակատեղն ըստ կանոնի 180 թնդանօթ ունենալու էր. եւ արդարեւ այս չափ թնդանօթ կար, այսինքն 24 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող 100 հատ չերտաւոր թըն-

դանօթներ, որոց չատերը բերանէն կը լցուէին, եւ մէջն առանց փորոքի նոյնչափ մեծութեամբ 54 թնդանօթ ։ Տաճիկներն ունէին նաեւ բերդաքաղաքին մէջ 66 դաշտային թնդանօթ, զորս բերդապահ զօրքն դուրս յարձակած ատեն հետ կ'առնուր։

Պաշտպանողական գծին երկայնութեանը նայելով՝ 23,000ի չափ բերդապահ զօրք չէր բաւեր ազդու դիմադրութիւն մ'ընելու համար. բայց Տաճիկներն այս մասին չատ նախազգուշութիւն ցոյց տուած էին, եւ Մուխթար փաշա թողած էր անդ Հասան փաշայի, Սապրի փաշայի եւ Ահմէտ փաշայի սահերն, այսինքն՝ 18 վաշտ հետեւակազօր, որոց երկուքն ոստորդ զօրաց վաշտեր էին, նաեւ վեց հեծելադաս եւ խրամահատ զօրաց երկու դասակ։ Ասոնց վրայ յաւելլով 12 վաշտ պահեստի զօրք, երեք խմբակ թնդանօթաձիգ զօրք՝ իւրաքանչիւրն մէկ թնդանօթաչարով, ինն վաշտ Մուսթահֆըզ (երկրապահ կամ ազգապահ) զօրք, ընդ ամենն կը լինի 33,000 մարդ, անկանոն չէրքէզ հեծելազօրն ի բաց առեալ։

---

ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ ՌԻՈՆԻ ԳՆԴԻՆ

Ռիոնի գունդն նախ եւ առաջ յաջողութիւն մը չկրցաւ ձեռք բերել, եւ Ասիական Տաճկաստանի երկիրներուն վրայ յառաջացող ռուսական բանակին չորս գնդերուն մէջ ամենէն աւելի արիւնառուշտ կռիւներ ընող եւ ամենէն աւելի կորուստ կրող գունդն այս էր։ Տաճիկներն որ ուրիշ կէտերու վրայ կը յաղթուէին՝ այս կողմէն փոխարինութիւն մը ձեռք կը բերէին, եւ իրենց ազգային խրոխտութիւնը չափազանց կարեւորութիւն մը կ'ընծայէր այս կռիւներուն։

Այս անյաջողութեանց մասին կարելի է արդարացնել Օխլոպժիօ զօրավարն, որ



ՏԷՐՎԻՇ ՓԱՇԱ

ծննդեամբ դաղստանցի՝ քաջ սպայ մ'էր. եւ Ռուսական բանակին մէջ իւր զինուորական աստիճանը սոյն ծայրովը վաստակած էր։ Ռուսական սահմանագլխէն մինչեւ Պաթում 25 հազարամէթր տարածութեամբ տեղւոյ մը վրայ ծովը թափող հեղեղներն եօթնէն պակաս չեն, առանցմէ զատ՝ Ջօլուգ անուն գետակն բազմաթիւ օժանդակներ ունի։ Այն ձորերն որոց մէջէն այս հեղեղները կ'անցնին՝ իրարմէ բաժնուած են անտառախիտ սեպացեալ կատարներով զորս դիւրին է պաշտպանել։ Տաճիկներն անոնց մեծ մասին վրայ լաւ ամրութիւններ շինած էին եւ մէկ մէկ պատուարներ ըրած էին զանոնք, զորս հարկ էր յարձակմամբ առնուլ միառմի՝ մինչեւ Պաթում հասնելու եւ այս քաղաքը պաշարելու համար։

Օսմանեան կառավարութիւնը գիտելով թէ Ռուսք որչափ աչք ունին այն նաւահանգստին վրայ, համեմատաբար խիստ ստուար զօրութիւն հաւաքած էր անդ, այսինքն 10-12 հազարի չափ կանոնաւոր զօրք, նաեւ 7 կամ 8 հազար անկանոն զօրք, որոց գրեթէ ամենքն Լազ էին, այն տեղերը խիստ լաւ կը ճանչէին եւ ի մանկութենէ վարժ էին լեռնական կռիւներու։ Այս կողմի զօրավարն եւս՝ Հասան Թահսին փաշա ազդու կամաց տէր անձ մ'էր, որոյ տեղ յետոյ ոչ նուազ հաստատակամ անձ մը, այն է՝ Տէրվիշ փաշան անցաւ։

Տեղեաց հանգամանքն եւ Տաճկաց բանակին ստուարութենէն զատ՝ անյաջողութեան ուրիշ պատճառներ ալ կային Ռուսաց համար, որք ստիպեալ էին կառուցիլներ չլինելու իրենց ձեռօք։ Անձրեւայոյզ օդն, յորդեալ հեղեղներն եւ ամուռ գետերնն անլուր դժուարութիւններ կ'ընծայէին։ Վերջապէս Տաճիկները ծովու վրայ իշխող լինելով՝ կրնային գաղտնի զօրք հանել ի Պաթում եւ իրենց թշնամիները յանկարծակիի բերել առաւելագոյն զօրութեամբ։

Մէկ յատակագիծ մը միայն կրնար ունենալ Օկլօպժիօ զօրավարն. Ռուսաց երկրէն Տաճկաց երկիրը մտնելու համար երեք ճանապարհ կար, որ սահմանագլխէն քիչ մը հեռի Մուխաստաթի մօտ կը կցէին իրարու։ Այս կէտէն դէպ ի Պաթում ճանապարհ մը միայն կայ, որ ծովուն կը մերձենայ Ցիխէ-Ծիրիէն անցնելով, եւ ապա մինչեւ Պաթում կ'երթայ ծովեզերքէն։ Այս ճանապարհին քով զետեղեալ տաճիկ զօրաց վրայ ստէպ ճակատ առ ճակատ յարձակումներ ընելով զանոնք վանելէ զատ՝ ուրիշ ընելիք չունէր Ռիոնի գունդն, որովհետեւ՝ երկիրը լեռնային լինելուն՝ անկարելի էր կողմնական շրջաններ ընել։

Ռիոնի գունդն յառաջագոյն եղած կարգադրութեանց համեմատ երեք խումբ բաժնուելով՝ սահմանագլխէն անցաւ ապրիլ 24ին՝ [illegible] աղօթքը կարդացուելէն յետոյ։ Ձախակողմեան խումբն որ Ջօլուգի ամրոցէն մեկնած էր՝ Տէնիպլէկով զօրավարին հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր։ Աջակողմեան խումբն՝ որ Սուրբ Նիկողայոսի ամրոցէն կը մեկնէր, եւ միջին խումբն՝ որ ճանապարհ կ'ելնէր Օզուրկէթիէն, երեկոյին Լիմ մօտ իրարու հետ պիտի միանային եւ մէկ խումբ պիտի կազմէին Շէլէմէթիեւ զօրավարին հրամանատարութեան տակ։ Ճանապարհներն այնչափ դէշ էին որ այս երկու զօրախումբք հետեւեալ օրը միայն կրցան միանալ։

Խիստ քիչ ձիաւոր զօրք ունէր Օկլօպժիօ զօրավարն, որովհետեւ լեռնային երկրի մը մէջ կը մտնէր, ուր ընդ երկար քալելու պէտք չկար՝ ըստ մարտագիտութեան, եւ կ'երեւի թէ չէր կարծեր որ Տաճիկներն սահմանագլխոյ մօտ իրեն դէմ պիտի ելնէին, եւ զանց ըրած էր լրտես զօրք ղրկելով երկիրը քննել տալ։ Երբ միջին խումբն ապրիլ 25ին Ջօլուգի ափանց վրայ կ'սկսէր շարժիլ, յանկարծակի Տաճկաց արձակամարտներն ձախակողմեան ափանց սարերուն վրայէն իրենց դէմ սաստիկ

կրակ մ'ընել սկսան։ Գումարպետ Միքէլածէ իշխանն այս սարերուն տիրեց Կուրիացի կամաւորաց առաջին լէգէոնին երկու դասակներովը եւ Լէնքօրանի գումարտակին մէկ դասակովը, եւ միջին խումբը կրցաւ միանալ ալ ձախակողմեան խմբին հետ, որ ժամադրութեան տեղն հասած էր մէկ քանի ժամ առաջ։

Շէլէմէթիեւ զօրավարն իւր բոլոր զօրքը քովը ունենալով այն ժամանակ՝ յառաջապահ զօրաց խումբ մը ղրկեց Մուխասթաթի կողմը քննութիւն մ'ընելու համար։ Տաճիկներն այն տեղ ամրախրամային բանակատեղ մը պատրաստած էին, յորում անկանոն զօրաց հինգ վաշտ եւ ձիաւոր զօրաց երեք դաս կը գտնուէին Չիւրիւք-Սուլու Ալա փաշա անուն իրենց լազ դըլխաւորին հրամանատարութեան տակ։ Ռուսաց ձախակողմեան խումբն՝ որ Զօլուգի ամրոցէն ճանապարհ ելած էր, նախ տիրեց Լէկվա գիւղին, որոյ վրայ եղած յարձակման ժամանակ Մուխէլով փոխգումարպետը վիրաւորեցաւ, յետոյ Օխչամուրիի հովիտն իջնելով՝ Ալի փաշայի ղրից դէմ գնաց ընդհարեցաւ։

Առաւօտեան եօթներորդ ժամէն մինչեւ երեկոյեան վեցերորդ ժամը տեւեց կռիւն՝ առանց որոշ արդիւնք մ'ունենալու։ Ալի փաշա դիւցազնաբար կռուեցաւ, եւ մէկ քանի օր իւր քաջագործութիւնները չափազանց կերպիւ պատմուելով՝ կոստանդնուպօլսեցի Տաճկաց դիւրախաբ երեւակայութիւնն յափշտակեցին զառանցանք պատճառելու չափ։ Մեծ կորուստ կրեցին Ռուսք՝ որոց ի զուր կ'օժանդակէր Շէլէմէթիեւի յառաջապահ խումբն։ Հետեւեալ օրը կռիւն վերստին սկսաւ, այս անգամ այնչափ դիմադրութիւն չտեսնուեցաւ եւ Ռուսք Մուխասթաթը գրաւեցին վերջապէս։ Ձախակողմեան խմբին մէկ քանի ջոկատներն Ալամալէրի գիւղը մտան ամսոյն 26ին եւ Տաճիկները վանեցին։

Ռիոնի գունդն մինչեւ մայիսի մետասաներորդ օրն աշխատեցաւ իւր գրաւած տեղերն ամրացնելու եւ զօրաւոր բանակատեղի մը փոխարկելու, յորում 9 հարիւրորդամէթր տրամաչափով թնդանօթներ դրուեցան։ Նոր ճանապարհներ բացաւ, հիները նորոգեց, Օխչամուրի վտակին վրայ անցքեր պատրաստեց, սահմանագլխոց մօտ հաւաքեալ պարէնն եւ ռազմամթերքն բանակատեղը բերաւ եւ շրջակայից մէջ քննութիւններ ըրաւ։ Այս միջոցին երկու կողմանքն անդադար կը կռուէին հրացանաւ։ Լազերն անտառներուն մէջ պահուած՝ գնտակ հասնելու չափ մօտ կ'երթային, հրացաններն կը պարպէին եւ թեթեւ ոտիւք աներեւոյթ կը լինէին քարածայռերուն մէջ, մինչ տակաւին Ռուսք չէին մտաբերած զիրենք հալածել։

Լրտես զօրքն իմաց տուաւ Օխլօպժիօ զօրավարին թէ Տաճիկներն հզօր կերպիւ Քինթրիշիի (1) ետեւն կ'ամրանային, որոյ սեպացեալ քարափունքն բնական պատուար մը կը ձեւացնէին, եւ թէ բազմաթիւ զօրք հասած էր Պաթումէն գլխաւորապէս Խուցուպանիի (ըստ Տաճկաց Հօսօպան) բարձրաւանդակաց վրայ։ Մայիս 9էն սկսեալ հրացանի կռիւներն սաստկացան յառաջապահ զօրաց միջեւ. նաեւ տեղեկութիւններ կը հասնէին շրջակայ վայրերէն թէ Տաճկաց գործակալներն ժողովուրդը կը գրգռէին եւ մեծ խռովութեան մը կար անոնց մէջ։

Օխլօպժիօ զօրավարն այս կացութիւնն իմանալով՝ որոշեց Քինթրիշիի գիծը գրաւել, Քապուլէթի հասարակութիւնն Տաճկաց թելադրութենէն զերծ պահելու համար, որպէս զի ամբողջ ոտք չելնէ այն հասարակութիւնն եւ իրեն դէմ մեծամեծ

(1) Քինթրիշի կամ ըստ Տաճկաց Գանտրիճ վտակն կը կոչուի նաեւ Չիւրիւք-սու. այսպէս 25 հազարամէթր տարածութեամբ տեղւոյ մը մէջ երեք վտակներ կը գտնուին, որոց անուանքը գրեթէ իրարու նման են. սահմանագլխոց վրայ Զօլուգ կամ Չիւրիւք-սու վտակն, Պաթումի մօտ Ճորոխ կամ Չարուգ գետն, սահմանագլխոց եւ Պաթումի միջեւ ուրիշ Չիւրիւք-սու մը։ Շփոթութիւն չպատճառելու համար՝ այս վերջին վտակին Քինթրիշի անունը միայն պիտի տրուի։

դժուարութիւններ չյարուցանէ ։ Յառաջ խաղալու հրամանը տուաւ իւր զօրաց մայիս 11 ին. Տէնիպէկով հաստուածապետին յառաջապահ խումբը Խուցուպանի գիւղը պիտի դրաւէր, եւ Շէլէմէթիեվ հաստուածապետին խումբն այն ճանապարհին պիտի տիրէր որ Մուխաաթաթէն դէպ ի ծով կը տանի Բինթրիշի վտակին բերանին մօտ։ Միայն պահեստի զօրաց ստուար խումբ մը մնաց Մուխաաթաթի մէջ, որպէս զի պէտք եղած տեղն նոր զօրք կարելի լինի հասցնել, եւ եթէ յառաջ գացող զօրքն ետ քաշուելու ստիպուի՝ անոնց օգնել։ Առաւօտեան ժամն երեքին զօրախումբք սկսան խաղալ ըստ սահմանեալ կարգադրութեանց ։

Աչքուայի ջրերը Բինթրիշի ջրերէն բաժնող Փէրանկ լերանց շղթային երկրորդական սարերուն վրայէն՝ որոց մէջ խոռաձոր հեղեղատներ կը տեսնուին, կ'անցնի այն ճանապարհն ուրմէ պիտի քալէր Տէնիպէկով զօրավարն . այս ճանապարհը խիտ անտառի մը մէջը կը գտնուի Բանտակատեղէն սկսեալ մինչեւ Աչքուա վտակն, որոյ ձախակողմեան ափանց վրայ աստիճանաւոր կերպիւ հետզհետէ սարեր կը բարձրանան . այս սեպացեալ բարձանց զառիթափներուն վրայ խիտ առ խիտ ծառեր եւ բնակարաններ կան աստ անդ ։ Այս աստիճանաւոր սարերն որ բնական բերդեր կը ձեւացնեն՝ ամրացեալ էին . անտառներուն եւ հեղեղատներուն մէջէն օձապտոյտ շրջաններ ունեցող նեղ ճանապարհն եւս տեղ տեղ խափանեալ էր ահագին ծառերով։ Այս բարձանց ետեւ իրարմէ աւելի բարձր ուրիշ սարերու շարք մ'եւս կայ խորաձոր հեղեղատներով առաջին շարքէն բաժանեալ, յորս կը տեսնուին Կուսարա եւ Խուցապանի գիւղերը ձեւացնող սփիւռ տներն։ Զինուորական տեսութեամբ ամենէն հզօր է այս վերջին կէտն՝ որ բոլոր շրջակայից վրայ կը նայի, Խուցուպանի սարին գագաթը հին եկեղեցի մը կայ, որոյ շուրջը գտնուած մէկ քանի տներն այն զօրաւոր դիրք պաշտպանողական արժէքը կ'առաւելուն ։

Յառաջապահ զօրքն Տէնիպէկով հաստուածապետին հրամանատարութեան տակ երկու խմբի բաժնուած էր . աջակողմեան խումբն՝ որ միւսէն մեծ էր եւ կը բաղկանար 14 3/4 գասակէ եւ 50 ձիաւորներէ՝ չորս լեռնային թնդանօթներով հանդերձ, Սոլթան գումարապետին հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր եւ ճանապարհին աջ կողմէն կը քալէր. ձախակողմեան խումբն ճանապարհին վրայէն կ'երթար, հետեւակ փլաթուններուն առաջին վաշտին հրամանատար Բօղէլքով փոխ-գումարապետին հրամանաց ներքեւ, եւ կը բաղկանար հետեւակ զօրաց 6 1/4 դասակէ եւ 20 ձիաւորներէ՝ լեռնային երկու թնդանօթներով հանդերձ։ Գլխաւոր խմբին ձախակողմը պիտի պաշտպանէր այս ։

Օխլօպժիօ զօրավարն՝ Մուխաաթաթի յառաջակողմը նախորդ օրերն 9 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող 24 թնդանօթ զետեղել տուած էր , որք Աչքուայի բարձանց դէմ կրակ ընել սկսան, մինչդեռ յարձակում ընելու սահմանեալ խմբերը ճանապարհ կ'ելնէին։ Տէնիպէկով զօրավարին յառաջապահ խումբն իւր չորս թնդանօթներով մէկտեղ թաւուտներուն մէջ մտած ժամանակ, սարերուն վրայէն եւ ծառոց ետեւէն Տաճիկներն սաստիկ կրակ մ'ընել սկսան իւր դէմ, որով Ռուսք ստիպուեցան կանգ առնուլ, մինչդեռ շղթայաձեւ շարուած արձակամարտներն յամր կերպիւ յառաջ կը խաղային Տաճիկներն ետ մղելով, եւ խրամահատները ճանապարհ կը բանային ։ Ռուսք մեծ վնաս կրեցին այսպէս կանգ առնելու ստիպուած լինելով, վասն զի անձուկ տեղի մը մէջ կը գտնուէին եւ չէին կրնար իրարմէ բացուիլ. հարկ եղաւ կրակին ներքեւ սպասել մինչեւ որ արձակամարտներն եւ թնդանօթաձիգ զօրքն իրենց նպատակին հասնին ։ Ամենէն աւելի լեռնային թնդանօթաց շարն

վնասեցաւ, զոր Տաճիկներն իրենց ամբերուն նշաւակ ընտրած էին. Հրամանատար Իվոօքինով հարիւրապետին միսը սաստիկ ճմլեցաւ, թնդանօթներուն քովի մարդոց շատն եւ եօթն ձի կորսուեցան։ Այն ժամանակ հրաման եղաւ այս լեռնային թնդանօթներն ետ քաշելու, վասն զի չէին կրնար թշնամւոյն բաւական վնաս պատճառել, բարձր բլուրներու վրայ կրակ ընելու համար հարկ լինելով դէպ ի վեր ռումբ արձակել։

Հինգ ժամ հրացաններուն պարպատիւնը լսելի եղաւ այսպէս անտառներուն մէջ, սակայն Ռուսք չկարողացան զգալի կերպիւ յառաջել։ Հասան փաշա Աչքուայի գծին վրայ 5-6,000 մարդ դրկած էր, որոց մէկ մասը կանոնաւոր զօրք էր եւ մէկ մասն՝ Լազիստանի անկանոն զօրք։ Ամենքը զինեալ էին արագաձիգ հրացաններով եւ մեծ արիութեամբ կը կռուէին իրենց պատնէշներուն եւ ծառոց ետեւ պահուած։ Առաւօտեան ժամն ութին՝ Ռիոնի գնդին հրամանատարը տեսնելով որ ճանապարհներն իրարմէ շատ բաց գտնուելուն՝ մեծ անջրպետ մը կար երկու խմբից մէջ, որոնց կեդրոնը զօրացնել, որոյ դիմաց կը բարձրանար Տաճկաց ամենէն հզօր պատնէշներէն մին. հետեւաբար հրաման ըրաւ որ Գարանովլքի գումարտակին հրամանատարութեան տակ գտնուած Սէվաստոփոլի գումարտակին երրորդ վաշտն եւ դրօշակիր Մաքայէվ իշխանին հրամանաց ներքեւ գտնուող Կուրիացի ազգապահ զօրաց չորրորդ հեծելազօրականն յառաջ խաղան։ Այս պահեստի զօրքն դէպ ի պատնէշն քալեց արագութեամբ եւ լաւ տեղ մը զետեղեցաւ խիստ սաստիկ կրակի մը ներքեւ։

Սակայն գլխաւոր դրից վրայ գտնուած 24 թնդանօթաց ամբաձգութիւնն անհերեւ արդիւնք մը յառաջ բերել կը սկսէր. սոցա ռումբքն Տաճկաց դրից կեդրոնը կոծելով բնակարաններն եւ պատնէշները կը քանդէին։ Այսու ամենայնիւ Տաճիկները դարձեալ կատաղութեամբ կը դիմադրէին առանց տեղի տալու։ Յայտնի եղաւ որ եթէ Ռուսք միայն իրենց ամբերուն արդեանց սպասէին, այն տեղն երբէք իրենց ձեռքը չպիտի անցնէր։ Բաւական հետաքրքրական բան մը կայ. Տաճիկներն՝ որ թնդանօթի եւ հրացանի կրակին կը դիմանան սքանչելի կերպիւ, կարծես թէ սուինով կամ սրով եղած կռիւներէ շատ կը վախնան։ Արդէն այս պատերազմին մէջ տեսնուած էր որ Ռուսաց հետ գիրկ ընդ գիրկ մարտնչելու ստիպուած ժամանակնին, երբէք դիմացած չեն ընդհարման։ Այս անգամ ալ նոյնն եղաւ։ Տէնիսլէկով զօրավարն իւր զօրաց հրաման ըրաւ սուինով յարձակելու, եւ նոյն իսկ ինքն առաջնորդեց անոնց։ Բոլոր զօրքն իրենց գլխաւորին օրինակաւն եւ իրենց հանած աղաղակներովն ոգեւորեալ եռանդագին խոյացան սուիններին յառաջ բռնած. Տաճիկներն վերջին անգամ հրացաննին պարպեցին եւ իրենց զօրաւոր դիրքը թողլով՝ խոյս տուին։

Շելէմէթիեվ զօրավարն՝ որ առաւօտեան ժամն երեք ու կէսին ճանապարհ ելած էր, ալ կողմէն կը գործէր։ Աչքուայի վտակին ու նոյն կիրճին՝ անտառախիտ երկրէ մը պ[illegible]ելու, եւ [illegible]նչ մը ելեւէջներ ունէր. Նորա [illegible] էր երթալ գրաւել դէպ ի Զիւրիւք-սու տանող ճանապարհներուն միացած տեղերը։ Միանգամայն Խուցուպանիի արեւմտեան կողմէն ցոյց մը պիտի ընէր։ Այն կողմերը խիտ անտառ մը կայ Աչքուայի ձախակողմեան ափանց լեռներուն վրայ. Քինթրիշի վտակին ստորին մասին մօտ եղած գիւղերը ինչպէս նաեւ Խուցուպանի տանող ճանապարհներն այս անտառին մէջէն կ՚անցնին ուր մէկ քանի բնակարաններ կան աստ անդ։ Այս երկիրը պաշտպանուած էր պարկէններով, կտրուած ծառերու կոյտերով եւ ուրիշ արգելներով, որոց ետեւ պատսպարաններ կային պաշտպանող զօրաց համար։

Շելէմէթիեվ զօրավարին ջոկատն եւս երկու խմբի բաժնուած էր, որք միմեանց

կից աջակողմը կը գտնուէր Քապուլէթի գաւառակին, որոյ բազմաթիւ լաւ հասարակութիւնն յոյժ անհանդարտ եւ պատերազմասէր լինելով՝ հանապազ սպառնալիք մ'էր Ռուսաց ձախակողման համար ։

Տասն եւ հինգ օր կռիւ չեղաւ. այս միջոցին Ռուսք ճանապարհներ շինեցին 45 կամ 50 հազարամէթրի չափ տեղ, եւ կամուրջներ հաստատեցին այն հեղեղներուն վրայ որ արգելք կը լինէին թնդանօթաց փոխադրութեան։ Ապա Օխլօպժիօ զօրավարն վերստին թշնամութեան ձեռնարկեց՝ Տաճիկները Քինթրիշիի գծէն յետս մղելու համար, ինչպէս որ մղած էր Աչքուայի գծէն. իւր բանակն դարձեալ երկու խմբերու բաժնեց, որք մայիս 28 ին սկսան յառաջ խաղալ ։ Առաջին խումբն պիտի մտնէր Քապուլէթի գաւառակին մէջ, պիտի գրաւէր այն նեղ անցքերն ուրկէ բնակիչք Պաթումի հետ հաղորդակցութիւն ունէին, եւ տեղւոյն հասարակութիւնը պիտի հանդարտեցնէր՝ Տաճիկներէն բոլորովին անջատելով զանոնք։ Կատարեալ յաջողութիւն մ'ունեցաւ այս խումբն՝ որ հազարապետ Մէլիքով իշխանին հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր։ Տեղեաց դժուարութեանցն հակառակ՝ անցքերը խափանող անկանոն զօրքը վանեց եւ Խուցուպանիէն 7 հազարամէթր հեռի այնպիսի տեղ մը գնաց բանակեցաւ՝ ուրկէ կրնար Քապուլէթի գաւառակին իշխել ։ Լազերն այս կերպիւ Տաճիկներէն բաժնուելով՝ խաղաղեցան. մէկ քանի գիւղերու բնակիչք կամաւ Ռուսաց յանձնեցին իրենց զէնքերն, մէկ քանի գիւղեր եւս իրենց երեւելիներն ղրկեցին հնազանդութիւն յայտնելու համար,

Երկրորդ խումբն Քինթրիշիէն անցնելով՝ բաւական դիւրութեամբ գրաւեց Սամփայի բարձունքը, եւ Տաճիկներն դէպ ի Ցիխէ-Ծիրի քաշուեցան Աչքուայի գծէն աւելի զօրաւոր դիրք մը չուզելով այնքան ուժգնութեամբ պաշտպանել ։

Այս կռուէն յետոյ ռուսական բանակն դարձեալ հանգիստ ըրաւ։ Դժուար է բացատրել Ռուսաց այսպէս երկար ժամանակ անգործ մնալուն պատճառը։ Մէն մի գործողութենէ յետոյ նոքա այսպէս կ'ընէին. սահմանագլխէն մինչեւ Պաթում հեռաւորութիւնն ուղիղ գծով 25 հազարամէթր է. արդ՝ յունիսի սկիզբներն Ռիոնի գունդը տակաւին այս քաղաքին պարիսպները տեսած չէր, եւ վեց շաբթուան մէջ ճանապարհին կէսն հազիւ հասած էր, այսինքն՝ 12 կամ 13 հազարամէթր տեղ քալած։ Անընդհատ անձրեւ տեղալէն եւ լեռնային երկրի մը մէջ ճանապարհներուն դէշ վիճակէն յառաջ եկած դժուարութիւնքն էին միթէ այս յապաղման պատճառ, եւ կամ Տաճկաց զօրեղ դիմադրութիւնն, կամ Ռուսաց թուոյն անբաւականութիւնն։ Օխլօպժիօ զօրավարն գաղտնի հրամա՞ն ընդունած էր միթէ չաճապարելու, եւ միայն Տաճկաց՝ Ռիոնի գծին դէմ յառաջխաղացութիւնն արգելլու՝ որպէս զի Կովկասու մէջ ծագած ապստամբութեան ձեռնտու չլինին, եւ կամ միթէ Ռուսիա անօգուտ կը համարէր՝ Պաթումի նաւահանգիստը գրաւելու համար իւր մարդիկը զոհել, քանի որ պիտի կրնար զայն ձեռք անցընել՝ եթէ այլուր յաղթական հանդիսանար ։ Գուցէ այս յապաղումն՝ որ այնքան զարմանք առթեց, այս բոլոր պատճառներէն միանգամայն յառաջ եկած էր ։

# Գլուխ Հնգետասաներորդ

## ԱՌՈՒՄՆ ՍՕԽՈՒՄ-ԳԱԼԷԻ

### ԿՈՎԿԱՍ ԵՒ ՉԷՐՔԷԶՔ

*Տաճկաստանի եւ մանաւանդ Կոստանդնուպօլսոյ մէջ տաճիկ հասարակութիւնն նախարարութեան դէմ այնքան գրգռեալ*



ՍԻՒԼԷՅՄԱՆ ՓԱՇԱ

*էր՝ Արտահան եւ Պայազիտ բերդաքաղաքաց Ռուսաց ձեռքն անցնելուն վրայ, որ պատերազմի նախարար Ռէուֆ փաշայի խորհրդով՝ պաշարման վիճակ հրատարակեցաւ մայրաքաղաքին մէջ։ Քաղաքական իշխանութեանց գործերն եւ վերաբերութիւնքն զինուորական իշխանութեանց ձեռքն անցան, եւ պատերազմական խորհուրդ մը հաստատուեցաւ Ռէուֆ փաշայի նախագահութեամբ, որ յանցանաց ատեանին համեմատ ծանր պատիժներ պիտի վճռէր եւ անմիջապէս գործադրել տայր. զինուորական իշխանութիւնն հասարակութեան ձեռքն եղած զէնքն եւ ռազմամթերքը պիտի գրաւէր, գիշեր կամ ցերեկ ժամանակ տանց մէջ խուզարկութիւններ պիտի կրնար ընել, կասկածելի եղող եւ գէշ անցեալ ունեցող անձինքը պիտի աքսորէր, գրգռիչ լրագիրներն եւ հրատարակութիւնները պիտի խափանէր, եւ որ եւ իցէ ժողո-*

վերջական գումարմունք պիտի տրուեցան։ Րէշիդ փաշա երեք աւուր մէջ 200 հոգի վտարել տուաւ, որոց մէջ կը գտնուէին Նորատի-Թուրքիոյ կուսակցութեան բոլոր գլխաւորներն, Ակեան Էֆէնտի, Քէմալ պէյ, եւայլն։ Ոստիկանութեան գաղտնի գործակալներ ամեն օր Կոստանդնուպօլսոյ փողոցները կը թափէին՝ մտիկ ընելու համար ինչ խօսք որ կը պտտցուէր։ Եթէ մէկը պատերազմի կամ քաղաքականութեան վրայ խօսէր, անմիջապէս բռնուելով պատերազմական խորհրդոց առջեւը կը տարուէր եւ կը դատուէր։ Բայց այս բուռն ճնշումը չէր կրցած ժողովուրդն հանդարտեցնել, որ մեծ անձկութեան մէջ էր պատերազմին ինչ ելք ունենալուն վրայ։ Միայն Սօխում-գալէի առման լուրն տաճիկ հասարակութեան տխրութեան հետ ցնծութիւն կը խառնէր։

Սակայն Րէշիդ փաշա մեծ սխալ մը գործած էր՝ այս քաղաքն առնելու համար՝ Ափխազիոյ մէջ 10-12,000 մարդ հանելովը, մինչդեռ բոլոր սահմանագլխոց վրայ զինուոր կը պակսէր։ Այս գունդն անգործութեան պիտի դատապարտուէր անդ, եւ Տաճկաց այս արշաւանքն՝ Կովկասու մէջ Ռուսաց կացութեան եւ Հայաստանի մէջ նոցա ըրած գործողութեանց վրայ ազդեցութիւն մը պիտի չունենար։

Հաւանական է թէ Րէշիդ փաշա՝ որ աշխարհագրութեան անհմուտ էր, ասիկա ժողովրդեան ունեցած այն սխալ կարծեաց հաղորդ գտնուած է, իբր թէ Չերքէզներն հին ազգ մը կը կազմեն եւ Ռուսաց լծոյն դէմ վտարանջելու պատրաստ են Կովկասու ամեն կէտերուն վրայ։ Ճշդիւ խօսելով՝ Չէրքէզ բառն ուրոյն ազգի մը կամ ցեղի մ'անուն չէ. այս անուամբ կը ճանաչեն այն անթիւ փոքր ցեղերն եւ ժողովուրդներն որ հազարաւոր տարիներէ ի վեր միմեանց քով անխառն կ'ապրին Կովկասեան լերանց ստուար շղթային մէջ։

Հերոդոտ՝ որ Քրիստոսէ առաջ հինգերորդ դարուն մէջ Սեւ ծովու ափանց յունական գաղթականութեանց այցելութիւն ըրած եւ Կովկասեան ժողովրդոց վրայ հակիրճ բայց կատարելապէս ճիշդ տեղեկութիւններ հաւաքած է, կը վկայէ թէ այն լերանց մէջ այլատեսակ բազմաթիւ ազգեր կային։ Ստրաբոն կը պատմէ որ Սեւ ծովու արեւելեան ափանց վրայ՝ գաղթականաց ունեցած գլխաւոր վաճառատեղւոյն՝ այն է Դիոսկուրասի մէջ եօթանասուն ցեղէ մարդիկ կը վազէին կուգային, կամ ըստ այլոց՝ երեք հարիւր ցեղէ, եւ տարբեր լեզուներ կը խօսէին. Պլինիոս՝ որ նոյն խօսքը կը կրկնէ, կը յաւելու ըսել թէ՝ այն Դիոսկուրաս քաղաքին մէջ որ իւր ժամանակին ամայի էր՝ Հռովմայեցիք երբեմն հարիւր երեսուն թարգման ունէին՝ վաճառականաց համար պիտանի։ Գ. Տիւլորիէ՝ որ ասկէ մէկ քանի տարի յառաջ հետաքրքրական տեղեկութեամբք լի երկասիրութիւն մը հրատարակած է Կովկասեան ժողովրդոց եւ Չերքէզներուն վրայ, երկու արաբ մատենագրաց վկայութիւնն եւս կը յաւելու, այն է՝ Իպն-Հէյքալ աշխարհագրին եւ Մասուտի անուն պատմագիր դիւանականին, որ ճիշդ հին մատենագրաց պէս կը խօսին։ Զարմանալի բան. այսօր ալ ճիշդ երկու հազար տարի յառաջ եղածին պէս է, եւ բոլոր ճանապարհորդք կ'ապշին՝ Կովկասու այլեւայլ ժողովրդոց մէջ տեսնուած բարուց, լեզուաց, սովորութեանց, կրօնից եւ ընկերական դրութեանց զանազանութեանը վրայ։ Այս ցեղերուն մէկ քանիները քրիստոնեայ են եւ ինքնակամ խնդրած են միանալ Ռուսաց տէրութեան, մէկ քանիներն մահմետական են, եւ մէկ քանիներն ալ հեթանոս են կամ գրեթէ առանց կրօնքի կ'ապրին։ Յայտնի չերեւիր արդեօք՝ թէ այսքան հակառակ շահերով բաժանումներ ունեցող երկրի մը մէջ ընդհանուր ապըստամբութիւն մը յարուցանելու հնարաւորութեան հաւատալն յոյժ մեծ սխալ մ'էր։

Մինչեւ այն ժամանակն՝ յորում կատա-

բեւեռակէս խաղաղեցաւ Կովկաս, մէկ քանի տարի յառաջ, Ռուսք զինուորական եղանակաւ ձախ թեւի, կեդրոնի եւ աջ թեւի կը բաժնէին զայն։ Ջախակողմն՝ այսինքն կասպից ծովուն մօտ կը բնակին Լէզկիներու հզօր ազգն։ Ասոնց երկիրն՝ որ Կովկասու լեռանց շղթային ձեւացած երկու ճիւղերու միջավայր կը գտնուի, եւ որոյ տաճկերէն Տաղստան անունն «լեռնային երկիր» ըսել է, բացառիկ դիրք մ'ունենալով, երկար ժամանակ Ռուսիոյ եւ Պարսկաստանի մէջ իբր չէզոք տեղ մը մնաց։ Ուրիշ ազգաց համար ապաստարան մը եղած է այս վիճակին մէջ. ինչպէս կը լինին այսպիսի չէզոք տեղերն։ Քաջայարմար աւանդութիւն մը կայ որ Լէզկիներուն բարքը կը բացատրէ եւ կ'արդարացընէ։ Երբ աստուածութիւնն երկիրը բաժներ է մարդկային ցեղերուն, Լէզկիները մոռցեր է եւ միայն մաս մը ապառաժ տեղ մնացեր է. վասն որոյ իրենց մօտի դաշտերուն բնակիչները կողոպտելու մշտնջենաւոր թոյլտուութիւն շնորհուեր է իրենց ի փոխարինութիւն։ Ասոնց գլխաւորին հետ տեսնուող անձ մը՝ գովեստ չբերող հետեւեալ խօսքերով կը նկարագրէ զայն՝ առ Ադամ Օլէառիոս նամակ մը գրելով, որ դեսպան էր ի Պարսկաստան յամին 1638. «Ըսաւ նաեւ թէ ինքն ոչ Աստուծմէ, ոչ սատանայէն եւ ոչ որ եւ իցէ օտար իշխանէ մը կ'ակնածի, թէ իւր խօսքը բանի տեղ չդնէր, թէ ինքն երկրին ամենէն նշանաւոր աւազակներէն մին է, եւ թէ իւր ամենէն մեծ զուարճութիւնն է գողութիւն եւ արիւնհեղութիւն ընել։»

Տաղստանի պատմութեան ամենէն աւելի պանծալի դէպքն է այս երկրին Ռուսաց կողմանէ գրաւումն, եւ Շամիլ՝ իւր վեհ կերպարանքովն՝ իւր ժողովրդեան այնպիսի վիպասանական փայլ մ'է տուած, որով բոլոր մարդոց համակրութեան եւ սքանչանաց առարկայ եղած է։ Այս հիանալի մարդն՝ որ գետնէն երկու մեթր վեր ձգուեալ չուանի մը վրայէն կ'ոստնուր, ութ ու կէս մեթր լայնութեամբ փոսերու վրայէն կը ցատկէր, իւր կազմութիւնը զօրացնելու համար օդին բոլոր վնասակարութեանց ինքզինք կը մատնէր բոկոտընաց ոտիւք եւ բաց լանջօք. այս մարդն՝ որ օր մը հրաշալի արիութեամբ կրցաւ Ռուսաց ձեռքէն խոյս տալ՝ կուրծքն սուինով մը շամփրեալ եւ թիկանց մէկ ոսկրն քարի հարուածէ մը ջախջախեալ լինելէն յետոյ, նախնի դիւցազանց տիպարը կը ներկայացնէր թէ մարմնական եւ թէ մտաւորական հանգամանօքն։

Վերջին մարգարէն եղաւ այն միւրիտներու աղանդին, որ մահմետականաց երկու գլխաւոր հերձուածներն հաշտեցնելու կը ջանար, եւ նշանաւոր էր լուսաւոր իմաստասիրութեամբ։ Իւր աւանդութեան քարոզութեամբքն կարող եղաւ մէկ օրէնքի տակ կառավարել Կովկասու բովանդակ արեւելեան մասն, եւ քսան եւ հինգ տարի, այն է 1834 էն մինչեւ 1859 թուականն Ռուսաց բանակները կասեցոյց։ Կունիփ գնացած ժամանակ՝ միայն քառասուն եւ հինգ ընկեր ունէր իւր քով։ Ռուսք նորա ցոյց տուած վարմանց վրայ սքանչացած՝ մեծ պատիւ ըրին նմա՝ զինքը ձերբակալելէն յետոյ։ Քալուկա բնակած ժամանակ՝ օր մը հետեւեալ խօսքն ըսաւ։ «Այժմ ուրիշ բան չմնար ինձ ընել, բայց եթէ Կովկասու շուտով խաղաղութիւն ստանալուն եւ կայսեր համար աղօթք ընել։» Ստուգիւ նորա հպատակութիւնն փոքր ի շատէ ազդեցութիւն ունեցաւ Լէզկիներուն ապագային վրայ. սոքա իրենց հնազանդելէն ի վեր՝ միշտ անդորր մնացին։ Լէզկիներն բոլոր լեռնականաց նման շահասէր են, իրենցմէ շատերն ձեռնարուեստից կ'զբաղին, եւ ոմանք ռուսական բանակին մէջ պատուաւոր աստիճաններ ստանալու եւ յառաջ երթալու հրապուրանօք կը յաջողին. Կարսի պարսպաց ներքեւ Տաղստանի գումարտակին մարտնչիլն արդէն տեսանք։ Ոմանք եւս քաղաքական պաշտօններու մէջ կը մտնեն։

Լէզկիներուն մօտ դէպ ի Կովկասու կեդրոնը կը բնակին Չէչէն կամ Չէչէնչ ըսուած ժողովուրդն, որ Լէզկիներուն նման Շամիլի իշխանութեան ներքեւ էր։ Սոցա ջոկերն՝ որք 150,000ի չափ հոգի կը բաղկանան, կարի անհանդարտ են։ Ինչպէս երբեմն նոյն իսկ մարդարէին՝ այն է Շամիլի դէմ ըմբոստ կը գտնուէին, նոյնպէս եւ են այսօր Ռուսիոյ դէմ, եւ ընդհուպ սոցա արարքը պիտի պատմեմք, վասն զի ձախակողմեան թեւին եւ կեդրոնի ցեղերուն մէջ միայն այս է որ գրգռիչներու սադրանացն անսալով, խռովութիւններ հանած է մինչեւ ցարդ։

Թախտին մէկ զարմանալի բերմամբն՝ կեդրոնը գտնուող ժողովուրդներն միշտ հաւատարիմ եւ անձնուէր մնացած են Ռուսիոյ։ Նոյն իսկ Շամիլ յաղթական խմբի մը գլուխն անցած ժամանակ՝ չյաջողեցաւ Քապարտացիներն եւ Օսերն ոտք հանելու։ Այս իրողութիւնը պէտք է լաւ ըմբռնել եւ մոքէ չհանել, վասն զի Կովկասու քաղաքական կացութիւնը կը բացատրէ. այն ջոկերն՝ որոց վրայ հակառուսական գաղափարաց ծաւալումն կրնայ փոքր ի շատէ ազդեցութիւն ունենալ, իրարմէ բաժնուած են այսպէս՝ մէջտեղերնին խաղաղասէր ժողովուրդ գտնուելովն, եւ երկու խումբ կը կազմեն, որոց մէջ յարաբերութիւն չկրնար լինել։ Քապարտացիք անակնկալ յարձակմանց եւ անվրէպ հարուածներու ենթակայ գտնուելով, յաճախ ստիպեալ էին իրարու ներհակ պահանջմանց տեղի տալու, վասն զի բաց դաշտերու մէջ կը բնակին, ուր իրենց ճոխութեան միակ՝ բայց առատ աղբիւրն եղող բազմաթիւ հօտերն կ'արածին։ Այսպէս երկու հակառակ տարերաց մէջ տեղ գտնուելնուն, իրենց կրօնքն եւս խառն է մահմետականութենէ եւ քրիստոնէութենէ։ Ռազմագիտական մեծ արահետ մ'իրենց երկրէն անցնելուն՝ միշտ սանձահարեալ էին սոքա Ռուսաց ձեռօք, միանգամայն դրացի Չէչէններն եւ Տաղըստանցիներն շատ բաներ կը պահանջէին կտրուկ եղանակաւ։ Կովկասու վերջին պատերազմաց մէջ քանի քանի անգամներ՝ Քապարտացւոց բերդագիւղերն (աուլ) քանդեցան եւ հրդեհեցան, նոցա հօտերն յափշտակեցան մերթ Ռուսաց եւ մերթ լեռնականաց կողմանէ, կանայք եւ մանկունք գերի տարուեցան Շամիլի միւրիտներուն ձեռօք։ Վասն որոյ խիստ պատուական բան կը համարին իրենց այժմու վայելած կատարեալ անդորրութիւնն, եւ երբէք անկարգութիւն եւ խռովութիւն հանելու փորձ մը չպիտի ընեն։ Ռուսական բանակաց մէջ լաւ զինուորներ կը գտնուին իրենցմէ։

Օսք գրեթէ քրիստոնեայ են։ Այս ժողովուրդն ազգաբանական վիճաբանութեանց առարկայ լինելով՝ համբաւաւոր եղած է այն ժամանակէն ի վեր, յորում գերմանացի գիտնականներ Օսերն իբրեւ գերմանական ցեղին եղբայրներ կարծեցին։ Արդարեւ հաւաստի կ'երեւի թէ Օսից լեզուն եւ գերմաներէնն իրարու շատ մօտ են, եւ եթէ Գերմանացի մը քօ'մ հէր (եկու հոս) ըսէ Օսի մը, սա նորա խօսքը կը հասկնայ։

Այս երկու ժողովրդոց վարմունքը Ռուսիոյ համար կարեւոր է, մանաւանդ անոր համար որ Կովկասու շղթային ամենէն աւելի դիւրանց մասն անոնց երկրին մէջ կը գտնուի։ Վլատիքաւքազի արեւելեան կողմը գտնուած լերանց ճիւղերն անմատոյց են գործնականապէս։ Թիոնի աղբերականց արեւմտեան կողմն ահագին եւ անընդհատ սառնակոյտ մը կը տարածուի 150 մղոն տարածութեամբ տեղւոյ վրայ՝ մինչեւ Սօխում-գալէի մօտ։ Բայց Օսից երկրին մէջ համեմատաբար ցած եւ դիւրանց մէկ քանի կիրճք կը գտնուին, որ կեդրոնական շղթայէն կ'անցնին, եւ ահա այս կիրճից միոյն մէջէն՝ որ Տարիէլի Անցք (¹) (ըստ Թաթարաց՝ Տարեօլ) կը կոչուի, Ռուսք մեծ ճանապարհ մը շինած են։ Այս ճանապարհն

(¹) Նախնիք Ալանաց դուռն կը կոչէին զայն։

*Անդր-կովկասեան գաւառաց հետ հաղորդակցութիւն ընելու միակ միջոցն է, եւ Օսից հաւատարմութեան շնորհիւ երբեք խափանուած չէ, Ռուսաց՝ Տփղիսը գրաւելէն ի վեր ։ Վասն որոյ՝ Տաճիկները կը սխալէին կարծելով որ Կովկասու մէջ եթէ ապստամբութիւն մը ծագէր, Լօռիս Մէլիքօվ զօրապետին բանակին հաղորդակցութիւնները պիտի կտրուէին յետակողմէն ։*

*Կովկասու վերոյիշեալ բաժանմանց երրորդին մէջ՝ այն է՝ աջակողմն կը գտնուին Շափսուղներն, Ատիղէներն եւ Ափխազներն։ Կարելի է ըսել թէ կը գտնուէին, վասն զի սոցա երկու երրորդէն աւելին, այն է՝ 300,000էն աւելի մարդիկ Տաճկաստան գաղթեցին 1867 ին ։ Շափսուղներն եւ Ատիղէներն՝ Կովկասու շղթային հիւսիսային զառիթափին վրայ բնակեալ էին, եւ Ափխազներն՝ որ Կովկասիոյ միւս մասանց մէջ բազմաթիւ գաղթականութիւններ ունին, լերանց եւ Սեւ ծովու միջեւ գտնուած անձուկ տեղին մէջ կը բնակէին։ Այս տեղն է բուն Ափխազիան։ Մէկ կողմէն ծովով եւ միւս կողմէն լեռներով փակեալ լինելուն՝ Տաճկաց բանակին համար ելք մը չկայ անդ ։*

*Խօսքերնիս համառօտեմք. Տաճկաց Սօխում-գալէի վրայ բանակ մը ղրկելն սխալ մը գործել էր. 1. վասն զի Կովկաս հարթ երկիր մը չէ յորում ընդհանուր ապստամբութիւն մը կարենայ ծագիլ. 2. վասն զի Վլատիքավքազէն Տփղիս տանող ճանապարհն այնպիսի ժողովրդոց հսկողութեան տակ կը գտնուի որք օտար գրգռութեանց դէմ կը դնէին. 3. վասն զի Սօխում-գալէէն Կովկասու միւս կողմն անցնելու համար անցք չկայ. 4. վասն զի Ափխազիա եւ շրջակայ երկիրներն ամայի եղած են, բնակչաց գաղթելովն, եւ ապստամբութիւն մը չկրնար նպաստամատոյց լինել ծովեզերքէն եկող բանակին։ Սօխում-գալէ ղրկուած օսմանեան բանակն գործնական արդիւնք մը չպիտի կրնար ունենալ, այլ անշարժ կալով տենդէ եւ թանչքէ պիտի կոտորուէր, վասն զի այս ախտերն տարին տասներկու ամիս չեն հեռանար այն տեղերէն ։*

*Յօմէր փաշա՝ որ Տաճկաց ամենէն լաւ զօրապետն էր իւր ժամանակին, Սօխում-գալէ զօրք հանեց 1855 ին աւելի յաջող պարագայից մէջ։ Ունէր նա 60,000 զինուոր, եւ այն ժամանակ Զարին գլխաւոր զօրութիւնքն Գրիմի շուրջն համախմբեալ էին, ուր տեղ Անգղիացիք եւ Գաղղիացիք Սէվաստօփօլը կը պաշարէին ։ Այն ժամանակ Չէրքէզներն եւ Ափխազներն տակաւին անկախ էին եւ Շամիլ դեռ յաջողութեամբ կը մաքառէր Թէրէքի հովտին եւ Տաղստանի մէջ։ Սակայն յաջողութիւն մը ձեռք չը բերուեցաւ եւ Մուրավիեվ կրցաւ Կարսը պաշարել առանց նեղութեան ։*

---

## ԽՌՈՎՈՒԹԻՒՆՔ Ի ՉԷՉԷՆԻԱ

*Տաղստանի հիւսիսային կողմն՝ Վլատիքավքազի եւ Կասպից ծովուն միջեւ երկայնեալ լերանց շղթային արտաքին զառիթափներուն քով՝ երկրորդական անտառախիտ սարերուն մէջ կը բնակին Չէչէններն։ Ռուսք Շամիլը պաշարելու համար ստիպուեցան նախ Չէչէններուն երկիրն տիրել, եւ այս երկարատեւ կռուոյն մէջ ամենամեծ ձախողութիւններ կրեցին անդ Տարկօյի եւ Ախուլկօյի մօտ ։*

*Շամիլի քարոզութեանցն հակառակ՝ Չէչէններն հաւատոյ մասին շատ ջերմ չեն. սակայն կ՚երեւի թէ այս անգամ կրօնքն եղած է իրենց երկրին մէջ ծագած խռովութեանց բուն պատճառն ։ Ըսած եմք արդէն թէ Ռուսիա սոյն լեռնականներէն զինուոր կ՚առնու ։ Նախ Թէրէքի եւ Տաղստանի հեծելազօրաց չորս գումարտակները կազմած էր՝ սովորական ժամանակի մէջ առձեռն պատրաստ գտնուած արամբք. այս գործողութիւնն առանց դժուարութեան կատարուեցաւ, եւ լեռնա-*

կռնաց մէկ քանի ջոկերն կամաւորներ տալու մասին փոյթ ունեցան, ինչպէս արդէն ըսած ենք Դանուբի բանակին լրտես զօրաց հատուածին վրայ խօսած ժամանակնիս։ Բայց երբ կառավարութիւնն ուզեց ուրիշ հեծելազօրներ եւս կազմել, արգելներու հանդիպեցաւ ։ Ռուսք երկու շահ ունէին այսպէս ընելով. եթէ ձայն մը չելնէր, Տաճկաց դէմ մահմետական զօրաց մէկ քանի գումարտակներ եւս պիտի կրնային հանել. երկրորդ՝ մարդոց թիւը պիտի նուազէր այն գաւառաց մէջ՝ ուր միշտ կասկած կար թէ ապստամբութիւն մը կը ծագի, եւ ուր Տաճկաց մէկ քանի լրտեսներ եւս տեսնուած էին ։ Եթէ այս փորձը չյաջողէր, Ռուսք կրնային շուտով զսպել ապստամբութեան որ եւ ցոյց մը ։

Վասն որոյ ութ կամ տասն նոր գումարտակներ կազմել ուզուեցաւ ։ Իւրաքանչիւրն 783 մարդոցմէ պիտի բաղկանայր, որոց մէջ պիտի գտնուէին 26 Ռուսք։ Գումարտեաններն բնիկներէն պիտի առնուէին, եւ սպայք Ռուսք պիտի լինէին. երկրորդական սպայք, փոխահարք եւ դրագիրք Կովկասու կանոնաւոր զնդերէն պիտի առնուէին։ Իւրաքանչիւր մարդ մէկ ձի եւ պէտք եղած ամբողջ կազմածն պիտի ընդունէր, նաեւ պատերազմի երթալու ժամանակ քսան ռուպլի, եւ իբր տարեկան թոշակ հարիւր քսան ռուպլի պիտի տրուէր նոցա. ենթասպայք երկու հարիւր տասն ռուպլի տարեկան վարձք պիտի առնուին, եւ մինչեւ գումարտակի աստիճանը գտնուող սպայք՝ հինգ հարիւր քսան։ Այս պայմաններն ըստ բաւականի հրապուրիչ էին ։

Բայց կը թուի թէ խիստ դժուարին եղաւ զօրաժողովն՝ որ Չէչէններուն համար Կրօզնայայի մէջ կը լինէր, եւ Լէզգիներուն համար՝ Տէմիրխան-շուրայի մէջ։ Հարկ եղաւ զինու զօրութեան դիմել Վէտէնի, Էրսինօյի եւ Խօյ-Շայէտօնէի կողմերն։ Մէկ քանի մոլեռանդ անձինք այս դժգոհութենէն օգուտ քաղել եւ ժողովուրդն ոտք հանել փորձեցին, եւ ընդհուպ՝ Թէրէքի նահանգին հրամանատարն խմանալով որ Իչքէրինի եւ Աուխովի անտառներուն մէջ ապստամբաց խումբ մը կազմուած էր, որ նախ երկու հարիւր հոգիէ բաղկացեալ լինելով՝ ապա մինչեւ 500ի ելեր եւ օր ըստ օրէ ստուարանալու վրայ էր, ազդու միջոցներ ձեռք առնուլ հարկ տեսաւ՝ ապստամբութիւնն իւր արմատէն խեղդելու համար։ Պաշարման վիճակ հրատարակեց նահանգին մէջ, եւ Էրսինօյէն ջոկատ մը մեկնելով գնաց ապստամբաց վրայ յարձակեցաւ Մայուրթուփի գիւղին մօտ, անոնցմէ 99 մարդ սպաննեց, 250 մարդ վիրաւորեց եւ մնացեալները ցիր ու ցան ըրաւ ։ Սոքա մէկ քանի օրէն յետոյ վերստին ժողովեցան Մայուրթուփի մօտերն, եւ Չէչէններուն Շալի անուն մեծ բերդագիւղին բնակիչներն իրենց կողմն յանկուցանել ջանացին, բայց նոքա դէմ կեցան ։ Նոր ընդհարում մ'եւս պատահեցաւ, յորում ապստամբք դարձեալ յաղթուելով գնացին Չարպիլոյէ լերանց մէջ պահուեցան եւ լեռնական պատերազմասէր ժողովրդոց մէջ բաւական թուով կուսակիցներ գտան։ Իսկ դաշտաց բնակիչներն անդորր կացին ։

Նոյն ամսոյն վերջերն Սալաթավի եւ Կումյէթի մէկ քանի գիւղերուն մէջ եւս տարածեցաւ այս յուզմունքն ։ Ռուսք դարձեալ ապստամբները ցրուեցին, նոցա բերդագիւղերն քանդեցին, եւ ամենէն աւելի վնասակար համարուած բնիկներէն բաւական թուով անձինք Սիպերիա աքսորուեցան ։ Թան լրագրին մէկ թղթակիցն Տփղիս գնացած ժամանակ՝ աքսորանաց դատապարտեալ մարդոց երկու կարաւաններու հանդիպեցաւ, որոց ոտքը շղթայներ կապուած էին եւ զինուորներ կ'ուղեկցէին անոնց ։

Խռովարարաց դէմ հանուած զօրաց թուոյն նայելով՝ կը թուի թէ բաւական մեծ լինելու էր այս ապստամբութիւնն ։ Սմիսթուսով զօրավարն՝ որոյ զօրանոցն

էր Կրօղնայա, յունիս ամսոյ մէջ 7,000 հետևակ զօրք 1,200 ձիաւոր եւ 36 թնդանօթ ունէր իւր հրամանատարութեան ներքեւ։ Բաւական մեծ գունդ մ՚էր այս, ինչպէս կը տեսնուի։

---

## ԽԱՂԱՑՔ ՏԱՃԿԱՑ Ի ՎԵՐԱՅ ՍՕԽՈՒՄ-ԳԱԼԷԻ

Անկախութեան համար Չէրքէզներուն ըրած վերջին կռիւներն Ափխազաց երկրին մէջ եւ տար հիւսիսային կողմն եղան. 1864ին միայն բոլորովին խաղաղեցաւ այն երկիրն։ Շերքաշիրծ էններուն նախկին թագաւորութիւնն վարչական անկախութեամբ երկու գաւառներու կը բաժնուի, որք են Սօխում-գալէի եւ Զեանօմօրի կամ Սեւ ծովու գաւառներն։ Առաջնոյն մէջ 70,000 եւ երկրորդին մէջ 15,000 բնակիչ միայն մնացած է այն բազմաթիւ հաստաբնակութենէն, զորս տասն եւ հինգ տարի առաջ կը սնուցանէր այն յուռթի երկիրը։

Անգամնար տեսարանին գեղեցկութիւնն աննմանելի է։ Դալարազգեստ հովիտներ, անտառախիտ բլուրներ եւ լեռներ միայն կը տեսնուին, որոց վրայէն կարելի է հիացմամբ նկատել Եւքսինեան Պոնտոսի արփիաճաճանչ կոհակները։ Հովիտներու մէջ կենդանիներուն թաւախիտ եւ ախորժատու խոտով կը բուսնին, որոց եւ լերանց վրայ եղեւնափայտ եւ ուրիշ արմատաց ազգեր կը տարածուին՝ այն անտառներն՝ ուր չքնաղ ծառեր անտառներ կազմելով երկիրը չեն ծածկեր։ Տեղացիներին յետադրեալ կը բարձրանան Կովկասու յաւիտենական ձիւնապատ եւ սպիտակափառ կատարներն։

Ռուսք ծովեզերաց վրայ մէկ ծայրէն միւսը բազմաթիւ կայաններ հաստատած են՝ որք իրարու հետ հաղորդակցութիւն ունին թէ ծովէն եւ թէ ցամաքէն։ Լեռներէն իջնող եւ ծովեզերաց վրայ ձորեր ձեւացնող բազմաթիւ հեղեղներուն պատճառաւ՝ յոյժ դժուարին է դիւրագնաց ճանապարհ մը շինել անդ։ Երբ թշնամին կ՚իշխէ ծովուն վրայ, ինչպէս եղած է այս պատերազմին մէջ, այն կայաններուն իրարու հետ ունեցած հաղորդակցութիւնը կը կտրի, եւ որովհետեւ անոնք տկար ըլլալով չեն կրնար դիմանալ, Ռուսք կը ստիպուին զանոնք թողուլ եւ երկիրը պարպելով հոն քաշուիլ՝ հիւսիսակողմէն մինչեւ այն կէտն՝ ուր Քուպանի գծին ամրութեանց պաշտպանութեան տակ կրնան մնալ, եւ հարաւակողմէն մինչեւ այն կէտն՝ ուր Ռիոնի գիծը կրնայ զիրենք պաշտպանել։

Այն կայաններուն ամենէն կարեւորն է Սօխում-գալէ, Ափխազ թագաւորներուն նախկին մայրաքաղաքն։ Այս ծովափանց վրայ իբրեւ ամենէն լաւ հանգցուած Չեմէսի ծովախորշին խորը կառուցեալ է այն քաղաքն կամ մանաւանդ գիւղն, ուր զի 1,600 էն աւելի բնակիչ չկայ անդ, թէ եւ խիստ մեծապէս կ՚երեւի իւրաքանչիւր տան շուրջը ճոխ պարտէզներ գտնուելով։ Ամրութիւնքն կը բաղկանային դարաւանդներ ունեցող մէկ քառակուսի շինուածքէ, նոր մարտկոց կոչուած մէկ կերտուածէ՝ որոյ ալբանձութիւնք եւ միւսոյնն իրար կը կցուին, եւ մէկ մեծ եւ ամուր զօրանոցէ՝ որ ծովեզերքէն քիչ մը հեռի կը գտնուի. տասնշինաշահական արգելանն եւ մէկ քանի քարաշէն տներ եւ կրօնոյին իբրեւ ամրութիւն գործածուիլ վրան ժանեաւոր որմեր շինուելով. բայց բոլոր ասոնք լաւ պաշտպանութիւն մը չէին կրնար ըլլալ։ Արդէն անգամ մը Ռուսք 1854ին ստիպուած էին այս դիրքը թողուլ եւ հոն քաշուիլ՝ իրենց երեւուն թնդանօթներուն գամ զարնելով անպիտան ընելէ յետոյ. 1855ին՝ Էօմէր փաշա այն տեղ զօրք հանեց այն անօգուտ արշաւանքն ընելու համար, որոյ վերայ վերը խօսեցանք։ Բացատրած ենք արդէն թէ Սօխում-գալէի առումն չկրնար ազդեցութիւն ունենալ Ասիոյ մէջ պատերազմին յառաջայ ընթացից վրայ. այժմ պիտի տեսնուի թէ Տաճ-

կաց այս անգամու գործողութիւնն ինչ արժէք ունեցած է ։

Ասիական եւ կովկասեան ծովափանց վրայ հսկելու պաշտօն ունեցող նաւախումբին հրամանատար Հասան փաշա երիտասարդ եւ խիստ ուշիմ սպայ մ'է Անգլիոյ մէջ կրթուած ։ Ափխազներն ոտք հանելու պաշտօնը խիստ լաւ կատարեց ։ Ռուսիոյ հետ պատերազմ մտադրուած երեւելէն ի վեր՝ Տաճկաց պետական անձինքը կը մտածէին Կովկասու մէջ ապստամբութիւն մը յարուցանել, եւ մեծ կորովով եւ յարատեւութեամբ պատրաստութիւններ տեսած էին ասոր համար ։ Կոստանդնուպօլսոյ մէջ յանձնաժողով մը կազմուած էր, որոյ գործակալներն յարաբերութիւն հաստատած էին Ասիոյ մէջ այն Ափխազներուն հետ՝ որք չէին գաղթած, եւ Եւրոպայի մէջ այն Չէրքէզներուն հետ՝ որք ցաւ կըզգային իրենց հայրենիքէն հեռի գտնուելնուն վրայ եւ կը բաղձային վերադարձ ընել ։ Գործողութեան ձեռնարկուած միջոցին Տաճկաստան երկու ապստամբական տարրեր կրնար շարժել, այսինքն Ափխազներն՝ որք գիտէին թէ իրենց ծովեզերաց վրայ Տաճիկները մարդ պիտի հանէին, եւ Չէրքէզներն՝ որք պատրաստ էին այն տեղ ելնելու ։

Հասան փաշա իւր նաւատորմիղն ճանապարհ ելաւ Պաթումէն մայիս 11 ին ։ Սօխում-գալէէն դէպ ի հարաւակողմն 75 հազարամէթր հեռի Կուտաութիի դիմացն հասաւ 12 ին ։ Այն տեղ գտնուող Աբազախներն թնդանօթի հարուածներով վանելէն յետոյ՝ հազարի չափ Չէրքէզ հանեց ծովափանց վրայ ։ Այս մարդոց ինչ լինելն իմացուած չէ յետոյ. կը թուի թէ նոքա ցրուելով ապստամբաց ստուար մասին հետ միացած ըլլալու են, վասն զի Ռուսք երբեք չհեռացան այն տեղերէն ուր նոքա պիտի գործէին ։

Հետեւեալ օրն նաւատորմն մէկ քանի հազարամէթր հեռի գտնուելով Օչամչիրին կը ռմբակոծէր, եւ ամսոյն 14 ին Սօխում-գալէի առաջ կը հասնէր ։ Երկու ժամ ու կէս ռմբակոծութիւն լինելէ յետոյ՝ Տաճիկներն ցամաքն ելնել փորձեցին, սակայն արիութեամբ ետ մղեցին զանոնք հետեւակ զօրաց հինգ դասակներն, որոց գլուխն անցած էր Սօխում-գալէի գաւառին հրամանատար Գրավչէնքօ զօրավարն ։

Տաճկաց նաւատորմն ամսոյն 15 ին Սօխում-գալէի դիմաց մնաց եւ նորէն զօրք հանեց՝ ոչ թէ Սօխում-գալէի մէջ, այլ դէպ ի հարաւակողմն՝ Ռուսաց ամրաձգութենէն հեռի, այս զօրքը կրնար տեղացւոց հետ միանալ ինչպէս չէր եղած առաջին անգամուն ։ Չէրքէզներուն գաղթականութեան վերակացուն հետեւեալ կերպիւ կը պատմէ այս գործողութիւնն .

«Հրամանատարին կողմանէ եղած ճարտար տրամադրութեանց շնորհիւ՝ գիշերայն ցամաքն ելանք անարգել Սօխում-գալէի մօտերն ։

«Չէրքէզներուն ջոկերն մեր դիմաց վազեցին, եւ մեր քաջալերութեանց անսալով միացան հետերնիս, այնպէս որ առաւօտուն 3,000էն աւելի մահմետականներ կը գտնուէին մեր դրօշակաց ներքեւ ։

«Սոքա յարձակեցան Կատավաթա-Օրչ քաղաքին վրայ, մինչդեռ միւս կողմանէ զրահաւոր նաւատորմն անոնց կ'օգնէր իւր թնդանօթաց կրակովն ։ Աբազախներէ բաղկացեալ պահակազնդին կէսէն աւելին կորաւ եւ մնացեալներն փախան ։

«Հետեւեալ օրն (մայիս 15ին) մեր զօրքն՝ որոց քով եկած էին 10,000էն աւելի կրօնակից տեղացիներ, շարունակեցին խաղալ Սօխում-գալէ քաղաքին վրայ, որոյ դիմաց գալով նաւատորմին զրահաւորներն՝ սկսան սաստիկ կրակ մ'ընել այն բերդաքաղաքին դէմ ։

«Աբազախներուն հետ հինգ ժամ սաստիկ կռիւ լինելէ յետոյ՝ քաղաքն յարձակմամբ առնուելով կրակի տրուեցաւ ։

«Հրամանատարին կողմանէ բաժնուած 200 հրացաններն ի բաց առեալ՝ այս երկու կռիւներուն մէջ մեր դաշնակից տե-

ղացիներն մէկ քանի կայծքարաւոր հրացաններ, թրեր եւ դաշոյններ միայն ունէին. վասն որոյ թշնամւոյն պարտութիւնն եւ քաղաքին առումը սոցա անընկճելի քաջութեան եւ յորձնաանդն աշխուժութեան շնորհիւն եղած էր։»

Ռմբակոծութենէն հրդեհեալ էր Սօխում-գալէ, որոյ փայտաշէն տներն մէկ վայրկենի մէջ բոցերով պատեցան, այնպէս որ՝ երբ Տաճիկներն քաղաքին տիրեցին, աւերակաց կոյտ մ'եղած էր այն։ Քրավչէնքօ զօրավարն դէպ ի հարաւակողմն քաշուեցաւ՝ ծովեզերաց վրայ գտնուած կայաններուն պահակներն իւր քով կանչելով, եւ Քօտօրի վտակին յետակողմն ամրացաւ այն կէտին վրայ՝ որոյ դիմաց պիտի դադարէր Տաճկաց գործողութիւնն եւ ժողովրդոց ապստամբութիւնն։ Մայիս 23ին՝ 3,000 Չէրքէզներ Ատլէրի մօտ ցամաքն ելան Սօխում-գալէէն քառասուն կամ յիսուն հազարամէթր հեռի՝ դէպ ի հիւսիսակողմն։ Ռուսք այս կողմէն ալ յետախաղաց շարժում մ'ըրին եւ իրենց զօրութիւնքն Շէլքօվնիքօվ զօրապետին հրամանատարութեան ներքեւ համախմբեցան Սօչիի մէջ համանուն վտակին յետակողմն։ Սօչիէն մինչեւ Քօտօր ծովափանց տարածութիւնն գրեթէ 150 հազարամէթր է։ Բոլոր այս տեղուանքն Տաճիկ զօրաց ձեռքը մնացին առժամանակեայ կերպիւ։



ԶՕՐԱՎԱՐ ՌԱՏԷՑՔԻ

Այս յաջողութեան լուրը Կոստանդնուպօլիս հասնելուն վրայ՝ Տաճիկները մեծ յուսով լցուեցան, եւ աճապարեցին բանակագունդ մը ղրկել Աբխազներուն երկիրը։ Ի զուր մէկ քանի ծեր զինուորականներ Էօմէր փաշայի ըրած արշաւանաց անօգուտ լինելն յիշեցուցին։ Պատերազմի նախարարութիւնն՝ որ կ'ուզէր Արտահանի Ռուսաց ձեռքն անցնիլն ժողովրդեան մտքէն

հանել, չորս դրահաւոր, չորս փոխադրութեան նաւ եւ մէկ լրատար նաւ պատրաստեց չորս աւուր մէջ, եւ մայիս 25 ին ճանապարհ հանեց 10,000 պահեստի զօրք, բազմաթիւ չէրքէզ կամաւորներ, թնդանօթաց չորս շար, հին տեսակէ 200,000 հրացան եւ մեծաքանակ ռազմամթերք։ Նաւատորմն կայսերական պալատին առջեւէն անցած ժամանակ, զինուորներն լի աշխուժով՝ առագաստակալներուն վրայ ելան եւ վեհափառ Սուլթանը ողջունեցին բարձրաձայն։

Շամիլ երկու զաւակ ձգած է, երկուքն ալ Ռուսիոյ կայսեր ծախիւք դաստիարակեալ. մին՝ գումապետ է ռուսական բանակին մէջ, միւսն՝ մէկ քանի տարիէ ի վեր Կոստանդնուպոլիս կը բնակի, ուր ռուսական կառավարութիւնն իրեն թոշակ մը կապած էր։ Դուռն կը յուսար թէ այս վերջինը Սօխում-գալէի գնդին հրամանատարութիւնը յանձն կ'առնու, եւ Կովկասու լեռնականաց մէջ սորա հօր անունը մեծ ազդեցութիւն ունենալուն՝ նպաստամատոյց կը լինի նա օսմանեան զօրաց յաջողութեան։

Ռուսիա բնակող եղբայրն խորհուրդ տուաւ իրեն որ չէզոք մնայ։ Մինչեւ անգամ Կօլօ» լրագրին հետեւեալը գրեց. «Կովկասու բնիկներէն չորս անձանց անունը կուտաք, որոց մէջ կը յիշէք նաեւ եղբայրս, ըսելով թէ Կովկաս երթալու դիտաւորութիւն ունի՝ լեռնականաց մէջ մոլեռանդութեան հուրը արծարծելու համար։ Իմ եղբայրս՝ որուն Կոստանդնուպոլսոյ մէջ այցելութիւն ըրի վերջերս, այսպիսի փորձի մը մասնակից չպիտի լինի։ Որովհետեւ մեծապէս երախտապարտ կը գտնուի ռուսական կառավարութեան։» Ղազի Մէհէմմէտ մէկ կողմէն իւր եղբօրը խրատները եւ միւս կողմէն օսմանեան կառավարութեան թելադրութիւնքը տեսնելով՝ միջին ճանապարհ մ'ընտրեց եւ բաւական համարեց Կարնոյ բանակին մէջ հրամանատարութիւն մը ստանձնել։ Ափխազներուն երկիրը ղրկուող գնդին գլուխն անցաւ Ցագըր փաշա։

Ինչպէս որ գուշակուած էր՝ ճիշդ այնպէս եղաւ։ Սօխում-գալէ ղրկուած 10,000 մարդիկն՝ որոց իբր օգնութեան ղրկուեցան ապա եգիպտական լաւ զօրք, այն անել երկրին մէջ օգուտ մը չունեցան։ Արեւմտեան կողմէն Գուպանի խազախներուն պահպանութեան տակ գտնուած Կովկասու կիրճքն անառիկ էին. հիւսիսային կողմը կը գտնուէին Շէլքօվնիքօվ զօրավարին զօրքը. հարաւային կողմը կը գտնուէին Թրավչէնքօ զօրավարին մարդիկն, որ յունիսի 15 ին Ալխազով զօրավարին մարդոցը հետ միանալով, սորա հրամանատարութեան ներքեւ Ինկուրի գունդը կազմեցին. արեւմտեան կողմն ալ ծովը կար. այսպէս բանտի մը կը նմանէր այն տեղն։ Ցագըր փաշա Ափխազներուն կողմանէ լաւ օժանդակութիւն մը չտեսնելով՝ ի զուր ջանաց դէպ ի Փօթի իջնել՝ Պաթումի գնդին հետ միանալու համար։

Այս Ափխազներն՝ վայրագ դէմքով, ցըցուեալ մազերով, փոքր աչօք, եւ գազանային ծնօտով անասնոց պէս մարդիկ են։ Կ'ոռնան, կը կաքաւեն եւ շարունակ հրացան կը պարպեն, ուստի օրն ի բուն աղմուկ եւ իրարանցում կը պատճառէին Տաճկաց մէջ։ Գիշերներն աւելի վնասակար էին Ափխազներն. իրենց դաշնակիցներէն եւ հայրենակիցներէն զատ՝ չկային ուրիշներ որոց մէջ գողութիւն ընել կարենային. ուստի խիղճ չէին ըներ անոնցմէ բան գողնալու. այսու՝ օսմանեան զօրաց եւ լեռնականաց մէջ հակառակութիւն մը յառաջ եկաւ, որմէ շատ անգամ քիչ կը մնար կռիւ ծագելու։

Ի լրումն աղետից՝ Կովկասու սոսկալի տենդերն սկսան ճարակել ամառնային տաքութիւնը կոխելուն պէս։ Գետեզերքը պատող անտառներուն մէջ ճահիճներ կան, ուրկէ վնասակար ժանտահոտութիւնք կը բուրեն, եւ առուներուն ջուրը թանչք կը պատճառէ, այնպէս որ հիւանդանոցները շուտով լցան։

# Գլուխ Վեցտասներորդ

## ԱՆՑՔ ՌՈՒՍԱՑ ԸՆԴ ԴԱՆՈՒԲ

### ԱՂԷՔՍԱՆԴՐ ԿԱՅՍՐՆ Ի ՌՈՒՄԱՆԻԱ

*Ռումանիոյ մէջ ռուսական բանակին սփռումն ուշացնող պատճառներն բացատրեցինք, ինչպէս գետոց արտաքոյ կարգի յորդմունք, երկարատեւ անձրեւք, ճանապարհաց անանցանելի լինելն, ջրոց զեղմամբ կամրջաց քանդուիլն, երկաթուղեաց գէշ շինուած լինելն եւ ճանապարհաց յաճախ աւրուիլն. մայիս 15ին բոլոր գնդերն իրենց տեղերը պիտի հասնէին, բայց այս աննպաստ պարագայից պատճառաւ նոյն ամսոյն վերջերը միայն աւարտեցաւ զօրաց խաղացքն ։*

*Յունիս 1ին զօրախումբք վերջապէս համախմբեալ էին սահմանեալ կէտերուն վրայ ։ 11րդ գնդին մէկ հատուածն եւ 7րդ գնդին մէկ ստուար ջոկատն ստորին Դանուբի բանակը կը ձեւացնէին, եւ գետեզերքը կը գրաւէին՝ Հրսօվայի դիմաց Եալօմնիցայէն սկսեալ մինչեւ ծով. սորա սպայակոյտը Կալացի մէջ էր եւ պահեստի զօրքն Պօլկրատի մէջ. 9րդ գունդն՝ որ Դանուբէն բերուած էր, իրեն զօրանիստ ունէր Սլաթինա. 12րդ գնդին զօրանիստն էր Միքալէշթի՝ Ալէքսանտրիայի ճանապարհին վրայ, եւ 8րդինը Կիլեավ՝ Պուքրէշէն Ճուրճէվօ տանող ճանապարհին վրայ։ Այս զօրաց յառաջակողմն ուրիշ գնդեր կարգաւ զետեղեալ էին Դանուբի երկայնութեանն. հեծելազօրու 8րդ հատուածն Ալութա գետակէն մինչեւ Վէտէ գետակը տարածուած գծին վրայ կը գտնուէր՝ զօրանիստ ունենալով Թուռնօ-Մակուրէլի. Սքօպէլեվ փոխ-զօրապետն եւ իւր լրտես կամ տեղազննին զօրաց գունդն՝ Վէտէ գետակէն մինչեւ Կրէշիլօր տարածուած գծին վրայ կը գտնուէր՝ իրեն զօրանիստ ունենալով Ճուրճէվօ. հետեւակ զօրաց 32րդ հատուածն՝ որ 11րդ գնդէն անջատեալ էր, եւ Խազախներու 31րդ գումարտակն՝ Կրէշիլօր լճէն մինչեւ Արճիշ գետակն երկայնեալ գծին վրայ էին՝ զօրանիստ ունենալով Օլթէնիցա, եւ հեծելազօրու 11րդ հատուածն՝ որ Ստորին Դանուբի գնդին քովն էր, Արճիշէն մինչեւ Հրսօվա Դանուբ գետին վրայ կը հսկէր, զօրանիստ ունենալով Սլօպօծէյա՝ Եալօմնիցա գետակին քով ։*

*Ռուսական զօրաց տեղափոխութեան վրայ խօսքերնիս լրացնելու համար, փութամք ըսելու թէ Կալացի մօտ գտնուող 11րդ գնդին զօրքն՝ յունիս 12ին հետեւակ զօրաց 32րդ հատուածին հետ միացան Օլթէնիցայի մօտ՝ Ստորին Դանուբի բանակին կազմութեանը մէջ. այս 11րդ գնդին տեղն անցաւ 14րդ գունդն, փոխ-զօրապետ Ցիմմէրմանի հրամանատարութեան ներքեւ։ Հրաման եղաւ 13րդ գնդին՝ յունիս 2ին Ալէքսանտրիայի մէջ գտնուելու, որպէս զի յետոյ պարագայից համեմատ հարկ եղած կէտերուն վրայ խաղայ։ Վերջապէս 4րդ գունդն երկաթուղեաւ հասաւ բանակին ետեւէն՝ գլխաւոր զօրապետին մասնաւոր հրահանգացն համեմատ ։*

*Զօրաց այս սփիւռ խաղացքը խիստ գաղտնի կերպիւ կատարուեցաւ, եւ Ռումանիացիք անգամ՝ որ ռուսական զօրաց իրենց երկրէն անցնիլը կը տեսնէին, անոնց ինչ կարգաւ շարուած լինելը չէին գիտեր ։ Եթէ Տաճիկներն իրենց լրտեսներուն միջոցաւ ճիշդ տեղեկութիւններ ալ առնէին, Ռուսք դարձեալ այնպիսի*

առաւելութեամբ ըրած էին սյս կարգադրութիւնն որ յայտնի չէր լինէր Դանուբի գծին որ կէտէն անցնիլ ուզելնին, այսու հանդերձ՝ իրենց համար կարելի էր մէկ քանի ժամու մէջ ստուար զօրք համախմբել որոշեալ կէտի մը վրայ :

Աղէքսանդր կայսրը կը փափաքէր իւր զօրաց Դանուբէն անցնելուն ներկայ գտնուիլ՝ 1828 ին այնպիսի գործողութեան մը ներկայ գտնուող իւր Նիքօլա հօրն աւանդութեանցն հետեւելով։ Մայիս ամսոյ վերջերն Նիքօլա մեծ դուքսն իմաց տուաւ իրեն թէ որոշեալ թուականն էր յունիս 6 . Իւր երեք որդիքն՝ այսինքն գահաժառանգ մեծ դուքսն եւ Վլատիմիր եւ Սարգիս մեծ դքսերն՝ ինչպէս նաեւ Կօրչաքօվ իշխանն, Իկնաթիեվ զօրապետն եւ պատերազմի նախարար Միլիութին զօրապետն հետն առաւ, որ կառոյն ասպարէզն լինող բանակը կազմակերպած էր . իւր հետ կը գտնուէին նաեւ այլ եւ այլ անձինք, որք մասնաւոր պաշտօններով պատերազմի տեսարանին վրայ կուգային, եւ իսկոյն ճանապարհ ելնելով սահմանագլուխն անցաւ յունիսի 5ին երեկոյեան 9րդ ժամուն։ Եաշի մէջ՝ կայսերական կառախումբն անցած ժամանակ՝ երկու դէպք պատահեցան, որք տաժանելի տպաւորութիւն մ'ըրին Զարին դիւրազգած եւ փոքր ինչ խորհրդազգած մտացը վրայ :

Կովկասեան բանակէն սպայ մը՝ այն է Թուզմինաքի հարիւրապետն առանց հրամանի Սերվիա գացած լինելուն եւ անկէ առաջ մէկ քանի անգամ յանցանք գործած լինելուն համար պատժոյ դատապարտուելով, Նիքօլա մեծ դքսին դիմած էր ներումն խնդրելու համար։ Ընդհանուր հրամանատարն որոյ իշխանութիւնն մինչեւ այն կէտը չէր հասնէր, խորհուրդ տուեր էր իրեն որ ուղղակի կայսեր դիմէ նորա ճանապարհորդութեան միջոցին .

Եաշի մէջ՝ այս սպայն համազգեստն հագած անձնապահ զինուորաց կարգերն ճեղքելով անցաւ եւ իւր աղերսագիրը մատոյց այն պահուն՝ յորում վեհապետն կառքը կը նստէր ։ Որեւիցէ պատճառաւ կայսրն իւր խնդիրքը մերժեց պաղութեամբ մէկ քանի խօսք ընելով, եւ ապա հրամայեց որ աղերսարկուն ձերբակալուի եւ Ռուսիա տարուի։ Այն ժամանակ սպայ մը Թուզմինաքիի ըսաւ որ զէնքն իրեն յանձնէ։ Սա իւր թուրն յանձնեց ինչպէս նաեւ այն դաշունին պատեանը, զոր կը կրէր բոլոր Չէրքէզներուն պէս :

Սպայն տեսնելով որ դաշոյնը չկայ, զայն ալ պահանջեց, բայց Թուզմինաքի անդէն իւր սիրտը մխեց դաշոյնը, եւ կայսերական կառաց պատուանդանին մօտ անկաւ այն պահուն՝ յորում կառախումբը ճանապարհ կ'ելնէր :

Միւս դէպքն էր լուսավառութեանց պատճառաւ պատահած հրդեհ մը, որմէ տասն եւ հինգ հատի չափ տներ այրեցան։

Իպրայիլի մէջ կայսրն իւր առջեւը բերել տուաւ այն նաւաստիներն որ Տաճկաց զրահաւորներուն դէմ եղած կռուոյն մէջ նշանաւոր հանդիսացած էին, եւ անոնց իւրաքանչիւրին ձեռքը սեղմեց յուզմամբ։ Անոյն 6ին երեկոյին կառախումբն Փլօյէշթի հասաւ։ Ռումանիոյ մէջ խիստ սիրալիր ընդունելութիւն մ'եղաւ կայսեր. պարբերաբար տարածայնեալ աննպաստ լրոց հակառակ՝ ժողովուրդն զայն իբր ազատարար մը կը նկատէր. ըստ այնմ ասպընջականեց եւ անոր Փլօյէշթի հասնելէն ի վեր ջերմաջերմ զգացմունք ցոյց տուաւ ինքնակամ։ Փլօյէշթիի բնակչաց կողմանէ նոյն իսկ կայարանին մէջ ուղերձ մը յանձնուեցաւ կայսեր, յորում հետեւեալ խօսքերը կային.

«Ձեզ այնքան անձնուէր գտնուող ռումանական ժողովրդեան մէջ Կայսերական վեհափառութեանդ գալուստը շնորհաւորելու մեծ պատիւն ունենալով երջանիկ եմք ։ Երբ ձեր յաղթական դրօշակներուն վրայ՝ «Վասն ազատութեան Արեւելեան ծովեզերց» բառերը գրուած կը նշմարեմք, երբ ձեր անսահման վեհանձնութիւնն եւ

մեծագործութիւնը կը տեսնեմք, եռանդագին սրտիւ կը պաղատիմք առ Աստուած, որպէս զի հասարակաց թշնամւոյն յաղթելու համար օգնէ Ձեր Կայսերական Վեհափառութեան, վասն փառաց Ռուսիոյ եւ վասն ազատութեան Արեւելեան ժողովրդոց։»

Ռումէնք կը յուսային որ իրենց երկար ժամանակէ ի վեր արդեամբ վայելած անկախութիւնն Ռուսիա պիտի յայտարարէր. Պուլղարներն եւս կ'ակնկալէին թէ նա պիտի ազատէր զիրենք ամենէն աւելի կամայական հարստահարութենէն, նա պիտի շնորհէր իրենց ապահովութիւն եւ կեանք։ Վասն որոյ ամենէն աւելի կ'ուրախանային տեսնելով որ Ձարն անձամբ կուգար՝ ռուսական բանակին իրենց երկիրը մտնելուն նշանը տալու. Ռումանիա փախչող Պուլղարաց դաղթականութիւններն մէկ մէկ փոխանորդ ղրկեցին Փլօյէշթի, եւ կայսրն՝ կայարանին մէջ ռումանական պատուիրակաց քով 75 քաղաքաց փոխանորդները տեսաւ, որոց կողմանէ Ռումանիոյ պուլղարական կղերին մետրապոլիտն՝ գերաշնորհ Փանարէթ Ռաշեվ հետեւեալ ուղերձն յանձնեց նմա.

« Վեհափառ տէր

Մեք Ռումանիա բնակող Պուլղարքս՝ որ մեր հարստահարչաց բռնութեանցն եւ հալածանացը դէմ օտար երկրի վրայ ապաստանարան մը գտնելու համար՝ մեր սիրելի հայրենիքէն հեռանալու դժբաղդութիւնն ունեցած եմք, այսօր ինքզինքնիս մեր հայրենակիցներէն աւելի երջանիկ կը համարիմք, որովհետեւ առաջին կը լինիմք Ձեր Կայսերական Վեհափառութիւնը տեսնելու եւ խոնարհաբար ձեր ոտքը գալով այն անսահման երախտագիտութիւնը յայտնելու՝ զոր համայն պուլղար ազգը կը զգայ, տեսնելով այն մեծ գործն յոր կը ձեռնարկէ մեծն Ռուսիա, Ձեր վեհապետական կամօքն եւ դժբաղդ եւ ընկճեալ եղբարց վրայ իւր ունեցած սիրովն դրդեալ, այն ակնկալութիւններն իրագործելու համար՝ զորս դարերէ ի վեր Պուլղարք՝ Ռուսաց օրթօտօքս վեհապետին եւ ազգին վրայ ունին աւանդութեամբ թէ՝ պիտի ազատեն նոքա զիրենք տաժանելի գերութենէ։»

Հետեւեալ առաւօտուն Կարոլոս իշխանն Փլօյէշթի հասաւ, եւ միւս օրն կայսրն փոխարէն այցելութիւն ըրաւ անոր Պուքրէշի մէջ։ Ռումանիոյ փոքր բայց շքեղ արքունիքն կարելի եղածին չափ վեհապետական ընդունելութիւն մ'ընել ջանաց, որում ժողովուրդն եւս մասնակցեցաւ եռանդեամբ։ Կայսերական խումբն կայարանէն մինչեւ պալատն, այսինքն՝ մէկ փարսախի չափ տեղ, գրեթէ ծաղիկներէ ձեւացած գորգի վրայէ քալեց։

Ամսոյն 15 ին՝ Սերվիոյ Միլան իշխանն եւս եկաւ իւր մեծարանքը կայսեր յայտնելու եւ իշխանութեան ապագայ քաղաքականութեանը վրայ խորհուրդ հարցնելու։ Այս տեսակցութեանց վրայ առնուած տեղեկութեանց նայելով՝ իշխանին յորդոր եղաւ որ բացարձակ չէզոքութիւն մը պահէ՝ Աւստրիոյ մտատանջութիւն մը չպատճառելու համար, եւ ապահովութիւն տրուեցաւ որ ինքն եւս անմասն չպիտի ելնէ՝ Թուրքիոյ վիճակին վերջնական կերպիւ որոշուած ժամանակ։

Կայսրը բանակին վիճակին վրայ իրեն տրուած տեղեկութեանց ճշդութիւնն կըրցաւ անձամբ հասկանալ անգամ մը Ռումանիոյ մէջ։

Մայիս ամսոյ մէջ զօրքն իւր ըրած տաժանելի գնացքովն խոնջութեան դէմ որչափ տոկուն լինելն ակներեւ կերպիւ ցոյց տուաւ։ Հիւանդաց թիւն 3,047 էն աւելի եղած չէր, եւ յունիսի սկիզբներն աւելի քիչ էր։ Զօրաց համախմբութեան մօտ հաստատուած եւ իւրաքանչիւրն 630 հիւանդ առնող 14 շարժուն հիւանդանոցներուն մէջ՝ 630ին 1/3 էն աւելի հիւանդ չկար։ Դանուբի ճահիճներուն ժանտահոտութեանցը մէջ գտնուող գնդերն 100ին 3էն աւելի հիւանդ ունեցած չէին երբէք։

Ամենէն աւելի նեղութիւն կրող 12րդ գունդն 4 սպայ եւ 73 զինուոր միայն յետս դարձուցած էր իբրեւ քալելու անկարող. միով բանիւ՝ ռուսական բանակին առողջապահական վիճակն զինուորական տարեգրութեանց մէջ տեսնուած բան չէր, քանի որ սոյն տեսութեամբ բանակաց վիճակագրութիւնն ընելու սկիզբն եղած է, եւ այս այնպիսի երկրի մը մէջ կը լինէր, որոյ օդը վնասակար կը համարուի ։

Սակայն օդերեւոյթք աննպաստ էին եւ Տաճկաց տեղ կը շարունակէին կռուիլ ։ Մայիս ամսոյն կիսուն մօտ այնպէս կը թուէր թէ գարունն այլեւս լրօք սկսած էր, եւ օդոյն ջերմութիւնն յոյս կուտար թէ Դանուբի ջրերը շուտով պիտի նուազէին, բայց սոյն ամսոյն վերջերն՝ անձրեւներն դարձեալ սկսան առաջուանէն աւելի առատ տեղալ. գետը վերստին յորդելով, իւր դեղին եւ տղմուտ ջրերն այնպէս բարձրացան՝ որ նմանը տեսնուած չէր քառասուն տարիէ ի վեր ։ Նախ որոշեալ էր յունիսի 7ին անցնիլ Դանուբէն ։ Սակայն այս թուականին ջրերը տակաւին սովորականէն 5 մէթր աւելի բարձր էին ։ Երբ վերջապէս անցնելու փորձն եղաւ, պարագաները դէշ էին տակաւին . Իպրայիլի կամուրջն՝ որոյ ծայրերը ջրոց ներքեւ կը գտնուէին, Մաչինի առումէն մէկ քանի օր յետոյ միայն գործածելի եղաւ, նաւճակներուն (թօմպազ) Զիմնիցա փոխադրուիլն 3 օր ետ մնաց, եւ անցքը փոխանակ ամսոյն 25ին լինելու 27ին եղաւ ։ Գուցէ խոհեմութիւնը կը պահանջէր որ մէկ քանի օր եւս յետաձգուի, բայց Գարատաղի կացութեան պատճառաւ հարկ անհրաժեշտ եւ ստիպողական եղած էր շուտով անցնիլ ։ Այս իշխանապետութիւնն քառապատիկ աւելի բազմաթիւ զօրաց ներքեւ ընկճեալ յոգիս ապաստան կը հեծէր, եւ ռուսական բանակը՝ Տաճկաց զօրքն իրեն դէմ զբաղեցընելով միայն կրցաւ անոր բնաջինջ կորուստն արգելուլ ։

## ՊԱՏԵՐԱԶՄ ԸՆԴԴԷՄ ԳԱՐԱՏԱՂԻ

Յայտնի է որ Գարատաղ չկրցաւ Թուրքիոյ հետ համաձայնիլ հաշտութեան պայմանաց վրայ, երբ 1877ին մարտ ամսոյն մէջ Կոստանդնուպօլիս երկու նուիրակ ղրկեց՝ այն պայմանաց վրայ վիճաբանելու համար ։ Սակայն բանակցութեանց խզուելէն մինչեւ վեց շաբաթ (1877 ապրիլ ամիս) տեւակ մը զինադադար եղաւ լռելեայն համաձայնութեամբ ։

Մայիս 2 թուականաւ Տանիլօկրատէն գրուած հետեւեալ նամակն՝ որ Թայմզի մէջ հրատարակուած է, ցոյց կուտայ թէ երկու հակառակորդք որչափ կը ջանային թշնամութեանց առիթ չտալու ։

«Փոտկորիցայի փաշան՝ Գարատաղցւոց մերձակայ կայանին հրամանատարութիւնն ունեցող վօյվօտին երէկ իմաց տուաւ թէ՝ Ասիոյ մէջ Տաճկաց ձեռօք տարուած յաղթութիւններն տօնելու համար թնդանօթ արձակելու դիտաւորութիւն ունէր, փաշայն կ՚աղաչէր միանդամայն որ զայս իբրեւ թշնամական գործ չհամարի ։ Իշխանն հրաման ըրաւ պատասխան դրելու՝ որ եթէ Գարատաղցւոց կայանին մօտ առանց գնտի թնդանօթ պարպուի, իւր կողմանէ եւս գունտ պիտի արձակուի ։ Վասն որոյ Տաճիկներն սահմանագլխէն ամենէն հեռի գտնուած մարտկոցին մէջ միայն թնդանօթ պարպեցին ։»

Թուրքիա յայտնապէս շահ մը չունէր վերստին պատերազմի սկսելու Գարատաղի հետ ։ Ռուսաց յարձակման դիմադրելու համար իւր բոլոր զօրութեանց պէտք ունեցած միջոցին՝ այս զինադադարն իրեն համար ամենալաւ բան մ՚էր, քանի որ հաշտութիւն կնքուած չէր ։ Չեմք կրնար ըսել թէ Թուրքիա ինչ պատճառաւ այս իմաստուն զգուշաւորութիւնը թողուց ։ Մինչդեռ մէկ կողմանէ Ափխազաց երկիրն 10,000 մարդ կը ղրկէր, միւս կողմանէ Գարատաղի սահմանագլխոց վրայ 115 վաշտէ բաղկացեալ ահարկու բանակ մը

կը համախմբէր, այսինքն 75,000էն աւելի զինուոր ։ Գարատաղցիք՝ ոչ մատակարարութիւն եւ ոչ փոխադրութեան կազմածք ունենալով՝ չէին կրնար իրենց երկրէն դուրս կռուիլ. վասն որոյ խոհեմութիւնը յայտնապէս կը պահանջէր որ Թուրքիա զանոնք թողու իրենց լերանց մէջ ուզածնին ընելու, եւ իւր զինուորներուն խնայէ աւելի կարեւոր պիտոյից համար ։

Բայց Կոստանդնուպօլսոյ զինուորականք՝ այն փոքրիկ քաջ իշխանապետութեան յամառ դիմադրութեանը վրայ չկրնալով իրենց զայրոյթը զսպել, որոշեցին բնաջինջ ընել «Թուրքիոյ կողին վրայ ելած այն պալարն», ինչպէս ըսած է Էտհէմ փաշա ։ Պատերազմի յատակագիծ մը պատրաստուեցաւ իշխանապետութիւնն անդիմադրելի զօրութեանց ներքեւ ընկճելու եւ ժողովուրդը բնաջինջ ընելու դիտաւորութեամբ։ Երբ աշխարհացոյց տախտակի մը վրայ՝ պատերազմէն առաջ Գարատաղի ունեցած սահմանագիծը քննուի, իսկոյն կը տեսնուի թէ անոր արեւելեան եւ արեւմտեան մասանց մէջ տեղ Թուրքիա երկու կտոր տեղ ունէր Գարատաղի երկրին մէջ իբրեւ սեպ կամ խորոց մտած, եւ այս երկու կտորներն իրարու մօտ գտնուելով՝ կարծես թէ երկու մասի կը բաժնէին զԳարատաղ։ Հարաւակողման խորոցին ծայրը կը գտնուէր Փոտկորիցա բերդաքաղաքն, եւ հիւսիսակողման խորոցին ծայրն էր Նիքշիքի կամ Նիքշիչի բերդը ։ Այս երկու բերդերն Տաճկաց համար գործողութեանց խարիսխ եղած են ամեն անգամ որ Գարատաղցւոց դէմ կռիւ եղած է։ Երբ Փոտկորիցայէն մէկը դէպ ի Նիքշիչ երթալ ուզէ՝ Զէթայի խորաձոր հովտին մէջէն պիտի անցնի. Նիքշիչէն քիչ մը տեղ մնալով՝ այս Զէթա վտակն աներեւոյթ կը լինի լերան մը տակ, որոյ վրայ Օսթրօկի հռչակաւոր վանքը շինուած է. այս լեռնէն անցնիլ հարկ է ։ Ապա ուրիշ հեղեղատի մը մէջ իջնելու է որ Տուկայի կիրճ կը կոչուի. Հերցէկօվինա կամ Հերսէկ մտնելէ եւ Նիքշիչն անցնելէ յետոյ՝ այս կրճին մէջէն Բրսթաց (Բրիսթաչ) կը հասնուի, որում Գարատաղցիք 1876էն ի վեր տիրած եւ այսու կրցած էին Նիքշիչը խիստ պաշարման մ'ենթարկել, յուսալով որ այն բերդն անձնատուր կը լինի ի սովոյ ։ Տաճիկներն իրենց բանակն երեք գնդերու բաժնեցին. հիւսիսային կողմէն Սիւլէյման փաշա 30,000 մարդով Տուկայի կրճից մէջէն պիտի անցնէր, Նիքշիչի պաշարումը պիտի բառնայր եւ Գարատաղ պիտի մտնէր Օսթրօկէն. արեւելեան կողմէն Մէհմէտ Ալի փաշա 25,000 մարդով Գօլաշինէն մեկնելով Գարատաղ պիտի մտնէր Մօրաչայի հովտէն. Հարաւային կողմէն Ալի Սաիպ փաշա 20,000 մարդով Փոտկորիցայէն մեկնելով՝ Զէթայի հովտէն պիտի մտնէր ։

Այս երեք գնդերն համակեդրոն յառաջխաղացութեամբ պիտի վանէին իրենց դէմ ելած թշնամին, իշխանապետութեան մէջ տեղը պիտի միանային իրարու հետ, եւ Չէթթինեէի վրայ քալելով՝ Գարատաղցւոց մնացեալ մասը պիտի ջնջէին անդ ։

Ո՛րչափ զօրք կրնար հանել Նիքիթա իշխանն այս ահեղ յարձակման դէմ։ Գարատաղ 20,000 պատերազմիկ մարդ ունէր 40 վաշտի բաժնուած. Հէրսէկցի ապստամբներն որք կամաւ իշխանին հպատակ եղած էին՝ 16 վաշտ կը կազմէին, այսու ընդ ամենն կը լինէր 28,000 մարդ ։ Իւրաքանչիւրն լաւ հրացան մը, յոգնահար ատրճանակ մը եւ դաշոյն մ'ունէր։ Լեռնային պատերազմներու մէջ յարձակողաց դէմ այնպիսի դժուարութիւնք կ'ելնեն՝ որով նոցա թուական առաւելութիւնն արժէք մը չունենար, եւ արի Գարատաղցւոց պէս հաստատամիտ մարդիկ՝ ժայռերու ետեւ պատսպարուած լինելով՝ կրնան յաջողութեամբ դէմ դնել իւրաքանչիւրն չորս հակառակորդի. վասն որոյ Գարատաղցիք նուազ զօրութեամբ հաւասար կը դտնուէին Տաճկաց, ինչպէս չէր կարծուեր նախ, եւ

ինչպէս յետոյ դէպքն ապացուցին զայս ։ Գարատաղցւոց զօրքն հետեւեալ կերպիւ բաժնուած էր. իշխանին անձը՝ Վուքօթիչ Գրսթացի մէջ էր 22 վաշտով. իշխանը Օսթրօկի մէջ կը գտնուէր 10 վաշտով Նիքշիչի դէմ. հարաւային կողմէն՝ Գարատաղցւոց ծերակուտին նախագահ Պօժօ Փէթրովիչ՝ Ալի Սաիպ փաշայի դէմ կը գտնուէր 20 վաշտով. իշխանն չէր կարծեր որ Մէհմէտ Ալի փաշա արեւելեան կողմէն կրնայ յարձակիլ, վասն որոյ 3 վաշտ միայն թողած էր այն կողմի կրճից մէջ։

Յունիս 1 ին այնպիսի կատաղի կռիւ մը սկսաւ, որոյ նմանը չէ տեսնուած եւրոպական պատերազմաց մէջ ։ Տաճիկներն հիւսիսակողմէն եւ հարաւակողմէն յարձակիլ սկսան միանգամայն ։ Հիւսիսակողմէն Սիւլէյման փաշա՝ որոյ հետ կը գտնուէր 3,000 բեռնաբարձ ձի՝ Նիքշիչը պարենաւորելու համար, դէպ ի Տուկայի կիրճերն յառաջ խաղալով՝ Գրսթացի վրայ յարձակեցաւ։ Գարատաղցւոց ռազմագիտական պատրաստութիւնքն խեղճ բաներ էին ։ Փէթր Վուքօվիչ իւր պահապաններէն ըստ պատշաճի տեղեկութիւն չառնելով եւ Տաճկաց շարժմանց վրայ խաբուելով՝ 7 վաշտ ղրկած էր Կօրանսքօյի կողմը, իւր ուղղակի հրամանատարութեան ներքեւ 10 վաշտ միայն պահած էր Տուկայի կրճից մէջ եւ 5 վաշտ միայն թողած էր Գրսթացի մէջ։ Այս հինգ վաշտերուն դէմ եղաւ Տաճիկ զօրաց ստուար մասին յարձակումն, որք Փիվայի եւ Կօրանսքօյի կողմը փոքր ջոկատներ միայն ունէին ։

Տաճիկներն ամսոյն 4ին առաւօտուն մեծ բազմութեամբ յարձակեցան եւ իսկոյն կրակ ընել սկսան իրենց 8 հատ Գռուբի թնդանօթներովն։ Սակայն Գարատաղցւոց 5 վաշտերն իրենց սովորական ուժգնութեամբ յարձակեցան Տաճկաց վրայ եւ մեծ կորուստ տուին անոնց ։ Բայց հետզհետէ նոր զօրք հանելով Տաճկաց օգնութեան, ստիպուեցան տեղի տալ. վասն որոյ իրենք եւս մեծ կորուստ կրեցին ։ Երեք Գարատաղցի հրամանատարներէն Սէրտար Շքօռնիս-Կրուիչին՝ որ Լիուպօթինի վաշտին գլուխը կը գտնուէր, հրազէնով հինգ տեղէ վիրաւորուեցաւ եւ չորս տեղէ ալ հատու զէնքով, Փէրօ եւ Սթէֆան Մաթթանովիչ եղբարք՝ որք Չէքլիչի եւ Թէքլինի վաշտերուն հրամանատարներն էին, վիրաւորուեցան, ինչպէս նաեւ Նէվէսինեէի Հերսէկցւոց վաշտերուն միոյն հրամանատարն։ Եօթն հարիւրէն աւելի զինուորք մեռան կամ վիրաւորուեցան այս անհաւասար կռուոյն մէջ, յորում Գարատաղցիք հինգ ժամ դիմացան ։ Վուքօթիչ վօյվօտին տասն վաշտերն Տուկայի կրճից ներսերը շատ հեռի տեղ մը գտնուելով՝ չէին կրնար իրենց ընկերացը օգնութեան հասնիլ ժամանակին ։ Այն եօթն վաշտերն՝ որ Փէքօ Փավլովիչի եւ Լազար Սօչիցայի հրամանատարութեամբ դէպ ի Կօրանսքօ գնացած էին, Տաճկաց փոքր ջոկատի մը հետ կռուեցան եւ դէպ ի Մուրաթովիչ յետս մղեցին զայն ։

Այսպէս Սիւլէյման փաշա ամսոյն 4 ին երեկոյին տիրեց Գրսթացի ։ Իւր քաջամարտիկ զօրքն սարսափելի կորուստ կրած էին։ Այնուհետեւ հինգ օր անշարժ մնաց այս արիւնռուշտ կռուէն ուժաթափ եղածի պէս ։

Վուքօթիչ գիշերն անցուց իւր գրաւած դիրից վրայ. բայց տեսնելով որ իւր սակաւաձեռն գունդն մեծ կորուստ կրելէն տկարացած էր, նաեւ հարկ լինելով բազմաթիւ զինուորներ գործածել վիրաւորներուն փոխադրութեանը համար, որոշեց երթալ Փրէշիէքայի մօտ ուրիշ դիրք մը բռնել, զոր աւելի զօրաւոր կը համարէր ։

Մինչեւ վերջը Գարատաղցիք չէին գիտեր թէ իրենց դէմը որչափ բազմաթիւ զօրք կը գտնուէր, եւ Նիքիթա իշխանն վստահ լինելով որ Վուքօթիչ կրնայ դիմանալ, Նիքշիչն ռմբակոծելու ետեւէ կը լինէր ։ Նոյն ամսոյն 9ին Սիւլէյման փաշա Տուկայի կիրճը մտնելով նորէն յարձակումն ըրաւ վերջին ծայր սաստկութեամբ ։

Գարատաղցւոց գլխաւորն դարձեալ սխալանք մը գործեր էր իւր զօրքն այսր անդր ցրուելով. սոցա վաշտերն խիտ անտառներու մէջ ծածկուած՝ զիրար չէին սոսկալի կռիւ մը լինելէ յետոյ, Թեւին մնացեալ մասն եւս անօգնական մնալով՝ երկու կտոր եղաւ եւ ստիպուեցաւ ետ քաշուելու: Սիւլէյման փաշա Թշնամին առա-



ԶՕՐԱՎԱՐ ՑԻՄՄԷՐՄԱՆ, ՀՐԱՄԱՆԱՏԱՐ ՍՏՈՐԻՆ ԴԱՆՈՒԲԻ ԳՆԴԻՆ

կրնար տեսնել եւ միմեանց օգնել. մէկ քանիներուն հրաման անգամ չհասաւ: Տաճկաց ամենէն սաստիկ յարձակումն ձախակողմեան Թեւին վրայ կը լինէր, որմէ երկու վաշտ յետս մղուեցան՝ նախ հրացանուք եւ ապա հատու զէնքով երկու ժամ թուր կոխեց գոգցես, Նիքշիչի սարահարթին վրայ ելաւ եւ պարենաւորեց այս բերդաքաղաքն, ուր Օսման պէյ անուամբ հունգարացի արի սպայ մը երկու տարիէ ի վեր կը դիմադրէր Գարատաղցւոց յարձակմանցն:

Նիքիթա իշխանն՝ մինչ մէկ կողմանէ իւր աներոջ պարտութեան լուրը կ'առնոյր, միւս կողմանէ կ'իմանայր նաեւ թէ արեւելեան գաւառներն ապստամբեալ էին Մէհմէտ Ալի փաշայի զօրօք, որք 1,450 տուն այրեր եւ բազմաթիւ դուար յափշտակեր էին։ Փութաց 6,000 մարդ ղրկելու այն տեղ եւ ինքն Փլանինիցա քաշուեցաւ որ Օսթրոկի յառաջակողմն է։ Սիւլէյման փաշա սարերէն վեր ելնելով՝ իշխանին ետեւէն անկաւ, որ դիմադրելու անկարող գտնուելով՝ մինչեւ Օսթրոկ նահանջեց. այն տեղ Վուքօթիչ հասաւ վերջապէս իւր քով։ Սիւլէյման փաշա ամսոյն 17ին Օսթրոկը դրաւեց, Գարատաղցիք անզօր գտնուելով զայն պաշտպանելու։ Ապա այրեց այն վանքն որում Օմէր փաշա 1862ին դպած չէր.

Ցայնժամ զարհուրելի ճակատամարտ մը սկսաւ որ վեց օր տեւեց։ Օսթրոկի բարձունքն բուն Սեաւ Լերան մէջ են. խոռոչներու, ծործորներու եւ ձորերու բաւիղ մ'է այս, որոց մէջ տեղ իբրեւ պատուար կը բարձրանան կրաքարեայ պարեխներ, տեղ տեղ սրածայր լեռներ եւ գահաւանդներ կը գտնուին, եւ գետինը փեռեկեալ է նեղ ճեղքուածներով։ Այն տեղի լեռնականք միայն կրնան չմոլորիլ։ «Երբ Աստուած աշխարհքս ստեղծեց, կ'ըսեն ծիծաղելով, ձեռքը պարկ մ'ունէր լեռներով լի. բայց պարկը պայթեցաւ ճիշդ Գարատաղի վրայ եւ ժայռերու այս ահագին կոյտն անկաւ զոր կը տեսնէք.» Սիւլէյման փաշա՝ Նիքշիչի մէջ իւր հետ առած ուղեցոյցներուն փախչելուն վրայ՝ ջանաց խելքով անցք մը գտնել այն երկրին մէջէն մինչեւ Չէթայի հովիտն, ուր Ալի Սաիպ փաշա իրեն պիտի սպասէր. Սոյն տեղէն երեք փարսախ միայն հեռի կը գտնուէր, ուր հասնելու համար վեց օր պէտք եղաւ։

Չեմք գիտեր թէ ո՛ր բանին վրայ աւելի պէտք է զարմանալ, Տաճկաց անընկճելի կորովոյն՝ թէ Գարատաղցւոց անդրդուելի պնդութեան վրայ։ Սոքա Տաճկաց դէմ հրացանաւ այնպէս լաւ կրակ կը թօթափէին՝ որ անընդհատ չորս օր Տաճիկներն ի զուր ջանացին սուինով անոնց մերձենալու եւ գուպարելով զանոնք իրենց բազմութեան ներքեւ ընկճելու։

Գարատաղցիք իրենց ռազմամթերաց հատնելուն վրայ՝ որոշեցին անհաւասար կռուոյ մը մէջ մտնել քան թէ հարուածի դէմ հարուած չտալով փախչիլ. Ցիր բոլերու բաժնուեցան եւ իրենց դիրքերէն դուրս ելնելով՝ արիաբար Տաճկաց դէմ յարձակեցան։

Ռակուզայէն գրուած նամակներ զարմացմամբ կը խօսին այն կռուոյն վրայ։ Գարատաղցիք նախորդ չորս օրերն իրենց բռնած պաշտպանողական դիրքը թողլով՝ յուսահատաբար եւ դիւցազնաբար յարձակողականի սկսան եւ Տաճկաց վրայ խոյացան յախուռն կերպիւ։

Այս հոմերական կռիւն տակաւին երկու օր տեւեց. ապա Սիւլէյման փաշա ստիպուեցաւ Օսթրոկի յետակողմը քաշուիլ՝ իւր խուճապեալ վաշտերը վերակազմելու համար. Բայց ամսոյն 24ին վերստին յառաջ խաղաց եւ կռուիլ սկսաւ.

Գարատաղցիք՝ նուաղեալ, պարտասեալ եւ ուժաթափ՝ սակայն իւրաքանչիւր քայլափոխի ջանալով տեղի չտալ դիակներով ծածկուած այն գետնին վրայէն, վերջոտնեցան եւ քաշուեցան մինչեւ Օրէնտօլ, որ Չէթինէէ տանող ճանապարհին վրայ է. Անդ՝ Նիքիթա իշխանն իւր զօրանիստը վերահաստատեց. Սիւլէյման փաշա տիրեց այս կերպիւ Օսթրոկի կիրճին ինչպէս արդէն տիրած էր Տուկայի անցքին. բայց ո՜րչափ զոհողութեամբք։ Ձորերն, խոռոչներն, լերանց կապաններն եւ հեղեղատներն դիակներով լի էին. Մեռելոց թիւն սարսափելի էր, որովհետեւ Գարատաղցիք անխնայ են եւ կըսպաննեն վիրաւորներն զորս չեն կրնար իրենց աղքատ երկրին մէջ խնամել։ Օդն ապականեալ էր։ Տաճկաց կորուստն առ նուազն 5,000 ի կը

հասնէր, եւ Գարատաղցւոց կորուստն ասոր կիսուն չափ կար :

Նիքիթա իշխանին նահանջելուն վրայ՝ Սիւլէյման փաշա Չէթայի հովիտն իջաւ Մէհմէտ Ալի եւ Ալի Սաիպ փաշաներուն հետ միանալու համար, որք միանգամայն անդ պիտի գտնուէին, բայց երկուքն եւս դժբախտ եղած էին եւ չէին կրցած ժամադրութեան տեղն հասնիլ։ Մէհմէտ Ալի փաշային զօրքն թշնամւոյն երկիրը ասպատակելէ յետոյ՝ Մօրաչայի Ուսքօքներուն կողմանէ յարձակումն կրեր եւ մինչեւ Քօլաշին վերջոստներ էին ։ Նիքիթա իշխանին կողմանէ օգնութեան ղրկուած զօրաց ժամանելուն վրայ, Մէհմէտ Ալի փաշային զօրքն անշարժ կենալու ստիպուած էին :

Ալի Սաիպ փաշա եւս իւր կողմանէ յառաջ խաղալ սկսեր էր յունիսի 4ին, եւ Պօժօ-Փէթրովիչի յառաջապահ զօրաց ուժգին դիմադրութեանն հանդիպած էր հետեւեալ օրն : Խիստ սաստիկ կռիւ մը եղած էր, յորում Գարատաղցւոց չորս վաշտեր դէմ դրին դաշտային թնդանօթներ ունեցող օսմանեան զօրաց ութ կամ տասն վաշտերուն ։ Սոքա յետս մղուեցան եւ ստիպուեցան Սփուժի մօտ քաշուիլ : Ալի Սաիպ փաշա մէկ քանի օրէն դարձեալ յաղթուեցաւ Սակարասի մօտ :

Սիւլէյման փաշա Օսթրօկի վրայ յարձակած ժամանակ, հրաման եղաւ Ալի Սաիպ փաշայի որ նոր ճիգ մը թափէ յառաջ խաղալու համար։ Ամսոյն 19ին երեկոյին՝ տասն եւ չորս վաշտ կանոնաւոր եւ բազմաթիւ անկանոն զօրք Տօնիէ-Սէլօ գիւղը գրաւեցին Մարթինիչի ստորոտն ։ Գարատաղցիք դէպ ի հիւսիսակողմը քաշուեր էին : Հաֆըզ փաշա ամսոյն 20ին իւր հաստուած ոյժն Զօրէսլանիք գիւղին վրայ քալեց, որ Սլաթինա վտակին եզերքն է, բայց տակաւին այն տեղ չհասած՝ յարձակումն եղաւ իւր վրայ թէ ճակատէն եւ թէ երկու քովերէն : Հրազինուց կռիւն խիստ քիչ ժամանակ տեւեց. Պօժօ-Փէթրովիչի հրամանաւ, Գարատաղցիք ցրկիճներն քովերնին կախելով՝ իրենց յոդնահար ատրճանակները (ռիվօլվէր) եւ դաշոյնները (խանչէր) ձեռքերնին բռնած՝ Տաճկաց վրայ նետուեցան եւ դուպարեցան։ Կը թուի թէ սոյն կռւոյն մէջ մեծ կոտորած կրեցին Տաճիկք եւ իրենց օժանդակ գտնուող Մալիսօրներն (քրիստոնեայ լեռնականք)։ Երբէք այսպիսի սարսափ եւ շփոթութիւն տեսնուած չէր Թուրքիոյ եւ Գարատաղի իրարու հետ ըրած պատերազմաց մէջ։

Սիւլէյման փաշա առանձինն մնալով՝ վերջին ծայր տագնապալից վիճակի մը մէջ կը գտնուէր՝ նոյն իսկ իւր յաջողութեան պատճառաւ։ Յոյժ վտանգաւոր տեղի մէջ էր՝ ամեն կողմանէ թշնամիներով շրջապատեալ, եւ դժուար էր իրեն թէ նահանջելն եւ թէ յառաջելն։ Երկու բան միայն կրնար ընել, կա՛մ Նիքշիչի ճանապարհը բռնելով Օսթրօկի բարձունքէն անցնիլ եւ իւր զօրաց այնքան կորուստ պատճառող վեցօրեայ ճակատամարտը կրկնել, եւ կամ դէպ ուղիղ յառաջ խաղալով Ալպանիա մտնել, որ մէկ քանի ժամ միայն հեռի կը գտնուէր. այս վերջինն որոշեց ընել։ Լեռնականք իւր ետեւէն անկած՝ կոտորած կ՚ուտային Տաճկաց, բայց վերջապէս իւր ուշիմութեամբն եւ զինուորաց արիութեամբը կարող եղաւ այն արիւնաներկ կրճից մէջէն դուրս ելնել՝ ուր 21 օրէ ի վեր կը կռուէր, եւ Ալի Սաիպ փաշայի հետ միանալ Սփուժի մէջ : Այս կերպիւ հիւսիսակողմէն Գարատաղ մտնելով հարաւակողմէն ելաւ եւ երկու գունդք օսմանեան երկրին վրայ միայն կրցան միանալ։ Զարմանալի դիպուածով մը յառաջ խաղալով հանդերձ՝ նահանջ մ՚ըրած էր ։

Երբ Ռուսք Դանուբն անցան, հրաման եղաւ Սիւլէյման փաշայի որ նաւ մտնէ 45 վաշտ զօրքով եւ Պալքաններուն պաշտպանութեան մասնակցելու երթայ փութով, Մէհմէտ Ալի փաշա Վիտինի բանակին օգնութեան գնաց, եւ Սլի Սաիպ

փաշա այնուհետեւ Ալլանիոյ գունդը միայն ունենալով իւր քով, որ 33 վաշտէ եւ 5 կամ 6 հազար պաշը-պօզուգներէ բաղկացեալ էր, ստիպուեցաւ պաշտպանողական դիրք մը բռնել։

Այսպէս աւարտեցաւ Գարատաղի վրայ եղած սոյն անօգուտ արշաւանքն, որոյ արդիւնքն եղաւ միայն տաճկական բանակը զրկել 8,000 ընտիր զօրքէ եւ Հէրսէկը բոլորովին թափուր թողուլ։ Ապստամբք իրենց մահմետական հայրենակիցներն եւ Տաճկաց հետ որեւիցէ պատճառաւ միաբանող մարդիկը բնաջինջ կատարելու համար՝ անագորոյն կռիւ մ'ընելու սկսան։

---

ԴԱՆՈՒԲԻ ՓԱԿՈՒՄՆ ՄԵՐՁ Ի ՀՐՍՕՎԱ. — ՎԷԼԻՔԻ ՔՆԵԱԶ ՔՕՆՍԹԱՆԹԻՆ ՆԱՒՈՒՆ ԱՐՇԱՒԱՆՔԸ

Սէյֆի զրահաւորին աղետալի դէպքէն յետոյ՝ Մաչինի մօտ գտնուող երեք ջրասուզակ զրահաւորներն ջրանցքէն վեր ելեր էին ռուս նաւաստեաց ձեռնարկութիւններէն զերծ մնալու համար։ Սակայն այնքան սարսափած էին՝ որ չէին համարձակեր գիշերը նաւերուն վրայ պառկելու եւ Իկլիցայի մէջ կ'օթեւանէին։ Զրահաւորներն՝ ջրոց բարձրանալուն վրայ՝ դուրս ելան ջրանցքէն եւ Հրսօվայի մօտ ապաստանեցան, ուր Սիլիսթրէէն երկու շոգենաւներ ասոնց քով եկան։

Որովհետեւ Նիքօլա մեծ դքսին յառաջագծին համեմատ՝ Իպրայիլի մօտ կամուրջ մը պիտի շինուէր, հարկ էր որ այս հինգ նաւերն այլ եւս չկարենային գետէն իջնել եւ աշխատաւորաց վրայ յարձակիլ յանկարծ։ Վասն որոյ՝ Իպրայիլի նաւատորմիղին հրամանատար Ռօկուլ անուն աւագ նաւապետն հրաման առաւ Նիքօլա մեծ դքսէն՝ Մաչինի ջրանցքը վերի կողմէն եւ Դանուբի գլխաւոր ճիւղը Հրսօվայի դիմացէն չքթականներով փակելու, եւ այս նպատակաւ նաւախմբակ մը պատրաստեց, յորում հետեւեալ նաւերն կը գտնուէին.

1. Ֆէթհիւլիսլամ անուն ռումանական մակոյկն, փոխ-նաւապետ Տուպասովի հրամանատարութեան ներքեւ, յորում կը գտնուէին Ֆէտօրով երկրորդական փոխ-նաւապետն, Տօքթօր Փօփլավսքի, փոխ-նաւապետի տեղակալ Սինէպրիուխով եւ 30 նաւաստիք։

2. Ցաբէլէն մակոյկն, յորում կը գտնուէին Շէսթաքով փոխ-նաւապետն, Ֆէօտօսիեվ երկրորդական փոխ-նաւապետն եւ 16 նաւաստիք։

3. Քաբէնէ մակոյկն, յորում կային երկրորդական փոխ-նաւապետն Փէրսին եւ 16 նաւաստիք։

4. Եէնէր մակոյկն, որոյ մէջ էին Պահլ երկրորդական փոխ նաւապետն եւ 10 նաւաստիք։

5. Զուհուրիէնէ շոգենաւն, որոյ հրամանատարն էր Թուրքուլ փոխ-նաւապետն եւ որոյ մէջ կը գտնուէին երկրորդական փոխ-նաւապետն Արքաս, փոխ-նաւապետի տեղակալ Օկլատին, ռումանիացի Մուրճէսքօ հազարապետն եւ 12 նաւաստիք։ Այս շոգենաւն իւր ետեւէն կը քաշէր չքթականներով լի չորս կարկուրայ (պառծ), իւրաքանչիւրն՝ հինգ նաւաստեօք, փէթրով փոխ-նաւապետին հրամանատարութեան ներքեւ։

Ինչպէս կը տեսնուի, մայիս 25ի նաւամարտին բոլոր դիւցազունքն այս արշաւանաց կը մասնակցէին։

Վերոյիշեալ նաւերն Իպրայիլէն մեկնեցան յունիսի 7 ին եւ երեկոյին Կուրա-Եալօմնիցա հասան, ուր գիշերն անցուցին՝ այն տեղ շինուած մարտկոցներուն պաշտպանութեան ներքեւ։ Հետեւեալ օրն արշալուսոյն՝ Ֆէթհիւլիսլամ, Ցաբէլէն և Քաբէնէ մակոյկներն զննութիւն մ'ընելու համար մեկնեցան. Նոյն պահուն Հրսօվայի լերան մօտ գտնուող օսմանեան հինգ զրահաւորներն ածուխ վառեցին. զրահաւորներէն մին հոսանքէն վար իջաւ երեք մակոյկներուն վրայ յարձակելու համար. ասոնք յանդգնութեամբ անոր դէմ ելան եւ

Քսէնիա մակոյկն սկսաւ կրակ ընել իր յառաջակողմը զետեղեալ եւ չորս բԹաչափ առումբ արձակող Թնդանօթովը։ Ջրահաւորն խսկոյն եւ դառնալով՝ արագ ընթացիւք մինչեւ Հրսօվա հասաւ, մինչ մակոյկներն անոր ետեւէն անկած կը վանէին, որպէս զի գետեզրին վրայ թշնամւոյն ունեցած մարտկոցներէն ռումբ արձակուի եւ այսու յայտնի լինի անոնց կրակին զօրութիւնն եւ որչափ տեղ հասնիլն ։ Իրօք մէկ քանի դունտ արձակուեցաւ Տաճկաց մէկ մարտկոցէն, որ հաստատուած էր աջակողմեան գետեզրին բարձանցը վրայ ։ Այս դնտերն Ռուսաց մակոյկներուն մօտ անկան ։

Ռուսք՝ տեսնելով որ Տաճկաց նաւերն Հրսօվայէն վեր կը գտնուին, սկսան հանդարտութեամբ շքթակներ զետեղել Դանուբի գլխաւոր ճիւղին մէջ Կիսքա-Միքա կղզւոյն առջեւ՝ Տաճկաց մարտկոցներուն եւ մէկ բանակատեղին դիմաց, յորում 3,000էն աւելի մարդիկ զինեալ կը դիտէին բլրոյ մը վրայէն ։

Ամսոյն 9ին՝ Քսէնիա եւ Ցարէվիչ զընութիւն մ՚ըրին Մաչինի ճիւղին մէջ, եւ օսմանեան երկու մակոյկներու հանդիպեցան, որոց մէջ արձակամարտ զօրք կը գտնուէր։ Երեք անգամ երկաթի կտորներ արձակեցին անոնց վրայ Թնդանօթով, եւ Տաճիկներն ստիպուեցան ետ քաշուելու ։ Սոյն պահուն՝ միւս մակոյկներն Մաչինի ճիւղը կը փակէին շքթակներով վերի կողմէն . այս գործողութիւնն առաւօտեան յիններորդ ժամուն աւարտելով՝ Կուրաեալօմնիցա դարձան անոնք։ Հետեւեալ օրն, նաւախմբիկն իր գործն յաջողութեամբ կատարած լինելով՝ Իպրայիլ կը հասնէր . այնուհետեւ Ռուսք իշխող էին Ստորին Դանուբի վրայ Հրսօվայէն վար։ Կը Թուի Թէ Տաճիկներն աւելի իրենց զրահաւորներն պահպանելու կը նայէին քան Թէ զանոնք իբր պատերազմական գործիք ի կիր արկանելու ։

Սեւ ծովու կողմանէ Դանուբի մուտքն Ռուսաց ձեռօք փակեալ էր՝ սոցա Ռումանիա մտնելուն առաջին օրէն. բայց Սուլինայի կամ Սիւննէի մօտ օսմանեան վեց զրահաւորներու ներկայութիւնն անհանգիստ կ՚ընէր զիրենք ։ Շքթակներու շարք մը բոլորովին անյաղթելի արգելք մը չէ, եւ եթէ Տաճիկներն Հօպարթ փաշայի պէս հաստատամիտ մէկն ունենային իրենց գլուխ , կրնային ամենամեծ դիւրութեամբք այն արգելքն անցնելու փորձն ընել, Իպրայիլի կամրջին վրայ յարձակիլ՝ զօրաց չու ըրած միջոցին, եւ աղէտք պատճառել։ Ռուսք որոշեցին այն զրահաւորներուն դէմ շքթակակիր մակոյկները գործածել , որք այնքան յաջողութիւն ունեցած էին Մաչինի մօտ ։

Վէլիքի-Քնեազ Կոնստանտին շոգենաւն յունիսի 10ին Օտէսայի նաւահանգստէն դուրս ելաւ՝ իր ետեւէն վեց մակոյկ քաշելով , զորս Սուլինայէն հինգ մղոն հեռի հասուց։ Շքթակակիր մակոյկներն կէս գիշերէն երկու ժամ յետոյ ծովափանց մօտեցան եւ ընդ հուպ չորս զրահաւորներու դիմաց գտնուեցան, որոց երեքն խարսխի վրայ էին եւ չորրորդն կրակ կը վառէր մեկնելու պատրաստութեան համար ։ Փուշչին փոխ-նաւապետին հրամանատարութեան ներքեւ 1. Թիւ մակոյկն եւ Ռօժտէսթվէնսքի փոխ-նաւապետին հրամանաց ներքեւ եղող 2. Թիւ մակոյկն իսկոյն Տաճկաց դէմ յառաջացան խիզախութեամբ ։ Ջէշմէ մակոյկն՝ որոյ հրամանատարն էր Զացարէննի փոխ-նաւապետն , միւսներէն քիչ մը ետեւ կը գտնուէր՝ ի միասին յարձակումն ընելու պատրաստ . բայց իւր շքթակն անյաջողութեան պատճառ՝ եղաւ, վասնզի ջուրը ձգուելուն պէս՝ ելեքտրականութիւնն հաղորդող Թելերն պտուտակին փաթթուեցան եւ մակուկին շարժումնքն արգիլեցին ։

Սոյն միջոցին Փուշչին եւ Ռօժտէսթվէնսքի փոխ-նաւապետներուն մակոյկներն յառաջ կ՚ընթանային , բայց չտեսնուելու չափ չէին հեռանար իրարմէ ։ Ռօժտէսթ-

վէնաքի ամենէն մօտի գրահաւորին վրայ գնաց, որ իւր աջակողմեան խարիսխը միայն ձգած էր, իսկ Փուչչին աւելի յառաջացաւ նաւահանգստին մէջ։ Երբ Ռօժտէսթվէնաքիի նաւակն գրահաւորներուն 10 մէթըր հեռալու չափ մօտեցաւ, Տաճիկ պահանորդ մը սկսաւ աղաղակել, եւ միանգամայն հրացաններ արձակուեցան գրահաւորին վրայէն. մէկ քանի վայրկեան յետոյ՝ նաւահանգստին մէջ ձայնատրութեան համար զանգակ զարնուեցաւ եւ իսկոյն թնդանօթներ պարպուեցան ։ Ռօժտէսթվէնաքի շոգւոյն բոլոր զօրութեամբը մակոյկն յառաջ վարել տուաւ. շքթակը պայթեցաւ՝ տակաւին գրահաւորին դէմ չընդհարած։ Տաճիկներն ամէն առաջ պատահած փորձանաց վրայ խոհեմ գտնուելով՝ իրենց նաւերը շրջապատեր էին շղթայներէ բաղկացեալ ցանցով մը, զորս աստ անդ նաւակներու միջոցաւ ձգտեր էին ։ Այս գործոյն պարծանքն Հօպարթ փաշայի կը վերաբերի, որ սոյն տնօրէնութեամբ իրօք ազատեց նաւատորմիղն բնաջինջ կորընչելէ ։

Ռօժտէսթվէնաքիի նաւակն այն ժամանակ խիստ տագնապալից կացութեան մը մէջ գտնուեցաւ. Նաւաստիք թշնամւոյն կրակին խիստ մօտ լինելով հանդերձ՝ նաւակին ետ քաշուիլը կարելի ընելու համար մէկ քանի վայրկեան աշխատելու ստիպեալ էին. Ռօժտէսթվէնաքի փոխ-նաւապետին զարմանալի անխռովութեամբն եւ Քանցէրով մեքենավարին անձնուիրութեամբն միայն կրցան փրկուիլ ։

Ռօժտէսթվէնաքի՝ Տաճկաց կրակէն հեռանալէն յետոյ՝ մակուկին ընթացքը կասեցուց Փուչչինի նաւակին սպասելու համար. բայց մէկ քանի վայրկեան այնպէս հեռալէ յետոյ՝ տեսնելով որ Տաճկաց մէկ նաւը կը մօտենայ եւ կրակ կը թափէ, նորէն մեքենայն դարձնել տուաւ։ Վտանգը կրկին մեծ էր, վասն զի՝ կանգ առած միջոցին շոգւոյն զօրութիւնը նուազած լինելով՝ մակոյկը չէր կրնար անըմբռնելի լինելու չափ արագ ընթանալ։ Պահ մը քիչ մնաց որ օսմանեան նաւը իւր վրայ պիտի հասնէր։ Մակուկին ընթացքն արագացնելու համար՝ Ռուսք ինչ որ կարելի էր ըրին. ճարպ եւ խծուծ նետեցին վառարանին մէջ եւ իսկոյն կրցան բացն ելնել ։

Միւս երկու մակոյկներն՝ թէ եւ գրահաւորաց բաւական մօտեցած էին, չհամարձակեցան յարձակելու փորձ մ'ընել՝ թշնամւոյն իրար անցնելուն վրայ, եւ ծովուն բացն ելան ։

Սոյն միջոցին ի՞նչ եղած էր Փուչչին ։ Նա դիւցազնի մը պէս կը գործէր այնպիսի արիութեամբ եւ կորովամտութեամբ՝ որ զինքն լաւագոյն բախտի մը արժանի կ'ընէին։ Նա ուրիշ բան չէր մտածեր, բայց եթէ յաղթել իւր դէմն ելած անակնկալ արգելքին։ Կացնով կտրեց օսմանեան երկու նաւերու մէջ տեղ ձգուած կառաններէն (օսիէս, փալամար) մին, որոյ դէմ ընդհարած էր իւր մակոյկն եւ արիութեամբ յառաջելով՝ 5 մէթր հեռալու չափ մօտեցաւ Իճլալիէ գրահաւորին, մինչ երկաթի կտորներու տարափ մը կը տեղայր իւր մակուկին վրայ․ Յանկարծ՝ ելեքտրական թելը շարժող կոճակին գնտակ մը դպաւ եւ տարաժամ կրակ տուաւ շքթակին՝ հակառակ կամաց Փուչչինի։ Շքթակին պայթումն օսմանեան նաւին կողէն շատ հեռու պատահելով՝ մեծ վնաս մը չպատճառեց ։

Փուչչին իւր անխռովութիւնը չկորուսանելով՝ մակուկին գլուխը դարձուց եւ սկսաւ հեռանալ Տաճկաց կրակին ներքեւէն։ Սոքա իւր ետեւէն անկան․ բայց նորա մակոյկն արագընթաց է եւ կը փախչի, սակայն մէկ քանի մղոն երթալէ յետոյ մեքենային աւրուելովը կը ստիպուի կանգ առնուլ։ Փուչչին չկրնալով Վէլիքի-Քնեազ Կօնստանտինի քով հասնիլ որ աւելի բացը կը սպասէր, կ'ուզէ որ գոնէ իւր մակոյկը Տաճկաց ձեռքը չանցնի ։ Կը ծածկէ զայն եւ կը սուզէ, եւ ինքն ջրոյն վրայ կը լո-

ղոյ իւր ութ նաւաստեօքն հանդերձ՝ լողական գօտիներ ունենալով։ Ահա այս վիճակին մէջ գտնուած պահուն, Տաճիկներն իւր վրայ հանելով կը ձերբակալեն զինքը ։

Սա Կոստանդնուպոլիս ղրկուելով բանտարկուեցաւ, բայց մէկ քանի օր յետոյ փախչելու փորձ մ՚ըրած ժամանակ բանտին պատուհանէն անկանելով մեռաւ ։

Այս կերպիւ Վէյլէ-ֆնեաղ [illegible] արշաւանքն բոլորովին ապարդիւն եղաւ, բայց Ստորին Դանուբի վրայ Ռուսաց գործողութեանցն ալ վտանգ մը չհասաւ, վասն զի օսմանեան զրահաւորաց հրամանատարներն լաւ չհամարեցան չքթականերուն վրայէն անցնելու փորձ մ՚ընել ։

---

ՍՏՈՐԻՆ ԴԱՆՈՒԲԻ ԳՈՒՆԴՆ ՏՕՊՐՈՒՃԱ ԿԸ ՄՏՆԷ

Սուլինայի օսմանեան նաւատորմիկն անշարժ մնալով, Ռուսք Ստորին Դանուբի վրայ կատարելապէս կը տիրէին ։ Տաճիկք եթէ չէին կրցած նաւերով Դանուբի գիծը պաշտպանել, դիրութիւն ունէին անշուշտ աջակողմեան գետեզրը պատսպարելու պաշարման թնդանօթներով, որք կրնային շատ հեռի ռումբ արձակել. բայց ինչպէս արդէն ըսուեցաւ, Ապտ-իւլ-Քէրիմ փաշա չէր ուզեր Տօպրուճան պաշտպանել եւ փոքր գունդեր միայն թողած էր անդ ։ Այս նպաստամատոյց պարագայից շնորհիւ՝ Ռուսք կրցան անվրդով Իպրայիլի մօտ կամուրջ մը ձգել, իբր թէ Վօլկայի վրայ լինէին, եւ Ցիմմէրման զօրավարին գունդն հարիւրէն քիչ մ՚աւելի մարդիկ միայն կորուս՝ Դանուբն անցած ժամանակ, թէեւ աւելի մեծ զոհողութիւններ աչք առնուած էին ։

Յունիսի առաջին օրերէն ի վեր Իպրայիլի մէջ տեսնուած գործունէութիւնն Ռուսաց սպայակուտին դիտաւորութիւնները կը յայտնէր ։ Քաղաքն՝ որ 11րդ գնդին մեկնելուն վրայ պահ մը թափուր մնացած էր, վերստին զինուորներով լցուեր էր 14րդ գնդին հասնելովն . մերձակայ բանակատեղն սպիտակ աներով փոքրիկ քաղաքի մը կերպարանքն առած էր կարմիր եւ կանաչ յարկերով մեծ քաղաքին մօտ ։ 40,000ի չափ մարդիկ այն տեղ եկած էին Եաշի կամ Պօլկրատի ճանապարհաւ ։ Ընդարձակ հիւանդանոցներ կը բացուէին. այս բանին համար երեսնի չափ տներ յատկացած էին եւ 420 անկողին պատրաստուած ։ Իւրաքանչիւր ոք կըզգայր թէ ճակատամարտ մը մօտալուտ էր ։ Այս միջոցին խիստ մեծ քանակութեամբ թեղօչի սռուար տախտակներ եւ գրեթէ ամբողջ անտառներ Կարպաթեան լեռներէն կտրուելով՝ Սէրէթ գետէն կ՚իջնէին մինչեւ Կալաց, եւ Կալացէն Իպրայիլ կը տարուէին Դանուբի վրայէն ։ Դանուբ գետն եւս փոքրիկ նաւերով, թնդանօթակիր եւ չքթակակիր մակոյկներով ծածկուած էր, ինչպէս լիճ մը ծածկուած կը լինի աշնան ժամանակ ուղեւոր թռչնոց երամներով ։

Այս բոլոր նաւակներն երկաթուղեաւ Դանուբի մօտ բերուած էին, եւ կամրջաց շինութեան համար մեծ օգուտ ունենալ սկսան անմիջապէս՝ երբ Ռուսք զանոնք ջուրն իջուցին ։

Դանուբի ջրերն ըստ բաւականի նուազելուն վրայ՝ Խազախներու գունդ մը գնաց Կէչլիտ գիւղը գրաւելու, ուր դաշտային թնդանօթաց երկու շար փոխադրուեցան մեծ տափանաւներով ։ Այս թնդանօթները պաշտպանելու համար հողակուտակներ շինուեցան ։ Երբ Ռուսք որեւիցէ անակնկալ յարձակման մը դէմ դնելու չափ ամուր կերպիւ գրաւեցին այն տեղն, այն ժամանակ սկսաւ կամրջին շինութիւնն երկու եզերաց վրայ միանգամայն, վասն զի թնդանօթաց հետ մէկտեղ՝ կամրջի մեծաքանակ կազմածք փոխադրեալ էր ի Կէչլիտ ։ Մաչին գտնուող Տաճկաց զօրքն չէր կրնար այս աշխատութիւնը խափանել, մանաւանդ զի այս քաղաքին եւ Կէչլիտի մէջ տեղ եղած մար-

գագաթներն այն ժամանակ ողողեալ էին մէկ ու կէս մէթր բարձրութեամբ ջրով։

Մէկ քանի աւուր մէջ՝ կամրջաձիգներն հանդարտ կերպիւ աշխատելով զարմանալի գործ մը շինեցին։ կամուրջը կը բաղկանայր 3 մասէ. ռումանական ափանց վրայ հաստատուն մաս մը կար՝ որ ողողեալ մարգագետիններուն վրայէն կ՚անցնէր 600 մէթր երկայնութեամբ եւ գետին բուն ընթացքին քով կը հասնէր. գետին վրայ շարժուն կամուրջ մը կար 900 մէթր երկայնութեամբ, որ այս կողմերն ջրոց նուազութեան ժամանակ Դանուբի ունեցած լայնութիւնն ըսել է. աջակողմեան ափանց վրայ ուրիշ հաստատուն մաս մը կար մէկ հազարամէթր երկայնութեամբ մինչեւ ցամաք գետինն ։

Ամենէն առաջ երկու հաստատուն մասերը կերտուեցան. Թեղօչի խիստ ստուար տախտակներէ մյթեր հաստատուեցան ջրով ողողեալ հարթ մարգագետնին վրայ՝ խիտ առ խիտ գրեթէ 3 մէթր բարձրութեամբ, այս մյթերուն կէսը ջրոց ներքեւ էր եւ կէսը ջրերէն վեր կը բարձրանայր. ասոնք պահանգներով միացած էին, որոց վրայ տասն հարիւրամէթր թանձրութեամբ տախտակամածներ շինուած էին. այս կերպիւ տոկուն տափերականներ ( Թապլիէ ) հաստատուեցան։ Շարժուն կամուրջն նախ 300 մէթր երկայնութեամբ կազմուեցաւ, եւ մէջ տեղը 300 մէթրի չափ բացուածք մը թողուեցաւ, որպէս զի թնդանօթակիր նաւերը կարենան անարգել անցնիլ, յարձակման միջոցին ըստ հարկին այսր անդր երթալու համար։ Եւրոպայի մէջ սովորութիւն եղած է նաւակներով կամուրջ շինել, բայց Ռուսիոյ ճարտարագիտական խումբն զասոնք բաւական տոկուն չհամարիր։ Վասն որոյ այս կամուրջը փոխանակ նաւակներու՝ լաստերէ կազմուեցաւ, որք յառաջագոյն պատրաստուած էին իրարու ագուցեալ խոշոր գերաններով՝ ասոնք 2 մէթրի չափ ջրոյն մէջ մխեալ էին եւ մէկ մասը ջրէն վեր կը բարձրանայր մէկ մէթրի չափ։ Համարելով թէ կամուրջն 5 մէթր լայնութիւն ունէր, միայն շարժուն մասին համար՝ պէտք եղած փայտն 13,500 խորանարդ մէթրի կը հասնէր։ Իրաւացի էր ուրեմն ըսել թէ Կարպաթեան լեռներէն ամբողջ անտառներ կտրուած էին։ Կամրջին երկու կողմերն պահպանակներ հաստատուած էին եւ տեղ տեղ լապտերներ կային գիշեր ժամանակ անցնելու համար, որպէս թէ տարիներ պիտի տեւէր այն ։

Յունիս 21ին շինութիւնն աւարտեր էր ։ միայն շարժուն կամրջին մէջ գլխաւոր բաց թողուած տեղ մը կար, զոր մէկ քանի ժամու մէջ կրնային գոցել ։ Նիքոլա մեծ դուքսն որոշեր էր անցքն հետեւեալ օրն ընել, բայց Ցիմմէրման փոխ-զօրապետն ջրոց բարձրութեան պատճառաւ այս գործողութիւնն անկարելի համարելով, հրաման խնդրեց՝ որ մինչեւ Դանուբի նուազելու ժամանակն յետաձգուի ։ Մեծ դուքսն կրկին հրամայեց յառաջխաղալ, յայտնելով թէ անհրաժեշտ հարկ էր 22ին անվրէպ Դանուբէն անցնիլ. վասն որոյ Ցիմմէրման փոխ-զօրապետն իսկոյն պէտք եղած կարգադրութիւններն ըրաւ՝ այս հրամանը կատարելու համար ։

Ռուսք հետեւեալ կացութեան մէջ էին. Իպրայիլէն 12 հազարամէթր հեռի կը գտնուէր Մաչին օսմանեան բերդաքաղաքն, եւ յայտնի չէր թէ Ապտ-իւլ-Քէրիմ փաշա որչափ զօրք թողած էր անդ։ Կամուրջը չէր կրնար գործածուիլ, որովհետեւ ծայրն լճի մը մէջ էր , եւ Կէչիտէն Մաչին տանող ճանապարհն տակաւին շատ օրեր ջրոց ներքեւ պիտի մնայր։ Իպրայիլէն վեր Դանուբն հարիւրաւոր ճիւղերու կը բաժնուի . ուստի հարկ էր վարի կողմէն անցնիլ . այն կողմն ալ Տօպրուճայի բարձունքն կիսաբոլոր ձեւ մը կ՚առնուն , եւ մէկ քանի բլրոց զառիթափին վրայ տեսնուած սպիտակ վրաններէն կը հասկցուէր՝ թէ անցքն առանց դիմադրութեան չպիտի կատարուէր ։

Մինչ Ռուսք կամրջին շինութեանը կը



ԺՈՒՔՈՎ ԶՕՐԱՎԱՐԻՆ ՍԱՀՆ ԹՈՒՃԱԳԻ ՎԵՐՋԻՆ ԲԱՐՁՐԱՒԱՆԴԱԿԸ ԿԸ ԳՐԱՒԷ

կաղէին, միանգամայն զօրաց փոխադրութեան համար կը պատրաստէին եւ կը յարմարէին Իպրայիլի եւ Կալացի նաւահանգիստներուն մէջ ապաստանեալ բոլոր առեւտրական նաւերն ։ Լաւ խցեալ համբերաւոր պարապ տակառներ անոնց լցարանին մէջ զետեղեր եւ պնդեր էին։ Եթէ երկաթի գունտ մը գար եւ նաւուն գիտը ծակէր, եթէ երեք, չորս կամ վեց տակառի մէջէ անցնելով միւս կողմէն դուրս ելնէր, նաւը դարձեալ չպիտի սուզէր ։ Մէջի մարդիկը հարուածներէ պահպանելու համար թնդանօթից պատուհաններուն առջեւ 2 մէթր թանձրութեամբ չերտափայտներ շինուած էին վերուստ ի վայր հետեւեալ կերպիւ. Նախ տախտակամած մը կար՝ 10 հարիւրորդամէթր թանձրութեամբ, ապա պնդացեալ հողէ խաւ մը՝ նոյնչափ թանձր, յետոյ դարձեալ տախտակամած մը, եւ ասոնց ամենուն վրայէն կռած երկաթի (սաճ) տախտակ մը դրուագեալ էր։ Նաւուն չորս կողմն մարդոց կանգնած տեղերէն հասակաչափ վեր չերտափայտներուն վրայ 60ի չափ ծակեր կային, որոց մէջէն կարելի էր ապահովութեամբ ռումբ արձակել։ Իւրաքանչիւր նաւու յառաջակողմը փոքրիկ թնդանօթ մը կար իւր սպառնալից բերանը բացած ։

Ցիմմէրման զօրապետն որոշեց նախ ջոկատ մը յառաջ վարել այս տեսակ նաւերով։ Ռիաժսքի հետեւակ զօրաց գումարտակէն եւ Ռիազանի գումարտակէն հինգ հինգ դասակ, խազախներու եւ հեծելադաս եւ թեթեւ թնդանօթներու մէկ չոր զատուեցան այս գործողութեան համար, ընդ ամէնն 2,000 հոգի՝ Ժուքով զօրապետին հրամանատարութեան ներքեւ։ Ռիազանի գումարտակը Կալացէն պիտի մեկնէր եւ Ռիաժսքի գումարտակը Ռէնիէն ։ Այս երկու խումբք առաջակողմեան գետեզերին վրայ ելնելէն յետոյ, Պուճաքի չորս բարձրաւանդակներուն վրայ պիտի խաղային, որք Մաչինի հիւսիսային կողմը կը գտնուին 20 հազարամէթրի չափ հեռի, եւ անոնց պիտի տիրէին ընդդէմ ամենայն դժուարութեանց ։ Այս կերպիւ կարելի էր Տաճկաց զօրութիւնն իմանալ եւ Մաչինի դէմ յետոյ յարձակում մ՚ընելու համար խարիսխ մը ստանալ ։

Զօրքը նաւ մտան յունիս 21էն 22 լուսնալու գիշերը Ցիմմէրման փոխ-զօրապետին ներկայութեամբն ։ Երկու կէտերէն ալ Ռուսք կրցան անցնիլ առանց դժուարութեան. Թէ եւ օդը բաց էր, սակայն Տաճիկ մը երեւան չելաւ ։ Գիշերն ի բուն երկու ջոկատներն ողողեալ գետափներուն վրայէն քալեցին, մինչդեռ Իպրայիլի թնդանօթներն Մաչինի դէմ կ՚որոտային Տաճիկները խաբելու համար։ Պուճաքի բարձրաւանդակաց վրայ Կարալինա եւ Զիրլա գիւղերուն մէջ գտնուող պաշը-պօզուքներն առաւօտեան չորրորդ ժամուն խազախները տեսան, որք ձորերուն առջեւ կը գտնուէին, եւ ձայնատու եղան ։ Երեք Տօնաքիներուն ճախճախուտ դաշտի մը վրայէն կը յառաջէին, ուր ամեն մէկ քայլին այր եւ ձի տիղմի մը մէջ կը թաթաւէին. Այսու ամենայնիւ բնաւ նոքա իրենց տեղերէն, մինչեւ կէս մէջքերնին ջրոյն մէջ մնան, եւ իրարու արձակամարտ ըրուած՝ խիստ սաստիկ կռիւ մ՚ընել սկսան Չէրքեզներուն հետ։ Սոքա շուտով քաշուեցան այն բլուրներուն վրայ, ուր Տաճկաց հետեւակազօրը կը գտնուէր։ Արդարեւ սքանչելի պատերազմիկներ են այս խազախները եւ իրենց ամեն մէկ գործն զարմանք կը պատճառէ մարտադիտաց. Որքան ընտիր գործիք եղած են նոքա՝ յորմէ հետէ իրենց խմբերն կազմակերպութիւն ստացած են։ Լաւ լողալ գիտեն՝ ինչպէս նաեւ լաւ ձի հեծնել. Ճահիճի մը մէջէն յառաջ խաղալ պէտք եղածին պէս՝ իսկոյն ջուրը կը մտնեն երկակենցաղ կենդանիներու նման, եւ համարձակ կը գործեն իբր ի ցամաքի, ամենէն յանդուգն շահատակութիւններու կարող լինելով անդ ։

Ռուս հետեւակազօրն եւս խազախներէն յետոյ ճահիճներուն մէջէն անցնելով,

կանգ առաւ ուր , եւ պղնձը (փըրթը) ջերմին գնելէն յետոյ՝ Կորպինայի վրայ քալեց։ Այս 1,800 հոգին տրուած նշանաբանին հակառակ՝ առանց հրացան պարպելու մտուցին Տաճկաց՝ գնդակներու տարափի մը ներքեւ։ Մինչդեռ Ռիազաններն առաջակողմեան բլուրներէն վեր կ'ելնէին, Ռիաժսքի գնդակներուն զինուորներն, անոնցմէ պահ մը յետոյ ժամանելով, ձախակողմեան բլուրներէն վեր կը յարձակէին։ Զօրս բարձրաւանդակաց վրայի մարտկոցներէն միահաղոյն կրակ կը տեղար Ռիազաններուն վրայ. Էլնէր երկրորդական փոխ-հարիւրապետն (մեւ-քալվիլի սանի). որ ամենէն առաջ կ'ընթանար, գնտակէ մը զարնուեցաւ եւ գետինն ինկաւ. «Մի նայիք ինծ, գոչեց իր զինուորներուն, պատի հրամանատարութիւն պիտի ընեմ ձեզ, իմ գործս աղէկ է.» Զօրաց ընդհարումը խիստ սաստիկ եղաւ, բազմաթիւ զինուորներ իրենց սպայից հետ անկան կուրծքերնին սուինով ծակած։ Բայց Տաճիկներն Ռիաժսքի գնդակներուն ձախ կողմէն հասնիլը տեսնելով՝ տկարացան։ Ռուսաց 10 դասակներն միահաղոյն խոյացան յայնժամ իրենց սպայներուն եւ գումարտակներուն առաջնորդութեամբ, եւ առաջին բարձրաւանդակը գրաւեցին սուինով։

Այս միջոցին կռուոյն կերպարանը փոխուեցաւ։ Տաճիկներն մինչեւ այն ժամանակ կը կարծէին թէ իրենց դէմ բազմաթիւ զօրք կը գտնուէր. բայց երբ թշնամեաց սակաւաթիւ լինելը տեսան, սիրտառին եւ յուսահատ դիմադրութիւն մ'ըրին։ Մէկի դէմ երկու կը գտնուէին իրենք, լաւ դիրք բռնած էին եւ երկու հատ ալ թնդանօթ ունէին. իսկ Ռուսք չէին կրցած իրենց թնդանօթներն հետ բերել։ Այսու ամենայնիւ, սոքա իրենց առաջին յաջողութեամբն ոգեւորեալ եւ բորբոքեալ՝ երկրորդ բարձրաւանդակն ալ գրաւեցին։

Բայց որքան յառաջ կ'երթային, այնքան աւելի վտանգաւոր կը լինէր կացութիւնն։ Երկրորդ եւ երրորդ բարձրաւանդակներուն մէջ տեղ ցորենի եւ վարսակի արտեր կը տարածուէին, ուր 300 Չէրքէզ ձիաւորներ ցրուած՝ անդադար կը նեղէին Ռուսաց հետեւակազօրն։ Այս արտերէն միոյն մէջ չորս Ռուսք՝ Տաճկաց կողմանէ շրջապատուելով՝ իրենց ռազմամթերքն սպառելէն յետոյ՝ չուզեցին անձնատուր լինել, եւ Չէրքէզներն զանոնք զարկին եւ գլխատեցին։ Արձակամարտ զինուորներ սոյն կերպիւ ծայրակտուր եղան։

Վասիլիեւ անուն երկրորդական փոխ-հարիւրապետն անկանելով, պաշը-պօզուքներ անոր վրայ նետուեցան եւ քիթն, ականջներն եւ շրթունքը կտրեցին։ Այս պարսաւելի տեսլեան վրայ 18 րդ սահէն մարդիկն զայրութով լցեալ՝ երդուան բնաջնջել Տաճկաց։

Սակայն հարկ էր յաղթել կամ մեռնիլ։ Անկարելի էր այն հնձոց մէջ տեղ միայն՝ երկաթի կտորներու տեղատարափի մը ներքեւ. եւ Տաճիկներն, որոց նոր զօրք հասեր էր օգնութեան, կը սպառնային յարձակող լինել։ Այն ժամանակ Նիքօլայի անուն նորատի փոխ-հարիւրապետ մը՝ առանց իր հարիւրապետին հրամանին նայելու՝ սակաւաթիւ կամաւորներով երրորդ դրից վրայ յարձակեցաւ։ Սոքա ամենքն ալ երեսի վրայ ինկան եւ այլ եւս ոտք չելան. բայց աշխոյժ մը տրուած էր, որով Ռուսք վառեալ եւ բորբոքեալ՝ այն դիրքն ալ գրաւեցին։

Այս նոր յաջողութեան վրայ՝ Ռուսաց կացութիւնն աւելի դժուարացաւ։ Սոքա գիշերն անցուցեր էին Կալացէն մինչեւ Դուճագ գալով, եւ ութ ժամէ ի վեր անդադար կը կռուէին. օգնութիւն մը չէր հասներ, զինուորք ուժաթափ եղած էին, եւ չորրորդ բարձրաւանդակն ամենէն աւելի ամրացեալ էր, վասն զի երկու թնդանօթներ կային անդ, որք միշտ երկաթի կտորներ եւ գնտեր կը թօթափէին։ Չէրքէզ ձիաւորներն, որոց նոր պաշը-պօզուքներ օգնութեան հասած էին, մեծ նե-

ղութիւն կը պատճառէին Ռուսաց։ Սակայն եւ այնպէս հրաման տրուեցաւ վերջին յարձակումն մ'եւս ընելու։ Յանդուգն փորձ մ'էր այս՝ գրեթէ յուսահատական։ Յարձակող գնդին հրամանատար սպայն բլուրին վրայ փայլ մը տեսնելով, երեսի վրայ ինկաւ, եւ հրաման ըրաւ իր մարդոց որ նոյնպէս ընեն։ Երկաթի գունտն եկաւ ճիշդ իր գլխոյն առջեւ գետնին մէջ մխեցաւ, ապա վեր ցատկեց, իր կառափին քովէն քերելով անցաւ եւ իր մէջքն եւ աղդերքը հերձեց։

Այս վսեմ վայրկենին Թնդանօթի ռումբին մ'եւս լսելի եղաւ, բայց այս անգամ հակառակ կողմէն։ Ռուսաց օգնութեան զօրք կը հասնէր, որք դիմացի եզերքէն յայս կոյս անցած էին երկու թնդանօթներով հանդերձ։ Ռուսք անմիջապէս ասոնց մին ագուցեր էին ռումբ արձակելու համար։ Ռումբք եւ հրագունտք ձեռքով բերուեր էին։ Այս ռուսական թնդանօթին որոտալուն վրայ՝ զինուորք ցնծութեամբ ահագին աղաղակ մ'արձակեցին, որ ճակատատեղին բովանդակ տարածութեանը վրայ լսելի եղաւ, եւ իրենց խոնջութիւնը մոռցան։ Ռուսք խոյացան եւ յարձակեցան, մինչ աստէպ աստէպ կը գոռար հրընկէց գործին։ Բայց այս գերագոյն ճիգն անօգուտ եղած էր, վասն զի երկրորդ ռումբին լսելի լինելուն պէս՝ Տաճիկներն խոյս տուեր էին իրենց թնդանօթներն հետ տանելով՝ ինչպէս նաեւ սայլերն՝ որք լի էին դիակներով եւ վիրաւորներով։

Կէս օր էր երբ Ռուսաց դրօշակը բարձրացաւ Գուճագի բլրոց այս վերջնոյն վրայ. կռուին առաւօտեան երրորդ ժամուն սկսած էր։ Փոքրիկ քաջարի զօրախումբն 3 սպայ եւ 48 զինուոր ունեցեր էր մեռեալ, 2 սպայ եւ 150 զինուոր եւս վիրաւորեալ։

Տաճիկներն իրենց այս պարտութեան վրայ՝ Մաչինը պարպեցին, թէ եւ այս քաղաքին շրջակայ բարձունքն Գուճագի բլուրներէն աւելի յարմար էին դիմադրութեան համար, որովհետեւ գիտէին թէ իրենց գլխաւոր հրամանատարին յառաջագծին համեմատ՝ այս կողմանց պաշտպանութիւն չպիտի լինէր. նաեւ վախ ունէին որ ամբողջ ռուսական բանակ մը կայ իրենց ետեւ, վասն որոյ այլ եւս դիմադրութիւն ընելն բոլորովին անօգուտ համարեցին։ Գայմագամն արդէն երկար ժամանակէ ի վեր պատրաստ էր մեկնելու, ինչպէս նաեւ բոլոր գործակալներն։ Տաճիկ բնակիչք ընտանեօք հանդերձ մէկ քանի ամսէ ի վեր գաղթեր էին 3-4,000 հոգւոյ չափ, եւ պատերազմի կազմածք բնաւ չկար քաղաքին մէջ, որոյ ամրութիւնքն երկար ժամանակէ ի վեր լքեալ էին, վասն որոյ քաղաքն ի քթթելական պարպուեցաւ։ Չերքէզներն Մաչինի մէջ ցրուելով եւ տները մտնելով աւարի տուին եւ մինչեւ անգամ դռներն եւ պատուհաններն տարին. բայց բնակչաց գէշութիւն մը չըրին։

Երբ Ցիմմերման զօրավարն ամսոյն 23ին իմացաւ Մաչինի պարպուած լինելն, շուտեց հասանալ։ Կոզակներու հարիւրապետ մը որ իր քով կը գտնուէր՝ առաջարկեց երթալ անձամբ նայիլ։ Հարիւրի չափ հոգի ժողովեց իր գլուխն, նոր աւարտած կամրջին վրայէն անցնելով Կէչիտ գիւղն հասաւ, եւ գետին հին ճիւղին զուգահեռական գտնուող քարայատակ ճանապարհի մը վրայէն յառաջ քալեց, որոյ ձախ կողմն անեզր ճահիճներ կը տարածուէին։ Առաջին հազարամէթրին վրայ՝ ջուրը ձիոց մինչեւ ծունկը կ'ելնէր, երկրորդին վրայ՝ մինչեւ աղդրերը եւ երրորդին վրայ՝ մինչեւ փորերնուն կէսը. յետոյ մերթ աւելի բարձր եւ մերթ աւելի ցած կը գտնուէր՝ նեղ ճանապարհին ելեւէջին համեմատ։ Առաջնորդութիւն ընող կոզակներն իրենց նիզակներով ջրոյն յատակը կը զննէին, տեսնելու համար թէ ուղիղ ճանապարհին վրայ կը գտնուին կամ ոչ, վասն զի եթէ պէտք ի յաջ կամ ձախ մոլորէին՝ բոլոր ջոկատը ճահիճներուն մէջ պիտի անկանէր եւ կորնչէր։ Այս կերպիւ ութ հազարամէթր տեղ գնացին. երկքին

վրայ յոյժ մեծ վտանգներ կային. ձիերը կը լողային երբ իրենց ոտքերը գետնէն կը կտրէին, բայց եւ այնպէս իրենց ծանր բեռները դարձեալ կը կրէին։

Սակայն ամենքն անվնաս հասան Մաչին, ուր Հարիւրապետն ժողովրդեան կողմանէ մեծ ցնծութեամբ ընդունուելէ յետոյ՝ փութաց նշաններ ընել եւ խարոյկ վառել. կրակին ծուխն յայտնեց Ցիմմէրման զօրապետին թէ զօրքը կարող էր անվտանգ այն տեղ երթալ։

Կայսրն իւր չորս որդւոց հետ Փլոյեշթիէն ճանապարհ ելած էր ամսոյն 21ին, եւ 22էն 23 լուսնալու գիշերն Կալաց հասնելով՝ վիրաւորաց այցելութիւն ըրած եւ չքանշաններ բաշխած էր։ Զօրանիստը վերադառնալու ժամանակ՝ Իպրայիլի մէջ կանգ առաւ, եւ ներկայ գտնուեցաւ Պորոտինոյի գումարտակին մեկնելուն, որով Ցիմմէրման զօրապետն Մաչինը պիտի գրաւէր։ Կայսրն իբրեւ կրօնից գլուխ՝ օրհնեց դրօշակներն եւ զօրքը մտաւ երկու կուրերու մէջ, զորս Ռումանիա եւ Յունկա-րա չոգենաւներն իրենց առեւէն կը քաշէին։ Երրորդ ժամուն 14րդ գնդին հրամանատարն Մաչին հասաւ. քաղաքին 10,000 քրիստոնեայներն՝ որք երկու օրէ ի վեր մեծ ահուդողի մէջ կ'ապրէին՝ պաշը-պօզուքներէն ջարդուելու երկիւղ ունենալով չարաչար, խանդագին ընդունելութիւն ըրին ռուս զօրաց, խաչերով, սրբոց պատկերներով եւ դրօշակներով զանոնք դիմաւորեցին, եւ Ռուսիոյ կայսեր համար երկար կեանք մաղթելով՝ աղօթք կարդացին։ Իրենց դրանց վրայ մէկ մէկ սպիտակ խաչ քաշեր էին, անկարգութիւն պատահած ժամանակ զինուորներուն նշան լինելու համար թէ քրիստոնէի տներ են։ Պուլղարաց ամեն քաղաքներուն մէջ՝ ուր ռուսական զօրքը կը հասնէր՝ այս զգուշութիւնն եղաւ ապա, որպէս թէ յառաջագոյն որոշեալ էր այսպէս ընել։ Սակայն այս անգամ անօգուտ եղաւ այս զգուշութիւնն, վասն զի Ցիմմէրման զօրապետն խիստ հսկողութիւն ըրաւ, որպէս զի անխտիր ամենուն սեպհականութիւնքն յարգուին։

Երեկոյին Խազախ մը մեկնեցաւ Մաչինէն. սա չէր գիտեր ճանապարհը, սակայն յանդգնութեամբ յառաջ գնաց 18րդ սահը գտնելու համար, որ Կարայինա եւ Ջիզիլա գիւղերուն մէջ էր, եւ իմաց տուաւ թէ Մաչին գրաւեալ էր Իպրայիլի զօրաց կողմանէ։ Յայնժամ ժուքով զօրապետին խումբն միացաւ այս զօրաց հետ։

Ընդհանուր հրամանատարն Տօլլուճայի մուտքն այս կերպիւ ձեռք անցընելէ յետոյ, նախ եւ առաջ Կէչիտէն Մաչին տանող ճանապարհը բարձրացնել տուաւ. բայց խոշոր թնդանօթաց փոխադրութեան համար, այս ճանապարհը՝ ջրոց նուազելէն յետոյ միայն կրցաւ գործածուիլ։ Սաուրին Դանուբի գունդն Մաչին փոխադրուեցաւ խումբ մը շոգենաւներով, նաւակներով եւ լաստերով, որ ամեն մէկ անգամուն 8,000 մարդ կը տանէին։

14րդ գունդն հետեւեալ կերպիւ բաղկացեալ էր.

17րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ, հատուածապետ զօրավար Փօռօխօվնիքով։

1ին Սահ, 65րդ գումարտակ Մօսքուայի, 66րդ գումարտակ Պութիրքի։

2րդ Սահ, 67րդ գումարտակ Թարութինոյի, 68րդ գումարտակ Պորոտինոյի։

17րդ Սահ, թնդանօթաձիգ զօրաց։

18րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ, փոխ-զօրապետ Նարպութ։

1ին Սահ, 69րդ գումարտակ Ռիազանի, 70րդ գումարտակ Ռիաժսքի։

2րդ Սահ, 15րդ գումարտակ Շլիսսէլպուրկի, 16րդ գումարտակ Լատօկայի։

4րդ Սահ, թնդանօթաձիգ զօրաց։

ՀԱՏՈՒԱԾ ՏՕՆՍՔԻ ԽԱԶԱԽԱՑ, փոխ-զօրապետ Շամշեվ։

1ին Սահ, 15րդ եւ 16րդ գումարտակք Տօնսքի Խազախաց։

2րդ Սահ, 17րդ եւ 18րդ գումարտակք Տօնսքի Խազախաց։

16րդ 17րդ շարք Թնդանօթաց՝ ձիոյ վրայ. Թնդանօթաձիգներն էին Տօնայի Խազախներ։

Ստորին Դանուբի կողմերն գործելու սահմանեալ գունդը կազմելու համար՝ 14րդ բանակադնդին հետ միացաւ հետեւակազօրաց 15րդ հատուածն, որ 4րդ գնդէն անջատեալ եւ Փօմերանցեվ փոխզօրապետին հրամանատարութեան ներքեւ էր։ Այս հատուածն հետեւեալ կերպիւ բաղկացեալ էր.

1ին Սոհ, 61րդ գումարտակ Վլատիմիրի, 62րդ գումարտակ Սուզտալի։

2րդ Սոհ, 63րդ գումարտակ Ուկլիչի, 64րդ գումարտակ Գազանի։

Այս բոլոր զօրախումբք Ցիմմէրման զօրապետին հրամանատարութեան ներքեւ էին, որ Կովկասու պատերազմաց մէջ մեծ հին զինուորական մ'է, ռուսական բանակին մէջ խիստ յարգի սպայ մ'եւ զինուորական քննադատութեան ընտիր յօդուածներու հեղինակ։

Գուճագի կռուէն երեք օր յետոյ՝ Հրասօվան գրաւեցաւ Մաչինէն աւելի դիւրութեամբ։ Կուրա-Եալօմնիցայի մէջ գտնուող Ռուսք յունիսի 25ին տեսնելով որ այս բերդաքաղաքին մէջ մեծ անդորրութիւն կը տիրէ՝ խազախաց ջոկատ մը ղրկեցին, որ Փինա-Քէթրէսի կողմէն Դանուբն անցաւ եւ խոհեմութեամբ դէպ ի Հրասօվա յառաջացաւ։ Այս անդորրութիւնը բերդապահ զօրաց մեկնելէն յառաջ եկած էր։ Ռուսք քաղաքը թափուր տեսնելով ներս մտան եւ տիրեցին։

Այնուհետեւ յայտնի եղաւ թէ Տաճիկներն Տօպրուճան պաշտպանել չեն ուզեր, եւ Ցիմմէրման զօրապետն իւր ձիաւորներն ամեն կողմ ղրկելով՝ քրիստոնեայ խեղճ հասարակութիւնները միայն պաշտպանելու նայեցաւ, որք պաշը-պօզուքներուն եւ Չէրքէզներուն ձեռքը մատնեալ էին։

Շամշեւլ զօրապետն՝ իւր ձիաւորաց հատուածովն յունիսի 28ին Պապա-տաղ հասաւ, որ Տօպրուճայի մէջ տեղն է. այն տեղ իմացաւ թէ Չէրքէզներն եւ պաշը-պօզուքներն խժդժութիւններ կը գործեն՝ Դաւսատ-քէօյի, Գարա-Նասըֆ եւ Սարը-եուրտ գիւղերուն մէջ, թէ այրերը կը սպանանէին, կիները կը լլկէին եւ եկեղեցիները կը պղծէին, թէ պուլղար ընտանիքներ գետին ցած կղզիներուն մէջ ապաստաններ էին այս աւազակներուն հալածանքէն զերծ մնալու համար եւ մէկ քանի օրէ ի վեր անօթի մնացած էին։

Ասոր վրայ Շամշեւլ զօրապետն՝ խազախներու փոքրիկ ջոկատով մը Իզմայիլով գումարտակն ամսոյն 29ին ղրկեց այն տեղուանքը մաքրելու համար։ Այս սպայն Չէրքէզներու երկու խմբից հանդիպեցաւ, որ 100ի չափ հոգիէ բաղկացեալ էին, զանոնք ի փախուստ դարձուց եւ 70 հրացան, 30 ձի եւ 20,000 ուրիշ անասուն ձեռք ձգեց։ 37 Չէրքէզ տապաստ անկան կռուատեղին վրայ, առանց հաշուելու Դանուբի կղզեաց մէջ հալածանաց միջոցին կորնչողներն։ Իզմայիլով գումարտակն եօթն հոգի գերի բռնեց, յորս կը գտնուէին այն երկրին մէջ համբաւեալ եւ քրիստոնէից երդուեալ թշնամի երկու աւազակներ, Գարա-Մուսթաֆա Թուրքն եւ Աւէմ Արաբն. առաջինն տասներկու տարիէ ի վեր այս կողմերն ահ ու դող կ'ազդէր եւ վերջերն Տաճկաց լրտեսութիւն ընել սկսած էր։

Այս կռուոյն վրայ բոլոր Չէրքէզներն եւ պաշը-պօզուքներն ստիպուեցան շրջակայներէն հեռանալ, եւ յետոյ Իզմայիլով գումարտակը Պապա-տաղ մտաւ, բնակչաց գողցուած զէնքն եւ անասուններն անոնց յանձնելէ եւ երկու աւուր մէջ 110 հազարամէթր տեղ ընթանալէ յետոյ։

Ռուսական ուրիշ ջոկատ մը՝ Թաթարիմնիք գիւղին կողմերը կը յածէր, Սլիւստրեվ գումարտակին հրամանատարութեան ներքեւ։

Այս ջոկատն եւ ոչ ուրեք Չէրքէզներու հանդիպեցաւ, բայց անոնց թողած արիւն-

ռուշտ հետքերը տեսաւ ։ Սարը-եուրտ գիւղին մէջ սոսկալի կերպիւ ծայրակտուր եղած տասնեւհինգ գլուխ կը գտնուէին․ գիւղն ամայի եղած էր, որովհետեւ բնակիչներն անտառներուն մէջ ապաստաներ էին։ Յետոյ իմացուեցաւ թէ Չէրքէզներն այս գիւղին մէջ իրենց խժդժութիւնները գործեր էին յունիսի 17ին, երբ Իզմայիլով գումարտակէն վերադարձեալ կռիւն ըրած էր նոցա երկու խմբերուն հետ ։

Սիլիստրիոյ գումարտակն այս արշաւանաց միջոցին լաւ տեղեկութիւններ առաւ Տաճկաց տրամադրութեանցը վրայ։ Սոքա Քէօսթէնճէն պարպեր էին, որոյ հասարակութիւնը պաշը-պօզուգներու դէմ պաշտպանեալ էր անգղիական Ռաֆֆեր շոգենաւուն նաւաստեաց ձեռօք։ Բայց դիտաւորութիւն կը յայտնէին Մէճիտիէ-Չէռնավօտայի գիծը պաշտպանելու, ուրկէ կրնային արգելք լինել Ռուսաց՝ Սիլիսթրէի մտնելու ։

Ցիմմէրման զօրավարն երբ այս տեղեկութիւններն առաւ՝ մեկնեցաւ դէպ ի Մէճիտիէ գնաց ։

Ռուսք Տօպրուճայի մէջ յածելով՝ զարմանք մ'ունեցան ։ Այս տեղն 1854էն ի վեր շատ փոխուած էր Ղրըմցի 50,000 աշխատասէր Թաթարներու եւ Ռուսիոյ հարաւակողմէն եկած մէկ քանի հազար Գերմանացիներու գաղթականութեան շնորհիւ, ինչպէս նաեւ Չէռնավօտայէն Քէօսթէնճէ շինուած երկաթուղւոյն պատճառաւ, եւ բարւօքեալ վիճակի մէջ էր ։ Ճանապարհները որ ժամանակաւ խիստ գէշ էին, բազմացեալ հասարակութեան մը ձեռօք դիւրագնաց եղած էին՝ մինչեւ անգամ մեծ կազմածներ ունեցող բանակի մը համար։ Նաեւ յուլիս ամսոյ մէջ Տօպրուճա դալարազարդ կը լինի․ օդն եւս գէշ չէր այն տարին Դանուբի ծովացեալ լինելուն պատճառաւ ։

Ուրիշ տեղւոյ եւ ժամանակի գործ է բացատրել այն կարեւորութիւնն՝ զոր ընդհանուր հրամանատարին յատակագծին մէջ ունէր Ստորին Դանուբի այս գնդին արշաւանքն, որոց դիմադրելու զբաղեալ էր Տաճկաց մէկ մասն ։

## ՌՈՒՍՃՈՒԳ ԵՒ ՆԻԿՈՊՕԼԻՍ ՔԱՂԱՔԱՑ ՄԷՋՏԵՂԷՆ ԴԱՆՈՒԲՆ ԱՆՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆՔ

Իպրայիլի կողմէն Ռուսաց անցքն ռազմագիտական մասնաւոր նշանակութիւն մը չունէր, վասն զի Տաճիկները կամաւ թոյլտուութիւն կ'ընէին։ Ընդ հակառակն՝ Տաճկաց պաշտպանել ուզած մէկ կէտին վրայ՝ այսինքն Զիմնիցայի կողմէն եղած անցքն անգամ մ'եւս կ'ապացուցանէ թէ գետ մը չկրնար բանակի մը արշաւանքը կասեցնել եւ ամենալաւ զգուշութիւնք անօգուտ են՝ 600 մղոն երկայնութեամբ գիծ մը պաշտպանել անհնար լինելով ։ Տաճիկներն սխալած են այս մասին ամեն ժամանակ, ոչ փորձառութիւնն եւ ոչ ամենէն իմաստուն խորհուրդներն կրցած են իրենց կարծիքը փոխել ։ Վասն որոյ միշտ իրենց զօրութիւնքը կը ցրուեն եւ բերդերու մէջ կը բաժնեն՝ փոխանակ զանոնք համախմբելով մէկ քանի դնդեր կազմելու, որպէս զի ճարտար հնարիւք գործողութիւններ լինին, յարձակող զօրքը կռուի բռնուի եւ յաղթուի տակաւին չը համախմբեալ, եւ հուսկ ուրեմն ետ մղուի եւ թափի գետին մէջ ուրկէ կ'անցնի։ Հարկ է նշանակել արդարեւ թէ պարտեալ եւ նահանջող բանակի մը համար անանցանելի արգելք կը լինի գետ մը, թէ եւ չկրնար արշաւող բանակ մը կասեցնել։

Ռուսաց գլխաւոր յարձակումը Տօպրուճայի վրայ չէր, թէեւ Փրութի հովտէն իջնող եւ Պուլղարիա մտնող բանակներն միշտ այս ճանապարհը բռնած են, ինչպէս եղած է 1828ին եւս, սակայն այս անգամ իրաւամբ կը կարծուէր՝ թէ Ռուսք այս կողմէն չպիտի ընէին իրենց գլխաւոր գործողութիւնքն ։ Տաճիկները սոյն ճանապարհը փակած են Վառնա, Սիլիսթրէ․ Ռուսճուգ եւ Շումնու բերդաքաղաքնե-

րէն ձեւացեալ համբաւաւոր քառանկեան միջոցաւ. ասկէ զատ օսմանեան նաւատորմիկը Սեւ ծովու կողմէն կը գործէր, վասն որոյ Տօպրուճա անել տեղ մ'էր, ուր երկրորդական գործողութիւն մը կրնար լինել, բայց Դանուբի մեծ բանակին համար շատ անձուկ վայր մ'էր շարժմանց եւ գործառնութեանց ։

Նիքօլա մեծ դքսին պաշտօնական տեղեկագիրն կը բացատրէ՝ թէ անցնելու կէտին որոշման մէջ ինչ շարժառիթներով ընտրութիւն եղած է։ Ռուսք երբէք չէին մտածեր Դանուբի այն մասին վրայ, որ քառանկեան դէմ կը գտնուի. Ճուրճեվօյի եւ Օլթէնիցայի մօտ եղած աշխատութիւնք եւ գործողութիւնք Տաճիկները խաբելու նպատակաւ կը լինէին։ Այս կողմէն անցնելէ առաջ հարկ էր Ռուսճուգը կամ Սիլիսթրէն գրաւել, որոյ համար երկարատեւ պաշարում մ'ընել պէտք էր. առ այժմ պատերազմի մէջ՝ պաշարում մ'ընելով ժամանակ անցընելն անպատեհ կը համարուի ։

Այսպէս բնականաբար մեծ դուքսն իւր ուշադրութիւնն դարձուց Նիկոպոլսոյ եւ շրջակայից վրայ. Նիկոպոլսոյ եւ Թռնովայի դիծն առաջին կարգի առաւելութիւններ կ'ընծայէր, որով ընդհանուր հրամանատարն զայն ընտրելու միտումն ունեցաւ։ Արշաւող բանակն այս գծին հետեւելով կրնար ամենէն աւելի ապահով եւ ուղղակի կերպիւ սպառնալ Անդրիանուպոլսոյ եւ հետեւաբար Կոստանդնուպոլսոյ դէմ, Տաճկաց բանակն յերկուս բաժանել, Վիտինի շուրջը սփռեալ Տաճկաց ձախակողմեան թեւը պատել, մէկ քանի աւուր ճանապարհ ընելով ամբողջ կեդրոնական Պուլղարիոյ տիրել, պատերազմի տեսարան ընել բարեկամ ժողովրդեան մը բնակած երկիրն՝ ուր զօրաց ուտեստը կարելի էր դիւրաւ ճարել, եւ վերջապէս արագ խաղացիւք Պալքանաց գծին ամենէն տկար մասին վրայ հասնիլ, վասն զի Տաճիկներն այս գծին մէջ տեղը զանց ընելով երկու ծայրերը միայն բաւական ամրութեամբք զօրացուցած էին ։ Այս գիծն անտեղութիւն մ'ունէր. Ռուսաց բանակն քառանկեան քովէն անցած ժամանակ կողմնական յարձակման մ'ենթակայ կը գտնուէր, բայց այս թերութիւնը բան մը չէր առաւելութեանց նայելով ։ Այս յատակագիծն ընտրուելուն պէս, առանց վարանման ընդհանուր ուղղութիւն մը տրուեցաւ շարժմանց. բուն անցնելու կէտն որոշելու մասին միայն վարանմունք եւ փոփոխութիւնք եղան Դանուբի մակերեւութին ելեւէջքին պատճառաւ ։ Նախ եւ առաջ Զիմնիցայի համար որոշումն տրուած էր. յետոյ գետն յորդելով խիստ հեռի տարածուելուն պատճառաւ, հարկ եղաւ Նիկոպոլսոյ կողմէն անցնելու փորձ մ'ընել, ուր Դանուբն ոչ խորշեր ունի եւ ոչ մանուածապատ շրջան. հուսկ ուրեմն պարագայներն աւելի նպաստաւոր լինելուն վրայ՝ Ռուսք վերստին Զիմնիցա դարձան ։ Զօրաց գետեզրման մասին եղած տրամադրութիւնք կը ներէին վերջնական որոշումն անցնելու պահուն ընելու, վասն զի զօրախումբք Աղէքսանդրիայէն վար եւ գետին զուգահեռական կերպիւ շարուած եւ սփռուած էին, եւ դիւրաւ կրնային խաղալ Նիկոպոլսոյ եւ Ռուսճուգի մէջ տեղ ձախակողմեան եզերաց որեւիցէ մէկ կէտին վրայ ։ Ռուսք հինգ ու կէս բանակագունդ ունէին անդ, այսինքն՝ 8րդն, 9րդն, 11րդն, 12րդն, 13րդն, եւ 4րդին կէսն ։

Ինչպէս Իպրայիլի կողմն՝ նոյնպէս եւ այս տեղ Ռուսք ամեն բանէ առաջ ինքզինքնին օսմանեան զրահաւորաց յարձակմանց դէմ ապահովելու նայեցան, թէ վերի եւ թէ վարի կողմէն շքթաններով փակելով Դանուբի այն մասն՝ ուրկէ անցնելու դիտաւորութիւն ունէին։ Այս նպատակաւ՝ 10 մակոյկներէ բաղկացեալ տորմիղ մը Կալացէն Ճուրճեվօ բերուեցաւ երկաթուղեաւ, եւ Ճուրճեվօէն՝ յամրընթացով (ռուլած) Մալուաէ-Եօսաէ, ուրկէ

Ռուսք Դանուբ իջուցին զայնս յունիս 20ի գիշերն։ Նօվիկօվ ռուսաց նաւապետն, որոյ հրամանաց ներքեւ կը գտնուէր այն նաւատորմիկն, առանց ժամանակ կորուսանելու՝ Փարափանի դիմաց շքթակներ զետեղելու սկսաւ՝ Եանթրա գետակին բերանէն քան հազարամէթր վար։

Նաւաստիք՝ օսմանեան գետեզրէն արձակուած գնտակներուն առանց ուշադրութիւն ընելու՝ իրենց գործը կը կատարէին, երբ յանկարծ իրենց մօտեցող շոգենաւի մը մեքենայից ձայնը լսեցին։ Գետին այս մասին մէջ ռուսական մեծ շոգենաւներ չգտնուելով, անշուշտ այս ձայնը տաճկական նաւէ մը կու գար. եւ իրօք, սակաւիկ մը յետոյ՝ անուաւոր ջրասուզակ նաւ մը նշմարուեցաւ, որ հոսանքն ի վեր կ'ելնէր, եւ ընդ հուպ նաւակներէն միոյն մօտեցաւ, որ աշխատաւորներն պաշտպանելու համար միւսներուն յառաջակողմը կը գտնուէր։

Այս նաւակին մէջն էր ժամանակիս առաջին կարգի ռուս նկարչաց մին՝ Վէրէշչակին, որ իւր ազնիւ աշխատութիւնքն եւ արժանեօք վայելած զուարճութիւնքը



ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ՌՈՒՍՃՈՒԳԻ ՄԷՋ ԻՆԿԱԾ ՌՄԲԱՐՏԱԿՆԵՐՆ

թողլով անդ եկած էր՝ պարծանօք ըսելու համար թէ՝ «Ես եւս 1877ի պատերազմին ականատես եղայ։» Մակուկին հրամանատար Սքրիտլով փոխ-նաւապետն անոր դառնալով ըսաւ. «Ձեզ այժմ պիտի հանեմ շուտով սա մօտի կղզւոյն վրայ, եւ այդ օսմանեան շոգենաւին դէմ երթամ, կէս վայրկենի գործ է։»

—Ոչ, պատասխանեց Վէրէշչակին, կ'ու-

զէմ ասա միալ եւ վտանգակից լինել ձեզ այն նաւամարտին մէջ ։

— Մտածեցէք, ըսաւ Սքրիտլով՝ պնդելով, թէ՝ Ռուսիա ինձ նման բիւր սպայ ունի եւ ձեզ նման երկու նկարիչ չունի։» Այս խօսքերն արդիւնք մը չունեցան, եւ Վէրէշչակին անյողդողդ մնաց ։ Սակայն անկարելի էր երկայն ժամանակ մտածել, հարկ էր կամ շուտով փախչիլ կամ անմիջապէս յարձակիլ, ապա թէ ոչ թշնամւոյն նաւը զիրենք ողջ սուզէր ։

Ցանժամ Շօ-Ֆէթ (ծաղրածու) անուն մակոյկն արագաստը արշաւեց դէպի տաճկական թնդանօթակիր նաւն, որ խոյս տալու ջանաց շոգւոյն բոլոր զօրութեամբն օսմանեան ափանց մօտ երթալով, ուր 400 Չէրքէզ հրահրակիրներ (քալասլինալը) կային իբրեւ արձակամարտ ցրուած, եւ ռուսական նաւակին վրայ արագ եւ անընդհատ կերպիւ կրակ կ'ընէին ։ Գրեթէ անմիջապէս գնտակ մ'եկաւ մակուկին դպաւ, եւ հրամանատարն եւս վիրաւորեցաւ ։ Մակուկին վրայ ուրիշ սպայ մը եւ ութ նաւաստիք կային, ամենքն միաբան հաւանութեամբ որոշեցին յարձակումը շարունակել։ Շօ-Ֆէթ իւր ընթացից արագութիւնը կրկնապատկեց, եւ յաջողեցաւ թնդանօթակիր նաւուն հպելու՝ ճիշդ անւոյն պահպանակին (տամբուլպազ) յետակողմէն ։ Այն ժամանակ խրարանցում մը յառաջ եկաւ. բայց երբ գործելու բուն վայրկեանն հասաւ, Ռուսք ի զուր ջանք ըրին չքթակը պայթեցնելու. վառօդը կրակ չառաւ ու գիտէ ինչ պատճառաւ ։ Վասն որոյ Շօ-Ֆէթ ստիպուեցաւ բացուելու՝ առանց կարենալու միաս մը հասուցանել Տաճկաց ։

Ականատես վկայք կ'ըսեն թէ մակուկին հեռացած ժամանակ՝ Տաճիկները բաւական սիրտ առին եւ պինդ մարդիկ նաւուն կողին վրայ նետուեցան ։ Սաստիկ կրակ մը կը տեղար Շօ-Ֆէթի վրայ, որ ընդ հուպ ամեն կողմանէ գնտակներով ծակեցաւ։ Մակոյկն շատ ջուր կ'առնուր, եւ մեծ վտանգի մէջ էր տակաւին՝ թէ թնդանօթակիր նաւէն եւ թէ գետեզերքէն արձակուած կրակին պատճառաւ, երբ իւր առջեւ ուրիշ թնդանօթակիր նաւ մը տեսաւ, որ Ռուսճուգէն կ'ուգար։ Ռուս նաւաստիք Հարվիի դրութեամբ երկրորդ չքթակ մ'ունէին, բայց առաջնոյն պէս այս եւս չպայթեցաւ։ Հարկ էր ուրեմն կարելի եղածին չափ շուտով փախչիլ, եւ ռումանական ափանց մօտէն երթալով՝ կղզւոյն ետեւ պատսպարուիլ, խցելու համար այն ծակերը ուրկէ մակոյկը ջուր կ'առնուր։ Սքրիտլով՝ որ դիւցազնաբար մինչեւ վերջին իւր տեղէն չհեռացաւ, վէրք առած էր արմկէն, եւ իւր երկու ազդերքն ծակուած էին մէկ կողմէն միւսը։ Գնտակ մը Վէրէշչակինի փորն հերձանելով՝ վէրք մը բացեր էր, որ ապա վտանգաւոր եղաւ, վասն զի խեղճ արուեստագէտն յուսահատութեան մէջ անկաւ Դանուբի անցքին ներկայ գտնուիլ չկարենալուն համար ։ Բոլոր նաւաստիք վիրաւորեալ էին ։

Օսմանեան երկու ջրասուզակ նաւերն՝ ռուսական նաւատորմիղին մնացեալ մասը տեսնելով՝ չհամարձակեցան դիմադրաւել, եւ թոյլ տուին մէկ եզրէն միւսը չքթակներ զետեղելու։ Նաւակներն ռումանական ափանց քով հասնելնուն պէս, Սքօպէլեւ զօրապետին որդին (1) շտապաւ վազեց իմաց տալու՝ թէ Տաճիկներն դիմացի ափանց վրայ դաշտային թնդանօթաց մարտկոց մը կը շինէին՝ զանոնք բնաջինջ ընելու համար։ Ռուսք այս նաւակները գետեզրին վրայ խրելու ժամանակ ունեցան, բայց Տաճկաց ռմբարտակներն այն տեղը կը հծէին. վասն որոյ հարկ եղաւ աւելի հեռին տանիլ նաւակներն եւ ջուրն իջուցանել վերըստին։ Սքօպէլեւ զօրապետը միւսներուն

(1) Երկու Սքօպէլեվ կայ դանուբեան բանակին մէջ, հայր և որդի։ Հայրն՝ որ ի ծննդենէ հարկահար էր, փոխ-զօրապետ է և լրտես կամ տեղազննին զօրաց գնդին հրամանատար: Որդին հաստուածապետ է (ֆէրիգ) և իւր հօրը գնդին մէջ հրամանատարութիւն մ'ունի:

պէս չուանը բռնեց, եւ ամենքն անխտիր սկսան գործել: «Ո՛չ աստիճանի եւ ո՛չ կարգի խտրութիւն կը լինէր այն ժամանակ, կ'ըսէ Նօվօյէ Վրէմեա լրագրին թղթակիցն, միայն եղբայրներ կային անդ, որք ի սրտէ միաբանութեամբ կ'աշխատէին այս գործին»: Նաւակներն իսկոյն ցրուեցան եւ կրցան հեռանալ Տաճկաց կրակէն, բայց երեքը ծանր վնաս կրեցին:

Փարափանի դիմաց այսպէս չքթակներ զետեղուելէն յետոյ, որով Տաճկաց նաւերն այնուհետեւ չէին կրնար Դանուբէն վեր ելնել, կը մնար Փարափանի եւ Նիկոպոլսոյ մէջտեղէն վանել այն երկու զրահաւորներն, որք այս վերջին քաղաքին թնդանօթներուն պաշտպանութեան ներքեւ կը գտնուէին, եւ ապա կարգ մը չքթակներ զետեղել, որպէս զի Վիտինի եւ Նիկոպոլսոյ մէջ տեղ երթեւեկող զրահաւորներն չկրնան գետէն վար իջնել:

Երկու նաւակներ յունիսի 23ին առաջին գործն ի գլուխ հանելու փորձ ըրին. այն օրն Նիկոպոլսոյ զրահաւորներէն մին ածուխ վառեց եւ սկսաւ արագընթաց Դանուբէն վար իջնել: Ֆլամունտայի ջոկատին հրամանատար Լէոնով հաստուածապետն անմիջապէս իմաց տուաւ զայս նաւատորմիկին հրամանատարին, եւ ձիոյ վրայ եղած թնդանօթներուն 15րդ չարէն չորս հատ թնդանօթ պատրաստեց՝ Ռօմէյցով երկրորդական նաւապետին հրամանատարութեան ներքեւ: Այս միջոցին Ֆլամունտայի մօտ հինգ նաւակ միայն կար, որոց մէջ կը գտնուէին վնասեալ երեք մակոյկք. միւս երկուքն անմիջապէս զրահաւորին դէմ խոյացան յարձակելու: Բայց կռուոյ սկսելնուն պէս՝ յայտնի եղաւ որ այն օսմանեան նաւն այնպիսի լաւ վարչութեան եւ հրամանատարութեան մը ներքեւ կը գտնուէր, որոյ նմանը Ռուսք Տաճկաց միւս նաւերուն վրայ տակաւին տեսած չէին: Զարմանալի արագութեամբ եւ ճարտարութեամբ կռուոյ պատրաստուեցաւ: Հրամանատարն երկայն ցողերու ծայրը չքթակներ զետեղել տուաւ, սպառնալով այսպէս նախ նաւակներն օդն հանելու, եւ միանգամայն սարսափելի կրակ մ'ընել տուաւ հրացաններով եւ գնտացաններով (միթռայլէօզ): Իւր նաւն կը վարէր այնպիսի տաղանդով, յաջողակութեամբ եւ ճարտարութեամբ, որ նաւակներն չէին կրնար բնաւ մօտենալ, մանաւանդ զի՝ նաւն եւս չքթակներով պահպանեալ էր: Ռուսաց խօսքին նայելով՝ այս սպայն եւրոպացի մ'էր. սորա հանճարեղ պաշտպանութեան մեկնութիւնն այս խօսքով կը տրուի: Նաւին վերնայարկին վրայ նաւազներուն շարժմանցն ուղղութիւն մը կուտար եւ կռուոյն մինչեւ վերջն նաւուն վրայ տեսնուեցաւ. բարձրահասակ մարդ մ'էր, մէջ տեղէն յերկուս ճեղքուած երկայն եւ խարտեաշ մօրուօք: Ձեռքերը գրպաններուն մէջ դրած եւ ոտքի վրայ կենալով՝ կատարեալ անխռովութեամբ հրամաններ կուտար:

Արէնս անուն ծովային պահանորդն ամենէն առաջ յարձակեցաւ Մինա մակոյկով, բայց չքթակին ելեքտրականութիւնն հաղորդող թելն ռմբէ մը խզուեցաւ եւ մակոյկն վնասուելով՝ ստիպուեցաւ ետ քաշուիլ: Յետոյ Նիլով երկրորդական փոխ-զօրապետն յարձակեցաւ Շուտկա մակոյկով: Սա իւր շարժմունքն ըրած ժամանակ՝ քիչ մնաց պիտի զարնուէր՝ զրահաւորին յառաջակողմը զետեղեալ եւ ընդհարմամբ պայթելու ընդունակ չքթակի մը. անկէ խոյս տալու համար ստիպուեցաւ երկու մէթրի չափ բացէն անցնիլ, եւ Նիլով երեք անգամ յոգնահար ատրճանակով կրակ ըրաւ օսմանեան նաւապետին վրայ, որ ի պատասխանի գլխարկն հանեց եւ բարեւեց՝ զարնուած չլինելով:

Պահ մը յետոյ՝ ռմբի կտոր մ'եկաւ ծակ մը բացաւ Շուտկայի պատկողանոցին ջրոյն ներքեւ գտնուած մասին վրայ՝ աջ կողմէն: Զրահաւորն իւր միւս կողմն դարձուց առաջակողմը չերեւցնելով. Նիլով փոխ-նաւապետն այն ժամանակ նաւուն ձախ կո-

գին վրայ յարձակեցաւ, բայց մակոյկն ջրով կիսովին լցեալ լինելուն եւ իւր արագութիւնը կորուսանելուն պատճառաւ՝ չկրցաւ նաւուն զարնել եւ երկու նաւակներն աշխատեցան ետ քաշուիլ, հինգ կամ վեց նաւաստի վիրաւորուելէն յետոյ ։

Տաճկաց գրահաւորն եւս շտապաւ մեկնեցաւ, եւ ասոր պատճառը Ռուսք այն քաջ հրամանատարին աներեւոյթ լինելն կը համարին, որ կամ սպանեալ էր կամ վիրաւորեալ ։ 15րդ սահլին չորս թնդանօթներուն ուղիղ ռմբաձգութիւնն բաւական ծանր վնաս պատճառած էր գրահաւորին. գրեթէ բոլոր ռմբարտակներն վերնայարկին վրայ անկանելով պայթեր էին, եւ ծխնելոյզը ծակեր եւ ծռեր էր ։

Հետեւեալ օրն երեկոյին ուրիշ գրահաւոր մը մեկնեցաւ Նիկոպոլսէն, բայց այս անգամ Դանուբէն վեր ելնելու համար ։ Թուռնօ-Մակուրէլլիի մէջ զետեղեալ թընդանօթներուն կրակն ստիպեց զայն շուտով ետ դառնալու ։ Այս երկու նաւերուն Նիկոպոլսոյ մօտ գտնուիլն աղէկ էր. զանոնք Ռուսաց անցնելու կէտին մօտ թողուլն մեծ անտեղութիւն կրնար պատճառել. բայց Ռուսք չկրնալով բնաջինջ ընել զայնս՝ աշխատեցան ուշի ուշով հսկելու, որպէս զի իրենց կայաններէն դուրս չելնեն ։ Բայց այն նաւերն՝ թէ իրենց կրած վնասուց եւ թէ նաւաստեաց վատութեան պատճառաւ՝ այնուհետեւ բոլորովին զանց ըրին երթեւեկել, եւ Ռուսք՝ Նիկոպոլսոյ տիրած ժամանակնին՝ անշարժ տեսան զայնս քաղաքին նաւահանգստին մէջ ։

Շքթակներուն զետեղումն ի գլուխ ելաւ կատարեալ յաջողութեամբ ։ Նօվիքօվ նաւապետն շոգեւոյ զօրութեամբ բանող մակոյկները պահպանել ուզելով, թիավար նաւակներ գործածեց ամսոյն 24 ին Թաբաքիայի մօտ շքթակներ զետեղելու համար։ Երբ Տաճիկներն իրենց ուշադրութիւնը դարձուցին այս աշխատութեանց վրայ, եւ գետափանց վրայ արձակամարտներ ղրկեցին, այլ եւս ժամանակն անցած էր. շքթակներն զետեղեալ էին եւ նաւակներն կրցան անարգել հեռանալ ։

## ԿԵՂԾ ՅԱՐՁԱԿՈՒՄՆ Ի ՎԵՐԱՅ ՌՈՒՍԱՑՈՒՑ ԵՒ ՆԻԿՈՊՈԼԻՍ ՔԱՂԱՔԱՅ

Ռուսաց անցքն ապահովեալ էր այսպէս ընդդէմ այն յարձակմանց՝ որք կրնային ըլլալ Դանուբի վրայէն. բայց ցամաքի կողմանէ լինելիք յարձակմանց դէմ նմանօրինակ արդիւնք մը ձեռք բերելու համար, հարկ էր գործողութեան բուն կէտն որոշել ։ Այս նպատակաւ Նիքօլա մեծ դուքսն՝ իւր սպայակուտի գլուխ Նէփօքօյչիցքի զօրավարին հետ գաղտնի մեկնեցաւ Փլօյէշթիի զօրանոցէն, յունիսի 20էն սկսեալ Դանուբի գետեզերքը Զիմնիցայէն մինչեւ Թուռնու զննեց անձամբ, եւ յունիսի 24րդ օրն աւարտեց այս զննութիւնը ։ Նիկոպոլսոյ կողմէն անցնելու մասին եղած դժուարութիւններն եւ վտանգները տեսնելով, եւ Զիմնիցայի մօտ ջրոց զեղեալ չլինելուն պատճառաւ՝ անցքն այն կողմէն կատարելու հնարաւորութիւնն իւր աչօք քննելով եւ հաւաստելով, վերջնական որոշմամբ այս կէտն ընտրեց՝ Տաճկաց Զիշթօվ քաղաքէն քիչ մը վար ։ Մեծ դուքսն իւր այս ուղեւորութիւնն այնքան գաղտնի պահեց, որ մինչեւ անգամ զօրանոցին մէջ ոչ ոք գիտէր թէ ուր եւ ինչու համար կ'երթար ։

Տաճիկներն երկար ժամանակէ ի վեր հսկողութիւն կ'ընէին Դանուբի այս մասին վրայ, զոր Մեծ դուքսը զննելու ելած էր։ Նոցա լրտեսներն աքանչելի կերպիւ գործ տեսնելով թշնամւոյն շարժմունքը կ'իմացընէին ։ Տաճիկներն ռուսական զօրաց զետեղմունքէն հասկցեր էին՝ թէ ոչ Վիտինի եւ ոչ Իպրայիլի կողմէն պիտի անցնէր նոցա ստուար մասը, ինչպէս կը կարծուէր ի սկզբան պատերազմին, այլ կամ Ռուսճուքի եւ կամ Նիկոպոլսոյ կողմէն ։ Այս վերջին քաղաքն շտապաւ ամրացուցեր էին, որոյ պաշտպանութեան համար եր-

կու ամուր կերտուածներ միայն կային մայիս ամսոյ մէջ. բայց ամրութեանց թիւն 13ի հասած էր արդէն յունիսի 15ին։ Ամբողջ ամիս մը ուշադրութեամբ դիտեցին ձախակողմեան ափանց վրայ եղած բաներն. փոքրիկ ջոկատ մը տեսնուելուն պէս եւ կամ չնչին նաւակ մը գետեզրէն բացուելուն պէս՝ իսկոյն կրակ կ'ընէին. բայց վճռական վայրկեանը երբ մօտեցաւ, այլ եւս ուշադրութիւն ընելէ ձանձրացեր էին եւ սկսած էին տարակուսիլ թէ այդ անցքն՝ որ միշտ կը յետաձգուէր, կատարուելու չէր։ Մեծ դուքսն Զիմնիցայի կողմէն նոցա ուշադրութիւնը բոլորովին դարձընելու համար, որոշեց միահաղոյն կեղծ յարձակում մ'ընել Ռուսճուգ եւ Նիկոպոլիս քաղաքաց վրայ։

Ռուսճուգի ռմբակոծութիւնը յունիսի 24ին սկսաւ, եւ Տաճիկներն իսկոյն անդրադարձութիւն ըրին Ճուրճէվօն ռմբակոծելով։ Կռուոյն ամենէն ցաւալի դէպքերէն մին էր այս, յորում պատերազմի ոոսկմունք խիստ յայտնի կ'երեւին. 50,000 բնակիչ պարունակող քաղաք մը կ'աւերի ռազմագիտական կեղծեօք, 15,000 բնակիչ ունեցող բաց քաղաք մը կը քանդուի վրէժխնդրութեամբ. եւ հինգ աւուր մէջ կը կատարուի այս կրկին աղէտքն։

Արդէն ըսուած է թէ Տաճիկներն մեծ անհոգութեամբ թոյլ կուտային Ռուսաց՝ մարտկոցներ շինելու Դանուբի ձախակողմեան ափանց վրայ. Ռուսք մինչեւ անգամ Ռուսճուգի դիմացի կղզին գրաւեր էին անվրդով, բայց յունիսի սկիզբներն ստիպուեր էին մեկնիլ անկէ Տաճկաց կողմանէ բռնադատեալ։ Ասոր վրայ՝ Սլօպօծիայի եւ Ճուրճէվօյի մէջ տեղ գըտնուող եւ դէպ ի գետը նայող բարձանց վրայ մարտկոցներ շինած էին Ռուսճուգը պաշարման ենթարկել ուզելով. Յունիսի 23 ին կէս օրէն երեք ժամ յետոյ՝ Ճուրճէվօյի կառավարիչ Շմիտ զօրավարն՝ Ռուսճուգի օսմանեան հրամանատարին իմաց տուաւ՝ թէ հետեւեալ օրն բերդաքաղաքը պիտի ռմբակոծուի։ Ռուսճուգի փողոցներուն մէջ ծանուցումն եղաւ իսկոյն ի ձայն փողոց, եւ քաղաքացիք հրաւիրուեցան հեռանալու։ Զարմանալի բան, ոչ ոք անսաց այս հրաւէրին, եւ այս կ'ապացուցանէ թէ մարդկային միտքը շուտ կը վարժուի վտանգաւոր կացութեան մը։ Ճիշդ երկու ամիս առաջ պատերազմի յայտարարութենէն յետոյ՝ հասարակութիւնն ահաբեկ եղած էր, բայց պա վերստին ապահով եղեր էր, իւր կրած երկիւղներուն վրայ մինչեւ անգամ կը ծիծաղէր, եւ կը ծաղրէր այն մարդիկն որ՝ Դանուբի փակուելուն հետեւեալ օրն՝ իրենց ինչքը դրամի փոխելով Վալաքիա կամ Թուրքիոյ ներսերը կը փախչէին։ Պաշարուելու գաղափարին ընտելացեալ հասարակութիւնն՝ տեսակ տեսակ պաշար հաւաքեր էր դիւրութեամբ, վասն զի Պուլղարիոյ մէջ ամեն բան աժան էր։ Ռուսք քանի որ Ճուրճէվօ հասած էին, մերթ ընդ մերթ իրենց թնդանօթները փորձեր էին եւ Դանուբի ափանց վրայ աստ անդ ռումբ անկած էր. Ռուսճուգի բնակիչք անոնց բեկորները հաւաքելով իրարու ցոյց կուտային եւ կը ծիծաղէին. Երբ թնդանօթը կ'որոտար՝ Պուլղարն ինքզինքը կը խաչակնքէր, մինչդեռ եւրոպացին կ'ըսէր. «Ահա կըսկսի։»

Ոչ ոք կը մտածէր թէ կանոնաւոր ռմբակոծութիւն մը պիտի լինի, եւ այն եւս հասարակութեան դէմ միայն անողոքաբար. վասն որոյ՝ երբ ռմբարտակներն սկսան թօթափիլ, բնակիչք ցայն վայր իրենց ունեցած վստահութիւնը թողլով՝ յուսահատութեան մէջ անկան. Յունիսի 24 ին թնդանօթաց հինգ շարքեր Ռուսճուգի վրայ ռումբ տեղացին կարկտի պէս, եւ հինգ աւուր մէջ անվնաս տուն մը չմնաց։ Ռուսք եւ ո՛չ ումեք չխնայեցին, ո՛չ աղքատի, ո՛չ հարստի, ո՛չ պաշտօնականի եւ ո՛չ օտարականի։ Գետափանց վրայ գեղեցիկ որմարգելոցներու մէջ գտնուած հիւպատոսարաններն քանդուեցան, կուսակալին

տապարանքն, մզկիթներն եւ անկելանոցներն սարսափելի վնաս կրեցին։ Հարկ եղաւ հիւանդները դուրս հանել. եւ այս խեղճ մարդիկը խումբ խումբ կը փախչէին դէպ ի Լէյլէնա-Թապեայի բարձր բլուրն, ուր վրաններու տակ զետեղեցան։ Աստ անդ հրդեհներ կը ծագէին, զորս ոչ ոք չէջուցանելու կը նայէր, եւ ռուս թնդանօթաց աւերիչ գործը կը լրացնէին։ Առաջին օրն իւրաքանչիւր ոք անձկութեամբ մտիկ կ'ընէր ահագին մարտացու գործւոյն ձայնը, եւ բնազդմամբ գլուխ կը ծռէր, երբ ռումբը կ'անցնէր սաստկաշառաչ։ Մարք իրենց զաւակներն լանջաց վրայ կը սեղմէին, տղայք ծնողաց շուրջը կը խմբուէին լալագին, փոքրերն վտանգին բնաւ գիտակից չլինելով՝ կը զարմանային ընդհանուր լռութեանը վրայ, որ զարհուրագին աղաղակներով կ'ընդհատուէր, մինչ մօտը ռմբարտակ մ'անկանէր։ Երբ տեսնուեցաւ որ ռմբակոծութիւնն ամեն օր կը լինէր, վերջին ծայր սարսափ մը տիրեց եւ ամբողջ հասարակութիւնը փախչիլ սկսաւ։

Տաճիկներն եւս երկար ժամանակէ ի վեր Ծուրճէվօն կը ռմբակոծէին, որոյ հասարակութիւնը խոյս տուած էր մեծաւ մասամբ. վասն որոյ քաղաքին մէջ շատ մարդու կորուստ չպատահեցաւ. բայց տները սարսափելի կերպիւ վնասուեցան։ Ականատես վկայք կը պատմեն թէ փողոցներն ռմբարտակի կտորներով ծածկեալ էին։ Շոգւով բանող ջաղացք մը հրդեհելով, ասոր չարագուշակ լուսովն ամբողջ երկու գիշեր փլատակները լուսաւորեցան։

Ռուսք յունիսի 25 ին սկսան Նիկոպօլիսն եւս ռմբակոծել՝ Թուռնու-Մակուրէլի մէջ շինուած ահեղ մարտկոցներէն։ Տաճիկներն դիւրաւ խաբուեցան այս կէտին վրայ. վասն զի Ռուսք պատրաստութիւններ ըրած էին իրօք անցնելու փորձ մ'ընելու համար։ Աղէքսանդր կայսրն ամսոյն 26ին այս կողմն եկաւ գործողութեան ներկայ գտնուելու, եւ Ռուսք քաղաքին վերի կողմէն յառաջխաղացութիւն մ'ըրին իբր թէ անդ գտնուած նաւակները մտնելով անցնելու համար։ Ամբողջ չորս օր Նիկոպօլիս սարսափելի ռմբակոծութեան մ'ենթարկուեցաւ Ռուսճուքի նման, եւ Ռուսաց թնդանօթներն Տաճկաց թնդանօթներուն կրակը մարեցին բոլորովին։ Դանուբի եզերաց ափափայքն այնպիսի ձեւ մ'ունէին անդ, որ մէն մի ռումբին քանի անգամ կը կրկնուէր արձագանգներով, եւ զարհուրելի էր թնդանօթաց անընդհատ որոտումն։ Ամսոյն 27 ին՝ Ռուսաց ռմբերն քաղաքը հրդեհեցին եւ կրակը մինչեւ հետեւեալ օրը տեւելով ամբողջ թաղ մ'այրեց։

«Թուռնու-Մակուրէլի հասայ երեկոյեան տասներորդ ժամուն, կ'ըսէ Տէյլի-Նէվզի մէկ թղթակիցն, եւ տարօրինակ ահեղ տեսարան մ'աչքիս զարկաւ՝ քաղաքը տեսնելու չափ մօտենալուս պէս։ Երբ հովտին մէջ մտայ, դիմացի ափանց վրայ Նիկոպօլսոյ հրդեհեալ տանց կարմիր բոցը նշմարեցի, որոց շատերը մէկ կարգի վրայ շինուած էին. իւրաքանչիւրն ի հեռուստ կը նմանէր սոսկալի կերպիւ վառեալ ածխակոյտի մը. Թուռնու քաղաքին վրայ եւս մէկէն ի մէկ ահագին գիսաւորի նման երեւցող բան մը կը նշմարուէր, որոյ գլուխն հորիզոնին վրայ էր, եւ տուտն գագաթնակէտը կը հասնէր՝ իբրեւ սպիտակ նշուլից ափիւնք մը երկնից վրայ տարածուելով։ Ելեկտրական լոյս մ'էր այս, զոր Ռուսք դիմացի ափունքը լուսաւորելու, Տաճկաց կայաններն երեւան հանելու, եւ բաւ. ուղղութեամբ ռմբաձգութիւն ընելու համար կը գործածէին։»



### ԱՆՑՔ ԸՆԴ ԴԱՆՈՒԲ ՄԵՐՁ Ի ՁԻՄՆԻՑԱ

Որոշուեցաւ որ յունիս 26 էն 27 լուսնալու գիշերը պիտի լինէր Ռուսաց անցքն Դանուբի վրայէն Զիմնիցայի մօտ։ Անհամեմատ զգուշութիւնք ձեռք առնուեցան

մինչեւ վերջին Տաճիկները խաբելու համար, որոց լրտեսներէն Ռուսք շատ կը վախնային։ Նիքօլա մեծ դուքսն Թուռնու-Մակուրէլի գնաց կայսեր քով, աւելի հաւանական ընելու համար այն տարաձայնութիւնները, որոց նայելով անցքն այս կողմէն պիտի լինէր. հետեւակ զօրաց իններորդ հատուածն այն կողմ ղրկուեցաւ՝ իբր թէ գործողութեան մասնակցելու համար. 8րդ դնդին հրամանատար Ռատէցքի զօրավարն միայն, որոյ զօրախումբքն ամենէն առաջ պիտի անցնէին, տեղեկութիւն ստացաւ ընտրեալ կէտին վրայով, եւ միւս գնդերն այնպէս անտեղեակ էին՝ որ անցքն արդէն կատարուեր էր, մինչ բանակին մէջ ոչ ոք գիտէր թէ ուրկէ եւ երբ պիտի լինէր։

8րդ գունդն Պէյուլի մօտ բանակեալ էր. ամսոյն 26ին, հետեւակ զօրաց 14րդ հատուածն՝ Տրակոմիրով զօրապետին հրամանատարութեան ներքեւ, իրեն յարակից զօրախմբերուն, այն է որսորդ զօրաց 4րդ սահին, երկու դասակ փլաստուններու, կայսեր անձնապահ զօրաց մէկ դասակին եւ ճարտարագիտական զօրաց մէկ ջոկատին հետ մեկնեցաւ դէպ ի Զիմնիցա, ծուրճէվօյէն բերուած նաւակներու (թօմպազ) կազմածներն ի միասին առնլով։ Միրսքի զօրավարին հրամանատարութեան տակ գտնուած 9րդ ջոկատն եւս գիշերային ճանապարհ ելնելով հետեւեալ օրն Զիմնիցա պիտի հասնէր, առաւօտեան երրորդ ժամուն։ Եթէ յաջողութիւն ձեռք բերուէր, այս եւս անմիջապէս Դանուբին միւս կողմը պիտի անցնէր Տրակոմիրովի հատուածին ետեւէն. եթէ սոյն հատուածը չկրնար յաջողիլ, Միրսքի հատուածն կռիւը պիտի շարունակէր եւ վերստին անցնելու փորձ մ՚ընէր ամէն զգուշութիւն աչք առնլով։ Նիքօլա մեծ դուքսն կ՚ուզէր որ անպատճառ գետէն անցնուի։ Ուրիշ հատուածներ մերձակայքը կըսպասէին ըստ հարկին։

Զիշթօվ կամ ըստ Պուլղարաց Սվիշթօվա քաղաքն՝ Զիմնիցա ըսուած ռումանական աւանէն քիչ մը վար կը գտնուի Դանուբի եզերքն ուղղորդ բարձրացեալ ափափայից վրայ։ Այս ափափայքն խիստ հեռի կը տարածուին Զիշթօվի վարի կողմէն. բայց գրեթէ երկու մղոն հեռի նեղ ձոր մը անոնց մէջէն կ՚անցնի եւ Թէքիր-տէրէսի ըսուած հեղեղ մը կը հոսի անդ։ Այս ձորն դէպ ի ներսերը տանող ճանապարհ մ՚ունի, մանաւանդ զի Թէքիր-տէրէսիի բերանն Դանուբի եզերաց վրայ խորշ մը կը ձեւացնէ, եւ զօրք հանելու համար ամեն փափաքելի դիւրութիւնք կան անդ։ Տաճիկներն այս կողմին անզօր գտնուիլն հասկացած էին եւ խիստ հըսկողութիւն կ՚ընէին. խորշին աջ կողմն Պահակատուն ըսուած շէնքին մէջ մուսթահֆըզ զօրաց դասակ մը պահանորդութիւն կ՚ընէր։ Աւելի հեռի՝ դէպ ի ներսերը բանակատեղ մը կար ջաղացքի մը մօտ, եւ բանակատեղէն վեր քանի մը թնդանօթներ։ Զիշթօվի մօտ աջակողմեան բարձանց վրայ ամրութիւն մը կը գտնուէր խոշոր թնդանօթներով. ձախակողմն ուրիշ մարտկոց մը կար Վարտէրա գիւղին մօտ, եւ Ահմէտ աղայի սահը նոյն իսկ Վարտէրայի մէջ բանակեալ էր։ Եթէ անցքըն կիսովին անակնկալ չլինէր, ո՛րքան կորուստ պիտի պատճառէր, քանի որ Տաճիկներն այսքան կարեւոր պաշտպանողական միջոցներ ունէին։

Ռումանական գետեզրն բոլորովին տարբեր է դիմացինէն՝ տափարակ լինելով։ Ռուսաց անցնելու պահուն՝ գետինն այնպէս եղած էր որ անուն մը չկրնար տրուիլ, տեղ տեղ աւազուտ, տեղ տեղ տղմուտ, տեղ տեղ ջրէն դուրս մնացած եւ դալարագարդ էր, եւ տեղ տեղ ողողեալ, այնպէս որ երկայն ճահիճներ կը ձեւանային խիստ առ խիստ։ Դանուբի մէջ նըմանօրինակ ծանծաղուտ վայր մը կայ, զոր Տաճիկներն Ատա (կղզի) կը կոչեն, եւ Ռումանիացիք այս Տաճկերէն բառն յատուկ ա-

նուն մ'ընելով Ատա կղզի կ'անուանեն։ Սոյն կղզւոյն վարի ծայրն՝ որ Թէքիր-տէրէսիի խորշին ճիշդ դիմացն է, ուռենեաց եւ լաստենեաց (գըզըլ աղաճ) ընդարձակ անտառով մը ծածկուած է։

Ռուսք այս կղզւոյն ետեւը պահուած՝ գիշերային նաւակներն ջուրն իջուցին, կառաքարձ նաւեր կազմեցին, կամուրջ մը հաստատեցին ռումանական գետեզրին եւ Ատա կղզւոյն մէջ տեղ, եւ հինգ մարտկոց կանգնեցին՝ անցից ժամանակ զօրքը պաշտպանելու համար, ինչպէս նաեւ Տաճկաց ջրասուզակ նաւերուն դէմ դնելու, եթէ երեւան գային ասոնք։ Տաճիկներն այնպէս անտեղեակ էին այս ամենուն, որ աջակողմեան ափանց վրայ բնաւ իրարանցում մը չտեսնուեցաւ, երբ կէս գիշերուն 14րդ հատուածն գետեզրին վրայ համախմբեցաւ։ Դանուբն անցնելու համար՝ այս հատուածն վեց ջոկատներու բաժնուած էր, իւրաքանչիւրն հետեւակ զօրաց տասներկու դասակէ եւ վաթսուն խազախներէ բաղկացեալ. առաջին երկու ջոկատներուն իւրաքանչիւրն ութ հատ լեռնային թնդանօթ ունէր, եւ միւս չորսն՝ վեց վեց հատ դաշտային թնդանօթ։ Կազմածոց փոխադրութիւնն յանձնուած էր կամրջաձիգ զօրաց չորս վաշտերու, Ուրալեքի խազախաց մէկ հեծելադասակի եւ նաւաստեաց մէկ խմբակի։

Տրակօմիրով զօրավարին մէկ օրական յայտարարութիւնը կարդացուեցաւ հետեւակ զօրաց մէն մի դասակի եւ խազախներու մէն մի հեծելադասակի մէջ, որով գետէն անցնելու եւ աջակողմեան ափանց վրայ յարձակելու միջոցին զինուորաց բռնելիք վարմունքը ցոյց կը տրուէր։ Կարգապահութեան զօրութիւնն յայտնի եղաւ այս խիստ կանոնին ցոյց տրուած հնազանդութենէն եւ այսու կռուոյն յաջողութեանը վրայ յառաջ եկած ազդեցութենէն։ Օրական յայտարարութեամբ հրաման եղած էր՝ դիմացի ափանց վրայ ոտք չդրած՝ բնաւ հրացան չպարպել։ Այս հրամանը ճշդիւ կատարեցին նոյն իսկ անոնք, որք անցից ժամանակ վիրաւոր անկան։ Մակոյկներն կը գնդակոծուէին աջակողմեան ափանց սարերուն վրայէն. սակայն անոնց մէջի մարդիկը փամփուշտ մ'անգամ չվառեցին։ Վիրաւորեալ դեռահասակ զինուոր մ'ուզելով իւր հրացանը լարել թշնամւոյն վրայ պարպելու համար, ընկերն զինքը բռնեց եւ օրական յայտարարութիւնը յիշեցուց նմա։ Պատուէր եղած էր նաեւ լռութիւն պահել եւ անշարժ կենալ։ Զինուորք ճշդիւ կատարեցին այս հրամաններն, եւ օսմանեան ամբարտակներէն մակոյկներ սուզեցան, սակայն այն դիւցազունքն տրտունջ մ'անգամ չըրին։ Իրենց ըսուած էր որ դիմացի դիրքն յարձակմամբ առնուլ կամ Դանուբի մէջ գետամոյն լինիլ հարկ էր, եւ ետ քաշուողներուն օգնելու արգելք կար։

Առաջին ջոկատին առաջնորդելու պատիւն Եօլշին հատուածապետին վիճակեցաւ։ Նաւակներն մեծ դժուարութեամբ բերուած էին սայլերով գետափանց եւ Ատա կղզւոյն տղմուտ գետնին վրայէն։ 53րդ ու 54րդ (Վօլհինիոյ եւ Մինսքի) ճակատամարտիկ գումարտակներուն զինուորներն լռութեամբ նաւակներուն մէջ մտան։ Տրակօմիրով զօրավարն լերծուտ գետափին վրայ կանգնած էր եւ ցած ձայնով բարի յաջողութիւն կը մաղթէր իւր զինուորաց. կը փափաքէր ճանապարհը ցոյց տալ նոցա, բայց իւր պարտականութիւնն էր մինչեւ վերջն հսկել անդ՝ զօրաց նաւակները մտնելուն ժամանակ։ Առաւօտեան ճիշդ ժամը մէկին՝ զինուորներով լի նաւակներն ուռենեաց ներքեւէն դուրս կ'ելնէին եւ գետեզրէն կը հեռանային։ Բանակին ճարտարապետական զօրաց հրամանատար Տէփ[illegible]հատուածապետն՝ նոյն զօրաց 5րդ վաշտին դրօշակն ի ձեռին՝ ոտքի վրայ կը գտնուէր առաջին նաւակին յառաջակողմն։

Նախորդ օրն երեկոյին՝ Նիքօլա մեծ

դուքսն՝ յառաջապահ հատուածը ձեւացընող խազախներէն տասն յօժարամիտ անձինք ուզեր էր՝ առաջին նաւճակին քովէն լողալով գետն անցնելու եւ անոր աջակողմեան ափանց մօտենալը դիւրացընելու համար ։ Տասն ձիաւորներ ներկայացան, սոցա գլուխն էր Սքօպէլեւ զօրավարին որդին, որ դեռահասակ լինելովը հանդերձ՝ ռուսական բանակին մէջ մեծ համբաւ մ'ունէր ։ Ինքն էր որ միայն 4,000 մարդով մէկ քանի միլիոն բնակիչ ունեցող գաւառ մը շահեցուց Ռուսիոյ 1875 ին Խօքանտի վրայ եղած պատերազմական արշաւանաց ժամանակ ։ Սքօպէլեւ զօրավարն արդարացի տենչանօք իւր սնուցած ակնկալութիւններն ի բաց թողլով եւ իւր ատրճանին չնայելով, կ'առաջարկէր այսպիսի սոսկալի վտանգի մը դիմագրաւել, օսմաննեան ափանց վրայ ամենէն առաջ ինքն ելնելու համար ։ Իւր առաջարկն ընդունեցաւ ։ Տասն խազախներն առաւօտեան ժամը մէկին ձիոց վրայ հեծած՝ Դանուբի մէջ նետուեցան, իրենց առջեւն ունենալով Սքօպէլեւ զօրավարն, որ Սուրբ Գէորգայ խաչանշանը վիզը կախած եւ իւր ոսկի երախակալով պատուոյ սուրը ձեռքը բռնած էր ։ Այս կտրիճներն մեծ արագութիւն ունեցող հոսանքին բռնութեանն հակառակ՝ ութ ձիաւորներն աջակողմեան ափանց վրայ ելան առանց մարդ մը կորուսանելու ։ Միայն երկու խազախներ ստիպուեցան ետ դառնալ եւ ձախակողմեան գետեզրն ելնել, վասն զի իրենց ձիերն հոսանքէն անցնելու չափ զօրաւոր չէին ։

Մինչդեռ Սքօպէլեւ զօրավարն մէկ կողմանէ այս մեծ քաջագործութիւնն կը կատարէր, նաւատորմիկն իւր հրահանգացն համեմատ կը յառաջէր միւս կողմանէ դէպ ի Թէքիր-տէրէսիի բերանն. բայց հոսանքին բռնութիւնն այնպէս էր՝ որ նաւճակներն ցրուեցան. մէկ մասը հազար մէթրի չափ վար քշուեցաւ, մէկ մասն որոշեալ կէտէն դէպ ի վեր ցամաքին մերձեցան եւ մէկ քանիները միայն նոյն կէտին վրայ հասան ։ Տասներկու դասակներն ստիպուեցան այսպէս ցիր եւ ցան լինել, սակայն խառնաշփոթութիւն յառաջ չեկաւ ։ «Սոյն կռուոյն մանաւոր հանգամանքն, կ'ըսէ Տրակոմիրով զօրավարն իւր տեղեկագրին մէջ, այս եղաւ որ ամենէն առաջ գտնուող զօրքն ամբողջ վաշտեր կամ դասակներ չէին կազմեր, եւ ոչ անգամ բոլորը բաժնուած էին. ցամաքն ելնելնուն պէս՝ յանպատրաստից խմբեր կը կազմէին ։ Այս քաջ զինուորներն՝ յաճախ ոչ թէ իրենց գլխաւորաց այլ ուրիշ անձանց առաջնորդութեամբ պանծալի օրինակաւ կռուեցան առանց օգնութեան փոքրիկ յոյս մ'ունենալու. մէն մի խումբ ուշադրութեամբ կը դիտէր իւր մօտը գտնուողներուն ըրածներն ամեն մէկն իւր շարժմունքը կը կանոնաւորէր՝ միւսներուն նայելով, եւ այսպէս փոխադարձ օժանդակութիւն մը կ'ընէին ։»

Տաճիկներն յանկարծակիի եկան, ինչպէս արդէն ըսուեցաւ, եւ առաջին ջոկատը ցամաքն ելած ժամանակ՝ խիստ քիչ հրացան պարպուեցաւ նորա դէմ ։ Նոյն իսկ Սատ-իւլ-քէրիմ կը խոստովանի իւր անգիտութիւնն յառաջակայ զօրաց ի՛նչ լինելուն վրայ ։

«Յայտնի չէ, կ'ըսէր Կոստանդնուպոլիս ղրկուած գրութեան մը մէջ, թէ յառաջակայ չղթայն ձեւացնող զինուորներն փախուստ տուի՞ն թէ գերի բռնուեցան, ճշմարտութիւնն այս է՝ որ նշան մը չտուին եւ հրացան մը չպարպեցին ։ Ռուսաց անցնելէն յետոյ, Տէյիրմէն-տէրէսիէն սարին գտնուող տաճիկ պահակներն սկսան հրացան պարպել եւ նշաններ ընել ։ Իսկոյն Ահմէտ փաշայի սահնայն կողմը վազեց, մինչդեռ թշնամեաց խումբն անդադար կը ստուարանար՝ շարունակ նոր զօրք ցամաքն ելնելով մթութեան մէջ, այնպիսի ծածուկ տեղերու վրայ, յորս մեր զինուորները չէին կըրնար զանոնք տեսնել ։»

Տաճկաց այս զօրախումբն՝ երկար ժամանակէ ի վեր պատերազմափորձ եղած Անատոլուցիններէ բաղկացեալ էր, որք 4,000 հոգւոյ չափ կային եւ 6 հատ թընդանօթ ունէին։ Սոքա Թէքիր-տէրէօղի երկու կողմը գումարուեցան, ուրկէ ըսկսան սաստիկ կրակ մ՚ընել։ Այն ժամանակ յայտնի եղաւ որ, եթէ Տաճկաց զօրքը բաւական բազմաթիւ լինէր, երբէք Ռուսք նաւակներով չպիտի կրնային անցնիլ։ Երկու նաւճակներ գնտակներէն ծակուելով՝ մէջը գտնուող բոլոր զինուորներով մէկտեղ սուզեցան, նոյնպէս ընկղմեցաւ կառափարձ նաւ մը, որոյ մէջ ձիեր եւ երկու լեռնային թնդանօթներ կը գտնուէին, 2րդ չարին հրամանատար Աթրէլեանցի փոխ-գումարեան, Քօպիեվ երկրորդական նաւապետն եւ կայսեր անձնապահ զօրաց թնդանօթաձիգներուն առաջին սաւէն Թուրպէրթ երկրորդական փոխ-հարիւրապետն փառաւոր մահուամբ կորան Դանուբի ալեաց մէջ։ Փոխ-գումարեան չաւ լողալ գիտէր, ինչպէս գիտեն Ռուսաց շատերն. բայց խորասոյզ եղաւ ծանր բանկեզէթի մը տակ մնալով, յորում իւր զօրաց ամսականներն պահուած էին։

17րդ. նաւճակին պատմութիւնն եւս եղերական է։ Ասոր մէջ Մինսքի գումարտակէն 45 հետեւակ զինուոր եւ 8 թիավար կը գտնուէին. սակայն մէկ քանի վայրկեան անցնելէն յետոյ՝ սոցա կէսը միայն մնաց։ Նաւճակը հոսանքէն կը քշուէր, Տաճկաց կրակը չէր դադարեր եւ Ռուսք հետզհետէ կ՚անկանէին. ընդհուպ չորս հոգի միայն մնաց նաւճակին մէջ, եւ հուսկ ապա լոկ մէկ հոգի։ Անկարելի էր այլեւս նաւճակը վարել որ ուղիղ գծով դէպ ի տաճկական գետեզրը կը քշուէր։ Կենդանի մնացող մէկ հոգին չուզելով ողջ ողջ Տաճկաց ձեռքը գերի բռնուիլ, Դանուբի մէջ նետուեցաւ։ Գնտակ մ՚եկաւ իր ուսին դիպեցաւ եւ անրակը ջախջախեց. ինքն սկաւ այն ժամանակ մէկ թեւով լողալ տաժանելի կերպիւ, եւ վերջապէս հասաւ կղզւոյ մը քով, որ հինգ հազարամէթր վար կը գտնուէր։ Բայց Տաճիկները զինքը տեսեր էին, եւ ոտքը գետին դրած ժամանակ վերջին գնտակ մ՚եկաւ իւր միւս թեւը ջախջախեց դաստակէն վեր։ Այս քաջ մարդն՝ որ այնքան ուժգին կը մաքառէր մահուան դէմ, Սիմոն-Լօփաթին կը կոչուէր։ Ռուսք հինգ օրէն յետոյ զինքը տեսան եւ նաւակով մը Զիմնիցա տարին։ Այն հինգ աւուրց միջոցին անօթի մնացեր էր նա, իւր վէրքերն չարաչալից եւ որդնահար կեղեր դարձեր էին, բայց ինքն իւր անխռովութիւնը չէր կորուսած։ Ամեն առաւօտ ջուրը կը մտնէր մինչեւ վիզն՝ իւր դժնդակ վէրքերը մաքրելու եւ զովացընելու համար։ Կայսրն յետոյ չքանշան մը տուաւ իւր ձեռօք Լօփաթինի։

Սակայն արեւը կը ծագէր եւ Տաճկաց թնդանօթաձիգներն սկսան կրակ ընել հետեւակազօրուն այէս։ Զիշթօվի մարտկոցներէն եւս ռումբ կ՚արձակուէր նաւճակներուն վրայ. ռումանական ափանց վրայ զետեղեալ մարտկոցներն ասոնց դէմ անդրադարձութիւն ըրին իսկոյն. բայց ռմբաձգութիւն մը որչափ սաստիկ լինի, չկրնար անմիջապէս թշնամւոյն կրակը մարել, եւ ռուսական զօրախումբք մեծապէս վնասուեցան այն ռմբարատներէն որ գետին վրայ կը թօթափէին, ուռենեաց մէջէն չկահելով կ՚անցնէին եւ Ատա կղզւոյն վրայ խըմբուող ջոկատներուն մէջ անկանելով կը պայթէին։ Վարտէրայի մարտկոցէն եւս ռմբաձգութիւն կը լինէր, բայց ո՛չ այնչափ յաջող կերպիւ։

Եօլչին զօրավարն, քանի որ իւր քով բաւական թուով զօրք չունէր, գետափին վրայ հետզհետէ ելնողները կը պահեցնէր, որպէս զի Տաճկաց արձակամարտներուն կրակէն զերծ մնան։ Բայց երբ բաւական զօրք գտնուեցաւ իւր քով, այն ժամանակ հրաման ըրաւ իւր մարդոց որ ոտք ելնելով սուինները հրա-

ցաններուն ծայրն անցընեն, եւ յառաջ վարեց զանոնք ։ Ռուսք այն ժամանակ այնպիսի աշխոյժ մ'ունեցան եւ այնպիսի կերպիւ հուժկու գոչեցին, որ անդրադարձութիւն ընող Տաճկաց Թնդանօթներուն ձայնէն աւելի սաստիկ գոռալով լսելի եղաւ իրենց ձայնն ։ Իւրաքանչիւր ռուս զինուորի դէմ՝ նոյն պահուն առ նուազն տասն Տաճիկ կը գտնուէր ։ Սոքա խիստ մօտէն կրակ կ'ընէին, սակայն եւ այնպէս Վօլհինիոյ գումարտակին դասակները դիւցազնաբար գետեզրին սեպացեալ ժայռերէն վեր ելան ։ Այն խորտուբորդ, մացառուտ եւ որթերով ծածկեալ տեղւոյն վրայ Տաճիկները կրնային յամառ դիմադրութիւն մ'ընել, եւ հարկ եղաւ զանոնք սուինով վանել ։

Այն տեղ դէպք մը պատահեցաւ, որոյ վրայ նոյն աւուր կռուին աւելի վայրագ եւ անագորոյն եղաւ ։ Մէկ քանի Տաճիկներ իրենց ընկերներէն անջատուելով՝ չէին կրցած անոնց հետ միանալ, եւ մացառներու մէջ պահուելով իրենքզինքնին մեռեալ կը ձեւացնէին ։ Անկերլանոցի ըսպասեակ մը անոնցմէ մին տեսաւ, մօտը գնաց եւ կարծելով թէ վիրաւորեալ էր՝ իւր քովը կախուած հօշ առեր կարկառեց ։ Տաճիկն անօրէնութեամբ եւ վրէժխնդրութեամբ գրգռեալ՝ նորա վրայ յարձակեցաւ, եւ մէջքէն մեծ փորը (դաստուրա) մը հանելով՝ ջանաց զայն զարնել ։ Սորա հանած աղաղակներուն վրայ, շուտով զօրք կուցան հասնիլ եւ այն տեղ սպաննեցին այն տաճիկ զինուորն ։ Այս դէպքը Ռուսաց կարգերուն մէջ պատմուելով՝ զինուորք կատաղութեամբ լցան եւ գրեթէ միշտ սուինով կռուեցան, այնպէս որ իւրաքանչիւրն միջին հաշուով վեցէն աւելի վիրաւորեալ չը մնաց ։

Մարդկային սոսկալի կոտորածէ մը յետոյ միայն՝ Պահակատունը գրաւուեցաւ եւ ի վերջոյ Ջաղացքին մէջ սոսկալի ջարդ մ'եղաւ ։ Ջաղացքին յետակողմն բլուր մը կը բարձրանար, որոյ զառիթափին տաճիկ զօրաց ներքեւ անյայտ եղած էր. սոքա մէկ քանի կէտերու վրայ կարգ կարգ շարուած էին կրակ ընելու համար. ուրիշ զօրախումբք հեղեղատի մը աջակողմեան եւ ձախակողմեան սեպացեալ ափունքը կը ծածկէին ։ Մինչդեռ Թնդանօթաձիգներն գետին մէկ եզերքէն միւսն երթեւեկող նաւակներուն վրայ կրակ կ'ընէին, տաճիկ զինուորաց ձեռօք եղած ընդհանուր հրացանութենէն բլրոյ զառիթափները դիակներով կը ծածկուէին ։ Երկու կողմանէ եւս վերջին ծայր կատաղութիւն ցոյց կը տրուէր. ռուս սպայք դժուարութիւն չէին կրեր իրենց զինուորներն համոզելու համար թէ անվրէպ պիտի կորնչէին, եթէ չկարենային Տաճկաց կարգերը ճեղքելով աջակողմեան ափանց վրայ անցք մը բանալ. միւս կողմանէ տաճիկ զինուորներն իրենց դիմադրութեան կարեւորութիւնը կը հասկանային ։ Ռուսական զօրաց կացութիւնը աւելի տագնապալից կը լինէր՝ նաւակներուն անկանոն երթեւեկին պատճառաւ. ասոնք գրեթէ միշտ բուն կէտին վերի կամ վարի կողմէն գետեզրին կը մօտենային, եւ շատ անգամ մեծամեծ ժայռերու ստորոտն անկանիլ կը պատահէր անոնց, այն ժայռերուն՝ որք բերդի մը պատուարներէն աւելի անմատոյց լինելով Դանուբի եզերաց այն մասին վրայ կը բարձրանան ։ Նաւակներուն մէկ քանիները սուզուեցան եւ մէկ քանիներն հոսանքէն քշուեցան, զորս հարկ եղաւ ապա ռումանական ափանց քով քաշել բերել ։ Ժայռերուն վրայէն հրացան արձակող տաճիկ զինուորաց ձեռօք բազմաթիւ մարդիկ սպաննուեցան նոյն իսկ նաւակներուն մէջ ։

Թնդանօթ չանցընելով շարունակ հետեւակ զօրքը միայն փոխադրելու հրաման եղաւ, գետեզրին վրայ ելած առաջին խմբերուն զօրավիգ լինելու դիտմամբ, մանաւանդ զի գետինն եւս աննպաստ





ԱՆՑՔ ԸՆԴ ԴԱՆՈՒԲ




ՄԵՐՁ Ի ԶԻՇԹՕՎԱ     Չ ԶԱՂԱՑՔ

ելնելն դիւրին լինելու համար՝ զառիվեր ուղի մը շինուեցաւ. Նորահաս զօրքն այնուհետեւ աւելի կանոնաւոր կերպիւ խմբերու բաժնուելով, պահեստի խումբ մ'ալ զատուեցաւ, զոր Ռուսք մինչեւ այն ժամանակ չէին կրցած ունենալ։ Ժամ մը յետոյ՝ մեծ շոգենաւ մը հասաւ, որոյ այլ եւ այլ մասերը Թուռնու-Մակուրէլլիի մէջ ագուցուեր էին. այս շոգենաւն ամբողջ գումարտակ մը բերաւ երկու անգամ ուղեւորութիւն ընելով, եւ նաւակներուն գործին նպաստեց այսպէս լաւ կերպիւ։

Այնուհետեւ հրացան չպարպուեցաւ, Տաճկաց զօրքն նահանջեց, կէսն դէպ ի Զիշթօվ եւ կէսն դէպ ի Ռուսճուգ. Վարտէրա Թափուր մնաց, եւ այլ եւս անկէ ռումբ չարձակուեցաւ գետին վրայ, միայն Զիշթօվի մարտկոցէն տակաւին մէկ քանի ժամ ռմբաձգութիւն եղաւ, բայց ասոր ալ կրակը դադարեցաւ մետասաներորդ ժամուն, չկրնալով դիմանալ ինն հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող ռուսական թնդանօթաց չորս շարերու կրակին։

Ապտ-իւլ-Քէրիմ կ'ըսէ թէ իր զօրքէն 224 մարդ մեռեր, 385 մարդ վիրաւորուեր եւ 31 հոգի աներեւոյթ եղեր էին. Ռուսք ալ կը խոստովանին թէ իրենցմէ 6 սպայ եւ 284 մարդ սպաննուեր, 22 սպայ եւ 398 մարդ վիրաւորուեր եւ 48 մարդ խեղդուեր կամ աներեւոյթ եղեր են այս կռուոյն մէջ. Միայն Վօլհինիոյ եւ Մինսքի գումարտակներն, որ նախաձեռն եղան ի կռիւ, 636 մարդ կորուսին. «Գրեթէ եօթն հոգիէն մէկն անկաւ այսպէս պատերազմին մէջ, կ'ըսէ Տրակօմիրով զօրավարն։» Վիրաւորաց շատերն այլեւայլ տեղերէ զարնուեր էին. հարիւրապետ մը տասնեւվեց տեղէ վիրաւորուեր էր գնտակով, զինուոր մը ութ տեղէ, եւ բազմաթիւ զինուորներ՝ երեք կամ չորս տեղէ. ասկէ յայտնի կը լինի Տաճկաց կրակին սաստկութիւնը. Ռուսական բանակին առողջապահական վարչութիւնն առաջին անգամ այն տեղ առիթ ունեցաւ գործնականապէս ապացուցանելու իւր կազմակերպութեան լաւութիւնն, զոր եւրոպական լրագիրք արդէն յոյժ գոված էին՝ զօրաց հետ գտնուող բժշկաց թուոյն վրայ զարմանալով։

Տրակօմիրովի հատուածին կրած կորուստներէն յայտնի կը լինի թէ գործն ինչ կերպիւ պիտի լինէր, եթէ Տաճիկներն բաւական զօրք ունենային այն տեղեաց մօտ։ Անստգիւտ է Ահմէտ փաշայի վարմունքն, որ Ռուսաց ձեռք բերած յաջողութիւնն այնքան սուղի նստեցուց իրենց. սոցա ըրած անցքին համար՝ պատասխանատուութիւնը Տաճկաց ընդհանուր հրամանատարին վրայ կը ծանրանայ, ուր Դանուբի մօտ նախորդ օրերը պատահած կարեւոր յառաջամարտներէն յետոյ, վերահասու չէր եղած իւր հակառակորդաց դիտաւորութեանցն եւ զանոնք ի դերեւ հանելու համար պէտք եղած տնօրէնութիւնները չէր ըրած։ Ռուսճուգի մէջ 20—25,000 պատրաստ զօրք ունէր, 10,000 եւս Նիկոպոլսոյ մէջ, եւ անշարժ պահեց զանոնք։

---

ԳՐԱՒՈՒՄՆ ԶԻՇԹՕՎԻ

Սոյն կռուոյն հանգամանաց պատճառաւ Ռուսաց զօրքն բնականաբար երկու ջոկատներու բաժնուած էր. Թէքիր-տէրէսիի ձախակողմն Եօլչինի սահը կը գործէր ընդդէմ այն Տաճկաց, որք դէպ ի Ռուսճուգ կը քաշուէին, աջակողմէն եւս Փէթրուշէվսքիի սահն Զիշթօվի վրայ կը քալէր. Տրակօմիրով զօրավարն հրաման ըրաւ որ գետափանց վրայ հետզհետէ ելնող զօրքն վաշտեր կազմելէ անմիջապէս յետոյ յառաջ խաղան դէպ ի աջակողմեան բլուրներն, բայց չկռուին, մինչեւ որ որսորդ զօրաց սահն եւ թնդանօթաձիգներն հասնին. Մետասաներորդ ժամուն հասան սոքա, եւ այն ժամանակ զօրավարն ի դէպ համարեցաւ այն աւուր երկրորդ գործողութիւնը կատարելու ձեռնարկել, այսինքն Զիշթօվի գրաւումն։

Չիչթօվ՝ գրեթէ 30.000 բնակիչ ունեցող յոյժ վաճառաշահ քաղաք մ'է, գետին եզերքը հովահարի ձեւով. այս քաղաքին քովերը բլուրներ կը բարձրանան, եւ Դանուբէն մինչեւ Պալքաններուն ստորոտը տարածուող մեծ սարահարթի մը ծայրը կը ձեւացնեն։ Սոյն բլրոց տիրողն քաղաքին եւս կը տիրէ։ Առաւօտուն ռուսական զօրաց աջակողմեան գետեզրին վրայ ելնելու միջոցին եղած փոյթն եւ ջանքն այն բարձր դիրքը գրաւելու համար էր. վասն որոյ կարելի էր գուշակել թէ երեկոյեան կռուէն առաջնոյն չափ արիւնառուշտ չպիտի լինէր, եւ Չիչթօվ քաշուող Տաճիկներն՝ գետափանց վրայ եղած կռիւներէն ուժաթափ լինելով՝ երկար դիմադրութիւն մը չպիտի ընէին քաղաքին պաշտպանութեանն համար։ Այս գուշակութիւնը ճիշդ ելաւ։ Քաղաքին մօտ բլրակի մը վրայ վերջին կռիւ մը լինելով, Տաճիկները դէպ ի Թռնօվա փախան, եւ Փէթրուշէվսքի զօրավարն խումբ մը ղրկեց Չիչթօվ, որոյ դռներէն քիչ մը հեռի պուլղար պատգամաւորներ ներկայացան քաղաքն Ռուսաց զօրավարին յանձնելու համար։

Կէս օրէն երկու ժամ յետոյ՝ զօրքը քաղաքը մտաւ։ Այս քաջ զինուորներն, որ կռուոյն մէջ զիրենք դրդող աւիւնէն տակաւին ջերմ եւ դողդոջուն էին եւ վառօդէն սեւցեալ, յարտասուս փղձկելու չափ խանդաղատեցան, երբ պուլղար կանայք ուրախութեամբ յափշտակեալ իրենց առջեւ ծունկ կը չոքէին եւ զաւակնին կը ներկայացնէին, որք ծաղիկներ կ'ընծայէին անոնց։

Ինչպէս Մաչինի մէջ՝ նոյնպէս եւ աստ՝ բոլոր քրիստոնէից դրանց վրայ մէկ մէկ խաչ քաշուած էր թանաքով կամ կաւիճով։ Բայց ամենէն աւելի հետաքրքրական եւ ծիծաղաշարժ բանն էր բնակչաց գլխանոցներուն փոփոխութիւնն ի ներկայութեան իրենց նոր հիւրերուն։ Մէկ ակնթարթի մէջ տաճկական գդակներն եւ մահմետականաց տիրապետութիւնը յիշեցնող բոլոր բաներն աներեւոյթ եղան։ Քաղաքին մէջ գտնուած բոլոր փեղոյրներն ձեռքէ ձեռք յափշտակուեցան։ Այն այլեւայլ գլխարկները տեսնելով՝ զորս Աստուած գիտէ ուրկէ կը հանէին, կարելի էր եւրոպական խոյրագործութեան յիսնամեայ պատմութիւնը չինել։ Նոքա՝ որ ազատութեան այս եզական եւ յեղակարծում ընդունուած նշանակը չկրցան ունենալ, իրենց տաճկական գլխանոցին շուրջը ճերմակ թաշկինակ մը կապելով շատացան։

Չիչթօվի ռամիկ հասարակութիւնը ախուր տեսարան մ'ընծայեց սակայն՝ իւր ըրած մոլեռանդական գործերով։ Քաղաքին տաճիկ բնակիչքն՝ Դանուբի վրայ եղած կռուոյն լուրն առնելով անմիջապէս խոյս տուեր էին դէպ ի Թռնօվա, արդէն մէկ քանի օրէ ի վեր խելամուտ եղեր էին թէ փախչելու պիտի ստիպուէին, վասն որոյ բազմաթիւ սայլեր պատրաստել տուած էին։ Քաղաքին մէջ Չէրքէզ չգտնուելով՝ ո՛չ գողութիւն եւ ո՛չ սպանութիւն պատահեցաւ։ Առաւօտուն աղքատաց թաղերուն բնակիչներն Վլահներու եւ Չինկեանէներու առաջնորդութեամբ Տաճկաց թաղը մտան՝ ամայի տեսնելով զայն. եւ աւարի տուին զիրար գրգռելով։ Ռուսք երբ քաղաքին մէջ խուզարկութիւն ըրին, ականատես եղան այս տեսարանին։ Աւարառուք եւ ոչ մէկ տան մը խնայեր էին, ծխնիներէն կիսովին անջատեալ դռներ եւ պատուհաններ պատերն ի վար կախուած՝ եւ ապակիներն խորտակուած էին։ Սենեակներն աղբիւսներու կը նմանէին, եւ ծուէն ծուէն եղած կերպասներ, պատառուած բազմոցներէն եւ կարասիներէն խլեալ ձորեր (գըլ), տապաստակներէն հանուած բրդեր՝ ախոռներուն յարդին եւ պատերէն թօթափած գաճին (ալչը) եւ խեցեղինաց բեկորներուն հետ խառն դիզուած էին եւ մինչեւ ծունկ կը հասնէին։ Կանանոցներու մէջ մասնաւոր կատաղու-

թիւն մը ցոյց տրուած էր։ Պուլղարք ի-րենց զայրոյթը թափած էին Տաճկաց այն նուիրական տեղեաց մէջ, որոց վանդա-կապատներն կտոր կտոր եղած եւ կախ-ուած էին, եւ ատոնց տեսքն այնպէս կարծել կուտար թէ կանացի ձեռինք հոլեր էին վրէժխնդրութեան յագուրդ տալու համար։ Այս վայրագ գործերն անգամ կ'ապացուցանեն այն աննկալութիւննե-րը, զորս Պուլղարիա ունէր Ռուսաց ռուսական իշխանութեանց հետ միա-բանելով անմիջապէս միջոցներ ձեռք ա-ռին ըստ կարելւոյն չարեաց դարման տա-նելու համար։ Եկեղեցեաց մէջ հրամանա-գիր մը կարդացուեցաւ, որով պատուէր կը լինէր՝ բոլոր գողցուած բաներն ստի-կանութեան ձեռքն հասուցանելու, որպէս զի ետ տրուին տեարց։ Յանձնաժողով մը կազմուեցաւ այն իրերը ճանաչելով ան-վրէպ յանձնելու համար, եւ պատիժներ



ՀԱՍԱՆ ՓԱՇԱ, ՍՕԽՈՒՄ—ԳԱԼԷԻ ՎՐԱՑ ԱՐՇԱՒՈՂ ՆԱՒԱՏՈՐՄԻՆ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ

գալստեանն սպասելով։ Սլաւեան գաղա-փարաց ծաւալումն ամենէն տգէտ ամբո-խին մէջ իսկ թափանցեր էր։ Բոլոր Պուլ-ղարք այնպէս կը հաւատային թէ պատե-րազմին նպատակն էր քրիստոնեայներն երկրին տէր ընել եւ Տաճիկներն արտաք-սել Եւրոպայէն։ Վասն որոյ սոցա հետքը կը ջնջուէր, որպէս զի յաւէտ անյիշատակ լինին։

Սակայն ի պարծանս լուսաւորեալ Պուլ-ղարաց՝ հարկ է ըսել թէ ամաչեցին եւ ցաւեցան նոքա այս աւերածոց վրայ, եւ սահմանուեցան այս տեսակ բաները պա-հող անձանց դէմ։

Ռուսք Տաճկաց թաղին մէջ խուզար-կութիւն ընելով՝ անոնց դատաւորն (գա-տը) եւ իւր եղբայրը գտան, որք չէին փախած միւս 10,000ի չափ մահմետակա-նաց պէս։ Կարելի եղածին չափ ակնա-ծութիւն ցոյց տրուեցաւ սոցա, որք թոյլտուութիւն ստացան քաղաքին մէջ ազատ շրջագայելու, եւ իրենց եղած ըն-դունելութեան վրայ այնքան զմայլեցան, որ քաղաքէն 20 մղոն հեռի գիւղի մը մէջ

ապաստանող Չէրքէզներուն Տաճիկներուն հետեւեալ յայտարարութիւնն ուղղեցին տներնին դառնալու յորդորելով.

«Մահմետական եղբարք,

«Զինու զօրութեամբ մեր քաղաքը գրաւեցաւ. երբ Ռուսք ծանօթ չէին մեզ՝ կ'ատէինք զիրենք, բայց այժմ ստիպուած եմք գովելու իրենց մարդասիրութիւնն եւ այն վեհանձնութիւնն զորս մեզ ցոյց կուտան, ինչպէս նաեւ իրենց քաջութիւնն։

«Այն մարդասիրական եւ մեղմ եղանակն՝ որով Ռուսք քաղաքին բնակչաց հետ կը վարուին, պարտաւորեցին զմեզ մեր թաքստոցէն ելնելու, իրենց առջեւ ներկայանալու եւ ինքզինքնիս յաղթականաց կամքին յանձնելու։ Ահաւասիկ նոյն իսկ հրամանատարին բերանէն լսած խօսքերնիս.

«Ռուսք Վեհափառ Կայսեր հրամանաւ « եկած են մեր կրօնակից եղբայրներն ա- « զատելու։

«Քրիստոնեայներն ազատելով հանդերձ՝ « մեր զօրքն չարութիւն ընելու չեն փա- « փաքիր եւ չպիտի ընեն այն այժմու « մահմետականաց՝ որք զէն ի ձեռին չեն « առնուիր, թշնամւոյն բանակին կարգերուն « մէջ չեն կռուիր եւ դիտաւորութիւն ու- « նին խաղաղ եւ անդորր կեանք վարելու։ « Ռուսք թոյլտուութիւն կ'ընեն ամենուն « իրենց հաւատոց հետեւելու, որովհետեւ « Աստուած մի է ամեն կրօնից համար. ոչ « ոք պիտի ճնշուի, եթէ հաստատեալ օրի- « նաց անսայ եւ խաղաղ կեանք վարէ ու- « րիշներուն նեղութիւն չտալով։

«Մեր խօսքին հաւատացողներն վստահ « պիտի դան իրենց տանց մէջ անդորրու- « թեամբ բնակելու։ Եթէ բարի դիտաւո- « րութեամբ ձեր տները դառնաք, պատ- « ճառ պիտի չունենաք այլ եւս հեռանա- « լու, վասն զի ռուս զինուորք՝ իրենց արդա- « րասիրութեամբն եւ վեհանձնութեամբն « պիտի պարտաւորեն զձեզ խաղաղութիւն « վայելելու եւ ձեր քաղաքական եւ տնա- «կան զբաղմունքն աներկիւղ շարունակելու։

«Ռուս մարտիկներու դիմաց գտնուելէ « մի վախնաք. նոցա վեհանձնութիւնը ձեր « առաջին գաղափարը պիտի փոխէ, որով « ապահովութիւն պիտի տան ձեզ թէ ի- « րենց պաշտպանութեան ներքեւ զերծ « պիտի լինիք կամայական իշխանութենէ։»

Սուգիւ՝ շատ քիչ մարդիկ հրապուրուեցան։ Գաղթեալք գիտէին թէ իրենց բնակարաններն աւարի տրուած էին, եւ միթէ մահմետականաց գոռոզութիւնը կրնա՞ր հպատակիլ զինու զօրութեամբ հաստատեալ իրաց նոր կարգին, քանի որ յաղթականն կը պաշտպանէր զԲուլղարն, որ նկուն եղած Տաճկին ժամանակաւ գործած լրբութեանց փոխարէնը կը հատուցանէր։ Ոչ, շատերն ճանապարհ ելան դէպ ի Կոստանդնուպօլիս երբ կրցան, առանց նայելու իրենց ունեցած միջոցներուն, դարձնելով աչքերնին դէպ յԱսիա, որ իրենց ցեղին որրանն է, եւ ուր պիտի դառնայ այն ցեղն՝ ըստ աւանդութեան մը։



ԶԻՄՆԻՑԱՅԻ ՄՕՏ ԿԱՄՐՋԻ ՄԸ ՇԻՆՈՒԹԻՒՆ. — ՌՈՒՍԱԿԱՆ ԲԱՆԱԿՆ ՊՈՒԼՂԱՐԻԱ Կ'ԱՆՑՆԻ

Ամսոյն 27ին առաւօտէն մինչեւ երեկոյ՝ անդադար զօրք անցաւ Դանուբէն. արդարեւ հարկ էր աջակողմեան գետեզրին վրայ հնար եղածին չափ շուտով եւ շատ զօրութիւն ունենալ՝ Տաճկաց կողմանէ լինելիք յարձակման մը դէմ դնելու համար։ Կէս օրէն երկու ժամ յետոյ՝ հետեւակ զօրաց 14րդ հատուածն եւ որսորդ զօրաց 4րդ սահն ամբողջ՝ Պուլղարիոյ մէջ էին։ Երրորդ ժամուն 8րդ գնդին հրամանատար Ռատէցքի զօրավարն գետէն անցաւ։ Կէս գիշերոյն երեք ժամ մնացած՝ հետեւակ զօրաց 9րդ հատուածն եւս աջակողմեան գետափանց վրայ կը գտնուէր ամբողջ։ Հետեւեալ օրն հետեւակ զօրաց 35րդ սահն անցաւ, իբր պահեստի զօրք սպասելու համար, մինչդեռ միւս հատուածներուն առաջինն դէպ ի ձախակողմն կ'եր-

թար բանակելու Թռնօվայի ճանապարհին վրայ, եւ երկրորդն՝ դէպ ի աջակողմն՝ Զիչթօվի մօտ, որ ընդ հուպ ընդարձակ բանակատեղ մը դարձաւ ։

Նիքօլա մեծ դուքսն եւս եկաւ այն օր, եւ դէպ ի Պալքաններու զօրաց յառաջխաղացութիւն ընելէ առաջ, գրաւեալ դրից վրայ զանոնք ամուր կերպիւ զետեղելու զբաղեցաւ ։ Տաճկաց Զիչթօվը Թողլով նահանջելն գուցէ կեղծիք մ'էր ։ Պատերազմի մէջ շատ անգամ գործածուած եւ ռազմագիտական հնարք մ'է թողուլ որ բանակի մը մէկ մասն գետէ մ'անցնի, յետոյ մեծ զօրութեամբ անոր վրայ յարձակիլ մինչդեռ տակաւին չէ կրցած այն՝ ետեւ մնացած միւս մասին հետ հաղորդակցութիւն հաստատել ։ Արդեօք Այտիւլ-Քէրիմ փաշա չէ՞ր ուզեր թողուլ տալ որ Ռուսաց մէկ քանի հատուածներ Դանուբի աջակողմեան եզերքն անցնին, եւ ապա ճակատ առ ճակատ նոցա վրայ յարձակելով գետամոյն ընել զանոնք, երբ նոքա անջատ գտնուէին իրենց գործողութեանց խարսխէն, որ Ռումանիոյ մէջ էր ։ Տաճկաց երկիրը մտնելու համար 8րդ գունդը կըռուած ժամանակ, իւր դէմ սակաւաթիւ խումբ մը միայն գտնուելուն հաւանական պատճառն կամ այս էր, եւ կամ Տաճկաց մէկ անհիմնալի ապիկարութիւնն ։ Վասն որոյ հարկ էր վաղ ընդ փոյթ զգուշութիւններ ձեռք առնուլ ։

Նա որ այս դարուս զինուորական պատմութեան տեղեակ է, գիտէ թէ ինչ սարսափելի կացութեան մէջ կը գտնուէր Նափոլէոն Ա. 1809ի պատերազմի ժամանակ, երբ Դանուբն իւր յետակողմն ունենալով՝ Աւստրիացւոց դէմ կը գտնուէր, եւ ո՛րպիսի անձկութեան մէջ անկան Գաղղիացի զօրավարք, երբ գետն յանկարծ յորդելով իրենց գործողութեանց խարըսխէն անջատեալ գտնուելու երկիւղն ունեցան, մինչդեռ աչարկու եւ անագորոյն թշնամի մը կար իրենց դէմ ։ Եթէ Նիքօլա մեծ դուքսն՝ շրջահայեաց ռազմագիտութեամբ յառաջագոյն զգուշութիւններ ձեռք չառնլով՝ յառաջխաղացութիւն ընէր, դուցէ Ա. Նափոլէոնի պէս պիտի վտանգուէր, եւ Այտ-իւլ-Քէրիմ փաշա կրնար սարսափելի ձախորդութեան մը փոխել՝ ի սկզբան պատերազմին Ռուսաց ձեռք բերած յաջողութիւնն ։ Վասն որոյ՝ ռուսական սպայակոյտն ամեն բանէ առաջ փոյթ ունեցաւ ամուր կերպիւ հաղորդակցութիւն հաստատել ռումանական եւ պուլղարական ափանց մէջ տեղ՝ կամուրջ մը շինելով ։

Այս շինութեան համար պէտք եղած կազմածներն, ինչպէս են նաւակ, լաստ, տափերական (Թապլիէ) եւ երկրորդական մասունք, մեծաւ մասամբ շինուած եւ Սլաթինայի մէջ հաւաքուած լինելով, այս քաղաքէն մինչեւ Դանուբ բերուեր էին Ալութայի վրայէն ։ Ինչպէս յայտնի է, Ալութա՝ Աւստրիոյ Կարպաթեան լեռներէն հոսող գետակ մ'է, որ Ռումանիայէն անցնելով Դանուբի մէջ կը թափի Նիկոպօլսէն վեր ։ Եւ որովհետեւ Զիմնիցա այս քաղաքէն վար կը գտնուի, հարկ եղաւ բոլոր այն կազմածներն Դանուբի վրայէն եւ Նիկոպօլսոյ ամրութեանց թնդանօթներուն դիմացէն իջեցնել ։ Այս ձեռնարկութիւնն այնքան մեծ դժուարութիւններ կ'ընծայէր, որ կրնար իբր գլուխ չհանուելու բան մը համարուիլ ։

Ռուսք ռազմագիտական հնարք մը բանեցուցին այն վարպետութեան նման՝ զոր Նափոլէոն Ա. ըրաւ, երբ իւր բանակն դէպ ի Մարէնկօ յառաջ վարելով՝ Կռան-Սէն-Պեռնար լեռնէն իջնելու ժամանակ՝ պարտաւորեցաւ անցնիլ այն կրճէն որ պաշտպանեալ էր Պարի ամրոցով ։ Յունիս 28ին, 29ին եւ 30ին՝ գիշերայն՝ այս կազմածներն գետին վրայէն անցուցին Ռուսք կատարեալ լռութիւն մը պահելով, առանց նշմարուելու Օսման փաշայի բանակին պահանորդներէն, որք քաջադէտ չէին ։

Յունիս 30ին՝ կազմածներն վտանգաւոր կէտէն անցնելէն յետոյ միայն, Տաճիկ-

ներն գետին վրայ անսովոր խլրտում մը նշմարեցին, եւ եղած խորամանկութիւնը հասկցան։ Անմիջապէս սարսափելի գընտաձգութիւն մ'եղաւ դէպ ի լաստերն, բայց գնտերն Դանուբի. ալեաց մէջ կորան՝ առանց այն անգին կազմածոց դիպելու, որոց Փլամունտա ժամանելուն կը սպասէր անհամբերութեամբ նոյնինքն մեծ դուքսն Ալէքսիս Ալէքսանտրովիչ։

Նիքօլա մեծ դուքսն իւր տեղեկագրին մէջ մասնաւոր դէպքի մը վրայ կը խօսի, որ այս յանդուգն գործողութեան միջոցին պատահեցաւ։ Երբ Տաճիկներն Դանուբի վրայէն Ռուսաց լաստերուն անցնիլը նշմարելով՝ կրակ ընել սկսան, լաստերուն խմբին յառաջակողմն գտնուող Նաւուղիղն, որ ռուսական բանակին չէր, վախնալով գետեզրին վրայ ցատկեց, եւ մօտի հինգ լաստերը վարող անձինքն եւս անոր օրինակին հետեւեցան։ Ճարտարագիտական զօրքն՝ այսպիսի տագնապալից ժամանակի մէջ լքեալ մնալով՝ իրենց անխռովութիւնը չկորուսին։ Սակաւաթիւ էին եւ չէին կրնար առանձինն վեց լաստերը վարել։ Անմիջապէս զանոնք իրարու մօտեցուցին եւ կցեցին երկուք երկուք, մինչդեռ սաստիկ կրակ մը կը թափուէր իրենց դէմ. յետոյ վերստին մէկ գծի վրայ շարուելով՝ իրենց խաղացքը շարունակեցին կատարեալ անդորրութեամբ։ Մեծ դուքսն այս մարդոց ըրածն իմաց տուաւ կայսեր, եւ նոցա քաջութեան արժանաւոր վարձքը տրուեցաւ։

Կայսրն յունիսի 28ին Ալէքսանտրիան թողլով՝ Զիմնիցա զօրանիստ ըրաւ եւ Դանուբն անցաւ, որպէս զի յունիս 27ի ճակատամարտին տեսարանն եւ Պուլղարիոյ մէջ գտնուող զօրքն աչքէ անցընէ։ Յետոյ դարձաւ կամրջին շինութեանը ներկայ գտնուելու։ Այս շինութիւնն կազմածոց առաջին կարաւանն հասնելուն պէս սկսաւ եւ շարունակուեցաւ, մինչդեռ միւս կողմանէ զօրքն նաւակներով կ'անցնէր, որովք աջակողմեան գետափանց վրայ փոխադրուեցան 12րդ գունդն եւ Սքօպէլեվ զօրավարին տեղազննին զօրաց հատուածն։ Ամսոյն 29ին՝ կամրջին շինութիւնն եւ զօրաց անցքն պահ մ'ընդհատեցաւ, յանկարծ ջրասուզակ նաւ մը տեսնուելուն վրայ, որ Նիկոպոլսէն մեկներ էր եւ յամրագնաց վեր կ'ելնէր գետէն։ Հետեւակ զօրքն՝ որ անցնելու կը պատրաստուէր, ուռենեաց ներքեւ պատսպարուեցաւ. Զիմնիցայէն դուրս ելնող խմբերն ետ դարձան եւ կարասեաց սայլակառքերն այսր անդր ցրուիլ սկսան։ Ջրասուզակ նաւուն գետեզրին վրայ բարձրացած մարտկոցներուն առջեւէն անցաւ՝ անոնց կրակին անդրադարձութիւն ընելով, խարխափ նետեց գետին այն ճիւղին մէջ՝ ուրկէ զօրքը կ'անցնէր, եւ անդ անգործ եւ անխլիրտ մնաց առանց թնդանօթ մը պարպելու։ Ռուսք զայն խաղաղ տեսնելով՝ իրենց աշխատութիւնը շարունակեցին առանց անոր դէմ ռումբ արձակելու։ Երկու ժամէն յետոյ, նաւուն հրամանատարն ճանապարհ ելաւ վերստին դէպ ի Նիկոպոլիս՝ յաղթութեան տեղեկագիր մը խմբագրելու եւ ծանուցանելու համար թէ կամուրջ մը քանդեր էր, թէ եւ տակաւին շինուած չէր այն։

Յունիսի 30ին ուրիշ դէպք մը պատահեցաւ։ Սարսափելի փոթորիկ մը ելնելով գիշեր ժամանակ՝ 26 նաւակ սուզեց եւ ահագին խրամատ մը բացաւ կամրջին վրայ, որ գրեթէ աւարտած էր։ Յուլիսի 1ին շինութիւնն լրացաւ վերջապէս։ Մէկ քանի օրէ ի վեր 40 կամ 45 աստիճանի ջերմութիւն մը կը տիրէր. ճանապարհաց ցեխը քիչ ժամանակի մէջ չորցեր էր, եւ Ռուսք սկսան կամրջին վրայէն անցնիլ փոշւոյ գէզգէզ ամպերու մէջէն, Զիմնիցայի կամուրջն՝ իրօք հինգ կամրջէ կը բաղկանար, եւ այսպէս ընել հարկ եղած էր Դանուբի այլ եւ այլ ճիւղերուն եւ գետափանց վրայ ձեւացած ճահիճներուն պատճառաւ։ Այն կամուրջը տեսնող սպայք կարծիք յայտնած են թէ շինուա-

րական արուեստագործութիւն մ'է այն ճշմարտիւ, որ խիստ մեծ պատիւ կը բերէ Ռիխթէր ճարտարագէտ զօրավարին, որուն յանձնուած էր այս շինութիւնն Տէփ զօրապետին կողմանէ ։

Ռումանական գետեզրէն սկսեալ, առաջին կամուրջն 22 նաւաճակներէ կը բաղկանար եւ 66 մէթր երկայնութիւն ունէր։ Երկրորդ կամուրջն՝ որ ճահիճի մը վրայ ձգուած էր, 10 մէթր երկայնութիւն ունէր եւ փայտատանց (շըվալէ) վրայ հաստատուած էր։ Երրորդ կամուրջն 435 մէթր երկայնութիւն ունէր եւ 95 նաւաճակէ ձեւացեալ էր։ Չորրորդ կամուրջն՝ որոյ երկայնութիւնն 64 մէթր էր, 22 նաւաճակէ կը բաղկանար։ Հինգերորդ եւ վերջին կամուրջն՝ որ աջակողմեան ափանց կցեալ էր, 385 մէթր երկայնութիւն ունէր եւ կը ձեւանար 69 նաւաճակներէ եւ 3 փայտատներէ ։

Իւրաքանչիւր նաւաճակի մէջ կամրջաձիգ զօրաց եւ նաւաստեաց մէկ մէկ խմբակ կըսպասէին շարունակ՝ պարաններուն ամրութեանը հսկելու եւ խմաց տալու համար այն վտանգներին՝ որք կրնային սպառնալ այս կերտուածին ։ Շքթաններու երկու շարք կային գետին մէջ՝ կամրջին երկու քովերն, որպէս զի՝ եթէ որ եւ իցէ մէկ կէտէն զայն խորտակելու համար օսմանեան գրահաւոր մը մօտենար, անմիջապէս կոտոր կոտոր լինելով օդն ելնէր ։ Եթէ արտաքոյ կարգի դիպուածով մը օսմանեան նաւն այն արգելքն անցնէր, անմիջապէս անոր վրայ յարձակումն պիտի ընէին շքթաներով զինեալ 10 մակոյկներ, որք կամրջէն քիչ մը հեռի կը սպասէին անոր մերձակայքը պահպանելու մասնաւոր պաշտօնով ։ Աջակողմեան եւ ձախակողմեան գետափանց վրայ զետեղեալ 500 նաւաստիք պատրաստ կային դիմադրաւելու, եւ կամրջին պահպանութիւնն նոցա քաջութեան յանձնուած լինելով՝ ապահովեալ էր։

Յուլիս ամսոյ մէջ անընդհատ փոխադրութիւն եղաւ կամրջին վրայէն. վաշտք, հեծելազօրք, թնդանօթաշարք, երիվարք, անկելանոցք, սայլակառք, մարտասայլք եւ կարասիք՝ գիշեր եւ ցերեկ իրարու յաջորդելով եւ փոշւոյ ամպեր յարուցանելով կ'անցնէին ։ Ռուսք գիտելով որ Պուլղարիոյ մէջ պարէն չպիտի կրնային հայթայթել՝ որովհետեւ Տաճիկներն ամեն բան պիտի ջնջէին, նաեւ բազմաթիւ ձիեր ունենալով, սարսափելի քանակութեամբ ուտեստ եւ խոտ կը փոխադրէին, եւ ահագին էր կառաց շարքն ։

Պուլղարիա անցան հետեւեալ զօրախումբք .

4րդ ԳՈՒՆԴ,

Փոխ-զօրապետ Զօթով .

30րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՈՐՈՒ,

Փոխ-զօրապետ Փուզանով.

1ին ոտհ, 117րդ գումարտակ Եարօսլավի, 118րդ գումարտակ Շույայի ։

2րդ ոտհ, 119րդ գումարտակ Քօլօմնայի, 120րդ գումարտակ Սերփուխովի ։

30րդ սահ թնդանօթաձիգ զօրաց, որոց թնդանօթներն հաստարանի (դունտագ) վրայ են ։

4րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵԾԵԼԱԶՈՐՈՒ,

Փոխ-զօրապետ Քռիլով.

2րդ ոտհ, 4րդ գումարտակ հիւսարաց Մարիուփոլի, 4րդ գումարտակ Տօնսքի Խազախաց ։

8րդ ԳՈՒՆԴ,

Փոխ-զօրապետ Ռատէցքի.

9րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՈՐՈՒ,

Իշխան Սվեաթօփոլք-Միրսքի Բ. (1)

1ին ոտհ, 33րդ գումարտակ Ելէցի, 34րդ գումարտակ Սեւսքի ։

2րդ ոտհ, 35րդ գումարտակ Բրիանսքի, 36րդ գումարտակ Օրէլի ։

---

(1) Շատ անգամ կը պատահի որ մի և նոյն գերդաստանէն մէկ քանի սպայք կը գտնուին բանակին մէջ. անդրանիկն 1º Թիւը կը կրէ և այլք ըստ կարգին։ Սքօպէլէվ զօրապետն կ'ըսուի նաև Սքօպէլէվ Ա. և Սքօպէլէվի որդին՝ Սքօպէլէվ Բ ։ Իշխանն Սվեաթօփոլք-Միրսքի Ա. Կովկասու մէջ Միքայէլ մեծ դքսին սպայակուտին գլուխն է ։

9րդ սահ թնդանօթաձիգ զօրաց ։

14րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ,

Հատուածապետ Տրակօմիրով.

1ին սահ, 53րդ գունդապետակ Վօլհինիոյ, 54րդ գումարտակ Միրաքի։

2րդ սահ, 54րդ գումարտակ Փօտօլիոյ, 56րդ գումարտակ Ժիթօմիրի։

14րդ սահ թնդանօթաձիգ զօրաց ։

8րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵԾԵԼԱԶՕՐՈՒ,

Հատուածապետ Մանուէլով իշխան.

1ին սահ, 8րդ գումարտակ վիշապազօրաց Աժտէրխանի, 8րդ գումարտակ Նիզակաւորաց Վօզնէսէնսքի։

2րդ սահ, 8րդ գումարտակ հիւսարաց Լուպնիի, 8րդ գումարտակ Տօնաքի Խազախաց ։

15րդ չար թնդանօթաց ձիոյ վրայ,

1ին չար թնդանօթաց ձիոյ վրայ՝ Խազախներուն յատուկ ։

9րդ ԳՈՒՆԴ,

Փոխ-զօրապետ Քրիւտնէր Սեպուհ.

5րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ,

Փոխ-զօրապետ Շիլտէր-Շուլտնէր

1ին սահ, 17րդ գումարտակ Արխանկէլկօրօտի, 18րդ գումարտակ Վօլօկտայի։

2րդ սահ, 19րդ գումարտակ Քօսթրօմայի, 20րդ գումարտակ Կալիցիոյ ։

5րդ չար թնդանօթաց՝ հաստարանի վրայ։

31րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ,

Փոխ-զօրապետ Վէլիամինով Ա.

1ին սահ, 121րդ գումարտակ Փէնզայի, 122րդ գումարտակ Թամպօվի։

2րդ սահ, 123րդ գումարտակ Քօզլովի, 124րդ գումարտակ Վօրօնէժի։

31րդ սահ թնդանօթաձիգ զօրաց։

9րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵԾԵԼԱԶՕՐՈՒ,

Հատուածապետ Լօշխարեվ.

1ին սահ, 9րդ գումարտակ վիշապազօրաց Քազանի, 9րդ գումարտակ Նիզակաւորաց Պուկի ։

2րդ սահ, 9րդ գումարտակ հիւսարաց Քիէվի, 9րդ գումարտակ Տօնաքի Խազախաց։

16րդ չար թնդանօթաց ձիոյ վրայ ։

2րդ չար թնդանօթաց ձիոյ վրայ՝ Խազախներու յատուկ ։

11րդ ԳՈՒՆԴ,

Փոխ-զօրապետ Շաքօվսքօյ իշխան.

11րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ,

Փոխ-զօրապետ Խրափօվիցքի.

1ին սահ, 41րդ գումարտակ Սէլէնկիսքի, 42րդ գումարտակ Եաքութսքի։

2րդ սահ, 43րդ գումարտակ Օխօթսքի, 44րդ գումարտակ Քամչաթքայի ։

11րդ սահ թնդանօթաձիգ զօրաց ։

32րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ,

Հատուածապետ Ալլէր.

1ին սահ, 125րդ գումարտակ Քուրսքի, 126րդ գումարտակ Ռիլսքի։

2րդ սահ, 127րդ գումարտակ Փօնթիվլի, 128րդ գումարտակ Սթարեխօսքօլի։

32րդ սահ թնդանօթաձիգ զօրաց ։

11րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵԾԵԼԱԶՕՐՈՒ,

Հատուածապետ Թաթիշեվ.

1ին սահ, 11րդ գումարտակ վիշապազօրաց Ռիկայի, 11րդ գումարտակ Նիզակաւորաց Չուկույեվի ։

2րդ սահ, 11րդ գումարտակ հիւսարաց Իզիումի, 11րդ գումարտակ Տօնաքի Խազախաց։

18րդ չար թնդանօթաց ձիոյ վրայ ։

4րդ չար թնդանօթաց ձիոյ վրայ՝ Խազախներու յատուկ ։

12րդ ԳՈՒՆԴ,

Փոխ-զօրապետ Վաննօվսքի (1).

12րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ,

Փոխ-զօրապետ Ֆօն Ֆիրաք սեպուհ.

1ին սահ, 45րդ գումարտակ Ազախու, 46րդ գումարտակ Տնիէփրի ։

2րդ սահ, 47րդ գումարտակ Ուքրայնի, 48րդ գումարտակ Օտէսայի։

12րդ սահ թնդանօթաձիգ զօրաց ։

33րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ,

Հատուածապետ Թիմօլէյեվ.

1ին սահ, 129րդ գումարտակ Պեսարապիոյ, 130րդ գումարտակ Խէրսօնի ։

(1) Սորա տեղ անցաւ յետոյ կայսեր որդին Վլատիմիր մեծ դուքսն ։

2րդ սահ, 131րդ գումարտակ Թիրախօլի, 132րդ գումարտակ Պէնտէրի ։

33րդ սահ Թնդանօթաձիգ զօրաց ։

12րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵԾԵԼԱԶՕՐՈՒ,

Հատուածապետ Տրիգէն սեպուհ. *

1ին սահ, 12րդ գումարտակ փիշապազօրաց Սթարօտուպի, 12րդ գումարտակ Նիզակաւորաց Պիէլկօրօտի ։

2րդ սահ, 12րդ գումարտակ Հիւսարաց Ախթըրքայի, 12րդ գումարտակ Տօնաքի Խազախաց ։

19րդ չար Թնդանօթաց ձիոյ վրայ ։

Յրդ չար Թնդանօթաց ձիոյ վրայ՝ Խազախներու յատուկ ։

13րդ ԳՈՒՆԴ,

Փոխ-զօրապետ Նաշն.

1ին ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ,

Փոխ-զօրապետ Փրօխօռով.

1ին սահ, 1ին գումարտակ Նէվայի, 2րդ գումարտակ Սօֆիայի ։

2րդ սահ, 71րդ գումարտակ Պիէլէվըքիի, 72րդ գումարտակ Թուլայի ։

18րդ սահ Թնդանօթաձիգ զօրաց ։

35րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵՏԵՒԱԿԱԶՕՐՈՒ,

Հատուածապետ Պարանով.

1ին սահ, 137րդ գումարտակ Նիէժինի, 138րդ գումարտակ Վօլխովի ։

2րդ սահ, 139րդ գումարտակ Մօրշանսքի, 14րդ գումարտակ Զարայսքի ։

35րդ սահ Թնդանօթաձիգ զօրաց ։

13րդ ՀԱՏՈՒԱԾ ՀԵԾԵԼԱԶՕՐՈՒ,

Հատուածապետ Ցօն Ռատէն.

1ին սահ, 13րդ գումարտակ փիշապազօրաց զինուորական կարգին, 13րդ գումարտակ Նիզակաւորաց Վլատիմիրի ։

2րդ սահ, 13րդ գումարտակ Հիւսարաց Նարվայի, 13րդ գումարտակ Տօնաքի Խազախաց ։

20րդ չար Թնդանօթաց ձիոյ վրայ ։

6րդ չար Թնդանօթաց ձիոյ վրայ՝ Խազախներու յատուկ ։

Այս հինգ եւ կէս գնդերուն պէտք է կցել Սքօպէլեւ զօրապետին լրտես զօրաց հատուածն եւ Պուլղարաց լէգէոնն, որոյ կազմութեանը վրայ պիտի խօսինք այժմ ։

# Գլուխ Եօթնեւտասներորդ

## ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱԶՄԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՊՈՒԼՂԱՐԻՈՅ Ի ՁԵՌՆ ՌՈՒՍԱՑ

### ՊՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԼԵԳԷՈՆԻ ՄԸ ԿԱԶՄՈՒԹԻՒՆ

Պատերազմ հրատարակուելուն պէս՝ ռուսական կառավարութիւնն Պուլղարիոյ համար քաղաքական եւ զինուորական կազմաւորութիւն մը պատրաստելու զբաղեցաւ, իւր զօրաց հետ ներմուծանելու դիտմամբ ։ Զինուորական տեսութեամբ Պուլղարիա նպաստամատոյց տարրեր կ՚ընծայէր, զորս անկարելի էր զանց ընել. բազմաթիւ կամաւորներ կը ներկայանային եւ խիստ մեծ օգուտ կրնային ունենալ այս մարդիկն, որոց ծանօթ էր Պալքաններու պէս լեռնային երկրի մը ձեւակերպութիւնն, մինչ անոր վրայ հաւաքուած տեղեկութիւնք խիստ թերի էին ։ Եւ որովհետեւ Պուլղարիոյ ռուսական զօրօք գրաւման առաջին արդիւնքն օսմանեան վարչութեան բարձումը պիտի լինէր, քաղաքական տեսութեամբ եւս հարկ էր

Երկրին մէջ ռամկավարական վարչութիւն մը մուծանել, որ պիտի առաջնորդէր վերջնական օրէնսդրութեանց, եւ Պուլղարիոյ ձերբազատութիւնը պիտի պատրաստէր, որ՝ ինչպէս յայտ է՝ պատերազմին պաշտօնական պատրուակն եղած էր։

Երկու պուլղարական վաշտեր յիշատակեցինք՝ այն անձնահանդէսին վրայ խօսուած ժամանակ, որ կատարուեցաւ կայսեր առջեւ ապրիլի 24 ին ։ Սոյն երկու վաշտերն սկզբնատարր եղան այն 6,000 հոգիէ բաղկացեալ լէգէոնին, որ երկու ամիս յետոյ Դանուբն անցաւ ։ Այս վաշտերն Տաճկաց բանտերէն եւ Չէրքէզներուն դաշոյններէն փախչող դժբաղդներուն խնդրանօքը կազմուած էին, որ իրենց հայրենեաց համար ռուսական բանակին յառաջխաղացութիւնը տեսնելով՝ զինուորիլ խնդրեցին աղերսանօք ։ Սոյն կազմութեամբ ձեռք.բերուած արդիւնքն յուսացուածէն աւելի եղաւ ։ Պուլղար տարագրելոց շատերն ազնուական դերդաստանէ սերեալ եւ ուսեալ մարդիկ էին, որք իրենց ուշիմութեամբն եւ փոյթեռանդն նախանձովն նշանաւոր եղան։ Քիչ ժամանակի մէջ սովրեցան ռուսերէնին, որ իրենց լեզուին շատ մօտ է, նոյնպէս եւ ռուս սպայք պուլղարերէնի ընտելացան, եւ այն գունդն ընդ հուպ կատարելապէս համասեռ եւ միատարր եղաւ ։

Որովհետեւ ռուսական բանակին վերին տեսչութիւնն ուղղակի եւ կանոնաւոր կերպիւ բանակին յարեալ գնդերը կամ սպատակաւորաց ջոկատները միայն իւր գործողութեանց շրջանակին մէջ առնուլ կանոն դրած էր, եւ որովհետեւ Ռումանիոյ, Սերվիոյ եւ Պուլղարիոյ մէջ դաղթական գտնուող եւ զինուորիլ ուզող Պուլղարաց բազմութիւնն օր ըստ օրէ կըստուարանար՝ մանաւանդ իրենց հայրենակիցներէն կազմեալ այն երկու վաշտերն տեսնելնուն ի վեր, ուստի կառավարութիւնն որոշեց առաւել զարգացում մը տալ այս կազմաւորութեան ։

Ապրիլ 29 ին Նիքօլա մեծ դքսին մէկ հրամանագիրն ծանոյց թէ կայսրն որոշած էր պուլղարական լէգէոն մը կազմել, որ ի սկզբան պիտի բաղկանար հետեւակ զօրաց վեց տրուժինաներէ եւ վեց ալ հեծելադասակներէ ։ Տրուժինաներն հինգ դասակէ բաղկացեալ ռուսական վաշտերուն կազմաւորութիւնը պիտի՝ ունենային, եւ ձիաւորաց դասակներն Խազախներու կանոնաւոր հեծելադասակներու պէս կազմաւորեալ պիտի լինէին ։ Լէգէոնն երեք սահերու բաժնուած էր՝ իւրաքանչիւրն երկու տրուժինայէ կամ գումէ եւ երկու հեծելադասակներէ բաղկացեալ. ապա թնդանօթաձիգներ եւս ունեցաւ եւ կատարեալ գունդ մը ձեւացաւ ։ Մեծ եւ փոքր սպայք, թմբկահարք, փողահարք եւ նշանացոյցք (սինեալիոթ) ռուսական բանակէն եւ մասնաւորապէս անոր մէջ գտնուող բազմաթիւ Պուլղարներէն առնուեցան։ Սթօլիէթով հաստուածապետն՝ որում յանձնուած էր առաջին երկու վաշտերուն կազմաւորութիւնն, լէգէոնին գլխաւոր հրամանատար անուանեցաւ ։

Սերվիոյ պատերազմին մէջ արդէն զինուորութիւն ընող 600 կամաւորներն վազեցին իսկոյն Քլատովայէն, 500 Քիշօվայէն, 800 Պուքրէշէն, 700 Իպրայիլէն, 400 Կալացէն։ Մայիս ամսոյ մէջ լէգէոնն Փլոյէշթիի մօտ եկած եւ բանակած լինելով՝ քիչ ժամանակէն 6,000 հոգի ունեցաւ, պէտք եղած սպայիւք հանդերձ ։ Սոցա մէջ կը գտնուէին պուլղարական ապստամբութեանց պարագլուխներէն շատերն, ինչպէս են Փէթքօ Տրականով փօփն կամ երէցն, որ 1876ին Տրիանովի վանքը պաշտպանելով նշանաւոր եղած էր, Չէքօ Փէթքօ վօյվօտն, որ «Պալքանաց արծիւ» մականուանեալ էր, ծերունի ոմն որ ի մանկութենէ սկսեալ ամեն ապստամբութեանց մէջ գտնուած էր եւ խիտ առ խիտ սպիներ ունէր մարմնոյն վրայ։ Մօսքուայի սլաւական մասնաժողովն 18 թնդանօթ, 6,000 համազգեստ,



ԶՕՐԱՊԵՏ ՍՔՕՊԷԼԵՎ

Բրուսիոյ մէջ գնուած 20,000 հրացան Շասփոյի դրութեամբ եւ 1,600,000 փամփուշտ ղրկեց ։ Կամաւորաց համազգեստն ռուսականին պէս ձեւեալ էր, միայն թէ գոյնը սեւ՚էր։ Ռուս զինուորաց փեղոյրին տեղ պուլղարական գլխանոց կամ գալփագ կը կրէին Աժտէրխանի մուշտակի նման գանգրամազ օդենիէ , վրան կանաչ չուխայով , վասն զի կանաչն իրենց ազգային գոյնն է։

Ռուսիոյ խորերէն Սամարա քաղաքն դրօշ մը ղրկեց սոցա, եւ քաղաքապետն ինքնին Ռումանիա եկաւ՝ պայն լէգէոնին

մատուցանելու համար։ Սոյն ազգային դրօշն, որոյ մէկ կողմն Իվերսքայա կուսին պատկերը կար եւ միւս կողմը Պուլղարաց Կիւրեղ եւ Մէթօտիոս անուանեալ սրբոց պատկերները նկարուած էին, հանդիսաւոր կերպիւ դրօշակային վրայ բեւեռեցաւ մայիսի 18ին։ Նոյն ինքն Նիքօլա մեծ դուքսն այս արարողութեան նախագահեց, եւ բան մը զանց ընել չուզուեցաւ՝ զայն վսեմ եւ մեծահռչակ ընելու համար Պուլղարիոյ մէջ։ Խազախներուն գլխաւորն այն է Ֆօմին զօրավարն, Նէփօքօյչիցքի զօրապետն, եւ միով բանիւ բոլոր սպայակոյտն ներկայ գտնուեցան սոյն հանդիսին։

«Երբ ըստ կարգի արարողութեան, կ'ըսէ Ռուսիոյ Պաշտօնական լրաբերն, դրօշը բնոյն բեւեռելու ժամանակն եկաւ, Սամարայի քաղաքապետն Քօժէմնիքով՝ պնակի մը վրայ դրուած մուրճ մը եւ բեւեռներ մատոյց Նորին Բարձրութեան։ Բանակին ընդհանուր հրամանատար Մեծ դուքսն երեք անգամ խաչ հանելով՝ առաջին երեք բեւեռները մխելու բարեհաճեցաւ, մին՝ վերի ծայրն, միւսը՝ մէջ տեղն, եւ երրորդը՝ վարի կողմն. յետոյ մուրճն իւր օգոստափառ որդւոյն տուաւ։ Նորին Կայսերական Բարձրութիւնն՝ Նիքօլա Նիքօլայեվիչի որդին բեւեռին զարնելէն յետոյ, իւրաքանչիւր հանդիսական եւս մէկ մէկ հատ մխեց հետեւեալ կարգաւ. Նախ՝ Թիկնապահ (եավէր) Նէփօքօյչիցքի զօրապետն, ապա կազմուելու վրայ գտնուող եւ արդէն կազմեալ պուլղար ազգային զօրաց գնդին հրամանատար Սթօլիէթով հարուածապետն, սահերուն եւ տրուժինաներուն հրամանատարներն եւ պուլղարական սպայակուտին գլուխն։ Յետոյ Նորին Բարձրութիւնն բարեհաճեցաւ Ցէքօ Փէթքով վօյվօտը կանչելու, եւ մուրճն անոր տուաւ։ Վօյվօտն խաչ հանեց, եւ ծունր չոքելով գոչեց. «Ո՛վ տէր Աստուած, այս « ժամը թող բարեպատեհ լինի։ Ո՛վ Աստուած Ռուսաց, օգնէ մեզ յաջողու- « թեամբ ի գլուխ հանելու դարուս սոյն « ձեռնարկութիւնն։»

«Յետոյ կարգն եկաւ Սամարա քաղաքէն ղրկուած պատուիրակներուն, խոստովանահայր Ամֆիլօկիի եւ Փէթկօ վարդապետներն (արշիմանտրիթ), Քիշնէվի պուլղար հասարակութեան նախագահ՝ Ե. Ս. Իրանով եւ տեղացի Պուլղարաց պատգամաւորութեան գլուխ՝ Յովհաննէս Քօթլէնըսթեի մէկ մէկ բեւեռ գամեցին։ Նորին Բարձրութիւնն այս առթիւ Քօթլէնսթեին ըսաւ. «Աստուած տայ որ շուտով մեր « ձեռնարկութիւնն յամբոկ հանեմք այն- « պիսի կերպիւ մը՝ որ ձեզ համար բարե- « յաջող լինի։» Յետոյ իւրաքանչիւր տրուժինայէն մէկ մէկ պուլղար կամաւոր բեւեռ մը մխեց։ Հուսկ ուրեմն վերջին բեւեռը զարնուեցաւ դրօշակրին ձեռօք, որ 3րդ տրուժինայէն երկրորդական սպայ մ'է Մարչէնքօ անուն։

«Ընդհանուր հրամանատար Բարձրաշուք մեծ դուքսն դրօշին փողպատաձեւ զարդ մը կապեց, ապա վեր առաւ դրօշն եւ Սթօլիէթով զօրավարին տուաւ, որ մեր կանոնագրութեան պատուիրանացն համեմատ ծունր չոքեր էր զայն ընդունելու համար։ Զօրավարն այսպէս ծունր չոքած ժամանակ՝ Ամֆիլօկիի վարդապետն աղօթք կարդաց դրօշին վրայ՝ յաղթութիւն հրաւիրելու համար, եւ օրհնեալ ջրով ցօղեց զայն։ Յետոյ Նորին Բարձրութիւնն դրօշը Սթօլիէթով զօրավարին ձեռքէն առաւ եւ դրօշակրին յանձնեց իւր ձեռամբ։»

Մեծ դուքսն այն ժամանակ դէպ ի տրուժինաները դառնալով՝ ըսաւ. «Իմ խնդակցութիւնս կը յայտնեմ ձեզ, որդեակք, յուսամ որ դիւցազնաբար պիտի կռուիք այս ծալ ի ծալ դրօշին ներքեւ եւ ձեր եղբայրները Տաճկաց ծառայութենէն պիտի ազատէք։» Զինուորք անդրադարձութիւն ըրին խլացուցիչ կայթիւններով, եւ իրենց գլխանոցներն վեր նետեցին շատ բարձր օդոյն մէջ։ Յետոյ

*միահամուռ եւ կանոնաւոր կերպիւ անցք մ'ըրին, որմէ յայտնի եղաւ թէ մեծ եռանդով կ'ուսանէին իրենց արուեստն։*

*Յուլիսի առաջին օրերն Պուլղարաց լէգէոնն անցաւ Զիմնիցայի կամրջէն եւ Պուլղարիա մտաւ ։ Բանակին յետակողմը գործելու, կարաւաններուն ուղեկցելու եւ քաղաքաց մէջ պահպանութիւն ընելու պաշտօնն ասոնց պիտի յանձնուէր ։ Բայց պատերազմն սկսելէն յետոյ, այս գունդը կարող համարուեցաւ աւելի օգտակար գործ տեսնելու։ Թէեւ ռուսական կառավարութիւնն միշտ յայտարարած է թէ ապստամբութիւններէ օգուտ քաղելու դիտում չունի, սակայն գլխաւոր հրամանատարին կողմանէ սոյն լէգէոնին յատկացեալ գործն՝ շատ կը նմանի ապստամբութիւն հանելու պաշտօնի մը ։ Տաճկաց ծայրայեղութիւններէն վհատեալ պուլղար հասարակութեան բարոյականը բարձրացընելու եւ խրախոյս տալու, ինչպէս նաեւ իր օրինակաւն Տաճկաց դիմադրել ուսուցանելու համար՝ այս գնդին բանակին առջեւէն երթալու հրաման առաւ։*

*Յառաջագոյն լէգէոնին յատկացեալ գործն այն պուլղար ազգապահ զօրաց յանձնուեցաւ յետոյ, զորս Ռուսք Պուլղարիոյ մէջ գումարեցին ։*

---

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԱՂԷՔՍԱՆԴՐ ԿԱՅՍԵՐ

*Պուքրէշի մէջ հաստատուած պուլղարական մասնաժողով մը ապստամբութեան հրաւէր կարդաց Պուլղարիոյ մէջ՝ Տաճկաստանի դէմ պատերազմ հրատարակուած օրն։ Մայիս 7ին՝ այս մասնաժողովն ուրիշ յայտարարութեամբ ազգային առժամանակեայ կառավարութիւն մը ձեւացաւ ինքնին եւ հասարակութիւնն հրաւիրեց որ հնազանդի ինքեան .*

*«Ժողովուրդ Պուլղարաց, դու պիտի հաստատես քու կառավարութիւնդ։ Բայց առ այժմ հնազանդէ ազգային առժամանակեայ կառավարութեան, զոր հայրենասէրք հաստատեցին ։ Այս կառավարութիւնն ընդհուպ քու մէջդ պիտի գըտնուի եւ քու կամօքդ պիտի գործէ ։ Այլ այժմ ռումանական երկրէն կը գոչէ առ քեզ . Ո՛ն, յառաջ, Պուլղարք։ Ընդ մեզ է Աստուած, ընդ մեզ են Ռուս եղբարք ։*

*Արարեալ ի Ռումանիա, 7 մայիս 1877*

ԶԱՆԿՈՎ, ՓԱՆՈՎ, ԷՆՁԵՎ, ԻՎԱՆՈՎ, ՎԻՍԹՕՎԱՔԻ,
ՍԹԱՄՊՕԼՈՎ, ԹԱՎԻԼԻՔՋԻԺԵՎ, ՎԱՁՈՎ:

*Անկարելի էր որ այս յեղափոխական գործոց Ռուսիա իւր հաւանութիւնը տար, որ թէեւ մեծ համակրութիւն ունէր մասնաժողովոյ այլ եւ այլ անդամոց վրայ, սակայն երբէք հոգ տարած չէր նոցա ինքնասատաց իշխանութեան համար ։*

*Զիմնիցայի մօտէն Ռուսաց Դանուբն անցնելու օրն, այն է յունիսի 28ին, նոյն ինքն Աղէքսանդր կայսրն յայտարարութիւն մը հրատարակեց, որ միշտ նշանաւոր պիտի մնայ, զի այնու կըսկսի նոր դարագլուխ մը պալքաննեան ցամաքակղզւոյն ժողովրդոցն համար, եւ անոր մէջ նախագծեց այն բարենորոգմունքն, զոր ինքն կը կամէր Պուլղարիոյ մէջ մուծանել ։*

*Ահաւասիկ սոյն կարեւոր յայտարարութեան օրինակն.*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԿԱՅՍԵՐ ՌՈՒՍԻՈՅ ԱՌ ՊՈՒԼՂԱՐՍ

*«Զօրքս Դանուբն անցաւ . այսօր ձեր երկիրը կը մտնէ, ուր արդէն քանիցս անգամ պատերազմած է պալքաննեան ցամաքակղզւոյն քրիստոնեայ բնակչաց վիճակին բարելաւութեան համար ։*

*«Ռուսիա իւր նախկին պատմական աւանդութեանց հաւատարիմ մնալով՝ եւ ուղղափառ ժողովրդեան հետ ունեցած դարաւոր եւ սերտ միութենէն նոր զօրութիւն առնլով միշտ, կարող եղած էր իւր ազդեցութեամբ եւ զինուք ապահովել հետզհետէ Սերվիացւոց եւ Ռումանիացւոց վիճակն՝ նոր աշխարհավարական կենօք ապրելու կոչելով զայնս ։ Ժամա-*

նակն եւ պարագայք չփոխեցին Ռուսիոյ այս համակրութիւնն իւր արեւելեան կրօնակցաց վրայ. ինքն միշտ միեւնոյն սէրն եւ հոգածութիւնն ունի պալքաննեան ցամաքակղզւոյն մեծաթիւ քրիստոնեայ հասարակութեան բոլոր անդամոց վրայ ։

«Իմ եղբօրս՝ Նիքոլա մեծ դքսին հրամանատարութեան ներքեւ՝ բանակիս պաշտօն յանձնուեցաւ յինէն՝ ապահովել ձեր ազգութեան նուիրական իրաւունքն, որք քաղաքական գոյութեան մը խաղաղ եւ կանոնաւոր կերպիւ զարգացման անմիջական պայմաններն են. այն իրաւունքն՝ դուք ոչ թէ զօրութեամբ եւ զինու դիմադրութեամբ ստացած էք, այլ դարաւոր տառապանօք եւ այն մարտիրոսական արեան շնորհիւ, որով դուք եւ ձեր նախահարք հայրենի յատակը կը ներկէք դարերէ ի վեր ։

«Բնակիչք Պուլղարիոյ, Ռուսիոյ նպատակը շինել է եւ ոչ թէ աւերել. Նախախնամութեան վճռովը կոչուած է նա խաղաղելու եւ հաշտեցնելու բոլոր ցեղերն եւ կրօններն Պուլղարիոյ այն մասանց մէջ, ուր տարբեր ծագումն եւ հաւատք ունեցող բնակիչք կ'ապրին։ Այսուհետեւ իւրաքանչիւր քրիստոնեայ ռուսական զինուք պիտի պաշտպանուի ընդդէմ ամենայն բռնութեանց. իւր անձին եւ ընչից դպչողն ո՛ ոք եւ իցէ անպատիժ չպիտի մնայ, ամեն յանցանաց ետեւէն պատիժը պիտի հասնի. բոլոր բնակչաց կեանքն, ազատութիւնն, պատիւն եւ ստացուածքն ապահովեալ պիտի լինին հաւասարապէս՝ առանց կրօնքի նայուելու. վրէժխնդրութիւնը չպիտի առաջնորդէ մեր գործոց. անաչառ արդարութեան զգացումը միայն թելադիր պիտի լինի մեզ յայսմ։ Հաստատակամք ունիմ հետզհետէ բարեկարգութիւն եւ իրաւունք ածելու փոխանակ կամայական անկարգ իշխանութեան ։

«Եւ ձեզ, ո՛վ մահմետականք Պուլղարիոյ, փրկարար խրատ մը կուտամ։ Դժուար է ինձ զարթուցանել այն եղերանց եւ բռնութեանց յիշատակն, զորս ձեզնէ շատերն գործեցին անպաշտպան քրիստոնէից վրայ։ Անկարելի է որ այն խժդժութիւնք անյուշ լինին. բայց ոմանց ձեռօք գործուած յանցանաց համար զձեզ ամենքդ պատասխանատու չպիտի բռնէ ռուսական իշխանութիւնն։ Կանոնաւոր եւ անաչառ արդարութիւն մը այն յանցաւորներն եթ պիտի հարուածէ որք անպատիժ մնացած են, թէ եւ իրենց անուանքն կատարելապէս ծանօթ էին ձեր կառավարութեան. այսօր աստուածային արդարութիւնն ձեր վրայ կը հասնի. խոնարհեցէք աստուածային կամաց առջեւ. հնազանդեցէք այն օրինաւոր պահանջմանց, զորս պիտի ընեն իմ զօրացս ձեռօք գրաւեալ տեղեաց մէջ հաստատուելիք իշխանութիւնք։ Խաղաղ քաղաքացիներ եղիք այնպիսի ընկերութեան մը մէջ, որ պատրաստ է ձեզ շնորհելու կանոնաւոր կազմաւորութեան մը բարիքն։ Ձեր գոյութիւնն, ինչքն, կեանքն, պատիւն եւ ընտանիքն նուիրական պիտի լինին մեզ համար ։

«Քրիստոնեայք Պուլղարիոյ, մահմետականաց կամայական իշխանութենէն փրկուելու նշանաւոր օրերը կ'անցընէք դուք այժմ։ Քրիստոնէական սիրոյ օրինակը տուէք համայն աշխարհի։ Ներքին հին գժտութիւնքն անյուշ ըրէք ։ Իւրաքանչիւր ազգութեան արդար իրաւունքն խղճմտօք յարգեցէք։ Ձեր կրօնակից եղբարց հետ կապուեցէք միաբանութեան եւ եղբայրական սիրոյ զգացմամբք, որք միայն՝ երկարատեւ շէնքի մը ամուր հիմունքն են։ Ռուսական դրօշին հովանւոյն ներքեւ սեղմուեցէք, որոյ յաղթութիւնքն քանիցս Դանուբի վրայ եւ Պալքանաց մէջ հռչակուեցան ։

«Քանի որ Ռուսք դէպ ի ներսերն ընթանան, հետզհետէ տաճկական իշխանութեան տեղ կանոնաւոր կազմակերպութիւն մը պիտի հաստատուի, որում իսկոյն պիտի մասնակցին եւ գործակցին բնիկք՝ մասնաւոր իշխանութեանց բարձր վարչութեան

ներքեւ, եւ Պուլղարաց նոր լէգէոններն սկզբնատարր պիտի լինին այն տեղական զօրութեան, որ բարեկարգութիւնն եւ ապահովութիւնը պիտի պահպանէ ։

«Հայրենեաց պատուաւոր կերպիւ ծառայելու համար ունենալիք փոյթերնիդ եւ ձեր պաշտօնը կատարելու համար ցոյց տալիք անաչառութիւննիդ պիտի ապացուցանեն աշխարհի թէ դուք արժանաւոր էք այն վիճակին, զոր Ռուսիա պատրաստած է այնքան մեծամեծ զոհողութեամբ տարիներէ ի վեր ։ Հնազանդեցէք ռուսական իշխանութեանց. հաւատարմաբար հետեւեցէք նոցա թելադրութեանց. ձեր զօրութիւնն եւ փրկութիւնն յայն պիտի լինին։ Խոնարհութեամբ կը խնդրեմ ի Տեառնէ յաղթութիւն շնորհել մեզ քրիստոնէութեան թշնամեաց դէմ եւ իւր օրհնութիւնն հեղուլ մեր արդարացի դատին վրայ ։»

Հասարակութեան մէջ մեծ յուզմունք պատճառեց այս յայտարարութիւնն։ Ռուսիոյ բարեկամ լրագիրք կարծիք յայտնեցին թէ կայսեր հանրածանօթ զգացմանց համաձայն էր այն, եւ Եւրոպայի համար անակնկալ բան մը չէր պարունակեր ։ Ոչ սլավութեան եւ ոչ համասլավութեան ակնարկութիւն եղած էր, այնպէս որ երկիր գրաւելու գաղափարի մը նշմարանքն անգամ չկար անոր մէջ։ Ընդհակառակն անգղիական լրագիրք, որք առ հասարակ համակիր չեն Ռուսիոյ համար, քիչ մ'իրարանցում պատճառելու ելան ։ Պուլղարիոյ ներքին վարչութեան վերաբերեալ մասն մանաւանդ դպաւ իրենց ։ «Պուլղարական ինքնօրէնութիւն մը պիտի լինի, կ'ըսէր Փէլ-Մէլ Կազէթն, որ ռուսական հսկողութեամբ պիտի չափաւորի եւ ռուսական դրամամբ պիտի ապահովուի։ Աստ ռամկօրէն «Ռուսական Պուլղարիա» կ'ըսուի։»

Ջէրքասքի իշխանն Պուլղարիոյ ընդհանուր կառավարիչ անուանեցաւ ։ Այսպիսի ընտրութիւն մը բաւական էր ցոյց տալու թէ Ռուսք ինչպիսի արմատական փոփոխութիւններ ընելով պիտի գործէին։ Սոյն համբաւաւոր անձն, որ Ռուսաց ազգային կուսակցութեան խիստ հաճելի էր իբրեւ մեծ հայրենասէր մը եւ իբրեւ առաջին կարգի վարիչ մը, եւ արիւնռուշտ Մուրավիեվի պէս ատելի էր այլոց, 15րդ դարու եգիպտական Սուլթանէ մը սերեալ եւ Ռոմանովներուն կայսերական տոհմին հետ ազգակցեալ էր։

Պուլղարիոյ մէջ ռուս զօրաց ոտք դնելէն շատ առաջ ընտրուեցաւ նա՝ այն երկիրը կառավարելու համար ։

Զիշթօվի գրաւմանէն անմիջապէս յետոյ՝ իշխանն այն տեղ գնաց եւ գործի ձեռնարկեց։ Պարոն Կէրով քաղաքին կառավարիչ անուանեցաւ ։ Սա ի ծննդենէ Պուլղար մ'է, բայց Ռուսիոյ հպատակ ըլլալով՝ 20 տարի հիւպատոս եղած էր Ֆիլիպէի մէջ, ուր ամենուն յարգելի ընծայած էր ինքզինքն ։ 1876 ին Պուլղարիոյ խռովութեանց ժամանակ՝ Դուռն Պ. Կէրովի ի ծննդենէ Պուլղար լինելուն նայելով՝ անոր Ֆիլիպէի մէջ հիւպատոսանալն իբրեւ թշնամանք մը համարեց. բայց Պ. Կէրով իւր ուղղութեանը վրայ վստահ լինելով՝ այն ժամանակ միայն պաշտօնէ քաշուեցաւ, երբ բացուած քննութիւնն աւարտեցաւ ։

Պ. Կէրովէն ոչ նուազ ծանօթ անձ մը՝ այն է Պ. Տրական Ջանքով կառավարչի փոխանորդ անուանեցաւ։ Այս մարդը բարի, կատարելապէս ուղիղ եւ համեստութեան մասին հազուագիւտ է. իւր հայրենակցաց ըրած ծառայութեանը համար սիրելի եղած է անոնց ։ Պ. Ջանքով ուսուցիչ էր ։ Նախակրթական ուսմունքն ծաւալելու համար եղած այն մեծ շարժման մէջ, յորում հարկ է ըսել թէ Տաճկաստանի Հայք եւ Յոյնք քսան տարիէ ի վեր իրարու հետ կը մրցին, Պուլղարք՝ որ ամենէն յետոյ սկսան, ամենէն աւելի փոյթեռանդն եւ բարենախանձ աշխոյժ ցոյց տուած են ։ Իրենց ուսուցիչներն Պալքաններուն խորը ծածկուած գիւղե-

քուն մէջ ընթերցարաններ անգամ բացած են։ Պ. Զանքով ամենամեծ գործունէութեամբ աշխատած է Պուլղարաց դպրոցներուն կազմաւորութեանը։ Ազգին թշուառութիւնքն եւ տրտունջներն եւրոպական այլեւայլ դաշլիճներուն յայտնելու ղրկուած էր իւր հայրենակցաց կողմանէ 1876 ին ։ Պ. Կէրովի եւ Տրակոն Զանքովի հրամանաց ներքեւ՝ ռուս հետեւակազօրաց հազարապետ Փօտկուրսքի՝ ոստիկանութեան տեսուչ անուանեցաւ Զիշթօվի մէջ ։ Նիքօլա մեծ դքսին ձեռամբ ընտրեալ սոյն բոլոր պաշտօնատարաց անուանումն հասարակութեան ծանուցուեցաւ փաշային ապարանից մէջ, որ կառավարչին բնակարանն եղած էր։ Հանդիսաւոր պատարագ մը յետոյ՝ Պուլղարիոյ գործոց վերատեսչի փոխանորդ Անուչին զօրավարն նոր պաշտօնատարները զետեղեց ։

Տաճկաց հետզհետէ ետ քաշուելուն վրայ՝ Չէրքասքի իշխանն իւրաքանչիւր գաւառի մէջ նմանօրինակ վարչութիւն մը հաստատեց։ Կառավարչի պաշտօնն՝ ինչպէս նաեւ թղթատարութիւնն , հեռագիրն եւ ոստիկանութիւնն Ռուսաց ձեռքն յանձնուած էր, բայց վարչական ուրիշ պաշտամանց համար՝ կարելի եղածին չափ Պուլղարներ կ՚ընտրուէին։ Պաշտօնատար գտնելու մասին բաւական դիւրութիւն կար. երկրին մէջ բնակող մէկ քանի նշանաւոր անձերէն զատ՝ Ռումանիոյ մէջ բազմաթիւ գործակալներ կային, այսինքն Պուլղարաց ամենէն խելացի մասն , որ աքսորեալ լինելէ յետոյ՝ ուրիշ բանի չէր փափաքեր , բայց եթէ իւր հայրենիքը դառնալով անդ ծառայելու։ Եւրոպայի այլեւայլ քաղաքներէն ուսանողները վազեցին եկան՝ իրենց ստացած հմտութիւնն ազատեալ հայրենեաց օգտակար ընելու համար։ Փէթէրսպուրկի մէջ բաւական բազմաթիւ ուսանողներ կային Ռուսիոյ ծախիւք կրթուած, յիսուն Փրակայի մէջ կը գտնուէին եւ հարիւր հոգւոյ չափ Փարիզի մէջ ։ Թռնօվայի կառավարիչ եղաւ Պ. Պալապանով, որ 1876 ին Եւրոպայի մէջ Պ. Զանքովի պաշտօնակից եղած էր։ Պուլղարերէնը պաշտօնական լեզու եղաւ նոր վարչութեան համար. Չէրքասքի իշխանն փոյթ ունեցած էր զայն ուսանելու կառավարիչ լինելէ յառաջ ։

Երբ Ռուսք Պալքաններն անցան, ընդհանուր կառավարչին վերջնական բնակութիւնն եղաւ Թռնօվա , Պուլղարաց երկրորդ կայսրութեան նախկին մայրաքաղաքն, եւ այնուհետեւ կառավարիչն փոյթ եռանդն ջանիւք զբաղեցաւ այն բարենորոգմունքը գործադրելու, որք նոր ազատեալ ժողովրդեան մը պիտանի են ։

Զինուորական ծառայութենէ զերծ մնալու համար քրիստոնեայներէն առնուած եւ պէտէլիէ կոչուած տուրքը ջնջեց նախ, եւ զինուորական ծառայութիւնը պարտաւորիչ ըրաւ։ Այս որոշումն սկսաւ անմիջապէս գործադրուիլ, եւ ազգապահ զօրաց բանակ մը կազմուեցաւ որ յառաջագոյն պուլղարական լէգէոնին յատկացեալ պաշտօնն ընկալաւ, այսինքն թէ անոր յանձնուեցաւ ներքին ոստիկանութիւնն եւ այն այլեւայլ գործերն՝ զորս բանակի մը յետակողման մը վրայ ընել պէտք կը լինի, եւ որոց համար զինուորական մեծ կրթութեան մը հարկ չկայ ։

Տաճկաց վարչութեան ներքեւ պուլղար ժողովուրդն ինն տեսակ տուրք կը վճարէր, աշար (տասանորդ) վէրկի, պէտէլիէ եւն։ Չէրքասքի իշխանն, ինչպէս արդէն ըսուեցաւ, վերցուց պէտէլիէն, միւսները նուազեցուց, եւ որոշեց որ 1878էն սկսեալ տասանորդի տրոց տեղ կալուածական կանոնաւոր տուրք մը դրուի։ Ռուսական իշխանութեանց յանձնուեցաւ 1877 ի տասանորդն հաւաքել, եւ վարձակալաց արգիլուեցաւ այս բանն ընել եւ կամ արդէն հաւաքուած տասանորդներն այլուր փոխադրել գտնուած տեղերնուն։ Հակառակ վարուողն թէ անձամբ եւ թէ գոյքովն պատասխանատուութեան ներքեւ պիտի մնար ։ Հնձոց ժամանակ իբրեւ տասանորդ առնուած բերքն խիստ օգտա-

կար եղաւ բանակին պարենաւորութեան համար։

Բայց Չէրքասքի իշխանին ձեռօք կատարուած ամենէն կարեւոր բարենորոգումը կալուածոց մասին եղածն էր։ Իշխանը ծրագիր մը պատրաստեց որով մահմետական մեծ կալուածատեարց ինչքը կը կապտէր, փոխարինական հատուցում մը սահմանելով՝ յիսուն տարուան մէջ վճարելու պայմանաւ։ Այս հատուցման վերաբերեալ դրամական կարգադրութիւնն ի լոյս չելաւ. բայց կարելի էր ենթադրել թէ կապտեալ կալուածատեարց համար նպաստաւոր չէր։ Այս ալ կայ որ կալուածատեարց համար դժուարին կը լինէր իրենց գոյքն պաշտպանել եւ իրենց իրաւունքը ցուցանել։ Գրեթէ ամենքն ալ փախան ռուս զօրաց առջեւէն, աշխարհակալութեամբ իրենց նախնեաց ստացած բաները թողլով՝ որ ուրիշներն առնուն աշխարհակալութեամբ, եւ այս կերպիւ մեծապէս դիւրացնելով ռուսական վարչութեան գործը։ Ստոյգ է որ Պուլղարք սոսկալի անգթութիւններ գործեցին։ Այս անգթութիւնքն տաճիկ հասարակութեան մէջ ահ ու սարսափ ձգելով եւ խմբովին փախչելու պատճառ տալով, Չէրքասքի իշխանին խորհրդոցն այնպէս նպաստաւոր կը լինէին որ շատերը կ'ըսեն թէ Ռուսք այս մասին թոյլտուութիւն ըրած են Պուլղարաց եւ մինչեւ անգամ ձեռքի տակէ զանոնք գրգռած։

Փէթէրսպուրկի ռուսական լրագիրն կամ ժուռնալն պարզմտութեամբ կը խոստովանի Տաճկաց փախչելուն վրայ զգացած զուարճութիւնն, ըսելով թէ՝ «Ցաւելու չէ, եթէ Պուլղարիոյ մահմետական հասարակութիւնն խոյս կուտայ՝ եւ կը հեռանայ այն երկրէն որոյ քաղաքակրթութեան մասին օգուտ մ'ունեցած չէ դարերէ ի վեր։ Փոխանակ սանձելու զայս, կը յարէր, պէտք է դիւրացնել մահմետականաց սոյն փախուստը, որով մեծապէս կը դիւրանայ Պուլղարաց կալուածական կազմաւորութեան գործն եւս։»

Վիէննայի Փրէս լրագիրն որ Ռուսաց նպաստաւոր թերթ մ'է, հետեւեալ կերպիւ կը գնահատէր այս խիստ գրութիւնն։ «Ռուսաց պատերազմելու եղանակն ցոյց կուտայ թէ Պուլղարիոյ մէջ իրենց գործը կիսատ չպիտի թողուն, թէ քրիստոնէից ազատութեան խնդիրն լուծելու կը նային ամենէն պարզ եւ ընդարձակ սկզբանց համեմատ, այսինքն թէ առաւել կամ նուազ անգթութեամբ պիտի ջանան մահմետականները Պուլղարիայէն վանելու, որպէսզի կարենան ընդհուպ նահանգին քրիստոնէական կազմակերպութիւն մը տալ։ Քաղաքական տեսութեամբ խիստ գործնական, սակայն ոչ այնչափ մարդասիրական գրութեան մը սկիզբն է այս, եւ շատ հաւանական չէ որ ռուսական բանակին վարչութիւնն կասի իր բռնած ճանապարհին մէջ մէկ երկու քայլափոխ ընելէ յետոյ։ Հիմնական աշխատութիւնն, որում ձեռնարկած են Ռուսք Պուլղարիոյ մէջ եւ Դանուբի վրայ՝ հետեւելով այն սկզբան թէ նպատակն զգործ կ'արդարացնէ, պիտի կատարուի նաեւ Դանուբի բովանդակ նահանգին մէջ, եւ յետոյ Պալքաններու հարաւային կողմն եղած երկրին մէջ, որպէս զի խաղաղութիւն կնքուելու ժամանակ՝ կարելի լինի իբրեւ բանակցութեան հիմունք առաջադրել կատարուած իրողութիւններն։»

# Գլուխ Ութեւտասներորդ

## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ Ի ՊՈՒԼՂԱՐԻԱ. — ԴԱՆՈՒԲԻ ԱՆՑՔԷՆ ՄԻՆՉԵՒ ՆԻԿՈՊՈԼՍՈՅ ԱՌՈՒՄՆ

### ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԿԱՐԳ ՌՈՒՍԱԿԱՆ ԲԱՆԱԿԻՆ

*Մէկ քանի բացատրութիւններ կարեւոր են Ռուսաց կեդրոնական Պուլղարիոյ մէջ ըրած արշաւանաց տարօրինակ պատմութիւնն սկսելէ առաջ, այն արշաւանաց որ առանց պատերազմի կատարուեցաւ ։*

*Ռուսք երբ Դանուբն անցան, պատերազմի յատակագիծ մ'ունէին ։ Ի սկզբան տարօրինակ եւ զարմանալի կ'երեւի այսպիսի հարցում մ'ընելն, բայց երբ մարդ Պուլղարիոյ մէջ Ռուսաց առաջին գործողութիւններն համանգամայն աչքէ անցընէ, զարմանքը կը նուազի ։ Յատակագիծ մը կայ որ գրեթէ դասական եղած է, այն է 1828-1829 ի պատերազմին ժամանակ Ռուսաց ըրածն, որ է, Պուլղարիոյ ներսերն արշաւելէ առաջ, քառանկեան բերդաքաղաքներուն (Ռուսճուգ, Սիլիսթրէ, Վառնա, Շումնու) առմամբն՝ գործողութեանց առաջին խարիսխն ապահովել, ապա դէպ ի Պալքաններն յառաջ խաղալ, եւ այս լերանց շղթայն գործողութեանց նոր խարիսխ մ'ընել, որպէս զի անոր կարելի լինի դէպ յԱդրիանուպօլիս յառաջել ։*

*Այս յատակագիծը կը հարկադրէ երկու տարի պատերազմ մղել. առաջին տարին յոյնկոյս Պալքանաց եւ հետեւեալ տարին յայսկոյս ։ Ռուսք իւրեանց ելեւմտական անչուք վիճակէն բռնադատեալ՝ զոր երկամեայ պատերազմ մ'աւելի պիտի ծանրացնէր՝ երկար ժամանակ պարտքի տակ ձգելով զիրենք, համոզուելով նաեւ որ իրենց թուոյն առաւելութեամբն թշնամին խորտակելու կարող էին, չհետեւեցան այս եղանակին եւ աւելի շուտով յաղթութիւն մը ձեռք ձգելու աշխատեցան ։ Կ'երեւի թէ իրենց դիտաւորութիւնն էր երկիրը բազմաթիւ հեծելազօրօք լնուլ, ամեն կողմանէ թշնամին փորձել եւ տկար կէտերուն վրայ նեղի բռնել զայն, նորա պակասութիւններէն օգուտ քաղել, զինքն վհատեցնել անպաշտպան կէտերը գրաւելով եւ ամեն կողմանէ սպառնալով՝ ինչպէս նաեւ իւր հեծելազօրաց յանդուգն յառաջխաղացութեամբը զայն յապուշ կրթելով, անմիջապէս առաւելութիւններ ստանալ, որպէս զի պաշարմամբ պատերազմ ընելու չստիպուէին, միով բանիւ՝ մեծ հարուածով մը երջանիկ խաղաղութիւն մը ձեռք բերել, թէեւ յեղյեղուկ՝ այլ հիանալի յաջողութիւններով ։ Այսպիսի դիտաւորութիւն մը չէր ներեր նախապատրաստեալ յատակագիծ մ'ունենալու ։*

*Ռուսք անակնկալ դիւրութեամբ Դանուբէն անցնելով, Եանթրայի անպաշտպան ձգուած գծերուն տիրելով, Թռնովան առնլով, Պալքաններն անցնելով, եւ տեսնելով որ Կուրքօ զօրապետին գունդն օսմանեան կայսրութեան սիրտը կը թափանցէ՝ եւ կը յառաջէ Ադրիանուպօլսէն մէկ քանի ժամու հեռաւորութիւն մնալու չափ, պահ մը կարծեցին թէ պիտի կարենան յաջողիլ ։ Եւրոպա, ապշելով այնպիսի ռազմագիտութեան մը վրայ որ բոլոր կանոններէն կը շեղէր, կը հարցընէր ինքնիրեն թէ՝ կա՞յ տաճկական բանակ մը եւ թէ Զարին զինուորներն առանց պատերազմելու պիտի հասնէին մինչեւ Կոստանդնուպօլիս ։ Մէկ աւուր մէջ Ռուսճու-*



ԶՕՐԱՎԱՐ ԿՈՒՐՔՕ

դի տաճկական բանակը կարող էր մինչեւ Զիշթօվ յառաջել եւ ամենէն առաջ Դանուբէն անցնող 30-40,000 ռուս զինուորները գետամոյն ընել, որք նահանջելու համար գիծ մը միայն ունէին, այն է Թերի եւ մէկ քանի անգամ փեռեկեալ կամուրջ մը. այդ բանակը կարող էր ՝գոնէ, Եանթրայի ամուր գծերը պաշտպանել. Թռնօվան ամրացնելու էր, Պալքանները պաշտպանելու էին. սակայն այս բաներուն եւ ոչ մին եղաւ ։ Կոստանդնուպօլսոյ մէջ ահ եւ սարսափ տիրած էր. օսմանեան

կայսրութիւնն ի կորուստ մատնեալ կարծուեցաւ ։

Տաճիկներն եւս պաշտպանութեան յատակագիծ մ՚ունէին։ Աւելի դժուար է այս հարցման պատասխանել. վասն զի Ապտիւլ-Քէրիմ որ պատերազմի սկիզբներն բանակին ընդհանուր հրամանատարութիւնը կը վարէր, պաշտօնէ անկաւ առանց իր խորհուրդներն հրատարակելու ։ Բայց կը թուի թէ Պուլղարիոյ պաշտպանողական գծերուն վրայ դիմադրութեան պատրաստութիւններ չտեսնուիլն աւելի ապիկարութեան արդիւնք է քան թէ վարպետութեան։ Սակայն Տաճկաց այս պակասութիւններէն օգուտ քաղելու ժամանակ՝ Ռուսաց յանդգնաբար գործած սխալներն Տաճկաց նպաստեցին։ Շուտով տեսնուեցաւ թէ՝ յարձակման համար լաւ պատրաստութիւն չունեցող անհոգ թշնամւոյ մը դէմ անգամ՝ զինուորական գիտութեան սկզբանց հակառակ գործողն անպատիժ չմնար ։ Ռուսական բանակն 200 հազարամէթր տարածութեամբ գծի մը վրայ ցրուած էր եւ իր զօրաց մէկ մասն Պալքանաց շղթայով անջատեալ. տաճկական չորս բանակներու մէջ տեղ մնացած էր, որոց միահաղոյն զօրութիւնն գոնէ հաւասար էր իր զօրութեան, եւ որոց նպաստամատոյց կը գտնուէին առաջին աստիճանի ամրոցներ. վերջապէս խիստ տարածեալ լինելուն անբաւական եղաւ իւրմէ պահանջուած գործը կատարելու ։ Տաճիկներն իրենց գլխաւորաց անհոգութեան արդիւնքն եղող այս բաներն եթէ դիտմամբ ըրած լինէին, ասկէ աւելի նպաստաւոր կացութիւն մը չպիտի ունենային։ Զիշթօվըն մինչեւ Պալքաններն՝ Պուլղարիա ընդարձակ սարահարթ մը կը ձեւացնէ, որոյ արեւելեան կողմն է Եանթրայի անձուկ եւ խորափիտ հովիտն, եւ արեւմտեան կողմն է Օսէմ կամ Օսմա գետակն. այս սարահարթն տակաւ առ տակաւ զառ ի վեր կը բարձրանայ եւ կը հասնի մինչեւ այն լերանց շղթայն՝ որոյ ստորոտն է Թռնովա։ Դանուբին եզերքէն սկսեալ գետինն խորտաբորտ եւ ալեձեւ է, եւ Պուլղարիա անդէն ունի զուարթերեւոյթ մը. յոյժ արգաւանդ բլուրներ՝ մինչեւ ցբարձունս կանաչագեղ զարդարեալ, չքեղ ծառաստաններ, լաւ արօտներ, աստ անդ մշակուած տեղեր, որք ցոյց կուտան թէ խաղաղութեամբ եւ լաւ վարչութեամբ ինչ վիճակ պիտի ստանար բոլոր երկիրն ։

Պալքաններուն մօտ երկրին հանգամանքը աւելի ակներեւ է, հողն աւելի արգասաւոր է, արօտներն աւելի պարարտ եւ աւելի դալարազուարճ, տեսարանն աւելի նկարագեղ, ծառոց պուրակներու տեղ ուռճազարդ անտառներ կը տեսնուին բլրոց գագաթներուն վրայ՝ ջրվէժներով լի. պուլղար ժողովուրդն աւելի խուռն է եւ ոչ այնքան ապուշ եւ ընդարմացեալ ծառայագործութեամբ, վասն որոյ եւ աւելի խրոխտ ։

Ռուսաց սպայակուտին առաջին նպատակն եղաւ այս սարահարթին տիրել եւ երկու քովերն ապահովել, մէկ կողմէն Ռուսճուգի դէմ գործելու համար բանակ մը ղրկելով եւ միւս կողմէն Նիկոպօլսոյ դէմ։ Կը կարծուէր թէ Տաճիկներն Ռուսճուգի մօտ բանակ մ՚ունէին որ ստորին Եանթրայի գծերը պիտի պաշտպանէր, որոյ բանալին է Պիէլա, եւ թէ ուրիշ բանակ մը կար նաեւ Շումնուի մօտ, որ վերին Եանթրայի գծերը պիտի պաշտպանէր, որոյ բանալին է Թռնովա. Յայտնի է որ Նիկոպօլսոյ կողմն Տաճիկք ուրիշ բանակ մ՚ունէին Վիտինի մօտ, բայց կռուոյ ասպարէզէն իրաւամբ շատ հեռի կը կարծուէր այն. Այս բանակաց թուոյն վրայ առնուած տեղեկութիւնք հակասական էին. լրագիրք կը յեղյեղէին թէ քառանկեան մէջ գտնուած զօրաց մէկ տասներորդ մասը պակաս էր հիւանդութիւններէն եւ ուտելիք չգտնուելէն, եւ թէ 40,000 տաճիկ զօրք հիւանդանոցն էին ։ Ռուսք իրենց հակառակորդաց զարմացու-

ցիչ անգործութիւնն տեսնելով չափէն աւելի հաւատք ընծայեցին այս տարաձայնութեանց, որոց անհիմն լինելն յետոյ յայտնուեցաւ ։ Արդարեւ իմացուեցաւ հուսկ ապա թէ՝ գրեթէ 60,000 զօրք Ռուսճուգի մէջ կային եւ 75,000 Շումնուի մէջ ։

Ռուսք նախ առաջապահ գունդ մը կազմեցին հետեւեալ կերպիւ.

Հետեւակազօր. 4րդ սահ որսորդ զօրաց (4 վաշտ), պուլղարական լէգէոն (6 վաշտ), երկու դասակ (սօթնեա) փլաթուններու կամ Չէռնօմօրսքի (Սեւ ծովու) խազախաց (կէս վաշտ), եւ լեռնային թնդանօթաց երկու չար (14 թնդանօթ) ։

Հեծելազօր. 1°. Վիշապազօրաց մէկ սահ (7րդ դումարտակ վիշապազօրաց Աժտէրխանի եւ 9րդ գումարտակ վիշապազօրաց Քազանի)՝ ձիոյ վրայ բեռնեալ թնդանօթաց 16րդ չարոյն հանդերձ՝ ընդ հրամանատարութեամբ Ն. Կ. Բարձրութեան Եւգինէոս Մաքսիմիլիանովիչ Փոն Լայխթէնպէրկ իշխանին. կամ ութ հեծելագունդ եւ վեց թնդանօթ ։

2°. Մէկ խառն սահ՝ Ն. Կ. Բարձրութեան Նիքօլա Մաքսիմիլիանովիչ Փօն Լայխթէնպէրկ դքսին հրամանատարութեան ներքեւ, բաղկացեալ՝ Քիէվի հուսարներուն 9րդ գումարտակէն եւ Տօնսքի խազախներուն 30րդ դումարտակէն, այս խազախներուն 10րդ թնդանօթաչարոյն հանդերձ. այսինքն՝ 10 հեծելագունդ եւ հեծելագնդակ եւ վեց թնդանօթ ։

3°. Տօնսքի խազախներու մէկ սահ՝ ընդ հրամանատարութեամբ Չեռնօզուպով զօրավարին, 21րդ եւ 26րդ կանոնաւոր կամ ռազմիկ գումարտակներէն՝ Տօնի 15րդ թընդանօթաչարոյն հանդերձ. այսինքն՝ 12 հեծելագնդակ եւ 6 թնդանօթ ։

4°. Կովկասեան խազախներու մէկ սահ՝ Թուխօլիին զօրավարին հրամանատարութեան ներքեւ, բաղկացեալ Գուպանի 2րդ դումարտակէն եւ Վլատիքաւքազի եւ Օսից երկրին գումարտակէն, Տօնի լեռնային եւ ձիոյ վրայ բեռնեալ թնդանօթաց մէկ չարոյն հանդերձ. այսինքն 12 հեծելագնդակ եւ 6 թնդանօթ ։

5°. Կայսերական անձնապահ գնդէն խառն կէս հեծելագունդ ։

6°. Զինուոր ռահվիրայից մէկ ջոկատ՝ ընդ հրամանատարութեամբ գնդապետ Ռօնիքէր կոմսին, բաղկացեալ Կովկասու, Տօնի եւ Ուրալի խազախներէ, որք ճարտարապետական զօրաց գործը տեսնելու համար՝ Ճուրճէվօյի մէջ վարժութիւն առած էին, որպէս զի Պալքանաց անցքը մէջ կատարուելիք աշխատութեանց կարենան գործածուիլ ։

7°. Ուրալի խազախներու մէկ հեծելագնդակ ։

Ընդամենն 10 1/2 վաշտ, 43 1/2 հեծելագունդ (առանց հաշուելու ձիաւոր ռահվիրաներն) եւ 38 թնդանօթ (18 դաշտային, 6 լեռնային եւ ձիոյ վրայ, եւ 14 լեռնային եւ հետեւակազօրաց յատուկ) ։

Այս առաջապահ գունդն՝ որ գրեթէ ամբողջապէս հեծելազօրէ բաղկացեալ էր, պիտի կատարէր Ամերիկացւոց ռէտ կոչած բանն, այսինքն այնպիսի ձեռնարկութիւն մը որ կը կայանայ յարձակ յարձակ խաղալու թշնամւոյն երկրին մէջ, գործողութեան խարսխին հետ հաղորդակցութեանց պահպանութեան չնայելով, վասն զի այս գործին յատկացեալ գունդն արագ խաղացք եւ շրջան ընելու կարող լինելուն համար՝ մեծ դիւրութիւն ունի նահանջելու ։ Կուրքօ փոխ-զօրավարն՝ որ կայսերական անձնապահ զօրաց մէկ հատուածին հրամանատարն էր, յատկապէս Փէթէրպուրկէն կանչուեցաւ այս առաջապահ գնդին առաջնորդելու համար ։ Իր ցոյց տուած ճարտարութիւնն եւ համարձակութիւնն կատարելապէս արդարացուցին այս ընտրութիւնն ։

Նիքօլա մեծ դուքսն հետեւեալ կերպիւ բաժնեց միացեալ զօրքը.

4րդ գնդին կէսն եւ 8րդն՝ առաջապահ գնդին պիտի հետեւէին դէպ ի հարաւ,

եւ նորա գործողութեանց պիտի նպաստէին կարելի եղածին չափ։ Մեծ դուքսին բանակին կեդրոնը կազմող զօրաց հրամանատարութիւնն իրեն վերապահեց, որոց համար յոյս կար եւ հաւանական կը թուէր այն ժամանակներն՝ թէ պանծալի յաջողութիւններ պիտի ստանային։

12րդ եւ 13րդ գնդերն ձախ թեւին վրայ գործելու սահմանուած էին, եւ սոցա յանձնուեցաւ Դանուբի աջակողմեան եզերքէն իջնել, Եանթրայի գիծն անցնիլ եւ երթալ պաշարել Ռուսճուգն, այսինքն քառանկեան բերդաքաղաքներէն այն՝ որում ամենէն առաջ կը հանդիպի Զիշթօվէն մեկնելով Դանուբէն դէպ ի վար իջնող անձն։ Ցարէվիչին յանձնուեցաւ այս երկու գնդերուն ընդհանուր հրամանատարութիւնն, եւ սպայակոյտին գլուխ եղաւ Վաննովսքի զօրավարն, որ նախ 12րդ գնդին հրամանատար էր։ Այս գնդին հրամանատարութիւնն ալ յանձնուեցաւ Ցարէվիչին եղբօրը՝ Վլատիմիր մեծ դքսին։ 11րդ գունդն նախ Ռուսճուգի պաշարման պիտի երթար. բայց ապա ուրիշ գործ սահմանուեցաւ նմա այլ եւ այլ դիպաց պատճառաւ՝ զոր ընդ հուպ պիտի պատմեմք։

Մինչդեռ այն երկու գնդերն այսպէս անջատուած էին ձախ թեւը կազմելու համար, աջ կողմէն 9րդ գունդն՝ Կրիւտներ զօրավարին հրամանատարութեան ներքեւ՝ Դանուբի աջակողմեան եզերքէն դէպ ի վեր պիտի ելնէր անդր քան Զիշթօվ, եւ Նիկոպոլսոյ վրայ պիտի խաղար։ Զիշթօվն՝ ինչպէս որ արեւելեան կողմէն պաշտպանեալ է Եանթրա գետակին գծովն, նոյնպէս եւ արեւմտեան կողմէն պատսպարեալ է Օսմա գետակով, որ Եանթրայի պէս Պալքաններէն կ'իջնէ, եւ Դանուբի մէջ կը թափի Զիշթօվէն վեր եւ Նիկոպոլսէն քիչ մը հեռի։ Կրիւտներ սեպուհն պիտի տիրէր Նիկոպոլսոյ, պիտի անցնէր Օսմայէն եւ կարելի եղածին չափ հեռի պիտի մղէր արեւմտեան կողմէն՝ Օսման փաշայի հրամանատարութեան ներքեւ գտնուող եւ Վիտինէն հասնող տաճկական զօրքն։

Այս պատերազմական կարգաւ կարելի էր ապահովաբար արշաւել Պուլղարիոյ ամեն կողմն։ Ռուսք կը կարծէին թէ երկու պաշարում միանգամայն ընելու եւ դէպ յառաջ ջոկատ մը ղրկելու համար բաւական զօրք ունէին, սակայն կը սխալէին։



## ՏԱՃԻԿՆԵՐՆ ԵԱՆԹՐԱՅԻ ԳԾԷՆ ԵՏ ԿԸ ՔԱՇՈՒԻՆ

Յունիս 30 թուականաւ օրական յայտարարութեամբ մը՝ յորում առաջապահ գնդին կազմութիւնը հրամայեալ էր, պատուէր եղած էր նաեւ որ նա «խաղայ դէպ ի Թռնովա եւ Սէլվի. ջնջէ շրջակայ երկիրն եւ պատրաստէ աւելի ներսերն երթալու։ Ապա՝ գլխաւոր հրամանատարին կողմանէ հրաման տրուելուն պէս՝ յառաջէ եւ ջանայ Պալքանաց անցքը տիրելու, եւ հեծելազօրը ղրկէ Պալքանաց միւս կողմն։» Հրահանգ տրուած էր նաեւ որ «առաջապահ գնդին հսկողութեամբն՝ Պալքանաց անցից մէջ ուղիները բարւոքելու փոյթ տարուի, որպէս զի սայլերն կարենան անցնիլ։»

Մէկ քանի տարի առաջ խնդիր եղած էր Զիշթօվի եւ Թռնովայի մէջ տեղ երկաթուղի մը շինելու, որպէս զի Թռնովայի ճոխ գաւառին արտադրութեանց եւ մանաւանդ Պալքանաց հանքածուխներու համար վաճառատեղի մը բացուի. բայց այս խորհրդոյն գործադրութիւնն ետ մնաց. վասն որոյ Կուրքօ զօրավարն երկու պարզ ուղիներ ունէր Զիշթօվէն հեռանալու եւ Պալքանաց ստորոտն իջնելու համար։ Այս ուղիներէն մին Օսմայի եւ Եանթրայի հովիտներուն ջրոց բաժանման գծին վրայէն կ'անցնի, եւ 50 հազարամէթր տեղ կը ձգի՝ պարարտարօտ եւ լայնատարր սարահարթի մը վրայէն, եւ Թռնովայի մօտ միայն մէկ քանի նկարագեղ ելեւէջներ ունի, ուրկէ ուղեւորն յանկարծ կ'իջնէ Եանթրայի հովտին մէջ։ Միւս ճանապարհն

է Զիշթօվէն Թռնօվօ տանող կառուղին, որ վէտ ի վէտ ելեւէջներ ունեցող բաւական արգաւանդ դաշտի մը մէջէն կ'անցնի ։ Սորա երկայնութիւնն է գրեթէ 65 հազարամէթր ։ Այս ճանապարհն վտանգ մ'ունի. անոր վրայէն քալող ջոկատի մը ձախ կողմն սպառնալեաց ներքեւ կը գտնուի, եթէ Եանթրայի գծին երկայնութեանը՝ թշնամին զօրք շարած է . վասն որոյ եւ այն ջոկատին ձախակողմը պատսպարեալ լինելու է ուրոյն գնդաւ մը։ Տաճիկներն 1854 ին Թռնօվան պաշտպանելու փոյթ տանելով՝ գետափանց վրայ բազմաթիւ ամրոցիկներ բարձրացուցած էին, եւ Նիքօլա մեծ դքսին սպայակոյտն կ'երկնչէր թէ մի գուցէ նախորդ պատերազմին մէջ եղածին նման եւ այս անգամ յարձակողական ցոյցեր լինին դէպ ի Թռնօվա յառաջացող խմբից դէմ ։

Նիքօլա մեծ դուքսն, Տաճկաց տրամադրութեանց վրայ ճիշդ տեղեկութիւններ ստանալու համար, հրաման ըրաւ 12րդ գնդին հեծելազօրուն՝ որ զննութիւն մը ընէ դէպ ի Պիէլա։ Պիէլա Եանթրայի աջակողմեան ափանց վրայ կառուցեալ փոքր քաղաք մ'է, ուրկէ կը պարտի անպատճառ անցնիլ յարձակող խումբ մը որ դէպ ի Ռուսճուգ կը խաղայ։ Միտհաթ փաշա Դանուբի նահանգին կուսակալ եղած ժամանակ՝ քարէ գեղեցիկ կամուրջ մը շինել տուած է անդ, որոյ վրայէն Ռուսճուգի ճանապարհը կը շարունակուի եւ ապա երեք ճիւղ կը բաժնուի, մին՝ դէպ ի Զիշթօվ ( 15 հազարամէթր ), միւսն՝ դէպ ի Փլէվնա (105 հազարամէթր,) եւ երրորդն՝ դէպ ի Թռնօվա (50 հազարամէթր)։ Պիէլա այս չորս ճանապարհներուն միացած տեղը շինուած գտնուելով՝ առաջին կարգի ռազմագիտական կարեւոր դիրք մ'ունի. սորա պաշտպանութիւնն եւս դիւրին է, վասն զի Եանթրայի հովիտն անձուկ է՝ ինչպէս ըսուեցաւ, եւ շուրջը խիստ ամուր բարձրաւանդակներ կան ։

Առնոլտի զօրավարին հրամանատարութեան (1) ներքեւ հեծելազօրաց 12րդ հատուածն՝ յուլիսի 5ին Փավլօյէն կը մեկնէր, որ 12րդ գնդին զօրանիստն եղած էր, եւ մեծ շրջահայեցութեամբ յառաջ կը խաղար։ Ճանապարհն աւապար բարձրաւանդակներու մէջէն կ'անցնէր, որք սքանչելի յարմարութիւն մ'ունէին դարանակալութեանց. բայց Տաճիկք այս յարմարութենէն օգուտ քաղելու նայած չէին, ուստի սահն առանց հրացան պարպելու՝ հասաւ մինչեւ այն բարձրագոյն կէտն ուրկէ կը տեսնուի Եանթրայի հովիտն, որոյ մէջ Պիէլա գեղեցկագիր կառուցեալ է։ Ճանապարհին վրայ առնուած տեղեկութեանց նայելով՝ Տաճիկներն ձախակողմեան ափան վրայ փոքր գիւղի մը մէջ ամրացեալ էին։ Խազախներու ջոկատ մը հրաման ստացաւ խուզարկութիւն ընելու, եւ աւարառուաց սակաւաձեռն խումբ մը միայն գտաւ անդ, զորս ցիր եւ ցան ըրաւ, եւ Սթարօտուպի վիշապազօրքն Առնոլտի զօրավարին առաջնորդութեամբ արշաւասոյր խոյացան դէպ ի Պիէլա։ Կամրջին վրայ պուլղար հասարակութիւնն զիրենք դիմաւորելով, կանգառին եւ եռանդագին ընդունելութիւն մը գտան։ Զօրավարն համբուրեց այն խաչն զոր քահանայն առ ինքն կը կարկառէր, եւ խեղճ բնակիչք ինքզինքնին ազատեալ տեսնելով ուրախութենէ լացին։ Նոյն պահուն Ախթիրի հիւսարներն՝ որ Պիէլայէն վեր գետափանց վրայ զննութիւն կ'ընէին, Չէրքէզներուն հետ կռուի բռնուեր էին, յորում սպայ մը վիրաւորուեցաւ ։

Քաղաքին մէջ այլ եւս տաճիկ զինուոր մը չէր գտնուեր, բայց տակաւին հարկ էր բարձրաւանդակները գրաւել։ Զօրավարն՝ Սթարօտուպի վիշապազօրաց մէկ հեծելադան յառաջ վարեց՝ հանդերձ արձակամարտ զօրօք, որ սուիններն հրացաններուն ծայրն անցուցած՝ բարձրաւանդակներէն վեր ելան, եւ անդ գտնուած մէկ քանի Տաճիկները վանելու համար իրենց

(1) Առնոլտի զօրավարն ֆոն Տրիզէն սեպուհին յաջորդեր և այս հրամանատարութիւնն առեր էր ։

երեւան գալն բաւական եղաւ ։ Այսպէս առնուեցաւ սորին Եանթրայի գիծն, որը տիրելու համար արիւնաուշտ ճակատամարտ մը հարկ էր տալ ըստ մարտագիտաց կարծեացն. բայց Ռուսք եւ ոչ մէկ զինուոր կորուսին տաճիկ զօրավարաց ապիկարութեան պատճառաւ։ Ռուսաց ձախակողմն այսպէս առանց կռուոյ պատսպարուեցաւ, եւ Կիւրքօ զօրավարն կրցաւ այնուհետեւ անվտանգ դէպ ի Թռնովօ խաղալ ։

Առնօլտի զօրավարն իւր զօրքը բարձրաւանդակներուն վրայ բանակեցուց եւ ամրացուց։ Մտատանջութիւն մ՚ունէր սա, կարծելով թէ Տաճիկներն իրեն որոգայթ լարելու համար ետ քաշուած էին, զի չէր կրնար անոնց մեկնելուն պատճառն հասկանալ։ Իւր զօրքն թէպէտ բաւական էին զննութեան համար, սակայն չէին բաւեր Պլեւնայի պէս դիրք մը պաշտպանելու, եւ զօրավարն ամեն վայրկեան երկիւղ ունէր թէ Տաճիկներն իւր վրայ կը յարձակին ։

Ամսոյն 6ին տաճիկ զօրաց խուռն բազմութիւն մը նշմարեց իւր դիմաց, եւ միտքը դրաւ որ եթէ իւր սախրմամբ խնդրած օգնական զօրքն երեկոյին չհասնէր, աջակողմեան եզրէն պիտի մեկնէր, Տաճկաց զօրքէն Եանթրա գետակով բաժնուած լինելու համար ։ Ասկէ կը տեսնուի թէ որչափ դիւրին էր Տաճկաց համար Պլեւնան վերստին գրաւել, բայց Տաճիկներն անշարժ մնացին, եւ երեկոյեան հինգերորդ ժամուն հետեւակազօրաց 33րդ հատուածին մէկ մասն հասնելուն վրայ՝ Առնօլտի զօրավարն բոլորովին ապահով եղաւ ։

Այս խումբն անցաւ Պլեւնայէն եւ հեծելազօրուն քով եկաւ բանակեցաւ բարձրաւանդակաց վրայ ։ Քաղաքին մէջ պահապան զօրք չձգուեցաւ, եւ մէկ քանի ետ մնացող զինուորներ առանց պատժոյ երկիւղի աւարառութիւն ընելու առիթ գտնելով՝ մեծ անկարգութիւններ գործեցին։

Մէկ քանի օր հեծելազօրն յաճախ կռիւներ ըրաւ Պլեւնայի շրջակայքն ապատակող Չէրքէզներուն հետ, բայց տաճիկ զօրաց ստուար մասն բնաւ ցոյց մը չընելով նահանջեց շուտով։ 12րդ դնդին հետեւակազօրն քիչ քիչ Պլեւնայի մէջ խմբուեր էր, եւ յուլիսի 9ին հրաման տրուեցաւ դէպ ի Ռուսճուգ խաղալու ։ Խմբին յառաջակողմը լրտեսելու պաշտօն ունեցող հեծելազօրն Պլեւնայէն քիչ հեռի ճանապարհին վրայ հանդիպեցաւ Տաճկաց մէկ ստուար ջոկատին՝ որ հետեւակ, թնդանօթաձիգ եւ ձիաւոր զօրքերէ բաղկացեալ էր։ Չէրքիսալով գումարտակին հրամանատարութեան ներքեւ Ղազախներու 12րդ գումարտակն առաջին անգամ ընդհարեցաւ Տաճկաց հետ։ Սոցա հեծելազօրն յամր կերպիւ կը յառաջէր . Ղազախներն արշաւասոյր խոյացան նորա վրայ ուժգին կերպիւ. Նիզակներն եւ թրերն զիրարկեցան եւ շփշփեցան. Տաճիկք տեղի տուին, բայց Ղազախք ըստ բաւականին նիւթական զօրութիւն չունէին ի փախուստ դարձուցանելու համար զանոնք։ Նոր յարձակում մ՚եղաւ, եւ Տաճկաց հեծելազօրը շրջան մ՚ընելով հետեւակազօրաց հինգ վաշտեր եւ մէկ քանի թնդանօթներ երեւան ելան ։

Այն ժամանակ Ղազախներուն հարկ եղաւ ընկրկիլ ։ Չէրքիսալով գումարտակն օգնական զօրք ուզեց Առնօլտի զօրավարէն, ջանալով միանգամայն Տաճկաց խաղացքն արգելուլ ։ Վասն որոյ իւր Ղազախներուն մէկ մասին հրաման ըրաւ որ ձիերէն վար իջնեն .

Ախթիրի հիւսարներն եւ Սթարօտուալի վիշապազօրքն հասան շուտով ճակատատեղւոյն վրայ։ Վիշապազօրք ձիերէն վար իջնելով Տաճկաց աջակողման դէմ յարձակեցան, մինչդեռ հիւսարներն հեծելազօրուն հետ կը կռուէին, որով Ղազախք եւս կարող եղան սրարշաւ խոյանալ Տաճկաց թնդանօթներուն վրայ։ Խիստ բուռն եղաւ գուպարումն, եւ Ռուսք՝ համեմատաբար մեծ կորուստ կրեցին։ Կռիւն աւարտեցաւ Տաճկաց նահանջելովն, որք

դէպ ի Ռուսճուգ քաշուեցան, եւ հիւսարներն հալածեցին զանոնք, մինչեւ գիշերային մութը կոխած ժամանակ։

Այս կռուոյն արդիւնքն եղաւ Ռուսճուգի ճանապարհին բացումն, եւ Ցարէվիչի բանակը կարաց մինչեւ դէպ ի նոյն բերդաքաղաքը խաղալ։

## ԳՐԱՒՈՒՄՆ ԹՌՆՕՎԱՑԻ

Թռնօվայի գրաւումն Ռուսաց համար ցանկալի էր երկու բանի համար, այն է՝ Պուլղարաց վրայ բարոյական հզօր ազդեցութիւն մ'ունենալուն, եւ երկրորդ՝ Պիէլայի պէս առաջին կարգի կարեւոր դիրք մը լինելուն համար։

Թռնօվա՝ թէ եւ շատ յեղափոխ արկածներու ենթակայ եղած է, սակայն միշտ Պուլղարաց համար մայրաքաղաք մը մնացած եւ ցանկալի եղած է այն յիշատակներով զորս կը զարթուցանէ իւր անունն։ Արդարեւ Պուլղարաց ազգային վերջին հարստութեան կամ իշխող ցեղին խանձարուրքն էր։ Ասենի տոհմն անդ ծլեց 1186էն սկսեալ, եւ Բիւզանդիոնի կայսրն 1214ին այն տեղ գնաց ի խնդիր իւր կնոջ, որ Պօրիս մեծ ցարին (Պուլղարաց թագաւոր կամ կայսր) հռչակագեղ դուստրն էր։ Պուլղարաց կայսրութիւնը բարձաւ՝ երբ Տաճիկք արշաւեցին իրենց երկրին վրայ, եւ նոցա ցարերուն հոյակապ քաղաքն աւերեցաւ գրեթէ բոլորովին։ 1373ին յուլիսի 17ին՝ Պայազիտ Չէլէպի անուն որդին Ցարէվէցի քարաբլրոյն վրայ կառուցեալ բերդն առաւ երեք ամիս պաշարելէ յետոյ։ Յաղթականք Թռնօվայի գեղեցիկ շէնքերը քանդեցին, եւ Պուլղարաց նախարարք կամ ազնուականք (պօյար) սրախողխող եղան մայր եկեղեցւոյն մէջ։

Յայնմհետէ չորս հարիւր տարի է անցած, եւ տակաւին Պուլղարիա աննուազ պահած է իր օրրազեղ յարգանքն այն վաղեմի մայրաքաղաքին վրայ։ Թռնօվա այն Տաճկա-ռուսական պատերազմէն առաջ 12,000 բնակիչ ունեցող քաղաք մ'էր գեղեցկանիստ եւ ըստ բաւականի ճարտարարուեստից մէջ։ «Երբէք աւելի բանաստեղծական դիրք մը տեսած չունիմ, կ'ըսէ Ֆօն Մօլթքէ մարաջախտն. Երեւակայելու է բարձր լեռներով շրջապատեալ անձուկ հովիտ մը, յորում Եանթրա գետակն իւր խորափիտ փոսը բացած է խճաքարեայ բարձր պատուարներու մէջ տեղէն եւ օձէ մ'աւելի կամակոր եւ պատ ի պատ խաղացիւք կը հոսի։ Հովտին զառիթափներէն մին համակ անտառապատ է. միւսն բոլորովին ծածկուած է տներով։

«Հովտին մէկ նեղ բացուածքին մէջ տեղէն կը բարձրանայ կոնաձեւ լեռ մը, որ բնական բերդ մ'եղած է իւր կողերուն սեպացեալ լինելովն. գետը զայն կը պարփակէ իբրեւ կղզի մը, եւ 200 ոտնաչափ երկայնութեամբ եւ 40 ոտնաչափ բարձրութեամբ քարային թումբ մը միայն՝ որ վրայէն լոկ մէկ ճանապարհ եւ մէկ ջրմուղ անցնելու չափ լայնութիւն ունի, քաղաքին կը կցէ զայն։»

Այն կոնաձեւ լեռն՝ որոյ վրայ Պ. Ֆօն Մօլթքէ կը խօսի, հին Ցարէվէց սարն է, զոր Տաճիկներն Հիսար-Պայըրը՝ «Դղեկի բլուր» կը կոչեն ի յիշատակ պուլղարական բերդին։

Թռնօվա մինչեւ այս վերջին տարիներս համանուն գաւառին կամ կեդրոնական Պուլղարիոյ Տաճիկ կառավարչին (միւթէսարրըֆ) բնակութեան տեղին էր։ Թէ եւ Դանուբէն հեռի, սակայն եւ այնպէս Պուլղարիոյ մտաւորական եւ առեւտրական ճշմարիտ կեդրոնն է, եւ վաճառատեղի Պալքանաց հովիտներուն արտադրութեանց, զորս Թռնօվայի վաճառականք չորս կողմը կը ղրկեն անտի դէպ ի մերձակայ քաղաքներն։ Թռնօվայի պուլղար հասարակութիւնն միշտ նշանաւոր եղած է իւր ջերմ հայրենասիրութեամբն եւ անկախութեան պապակովն։ 1836ին եւ

1867ին ապստամբութեան մէկ քանի փորձեր եղան, բայց շուտով սանձուեցան եւ ապստամբապետք գլխատուեցան ։ Վասն որոյ խաղաղութեան ժամանակ անգամ Տաճիկներն այն տեղին մօտ 2,000 զօրք կը բանակեցընէին՝ ապստամբութիւն ծագածին պէս զսպելու համար ։

Այս ըսուածներէն կարելի է գուշակել թէ իրրեւ ազատարար ներկայացող բանակի մը ձեռօք Թռնօվայի գրաւումն ո՛րքան մեծ ցնծութիւն պիտի պատճառէր պուլկար ժողովրդեան մէջ։ Տեսնենք այժմ թէ ինչ ռազմագիտական կարեւորութիւն ունի այս քաղաքն ։

Այդ կարեւորութիւնն՝ Պալքանից ստորոտն եւ կրճի մը կամ մանաւանդ այն կրճից բերանը գտնուելէն յառաջ կուգայ, որք հիւսիսային կողմէն եկող թշնամւոյ մը դէմ Տաճկաց երկրորդ պաշտպանողական գիծը ձեւացնող լերանց մեծ շղթայէն կ'անցնին ։ Թռնօվա երկու գլխաւոր ճանապարհներու սկզբնակէտն է, որոց յերկուս բաժնուելովն՝ չորս ճանապարհներ կը ձեւանան եւ անոնք կ'իջնեն հակառակ զառիթափին վրայ Թունճայի հովտին մէջ։ Սոցա հակիրճ նկարագրութիւնը պիտի ընենք արեւմտեան կողմէն սկսելով ։

Առաջինը կ'երթայ դէպ ի վեր՝ այն անձուկ եւ ոլորապտոյտ կրճին մէջ, ուրկէ կը հոսի Եանթրայի օժանդակ գետակն՝ Տրէնօվքա։ Սոյն ճանապարհը կ'անցնի Լիբանօվա կամ Տրէնօվա անուն փոքր քաղաքէն եւ ապա սեպաձեւ սարահարթի մը վրայէն, որոյ շուրջը գետակն լայնածիր շրջան մը կ'ընէ, կ'իջնէ Տօպլին եւ Քումանօվցի գիւղերուն մէջտեղ, որք այն ճանապարհին մօտ բարձրացող եւ զինուորական լաւ դիրք ձեւացնող երկու սարակներու վրայ կը գտնուին, յետոյ արեւելեան կողմը ճիւղ մը ձգելով՝ որոյ վրայ յետոյ պիտի խօսուի, եւ գետակին ձախակողմեան եզերքն անցնելով՝ լեռնային երկրի մը մէջ կը մտնէ, ուր դարաւանդներով բաժանեալ հեղեղատներ կը ձեւանան, եւ այս դարաւանդներուն վրայէն մանուածապատ շրջաններ ընելով՝ Եանթրայի հովտին վերին մասին մէջ կը ձգի։

Սոյն ճանապարհն՝ Եանթրա գետակին երկու կողմանց վրայ կառուցեալ Կապրովա մեծ աւանին մօտէն քարակերտ կամրջէ մ'անցնելէ յետոյ՝ Պալքաններուն մէջ կ'ելնէ՝ բարձրաբերձ ծառոց անտառներով ծածկեալ լեռնային եւ նկարագեղ տեղերէ՝ մինչեւ Շիփքայի կիրճն, որ ծովուն երեսէն 4456 ոտնաչափ բարձր է ։ Կառք կրնայ բանիլ 1836ին շինուած այս արահետին ամեն մասերուն վրայ ։ Շիփքայի կրճէն անցնելէ յետոյ՝ վախուտ զառիթափէ մը կ'իջնէ ճանապարհն մինչեւ Շիփքա գիւղն (1760 ոտնաչափ), որ Թունճայի դալարազուարճ եւ ճոխ հովտին վրայ կը նայի ։ Շիփքայէն ուղի մը դէպ յաջակողմն Թաթար-Փազարճըգ կը տանի, ուրիշ մը դէպ ի ձախակողմն Գըզանլըգ կ'երթայ եւ անկէ Էսքի-Զաղրա եւ Էտիրնէ (35 փարսախ հեռի Գըզանլըգէն՝ հարաւային-արեւելեան կողմն) ։ Այս Շիփքայի կիրճն ամենէն կարեւորն է, եւ անդ միայն Տաճիկք մէկ քանի պաշտպանողական շինութիւններ բարձրացուցած էին, հաւանականաբար սա կարծիքն ունենալով՝ թէ բանակ մը միայն անկէ կրնայ անցնիլ։

Վերն ըսուեցաւ թէ այս ճանապարհէն ճիւղ մը կը բաժնուի եւ Տրէնօվքա գետակէն անցնելով դէպ ի արեւելք կ'երթայ. այս կարեւոր ճիւղն գետակին հետ մէկ տեղ պտոյտներ կ'ընէ, վաճառաշահ Թրեավնա քաղաքէն կ'անցնի, կը յառաջէ այն կրճին մէջ ուր Թրիավնայի հեղեղը կը հոսի, Պալքանին վրայէն կ'անցնի՝ յայտնոյս Գուլիպէ ըսուած հիւղերուն, եւ կ'իջնէ ապա դէպ ի Գըզանլըգ երկու շաւիղներու բաժնուելով լերան վրայ, որոց մին կ'երթայ դէպ ի արեւմուտք ի Շիփքա, եւ միւսն՝ ուղղակի դէպ ի հարաւ Եանինայէն անցնելով։

Թռնօվայէն սկսեալ՝ երկրորդ ճանապարհն՝ որ դէպ ի արեւելք կ'երթայ եւ

տակաւին Պալքաններուն չհասած՝ առաջնոյն պէս երկու ճիւղերու կը բաժնուի. այն քաղաքին արեւելեան կողմը տարածուած բարձր սարահարթներէն անցնելով՝ Տրէնօքայի կրճին մէջ կ՚իջնէ եւ անդ մէկ քանի հազարամէթր տեղ երթալէն եւ մէկ քանի անգամ գետակէն անցնելէն յետոյ Զլթարի հովիտը կը մտնէ եւ այն գետակին քով կը հասնի Հիտնա Էլէնայի կը հասնի դարձեալ Սլիվնօ, որ Պալքանաց շղթային հարաւային զառիթափին վրայ ռազմագիտական կարեւոր կէտ մ՚է, վասն զի անդ կամ մերձակայքը կուգան կը կցին Պալքանաց ճանապարհներուն մէկ քանիները, մանաւանդ անոնք՝ որ Ռուսճուգէն կամ Շումնոյէն սկսեալ կը հասնին մինչեւ Էտրնէ՝ Գազանի կրճէն անցնելով։



ՊՈՒԼՂԱՐ ԳԻՒՂԱՑԻՔ ՌՈՒՍԱՑ ԳԱԼՍՏԵԱՆԸ ԿԸՍՊԱՍԵՆ

մօտ։ Անդանօր երկու ճիւղերու կը բաժնուի. կարճ ճիւղն կ՚երթայ դէպ ի Ֆէրէճիք-Տէրպէնտի կիրճը (3,000 ոտնաչափ) եւ խիստ դժուարուտ զառիվայրէ մը կ՚իջնէ Թվարտիցայի վրայ, ուրկէ կարելի է կամ արեւմտեան կողմն երթալ դէպ ի Պըզանլըգ, կամ արեւելեան կողմն դէպ ի Սլիվնօ (Իսլիմնեա) ըսուած կարեւոր քաղաքն ։

Միւս երկայն ճիւղն՝ որ աւելի հեշտագնաց է, կ՚անցնի Պէօյիւք-տէրէի հովտին մէջ Պէյրօվայէն եւ Սթարարեէքայէն, եւ

Երկար ժամանակէ ի վեր ծանօթ եղած եւ բոլոր աշխարհացոյցներու վրայ նշանակուած այս քառեակ անցքն ի բաց առեալ, զորս կարելի է թնդանօթաց համար դիւրանց ըսել փոքր ինչ աշխատութեամբ, կան ուրիշներ որք աւելի կածաններ են քան թէ արահետներ, զորս եւ ոչ մէկ աշխարհագիր՝ եւ ոչ մէկ ճանապարհորդ նշանակած է, եւ տեղացիք միայն կը ճանաչեն։ Պալքաններու այն կողմն Կուրքօ զօրավարին արշաւանքը պատմուած ժամանակ պիտի տեսնուի թէ այն խիզախ

տալյն ինչպէս գործածեց անոնց մին ։ Բայց հարկ է նկատել թէ անկարելի է՝ Թռնովայէն չանցած այս ճանապարհներէն մին մտնել ։

Վերջապէս՝ ռազմագիտութեան վրայ խօսքերնիս աւարտելու համար՝ հարկ է ըսել թէ Թռնովա Պուլղարիոյ կեդրոնական մեծ արահետին գրեթէ մէջտեղն է, այն ճանապարհին որ՝ Դանուբի զուգահեռական եւ Պալքանաց շղթային ստորոտէն անցնելով՝ Նիշ, Փիրոթ կամ Շարքէօյ, Վրածա, Լօվաց կամ Լօֆճա, Թռնովա, Էսքի-Ճումաա եւ Շումնու քաղաքներն իրարու կը միացնէ, եւ արեւելեան կողմէն կը հասնի մինչեւ Վառնա ամրացեալ նաւահանգիստն՝ Սեւ ծովու քով ։

Այն տեղեկութիւններն ըստ բաւականի կը բացատրեն այն բազմոթիւ անցից բնական բանալին եղող Թռնովայի դիրից կարեւորութիւնն՝ եւ զայն գրաւելու մասին Ռուսաց ունեցած ցանկութիւնն ։ Ինչպէս Պիէլայի՝ նոյնպէս եւ այս քաղաքին համար մտատաղնապք այնպէս կը կարծէին՝ թէ Տաճիկներն մեծ զօրութիւն պիտի կուտէին անոր մօտ եւ թէ հարկ պիտի լինէր ճակատիլ զայն գրաւելու համար ։ Սակայն այնպէս չեղաւ, հեծելազօրաց ձեռօք եղած տեղապնդութիւն մը բաւեց այն քաղաքին առնելու համար՝ ինչպէս եւ Պիէլայի ։

Առաջապահ զօրաց գունդն յուլիս 3ին խաղալ սկսած էր ։ Կովկասեան Ղազախներու մասն անջատուած եւ Նիկոպոլսոյ եւ Փլէվնայի կողմը ղրկուած լինելով, դէպ ի Պալքանները յառաջացող այն գունդն կը բաղկանար հետեւակ զօրաց 10 եւ կէս վաշտէ, 31 եւ կէս հեծելագնդէ եւ ունէր 32 թնդանօթ ։ Փէթէրպուրկէն եկող Կուրքօ զօրավարին գնդին քով այն ժամանակ հասաւ, երբ արդէն ճանապարհ ելած էր այն ։

Առաջին երկու օրերն առաջապահք իրենց ճանապարհին վրայ ոչ զօրք տեսան եւ ոչ զինեալ բնակիչ ։ Տաճիկք եւ բոլոր մահմետականք այն տեղերէն մեկներ էին, ծխուն աւերակներն եւ գիւղերուն փողոցներուն մէջ տապաստ ինկեալ դիակներն չարագոյժ ճարտարխօսութեամբ կը բացատրէին թէ Տաճկաց այդ չուն ինչ արիւնաուշտ պարագայից մէջ եղած էր ։ Պաշը-պօզուգներն սաստ անդ մէկ քանի քրիստոնեայներ սպաններ էին, եւ Պուլղարք՝ մահմետական հասարակութեան դէմ սոսկալի կերպիւ պատուխաթափ եղած էին ։ Թուրքիոյ արտաքին գործոց նախարարին մէկ ծանուցագիրն հետեւեալ եղելութիւնը ծանուցած է Եւրոպայի ։

Պաթագի մէջ՝ որ Զիշթօվի գաւառակին մէկ գիւղն է միայն մահմետականներէ բնակեալ, 100 տուն այրեր է, 200 այր եւ 300 կին սպաննուեր են, ընդամենն 500 հոգի զոհ գացած ։ Կը կարծուի թէ 7 բնակիչ միայն ողջ մնացած կայ ։

Պալօվանի մէջ՝ որ Թռնովայի գաւառակին մէկ գիւղն է մահմետականներէ բնակեալ, 230 տուն այրեր են, 700 այր եւ 1,200 կին կորսուեր են, ընդ ամենն 1,900 զոհ ։ Կը կարծուի որ մէկ անձ միայն ազատած է այս կոտորածէն ։

Դուալա-պօնարի մէջ 100 տուն այրեր է եւ 200 այր եւ 300 կին կորսուեր․ ընդ ամենն 500 զոհ ։ Մահուանէ երկու անձինք միայն ազատեր են ։

Դասթանոլի մէջ 150 տուն այրեր է, 300 արանց եւ 600 կանանց կորուստ եղեր է․ ընդ ամենն 900 զոհ ։

Տէմիսի մէջ՝ որ խառն բնակչօք գիւղ մ՚է, մահմետականաց 60 տուն այրեր է եւ 100 արանց եւ 200 կանանց կորուստ եղեր է․ ընդ ամենն 300 զոհ ։ Մէկ անձ միայն ճողոպրեր է ։

Այս ամբաստանութեանց մէջ եթէ չափազանցութիւն եւս գտնուի, ստոյգ է որ գոնէ անհիմն չեն ։ Զարհուրելի կոտորածներ եղած են, ահաւոր վրէժխնդրութիւն՝ 1876ի կոտորածներուն եւ այն տեսակ տեսակ տառապանաց զորս քրիստոնեայք ցայնվայր կրած էին ։ Պուլղար խաժամու-

ժըն սոսկալի եղած է իբր վատ անզգութեան մէջ։ Գիւղացիք իրենց հիւղերուն դրանց առջեւ՝ չախանջելով մտիկ կ'ընէին Ռուսաց մօտենալուն ձայնն եւ հորիզոնէն վեր բարձրացող շշուկներն, եւ երբ կը տեսնէին Տաճիկներն ահի եւ սարսափի մէջ անկեալ, եւ երբ ապահով կը լինէին թէ անպատիժ պիտի մնան, մահմետականաց տներուն վրայ կը յարձակէին, սպանութիւն, աւարառութիւն եւ հրձգութիւն կը գործէին։ Բայց երբ բաղդին մէկ ճախողուածովը այն տեղերն վերստին Տաճկաց ձեռքն անցան, մահմետականաց արիւնը ծծող գետինն այս անգամ քրիստոնէից արեամբ ողողեցաւ։ Հազարաւոր մարդիկ կը հաշուին որ զոհ գնացին՝ պատերազմին դիպուածներով միեւնոյն տեղեաց վրայ բազմիցս կրկնեալ այն չարաշշուկ վրէժխնդրութեանց։

Յուլիսի 4ին երեկոյին՝ առաջապահ գունդը հետեւեալ տեղերը գրաւած էր. խառն սահն Սուհանոլի մէջ կը գտնուէր, վիշապազօրաց սահն՝ Մուրատ-պէյ-քէօյիւ, Տօնայի Խազախաց սահն՝ Նիքուլի եւ զօրաց ստուար մասն՝ Պաթագ։ Խումբն այս կացութեան մէջ սպասեց Առնօլտի զօրավարին դէպ ի Գիէլա ըրած քննութեան արդեանցն։ Մինչեւ այն ժամանակ առնուած տեղեկութեանց նայելով՝ մեծ խոհեմութեամբ վարուիլ հարկ կը լինէր. այն տեղեկութիւնք ենթադրել կուտային թէ Տաճիկներն հզօր կերպիւ Թռնօվան գրաւած լինելով՝ ամրութիւններ կը շինէին։ Ստոյգ է թէ ճիշդ չէին այդ առնուած լուրերն, վասն զի պաշը-պօզուգներու արձակ խմբեր քաղաքին մերձակայքը կ'ասպատակէին։

Գիէլայի գրաւումը իմացուելուն պէս՝ Կուրքօ զօրավարն որոշեց առաջապահ զօրաց ստուար մասն դէպ ի Մուրատ-պէյ յառաջացընել, եւ ամսոյն 7ին վիշապազօրաց սահին միջոցաւ քննութիւն մ'ընել Թռնօվայի արեւմտեան կողմն։ Միտք ունէր նաեւ 8ին Տօնայի Խազախներու սահովն ուրիշ քննութիւն մ'ընել արեւելեան կողմն. բայց անօգուտ եղաւ այս, վասն զի 7ին Թռնօվա գրաւեցաւ։

Զօրավարն հետեւեալ տրամադրութիւններն ըրաւ. վիշապազօրաց սահ մը (բաղկացեալ կայսերական կէս հեծելադասէ, վիշապազօրաց 8րդ (Աժտէրխանի) գունդէն եւ 9րդ (Գազանի) գունդէն) եւ ձիոյ վրայ բարձեալ թնդանօթից 16րդ շարն դէպ ի Թռնօվա ղրկուեցան Միխայլցիի, Գոյափունարի եւ Պէլաքօվցիի ճանապարհաւ։ Խազախներու սահին հրաման եղաւ Թըռնօվայի արեւմտեան կողմն ստուար ջոկատ մը ղրկելու, եւ խառն սահին պատուէր տրուեցաւ հիւսարներու 9րդ (Մինսքի) գունդն երկու թնդանօթներով Միխայլցի ղրկելու, որպէս զի վիշապազօրաց անմիջապէս օգնութեան հասնի ի հարկին։ Առաջապահ գնդին մնացեալ զօրքն իրենց գտնուած տեղերէն չպիտի հեռանային։

Ամսոյն 7ին առաւօտեան վեցերորդ ժամուն՝ Կուրքօ զօրավարն անձամբ Մուրատ-պէյ գնաց՝ վիշապազօրաց սահին հետ գտնուելու եւ Թռնօվայի կողմն եղած բաներն ինքնին իսկ քննելու համար։ Ճանապարհը քաղաքին մօտ սոսկալի կրճից մէջէն կը ձգի, եւ ձիաւորք այս դժուարամատոյց տեղերէն անցնելու ժամանակ՝ ուրախացան այնպիսի անհոգ թշնամիներ դէմերնին գտնուելուն համար։ Կէս աւուր մօտ՝ Ռուսք բարձր լերան մը վրայէն տաճիկ ձիաւորաց բազմութիւն մը նշմարեցին հովտին միւս կողմի սարերուն վրայ։ Լերան զառիթափներն խիստ դժուարին լինելուն՝ անխոհեմութիւն էր ամբողջ ջոկատն դաշտն իջուցանել առանց Տաճկաց զօրութիւնը ճանաչելու։ Նախ՝ Սավին երկրորդական հարիւրապետին հրամանատարութեան ներքեւ կայսերական անձնապահ զօրաց կէս հեծելադասին մէկ բոյլն իջաւ, որպէս զի Տաճիկներն ստիպուին բացուիլ եւ իրենց զօրութիւնն յայտնել. Ջոկատին մնացեալ մասն ճանապարհին մօտ սպասեց, բայց պաշտպանելու

համար՝ ձիոյ վրայ բարձեալ Թնդանօթաց 16րդ շարէն երկու հատ լերան գագաթան վրայ զետեղելով,[1] ինչպէս նաեւ Գազանի միջապազօրաց 2րդ հեծելազօրաց Թնդանօթաձիգ զօրաց օգնական տալով։ Տաճկաց 500էն աւելի ձիաւորներն բոլորն դէմ ելան, որ դաշտին մէջ արագընթաց կը յառաջէր։ Սակայն հարիւրապետն՝ Տաճկաց առաւելագոյն թուով լինելն եւ զինքը շրջապատելու պատրաստուիլը տեսնելուն պէս՝ իւր հեծելազօրուն կանգ առնուլ տուաւ, որք փոքր ինչ յետս խաղալով իրենց ձիերէն իջան եւ հրացան պարպել սկսան Տաճկաց վրայ. սոքա եւս իրենց ձիերէն իջնելով սկսան կրակ ընել։ Կայսերական անձնապահ զօրաց երկրորդ բոյլն եւ միջապազօրաց երկու հեծելազասք հետզհետէ դաշտին մէջ յառաջեցին կռուող Ռուսաց օգնելու համար։ Տաճիկներն այս շարժումնքը տեսնելով՝ յետս դարձան եւ դէպ ի Թռնովա քաշուեցան։ Ձիոյ վրայ բարձեալ Թնդանօթաց մէկ մասին կրակն անոնց նահանջը փախստեան փոխակերպեց. Յայտնի էր թէ այն կէտին վրայ Տաճկաց ունեցած բոլոր զօրութիւնն այս հեծելազօրն էր. վասն որոյ ջոկատին մնացեալ մասին հրաման տրուեցաւ դաշտն իջնելով դէպ ի Թռնովա խաղալու։

Զորրորդ ժամուն մօտ՝ Ռուսք քաղաքին մօտեցան հիւսիսային ճանապարհէն, որ ընտրելի համարուեցաւ ամենէն աւելի բարձրահայեցիկ եւ յարմար լինելուն համար։ Իսկոյն տաճիկ զօրաց ջոկատ մը դուրս ելաւ Թռնովայէն դէպ ի արեւելք՝ Օսման-Փազարի կողմը գնալով։ Կուրքօ զօրավարն անկէ հետեւցուց թէ Տաճիկներն ինքզինքնին բաւական զօրաւոր չէին համարեր եւ յուսահատ դիմադրութիւն մ'ընել չէին մտաբերեր, վասն որոյ իսկոյն որոշեց իւր զննութիւնը կրական յարձակման փոխել եւ անմիջապէս քաղաքին տիրել։

Ահա այս կերպիւ անպաշտպան ձգուած էր Պուլղարիոյ ամենէն զօրաւոր դրից մին Պալքանաց դրան։ Տաճկաց ամբողջ բանակատեղն՝ հանդերձ մեծաքանակ պարէնով, ռազմամթերօք, զինուք եւ մէկ դրօշակով Ռուսաց ձեռքն անձաւ։ Նախորդ տարիներն այս կողմանքը կատարելապէս զննող, քաղաքը լաւ ճանաչող եւ Բուլղանի գումարտակին մէջ երկրորդական սպայի աստիճան ունեցող Ծէրէթէլեվ իշխանին հրամանատարութեան ներքեւ Ղազախներու հեծելազաս մը դրուեց անմիջապէս Թռնովան։ Այս հեծելազասակը Տաճկաց բնակած մասին մէջ զետեղեցաւ, եւ տեսաւ որ պուլղար խաժամուժը նոյն բանն ըրած էր անդ, ինչ որ եղած էր Զիշթօվի մէջ։ Դռներն եւ պատուհաններն խորտակեալ էին, եւ Տաճկաց քիչ մը բանն աւարի տրուած էր. Սակայն յիսնի չափ տաճիկ ընտանիք որք չէին փախած, ամենուին վնաս մը տեսած չէին. անոնց անձանց եւ ընչից ոչ ոք դպած էր։

Կուրքօ զօրավարին գունդն Թռնովա մտած ժամանակ, կայթիւններով ողջունեցաւ։ Թայմզի Թղթակիցն կը պատմէ թէ՝ երբ Լոյխթէնպէրկի Եւգինէոս իշխանն՝ կայսերական անձնապահ հեծելազօրուն մէկ ջոկատովն հանդերձ քաղաք մտաւ, խեղճ բնակիչք ուրախութենէ կ՚ուլային, ռուս զինուորաց վիզը կը փաթթուէին եւ ծաղկանց տարափի մը ներքեւ կը ծածկէին զայն։ Ցեխոտ եւ փոշոտ միջապազօրք եւ զրահավառ կայսերական անձնապահ հեծելազօրք՝ ծաղկանց խոշոր փնջեր կրելու բռնադատեալ կը տեսնուէին, նազելի եւ փափուկ օրիորդներ անոնց ձեռքերը կը բռնէին եւ կը համբուրէին ընդդէմ նոցա կամաց։

Ռուսաց ապայակոյտն Թռնովայի առումն իմանալուն պէս՝ իւր տրամադրութեան ներքեւ գտնուած բոլոր ճանապարհներէն այնտեղ հետեւակազօր ղրկելու փութաց։ 8րդ գնդէն Վօզնէսէնսքի գումարտակն՝ Ռատանէն դէպ ի Թռնովա գնալով՝ Եանթրայի հովտէն անցած ժամանակ, սորա

տեղագննին զօրքն՝ յուլիսի 11 ին Չայըրքէօյի մօտ Տաճկաց մէկ սայլերու խմբին հանդիպեցաւ, որում կ'ուղեկցէին 1,500 հոգի։ Գումարտակին ստուար մասն սոցա մօտենալով՝ մէկ քանի անգամ յարձակում ըրաւ, բայց Տաճիկներն խորտաբորտ գետնի մը վրայ իրենց սայլերուն ետեւ պատսպարուելով, անկարելի եղաւ վանել զանոնք։

Կէս օրէն հինգ ժամ յետոյ միայն՝ երբ Լէօնով զօրավարն եւս Լուպնօյի հուսարներուն երկու հեծելագասերն, Խազախներու կէս հեծելագասակ եւ երկու թնդանօթ հետն առած՝ հասաւ յարձակումն տալու, Ռուսք յետս մղեցին Տաճիկներն եւ հալածեցին զանոնք մինչեւ մութը կոխելու ժամանակ։

Ռուսք այս կռուոյն մէջ վիրաւորեալ գումապետ մը թիւի մը յետակողմը պառկեցուցած էին, որպէս զի շարժուն անկելանոցներուն սպասիկները զայն տանելու գան։ Գումապետին քով մէկ թմբկահար եւ հինգ վիրաւորեալ զինուորներ կը գտնուէին։ Յանկարծ սոյն փոքրիկ խումբը տեսաւ որ բաւական թուով Տաճիկներ դէպ յայն կողմ կու գային։ Իսկոյն թմբկահարն սկսաւ թմբուկը զարնել իբր ի նշան յարձակման եւ վեց վիրաւորք աղաղակ մը բարձին։ Այս վարպետութիւնը փրկեց զիրենք մահուանէ։ Տաճիկներն թակարդի մէջ ինկեալ կարծելով ինքզինքնին, յետս դարձան եւ խոյս տուին արագընթաց։ Այս եօթն մարդիկ իբրեւ աներեւոյթ եղած արձանագրուեցան, բայց գումապետն յետոյ Պուքրէշ անկելանոցի մը մէջ գտնուեցաւ։ Ասոնցմէ զատ Ռուսք կորուսին մէկ սպայ եւ ութ զինուորք, որք սպանեալ եւ սարսափելի եղանակաւ այլակերպեալ գտնուեցան, նաեւ մէկ սպայ եւ տասնեւհինգ զինուոր վիրաւոր ունեցան։ Տաճիկներն յիսնի չափ մարդ կորուսած էին, եւ Ռուսք անոնց 300 սայլերը գրաւեցին։ Այս կռուէն յետոյ Եանթրայի ձախակողմեան ափանց վրայ տաճիկ զինուոր մը չմնաց։

Յուլիսի 12 ին Նիկօլա մեծ դուքսն Թռնովա հասաւ 8րդ գնդին մեծագոյն մասամբն հանդերձ։ Զիշթօվէն մինչեւ Թռնովա (65 հոլոմէթր) յաղթանակաւ տարուեցաւ նա։ Ամեն ուրեք քրիստոնեայ ժողովուրդը գիւղերէն դուրս կ'ելնէր եւ կը դիմաւորէր Ռուսաց զօրքն՝ աղ եւ հաց մատուցանելով եւ եռանդագին աղաղակներով ողջունելով. կանայք եւ աղջիկունք պտուղներ ընծայ կը բերէին եւ ծաղիկներ կը սփռէին նոցա վրայ։ Մէկ քանի գիւղերու առջեւ յաղթական կամարներ բարձրացեալ էին ծաղկազարդ եւ սաղարթազեղ։ Քահանայք թափօրով կու գային ընդ առաջ՝ եկեղեցիներէն հանուած պատկերներով եւ դրօշներով հանդերձ եւ կ'երգէին։ Եռանդագին աղաղակներն ականջները կը խլացնէին, տարօրինակ խօլ ցնծութիւն մը կը տիրէր անդ։ Գեղջուկք կը թախանձէին Ռուսաց ձեռքը համբուրելու համար, եւ պիտի համբուրէին, եթէ թոյլ տրուէր. ոմանք արտասուք կը հեղուին։

Սամօվատա գիւղին առջեւ՝ որ Թռնովա տանող կիրճին բերանն է, յաղթական կամար մը շինուած էր ծառի ճիւղերէ։ Գիւղին հասարակութիւնն ամբողջ՝ ճանապարհին վրայ խռնեալ էր այս կամարին մօտ։ Զինուորք՝ առանց իրենց սպայից հրամանին՝ գլուխնին կը բանային անցնելու ժամանակ՝ ի մեծ ցնծութիւն ժողովրդեան, մինչդեռ տափակ եւ երկայն ահագին երկաթ մը՝ չորս հարիւր տարիէ ի վեր առաջին անգամ կը հնչէր ուռնադղորդ՝ նման զանգակի։ Նոյն կիրճին կամ անցքին բերանն երկու խիստ հնաւուրց վանքեր կան՝ լերանց սեպացեալ կողերուն վրայ շինուած։ Այս վանից երէցներն ընդ առաջ եկան դրօշներով, պատկերներով եւ մեծ շքեղազարդ Աստուածաշունչ մատեանով մը, որում մօտենալ կրցող զինուորք՝ անցնելու ժամանակ՝ կը համբուրէին զայն։



## ԱՌՈՒՄՆ ՆԻԿՈՊՈԼՍՈՅ

Ռուսք ի սկզբան ինչպէս որ յաջողութիւն ձեռք բերած էին արեւելեան եւ հարաւային կողմերէն, նոյնպէս եւ արեւմըտեան կողմէն անյաջող չգտնուեցան, թէեւ շատ աւելի մեծ զոհողութիւններ ընել հարկ եղաւ ։

Նիկոպոլիս 10-12,000 բնակիչ ունեցող քաղաք մ'է, որ քիչ մնաց աններեւոյթ պիտի լինէր եւ տեղի պիտի տար բոլորովին նորաստեղծ քաղաքի մը ։ Եթէ Միտհաթ փաշա Դանուբի կուսակալ մնար, իւր տաճկական ձեռօք անհետ պիտի ընէր այն քաղաքն, որոյ պարսպաց ներքեւ 1396ին Պայազիտ բնաջինջ ըրաւ Հունգարիոյ Սիգիզմոնտ թագաւորին հրամանատարութեան տակ գտնուած քրիստոնէից մեծ բանակը ։

Միտհաթ փաշա գործնական մարդ մը լինելով՝ խորհամուտ եղած էր թէ Նիկոպոլիս՝ դժուարին զառիթափներով շրջապատեալ ձագարաձեւ խորափիտի մը յատակը կառուցեալ գտնուելուն համար՝ չէր կրնար լաւ վաճառատեղի լինել երկրին ներքերուն առաջադրութեանցն։ Վասն որոյ ժամ մը հեռի Վլաշքիոյ Իզլաս քաղաքին դիմացն՝ Օսմոյի եւ Դանուբի գետախառնունքին մօտ վայր մ'ընտրած էր՝ Սուլթանիէ անուամբ քաղաքի մը շինութեան համար ։ Անդ պիտի յանգէր երկաթուղի մը Փլէվնայէն սկսեալ, որ յոյժ ճոխ եւ աճեցեալ գաւառակի մը մէջտեղն եւ նոյն գետախառնունքէն 36 հազարամէթր դէպ ի ներս շինուած քաղաք մ'է ։ Լեհ ճարտարապետներ այս ընդարձակ ձեռնարկութեան յատակագիծը տուած էին. երկաթուղին պիտի անցնէր Մաշգայէն. Բոյալօվցիէն եւ Կրվիցայէն ։ Նիկոպոլսոյ եւ Փլէվնայի շրջանակներուն ամբողջ արու հասարակութիւնը կոչուած էր երկաթուղւոյ տափարակին շինութեանն աշխատելու համար։ Մէկ քանի ամիս 20,000 հոգի առանց փոխարէն մ'ընդունելու աշխատեցան. ուղւոյն վրայ զետեղելու համար պէտք եղած փայտերն Պալքանոց անտառներէն պիտի բերուէին, եւ մէկ քանի հազարամէթր տեղի վրայ տափարակն արդէն աւարտեալ էր, երբ յանկարծ Միտհաթ փաշա իւր պաշտօնէն ձգուեցաւ ։ Նորա յաջորդն բնականաբար ճանապարհ տուաւ բոլոր աշխատութեանց. բայց նա եւս փոխուելով՝ Էօմէր Ֆէվզի փաշա յաջորդեց անոր, եւ Ֆրանքֆօրթցի գործաւորներուն հետ բանակցութեան մտաւ շինութեանց աւարտմանն համար. բայց սա եւս փոխուեցաւ ընդ հուպ ։ Երկրորդանգամ՝ 1871ին այս մեծամեծ խորհուրդներն զանց եղան եւ Նիկոպոլիս մնաց այնպէս ինչպէս որ էր ։

Այս քաղաքն՝ ինչպէս ըսուեցաւ, կառուցեալ էր ձագարաձեւ խորափիտի մը մէջ, որոյ բերանը Դանուբի կողմն է ։ Այս խորափիտին արեւելեան եւ հարաւային կողմերէն երկու բլուրներ կը բարձրանան եւ յանձուկս կը փակեն զայն, որոց վրայ շինուած են, Կամրին. Սամիլ-քէօյ եւ Յամօվիցա գիւղերն, ինչպէս նաեւ արեւմըտեան կողմէն կուտաքարեայ բարձր պարիսպ մը, որ գետին մօտ ուղղորդ եւ ապաձեւ կը յանգի 200 մէթր ։ բարձրութեամբ։ Սոյն պարիսպին վրայ կառուցեալ է բերդամրոցն (Փօռթրէս) ։ Երեք բարձրաւանդակներն եթէ լաւ ամրութեամբ իրարու կցեալ լինէին, գերազանց դիրք մը կը կազմէին. բայց Նիկոպոլսոյ ամրութիւնքն ի սկզբան պատերազմին խիստ բաներ չէին, որոց մասին Քանից մէկ քանի մանրախոյզ տեղեկութիւններ տուած է մեզ՝ Պուլղարիոյ եւ Պալքանաց վրայ յօրինած իւր գեղեցիկ երկասիրութեան մէջ ։ « Բերդամրոցը, կ'ըսէ, կը բաղկանայ միջնաբերդէն եւ մէկ յառաջապահ կերտուածէ՝ որ կը կոչուի Թունա թապիա ։ Կերտուածն՝ որ հինգ տեղ բացուածք ունեցող հողակերտ պարսպակէ մը կը ձեւանայ եւ որմերով եւ խրամներով շրջապատեալ է, ունի իւր մէջ մէկ քանի տներ, յորս պահակազօրը կը բնակի. արեւելեան

ճակատին վրայ բացուած դունէ մը քաղաքին հետ հաղորդակցութիւն կը լինի ։ Միջնաբերդն՝ քաղաքին ձախակողմը մինչեւ գետեզրը տարածեալ պարատափին ծայրը շինուած է . Եռանկիւնի ձեւ ունի եւ բոլոր սարահարթը կը գրաւէ ։ Դէպ՚ արեւելք նայող փոքր կողին երկու ծայրերը մանր եւ կիսաբոլոր պարանակներ կան. երկու մեծ կողմանց մին դէպ ի հիւսիս եւ միւսն դէպ ի հարաւ կը նային գրեթէ, եւ իրենց ձեւացուցած անկեան վրայ պարանակ մը կայ . ասկէ զատ այս կողմանց իւրաքանչիւրին երկայնութեանը վրայ նոյն տեսակ կարկառեալ երկու շինուածք կան, որով միջնաբերդին պարանակներուն թիւը կը լինի եօթն ։ Սոցա անուանքն են Սօլագ, Թաշ, Սըրտըմ, Եէրէ-պաթան, Ամպարլը , Դօշ , եւ Մէզլին-օղլու Թապեասը, որոց մէջ այլեւ այլ ձեւով, այլ եւ այլ չափով եւ այլ եւ այլ տեղեր շինուած թնդանօթներ կան ։»

Բայց որպէս զի մի գուցէ այս թուումն չափազանց ստուգապացուցիչ երեւի, Քանից կը յաւելու ըսել. «Արեւմտից զինուորական ճարտարապետութեան տարազին երբ մարդուս աչքն վարժուած լինի, տաճկական բերդի մը տեսքն աւելի կամ նուազ ծիծաղ կը շարժէ ։ Բայց վերջին տաճկառուսական պատերազմին պատմութիւնն մեզ կ'ուսուցանէ թէ Թուրքերն այն ժամանակ փոյթ կը տանէին իրենց բերդաքաղաքները բարւոք վիճակի մէջ դնելու , երբ արդէն թշնամին անոնց վրայ կը խաղայ, եւ թէ զարմանալի կերպիւ գիտեն պաշտպանել՝ այսպէս շուտով կանգնեալ կերտուածներն ։ Սակայն Նիկոպօլսոյ միջնաբերդին մերձակայ բարձրաւանդակներէն ցած գտնուիլն այնքան ակներեւ բան մ'է , որ Կոստանդնուպօլսոյ ճարտարապետական անհոգ վարչութիւնն մէկ քանի տարի առաջ հրաման ըրած է զայն ամրացնել մէկ քանի հողակերտ ամրոցիկներով ։ Ասոնց մին 1871 ին տեսայ քաղաքին արեւելեան կողմն , որոյ շինութիւնն բոլորովին աւարտեալ էր , եւ որոյ նման ուրիշներ պիտի շինուէին ընդ հուպ ։»

Ինչպէս Քանից կը նախատեսէր , երբ Ռուսք Ռումանիա մտան, Տաճիկները փութացին Նիկոպօլսոյ ամրացընել հողէ կերտուածներով ։ Իրենց դժբաղդութենէն այս նոր կերտուածներն ռումանական գետեզրէն լինելիք յարձակման մը դէմ դնելու եղանակաւ միայն շինուեցան անզգուշութեամբ՝ հին կերտուածոց նման ։ Բոլոր մարտկոցներն դէպ յայն կողմն կը նայէին , այնպէս որ արեւելեան բարձրաւանդակներն գրեթէ անպաշտպան մնացին, թէեւ Սամովիցայի առման անվրէպ հետեւանքը պիտի լինէր Նիկոպօլսոյ առումն, վասն զի այս բարձրաւանդակը Նիկոպօլսոյ վրայ կը նայի գեր ի վերոյ ։ Կ'երեւի թէ Տաճիկները Դանուբն անանցանելի կը կարծէին ։ Պահակ զօրքն եւս ամրութիւններէն աւելի լաւ վիճակի մէջ չէր ։ Քաղաքին մէջ եօթն հազար ըէտիֆ կար, որք ցնցոտիներ հագած էին, ոտքի աման չունէին եւ խիստ անկանոն կը կերակրուէին ։ Ռուսաց Դանուբն անցնելու ժամանակ՝ Նիկոպօլսոյ եւ Թուռնու-Մակուրէլլիի միջեւ եղած թընդանօթի կռիւներուն վրայ, ռազմամթերքը բոլորովին սպառեր էր ։ Վասն որոյ Ռուսճուգ լուր տրուելով՝ այն քաղաքէն կարաւան մը ճանապարհ ելեր էր , բայց սա եւս ետ դառնալու ստիպուած էր Ռուսաց Զիշթօվ հասնելուն վրայ ։ Ասոր համար Նիկոպօլիս չէր կրնար ամուր զիմադրութիւն մ'ընել ։

Ռուսք իրենց գործողութեանց խարիսխն ընդլայնելու բացարձակ պէտք մը ունէին. ասկէ զատ, մեծամեծ առաւելութիւններ ձեռք պիտի բերէին Նիկոպօլսոյ առմամբն ։ Փլէվնայէն անցնելով մինչեւ Ֆիլիպէ հասնող ճանապարհին գլուխը գրաւած պիտի լինէին եւ պիտի կարենային երկրորդ կամուրջ մը շինել՝ Դանուբի վերին կողմերն փոխադրութեանց համար ամենէն աւելի յարմար գտնուող կէտին վրայ ։ Արդարեւ կարելի էր երկա-

թուղեաւ զօրք եւ պաշար բերել մինչեւ Սլաթինա, եւ Սլաթինայէն շոգենաւ կըրնար բանիլ մինչեւ Նիկոպօլիս Ալութա գետակին վրայ։

Քրիւտնէր զօրավարն ամսոյն 12ին մեկնեցաւ Գրդ գնդին գլուխն անցած։ Մինչդեռ ասդին մէկ կողմէն Նիկոպօլսոյ կը մերձենար, միւս կողմանէ Թուռնու-Մակուրէլէի ռուսական թնդանօթներն եւ Իգլասի ռումանական մարտկոցներն սկսան քաղաքն ռմբակոծել։ Քաղաքին կառավարիչն Հասան փաշա եւ բերդապահ զօրաց հրամանատար Ահմէտ փաշա Ռուսաց մերձենալն իմանալով՝ խորհրդակցեցան, պահ մը մտաբերեցին յետս կալ անհնարին դիմադրութենէ մը եւ դէպ ի Վիտին քաշուիլ, բայց պատուոյ զգացումն յաղթեց, եւ որոշեցին զօրեղ կերպիւ ինքզինքնին պաշտպանել։ Սամօվիցայի բարձրաւանդակը բերդաքաղաքին բանալին էր, իրենց զօրաց ստուար մասն հետ առնելով՝ այն տեղ գնացին եւ շուտով մէկ քանի պարկէններ շինել տուին։

Ռուսք յարձակեցան ամսոյն 15ին՝ առաւօտուն կանուխ։ Ճակատամարտն անագորոյն եւ արիւնաշատ եղաւ։ Ռուսաց թուոյն նայելով իրենց կորուստը շատ մեծ էր, եւ ասոր պատճառն այն է որ այգեւէտ ղառիկողերու վրայ զետեղեալ Տաճկաց հետ սուինով կռուեցան։

Սամօվիցա մէկ քանի անգամ առնուեցաւ եւ տրուեցաւ։ Կէս օրէն երկու ժամ յետոյ՝ Ռուսք վերջին անգամ մնան այն տեղ, եւ Տաճիկները դէպ ի քաղաքն ետ քաշուեցան։ Երեք գումարտակ հեծելազօրք՝ թնդանօթաց մէկ քանի շարերով հանդերձ՝ արեւմտեան պարիսպին միւս կողմն անցան այն ժամանակ կողմնական շրջան մ'ընելով, եւ կարող եղան անոր սարահարթին վրայ զետեղիլ, որոյ ծայրը կը գտնուի բերդամրոցն. այս կերպիւ Նիկոպօլիս պաշարուեցաւ բոլորովին։

Երկու բանակներն գիշերն անցուցին՝ հրացանի գնդակ հասնելու չափ իրարու մօտ գտնուելով։ Բաւական սաստիկ ցուրտ մը յաջորդեր էր՝ տուընջեան սարսափելի տապոյն, ինչպէս յաճախ կը պատահի այս կողմերը. պահանորդք մերթ ընդ մերթ հրացան կը պարպէին միմեանց վրայ, երկու կողմանէ մեռեալները կը թաղէին եւ ռուսական բանակն անօթութենէ նուաղեալ էր. մատակարար վարչութիւնը նախազգոյշ չէր գտնուած եւ մարտնչողք գիշերեցին կսկուծ հացէ զատ ուրիշ բան չունենալով։ Տաճիկներն հասկանալով որ իրենց գործը գէշ է, չուզեցին գոնէ բան մը թողուլ յաղթականին. այրեցին իրենց մթերքն եւ հրդեհեցին քաղաքին գլխաւոր շէնքերը։ Այս հրդեհներն գիշերն ի բուն իրենց չարագուշակ նշուլիւքն լուսաւորեցին Նիկոպօլիսը շրջապատող պարիսպները։

Ամսոյն 16ին առաւօտուն զարհուրելի ռմբաձգութիւն մը սկսաւ Նիկոպօլսոյ եւ բերդամրոցին վրայ։ Քրիւտնէր զօրավարն իւր թնդանօթներն հանել տուեր էր այն բարձրաւանդակներուն վրայ, որոց տիրած էր նախորդ օրն. այս գնդընկէցներուն կը ձայնակցէին Թուռնու-Մակուրէլէի եւ Իգլասի թնդանօթները։ Անմիջական եղաւ այս ռմբաձգութեան արդիւնքն. տաճիկ զինուորներն՝ որ այլեւս փամփուշտ չունէին, ապստամբելու ապանոյլք ըրին. այն ժամանակ սպիտակ դրօշ պարզուեցաւ եւ Ահմէտ փաշա եւ Հասան փաշա ծանուցին թէ առանց պայմանի անձնատուր լինելու պատրաստ էին։ Հասան փաշա իւր թուրը յանձնեց Ռուսաց կողմանէ ղրկուած պատգամաւորին, եւ զօրքը քաղաքը մտաւ Ռուսաց ազգային երգն երգելով։

Իններորդ գնդէն հինգ սպայ եւ 278 զինուոր սպաննուած էր, 22 սպայ եւ 909 զինուոր եւս վիրաւորեալ։ Մեծ կորուստ կրած էր մանաւորապէս Քօզլօվի 123րդ գումարտակն։ Տաճիկներն եւս 1,000ի չափ մարդ կորուսած էին. 6,000 հոգի գերի անկան եւ քաղաքին մէջ 72 թնդանօթ, բազմաթիւ հրացան եւ 5 դրօշ գտնուե-

ցան։ Նաւահանգստին մէջ եղած երկու ջրասուզակ նաւերն փորձ չըրին փախչելու, եւ Ռուսաց ձեռքն անցան նաւաստեօք հանդերձ։ Երկաթի գնտերէն վնասեալ մեքենային մէկ քանի մասերը պակաս էին, բայց պատկողանոցներուն ջրամուխ

գերիներն, որք տաճկական գլխանոցին կարմիր չուխայի փերթէն (փարչէ) զատ արեգական դէմ պաշտպանուելու ուրիշ բան չունենալով, առանց վրանի գտնուելով, կերակրոյ տեղ հազիւ ափ մը բրինձ եւ գաւաթ մը ջուր ստանալով եւ ժահահոտ



ԶՕՐԱՎԱՐ ՏՐԱԿՕՄԻՐՈՎ

մասերն անվթար մնացած էին։ Պալթիկ ծովէն նաւաստիներ բերուեցան, եւ նաւերն քիչ մը նորոգուելէն յետոյ կարացին գետին վրայ բանիլ։

Նիկոպոլիս կիսաւեր էր, գետին եզերքը գտնուած ամբողջ թաղն հարթայատակ եղած էր, եւ կարելի եղաւ հոն զետեղել

բուրմանց ենթակայ լինելով, սպասեցին այնտեղ մէկ քանի օր մինչեւ որ Դանուբէն անցան եւ Ռուսիա ղրկուեցան։

Փէթէրսպուրկի պատերազմի պաշտօնատան մէջ յանձնաժողով մը կարգեալ էր պատերազմի գերեաց վերաբերեալ կանոնադրութիւնը վերաքննելու համար։ Նի-

կողօլոյ բերդապահ զօրաց անձնատուր լինելուն վրայ այս յանձնաժողովը պարտաւորեցաւ իւր գործը փութով կատարել, զոր հարկ էր առաջին անգամ գործադրել։ Ահաւասիկ Նոր կանոնադրութեան գլխաւոր տրամադրութիւնքը։

Գերեաց փոխադրութիւնը պիտի լինի երկաթուղեաւ եւ զօրաց ուղեկցութեամբ՝ մինչեւ այն քաղաքներն ուր պիտի արգելուին։ Ուղեկից զօրաց խմբապետը մեկնելու ժամանակ ճանապարհագիր մը պիտի ստանայ, ինչպէս նաեւ ուղեւորութեան ծախուց պէտք եղած դրամն։ Այն բերդաքաղաքի հրամանատարն որ կառախումբ մը ճանապարհ հանած է, անոր մեկնելէն անմիջապէս յետոյ հեռագիր մը կը քաշէ առ կուսակալն այն նահանգին ուր կառախումբը կը ղրկուի։ Սոյն հեռագրին մէջ կը նշանակուին ղրկուած գերեաց թիւն եւ կառախմբին իւր տեղն հասնելու ժամն։ Գերիները բաժնուելով՝ կառաց մէջ կը զետեղուին, եւ իրենց ճանապարհի դրամը կը վճարուի՝ զօրաց երկաթուղեաւ փոխադրութեան վերաբերեալ կանոնացն համեմատ. փաշաներն առաջին կարգի կառօք կը փոխադրուին, բարձրաստիճան սպայք երկրորդ կարգի, եւ երրորդական սպայք երրորդ կարգի կառօք, բայց կարելի եղածին չափ զինուորներէն զատուելով։

Ուղեւորութեան միջոցին քրիստոնէից փոխադրութիւնը պիտի լինի՝ ըստ կարելւոյն մահմետականներէն զատ կառաց մէջ։ Տաճկերէն խօսող անձ մը խմբին հետ մէկտեղ պիտի գտնուի ամեն անգամ որ կարելի լինի։

Սեւ ծովու մէջ բռնուած գերիներն մերձակայ զինուորական իշխանութեանց ձեռօք կը ղրկուին Խարքովի կուսակալին, որ իւր նահանգին մէջ բաժին բաժին կը զետեղէ զանոնք ասդ անդ։ Եթէ գերելոց խումբը առ նուազն հարիւր մարդէ բաղկացեալ է, ուղեկից զօրաց գլխաւորն պարտի սպայ մը լինել։ Երկաթուղի չունեցող տեղեաց մէջ գերիները կը ղրկուին հանգոյցէ հանգոյց քալելով մինչեւ իրենց արգելման վայրն. ստորակարգեալ սպայք խմբին ետեւէն կ'երթան սայլերու վրայ, յորս երկուք երկուք զետեղեալ են. բարձրաստիճան սպայք եւ փաշաներն առանձինն կը փոխադրուին իւրաքանչիւրն դէտի մ'ընկերակցութեամբ։ Ճանապարհին վրայ հիւանդացող գերիները տեղական իշխանութեանց կը յանձնուին, թէ զինուորական լինին սոքա եւ թէ քաղաքական։

Եթէ տաճկական բանակաց հետեւող օտար հպատակներ գերի եղած են, կուսակալք կը ծանուցանեն զայս արտաքին գործոց նախարարութեան՝ երբ այն գերիներն իրենց նահանգը կը հասնին, եւ նոցա ծննդեան վայրին եւ վերջին բնակութեան տեղւոյն վրայ անոնցմէ առնուած տեղեկութիւններն նախարարին կը հաղորդուին։

Բոլորովին տարբեր է սակէ՝ այն ռուս հպատակաց կացութիւնն, որք իրենց կայսեր եւ հայրենեաց դէմ եղած պատերազմի կը մասնակցին։ Այս անհատներն իբրեւ մատնիչ կը համարուին եւ ոչ իբրեւ պատերազմական գերի, եւ ոտքերնին շղթայի զարնուած կը փոխադրուին։ Դանուբի բանակին ձեռօք գերի բռնուած ռուսահպատակներն Քիէվ կը ղրկուին եւ Կովկասեան բանակին ձեռօք բռնուածներն Խարքով, եթէ Ն. Կ. Բարձրութիւնն՝ Կովկասու կուսակալն մասնաւորապէս հրաման չտայ Տփղիսի մէջ պահելու զանոնք։

Կայսրութեան երկրին մէջ գտնուած պատերազմական բոլոր գերեաց վերին հսկողութիւնն ներքին գործոց նախարարութենէն կախումն ունեցող գործադիր ոստիկանութեան վերաբերեալ է։ Գերիներն որ նահանգին մէջ արգիլեալ են, այն նահանգին կուսակալին իրաւասութեան ներքեւ կը գտնուին, թէեւ միանգամայն ուղղակի եւ մասնաւորապէս հսկողութիւն կ'ընէ նոցա վրայ տեղական ոստիկանութեան գլուխն կամ կուսակա-

լին կողմանէ յառկապէս կարգեալ գործակալ մը ։ Գերիներն զինուորական իշխանութեանց հպատակեալ են՝ ուղեկից զօրաց գլխաւորին կողմանէ նոյն իշխանութեանց յանձնուելնուն պէս․ առջի յիսուն հոգիէ բաղկացեալ ջոկերու կը բաժնուին ։ Մէն մի ջոկ պարտաւոր է իւր մէջէն մեծ մ'ընտրելու , որում կը յանձնուի նոյն ջոկը բաղկացնող գերեաց պիտոյից համար հարկ եղած դրամն, ինչպէս նաեւ նոցա աշխատելով շահածն։

Գերիներուն իրենց վրայ պահել չուզած դրամն կամ թանկագին նիւթերն իբրեւ աւանդ կը յանձնուին տեղական գանձուն, եւ իրենց կամ փոխանորդներնուն կողմանէ ստորագրեալ ընկալագիր մը մինչեւ որ չտրուի, այն բաներն եւս ետ չեն տրուիր մասամբ կամ ամբողջ ․

# Գլուխ Իննեւտասներորդ

## ԱՆՑՔ ՌՈՒՍԱՑ ԸՆԴ ՊԱԼՔԱՆ ԼԵՐԻՆՍ

### ՀՐԱՄԱՆ ՑԱՐՋԱԿՄԱՆ․ — ԿԻՐՃ ԽԱՑԻՆ-ՔԷՕՑԻ

«Այսպիսոյ պատերազմաց մէջ, կ'ըսէր ֆոն Մօլթքէ մարաջախտն 1828—29ի պատերազմէն յետոյ, Դունայ պարտի միայն՝ իւր զօրութիւնքն համախմբել, եւ Թուրքիոյ բուն պաշտպանութիւնը Պալքանաց ստորոտէն պիտի սկսի ․» Ժամանակակից զօրավարաց ամենէն ճարտարին եւ ամենէն բարեբաղդին կողմանէ խրատեալ այս մարտագիտական եղանակն՝ կը թուէր թէ Այտ-իւլ-Քէրիմ փաշայի եւս ընդունելի էր եղած ։ Անկարելի էր ուրիշ կերպ մեկնութիւն տալ Ռուսաց գրեթէ անարգել Դանուբէն անցնելուն , Եանթրայի գծերուն եւ Թռնօվայի անպաշտպան թողուելուն․ Բայց կարծես թէ այս պատերազմն բոլոր նախատեսութիւններն ի դերեւ պիտի հանէր ։ Թուրքիոյ պաշտպանութիւնն Պալքաններէն եւս չսկսաւ , որոց մէջէն անցան ռուս զինուորներն առանց հրացան մը պարպելու ։

Կուրքօ զօրավարն՝ Թռնօվան գրաւելէ յետոյ՝ հրաման ըրեր էր առաջապահ գընդին միւս մասին իւր քով գալու, եւ զօրքը բաժնելով հետեւեալ տեղերը գետեղեր էր․

Թռնօվայի մէջ էր զօրաց ստուար մասն (որսորդ զօրաց չորրորդ սահն, փլասթունները կամ Զեռնօմօրսքի Խազախաց երկու դասակներն, պուլղարական լեգէոնին 1ին եւ 2րդ սահերն, կայսերական անձնապահ հեծելազօրաց կէս դասն , Ուրալի հեծելագասակն , ձիաւոր ռահվիրայք․ 12 լեռնային թնդանօթներ, Քիէվի հուսարներու գումարտակն եւ Տոնի 10րդ թնդանօթաշարէն 4 թնդանօթ , այսինքն $8\frac{1}{2}$ վաշտ, $5\frac{1}{2}$ հեծելադաս եւ 16 թնդանօթ ։)

Վիշապազօրաց սահն (8 հեծելադաս , 6 թնդանօթ) Մէրտանի մէջ էր ( Խօզառովիցայէն Սլաթարիցա տանող ճանապարհին եւ ուրիշ ճանապարհի մը իրարու հանդիպած տեղին մօտ․)

Տոնայի խազախներուն 30րդ գումարտակն՝ Տոնի 10րդ թնդանօթաշարէն 2 թնդանօթ ունենալով իւր հետ՝ Փուշեվի մէջ էր (Պալվանի հարաւային կողմը․)

Տոնայի Խազախներու սահն (12 հեծելադասակ եւ 6 թնդանօթ) Թռնօվայի հարաւային կողմն էր՝ Կապրովայի եւ Էլէնայի ճանապարհներուն միացած տեղն , եւ հեծելադասակ մ'ունէր Եանթրայի ափանց վրայ ։

Աղխից սայլերն՝ պուլղարական լեգէոնին 3րդ սահէին հսկողութեան ներքեւ, ինչպէս նաեւ երկու լեռնային թնդանօթներ Ռէ-շէնի մէջ կը գտնուէին՝ Թռնօվայի յետա-կողմն ։

Կուրքօ զօրավարն չորս աւուր մէջ պատ-րաստութիւններ տեսաւ իրեն յանձնուած պաշտօնին մնացեալ մասը կատարելու հա-մար, որ էր Պալքաններէն անցնելու ջա-նալ, ինչպէս յայտնի է։ Պարէն հայթայ-թեց, բեռները կրելու համար գրաստ-ներու խումբ մը պատրաստեց եւ կարելի եղածին չափ տեղեկութիւններ հաւաքեց Տաճկաց կացութեան վրայ։

Այս մասին նշանաւոր ծառայութիւն մ'ըրաւ այն կամաւորն, որոյ՝ ի սկզբան պատերազմին՝ դիւանագէտի համազգես-տը թողլով պարզ Խազախի կերպարանք մտնելն տեսնուեցաւ, այն է Ցէրէթէլեվ իշխանն, որ՝ պատերազմ հրատարակուած ժամանակ՝ Փարիզի ռուսական դեսպա-նութեան գլխաւորական կցորդ (աթաշէ) էր, եւ սակայն իբր երկրորդական սպայ գրո-նուեցաւ Կուպանի գումարտակին մէջ, եւ առաջապահ զօրաց առաջնորդեց Թռնօվայի փողոցներուն մէջ։ Պուլղարերէն լեզուն կատարելապէս լաւ գիտէր նա։ Բազմաշ-խատ քննութեամբք տեղեկացաւ թէ Պալ-քանաց սարերուն մէջտեղէն նրբակածան մը կ'անցնի, որ համբաւաւոր պիտի լինէր ապա Կուրքօ զօրավարին յանդուգն որ-շաւանաց պատճառաւ, եւ գիւղացւոյ կեր-պարանք մտնելով՝ գնաց զննեց զայն մին-չեւ Խային-քէօյ, ուր կը յանգի այն կա-ծանն Թունճայի հովտին մէջ։ Այս ճա-նապարհն՝ զոր Ռուսք Գալիֆարի անցք կ'անուանեն, թէեւ Գալիֆար փոքր ինչ հեռի կը գտնուի անկէ դէպ ի Արեւմուտք, կամ Խային-քէօյի անցք կը կոչեն, եւ այլք՝ Չէլէնոքէօյի կամ Չէլէնոգրատի անցք՝ փոքրիկ լեռնագիւղի մ'անուանն, բոլորովին անծանօթ չէր Տաճկաց, որք Խային-պօղազը՝ դաւաճանի կիրճ կը յոր-ջորջեն զայն, բայց այնպէս անանցանելի կը համարէին յայնժամ, որ իրենց պաշտ-պանողական յատակագծին մէջ կարեւո-րութիւն չէին տուած անոր։

Կուրքօ զօրավարն եւս տեղեկացաւ թէ միւս կողմանէ Տաճիկներն Թռնօվայէ, Տրանօվայի եւ Կազրօվայի մէջ մեծաքա-նակ ցորենի պաշար ձգած էին, որ յօ-գուտ ռուսական բանակին գրաւուեցաւ։ Լեռնային կրճից ամենէն կարեւորին՝ այն է Շիփքայի անցից մէջ միայն՝ զօրք կը գտնուէր. միւսներն պարզ հսկողութեան ներքեւ էին, բաց ի Խային-քէօյի անցքէն։ Մինչեւ յուլիսի 9րդ օրն՝ Շիփքայի պա-հապան զօրաց թիւն՝ միայն 200ի կը հաս-նէր. եւ սոքա մուսթահֆըզ կամ երկրա-պահ զօրաց բանակէն էին. բայց նոյն օրն Արաբաց 5 վաշտ ժամանեց էր՝ լեռնային թնդանօթներով եւ պաշը-պօզուգներու խմբերով հանդերձ։ Պուլղարաց ըսածին նայելով՝ Տաճիկք դիտաւորութիւն ունէին Շիփքայի ամրութիւններն Քռուպի թըն-դանօթներով զինելու, բայց չէր գիտ-ցուած թէ այս դիտաւորութիւնը կատար-ուե՞ր էր կամ ոչ, սա միայն ծանօթ էր որ աշխատութիւններ եղած էին կրճին զառ ի վերին վրայ՝ Գըզանլըգի կողմն՝ թըն-թանօթաց փոխադրութեան համար։

Եթէ այս ամրութեանց շինութիւնն յա-ռաջ տարուած եւս չլինէր, դարձեալ յայտնի բան էր որ մեծ արգելք մը պի-տի ձեւանային եւ անխոհեմութիւն էր յառաջոյ կողմանէ անոնց վրայ յարձակիլ։ Առաջապահ գնդին հրամանատարն այն տեղեկութիւններն հիմն բռնելով՝ գործո-ղութեանց հետեւեալ յատակագիծը ներ-կայացուց Նիքօլա մեծ դքսին.

1°. Պալքաններէն անցնելու համար՝ եր-թալ այն ճանապարհէն որ Թռնօվայէն սկսեալ՝ մինչեւ Թունճայի հովտին մէջ Խա-յին-քէօյ կը տանի՝ Փրիսօվօյէն, Փլաքօ-վօյէն, Վօյնէշթիէն, Ռոյքօվէցէն եւ Փա-րօվցիէն անցնելով։

2°. Այս ճանապարհէն յառաջ վարել բովանդակ առաջապահ գունդն՝ բաց ի

միայն Տօնաքի Խազախներուն 30րդ գումարտակէն, որ երկու թնդանօթով երկու հեծելադասակ դէպ ի Կապրօվա ղրկելու է, Կապրօվա-Շիփքա-Գըզանլըգի անցքին վրայ հսկողութիւն ընելու համար, եւ չորս հեծելադասակ ձգելու է Թռնօվայի մէջ։

3°. Առաջապահ գնդին այլեւայլ խմբերէն բաղկացեալ խառն ջոկատ մը պաշտպանութեան ներքեւ Թռնօվայի մէջ թողուլ բոլոր բեռնարարձ սայլերն, եւ գրաստից վրայ բարձեալ բեռները միայն հետ առնուլ, որք բաղկանալու են հինգ աւուր համար պէտք եղած կոկուտ հացէ եւ երեք աւուր համար պէտք եղած խարլ. այս ուտեստն եւ խարն նեղը մնալու ժամանակ միայն գործածել՝ կարելի եղածին չափ երկրին բերքէն հայթայթելով մարդոց եւ ձիոց սնունդը։

4°. Կարգ յառաջխաղացութեան. Ա. առաջապահք լինելու են ձիաւոր ռահվիրայք, որ զօրաց առուար մասէն երկու օր առաջ պիտի մեկնին. Բ. գլխաւոր զօրութիւնք լինելու են որսորդ զօրաց չորրորդ սահն՝ լեռնային թնդանօթներով հանդերձ, պուլղարական լեգէոնին երկու սահերն, Չէռնօմօրաքի Խազախաց երկու դասակներն, կայսերական անձնապահ հեծելազօրաց կէս դասակն, Ուրալի հեծելադասակն, վիշտապազօրաց սահն եւ Տօնաքի Խազախաց սահն. Գ. վերջապահք լինելու են պուլղարական լեգէոնին մէկ սահն եւ Բիէլի հիւսարներուն գումարտակն։ Վերջապահ զօրքն պիտի մնայ Թըռնօվայի մէջ, մինչեւ որ 8րդ գնդին զօրքը ժամանէ այն տեղ։

5°. Թունճայի հովտին մէջ Խային-քէօյի մօտ յանգող կրճին ելքը գրաւելէ յետոյ՝ Կուրքօ զօրավարը խաղալու է դէպ ի Գըզանլըգ՝ Շիփքայի անցքին վրայ յետուստ յարձակելու համար, մինչ Կապրօվայի մէջ մնացող Խազախներու հեծելադասակն յառաջուստ կեղծ յարձակում մը պիտի ընէ։ Ըստ հաշուոյ, յուլիսի 17ին պիտի լինէր այս միահաղոյն յարձակումն Շիփքայի վրայ յառաջուստ եւ յետուստ։

Ինչպէս յետոյ պիտի տեսնուի, ճիշդ այս վերջին հաշուոյն պէս չեղաւ գործն, վասն զի Կուրքօ զօրավարը Թունճայի հովտին մէջ յառաջ խաղացած ժամանակ շարունակ կռուելու ստիպուեցաւ։

Նիքօլա մեծ դուքսն կատարեալ հաւանութիւն տուաւ այս յատակագծին. միայն թէ փոխանակ Շիփքայի կրճին հիւսիսային կողմէն պարզ ցոյց մ՚ընելու՝ նախամեծար համարեց իրօք յարձակիլ, հարաւային կողմէն լինելիք նմանօրինակ ձեռնարկութեան օգնելու համար, եւ այս նպատակաւ ղրկեց դէպ ի Կապրօվա Տօնաքի Խազախներու 30րդ գումարտակն՝ մէկ հեծելադասակ միայն անջատելով, Օրլէի հետեւակազօրաց 36րդ գումարտակն եւս ղրկեց թնդանօթաց մէկ շարով հանդերձ։ Այս ջոկատին հրամանատարութիւնն Տէրբօժինսքի հասուածապետին յանձնուեցաւ։

Ռահվիրայք Ռուսիո զօրավարին առաջնորդութեամբ ճանապարհ ելան յուլիսի 10ին։ Որովհետեւ՝ ըստ որոշեալ կարգին՝ առաջապահ գնդին առուար մասն քառասուն եւ ութ ժամ յետոյ պիտի մեկնէր, Կուրքօ զօրավարն այսչափ միջոցն անօգուտ չանցուց, եւ Չէռնօզուպով գումապետը ղրկեց նայելու թէ արդեօք Էլէնայի եւ Պէպրօվայի վրայ չէ՞ին խաղար Տաճկաց զօրքն, որոց համար կլսուէր թէ Օսման-փազարի մէջ համախմբեալ էին։ Սոյն սպայն ստուգեց որ այս վերջին երկու քաղաքաց մօտերը Տաճիկ չկար։

Սակայն Ռուսիոյ զօրավարն, Տը Ռօնիքէր գումապետն, Ցէրէթէլեվ իշխանն եւ ռահվիրայք ճանապարհ կը բանային կըրճին մէջէն։ Ուղւոյն առաջին մասն Թռնօվայէն մինչեւ Փարօվցի՝ բաւական հեշտագընաց է, երկու մաստյցներ (եօգուշ) միայն կան, որոցմէ վեր կարելի է հանել մինչեւ անգամ 9 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող թնդանօթները՝ բազմաթիւ գամէշներ լծելով. բայց փա-

րօվցիէն սկսեալ՝ ուղին բուն լերան վրայ կը բարձրանայ յոյժ վախուտ եւ զառիվեր, եւ դժուարութիւնք կըսկսին ։ Այն սակաւաձեռն խումբն երեք օր անխոնջ յարատեւութեամբ եւ եռանդեամբ աշխատեցաւ թնդանօթաց համար ճանապարհ բանալու ։ Սպայք իրենց զինուորաց օրինակ կուտային։ Ռաուխ զօրավարն իր համազգեստն հանելով տապար մը ձեռք առաւ, եւ աշխատաւորաց գլուխն անցնելով մինչեւ վերջը վաստակեցաւ ։

Շատ անգամ հանդիպեցան ահագին քարակոյտերու, զորս հարկ եղաւ բրչաւ կոտրել, վասն զի Ռաուխ զօրավարն չէր ուզեր վառօդ գործածել, որպէս զի ձայնէն Տաճիկները բանը չիմանան։ Զինուորք պատրաստեալ էին երբ անցքին ծայրն հասան. անդ կանգ առին գնդին մնացեալ մասին սպասելու համար ։ Նոյն պահուն Տաճկաց երեք վաշտեր որք Էլէնա կ՚երթային՝ Խային-քէօյէն անցան առանց կասկածելու թէ Ռուսք՝ հրացանի գնտակ մը դիւրաւ հասնելու չափ մօտը կը գտնուին, վասն զի այս կիրճը բանակի մը եւ մանաւանդ թընդանօթաց համար անանցանելի կը թուէր յաչս Տաճկաց ։

Լեռնական Պուլղարաց մէջ ոչ հաւատափոխ մը եւ ոչ մատնիչ մը գտնուեցաւ այն միջոցին, որ երթար Տաճկաց իմաց տար այն տեղ կատարուած կարեւոր բաները ։

Կուրքօ զօրավարին գունդն ամսոյն 12ին անցքին մէջ մտաւ եւ պատրաստուեցաւ անլուր դժուարութեանց յաղթել, որքան եւ ռահվիրայք աշխատանք ունեցած էին։ Թնդանօթներն լեռնէն վեր հանելու համար խիստ մեծ նեղութիւն քաշուեցաւ. ասոնց երկու հատն հեղեղատի մը մէջ թաւալեցան լծեալ կենդանիներովն հանդերձ, բայց կարելի եղաւ վերստին ճանապարհին վրայ քաշել բերել զանոնք։ Կըրճին հարաւային զառիթափին վրայ ճանապարհն եւ վայրէջքն աւելի դժուարութիւններ ընծայեցին, մանաւանդ վերջերն՝ հինգ կամ վեց հազարամէթրի չափ տեղի վրայ։ Քիչ մնաց որ ձիով կրելի թնդանօթներն չպիտի կարենային անցնիլ. իսկ մարտասայլից (ճէպխանէ արապասը) փոխադրութեան համար գոզցես գերմարդկային ճիգ թափուեցաւ ։ Բայց ամսոյն 14ին առաւօտուն՝ այս բազմավաստակ նեղութիւնք անյայտ եղան ։ Զինուորաց աչքին առջեւ պարզեալ էր Թունճայի համբաւաւոր ձորն, աշխարհիս ամենէն գեղեցիկներէն եւ ամենէն արգասաւորներէն մին, Վարդից հովիտն ։ Անդ էր Կոստանդնուպօլսոյ ճանապարհն. եւ զայն հորդողներուն սիրտը խրոխտալիր բաբախեց։ Կուրքօ զօրավարն իր տեղեկագրին մէջ պանծանօք սա վկայութիւնը կուտայ իր զօրաց՝ ըսելով. «Միայն ռուս զինուորն կարող էր անցնիլ եւ լեռնային թնդանօթ փոխադրել այսպիսի դժուարին կրճի մը մէջէն։ Արդարութիւնը հարկ կը դնէ ինձ ըսելու՝ թէ պուլղար զօրքն եւս միւս զինուորներէն վար չմնաց՝ յառաջխաղացութեան դժուարութեանց դէմ եղած այս մրցման մէջ ։»

Անատօլուի 300 Նիզամի (պատրաստի բանակի) զինուոր կար Խային-քէօյիւ մէջ։ Կէս աւուր մէկ ժամ եւ երեք քառորդ մնալով՝ 726 Ռուսք, որք առաջապահ խումբը կը ձեւացնէին, կրճէն դուրս ելան եւ հովտին մէջ մտան. իրենց այս ըրածներն այնպէս գաղտնի պահուած էին՝ որ այն Նիզամի զինուորներն վրաններու մէջ պառկած կամ ապուր եփելու զբաղեալ գտան։ Փոքրիկ բլրոյ մը վրայ չորս պաշըպօզուգներ միայն կային՝ որոց յանձնուած էր հսկողութիւն ընել ճամբարին վրայ ։ Սոքա Խազախները տեսնելնուն պէս սըրարշաւ փախան դէպ ի Գըզանլըգ՝ առանց տաճիկ զօրաց ծանուցանելու թշնամւոյն գալուստն։ Գնտակալիր ամբարտակ մը առցա մէջ յանկարծ անկանելով պայթելուն վրայ միայն՝ Ռուսաց ժամանումն իմացուեցաւ. սոյն անակնկալ ռմբիւնէն ամենամեծ սարսափ մը տիրեց նոյն զօրաց մէջ,

զորս Ռուսք Խային-քէօյէն վանեցին՝ ինչպէս նաեւ ուրիշ մօտակայ գիւղէ մը ։ Նաեւ տիրեցին երկու ճամբարներու, յորս բրինձն եւ ոչխարի միս սաներու մէջ տակաւին կ'եփէին՝ չոր թան լինելու համար. գտան անդ ցորեն, հաց, անգղիական կսկուծ դրոտակ (կալէթ) եւայլն. բանակին ամբողջ երեք օր սնուցանելու համար բաւական պաշար էին ։ Ռուսք 1,900 փամփուշտ էին այրած եւ միայն երեք մարդ կորուսած ։

Էլէնայի կրճին բերանն Թվարտիցայի մէջ բանակեալ Տաճիկներն Ռուսաց գալստեան փախստականներէն իմանալով՝ երեկոյին եկան յարձակեցան որսորդ զօրաց երկու վաշտերու վրայ, որք Խային-քէօյէն դէպ յառաջ Գօնարօ գիւղին մէջ զետեղեալ էին։ Կուրքօ զօրավարն օգնական զօրք ղրկեց սոցա եւ Տաճիկներն Սլիւնօ կամ Իսլիմիա քաշուեցան ։ Պալքաններն անցնելու ժամանակ՝ Ռուսաց ունեցած կորուստն եղած էր 4 սպանեալ եւ 9 վիրաւոր. պաշտօնական տեղեկագիրք կը խոստովանին՝ որ Խային-քէօյի մէջ գտնուող 300 կանոնաւոր զօրքն եթէ յառաջէին դէպ ի կրճին բերանը, Կուրքօ զօրավարն ամենամեծ զոհողութիւններ ընելու պիտի պարտաւորէր անցնելու համար ։

## ԱՐՇԱՒԱՆՔ ԹՈՒՆՃԱՅԻ ՀՈՎՏԻՆ ՄԷՋ

Խային-քէօյի մէջ Կուրքօ զօրավարն հաւաստապէս հեռի կը գտնուէր Իսլիմիայէն, Եէնի-Զաղարայէն, Էսկի-Զաղարայէն եւ Գըզանլըգէն։ Իսլիմիա Շումնույի զօրանոցին հետ կանոնաւոր հաղորդակցութիւն ունենալով՝ Տաճիկք կարող էին մեծ զօրութիւն համախմբել անդ ուզածնուն պէս ։ Գըզանլըգի եւ Շիփքայի մէջ 5 կամ 6 հազար տաճիկ զօրք կը գտնուէր, եւ Թունճայի հովտին մնացեալ մասին մէջ եղած զօրութիւնն աննշան բան մ'էր։ Բայց ստուգիւ անկարելի էր ըսել թէ նոցա թիւը շուտով չպիտի առաւելուր, վասն զի Եանպօլուէն մինչեւ Էտրնէ եղած երկաթուղին Խային-քէօյէն հազիւ 40 հազարամէթր հեռաւորութեամբ կ'անցնէր։

Կուրքօ զօրավարն որոշեց վաղ ընդ փոյթ գործել տակաւին Տաճկաց զօրքը չհամախմբուած։ Թունճայի հովիտն յոյժ մարդաշատ է, եւ բնակչաց խիստ մեծ մասն Պուլղարներէ բաղկացեալ է, որք նախորդ տարւոյ կոտորածներուն վրայ զայրագնեալ էին. մէկ քանի Խազախներու տեսքն բաւական պիտի լինէր նոցա մէջ ընդհանուր խլրտում մը յառաջ բերելու, որ՝ գործողութեան խարսխէն դիմագրաւութեամբ այնքան հեռացող փոքրիկ առաջապահ գնդին մեծապէս պիտի նպաստէր։ Ամսոյն 15 ին Ռուսք զննութիւն մ'ըրին փոքր Պալքանին մէջէն մինչեւ Եէնի-Զաղարա։ Զախող արդիւնք ունեցաւ այս բանն Պուլղարաց համար, որոց ի նպաստ եղած էր ։

Մարթինով հարիւրապետն՝ Տօնայի Խազախաց 26րդ գումարտակին երկու հեծելադասքն հետ առնլով եւ առաւօտեան 9րդ ժամուն մեկնելով՝ կէս օրէն 2 ժամ յետոյ Եէնի-Զաղարայի դիմաց հասաւ ։ Արտերուն մէջ աշխատող Պուլղարք ընդառաջ ելան, որոց հարցուեցաւ թէ քաղաքին մէջ տաճիկ զօրք կը գտնուէ՞ր։ Նոքա պատասխան տուին թէ երկու հազար հետեւակ եւեթ կար առանց այրուձիոյ եւ թնդանօթի։ Սակայն նոյն պահուն ձիաւոր զօրօք լի կառախումբ մը կը հասնէր երկաթուղեաւ՝ 35 կառքէ բաղկացեալ ։ Ռուսք չտեսան զայս, եւ Մարթինով հարիւրապետն կարծելով թէ իւր դէմ հետեւակազօրք միայն կայ, կէս հեծելադասն աջ կողմը ղրկեց եւ կէս հեծելադաս եւս ձախ կողմ՝ երկաթները քանդելու եւ պահելու համար ։ Իսկ ինքն մեկուսի սպասեց միւս հեծելադասուն ։ Աջակողմեան կէս հեծելադասն հասաւ մինչեւ երկաթուղւոյն քով, ուր Տաճկաց առաջապահներն առաթուր կոխելով՝ հեռագիրն

ւարեց։ Իսկ ձախակողմեան խումբն ստիպուեցաւ նահանջել մեծամթիւ զօրաց հանդիպելով։ Այս երկու կէս-հեծելագնդաք ետ քաշուելէն յետոյ, Մարթինով հարիւրապետն դէպ ի քաղաքին աջակողմը խոյացաւ՝ իւր երկու հեծելագնդաւորովն՝ երկաթուղին աւերելու նոր փորձ մը ընել ուզելով։ Նոյն պահուն Չէրքէզներու երկու հեծելագնդա իւր խմբին ձախակողման վրայ վազեցին։ Մարթինով հարիւրապետն իւր խումբն անոնց կողմը դարձուց, եւ ձիաւորաց կէսը Չէրքէզներուն վրայ վազցուց ասպատակի (ան Ֆուռաժիօռ), որոց խոյս տալովն Տաճկաց վեց թնդանօթներն երեւան ելան՝ արձակամարտ զօրաց մէկ ստուար շարքով եւ միւնակ կամ բազուկ ձեւացնող երկու վաշտերով հանդերձ։

Առաջին անգամ կրակ եղաւ Խազախներուն վրայ երկու հազարամէթրի չափ բացէն, եւ միայն երեք ձի սպաննուեցան։ Մարթինով հարիւրապետն այն ժամանակ շտապաւ իւր զօրքը ժողովեց եւ նահանջել տուաւ մեղմ ընդատ (թըրըս) գնացիւք։ Օսմանեան զօրքն մինչեւ ութ հազարամէթր տեղ Ռուսաց հետամուտ եղան արշաւակի իբրեւ արձակամարտ ցրուած, եւ թնդանօթները քաշող ձիերն անոնց ետեւէն ընդատ կ'երթային. երեք անգամ տեղափոխութիւն ըրաւ Տաճկաց թնդանօթաձիգ զօրքն։ Գարըլը-գիւղի մօտ միայն դադարեցաւ այս հալածումը։

Այսու ամենայնիւ՝ ապստամբութեան ոգին արագ ծաւալեցաւ Պուլղարաց մէջ։ Յայսկոյս Պալքանաց գտնուող լեռնականք Դանուբի եզերաբնակ Պուլղարներէն նուազ համբերութիւն ցոյց տուած են միշտ Տաճկաց լծոյն հանդուրժելու մասին, եւ տակաւին զայրագին կը սպառնէին 1876 մայիս ամսոյ սարսափելի տեսարանները յիշելով։ Զէնք հարեցին նոքա, եւ զարհուրելի կոտորածներ սկսան, Պուլղարք եւ Տաճիկք զիրեար անգթաբար բնաջինջ ընելու նայելով։

Իսլիմիայի կողմը ղրկուած ուրիշ տեղագնին խումբ մը Օրհզորէն անդին հանդիպեցաւ Չէրքէզներու, որոց կը նպաստէին թնդանօթաձիգ եւ հետեւակ զօրք։ Քազանի վիշապազօրայոյ գումարտակն Ռուսաց օգնութեան գալով՝ Տաճիկները խոյս տուին եւ մինչեւ գիշեր հալածուեցան։

Կուրքօ զօրավարն՝ նահանջելու համար Խային-քէօյի դժուարին կիրճէն աւելի լաւ գիծ մ'ունենալ եւ Նիքօլաս մեծ դքսին հետ մէկտեղ որոշուած յառաջակագիծք գործադրել ուզելով՝ ամսոյն 16ին ճանապարհ ելաւ Շիփքայի կիրճին վրայ երթալու յարձակելու համար։ Ըստ որոշեալ պայմանաց՝ ամսոյն 17ին պիտի յարձակէր ինքն, բայց մինչեւ Գըզանլըգ հասած ժամանակ շարունակ կռուելու ստիպուելովն՝ մէկ օր ետ մնաց։

Մեկնած էր նա վեց եւ կէս վաշտ, տասն եւ չորս ու կէս հեծելագնդա եւ տասն եւ վեց թնդանօթ առնելով իւր հետ։ Պուլղարական լեգէոնին երկու սոհերն, լեռնային թնդանօթաց երկու շար եւ Տօնայի Խազախաց 26րդ գումարտակին մէկ մասն Խային-քէօյի մէջ թողեր էին Սթօլէթով զօրավարին հրամանատարութեան ներքեւ։ Այս ջոկատն կիրճը պիտի պահպանէր, որպէս զի ձախողութիւն մը պատահած ժամանակ՝ զօրաց նահանջն ապահովէ։ Բայց երբ Շիփքայի կիրճն առնուեցաւ, անոր մեկնելով գնդին ստուար մասին հետ միացաւ Գըզանլըգի մէջ։

Սոյն քաղաքին բնակիչք Ռուսաց ժամանումն իմացեր էին ամսոյն 14ին։ Նոյն օրն տաճիկ եւ քրիստոնեայ երեւելիներն մէկ տեղ հաւաքուելով՝ առաջիններն Պուլղարաց ծանուցեր էին մինչեւ վերջին ինքզինքնին պաշտպանելու դիտաւորութիւն ունենալնին, եւ խնդրեր էին որ նոքա չէզոք կենան։ Նոյն պահուն տաճիկ մը մտաւ սրահին մէջ այլայլեալ եղած, եւ Տաճկաց ըսաւ գոչելով. «Շուտ կառավարութեան ապարանքը վազեցէք, կա-

ռավարիչն զձեզ կուզէ. Մօսկօֆներն Գալ-քաններն անցան՝ Խային-քէօյէն։» Կառավարիչն տաճիկ հասարակութեան գրգիռ տուած կանոնաւոր զօրաց հետ յառաջ քալելու եւ Սաատուլլահ պէյ անուամբ անձի մ'օգնութեամբն կարող եղաւ փոքրիկ բանակ մը կազմելու, որոյ սկզբնատարրն անատոլուցիներու երեք վաշտէ կը բաղկանար, եւ զայն իւր հետ առնլով

մադրութիւն մ'ընելէ յետոյ՝ Ռուսաց սուիններէն տագնապեցան, որոց որսորդ զօրքն յառաջուստ եւ վիշապազօրքն եւ հեծեալներն կողմնակի յարձակելով հալածեցին զանոնք. Կռիւն արիւնախանձ եղած էր եւ փախուստն Տաճկաց համար յոյժ աղետաբեր եղաւ, իրենցմէ 400 մարդ տապաստ ինկեալ գտնուեցաւ ճակատատեղւոյն վրայ եւ շատեր գերի բռնուե-



ԶՕՐԱՊԵՏ ՆԷՓՕՔՕՅՋԻՑՔԻ

ԳԼՈՒԽ ՍՊԱՅԱԿՈՒՏԻ ԴԱՆՈՒԲԵԱՆ ԲԱՆԱԿԻՆ ՌՈՒՍԱՑ

ճանապարհին վրայ գնաց մինչեւ Ուհլանլը։

Ռուսական բանակին առջեւէն քալող Խազախաց հեծելադասն ամսոյն 16ին՝ կէս աւուր երկու ժամ մնալով՝ հրացաններու սաստիկ կրակի մը հանդիպեցաւ, որ իւր դէմ կ'արձակուէր նոյն գիւղին պարտէզներէն։ Տաճիկներն իրենց ամուր կայանէն վանելու համար՝ հարկ եղաւ որսորդ զօրաց ամբողջ սահն յառաջ վարել եւ սփռել եւ ձիոց վրայ բարձեալ 16 թնդանօթներն զետեղել։ Տաճիկներն սաստիկ դի-

ցան։ Գըզանլըգի կառավարիչն կամ գայմագամն՝ որ այգիներու մէջ ինքզինք ծածկելու կը ջանար, ձերբակալուելով գերի տարուեցաւ։ Սաատուլլահ պէյ Շիփքայի ամրոցիկին մէջ ապաստանեցաւ։

Այս կռուէն յետոյ՝ Ռուսաց անկարելի եղաւ երթալ Գըզանլըգի մէջ օթեւանել, ինչպէս որ նախ կը յուսացուէր, եւ ստիպուեցան նոքա Մուխլիսի մէջ գիշերել։ Ամսոյն 17ին առաւօտուն կանուխ՝ զօրքն երեք խմբի բաժնուելով յառաջ խաղաց.

աջակողմեան խումբն (1 եւ 1/2 վաշտ) լերանց վրայէն կ'երթար՝ Գըզանլըգի հիւսիսային արեւելեան կողմէն յարձակելու համար. միջին խումբն (5 վաշտ եւ 10 թնդանօթ) լերանց ստորոտէն կը խաղար քաղաքին արեւելեան կողմէն յարձակելու համար. եւ ձախակողմեան խումբն (ամբողջ հեծելազօրն եւ 6 թնդանօթ) Թունճա գետակին քովէն կը յառաջէր՝ Տաճկաց վրայ յետուստ եւ կողմնակի անկանելու համար։

Այս երրեակ շարժմունք կատարեալ յաջողութիւն ունեցան. Տաճիկներն քաղաքէն ութ հազարամէթր հեռի ճանապարհին վրայ անդրդուող կըռապաշէին Նիզամի զօրաց երկու վաշտերով եւ պահեստի զօրօք հանդերձ՝ երեք հատ եւս թընդանօթ ունենալով. Նախ հետեւակազօրաց խումբ մը Շիփքայէն գալով կը մօտենար՝ Գըզանլըգի հիւսիսային արեւելեան կողմի լեռները գրաւելու եւ անտի Ռուսաց աջակողման դէմ սպառնալու դիտաւորութեամբ. Առաւօտեան ժամը եօթնին կռիւն սկսաւ Ռուսաց միջին խըմբին թնդանօթաց սաստիկ կրակովն. Միանգամայն աջակողմեան խմբին արձակամարտներն շտապաւ լեռները կը գրաւէին Շիփքայէն եկող խմբին առաջ հասնելով, որ ի դերեւ ելած՝ ետ քաշուեցաւ։ Ձախակողմեան խումբն եւս շրջան մ'ըրաւ եւ իւր թնդանօթաձիգներն կրակ ընել սկսան։ Տաճիկներն առաւելագոյն զօրօք շրջապատեալ տեսնելով ինքզինքնին՝ խոյս տուին. բայց բոլոր ճանապարհները փակեալ լինելուն՝ իրենց նահանջը շուտով խառն ի խուռն փախստեան փոխուեցաւ։ Երեք թնդանօթներն Ռուսաց ձեռքն անցան որք չորս հարիւրէն աւելի գերի բռնեցին.

Կէս օրին Խազախներն Գըզանլըգը գրաւեցին։ Կուրքօ զօրավարն կ'ուզէր անդէն խաղալ Շիփքա գիւղին վրայ, եւ նոյն օրն համանուն անցքը գրաւել, բայց հետեւակազօրն սաստիկ ջերմութենէն եւ երեք օր կռուելէն այնքան ուժասպառ եղած էր, որ հարկ եղաւ մէկ քանի ժամ հանգիստ տալ. վասն որոյ զօրավարն հեծելազօրը միայն հետ առնլով՝ դէպ ի Շիփքա գնաց. հետեւակազօրն գիշերային մութը կոխած ժամանակ հասաւ իւր քովը։ Ուստի չկրցաւ Շիփքայի վրայ յարձակիլ ամսոյն 17 ին, Օրէլի գումարտակին յարձակած պահուն, ինչպէս որոշուած էր։

Երեք օր Գըզանլըգի քրիստոնեայներն (այս քաղաքին 13,000 բնակչաց 8,000ն քրիստոնեայ էին) դժնդակ տագնապի եւ երկիւղի մէջ էին, միացած իրենց ամենէն թանկագին իրերը հողին տակ ծածկելով, եւ 30 կամ 40 հոգի մէկ տան մէջ հաւաքուելով՝ քնանալու համար։ Տաճիկներն սպառնալիք ըրած էին զամենայն հրոյ եւ սրոյ ճարակ ընելու, եթէ պարտուէին, եւ այն խեղճերուն ուրիշ լուր մը չէր հասներ բաց ի մունետիկին տուածէն, որ ամէն օր կառավարչին հրամանաւ կը ծանուցանէր՝ թէ Ռուսք Թռնօվայի մէջ բոլորովին յաղթուեր էին, եւ թէ զարմանալու չէր լերանց մէջ մէկ քանի փոքր ճակատներու մնալուն վրայ, զի բանակին ստուար մասն անջատեալ եւ բոլորովին մոլորեալ իրենց հայրենեաց ճանապարհը կը ջանային գտնել։

Այս արեւելեան մեծաբանութեանց հակառակ՝ տաճիկ զօրաց կացութեացքն այնքան շտապաւ փախան, որ յիսնի չափ վիրաւոր պարունակող անկելանոց մը բարձի թողի եղաւ, որոյ մէջ հինգ սպայք կը գտնուէին։ Մահմետական հասարակութեան զէնքն անմիջապէս առնուելով Պուլղարաց տրուեցաւ, որոց յանձնուեցաւ նաեւ քաղաքը պահպանել եւ փախստականներն եւ պաշը-պօզուգներն հալածել։ Այն խեղճերն ազատ մարդկան առանձնաշնորհութիւնն եղած այս պատիւն ստանալուն վրայ յոխորտալով՝ սպառազինեալ դուրս կ'ելնէին։ Կը տեսնուէր անոնց՝ փողոցէն անցնիլն՝ մէջքերնին երեք դաշոյն եւ չորս կամ հինգ ատրճանակ ունենալով։

«Փոքրիկ Գըզանլըգ քաղաքն, կ'ըսէ՝ Արեւելեց վրայ գրած նամականայն մէջ Գ. Փոն Մօլթքէ, զոր հարկ է միշտ ի վկայութիւն կոչել Թուրքիոյ վրայ խօսուած ժամանակ, փոքրիկ Գըզանլըգ քաղաքն ծածկեալ է հսկայաձեւ ընկուզեննեաց անտառակի մը մէջ։ Մինարէներն անդամ լեռնացեալ սաղարթից եւ ոստոց մէջէն վեր չեն բարձրանար, յորս ծածկեալ են։ Այս կողմանց ջրերուն առատութիւնն անկարելի է երեւակայել. ինչպէս Լօմպարտիոյ մէջ՝ նոյնպէս եւ աստ բոլոր արտերն եւ պարտէզներն ոռոգեալ են՝ փոսերէն եւ կաւառներէն (ջրի ճամբայ) հոսող ջրերով։ Գըզանլըգ Եւրոպայի Քաշմիրն է, Թուրքիոյ Կիւլիսթանն, Վարդից երկիրն. այս ծաղիկն անդ թաղարններու կամ պարտէզներու մէջ չմշակուիր, ինչպէս կը լինի մեր կողմերն, այլ արտերու եւ ակօսներու մէջ՝ գետնախնձորի նման։ Չիք ինչ առաւել գեղածիծաղ՝ քան այսպիսի վարդենեաց բուրաստան մը։ Միլիոնաւոր, այո՛ միլիոնաւոր կարմիր թերթեր սփռեալ են վարդենեաց ածուներուն (թարլա) կանոնաչափայլ օթոցին վրայ, եւ սակայն տակաւին կոկոններուն մէկ չորրորդը միայն բացուած է։ Գըզանլըգի մէջ կը շինուի վարդի իւղն որ այնքան մեծ արժէք ունի։ Կոստանդնուպոլսոյ մէջ անգամ գժուար է այս իւղն անխառն գտնել։»

Գ. Փոն Մօլթքէի այս խօսքերն ըսելէն ի վեր՝ Գըզանլըգ իւր հրապոյրները չէր կորուսած. սակայն, աւա՜ղ, արեան բոսորով պիտի ծածկուէր վարդից բոյրն այն գեղեցիկ հովտին մէջ։ Գըզանլըգի շրջակայից Պուլղարներն ամբողջ ոտք ելան, եւ Ռուսք անկարող կը գտնուէին այս բանին առաջքն առնուլ, մանաւանդ որ իրենք դրգիռ եղած էին՝ Տաճկաց դէմ յաջողութեան նոր միջոց մը գտնել ուզելով։ Արդարեւ արեւմտեան մէկ քանի վիճակաց մէջ մահմետական եւ քրիստոնեայ հասարակութիւնք խաղաղասիրութեամբ գրաւոր պայմանադրութիւն ըրած էին մէջերնին, որով՝ եթէ Տաճկաց զօրքն առաջ հասնէր, մահմետականք զքրիստոնեայս պիտի պաշտպանէին, եւ եթէ նախ Ռուսք ժամանէին, քրիստոնեայք մահմետականաց պաշտպանութիւն պիտի ընէին։ Բայց ասքա խիստ հազուագիւտ բացառութիւններ էին։ Ռուսք Գըզանլըգ հասնելնուն պէս, Եէնի-Զաղարայէն սկսեալ մինչեւ Էսկի-Զաղարա ամբողջ երկրին մէջ հուր եւ բոց կը ծաւալէր։ Նախորդ տարւոյ կոտորածներուն մէջ հայր, մայր, եղբայր կամ քոյր, կին կամ զաւակ կորուսանող Պուլղարներէն բաղկացեալ խմբեր ամեն կողմ կը հաւաքուէին եւ վրէժխնդրութիւնք կը սկսէին։ Գըզանլըգի բարձունքէն կը տեսնուէր հորիզոնին վրայ գիւղօրէից բոցակէզ լինելն։ Պուլղարք, պաշը-պօզուգներէն աւածներին՝ յանժամ իրենք ի գործ դրին Տաճկաց դէմ։ Այս գիւղերն նախ աւարի տրուած եւ բազմաթիւ մահմետականներ սրոյ ճարակ եղած էին։

---

ԿԱՊՐՕՎԼԱՑԻ ՋՕԿԱՏԻՆ ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ՇԻՓՔԱՅԻ ԿՐՃԻՆ ՎՐԱՅ

Մինչդեռ Կուրքօ զօրավարն քանիցս մարտ կը մղէր Տաճկաց դէմ՝ հարաւակողմն Շիփքայի ժամադրութեան տեղը հասնելու համար, Տէրօժինաքի զօրավարին ջոկատն հիւսիսակողմէն կը ժամանէր առանց ընդդիմութեան։ Ամսոյն 15ին Կապրօվան գրաւեց՝ լքեալ գտնելով. 1,000 ի չափ բնակիչ ունեցող այս փոքրիկ քաղաքն՝ որ մէկ կողմանէ լերան եւ միւս կողմանէ Եանթրա գետակին մէջտեղ անձուկ հովտի մը մէջ կառուցեալ է, խիստ նկարագեղ տեսք ունի իւր նեղ փողոցներով եւ բարձր տանիքօքն (տամ) որք սեւաքարի տեղ լայն սալաքարերով ծածկուած են։ Մէջտեղուանքն ուռուցիկ երկու կամուրջ ձգուած են գետակին վրայ. մին Պուլղարաց ձեռօք շինուած է եւ միւսն լայն կճեայ տախտակ մը կը կրէ, որոյ վրայ Գուրանէն մէկ քանի տուն բան եւ Ապտ-իւլ-Մէճիտի փակագիրը (Թուղրա)

կայ, վասն զի անոր ժամանակը չլինուած է 1855ին։ Կապրօվայի հասարակութիւնն ամբողջ Պուլղարներէ բաղկացեալ է. ռուսական գրաւմանէն առաջ 10,000 բնակչաց մէջ հինգ կամ վեց Տաճիկ միայն կը գտնուէր, որք Կոստանդնուպօլսոյ կառավարութեան կողմանէ ղրկուած հասարակային պաշտօնատարներ էին։ Բնակչաց շատերն հարուստ էին, ուստի Ջոկատն դիւրաւ կարող եղաւ պարէնաւորիլ անդ ուզածին պէս։

Տէրօժինքի զօրավարն իմանալով որ՝ Թռնօվայի մօտ գտնուող զօրաց եւ Կրիւտնէր զօրավարին գնդին ձախակողմեան թեւին մէջտեղ հաղորդակցութիւն հաստատելու համար՝ Սէրվի ղրկուած Անթօնով դասապետն (էսաուլ) 300 Խազախներէ բաղկացեալ մէկ հեծելազօր եւ Վլատիքաւքազի գումարտակին մէկ բոյլն միայն ունենալով իւր քով՝ կը մարտնչէր 24 ժամէ ի վեր 1,500 Չէրքէզներու կամ պաշը-պօզուքներու դէմ, հեծելազօր մը ղրկեց անոր օգնութեան, որով Անթօնով Տաճիկներն ի փախուստ դարձուց եւ վերջնապէս տիրեց Թռնօվայի աջակողմը պաշտպանող այն կարեւոր դիրք։

Ամսոյն 16ին՝ հետեւակազօրաց 9րդ հատուածին հրամանատար Սվեաթօփօլք-Միրսքի իշխանն Կապրօվա հասաւ, որպէս զի Շիփքայի կրճին վրայ լինելիք յարձակման անձամբ առաջնորդէ եւ հետեւեալ աւուր համար պէտք եղած բոլոր տնօրէնութիւններն ըրաւ։ Ծովուն երեսէն 1,200 մէթր բարձրութիւն ունեցող Շիփքայի կրճին մօտ լեռ մը կը բարձրանայ, զոր Պուլղարք Սվէթի-Նիքօլա կ'անուանեն։ Ամրութիւններ բարձրացած էին անդ մեծաւ ճարտարութեամբ, եւ կ'ըսուի թէ Անգղիացւոց ճարտարապետական խմբէն սպայ մ'էր զանոնք շինողն։ Այն բոլոր ճանապարհներն՝ ուրկէ կարելի էր նոյն տեղն հասնիլ, ամուր կերպիւ փակեալ էին ծառոց կոյտերով, պարկէններով եւ մինչեւ անգամ բերդատնակներով (պլօքհաուս) ամենակարեւոր տեղեաց վրայ։ Միով բանիւ՝ ճշմարիտ բերդամրոց մ'էր խիստ ահարկու։

Ռուսական Ջոկատն չորս խմբերու բաժնուեցաւ եւ հրաման եղաւ.

Աջակողմեան խմբին (Օրէլի հետեւակազօրաց 36րդ գումարտակին 4 դասակներէն բաղկացեալ 4 թնդանօթներով հանդերձ) Խօմէնքօ փոխ-գումապետին առաջնորդութեամբ, խաղալ Չէլէնօ-Տրէվօ գիւղէն Իմէթլիայի կողմերն, դասակներէն մին եւ թնդանօթաձիգ զօրքն Չէլէնօ-Տրէվօյի մէջ թողլով՝ Շիփքայի կրճին Տաճկաց ճամբային ռմբակոծելու համար։

Միջին խմբին (հետեւակազօրաց 36րդ գումարտակէն 4 դասակ) յառաջել դէպ ի կիրճն՝ առանց թնդանօթի, լեռնային գէշ ճանապարհէ մը գնալով, յառաջոյ կողմանէ տաճիկ զօրաց մէկ մասն իւր դէմ զբաղեցնելու համար։ Սոյն խմբին հետ էին Սվեաթօփօլք-Միրսքի իշխանն, Տէրօժինսքի զօրավարն եւ Ն. Կ. Բարձրութիւնն Նիքօլա Նիքօլայեվիչ՝ մեծ դքսին որդին, որ իբրեւ սպայակուտի անդամ՝ Տէրօժինսքի զօրավարին աջակից կը գտնուէր։

Ձախակողմեան խմբին (հետեւակազօրաց 36րդ գումարտակէն 2 դասակ), Բիլէնթով հարիւրապետին հրամանատարութեան ներքեւ, կեդրոնին արեւելեան կողմէն անտառային ճանապարհէ մը վեր ելնել եւ Շիփքայի կրճին մօտ երեւան գալ։

Չորրորդ խումբ մը՝ որ 36րդ գումարտակին միւս երկու դասակներէն եւ երկու հեծելազօրաէ բաղկացեալ էր, Գօյնօ-Ռօծէվիչ հազարապետին հրամանաց ներքեւ, Տաճկաց մէկ ճամբային վրայ պիտի յարձակէր, որ Շիփքայի կրճէն 8 հազարամէթր հեռի՝ դէպ ի Արեւելք՝ Գէրտէքի մէջ կը գտնուէր՝ Կապրօվայէն Եանինա տանող կածանի մը վրայ։ Իւրաքանչիւր խումբ իւր հետ ուղեցոյց մէկն ունէր։

Յարձակումն ընելու սահմանեալ գունդն կը բաղկանար ուրեմն ընդ ամենն 12 դասակէ եւ երկու հեծելազօրաէ։ Շիփքայի

կրծին մէջ գտնուող տաճիկ զօրքն ատոր եռապատիկն էր առնուազն , եւ գրեթէ անտառիկ տեղի մը մէջ գտնուելով՝ խիստ մեծ առաւելութիւն մ'ունէր ։ Ռուսաց դիրքագրաւութեանն անկարելի է ուրիշ պատճառ տալ, բայց միայն սա թէ Միրսքի զօրավարին փոխանակ առանձինն յարձակելու եւ Տաճկաց ամբողջ զօրքն իր դէմ ունենալու, կը կարծէր որ Կուրքօ զօրավարին հարաւակողմէն ընելիք յարձակման կը նպաստէր. բայց այս յարձակումն չեղաւ եւ պատճառներն այժմ յայտնի են։ Այսպէս անհամաձայնութեամբ գործ տեսնելնուն համար՝ Կապրօվայի փոքրիկ գունդն խորտակեցաւ ։

Շիփքայի վրայ յարձակելու սահմանեալ երեք խումբքն ճանապարհ ելան ամսոյն 17ին առաւօտեան ժամը եօթնին ։ Աջակողմեան խումբն կէս օրին Զէլէնօ-Տրէվօ հասաւ , իւր չորս թնդանօթներն անդ զետեղեց եւ թողուց հանդերձ մէկ դասակով, եւ յառաջ խաղալով մինչեւ Իմէթլիայի անցքն հասաւ երեկոյեան ժամը եօթնին առանց Տաճկաց հանդիպելու ։

Միջին խումբն ճանապարհներուն իրար կտրած տեղը ժամանեց առաւօտեան ժամը իննին. ժամը տասնին Պօյնօ-Բօծէվիչ հազարապետին մէկ տեղեկագիրն հասաւ, որով Պէտէքի կրծին մէջ Տաճկաց մէկ ամրոցիկին առնուած լինելն իմաց կը տրուէր եւ զօրավիգ կը խնդրուէր ։ Անկից պահպանութեան համար թողուած երկու դասակներէն մին՝ այն սայլին քով ղրկուեցաւ։ Կէս օրին միջին խումբն վերստին ճանապարհ կ'ելնէր ։

Վերելքն խիստ դժուարին եղաւ լերին վրայ։ Արձակամարտ զօրաց երկրորդ դասակն, որոյ հետ կը քալէր հետեւակազօրաց 9րդ հատուածին սպայակոյտի գլուխ Ճէլէրս գումապետն, կէս օրէն 2 ժամ յետոյ Տաճկաց առաջին կայանին դիմացն հասաւ, գլխաւորապահ Ղազախաց խմբակի մ'առաջնորդութեամբ , որոյ հրամանատարն էր Սթրուխով գումապետն՝ ընդհանուր հրամանատարին թիկնապահներէն (եավէր) մին։ Ժամը 2ը 20 վայրկեան անցնելով՝ Սթրուխով գումապետն եկաւ իմաց տալու Ճէլէրս գումապետին թէ Տաճիկք իւր վրայ կը խաղային ։ Այս վերջինն իսկոյն արձակամարտ զօրաց երկրորդ դասակն բարձրաւանդակի մը վրայ զետեղեց, եւ 6րդ եւ 7րդ դասակներն եւս նոյն բարձրաւանդակին զառիթափին վրայ ։

Ժամը երեքին Միրսքի իշխանն՝ Տէրօժինօքի զօրավարին եւ Նիքօլա Նիքօլայէվիչի՝ մեծ դքսին որդւոյն հետ գնաց Տաճկաց դիրքը քննելու ։ Նոյն պահուն Տաճիկներն կրակ ընել սկսան երկու կարգ պարկէններու, մէկ բերդաստանակի եւ մէկ ամրոցիկի մէջէն։ 2րդ, 6րդ եւ 7րդ դասակներն անդրադարձութիւն ըրին մէկէն. 12րդ դասակն միայն մեկուսի մնաց։ Այս հրացանութիւնն տեւեց մինչեւ ժամը եօթն։ Խմբին յարձակմանն օգնելու համար Զէլէնօ-Տրէվօյի մէջ թողուած չորս թնդանօթներն անկարելի եղաւ գործածել հեռաւորութեան պատճառաւ, որ երեք հազարամէթրի չափ էր ։ Երկու կողմանքն եւս իրենց գրաւած տեղեաց վրայ մնացին։

Կէս օրէն գրեթէ 3 ժամ անցած՝ միջին խմբին մարզիկն թնդանօթաց որոտալու ձայն մը լսեցին Տաճկաց դիրքէն յետակողմէն. կարծուեցաւ թէ Կուրքօ զօրավարին գնդէն էր այն. բայց իրօք Տաճկաց թընդանօթներուն ձայնն էր, որք ձախակողմեան խմբին (Բլէնթով) վրայ կրակ կ'ընէին։ Այս խմբին ուղեցոյցն ոչ թէ անտառային ճանապարհէն առաջնորդեց՝ այլ մէկ ուրիշ ճանապարհէ, ուրկէ գնալով՝ կէս օրէն երկու ժամ յետոյ Տաճկաց երկու ճամբարներուն գնտակ հասնելու չափ մօտ հասաւ՝ Շիփքայի կրճէն ոչինչ հեռի ։ 8րդ դասակին առաջապահ զօրաց շուտով իբրեւ արձակամարտ ցրուելովն եւ կրակ ընելու սկսելովն էր որ խմբին մնացեալ զօրքն եւս կարող եղաւ կարգաւ շարուիլ, երբ անտառին մէջէն դուրս կելնէր այնպիսի կածանէ մը՝ ուր երկու մարդ քովէ

քով չէր կրնար քալել։ Կռիւը տեւեց ժամը երկուքէն մինչեւ վեց։ Գլինճով Հարիւրապետն մինչեւ ժամը չորս դիմացաւ. բայց սալա առաւելագոյն զօրութեամբք իւր խումբն ընկճեալ տեսնելով, եւ ինքն իսկ երեք տեղէ հրազինուց հարուած ընդունելով, հրաման ըրաւ իւր խմբին վերջանելու. խումբն ժամը չորսէն մինչեւ վեց կռուելով ետ քաշուեցաւ՝ երեք կողմանէ Տաճկաց մէջ մնացած, որոց թիւն 12 դասակի կը հասնէր 5 թնդանօթով հանդերձ։ Խմբին բոլոր սպայից մին միայն, այն է Օրլով փոխ-հարիւրապետն (միւլազիմ) չվիրաւորուեցաւ. իւր դասակին մէկ քոյն այս սպային հրամանաց ներքեւ Տաճիկները վռնտեց, որոց վրայ քանիցս սուինով յարձակում ըրաւ, եւ այսպէս ամբողջ խումբն կարող եղաւ նահանջել կարգաւ։ Ցիալքօվսքի երկրորդական փոխ-հարիւրապետն՝ որ վիրաւոր լինելով հանդերձ չուզեց կռուատեղէն հեռանալ, մինչեւ վերջն Օրլով հարիւրապետին քով մնաց եւ օգտակար կերպիւ աջակցութիւն ըրաւ անոր։

Գօյնօ-Ռօծէվիչ հազարապետին հրամանաց ներքեւ գտնուած չորրորդ խումբն աւելի բարեբաղդ եղած էր։ Ամսոյն 16ին ճանապարհ ելեր էր առաւօտեան ժամը ութին, եւ անդադար քալեր էր մինչեւ հետեւեալ օրն յոյժ դժուարին ճանապարհներէ։ Ամսոյն 17ին առաւօտեան ժամն երեքուկէսին՝ այս խմբին մարդիկն՝ Պէրտէքի լերան գագաթան վրայ եղած եւ 1,500 կամ 2,000 Տաճիկ պարունակող մէկ ճամբարին մինչեւ 200 մէթր մնալու չափ մօտեցեր էին սողալով, երբ յանկարծ ուղեցոյց Պուլղարն իւր հրացանին կայծահանն ակամայ սեղմեց։ Հրացանը պարպուեցաւ, եւ ձայնէն ամբողջ ճամբարը դղրդեցաւ, որոյ զինուորներն իսկոյն կրակ ընել սկսան մոլեգին. այսպէս բանն իմացուեցաւ, վասն որոյ վայրկեան մը չկորուսանելու էր. ռուս սպայք ելան կանգնեցան, իրենց թիկուն ծայրոմն Տաճկաց ճամբարը ցոյց տուին եւ յառաջ խոյացան գոչելով. «Յառաջ սուինով։» Զինուորք նոյա հետեւեցան եւ մէկ ակնթարթի մէջ հասան տաճիկ կանոնաւորաց քով։ Կէս ժամ ամբողջ գլուխ ընդ գլուխ կռիւ մ՚եղաւ սոսկալի կատաղութեամբ։ Հուսկ ապա արեւը ծագած ժամանակ՝ Ռուսաց երկու դասակներն այն դիրքը գրաւեր էին 58 մարդ կորուսանելէ յետոյ։ Զառիթափներուն վրայ տապաստ անկեալ էին 200 տաճիկ կանոնաւորաց դիակներն, որոց ամենքն գրեթէ սուինով զարնուեր էին իբրեւ դաշունի հարուածով. Եթէ սպայք իրենց յոգնահար ատրճանակներն գործածած չլինէին, կարելի էր ըսել թէ Ռուսք կրակ չէին ըրած. Օրէլի հետեւակազօրքն սուինով կռուեր էր եւ Խազախներն հրացանարնոյ հարուածներ տալով։ Օրէլ ռուսերէնի եւ պուլղարերէնի մէջ արծիւ կը նշանակէ. այս գեղեցիկ քաջագործութենէն յետոյ՝ Կաբրօվայի բնակիչք «Պաղքանաց արծիւ» անուանեցին Օրէլի գումարտակին զինուորներն։

Սոյն յաջողութեան հակառակ՝ այն աւուր կռիւն շատ գէշ եղած էր. երկու սպայք եւ 77 զինուորք տապաստ անկեալ էին, եւ 4 սպայք եւ 128 զինուորք վիրաւորեալ, այսինքն թէ՝ 10ին մէկ կորուստ կար։ Այս կորուստներն, զինուորաց խոնջութիւնն, որոց գրեթէ ամենքն եւ մինչեւ անգամ պահեստի զօրքն կռուոյ մէջ մտած էին, եւ մանաւանդ Գլինճով հարիւրապետին նահանջն՝ որով Տաճիկք իրենց առջեւ անտառային ճանապարհ մը բաց կ՚ունենային եւ անոր ամբողջ ջոկատին յետակողմը կարող էին անցնելու, ստիպեցին զՄիրսքի իշխանն՝ իւր չորս խմբերն ետ քաշելու՝ ամսոյն 17էն 18ը լուսնալու գիշերին, եւ 16ին գրաւած դիրց մէջ զետեղելու։ Այսպէս անցուց 18րդ օրն մեծ անձկութեամբ։ Ի՞նչ եղած էր Կուրքօ զօրավարն, որ ժամադրութեան տեղն չէր հասած։ Երեկոյին Պուլղար մը հասաւ թուղթ մը բերելով՝ որով առաջապահ

գնդին հրամանատարին կը ծանուցանէր իւր յապաղման պատճառներն, եւ կ՚ազդարարէր թէ ամսոյն 18ին առաւօտուն ալիտի յարձակէր։ Այս յարձակման համար Կուրքօ զօրավարին որոշած ժամանակակէտն անցնելէն ի վեր՝ 12 ժամ եղած էր, վասն որոյ անպատեհ էր այլ եւս նմա օգնելու ելնել, եւ ինչպէս որ Կարրօվայի ջոկատին յարձակումն եղած էր ամսոյն 17ին, նոյնպէս եւ Կուրքօ զօրավարին յարձակումն առանձինն եղաւ 18 ին, եւ այն պատճառաւ յաջողութիւն չունեցաւ։ Իրարու հետ կցորդութիւն չունեցող երկու խմբից միահաղոյն ընելիք գործողութեանց գէշութիւնն այս է։

Կուրքօ զօրավարին գործողութեանց պատմութիւնն սկսելէ առաջ, ի դէպ է նշանակել ռուս սպայից արիութիւնն, վտանգին դիմագրաւելու մասին իրենց ցոյց տուած յանդգնութիւնն եւ մէն մի կռուէ յետոյ սպաննեալ եւ վիրաւորեալ սպայից եւ զինուորաց մէջ եղած անսովոր համեմատութիւնը։ Պաշտօնական տեղեկագիրք կը հաւաստեն թէ Կալտին հրամանատարն եւ սպայակոյտի անդամ Անտրիանով հարիւրապետն ամենէն առաջ նետուեր են Պէյրտէքի պատնէշներուն մէջ, թէ նոյն կէտին վրայ գործող խմբին սպայք անձամբ կռուեր են, ոմանք մեռելոց վրայէն առնուած սուինով, եւ թէ գրեթէ ամենքն մէկ քանի Տաճիկ սպաններ են։

ԱՌԱՋԱՊԱՀ ԳՆԴԻՆ ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ՇԻՓՔԱՅԻ ԿՐՃԻՆ ՎՐԱՅ

Ըսուեցաւ որ Կուրքօ զօրավարն ամսոյն 17ին կէս օրին Գըզանլըգ մտնելէն յետոյ՝ Շիփքայի կիրճն հասնելու անհամբեր գըտնուելով, իւր հեծելազօրն յառաջ ղրկեր էր։ Խազալաք կիրճին ստորոտն եղած համանուն գիւղն հասնելով՝ տեսան որ Տաճիկներն այն տեղ հաստատուած ճամբարը պարպելու եւ մեկնելու ետեւէ էին։ Առաջամարտ մ՚եղաւ, յորում փոքր ի շատէ վիպասանական հանգամանք ունեցող դէպք մը պատահեցաւ։

Ուշաքով գումապետն իւր եռանդեանը չկրնալով ժուժալ, մէկ քանի Խազախներու հետ դիմագրաւութեամբ այնքան յառաջեց, որ յանկարծ պաշը-պօզուգներու ստուար խմբի մը մէջ գտնուեցաւ։ Սոքա իւր փոքրաթիւ մարդոց վրայ կատաղութեամբ յարձակեցան. գումապետն չորս տեղէ վիրաւորուելէ յետոյ՝ տակաւին ժամանակ մը կռուեցաւ. բայց իւր ձին ըսպաննուելուն՝ ինքն ալ անոր հետ մէկտեղ ինկաւ։

Ուշաքով ուժաթափ լինելուն՝ հազիւ կարողութիւն ունեցաւ ձիոյն տակէն ելնելու։ Տեսնելով մէկ կողմանէ փախչելու անհնարութիւնն եւ միւս կողմանէ Տաճկաց բազմութիւնն, մտածեց որ զինուորական պատիւը պահած էր եւ որոշեց անձնատուր լինել։ Բայց նոյն պահուն տեսաւ որ Խազախ մը իւր թուրն Տաճկաց յանձնած լինելով անգթաբար սրախողխող կը լինէր անդէն։ Զինքը շրջապատող եւ նեղը ձգող պաշը-պօզուգներուն դէմքն այնքան կատաղի եւ խոժոռ էր, որ այլ եւս չտարակուսեցաւ եւ հասկցաւ թէ ինչ վիճակի պիտի հանդիպէր։

Իսկոյն որոշում մ՚ըրաւ։ Անշուշտ կարող էր կռուիլ մինչեւ վերջին շունչն։ Բայց դարձեալ անտարակուսելի էր ինչ վիճակ ունենալիքն։ Իւր անձը պահպանելու բնազդումն գերազօր լինելով, ուզեց փախչելու փորձ մ՚ընել. «Տղայք, ըսաւ իւր մօտը տակաւին յուսահատաբար կռուող երեք չորս Խազախներուն. տղայք, ետեւէս եկէք։» Գումապետն ինքզինքն ամփոփելով՝ բոլոր ուժովն սկսաւ փախչիլ իւր մարդոց հետ։

Մօտն անտառակ մը կար։ Հասան անդ՝ առանց արգիլուելու իրենց վրայ պարպուած հրացանի հարուածներէն։ Անտառակին միւս կողմը կիրճ մը կար որոյ մէջէն անցան։ Այսպէս վազեցին 8 հազարամէթրի չափ տեղ, առանց կանգ առնե-

լու, մինչ իրենց արիւնը կը հոսէր, եւ պաշը-պօզուղներն հետամուտ կը լինէին անոնց. սոցա վայրագ գոչիւնն լսելի էր նոցա, բայց նոքա իբր թեւաւոր էին։ Ժայռի մը ետեւ կծկեցան եւ անդ սպասեցին գիշերային մութը կոխելուն։ Մէկ քանի օր յետոյ ռուսական ջոկատի մը քով հասան։ Անկէ առաջ տեղեկագիր մը ղըրկուեր էր Փէթէրսպուրգ, յորում կըսուէր թէ Ուշաքով գումարտակէն աներեւոյթ եղած՝ այսինքն մեռած կամ գերի բռնուած էր. բայց ամենքն այնպէս կը հաւատային թէ մեռած էր։ Իւր քոյրն յուսահատութենէն Պուքրէշ վազեց՝ յուսոյ փոքրիկ նշոյլ մը միայն ունենալով։ Որքան ուրախացաւ, երբ իմացաւ թէ կենդանի է նա եւ մինչեւ իսկ վտանգէ զերծ։

Ռուսական հեծելազօրուն յանկարծ Շիփքա գիւղն հասնելուն վրայ պատահած կռուոյ արդիւնքն. այս եղաւ, որ Տաճիկներն ստիպուեցան ետ քաշուելով Շիփքայի կիրճին մէջ փակուիլ, առանց լերան ստորոտն հաւաքուած պաշարն հետ տանել կարենալու։ Արդ՝ Գըզանլըգի եւ Շիփքա գիւղին Ռուսաց ձեռքն անցնելովն՝ այլեւս անկարելի էր Տաճկաց Թունճայի հովտին մէջէն ուտեստ ճարել, եւ Կապրօվայի ռուսական ջոկատն հիւսիսային կողմէն անցքը փակած էր. Ռուսական յառաջապահին լաւ տրամադրութեամբքն յառաջ եկած այս յարմար պարագայք անկարելի ըրին Տաճկաց համար՝ մէկ քանի օրէ աւելի պաշտպանել կիրճին ամրութիւններն, որք գրեթէ անառիկ կը համարուէին։ Կուրքօ զօրավարն Տաճկաց այս յուսահատական կացութիւնը տեսնելով՝ ամսոյն 18ին առաւօտուն նամակ մը ղրկեց տաճիկ հրամանատարին, յորում կ'առաջարկէր որ անձնատուր լինի։

Մէհէմմէտ փաշա պատասխան չտալով, Կուրքօ զօրավարն որոշեց յարձակիլ։ Փոքր ինչ յիմարական ձեռնարկութիւն էր արդարեւ, բայց յանդգնութիւնն մինչեւ ցայն ժամ յաջողութիւն բերած էր ռուս զօրավարին եւ դարձեալ պիտի բերէր։ Շիփքա գիւղէն կը տեսնուէր 8 կամ 900 մէթր վեր Տաճկաց ճամբարն՝ դալարազարդ տարահարթի մը վրայ, եւ 100 մէթր աւելի վեր կը տեսնուէին Սվէթի-Նիքօլա լերան մարտկոցին պաշտպաններն։ Այս հազարամէթր բարձրութեամբ զառիվերին ինչպիսի սարսափելի բան լինելուն վրայ մարդ կրնայ գաղափար ստանալ, երբ իմանայ թէ դաշտէն սկսեալ մինչեւ վեր եղած ճանապարհն 4 հազարամէթրէն աւելի երկայնութիւն չունի՝ լերան կողին վրայ անհամար օձապտոյտ շրջաններն ետ ի միասին հաշուելով։ Գրեթէ այծերու ճանապարհ մ'էր այն ապառաժուտ, ուստի անկարելի էր թնդանօթ վեր հանել։ Վասն որոյ յարձակումն ընելու սահմանեալ խումբն բաղկացաւ որսորդ զօրաց 13րդ եւ 15րդ վաշտերէն եւ փլասթունններուն 2 դասակէ։

Երկու վաշտերն արեւելեան կողմէն վեր ելան լեռնէն եւ երկու դասակներն հարաւային կողմէն, որսորդ զօրքն եւ փլասթուններն Տաճկաց առաջին դիրից վրայ ապահով տեղերէ հանելով՝ գրաւեցին մէկէն զայն, եւ երկրորդէն հազիւ 700 մէթր հեռի կը գտնուէին, երբ Տաճիկներըն կրակ ընելէ դադրեցան եւ պարապակին վրայ ժողովեցան՝ յօդս բարձրացնելով իրենց հրացաններն, որոց ծայրը ճերմակ թաշկինակներնին կապած էին։ Ամեն ոք գիտէր թէ Կուրքօ զօրավարին առաջարկութիւնն անպատասխանի մնացած էր, վասն որոյ պահ մը վարանումն եղաւ, բայց երբ սպիտակ դրօշ մը զառիթափին վրայէն վար բերուեցաւ եւ դրօշին քով երկու սպայք տեսնուեցան, Ռուսք այլեւս տարակոյս չունեցան թէ Տաճիկները կ'ուզէին յետս կալ դիմադրութենէ։ Գերմանական դեսպանատան զինուորական կցորդ Լիկնից հազարապետն՝ որ Կուրքօ զօրավարին արշաւանացն հետեւեր էր, եւ կռուողներուն մէջ կը գտնուէր, կը պատմէ թէ յամր կերպիւ ետ քաշուող տաճիկ

արձակամարտներէն յետոյն մօտեցաւ եւ Տաճկին խօսիցն եւ շարժուածոց իւր վրայ ըրած տպաւորութիւնն այս կարծիքը հաստատեց թէ Տաճիկներն պատրաստ էին անձնատուր լինելու։ Հազարապետն Տաճկին հետ մինչեւ պատնէշը այինի մը հանդիպելուն վրայ, եւ մինչեւ այն տեղն ուր կը գտնուէին դրօշն եւ սպայք՝ գնաց որսորդ զինուորին հետ՝ որ այլ եւս չտեսնուեցաւ։ Անոր ամենքն պատնէշն ելան, եւ Տաճիկներն պարտակէն վար իջան։ Որսորդ զօրաց հրաման տրուած էր որ ամեն



ԳԸԶԱՆԼԸԳԻ ՊՈՒԼՂԱՐ ՓՕՓԵՐՆ ԵՒ ՏԱՃԻԿ ՊԷՅԵՐՆ ՔԱՂԱՔՆ ՌՈՒՍԱՑ ՅԱՆՁՆԵԼՈՒ ԿՈՒԳԱՆ

տի ելնէր, բայց որսորդ զօրաց ռահին սպայակոյտին մէկ անդամն բարեբաղդաբար զինքը կասեցուց։ Որսորդ զօրաց մին կանչուեցաւ որ Թաթար լինելով տաճկերէն գիտէր, եւ Տաճկին հետ դրկուեցաւ սպայ մը կանչելու պաշտօնով։ Տաճիկ զինուորն ուրախութիւն ցոյց տուաւ մահմետականպատահականութեանց դէմ զգոյշ կան եւ ինքզինքնին պատսպարեն։ Լիկնից Հազարապետն դէպ ի պատնէշը տանող ճանապարհին վրայ մնաց՝ իւր սուինին ճերմակ թաշկինակ մը կապող զինուորին եւ սպայի մը հետ, սպասելով որ ուզուած տաճիկ սպայն գայ։

Ցանկարծ հրացան մը պարպուեցաւ պատնէշին հիւսիսային կողմն շղթայաձեւ շարուած արձակամարտներուն կարգէն. երկու հարուած եւս արձակուեցաւ նոյն իսկ պատնէշէն, եւ տաճիկ զօրաց գծին մէկ ծայրէն միւս ծայրը նշան մը տրուելով՝ բոլոր հրացանները պարպուեցան անմիջապէս։ Տաճիկներն այն սպիտակ դրօշները պարզեր էին որպէս զի Ռուսք օսմանեան պատնէշներուն կրակին մօտենան անպատսպար։

Որոշուած զօրքն՝ պահ մ՚ընկրկելէն յետոյ՝ վերստին իրենց անխռովութիւնն ստանալով՝ յառաջ նետուեցան, եւ ամրոցիկը գրաւեցին մէկ քառորդի մէջ։ Բայց բաւական բազմաթիւ չէին գլխաւոր ամրութեանց տիրելու համար, որք Քառուփի դաշտային թնդանօթներէ զատ լեռնային թնդանօթներ պարունակող մարտկոցներէ կը բաղկանային։ Այն հրընկէց անօթներն օքանչելի կերպիւ զետեղեալ էին՝ վերջին ծայր ճարտարութեամբ շինուած պատնէշներու ետեւ։ Շիփքայի օձապտոյտ եւ խորտաբորտ ճանապարհէն զատ՝ որ մինչեւ վերոյիշեալ լերան կատարը կը բարձրանայ, ուրիշ ճանապարհ մը կայ որ լերան գագաթին երկայնութեանը կ՚երթայ. Շիփքայի անցքին բուն ճանապարհն է այս։ Լերան գագաթն յոյժ անձուկ է, մէկ քանի մեթր լայնութիւն միայն ունի. իւր դալարազուարճ կողերն միապաղաղ են եւ յարձակող զօրաց համար պատսպարուելու տեղ մը չկայ անդ։ Քաջ արձակամարտք մէկ քանի անգամ փորձեցին այն կողերէն վեր ելնելու, որոց գագաթան վրայ կը շողշողային պատնէշներու ետեւէն Տաճկաց ցրկիճներն եւ թնդանօթներն. բայց Ռուսք թնդանօթ չունենալով՝ անկարելի բանի մը համար կ՚աշխատէին, եւ ստիպուեցան յետս կալ՝ թողլով անդ իրենց առաջին շարքին զինուորներէն մէկ քանիներն, որք վիրաւորեալ էին։

Տաճկաց թնդանօթներուն ռմբաձգութեանն եւ երկու կարգի վրայ շարուած հետեւակազօրաց կրակին հանդիպելով՝ որմէ որոշուած զօրաց 13րդ վաշտին հրամանատար Քլիմանթօվիչ գումապետն ըսպաննուեցաւ, եւ տեսնելով որ Օրէլի գումարտակը երեւան չգար եւ չյարձակիր ինչպէս որ կը յուսացուէր, որոշուած զօրքն ու փլասթունններն ետ քաշուեցան 15րդ վաշտին գլխաւորին հրամանաւ։ Նահանջն կատարեալ բարեկարգութեամբ եղաւ։ Տաճիկներն իրենց թնդանօթներով կրակ ըրին. բայց պատնէշներէն դուրս չելան։ Փլասթուններու դասակաց հրամանատար Պաշթաննի դասապետ (էսաուլ) սպաննուեցաւ զօրաց ետ քաշուելու պահուն. Ջոկատն 300 էն աւելի մարդ կորուսած էր մինչեւ այն ժամանակ։

Առաջապահ գունդն ուրիշ կորուստ մը եւս ունեցաւ յուլիս 18ի կռուոյն մէջ։ Ձիաւոր ռահվիրայից հրամանատար գումապետ Տը Ռօնիքէր կոմսն հետեւեալ պարագայից մէջ սպաննուեցաւ։ Ուրալի Խազախաց հեծելադասուն Գըզանլըգէն Շիփքա կ՚երթար՝ արձակամարտից սահին քով հասնելու համար, եւ հեծելադասին առջեւէն կ՚ընթանար սպայից եւ մէկ փողահարի հետ։ Անտառի մը մօտ 20ի չափ Տաճիկներ տեսնուեցան, որք իրենց հրացաններն պարպելով՝ սրարշաւ խոյս տուին։ Գումապետն անդէն սպաննուեցաւ։ Իսկոյն հրաման տրուեցաւ ամբողջ շրջակայ տեղեաց մէջ խուզարկութիւն ընելու եւ տաճիկ ասպատակաւորաց փոքր խմբերը ջնջելու։

## ՇԻՓՔԱՅԻ ԿՐԾԻՆ ԳՐԱՒՈՒՄՆ

Կուրքօ զօրավարին խումբն ուժաթափ եղած էր խոնջութենէ։ Ամենէն աւելի պարտասեալ զինուորաց հանգիստ տալու եւ միանգամայն Գըզանլըգն յանկարծական յարձակման մը դէմ պաշտպանելու համար՝ ամսոյն 18ին երեկոյին այն քաղաքը ղրկեց Պուլղարաց հինգ վաշտ,

Տօնաքի Խազախաց ասհն, կայսերական անձնապահ հեծելազօրաց կէս դասն, Ուրալի Խազախաց հեծելազատն եւ լեռնային թնդանօթներն (5 1/2 վաշտ, 18 1/2 հեծելադաս, եւ 14 թնդանօթ), եւ հետեւեալ օրն վերստին յարձակման սկսելու համար իւր քով պահեց Շիփքա գիւղին մէջ որսորդ զօրաց չորրորդ ասհն, Պուլղարաց մէկ վաշտն, Քրէմլի հիւսարաց գումարտակն, վիշապազօրաց ասհն եւ ձիով կրելի թնդանօթաց երեք շարերն (5 վաշտ, 12 հեծելադաս, եւ 16 թնդանօթ)։

Ամսոյն 19ին առաւօտուն կանուխ տաճիկ սպայ մը ներկայացաւ Կուրքօ զօրավարին եւ նամակ մը յանձնեց, որով Շիփքայի կիրճին հրամանատար փաշան կը յայտնէր թէ անձնատուր լինելու պատրաստ էր։ Իսկոյն գրի առնուեցան անձնատրութեան եւ զինաթափութեան պայմանները. եւ որոշուեցաւ նոյն օրն այս գործողութեանց սկսիլ կէս օրին։

Կուրքօ զօրավարն տաճիկ սպային հարցուց թէ ինչ պատճառ կարելի էր տալ նախորդ օրն Տաճկաց գործած նենգին։ Պատգամաւորն պատասխանեց՝ թէ տաճիկ սպայք անկարող եղած էին թոյլ չը տալու իւրեանց զինուորներուն որ Ռուսաց վրայ հրացան պարպեն, այնքան մօտ տեսնելով զանոնք։ Ապա մեկնեցաւ խոստանալով որ փաշային կողմանէ պատասխան կը բերէ երկու ժամէն։ Նորա երթալուն վրայ ժամանակ մ'անցնելէն յետոյ՝ Կուրքօ զօրավարն որոշեց նախորդ օրն եղած կռուոյն ասպարէզին վրայ անկեալ վիրաւորները վերցնելու համար՝ այն բանակցութեանց միջոցէն օգուտ քաղել, եւ այս նպատակաւ անզէն դարմանիչներ ղրկեց Շիփքայի կիրճն, որոց հետ գնացին պուլղարական լեգէոնէն մէկ քանի սպայք եւ զինուորք՝ նոյնպէս անզէն, սպիտակ դրօշներով եւ սպիտակ ծղանոցներով։

Սակայն կէս օր եղաւ եւ պատգամաւորը չէր դառնար։ Կուրքօ զօրավարն այն ժամանակ սկսաւ կասկածիլ թէ Տաճիկք իւր միամտութեանը դէմ խաղ մը խաղացած էին՝ պատգամաւոր ղրկելով եւ բանակցութեանց սկսելով, որոց նպատակն ուրիշ բան չէր արդարեւ բայց եթէ ժամանակ շահիլ, որպէս զի կարենան իրենք լերան կածաններէն փախչիլ։ Կամաւոր զօրաց խումբ մը ղրկեց Տաճկաց ճամբաները զննելու համար, եւ լեռնային չորս թնդանօթներով հանդերձ որսորդ զօրաց վաշտ մը՝ ինչպէս նաեւ պուլղարական մէկ վաշտ պահեստի կացոյց, որպէս զի կամաւորաց օգնեն եթէ դարձեալ նենգ լինի։ Բայց կէս օրէն գրեթէ 2 ժամ յետոյ, երբ տակաւին կամաւորք իրենց յանձնուած գործը չէին կատարած, մէկ քանի դարմանիչք դարձան անցքէն, եւ իմաց տուին թէ Տաճկաց ճամբաներն թափուր էին, թէ կիրճին մէջ Տաճիկ չէր մնացած եւ թէ Կապրօվայի ջոկատին առաջապահք այն տեղ ժամաներ էին։

Ահաւասիկ ինչ որ եղեր էր։ Կապրօվայի ջոկատն, ինչպէս ըսուեցաւ, իւր գրաւած տեղերէն յառաջ չէր գնացած ամսոյն 18ին։ Օրէլի գումարտակէն ինն դասակ չորս թնդանօթով հանդերձ՝ ամսոյն 19ին առաւօտեան ժամը չորսին դէպ ի կիրճն յառաջեց՝ Սքօպէլեվ հատուածապետին հրամանատարութեան ներքեւ, որ նախորդ օրն հասեր էր։ Սոյն խմբէն Սթրուխով գումապետն՝ որ այս արշաւանաց մէջ ցոյց տուած պանծալի ընթացքին համար յետոյ հատուածապետ եղաւ, յառաջ ղրկուեցաւ, այն բարձրաւանդակը գրաւելու հրաման տրուելով նմա, որոյ վրայ միջին խումբն ամսոյն 17ին կռուած էր։

Սթրուխով գումապետն այն տեղ հասնելէն առաջ՝ իւր զօրաց կանգ առնուլ տուաւ, եւ ինքն դասակի հրամանատար Նիքիֆօրով հարիւրապետին եւ 10 արձակամարտից հետ բարձրաւանդակին վրայ ելաւ Տաճկաց դիրքը զննելու համար։ Օսմանեան ամրութեանց մէջ ոչ ոք կը տեսնուէր։ Ուստի աւելի վեր ելան, Տաճկաց պատնէշներէն դարձեալ ձայն մը չլսուե-

ցաւ։ Այն ժամանակ որոշուեցաւ աւելի յառաջ երթալ, հրաման տրուելով դասակին որ հետ գայ, հասան այսպէս մինչեւ Տաճկաց պատնէշներուն առաջին գիծն, զորս ամայի գտան։ Աւելի վեր ելան լեռնէն, մէն մի քայլ անցնելուն՝ կարծելով թէ այլ եւս թշնամին իրենց վրայ կրակ պիտի ընէ. բայց ոչ ոք տեսնուեցաւ։

Նոյն պահուն Սքօպէլեվ հատուածային հասաւ երկու դասակով, եւ նորա հրամանատարութեամբ երեք դասակներն շարունակեցին կրճէն վեր ելնել։ Այսպէս անցան հետզհետէ պատնէշներու, պարկէններու եւ մարտկոցներու մէկ քանի շարքէ, յորս ձգուած թնդանօթներէն եւ Տաճկաց դեռ աղեւ փախստեան հետքէն զատ բան չտեսնուեցաւ։ Զէնք, զգեստ, մթերք, փամփշտի արկղեր եւ այլ եւ այլ տեսակ կարասիներ ամեն կողմ խառն ի խուռն թողուած էին գետնի վրայ։

Առաջին ճամբուն մէջ կէս մորթուած եզներ, վիրաւոր Տաճիկներ, ձիաններ եւ երեք դրօշ գտնուեցան։ Ռուսք մէկ հոգի միայն գերի բռնեցին, որ յայտնեց թէ անցքին մէջ 14 վաշտ (թապուր) կար եւ թէ նոյն օրն առաւօտուն փաշան հրաման ըրած էր նոցա փախչելու։ Ժամանակն հաշուելով՝ պատգամաւորը ղրկուած լինելու էր Կուրքօ զօրավարին՝ կամ նոյն իսկ այդ հրամանը տրուած պահուն, կամ սակաւիկ մի յետոյ, յայտնապէս միջոց շահելու նպատակաւ։ Գլխաւոր անցքին ճամբուն մէջ կը տեսնուէր մի եւ նոյն խառնաշփոթութիւնն եւ դեռ նոր շտապաւ եղած փախստեան մը հետքն։ Բռումի երեք թնդանօթներ տակաւին դէպ ի հարաւ կը նայէին ճիշդ՝ ինչպէս որ զետեղեալ էին ամսոյն 6ին եղած կռուոյն միջոցին։ Նպատականիշք տակաւին բարձեալ չէին այս թնդանօթաց վրայէն Տաճկաց ձեռօք։ Սոյն ճամբուն մէջ գտնուեցաւ նաեւ հեռաջրութիւն մը, որ տակաւին աւարտեալ չէր։ Ռուսաց ձեռքն անցան 8 թնդանօթ, որոց հինգն Բռումի էին, Փիպօտիի եւ Մարթինիի դրութեամբ մէկ քանի հազար հրացան, ստոմաններ (մոթարա), փամփշտամաններ եւ պարկեր։ Տաճիկներն արեւմտեան կողմն եղած առապար կածանէ մը փախեր էին, ուր եթէ վրանին չնչին աղխ մը գտնուէր, խոչընդոտ պիտի լինէր իրենց։ Սպայք եւս արագ փախչելու համար՝ իրենց զինուորաց պէս ըրած էին. անկիւն մը դիզուած տեսնուեցան սոցա թրերն՝ կարմիր մետաքսով եւ ոսկի թելերով գործուած գօտիներումն հանդերձ, ոսկեզօծ կիսալուսնով եւ ոսկեհուռ եւ ջնարակեալ կաշիէ՝ յոգնահար ատրճանակի պատեաններ, եւ ամերիկեան յոգնահարներ, որոց օղակին անցած էր կիսովին ոսկեթել եւ կիսովին կարմիր մետաքսէ հիւսեալ երկայն լար մը։

Սվէթի-Նիքօլա լերան վրայ Սքօպէլեվ զօրավարին հասնելէն մէկ քանի վայրկեան յետոյ, հասան նաեւ՝ վիրաւորները վերցնելու համար Կուրքօ զօրավարին կողմանէ ղրկուած դարմանիչք. հիւսիսային եւ հարաւային երկու ջոկատներն այսպէս հաղորդակցութիւն ունեցան միմեանց հետ։ Կուրքօ զօրավարն այս բաներն իմանալուն պէս՝ իւր պարտասեալ զօրաց հրամայեց, ինչպէս արդէն ըսուեցաւ, որ Շիփքայի եւ Գըզանլըգի ճամբաներուն մէջ մնան, եւ ինքն իւր սպայակոյտին եւ հեծելազօրաց փոքր խմբի մը հետ կիրճը հասաւ։ Նրանց մէջ փախստական գտնուող Տաճիկներն, եթէ կարելի էր, ձերբակալելու համար՝ հրաման ըրաւ միջակազօրաց՝ թնդանօթաձիգ զօրօք հանդերձ գրաւելու լեռնային կածաններուն հարաւային ելքն, որք Իմէթլի եւ Սօֆուլար գիւղերը կը տանին՝ Գըզանլըգի արեւմտեան կողմը. բայց այս արշաւանքն արդիւնք չունեցաւ եւ Շիփքայի տաճիկ պահակապանքն կարացին Ցիլիպէ հանիլ։

Կուրքօ զօրավարն Տաճկաց թողած դիրքն որքան ամուր լինելը կարաց իւր աչօք տեսնել եւ հասկանալ։ Այն 14

վաշտերն որք 8 կամ 9 հազար մարդէ բաղկացեալ լինելու էին, ճիշդ ինչպէս փախան այն գրեթէ անառիկ պատնէշներէն ։ Տակաւին մէկ քանի աւուր համար պարէն ունէին, վասն զի ճամբարին մէջ աստ անդ կէս մը մորթուած եզներ եւ իւղով, լուբիայով եւ կոկուած հացով լի պարկեր կը տեսնուէին ։ Սքոպէլեւ եւ Կուրքօ զօրավարք այն տեղեաց մէջ յածելով՝ հասկցան շուտով սոյն խուճապանաց սոսկալի պատճառն ։ Տաճիկներն երկիւղ ունեցեր էին՝ որ պաշարուելով անձնատուր լինելու կը ստիպուին եւ վրէժխնդրութեանց ենթակայ կը լինին, վասն զի ամսոյն 17ին եւ 18ին եղած կռուոց մէջ գերի բռնուող ռուս վիրաւորաց վրայ անգթութիւններ գործեր էին ։ Ռուսք՝ հեռագրական ձողի մը ներքեւ հասնելով՝ սոսկմամբ ընկրկեցան, երբ 21 գլուխներու կոյտ մը տեսան, որք որսորդ զօրաց 13րդ վաշտին եւ Օրէլի գումարտակին զինուորաց եւ փլասթուններու գլուխներ էին ։ Բաց յայսցանէ՝ կային այլուր ուրիշ ծայրատեալներ ։

Շիփքայի կիրճին առումն Կուրքօ զօրավարին գործողութեանց առաջին մասին աւարտն է ։ Թրիամֆեայի կիրճին մէջ ղըրկուած ջոկատ մ'ամեն կողմ յածեցաւ առանց Տաճկի մը հանդիպելու ․ այսպէս երկու աւուր ճանապարհ տեղ Պալքաններն Ռուսաց ձեռքը մնացին երեք անցքով հանդերձ ։ Ութ օր բաւական եղած էր այս պանծալի արդիւնքն յառաջ բերելու համար ։ Կուրքօ զօրավարին ճիշդ տասն եւ հինգ օր պէտք եղած էր Դանուբէն մինչեւ այն տեղ գալու համար ։ Կարելի է ըսել թէ արդի պատերազմաց մէջ խիստ քիչ օրինակներ կան առաջապահ գնդի մը ձեռօք եղած այսպիսի յանդուգն, արագ, ճարտար եւ բարեյաջող ձեռնարկութեան մը ։ Զօրքն հինգ աւուր համար պէտք եղած կոկուած հաց առեր էր հետն, բայց երեք օրուանը միայն սպառեր էր ․ Տաճկաց ճամբարներուն մէջ իրենց ձեռքն անցած պաշարներն եւ գրաւեալ տեղեաց բերքն բաւական եղեր էին Ռուսաց ։

Ցոյժ մեծ եղաւ այն բարոյական տպաւորութիւնն, որ օսմանեան ազգին մեծամասնութեանը վրայ յառաջ եկած էր՝ ռուսական առաջապահ գնդին Պալքանաց հարաւային կողմն երեւելովն, զոր Տաճիկք անանցանելի պաշտպանողական գիծ մը կը համարէին ։ Նոյնչափ մեծ եղաւ նաեւ Պուլղարաց յուզմունքն, եւ, ինչպէս որ գուշակուած էր, ժողովուրդն ամեն տեղ վառարանջեց ։ Բայց այս կրկին ներգործութիւններն խաբուսիկ էին ։ Տաճկաց կորովը չմեղկացաւ այս նոր հարուածով, եւ Պուլղարք անկարող երեւեցան ապստամբ խմբեր կազմելու եւ կռուելու ։ Ժամանակ անցնելով սոսկալի աւազակներ եւ յոռի պատերազմիկներ միայն կարէին լինել ։ Ասոր վրայ յետոյ պիտի խօսուի ։

Կուրքօ զօրավարին առաջին փորձն եղաւ Շիփքայի կիրճը պատսպարել՝ Տաճկաց ապագայ ձեռնարկութեանց դէմ ։ Մէկ քանի օր իւր զինուորներն նշանաւոր գործունէութեամբ աշխատեցան եւ ամեն կողմանէ պատնէշներ բարձրացան յանկարծ ։ Քսան եւ հինգ ամրոցիկներ շինուեցան 28 թնդանօթներով զինեալ ․ յուլիսի 19ին Տաճիկներէն առնուած թնդանօթներն զետեղուեցան միոյն մէջ, այսինքն երեք լեռնային եւ հինգ հատ Քռուփի սքանչելի թնդանօթներ, որոց յետակողմն փայլուն եւ յղկեալ պողպատին վրայ հետեւեալ մակագրութիւնը կար․ «Քռուփ, Էսսէն, 1875» ։ Զօրաց սահ մը գրաւեց այս ընդարձակ պատնիշափակ ճամբարն, ուր ահագին քանակութեամբ մթերք եւ պարէն դիզուեցաւ երկարատեւ պաշարման մը դիմանալու համար ։ Ջրոյ մասին ամենեւին հոգ տանելու հարկ չկար, վասն զի ամեն կողմ ականակիտ աղբիւրք կը բղխին լերան գագաթանը վրայ ։

# Գլուխ Քսաներորդ

## ՁԱԽՈՂԱՆՔ ԱՊՏ-ԻՒԼ-ՔԷՐԻՄԻ ԵՒ ՐԷՏԻՖ ՓԱՇԱՅԻ

### ԱՊՏ-ԻՒԼ-ՔԷՐԻՄ ՓԱՇԱՅԻ ՅԱՏԱԿԱԳԻԾՆ

*Մինչդեռ Ռուսք կը յառաջանային մինչեւ Թուրքիոյ սիրտն եւ կըսպառնային Ադրիանուպոլսոյ դէմ, ինչ կ'ընէր Տաճկաց զօրագլուխն Ապտ-իւլ-Քէրիմ։ Մարմնոյն մէկ կողմը դժնդակ ախտ մ'ունեցող այն թանձրամիս եւ կաթուածոտ անձն իւր օրերը կ'անցընէր նարտ խաղալով, բնական հեղգութեամբն ընդարմացեալ եւ ութսնամեայ ծերութեամբն առաւել ծանրացեալ։ Մերթ մտախոհ կը տեսնուէր իւր կանաչ վրանին ներքեւ կծկեալ, բաղդին ո գիտէ ինչպիսի մէկ միջամտութիւնն երազելով։*

*Գնդերը զինել, կայաններն աչքէ անցընել, բանակին վրայ հոգ տանիլ նորա գործը չէր։ Հանգիստն եւ լռութիւնն մեծապէս եւ անհրաժեշտ հարկաւոր էին նմա։ Երբ մէկն անոր այցելութեան գար, բերանն ուրիշ բանի համար չէր բացուեր բայց եթէ խօսել տալու։ Բանակին թիւը նուազեալ է եղեր ճշմարիտ կամ կարծեցեալ հիւանդաց պատճառաւ, անկելանոցներն կը լցուին եղեր, Ապտ-իւլ-Քէրիմի փոյթը չէր։ Դասալքութիւններ կը պատահէին. վասն զի առաքինութիւն մը կը համարուէր առանց ամսականի եւ առանց բաւական ուտելիքի զինուորութիւն ընելն, թէեւ մահմետականաց հաւատարմութիւնն առակի կարգ անցած է. կը թուէր թէ Ապտ-իւլ-Քէրիմ ականջ չէր կախեր այս մասին տրուած տեղեկութեանց։ Ռուսաց յառաջխաղացութիւնն փոխանակ իւր մտածութիւններէն սթափեցնելու, կատարեալ գոհունակութիւն ազդեց նմա դոզցես։ Երբ Ցիմմէրման զօրավարին Տօպրուճա մտնելն իմացաւ, իւր յոյր դէմքն զուարթացաւ ծըղտանօք։ «Վերջապէս, ըսաւ, իմ ձեռօք իրենց առջեւ բացուած դռնէն եկան ներս մտան։»*

*Յունիսի սկիզբներն Կոստանդնուպոլսէն իրեն յատակագիծ մը ղրկուեցաւ յորում կ'առաջարկուէր օսմանեան. շարժուն զօրութիւնքն երկու մասերու բաժանել, այն է վերին Դանուբի բանակ եւ ստորին Դանուբի բանակ, եւ մէկ գլխաւորի մը հրամանատարութեան ներքեւ կացուցանել զանոնք յանուանէ, բայց իրօք անկախ ընել ամեն բանի մէջ, բաց ի մէկ կէտէ, որ էր Ռուսաց անցնելէն յետոյ զօրքն այլ եւ այլ տեղ համախմբել՝ Պալքանաց շղթայն փակելու համար, եւ նուազ կարեւորութիւն ունեցող պահակագնդից եւ այն համախմբութեան կէտերուն մէջ տեղ կցորդութիւն հաստատել։ Կ'առաջարկուէր նաեւ յառաջակաց պահանորդաց խմբեր կացուցանել գետեզրին երկայնութեանն, եւ պահեստի զօրք դնել այս յեցակէտերուն ետեւն եւ ռազմագիտական կէտերուն մօտ։ Այս առաջապահ խմբերն բաղկանալու էին առ նուազն երեք վաշտէ, եւ կարելի պիտի լինէր մէկ քանի ժամու մէջ անոնց թիւն հասուցանել երեսուն եւ կամ աւելի վաշտի։ Առաջին գծին վրայ այսպէս մեծ զօրութիւն մը չգտնուելովն, Ռուսք պիտի անգիտանային թէ որ կէտին վրայ իրօք բաւական զօրութիւն կար իրենց անցքն արգիլելու համար։ Ռուսճուգ, Սիլիսթրէ, Վառնա եւ Շումնու բերդաքաղաքաց մէջ տեղ առ նուազն 90,000 մարդէ բաղկացեալ պատրաստի բանակ մը*

պիտի գտնուէր, եւ գէթ 60,000 զօրաց բանակի մը կեդրոն պիտի լինէր Թռնօվա ։

Ռուսաց Իպրայիլէն անցնելուն վրայ Սուլթանն մեծապէս յուզուեր էր. Զիշթօվի մօտէն անցնելնուն վրայ բոլորովին այլ յայլմէ եղաւ ։ Անմիջապէս Նախարարներն պալատը հոչեց, եւ փղձկելով հարցուց թէ 300,000 զինուորէ բաղկացեալ բանակաւ մը ինչպէս թոյլ տուեր էին Ռուսաց Դանուբէն անցնելու այնպիսի կերպիւ մը, որով Տաճկաց զինուորական պատիւը կը նսեմանար ։ Նախարարքս պատասխանը միայն կարացին տալ թէ գործը ընդհանուր հրամանատարին ձեռքն էր, եւ այն ժամանակ Սուլթանն անկէ բացատրութիւն ուզեց հեռագրաւ ։ Ապտ-իւլ-Քէրիմ ինքն իւր վրայ մինչ վստահ՝ ըսաւ ի պատասխանի թէ Ռուսաց զօրքն «իբրեւ կաքաւ վանդակի մէջ» բռնած էր յայնժամ ։ Ուրիշ հեռագրի մ' եւս պատասխանեց. «Ձեր Վեհափառութեան կ'աղաչեմ որ Զիշթօվի մօտէն Ռուսաց անցնելուն վրայ չմտատանջիք. անկարեւոր բան մ'է այն ։ Ես ընտիր յատակագիծ մ'ունիմ որոյ արդիւնքն անշուշտ պիտի լինի Ռուսաց կատարեալ պարտութիւնն. այնու թոյլ պիտի չտրուի Դանուբէն անցնողներուն, որ ողջ առողջ իրենց հայրենիքը վերադառնան ։ Միայն պարտիմ աղաչել ձեր Վեհափառութեան, որ իմ յատակագիծս գործադրելու թոյլտուութիւն ընէ, եւ այդ Ստանպօլի մարդիկն արգելու իմ գործողութեանցս խոչընդոտ լինելէ ։»

Սուլթանն՝ որոյ դժգոհութիւնն հետզհետէ կ'առաւելուր՝ պահանջեց որ Ապտ-իւլ-Քէրիմ իւր յատակագիծն յայտնէ. Ապտ-իւլ-Քէրիմ բաց է ի բաց մերժեց եւ ըսաւ թէ կամ իւր վրայ վստահութիւն ունենալու էր, կամ իրեն տեղը ուրիշ մէկ կը դնելու էր ։ Վեհափառ Սուլթանն Ապտ-իւլ-Համիտ՝ զայրագնեալ որոշեց անդէն որ պատերազմի նախարար Րէտիֆ փաշա Շումնու երթայ եւ քննութիւն մը բանայ ։

Րէտիֆ փաշա՝ որ ամեն վայրկեան Սուլթանին շուրջն հսկողութիւն ընելով միայն կարող եղած էր իւր իշխանութիւնը պահել, չէր ուզեր ազատ ասպարէզ թողուլ իւր բազմաթիւ թշնամեաց. կըզգար թէ իւր բացակայութիւնն անկումն ըսել էր ։ Իւր բարեկամն եւ համախոհն Տամատ Մահմուտ փաշա ջանաց վեհապետն համոզել թէ պատերազմին մեկնելուն վրայ գործոց մէջ անպատեհութիւններ կրնային յառաջ գալ, եւ թէ անոր Շումնու գտնուելովն ընդհանուր հրամանատարին եւ իրեն մէջ տեղ յառաջադահութեան խնդիր պիտի ելնէր ։

Սակայն Վեհափառ Ապտ-իւլ-Համիտ խան իւր միտքը դրածին վրայ հաստատ մնալով եւ Թօփհանէի մէջ անձամբ պատերազմական խորհրդոյ մը նախագահելով, ինքն իսկ ուղղակի հրաման ըրաւ պատերազմի Նախարարին որ ճանապարհ ելնէ հետեւեալ օրն ։ Կ'ուզէր զօրանոցին մէջ կատարուած բաներուն համար իւր խիղճն հանդարտել, եւ իւր կարծիքն այս էր՝ որ ընդհանուր հրամանատարին եւ պատերազմի Նախարարին պաշտամանց վերաբերութիւնքն կատարելապէս ճշդեալ լինելուն, յառաջադահութեան կռիւ անկարելի էր լինել ։ Սակայն որպէս զի այսպիսի ձախող պատահականութեան մը առաջքն առնուի եւ միանգամայն պատերազմի Նախարարին գործոց գաղտնի քննութիւն լինի, ի միասին ղրկուեցաւ նաեւ ծեր դիւանագէտ Նամըգ փաշան, բանակին երկու գլխաւորաց միջեւ ծագելիք դժուարութիւններն հարթելու համար միջամտութիւն ընելու պաշտօնով ։

Յուլիսի 2ին, Րէտիֆ փաշա Իզզէտտին անուն կայսերական զբօսանաւը մտաւ դէպ ի Վառնա երթալու համար ։ Իբրեւ մեծազօր անձ մը կը վարուէր եւ կը խօսէր նա, վասն զի գրեթէ անսահման տիրապետական իշխանութիւն մը կը վայելէր. սակայն բաղդին մէկ հարուածովն՝ ինչպէս յաճախ կը պատահի Սրբւելից

մէջ, երբեք չաքաթ յետոյ Կոստանդնուպոլիս պիտի դառնար երեսէ ձգուած, բոլորովին պատուէ զրկուած եւ ամենածանր ամբաստանութեանց ներքեւ մնացած ։

Րէուֆ փաշա միշտ անհաճոյ եղած էր յաչս ժողովրդեան. բայց Ապտ-իւլ-Քէրիմի համար՝ հարկ է ըսել որ, Ռուսաց Պալքաններէն անցնելէն առաջ, Կոստանդնուպոլսոյ հասարակութեան բաւական ստուար մէկ մասն մեծ վստահութիւն ունէր նորա խորհրդաւոր յատակագծին վրայ, որ եւ ոչ ումեք յայտնուեցաւ ։ « Այս յատակագիծն, կը գրէ Թան լրագրին Կոստանդնուպոլսոյ թղթակիցն ի սկզբան յուլիս ամսոյ, որքան անծանօթ է, այնքան աւելի եռանդեամբ վերլուծութեան, մեկնութեան եւ մեծարանութեան կ'ենթարկուի. Ապտ-իւլ-Քէրիմի վրայ զարմացողներն ամեն խօսքի պատասխան ունին տալու. Եթէ ըսուի իրենց որ Ռուսք Դանուբն անցան առանց այնչափ մեծ կորուստ ունենալու, ինչպէս որ ամեն մարդ կը գուշակէր.

« — Չէք հասկնար, կը պատասխանեն ուժգնութեամբ. Նորա յատակագծին համեմատ՝ յառաջապէս պիտի լինէր այդ ։

« — Բայց մտածեցէք, միթէ Ապտ-իւլ-Քէրիմի յատակագիծն կը պահանջէ միշտ յանկարծական յարձակմանց ենթակայ լինել եւ բան մը չընել Ադրիանուպոլսոյ եւ Կոստանդնուպոլսոյ ճանապարհն թշնամւոյն առջեւ փակելու համար ։

« — Ցայդմ իսկ կը սխալիք, կը պատասխանեն։ Ցայտնի կը լինի որ Ապտ-իւլ-Քէրիմի յատակագիծը չէք գիտեր, ահա այս է. ինքն դիտմամբ անշարժ կըսպասէ որպէս զի Ռուսք գործելու անկարող կարծելով զայն, շատ յառաջ գան դէպ ի ներսերն։ Որքան Զիշթօվէն հեռանան, այնքան աւելի յաջողութիւն պիտի գտնէ Ապտ-իւլ-Քէրիմի յատակագիծն. վասն զի երբ անգամ մը թշնամւոյն զօրութիւնքն ցրուած լինին, պիտի յարձակի պատեհ ժամուն ամեն կէտերուն վրայ միանգամայն ։ Չէ՞ք տեսներ որ Շումնուի եւ Վիտինի բանակաց միահաղոյն գործողութեան արդիւնքն անշուշտ պիտի լինի ռուսական բանակին յերկուս բաժանումն, մէկ մասը դէպ ի Պալքաններն մղուելով եւ միւս մասն դէպ ի Դանուբ. Աստանօր՝ Ռուսաց շինած կամուրջը պիտի քանդուի. անդանօր, յայսկոյս եւ յայնկոյս Պալքանաց, Ռուսաց գտնելիք ընդդիմութեան տեղ՝ նոր բանակ մը պիտի ելնէ իրենց դէմ, Րէուֆ փաշայի եւ Գարատաղէն եկող Սիւլէյման եւ Մէհէմմէտ Ալի փաշաներու գնդերէն բաղկացեալ ։ »

Միթէ այս էր արդարեւ Ապտ-իւլ-Քէրիմի յատակագիծն. Եթէ ստուգիւ այս էր, ապագայ եղելութիւններն ցոյց կուտան թէ ճիշդ տեսութիւն ըրած էր նա, միայն թէ Տաճկաց սպայակոյտն բաւական հաստատամտութիւն չունէր այն յատակագիծը կատարեալ յաջողութեամբ ի գլուխ հանելու համար. Բայց որպէս զի այդ կերպ խորհուրդ մը գործադրուի, հարկ էր հասարակաց կարծեացն այնքան երկարատեւ վստահութիւն մ'ազդել որքան Կոստանդնուպոլսոյ հասարակութիւնն անկարող էր ունենալու Թուրքիոյ անցուցած այն տագնապալից ժամանակաց մէջ ։ Հարկ էր որ ժողովուրդն Թռնօվայի առումն եւ Պալքանաց անցքն համբերութեամբ նկատէր իբրեւ գուշակեալ իրողութիւններ ։ Միթէ հնար էր այս. արդէն շատ մարդիկ հետեւեալ նորելուկ խօսքը տարածայներ էին. « Ապտ-իւլ-Քէրիմի յատակագիծն Ալլահ-Քէրիմի յատակագիծ է. » Արդ՝ յայտնի է թէ Ալլահ-Քէրիմ, որ Աստուած ողորմած է՝ ըսել է, ճակատագրի հաւատացող Տաճկաց բանեցուցած խօսքն է, որով ամեն ծանր եւ դժնդակ պարագայից մէջ իրենց հպատակութիւնը կը յայտնեն երկնային կամաց ։

Ամենայն ոք այս վերջին կարծիքն ունեցաւ քիչ ժամանակէն ։



ՓԼԱՍԹՈՒՆՆԵՐՈՒՆ ՇԻՓՔԱՅԻ ԿՐՃԻՆ ՎՐԱՑ ՑԱՐՁԱԿԻԼՆ

## ՍԱՐՍԱՓ Կ. ՊՕԼՍՈՅ ՄԷՋ. — ԱԴՐԻԱՆՈՒՊՕԼՍՈՅ ՄՕՏ ԲԱՆԱԿԻ ՄԸ ԿԱԶՄՈՒԹԻՒՆ

Մինչդեռ Րէտիֆ փաշա Շումնու կերթար, ծովային գործոց նախարար Րէուֆ փաշա եւս կը մեկնէր Ադրիանուպոլսոյ կուսակալութեան մէջ գտնուած զօրաց հրամանատարութիւնն ստանձնելու համար, որ մէկ քանի հազարի չափ այլ եւ այլ տեսակ զինուորներէ բաղկացեալ էին, եւ աւելի հրոսակ մը քան թէ բանակ մը կը ձեւացնէին . Սիլիճօ զօրանիստ եղած էր ։ Րէուֆ փաշա Չէրքէզ մ'է ուշիմ եւ կրթեալ. կ'ըսուի թէ անձամբ քաջ ոմն է, բայց զինուորական փորձառութիւն եւ ռազմագիտական հմտութիւն չունի ։ Ինքն պիտի պաշտպանէր Պալքաններն , ինքն էր որ Շիփքայի պահակագունդն ստուարացուցած էր եւ Թվարալիցա զօրք ղրկած . բայց բոլորովին զանց էր ըրած Խայինի կիրճն, եւ Կուրքօ զօրավարին յանկարծակի հասնելովն անոր դէմ բան մը չկրցաց ընել, որոյ Շիփքայի վրայ խաղացքն եւս արգիլելու անկարող գտնուեցաւ ։

Ռուսաց Պալքաններէն անցնելու լուրն Կոստանդնուպոլսոյ մէջ այնքան սարսափ եւ ապշութիւն պատճառեց , որքան վստահութիւն կար Տաճկաց գլխաւորական զօրութեանը վրայ եւ որքան կարեւոր կը համարուէր այն դիրքը ։ Նախ այս լուրն սուտ համուեցաւ . Ադրիանուպոլսոյ կուսակալն հաւաստեց թէ ռուսական խումբ մը կարծուածն պուլղար յեղափոխականաց հրոսակ մ'էր ։ Այս հաստատուեցաւ այն լուրն , բայց գործն անկարեւոր ցոյց տրուելով , կառավարութիւնն հետեւեալ տեղեկութիւնը ղրկեց լրագրաց .

« Մէկ քանի լրաթերթք տարաձայնութիւն մը հրատարակած են , իբր թէ Ռուսք Պալքաններէն անցնելէ յետոյ՝ Գըզանլըգ , Էսկի-Զաղրա եւ Եանպոլու քաղաքներն գրաւեր են ։

« Այս մասին ճշմարտութիւնն հետեւեալն է ։ Բարձրագոյն Դուռն հասած գրութիւնք կը ծանուցանեն թէ իրօք Ռուսաց մէկ քանի վաշտեր Պալքաններն անցեր են Խային-Պօղազիէն , ուր կայսերական զօրաց մէկ վաշտ միայն կը գտնուէր , որ Ռուսաց անցքն արգիլելու համար երկու ժամ դիւցազնաբար կռուելէ յետոյ՝ ետ քաշուելու ստիպուեր է ։

« Րէուֆ փաշա՝ որ գիտեր թէ Ռուսք այդ կողմէն պիտի անցնին , փութաց այն տեղ ժամանելու , ուր թշնամւոյն վրայ յարձակելով վանեց զայն ։ Վերոյիշեալ քաղաքաց գրաւման վերաբերեալ տարաձայնութիւնն Եանպոլույի հեռագրատան մէկ գործակալի պարապ տեղն հանած իրարանցումէն յառաջ եկած է , որ հեռաւոր տեղ մը գիւղ մը հրդեհեալ տեսնելով կարծեր է թէ թշնամին այն կողմերն հասած է եւ փախուստ տուեր է ։ »

Ջուր ջան . անկարելի էր ճշմարտութիւնը կեղծել . ամեն օր հասարակութիւնն անձկութեամբ տագնապեալ՝ Բարձրագոյն Դրան մօտ կը խռնուէր եւ լուր կը խնդրէր ։ Ժողովրդեան միտքն փոխանակ հանդարտելու՝ առաւել ահաբեկ կը լինէր կառավարութեան լուռ կալուն վըրայ , եւ վերջերն իրողութիւններն անճշան ցոյց տրուելով լուր հաղորդուելուն վրայ ։ Էտիրնէէն եկող մէն մի կառախումբ մայրաքաղաք կը բերէր գաղթականաց բազմութիւն մը . Ռուսաց առջեւէն փախչող Տաճիկներ , կոտորածէ երկնչող քրիստոնեայներ , որք քաղաքը չարաշշուկ տարաձայնութիւններով կը լնուին , իրենց ահաբեկ երեւակայութեան ցնորքն իբրեւ ճշմարտութիւն կարծել կուտային , արշաւանաց միջոցին իբր թէ պատահած անգթութիւններն սոսկալի մանրամասնութեամբք հանդերձ կը պատմէին ։ Ահ եւ սարսափ բերող այս բազմութենէն նոյն իսկ կառավարութիւնն զարհուրելով՝ երկաթուղւոյ կայարաններուն գործակալացն հրաման ըրաւ այնուհետեւ ոչ ոք ընդունիլ , բայց միայն անցագիր ունեցող եւ իրենց ուղեւորութեան նպատակն եւ ապրուստի միջոցները ցոյց տուող

ճանապարհորդներն ։ Բայց ինչպէս կարելի էր արգիլել ամբողջ գաղթող ժողովուրդ մը ։

Քիչ ժամանակէն Կոստանդնուպոլսոյ մէջ խնդիր եղաւ թէ քաղաքը Ռուսաց ձեռքը պիտի անցնէ՞ր կամ ոչ ։ Անգղիական նաւատորմին՝ Չանագ-Գալէի մօտից մօտ՝ Պէշիքթէրի ծովախորշը վերադառնալն նախազգուշութիւն մ'էր յայտնապէս առաջին ենթադրութեան դէմ, եւ կառավարութիւնն ալ այս մասին իւր երկիւղն յայտնեց Պրուսայի ապարանքն յարդարել տալով, իբր թէ վեհափառ Ապտ-իւլ-Համիտ խան կը պատրաստուէր օսմանեան նախկին սուլթանաց ասիական պալատան մէջ երթալ բնակելու ։ Դուռն այն ժամանակ ժողովրդական խռովութենէ մը վախնալով, հարկ համարեց ճշմարտութիւնն յայտնել, եւ հասարակութիւնն հանդարտել յուլիս 17ի Թուականաւ բոլոր լրագրաց պաշտօնական տեղեկութիւն մը ղրկելով, յորում խոստովանեցաւ թէ ռուս զօրաց հատուած մը Խայինի կրճէն յայս կոյս Պալքանաց անցեր էր Իսլիմիայի մօտ, եւ Եէնի-Զաղարայի եւ Էսկի-Զաղարայի դէմ կըսպառնար ։

«Այս լուրն առնուելուն պէս, կ'ըսէ պաշտօնական տեղեկութիւնն, կռուատեղւոյն վրայ գտնուած զօրաց թիւն՝ մայրաքաղաքէս նոր զօրք յղելով բազմապատկելու եւ յարձակողներն Աստուծոյ օգնութեամբն յետս մղելու համար՝ վաղվաղակի միջոցներ ձեռք առնուեցան ։

«Որոշ եւ ազդու հրամաններ ղրկուեցան Նորին Վսեմութեան Րէուֆ փաշայի, այն է ծովային գործոց նախարարին, որոյ զօրանիստն է Իսլիմիա (Սլիվնօ), որպէս զի Ռուսաց արշաւանքն արգիլելու եւ յետս մղելու համար ամենէն յարմար տնօրէնութիւններն ընէ վաղ ընդ փոյթ ։ Նախարարք Սպարապետութեան Դուռն նիստ կ'ընեն գիշեր եւ ցերեկ, բանակագնդից հրամանատարացն հետ թղթակցելու զբաղեալ լինելով միշտ ։ Ամենամեծ փոյթ եւ գործունէութիւն ցոյց կուտան բանակին պիտոյքն պատրաստելու եւ ղրկելու համար ։

« Աստուածային Նախախնամութեան վրայ վստահ լինելով՝ կը յուսամք թէ քիչ ժամանակէն թշնամւոյն ներկայութենէն զերծ պիտի տեսնեմք այն ապստամբեալ տեղերն, վասն զի այսպիսի բացառիկ պարագայից մէջ կատարելապէս հաւանական է որ զինուորական կացութիւնն այլ եւ այլ կերպարանք կարէ առնուլ եւ օր ըստ օրէ փոփոխիլ ։ Թշնամւոյն զօրաց այնպիսի աննշան մէկ հատուածին Պալքաններէն անցնելուն համար երկիւղի բռնուելու տեղի չկայ ։ Նախախնամութեան վստահելով՝ միաբանական զգացմանց սրբութեամբ եւ համբերութեամբ միանալ եւ հայրենեաց պաշտպանութեան համար՝ կառավարութեան բրած ջանիցն աջակցիլ ամենեցուն նուիրական պարտքն է ։

« Կոստանդնուպոլսոյ բնակիչք այս խըրատուց կարեւորութեանը խելամուտ պիտի լինին իրենց շահուն համար, եւ պիտի հասկանան թէ ժամանակն եկած է որ իրենք ալ գաւառացի ժողովրդոց հետ միանան, հայրենեաց պաշտպանութեան համար ամեն կողմանէ կռւոյն ասպարէզը վազելով՝ իրենց հայրենասիրութիւնը ցոյց տան, եթէ հարկ լինի՝ կին եւ զաւակ թողուն եւ ոչ մէկ զոհողութիւն զլանան, որպէս զի օսմանեան անուան փառքն եւ պատիւն անաղարտ պահուի ։ Առաւել իրենց եռանդն եւ հաւատարմութիւնն պիտի յայտնեն նոքա՝ որ ուզեն իրենց անունն արձանագրել տալ կամաւորաց վաշտերուն դրօշուն ներքեւ, որոց կազմութիւնն դեռ եւս հրամայուեցաւ . այսու նոքա պիտի համարուին իբրեւ զաւակ յաշս մեր Փատիշահին եւ ըստ այնմ խնամուին ։ Յորդոր կը կարդամք ուրեմն արի եւ հայրենասէր սրտից, իրենց եղբարց՝ այն է պատերազմող զինուորաց ժամ մը յառաջ օգնութեան հասնելու եւ հայրենեաց ախոյեաններուն

կարգաց մէջ պինուորելով ասպատակող թշնամին վանելու նոցա հետ ։»

Այս ծանուցագիրս չկարաց Կոստանդնուպոլսոյ բնակիչներն աւելի սրտապնդել եւ գրգիռ չեղաւ նոցա՝ զինուորագրութեան տեղերն երթալու, որք առաջուան պէս ամայի մնացին, բայց հասարակաց անձկութիւնն նուազեցաւ փոքր ինչ, երբ տեսնուեցաւ թէ ծանուցուած ազդու տնօրէնութիւններն լիօք ձեռք առնուած էին ։

Տաճիկներն Ադրիանուպոլսոյ ամրացուցին տճապարանօք՝ աքանչելի դրից մէջ հաստատուած հողակերտ մարտկոցներով, որք ստուգիւ դիմադրութիւն կարէին ընել ։ Կոստանդնուպոլսոյ ամրոցներուն շինութիւնն յառաջ տարուեցաւ եռանդեամբ ։ Սիւլէյման փաշա՝ զոր Պարէն (Անթիվարի) բերելու համար նաւատորմիղն այն տեղ գնացեր էր, Կոստանդնուպոլսէն պիտի անցնէր եւ այնպէս պատերազմին ասպարէզն երթար, բայց ժամանակ չանցնելու համար հրաման եղաւ իրեն Տէտէ-աղաճ ելնելու, որ Ադրիանուպոլսէն սկսեալ Մարիցայի հովտին մէջ շինուած երկաթուղւոյն ծայրն է ։ Հասաւ Տէտէ-աղաճ յուլիսի 15 ին 45 վաշտերով, որք Նիքշիչը պաշարող եւ Գարատաղի կրճից մէջ այնքան արիաբար կռուող բանակին ընտիր մասը կը կազմէին ։ Այն քառասնամեայ զօրավարն, որ 1876ին Ալէքսինացի առման ժամանակ իւր յորդեռանդն արիութեամբ նշանաւոր եղած էր եւ վերստին անզուգական կորով մը ցոյց էր տուած Գարատաղի դէմ եղած տարօրինակ պատերազմին մէջ, ժողովրդեան առաջ մեծ համբաւ կը վայելէր եւ իւր զօրաց կատարեալ վստահութիւնը շահած էր ։ Ադրիանուպոլսոյ մէջ գտնուած ժամանակ պատահած սրտաշարժ դէպքն այս բանս յայտնեց ։ Զօրահանդէս ըրած միջոցին՝ զինուորներէն մին կարգէն դուրս ելաւ, եւ անոր առջեւ երկրպագութիւն ընելով. «Էֆէնտիմ, ըսաւ, մենք որ Գարատաղի մէջ յաղթեցինք, ձեզ կ՚աղաչեմք՝ մեր տիրոջը Վեհափառ Սուլթանին ծանուցանելու թէ այս երկիրն զոր մեր նախնիք իւրայնոց տուին, թշնամւոյն ներքեւ ոտնակոխ չը պիտի լինի, կ՚երդնումք ։» Ասոր վրայ բոլոր զօրքն սկսաւ կոչել եւ գոչել. «Այո, այո, կ՚երդնումք. կեցցէ՛ մեր տէրն Վեհափառ Սուլթանն ։» Եւ բովանդակ բանակն երկրպագութիւն ըրաւ, ինչպէս ըրած էր այն խօսքն ըսող զինուորն ։

Սիւլէյման փաշա գնաց իւր զօրքն զետեղեց Գարա-Փունարի մէջ. այս աւանն այն եռանկեան հարաւային ծայրն է, որոյ միւս երկու անկեանց վրայ են՝ Էսկի-Զաղրա եւ Եէնի-Զաղրա ։ Անդանօր հաղորդակցութիւն հաստատեց, Րէուֆ փաշայի հետ. ամեն օր երկաթուղւոյ կառախումբքն նոր վաշտեր կը բերէին. հետզհետէ Կոստանդնուպոլիս հասած զօրքն իրեն կը ղրկուէր. ասիական այլատեսակ ժողովրդոց նկարագեղ խումբ մը, Չէյպէկներ, Սիւրիացիներ, Քիւրտեր, Արաբներ եւ Խափշիկներ, Պուլղարից ճանապարհը կը բռնէին, որոց մեծ մասն յանպատրաստից ձեւացեալ զինուորներ էին, բայց Գարատաղի դէմ պատերազմող վաղեմի զօրաց մէջէն ընտիր սպայք կը տրուէին սոցա ։ Հինգ օր Ադրիանուպոլսոյ գծին վրայ ուղեւորաց կառախումբք անցորդ չառին. այլ միայն զօրական, ձի, թնդանօթ, ռազմամթերք եւ կազմած փոխադրելու գործածուեցան ։ Սիւլէյման փաշայի բանակն ընդ հուպ 40-45 հազարի չափ մարդ ունեցաւ. այսչափն ալ շատ էր Կուրքօ զօրավարին առաջապահ գունդը կասեցնելու համար, որում զօրավիգ չկարաց ղրկել Ռուսաց սպայակոյտն ապագայ դիպաց պատճառաւ ։



## ԱՆԿՈՒՄՆ ԵՒ ԴԱՏԱՍՏԱՆ ՐԷՏԻՖ ՓԱՇԱՅԻ ԵՒ ԱՊՏ-ԻՒԼ-ՔԷՐԻՄԻ. — ՄԷՀԷՄՄԷՏ ԱԼԻ ՓԱՇԱ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ

Զինուորական ապիկար հրամանատարութեան պատճառաւ յառաջ եկած ձախորդութեան լրերն, Դանուբի անցքն, Թռնօվայի անպաշտպան ձգուիլն, Պալքանաց անցքն, Նիկոպոլսոյ առումն, իրարու վրայ Կոստանդնուպօլիս հասնելով, Սուլթանն այլ եւս չկարաց գլխագրել այն կարծեաց որ թշնամութեանց սկսելէն ի վեր՝ անդադար կը բողոքէր Րէտիֆ փաշայի պատերազմի Նախարար Միալուն դէմ։ Այնուհետեւ իբր մատնիչ ամբաստանուեցաւ նա բացէ ի բաց. կ'ըսուէր թէ նա չէր ըրած ինչ որ յայտնապէս հարկ էր գործել Ռուսաց յառաջ խաղացութեան գլխագրելու համար։ Եւ կը յիշուէին բոլոր այն հռչակաւոր մատնիչք, որք Ռուսիոյ դէմ մղեալ նախորդ պատերազմաց մէջ նշանաւոր եղած էին, այն Վէզիրն՝ որ Փրութի ափանց վրայ զՄեծն Պետրոս փախուցուց. Վառնայի այն հրամանատարն՝ որ 1828 ին այս բերդաքաղաքը Ռուսաց յանձնեց. այն Գաբուտան փաշան՝ որ Նավարինի մէջ հրամանատար էր եւ այլք. այս օրինակներն ի մէջ կը բերուէին Րէտիֆ փաշան ամբաստանելու համար թէ թշնամւոյն ոսկւոյն կաշառեալ է։

Ապտ-իւլ-Քէրիմ փաշա եւս այս կասկածներէն զերծ չմնաց։ Սակայն նա ընդհանուր հրամանատարի ամսականաւն միայն կ'ապրէր, նորա տեղ եթէ ուրիշներ լինէին, պիտի հարստանային եւ ինքն աղքատ մնացեր էր։ Բայց միթէ իւր անհոգութեան եւ պղերգութեան պատճառաւ չէ՞ր որ Թուրքիա Զարին բանակաց առջեւ անպաշտպան թողուեցաւ։ Ամենուստ կը պահանջուէր որ նոր եւ աւելի զօրաւոր մղում մը տրուի զինուորական գործողութեանց վարչութեանն. այլ եւս ոչ ոք կը համարձակէր խօսիլ այն համառօտ յատակագծին վրայ, յոր այնքան մարդիկ կը հաւատային ութ օր առաջ. եւ ժողովրդեան բարկութիւնն այլ եւս չափ չունենալով՝ Րէտիֆ փաշայի համար գրուցուածն Ապտ-իւլ-Քէրիմի համար նաեւ ըսել կուտար, իրր թէ իւր ըրած մատնութեան փոխարէն հարիւր հազարներով ռուպլի առած լինէր։

Դէպք մը փութացուց այս երկու մարդոց անկումն։ Երբ Նիկոպոլսոյ առումն իմացուեցաւ, Նախարարութիւնն ժողով ըրաւ. Տասն եւ հինգ օրէ ի վեր յուսահատական լուրեր միայն կ'առնուէին. Սակայն Սուլթանին վստահութիւնը մեղմելու համար՝ Նախարարք բաւական լաւ ցոյց տուին կացութիւնն. Միայն արտաքին գործոց Նախարար Սաֆվէթ փաշա համարձակեցաւ ճիշդ նկարագրութիւն մ'ընելու. Ըսաւ թէ բարեյաջող՝ այլ անակընկալ պարագայից բերմամբ օսմանեան բանակն իրական յաջողութիւններ ձեռք բերած էր Ասիոյ մէջ. Բայց Եւրոպական կողմէն պատերազմի ասպարէզին վրայ այդպիսի յաջողութիւններ անյուսալի էին. «Ստուգիւ, ըսաւ նաեւ նախարարն, մեր զինուորներն ժուժկալ, քաջակիրթ եւ արի են. Ամեն մարդ այդ վկայութիւնը կուտայ, մինչեւ անգամ մեր թշնամիներն. Դժբաղդաբար այդ քաջաց բանակն անփոյթ եւ ապիկար հրամանատարութեան ներքեւ է. Ձախողութիւններէ երկնչելու եմք ուրեմն. Եւ եթէ քաղաքագէտ լինիմք, Ասիոյ մէջ մեր յաջողութեամբքն յառաջ եկած համեմատաբար լաւ կացութենէն օգուտ քաղելու պիտի փութամք միջնորդութիւն մը խնդրելու, թախանձելու եւ ձեռք բերելու համար. Եթէ, կեղծ անձնասիրութեան խնդիր մը հանելով մանաւանդ, մինչեւ վերջն պատերազմ ընել ուզեմք եւ ընեմք, կը կարծեմ թէ Կայսրութիւնն ամենամեծ վտանգաց մէջ պիտի անկանի։ Խիղճս եւ պարտականութիւնս կը ստիպեն զիս այս յայտարարութիւնն ընելու.»

Այս խօսից գէշ ընդունելութիւն ըրին միւս Նախարարք, եւ նոյն երեկոյին Սաֆ-

վէթ փաշա իմացաւ թէ Սուլթանն կ'առնոյր իրմէ արտաքին գործոց Նախարարութիւնը եւ Արիֆի փաշայի կուտար, որոյ յաջորդեց մէկ քանի օր յետոյ պատերազմի հաստատամիտ կուսակից Սէրվէր փաշա։ Ինչ եւ իցէ, հարուածը տըրուած էր, եւ Վեհափառ կայսրն որոշեց իսկոյն հեռացնել այն երկու մարդիկն զոր ամեն ոք պատասխանատու կը համարէր կայսրութեան կրած ձախողուածոցն։ Բարկութենէն անոնց դէմ աքսորանաց վճիռ տուաւ իսկոյն եւ ուզեց Րէտիֆ փաշան Ատանա ղրկել, որ Փոքր Ասիոյ հարաւային կողմը փոքրիկ քաղաք մ'է տօթակէզ երկրի մէջ՝ ուր ջերմութիւնն սովորաբար 35 աստիճանի կը հասնի շուք տեղն, եւ Ապտ-իւլ-Քէրիմ փաշան Ափրիկեան Տրիպօլիս նետել, որ Թուրքիոյ Գայէննն է եւ քրէական յանցապարտից, մարդասպանաց եւ աւազակաց յատկացեալ տեղն։ Բայց փոքր ինչ մտածելէ յետոյ՝ աւելի արդարացի համարեց պատերազմական խորհրդոյ առջեւ անոնց դատուիլն։

Յուլիսի 23ին՝ տաճկերէն պաշտօնական լրագրերն ազդարարութիւն մը հրատարակեց, որոյ իմաստն այս էր թէ՝ Չիչթօվի մօտ Ռուսաց առանց դժուարութեան Դանուբէն անցնելուն եւ երկրին ներսերն մինչեւ Պալքաններն նոցա յառաջ խաղալուն պատճառն էր զինուորական պարտուց ապատ բերող աններելի զանցառութիւն մը։ Վասն որոյ, կառավարութիւնն որոշած էր դատի ենթարկել պատերազմի նախկին նախարար Րէտիֆ փաշան եւ նախկին ընդհանուր հրամանատար Ապտ-իւլ-Քէրիմն։

Սոյն երկու աքսորեալք յուլիսի 23ին Կոստանդնուպօլիս հասան եւ պարզ հսկողութեան ներքեւ դրուեցան, մին՝ իր Իւսկիւտարի ծովեզերեայ ապարանից մէջ, եւ միւսն՝ իր Ստանպօլի տան մէջ։ Պատերազմական խորհուրդ մը գումարուեցաւ Նամըգ փաշայի նախագահութեան ներքեւ՝ որ Շումնուէն եկած էր այս բանիս համար։ Սոյն խորհուրդը կը բաղկանար Եգիպտոսի նախկին փոխարքայ Իսմայիլ փաշայի հօրեղբայր եւ ծերակուտի անդամ Հալիմ փաշայէն, որ Նամըգ փաշայի պէս Միւշիր էր, այսինքն՝ Մարաջախտ. Ոստիկանութեան վերատեսուչ Ահմէտ-Համտի փաշայէն, Սիւրիոյ կուսակալ Ջօմէր-Ֆէվզի փաշայէն, ընդհանուր սպայակուտի գլուխ Մահմուտ փաշայէն, եւ վերջապէս երկու հատուածապետ զօրավարներէ, որք էին՝ Հասան-Րիւշտի եւ Ալի-Նիզամի փաշաներն։ Րէտիֆէն եւ Ապտ-իւլ-Քէրիմէն զատ՝ պիտի դատուէին նաեւ այս պատերազմական խորհրդոյ առջեւ Ռուսճուքի հատուածին նախկին հրամանատար Էշրէֆ փաշան, Ահմէտ եւ Սաֆվէթ փաշաներն, որք սահապետ էին եւ Չիչթօվի նախկին հրամանատար՝ գումարպետ Համտի պէյն, որոց չորսն եւս ամբաստանեալ էին «իրենց ըրած գէշ կարգադրութեանց եւ Ռուսաց Դանուբէն անցնելու պահուն՝ իրենց ցոյց տուած անփութութեանն համար», Արտահանի հրամանատար Հիւսէյին-Սապրի փաշա, որ ամբաստանեալ էր 300,000 արծաթ ռուպլիի փոխարէն քաղաքն յանձնած լինելու յանցանօք. վերջապէս Շքօտրայի բանակին նախկին ընդհանուր հրամանատար Մահմուտ փաշա։

Այս վերջինն Ֆրայնտ անուամբ Գերմանացի հրեայ մ'էր, որ Րէտիֆ փաշայի բռնութեան զոհ գնաց։ 1876ին Մէտունի մէջ Գարատաղցիներէն յաղթուեցաւ։ Իր հրամանատարութեան ներքեւ 14 վաշտ տրուած եւ իրեն հրաման եղած էր այնպիսի շարժում մ'ընելու, որոյ համար ամենալաւ զօրաց պէտք կար. բայց իր զօրքն անպիտան բաներ էին. այս մասին դիտողութիւն ըրաւ։ «Ահա Մէ-շէր կը լինիք», պատասխան տրուեցաւ իրեն։

— Միւշիր, լաւ, շատ լաւ. բայց այսու իմ գունդս բարւոք չլինիր։

— Հնազանդեցէք։» Եւ նա հնազանդե-

ցաւ։ Այն 14 վաշտերուն 13ն խոյս տուին, եւ ինքն միացեալ մէկ վաշտով ամբողջ գիշեր մը դէմ դրաւ առանց թնդանօթ մը կորուսանելու։

Րէտիֆ փաշա զինքն բերել տալով բանտ դնել տուաւ, ուր 30 ժամ մնաց անօթի։ Ամիսներ անցնելէ յետոյ՝ դատաստանի կոչուեցաւ պատերազմական խորհրդոյ մը առջեւ, որ զինքն անպարտ արձակեց, յետոյ Տուրը շուրյէ ատ+էրէյէր, այսինքն՝ պատերազմական գերագոյն խորհրդոյ առջեւ։ Անդ Րէտիֆ զայն ամբաստանեց իբրեւ մատնիչ. «Դուք 13 վաշտ կորուսիք, մինչդեռ չորեքտասաներորդ վաշտը կորուսած չէք լինիր»։ Այս փաստին վրայ խորհուրդը չը համոզուեցաւ, եւ Ֆրայնտ զօրավարն կամ Մահմուտ փաշան դարձեալ անպարտ արձակուեցաւ, բայց չկրցաւ իւր սուրն վերստին ստանալ։

Րէտիֆ փաշայի ոչ ոք յաջորդեց իբրեւ պատերազմի նախարար։ Իւր բարեկամն Տամատ Մահմուտ փաշա, որ Ապտ-իւլ-Համիտի Րէֆիէ անուն քոյրն կնութեան առած էր, նախարարի փոխանորդ անուանեցաւ։ Հասարակաց կարծիքն որ առաջնոյն անկմանը վրայ գոհ եղած էր, գրգռուեցաւ դարձեալ երկրորդին այսպէս բարձր պաշտօն մը ստանալուն համար, վասն զի զայն եւս կ՚ատէր եւ նոյն ամբաստանութեան ներքեւ կը ձգէր։ Սուլթանն՝ Ապտ-իւլ-Քէրիմի յաջորդ անուանեց Մէհէմմէտ Ալին, որ քրիստոնէութենէ դարձած էր, զոր եւ համբաւն իբրեւ զինուորական մեծ ձրից տէր ցոյց կուտար, թէ եւ բաւական դժբաղդ եղած էր Գարատաղի դէմ մղեալ վերջին պատերազմին մէջ։

Այս մարդուն պատմութիւնը վիպասանութեան մը կը նմանի։ Իւր բուն անունն էր Ժիւլիուս Տէթրուա, եւ սերեալ էր գաղղիացի Կալուինականաց գերդաստանէ մը, որ Նանթի հրովարտակին ետ առնուելէն յետոյ՝ գնացած Համպուրկի մէջ բնակութեան հաստատած էր։ Տասն եւ վեց տարեկան եղած ժամանակ՝ հայրենի տնէն խոյս տուաւ, եւ իբրեւ համբակ նաւաստեայ մտաւ Կոստանդնուպօլիս երթալու վրայ եղող նաւի մը մէջ։ Նորատի Ժիւլիուսն այս քաղաքն հասնելուն պէս՝ նաւէն փախաւ իրեն տրուելիք մարմնաւոր պատժէ մը զերծ մնալու համար։ Նախ փաշայի մը քով ծառայութեան մտաւ, յետոյ իւր պաշտպաններէն մին Փանկալթիի զինուորական դպրոցը դրաւ զինքն, ուրկէ ելաւ 1843ին իբրեւ սպայ։ Հարկ չէ ըսել թէ մահմետական եղած էր նա, որով կարողացաւ փառաւոր ասպարէզ մ՚ունենալ։ Ուրիշ քրիստոնէութենէ դարձող անձի մը, այն է Մահմուտ-Ճէլալէտտին անուամբ տաճկացեալ Լեհ Պօրսէվսքիի հրամանատարութեան ներքեւ՝ 1867էն մինչեւ 1869 Կրէտէի ապստամբութեան դէմ կռուեցաւ եւ հաստուածապետ զօրավար (Ֆէրիգ) անուանեցաւ պատերազմէն յետոյ։ Այս թեսաղիոյ մէջ տեսնուեցաւ, ուր աւազակութիւնը զսպելու գործն իրեն յանձնուած էր, եւ յետոյ Սերվիոյ եւ Գարատաղի մէջ. վերջերն Ենի-փազարի բանակին հրամանատարն էր, որ Վիտինի բանակին հետ միացաւ։

Նոր ընդհանուր հրամանատարն տակաւին սոսկ հաստուածապետ էր, վասն որոյ գունդապաղար կամ միւշիր անուանեցաւ, որպէս զի կարող լինի այնպիսի բանակի մը հրամանատարութիւն ընելու, յորում վեց միւշիրներ կը գտնուէին՝ գրեթէ ամենքին իրմէ երիցագոյն լինելով հանդերձ։ Շումնուի բանակատեղը հասաւ այն միջոցին երբ իւր նախորդն անկէ կը մեկնէր։ Իւր ազատամիտ եւ լուսաւորեալ մէկը լինելուն ապացոյցները տուաւ անմիջապէս՝ Բլաւիքա զօրավարին եւ Պէյքըր փաշայի աջակցութիւնը խնդրելով, զոր տաճիկ գլխաւորաց կաշկանդեալ միտքն ցայն վայր արհամարհած էր օտարական լինելուն համար. իւր հայրենակիցքն Պլում եւ Շթրէքքէր զօրավարներն, որք մինչեւ

անակ մեկուսի մնացած էին՝ մին
ի եւ միւսն՝ Վանայի մէջ, ուր
ղ էին գործ մը տեսնելու, Ներ-
կան հրամանատարութիւններ ստա-
ցան ։

Ընդհանուր հրամանատարն, զոր դիւրահաւան հասարակութիւնն կայթիւններով ողջուներ էր ճանապարհին վրայ իբրեւ փրկիչ, իւր պաշտօնին գլուխն անցնելուն պէս՝ չթուլացաւ բնաւ ։ Բանակին յայտարարութիւն մ'ուղղեց, որոյ ոճն մեղմ չէր, վասն զի աւելի սպառնալիք կը պարունակէր քան թէ խոստմունք ։ Յետոյ զննութիւն եւ անցահանդէս կատարուեցաւ Շումնուի լայնատարած սարահարթներուն վրայ ։ Հետեւեալ օրերն այցելութեանց նուիրուեցան, զորս ըրաւ նա այլեւայլ գնդից, ճամբարներուն, յետոյ հիւանդանոցներուն, շարժուն անկելանոցներուն, համբարանոցներուն եւ կազմածոց մթերանոցներուն եւ այլոց մէջ ։ Ապտ-իւլ-Քէրիմի անհաւատալի հեղգութեանը չէր նմաներ այս ։

Ամեն երկրի զինուորք կ'ուզեն որ իրենց վրայ հոգ տարուի, եւ կը վստահին նոցա, որք գիտեն թէ իրենք ինչ կ'ընեն, ինչ կ'ըսեն եւ ինչ կը մտածեն. վասն որոյ ամբողջ բանակն հրամանատարին ընթացքին մեկնութիւններ տալ սկսաւ եւ անոր գործելու եղանակին հաւանեցաւ ։ Թէ սպայակուտի անդամք եւ թէ այլ եւ այլ գնդից բարձրագոյն սպայք եղած փոփոխութիւնը նշմարեցին ։ Մէհէմմէտ-Ալի, փոխանակ Շումնուի երկու կամ երեք ճամբարներու մէջ անգործ ձգելու զանոնք, յաճախ հրաւիրեց իւր վրանին առջեւ զինուորական գրուցատրութեանց, յորս իւրաքանչիւր ոք կարէր կարծիք յայտնել ընտրողաբար ։ Ապտ-իւլ-Քէրիմ երբէք այսպիսի նոր սովորութիւններ չէր մուծաներ, եւ իւր վրանին առջեւ մարգագետնին վրայ երբեմն երբեմն ըմբշամարտութիւն ընող եւ իւղով օծեալ յաղթանդամ եւ կարշնեղ Արաբները դիտելու կը կոչէր առ առաւելն իւր սպայները ։

Այս բարեգուշակ գործունէութեան վըրայ լռեցին այն ամեն նախանձընդդէմ կիրք, որք Մէհէմմէտ-Ալիի այդ պաշտօնն ստանալուն դէմ կը գրգռուէին՝ նորա օտարական եւ ամենէն յետոյ միւշիր եղած լինելուն կրկին պատճառօքն ։ Վըստահութիւնը տիրեց դարձեալ բանակին մէջ. յաջողութեան համար անհրաժեշտ պիտանի բան մը չէ միթէ այս ։

# Գլուխ Քսանեւմէկերորդ

## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ ՅԱՍԻԱ ԿԱՐՍԻ ՊԱՇԱՐՄԱՆԷՆ ՍԿՍԵԱԼ ՄԻՆՉԵՒ ԶԻՎԻՆԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏՆ

### ԿԱՏԱՐԵԱԼ ՅԵՂԱՇՐՋՈՒԹԻՒՆ

Դանուբի անցքէն յետոյ հետզհետէ կատարուած իրողութեանց շղթայն՝ Հայաստանի մէջ եղած պատերազմին պատմութեան շարայարութիւնն աւելի առաջ սկսելու չներեց ։ Շիփքայի կրճին առումն Պուլղարիոյ մէջ Ռուսաց բարեյաջող գործողութեանց աւարտն լինելով, ի դէպ է պատմել նոցա Ասիոյ մէջ կրած ձախողութիւններն յառաջ քան զոյնս որք յետոյ պատահեցան իրենց Եւրոպայի մէջ ։

Հայաստանի մէջ եղած պատերազմին այս երկրորդ մասն ճիշդ առաջնոյն հա-



ԶՕՐԱՎԱՐ ՕԽԼՕՊԺԻՕ , ՀՐԱՄԱՆԱՏԱՐ ՌԻՕՆԻ ԳՆԴԻՆ

կընդդէմ է ։ Թուական առաւելութիւնն Ռուսաց կողմէն Տաճկաց կողմը կ'անցնի , առաջինք կը նահանջեն եւ երկրորդք կը հալածեն։ Լօրիս Մէլիքօվի եւ Մուխթար փաշայի հրամանատարութեանց ներքեւ գտնուած զօրաց վրայ յառաջագոյն մեր տուած տեղեկութեանց միայն եթէ կայուիմք , այս յեղաշրջութիւնն անիմանալի կը մնայ, որով անկարելի պիտի լինէր մեզ բացատրել թէ ինչպէս ռուսական բանակն Կարնոյ տասն ժամու ճանապարհ Զիալու չափ մօտենալէն յետոյ՝ պարտաւորեցաւ նահանջել մինչեւ սահմանագլուխն առանց վճռական մէկ ճակատամարտի սարսեալ լինելու ։ Այն տեղեկութիւններն Ռուսաց կէս պաշտօնական լրագրոց մէջ հրատարակուածներուն կրկնութիւնն էին . ամեն ոք իբրեւ ճիշդ կը համարէր զայնս մինչեւ

կատեղէն զրկուեցան անգղիական լրագրաց ։ Պաթումէն եւ Երզրումէն մէկ քանի հեռագրաց նայելով՝ ահ եւ սարսափ կը տիրէր օսմանեան բանակին մէջ, եւ զինուորաց վհատութիւնն յոյս մը չէր թողուր. Ռուսք ինչ որ ուզէին եւ համարձակէին ընել, կ՚ընէին, եւ անոնց յաղթական ընթացքն անկասելի էր ։ Բանակին վերակազմութեան միջոցին այսպիսի լրեր տարածողներն արդեօք եղած բաները չէի՞ն տեսած, կամ թէ արդեօք Տաճիկներն մասնաւոր պատճառներ ունէին թղթակիցները խաբելու համար ։ Արդեօք ռուսական բանակին գլխաւորները պատրելու դիտմամբ ինքզինքնին տկար կարծել տուին ։ Ինչ եւ իցէ, երկու հակառակորդք զիրեար խաբեցին. Տաճիկներն խիստ զօրաւոր կարծեցին զՌուսս, եւ ըստ այնմ պատրաստութիւն տեսան դիմադրութեան. Ռուսք եւս խիստ տկար վարկանելով զանոնք՝ յարձակման համար ըստ բաւականի կազմ եւ պատրաստ չգտնուեցան ։

Այժմ կարելի է հասկանալ թէ թշնամւոյն զօրութեան անգէտ լինելէն ինչպէս օգուտ յառաջ եկաւ Տաճկաց համար, եւ ռուս հրամանատարք անխոհեմութիւն ընելով վնաս ունեցան ։ Յունիս ամսոյ կռուին յանդգնութեան օրինակ մ՚է ։ Լօրիս Մէլիքով եւ Տէր Ղուկասով այլ եւս Տաճիկները բանի տեղ չէին դներ եւ հոգ չէին ըներ ։ Միայն կը նային թէ որն առաջ պիտի հասնի, որն աւելի շատ յաջողութիւն ձեռք բերելու պարծանքը պիտի ունենայ ։ Այլ եւս չէին մտածեր գործողութիւններն կապակցել. իրարմէ անջատ կը խաղան Մուխթար փաշայի վրայ եւ կը պարտուին, մինչդեռ զուգընթաց յարձակմամբ յաղթութիւն պիտի տանէին ։

Այս կարեւոր բացատրութիւններն տրուելէ յետոյ, գործողութեանց պատմութիւնն՝ ուր որ ձգուեցաւ՝ անոր պիտի սկսուի այժմ, այսինքն Կարսի բոլորովին պաշարուելէն ։

## ԿԱՐՍԻ ՊԱՇԱՐՈՒՄՆ

Կարսի մէջ ուտեստ չգտնուելու մասին Տաճկաց հանած տարաձայնութիւններն անհիմն էին ։ Զարմանալի՛ բան. քաղաքը լաւ պարենաւորեալ էր. վեց ամսուան նպար կար եւ առատ ռազմամթերք ։ Որովհետեւ պաշարեալ բանակն թուով գրեթէ հաւասար էր զինքը շրջապատող բանակին, դործոց հանգամանքն նպաստաւոր էին Տաճկաց ի սկզբան յունիս ամսոյ, երբ պաշարման ձեռնարկուեցաւ ։

Ռուսք բուն իրենց նշաւակ ընտրեցին բերդաքաղաքին հիւսիսային արեւելեան ճակատն, եւ մասնաւորապէս Գարատաղի ամրոցն ։ Այս դիրքը քաղաքին բանալին է, որոյ ամեն կողմանց վրայ կը նայի եւ յարձակողին համար այս աղէկութիւնը կայ որ միւս ամրոցներուն չափ ամուր չէ. վասն զի գետինն ապառաժուտ լինելուն՝ անհնար է խրամ բանալ, եւ հող չգտնուելուն՝ անկարելի է պարտակները նորոգել, երբ անգամ մը թնդանօթի հարուածներէն աւերին. բայց յիրաւի՝ այս առաւելութիւններն հակակշռեալ են ամրոցէն 300 ոտնաչափ վար դաշտին մէջ պաշարման թնդանօթաց մարտկոցներ հաստատելու հարկաւորութեամբ ։ Բերդաքաղաքին արեւմտեան կողմն Թահմազի ամրոցին դէմ եւս գործելու համար աշխատութիւններ եղան ։

Կովկասու ընդհանուր կառավարիչ Միքայէլ դուքսն եկաւ անձամբ հսկելու Ալէքսանդրօփոլէն բերուած խոշոր թնդանօթաց զետեղման ։ Մեծ դուքսն ռուսական բանակին մէջ հրազինութեանց ընդհանուր վերատեսուչ անունն եւս կը կցէր իւր բոլոր չքանուանց, եւ հաւանական էր որ ըստ այնմ գործելու կը նայէր ։ Մարտկոցներուն շինութիւնն մեծ խնամով եւ ճարտարութեամբ եղաւ այն վերջին կատարելագործութեանց համեմատ, զորս հարկ եղած էր ընել նոր թնդանօթաց պատճառաւ ։

Յունիսի սկիզբէն մինչեւ կէսն՝ Թահմա-

ջի ամրոցն կանոնաւոր կերպիւ ամեն օր ռմբակոծուեցաւ. 14րդ օրն Տաճիկներն բերդաքաղաքէն դուրս յարձակում մ'ըրին Ռուսաց կերտուածներն աւրելու համար։ Կէս օրէն երեք ժամ յետոյ՝ Թնդանօթաց երկու շարով ինն վաշտեր խուժեցին յառաջակայ պահակներուն վրայ, յետս մղեցին զանոնք, Ջիֆթլիկի բարձունքը գրաւեցին եւ այն տեղ Ռուսաց շինած մարտկոցները քանդեցին։

Հէյման զօրավարն՝ Վրաստանի գումարտակէն մէկ փոքրիկ ջոկատի եւ Երեւանայ գումարտակէն որձակամարտներու առաջնորդելով, վազեց եւ Տաճկաց հետեւակազօրուն հետ հրացանի կռուոյ մը բռնուեցաւ, մինչդեռ Ջէվչէվածէ իշխանն սորա յետակողմէն կը յարձակէր Վրաստանի գումարտակէն երկու վաշտ հետն առած, որք Թուրքաց դէմ խոյացան սուինով։ Տաճիկներն իրենց գրաւած բարձանց վրայէն յետս մղուելով սկսան նահանջել։ Երբ Սէվէրսքի միջապազօրաց գումարտակն Ջէվչէվածէ իշխանին հրամանաւ խուժեց նոցա ձախակողմեան թեւին դէմ, այս նահանջն փախստեան փոխակերպեցաւ, եւ երբ կռուատեղին վրայ նոր հասած եւ հաստարանի վրայ ագուցեալ թնդանօթաց շարէ մը կրակ տեղալ սկսաւ, այն ժամանակ Տաճիկներն եւս խառն ի խուռն խոյս տուին։ Սոքա այս կռուոյն մէջ 500էն աւելի մարդ կորուսին։ Ռուսք կըսեն թէ իրենց կողմանէ 11 մարդ սպաննուեցան եւ 106 հոգի վիրաւորուեցան։

Քսան եւ հինգ թնդանօթներով եւ ռմբկէններով գինեալ 8 մարտկոցներէ՝ ամսոյն 17ին կատաղի ռմբակոծութեան մը ձեռնարկուեցաւ Գարատաղ-Թապեասը, Արապ-Թապեասը եւ Մուխլիս-Թապեասը ըսուած ամրոցներուն դէմ, եւ շարունակեցաւ մինչեւ ամսոյն 23րդ օրն, յորում Ռուսք յարձակումն ըրին Գարատաղի ամրոցին վրայ։

Առաւօտուն կրակն սկսաւ այնպիսի սաստկութեամբ, որ Տաճկաց մէկ քանի թընդանօթներն հաստարաններուն վրայէն ինկան։ Յայնժամ յարձակող խմբերն խիտ առ խիտ խոյացան զարհուրելի աղաղակներ արձակելով. Տաճկաց թընդանօթաձիգներուն թիւը կրկնապատկեալ էր, բոլոր ծակերէն հրացաններ կ'երեւէին. վասն որոյ ամբողջ պատուարներուն երկայնութեանը բոցերու անընդհատ շարք մը կըտեսնուէր. Ռուսք առաջին անգամ յարձակելով ընկրկեցան եւ սկսան ետ քաշուիլ վազելով։ Յետոյ ամրոցէն հարիւր քայլ միայն հեռի զարմանալի արիութեամբ խմբուելով՝ վերստին յարձակեցան։ Նոյն միջոցին դիւրատար թնդանօթաց շարեր հասան Տաճկաց օգնութեան, եւ յարձակողաց վրայ երկաթի կտորներու այնպիսի տարափ մը տեղաց, որով նոքա ստիպուեցան վերջոտնել եւ այլ եւս չդառնալ։ Մեծ եղաւ Ռուսաց կորուստն, թէ եւ Տաճկաց ըսածէն նուազ, որք պարծեցան թէ անոնցմէ 4,000 մարդ ըսպաննած էին։

Յունիսի 25ին՝ Ռուսաց կրակն՝ որ խիստ սաստիկ եղած էր ժամանակ մը, երեկոյին մեղմեցաւ եւ հետեւեալ օրն բոլորովին դադրեցաւ։ Կարսի հրամանատարն ուզելով Մուխթար փաշայի հետ հաղորդակցութիւն ընելու ջանալ, մէկ քանի մարդ ղրկեց սպայի մը հրամանատարութեան ներքեւ, որում տեղեկագիր մը յանձնուեցաւ։ Սպայն այն գրութիւնն իւր կօշիկներուն տակի կաշիներուն մէջ պահեց, բայց այս զգուշութիւնն անօգուտ եղաւ, վասն զի ճանապարհին վրայ եւ ոչ մէկ Ռուս հանդիպեցաւ իրեն, որով ինքն իւր քովն եղած գրութիւններն կարաց անվթար յանձնել հրամանատարին։

Այն ժամանակ միայն Կարսի բերդապահքն հասկացան թէ յունիս 23ի սաստիկ ռմբակոծութիւնն եւ յարձակումն՝ պաշարող բանակին ստուար մասին հեռանալն յայտնի չընելու համար էր, որ

Մուխթար փաշայի դէմ գնացած էր Սօղանլը-տաղի յետակողմն ։

ՏԷՐ ՂՈՒԿԱՍՈՎԻ ԽԱՂԱՑՔՆ ԵՒ ՏՐՕՄ-ՏԱՂԻ ԿՌԻՒՆ (1)

Մուխթար փաշա դէպ ի Զիվին քաշուեր եւ բանակեր էր, ուր երկու կարգ ընտիր բնական ամրութեամբք պաշտպանեալ դիրց մէջ կը միանան դէպ ի Կարս տանող երկու ճանապարհներն ։ Իւր ձախակողմեան թեւն հաստատուած էր ի Հինձք՝ Էրզրումէն մէկ փարսախ հեռի, եւ կը հսկէր Օլթիի ճանապարհին վրայ. Հասան գալէի (ըստ ոմանց Յուստինիանուպօլիս կամ Ղեւոնդուպօլիս, եւ ըստ ումեմն Բոզբերդ) եւ Քէօփրիւ-քէօյիւ (Վաղարշաւան) մօտ զետեղեալ ջոկատներ կեդրոնին կը միացնէին զանոնք. աջակողմեան թեւն Թաթլըճը-Զատէ Մէհէմմէտ փաշայի հրամանատարութեան ներքեւ Տէլիպապայի (ըստ Մուխթար փաշայի Վէլիպապա) մօտ էր Պայազիտի ճանապարհին վրայ, եւ յառաջապահ խումբ մ'ունէր Խօրասանի մէջ, որով Զիվինի հետ կը հաղորդակցէր ։ Այս տրամադրութիւնքն յոյժ ուղիղ մտածեալ էին. այն բոլոր ճանապարհներն ուրկէ թշնամին կարէր Բասենոյ դաշտն ելնել եւ Կարնոյ վրայ խաղալ, փակեալ էին եւ վերջին երկու ջոկատներն կարէին միմեանց օգնել դիւրաւ ։ Հնար է մեզ այժմէն նշանակել որ թուրք հրամանատարք՝ թէ եւ յոյժ երկչոտ էին, սակայն այս պատերազմին մէջ այնպիսի ռազմագիտական յաջողակութիւն ցոյց տուին, յորմէ զուրկ գտնուեցան Ռուսք խիստ շատ անգամ ։

Ըսուեցաւ թէ Երեւանայ գունդն Ալաշկերտ եւ Չէյտէքան հասեր էր, Տաճիկներն անոր դէմ բախել չուզելով ։ Ալէքսանտրօփօլի գնդին հետ հաղորդակցութիւն հաստատեր էր. խոհեմութիւնն յատկապէս կը պատուիրէր իրեն՝ Արածանեայ արգաւանդ դաշտին մէջ իւր զօրութիւնը գտնել եւ գլխաւոր հրամանատարին թելադրութեանն սպասել ։ Այս գունդն հազիւ 8,000 պատերազմող զինուոր ունէր, գործողութեանց խարիսխէն 150 հազարամէթր հեռի կը գտնուէր, հետ առած տասնեւութ օրուան պաշարն գրեթէ սպառեր էր, իւր հաղորդակցութիւնն եւ նահանջելու գիծն ապահովելու համար 900 մարդէ բաղկացեալ ջոկատ մը միայն ունէր, որ Պայազիտի կաւակերտ գէշ միջնաբերդին մէջ ձգուած էր եւ ջրոյ համար եւս նեղութիւն կը քաշէր. եւ Տէր Ղուկասով զօրավարն գիտէր թէ իւր առջեւ տաճիկ զօրաց գունդ մը կար եւ Վանայ փաշան իւր ձախակողման վրայ ուրիշ գունդ մը եւս կը կազմէր այն տեղերէն գումարած զօրօքն ։ Տէր Ղուկասով դոյզն ինչ յոյս ունեցած էր որ տեղացիք արդեամբ կ'աջակցին իրեն. բայց երկչոտ Հայք կարող չէին բան մ'ընելու ։ Քիւրտերուն գլխաւորներէն մէկ քանիներն իւր քով եկած էին, որոց ժամացոյցներ տրուեցան ։ Նոքա ժամացոյցներն առնլով մեկներ էին առանց ըսելու թէ երբ պիտի դառնան ։ Ռուսաց նահանջելու ժամանակ՝ վերստին տեսնուեցան, աւար ժողվելու ցանկութեամբն պահ մը Տաճկաց օժանդակ լինելով ։ Բոլոր այս պատճառներն Ռուսաց հարկ կը դնէին սպասելու. բայց նոցա ըրած տեսակ մը զինուորական ճեմն ամենուն գըլուխը տաքցուցեր էր ։ Ռուսք արդէն ինքզինքնին Կարնոյ մէջ կը կարծէին ։ Ապա ուրեմն՝ յառա՜ջ ։

Երբ Մուխթար փաշա իմացաւ որ Տէր Ղուկասով զօրավարն Տաճկաց ձախակողմեան թեւին յետակողմն անցնելու համար՝ Չէյտէքանէն ելնելու եւ Գարա-Տիրպէնտի կրճին մէջ մտնելու կը պատրաստուէր, սկսաւ մտատանջիլ ։ Մէհէմմէտ փաշայի օգնութեան զօրք ղրկեց եւ հրաման ըրաւ Ռուսաց դէմ գնալու եւ ճանապարհը փակելու ։ Մէհէմմէտ յա-

(1) Այս կռիւը Զէյտէքանի և Տաղարի կռիւ ևս կըսուի :

ռաջ քալեց ամսոյն 14ին, եւ գնաց ամրացաւ Տրօմ-տաղի բարձանց վրայ՝ Տաղար բերդագիւղին մօտ՝ 16 վաշտով, 7 թնդանօթով եւ այն այլ եւ այլ ազգէ աւարառուաց բազմութեամբ, որք տաճկական բանակին հեծելազօրը կը կազմէին։ Կըսուի թէ Անգղիոյ զինուորական կցորդ Սըր Արնօլտ Քէմպալ ընտրեց դիրքն, եւ ճակատ յարդարեց երրորդ օրն։ Տաճիկներն այս լուրը չառնելէ զատ՝ հաստատեցին, եւ իրենց պարտութեան պատասխանատուութիւնն օտարականի մը վրայ ձգելու զուարճութիւնն ունեցան խորագիտութեամբ, որ միշտ իրենց խորհուրդներ տալով ձանձրոյթ կը պատճառէր։

Տէր Ղուկասովի յառաջապահ զօրքն ամսոյն 15ին Տաճիկները տեսան, եւ նշմարեցին որ նոցա դիտաւորութիւնն էր վերջապէս պատերազմ տալ։ Կանգ առին հինգ հազարամէթրի չափ հեռի՝ զօրաց ստուար մասին սպասելով, որ կէս օրէն երեք ժամ յետոյ հասաւ։ Օրը տարաժամեալ էր, եւ անկարելի էր կռիւն անմիջապէս սկսիլ. վասն որոյ Երեւանայ գունդն բանակեցաւ գիշերելու համար։ Այն օրն միայն մէկ քանի անգամ Տաճկաց թնդանօթներն եւ Ռուսաց ձիոյ վրայ բարձեալ հրըլնկէց գործիններն մէկ քանի հարուած արձակեցին։ Ռուսական բանակին մօտ գտնուող բարձրաւանդակէ մը կարելի էր Տաճկաց գրաւած դիրքը զննել, որ խիստ ամուր եւ յարմար էր զօրաւոր պաշտպանութեան մը. 8,000 ոտնաչափ բարձրութիւն ունեցող լերանց մէջ միայն հնար է այսպիսի դիրք գտնել, եւ մինչեւ անգամ լեռնային երկիրներու մէջ հազուագիւտ են անոր նմանները։

Այս դիրքի ճակատն՝ Ռուսաց առջեւ հինգ հազարամէթրի չափ ի բաց կը տարածուէր եւ ուղղահայեաց կը գտնուէր այն ճանապարհին, ուրկէ Երեւանայ գունդը պիտի քալէր հիւսիսէն դէպ ի հարաւ։ Աջ կողմէն պատսպարեալ էր ճանապարհին զուգահեռական երկայնաձեւ երկու կատարներով, որոց նոյն ուղւոյն վրայ նայող կողերն ուղղորդ ժայռերով կը յանգէին, եւ որոց արտաքին կողին վրայ խորափիտ եւ փախուստ հեղեղատ մը կար. Ձախ կողմէն լերանց գլխաւոր շղթայն տակաւ առ տակաւ կը բարձրանար մինչեւ ցվերջին ծագն, ուրկէ բոլոր շրջակայ երկրին վրայ կը նայուի։ Այս դիրքի յառաջակողմն 200էն մինչեւ 400 քայլաչափ հեռի յոյժ խորայատակ ձոր մը կը ձըգուէր դժուարուտ կողերով, եւ ասոր ալ առջեւն բոլորովին բացատ տեղ մ'էր, ուր մէկ կէտի վրայ կարելի էր այլ եւ այլ կողմէ կրակ թափել։ Այս բնական առաւելութիւններէն զատ՝ Տաճիկներն երկայն պարկէններ փորած էին, յորս 3,000 արձակամարտք կրնային պատսպարիլ։ Միջավայրն երկու Քռուփի թնդանօթներ զետեղեալ էին ճանապարհէն քիչ հեռի դէպ յաջակողմն. ուրիշ հինգ թնդանօթներ եւս կային այլ եւ այլ տեղեր այն դիրքի երկայնութեանն։

Տաճիկներն, ինչպէս ըսուեցաւ, այս ահեղ կայանը պաշտպանելու համար ունէին 16 վաշտ, 7 թնդանօթ եւ կանոնաւոր եւ անկանոն հեծելազօրաց մեծ բազմութիւն մը։ Իրենց թուական զօրութիւնն այսպէս գերազանց էր հակառակորդաց զօրութենէն, թէեւ յիրաւի՝ նոքա հրազինութեան մասին առաւելութիւն ունէին 30 թնդանօթ գտնուելով իրենց քով. բայց տեղեաց ձեւակերպութեան պատճառաւ՝ միայն 24ը կարելի եղաւ գործածել։

Տէր Ղուկասով զօրավարն իւր զօրաց սակաւաթիւ լինելուն եւ թշնամւոյն դիրքի ամրութեանը չնայելով՝ ամսոյն 16ին առաւօտեան ժամը եօթնին ճակատ յարդարեց, 19րդ սահէն 9 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող թնդանօթներն զետեղուեցան գիշերային բանակատեղին մօտ բարձրաւանդակի մը վրայ. բովանդակ հետեւակազօրն՝ այսինքն 24 դասակ՝ յառաջ քալեցին վաշտա-

նալով. այս զօրաց առաջքն երեւան ելնելուն պէս՝ Տաճկաց թնդանօթաձիգները կրակ ըրին եւ Ռուսաց հրընկէց գործիներն իսկոյն անդրադարձութիւն ընելով կռուոյն սկիզբն եղաւ ։ Թնդանօթաց առաջին հարուածներն արձակուելուն պէս՝ Տաճկաց ուղիղ ումբաձգութենէն յայտնի երեւեցաւ որ նոքա ուշի ուշով չափած էին թշնամւոյն անցնելիք ճանապարհին այլ եւ այլ կէտերուն եւ իրենց գտնուած տեղւոյն մէջ տեղի հեռաւորութիւններն ։ Սակայն որքան եւ ճիշդ նշան կառնուին, դարձեալ չէին կարող մեծ վնաս պատճառելու ։ Ռմբարտակներուն մէկերորդ մասը միայն պայթեցաւ. մնացեալները գետինը կը հերձոտէին զինուորաց շուրջն եւ կը մխուէին առանց պայթելու ։

Ռուսաց խաղացքն յամեցաւ տեղեաց խորտաբորտ լինելուն եւ ուղիներուն գէշ վիճակին պատճառաւ, ուրկէ անկարելի էր թնդանօթ անցընել. հարկ եղաւ ճանապարհ հորդել եւ հետեւակազօր գործածել ամենէն դժուարին ելեւէջներէն թնդանօթներն յառաջ վարելու համար ։ Հուսկ ուրեմն, Ռուսաց՝ իրենց բանակատեղէն մեկնելուն վրայ մէկ ժամ անցնելէն յետոյ, կարելի եղաւ թնդանօթաց շար մը զետեղել յարմարապէս եւ կրակ ընել ։ Միանգամայն հետեւակազօրաց խմբերն տեղեաց խոչընդոտներուն քիչ քիչ յաղթելով բարեկարգութեամբ կը յառաջէին. Գըրըմի գումարտակին դասակներն աջ կողմէն եւ Սթավրօփօլի գումարտակին դասակներն ձախ կողմէն սփռուեցան լաւ դիրք ունեցող բարձրաւանդակներու վրայ ։ Նոյն պահուն Տաճիկներն իրենց շարքին մէկ ծայրէն մինչեւ միւսն սկսան հրացանի սարսափելի կրակ մ'ընել, որ զարհուրելի որոտման նման անընդհատ կը գոռար ։ Մինչդեռ ռուս արձակամարտք հանդարտօրէն անդրադարձութիւն կընէին՝ առանց աճապարելու լաւ նշան առնլով եւ ըստ կամի կրակ ընելով, 19րդ ռահին 5րդ թնդանօթաշարն այնպիսի բարձրաւանդակի մը վրայ զետեղուեցաւ որ Տաճկաց թնդանօթաշարին գտնուած տեղւոյն չափ բարձր էր գրեթէ, եւ հարկադրեց որ ետ տարուի այն. միանգամայն 9 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող թնդանօթաշարն իւր առաջին վայրէն կը հեռանար, այն է բանակատեղին մօտէն, եւ աւելի կը յառաջէր ։

Տաճիկներն իրենց առաւելագոյն թուով լինելուն վրայ վստահելով՝ ջանացին շրջան մ'ընել եւ Ռուսաց աջակողման ետեւն անցնիլ՝ գրաւելու համար այն բարձրաւանդակներն, ուրկէ կարէին նոցա թընդանօթաց վրայ կողմնակի յարձակիլ. բայց Գըրըմի գումարտակին դասակներն ուղիղ նշան առնլով եւ կրակ ընելով Տաճկաց վրայ՝ յետս վանեցին զանոնք եւ բարձրաւանդակները գրաւեցին անոնցմէ առաջ, որոց վաշտերն աճապարանօք ետ քաշուեցան պատնիշաց ետեւ պատսպարուելու համար ։

Ձախակողման վրայ՝ Սթավրօփօլի գումարտակէն երկու վաշտեր Գըրըմի գումարտակէն մէկ վաշտի մ'օգնութեամբ կարող եղան, ընդդէմ տաճիկ արձակամարտից սաստիկ հրացանութեան, հասնիլ բարձրաւանդակի մը գագաթան վրայ, ուրկէ կարէին Տաճկաց դէմ անվրէպ կրակ թափել ։ Այնուհետեւ սոցա կորուստն զգալի եղաւ յոյժ ։ Հետեւակազօրն՝ որոց նպաստելու անկարող էին թնդանօթաձիգներն՝ իրենց առաջին տեղերէն ետ քաշուելու ստիպուած լինելով, քանի վայրկեան դիմադրեց անդրդուելի քաջութեամբ, եւ Մէհէմմէտ փաշա՝ որ իւր զօրաց գլուխն անցած էր, սուր ի ձեռին տապաստ անկաւ գնտակէ մը զարնուած ։ Երբ Ռուսք մտան այն պատնիշաց մէջ, զորս կը պաշտպանէր այս հետեւակազօրն, մէկ մէթր բարձրութեամբ դիզուած տեսան փամփուշտներուն մնացորդներն, ահա այսքան սաստիկ եղած էր հրացանութիւնն ։ Հուսկ ապա Տաճիկ-

ներն՝ իրենց ռազմամթերքն սպառած լինելով՝ ետ քաշուեցան, եւ մէկ քանի օդաթռիչ փամփուշտներ եւս իրենց մէջ անկանելուն վրայ, նոցա կարգերն աւրուեցան․ ի փախուստ դարձան ռուս հետեւակազօրաց կողմանէ հալածուելով, որք մեծ կորուստ տուին իրենց․

Այս միջոցին էր որ պատահեցաւ Քէմալ զօրավարին դէպքն, որոյ վրայ այնքան տարաձայնութիւններ եղան․ Անգղիացի զինուորական կցորդն գործողութեանց միջավայրէն քիչ հեռի բարձրաւանդակի մը վրայ էր․ Իւր համոզգեստէն ճանչցուելով՝ Տէր Ղուկասով զօրավարին ցոյց տրուեցաւ, որ իրաւամբ կամ յանիրաւի Քէմալ զօրավարին վրայ կասկած ունէր թէ չէզոքութեան մասին խստապահ չէր. վասն որոյ իսկոյն խազախներու ջոկատ մը արձակեց անոր ետեւէն, հրաման ընելով որ զերի բռնեն․ Քէմալ զօրավարն եւ իրեն ուղեկից գտնուող Նորման հարիւրապետն կը տեսնեն որ այս յարձակումն իրենց դէմ է, եւ անմիջապէս ի փախուստ կ'աճապարեն․ Խազախք՝ այն լաւ ձիաւորներն կարծես թէ նոցա ետեւէն կը թռչին. այս տարօրինակ կատաղի եւ թափն ընդ թափն հալածումն ժամէ մ'աւելի կը տեւէ, եւ յուզմունք կ'առաւելուն, երբ մէկ քանի գնտակներ Անգղիացւոց ականջներու քովէն չկահելով կ'անցնին․ Հուսկ ուրեմն, խիստ լաւ ձիեր ունենալնուն համար՝ կը յաջողին զերծանիլ այն ընդունելութենէն որ ռուսական բանակին մէջ իրենց պիտի լինէր հաւանականաբար խիստ անհաճոյ կերպիւ․

Առաւօտեան ժամն իննին Տաճիկներն իրենց անյաջողութիւնը նախատեսելով՝ աղխերն եւ թնդանօթներն յետ կոյս ղրկեր էին, այնպէս որ խիստ շուտով ետ քաշուելու կարողացան․ Ռուս հետեւակազօրն յապաղեց, եւ այսոր պատճառը Ռուսաց պաշտօնական տեղեկագիրք չեն բացատրեր, վասն որոյ այն հետեւակազօրն չկարաց Տաճկաց պարտութիւնը կատարեալ ընել․ Երբ յառաջ խաղաց, Մէհէմմէտ փաշայի տեղ հրամանատարութիւն ըստանձնող Մուսթաֆա փաշա իւր զօրքը ժողովեր էր եւ թնդանօթի հարուածներ արձակելով հանդերձ՝ կը նահանջէր․ Սա 12 հազարամէթրի չափ յետ կոյս քաշուեցաւ, եւ նոր դիրք մէջ ամրացաւ․ Կարնոյ մէջ Տաճկաց կորուստն 1,000 մարդու չափ հաշուեցաւ․ Նորման հարիւրապետն ծնօտէն վիրաւորուեր էր ռմբարտակի կտորով մը․ Մէհէմմէտ փաշայի մահն մեծ ցաւ պատճառեց. քաջ զօրական մ'էր նա որ Պաղտատէն բերել տրուած էր Հայաստանի մէջ հրամանատարութիւն մը յանձնուելու համար իրեն. այս առթիւ ֆեզէֆ կամ հատուածապետ եղած էր․ Ռուսաց կողմանէ 3 սպայ եւ 150 զինուորներ կորան․ Գըրըմի գումարտակին 4րդ վաշտն տասն վայրկենի մէջ իւր հրամանատարն եւ 50 մարդ կորուսած էր․

Ռուսք այս կռուոյն մէջ թէեւ յաղթական հանդիսացան, սակայն խելամուտ եղան նաեւ թէ իրենց կարծածին չափ Կարնոյ մօտ չէին գտնուեր. այն առաջին անգամն էր որ բուն Թուրք զօրականաց հետ կռիւ ըրած էին, եւ նոքա սքանչելի արիութիւն ցոյց տուեր էին. դժբախտաբար իրենց սպայք խեղճ եւ ապիկար էին․ Կռիւն սկսած ժամանակ լերանց կատարներուն վրայ զետեղեալ թնդանօթներն՝ եւ ոչ մէկ դաշտային ամրութեամբ պաշտպանեալ էին, եւ երկնից երեսին վրայ իրենց ձեւն կարկառեալ երեւելով՝ ռուս թնդանօթաձիգներուն լաւ նշաւակ կը լինէին այնք․ Նորակիրթ զօրաց պէս ռազմամթերք վատնեցին տաճիկ զինուորներն աննախատեսութեամբ, կռուոյն վերջը ձեռն ունայն մնացին եւ հետեւարար չկարացին դիմադրութիւն ընել․ Իրենց մէն մի վաշտին յատկացեալ էր 32 գրաստուց խումբ մը, որոց իւրաքանչիւրին վրայ հազարական փամփուշտ պարունակող չորս արկղիկ կը գտնուէր. բայց կռուոյն նոր սկսած պահուն ասոնք յետ կոյս ղրկուեր էին, եւ երբ

փամփուշտ պէտք եղաւ, Տաճիկներն չկարացին առ ձեռն պատրաստ ունենալ։ Սոյն կռիւն եղած օրն՝ երկու վաշտեր անշարժ մնացին Տէլի-Գասպայի մէջ, ուր երթալու հրաման տրուած էր իրենց երեք օր առաջ։ Օթեւանէ օթեւան քայլեր եւ հասեր էին այն տեղ, եւ թնդանօթաց ձայնն այնքան մօտէն լսելով հանդերձ չէին խըլըրտեր։ Փոքր ինչ հեռի ուրիշ վաշտ մ'եւս բանակեալ էր թնդանօթաց մէկ շարով հանդերձ, եւ քայլ մը դէպ յառաջ չէր առած, վասն զի կ'ըսուի թէ անհնար եղած էր հրամանատարին փողահար մը գտնել իւր մարդիկը ժողովելու համար։ Ի՞նչ կարէր ընել քաջութիւնն այսպիսի հրամանատարութեան մը ներքեւ։

## ՏԱՂԱՐԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏՆ[1]

Տրոմ-տաղի պարտութեան լուրն կատարեալ ահ եւ սարսափ պատճառեց․ Կարնոյ հասարակութիւնն խենթ եղածի պէս էր․ գոգցես Ռուսք արդէն քաղաքին շրջակայ բարձանց վրայ կ'երեւէին․ խնդիր կը լինէր թէ պաշարման եւ ռմբակոծութեան երկիւղէն զերծ մնալու համար՝ անմիջապէս քաղաքն յանձնելու էր թէ ոչ։ Հայք դիմադրութիւն ընել չէին ուզեր բնաւ եւ սովէն տանջուելու մտածութիւնն անգամ դող կը պատճառէր իրենց․ Միւս կողմանէ մահմետականք կը յուզուէին․ Գէնկլի-Ահմէտի մէջ կատարեալ պարտութիւն կրող Մուսա փաշա, Զէրքէզներուն գլխաւորն, վերջապէս կարող եղած էր իւր մարդիկը վերստին ժողովելու։ Օսմանեան իշխանութիւնն մէկ քանի լաւ տնօրէնութիւններ ըրաւ․ Մուսա փաշայի ազդու կերպիւ հրաւէր կարդաց պատերազմի դաշտաց վրայ իւր եռանդը թափելու. Տաճիկներն բանակը ղրկուեցան․ ամեն տեղ յայտարարութիւն եղաւ որ իւրաքանչիւր ոք ինքզինքն հայրենեաց նուիրել պարտաւոր էր, եւ զէնք գործածելու կարող ամեն մարդ բանակատեղը երթալու էր։ Էրզրումի ծեր կուսակալն Իսմայիլ փաշա՝ որ ցայնժամ իւր անձը վտանգելէ զգուշացած էր, վերջապէս օրինակ տուաւ, եւ Մուխթար փաշայի քով գնաց ի Զիվին, բոլոր զօրքն եւ առ ձեռն պատրաստ բոլոր թնդանօթներն հետ առնելով։ Զօրավիղներն շուտով հասցընելու ջանք եղաւ, եւ քաղաքին ամրութեանց շինութիւնն փութով յառաջ տարուեցաւ։ Միով բանիւ ամեն պատրաստութիւն տեսնուեցաւ թշնամւոյն դէմ դնելու համար, որոյ Խազախներն մինչեւ Քէօփրիւ-քէօյիւ երեւեցան՝ Կարնոյ դըռներէն հազիւ ութ ժամու չափ հեռի։

Թէեւ վտանգը մեծ էր, սակայն Մուխթար փաշա իւր անխռովութիւնը չկորոյս։ Իմացած էր որ Ալէքսանտրօփօլի գնդին մէկ ջոկատն իւր դէմ կը յառաջէր, բայց հաշիւ ըրաւ որ Տէր Ղուկասով յաղթելու եւ դառնալով Զիվինը պաշտպանելու ժամանակ պիտի ունենար։ Երեւանայ գունդն որքան եւ յաղթական էր, սակայն տագնապալից կացութեան մէջ կը գտնուէր։ Դեռ եւս լուր առնուած էր թէ Վանայ հրամանատար Ֆայիգ փաշա հետեւակազօրաց մէկ քանի վաշտ հետ առնելով՝ հանդերձ Քիւրտերու բազմամբոխ ջոկերներով Պայազիտը կը պաշարէր եւ գնդին հետակողմէն կըսպառնար։ Միւս կողմանէ Տէր Ղուկասով զօրավարն իւր յաղթած զօրաց տկուն լինելը տեսնելով՝ զգացեր էր թէ նոր ընդհարում մը գուցէ ձախող արդիւնք կ'ունենար, եւ Մէլիքօվ զօրավարին աջակցութենէն զուրկ լինելով չէր դիտեր ինչ որոշում տալն։ Խոհեմութիւնը կը պատուիրէր նահանջել, մինչդեռ տակաւին ժամանակ կար․ սակայն ձեռք բերուած առաւելութիւններն չկորուսանելու փափաքանօք՝ Տաղարի շրջակայքն սպասեց՝ տեսնելու համար թէ Ալէքսանտրօփօլի գնդէն զատուած ջոկատին յա-

[1] Նախորդ կռուոյն պէս այս ևս այլեւայլ անուններ ստացած է, ինչպէս Էշէք-խալեանի, Հայլազտիւզի և Տէլի-պապայի ճակատամարտ։

ռաջխաղացութիւնն ինչ արդիւնք պիտի ունենար. որովհետեւ անոր ճանապարհ ելնելն իմաց տրուեր էր իրեն։ Ուստի ամսոյն 19ին Տրօմ-տաղի բարձրաւանդակներէն մեկնելով՝ գնաց փոքր ինչ յետ կոյս բանակեցաւ Տաղորի բարձանց վրայ՝ Զէյտէքանէն 22 հազարամէթր հեռի դէպ յարեւմուտս։

Սակայն միւշիրն իւր զօրքը ժողովեր էր ամենագովելի գործունէութեամբ։ Զիվինի բանակատեղին մէջ ձգեց Իսմայիլ եւ Ֆէյզի փաշաներն 25 վաշտով եւ թնդանօթաց երեք շարով, եւ անձամբ Տէլիպապա գնաց հինգ վաշտ եւ թնդանօթաց մէկ շար հետն առած։ Անդանօր այս զօրօք եւ Մուսթաֆա փաշայի ժողոված կացմնացներով՝ ինչպէս նաեւ ամսոյն 16ին կռուոյն մէջ չմտած երկու վաշտերն, Կիւլէնթափէն եկած մէկ վաշտ, Էրզրումէն եկած երեք վաշտեր եւ 1,000 ձիաւորներ, Տայխաճէի մէջ բանակեալ վաշտն եւ նորա թնդանօթաց մէկ շարն եւ Խօրասանէն ժամանեալ երկու վաշտեր միացնելով՝ բանակ մը կազմեց, որոյ մէջ կը գտնուէին 20 վաշտ, 20 թնդանօթ եւ 4,500 ձիաւորներ, եւ որոշեց երթալ Ռուսաց դրից վրայ յարձակիլ։

Ամսոյն 19ին Տէլի-պապայի մէջ կը գտնուէր, եւ 20ին առաւօտուն կանուխ յառաջապահ զօրքն հասաւ Խալի-եազը ըսուած սարահարթին վրայ։ Այս սարահարթն՝ որոյ Տաճկերէն անունն «Ամայի դաշտ» կը նշանակէ, ապալերկ է բոլորովին։ Հազիւ աստ անդ դալարեաց սակաւ ինչ նշմարանք կը տեսնուին, եւ տեղ տեղ սարակներ կան, որոց մէկ քանիները մինչեւ 750 ոտնաչափ բարձրութիւն ունին։ Զէյտէքանէն սկսեալ երկու կարեւոր ճանապարհներ անոր մէջէն կ'անցնին յերկայնութիւն, մին հիւսիսակողմէն Հաճի-Խալիլի կրճէն, եւ միւսն հարաւակողմէն՝ Գարա-աէրպէնտի անցքէն։ Հարաւային ճանապարհին վրայ եւ սարահարթին հարաւային արեւելեան ծայրն դժուարուտ լեռան մը ստորոտն կը գտնուի Տաղոր, զոր կը շրջապատէ Արածանւոյ մէջ թափող եւ արեւմտեան Մուրատ-սույու ըսուած գետակ մը իւր մէկ շրջանովն։ Տէր Ղուկասով իւր բանակն հաստատեր էր մերձակայ բլրոյ մը վրայ այնպիսի դրից մէջ՝ որոյ առաջ գետակն իբրեւ բնական խրամ եղած էր։ Յառաջապահք դիմացի ափանց բարձրաւանդակները կը գրաւէին։

Տաճկաց բանակն առաւօտեան ութերորդ ժամուն թշնամւոյն մօտեցաւ. Մուխթար փաշա զայն երեք խմբերու բաժնեց. Մուսթաֆա փաշա հրամանատար եղաւ աջակողմեան խմբին, որ կը բաղկանար 4 վաշտէ եւ 2 հեծելադասէ՝ 6 թնդանօթով հանդերձ, եւ լաւ դիրք բռնեց Էշէք-խալեան եւ Հայտար-քէօյ ըսուած երկու քրդաբնակ փոքրիկ գիւղերու մէջ տեղ։ Միջին խումբն՝ որ կը բաղկանար 6 վաշտէ հանդերձ 6 թնդանօթով, Շահին փաշայի հրամանատարութեան ներքեւ էր։ Ձախակողմեան խումբն, բաղկացեալ 3 վաշտէ՝ 8 լեռնային թնդանօթով հանդերձ, Հագգը պէյի հրամանաց ներքեւ կը գտնուէր։ Այս խումբն եղաւ կռուին սկսողը։ Յանկարծակի յարձակեցաւ Ռուսաց յառաջապահներուն վրայ, ի փախուստ դարձուց զանոնք եւ իւր առջեւի բարձրաւանդակները գրաւեց, բայց անկարելի եղաւ թնդանօթ զետեղել այն տեղ զառիթափներուն դժուարին եւ վախուտ լինելուն պատճառաւ։ Այս խումբն միայն ապարդիւն հրացանի կռիւ մ'ըրաւ դիմացի բարձանց վրայ պատնէշներու ետեւ պատսպարեալ ռուս արձակամարտից հետ. այնպէս որ նոյն աւուր մեծ մասն անցաւ եւ կացութիւնն զգալի կերպիւ չփոխուեցաւ ճակատատեղւոյն այս կողմն։

Նոյն միջոցին Շահին փաշայի խումբն սեպ բարձրաւանդակ մը գրաւեր էր, որ բոլոր շրջակայ տեղեաց վրայ կը նայէր, եւ անոր վրայ Քռուփի 3 թնդանօթներ հանուեցան անլուր դժուարութեամբք։ Մար-

դիկ ստիպուեցան թնդանօթներուն լըծուիլ եւ անոնց ետեւէն մղել ։ Զինուորք անդէն Թօփ-տաղ « Թնդանօթի լեառն » անուանեցին զայն ։ Առաջին հարուածներն արձակուած ժամանակ , Ռուսք որ ամուր պատրաստելու ետեւէ էին իրենց յառաջապահներուն վրայ յանկարծակի յարձակումն լինելու պահուն , ժամանակ ունեցեր էին ճակատ յարդարելու ։ Հինգ հազարամէթրի չափ տեղւոյ վրայ տարածուած իրենց գիծն մարտագիտական տեսութեամբ յոյժ անզօր էր , վասն զի այսպիսի տարածութեան մը նայելով բաւական բազմաթիւ չէին . բայց նոյն կողմանց դերբուկներն (սարի) եւ մանաւանդ Մուրատ-սույուն զանոնք կը պաշտպանէին ։ Տէր Ղուկասով զօրավարն 18 թնդանօթ յառաջ տանիլ տուաւ , որոցմէ սաստիկ կրակ մը թափիլ սկսաւ Թօփ-տաղի վրայ, ուր միւշիրն իւր սպայակուտին եւ Սըր Արնօլտ Քէմպալի երկու զինուորական օժանդակներուն (եավէր) հետ կը գտնուէր ճակատամարտի կարգադրութիւններն ընելու եւ ուղղութիւն տալու համար ։ Միանգամայն Տէր Ղուկասով Սունժայի եւ Խօփէրի երկու գումարտակներուն հրաման ըրաւ , որ բազմաթիւ հետեւակազօրաց աջակցութեամբն Մուրատ-սույուն անցնին Թօփ-տաղի վերի կողմէն , եւ յարձակին լերան կողերէն արդէն վար իջնող Տաճկաց վրայ ։

Մուսթաֆա Սաֆվէթ փաշայի հեծելազօրաց սահն եւ Մուսա եւ զազի Մէհէմմէտ Շամիլ փաշաներուն Չէրքէզներն, որ Տաճկաց աջակողմը կը գտնուէին , Մուրատի հովտին մէջ իջան այս շարժման դէմ դնելու համար ։ Սոյն հեծելազօրուն դէմ մարդախանձ կրակ մը թափուեցաւ , որով ստիպուեցաւ այն ետ քաշուիլ ծանր կորուստ կրելէ յետոյ ։ Խազախներն ուզեցին հետամուտ լինել , բայց զարիթափին ստորոտն հասնող րէտիֆներու վաշտից կրակն կասեցուց զանոնք . ստիպուեցան այս անգամ իրենք ետ քաշուիլ՝ կռուատեղին վրայ անկեալ ձիաւորներ եւ ձիեր թողլով ։ Ռուս հեծելազօրաց ուրիշ ջոկատ մը յարձակումը կրկնեց Թօփ-տաղի դիմաց Տաճկաց հեծելազօրուն վրայ ճակատ առ ճակատ խուժելով , բայց անկարող եղաւ անոնց կարգը քակտելու ։ Հարկ էր նախ թշնամին դրդուել մէկ քանի անգամ թնդանօթներն միահաղոյն արձակելով , բայց Ռուսք անկարող եղած էին իրենց բոլոր հրընկէց գործիները ի կիր արկանելու , եւ՝ ինչպէս ըսուեցաւ՝ 18 թնդանօթ միայն գտնուած էին . վասն որոյ Տաճկաց ռմբաձգութիւնը խափանելու չյաջողեցան , որոց նոյն իսկ միւշիրին ձեռօք զետեղեալ մէկ թնդանօթն Ռուսաց հրընկէց գործիներէն մին տապալեց՝ երկրորդ հարուածն արձակելուն պէս ։

Հեծելազօրէն յետոյ՝ Տէր Ղուկասով հետեւակազօրք ղրկեց , որք Տաճկաց հետ մօտ ի մօտոյ հրացանի կռուոյ մը բռնուեցան , բայց րէտիֆներն իրենց գրաւած տեղերէն մէկ մատ ետ չգնացին ։ Ռուսաց զօրավարն վերջին փորձ մը փորձելով՝ ուզեց յոյնժամ շրջան մ'ընել տալով Տաճկաց դրից յետակողմն անցընել իւր զօրքն ։ Օրը տարաժամեալ էր , երբ յանկարծ կռիւն սաստկացաւ այս կողմէն ։ Ռուս արձակամարտք մեծ քաջութեամբ գրաւեցին այն դիրքն՝ ուր Տաճիկներն ամրացեր էին ։ Անոնց հետամուտ լինելով՝ լերան միւս երեսին վրայէն խառն ի խուռն թաւալգլոր վար իջան , եւ Ռուսք երկրորդ բարձրաւանդակին վրայ պիտի յարձակէին , երբ Մուխթար փաշա իւր բոլոր պահեստի զօրքն յառաջ վարեց , որք սուինով ետ մղեցին թշնամին ։ Երկու կողմանէ կատաղութեամբ կռուեցան ։ Այն դիրքն առին տուին . բայց հուսկ յետոյ Երեւանայ գնդին ձեռքը մնաց այն. եւ Տաճիկք քաշուեցան առաւօտուն իրենց գրաւած տեղեաց վրայ ։

Գիշերը բաւական տխուր կերպիւ անցաւ Տաճկաց բանակին մէջ ։ Օրն ի բուն

մարտնչէր էին ։ 300ի չափ զինուոր կային սպաննեալ եւ 1,000ի չափ եւս վիրաւորեալ, եւ քայլ մը դէպ յառաջ առնուած չէր ։ Մուխթար փաշա վարանեալ մտօք կը հարցնէր ինքն իրեն, թէ հետեւեալ օրն վերստին ճակատիլ սկսի՞ կամ ոչ ։ Չէր գիտեր թէ իւր յարձակման վրայ ինչ դժուարին կացութեան մէջ մընացած էր Տէր Ղուկասով զօրավարին գունդն, որ 100էն աւելի մարդ կորուսանելէ զատ՝ ռազմամթերք չունէր իւր թընդանօթաց համար ։

Ամսոյն 22ին՝ Տաճիկներն առաւօտուն կանուխ զննութիւն մ'ընելով՝ յանակընկալս նշմարեցին որ թշնամին իւր գրաւած տեղերէն հեռացեր էր գիշերայն ։ Իւր նահանջն ապահովելու համար յետ կոյս թողեր էր արձակամարտից մէկ քանի խմբեր, որք Տաճկաց յառաջապահներուն հետ թոյլ կերպիւ հրացանութիւն մ'ըրին, եւ հեծելազօրաց մէկ քանի ջոկատներ, որք Շամիլ փաշայի Չէրքէզներուն հետ բաւական սաստկութեամբ կըռուեցան ։ Առաւօտեան մէգը փարատած ժամանակ՝ Թօփ-տաղիէն տեսնուեցաւ ռուսական բանակին երկայնաձիգ շարքն, որ լերանց մէջ աներեւոյթ կը լինէր ։

Միւշիրը չհալածեց զայն ։ Այն բանակն առանց աւրուած լինելու ետ կը քաշուէր, եւ նոր ընդհարման մը արդիւնքն տարակուսելի էր . բաց յայսցանէ՝ իմացած էր նաեւ որ Ալէքսանտրօփօլի բանակագունդը արագ խաղացիւք Զիվինի կը մօտենար . վասն որոյ անմիջապէս պէտք եղած կարգադրութիւնն ըրաւ, իւր զօրաց լաւագոյն մասն այն կէտին վրայ տանելու համար ։

Ի դէպ է գովել աստանօր այն անխոռովութիւնն, զոր Տաճկաց զօրապետն ցոյց տուաւ յունիս 21ի այն ճակատամարտին մէջ ։ Կարող եղած էր զինուորաց սիրտը շահիլ իւր քաջասրտութեամբն եւ այն պարզ անխտրութեամբն, որով կը կենակցէր նոցա հետ մի եւ նոյն ուտելիքէն ուտելով եւ անոնց պէս գիշերը բացօթեայ լինելով ։ Զօրականք նոյն օրն դարձեալ իրեն վրայ այն վստահութիւնն ունեցան զոր ի սկզբան պատերազմին կորուսած էին ։



## ԼՕՌԻՍ ՄԷԼԻՔՕՎ ՏԷՐ ՂՈՒԿԱՍՕՎԻ ՕԳՆՈՒԹԵԱՆ Կ'ԵՐԹԱՅ

Յունիս 18ին Մազրայի զօրանոցին մէջ, ուրկէ Միքայէլ մեծ դուքսն եւ Լօռիս Մէլիքօվ զօրապետն Կարսի պաշարման կը հսկէին, իմացուեցաւ Տրամտաղի յաղթութիւնն եւ այն տագնապալից կացութիւնն, յոր Տէր Ղուկասով զօրավարն անկեալ էր՝ իւր յանդգնութեամբն, չըսելու համար՝ իւր անխոհեմութեամբն ։ Անմիջապէս որոշուեցաւ անոր օգնութեան զօրախումբ մը ղրկել, բայց այս եւս շատ ուշ հասաւ, եւ չկարենալով նպաստամատոյց լինել յաղթութեան համար, նոյն տագնապալից կացութենէն ազատեց եւեթ զայն, եւ նորա նահանջն ապահովեց ամսոյն 21ին մղեալ ճակատամարտէն յետոյ ։

Տէվէլ զօրավարն ամսոյն 20ին Կարսի առջեւ մնաց բանակին մէկ մասամբն հանդերձ, եւ Լօռիս Մէլիքօվ զօրապետն ճանապարհ ելաւ զօրաց մէկ խումբ առնլով իւր հետ, որ բաղկացեալ էր Հէյման զօրավարին հատուածէն՝ այսինքն հետեւակազօրաց չորս գումարտակէ կամ տասն եւ վեց վաշտէ, եւ հեծելազօրաց վեց գումարտակներէն, Չէվչէվաձէ զօրավարին հրամանատարութեան ներքեւ, հաստարանի վրայ ազուցեալ թնդանօթաց հինգ շարքով եւ խաղախաց յատուկ՝ ձիոց վրայ բարձեալ թնդանօթաց երեք շարքով հանդերձ, ինչպէս նաեւ խրամահատ զօրաց մէկ հատուածով ։ Հետեւակազօրաց վաշտերուն մարդոց թիւն կարելի էր 650 հաշուել իրարու վրայ ։

17,000 մարդ, ահա այսչափ միայն կարող եղած էր գումարել ռուս զօրավարն՝ լաւ ամրացեալ բազմաթիւ բանակի մը

դէմ քալելու համար։ Սակաւաթիւ խմբիւք մեծ առաւելութիւններ ձեռք բերելու օրինակներ եղած են Կովկասու մէջ։ Փասքեւիչ Տաճկաց յաղթեր եւ Կարինն առեր էր 16,000 մարդով։ Շատ լաւ։ Միայն թէ Տաճկաստան չէր այնպէս 1829 ին՝ ինչպէս որ էր այս պատերազմիս ժամանակ՝ զինուորական տեսութեամբ։ «Արտահանայ առման վրայ, կ'ըսէ Թան լրագրին մէկ թղթակիցն՝ որ արշաւող խմբին կը հետեւէր, չափազանց եղած էր այն արդարացի վստահութիւնն զոր ռուսական բանակին գլխաւորք ունէին իրենց զինուորաց արիութեան մասին։ Այլեւս իրենց համար տարակուսելու բան մը չէր երեւեր, եւ Տաճկաց տկարութեան վրայ չափազանց գաղափար ունէին։» Սակայն կ'երեւի թէ Լօրիս Մէլիքով զօրապետն այս ընդհանուրին վստահութեան մասնակից չէր։ Նահանջ մ'ընելն իբրեւ հաւանական ցոյց կուտար, եւ նորա մեկնելու պահուն մէկը սա խօսքն ըսաւ.

— Տեսէք, ինչպէս դժգոհ կ'երեւի զօրապետն. վասն զի Մուխթար փաշայի յաղթելու համար պէտք եղած յիսուն հազար մարդիկը չունի։

Զօրապետն երեք շաբաթ առաջ Կարնոյ վրայ բուռն խաղացք մ'ընելու կողմը կը գտնուէր, բայց ասկէ ի վեր իւր կարծիքը փոխեր էր. անշուշտ գիտէր թէ Տաճիկներն օգնութիւն ստացած էին եւ ժամն անցած էր։

Զօրախումբն յունիս 20 էն 21 լուսնալու գիշերն Արտավարդանի մէջ անցուց։ 21 ին՝ Կարսի հիւսիսային ճակատին դիմացէն անցաւ մեծ կիսաբոլոր շրջան մը ընելով՝ Կարսի դետակին ձախակողմեան ափին ամրութեանցն զուգահեռական կերպիւ։ Ի հեռուստ կը լսուէր՝ ծանր թնդանօթներով՝ բերդաքաղաքին գնդակոծուելուն ձայնն. յետոյ Ռուսք իջան Կարսի գետակին հովտին մէջ։ Ամսոյն 22 ին երեկոյին՝ խումբն Սարը-ղամըշ հասած էր՝ լերանց մօտ։ Արեւելեան հիահրաշ երկնից ներքեւ լեռնային տեսարան մը կը նշմարուի անդ՝ Ալպեանց մէջ եղածներուն նման։ Զինուորք՝ անծառ երկրի մը մէջ երեք օր քալելէ յետոյ, հուսկ ուրեմն վառելու փայտ գտնելնուն վրայ ուրախնալով՝ եղեւիններով եւ կուենիներով ծածկուած բլուրները մերկացուցին, եւ ի քթթել ական խիտ առ խիտ խարոյկներ վառեցին գիշերելու համար։

Սօղանլը-տաղի շղթայն հիւսիսէն դէպ ի հարաւ կը ձգի Կարսի եւ Կարնոյ մէջ եղած ճանապարհին կիսոյն մօտ։ Հայաստանի նկարագրութեան մէջ ըսուեցաւ թէ երկու ճանապարհներ կ'անցնին անոր վրայէն, հիւսիսային ճանապարհն Պարտիզի մօտէն կ'երթայ, եւ հարաւայինն կ'անցնի Միլլիտիւզէն եւ Մժնկերտէն։ Մուխթար փաշա բանակ մը հաստատած էր Զիվինի մօտ, եւ ուրիշ մը եւս Խօրասանի մօտ Մժնկերտէն քիչ հեռի։ Ռուսաց յատակագիծն էր հարաւային ճանապարհէն երթալ, իբր թէ Խօրասանի բանակատեղին վրայ յարձակիլ կ'ուզէին, յետոյ յանկարծ շեղիլ եւ դէպ ի Զիվին խաղալ։ Եթէ Մուխթար փաշա այս առաջին շարժմանց վրայ խաբուելով Խօրասանի մօտենար, Ռուսաց հնար էր Զիվինը գրաւելէ յետոյ կողմնակի յարձակիլ նորա վրայ։ Այս մտածութիւնը դէշ չէր, բայց հարկ էր բաւական մարդ ունենալ Զիվինն առնելու համար, եւ գործադրութիւնն խիստ դէշ եղաւ։

Ամսոյն 23 ին առաւօտուն կանուխ բանակն վերստին խաղալ սկսաւ, եւ լեռներէն վեր ելաւ խիստ դժուարին զառիթափէ մը։ Արշալուսոյն խրամահատներն արդէն յառաջ ղրկուած էին, որք անցից ամենէն վտանգաւոր տեղերն հարթեր էին թիով եւ բրչաւ, եւ խոռոչներն ոջիններով (չըպուզ տէսթէսի) եւ հողով լցեր էին։ Մէկ թնդանօթի ութ ձի կը լծուէր եւ զինուորք անուոց ետեւէն կը մղէին. այս կերպիւ յաջողեցան, սակայն ոչ առանց դժուարութեան, եւ մեծ նեղութեամբ

եւ խոնջութեամբ թէ մարդոց եւ թէ ձիոց համար։ Վերջապէս հասան Միլլիտիւզի սարահարթին վրայ։ Ցուրտն յոյժ սաստիկ էր, եւ աստ անդ տակաւին ձեան մնացորդք կը տեսնուէին լայնատիւ։

Ռուսք զառիթափին ստորոտը բանակեցան Մժնկերտէն քիչ հեռի։ Իրենց յառաջապահքն արդէն Մուխթար փաշայի լրտեսներուն հանդիպեր էին, եւ դէպ ի յաջ բլրոյ մը դարեւանդին ետեւէն թեթեւ ծխոյ մը բարձրանալը կը նշմարուէր, որ տաճկական բանակին տեղը ցոյց կուտար։ Ամսոյն 24ին Ռուսաց բանակն դադար առաւ, եւ Տաճկաց դիրքը զննելու համար խումբ մը ղրկուեցաւ։

Ահեղ էին այն դիրքն։ Երկու լաւ գծեր կան բնական ամրութեանց. նախ զառիվեր մը կայ երկու հազարամէթրէն աւելի երկայնութեամբ որ հիւսիսակողմէն պաշտպանեալ է իբր խրամ ձեւացեալ խորափիտ ձորով մը։ Մէջ տեղը կը բարձրանայ դեղնագոյն սարակ մը 300 ոտնաչափ բարձրութեամբ, որոյ վրայ հողակերտ մարտկոց մը կայ չորս մեծ թնդանօթով զինեալ։ Հարաւակողմն ուրիշ սարակ մը կայ, ուր կանգնեալ էր մարտկոց մը երկու թնդանօթներով. դէպ ի Կարնոյ ճանապարհը Նայող զառիթափին վրայ բանակեալ հինգ վաշտեր այս ամէնը կը պաշտպանէին եւ բոլոր զառիկողերն հողակերտ պարտակով ամրացեալ էին։ Այս գծին եւ երկրորդին մէջ տեղ խորափիտ ձոր մը կար, որոյ մէկ կողմի զառիվայրն խիստ դժուարին էր, եւ միւս կողմինն՝ ուր Տաճիկք կը գտնուէին, հեշտագնաց էր, եւ բնական յոյժ լաւ որոկ մը կը ձեւացնէր մէկ հազարամէթր երկայնութեամբ մինչեւ օսմանեան դիրից բարձունքն։ Այս դիրքն բարձրաւանդակներու կորագիծ շարքի մը վրայ էին, որոյ կորնթարդ կողմն դէպ ի թշնամին կը հայէր, եւ մարտկոցներու մէջ թնդանօթներ զետեղեալ էին անդ, որոց մին աջակողմն անկեան մը վրայ գտնուելով կարէր գծին մէկ ծայրէն միւս ծայրն ռումբ հասցնել։ Հարաւային դարեւանդն շըրջապատեալ է Գանի-չայի առապար ձորովը որով այս կէտն գրեթէ անառիկ կը լինի։ Ձախակողմն այնչափ ամուր չէ, աւելի բաց է եւ դիւրամատոյց, վասն զի շրջակայ վայրերն ժայռերով ծածկուած են եւ ծուպ ի ծուպ ելեւէջներ ունին, որոց յետակողմն՝ յարձակող զօրքն կարէ դիւրաւ պատսպարուիլ։

Լօռիս Մէլիքով զօրապետն այսպիսի տեղւոյ մը մէջ լինելիք ճակատամարտին արդեանց վրայ եւս քան զեւս անվստահ՝ կ'երկմտէր յարձակելու, երբ Տէր Ղուկասով զօրավարին կողմանէ լուր մը ըստացաւ, որոյ վրայ որոշեց յարձակիլ, վասն զի ուրիշ կերպ չկարէր ընել։ Տէր Ղուկասովի կողմանէ ղրկուած գրութիւնը գրեթէ հետեւեալ օրինակաւ էր.

« Տաղարի մօտ առաւելագոյն զօրաց կողմանէ յարձակումն կրելով՝ տասն ժամ անընդհատ կռուեցայ եւ դիրքս պաշտպանեցի։ Այնպէս գործեցէք որ զիս ազատէք (1) »։

## ԶԻՎԻՆԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏՆ (2)

Յունիսի 24 ին երեկոյին՝ հրաման տըրուեցաւ զօրաց պատրաստ կալու, որպէս զի հետեւեալ օրն առանց վրանի եւ աղխի ճանապարհ ելնեն։ Ամեն ոք հասկցաւ թէ ինչ կը նշանակէր այս։ Յարձակումն պիտի լինէր։

Զօրքն ճանապարհ ելաւ առաւօտեան ժամն եօթնին, եւ մինչեւ Զիվին հասնելու համար՝ սարսափելի ճանապարհէ մը անցնիլ հարկ եղաւ. տեղ տեղ հազիւ շաւիղ մը կ'երեւէր երաշտ լերանց մէջ, մերթ կ'իջնէին գահավիժելով խորաբիտ ձորերու մէջ՝ թաւալագնաց քարերու վրայէ սա-

(1) Թղթակցութիւն Թան լրագրի :

(2) Տաճիկք զայս Հօրում-տիւզիի ճակատամարտ կը կոչեն՝ յանուն այն սարահարթին որոյ վրայ բանակեալ էին :

հելով, եւ մերթ դժուարին զառիթափ-
ներէ վեր կ՚ելնէին ։ Աղխից եւ կազմա-
ծոց սայլերն յետս դրկուած էին Միլլի-
տուզի սարահարթին վրայ, որ ապահով



ԶՕՐԱՎԱՐ ՔՕՄԱՐՕՎ

դիրք մ՚էր, ուր՝ մինչեւ որ ճակատամար-
տին արդիւնքն յայտնի լինէր, պիտի
մնային Վրաստանի գումարտակէն մէկ
վաշտին պաշտպանութեան ներքեւ թնդա-
նօթաց մէկ շարով հանդերձ ։ Այսպէս հե-
տեւակազօրաց 15 վաշտ եւ թնդանօթաց
75 շար միայն կը մնար ճակատ յարդարե-
լու համար ։

Այնպիսի կարգադրութեամբ՝ որոյ պա-
տեհութիւնն տարակուսելի է, Լօրիս Մէ-
լիքով զրկեց ինքզինքն հեծելազօրաց գու-
մարտակներու աջակցութենէն եւ նոցա
թնդանօթաց երկու շարերէն, որք կըր-
նային ճակատամարտի բաղդն որոշել ։

Ըսուեցաւ թէ զօրավարին յատակագիծն էր նախ ցոյց մ՚ընել դէպ ի Խօրասան, Զիվլինի բանակատեղւոյն զօրքն այն կողմ քաշելու համար։ Յայտնի է թէ բանակատեղին վրայ լինելիք յարձակմանէն օր մը առաջ լինելու էր այս ցոյցն, որպէս զի Տաճիկներն ժամանակ ունենային շարժելու. Ռուսաց գլխաւոր հրամանատարն այսպէս չըրաւ, եւ այդ ցոյցն եղաւ ռուս զօրաց դէպ ի Զիվլին խաղալու պահուն, յորում արդիւնք մը չպիտի կրնէր ունենալ։ Ի լրումն դժբաղդութեան, ճանապարհն այնքան գէշ էր՝ որ խմբին հետ գտնուող Խազախաց յատուկ թնդանօթաց երկու շարերն անկարելի եղաւ անցընել. այնպէս որ հեծելազօրը չկարաց երթալ մինչեւ Խօրասան։ Ստոյգ է որ 1,000 ձիաւորներով այն տեղ գտնուող Մուսա փաշան Քէօփրիւ-քէօյիւ փախաւ, երբ տեսաւ որ իւր դէմ յարձակում պիտի լինի։ Այս արդիւնքն չնչին բան մ՚էր, քանի որ սոյն արշաւանաց համար այնքան ռուս զօրք հեռի գտնուեցան ճակատատեղիէն, ուր մեծ պէտք կար իրենց։

Կէս օրին մէկ ժամ մնացած, բանակն սարակի մը ստորոտն հասաւ, որոյ վրայ հրամանատարն զետեղեցաւ դիտելու համար. թշնամին դիմացն էր, անոր կը տեսնուէին դեղնագոյն սարահարթն եւ Տաճկաց շինած երեք կարգ պատնէշներն, եւ սարահարթին վրայ կը նշմարուէին երկու խմբի բաժնուած Տաճկաց վրաններն արեգունի եւ սպիտակ։ Ճամբարին եւ բանակին մէջտեղ փռեկեալ կ՚երեւէր Գանիչայի խորաձոր հովիտն։ Զօրավարք եւ գումապետք պատերազմական խորհուրդ ընելու կոչուեցան։ Կարծեօք բաժանեալ էին նոքա. ոմանք կ՚ըսէին թէ ժամանակն անցած լինելով՝ պէտք չէր կռիւն սկսիլ նոյնհետայն, եւ կ՚ուզէին որ յարձակումն հետեւեալ աւուր ձգուի. Հէյման աչխոյժ զօրավարն բացատրեց թէ Մուխթար փաշա նոյն միջոցին ճանապարհ ելած լինելու էր Զիվլին դառնալու համար, եւ թէ հարկ էր կռուիլ նորա հասնելէն առաջ։ Այս կարի խոհական կարծիքն ընդունելի եղաւ, եւ որոշուեցաւ անմիջապէս յարձակիլ։

Ճակատն լաւ չյարդարեցաւ։ Բացատրեցինք թէ Տաճկաց ճամբարին հիւսիսային թեւն որ Ռուսաց աջակողմը կը գտնուէր, նոյն դրից տկար կողմն էր։ Սակայն Լօռիս Մէլիքով զօրապետն զանց ըրաւ զայն, եւ իւր բոլոր ճիգը թափեց կեդրոնին եւ հարաւային թեւին վրայ։ Այս կողմի Տաճկաց պատնէշներն զօրաւոր լինելէ զատ, տեղեաց ձեւակերպութիւնն այնքան աննպաստ էր յարձակողաց համար, որ ռուսական թնդանօթաց շարերն Տաճիկներէն հինգ հազարամէթր հեռի կարելի եղաւ զետեղել, որով խիստ քիչ վնաս հասաւ անոնց։

Անհաւասիկ յարձակումն սա կերպիւ եղաւ. կեդրոնը կը կազմէին Քօմարով զօրավարին հրամանատարութեան ներքեւ Տփղիսու գումարտակն, Վրաստանի գումարտակին երեք վաշտերն եւ մէկ թնդանօթաշար։ Սոցա յանձնուած էր Գանիչայի ձորէն անցնիլ եւ Տաճկաց գլխաւոր դիրը, այն է դեղնագոյն սարահարթին վրայ յարձակիլ։

Աջակողմեան թեւն, զոր կը ձեւացնէին Երեւանայ գումարտակն եւ թնդանօթաց երեք շարք՝ Ավինով զօրավարին հրամանատարութեան ներքեւ, այս գործողութեան պիտի նպաստէր։

Ձախակողմեան թեւն՝ զոր կը կազմէր Մնկրէլիի գումարտակն թնդանօթաց մէկ շարով հանդերձ, պիտի յարձակէր ձախակողմեան բարձանց վրայ. յոյս կար թէ անմոռութեամբ դէպ ի Խօրասան ղըրկուած Չէվչէվածէ իշխանին հեծելազօրն բաւական շուտ կարէր վերադառնալ այն բարձանց բոլորտիքն շրջան մ՚ընելու համար. բայց չկարաց նա երեւիլ ճակատատեղւոյն վրայ։

Զիվլինի բանակատեղին կամ ճամբարին՝ բուն հրամանատարն էր Քաջ հունգարա-

ցին Ֆէյզի փաշա . Իսմայիլ փաշա էր արդարեւ ի պաշտօնէ հրամանատարն . բայց այն ծերունի եւ հաւատաւոր Քիւրտն իւր բուն արժէքն հասկանալով, իրեն պատշաճեալ գործոյն խելամուտ եղեր էր . մինչդեռ Ֆէյզի փաշա ամեն բանի վրայ կը հսկէր, մէն մի պարկէնի մէջ գտնուող զինուորաց այցելութիւն կ՚ընէր եւ խրախոյս կուտար, եւ մինչեւ անգամ զօրաց գլուխը կ՚անցնէր՝ երբ թշնամւոյն թափած կրակին պատճառաւ որ եւ իցէ կէտի մը վրայ թուլութիւն մը նշմարուէր, Իսմայիլ փաշա դեղին մետաքսէ ցայգանոցով, իբրեւ Նոր Մովսէս, Ալլահն եւ մարգարէն յօգնութիւն կը կարդար, կ՚աղօթէր՝ գնտակներէ ապահով տեղւոյ մը մէջ սփռեալ գորգի մը վրայ, եւ գուրանին հատուածներ կ՚ընթեռնոյր բարձրաձայն ։ Ծնչասպառ լինելուն պէս՝ իւր ծխափողը բերել կուտար, եւ հանդարտօրէն կը ծըխէր առանց եղած բաներուն վրայ հոգ տանելու . ոչ ոք ուշադրութիւն կ՚ընէր իրեն ։ Օժանդակ մը, ալայ մը չէր դար կռուոյն այլ եւ այլ հանգամանքն եւ յեղափոխ արկածքն պատմելու, եւ Իսմայիլ իւր ներկայութիւնն մոռցուած լինելուն վրայ վրդովեալ չէր երբեք ։

Լօռիս Մէլիքով իւր վերջին հրամանները տուաւ ժամը մէկին ։ Թնդանօթներն զետեղուեցան, յորոց կրակ թափել սկսաւ, սակայն առանց որոշ արդիւնք մ՚ունենալու հեռաւորութեան պատճառաւ ։ Թուրքերն՝ որ իրենց պատնիշաց մէջ մեծաչափ թընդանօթներ ունէին, անդրադարձութիւն ըրին շատ աւելի բուռն ռմբաձգութեամբ ։

Ռուսաց ձախակողմեան թեւն եղաւ յարձակման սկսողն . Մնկրէլիի գումարտակն իջաւ Գանի-չայի ձորոյն մէջ, յետոյ հանդիպակաց զառիթափէն վեր ելնելով՝ հասաւ այն բլրոյն վրայ որ Տաճկաց մէկ պարկէնոմը պաշտպանեալ էր ։ Զօրապետը իւր դիտակաւ կը դիտէր յարձակող զօրաց յառաջադիմութիւնքն եւ թնդանօթի կռուոյն արդիւնքն ։ Յանկարծ գըլխանոցը կը հանէ եւ կը գոչէ «կե՛ցցեն ։» Պատնէշն առնուած էր ։ Տաճիկք խոյս տուեր էին անկէ ռուս զօրականներէն հալածեալ ի մօտոյ . մէկ քանի վայրկեան ծուխ չելլաւ այլ եւս բարձրաւանդակին վրայէն ։ Յետոյ կարմրագոյն փայլատակմբք հերձոտեալ սպիտակ ծխոյ փոքրիկ ամպեր վերստին երեւեցան . Ռուսք էին որ այն տեղերէն հալածեալ թշնամւոյն դէմ հրացան կը պարպէին ։ Սակայն Տաճկաց թնդանօթներն ռումբ կը տեղային նոցա վրայ եւ այլեւս կասեցուցին զանոնք, հարկ էր այն մարտկոցներուն կրակին դէմ՝ լաւ տեղեր զետեղեալ բաւական թուով թնդանօթներ ունենալ . բայց՝ ինչպէս արդէն ըսուեցաւ, տեղեաց հանգամանքը չէր ներեր այս բանն ընելու ։ Միջին խումբն Գանի-չայի հովտին մէջ իջեր էր երկրորդ ժամուն ։ Շատ ժամանակ կորոյս անդ՝ պատնիշաց առջեւ շարուած Տաճկաց ջոկերներուն հետ իբրեւ արձակամարտ կռուելով ։ Յետոյ հունէ մ՚անցաւ եւ յարձակելու համար ջոկ ջոկ բաժնուեցաւ՝ այն զառիվերին ստորոտն, որ Զիվին գիւղէն սկսեալ մինչեւ դեղնագոյն սարակին եւ սարահարթին վրայ կ՚ելնէ փոխուռ պտոյտներով ։ Սարահարթին առջեւ մէկ կոհակ (թէրէճիք) մը կայ, որոյ կատարին վրայ Տաճկաց հետեւակազօրն պատսպարեալ էր հողակոյտներու ետեւ . այն ժամանակ սքանչելի բան մը տեսնուեցաւ . ռուս զինուորներն առանց հրացան պարպելու՝ կատարեալ բարեկարգութեամբ կը յառաջէին դիւական կրակի մը ներքեւ, որ յանկարծ թէ՛ աջէն՝ թէ՛ ձախէն եւ թէ՛ դիմացի կողմէն սկսեր էր ժայթքել Տաճկաց շարքին մէկ ծայրէն մինչեւ միւսն ։ Պարկէններուն երկու հարիւր մէթր մնալու չափ մօտենալով՝ սկսան իրենք եւս հրացան պարպել եւ սուինով գրեթէ անմիջապէս Տաճկաց վրայ խուժեցին ։ Երկար չտեւեց . Թուրքերն ետ քաշուեցան . Նոր պատնէշ մը եւս առնուած էր ։

Բայց աստանօր կատարուելիք գործն անհնարին եղաւ այն զօրաց համար, զորս կը վարէր Քօմարով զօրավարն այնպիսի զօրաց դէմ, որք իրենց խիստ բազմաթիւ եւ լաւ ամրացեալ լինելն յանկարծ ցոյց տուին։ Դեղնագոյն սարահարթին մեծ մարտկոցն յարձակողաց առջեւ կը բարձրանար. երկու կարգի վրայ շինուած էր այն՝ բլրոյն շուրջը. արձակամարտք կը գրաւէին առաջին գիծն. երկրորդ շարքին թնդանօթներն յոյսկոյս եւ յայնկոյս ռումբ կ'արձակէին։ Նաեւ սարահարթին մէկ ծայրէն միւսն սարակին երկու քովերն պատնիշաց սեւ գծերը բոցերու մէջ սկսան երեւիլ։ Զարհուրելի պարպատիւն մը՝ որոյ շռինդն եւս քան զեւս կ'առաւելուր, կը յայտնէր թէ Տաճիկներն ամենաստատիկ յամառութեամբ իրենց դիրքն պաշտպանել որոշած էին։ Ցորաձայն եւ շարունակ հրացանութիւն մը կը լինէր, որոյ աղմուկը մերթ ընդ մերթ կ'ընդհատուէր ահեղ թնդիւններով։ Նոր թնդանօթներու սաստկաշառաչ ռմբիւններ եւս լսելի եղան։

Սակայն Ռուսք վարանումն ցոյց չը տուին։ Ցարձակման փորձ մ'եղաւ դեղնագոյն սարակին դէմ հիանալի արիութեամբ. զառիթափին այնքան դժուարին էր, որ զինուորք իրենց սուիններն իբրեւ վերելից ցից գործածեցին։ Այս անգամ դարձեալ զօրաց ջոկերը կը յառաջէին առանց հրացան պարպելու, յետոյ նոցա սեւաթորմի ամբոխն յանկարծ կը լուսաւորուէր եւ հուր եւ ծուխ կ'արձակէր։ Պահ մը տաճիկ զինուորներն սարակին աջակողմեան մէկ պարկէնկէն դուրս ստանալով՝ ուզեցին յետակողման պատնէշն ելնել։ Բայց Ֆէյզի փաշա վազեց իւր ձեռքին տակ գտնուած այն երկու վաշտերով՝ որք միայն անխոնջ էին, եւ երկու թնդանօթներով, եւ փախստականներն յետս դարձուց։ Ռուսք երեք անգամ յարձակման փորձ ըրին եւ երեք անգամուն եւս յետս մղուեցան։ Այն աւուր ճակատամարտն ապարդիւն եղած էր

Ռուսաց աջակողմեան թեւն միւս երկու ջոկատներէն նուազ մասնակից եղած էր կռուոյն։ Պատերազմի ժամանակ յաճախ պատահած սխալում մ'եղաւ. Երեւանայ գումարտակին հրամանատարն երկու անգամ միեւնոյն պատգամն ընկալաւ, որով պատուէր կը լինէր իրեն՝ երկու վաշտ ղրկել կեդրոնն. Առաջին անգամուն երկու վաշտ ղրկեց, յետոյ երկուք եւս. ասքա չորս հինգ անգամ գետակէն անց ու դարձ ըրին՝ չգիտելով թէ ինչպէս գործեն։ Այս սխալանքն եւ Զէվչէվաձէ իշխանին հեծելազօրուն բացակայութիւնն անյաջողութեան պատճառ եղան։

Ի նշան նահանջելու փող զարնուեցաւ մութը կոխելէն յետոյ, եւ զօրքն այն բարձրաւանդակին շուրջը գիշերեց ուր առաւօտուն կանգ առած էր։ Գրաւեալ տեղերէն մաս մը տեղի տուած չէին։ Զիրենք յետս կոչելու համար տրուած հրամանին լաւ ընդունելութիւն չգտաւ. բայց հարկ էր այնպէս ընել։ Մէկ քանի ջոկատներ առաւօտեան երրորդ ժամուն միայն մեկնեցան իրենց տեղերէն։ Ֆէյզի փաշա՝ որոյ բոլոր զօրքն կռուոյն մէջ մըտած եւ հետեւաբար վաստակաբեկ էր, հեծելազօրէ զուրկ լինելով՝ պատնիշաց մէջ մնաց խոհականաբար։ Մէլիքով զօրապետն յոյժ բազմաթիւ խարոյկներ վառել տուաւ՝ իւր բանակին բուն զօրութեան մասին զայն խաբելու համար։

Ռուսական բանակն պատերազմին սկզբնաւորութենէն ի վեր տակաւին այնքան մարդ կորուսած չէր մէկ աւուր մէջ։ 6 սպայ կար սպանեալ, 24 սպայ վիրաւորեալ եւ 830 զինուոր մարտնչելու անկարող։ Դեղնագոյն սարակին վրայ յարձակող երկու գումարտակներն մեծամեծ կորուստ կրած էին։ Տփղիսու գումարտակէն 311 զինուոր եւ 18 սպայ կար մարտնչելու անկարող. Վրաստանի գումարտակէն 338 զինուոր եւ 8 սպայ սպանեալ կամ վիրաւորեալ։ Մնկրելիի գումարտակին կորուստն

շատ նուազ եղաւ եւ Երեւանայ գումարտակինն աննշան ։ Քօմարով զօրավարն եւ կռուոյն մէջ մնած բոլոր գումարտակետք եւ փոխ-գումարտակետք վիրաւոր էին ։ Օսմանցիք՝ որ 11,000 էն աւելի մարդ չունէին անդ, 500 հոգի միայն կորուսած էին ։

# Գլուխ Քսանեւերկրորդ

## ՆԱՀԱՆՋ ՌՈՒՍԱՑ ԵՒ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ ՊԱՅԱԶԻՏ ԲԵՐԴԱՔԱՂԱՔԻ

### ԱԼԷՔՍԱՆՏՐՕՓՕԼԻ ԳՈՒՆԴՆ ՄԻՆՉԵՒ ՍԱՀՄԱՆԱԳԼՈՒԽՆ ԵՏ ԿԸ ՔԱՇՈՒԻ

Տաղարի եւ Զիվինի ճակատամարտք անպարտելի մնացած էին. յունիսի 26 ին ոչ ոք կարէր իմանալ թէ ինչ ռազմագիտական հետեւանք պիտի ունենային ։ Հայաստանի լերանց մէջ առաւօտներն միշտ ցուրտ կը լինի ։ Երբ ռուսական բանակն այն գիշերն բացօթեայ անցընելով՝ զարթեաւ եւ ոտք ելաւ ընդարմացեալ, Տաճկաց բազմամբոխ սեւաթորմի եւ զեռացող կոյտ մը տեսաւ այն պատնիշաց վրայ զոր չկրցաց նախորդ օրը գրաւել ։ Մուխթար փաշա գիշերայն հասեր էր 22 վաշտով, այնպէս որ այն պահուն 45 վաշտ կը գտնուէր Զիվինի բանակատեղին մէջ ։ Այն մեծազօր բանակն կարէր յանկարծ յարձակողականի սկսիլ. բայց միւշիրն պաշտպանողական մարտագիտութեան հետեւելով համառօտաբար՝ բաւական կը համարէր պատրաստութիւններ տեսնել նոր յարձակման մը դէմ դնելու համար ։ Արդարեւ Հէյման զօրավարն խորհուրդ կուտար նոր յարձակում մ'ընելու, բայց գլխաւոր հրամանատարն յայտարարեց թէ բաւական թուով քաջ մարդիկ սպանեալ էին յանդուգն ձեռնարկութեան մը պատճառաւ ։ Մինչեւ ցայնժամ կանոն եղած էր ըսել. «Յանդգնութիւն, յանդըգնութիւն.» այնուհետեւ տարր ներհակն պիտի ընէին Ռուսք, վասն զի սակաւաթիւ լինելովին կը տեսնէին եւ իրենց վստահութիւնը կը կորուսանէին ։

Ալէքսանտրօփօլի գունդն ամբողջ 26 ին անշարժ մնաց իւր տեղն. 27 ին Միլլիտուզի սարահարթին վրայ հասաւ, ուր հետեւեալ օրն անցուց իւր վերակազմութեանն զբաղելով, յետոյ Սօղանլը-տաղի զառիթափէն վար իջաւ. եւ յուլիսի 3 ին Մազրայի զօրանիստն հասաւ, առանց թշնամիէն նեղուելու՝ անդորր կերպիւ նահանջելով ։ Եթէ Լօռիս Մէլիքով զօրապետն ուզէր վերստին զինուց բաղդը փորձել, կարէր նպաստաւոր հանգամանօք տեղ մ'ընտրել այն երկրին մէջ ուրկէ անցած էր ։ Վէտ ի վէտ ելեւէջներով սարահարթներու շարք մը կայ անդ բոլորովին ապալերկ ։ Հեծելազօրն կարէր անդ ուզածին պէս արձակ խաղացք ընել, վասն զի ոչ ցանկ կայ ոչ խրամ. բայց ռուսական սպայակոյտն ամեն բանի դիմագրաւելէ յետոյ, երկիւղաբեկ կ'երեւէր. կը զարմանար որ թշնամին զինքն չէր հալածեր, թէեւ ընդհարում ընելու եւս չէր բաղձար ։

Մուխթար փաշա իւր սովորական խոհեմութեամբն չէր ուզեր դեռավարժ զօրաց կռիւ ընել տալ բաց դաշտի վրայ ։ Տէր Ղուկասովի ետեւէն ղրկեց Իսմայիլ փաշան հետեւակազօրաց մէկ քանի վաշ-

տերով եւ Շամիլ փաշայի հեծելազօրքն, եւ ինքն Կարսի վրայ խաղաց 25,000 ի չափ մարդով առանց աճապարելու. Իւր բանակէն ղրկուած նամակներն կը յայտնեն թէ նա համոզեալ էր որ իւր առջեւ 50—60,000 Ռուսք կային ։ Այսու կը մեկնուի նորա յամր խաղալուն պատճառն ։ Ամսոյն 4ին Գըրգ-փունար հասաւ Կարսէն վեց ժամու ճանապարհ հեռի, եւ կանգ առաւ անդ՝ սպասելու եւ նայելու համար որ թշնամւոյն տրամադրութիւնքն իմանայ՝ իւր կարգադրութիւններն ընելէ առաջ ։

Յուլիսի 6ին երեկոյին Մուխթար փաշա տակաւին Գըրգ-փունար կը գտնուէր, երբ լուր առաւ որ Ռուսք Կարսի պաշարումը թողնալով աւելի ետ կը քաշուէին ։ Այս լուրն այնքան անհաւանական կը թուէր որ հաւատալ չուզուեցաւ ։ Երկու բանակաց կացութիւնն այն ժամանակ բաւական զարմանալի էր. երկուքն եւս կ'երկնչէին թէ յարձակումն կը լինի ։ Լօռիս Մէլիքով կ'սպասէր Տաճկաց զինքն չհալածելուն համար, եւ Մուխթար փաշա կը զարմանար անարգել նոցա հեռամուտ լինելուն համար ։ Իւրաքանչիւրն չափազանց համարում ունէր իւր հակառակորդին զօրութեանը վրայ ։

Քաղաքին մէջ իսկ այս ազատութիւնն հաւատալի չթուեցաւ առաջին անգամ ։ Ամսոյն 6ին՝ ռմբակոծութիւնն որ յոյժ մեղմ եղած էր նախորդ օրն, սպառապուռ դադրեցաւ, բայց արտաքին կերտուածներէն կարելի էր նշմարել զօրաց մեծ շարժմունք ռուսական գծերուն մէջ ։ Լըրտեսներ եկած էին պատմելու որ մեծաթիւ գունդ մը դէպ ի հարաւ մեկներ էր չորս աւուր պաշարով ։ Միանգամայն հաւաստի կը լինէր որ մեծ խրարանացում կը տիրէր պարկենից մէջ, որոցմէ մինչեւ ճամբարն բազմաթիւ ընտել կենդանիներ կ'երթեւեկէին շարունակ ։ Այս տեղափոխութիւնք Տաճկաց ուշադրութիւնը չգրաւեցին բնաւ ։ Յուլիսի 6էն 7 լուսնալու գիշերին՝ ի վուր պահապանք իմաց տուին թէ Ռուսաց մարտկոցներէն յաճախ պայթիւններ լսելի կը լինէին, նոր հրամանատարն այս մասին ուշադրութիւն չըրաւ ։ Ամսոյն 7ին առաւօտուն միայն՝ Տաճիկք մարտկոցներէն բնաւ ձայն մը չլսուելուն վրայ զարմանալով՝ դարանակներուն վրայէն նայեցան որ Ռուսաց ճամբարին վրաններն յանկարծ աներեւոյթ եղեր են ։ Այս անգամ բերդաքաղաքին հրամանատարն հասկացաւ թէ արտաքոյ կարգի բան մը կար, եւ ուրչեց մէկ քանի պաշը-պօզուգներ ղրկել այն կողմերն զննութեան համար ։ Տեղազնինք շուտով վերադարձան եւ իմաց տուին թէ պարկէններն, մարտկոցներն եւ բանակատեղն բոլորովին թափուր էին, եւ թէ Ռուսք հզօր կերպիւ ամրացեալ էին Գուրագ-տէրէի անցքին մէջ որ դէպ ի սահմանագլուխ եւ Ալէքսանտրոփօլ կը տանի ։ Գիշերուան պայթիւններուն պատճառն այսպէս յայտնի եղաւ. բոլոր պատնէշներն աւրուած էին. հողակոյտ մը կամ հողոյ կողով մ'անգամ մնացած չէր զոր պաշարեալք ձեռք անցընելով կարէին պարծիլ ։

Երբ Մուխթար փաշա այս բոլոր մանրամասնութեանց տեղեկացաւ, հարկադրուեցաւ ճշմարտութիւնն ընդունելու, որքան եւ անհաւանական երեւէր ։ Ամսոյն 7ին իւր բանակն նորէն սկսաւ խաղալ, եւ գնաց բանակեցաւ Զիֆթլիկլի մօտ՝ Կարսէն մէկ ժամու ճանապարհ միայն հեռի, ուր միացաւ բերդաքաղաքին զօրաց, որ զայն դիմաւորելու եկած էին բովանդակ հասարակութեան հետ ։ Այս յաղթական ժամանումն մխիթարութիւն մ'եղաւ միւշիրին համար, որ նախատակոծ լինելով մեկներ էր անտի երկու ամիս առաջ ։ Ամեն ոք հիացման մէջ էր, եւ Ռուսաց վերջին զինուորներն որ իրենց դրաւել չկարացած այն պարսպաց առջեւէն կը հեռանային, լսեցին սարսափելի կայթիւններու արձագանգն եւ ծաղրական եղանակներ որովք Տաճկաց բանակին գալուստը կը շնորհաւորուէր ։

Միւս կողմանէ բերդապահ զօրքն եւ հասարակութիւնն արժանի էին իրենց հայրենակցաց կողմանէ մեծարուելու ։ Բերդապահք սնդութիւն եւ քաջութիւն ցոյց տուեր էին . արեւելեան ամրոցներն երկաթի բեկորներով ծածկուած էին եւ ճշմարիտ արիութիւն ունենալ հարկ էր ամբարտակաց տեղատարափի մը ներքեւ դիմանալու համար՝ բոլորովին աւրուած եւ բացուած դարանափորներու մէջ ։ Քաղաքին բնակիչք ամբախծութեան աղէտից դիմացած էին, եւ բանի տեղ չէին դրած անոնք որ ճակատագիր կ'ընդունէին, ինչպէս այս բանն յատուկ է մանաւանդ Թուրք ցեղին ։ Ռուսաց թնդանօթաձիգներն կարող չէին քաղաքը տեսնելու որ ամրոցաց բլուրներուն ետեւ ծածկուած էր . բայց հեռաւորութիւնը գիտելով՝ բաւական ճշդութեամբ նշան կ'առնուին եւ ամբարտակներն ամրոցաց վրայէն շըկահելով եւ անցնելով կը պայթէին անհեղ շառաչմամբ քաղաքին մէջ ։ Յայտնի է որ ամբակոծութեան կրակն ընդհանրապէս աւելի երկիւղ եւ շշուկ կը պատճառէ քան թէ վնաս ։ Քաղաքին մէջ բացուած երեք չարժուն անկելանոցաց ինչպէս նաեւ հիւանդանոցաց բժիշկներն յայտարարեցին թէ ամբակոծութեան միջոցին երեք հարիւր յիսունէն աւելի մարդ չեղաւ վիրաւորեալ, արտաքին ամրոցներէն եկածներն ալ հետ հաշուելով ։ Մեռելոց թիւը հարիւրի չափ եղաւ ։ Ընդհակառակն՝ քաղաքին մէջ փակեալ խեղճ Հայերն տեսակ մը ծայրայեղ պակուցանողական վարչութեան մ'ենթարկուած էին բերդաքաղաքին հրամանատարին ձեռամբ ։ Ոմանք լոկ իբրեւ լրտես կարծուելով՝ ողջ ողջ միջնաբերդէն վար նետուած էին Կարսի գետակին հովտին մէջ ։

Էնվալէր Ռէշ լրագիրը Կարսի պաշարման բարձուելուն իբր պատճառ ցոյց կուտայ՝ բաց դաշտի վրայ ճակատամարտ եղած ժամանակ զօրաց աւելի արձակ շարժում ընելու հարկաւորութիւնն ։ Լօրիս Մէլիքով զօրապետը Զայիմի նախկին բանակատեղին մէջ քաշուեցաւ առաջին անգամ . բայց կը թուի թէ անկարելի եղած էր այն տեղ մնալ ։ « Բանակն անդերկար ժամանակ դադարած լինելուն եւ առողջապահութեան նախագիտելեաց դէմ եղած զանցառութեան պատճառաւ, կը գրէ վերոյիշեալ Թանի Թղթակիցը (1) , Մագրայի եւ Զայիմի կողմերն իրօք ժահահոտութեան բոյն եղած էին ։ Օրինակի համար, անկարելի էր գետափին վրայ շրջագայիլ առանց կիսովին հեղձամղձուկ լինելու այն վնասակար եւ անախորժ բուրմունքէն ։ Վերջապէս խարի պակասութիւն կար . շրջակայից մէջ գտնուած խոտերն, նորահաս ցորեններն կամ դեռաբոյս գարիներն սպառեր էին . հարկ էր հեռի տեղեր երթալ ձիոյ կեր գտնելու համար՝ որ շատ աննպաստ եւս չէր, ինչպէս նաեւ այն պղտոր ջուրը ճարելու համար , որով թէյ կը պատրաստէինք եւ կերակուր կ'եփէինք . »

Վասն որոյ ռուսական բանակն աւելի ետ քաշուելով Եէնի-քէօյի մօտ համախըմբուեցաւ խոտաշատ դաշտի մը մէջ՝ Ալէքսանտրօփօլէն քիչ հեռի . Յառաջապահքն զետեղուեցան Խալիֆ-օղլուի եւ Սուպաթանի մէջ, եւ Մուխթար փաշա իրեններն Վիզին-քէօյիւ եւ Հաճի-Վէլիի մէջ զետեղեց . յետոյ զօրքն միշտ դէպ ի ձախ սփռելով մինչեւ Անի հասաւ ռուսական սահմանագլխոյ մօտ , եւ այսպէս Կարսէն մինչեւ այս վերջին կէտը տարածեց իւր ճակատու գիծն ։

ԵՐԵՒԱՆԱՅ ԳՈՒՆԴՆ ՌՈՒՍԱԿԱՆ ԵՐԿՐԻՆ ՎՐԱՅ
ԿԱՆԳՆԻ

Ռազմագիտական միահաղոյն խաղացք մ'ընելու մասին Տաճիկներն ալիկոր գըլանուելով, Տէր Ղուկասով ազատեցաւ ։ Եթէ Ցայիգ փաշա պահ մը Պայազիտի

(1) Գ. Տը-Գուղուլի ։

միջնաբերդին պաշարումը դադրեցնէր եւ նորա դէմ ելնէր՝ Արածանւոյ կրճին մէջ Գարա-քիլիսէէն մինչեւ Սուրբ Յովհաննէս եղած ճանապարհին ո՛ր եւ իցէ մէկ կէտին վրայ, Ռուսաց զօրավարն երկու կրակի մէջ մնալով եւ չորեքպատիկ կամ հնգապատիկ առաւել թուով զօրաց կողմանէ պաշարուելով, անդառնալի կերպիւ պիտի կորնչէր· բայց Ֆայիգ փաշա անշարժ մնաց, եւ Իսմայիլ փաշա խիստ թոյլ կերպիւ հետամուտ եղաւ Տէր Ղուկասովի։

Ռուսք մինչեւ յունիսի 27 Ալաշկերտի մօտ մնացած լինելով՝ անդ եղած պարէնի մթերքն հետ տանելու ժամանակ ունեցան, եւ Տաճիկներն ուտելիք չգտան այն տեղւոյ մէջ, ուր հազարաւոր քիւրտ աւարառուներ ապաստաներ էին։ Արածանւոյ դաշտին հարաւային կողմը լերանց մէջ բնակող աւազակ Քիւրտերն մինչեւ այն ժամանակ չէզոք մնացեր էին՝ երկու կողմանէ ընծայներ ընդունելով, եւ սպասելով տեսնելու թէ զինուց բաղդն ո՛ր կողմը ցոյց պիտի տար իրենց՝ աւելի արդիւնաւոր կերպիւ աւարառութիւն ընելու համար։ Երբ լուր առին թէ Երեւանայ գունդը կը նահանջէր, ջոկեր ջոկեր իջան իրենց լեռներէն, եւ առ հասարակ գիւղերուն մէջ գտնուած պաշարն եւ ինչքն յափշտակեցին, որոց դպած չէր Տէր Ղուկասով զօրավարն՝ ընդունուած յատակագծին համեմատ։ Ալէքսանտրոփոլի գնդին ետեւէն Չէրքէզներուն գործած աւազակութեանց նմանն գործուեցաւ նաեւ Արածանւոյ դաշտին մէջ նոյնչափ սոսկալի կերպիւ։ Քիւրտերն ոչ բարեկամ կը ճանաչէին ոչ թշնամի. որ եւ իցէ կողոպուտ լաւ էր իրենց համար, թէ մահմետականի ինչք լինէր եւ թէ քրիստոնէի։ Թէրհանի սուրհանդակին վրայ յարձակեցան եւ անոր ուղեկից գտնուող գործակալաց երկուքն սպաննեցին, եւ ուրիշ անգամ մը տաճիկ հետեւակազօրաց ջոկատի մը վրայ խուժեցին զէնք գողնալու համար, սպայից մին սպաննեցին եւ տասնապետ մը վիրաւորեցին։

Ապականարար մարախներու նման՝ այս աւազակներն ոչինչ թողուին ետեւնին։ Իրենց բանին եկածը կ'առնուին, եւ մնացեալը կ'ապականէին։ Երբ ոչխար կամ արջառ ձեռք կ'անցընէին, միայն ուտելու համար պէտք եղածն չէին փողոտէր այլ ամբողջ հօտը կը խողխողէին եւ գետնի վրայ կը թողուին որ փտի. եթէ ցորենի կամ ալիւրի պաշար մը գրաւէին, կ'առնուին այնչափ որչափ որ կարելի էր տանել, եւ մնացեալը ջուրը կը թափէին կամ կ'այրէին. գոգցես իրենց նպատակն երկիրը բոլորովին աւերել էր։ Վասն որոյ Իսմայիլ փաշա ստիպուեցաւ բոլոր պարէնն Էրզրումէն բերել տալ։ Ուր էր թէ պաշարաբարձ անդրուվորաց խմբերն լաւ կազմակերպեալ լինէին. ընդհակառակն խեղճ բաներ էին։ Պետութեան վերաբերեալ կենդանիներ եւ սայլեր ունենալու եւ զինուորաց ձեռամբ զանոնք վարելու տեղ, գիւղացւոց սայլերն եւ եզներն կը պահանջուէին, որոց տէրքն եւս իբրեւ վարիչ կը գործածուէին։ Քանի որ սոցա դրամ չէր վճարուեր եւ իրենց՝ ինչպէս նաեւ անասնոց համար ուտելիք չէր տրուեր, ինչ կը պատահէր։ Իջեւանելու առաջին տեղն հասնելուն կամ յարմար առիթ մը գտնելուն պէս՝ գիւղացին իւր եզներն զինուորաց կը վաճառէր իբրեւ ծախու միս, եւ իւր սայլն իբրեւ վառելու փայտ. ինչ որ տային կ'ընդունէր եւ լուիկ մնջիկ խոյս կուտար՝ բոլորովին վնաս չընելուն վրայ ուրախանալով։ Սայլին մէջ եղած բեռան վրայ եւս ոչ ոք հոգ կը տանէր, մինչեւ որ գիտցուէր թէ անդրուվար չըկար. յայնժամ նոր պահանջմունք կը լինէին, նաեւ անսահման կերպիւ ժամանակի կորուստ, երբեմն եւս բեռն ճանապարհին վրայ մինչեւ վերջը կը մնար։

Գործերն այս վիճակին մէջ լինելով, անկարելի էր Տաճկաց արագ հետամուտ լինել Ռուսաց։ Չէրքէզ ձիաւորք թըլ-

նամւոյն դէմ գործելու տեղ՝ աւարը Թիւրտերուն ձեռքէն յափշտակելու՝ կը նայէին ։ Կանոնաւոր հետեւակազօրն շա-



ԶՕՐԱՎԱՐ ԼԱԶԱՐԵՎ

րունակ քայլելու կըստիպուէր ուտելիքի պատճառաւ ։ Սակայն եւ այնպէս Իսմա-յիլ փաշա կարող եղաւ ռուս վերջապա-հոց վրայ հասնելու Դարա-քիլիսէի մօտ յուլիսի 2ին ։ Տէր Ղուկասով եւս այնքան յամր կ'ընթանար որքան չէր ուզեր ։

Բեռնաբարձ անդրուվարաց մեծ խումբ մ'ունէր, բազմաթիւ թնդանօթներ եւ մէկ քանի հարիւր վիրաւոր եւ հիւանդ.

տանք իւր ընթացքին արգելք կը լինէին։ Այս խոչընդոտներուն վրայ աւելցան նաեւ այն խեղճ քրիստոնեայներն որ Քիւրտերուն Նիզակէն կը փախչէին եւ Զարին դրօշակացներքեւ պատսպարուելու կուգային ։ Անոնցմէ իմացուեցաւ թէ այլեւայլ գիւղերու ամբողջ հասարակութիւնն սրոյ ճարակ եղեր էր անգթութեամբ. զօրքը տեղէ մը քաշուելուն պէս անմեղներուն արիւնը կը թափուէր անդ ։ Երեւանայ գունդն այս կերպիւ 3,000 ընտանիք ժողովեց, այնպէս որ ի վերջոյ իւր զօրքէն աւելի թուով գաղթականներ ուղեկից եղան իրեն.

Գարա-քիլիսէի մօտ առաջամարտ մ'եղաւ բաւական սաստիկ ։ Ռուսաց վերջապահք հարիւրի չափ մարդ կորսուցին, եւ Տաճիկներն երկու սայլակառք գրաւեցին՝ ինչպէս նաեւ մեծաքանակ բրինձ, ցորեն եւ ալիւր, զոր Ռուսք հետ առնելու ժամանակ ունեցած չէին ։ Այս կռուէն յետոյ՝ երկու բանակներն իրարմէ անջատուեցան, եւ Իսմայիլ փաշա ստիպուեցաւ խոստովանելու՝ թէ Երեւանայ գնդին ուրկէ անցած լինելը չէր գիտեր ։ Տէր Ղուկասով զօրավարն յաջողութեամբ Սուրբ Յովհաննէս հասնելով՝ որոշած էր յապահովի զետեղել իւր հովանաւորութեան ներքեւ ապաստանող գերդաստաններն՝ ինչպէս նաեւ վիրաւորներն եւ հիւանդներն, Պայազիտի պահակագնդին օգնութեան երթալէ յառաջ՝ որ նոյն քաղաքին միջնաբերդին մէջ պաշարեալ էր ։ Վասն որոյ Սուրբ Յովհաննէսէն մեկնելով եւ Գարա-փէրօյի կրճէն անցնելով յառաջ խաղացեր էր Երեւանայ գաւառին Իկտիր գիւղն երթալու համար, ուր հասեր էր ամսոյն 5ին ։

Երեւանայ գնդին այս նահանջն յոյժ նշանաւոր իրողութիւն մ'է, վասն զի ճանապարհին վրայ ոչ թնդանօթ, ոչ սայլ եւ ոչ վիրաւոր թողուց այն ։ Միքայէլ մեծ դուքսն Իկտիր եկաւ զինուորապետաց եւ զինուորաց իւր խնդակցութիւնն յայտնելու համար ։ Տփղիսու Հայք իսկոյն հանգանակութեան ձեռնարկեցին 3,000 համազգի ընտանեաց օգնելու համար, որ Ռուսաց երկրին վրայ կը հասնէին ամեն բանէ զուրկ գտնուելով ։ Առաջին օրերն 5,000 ռուբլի հաւաքուեցաւ եւ Կովկասու մեծամեծ կալուածատեարց ոմանք իրենց տեղերուն վրայ բնակեցուցին գաղթականներն առանց մէկ քանի տարի բան պահանջելու, .

Սակայն հարկ էր Պայազիտը պաշարմանէ ազատել ։

Տէր Ղուկասով զօրավարն Իկտիրի մէջ պէտք եղած պարէնն եւ ռազմամթերքն պատրաստելէ յետոյ՝ ամսոյն 8ին ճանապարհ ելաւ դէպ ի Պայազիտ ութ վաշտով, խաղախաց տասն եւ հինգ հեծելադասով եւ չորս կանոնաւոր հեծելադասով՝ 24 թնդանօթ եւս հետ առնելով. նախորդ օրն հատուածապետ Քալպօլայ խանի գունդն ճանապարհ հանած էր ։



## ՊԱՅԱԶԻՏԻ ՊԱՇԱՐՈՒՄՆ ԵՒ ԱԶԱՏՈՒԹԻՒՆ ՊԱՀԱԿԱԳՆԴԻՆ

Տէր Ղուկասով զօրավարն մայիս ամսոյ մէջ Պայազիտէն մեկնած ժամանակ՝ պահակագունդ մը ձգած էր անդ, որ կը բաղկանար Ստավրօփօլի գումարտակին երկրորդ վաշտէն, Գըրըմի գումարտակին 7րդ եւ 8րդ դասակներէն, թնդանօթաձիգ զօրաց 19րդ սահին 4րդ թնդանօթաշարին 4րդ բաժնէն, Խօփէրի գումարտակին մէկ հեծելադասէն, Ումանի գումարտակին 2րդ եւ 5րդ հեծելադասերէն, ինչպէս նաեւ 26 հոգիէ որոց մէկ մասն Կովկասու խաղախաց գումարտակին կը վերաբերէր, եւ մէկ մասն՝ առժամանակեայ զինուորական թիւ 11 հիւանդանոցին մարդիկն էին. ընդամենն չորս բարձրագոյն սպայ, 26 երկրորդական սպայ եւ 1,587 մարդ ։

Պատմեցինք թէ Ամիլօխվարով իշխանին խումբն՝ Վանայ լճին եզերաց վրայ կաղ-

մեալ եւ Պոյապիտի պահակագունդը պաշարելու սահմանեալ առաջին ջոկատ մը ցիրուցան ըրած էր ։ Երեւանայ գունդն Երեւանէն հեռանալուն պէս՝ այն ջոկատը վաղընդվոյթ վերակազմեցաւ ։ Վանայ զինուորական կառավարիչ կամ հրամանատար Ֆայիգ փաշա այս քաղաքին՝ ինչպէս նաեւ Բաղիշոյ եւ Մշոյ մէջ եղած կանոնաւոր զօրքն խմբելով կարող եղաւ եօթն վաշտ կազմելու ։ Սոյն փոքր խմբին աջակից տալու համար Ֆայիգ փաշա Հայտէրանլը Քիւրտերուն Շէյխին՝ Ճէլալէտտինի դիմեց եւ աղաչեց որ կամաւորներ ղրկէ առ ինքն ։ Ասոր վրայ 20,000ի չափ կամաւորք եկան . Լերանց մէջ ազդարարութիւն եղած էր թէ հաւատոյ պատերազմ պիտի լինէր ընդ հուպ եւ բոլոր քրիստոնեայները պիտի ջարդուէին ։ Ճոխ աւար մը յափշտակելու առիթ նշմարելով՝ անգեղց երամներու պէս հասան բոլոր հուժկու մարդիկն, որոց համար գուրանն յաղթանակեր էր կամ ոչ՝ բնաւ փոյթ չէր ։

Այն բարբարոսներէն 1,400 հոգի իրենց շէյխին առաջնորդութեամբ Գաւառէն մինչեւ Վան գնալով՝ 24 գիւղ աւարի տուին, այսինքն ընդ ամէնն 800 տուն Աղբակ (Ալպաղ) գաւառին մէջ ։ Սոցա մօտենալն լսելով՝ ամէն ոք փախեր էր . դժբաղդաբար այն տեղի քրիստոնէից մեծ մասն կարծեցին թէ կարելի էր՝ բովանդակ երկրին մէջ յոյժ յարգելի եղած Սրբոյն Բարթուղիմէոսի վանքն ապաստանիլ կանամբք, որդւովք եւ թանկագին ընչիւք հանդերձ ։ Կը յուսային թէ Քիւրտերն այն վեհավայրին սրբութենէն պիտի ակնածէին, բայց բոլորովին կը սխալէին . աւազակներն նախ այն տեղ եկան ։

Վանից դռներն հարուածներու չդիմացան, եւ մենաստանն աւարի տրուեցաւ . Եպիսկոպոսն եւ Վանականք չիշխեցին դիմադրութիւն ընելու սրախողխող լինելէ երկնչելով ։ Բայց այսչափն եւս բաւական չեղաւ . պատսպարեալք բոլորովին կապտուեցան իրենց զգեստներէն եւ գեղաղէշ տղայք, աղջկունք եւ կանայք բռնի եւ մերկ տարուեցան Քիւրտերուն բանակատեղն, ուրկէ ոչ ոք վերադարձաւ ։ Եպիսկոպոսն մեծ գումար մը վճարելով միայն կարաց իւր կեանքն ազատել, յետ որոյ ստիպուեցաւ լերանց մէջ փախչելու եւ Պարսկաստան հասնելու խոտոր ճանապարհներէ ։ Հարիւր քսան հայ ընտանիք սարսափելի խեղճ վիճակի մէջ կարացին հասնիլ Պարսկաստանի Սալմաս (Սալմուս) քաղաքն, ուր վեհանձնութեամբ օգնեցին նոցա ոչ միայն իրենց կրօնակիցներն, այլ եւ սոյն խըժդժութեանց վրայ զայրացեալ մահմետականք անգամ ։ Շրջակայ տեղեաց մէջ ահ եւ դող տիրեց ։

Քիւրտերուն ըրածներն այն աստիճանի հասան որ Վանայ իշխանութիւնք ըստիպուեցան չորս թնդանօթ զետեղել ինքզինքնին պաշտպանելու դիտաւորութեամբ, եւ Մուսուլի պահակագունդն օգնութեան կոչեցին հասարակութիւնը ընդհանուր կոտորածէ մը զերծ պահելու համար ։ Քիւրտ Իսմայիլ փաշա՝ որ գրգռութիւնը մեղմելու համար այն տեղ եկած էր, բոլորովին անյաջող եղաւ ։

Սակայն այն միջոցին Ֆայիգ փաշա մարդու պէտք ունենալով՝ չէր կրնար իւր օժանդակներուն ընտրութիւնն ընել . այսպիսի աւազակներէ որքան եւ կը խորշէր՝ չէր նայեր այս բանին, եւ Վինչէսթրի հրահանգներ տալով նոցա՝ Պոյապիտի առջեւ տարաւ զանոնք ։

Պահակագունդն տակաւին անդորր էր, երբ յունիսի 17ին Փաշէվիչ փոխ-գումայեորին հրամանատարութեան ներքեւ Ելիսավէթփոլի գումարտակին մէկ հեծելադասէն եւ Ումանի գումարտակին վերաբերող 60 խազախներէ բաղկացեալ տեղազնին խումբ մը յարձակումն կրեց յանկարծ՝ այս բերդաքաղաքէն 20 հազարամէթր հեռի գէպ ի Վանայ կողմն՝ 800 քիւրտ ձիաւորներէ ։ Փաշէվիչ փոխ-գումայեորն Պոյապիտ քաշուեցաւ . Թըշ-

նամին իրեն հետամուտ լինելով՝ շրջակայ բարձրաւանդակաց տիրեց. եւ քաղաքին մէջ մտնող Քիւրտերու մէկ հրոսակին կարաց 300ի չափ եղջերաւոր անասուն յափշտակել բնակչաց ձեռքէն ։ Փաշէվիչ այն աւարառուաց հետամուտ լինելու եւ թանկագին աւարն նոցա ձեռքէն առնլու տեղ՝ հրաման ըրաւ Գըրըմի գումարտակին մէկ դասակին բարձրաւանդակաց վրայ յարձակումն ընելու, որով Քիւրտերն հալածուեցան անտի ։

Վանայ ճանապարհին վրայ ղրկուեցան յունիսի 17էն 18ը լուսնալու գիշերն՝ Սթավրօփօլի գումարտակէն մէկ վաշտ, Ումանի գումարտակէն երկու հեծելադաս, Ելիսավէթփօլի գումարտակէն մէկ հեծելադաս եւ Շափըրի գումարտակէն հեծելադաս մը ։ Պայազիտէն 17 հազարամէթր հեռի այս խումբն հանդիպեցաւ Տաճկաց, որ իւր դիրքն հզօր կերպիւ ամրացուցեր էր, եւ կէս ժամ կռուելէ յետոյ՝ ստիպուեցաւ շտապաւ նահանջել քիւրտ ձիաւորներէ հալածուելով ։ Քիչ ժամանակէն Ռուսք խառնիխուռն փախչելու սկսան. շատերն սրախողխող եղան առանց գրեթէ ինքզինքնին պաշտպանելու, եւ վիրաւորք ճանապարհին վրայ թողուեցան. զօրախումբք խալյն միջնաբերդին մէջ խուճապեցին, վասն զի քաղաքն արդէն պաշարուած էր Տաճկաց կանոնաւոր զօրօքն ։

Այս աղէտաւոր կռույն վրայ պահակազունդն բոլորովին վհատեցաւ եւ երբ Տաճիկներն ջրադնացները (սու եօլլարը) կտրեցին, անձնատուր լինելու խօսք եղաւ ։ Ռուսք քաղաքին շուրջն այն հազարաւոր ձիաւորաց շրջշրջիլը տեսնելով, պարէն եւ ջուր չունենալով, եւ գիտելով թէ որքան հեռի կը գտնուէին օգնութենէ, պատուաւոր անձնատրութիւն մը նախամեծար համարեցին քան անօգուտ պաշտպանութիւն մը ։ Բերդաքաղաքին հրամանատար Քօվալէվսքի գումապետն առաջարկութիւններ ըրաւ, զորս Ֆայիզ փաշա ընդունելու մութայց եւ պահակագնդին մէկ մասն անզէն դուրս ելաւ բերդէն ։

Երբ կանոնաւոր զօրքն տակաւին ժամանակ ունեցած չէր միջոցներ ձեռք առնելու նոցա ապահովութեան համար, քիւրտ ձիաւորներն յանկարծ յարձակեցան անձնատուր եղող անզէն գերեաց վրայ եւ բոլորն եւս ջարդեցին ։ Պահակագնդին մնացեալ մասն զայս տեսնելով բերդին դուռները փակեց, եւ չուզեց ունկն դնելու եւ իցէ առաջարկութեան, քանի որ այս բանն եղած էր ։

Մուխթար փաշա սոյն վատ նենգութիւնն իմանալով զայրացաւ, եւ հրաման յղեց պարագլուխները կախելու եւ յանցաւորաց ճանապարհ տալու ։ Կըսուի թէ Ֆայիզ փաշա 8,000 Հայտէրանլը Քիւրտ ետ ղրկեց ։ Ռուսք եւս երբ վերստին յարձակողական վերադարձ ըրին ի Պայազիտ, անոնցմէ մէկ քանիները բռնելով կախել տուին ։

Թէեւ զինուորական հիւանդանոցին տեսուչն ջրոյ աւազաններն լնուլ տուած էր նախազգուշութեամբ, սակայն եւ այնպէս պաշարեալք մեծ նեղութիւն քաշեցին ջրոյ պակասութենէն, որմէ ճարելու համար խորամանկութիւն մը բանեցուցին. դէպ ի քաղաքն ական մը փորելով հաղորդակցութիւն հաստատեցաւ հասարակաց աղբիւրներէն մէկուն հետ ։ Ժամանակ մը սոյն հնարքն յաջողութիւն ունեցաւ ։ Ջուր գտնելու ելնող յանդուգն խնդրակք գրեթէ բոլորովին անտես էին ստորերկրեայ ճանապարհին խորերուն մէջ ։ Բայց օր մը Քիւրտին մէկն շրջագայելու ժամանակ՝ ռուսական գլխարկի մը ծայրը նշմարեց գետնէն վեր, որոյ այն տեղ այսպէս երեւելուն պատճառն անմեկնելի էր ։ Սկսաւ դիտել եւ շուտով բանին ինչ լինելն հասկցաւ ։ Դարան մը պատրաստուեցաւ եւ ամէն օր մէկ մէկ ռուս գնդակով կը զարնուէր ստորերկրեայ ուղւոյն մուտին առջեւ ։

Յունիսի 20էն սկսեալ կէս բաժին ուտելիք տրուեցաւ պաշարելոց, այսինքն մարդ գլուխ կէս լիտրա պաքսիմատ կամ կոկուծ հաց։ 21ին պաշարեալք խնդրակներ ղրկեցին Տէր Ղուկասով զօրավարին, որք մինչեւ Երեւանայ գունդն հասան։ Նոյն օրն Տաճիկներն՝ որ անկէ առաջ եւս պաշարելոց վրայ կրակ բացած էին, սաստիկ գնդակոծեցին միջնաբերդին դուռն, բայց Ռուսաց արձակամարտք տաճիկ թնդանօթաձիգներն ստիպեցին հեռանալու։ Հետեւեալ երկու օրերն օսմանեան թնդանօթներն լուռ կեցան. որով պաշարեալք կարծեցին թէ Տաճիկներն Տէր Ղուկասով զօրավարին դէմ գնացած էին։ Երկու հարիւր ռուս կամաւորներ դուրս յարձակեցան՝ երեք փոքր խմբերու բաժնուելով. բայց մեծ կորուստ կրելով ետ մղուեցան եւ յայտնի եղաւ թէ Տաճիկներն Պայազիտէն հեռացած չէին։

Ամսոյն 24ին առաւօտեան 9րդ ժամուն՝ պաշարեալք գունդ մը տեսան, որ Զընկըլի անցքին բարձունքէն կ'իջնէր եւ բարեկարգութեամբ Պայազիտի վրայ կը խաղար՝ երկու կողմերն արձակամարտից շղթայներ ունենալով։ Այս գունդն երեկոյին Պայազիտի արուարձանին առջեւ հասաւ եւ մինչեւ գիշեր հրացանաւ կըռուեցաւ Տաճկաց հետ. բայց գիշերային Տաճիկներն ռուսական խմբին յետակողմն անցան, որ չպաշարուելու եւ դերի չըբռնուելու համար՝ ստիպուեցաւ ետ քաշուիլ։ Քալալօլայ խանի խումբն էր այս։

Ամսոյն 26էն սկսեալ մէկ քառորդ լիտրայի կոկուծ հաց տրուեցաւ պաշարելոց եւ մէկ ապուրի գգալ ջուր, որ նեխեալ եւ գարշելի էր։ Յուլիսի 1ին լիտրային մէկ ութերորդ մասին չափ միայն կոկուծ հաց տրուեցաւ։

Վերջապէս յուլիսի 11ին թնդանօթի ձայներ լսուեցան հեռուստ։ Տէր Ղուկասով զօրավարն փոքր ինչ Իկտիրի մէջ մնալէ յետոյ՝ ճանապարհ ելեր էր վերըստին յուլիսի 8ին։ Իսմայիլ փաշա նորա այս խաղացքն իմանալով աճապարեց Ֆայիգ փաշայի օգնութեան ղրկելու Նաքիֆ պէյի սահն, որ կը բաղկանար ութ վաշտէ եւ մէկ թնդանօթաշարէ 600 ձիաւորներով հանդերձ։ Այսու Տաճիկներն եռապատիկ առաւել թուով էին, բայց նոցա գլխաւորաց մէջ տիրած անհամաձայնութիւնն յաղթութիւնը դիւրացուց Ռուսաց։

Ամսոյն 10ին արեւը ծագելու ժամանակ՝ Երեւանայ գունդն բերդաքաղաքին հիւսիսային արեւելեան կողմն երեւեցաւ, ուր բարձր տեղ մը գրաւած էր հաստուածապէս Մուխլիս փաշա 3 լեռնային թընդանօթներով, 4 վաշտիւք եւ 1,200 ձիաւորներով հանդերձ։ Մուխլիս այնքան մեծաթիւ զօրաց մօտենալը տեսնելով՝ թողուց իր դիրքը, եւ ջանաց քաշուիլ դէպ ի Թէփէրիզ-քէօյի, ուր Ֆայիգ փաշա բանակեալ էր։ Ռուսական հեծելազօրն արագ խաղացք ընելով՝ նորա նահանջն արգիլեց, եւ Մուխլիս ստիպուեցաւ կռուելու, որպէս զի ճանապարհ բանայ դէպ ի հիւսիսակողմն, ուր Նաքիֆ պէյի սահը կը յառաջէր։ Տաճկաց գնդերը միացան, բայց Տէր Ղուկասով զօրավարին յարձակումն այնքան սաստիկ էր որ նոքա յետս մղուեցան դէպ ի Գըզըլ-տիզ, չորս թընդանօթ կորուսանելով, 500 մարդ սպաննուելով եւ 80 հոգի գերի բռնուելով։ Կը պատմուի թէ 1,500 վիրաւոր բերուեցաւ Կարս՝ այս կռուէն յետոյ։ Ֆայիգ փաշա չօգնեց իր տեղեկալաց եւ Պայազիտէն հեռացաւ առանց ընդհարելու։ Քաջ Քիւրտերն եւս համարելով անշուշտ թէ նախորդ կռուոց մէջ իրենց ըրած դիմադրութիւնն բաւական էր, կարելի եղածին չափ սրարշաւ ձիավարելով փախան, երբ թնդանօթաց ձայնն առին։

Պայազիտի արի պահականգունդն մեծ վտանգէ մը փրկուեր էր։ 2 բարձրագոյն սպայ եւ 114 զինուոր կորուսած էր, 7 երկրորդական սպայք եւ 359 զինուորք վիրաւորեալ էին. Պաշարեալներն գրեթէ ամէնքն հիւանդ էին եւ օդափոխութեան համար

ղրկուեցան լեռնային կայաններու մէջ։

Քաղաքն աւերակ դարձած էր եւ կարեւորութիւն ունեցող մարդաշատ կեդրոններուն կարգը չպիտի համարուէր երկար ժամանակ. միջնաբերդին բոլոր որմերն վնասեալ էին. Երեւանայ գնդին համար անկարելի էր այն փլատակաց մէջ մնալ, չորս կողմէն՝ մտատանջութիւն պատճառող թշնամի զօրաց եւ թափուր երկրի մը մէջ գտնուելով։ Վասն որոյ Տէր Ղուկասով զօրավարն անմիջապէս վիրաւորներն եւ հիւանդներն տանել տուաւ, եւ կոտորածէ զերծ մնացող բնակիչներն հետ առնելով, որք այն անիծեալ երկրէն փախչելու ստիպեալ էին, երկրորդ անգամ Տաճկաց երկրէն ելաւ եւ գնաց բանակեցաւ Իկտիրի մօտ, ուր Խամպիլ փաշա ընդ հուպ հետամուտ եղաւ իրեն՝ յարձակման սկսելով։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՌՈՒՍԱՑ ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՒԱՆԱՑ ԱՐԴԻՒՆՔՆ ԵՒ ՀԵՏԵՒԱՆՔՆ

Այսպէս՝ մինչափ գրաւեալ տեղերէն Ռուսաց ձեռքը կը մնար յուլիսի 15ին Արտահան բերդաքաղաքն եւ Արտահանայ առջեւ քիչ մը տեղ։ Իրենց բանակներն օսմանեան բանակաց դէմ վայրապար յարձակումներ ընելէ յետոյ՝ ետ քաշուեր էին՝ չհամարձակելով վճռական ճակատամարտ մը տալու։ Զօրաց թուոյն նուազութեան վրայ՝ յանկարծ զօրավարք վեհերոտ եղած էին։ Այս արդիւնքն տեսնելով՝ Եւրոպա մեծապէս ափշեցաւ։ Հե՛հ, մինչափ զօրք միայն հանելու կարող եղած էր՝ 80 միլիոն բնակիչ ունեցող այն լայնատարած կայսրութիւնն։ Երբ յետոյ Պուլղարիոյ մէջ եւս ձախորդութիւնք վրայ հասան, քսանամեայ պատրաստութեամբք Ռուսիոյ ստացած շուքն եւ ազդեցութիւնն սոսկալի կերպիւ վտանգեցաւ։ Ռուսական լրագրաց մէջ անգամ, որքան որ ծածկել հարկ է դժգոհութիւնն, տրտունջներ եղան տէրութեան պատիւն մինքան թեթեւութեամբ վտանգի ենթարկուելուն համար։ Կօլօս լրագիրն Տըփղիսէն ղրկուած տխրալից նամակ մը հրատարակեց, յորում այսպէս գրուած էր. «Երբէք Տփղիս այժմու չափ տաժանելի կացութեան մէջ գտնուած չէ։ Գիտէ ամեն ոք արդ՝ թէ ոչ միայն մեր զօրքն ետ քաշուած է, այլ նաեւ թշնամին մեր վրայ կը խաղայ։ Ի՛նչպէս եղած է այս բանն։ Ամեն ոք կը խոստովանի թէ խիստ սակաւաթիւ էին մեր զօրքն։

« Սահմանագլխոց վրայ 60.000 մարդ գումարեցինք, եւ կ'ուզէինք այնչափ թուով բովանդակ փոքր Ասիայէն անցնիլ։ Լօրիս Մէլիքօվի պէս գիտակ անձանց կարծիքն նկատողութեան անգամ չէր առնուած։

« Անկարելի բան կայ՝ մինչեւ անգամ դիւցազանց համար։»

Եւ Ռուսաց վաղեմի լրագիրն առնուած լրոց վրայ մեկնութիւն տալով՝ կը յաւելուր ըսել իրաւամբ. « Զինուորական զօրութեանց մասին խնայութիւն ընելն շատ լաւ բան է, երբ այդ խնայութիւնն հիմնեալ է ճիշդ հաշուոց վրայ. ասոր հակառակն եթէ լինի՝ անօգուտ կորուստ եւ վնասներ միայն յառաջ կը բերէ։ Եթէ Ռուսիա մէկէն Ասիոյ մէջ փոխանակ 50 կամ 60,000 մարդու՝ 100,000 զինուոր հանէր, գուցէ պատերազմն արդէն աւարտեալ է։ Այժմ ընդհակառակն՝ մեծ կորստեամբք ձեռք բերուած յաղթութիւններէ յետոյ՝ մեր բանակն իր առաջին տեղերը կը գտնուի, եւ պարտաւորեալ է վերստին արշաւանաց սկսելու իւր քով հասած զօրավիգներով։ Այսպէս հարկ պիտի լինի վերյիշեալ 100,000 մարդն ունենալ դարձեալ, եղած անդարմանելի կորուստներն եւս ուրիշ։»

Ռուսաց համար՝ առաջին արշաւանաց բոլոր դժուարութեանց պիտի միանային արդարեւ այնուհետեւ՝ իրենց պարտութեանց պատճառաւն տաճիկ զօրաց մէջ յառաջ եկած եռանդն, եւ մանաւանդ այն փոր-

ձառութիւնն, զոր օսմանեան զօրավարք նոր ստացած էին։ Անյուսալի էր որ նոքա յառաջագոյն գործած սխալնեռնին դարձնել գործէին. եւ արդարեւ նոր կռիւներու համար այնքան եռանդեամբ պատրաստութիւններ տեսան, որքան ըսկզբան պատերազմին հեղգութիւն ցոյց տուած էին։ Կարսի նոր կառավարիչն Մուսթաֆա փաշա (1) ամենամեծ փութով քաղաքը պարենաւորեց երկրորդ պաշարման մը դէմ նախազգոյշ գտնուելու համար։ Կարնոյ մէջ Իսմայիլ փաշայի յաջորդող նոր վալին կամ կուսակալն Հասան փաշա եւս նշանաւոր եղաւ իբրեւ ձեռներէց եւ գործունեայ մարդ։

Հետեւակազօրաց 8 վաշտ, 1,200 անկանոն ձիաւոր եւ թեթեւ թնդանօթաց 3 շար դրկեց Գոնուձիի կրճին մէջ՝ Օլթիէն Կարին տանող այն ճանապարհին վրայ, զոր Ռուսք գրաւելէ յետոյ՝ բնաւ չէին գործածեր։ Անկլիւրիայէն, Գոնիայէն, Խարբերդէն, Տիյարպէքիրէն եւ մինչեւ անգամ Պաղտատէն բերել տուաւ 12 վաշտ, ինչպէս նաեւ 300 ձիաւոր Անկլիւրիայէն եւ 6,000 Սիւրիայի անկանոն զօրք։ Բոլոր այս մարդիկն Մուխթարի եւ Իսմայիլի բանակաց մէջ պիտի դրկուէին։ Յառաջագոյն կրթեց զայնս, հրահանգներ ընել տուաւ եւ անկանոններըը գրեթէ բաւական լաւ զինուորներ ընելու ջանաց։ Նաեւ դրան հաւանութեամբ վճռեց Հայաստանի բոլոր հուժկու մարդիկն ժողվել եւ զինուորել 16էն մինչեւ 60 տարեկան։ Կը յուսար այսպէս 50,000ի չափ մարդ հանել. արդէն առաջին անգամ 25,000 Փիպօտի Մարթինիի լաւ հրացան, 25,000 համազգեստ եւայլն հասած էր իրեն, որով կարէր զինել եւ հանդերձել այն մարդիկն։

Լաւ անդրուվարներ պատրաստեալ չը լինելուն համար էր որ Տէր Ղուկասով

(1) Այս երրորդ Մուսթաֆա մ'է. առաջին երկուքին վրայ արդէն խօսուած է Ասիոյ սոյն պատերազմին մէջ։

զօրավարն կարող եղած էր փախչիլ. Հասան փաշա այս յունի կազմակերպութիւնը տեսաւ, 1,500 ձի ճարեց հարկադրութեամբ տեղացիներէն պահանջելով եւ անդրուվարաց խումբ մը պատրաստեց։ Միւս կողմանէ տնօրէնութիւններ ըրաւ մեծաքանակ պաշար հաւաքելու համար Կարնոյ մէջ, որ բանակին ընդհանուր համբարանոցն էր. ցորենով եւ ալիւրով բեռնաւորեալ 1,700 ուղտ եւ 3,000 ձի հասան Պաղտատէն, Մուսուլէն, Մարտինէն, Տիարպէքիրէն եւ Սըվազէն եւ առհագին քանակութեամբ կսկուծ հաց պատրաստուեցաւ։

Այս յարատեւ գործունէութեամբ տաճկական բանակն կարող եղաւ թէ Ռուսաց յարձակողական վերադարձին դէմ դնելու եւ թէ՝ ինքնին յարձակման նախաձեռն լինելու համար։

## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ ՍԵՒ ԾՈՎՈՒ ԱՓԱՆՑ ՎՐԱՅ

Եւրոպայի կողման պատերազմական եղելութեանց վրայ վերստին խօսելէ առաջ, Պաթումի շրջակայից եւ Ախալցխոյ մէջ պատահած զինուորական դիպաց մասին մէկ քանի բան գրուցել հարկ է։

Օխլօպժիօ զօրավարն յունիսի 11ին շարունակելով այն գործողութիւններն՝ որովք մինչեւ Քինթրիշիի գիծն հասեր էր եւ մինչեւ Պաթում պիտի հասնէր կամ գէթ այնպէս կը յուսար, Ցիխէ-Ծիրիի դրից վրայ յարձակեցաւ։ Թուրքերն մեծ պնդութեամբ կռուեցան մանաւանդ որ այն առապար տեղեաց հանգամանքն իրենց կը նպաստէր, յորս արուեստական արգելներ կանգնած էին եւ զրահաւոր նաւ մը օգնութիւն կ'ընէր։ Օրն ի բուն տեւեց կռիւն, Ռուսք նոցա դրից մէկ մասն գրաւեցին՝ 11 սպայ եւ 400 զինուոր սպանեալ կամ վիրաւորեալ ունենալով։

Հետեւեալ օրն՝ այն է ամսոյն 12ին, Տաճիկներն եւս Կոստանդնուպոլսէն հասած նոր զօրաց օգնութեամբն յարձա-

կեցան Ռուսաց՝ վրայ Տէրվիշ փաշայի առաջնորդութեամբ, որ Հէրսէքէն եկած էր Պաթումի հրամանատարութիւնն ըստանձնելու համար ։ Ինն ժամ կռիւ եղաւ, յորում դեռ եւս Արաբիայէն հասած վաշտերը եւ օսմանեան չորրորդ բանակագնդին արձակամարտներէն բաղկացեալ ընտիր զօրախումբք կը շահատակէին. բայց վերջապէս Տաճիկներն ընկճեցան երկաթի կատուններու տարափէն եւ սուիններէն սարսափելի կորուստ կըրելով եւ մեռեալներն լքանելով ։ Օրը տարաժամեալ լինելուն եւ Տաճկաց պատնէշներուն մօտ գտնուելուն պատճառաւ՝ Ռուսք երկար ժամանակ հետամուտ չեղան ։

Օխլօպժիօ զօրավարն տեսնելով որ անդադար զօրավիգ կը հասնի ի Պաթում, խոհեմութիւն համարեց՝ իւր ձեռք բերած յաջողութեան չնայելով՝ զօրքն համախմբել գրաւած տեղերէն նուազ վտանգաւոր դիրից մէջ, քանի որ այն տեղերը մընալն յոյժ դժուարին եղած էր զինուորաց վրայ շարունակ հրացան պարպող լազ ժողովրդեան թշնամութեանը պատճառաւ. եւ յունիսի 29 ին գնաց բանակ վերստին Մուխաաթաթի նախկին դիրքն զոր ճշմարիտ բերդի մը դարձուց՝ ամէն կերպիւ ամրացնելով ։ Ուրեմն այս կողմէն եւս Ռուսք ստիպեալ էին իրենց հարաւակողմեան թեւական առաւելութեան առջեւ ընկրկելու ։ Այս նահանջէն յառաջ եկած բարոյական ազդեցութիւնն անոր համար առաւել մեծ եղաւ, որ Երեւանայ եւ Ալէքսանտրօփոլի գնդերուն ետ քաշուելու միջոցին կը պատահէր ։

Ափղազիոյ մէջ Տաճկաց կացութիւնն այնքան գէշ էր որ անկարելի էր նոցա համար յաջողութիւն ունենալ անդ. Բացատրուեցաւ արդէն որ այն տեղի խումբը բան մ՚ընելու անկարող լինելով կը չարչարուէր նոյն անել տեղւոյն վրայ, ուր ձգուած էր լերանց, ծովուն, եւ այն Սօչի եւ Քօտոր վտակաց մէջ տեղ, որոց ետեւ հզօր կերպիւ ամրացեալ էին Ռուսաց զօրքն ։ Ֆազլը փաշա յունիսի վերջերն փորձ մ՚ըրաւ այն բանտին որմերը քակտելու՝ Քօտորի ձախակողմեան ափունքը գրաւել ջանալով ։

Մէկ քանի ապստամբաց խնդրանօք ծովով Օչէմչիրի փոխադրուեցան կանոնաւոր զօրաց չորս վաշտեր եւ լեռնային թնդանօթներ, մինչեւ 2,000 Ափխազք նոյն տեղն հասան ծովեզրէն երթալով ։ Տաճկաց հրամանատարն Հիւսէյին փաշա՝ զօրքն (5,000 մարդ առ առաւելն) ցամաք ելնելուն պէս՝ ծովափին վրայ շարեց զանոնք ձախակողմէն մինչեւ այն ճահիճն, որ Կալիզկա վտակին բերանին մօտ կը ձեւանայ նոյն վտակին ջրերէն, եւ աջակողմէն մինչեւ աւազակոյտքն ։ Իւր դիմաց կը գտնուէր անտառախիտ բլրոց շարք մը, որոց ներսի կողմերուն զառիթափներն դժուարին են. այս բլուրներն լաւ դիրք կարէին լինել բայց տաճիկ զօրավարն նախամեծար համարեց Ռուսաց ձեռքը թողուլ զայնս, ուր սոքա զետեղուելով պատսպարուեցան ծառոց ներքեւ ։

Հիւսէյին փաշա ամսոյն 21 ին առաւօտուն՝ նախ իւր կռուելու դիտաւորութիւնն յայտնեց բոլոր չեփորներն մեծաձայն հնչեցնելով եւ դէպ ուղիղ խաղաց թշնամւոյն վրայ կանոնաւոր զօրաց երկու վաշտով եւ Ափխազներու մէկ հրոսակով. բայց այն ինչ իւր գծերէն դուրս ելած էր, սաստիկ յարձակում մը կրեց Ռուսաց կողմանէ ։ Կանոնաւոր զօրքն լաւ դէմ դրաւ, բայց Ափխազք խոյս տըւին թնդանօթ մը տեսնելով, եւ ռուսական ջոկատի մը կողմնակի դառոյթ տալուն վրայ՝ Արտուրաց վաշտ մը փախաւ իսկոյն լեռնականաց ետեւէն ։ Ասոր փոխարէն՝ Վիտինի զօրաց մէկ վաշտն արիաբար վարուեցաւ՝ յամր կերպիւ եւ կարգաւ նահանջ ընելով ։ Սակայն պիտի խորտակուէր այն, եթէ Ռուսք աւելի աշխոյժ եւ աւելի լաւ զինեալ լինէին. բայց սոքա բաղկացեալ էին ըստ մեծի

մասին Վրաստանի եւ Մնկրէլիի անկանոն զօրքէն, որ հին տեսակ գէշ հրացաններ միայն ունէին, մինչդեռ Տաճկաց ամէն-ջին գիծն եւս պիտի գրաւուէր, երբ յանկարծ Տօրասանէլի զօրաց մէկ մասն՝ որ Կոլիվկոյի բերանին մօտ լաւ կերպիւ զե-



ԶՕՐԱՎԱՐ ԶՕԹՈՎ. ՀՐԱՄԱՆԱՏԱՐ 4րդ ԳՆԴԻՆ

քը զինեալ են Շընայտըրի եւ Մարթինի Հէնրիի արագաձիգ հրացաններով։ Այսու ամենայնիւ՝ Տաճկաց պատնէշներուն վեր-տեղաւոր էր, խոտորնակի կրակ ըրաւ ռուսական խմբին քովէն եւ զայն կասեցուց։ Սակայն Տաճիկներն ծովափին վրայ դի-

զուած ըլլալով՝ սարսափելի կորուստ կը կրէին իրենց հակառակորդաց խոնարհահակ թնդանօթաց ռմբաձգութենէն. քիչ ժամանակէն սարսեցան, եւ յերկուս բաժնուելով ծովամոյն ըլլալու վտանգին մէջն էին։

Ափխազ ձիաւորք յանժամ դաոյթ տալով՝ Ռուսաց մէկ նոր յարձակումն յապաղեցին, որով Սօուքը-Շէվքէթ զրահաւորին հրամանատար Իսմայիլ պէյն ժամանակ ունեցաւ՝ իւր նաւն ծովեզրէն մէկ հազարամէթր հեռի յառաջուստ եւ յետուստ կապելու եւ իւր խոշոր թնդանօթաց ահագին ռմբերն Ռուսաց վրայ տեղալու։ Սակայն ցամաքին վրայ գտնուող Տաճկաց գնդին վիճակն դարձեալ վտանգաւոր էր։ Ռազմամթերք կը պակսէին, եւ որովհետեւ ծովեզրէն մինչեւ նաւն եղած անջրպետին մէջ գնտակներու տարափ մը կը տեղար, յոյս չկար սնամփուշտ բերել տալու ինչպէս նաեւ անդանօր ապաստանելու։ Մօտալուտ էր ձախորդութիւնն երբ յանկարծ տեսարանին վրայ երեւեցան Մահմուտիէ աւագ նաւն ու Շահղէրն, որք՝ գլխաւոր հրամանատար Ցագըը փաշան, արագ զօրաց մէկ գումարտակ եւ երկու թնդանօթ կը բերէին. սակաւիկ մի յետոյ հասաւ թնդանօթակիր մակոյկ մը, որոյ 24 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող թնդանօթն վանեց Ռուսաց զօրքն իրենց գրաւած տեղերէն եւ հնարաւոր ըրաւ Տաճիկ զօրաց ցամաք ելնելն։ Ռուսք այս նոր զօրութիւնը տեսնելով ետ քաշուեցան՝ բայց հանդարտօրէն եւ առանց աճապարելու։ Նոցա մեկնելէն յետոյ՝ Տաճիկք բլուրները գրաւեցին եւ պատնէշներ կանգնեցին անդ։

Այս յաջողութեան վրայ Տաճկաց գործը կրկին յառաջ չգնաց, քիչ մ'աւելի տեղւոյ կը տիրէին, բայց դարձեալ առաջուան պէս պաշարեալ էին։ Երբ Ռուսք Պալքաններն անցնելով Կոստանդնուպոլսոյ դէմ սպառնացան, օսմանեան կառավարութիւնն հուսկ ապա որոշեց այն զինուորներն ետ բերել տալ, որք պարապ տեղը կը թօշնէին մնասակար տեղւոյ մը մէջ, եւ Հօպարթ՝ իւր թշնամւոյն՝ Րէտիֆ փաշայի անկմանէն յետոյ, վերջապէս հրամանատարութիւն մը ստանձնելով՝ 20 փոխադրութեան նաւերով ղրկուեցաւ այն տեղի զօրքն Եւրոպա բերելու համար։

Այն Ափխազներն՝ որք Տաճկաց աջակից գտնուած էին, խնդրեցին զօրաց հետ մեկնիլ. եւ նոցա այս խնդիրքն ընդունուեցաւ մարդասիրութեամբ, որպէս զի զերծ մնան իրենց վրայ գալիք պատուհասէն։ Կ'ըսուի թէ 40 կամ 50 հազար մարդիկ գաղթեցին, եւ 1864ի համբաւաւոր ելից կրկնութիւնն եղաւ։ Ոմանք Եւրոպա եկան, բայց մեծ մասն Տրապիզոն ելաւ, ուրկէ բովանդակ Փոքր Ասիա ցրուեցան։ Օգոստոս ամսոյ մէջ Ալխազով զօրավարն հարաւային կողմէն խաղալով եւ Շէլքօվնիկօվ գումապետն հիւսիսային կողմէն մեկնելով՝ անարգել յառաջեցին դէպ ի Սօխում-գալէ թափուր ծովափանց վրայէն։ Այսպէս վերջացաւ այն արշաւանքն որ Կովկասու մէջ՝ապստամբութեան հուր պիտի արծարծէր. սակայն պտուղ մը չբերաւ, ինչպէս լաւ տեղեկութիւն ունեցող եւ գիտակ անձինք նախատեսած էին։

# Գլուխ Քսանեւերրորդ

## ԱՌԱՋԻՆ ԵՒ ԵՐԿՐՈՐԴ ՃԱԿԱՏԱՄԱՐՏՔ ՓԼԷՎՆԱՅԻ

### ՅՈՒԼԻՍԻ 21ԻՆ ՊՈՒԼՂԱՐԻՈՅ ԿԱՑՈՒԹԻՒՆՆ

Ինչ որ է յունիս 21ի թուականն Ասիոյ մէջ մղեալ մարտին համար, նոյնն է յուլիս 20ի թուականն Եւրոպայի կողմը մղեալ մարտին համար։ Այս թուականը՝ Նիքօլա մեծ դքսին զօրաց մինչեւ ցայնժամ դիւրաւ ստացած յաջողութեանց աւարտն ցոյց կուտայ։ Տաճիկներն հուսկ ուրեմն դիմադրութիւն կ՚ընեն, բաղդն իրենց կողմը կ՚անցնի եւ ռուսական սպայակոյտին գործած սխալներն եւ այն երկար ժամանակէ ի վեր ցոյց տրուած վտանգներն՝ որոց ենթակայ ըրած էր իւր բանակն, յայնժամ զգալի կը լինին։

Յայտնի է թէ 1870—71ի փառաւոր յաղթութեանց վրայ ռուս սպայից մէջ ամենաասաստիկ հիացումն յառաջ եկած էր գերմանական ռազմագիտութեան մասին։ Պատերազմի Նախարարն Միլիութին՝ որ մինչեւ այն ժամանակ գաղիական դրութեան հաստատամիտ կուսակից էր, փութաց բանակն ըստ Գերմանացւոց վերակազմելու եւ զօրավարք տոգորուեցան կարծեցեալ գերմանական ռազմագիտութեամբ։ Այս պատերազմին մէջ յայտնի կը լինի նոցա գործելու եղանակին նմանութիւնն։ Եթէ ոմանց այնքան բարեյաջող եղած բանն՝ միւսներուն համար չաջող եղած է, պատճառն այն է որ Ռուսաց երկու ինչ կը պակսէր, զոր հաշուի առած չեն, այսինքն՝ այնպիսի կազմակերպութիւն մը՝ որով կարելի լինէր իրենց միահաղոյն դումարել զօրաց սարսափելի բազմութիւն (ինչպէս 600,000 մարդ 1870ին) եւ այնպիսի կռուատեղ մը՝ որ Գերմանացւոց գործողութեանց ասպարէզ եղող տեղեաց նմանի։ Ահագին ամբոխներով կարելի է բերդաքաղաքները պատել, բանակին երկու կողմանքը պատըսպարել եւ դարձեալ բանակագունդ մ՚ունենալ դէպ յառաջ խաղալու համար։ Միով բանիւ ընել ինչ որ Ռուսք փորձեցին։ Եթէ գաղիական երկրին պէս կըռուատեղ մը լինի՝ ուր երկաթուղի չգըտնուած տեղերն լաւ ճանապարհներ կան, դիւրին է պարենաւորիլ եւ ի հարկին՝ երկրին բերքն կարէ երկար ժամանակ սնուցանել արշաւող բանակն։

Յայտնի է որ հինգ եւ կէս բանակագունդք միայն Դանուբէն անցած էին Զիշթօվի մօտ. իւրաքանչիւր գունդն 25,000 մարտիկներէ բաղկացեալ համարելով՝ ընդ ամենն 140,000 մարդ կը լինի. այսչափով Ռուսք շատ հեռի էին այն թուական առաւելութիւնն ունենալէ, որ անհրաժեշտ պիտոյ էր՝ իրենց դիտաւորութեանց իրագործութեանն համար։ Արդարեւ Տաճիկներն սահական դաւառաց մէջ մարդ չթողլով՝ գրեթէ 40,000 հոգի գումարած էին Ռուսճուգի մօտ՝ Ահմէտ Էյուպ փաշայի [1] հրամանատարութեան ներքեւ, 60,000 հոգի Շումնուի մօտ՝ Մէհէմմէտ Ալի փաշայի հրամանաց ներքեւ. 45,000 հոգի յայսկոյս Պալքանաց՝ Սիւլէյման փաշայի առաջնորդութեան ներքեւ, եւ 50 կամ 60 հազար հոգի Փլէվնայի մօտ կամ Փլէվնայի ճանապարհին վրայ՝ Օսման փաշայի գլխաւորութեամբ։ Իրօք այսչափ զօրաց մէկ մասն բերդաքաղաքաց մէջ ծառայելու համար

---

[1] Սորա տեղ անցաւ Րէուֆ փաշա յուլիս ամսոյ վերջերն։

անխաղաղ մնալու սովորած էր , սակայն Տաճկաց զօրավարք դարձեալ կրցին գրեթէ 150,000 հոգի ճակատել :

Նիքօլա մեծ դքսին գործած բոլոր սխալներն յառաջ կուգային այս կացութեան անգէտ ըլլալէն : Տաճիկներն խորտակելու մասին ապահով ըլլալով եւ առաջին անգամ դիւրաւ յաջողութիւններ ձեռք բերելուն վրայ այս մասին աւելի համոզուելով՝ զանց ըրաւ հաղորդակցութեան միջոցներ հաստատել ըստ բաւականի գործող բանակին եւ համբարանոցներուն մէջ տեղ : Երկար ժամանակ բաւական համարեց Զիմնիցայի կամուրջն իբրեւ հաղորդակցութիւն եւ նահանջելու գիծ : Նոյն պատճառաւ Պուլղարիոյ մէջ դիմադրաւութեան մասին յոյժ անձուկ խորհուրդ մ'ունենալով գործողութեանց : Դարձեալ նոյն պատճառաւ բոլոր պատահականութեանց դէմ դնել կարենալուն վրայ աներկբայ ըլլալով՝ իւր զօրաց մէկ մասն յառաջ վարեց յայնկոյս Պալքանաց , բանակը ցրուեց այնպիսի գծի մը վրայ՝ որ իւր ձեռքին տակ գտնուած զօրաց թուոյն անհամեմատ էր յոյժ , եւ երկու կողմանքն ապահովելու նախազգուշութիւնը չըրաւ : Վերջապէս չկարաց հասկանալ թէ Օսման փաշա բանակ մը կազմած էր եւ չմտածեց որ Սօֆիայէն , Նիշէն եւ Վիտինէն զօրք կարէր գալ եւ իւր աջ կողմն դէմ սպառնալ:

Ահաւասիկ հետեւեալն էր ռուսական բանակին կացութիւնն յուլիսի 20ին . 12րդ եւ 13րդ գնդերն Լօմի գիծը կը գրաւէին , 11րդ գունդն ճանապարհ ելած էր սոցա զօրավիգ ըլլալու համար , 4րդ գնդին կէսն տակաւին Զիշթօվի շրջակայքը կը գտնուէր , 9րդ գունդը Նիկոպօլսոյ մօտ էր , 8րդ գունդն Պալքաններէն անցնելու համար յառաջ կը խաղար , Կուրքօ զօրավարին գունդն այս լեռներն անցած էր : Այս բանակագունդք՝ որ 200 հազարամէթր երկայնութեամբ ուղղանկիւն քառանկեան մը վրայ տարածուած էին , իրարու հետ մէկ պարանոցի միջոցաւ կցորդութիւն ունէին՝ որոյ լայնութիւնն հազիւ 60 հազարամէթր էր . եւ կը հաղորդակցէին երկու կամ երեք ճանապարհներով՝ որք հազիւ այս անուան արժանի էին : Ամեն կողմանէ կարելի էր գործողութեանց այն գիծն հարուածել . վերջին աստիճան դիւրաբեկ էր այն . Եւ այսքան անխոհեմ տարածման մ'օրինակն պատմութեան մէջ գտնել անհնար է : Մէհէմմէտ Ալիի եւ Օսմանի միահաղոյն շարժմունքն կարելի էր այն պարանոցը կամ նեղ տեղը գրաւել եւ ռուսական բանակն յերկուս բաժանելով ի կորուստ մատնել . Պալքանաց մէջ դիմադրաւող զօրաց եւ ոչ մին պիտի ազատէր, եւ մնացեալ մասն յանկարծական ձեռնարկութեան մը դէմ անապահով կամրջէ մը զատ նահանջելու գիծ չունենալով՝ մեծ վտանգի մէջ պիտի անկանէր :

## ԱՌԱՋԻՆ ԿՌԻՒ ՓԼԷՎՆԱՅԻ

Այն ընդարձակ սարահարթն՝ որ Պալքանաց ստորոտէն սկսեալ կը տարածուի մինչեւ Դանուբի աջակողմեան ափունքն , ունի իւր մէջէն անցնող այլեւայլ գետակներ՝ ինչպէս արդէն առիթ եղած է ըսելու , որք հարաւակողման լեռնային կրճից մէջէն բղխելով կը հոսին դէպ ի մեծ գետն՝ ուր կը թափին ի հիւսիս : Զիշթօվէն դէպ յարեւմուտս երթալու ժամանակ՝ առաջին գետակն է Օսմա, որ Դանուբի մէջ կը թափի Նիկոպօլսէն վար փոքր ինչ հեռաւորութեամբ , եւ սահման կը լինի այն կեդրոնական սարահարթին՝ ուրկէ ռուսական բանակին մեծ մասն դէպ ի Պալքանները կը խաղար : Օսմա այն առաջին պաշտպանողական գիծը կը կազմէ՝ որոյ վրայ տաճկական բանակը կարող էր դիրք գրաւել արեւմտեան Պուլղարիան պաշտպանելու համար : Դէպ յարեւմուտս երթալով՝ երկրորդ վտակն է Վիտ, որ Օսմայի պէս Պալքաններէն կ'իջնէ Սօֆիայի մօտակայ

լեռներէն ելնելով, բաւական ոլորտապըտոյտ հոսանք ունի եւ կը թափի Դանուբի մէջ Նիկոպոլսէն վեր ։ Վիտ՝ արեւմըտեան Պուլղարիոյ երկրորդ պաշտպանողական գիծը կը ձեւացնէ, զոր կարելի է Օսմայէն աւելի դիւրաւ պաշտպանել ։ Դանուբի եւ Վիտի գետախառնունքէն 26 հազարամէթր հեռի՝ Վիտի մօտ եւ Կրվիցա անուն վտակի մ'եզերաց վրայ կը գտնուի փոքրիկ Փլեւնա քաղաքն.

Սոյն կէտն ճանապարհակիցք մ'է, ուր կը միանան 1° Նիկոպոլիս տանող ուղին (36 հազարամէթր), 2° Պիէլայէն անցնելով Ռուսճուգ հասնող ուղին (180 հազարամէթր), 3° Թէլիշէն եւ Օրխանիէէն անցնելով Սօֆիա տանող ճանապարհն (170 հազարամէթր), 4° Լօվչայի կամ Լօֆճայի, Թրօյանի եւ Քարլօվօյի վրայէն մինչեւ Ֆիլիպէ ձգուող ուղին (150 հազարամէթր) ։ Քաղաքն առանց բերդ ունենալու դիւրաւ պաշտպանելի է, եւ երբ Քրիւտնէր զօրավարն հեշտիւ ձեռք բերուած յաղթութիւն մը կը վայելէր Նիկոպոլսոյ մէջ, լուր առաւ որ Օսման փաշա հապճեպով Վիտինէն վազած՝ բայց Նիկոպոլիսը պաշտպանելու համար շատ ուշ հասած լինելով, Փլեւնայի լաւ դիրքը գրաւած էր եւ ամրութիւններ կը կանգնէր ։

Խոհեմութիւնը կը պահանջէր որ Քրիւտնէր զօրավարն 9րդ բանակագնդին խումբերն միահաղոյն յառաջ վարէր, մին Ջիշթօվէն Նիկոպոլիս եւ միւսն՝ Փլեւնա տանող երկու ճանապարհներէն, այնպէս որ Նիկոպոլիսը գրաւելու միջոցին՝ Ռուսք կարենային Վիտի գիծն անցնիլ Փլեւնայէն ։ Քանի որ Տաճիկներն Փլեւնա գտնուէին, 9րդ գնդին կացութիւնն յոյժ վտանգաւոր կը լինէր Նիկոպոլսոյ մէջ. Տաճիկք կարէին անոր միւս կողմն անցնիլ, զայն շրջապատել եւ անջատել Ջիշթօվի զօրանոցէն եւ ռուսական բանակին ստուար մասէն ։ Քրիւտնէր զօրավարն գործած սխալն հասկանալով եւ ուզելով դարման մ'ընել անմիջապէս, յուլիսի 18ին Շիլտէր-Շուլտնէր փոխ-զօրավարին կը պատուիրէր Պրէսլիանիցայի ճանապարհաւ Փլեւնայի վրայ խաղալ՝ հետեւակազօրաց 5րդ հատուածին 1ին սահը, թնդանօթաձիգ զօրաց 5րդ սահին 4 թնդանօթաշարերն եւ Տօնսքի խազախաց 9րդ գումարտակն հետ առնլով, եւ Փլեւնա քաղաքը գրաւել զօրավիգ ունենալով իրեն .

1° Քօսթրօմայի հետեւակազօրաց 19րդ գումարտակն, որ թնդանօթաձիգ զօրաց 31րդ սահին 5րդ թնդանօթաշարովն եւ Քուպանի խազախաց 2րդ գումարտակին 2 դասերովն հանդերձ արդէն Փլեւնայէն Պիէլա տանող ճանապարհին վրայ կը գըտնուէր (երկու վաշտ, երկու հեծելագաս, եւ ութ թնդանօթ Փօրատին գիւղին բարձրաւանդակին վրայ, եւ մէկ վաշտ Պուլկարենիի մէջ ուր այլք եւ մէկ շարժուն սայլախումբ եւս (փարք) կը գըտնուէին).

2° Կովկասեան խազախաց սահն (10 հեծելագաս եւ 6 թնդանօթ), որ նոյնպէս Պուլկարէնիի մէջ էր ։

Քրիւտնէր զօրավարն պատեհ ժամուն Փլեւնան գրաւելու անհոգ գտնուելէն զատ՝ նոր սխալ մ'եւս կը գործէր՝ անբաւական թուով զօրաց յարձակումն ընել տալով ։ Խազախաց յառի կերպիւ ըրած մէկ քննութիւնն բաւական համարեց, որք եկան իրեն իմաց տուին թէ քաղաքն սակաւաթիւ զօրօք գրաւեալ էր, եւ Ռուսք այսպէս յիմարաբար հնգապատիկ առաւել զօրաց հետ ընդհարելու ելան՝ որք յառաջագոյն ամրացեալ դիրք գրաւած էին ։

Աւելի զէշն այն էր որ Շիլտէր-Շուլտնէր զօրավարն յարձակումն ըրաւ զօրքն երկու խումբի բաժնելով, որոց մէջ տեղ մեծ անջրպետ կը գտնուէր, եւ այսու չկարացին սոքա միմեանց օգնել փոխադարձաբար ։ Զօրավարն ճանապարհ ելած էր յուլիսի 18ին՝ հրաման ընելով Քօսթրօմա-

յի գումարտակին եւ Կովկասեան Խաղախաց սահին որ հարաւային արեւելեան կողմէն յարձակէին, առաջինն՝ Չկալէվիցէի վրայ խաղալով, եւ երկրորդն՝ Թուչանիցայի վրայ։ Ինքն հիւսիսային կողմէն պիտի յարձակէր Նիկոպոլէն հետ բերած զօրօքն։

Շիլտէր-Շուլտնէր զօրավարն ամսոյն 18էն 19ը լուսնալու գիշերը Չիւքօվիցայի մօտ բացօթեայ լինելէ յետոյ՝ յառաջ խաղաց, եւ կէս օրն 2 ժամ անցած էր, երբ հասաւ Փլէվնայի առջեւ։ Քաղաքն յոյժ ամուր կերպիւ գրաւեալ տեսաւ եւ թնդանօթի բռնել տուաւ. բայց գիշերային մութը կոխելուն պէս՝ կրակ ընելն դադրեցուց։

Տօնսքի խաղախաց 9րդ գումարտակն՝ որ անջատ կը խաղար աջակողմէն, կանգառաւ ի Ռիալնօ գիւղն գիշերելու համար, եւ անդանօր ապուր կը պատրաստէր՝ երբ յանկարծ թնդանօթաց ձայնը լսեց կէս օրէն 3 ժամ յետոյ. այն ժամանակ իւր սաներն կործեց եւ ձիոց ընդոստ գնացիւք խաղաց դէպ ի Փլէվնա։ Քաղաքին 4 հազարամէթր տեղ մնացած էր, երբ տաճիկ հետեւակազօրաց փոքր ջոկատ մը նշմարեց. Նակիային գումարտեան կէս հեծելադասի մը մարդոցն հրաման ըրաւ ձիերէն իջնել, եւ հրացանի կռիւ մը սկսաւ, որ մինչեւ գիշեր տեւեց։ Գումարտակն քաղաքին դիմաց գրաւած տեղւոյն վրայ գիշերեց երկու հեծելադաս իբրեւ առաջակամարտ սփռելով։

Քօսթրօմայի գումարտակն եւս (3 վաշտ, 2 հեծելադաս եւ 8 թնդանօթ) իւր առած հրամանաց համեմատ՝ այն օրն Չկալէվիցէ գիւղը գրաւեց եւ Քուպանի խաղախաց երկու հեծելադաս ղրկեց դէպ ի Փլէվնա զննութիւն մ՚ընելու համար, Կրվիցա գիւղին ետեւ այս հեծելադասերն Տաճկաց մէկ պահնիչային բանակատեղը տեսան. գրեթէ երեք հեծելադաս եւ մէկ վաշտ դուրս ելան անկէ երկու թնդանօթով հանդերձ՝ Խաղախաց դէմ։ Սոքա ետ դարձան եւ Տաճկաց հեծելազօրն հետամուտ եղաւ մինչեւ իրենց գիշերելու տեղն գրեթէ։ Բայց Տաճիկներն եւս թնդանօթաց կրակին մօտ հասնելնուն պէս, ետ քաշուեցան եւ Խաղախներն հալածեցին զանոնք մինչեւ որ նոքա իրենց հետեւակազօրուն յետակողմն ապաստանեցան։

Ամսոյն 7ին երեկոյին՝ ռուսական զօրախումբք հետեւեալ կերպիւ զետեղեալ էին գիշերելու համար Փլէվնայի առջեւ.

Տօնսքի խաղախաց 9րդ գումարտակն աջակողմեան ծայրը կը գտնուէր՝ քաղաքին հիւսիսային կողմն.

Հետեւակազօրաց 5րդ հատուածին առաջին սահն չորս թնդանօթաշարով (6 վաշտ եւ 32 թնդանօթ) դէպ ի ձախ կը գտնուէր՝ քաղաքին հիւսիսային եւ արեւելեան հիւսիսային կողմերն։

Քօսթրօմայի գումարտակն՝ թնդանօթաձիգ զօրաց 31րդ սահին 5րդ թնդանօթաշարովն հանդերձ եւ Քուպանի խաղախներն (3 վաշտ, 2 հեծելադաս եւ 8 թնդանօթ) հարաւային արեւելեան կողմն էին ի Չկալէվիցէ։

Կովկասեան սահն (10 հեծելադաս եւ 6 թնդանօթ) հարաւային կողմն էր ի Թուչէնիցա։

Շիլտէր զօրավարն հրաման ըրաւ հետեւեալ օրն ամսոյն 20ին Փլէվնայի վրայ յարձակելու, առաւօտեան 5րդ ժամուն թնդանօթ պարպելու սկսելով։

Օսման փաշա եւս թշնամւոյն կարգադրութիւնքը դիտելով՝ հետեւեալ օրն կռուելու կը պատրաստուէր։ Իւր վրայ եկող զօրաց սակաւաթիւ լինելուն վրայ զարմանալով եւ հասկանալով իսկոյն թէ իւր ձեռաց ներքեւ որչափ զօրք գտնուիլն Ռուսք չէին գիտեր, մտածեց որոգայթ լարել ընդդէմ նոցա, որով կը յուսար գրեթէ բնաջինջ ընել զանոնք։

Ամսոյն 20ին առաւօտեան չորրորդ ժամուն՝ յառաջապահ Խաղախք տեսան որ Տաճկաց զօրքն Փլէվնայի շուրջը գտնուած

բարձրաւանդակները կը գրաւէր ։ Թեթեւ առաջամարտ մ՚եղաւ աջակողմէն ։ Տաճկաց հետեւակազօրն յարձակողական շարժում մ՚ընել կեղծեց՝ բայց անզօր կերպիւ, եւ երկու կողմանք իրենց դիրքը պահեցին, մինչեւ որ Ռուսք վերջնապէս ետ քաշուեցան ։ Շիլտէր զօրավարն կեդրոնը կը գտնուէր ուրկէ պիտի լինէր գըլխաւոր յարձակումն ։ Թնդանօթաց երեք շարեր կռուին սկսան Տաճկաց երկու շարերուն հետ, որոց միոյն կրակն ռուս հետեւակազօրաց խմբին ճակատէն կը մտնէր եւ ետեւէն դուրս կ՚ելնէր գրեթէ. Հետեւակազօրաց 5րդ հատուածին առաջին սահն ճակատեցաւ ապա հետեւեալ կարգաւ.

Արխանկէլի գումարտակն Թնդանօթաց շարերուն երկու կողմերն դասակ դասակ բաժնուեցաւ երկու գծի վրայ. այսինքն թէ՝ Թնդանօթաց ձախակողմն կը գտնուէր մէկ վաշտ եւ աջակողմն երկու վաշտ.

Վօլօկտայի գումարտակն Արխանկէլի գումարտակին աջակողմն էր. սորա երկու վաշտերն ճակատեալ էին դասակ դասակ բաժնուելով երկու գծի վրայ, եւ երրորդը ի պահեստի կըսպասէր ։

Շիլտէր զօրավարն առաւօտեան ժամն հինգ եւ կէսին հրաման ըրաւ յառաջ խաղալու ։ Ռուս արձակամարտք Ռուսաց եւ Տաճկաց դրից մէջ տեղ գտնուած ձորակի մը մտեցան եւ կրակ ընել սկսան ։ Տաճկաց արձակամարտք՝ որ ձորակին միւս կողմն մացառներու մէջ զետեղեալ էին, անդրադարձութիւն ըրին սաստիկ կրակ մը թափելով ։ Բայց Վօլօկտայի գումարտակն եւ Արխանկէլի գումարտակին աջակողմեան ծայրը գտնուող դասակներն արագ արագ իջան, դիմացի զառիթափներէն վեր ելան հո՜ւրրա գոչելով, եւ վեցերորդ ժամուն Տաճկաց խումբն ընկճելով կը հալածէին ։ Արխանկէլի գումարտակին միւս դասակներն ետեւ մնացին, դէպ ի ձախակողմն, թուրք զօրաց կողմանէ արգիլուելով՝ որոց թիւն կ՚առաւելուր հետզհետէ նոցա դէմ ։ Վասն որոյ Վօլօկտայի գումարտակն եւ Արխանկէլի գումարտակին դասակներն շատ յառաջամուխ եղան ։ Այս զօրաց մէկ մասն մինչեւ քաղաքը մտաւ՝ Տաճիկներն հալածելու եռանդէն յափշտակեալ՝ որ շարունակ տեղի կուտար իրենց առջեւ ։

Ահա անդանօր կըսպասէին Տաճիկներն ։ Ռուսք հազիւ թէ Նիկոպօլսոյ ճանապարհին շարունակութիւնն եղող փողոցին մէջ մտած էին, յանկարծ հրացաններու շողիւնը կը լսուէր բոլոր պատուհաններէն, սարսափելի կրակ մը կ՚ըսկսի թափիլ եւ մինչեւ այն ժամանակ ղօղեալ հետեւակազօրաց բազմամբոխ խմբեր երեւան կուգան ամեն կողմանէ, եւ այն սակաւաձեռն մարդոց վրայ կը խուժեն ճչելով, որք այնքան յանդգնութեամբ յառաջամուխ եղեր էին ։ Նոյն պահուն Ռուսք մեծ կորուստ կը կրեն, վասն զի իրենցմէ հարիւրներ գետինն կ՚անկանէին եւ կը սկսին յամր կերպիւ ետ քաշուիլ՝ տասնապատիկ առաւել բազմաթիւ թշնամւոյ մը դէմ ճակատելով ։ Հարկ եղաւ վիրաւորեալոց մէկ մասն անդ թողուլ ։

Ամենէն առաջ զարնուածներուն մէջն Քնօռռինկ հատուածապետն ։ Արխանկէլի 17րդ գումարտակին հրամանատար Ռօզէնպաւմ գումապետն դնդակէ մը զարնուելէ եւ անկանելէ յետոյ՝ երկրորդ գնդակէ մ՚ալ վիրաւորուեցաւ եւ մեռաւ ։ Հազարէն աւելի մարդիկ կորան այս արիւնռուշտ կռուոյն մէջ ։

Թնդանօթաձիգ զօրաց 5րդ սահին հրամանատար Փօխիթօնով հատուածապետն՝ Վօլօկտայի եւ Արխանկէլի գումարտակներուն կացմնացքն ժողովեց եւ քաղաքէն դուրս հանեց. անդ դիւցազնաբար չորս ժամէն աւելի դիմացաւ՝ սպասելով որ Քօսթրօմայի գումարտակն օգնութեան հասնի ։

Այս գումարտակն՝ որ աւելի գէշ եղած էր, ինքնին մեծ պէտք ունէր օգնութեան ։ Քլայնհաւս գումապետն առա-

ւստեան երրորդ ժամուն քաղաքին արեւելեան կողմն Տանկաց դրից վրայ յարձակելու հրամանն առնալով՝ մէկէն սկսաւ ճշդիւ գործադրել զայն ։ Առաւօտեան հինգերորդ ժամուն գումարտակն յառաջ խաղաց . եւ իսկոյն ռումբ արձակուեցաւ իւր վրայ այն թնդանօթներէն՝ որ բարձրաւանդակաց վրայ զետեղեալ էին Կովլիցայի յետակողմն. (գիւղը խորափիտի մը մէջ շինուած է վտակի մը՝ քով) ։ Ցոյնժամ գումարտակն իւր թնդանօթներն զետեղեց , եւ երկու վաշտերն դասակ դասակ բաժնուեցան բազուկ ձեւացնելով ։ Կարճատեւ ռմբաձգութենէ յետոյ՝ Ռուսք յարձակումն ըրին եւ պատնէշներու երկու շարք գրաւեցին հետզհետէ ։

Տածիկներն ետ քաշուելով՝ պատնիշաց երրորդ շարքի մը մէջ խմբուեցան , եւ տարափելի կրակ մը տեղալ սկսան Ռուսաց դասակներուն վրայ՝ որք կը շարունակէին յառաջ խաղալ ։ Մէն մի քայլափոխ ընելնուն իրենց կարգերուն մէջ բաց տեղուանք կը մնային , ռմբարտակաց եւ գնտակաց տարափի մը ներքեւ մարդոց անկանելովն ։ Կրինցէվիչ , Պէլաքի եւ Ցէխանօվիչ հազարապետք հետզհետէ վիրաւորուեցան . այս վերջինն ձիէն անկանելով եւ մէկ քանի գնտակներէ զարնուած լինելով՝ նոյն օրը կենազրկուեցաւ ։ Գումարտակին հրամանատար Բլայնհաուս գումարտեան՝ որ աջ կողմը գնացած էր իւր զօրաց նոր յարձակումն ընել տալու եւ առաջնորդելու համար , գնտակէ մը զարնուելով անկաւ . քանի մը վայրկեան յետոյ՝ ռմբարտակի կտոր մը եկաւ իւր գըլխուն դիպեցաւ եւ զայն սպաննեց այն պահուն, երբ նորա վէրքը կը դարմանուէր ։ Նոյն միջոցին Շաթիլով երկրորդական փոխ-հարիւրապետն յառաջակայ դասակներուն կացմնացքն ժողովելով յառաջ խոյացաւ եւ պատնիշաց երրորդ շարքը գրաւեց . զայն պաշտպանող պաշը-պօզուգներն ձի հեծան եւ խոյս տուին ։

Բարձրագոյն սպայից մէջէն Քահրիխա եւ գումարտակին հրամանատարութիւնն ստանձնող Պարաշէվ հազարապետք միայն անկեալ չէին . դասակները վերակազմեցին եւ յառաջ վարեցին ծայրէ ի ծայր ։ Ցոյնժամ Տածիկներն իրենց բոլոր պատնէշներէն հեռանալով քաղաքն ապաստանեցան , եւ պարտիզաց եւ արտաքին շինուածոց մէջ զետեղեցան , ուրկէ շարունակեցին Ռուսաց վրայ հրացանով սաստիկ կրակ մ՚ընել, մինչդեռ իրենց թընդանօթներն առաւել բուռն կերպիւ հրոյ տարափ մը կը տեղային այն պատնիշաց գծին վրայ , զորս Քօսթրօմայի գումարտակը գրաւած էր ։ Թնդանօթաձիգ զօրաց 31րդ սահին 5րդ թնդանօթաշարն տաճիկ հետեւակազօրաց կրակին մօտ տարուեցաւ եւ քաղաքին մէջ գտնուող Տանկաց վրայ ռմբաձգութիւն մը սկսաւ , մինչդեռ թնդանօթաց դէմ եւս մրցումն կը լինէր ։

Սակայն անկարելի էր գրաւեալ դիրքը պահել ։ Գումարտակն սարսափելի կորուստ կրած էր մարդու՝ մանաւանդ ըսպայի . պահեստի զօրք չէր մնացած . փամփուշտք եւ թնդանօթի ռազմամթերք գրեթէ սպառեալ էին , եւ անհնար էր բերել տալ , վասն զի համբարք Գուլկարէնիի մէջ մնացած էին ։ Միւս կողմանէ հակառակորդաց թիւն հետզհետէ կ՚առաւելոյր ։ Արձակամարտից թանձրախուռն շարք դուրս ելան Փլէվնայէն , որոց ետեւէն նաեւ զօրաց բազմամբոխ խմբեր , եւ յառաջ քալեցին ։ Պարաշէվ հազարապետն այն ժամանակ հրաման տուաւ ետ քաշուելու ։ Առաւօտեան գրեթէ ժամն իննն էր ։ Կովկասեան խազախաց սոտնն՝ ի սկզբան կռուոյն՝ ձախակողմեան ծայրը կը գտնուէր Ռատիշէվօյի մօտ ։ Տեղեաց հանգամանքն անկարելի կ՚ընէին ձիով մարտնչիլ ։ Թութօլմին գումարտեան ջանաց Տանկաց դէմ կողմնակի կրակ ընել ձիոց վրայ բարձեալ լեռնային թնդանօթաց շարումն , բայց ռումբք հեռաւորութեան



ՓԼԵՎՆԱՑԻ ՓՈՂՈՑՆԵՐՈՒՆ ՄԷՋ ՅԱՆԿԱՐԾ ՍԱՐՍԱՓԵԼԻ ԿՐԱԿ ՄԸ ԿԸՍԿՍԻ ԹԱՓԻԼ ԱՐԽԱՆԿԵԼԻ ԳՈՒՄԱՐՏԱԿԻՆ ՎՐԱՅ

մինչեւ կէսն անգամ չէին հասներ ։ Յայնժամ դէպ յաջակողմն գնաց, Ռատիչէվօյի եւ Կրվիցայի միջեւ․ բայց երբ առաւօտեան ինններորդ ժամէն յետոյ այն կէտն հասաւ, տեսաւ որ Քօսթրօմայի գումարտակն կը նահանջէր ։ Խազախաց սահն այս գումարտակին ձախակողմն եկաւ եւ նորա հետ նախ դէպ ի Չիպլէվիցէ քաշուեցաւ եւ յետոյ դէպ ի Գուլկարէնի ։

Տաճիկներն Ռուսաց հետամուտ եղան մինչեւ այն պատնիշաց առաջին գիծն՝ զոր թողած էին առաջ․ կանգ առին անդ եւ նահանջող գումարտակին վրայ կրակ տեղացին իրենց թնդանօթներէն ։ Մինչեւ առաւօտեան ժամն իննեւկէսն՝ Շիլտէր զօրավարն տեղեակ չէր ձախակողմն եղած բաներուն․ միայն թնդանօթաց ձայնը կը լսէր ։ Ժամն իննեւկէսին տեղեկագիր մ՚ընդունեցաւ, որով իմաց կը տրուէր իրեն թէ Քօսթրօմայի գումարտակին հրամանատարն մեռեր էր եւ գումարտակն կասեր էր ։ Շիլտէր զօրավարն հասկանալով որ ձախակողման զօրքն պիտի ստիպուէին ետ քաշուիլ, եւ պահեստի զօրք եւս չունենալով՝ իւր հատուածին սպայակուտի գլուխ Փօփով գումապետը ղրկեց, որ երթայ աջակողմեան զօրաց կացութիւնը զննէ ։

Շիլտէր զօրապետն ստուգեց այս կերպիւ որ զօրքն պարտասեալ էր եւ սարսափելի կորուստ կար մարդոց՝ մանաւանդ սպայից, որոց երկուերրորդն անկեալ էին, եւ տեսնելով որ Տաճկաց շարունակ օգնութեան զօրք կը հասնէր, եւ նոքա կըսկսէին իրենց աջակողմեան խումբն յառաջ վարել Ռուսաց նահանջելու գծին դէմ, առաւօտեան ժամն տասնեւմէկուկէսին հրաման ըրաւ զօրաց ետ քաշուելու, եւ Տօնսքի խազախաց 9րդ գումարտակին պատուիրեց որ այս նահանջը պաշտպանէ ։ Եթէ աւելի հեծելազօր ունեցող եւ մանաւանդ աւելի յանդուգն հակառակորդի մը դէմ գտնուէր, յոյժ տագնապալից պիտի լինէր իւր կացութիւնն ։ Պահեստի զօրք չունէր եւ անխոնջ զինուոր մը չկար ։ Օսման փաշա ա եւ իցէ ցոյց չըրաւ նորա նահանջն դժուարացնելու համար, զոր դիւրին էր խառն ի խուռն փախըստեան մը փոխել ։ Նիկոպօլսէն եկող Կալիցի 20րդ գումարտակն եւս յարմար ժամանակին հասաւ վերջապահ լինելու եւ սահին նահանջն պաշտպանելու համար ։

Բոլոր զօրքն Տաճկաց հարուածներէն զերծ կը գտնուէր երեկոյեան վեցերորդ ժամուն ։ Տօնսքի խազախաց 9րդ գումարտակին հետ 5րդ հատուածին առաջին սահն եւ Կալիցի գումարտակն գիշերեցին ի Պրէսլիանիցա ։ Քօսթրօմայի գումարտակն եւ Կովկասեան խազախաց սահն Գուլկարէնի քաշուեցան ։

Զօրաց նահանջելու միջոցին 1ին սահն ճակատատեղւոյն վրայ թողուց փամփուշտի 17 արկղ․ այս արկղերէն մէկ քանիներն ումբարտակներէն խորտակուած էին եւ մնացեալներն անկարելի էր տանել ձիերն սպաննուած լինելուն ։ Քօսթրօմայի գումարտակն կռուէն առաջ իւր մախաղներն վար դրած էր, եւ որովհետեւ առաւօտուն գնացած ճանապարհէն չդառնալով ուրիշ ճանապարհէ մը ետ քաշուեցաւ, ուստի մախաղներն ճանապարհին վրայ մնացին ։

Ռուսաց պաշտօնական տեղեկագիրք գործուած սխալներն կը խոստովանին եւ կը հաւաստեն թէ Տաճիկներն առ նուազն 40 վաշտ ունէին անդ եւ զօրաւոր հրազինութիւն մը, եւ թէ դնդընկէց գործիներուն 15 հատն Քռուփի մնայուն թնդանօթներ էին ։ Այնչափ հզօրագոյն թըշնամւոյ մը կողմանէ Ռուսաց կրած կորուստն տարապայման էր․ զրեթէ 6,000 մարդ կռուող կար եւ կորուսելոց թիւը կը հասնէր 74 սպայի եւ 2,771 զինուորի ։ Այս թուանշաններն հրամանատարաց անփութութիւնը կը յայտնեն եւ միանգամայն զօրաց քաջութիւնն ։ Ստուգիւ աշխարհի վրայ քիչ տեսակ զինուորներ կան, որ կարենան անդրդուելի մնալ այսպիսի զարհուրելի կոտորածի մը մէջ ։

## ԱՆՑՔ ՌՈՒՄԱՆԱԿԱՆ ԲԱՆԱԿԻՆ ԸՆԴ ԴԱՆՈՒԲ

Յուլիս 20ի պարտութեան վրայ ամենուն համար ակներեւ եղաւ թէ որքան վտանգաւոր էր ռուսական բանակին կացութիւնն ։ Օսման փաշա կարէր կամ ուղղակի Զիշթօվի վրայ խաղալ կամ Վիտի հովտէն իջնելով Նիկոպոլիսն առնուլ, եւ որեւիցէ եղանակաւ սպառնալ Նիքօլա մեծ դքսին հաղորդակցութեանց դէմ ։ Այս շարժմանց դիմադրելու համար՝ Քրիւտնէր զօրապետն մէկ անվթար եւ մէկ կիսովին վթարեալ սահ միայն ունէր ։

Այս վտանգն կարեւոր հետեւութիւն մը յառաջ բերաւ, որոյ կարեւորութիւնն սակայն աւելի քաղաքական էր քան թէ զինուորական ։ Մինչեւ ցայնժամ Ռուսք ամեն տեսակ արգելք յարուցած էին ռումանական բանակին կռուոյ մէջ մտնելուն դէմ, թէ Աւստրիոյ դիւրազգածութեան չդպչելու եւ թէ այնպիսի տկար դաշնակցի մը գործակցութեան պէտք չունենալը պատուոյ խնդիր մը համարելնուն համար. Փլէվնայի կռուէն յետոյ՝ մեծ ուրախութեամբ կարացին խնդրել որ այն բանակն Պուլղարիա մտնէ ։ Քրիւտնէր զօրապետն որոշած էր իւր ձեռաց ներքեւ ունեցած բոլոր զօրօքն Պուլկարէնի երթալ, որպէս զի Շիլտէր-Շուլտնէրի սահն ազատէ եւ Զիշթօվի ճանապարհն պահպանէ. բայց այս բանն ընելու համար հարկ էր Նիկոպոլիսը թափուր թողուլ, եւ այն ժամանակ մտածուեցաւ ռուսական պահակագնդին տեղ ռումանիական 4րդ հատուածը կացուցանել, որ Իզլաւի մէջ կըսպասէր Նիքօլա մեծ դքսին կամք ընելուն ։ Ռումանիացի սպայք եռանդեամբ կը փափաքէին պատերազմի մասնակցիլ, վասն որոյ նոյն հատուածին հրամանատար Մանու զօրավարն պէտք եղած բոլոր պատրաստութիւնները տեսած էր երկար ժամանակէ ի վեր ։ Դանուբ գետին մէջ խարըսխեալ էր շոգենաւ մը, որ կարէր 200 մարդ առնուլ ։ Ասկէ զատ զօրավարն իւր տրամադրութեան ներքեւ ունէր մէկ քանի լաստեր որովք Ռուսաց զօրքն Զիշթօվ անցեր էր, ինչպէս նաեւ մէկ քանի նաւակներ ։ Յուլիսի 25 էն 26 լուսնալու գիշերն առաւօտեան երրորդ ժամուն՝ (կէս գիշերէն 3 ժամ յետոյ) Իզլաւի մէջ բանակեալ հետեւակազօրաց 5րդ գումարտակին ձայն տրուեցաւ, զինուորք զարթեան, կարգաւ շարուեցան եւ սկսան նաւ մտնել ։ Սպայք իրենց ուրախութենէն ինքզինքնին բռնելու անկարող էին եւ թրերնին կը ճօճէին ։ Ընդհակառակն՝ զօրքն աւելի հանդարտ էր ։ Զինուորական երաժշտաց խումբն դարափին վրայ շարուած՝ զուգից եւ քառից պարի եղանակներ կը նուագէր, մինչեւ որ ամբողջ գումարտակն անցաւ, եւ հուսկ յետոյ խումբն եւս նաւ մտաւ ։ Մանու զօրավարն եւ իւր սպայակոյտն փոքրիկ շոգենաւը մտան որ յամր յառաջիլ սկսաւ նաւճակներուն ընթացքին համեմատ ։

Գումարտակին հրամանատար Սաթրովան գումապետն Պուլղարաց երկրին վրայ ոտք դնելով հո՛-ըըռա գոչեց որոտաձայն ։ Բոլոր սպայք եւ զինուորք այն աղաղակը կրկնեցին միաբերան ։ Դարափին վրայ գրեթէ երկու դասակէ բաղկացեալ ռուսական ջոկատ մը կարգաւ շարուած էր ողջունելու համար ։ Ռուսական պահակագընդէն այսքան զօրք միայն մնացած էր. միւս մասն արդէն ճանապարհ ելած էր ճակատատեղւոյն վրայ երթալու համար ։ Երկու ազգաց զինուորականք զիրեար ողջունեցին պատուով. երկու կողմանէ դրօշակներն խոնարհեցան. Մանու զօրավարն եւ բերդաքաղաքին հրամանատար ռուս գումապետն միմեանց ձեռք սեղմեցին սիրով ։ Ապա գետին եզերքն մէկ մեծ կայմի մը վրայ ծածանող ռուսական դրօշն իջուցանելով՝ անոր տեղ պարզուեցաւ Ռումանիոյ եռագոյն դրօշն ։ Ռուսական ջոկատն կիսաբոլոր պտոյտ մ'ընելով՝ Փլէվնայի ճանապարհը բռնեց ։

Ռազմագիտական հետեւութիւն մ'եւս ունեցաւ յուլիս 20ի ճակատամարտէն։ Լօֆճա կամ Լօվչա քաղաքն Օսմա գետակին ձորոյն վերին մասին մէջ կառուցեալ է՝ Փլէվնայէն 35 հազարամէթր հեռի, նոյնչափ եւ Սէլվիէն, եւ Թրօյանէն 30 հազարամէթր հեռի։ Քաղաքն կը բաղկանայ երկու մասերէ, որոց մին է Տաճկաց բնակած քաղաքն որ Մուսթաֆա կ'ըսուի, 1,200 տուն կը պարունակէ եւ ձախակողմեան ափանց բարձրաւանդակներուն վրայ կառուցեալ է, եւ միւսն է Պուլղարաց բնակած մասն որ Տօլնի-քրայ կ'ըսուի, 800 տուն կը պարունակէ եւ ձորոյն մէջ կը տարածուի աջակողմեան ափին վրայ։ Այս երկու մասանց մէջ գէշ կամուրջ մը կայ, որոյ վրայէն կ'անցնի Սէլվի, Փլէվնա եւ Նիկոպօլիս տանող ճանապարհն։

Այս քաղաքին գրաւումն Ռուսաց ձախակողմն ապահով կը լինէր։ Սէլվիի ռուս զօրաց հրամանատար Սուպոթով զօրավարն ամսոյն 17ին դէպ ի Լօվչա զննութեան համար խումբ մը ղրկեր էր, Խազախաց յատուկ երկու թնդանօթներով հանդերձ։ Այս խումբն Սէլվիէն մէկ քանի հազարամէթր հեռի հանդիպեցաւ Չէրքէզներու, Պաշը-պօզուգներու եւ հետեւակազօրաց մէկ ջոկի, որ ընդ ամենն 1,500 հոգիէ բաղկացեալ էր։ Կռիւն յոյժ սաստիկ եղաւ, Տաճիկներն ընկճեցան եւ Խազախներն նիզակ ի ձեռին արիաբար կռուելէ յետոյ՝ Լօվչան գրաւեցին։ Քաղաքին մէջ բնակող Տաճիկներն խոյս տուին եւ քրիստոնեայք որ 3,000ի չափ կային, Ռուսաց դէմ երթալով՝ լաւ ընդունելութիւն ըրին։

Փլէվնայի պարտութենէն յետոյ՝ Սուպոթով զօրավարն Լօվչայի պահակադընգին կացութիւնն յոյժ վտանգաւոր համարելով, հրաման ըրաւ ետ քաշուելու, երբ Տաճիկներն ցոյց մ'ընեն։ Թուրքերն հասան այն տեղ յուլիսի 27ին ուրբաթ օրն։



## ԵՐԿՐՈՐԴ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ ՓԼԷՎՆԱՅԻ.— ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆՔ

Երբ Փլէվնայի արիւնառուշտ կռուոյն լուրն Նիքօլա մեծ դքսին զօրանիստն հասաւ ի Թռնօվա՝ անդ մեծ ցնծութիւն կը տիրէր Կուրքօ զօրավարին Պալքաններէն անցնելուն եւ ձեռք բերած յաջողութեանց վրայ։ Մեծ դուքսն 9րդ բանակագնդին կրած ձախորդութեանց որքան ծանրակշիռ լինելն հասկացաւ անմիջապէս։ Եթէ Տաճիկներն իրենց յաղթութեամբ ոգեւորեալ Նիկոպօլսոյ վրայ խաղային, կամ ուղղակի դէպ ի Զիշթօվ, արդեօք ռուսական բանակին համար վըտանգ չկա՞ր Դանուբի վրայ եղած գործողութեանց խարսխէն անջատուելու։ Եթէ քառանկեան տաճկական զօրախումբք Ցարէվիչի բանակն Ռուսճուգի առջեւ թողլով՝ դէպ յարեւմուտս յառաջ խաղային, մինչդեռ Օսման փաշա միւս կողմանէ իրենց մօտենար դէպ յարեւելս, ռուսական բանակին համար երկիւղ չկա՞ր Վիտ եւ Եանթրա գետակաց մէջ տեղ բռնուելու, ինչպէս գաղիական բանակն Սէտանի մէջ։

Ռուսական բանակին գլխաւոր հրամանատարն բան մը զանց չըրաւ՝ իւր սխալանաց պատճառաւ յառաջ եկած կացութիւնը բարւոքելու համար։ Հարկ էր անպատճառ բռնել այն բանակն, որ իւր գոյութիւնն յայտներ էր այնպիսի զօրաւոր կերպիւ։ Ռուսք Փլէվնան գրաւելով իրենց աջակողմը պիտի ապահովէին, ուր այնքան երկիւղ կար յայնժամ, եւ իրենց հաղորդակցութեան գծերն՝ ինչպէս նաեւ Դանուբի կամուրջներն աներկիւղ պիտի պահպանէին երկար ժամանակ։ Քաղաքին տիրելով՝ Օսման փաշայի պարտեալ եւ դէպ յարեւմուտս մղեալ գունդն անգործ ձգելու չափ կարող լինելուն վրայ հաւաստի էին, եւ իրենց բոլոր ջանքը քառանկեան բանակին դէմ թափելու ազատ պիտի լինէին նոքա. միանգամայն յայսկոյս Պալքանաց

Թունճայի հովտին մէջ յառաջող զօրաց թիւն առաւելուլ կարէին, այնպէս որ հնար պիտի լինէր նոցա առանց մեծ վտանգի յառաջ խաղալ դէպ յԱդրիանուպոլիս՝ իրենց դէմ ճակատ առ ճակատ ելնելիք զօրքէն զատ ուրիշ տեղէ մը վախ չունենալով, եւ իրենց գործողութեան գծից մասին աներկեւան լինելով։ Անտարակուսելի էր նաեւ որ Փլէվնայի անկման անհրաժեշտ հետեւանքը պիտի լինէր Լօվացի անկումն, ուր Տաճիկները չկարէին մնալ բազմագոյն զօրօք շրջապատեալ լինելով։

Յոյժ ուղիղ կերպիւ մտածեալ սոյն յատակագծին գործադրութեան փորձն եղաւ անյապաղ։ 11րդ գունդն Օսման-փազարի վրայ տանող Շախովսքոյ իշխանն հրաման ստացաւ իւր զօրաց մէկ մասն այն տեղ թողուլ եւ հապճեպով խաղալ յօգնութիւն Քրիւտնէր զօրավարին՝ հետեւակազօրաց 32րդ հատուածին 1ին սահն եւ հեծելազօրաց 11րդ հատուածին 1ին սահն հետ առնլով։ 4րդ գնդին 30րդ հատուածն Զիշթօվի կամրջաց վրայէն Դանուբն անցնելու համար կը յառաջէր. սմա եւս հրաման տրուեցաւ Փլէվնայի վրայ գնալ՝ փոխանակ Թռնօվայի զօրանիստն երթալու, եւ 9րդ գնդին ազդարարութիւն եղաւ որ դիմանայ եւ երկու կողմանէ իւր քով հասնելիք օգնական զօրաց գալստեանն սպասէ։

Այս վերջին հրամանին գործադրութիւնը դիւրին եղաւ, վասն զի Տաճիկներն բնաւ յարձակումն ընել չմտածեցին։ Օսման փաշա բաւական համարեց Փլէվնայի ամրութիւնքն առաւելուլ եւ զայն անհեղ պատնիշափակ ճամբար մ'ընել. այլ եւ այլ ձեւով կերտուածներու մէկ քանի շարք եւ արձակամարտից համար խրամներ պատրաստել տուաւ այն բարձրաւանդակաց վրայ որք ամեն կողմանէ Կրվիցայի հովիտը կը շրջապատեն՝ ուր կառուցեալ է քաղաքը։ Այս շարքն Պուքօվա գիւղէն սկսեալ մինչեւ Կրվիցա ձգեալ էր, եւ սատի դէպ ի Ռատիշէվօ եւ Փլէվնա, եւ ընդարձակ կիսաբոլոր մը կը ձեւացնէր, որով փակեալ էր քաղաքն հիւսիսէն, արեւելքէն եւ հարաւէն։ Հիւսիսակողման կերտուածք առհասարակ հարաւայիններէն բարձր էին, բայց քան զամենն բարձր էր Պուլկարէնի տանող արահետին հիւսիսային կողմն եւ Կրվիցա գիւղին հիւսիսային արեւմտեան կողմն շինուած մեծ ամրական (ռըտութ) մը։ Փլէվնայի դրից մարտագիտական բանալին եղող այս ամրականին այլ եւ այլ մասերն յոյժ ստուար շինեցին տաճիկ ճարտարապետք (մուհէնտիս). Թնդանօթաձիգ եւ հետեւակ զօրաց կրակներովն պաշտպանեալ էր այն. հետեւակ զօրաց տեղերն երեք աստիճան էին. այսինքն պարտակ, խրամ եւ ամրականին առջեւն եւ երկու քովերն շինուած պարկէնք։

Շախովսքոյ զօրավարն ամսոյն 22ին Օսման-փազարի մօտէն մեկնելով՝ Գարաղաճ-Պօլկարսքի հասաւ ամսոյն 27ին՝ Փլէվնայէն քսան հազարամէթրի չափ հեռի դէպ յարեւելս։ Այն տեղ կանգ առաւ, եւ չարագուշակ տեղեկութիւններ ստացաւ իւր դիմաց գումարեալ տաճիկ զօրաց որքանութեանը վրայ։ Օսման փաշա, կ'ըսէին տեղեկագիրք, Վիտինէն եւ Սօֆիայէն հասած խմբիւք ամսոյն 20էն ի վեր աւելի զօրանալով՝ առ նուազն 60,000 մարդ ունէր. եւ ըսած եմք թէ որքան խնամով նա իւր դիրքն ամրացուցած էր։ Եթէ մտածուի որ Քրիւտնէրի եւ Շախովսքոյի բոլոր զօրքն 32,000 հետեւակ միայն էին՝ 186 թնդանօթով եւ հեծելազօրաց 3 սահերով հանդերձ, մեծ յանձնապաստանութիւն պէտք էր այսքան անընդպաստ հանգամանօք ի կռիւ կոչուելու համար։

Բաց յայսմանէ, 11րդ գնդին հրամանատարն իմացաւ նաեւ՝ որ Տաճիկներն Փլէվնայէն վեր Վիտ գետակին քով կառուցեալ Լօվաց քաղաքն եւս յոյժ ամուր կերպիւ գրաւած էին, եւ վախ կար որ

զօրաց խումբ մը այս փոքրիկ բերդաքաղաքէն ելնելով՝ մի գուցէ Փլէվնայի վրայ յարձակող ռուսական բանակին յետոյ կողմէն խուժէ, եւ կամ դէպ յարեւելս յառաջելով՝ Շախօվսքոյ զօրավարին բանակին եւ Թռնօվայի զօրանոցին մէջ եղած հաղորդակցութիւններն ընդհատէ ։ Նիկոպոլսէն Փլէվնա տանող ճանապարհին վրայ Ջալը-Սուվատ գիւղին մէջ օգնական զօրաց գալստեանն սպասելու համար զետեղեալ Քրիւտնէր զօրապետին հետ յարաբերութիւն ընել սկսաւ Շախօվսքոյ զօրավարն, եւ միահաղոյն գործողութեամբ յաղթուելիք դժուարութեանց ինչպիսի բաներ լինելուն վրայ իւր տեղեկութիւններն եւ կարծիքն հաղորդեց անոր, ինչպէս եւ նա՝ իրեն ։ Ամսոյն 28րդ եւ 29րդ օրերն անցան կռուոյն համար պատրաստութիւններ տեսնուելով ։

Ամեն բանէ առաջ 11րդ գնդին հրամանատարն հոգ տարաւ Լօվացի կողմէն յարձակման մը դէմ զգոյշ լինելու ։ Սքօպէլեվ զօրավարն հանդերձ Խազախաց մէկ սահով դէպ յայն քաղաքն ղրկուեցաւ՝ նոյն կէտին վրայ եղած տաճիկ զօրքը լրտեսելու, եւ եթէ հնար էր՝ վանելու պաշտօնով ։ Սքօպէլեվ զօրավարն այս պաշտօնը գործադրեց, բայց ոչ ամբողջապէս ։ Պաշարուելու վախ կար, եթէ գլխաւոր գնդէն հեռանար՝ Փլէվնայի եւ Լօվացի միջեւ Տաճկաց գրաւած դիրք քովէն խաղալով ։ Թէեւ չպաշարուեցաւ, սակայն Լօվացի մէջ այնպիսի պաշտպանողական տրամադրութիւններ տեսաւ որ Փլէվնայի մէջ Շախօվսքոյ զօրավարին տեսած պատրաստութեանց չափ ծանրակշիռ էին, եւ պարտաւորեցաւ յետս կալ այն կէտն գրաւել փորձելէ ։

Ամսոյն 29ին զօրքն հետեւեալ կերպիւ շարուած էր .

Պուկի Նիզակաւորաց եւ Տօնսքի Խազախաց 9րդ գումարտակներն նոյն Խազախաց 9րդ թնդանօթաշարով հանդերձ (10 հեծելազաս եւ 6 թնդանօթ) Պրէսլիանիցայի մօտ էին ։

Հետեւակազօրաց 31րդ հատուածն՝ ի բաց առեալ Վօրօնէժի հետեւակազօրաց 124րդ գումարտակն եւ 5րդ թնդանօթաշարն (9 վաշտ եւ 40 թնդանօթ) Քօյուլօվցիի մօտ ։

Հետեւակազօրաց 5րդ հատուածն՝ ի բաց առեալ Քօսթրօմայի (1) 19րդ գումարտակն եւ 3րդ թնդանօթաշարն (9 վաշտ եւ 40 թնդանօթ)՝ Թուրսքի-Թրըսթընիքի մօտ ։

Հետեւակազօրաց 30րդ հատուածին 2րդ սահն՝ թնդանօթաց 2րդ, 4րդ եւ 6րդ շարերովն հանդերձ (6 վաշտ եւ 24 թընդանօթ) Գարաղաճ-Պօլկարսքիի մօտ ։

30րդ հատուածին 1ին սահն՝ թնդանօթաց 1ին, 3րդ եւ 5րդ շարերով հանդերձ (6 վաշտ եւ 24 թնդանօթ). 32րդ հատուածին 1ին սահն՝ 1ին, 3րդ եւ 4րդ թնդանօթաշարերով հանդերձ (6 վաշտ եւ 24 թնդանօթ). հեծելազօրաց 11րդ հատուածին 1ին սահն՝ ձիոց վրայ բարձեալ թընդանօթաց 18րդ շարովն հանդերձ (8 հեծելազաս եւ 6 թնդանօթ) Փօրատինի մօտ ։

Կովկասու սահն՝ Տօնսքի Խազախաց 8րդ թնդանօթաշարովն եւ ձիոց վրայ բարձեալ լեռնային թնդանօթաց մէկ շարովն հանդերձ (12 հեծելազաս եւ 12 թնդանօթ) Պօկօթի մօտ ։

Քրիւտնէր եւ Շախօվսքոյ զօրավարք կէս օրէն յետոյ պատերազմական խորհուրդ մը գումարեցին հատուածապետ եւ սահապետ զօրավարներէ բաղկացեալ, յորում միաբանութիւն եղաւ հետեւեալ օրն գործադրուելիք յարձակման յատակագծին վրայ ։ Հրամանատարութիւնն Ֆօն Քրիւտնէր սեպուհին կը պատկանէր երիցագունութեան իրաւամբք . բայց նորա ազդեցութիւնն նուազեալ էր իւր զօրաց կրած աղետալի պարտութեան պատճա-

(1) Ամսոյն 20ին այնքան մեծ կորուստ կրող Քօսթրօմայի գումարտակն Նիկոպոլիս ղրկուեր էր վերակազմուելու համար ։

ռաւն․ ասկէ զատ՝ մեծ դքսին եւ Թռնովայի զօրանատին հրահանգներն Շախօվսքօյ զօրավարին հաղորդեալ լինելով, առաւելութիւն մ՚ունէր սա։ Արդեօք այս երկուութենէն անստուգութիւն յառաջ եկաւ։ Յանդգնութիւն չէ այս բանն ենթադրել։ Ասկէ զատ՝ Քրիւտնէր եւ Շախօվսքօյ զօրավարք ռուսական բանակին մէջ խիստ տարբեր յատկութեանց տէր կը կարծուէին․ Քրիւտնէր զօրավարը համբաւեալ էր իբրեւ լաւ՝ սակայն իբրեւ յամր գործող, փոքր ինչ թոյլ եւ անփոյթ սպայ մը․ ընդհակառակն՝ Շախօվսքօյ զօրավարն յոյժ եռանդուն էր, բայց յանդուգն եւ դիմագրաւող։ Ամսոյն 30ին ճակատամարտն այս հակապատկերն աւելի որոշ եւ ակներեւ ցոյց պիտի տար։ Վերջապէս անհամաձայնութեան ուրիշ պատճառի մը վրայ եւս խօսք եղած է։ Ֆօն Քրիւտնէր սեպուհն Պալթիկ ծովուն եզերաբնակ Ռուսիացի Գերմանաց ցեղէն է, իսկ Շախօվսքօյ իշխանն բուն Սլաւ մ՚է։ Ռուսիոյ մէջ պաշտամանց եւ աստիճանաց հաւասարապէս հասնող այս երկու ցեղերուն միջեւ հնացեալ նախանձ կը տիրէր, եւ մէկ քանի լրագիրներ ըսած են թէ առաջինն չուզելով որ յաղթութեան պարծանքն երկրորդին ընծայուի, ձեռքէն եկածը չըրաւ բոլորովին՝ այս երկրորդին օգնելու համար, որպէս զի սա իւր ստացած առաւելութիւններն պահպանէ։ Այս բանն եթէ ապացուցեալ լինէր, անշուշտ 9րդ գնդին գլխաւորն պիտի ամբաստանուէր․ բայց որովհետեւ Ֆօն Քրիւտնէր սեպուհն իւր հրամանատարութիւնը չկորոյս, անտեղի է ուրեմն այս մասին երկար խօսիլ։

Պատերազմական խորհրդոյ մէջ որոշուած եւ երեկոյին բոլոր գումարտակաց հրամանատարներուն ծանուցուած տրամադրութեանց համեմատ՝ պատուէր եղած էր․

Ա․ Լօչխարեվ հատուածապետին հրամանատարութեան ներքեւ գտնուած աջակողմեան ծայրի խմբին՝ (10 հեծելադաս եւ 6 թնդանօթ) առաւօտեան վեցերորդ ժամուն յառաջ խաղալ եւ թշնամին զննել՝ Ռուսաց աջակողմը պաշտպանելով հանդերձ։

Բ․ Փոխ—զօրապետ Վէլեամինովի հրամանատարութեան ներքեւ գտնուած աջակողմեան ջոկին՝ (18 վաշտ եւ 80 թնդանօթ) յարձակիլ արահետին հիւսիսային կողմն եղած Տաճկաց դիրց վրայ, ի պահեստի ունենալով հետեւակազօրաց 5րդ հատուածէն երեք գումարտակներ իրենց թնդանօթներովն հանդերձ․

Գ․ Ռիկայի վիշապազօրաց 11րդ գումարտակէն երկու հեծելադասերու եւ Տօնքի Խազախաց 34րդ գումարտակէն մէկ հեծելադասի՝ կցորդութիւն հաստատել աջակողմեան ծայրի խմբին եւ աջակողմեան ջոկին միջեւ։

Դ․ Փոխ—զօրապետ Շախօվսքօյ իշխանին հրամանատարութեան ներքեւ գտնուած ձախակողմեան ջոկին՝ (12 վաշտ, 12 հեծելադաս եւ 48 թնդանօթ) առաւօտեան հինգերորդ ժամուն Փօրատինէն ելնելով յառաջ խաղալ եւ Կրվիցա եւ Ռատիշէվօ գիւղերուն մէջ տեղ Տաճկաց դիրց վրայ յարձակիլ։

Ջուկույէվի Նիզակաւորաց 11րդ գումարտակէն երկու հեծելադասերու՝ կցորդութիւն հաստատել աջակողմեան եւ ձախակողմեան ջոկից միջեւ․

Ե․ Նորին կայսերական վեհափառութեան շքադիրներէն Սքօպէլեվ հատուածապետին հրամանատարութեան ներքեւ եղած ձախակողմեան ծայրի խմբին՝ (12 հեծելադաս եւ 12 թնդանօթ) Պօկօթէն ճանապարհ ելնել առաւօտեան հինգերորդ ժամուն եւ Փլէվնայի եւ Լօվչայի հաղորդակցութեան ճանապարհին վրայ զետեղիլ՝ մանաւորապէս այս վերջին կէտին վրայ հսկելով։ Փոխ-զօրապետ Շախօվսքօյ իշխանին հրամանաւ այս խմբին օգնութեան ղրկուեցաւ Քուրսքի հետեւակազօրաց 125րդ գումարտակէն մէկ

վաշտ՝ թնդանօթաձիգ զօրաց 32րդ սահին 6րդ շարքն 4 թնդանօթով հանդերձ. Տօմպրօվլուքի հազարապետին հրամանատարութեան ներքեւ ։

Աջակողմեան ծայրի եւ ձախակողմեան ծայրի խմբերուն պատուէր եղաւ նաեւ Տաճկաց նահանջելու միջոցին Վիտ գետակին ձախակողմեան ափան վրայ անցնելով՝ Նոցա դէպ ի Սօֆիա նահանջին արգելուլ ։

Ջ. Փոխ-զօրապետ Ֆօն Կրիւտնէր սեպուհին ուղղակի հրամանատարութեան ներքեւ գտնուած ընդհանուր պահեստի զօրաց խմբին՝ (6 վաշտ, 4 հեծելադաս եւ 30 թնդանօթ) իւր հետեւակազօրն զետեղել Փօրատինի մօտ, եւ հեծելազօրը Փելիշատի մօտ ։

Այս տրամադրութեանց թերութիւնն ակներեւ է. ամսոյն 20ին տրամադրութեանց մէջ եղած թերութեան ճիշդ նըմանն է. առաջին պարտութեան մը փորձառութիւնն այսպէս անօգուտ եղաւ ։ Յարձակելու սահմանեալ երկու գլխաւոր ջոկերուն միջեւ այնքան մեծ անջրպետ մը կար, որ անկարելի էր նոցա փոխադարձաբար միմեանց օգնել, եւ այս պակասութիւնն աւելի գէշ եղաւ երկու զօրավարաց մէջ համաձայնութիւն չլինելուն պատճառաւ ։ Ընդարձակ ժամանակի մէջ ամրացեալ յոյժ զօրաւոր դրից վրայ զետեղուած տաճիկ զօրքէն՝ գրեթէ կիսովին նուազ զօրօք յարձակումն ընելն յանդգնութիւնն եւս կ՚անցնէր ։ Սակայն Ռուսաց պաշտօնական տեղեկագիրք կը խոստովանին թէ Կրիւտնէր զօրավարն երկար ժամանակ վարանեցաւ յարձակելու ; բայց ստիպուեցաւ տեղի տալ մեծ դքսին հրամանացն ։

Գլխաւոր հրամանատարն քանի որ անպատճառ հնազանդելու պարտաւորեալ էր, գործելու այնպիսի եղանակ մ՚ընտրելու էր որ հնար եղածին չափ նուազեցընէր իւր զօրաց սակաւաթիւ լինելէն յառաջ եկած աննպաստ հանգամանքն ։ Կրիւտնէր եւ Շախօվսքօյ զօրավարք Փըլէվնայի առջեւ Տաճկաց գրաւած կիսաբոլորին երկու ծայրերը զետեղուելու չէին, որովհետեւ այն կերպիւ կարող չէին միմեանց օգնել. այլ հարկ էր իրարու մօտ կալ ։ Այսպէս միմեանց մօտ գործելով՝ կարէին զուգընթաց շարժմունք ընել. Տաճիկներն իրօք պիտի չփոթէին եւ տըկարանային միահաղոյն եղած կրկնակի յարձակմանէ մը, եւ երկու զօրավարներէն մին ձախողութիւն կրած ժամանակ միւսն կարէր նմա օգնել ։ Գործուած սըխալն աղետաբեր անմտադրութենէ մը յառաջ եկած համարել պէտք է, կամ վճռական ազդեցութիւն բանեցնելու եւ իւր կարծիքն ընդունելի ընելու կարող գլխաւոր հրամանատար մը չգտնուելէն, կամ տարբեր բնաւորութեան տէր երկու զօրավարաց մէջ չար հակառակութիւն մը լինելէն, որոց երիցագոյնն անգամ մը դժբաղդութիւն կրած լինելով՝ կը տրտմէր եւ կը դժկամակէր երիտասարդի մը միջամտութեամբն փրկուելու, առ որ բաղդն ժպտիլ կը թուէր ։ Այդ սխալանաց պատճառն միթէ խօլ յանձնապաստանութիւն մ՚էր, որով Ռուսք չափազանց կ՚արհամարհէին իրենց հակառակորդներն, եւ հաւասարազօր կը կարծէին զիրենք այնպիսի կռուոյ մը մէջ յորում իրենցմէ մէկուն դէմ երկու հոգի կը գըտնուէին ։ Ի՞նչ եւ իցէ, յուլիսի 30ին առաւօտուն սկսեալ կռիւն Ռուսաց համար ձախող պիտի լինէր, եւ տխուր էջ մը պիտի յաւելուր այն ճակատամարտից պատմութեան վրայ, յորս հազարաւոր արի զինուորներ զոհեալ են վայրապար ։

## ՃԱԿԱՏԱՄԱՐՏ

Ռուսաց յարձակումն յապաղեցաւ մէկ քանի ժամ՝ օդն աննպաստ լինելով գործողութեանց. Օսման փաշայի խնամօք բարձրացեալ կերտուածոց առջեւ

գետնին մեծ մասն ելեւէջներ ունի թէ հիւսիսակողմն եւ թէ հարաւակողմն, որով անկարելի էր հեռուստ դիտել պատնիշաց եւ զօրախմբից փոփոխութիւնքն, զոր օդը պարզ եղած ժամանակ անգամ՝ անհնար էր նշմարել ուրիշ կերպիւ՝ բայց կերպութիւնն յոյժ չփոթ կերպիւ միայն կ'որոշուէր ։ Վասն որոյ Ռուսք քիչ քիչ միայն կարացին իրենց հակառակորդաց ինչ գիրք բռնած լինելն հասկանալ, երբ փարատեցաւ մէգն թնդանօթի կռուոյն պատճառաւ ցնդեալ ։



ԶՕՐԱՊԵՏ ՔՐԻՒՏՆԷՐ ՍԵՊՈՒՀ, ՀՐԱՄԱՆԱՏԱՐ 9րդ ԳՆԴԻՆ

եթէ՜ռմբի կարճ նետուածքի մը չափ հեռաւորութիւն մնալով . որդ ամսոյն 30ին([1]) առաւօտուն մեծ մասն անցաւ եւ տակաւին Փլէվնայի շրջակայքն այնպիսի թանձր միգաւ ծածկեալ էին, որ տեղեաց ձեւա-

Աջակողմեան ջոկն Տաճկաց գծերուն մօտեցաւ առաւօտեան եօթներորդ ժամուն, եւ հետեւեալ կերպիւ շարունեցաւ . Նախ ճակատեցաւ հետեւակազօրաց 31րդ հատուածին 1ին սահն՝ թնդանօթաց 3 շարերով հանդերձ (6 վաշտ եւ 24 թնդանօթ)· սորա յետսակողմն հետեւակազօրաց 123րդ՝ այն է Քօզլօվի գումար-

([1]) Տէյլի Նի—զի Թղթակիցն անմտադրութեամբ կը սխալի և այս ճակատամարտին Թուականն յուլիս 31 կը դնէ :

տակն ի պաշտպանի կըսպասէր թնդանօթաց երկու շարիւք հանդերձ (3 վաշտ եւ 16 թնդանօթ)։ Այս զօրախումբք Պէլօքօփիթով հատուածապետին հրամանատարութեան ներքեւ էին։ Ապա, գրեթէ տասներորդ ժամուն, հետեւակազօրաց 5րդ հատուածին երեք գումարտակներն՝ թընդանօթաց հինգ շարիւք հանդերձ (9 վաշտ եւ 40 թնդանօթ) Շիլտէր-Շուլտնէր փոխզօրապետին հրամանատարութեամբ եկան զետեղեցան ի պաշտպանի այս զօրախմբից ետին։

Ութերորդ ժամն քառորդ անցած էր, երբ Տաճիկներն թնդանօթ արձակեցին առաջին անգամ։ Ռուսական թնդանօթաց շարերէն անդրադարձութիւն եղաւ սակայն՝ ըստ կարծեաց միայն ռմբաձգութիւն լինելով, վասն զի մէգն անկարելի կ'ընէր Ռուսաց յառաջակողմն ուրիշ բան տեսնել, բայց եթէ մացառախիտ լայն ձորակ մը, որոյ դիմացի կողման վրայ Տաճկաց արձակամարտներ կային երկու թնդանօթով։ Ժամն իննին միայն հնար եղաւ Տաճկաց մեծ ամրականը նշմարել. յարձակող զօրաց թնդանօթներն այն ժամանակ անոր վրայ կրակ ըրին միահաղոյն։ Թնդանօթաձիգ զօրաց 5րդ տահրին երկու շարերն յառաջ տարուեցան այն միւս երեքին օգնելու համար, որք ի սկզբան կռուոյն զետեղեալ էին։ Ռուսք իրենց աջակողմն այսպէս 40 թնդանօթ շարուած ունեցան. տեղեաց ձեւակերպութեան պատճառաւ անկարելի էր աւելի զետեղել։

Թնդանօթի կռիւն ութերորդ ժամն քառորդ անցած սկսելով՝ տեւեց մինչեւ կէսօրէն յետոյ երկրորդ ժամն 40 վայրկեան անցած։ Մինչեւ ցայնժամ խոշեմն Բրիտանէր ըստ երեւութին անշարժ մնաց։ Շախօվսքօյի յառաջամուխ լինելը տեսնելով միայն՝ որոշեց ինքն եւս յարձակման համար զօրքն յառաջ (փօլ փօլ) բաժանել։

Շախօվսքօյ զօրավարին խումբքն աջակողմեան ջոկէն առաջ ճակատ յարդարած էին. Ռատիշէվօյի դէմ եւ այս գիւղին ետեւն եղած դրից վրայ՝ յարձակումն սկսաւ վեցերորդ ժամուն սաստիկ ռմբաձգութեամբ։ Շախօվսքօյ իշխանին սպայակոյտի գլուխ Պէչօվսքի զօրավարն մէկ քանի թնդանօթներ զետեղեց Ռուսաց կողմի այն բարձրաւանդակին վրայ, ուրկէ Վիտի հովտին եւ Ռատիշէվօ գիւղին վրայ կը նայուի բարձուստ։ Կը թուէր թէ այս գիւղն դիմադրութիւն պիտի ընէր. այլ վերջին տանց ետեւէն մանաւանդ՝ այն է Ռատիշէվօն Փլէվնայէն բաժնող սարի մը զառիթափին վրայի թնդանօթներով զինեալ պատնէշներէն ահաւոր կրակ մը կը թափուէր։

Տաճկաց թնդանօթներն Ռուսաց կրակին դէմ անդրադարձութիւն ըրին, եւ ռմբարտակներն մինչեւ երեք ժամ Ռատիշէվօյի վրայէն անցան՝ երկու բանակաց մարտկոցներէն դէմ առ դէմ նետուելով. հուսկ յետոյ Պէչօվսքի զօրավարն հրաման ղրկեց հետեւակազօրաց խմբի մը, որ դէպ ի գիւղն յառաջէ։ Թնդանօթի կռիւն եղած ժամանակ՝ զօրքն բարձրաւանդակին ետեւ կըսպասէր, զինուորք գետնին երեսը պառկած՝ ըստ կարի կը զգուշանային իրենց հարգերուն մէջ անկանող ռմբարտակներէն։ Յառաջխաղացութեան հրամանը տրուելուն պէս ուժգնութեամբ առնելով՝ առաւօտէն ի վեր իրենց ճանապարհ պատրաստող ռուսական թնդանօթաշարերուն մէջ տեղէն անցան, բլրոյն զառիթափէն վար իջան, եւ Ռատիշէվօյի մտեցան։ Շախօվսքօյ զօրավարն կը կարծէր որ այն տեղ մեծ դիմադրութիւն մը պիտի լինէր։ Տեսնուեցաւ որ գիւղին մէջ Պաշը-պօզուգներու սակաւաձեռն խումբ մը միայն կար, որք մեծ արիութեամբ ինքզինքնին պաշտպանեցին, իրենց գըտնուած տեղերէն չհեռացան եւ Ռուսաց սուիններով սպաննուեցան։ Գիւղին առումն համեմատաբար դիւրին եղաւ։ Բնակիչք չէին մեկնած. ուստի զինուորք երբ այն տեղը գրաւեցին, գիւղացիներն

իրենց տուներուն առջեւ խմբեալ տեսան. «Տղայք, կ'ըսէ Տէյլի Նիւզի թղթակիցն՝ որ Ռուսաց առաջին զօրաց հետ քաղաքին մէջ մտաւ, փոքրիկ հրապարակի մը մէջ աւազոց մեծադէզ չեղջից վրայ կը խաղային անգիտակցութեամբ, առանց գոգցես վտանգին վերահասու ըլլալու. Հարիւրաւոր վառօդալից գունդք գիւղին վրայ կը թօթափէին, բայց զարմանալի բաղդով մը՝ բնակիչներէն եւ ոչ մին զարնուեցաւ, վասն որոյ նոքա անտարբեր էին այս մասին:»

Շախօվսքոյ իշխանն իւր բնական աշխուժէն մղեալ՝ կ'ուզէր իւր զօրքն անմիջապէս աւելի յառաջ վարել, որք առաջին յաջողութեան մը վրայ եռանդեամբ յափշտակեալ էին. բայց տեսնելով որ Քրիւտնէր զօրավարն յառաջամուխ ըլլալու միտումն չունէր, ստիպուեցաւ Տաճկաց դիրից դէմ թնդանօթի կռիւն շարունակելով բաւականանալ: Ռատիշէվօյի առջեւ սիւնեց 32րդ հատուածին 1ին սահն՝ այս գիւղին հիւսիսային եւ արեւելեան կողմերն եղած բարձրաւանդակաց վրայ, եւ հետեւակազօրաց 30րդ հատուածին 1ին սահն ի պահեստի կացոյց Զիւլէվիցէէն Ռատիշէվօ տանող ճանապարհին վրայ: Յետոյ երբ թնդանօթի կռուէն յայտնի եղաւ թէ Տաճկաց աջակողման դէմ ամենէն աւելի նպաստաւոր կերպիւ յարձակումն ընել կարելի էր, այս պահեստի զօրքն դէպ ի Ռատիշէվօ ղըրկուելով գիւղին հարաւային կողմը զետեղուեցաւ մէկ հազարամէթր հեռի:

Տասներորդ ժամէն սկսեալ մինչեւ կէս օրէն յետոյ ժամն երկուքն ու կէսն՝ թէ ձախակողմէն եւ թէ աջակողմէն թնդանօթից ձայնը միայն լսուեցաւ, եւ հրացան մ'անգամ չարձակուեցաւ: Առաջին անգամ կրակ ըլլալուն՝ Ռիլյէի հետեւակազօրաց գումարտակին հրամանատար Սարանչեւ գումարտակին ձին սպաննուեցաւ, որոյ վրայ հեծեալ էր նա, եւ գումարտակին նոյն սրունքն սաստիկ ճմլուեցաւ. Քամէնօկրատսքի փոխ-գումարտակետն գումարտակին հրամանատարութիւնն ըստանձնեց: Անկէ զատ՝ Ռուսաց մէկ թնդանօթաշարին երեք թնդանօթներն հաստաբաններուն վրայէն անկան, եւ այս շարին տեղ ուրիշ մը զետեղել հարկ եղաւ. Տաճկաց կողմանէ եւս երկու թնդանօթաշարք լռեցին, եւ իրենց կերտուածներէն մին սաստիկ վնասուեցաւ:

Աջակողմեան ծայրի խումբն ճակատամարտին այս սկզբնաւորութեան մասնակից չեղաւ, եւ նոյն օրը մինչեւ վերջն գործ չտեսաւ. բայց ձախակողմեան ծայրի խմբին հրամանատար պերճալի Աքօպէլեվ զօրավարն դիմագրաւեց յոյժ: Միգլին պատճառաւ Պօկօթի Տաճիկներէն չտեսնուելով՝ յառաջեց մինչեւ Քրիշինա գիւղն, որոյ մօտ 8 հեծելազօրաւ եւ 8 թնդանօթով հանդերձ կացոյց Թութօլմին գումարտակն՝ յառաջագոյն ընտրեալ յոյժ նպաստաւոր դիրից մէջ, ուրկէ դիւրաւ կարելի էր Տաճկաց զօրքը դիտել եւ վանել թէ Փլէվնայի եւ թէ Լօվչայի կողմէն. ինքն եւս Տօնքի խազախաց 4 թնդանօթներովն հանդերձ Քուպանի խազախներու երկու հեծելազօրաւ բաղկացեալ առաջապահ գունդ մը հետ առնելով՝ յառաջ գնաց Փլէվնայի արուարձաններուն 600 մէթր մօտալու չափ: Անտի՝ 20,000ի չափ տաճիկ հետեւակազօրք նշմարեց, որք ի պահեստի խմբեալ էին Կրիվիցայի բարձրաւանդակաց եւ քաղաքին մէջ տեղ. սոցա ետեւն Փլէվնայէն Սօֆիա տանող ճանապարհին վրայ հեծելազօր կար:

Շախօվսքոյ իշխանին զօրքն կրակ ընելու սկսած ժամանակ՝ Աքօպէլեվ զօրավարն եւս իւր 4 թնդանօթներով ռմբաձգութիւն ընել տուաւ: Տաճիկներն իսկոյն անդրադարձութիւն ըրին 6 թնդանօթով. սակայն իրենց հրազինուց թիւն արագօրէն յաւելլով՝ բովանդակ հետեւակազօրն յառաջ վարեցին, որում նախընթաց կը լինէին միմեանց ետեւ շար-

ուած արձակամարտից բազմաթիւ եւ թանձրախուռն կարգեր, եւ ձիաւորաց կարգ մը կողմնակի կը պաշտպանէր այն հետեւակազօրն: Սքօպէլեվ զօրավարն Տաճկաց այսպիսի անդութեամբ յարձակման ելնելը տեսնելով՝ իւր յառաջապահ խումբն ետ տարաւ գլխաւոր դրից վրայ Գրիշինայի մօտ:

Միանգամայն հետեւեալ կարգադրութիւններն ըրաւ՝ իւր յետոյ կողմն եւ երկու քովերն պաշտպանելու եւ միւս խմբից հետ իւր հաղորդակցութիւնքն ապահովելու համար: Լօվացի կողմն Խազախաց մէկ քանի ստուար հոյլ զետեղեց Գրիշինայի շուրջն ճիւղ ճիւղ: Ձախակողմն Վիտի մօտ հեծելազաս մը կացոյց. աջակողմն եւս մէկ հեծելազաս զետեղեց Շախօվսքօյ զօրավարին հետ յարաբերութիւն ընելու համար, որմէ բաժնուած էր խորափիտ եւ վախուտ ձորակով մը, այս հեծելազասին միջոցաւ կռուոյն մինչեւ վերջն տեղեկութիւն կ'առնոյր իշխանին խմբին ինչ ընելուն վրայ: Վերջապէս Վլատիքավքազի գումարտակէն Ասթախով հեծելազօրապետն (էսաուլ) 20 կամաւոր Խազախաց հետ ղրկեց Վիտ գետակին մէկ հունը զննելու, նախազգոյշ գտնուելու համար՝ եթէ Սօֆիայի ճանապարհին վրայ յարձակիլ հարկ լինէր: Սքօպէլեվ զօրավարն այս բոլոր կարգադրութիւններն ընելէ յետոյ՝ Թութօլմին գումարտակին հրամանատարութեան ներքեւ երեք հեծելազաս եւ տասներկու թնդանօթ ձգեց Գրիշինայի մօտ՝ Լօվացի կողմն իւր յետոյ կողմն ապահովելու պաշտօնով. եւ որոշեց դէպ յինքն մօտեցող Տաճկաց հետեւակազօրուն դէմ գնալ, իւր չնչին ջոկատին մնացեալ մասամբն (1 վաշտ, 4 հեծելազաս եւ 4 թնդանօթ հաստարանի վրայ ագուցեալ), որպէս զի թոյլ չտայ Փլէվնայի հարաւակողմն ամենէն աւելի բարձրահայեաց գտնուող եւ կարեւորութիւն ունեցող մէկ բարձրաւանդակը գրաւելու: Տաճիկներն այս բարձրաւանդակին տիրելով՝ կարէին Շախօվսքօյ իշխանին զօրաց վրայ կողմնակի յարձակիլ:

Սքօպէլեվ զօրավարն նախ յառաջ վարեց արձակամարտից 3րդ դասակն եւ Գուրուքի գումարտակին 9րդ դասակին մէկ բոլն, հաստարանի վրայ ագուցեալ 4 թնդանօթներն եւ Վլատիքավքազի գումարտակէն երկու հեծելազաս: Արձակամարտից 3րդ դասակն երգելով յառաջեց մինչեւ այն բարձրահայեաց բլուրն (վերջինն՝ Փլէվնա հասնելէ առաջ) առանց նայելու իւր վրայ թափուած սաստիկ կրակին, եւ սուին ի ձեռին խոյացաւ, մինչդեռ Տաճկաց թնդանօթաձիգներն եւ հետեւակազօրն մէկ քանի կողմանէ կրակ կը թափէին միահաղոյն: Նոյն միջոցին Վլատիքավքազի գումարտակին երկու հեծելազասքն Տաճկաց վրայ կողմնակի կը յարձակէին: Տաճկաց հեծելազօրն դայթ տուաւ սոցա դէմ, բայց յետս մղուեցաւ, քանիցս կրկնեց իւր յարձակումներն ընդդէմ Խազախաց, բայց ամեն անգամուն ընկրկեցաւ եւ ետ քշուեցաւ: Թնդանօթաձիգ զօրաց 32րդ սահին 6րդ շարին 4 թնդանօթներն եւս Փրօխօրօվիչ փոխ-հարիւրապետին հրամանատարութեան ներքեւ յոյժ լաւ դիրք մը բռնեցին եւ մնացին անդ մինչեւ վերջը, թէեւ Տաճկաց թնդանօթաձիգներն եւ հետեւակազօրն կրակ կը տեղային անոնց վրայ:

Առաւօտեան տասներորդ ժամէն սկսեալ մինչեւ կէս օրն 4 ժամ անցած կռիւ եղաւ այս բարձրաւանդակին վրայ Փլէվնայի առջեւ. արձակամարտից 3րդ դասակն, Գուրուքի գումարտակին բոլն եւ Խազախաց երկու հեծելազասք արիաբար դէմ դրին նոյն բարձրաւանդակն Տաճկաց չթողլու համար, որոց թիւն մինչեւ ութ վաշտի կը հասնէր: Սքօպէլեվ զօրավարն օգնութեան զօրք չղրկեց սոցա, եւ իւր հրամանին ներքեւ եղած միւս 3 եւ կէս դասակներն ի պահեստի կացոյց,

խմբին գլխաւոր պաշտօնը նկատելով, որ էր Լօվչացի կողմէն տաճիկ զօրք եկած ժամանակ թոյլ չտալ յառաջելուն ։

Երկրորդ ժամուն տակաւին ճակատամարտն սկսեալ չէր ։ Միայն ձախակողմն՝ դէպ ի ծայրն՝ յարձակումն եւ ընդհարումն եղած էր սակաւաթիւ զօրաց միջեւ։ Շախօվսքօյ զօրավարին համբերութիւնը կը հատնէր այս յամրութեան վրայ ։ Ռատիշէվօյէն դիւրին էր նշմարել սոյն գիւղին յետոյ կողմն եւ զայն Փլէվնայէն բաժնող բարձրաւանդակին վրայ Տաճկաց կանգնած պատնէշներն. յորս ահեղ կ'երեւէին այնք ։ Նախ ամրածածուկ պարկէն մը կար, որոյ զառիկողին ետեւ արձակամարտից շար մը կը պատսպարուէր. այս զառիկողն բաւական բարձր լինելով Ռատիշէվօյի վերջին տներէն գրեթէ 100 մէթրի չափ վեր ։ Սոյն պարկէնին ետեւն փոքր ի շատէ հեռաւորութեամբ երկրորդ գիծք մը կար աւելի ամուր զառիկողերով, հողաթմբերով, պարկէններով եւ Տաճկաց ստուար ամբոխը կը պատսպարուէր ։ Այս կերտուածներուն մէջէն ամենէն նշանաւորներուն Ռուսք Թիւ 4րդ, Թիւ 5րդ եւ Թիւ 6րդ յորջորջմունքը տուած էին, Օսման փաշայի կանգնած պատնէշներն թուագրելով ի սկզբս իւրեանց ։ Ահա այս արգելներուն մէջէն Ռուսաց զօրքն իրենց համար անցք պիտի բանային ։ Սոյն ամրութեանց ետեւ գալարեաց շրջանակի մը մէջ արեգդէմ կը շողային Փլէվնայի տանց յարկերն եւ եկեղեցիներն ։ « Գուցէս, կ'ըսէ անգղիական լրագրի մը զինուորական թղթակիցն, արշաւասոյր երիվարի մը մէկ ոստնլումն կարելի՛ էր այն տեղ հասնիլ ճաշ ընելու համար. » եւ սակայն ինչ սոսկալի ժամեր պիտի սահէին այն քիչ մը տեղէն անցնելէ առաջ ։

Վերջապէս, Շախօվսքօյ զօրավարն՝ իւր առջեւ եղած ռազմագիտական հանգամանաց բոլորովին շփոթ տեսութեամբ որոշեց անյապաղ Տաճկաց պատնէշներուն վրայ յարձակիլ, եւ Բրիւտնէր զօրավարին տեղեկագիր մը ղրկեց, որով իմաց կուտար յարձակման սկսիլն ։ Ռատիշէվօյէն վեր բարձրացող բլրոյն վրայ գնաց իւր սպայակոյտին հետ. առաւօտէն ի վեր այն կէտին վրայ զետեղեալ ռուսական թնդանօթաշարք անդադար հուր կը տեղային։ Զօրավարն այն տեղւոյն վրայ երեւելուն պէս՝ Տաճիկներն նորա ներկայութիւնը կամ նշմարելով եւ կամ կռահելով՝ (թահմին էթմէք) ռմբարտակներու իբր մրրկայոյզ տարափ մը տեղացին, որով մէկ քանի վայրկենի մէջ այն բլրոյն կատարն թափուր մնաց ի մարդկանէ ։ Ով կարէ ըսել թէ զօրավարն բարեբաղդ չէր լիներ, եթէ նոյն պահուն մահու չափ վիրաւորուէր. այս կերպիւ իւր որոշումն չպիտի գործադրուէր ։ Շախօվսքօյ զօրավարն միայն երկու սահով, որոց մին ի պահեստի կըսպասէր, յարձակելու կ'ելնէր այն պատնիշաց վրայ՝ որոց ետեւ երեքպատիկ կամ չորեքպատիկ առաւել թուով զօրաց բազմութիւն կը գտնուէր. տասն հազար հոգի պիտի կռուէին 30,000 մարդոց դէմ, եւ այս յանկալի պարագայի մէջ, յորում սակաւաթիւ յարձակողք ստիպեալ էին բաց տեղի վրայէ անպատըսպար յառաջել՝ լաւ ամրացեալ եւ լաւ պաշտպանեալ գնդաց դէմ։ Բրիւտնէր զօրապետին գործած բոլոր սխալանքն բան մը չէին Շախօվսքօյ զօրավարին այս մէկ սխալման քով, որ իւր եռանդուն բնաւորութեան եւ համբաւեալ յանդըգնութեան ընծայելի է ։

Ժամն երկուք եւ կէսին՝ 32րդ հատուածին 1ին սահին հրամանատար Կորչքով հատուածայեան յառաջ խաղալու հրաման ընդունելով թնդանօթաց կրակը բազմապատկեց, եւ Քուրսքի եւ Ռիլսքի գումարտակներն յառաջ վարեց Տաճկաց Թիւ 4րդ եւ Թիւ 5րդ կերտուածներուն դէմ ։ Չորս ժամէ ի վեր թնդանօթաց վհատեցուցիչ կրակին ներքեւ մնացող հետեւակազօրաց՝ նոյն աւուր առաւօտն յոյժ երկարատեւ երեւցած էր ։ Վասն որոյ յար-

ձակման հրամանն ցնծալից եւ ահագին կոյթիւնով ընդունուեցաւ ։ Հետեւակազօրք արագ խոյացան ձորոյն մէջէն, եւ անոր հիւսիսակողման դժուարին զառիթափէն վեր ելան. դասակներն բազուկ բազուկ ձեւացած էին, եւ սոցա առջեւէն ցըրկիճներով զինեալ զօրաց դասակներ կ'ընթանային ։ Հրացաններուն սպարպատիւնն յանկարծ կը խառնուէր թնդանօթաց ձայնին, որք անդադար առաւօտէն ի վեր այն հովտին մէկ կողմէն միւսն ռումբ կ'արձակէին, որոյ յատակն կառուցեալ է Ռատիշէվօ ։ Այս գիւղին շուրջն եղած եգիպտացորենի արտերէն ծխոյ ամպեր կը բարձրանան ։ Տաճիկք պատսպարեալ լինելով անվրէպ հրացան կ'արձակեն. Ռուսք առանց վրդովելու կը յառաջեն, բայց մէն մի քայլափոխին զօրաց շարքն կը խզուի զինուորի մը վիրաւորուելով եւ գետին անկանելովն ։ Ցարձակող խմբից եւ Տաճկաց պատնէշներուն մէջ եղած հեռաւորութիւնն յամր կերպիւ կը նուազի. հուսկ ապա Ռուսք եւ Տաճիկք կը գուպարին ։ Ռուսք դէպ ի խրամները կը նետուին. սուիններն հրացանաց ծայրն անցընելով՝ ձեան հիւսոյ նման կը գահավիժին ։ Տաճիկներն պարիկնիից յետակողմն կը մղուին եւ դժոխային կռիւ մը կը թափին. բայց Ռուսաց ուժգին յարձակումն կըստիպէ զանոնք աւելի ետեւ երթալու ։ Ռիլոքի գումարտակն գիրկ ընդ խառն կատաղի կռուէ մը յետոյ թիւ 4րդ կերտուածին կը տիրէ ։

Թիւ 5րդ կերտուածին առումն աւելի դժուար եւ աւելի արիւնաշտ եղաւ ։ Քուրոքի գումարտակն՝ որոյ ճակատին դէմ Տաճկաց թնդանօթաշարք վերջին ծայր սաստկութեամբ կրակ կը թափէին, սարսափելի վնաս կրեց թիւ 6րդ մարտկոցին կողմնակի ռմբաձգութենէն՝ որ զառիվայրի մը վրայ զետեղեալ էր, եւ այն զառիվայրին այգիներու մէջ գտնուող բազմաթիւ արձակամարտներուն նետած գնտակներէն ։ Արի գումարտակն անցնելով այն դագաթն՝ որոյ յետակողմն էր նոյն կերտուածն, յանկարծ բազմամբոխ հետեւակազօրաց . դիմաց գտնուեցաւ ։ Սոքա երկու երեք հարիւր քայլաչափ հեռաւորութենէ անլուր սաստկութեամբ հուր տեղալ սկսան. ռուսական տեղեկագիրք կ'ըսեն թէ այս հրացանութիւնն քան երեւուն եւ կամ աւելի գնտացաններու (միթրայեէզ) չափ արդիւնք յառաջ կը բերէր ։ Ցայնժամ յայտնի եղաւ թէ որքան յիմարական էին այն ճակատ առ ճակատ յարձակմունքն, որոց համար ըստ բաւականի պատրաստութիւն չէր եղած յառաջագոյն զինուորական ճարտար շարժմամբք եւ թնդանօթաց ռմբաձգութեամբք, եւ որոց այսուհետեւ բնաւ հետամուտ լինելու չէ, քանի որ հրազէնք մօտերս այսքան կատարելագործեալ են ։ Այն երկու երեք հարիւր քայլաչափ տեղէն անցնելու համար՝ հարկ եղաւ Ռուսաց ենթակայ լինել Վինչէսթրի եօթնհարուածեան ցրկիճներուն արագ հրացանութեան, որովք զինեալ է Տաճկաց հեծելազօրն, եւ որովք սակայն այն օրն հետեւակազօրք վառեալ էին առժամանակեայ կերպիւ ։ Ռուսական զօրախումբք այս դժոխային հրացանութենէն խորտակեցան գրեթէ. սակայն Ռիլոքի գումարտակին մէկ քանի դասակներն՝ ինչպէս նաեւ Շույսկի գումարտակին 1ին վաշտն՝ սոյն գումարտակին հրամանատար Ֆօն Քառլպարս սեպուհին առաջնորդութեամբ եւ 3րդ սահին 5րդ թնդանօթաշարին օգնութեան հասան Քուրոքի դումարտակին. Թիւ 5րդ կերտուածն առնուեցաւ, եւ Տաճիկներն բարեկարգութեամբ դէպ ի Փլէվնա ետ քաշուեցան այգիներուն եւ պարտէզներուն մէջէն ։

Երեկոյեան ժամն հինգն էր ։ Այսքան կատաղի կռիւ մ'ընող ջոկին մէկ տասներորդ մասն գրեթէ պակաս էր. Ռատիշէվօյէն մինչեւ գրաւեալ պատնէշներն տարածուած արտերը դիակներով եւ վիրաւորներով ծածկեալ էին, եւ այս

վերջնոց մէջէն նոքա՝ որ տակաւին կը զօրէին սողալով գնալ, խումբ խումբ կ՚իջնէին դէպ ի Ռասիչէվօ։ Այլ եւս Ռուսաց մէջ հուժկու զինուոր չկար, մինչդեռ Տաճկաց անդադար նոր զօրավիգներ կը հասնէին բազմութեամբ։ Շախօվսքոյ զօրավարն խոհեմութիւն կ՚ընէր, եթէ գրաւեալ դիրից մէջ ամրանալն բաւական համարէր՝ սպասելով որ Գրիւտնէր զօրավարն եւս Կրիվիցայի ամրականը գրաւէ եւ իւր հետ մէկ գծի վրայ գայ․ բայց իւր առաջին յարձակման յաջողութենէն յետոյ խոհական որոշմունք ընող մարդ չէր Շախօվսքոյ զօրավարն, եւ երբ իւր պաշտօնակիցն իմաց տուաւ թէ գումարտակ մը եւ թնդանօթաշար մը կը ղրկէ օգնութեան, ասոր վրայ վերջին սխալ մ՚եւս գործեց․ բոլոր պահեստի զօրքն եւս յառաջ վարեց ի կռիւ։

Տաճիկներն թնդանօթներով զինեալ կերտուած մը կանգնած էին քաղաքին քովը․ հարկ էր վանել զանոնք անտի աւելի յառաջ երթալու համար։ Սակայն անհնար էր պարտասեալ զինուորներով այս բանն ընել։ Շախօվսքոյ իւր պահեստի զօրքը կոչեց․ եթէ նոքա յաջողէին կերտուածին առնելու, լաւ․ բայց եթէ չյաջողէին եւ Գրիւտնէրի ղրկած զօրավիգն ճանապարհին վրայ գտնուէր եւ չը հասնէր (ինչպէս եւ եղաւ իրօք), ինչ պիտի պատահէր, երբ Ռուսք նահանջէին, երբ կռուողներուն նպաստող չը լինէր նահանջն ապահովելու համար։ Այս մտածութիւնն՝ որ զօրավարին վրայ ազդեցութիւն ունենալու էր, չկասեցոյց զայն։ Հրաման ղրկեց նա ձախակողմեան ծայրի խմբին որ իւր չարժման նպաստէ, եւ նորէն յառաջ վարեց զօրքն։

Ըսուեցաւ որ հետեւակազօրաց երկու դասակներ եւ խազախաց երկու հեծելադասք առաւօտեան տասներորդ ժամէն ի վեր կը կռուէին Գրիչինայի առջեւ՝ Տաճկաց ութ վաշտերու դէմ պաշտպանելու համար այն բարձրաւանդակն ուրկէ Օսման փաշա կարէր Շախօվսքոյ իշխանին ձախակողմեան խմբին յետոյկողմն անցնիլ։ Երբ Սքօպէլեվ զօրավարն իմացաւ թէ այս վերջինն յարձակողական շարժում մը կ՚ընէ, հուսկ ուրեմն որոշեց իւր երեք անխոնջ դասակներն կռուոյ մէջ մուծանել՝ վերջին բոյլն մեկուսի թողլով ի պահպանութիւն դրօշուն։

Ժամանակ էր․ այն բարձրաւանդակը պաշտպանող սակաւաթիւ զօրքն վեց ժամ կռուելով ուժաթափ եղած՝ վերջապէս կ՚ընկրկէին Տաճկաց ահագին զօրութեան առջեւ։ Երբ Բուրաքի գումարտակին միւս երեք դասակներն մարտնչելու սկսան, Տաճիկներն Փրօխօրօվիչ փոխ-հարիւրապետին չորս թնդանօթներէն քսան քայլաչափ հազիւ հեռի էին, որոց մարդիկն արիաբար կը մղէին գնտակներու տեղատարափ մը ներքեւ՝ Տաճկաց բազմաթիւ թնդանօթաշարից դէմ։ Անդանօր երկու կողմանքն եւս հրաշալիք գործեցին քաջութեամբ։ Երեք դասակներն անդրդուելի կերպիւ խոյացան սուինով Տաճկաց վրայ, այս անակնկալ յարձակմամբ ընկրկեցին զանոնք, եւ վանեցին մինչեւ քաղաքին արուարձաններն։ Բայց այն տեղ հանելնուն պէս, անխոնջ զօրաց ձեռօք ամենուստ իրենց դէմ թափուած կրակ մ՚եւ երկաթի կտորներու տարափ մը ստիպեց զիրենք ետ քաշուելու մինչեւ իրենց թնդանօթաշարն, որ տակաւին կը մղէր Տաճկաց բազմաթիւ թնդանօթաց դէմ։ Բուրաքի գումարտակին այն վաշտն վերակազմուեցաւ՝ երկու կողմանէ փակեալ անձուկ տեղւոյ մը մէջ, ուրկէ կ՚անցնէր Լօվացի ճանապարհն, եւ Փրօխօրօվիչ փոխ-հարիւրապետին չորս թընդանօթաց նպաստելովն՝ տակաւին երկու ժամ դիմադրեց Տաճկաց ճգանցն։ Գիշերային մութը կոխելէն յետոյ միայն՝ Սքօպէլեվ զօրավարն ետ քաշեց իւր քաջազն զօրքն։ Թէեւ այն տեղւոյ մէջ ձիաւորաց համար դժուար էր գործել, սակայն հարկ եղաւ Կովկասեան Խազախաց միջո-

ցած դաստակներուն Նահանջն ապահովել. վասն զի ուրիշ զօրք չկար։ Այս Խազախներն վերջին անգամ Թուրքերն յետս մղեցին, որով կարելի եղաւ վիրաւորներն վերցնել եւ զօրքը Գրիչինա քաշել։ Անդ՝ կէս գիշերուն երկու ժամ անցած, փոխզօրապետ Շախօվսքոյ իշխանէն հրաման եկաւ դէպ ի Պօկօթ եւ Փէլիշատ Նահանջելու։

Ձախակողմեան ծայրի տկար խումբն այսպէս տասն երկու ժամ կռուեցաւ ութպատիկ առաւել զօրաց դէմ։ Տաճկաց աջակողմեան զօրաց ուշադրութիւնն մասամբ իւիք իւր վրայ գրաւելով՝ Շախօվսքօյ իշխանին խմբին գործը շատ դիւրացուց, եւ իւր գործողութեանց շնորհիւ միայն՝ իշխանին զօրքն զերծ մնաց կողմնակի վտանգաւոր յարձակմանէ մը։ Աստ պարծանքն Սքօպէլեվ հատուածապետին կը վերաբերի եւեթ, որ իբր մարտագէտ արագ եւ ճիշդ տեսութիւն ընելով եւ մէկէն վերահաստատ լինելով կացութեան՝ ըստ այնմ կարգադրութիւններ ըրաւ, դժոխային կրակի մը Ներքեւ իւր անխռովութիւնն եւ կորովամտութիւնն չկորուսանելով եւ դիւցազնական քաջութեան օրինակ տալով՝ իւր զօրքը վառեց բորբոքեց եւ քաջութեան հրաշալիք գործել տուաւ։ Սքօպէլեվ զօրավարին Ներքեւ ձի մը սպաննուեցաւ եւ ուրիշ մը վիրաւորեցաւ։ Նահանջելու ժամանակը եկածին պէս այս սքանչելի սպայն հանգարտօրէն իջաւ ձիէն, եւ սուրը պատեանը դնելով, ամենուն ետեւէն գնաց, իւր քով ունենալով սպայակուտի անդամ Փարէնսով գումարապետն որ այն օրն բընաւ հեռացած չէր իրմէ։

Շախօվսքօյ իշխանն պահեստի զօրքէն նախ Շուսյայի գումարտակին 2րդ եւ 3րդ վաշտերն յառաջ վարեց դէպ յաջակողմն, ուր Տաճիկներն կըսկսէին ծանրակշիռ Ներգործութիւն ունենալ՝ շարունակ զօրավիգ հասնելով իրենց։ Նաեւ Թիւ 41րդ կէտրոնածին մօտ զետեղել տուաւ Թընդանօթաձիգ զօրաց 30րդ սահրին 3րդ շարն՝ ինչպէս նաեւ 32րդ սահրին 3րդ շարն։ Այս շարժմամբք աջակողմն ապահովեցաւ։ Նոյն պահուն Ռիլսքի եւ Քուրսքի գումարտակներն բլրակի մը ետեւէն կը յառաջէին մինչեւ քաղաքին առջեւն եղած աղօրին։ Ռուսք իրենց սպայից առաջնորդութեամբն պահ մ՛այնքան բուռն ջանք կ՛ընեն, որ ամրականին մէջ կը մտնեն. բայց Օսման փաշա՝ որ իւր ձեռաց Ներքեւ ի պահեստի անսպառելի խմբեր ունի, անխնայ զօրք կը ղրկէ, որք կը վանեն զՌուսս։ Յայնժամ Շախօվսքօյ իշխանն՝ ի պահեստի սպասող վերջին գումարտակն Եարօսլավլի 1ին վաշտն անջատելով յառաջ կը վարէ։ Նոյն իսկ Կօրշքով զօրավարին հրամանաւ ետ քաշուած ձախակողմեան խումբն յայնժամ վերստին կը յարձակի, Տաճիկներն ետ կը մղէ եւ աղօրւոյն քով երկու դաստակներ կը գետեղէ ամուր կերպիւ։ Մինչեւ անգամ կը Թուի Թէ զօրաց մէկ մասը քաղաքը մտաւ։ «Այն տեղ մտնելն դժոխոց բերանը Նետուիլ էր.» կ՛ըսէ Տեյլի Նեուզի Թղթակիցն։ Այս անխոհեմութեամբ վտանգեալ դժբաղդ զօրաց գնդերն բնաջինջ եղան եւ կարծես Թէ մեռնելու համար Փլէվնա հասան։

Կ՛ըսուի Թէ նոյն միջոցին Շախօվսքօյ զօրավարն իւր զինուորներուն Փլէվնայի դրանց առջեւ տեսնելով դարձաւ սպայից ըսաւ. « Տեարք, մեր վրէժը կ՛առնումք։ » Ամսոյն 20ին կռուոյն ակնարկութիւն կ՛ընէր, եւ այսպէս խօսելով անշուշտ կը յուսար Թէ Կրիւտնէր եւս յառաջ պիտի խաղայ եւ իրեն ձեռնտու պիտի լինի։ Բայց Կրիւտնէր չհասաւ։ Ծեր զօրավարն իւր եռանդուն պաշտօնակցին օրինակին հետեւելու ստիպուելով արդարեւ յարձակումն ըրեր, բայց անյաջող ելեր էր։ Ձախակողմն Շախօվսքօյ իշխանին յարձակումը տեսնելով, կէս օրն երկու ժամ եւ քառասուն վայրկեան անցած՝ հրաման ըրեր էր յառաջ խաղալու՝ Վէլիամինով

փոխ-զօրապետին , որոյ ուղղակի հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր աջակողմեան ջոկն ։

Վէլիամինով զօրավարն Կրվիցայի մեծ ամրականին վրայ յարձակումն ընել տուաւ պովի գումարտակին , որոց ինքն առաջնորդեց յարձակման միջոցին , եւ որոց ետեւ, դէպ ի ձախակողմն , կըսպասէր ի պահեստի Կալիցի հետեւակազօրաց գումարտակն ։



ԶՕՐԱՎԱՐ ՕՊՐՈՒՉԵՎ

աջ կողմէն՝ Քօզլովի գումարտակին երկու վաշտերուն եւ Փէնզայի գումարտակին , ընդ հրամանատարութեամբ Պէլօքօփիթով հատուածապետին , որոց ետեւ ի պահեստի կըսպասէր հետեւակազօրաց 3րդ հատուածին 1ին սահն, եւ ձախ կողմէն Քօզլովի գումարտակին 1ին վաշտին եւ Թամ-

Ռուս արձակամարտք անդիմադրելի աշխուժիւ յառաջելով Տաճկաց արձակամարտները մղեցին, որք շտապաւ ետ քաշուեցան, Պէլօքօփիթով զօրավարին խումբն կատարեալ բարեկարգութեամբ եւ երգելով կ'ընթանար ։ Փէնզայի գումարտակին 1ին վաշտն որ նախադնաց կը գտնուէր , ա-

ռանց Տաճկաց սարսափելի կրակէն կասելու, յառաջեց եւ սուրն ի ձեռին խոյանալով Թնդանօթաշարի մը տիրեց, ինչպէս նաեւ ամրականին առջեւ եւ իրենց ամենէն մօտ եղած պատնիշաց գծին. հասաւ մինչեւ երկրորդ գիծն, բայց անդանօր ստիպուեցաւ կասելու Տաճկաց պահեստի զօրացն առջեւ, որոց թիւն անդադար կ'առաւելուր, վասն զի հետզհետէ զօրավիգ կը հասնէր։ Նոյն գումարտակին 3րդ վաշտն անմիջապէս օգնութիւն ըրաւ ձախակողմէն, Տաճիկները վանեց պատնիշաց երկրորդ գծէն, գահավիժեց զանոնք ձորակին մէջ եւ դիմացի զառիվերին վրայ նոցա հետամուտ լինելով մինչեւ ամրականին մօտեցաւ։

Սոյն վաշտին հրամանատար Քօվալէվսքի հազարապետն արձակամարտից երեք դասակներուն առաջնորդելով՝ Տաճիկները վանեց արտաքին պարկէններէն, անոնց մէջ զետեղեցաւ եւ ապա 7րդ դասակն եւ 2րդին մէկ մասն հետ առնլով՝ ամրականին պարտակին վրայ խոյացաւ, բայց անոր վրայ ելնելուն պէս՝ Նրանի (եաթաղան) հարուածներով յօշոտեցաւ։ 2րդ դասակին գլուխ Ամօսով փոխ-հարիւրապետն նոյնպէս տապաստ կ'անկանի դիւցազնաբար։ Փէնզայի գումարտակին միւս երկու վաշտերն մէկ քանի անգամ յուսահատաբար յարձակումն ըրին, բայց չկարացին յաղթել Տաճկաց դիմադրութեան, որք թէ յառաջուստ եւ թէ կողմնակի դժոխային կրակ մը կը թափէին, ինչպէս կ'ըսեն պաշտօնական տեղեկագիրք. Մէկ քանի վայրկենի մէջ՝ Փէնզայի գումարտակն 29 սպայ եւ 1,006 զինուոր կորոյս, այսինքն իւր սպայից կէսէն եւ զինուորաց մէկ երկրորդէն աւելին։ Հուսկ ապա հարկ եղաւ նահանջել, վասն զի գումարտակն խառնիճաղանճ կոյտ մը դարձած էր, եւ անկարելի էր բարեկարգութիւն հաստատել եղած սարսափելի կորստեան եւ մանաւանդ չգոյութեան պատճառաւ։

Բայց այսու ամենայնիւ Ռուսք յետս չկացին ամրականին տիրելու դիտաւորութենէն։ Քօզլովի գումարտակին 2րդ վաշտը եւ ապա 3րդն յարձակեցան՝ Փէնզայի գումարտակէն յետոյ։ Քօզլովի գումարտակին քաջ հրամանատարն՝ Ստեփանով գումապետն այս երկու վաշտերուն առաջնորդեց մինչեւ ամրականն, խրամն իջաւ եւ երեք գնտակէ զարնուելով անկաւ։ Մեռնելու վիճակին մէջ Ռուսք ետ քաշեցին տարին զայն. բայց զինուորք դարձեալ չընկրկեցան։ Չկարենալով ամրականին տիրել՝ խրամին մէջ զետեղեցան՝ ի մօտոյ Տաճկաց հետ մարտնչելով։ Նոյն պահուն աջակողմէն հասաւ հետեւակազօրաց 5րդ հատուածին 1ին սահն՝ նոյն հատուածին հրամանատար Շիլտէր-Շուլտնէր զօրավարին առաջնորդութեամբ։ Այս սահն Տաճիկները վանեց նախ ձորակէն եւ յետոյ արտաքին կերտուածներէն. բայց ամրականին վրայ ըրած յարձակման մէջ անյաջող եղաւ։ Ձախ կողմէն եղած յարձակումն եւս արդիւնք մը չունեցաւ։ Քօզլովի գումարտակին 1ին վաշտին եւ Թամպովի գումարտակին վրայ՝ որոց կ'առաջնորդէր Վէլեամինով զօրավարն, այնքան մարդախանձ կրակ մը թափուեցաւ, որ չկարացին ամրականն հասնիլ։ Անկեալք այնչափ շատ էին որ դիակներն եւ վիրաւորներն խոչընդոտն կը լինէին զօրաց շարժմանց։ Այս խումբն չկարաց ամրականին մօտ եղած մէկ լեռնակէն աւելի առաջ երթալ, ուրկէ Տաճկաց վրայ սաստիկ հրացանութիւն մ'ըրաւ։ Մեկուսի սպասող Կալիցի գումարտակն եւս ճակատեցաւ ձախակողմէն։ Նոր եւ բուռն յարձակման փորձ մը միւսներէն աւելի արդիւնք չունեցաւ։ Տաճկաց միահաղոյն հրացանութեամբն ամբողջ կարգեր տապալելով կ'անկանէին մէկէն. Գաղիացւոց առաջին կայսերութեան (Նափօլէոն Ա. ի) պատերազմաց մէջ եղած կոտորածներն յիշելու է, Ռուսաց հետզհետէ կռուոյ մէջ մտած գնդից չափ

շուտով ջնջուող գնդեր իբր օրինակ ցոյց տալու համար ։

Վեցերորդ ժամուն կը լինէր այս։ Այլ եւս Գրիւտնէր զօրավարն ուրիշ պահեստի զօրք չունէր բաց ի Սերփուխովի գումարտակէն՝ որոյ հետ թնդանօթաց շար մը կար, եւ երեք հեծելադասերէ՝ որոց քով ձիոց վրայ բարձեալ 4 թնդանօթներ կային ։ Չորրորդ ժամուն, 30րդ հատուածին 2րդ սահին միւս գումարտակն՝ այն է Գօլօմնայինն իբրեւ զօրավիգ ղրկուած էր Շախօվսքօյ իշխանին, որոյ զօրաց աջակողմին գնացած էր ։

Վեցերորդ ժամն անցնելէ յետոյ՝ Ֆօն Գրիւտնէր սեպուհն պահեստի զօրքէն զատեց Սէրփուխովի գումարտակին մէկ վաշտն եւ Ռիկայի վիշապազօրաց մէկ հեծելադասն՝ ձիոց վրայ բարձեալ երկու թնդանօթներով հանդերձ, եւ ղրկեց իբր զօրավիգ աջակողմեան ծայրի խմբին քով, որ կըսկսէր յետկոյս դնալ եւ այս օգնութեան շնորհիւ կարաց հաստատ կալ ։ Այն ժամանակ իբր պահեստի զօրք երկու վաշտք եւ երկու հեծելադասք մնացին երկու թնդանօթներով հանդերձ ։

Վերջապէս, արեւը մարը մտնելու միջոցին՝ զօրագլուխն հրաման ըրաւ ամրականին դէմ յարձակման վերջին փորձ մ'ընելու, եւ իբր զօրավիգ ղրկեց Սէրփուխովի գումարտակէն երեք ուրիշ դասակներ ։ Երկիցս յարձակումն եղաւ առաջիններուն չափ կատաղութեամբ եւ ձախողութեամբ ։ Վերջին յարձակման միջոցին՝ 31րդ հատուածին 2րդ սահին հրամանատար Գօժէրխանով զօրավարն առաջնորդեց զօրաց եւ ամրականէն հարիւր քայլ չափ հեռի վիրաւորուեցաւ ։ Օսման փաշայի ամենէն ընտիր տեղակալներէն միոյն՝ Էմին պէյի հրամանատարութեան ներքեւ գտնուող Տաճկաց թուական առաւելութեանն եւ ամուր դրից դէմ նըկուն եղաւ թէ սպայից անձնուիրութիւնն եւ թէ զինուորաց քաջութիւնն ։

Սակայն դիշերը վրայ հասեր էր եւ դարձեալ կռիւը կը շարունակէր ամրականին շուրջն ։ Հրացաններու ձայնն եւ կայթիւնք կը լսուէին տակաւին . արի ռուս զինուորք վերջին յուսահատական փորձ մը կ'ընէին ամրականին տիրելու համար ։ Մերթ հրացաններուն ձայնն հեռուստ լսուելով՝ կը կարծուէր թէ նոցա դիւցազնական ջանքն քաջութեամբ պըսակեալ էր . բայց այս յոյսն շուտով ի դերեւ կ'ելնէր . պահ մը յետոյ ումբաձըգութիւնը կը սաստկանար եւ հրացաններուն ձայնն վերստին կը մօտենար ։

Ֆօն Գրիւտնէր սեպուհն տեսնելով որ նորէն ճիգ թափելն անօգուտ է, մանաւանդ որ աղջամուղջ էր, հրաման ըրաւ նահանջելու, պատուիրելով Վէլիամինով զօրավարին որ կրակին ներքեւէն ետ քաշէ ամրականին առաջը մնացող զօրքն ։ Նահանջն ապահովելու համար յարմար դիրից մէջ զետեղեց 1° Սէրփուխովի գումարտակին մէկ վաշտն, Զուկոյեվի նիզակաւորաց մէկ հեծելադասն եւ երկու թնդանօթներ, որք ի պահեստի կային . 2° Կալիցի հետեւակազօրաց գումարտակն, որ ամենէն քիչ կորուստ կրած էր. 3° Վօրօնէժի հետեւակազօրաց գումարտակն, որ դեռ եւս Չիչթօվէն Թըրսթէնիք հասեր էր։

Աղխերն դէպ ի Պուլկարէնի ղրկուեցան. շարժուն անկելանոցաց մէջ փոխադրեալ վիրաւորք զօրաց նահանջէն առաջ դարմանուեցան եւ կառաց մէջ զետեղուեցան՝ շնորհիւ Գէխէր բժիշկին անխռովութեանն եւ ջանից, որ միւս բժշկաց պէս վիրաւորները խնամեց տաճիկ հետեւակազօրաց կրակին ներքեւ ։ Սակայն այս ճակատամարտին մէջ կոտորածն այնքան սարսափելի եղած էր, որ Օժանդակ Ընկերութեան ունեցած բաներն բաւական չեղան։ Բազմաթիւ վիրաւորներ ուղղակի Ռուսիա ղրկուեցան այնպէս ինչպէս կըռուոյն օրն հագուած էին՝ անգամ մը դարմանուելնուն պէս . իրենց շապիկներն եւ զգեստներն արիւնաթաթախ էին եւ արիւնախառն ցեխով շաղախեալ ։

Ամսոյն 31ին կէս օրին մէկ ժամ մնալով՝ միայն՝ Գրիւտնէր զօրավարն կարաց իւր զօրաց բոլոր կացմնացքը ժողովել ։ Կըռուելու եռանդեամբ մըլեալ գումարտակ մը Կրվիցայի մօտ գիշերեց գրեթէ Տաճկաց դրից մէջ, եւ կըսպասէր որ յարձակումն լինի իւր վրայ. բայց Տաճիկներն իրենց բռնած պարզ պաշտպանողական ընթացքէն բնաւ չշեղելով՝ պատնիշաց մէջ մնացին ։ Ռուս զինուորք, այն համբաւեալ հողավաստակք կարէին պատնէշներ շինել ինքզինքնին պատսպարելու համար, բայց ռուսական դասակներուն մէջ զինուորաց մախաղին վրայ բրիչ եւ թի չգտնուիր, ինչպէս կը գտնուի ուրիշ բանակաց մէջ. այլ այս գործիքն սայլերու վրայ են՝ յորս երբեմն բաւական դժուար կը լինի գտնելն, ինչպէս եղաւ այս պարագայից մէջ ։

Գրիւտնէրի նահանջելուն վրայ Շախօվսքօյ իշխանն առանձինն եւ անօգնական մնաց իւր նուազեալ զօրաց հետ, զորս յիմարաբար յառաջ վարած էր Տաճկաց պատնէշներուն մէջ. վասն որոյ կըռուոյն աւարտն սարսափելի աղէտք բերաւ իրեն ։ Շախօվսքօյ իշխանն Ռատիշէվոյի հարուածողման բարձրաւանդակին վրայ էր՝. անդանօր ականատես եղաւ այնպիսի տեսարանի մը որ կարէր պակուցանել ամենէն արի ոգին եւ դառն մորմոք ազդել այն մարդուն որոյ վրայ կը ծանրանար այս աղէտից պատասխանատուութեան մեծ մասն ։ Մարը մտնող արեւուն վերջին նշուլից մէջ, կը պատմէ այս տեսարանին ականատես ոմն, կը նշմարուէին Տաճիկներն որ Փլէվնայէն դուրս կ՚ելնէին իբրեւ մրջիւններու կոյտ եւ նոյն օրն պատերազմի ասպարէզ եղած արտերուն վրայ կը ցրուէին ։ Վիրաւորեալ գումարտակներուն մնացորդքն խառնամբոխ խոյս կուտային պաշը-պօզուգներուն առջեւէն ։ Ի զուր մէկ քանի սպայք կը ջանային իրենց մարդիկը ժողովել՝ հետամուտ եղող թշնամւոյն դէմ դնելու համար, եւ մէկ քանի կէտերուն վրայ զօրաց նահանջին օգնել՝ որ հետզհետէ խուճապական փախըստեան կը փոխուէր ։ Հազիւ կարելի եղաւ այլեւայլ տարրերէ դասակ մը կազմել ։ Առաւօտուն ուղեկիցներու չքեղ խմբիւ մը շրջապատեալ Շախօվսքօյ իշխանին քով սակաւաթիւ Խազախներ միայն մնացած էին պահպանութեան համար ։ Զօրավարն առաւօտէն ի վեր ուրիշ բան կերած չէր օդւոյ մէջ թաթխուած պաքսիմատի կտորէ մը զատ ։ Ձիոյ վրայ հեծեալ էր, տժգոյն կ՚երեւէր, իւր շըրթունքը կը խածնէր բարոյական ամենասաստիկ ցաւերով տագնապեալ ։ Վիրաւորաց աղաղակներն, պաշը-պօզուգներուն ճիչքն, մերթ ընդ մերթ մէկ քանի մարտասայլից կրակ առնլով պայթելու ձայներն, ծխամած երկնից մէջ ըստ դիպաց արձակեալ ռմբի մը փայլատակումն, ձախ կողմէն գիւղ մը բոցածախ ընող հրդեհի մը շառայլքն համանգամայն չարաշչուկ վսեմութիւն մը կուտային այս տեսարանին ։ Երեկոյին պահ մը խնդիր եղաւ թէ կարելի էր արդեօք հետեւեալ օրն վերստին յարձակումն ընել՝ գէթ Ռատիշէվոյի մօտ վերստին բռնելու համար այն դիրքն, ուրկէ Ռուսք ետ քաշուեր էին՝ այնքան ճիգ թափելով զանոնք գրաւելէ յետոյ ։ Այս բանն ընելու համար՝ Գրիւտնէր զօրավարին հրամանատարութեան ներքեւ գտնուած աջակողմեան ջոկին՝ Շախօվսքօյ իշխանէն առաջնորդեալ ձախակողմեան ջոկէն նուազ վնասեալ լինելու էր ։ Սոյն խնդրոյն վրայ վիճաբանութիւնն սկսուած պահուն՝ լուր հասաւ թէ Ռատիշէվոյի պարտութեան չափ վըճռական պարտութիւն մը կրած էր Ֆօն Գրիւտնէր զօրավարն Կրվիցայի առջեւ ։ Այնուհետեւ՝ անմիջապէս վրէժ առնլու ակնկալութիւնն ի բաց թողուեցաւ եւ Շախօվսքօյ զօրավարն հորիզոնէն վեր նոր բարձրացող լուսնոյն տմոյն լուսով՝ մեկնելու ստիպուեցաւ գրաւեալ կէտէն ։ Մինչեւ հեռի տեղեր՝ արտերն այնպէս

ծածկուած էին դիակներով եւ վիրաւորներով, որ հարկ կը լինէր ձիերն խիստ յամր կերպիւ վարել խեղճ զինուորներն չճնշելու համար ։

Ռուսաց կորուստն գրեթէ իրենց թըւոյն մէկ երրորդին չափ եղաւ ։ Պաշտօնական տեղեկագիրք կը խոստովանին թէ 169 սպայք եւ 7,136 զինուորք անկեալ էին, առանց որոշելու մեռեալներն եւ վիրաւորներն. առաջնոց թիւն կարէր զօրքը սարսափեցնել եւ վհատեցնել ։ Տաճկաց կորուստն ասկէ շատ նուազ էր ։



## ԱՀ ԵՒ ՍԱՐՍԱՓ Ի ԶԻՇԹՕՎ ԵՒ Ի ԶԻՄՆԻՑԱ

Փլէվնայի պարտութիւնն ռուսական բանակին յետին կողմն այնպիսի ազդեցութիւն յառաջ բերաւ, որ յայտնի կ'ընէ թէ ինչպիսի աղէտք պիտի ծագէին, եթէ Տաճիկներն զօրաւոր յարձակում մ'ընէին։

Յուլիսի 31ին կէս օրէն կէս ժամ յետոյ՝ Պուլկարէնիէն եկող եւ Զիշթօվէն անցնող վիրաւորք զօրաց նահանջն իմաց տուին, եղած մեծ կորստեան վրայ խօսեցան եւ յաւելին ըսել թէ՝ ըստ տարաձայնութեանց՝ վիրաւորաց ուրիշ խումբ մը ճանապարհին վրայ յարձակումն կրած է Տաճկաց հեծելազօրուն կողմանէ, թէ այն վիրաւորաց մէկ մասն դերի բռնուած էր, եւ թէ Տաճիկներն նոցա ետեւէն կը յառաջէին ։ Այս զրոյցներն վերջին ծայր սոսկում ձգեցին այն խառնաղանճ ամբոխին մէջ, որ բանակաց կը հետեւէր եւ կը բաղկանայ այլեւայլ տեղերէ եկող Թաթարներէ, Հրեաներէ, օղի ծախողներէ, կողոպուտ փոխանակողներէ եւ աւար թաքուցանողներէ ։ Ցանկարծ սոցա մին Տաճիկները Զիշթօվի մօտ (1) տեսնել կարծեց. աղաղակ մ'է ելաւ թէ Տաճիկները կը հասնին, եւ քաղաքին հասարակութիւնն խուճապանօք խոյս տուաւ ամեն կողմանէ ։ Կանայք մազերնին կը փետեն, ծերունիներէն ոմանք տխրութեամբ եւ յանձնառութեամբ կըսպասեն. ամենէն աւելի թեթեւաշարժ գտնուողներն դէպ ի կամուրջները կը փախչին ։ Ինքզինքնին արդէն պաշը-պօզուգներու անողոք վրէժխնդրութեան մատնուած կարծող խեղճ Պուլղարներ տաճիկ դատաւորին (դատը) քով գնացին նորա պաշտպանութիւնն խնդրելու համար պաղատանօք ։ Կառավարութեան ապարանից (գօնաղ) մէջ ժողովեալ ռուս սպայք երդուան մինչեւ վերջը դիմադրելու կարելի եղածին չափ Տաճիկ սպաննելով, եւ այս տեսարանին ականատես եղող մէկը կը պատմէ թէ նոքա խոստացան զիրեար սպանանել քան թէ ողջ ողջ անկանիլ Տաճկաց ձեռքն ։

Արբեալ Խազախ մը չթամբուած ձիոյ մը վրայ ոստնլով՝ դէպ ի կամուրջը վազեց եւ կը գոչէր. « Տաճիկներն Զիշթօվի վրայ կը խաղան ։ » Այս մարդն անմիջապէս ձերբակալուեցաւ, բայց մատակարար վարչութեան անդրուվարաց խումբքըն՝ որք գետէն անցած էին եւ կամըրջին մօտ կըսպասէին, խառնիխուան յառաջեցին դէպ ի կամուրջն, ուրկէ անցնելու համար աճապարեցին նաեւ Զիշթօվի բնակիչք, կառավարք, անդրուվարաց խմբին մարդիկն եւ պուլղար հեծելազօրք ։ Այս բազմութեան ճիգն այնքան սաստիկ էր որ անկարելի էր փախստականներն արգելուլ ։ Ձիաւոր, հետի, իշու վրայ հեծեալ կամ կառք նստած կանայք, տեղացիք, զինուորք, կ'աճապարէին ռումանական եզերքն անցնիլ ։

Դանուբէն անցնող զօրաց հրամանատար Ռիխթէր հաստուածապետն հրաման ըրաւ կամրջին վրայ խառնեալ բազմութիւնըն անպատճառ արգիլելու մինչեւ անգամ զինու զօրութեամբ ։ Հիւսիսային կամրջին վրայ այս բանն շուտով կարելի եղաւ ընել, բայց հարաւային կամրջին վրայ (որ պուլղարական գետեզրն Ատա

(1) Այս կերպ սխալմունք սոյն պատերազմին մէջ յաճախ պատահած են, վասն զի Ռուսիոյ ծառայող Չէրքէզք՝ Տաճկաստանի ծառայող Չէրքէզներու պէս հագուած են ճիշդ :

կղզւոյն կը կցորդէ) հարկ եղաւ մէկ քանի սայլեր կործել մուտքը փակելու համար ։ Նոյն պահուն՝ Չիչթօվի հրամանատար Փօտկուրաքի հազարապետին կողմանէ լուր հասաւ, թէ պարապ տեղն էր այդ խրարանցումը, եւ թէ Տաճիկ մը չէր երեւցած ։ Այս լրոյն վրայ քիչ մը հանդարտեցաւ բազմութիւնն որ ռումանական գետափին վրայ կամրջին մօտ խռնուած էր ։ Սակաւիկ մի յետոյ, Ռիխթէր զօրավարն եւս մինչեւ պուլղարական գետեզրն գնաց, եւ հրաման ըրաւ փախըստականաց դէմ ազդու կերպիւ վարուիլ. ստուգելով որ առաջին սարսափն անցած էր՝ անդրուվարաց խմբին պարապ կառացըն թոյլտուութիւն ըրաւ կամրջէն անցնելու, որք Զիմնիցա երթալու վրայ էին բեռ առնլու համար ։ Զօրավարն յետոյ Չիչթօվ դարձաւ, ուր Փօտկուրաքի հազարապետին ջանից եւ խելացի հրամաններուն վրայ հասարակութիւնը քիչ մը հանդարտեր էր եւ բարեկարգութիւն հաստատուեր էր թէ քաղաքային պաշտօնականաց եւ թէ փոխադրութեան գործոց մէջ. բայց տակաւին սարսափն այնքան սաստիկ էր, որ արք՝ որքան եւ կը զիջանէին քաղաքին մէջ մնալու, դարձեալ իրենց կանայքն եւ տղայքը կամուրջէն կը ղրկէին, սակայն Ռիխթէր զօրավարն հուսկ յետոյ կարող եղաւ վստահացընել զանոնք ։

Ռիխթէր զօրավարն Չիչթօվ հասնելով՝ տեսաւ որ բոլոր զօրքն քաղաքին շուրջը զետեղեալ էր. զօրավարն աչքէ անցուց զանոնք եւ հրաման ըրաւ իրենց տեղերը մնալու՝ որպէս զի հասարակութիւնն ապահովի ։

Կէս օրն մէկ ժամ անցնելով՝ սարսափն մինչեւ ռումանական գետեզրին վրայ Զիմնիցայի մէջ տիրեց ։ Լուր տարուած էր անդ թէ Տաճիկներն կամուրջը գրաւեր էին, եւ թէ չորս շոգենաւներ զօրքն աջակողմեան եզրէն ձախակողմեան եզրը կը փոխադրէին. ամբողջ հասարակութիւնն քաղաքէն դուրս ելաւ խուճապանօք ։ Անկելանոցին հիւանդներէն եւ վիրաւորներէն (4,000էն աւելի էին) նոքա՝ որք կարէին ոտք ելնել, փախան. իւրաքանչիւր ոք սկսաւ վազել Աղէքսանդրիայի, Պէյայի եւ Պրիկատիրի ճանապարհներուն վրայէն, եւ սարսափն ամեն կողմ տարածուեցաւ ։ Վստահելի խաղախներ ղրկուեցան իսկոյն սպայից հետ՝ գըլխաւորապէս քաղաքին պարէնները բերողներն վստահացնելու եւ ստիպելու համար, որ հանդարտօրէն իրենց ճանապարհը գնալն շարունակեն ։

Քիչ քիչ անդորրութիւնը տիրեց վերըստին ։ Իրենց տեղերն հանդարտ մնացող զօրաց տեսքն մանաւանդ՝ ինչպէս նաեւ Փօտկուրաքի հազարապետին անմիջապէս ձեռք առած միջոցներն եւ այս սպային կորովամտութիւնը հասարակութեան վըստահութիւն ազդեցին ։

Ի՜նչ պիտի լինէր, եթէ Օսման փաշա իւր պահեստի զօրաց գլուխն անցնելով՝ որոց մէկ մասն կռուոյ մէջ մտած չէր, եւ Փլէվնայէն դուրս ելնելով, Քրիւտնէրի կիսովին վթարեալ գունդն վանէր իւր առջեւէն, մանաւանդ որ այն խելայեղութիւն պատճառող սարսափն իրեն պիտի նպաստէր ։ Ո՞վ կարէր զինքն արգելուլ այն երկու աւուր գնացից մէջ. զոր հարկ էր ընել Չիչթօվի կամուրջն հասնելու համար ։ Ի՞նչ հետեւութիւններ յառաջ պիտի բերէր թշնամւոյն բանակին հաղորդակցութեանց ընդհատումն, մինչեւ անգամ եթէ մէկ քանի ժամ տեւէր ։ Եւրոպայի մէջ ամեն ոք այս հարցմունքն ընելու պարտաւորեցաւ, եւ մէկ քանի օր չարագուշակ տարաձայնութիւններ եղան Ռուսաց վիճակին վրայ ։ Լրապատումք սաստիկ երկանց բռնուելով՝ ձախողութիւններ կուտեցին եւ այն յոգի հարեալ բանակին այլեւայլ մասունքն իբրեւ անվրէպ եւ բնաջինջ կորստեան մատնեալ ցոյց տուին, Կուրքօն իբրեւ յայսկոյս Պալքանաց խորտակեալ, Ցարէվիչն

*իբրեւ Լօմի եզերաց վրայ ոչնչացեալ, եւ Մէհէմմէտ Ալին մինչեւ ի Ջիւմթօվ ժամանեալ ։ Սակայն Նիքոլա մեծ դքսին բաղդէն՝ Օսման փաշա անխաղաց մնաց իւր պատնէշներուն մէջ ։ Գուցէ լաւ ըրաւ՝ անարգել ռազմագիտաց ըսածին հակառակ ։ Նա կը ճանաչէր իւր զինուորներն . սոքա պատնիշաց ետեւ սքանչելի էին , սակայն տակաւին բաց դաշտի վրայ փորձեալ չէին . կանոնաւոր հեծելազօր չունէր եւ չեմք կրնար բացորոշ կերպիւ ըսել թէ արդեօք զօրապետին վարանմանն ընծայելու է նորա անգործ կալուն պատճառն թէ իւր զօրաց մասին ունեցած քաջ ճանաչողութեան ։*

*Յուլիսի 31ին Գրիւտնէրի եւ Տախօվըսքօյի դունդքն վերջապէս զետեղուեցան այն կայաններուն վրայ զորս կը գրաւէին յարձակման նախընթաց գիշերն , եւ զորս վերը ցոյց տուած եմք ։ Զօրախումբք կարացին հանգստանալ անդ , վերակազմուիլ, իրենց վիրաւորները բառնալ եւ սպառածներուն տեղը լնուլ՝ կատարեալ հանդարտութեամբ . եւ երբ մեծ դուքսն մէկ քանի օրէն յետոյ՝ զօրաց այցելութիւն ըրաւ, Էնվալիտ ռիւս լրագիրն կարաց նոցա համար ըսել . « Նորին կայսերական Բարձրութիւնն զօրքն այնպիսի լաւ վիճակի , այնպիսի լաւ բարեկարգութեան մէջ եւ այնպիսի պատերազմական եւ զուարթ ոգւով վառեալ գտաւ , որ զանոնք տեսնելով չէր կարծուեր թէ դեռ նոր ելած էին այնքան չարաչար փորձութենէ ։ Փլէվնայի անյաջողութենէն յետոյ ռուս զինուորք ապացուցին թէ պահած են այն որոշիչ յատկութիւնն , որ ուրիշ ամեն բանէ աւելի նպաստաւոր եղած է իրենց պանծանացն , եւ թէ աղէտք մը փոխանակ վհատութիւն եւ սրտաբեկութիւն պատճառելու՝ կորով եւ զօրութիւն կուտայ , թշնամւոյն հետ նորէն ոգորելու առաւել ջերմ փափաք մը ներշնչելով ։*

# Գլուխ Քսանեւչորրորդ

## ՓԼԷՎՆԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻՑ ՀԵՏԵՒՈՒԹԻՒՆՔ

### ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՀԵՏԵՒՈՒԹԻՒՆՔ

*Արդէն մէկ քանի անգամ խօսած եմք Կոստանդնուպոլսոյ հասարակութեան դիւրազգածութեանը վրայ , որով կարելի կը լինի հասկանալ թէ ինչ ցնծութեամբ ընդունեցաւ նա Փլէվնայի յաղթութեան աւետիսն ։ Չիք այլ եւս վհատութիւն , չիք այլ եւս յոռի կարծիք , չիք այլ եւս չարաշշուկ գուշակութիւն . տաճկական բանակն ապացուցած էր թէ կարէր մարտնչիլ եւ իւր հակառակորդաց յաղթել , եւ ամենէն չափաւոր կարծեաց տէր անձինք Ռուսաց բոլոր զօրքը Դանուբի մէջ ընկղմելու խօսք ըրին իսկոյն ։ Հասարակաց բարոյական վիճակին այսպէս բարձրանալը պաշտօնապէս յայտնի կը լինի՝ ջերմագին խնդակցութեան նամակի մը մէջ , զոր Սուլթանն ուղղեց առ յաղթականն ։ Ահաւասիկ այն նամակին թարգմանութիւնն .*

*« Իմ հաւատարիմ միւշիրս Օսման փաշա .*

*« Դուք Օսմանեանց փառքն եւ մեր բանակաց պատիւը բարձրացուցիք ձեր արիութեամբն եւ ձեր տարած յաղթութեամբն ։ Աստուած օգնէ մեր ջանից ։ Կ'ողջունեմ բոլոր սպայքն եւ զինուորներն,*

զորս իմ զաւակներէս աւելի կը մեծարեմ։ Նոքա արիութիւն եւ անվեհերութիւն ցոյց տալով գոհունակութեամբ լցուցին իրենց Փատիշահն ։ Աստուած պարգեւէ նոցա յաւիտենական երանութեան հետ նաեւ զինուց յաջողութիւն վասն պաշտպանութեան Իսլամի ։

« Ձեր ծառայութեանց փոխարէն Օսմանիյէյի շքանշանն կը շնորհեմ, եւ միանգամայն կը հրամայեմ՝ այն բարձրագոյն եւ ստորին սպայքը վարձատրելու, զորս գոված էք ձեր տեղեկագրաց մէջ ։ Երբ Իսլամին քաջազն պատերազմիկներն վերադառնան, ես ինքնին պիտի բաշխեմ իֆթիխարի (պատուոյ) շքանշանն՝ նոցա որոց անկ է ։ Ըսէք ամենուն, հրամանատարաց, սպայից եւ զինուորաց, թէ պիտի վարձատրուին անյապաղ եթէ արժանաւոր լինին ։

« Ձեր քով մասնաւոր պաշտօնատար մը կը ղրկեմ, որում յանձնարարած եմ ձեր ամենուն յայտնել թէ՛ իմ հաճութիւնս եւ թէ գոհունակութիւնս ։

«ԱՊՏ-ՈՒԼ-ՀԱՄԻՏ ԽԱՆ»

Ասիոյ մէջ ձեռք բերուած յաջողութիւններէն անմիջապէս յետոյ՝ Փլէվնայի յաղթութիւնն միւսլիման զինուորներուն մոլի վստահութիւն ազդեց, եւ պատրաստեց զանոնք նոր յաղթութիւններ տանելու ։ Օսման փաշա՝ որ օսմանեան զինուց անարգեալ փառքն այսպէս բարձրացուց, բուն Թուրք մ'էր, եւ ոչ օտարական, ինչպէս Եւրոպայի մէջ կարծըուած էր պահ մը, զի ոմանք քրիստոնէութենէ դարձած Գաղիացի մ'է ըսին, ոմանք ամերիկացի Գրուսֆորտ զօրապետըն ըրին զինքն եւ ոմանք՝ մինչեւ անգամ Պազէնն ։

Սխալ է կարծել թէ Ռուսաց կողմն վհատութիւնն այնքան մեծ եղաւ, որքան մեծ էր խանդն Տաճկաց մէջ ։ Պնդութիւնն ռուս զինուորին առաջին յատկութիւններէն մին է, եւ ճշմարտութեան բուն արտայայտութիւնն է [illegible] վերոյիշեալ խօսքն, որով նոյն լրագիրն՝ իբրեւ վերստին ողորմելէ զատ ուրիշ փափաք չունեցող ցոյց կուտայ Փլէվնայի պարտեալներն ։ Սակայն սպայակոյտն պահ մը սրտմտեցաւ եւ իւր ցասումն Ռումանիացւոց վրայ թափուեցաւ ։ Կ'երեւի որ մեծ դուքսն՝ Փլէվնայի ճակատամարտէն երեք օր յառաջ՝ իւր զօրաց հատուածն Նիկոպօլսոյ մէջ համախմբելու սկսող Մանու զօրավարին հրաման ըրեր էր՝ իւր կազմածքն գետէն անցընել աճապարանօք եւ դէպ ի Փլէվնա խաղալ, Գրիւտնէր զօրավարին հրամանացն համեմատ գործելու համար ։ Ռումանիացի զօրավարն փոխանակ հնազանդելու՝. դիտողութիւն ըրած էր թէ ինքն Նիքօլա մեծ դքսին գերագոյն հրամանատարութեան ներքեւ չէր գտնուեր, այլ Ռումանիոյ Կարոլոս իշխանին՝ այն է իւր վեհապետին։ Այս վերջինն ռուսական սպայակոյտին մէկ գրութենէն իմանալով եղած բաները, պատասխան գրեց որ ռումանական բանակն ռուսական բանակին գործակից ընելէ առաջ՝ հարկ էր համաձայնիլ մէկ քանի խնդրոց վրայ ։ Իշխանն կարէր նաեւ ըսել, եթէ չէ ըսած, թէ այսպիսի համաձայնութիւն մը երկար ժամանակէ ի վեր եղած պիտի լինէր, եթէ Ռուսք իրենց դաշնակցաց գործակցութիւնն դիտմամբ չարհամարհէին ։ Սըմին իրի, Մանու զօրավարն՝ որ իւր հրամանաց ներքեւ չորս գումարտակ եւ 36 թնդանօթ ունէր, Նիկոպօլիս մնաց, եւ ճակատատեղիէն 15 հազարամէթր միայն հեռի գտնուող ռումէն . զօրաց յառաջապահք անշարժ կացին ։

Ռուսք պարտութիւն կրելէ յետոյ՝ ասոր պատճառն Մանուի մերժումն համարելով եւ պատասխանատուութիւնն նորա վրայ ձգելով սրտահեշտ եղան, եւ քաջ զօրավարն մեծ դքսին բարկութեան զոհ գընաց ։ Կարոլոս իշխանն մինչեւ վերջն զայն պաշտպանելու չհամարձակելով՝ նորա հրամանատարութիւնն Անճելէսքու գումա-

պետին յանձնեց ։ Վերջապէս Փլէվնայի պարտութիւնն՝ յարձակող զօրաց պարզապէս յետս մղում մ'եղաւ Տաճկաց անգործութեան պատճառաւ, եւ Ռուսաց համար աւելի յաջող քան թէ ձախող հետեւութիւններ ունեցաւ. այս անգամ եւս չարէն բարի յառաջ եկաւ ։

Եւ նախ հարկ եղաւ այլ եւս ըստ դիպաց չգործել, ինչպէս գործուած էր մինչեւ ցայնժամ, եւ պատերազմի կանոնաւոր յատակագիծ մ'ընտրել ։ Ցայսկոյս Պալքանաց արշաւանք ընելու յանդուգն խորհուրդքն առ ժամանակեայ կերպիւ ի բաց թողուեցան ։ Շիփքայի կիրճն անցնող եւ դէպ ի Գըզանլըգ իջնելու սկսող 8րդ գունդն առաջնոյն հակառակ հրաման մը ստացաւ եւ ետ դնաց՝ Սէրվիի դիրքն ամուր կերպիւ գրաւելու համար, ուսկէ Օսման փաշա կարէր բանակին վրայ կողմնակի յարձակիլ ։ Կուրքօ զօրավարին ձախող կըռիւներ տալով՝ զորս յետոյ պիտի պատմեմք, վտանգեցաւ, յետս կոչուեցաւ այն կրճից մէջ զորս այնքան պանծալի օրինակաւ գրաւեր էր եւ միայն պաշտպանողական ընթացք մը բռնելու ստիպուեցաւ ։ Ցարէվիչի բանակն՝ որ անսահմանաբար կը տարածուէր դէպ յՕսմանփազարը, կանգ առաւ եւ Դանուբի գըծին վրայ ամրացաւ, բովանդակ զօրաց ճակատն աւելի նեղցաւ, թէ եւ մեծ դքսին ունեցած զօրաց թուոյն նայելով՝ տակաւին շատ լայն էր եւ կիսալուսնոյ ձեւով կը տարածուէր Ռուսճուգի շրջակայներէն մինչեւ Վիտի գետաբերանն, անցնելով Լօմի գծէն, Էլէնայէն, Խայինքէօյէն, Շիփքայէն, Սէրվիէն, Լօվացէն եւ Փլէվնայէն. այս կիսաբոլորին ամենամեծ շառաւիղն գէթ 120 հազարամէթրէն



ՊԱՇԸ-ՊՕԶՈՒԳՆԵՐՆ ՏԱՃԿԱՑ ՄԵՌԵԱԼՆԵՐՆ ԿԸ ՎԵՐՑՆԵՆ ԵՒ ՌՈՒՍ ՎԻՐԱՒՈՐՆԵՐՆ ԿԸ ՋՐԱՒԵՆ ՓԼԷՎՆԱՅԻ ԿՌՈՒՈՅՆ ՀԵՏԵՒԵԱԼ ՕՐՆ

աւելի չլինելով՝ կարելի էր շուտով զօրավիգ ղրկել մէկ կէտէն միւսն ։ Վերջապէս Թռնօվա՝ գործողութեանց այսպիսի անձուկ ասպարէզի մը նայելով արտարակեդրոն համարուեցաւ, եւ Դանուբի առաւել մօտ տեղ մը զօրանիստ եղաւ ։

Յուլիսի 31ին առաւօտուն սուրհանդակ մը Թռնօվա հասեր էր, որ երկրորդ յարձակման յետս մղուելուն եւ զօրաց սարսափելի կորստեամբք Քրիւտնէրի ետ քաշուելու ստիպուելուն գոյժը կը բերէր ։ Ժամը 10ին պատերազմական խորհուրդ մ'եղաւ ընդհանուր սպայակուտի գլուխ Նէփօքօյչիցքի զօրապետին բնակութեան յատկացեալ տեղն, մեծ դուքսն, իւր սպայակուտի գլուխ Լէվիցքի զօրավարն, Հաղէնքամֆ գումարպետն եւ ուրիշ երկու սպայք ներկայ գտնուեցան ։ Որոշուեցաւ որ մեծ դուքսն անմիջապէս Պուլկարէնի երթայ, ուր Քրիւտնէր քաշուելու վրայ էր, ինչպէս լուր ղրկած էր, եւ զօրանիստ լինի ուրիշ կէտ մը, որ յետոյ պիտի ընտրուէր ։

Առժամանակեայ կերպիւ զօրանիստ եղաւ Պիէլա, յետոյ Պուլկարէնի, յետոյ Զավուշքա-Մահալլէ ։ Այս տեղ օգոստոսի 7ին ստորագրուեցաւ պայմանագիր մը, որ ցոյց կուտայ ռուսական սպայակուտին դիտաւորութեանց եւ ակնկալութեանց որքան փոխուիլն Փլէվնայի պարտութեան վրայ ։ Մինչեւ այն ժամանակ յոյս կար թէ միանգամ արշաւանք ընելով պատերազմին վերջ պիտի տրուի. այնուհետեւ կը թուէր թէ դժուարին մրցում մը պիտի լինէր, որոյ տեւողութիւնն ոչ ոք կարէր հաշուել եւ կամ վախճանն գուշակել ։ Վասն որոյ մեծ դուքսն իմաստուն նախատեսութեամբ մտածեց հետեւեալ տարին երկրորդ արշաւանք մ'ընելու պատրաստութիւններ տեսնել, եւ որոշեց որ Պէնտէրէն մինչեւ Կալաց երկաթուղի մը շինուի, եւ այնու հնար լինի պաշարները մինչեւ Ռումանիա հասուցանել առանց ընդհատութեան ։ Ռուսիացի մեծ ճարտարագործին՝ Փօլիաքովի յանձնուեցաւ այս շինութիւնն ։

Պայմանագրին գլխաւոր տրամադրութիւնքն ասոնք էին. երկաթուղւոյ գիծը պիտի շինուէր եւ զայն բանեցնելու սկիզբն պիտի լինէր երեք ամսէն. այսինքն նոյեմբերի 8ին, եւ մինչեւ հաշտութեան կնքուելու ժամանակն՝ Պ. Փօլիաքով խնամք պիտի տանէր երկաթուղւոյ գծին լաւ պահպանութեան ։ Իւրաքանչիւր վէրսթի համար պետութիւնն առաւելն 21,000 ռուպլի պիտի վճարէր շինողին ։ Ռումանական երկրին վրայ՝ այսինքն Քուպէյէն մինչեւ Կալաց շինուելիք մասին համար Պ. Փօլիաքով կը խոստանար պէտք եղած տեղերը գնել՝ այս մասին ռումանական կառավարութեան հետ համաձայնելով, առանց ռուսական կառավարութեան միջամտութեանն ։ Ռումանական երկաթուղեաց վրայ բանող ռուսական կառաց կազմածներն պիտի գործածուէին նաեւ այն գծին վրայ ։ Միանգամայն մեծ դուքսն զննութիւններ ընել տուաւ՝ բանակին ետեւի կողմն ուրիշ երկու երկաթուղեաց շինութեան համար, մին Ճուրճէվօյէն մինչեւ Զիմնիցա եւ միւսն Զիշթօվէն մինչեւ Թռնօվա ։

Օգոստոսի 9ին Նիքօլա մեծ դուքսն զօրանիստ ընտրեց վերջապէս Կօրնի-Սթուտէն փոքրիկ գիւղն որ մեծ առաւելութիւն մ'ունէր՝ Փլէվնայէն, Պիէլայէն եւ Թռնօվայէն հաւասարապէս հեռի եւ Զիշթօվի մօտ լինելով ։ Ամսոյն 14ին կայսրն եկաւ այն տեղ հաստատեց իւր բնակութիւնն. իւր հետ կը գտնուէին Կօրչաքով իշխանն, Իկնաթիեվ զօրավարն եւ այլք ։



## ԿՐԿԻՆ ԶՕՐԱԺՈՂՈՎ Ի ՌՈՒՍԻԱ. — ԱԶԳԱՊԱՀ ԶՕՐԱՑ Ի ԶԷՆ ԿՈՉՈՒՄՆ

Ճշմարտութիւնը խօսիլն իրենց արուեստ չըրնող եւրոպական մէկ քանի լրագրաց հանած տարաձայնութեանց հակառակ, ոչ ռուսական բանակին՝ եւ ոչ ազ-

գին մէջ տկարութեան ցոյց մը տեսնուեցաւ ։ Հաշտութեան խօսքն Փէթէրսպուրկի եւ Մօսքուայի լրագրաց զայրոյթը շարժեց . Ռուսաց պարտութեան արդիւնքըն եղաւ այս լրագրաց պատուոյ զգացումն չափազանց գրգռել, եւ առաւել պահանջող եղան ասոնք այն պայմանաց վրայ, որովք կարելի էր պատերազմին դադար տալ ։ « Ռուսիոյ պատիւը կը պահանջէ , կ'ըսէին, այն փրկութեան գործը կատարելապէս ի գլուխ հանել, որոյ համար ինքն սուր քաշեց ։ Այս մասին վրայ ռուս ժողովրդեան մէջ անհամաձայնութիւն չկայ եւ չկարէ լինել ։ Սոյն ձեռնարկութիւնն որքան դժուարութիւններ ընծայէ , այնքան Ռուսիա պնդութիւն ցոյց պիտի տայ անոնց յաղթելու համար ։ Խաբուելու չէ . մեր ազգին պէս 80,000,000 հոգիէ բաղկացեալ ազգ մը տակաւին թաքուն ունի յինքեան շատ զօրութիւն եւ միջոց՝ այսպիսի գործ մը յաջող հանելու համար ։ » Սոյն զգացումն ընդհանուր եղաւ Ռուսաց մէջ ։

Սակայն ռուսական լրագիրք գործուած սխալներն կատարեալ անկեղծութեամբ եւ անակնունելի ազատախօսութեամբ ցոյց տուին ։ Պատերազմի ձեռնարկութիւնն եղած էր , մինչ ամբողջ երկիրն անգէտ էր Տաճկաստանի դիմադրական զօրութեան ։ « Այս ձախողութեանց պատճառ կը համարիմք միայն , կ'ըսէ Նօվոյէ Վրէմիա ( Նոր ժամանակ ) լրագիրն , մեր զօրութեանց մասին ունեցած մեծ վստահութիւններս եւ թշնամին արհամարհելնիս, որ բնաւ արհամարհելի չէ ։ » « Մեր ձախողութիւնն , կ'ըսէ Նաշէ Կօլօս (Ձայն) լրագիրն, մեր մէջ չափազանց արմատացեալ այն կարծիքէն յառաջ կուգայ , իբր թէ երկու երեք Թուրքի դէմ մէկ ռուս զինուոր բաւական է ։ Մեք կը կարծեմք որ մարտագիտական հաշուոց մէջ տարբեր տեսութեամբ գործելու է , եւ այս մասին հետեւելու է՝ վերջին պատերազմին ժամանակ Բրուսիացւոց ցոյց տուած օրինակին . սակայն զինուորական արուեստին մէջ ամենալաւ ուսուցիչք են դժնդակ փորձառութիւնք եւ զգալի վնասք ։ »

Փլէվնայի առաջին կռուէն յետոյ՝ ռուսական սպայակոյտն վերջապէս խելամուտ եղաւ թէ բազմամբոխ զօրաց արագ համախմբութենէն աւելի պատերազմի մը երկարաձգութիւնն մեծ զոհողութիւններ ընելու կըստիպէ ։ Պիէլայէն՝ յուլիս 22 թուականաւ հրատարակեալ հետեւեալ կայսերական հրովարտակն (ուքազ) Օրէնաց յատուկ Թերթին մէջ հրատարակուեցաւ.

« Նկատելով որ Նորեկ զօրաց մէկ մասն ի պահեստի մնալու է՝ տակաւին ի զէն չկոչուած զօրախմբերը լրացնելու համար, եւ հետեւաբար անկարելի է ուրիշ բանի գործածել զայն , յարմար դատեցինք , զինուորական պարտադիր ծառայութեան կանոնագրին 39րդ յօդուածին համեմատ, գումարել երկրապահ զօրաց մէկ մասն՝ Նորեկ եւ պահեստի զօրաց մէջէն առնուելիք բաժինները լրացնելու համար ։

« Հետեւաբար կը հրամայեմք առ այժմ գումարել առաջին կարգէն 188,600 մարդ , եւ այս գումարումն եւրոպական Ռուսիոյ եւ Կովկասու կուսակալութեանց եւ նահանգաց մէջ ընել , վերոյիշեալ կանոնագրին՝ ինչպէս նաեւ երկրապահ զօրաց վերաբերեալ կանոնագրին մէջ նախատեսուած տրամադրութեանց համեմատ , եւ այս մասին մեր կողմանէ պատերազմի նախարարին տրուած ծանօթութեանցն համաձայն ։ »

Մէկ քանի օր յետոյ՝ օգոստոս 1 թուականաւ հրատարակեալ բարձրագոյն հրամանաւ՝ Պեսարապիոյ հասարակութիւնն յուլիս 10/22ի հրովարտակին համեմատ զինուորելու պարտաւորութենէն զերծ մնաց , այն մասնաւոր հանգամանաց պատճառաւ յորս սոյն կուսակալութիւնն կը գտնուէր այն միջոցին ։ Հետեւաբար ի զէն կոչուած բաժնից թիւն ոչ թէ 188,600 հոգւոյ հասաւ , այլ

185,467 հոգւոյ, Գեսարապիոյ կուսակալութենէն առնուելիք 5.133 մարդիկն ի բաց հանել հարկ լինելով։

Այսպէս երկրապահ զօրք (օփոլչէննէ) գումարելու պէտքն ցոյց կուտայ թէ պատերազմիկ բանակին մարդիկն եւ պահեստի եւ նորեկ զօրքն արդէն անբաւական եղած էին։ Այս բանն մեծ զարմանք պատճառեց եւրոպական հասարակութեան մէջ, որ լաւ տեղեակ չէր պատերազմի սկզբնաւորութեան միջոցին Ռուսիոյ ունեցած զինուորական առժամանակեայ կացութեան։ Դիտցուելու է որ այս սպառումն ոչ թէ մարդոց չգոյութենէ յառաջ կուգայ, զոր անտեղի է ենթադրել այսքան ընդարձակ կայսրութեան մը համար, այլ ռուսական բանակին դեռ եւս կազմակերպութիւն ստանալէն։

Երկրապահ բանակին առաջին կարգը կը բաղկանայ երեք տարեկան բաժիններուն այն մասէն որ՝ վիճակարկութենէն (գուրա) յետոյ պատրաստի բանակին մէջ ներմուծեալ չէ։ Եւրոպական Ռուսիոյ համար այս մասն 700,000 հոգիէ բաղկացեալ կը համարուի, եւ սոյն հաշւին չափազանց չերեւիր, վասն զի դեռընտիր կամ նորեկ զօրաց թիւն գրեթէ ամեն մէկ տարւոյ համար 700,000ի կը հասնի, յորոց 150,000 միայն բանակին մէջ մտան 1875ին, 180,000՝ 1876ին եւ 196,000՝ 1877ին։ Այսպէս առձեռն պատրաստ 700,000 հոգւոյ համագումարի մը մէջէն պիտի լինէր 185,000ի նոր զօրաժողովն։ Կը տեսնուի որ բաւական ուելորդ կայ։

Մինչդեռ Ռուսիա մէկ կողմանէ պահեստի զօրք կը պատրաստէր, միւս կողմանէ առձեռն պատրաստ գտնուած բոլոր զօրքը կը գումարտակէր։ Իւր բանակն բաղկացեալ էր հետեւակազօրաց 192 գումարտակներէ, որոց չորս չորս միանալովն 48 հատուած կը ձեւանայ։ Երեք հատուածներ եւս կազմուեցան 12 նոր գումարտակներէ, որոց իւրաքանչիւրն պահեստի զօրաց չորս վաշտէ կը բաղկանար, եւ չորս նոր բանակագունդք պատրաստուեցան, այսինքն՝

15րդ բանակագունդ, գլխաւոր հրամանատար փոխ-զօրապետ Քօսթանտա.

16րդ բանակագունդ, գլխաւոր հրամանատար փոխ-զօրապետ Ռաժէվուսքի.

17րդ բանակագունդ, գլխաւոր հրամանատար փոխ-զօրապետ Քրիժանովսքի.

18րդ բանակագունդ, գլխաւոր հրամանատար փոխ-զօրապետ Կրապպէ։

Այս բանակագնդից իւրաքանչիւրն ունէր նաեւ, ռուսական բոլոր գնդաց նման՝ հեծելազօրու մէկ հատուած, թնդանօթաձիգ զօրաց երկու սահ՝ հաստատրանի վրայ բարձեալ թնդանօթներով, եւ մէկ սահ՝ ձիոյ վրայ բարձեալ թնդանօթներով, կամ 108 թնդանօթ։

Կայսերական անձնապահ զօրաց եւ ռմբակաձիգ զօրաց գունդքն եւս պատրաստուեցան, որոց իւրաքանչիւրն հետեւակազօրաց երեք հատուած կը պարունակէ։

Այս ամեն գնդաց հրաման եղաւ հետեւեալ տեղերն երթալու.

15րդ եւ 16րդ բանակագունդքն՝ ինչպէս նաեւ կայսերական անձնապահ զօրաց եւ ռմբակաձիգ զօրաց գունդքն հրաման առացան դէպ ի Դանուբ խաղալու։

17րդ գունդն գնաց Սեւ ծովու ափանց վրայ՝ Պրըթի եւ Դանուբի մէջտեղ՝ 7րդ գնդին տեղն անցնելու որ Տօպրուճա ղրկուած էր։

18րդ գունդն Փէթէրսպուրկ գնաց՝ կայսերական անձնապահ զօրաց գնդին տեղն անցնելու համար։

Այսպէս Նիքօլա մեծ դքսին բանակը ղրկուած օգնական զօրաց համագումարը կը լինի.

5րդ գունդ (գլխաւոր հրամանատար փոխ-զօրապետ Սամսոնով) Վիլնայէն ճանապարհ ելած՝ յուլիսի առաջին օրերն. 56,000 մարդ

Ռմբակաձիգ եւ կայսերա-

| | |
|---|---|
| կան անձնապահ զօրաց գունդք՝ ի միասին | 100,000 — |
| 15րդ եւ 16 րդ գունդք՝ ի միասին | 72,000 — |
| Հետեւակազօրաց 15րդ հատուած՝ Տօպրուճայէն բերուած | 18.000 — |
| Համագումար | 226,000 — |

Եթէ ասոր մէկ երրորդն ի բաց հանուի իբրեւ պատերազմի անյարմար, եւ հաշիւ լինի թէ 15րդ հատուածն Տօպրուճայի մէջ արշաւանք ընելէն յետոյ՝ իւր զօրաց բուն թուոյն եւ թղթի վրայ եղածին մէջ մեծ տարբերութիւն յառաջ եկած լինելու էր, կը մնան 140 կամ 150,000 պատերազմիկք, որք Նիքօլա մեծ դքսին բանակին թիւը կը կրկնապատկեն ։

Սակայն այս գէշութիւնը կար որ բոլոր այս զօրավիգներն պատերազմի ասպարէզէն յոյժ հեռի եղած նահանգներէն գալով, սոցա փոխադրութիւնն շատ խեղճ բան էր արագութեան մասին ։ Գերմանացիք 1870ի պատերազմին ժամանակ՝ երկաթուղւոյ հինգ գծեր ունէին անընդհատ ։ Այս գծից վրայ կարէին ամեն օր 300 կառախումբ ճանապարհ հանել ։ Մինչեւ անգամ միջին Գերմանիոյ մէկ գծին վրայ 24 ժամու մէջ 100 կառախումբ ճանապարհ ելած է մէկ քանի օր ։ Ընդհակառակն՝ Ռուսք մէկ գիծ միայն ունէին, որ շատ տոկուն չէ եւ որոյ վրայ ամեն օր առ առաւելն ութ կառախումբ միայն հնար է բանեցնել, եւ սակայն պարտաւորեալ էին այս գծին վրայէն փոխադրելու բոլոր պէտք եղած բաներն, մինչեւ անգամ նաւեր ։ Վասն որոյ Գերմանացւոց այս մասին մէկ աւուր մէջ ըրածն՝ նոքա կարէին առ առաւելն երկու ամսոյ մէջ ընել ։

Ի դէպ է աստանօր հետաքրքրական մանրամասնութիւն մը յիշել ։ Ռումանական երկաթուղեաց գծերուն վրայ պատահած աղետից յաճախութիւնն սարսափելի լինելով՝ ռուսական իշխանութիւնք երկաթուղեաց վարչութեան հետ դաշնագիր մը կնքեցին, որով վարչութիւնն կը խոստանար 4,000 ֆրանք վճարել իւր գծերուն վրայ կենազրաւ կամ խեղ եղած մէն մի զինուորի համար, եւ 12,000 ֆրանք մէկ սպայի համար ։



ԱՇԽԱՐՀԱՎԱՐԱԿԱՆ ՀԵՏԵՒՈՒԹԻՒՆՔ

Ճակատամուղ բանակին անբաւականութիւնն, վարչութեան թերութիւնք, ճարտար զօրավարաց չգոյութիւնն, Փլէվնայի պարտութեամբք յանկարծ Եւրոպայի աչաց առջեւ պարզեալ բոլոր այս տկարութեան ցոյցքն սարսափելի հարուած մը տուին այն ազդեցութեան զոր Ռուսիա ստացած էր վերստին՝ քսան տարի ինքզինքն ամփոփելով եւ խոհեմ աշխարհավարութիւն ունենալով ։ Տարակուսելի եղան Աղէքսանդր Բ. ի օրով կատարուած մեծամեծ յառաջադիմութիւնք եւ նորա լայնածաւալ կայսրութեան բուն զօրութիւնն ։ Սակայն այս առերեւոյթ տկարութիւնն երկու պատճառներէ յառաջ եկած էր, որք ազգային վրայ չեն ազդեր, այսինքն՝ Տաճկաստանի կարողութեան եւ միջոցներուն վրայ եղած հաշւոյն մէջ ռուսական սպայակոյտին մեծապէս սխալիլն եւ բանակին կազմակերպութեան թերի լինելն. վասն որոյ անտեղի է անկէ յառաջ եկած տպաւորութեան վրայ խօսիլն՝ որ ի հարկէ այնպէս չպիտի մնայ ։ Այն անեզական ազդեցութեան վրայ պիտի ճառեմք, զոր յուլիս 24 եւ 30ի ճակատամարտներն ունեցան եւրոպական աշխարհավարութեան վրայ ։

Երկու տէրութիւնք, Անգղիա եւ Աւստրիա ամենամեծ ուշադրութեամբ կը դիտէին պատերազմի արկածներն, եւ Փլէվնայի առջեւ Ռուսաց ձախողութիւն կրած պահուն՝ երկուքն եւս կը զինուէին եւ միջամտութիւն ընելու դիտում ցոյց կուտային ։ Անգղիա Կօրչաքով իշխանին շրջաբերականին պատասխան գրելով մայիս 1 թուականաւ, պատերազմի յայ-

տարարութեան մասին իր տհաճութիւնն յայտներ էր, եւ այն գրութեան ձեւէն պահ մ'այնպէս կարծուեցաւ թէ Տաճկաստանի հետ դաշնակցելու տրամադրութիւն ունէր։ Լոնտրայի ռուսական դեսպան Շուվալով կոմսն մէկ քանի օր բանակցելէ յետոյ՝ մայիսի 6ին լորտ Տէրպիէն գրութիւն մը ընդունեցաւ, որով անգղիական դահլիճն կ'որոշէր իր պաշտպանել ուզած շահերն ։

« Նախ հարկ է, ըսուած էր, անխափան, անվթար եւ անընդհատ պահել Սուէզի ջրանցքին միջոցաւ Եւրոպայի եւ Արեւելից մէջ եղած հաղորդակցութիւնքն ։ Սոյն ջրանցքին մէջ կամ անոր մերձակայքն եթէ պաշարման կամ միջամտութեան փորձ մը լինի, Անգղիա զայն իբրեւ սպառնալիք պիտի համարի ընդդէմ Հնդկաստանի եւ ծանր վնաս աշխարհի վաճառականութեան ։

« Այս երկու կէտերուն վրայ եթէ այս կամ այն կողմէն ամենափոքր միջոց մը ձեռք առնուի, — եւ անգղիական կառավարութիւնն կը յուսայ թէ պատերազմող կողմանց եւ ոչ մին այդպիսի բան մ'ընելու դիտաւորութիւն ունի — Անգղիոյ համար անկարելի պիտի լինի պահպանել իր կրաւորական չէզոքութեան դիրքն ։ Եւրոպական ազգաց առեւտրական եւ ելեւմտական շահերուն համար այնքան կարեւորութիւն ունի Եգիպտոս, որ եթէ այս երկրին դէմ յարձակումն լինի կամ գրաւումն՝ նոյն իսկ առժամանակեայ՝ ռազմագիտական նպատակաւ, չէզոք տէրութիւնք չկարեն անտարբերութեամբ զիջանիլ. բայց ո՛ր եւ իցէ պարագայի մէջ Անգղիա անշուշտ չպիտի ընդունի զայդ ։

« Թէ զինուորական եւ թէ աշխարհագրական եւ առեւտրական տեսութեամբ Կոստանդնուպոլսոյ կարեւորութիւնն հանրածանօթ է եւ հարկ չկայ ապացուցանելու զայդ ։ Հետեւաբար անօգուտ է ազդառնել ձեզ թէ Նորին Վեհափառութեան կառավարութիւնն անտարբեր աչօք չը պիտի դիտէ այնքան կարեւոր դիրք ունեցող մայրաքաղաքի մը՝ արդի տեարց ձեռքէն ելնելով ուրիշի ձեռքն անցնիլն ։

« Վոսփորի եւ Տարտանէլի նաւարկութիւնը կանոնաւորող, Եւրոպայի կողմանէ վաւերացեալ եւ այժմ գոյութիւն ունեցող տրամադրութիւնք խոհական եւ օգտակար կը թուին Անգղիոյ, եւ ըստ իր կարծեաց՝ մեծ անտեղութիւնք կը ծագին, եթէ փոքր ինչ փոփոխութիւն ներմուծուի ։

« Կառավարութիւնս օգտակար համարեց այսպէս անկեղծութեամբ իր տեսութիւնքն յայտնել ։ Եղելութեանց ընթացքն կարէ ցոյց տալ թէ տակաւին ուրիշ շահեր ունի, օրինակի համար՝ Պարսկային ծոցին մէջ, զորս իր պարտականութիւնն է պաշտպանել. բայց չը տարակուսիր թէ այս տեղեկութիւնք բաւական են Ձեր Վսեմութեան յայտնելու այն սահմաններն յորս կը յուսայ թէ պատերազմը պիտի արգիլուի, կամ յորս անգղիական կառավարութիւնն կ'ուզէ իր անմիջամտութեան եւ չէզոքութեան քաղաքականութիւնը պահպանել անվրէպ ։ Վստահ է որ իր քաղաքականութիւնը լաւ հասկացնելու իղձն Ռուսիոյ կայսրէն պիտի գնահատուի, եւ նա համաձայն պիտի գործէ՝ Ձեր Վսեմութեան խնդրանօք հրատարակուած այն հաւաստեաց, զոր տուաւ իր պատուոյն վրայ, թէ դիտաւորութիւն չունէր Կոստանդնուպոլսոյ տիրելու, ըսելով նաեւ որ եթէ պատերազմի հարկը զինքն ստիպէ Պուլղարիոյ մէկ մասն գրաւելու, այդ գրաւումն առժամանակեայ միայն պիտի լինի, եւ այնչափ եւեթ պիտի տեւէ, որչափ ժամանակի մէջ որ խաղաղութիւնն եւ քրիստոնեայ հասարակութեան փրկութիւնն ապահովուի ։ »

Կորչաքով իշխանն մայիս 30ին պատասխան գրեց եւ Ռուսիոյ առաջադրած նըպատակն սահմանեց այսպէս .

« Կայսերական դահլիճն ո՛չ Սուէզի

Ջրանցքը պաշտպանելու դիտաւորութիւն ունի եւ ոչ այն Ջրանցքին վրայ Նաւարկութեան խափան լինելու եւ կամ ոք եւ իցէ կերպիւ սպառնալիք ընելու ։ Ջրանցքն իբրեւ միջազգային գործ մը կը նկատէ, որոյ մէջ բոլոր աշխարհի վաճառականութիւնն շահ ունի, եւ ըստ այնմ զերծ լինելու է ոք եւ է յարձակմանէ ։

« Եգիպտոս մասն է օսմանեան կայսրութեան. եւ եգիպտական զօրաց բաժին մը կ'երեւի տաճկական բանակին մէջ։ Հետեւաբար Ռուսիա կարէ իբրեւ Եգիպտոսի դէմ պատերազմող համարել զինքն ։ Այսու ամենայնիւ, կայսերական դահլիճն այն երկրին հետ կարեւոր կապակցութիւն մ'ունեցող եւրոպական շահերն անտես չըներ, եւ ոչ նաեւ մասնաւորապէս անգղիական շահերն ։ Վասն որոյ Եգիպտոսն իւր գործողութեանց շրջանակին մէջ չպիտի առնու ։

« Գալով Կոստանդնուպոլսոյ, կայսերական դահլիճն թէեւ չկարէ այժմէն իրողութիւններն եւ պատերազմի վախճանն նախատեսել, սակայն եւ այնպէս կրկին կը հաւաստէ թէ Վեհափառ Կայսրը դիտաւորութիւն չունի այս մայրաքաղաքին տիրելու ։ Իւր կառավարութիւնն կը ճանաչէ թէ ինչ որ լինի, Կոստանդնուպոլսոյ ապագայն հասարակաց շահուն վերաբերեալ այնպիսի խնդիր մ'է, որ ընդհանուր հաւանութեամբ միայն կարէ լուծուիլ. եւ եթէ այս քաղաքին վրայ ստացման խնդիր ծագի, անընդունելի բան է որ եւրոպական տէրութիւններէն այս կամ այն անոր տէր լինի ։

« Գալով Նեղուցներուն, թէեւ անոնց երկու եզերքն մի եւ նոյն վեհապետին կը վերաբերին, սակայն երկու մեծ ծովերու մուտքը կը ձեւացնեն անոնք, յորս համայն աշխարհ շահեր ունի ։ Հետեւաբար խաղաղութեան եւ միջազգային հաւասարակշռութեան համար մեծապէս կարեւոր է այս խնդրոյն ընդհանուր հաւանութեամբ լուծուիլն եւ որոշուիլն ազդու կերպիւ երաշխաւորեալ արդար հիմանց վրայ։

« Լորտ Տէրպի ակնարկութիւն ըրած է նաեւ բրիտանական ուրիշ շահերու, որոց վնաս կարէ հասուցանել պատերազմին սահմանաց ընդլայնումն, օրինակի համար՝ Պարսկային ծոցին մէջ եւ Հնդկաստանի ճանապարհին վրայ ։

«Կայսերական դահլիճն կը յայտարարէ թէ պատերազմը չպիտի ընդարձակէ՝ անկեղծութեամբ եւ բացորոշ կերպիւ խոստովանեալ նպատակին հասնելու համար պէտք եղածէն աւելի, որոյ պատճառաւ կայսրն ստիպուեցաւ զէնք առնուլ. Լորտ Տէրպիի ցոյց տուած անգղիական շահերը պիտի յարգէ որչափ ժամանակ որ Անգղիա չէզոք մնայ ։ Իրաւունք ունի յուսալու որ անգղիական կառավարութիւնն եւս լուրջ նկատողութեան պիտի առնու՝ այս պատերազմին մէջ Ռուսիոյ ունեցած մասնաւոր շահերն, որոց համար այնքան ծանր զոհողութիւններ յանձն առած է Ռուսիա ։

«Այս շահերը կը կայանան Տաճկաց տիրապետութեան ենթարկեալ Քրիստոնէից ողբալի կացութեան եւ անկէ յառաջ եկած բազմաժամանակեայ վրդովմանց վերջ տալու բացարձակ հարկաւորութեան մէջ ։

«Իրաց այս վիճակին եւ անկէ յառաջ եկած բռնութեանց վրայ յուզմունք կը ծաւալին ի Ռուսիա, որք ռուս ժողովրդեան մէջ խորարմատ հաստատեալ քրիստոնէական զգացումէն եւ այս ժողովրդն Թուրքիոյ քրիստոնեայ հասարակութեան մեծ մասին հետ զուգող ցեղային եւ կրօնական զօդերէն յառաջ կուգան ։ Կայսերական կառավարութիւնս ստիպեալ է այս յուզմունքը նկատողութեան առնլու, մանաւանդ որ կայսրութեան ներքին եւ արտաքին կացութեանը վրայ ազդեցութիւն ունի ։

«Ամեն անգամ որ այսպիսի տագնապ մը երեւան կուգայ, Ռուսիոյ աշխարհակալութեան վրայ կասկածներ եւ ամբաստանութիւններ կը լինին, եւ իւր ներքին

յարաբերութիւնքն, իւր վաճառականութիւնն, ելեւմուտքն եւ վարկն կը վնասեն. Վեհափառ Կայսրն չկարէ այսպէս անսահմանաբար ենթարկեալ թողուլ զՌուսիա այդ վտանգաւոր արկածից, որ իւր անդորր զարգացման արգելք կը լինին եւ անթուելի չարիք կը պատճառեն. Այս բաներն իրենց աղբիւրէն ցամաքեցնելու համար է որ Նորին Կայսերական Վեհափառութիւնն որոշեց պատերազմին ծանրութիւնն իւր երկրին կրել տալու։

«Այս նպատակին անկարելի է հասնիլ, մինչեւ որ Թուրքիոյ քրիստոնեայ հասարակութիւնք այնպիսի կացութեան մը մէջ չգտնուին, յորում իրենց կեանքն եւ ապահովութիւնն ազդու կերպիւ երաշխաւորեալ լինին Տաճկաց վարչութեան աններելի ղեղծմանց դէմ։ Ռուսիոյ համար կենսական եղող այս շահն հակառակ չէ Եւրոպայի եւ ոչ մէկ շահուն, եւ ասկէ զատ՝ Եւրոպա եւս կը տագնապի Արեւելից անորոշ վիճակին պատճառաւ։

«Կայսերական դահլիճն փորձ ըրած էր բաղձացեալ նպատակին հասնելու՝ բարեկամ եւ դաշնակից տէրութեանց գործակցութեամբն։ Մեր Վեհափառ տէրն այսօր ստիպեալ գոլով առանձինն հետամուտ լինելու այս նպատակին, հաստատ մտադրած է զէնքն ի բաց չթողուլ, մինչեւ որ կատարելապէս եւ ապահով կերպիւ չհասնի յայն, եւ ապագային համար ազդու երաշխաւորութիւններ չստանայ։»

Այս յայտարարութիւնք Անգղիոյ մէջ հասարակաց կարծիքը փոքր ինչ հանդարտեցուցին. բայց Թայմզի ըսածին պէս սակաւաթիւ եւ վերջին աստիճան մրբ կուսակցութիւն մը կար անդ, որ անգղիական շահուց պաշտպանութեան համար պատերազմ կ'աղաղակէր, ամեն անգամ որ Ռուսք նոր յաջողութիւն մը ձեռք կը բերէին։ Երբ ասիական բանակն սահմանագլուխն անցաւ, այն կուսակցութիւնն գոչեց թէ Ռուսք Հնդկաստանի ճանապարհը պիտի խափանէին, երբ Եւրոպական բանակն Դանուբն անցաւ, աղաղակեց նա թէ Ռուսք Կոստանդնուպոլիս տանող մեծ արահետին վրայ կը գտնուէին։ Լոնտրայի դահլճին քաղաքականութեան անորոշ լինելովն՝ պատերազմի յայտարարութենէն յետոյ անցած առաջին շաբաթուց մէջ անկարելի եղաւ հասկանալ թէ որ կուսակցութեան թելադրութեանց պիտի հետեւէր դահլիճն։ Մէկ կողմանէ Ռուսիոյ դէմ սպառնալից լեզու մը կը գործածէր, միւս կողմանէ կը յայտարարէր թէ խիստ չէզոքութիւն մը պահելու դիտաւորութիւն ունի։ Ի սկզբան յուլիս ամսոյ կարծուեցաւ թէ զինու զօրութեամբ միջամտութիւն ընելու կողմը գտնուողներն յաղթող պիտի լինէին. Միջերկրականի անգղիական նաւատորմին հրաման ղրկուեցաւ Ջանագգալէի նեղուցին մօտ Պէշիքթէի ծովախորշն երթալու, եւ պատերազմական ծախուց համար արտաքոյ կարգի գումար մը խնդրեց նախարարութիւնը Խորհրդարանէն։ Մինչեւ անգամ լուր ելաւ թէ լորտ Պիգոնսֆիլտ նախարարաց խորհրդոյ մէկ նստին մէջ պնդեր է որ Փոքր Ասիոյ ծովափանց վրայ 20,000 հոգիէ բաղկացեալ զօրագունդ մը ղրկուելով՝ սոյն նաւային ցոյցն աւելի ազդու ընելու պէտք կայ. բայց խորհուրդն մերժեր է այս բանն, եւ սըր Սթաֆֆորտ Նորթքօթ հասարակաց Խորհրդարանին յուլիս 6 ի նստին մէջ յայտնեց թէ նաւատորմիղին Պէշիքթէր ղրկուելու շարժառիթն էր միայն՝ այնպիսի կէտի մը վրայ սպասելու պէտքն ուրկէ կարելի լինի դիւրաւ հաղորդակցիլ մէկ կողմանէ Կոստանդնուպոլսոյ անգղիական դեսպանին հետ եւ միւս կողմանէ անգղիական կառավարութեան հետ։ Կառավարութիւնն միանգամայն ջատագովեց ինքզինքն՝ ըսելով թէ պատերազմող տէրութեանց եւ ոչ միոյն ազդարարութիւն մ'ընել մտադրած է, եւ նորէն յայտարարեց թէ կատարեալ չէզոք քաղաքականութեան մը հետեւիլ կ'ուզէ։

Սակայն երբ Կուրքօ զօրավարն Պալքաններն անցաւ, անգղիական դահլիճն այլ եւս չկարաց իւր հոգածութիւնքը ծածկել, եւ իւր քաղաքականութիւնն բաւական յայտնի լինել սկսաւ: Թէ իւր գործերէն եւ թէ անգղիական լրագրաց լեզթիւններէն, եւ թէ իւր միակ հոգածութիւնն էր ապագայ լուծման մէջ իւր շահերն պաշտպանել: Ասկէ Անգղիոյ եւ Դրան միջեւ պաղութիւն յառաջ եկաւ, որոյ վրայ այս վերջինն տհաճութեան գործ մ'ըրաւ: Հաւաստի է թէ Նաւատորմին



ԶՕՐԱՎԱՐ ՖՕՄԻՆ

ուրին մէջ եղած նշանաւոր փոփոխութենէն. ակներեւ եղաւ թէ Անգղիա՝ Թուրքիոյ ամբողջութեան պահպանութիւնն եւ մինչեւ անգամ նորա գոյութեան երկարումն իբրեւ հիմն չպիտի բռնէր արեւելեան խնդրոյն կարգադրութեան, ինչպէս կը կարծուէր իւր նախկին յայտարարու-

Պէշիքթէշի ծովախորշը ղրկուելէն մէկ քանի օր յետոյ՝ Կոստանդնուպօլսոյ անգղիական դեսպանն Սուլթանէն թոյլտուութիւն խնդրեց զայն Վոսփորի մէջ մուծանելու, եւ բացէ ի բաց մերժուեցաւ այս խնդիրն, թէեւ Պ. Լէյըրտ յետոյ ժխտած է այս իրողութիւնն. —Մեք,

պատասխան տրուեր է, Սեւ ծովուն մուտքն այնպիսի տէրութեան մը միայն կարեմք բանալ, որ մեր դաշնակիցն եւ Ռուսաց թշնամին լինի ։ Միթէ իբր այն կը խնդրէք որ բացուի. ոչ. ապա ուրեմն անկարելի է զմեզ զոհել անգղիական շահուց եւ զձեզ Կոստանդնուպոլսոյ մէջ ընդունել, մինչ չէք պաշտպաներ մեր շահը ։

Յուլիսի 14ին՝ տագնապն վերջին աստիճանի հասաւ. Մալթայի պահակագունդն ստուարացնելու համար հրամաններ տրուեցան ։ Նաւ մտնող զօրաց երթալիք տեղն գէթ ի պաշտօնէ այսպէս ճանչցուած էր. բայց ի սկզբան անդ ոչ ոք տարակուսեցաւ թէ անոնք վերոյիշեալ զօրագնդին առաջին մասերը կը կազմէին ։ Տաճկաստանի բաժանման միջոցին՝ երաշխաւորութիւններ ունենալու փափաքըն բացայայտ եղաւ այն ժամանակ անգղիական լրագրաց մէջ, եւ — իբր թէ օսմանեան կայսրութիւնն մեծ տէրութեանց մէջ յօշոտուելիք որս մ'էր այնուհետեւ, — յայտնապէս վիճաբանութիւններ եղան Կէլիպօլույի թերակղզին գրաւելու պատահականութեան համար, որ Զանագ-Գալէի նեղցին վրայ կարեւոր դիրք մ'է, եւ զոր սըր Ճօն Պըրկօյն՝ անգղիական ճարտարագիտաց խմբին նախկին պետն Կոստանդնուպոլսոյ չափ կարեւոր դիրք մը կը համարէր ։ «Եթէ հարկ է գրաւել Կէլիպօլուն, կ'ըսէր Թայմզ, կարելի է ըսել թէ անյապաղ գրաւելու է, որովհետեւ Ռուսք արդէն Պալքաններն անցած են զօրութեամբ եւ իրենց բանակն՝ եթէ մեծ յաղթութիւն մը ձեռք բերէ, կրնայ խաղալ Կէլիպօլուի վրայ՝ ինչպէս եւ Կոստանդնուպոլսոյ ։» Կ'ըսէր նաեւ. «Թէեւ Ռուսիա խօսք տուած է Կոստանդնուպոլսոյ տէր չլինելու, սակայն խոստացած չէ չպահանջել այնպիսի հաշտութեան պայմաններ, որք գուցէ ծանր կերպիւ պիտի վտանգեն չէզոք տէրութեանց շահերը ։ Գերմանիա կարէ ինքզինք պաշտպանել իւր ետեւը կապած ահագին բանակը պարզապէս ցոյց տալով ։ Աւստրիա եւս ապահովեալ է Ռումանիոյ եւ Սերվիոյ մէջ զօրք մուծանելու եւ Ռուսաց հաղորդակցութեան գծերն ընդհատելու դիւրութիւն ունենալով. բայց Անգղիա ճնշում բանեցնելու համար մէկ միջոց միայն ունի կ'ըսուի. այն է Կէլիպօլուն գրաւել ։ Այս թերակղզին այնպիսի ձեւ եւ դիրք ունի, որ նաւային զօրութիւն ունեցող տէրութիւն մը կրնայ երեսուն քառասուն հազար մարդով պաշտպանել զայն՝ զինուորական զօրութիւն ունեցող ամենամեծ պետութեանց դէմ ։»

Եւ կը բացատրէր թէ Նաւատորմին համար կարելի էր Կէլիպօլուն երեք կողմանէ պաշտպանել. եւ չորրորդն հնար էր մէկ քանի աւուրց մէջ անառիկ ընել ։ Թերակղզւոյն լայնութիւնն եօթն հազարամէթրի չափ չկայ, եւ ամրութեանց պատրաստութիւնքն եղած են Գըրըմի պատերազմէն ի վեր ։ «Կարելի է ուրեմն ըսել. թող Կէլիպօլու անգղիական զօրութեամբ գրաւի, եւ անգղիական շահերն սպառնալեաց ներքեւ անգամ չպիտի գտնուին Կոստանդնուպոլսոյ գրաւմամբ ։»

Ինչպէս կը տեսնուի, այլ եւս Տաճկաստանն ազատելու խօսք չկար, այլ միայն կողոպուտին մէկ մասն առնելու ։ Իրաւ է որ յուլիսի 23ին ազնուականաց Խորհըրդարանին մէջ լօրտ Տէրպի եւ հասարակաց Խորհրդարանին մէջ սըր Սթաֆֆօրտ Նօրթքօթ հաստատեցին՝ թէ Մալթա զօրք ղրկուած էր այն տեղի պահակագունդը ամբողջացնելու համար միայն, ինչպէս հարկ էր նոյն պահուն ծանրակշիռ պարագայից պատճառաւ. այս երկուքին խօսքն իրարու այնչափ համանման էին որ յայտնի կը լինէր թէ նախարարաց խորհրդոյ մէջ որոշուած էր այնպէս ըսել ։ Բայց նոյն խօսից այնքան հաւատ ընծայուեցաւ, որքան կ'ընծայուի սովորաբար պաշտօնական հաստատութեանց. եւ Անգղիոյ արարքն անձկութեամբ եւ ուշի ուշով կը դիտուէր Եւրո-

պայի մէջ, երբ Փլէվնայի պարտութիւնն ամենուն հոգածութիւններն մեղմեց, եւ այս շշուկներուն վերջ տուաւ։ Տաճկաստան իւր գոյութիւնն անակնունելի կորովութեամբ ցոյց կուտար, եւ կարող կ'երեւէր ինքզինքն պաշտպանելու։ Անոր մօտալուտ քայքայումը մտածուելով ձեռք առնուած միջոցներն այնուհետեւ գէթ տարաժամ երեւեցան. այլ եւս անկարելի էր անգղիական շահերը պաշտպանելն խնդիր ընել, զորս Տաճկաստան կ'ապահովէր՝ ինքզինքն փրկելով, եւ առաւել անկարելի էր մասն խնդրել կայսրութեան մը կողոպուտէն, որոյ վրայ այնքան կենսական զօրութիւն կ'երեւէր։ Անգղիա դարձեալ սոսկ սպասողական քաղաքականութիւնն բռնեց, եւ Ռուսիա այն կողմէն պատճառեալ հոգածութիւններէն զերծ գտնուեցաւ առժամանակեայ կերպիւ։

Աւստրիական կառավարութեան կացութիւնն անգղիական կառավարութեան կացութենէն շատ աւելի դժուարին էր։ Մինչդեռ այս վերջինն հասարակաց կարծիքն իրեն նպաստամատոյց կը տեսնէր արեւելեան խնդրոյն հետզհետէ յեղաշրջութեանց մէջ ուղղութիւն մը գտնելու համար, աւստրիական կառավարութիւնը տէրութեան շահուց վրայ հսկելու փոյթ պիտի տանէր եւ միանգամայն այլ եւ այլ ազգութեանց վերջին աստիճան գրգռեալ դիւրազգածութեանց չդպչելու պիտի ջանար։ Հունգարացիք տակաւին սաստիկ ատելութիւն ունենալով Ռուսաց դէմ՝ որք 1849ին իրենց ապստամբութիւնն նուաճած էին, Փէշթայի մէջ բարձրաձայն համակրութիւն կը յայտնէին Թուրքիոյ մասին եւ կը ջանային կայսրութիւնը պատերազմի մէջ ձգել։ Հարաւային Սլաւաց մեծ կեդրոնն եղող Ակրամ քաղաքին մէջ Խրուաթք հունգարական դրօշակներն ցեխերուն մէջ թաթաւելով կը քարշէին եւ կը գոչէին. «Անկցին սօֆթայք։» Այս հակառակ միտմանց եւ ոչ միոյն դպչելու համար՝ Անտրաշի կոմսին բանեցուցած բոլոր ճարտարութիւնն աւելորդ չէր։

Աւստրիոյ-Հունգարիոյ դիւանադպիրն՝ արեւելեան կնճիռներուն ծագմանէն ի վեր՝ երեք նպատակ առաջադրած էր, յորս ուղղեց իւր քաղաքականութիւնն. 1° պատերազմը սահմանափակել, երբ հաւաստի եղաւ թէ անկարելի էր այլ եւս զայն արգելուլ. 2° աւստրիական-հունգարական տէրութեան շահերն ապահովելու համար՝ որոշել թէ պատերազմին վերջնական հետեւութիւնքն ո՛ր կէտերուն վրայ կը մխաւէին այն շահերուն. 3° վերջապէս տէրութեան անմիջական շահերը պաշտպանել, երբ սահմանագլխոց վրայ անոնց դէմ սպառնալիք լինին օրական դիպաց՝ ինչպէս նաեւ անոնց ապագայ հետեւութեանց պատճառաւ։ Առաջին երկու կէտերուն վրայ դիւանագիտական բանակցութիւնք եղան։ Աւստրիոյ-Հունգարիոյ դահլիճն բովանդակ Եւրոպայի հետ համաձայնութեամբ զանոնք քննութեան առաւ, եւ միւս տէրութեանց հետ համամիտ լինելով՝ ամեն ջանք ըրաւ պատերազմն չընդհանրացնելու համար. Նոյնպէս քննութեան առաւ պատերազմին հաւանական հետեւութիւնքն՝ ապագային մէջ իւր շահերն ապահովելու համար։ Առաջին երկու նպատակաց վրայ՝ կարաց այսպէս միւս տէրութեանց իւր գաղափարներն հաղորդել, ինչպէս նաեւ անոնց գաղափարներն իմանալ, եւ միաբանութիւն մը յառաջ բերել, որոյ արդիւնքն եղաւ հասարակաց կարծեաց փոքր ի շատէ անգործութիւնն, եւ այն բանդագուշանաց անհետ լինելն՝ յորս մէկ քանի երկչոտ անձինք, աղմկասէրք եւ շահադէտք կը ցնորէին։

Աւստրիոյ—Հունգարիոյ տէրութենէն զատ ուրիշ եւ ոչ մէկ տէրութիւն կարող էր երրորդ նպատակն ձեռք բերել։ Ի սկզբան թշնամութեանց՝ կառավարութիւնը բաւական որոշ դիրք մը բռնեց այս մասին, իւր տհաճութիւնն յայտնեց Ռումանիոյ եւ Ռուսիոյ դաշնակցութեան դէմ

եւ բացայայտ կերպիւ ցոյց տուաւ որ եթէ պատերազմն մինչեւ Հունգարիոյ սահմանները տարածուէր, եւ եթէ Սերվիա որ եւ իցէ կերպիւ ներմուծեալ գըտնուէր, ինքն եւս պիտի ստիպուէր իւր շահուց պաշտպանութեան համար պէտք եղածն ընելու ։

Աւստրիական—Հունգարական կառավարութեան համար՝ այսպիսի բացայայտ քաղաքականութիւն մը շարունակելու դժուարութիւնն՝ կայսրութեան մէջ գըտնուած այլ եւ այլ ազգութեանց բոլորովին հակընդդէմ միտումներէն յառաջ կուգար ։ Մէկ կուսակցութեան յարելով՝ միւսն անպատճառ դժգոհ պիտի ընէր ։ Վասն որոյ շուտով ձեռք առաւ դարձեալ այն երկդիմի եղանակն, որ հարկաւոր էր իւր քաղաքականութիւնն վարելու համար։

Յունիս ամսոյ վերջերն՝ երկու նախարարք, այսինքն Վիէննայի մէջ Աւէրսփէրկ կոմսն եւ Փէշթայի մէջ Պ. Թիսա ի բեմ կոչուեցան՝ կառավարութեան բռնելիք քաղաքականութիւնը բացատրելու համար։ Երկու նախարարաց լեզուն թէ եւ իրօք համանման էր, բայց արտաքուստ փոքր ինչ կը տարբերէր. այս թեթեւ տարբերութիւնը կը բացատրուի՝ մտածելով որ իրարմէ բաւական տարբեր ոգի եւ բաղձանք ունէին այն ժողովներն որոնց կ'ուղղէին նոքա իրենց խօսքն. Պ. Թիսա՝ Թուրքիոյ վրայ համակրութիւն ունեցող եւ Սլաւաց յառաջադիմութեանցն համար անհանգիստ եղող Մաճառներուն խօսելու ժամանակ՝ շեշտելով եւ բարձրաձայն հաստատեց թէ կառավարութիւնն մտադրած էր թոյլ չտալ՝ որ օտար տէրութիւն մը Աւստրիոյ-Հունգարիոյ կից գըտնուած երկրի մը տիրէ ։ Վիէննայի մէջ՝ յայսկոյս Լէյթայի եղած գաւառներուն երեսփոխանացն առջեւ՝ որոց իրաւամբ անհաճոյ էր կայսրութեան ելեւմտից դպչող որ եւ իցէ լուծումն, Աւէրսփէրկ իշխանն պնդեց թէ կառավարութիւնն որոշ դիտաւորութիւն ունի՝ պետութեան անմիջական շահուց պաշտպանութեանն համար պէտք եղած միջոցներն միայն ձեռք առնելու ։ Իրօք երկու նախարարք կրկնեցին թէ բանակն մասամբ կամ ամբողջապէս շարժման վիճակի մէջ դնելու բան չկար, եւ ոչ նաեւ մօտակայ երկրի մը որ եւ իցէ մէկ մասը գրաւելու, ինչպէս քանիցս խնդիր եղած էր ։

Երբ ռուսական բանակը Դանուբն անցաւ, աւստրիական կառավարութիւնը Հունգարացւոց խլրտմանէն ստիպեալ պարտաւորեցաւ այն ձեռնպահ կացութենէն ելնելու միտումն ցոյց տալ. բայց այս բանն ըրաւ առանց դիմագրաւութեան։ Ճիշդ նոյն պահուն չէզոքութիւնը կըսկսէր ծանր գալ Անգղիոյ, որ իւր քաղաքականութեան համար դաշնակիցներ կը խընդրէր Եւրոպայի մէջ ։ Երկու տէրութեանց միջեւ մերձում մը երեւեցաւ բաւական որոշ կերպիւ ։ Անգղիոյ նախարարական լրագիրք մեծամեծ առաջարկութիւններ ըրին Աւստրիոյ, երկու տէրութեանց շահուց նոյնութեանը վրայ պնդեցին, եւ յայտարարեցին թէ իրենց համար ժամանակն եկած էր համաձայնելու՝ զուգընթաց գործողութիւն մ'ընելու նպատակաւ ։ Մինչեւ անգամ լուր ելաւ թէ քիչ ժամանակէն յԱնգղիա պիտի հասնէր Պ. Քալից, որ՝ ինչպէս կը յիշուի, Աւստրիոյ երկրորդ լիազօր փոխանորդն եղած էր Կոստանդնուպոլսոյ Դեսպանաժողովոյն մէջ։ Փէշթայի բոլոր լրագիրներն՝ ինչպէս նաեւ Վիէննայի մէկ քանի լրագիրք՝ սիրով հաճեցան անգղիական առաջարկութեանց, եւ իղձ յայտնեցին Անգղիոյ եւ Աւստրիոյ միջեւ դաշնակցութիւն մը կնքուելու մասին ։ Մինչեւ անգամ պահ մը խնդիր եղաւ, եւ կ'երեւի թէ յոյս ունեցան զԳաղիա մեծ գլխակցութեան մը մէջ առնլու ընդդէմ Ռուսիոյ եւ Գերմանիոյ, որոյ Ռուսիոյ հետ դաշնակցութիւնն եւ ոչ ումեք կասկածելի էր ։

Միանգամայն փոփոխութիւն մը նշմարուեցաւ Վիէննայի կէս-պաշտօնական լրա-

գրաց լեզուին մէջ, որք մինչեւ ցայնժամ Տաճիկներն իրենց բուռն ընդդիմախօսութեամբը կը հարուածէին, եւ առնուած մանրամասն տեղեկութիւններէ յայտնի եղաւ թէ Անտրաշի կոմսն փութով կը բանակցէր Տաճկաստանի դեսպան Ալէքօ փաշայի հետ եւ Անգղիոյ դեսպան սըր Անտրիու Պըքանանի հետ։ Պօսնան եւ Հէրցէկը գրաւելու խորհուրդն՝ զոր մէկ քանի շաբաթ առաջ աւստրիական կառավարութիւնն ի պաշտօնէ ժխտած էր, այլ եւս իրեն անհաճոյ չէր երեւեր, եւ սոյն բանակցութեանց նպատակն էր Դրան հաւանութիւնն առանալ։

Այսպիսի բանակցութիւնք իրօք եղան։ Անկեղծ էին։ Այն ժամանակներն Աւստրիոյ բռնած շփոթ ընթացքը գնահատելու համար հարկ է աչաց առջեւ ունենալ պաշտօնական գրութիւններն, որք սակաւ առ սակաւ միայն դուրս կ'ելնեն դիւանատանց պահարաններէն։ Ամբողջ յուլիս ամսոյ մէջ անգղիական ազդեցութիւնն գերազանց երեւեցաւ ի Վիէննա, եւ նոյն ամսոյն 30ին Նախարարաց խորհուրդը նիստ ըրաւ աւստրիական բանակին մասնական կամ ամբողջական զօրաժողովման խնդրոյն վրայ վիճաբանելու համար։ Նոյն միջոցին Անգղիոյ ըրած պատրաստութեանց նայելով, այս խորհրդութիւնն իբրեւ հաւաստի ցոյց կուտար ամենուն այն դաշնակցութիւնն՝ որոյ վրայ մէկ ամսէ ի վեր խօսք կը լինէր, եւ որ ընդհանուր պատերազմի մը նախընթացը կը թուէր։ Ցանկարծ ամսոյն 31ին՝ Նախարարաց խորհրդոյն մէջ աւստրիական-հունգարական կառավարութեան քաղաքականութիւնն բոլորովին յեղաշրջեցաւ. Նոյն օրն նախարարաց խորհուրդն անակնկալ որոշում մ'ըրաւ. փոխանակ բանակին մէկ մասին (կէսը կ'ըսուէր) զօրաժողովումը վճռելու, ինչպէս նախորդ օրն խնդիր եղած էր, բաւական համարեց չորս հաստուած միայն կացուցանել Անտրաշի կոմսին տրամադրութեան ներքեւ. Միանգամայն լրագիրք ծանուցին եւ պաշտօնական անձինք իրենց բանիւքն հաստատեցին թէ Աւստրիա-Հունգարիա ոչ միայն պիտի շարունակէր սպասողական քաղաքականութեան մը հետեւիլն, այլ նաեւ իւր չէզոքութեան իբր էական պայման չպիտի համարէր Սերվիոյ չէզոքութիւնն։ Միլան իշխանն այնուհետեւ կը ստէր Կարոլոս իշխանին օրինակին հետեւիլ եւ պատերազմին մասնակցիլ։

Օգոստոսի 8ին Գերմանիոյ եւ Աւստրիոյ կայսերք Իշլի մէջ տեսակցութիւն մ'ըրին, ուրկէ Աւստրիոյ քաղաքականութեան մէջ եղած մեծ փոփոխութիւնն պարզ եւ մեկին կերպիւ կը հաստատի. Հիւսիսային երեք կայսերաց միութիւնն որ մէկ քանի տարիէ ի վեր եղած էր, այն պահուն ամրագոյն երեւցաւ։ Աւստրիոյ եւ Անգղիոյ դաշնակցութեան խորհուրդք յօդս ցնդեցան, եւ այն ժամանակ տեսնուեցաւ որ կարելի էր բանակցութեան լրերուն կեղծ բաներ լինելն, վասն զի ակներեւ էր թէ երեք կայսերք իրենց գաղափարներն հաղորդած էին միմեանց ի սկզբանէ պատերազմին՝ արեւելեան խնդրոյն լուծման վրայ, եւ Աւստրիա Գերմանիայէն ակնածելով՝ չէր կարեր տարբեր կերպիւ գործել։

Աւստրիոյ այս անակնկալ ընդդիմադարձութեան վրայ Տէղա լրագիրն յօդուած մը հրատարակեց, որ հետաքրքրութեան արժանի է՝ սոյն լրագրին մասնաւոր հանգամանաց պատճառաւ, որ աւստրիական դահլճին կէս-պաշտօնական մէկ թերթն եւ միանգամայն յայտնապէս Թուրքիոյ կուսակից էր. այս պատճառաւ քաջ իրազեկ լինելու կարող էր եւ իւր տուած տեղեկութիւնքն արժէք ունէին։ «Արդէն երկար ժամանակէ ի վեր, ըսած է, աւստրիական քաղաքականութեան վրայ տեղեկութիւններ կ'ընդունիմք՝ Վիէննայի մէջ չգտնուող սակայն քաջ իրազեկ եղող թղթակիցներէ. կը հաւաստեն մեզ թէ երեք կայսերաց դաշնակցութիւնն իրաւ է,

թէ երեք արքունիք բոլորովին համաձայնած են արեւելեան պատերազմին ամեն պատահականութեանց վրայ, եւ թէ կատարեալ միաբանութիւն եւ բացորոշ դաշինք կան մանաւորապէս Աւստրիոյ եւ Ռուսիոյ մէջ Թուրքիոյ մասին. Ռէյխշթատի մէջ նախապատրաստեալ եւ պատերազմի յայտարարութեան միջոցին հաստատեալ եւ լրացեալ այն միաբանութիւնն անվթար մնացած է եղեր, եւ բաժին եղած օրն Աւստրիա Հերցէկին եւ Պօսնան ստանալու մասին ապահով է եղեր։

« Այս ենթադրութեան համեմատ՝ Աւստրիա պատեհ ժամ մը, դիւրին միջոց մը, հաւանական պատրուակ մը միայն կը խնդրէ եղեր պայմանեալ փոխարէնն ձեռք անցընելու համար։ Մօտերս՝ երբ Վիէննայի մէջ գումարեալ նախարարաց մեծ խորհուրդն աւստրիական բանակին մէկ մասին գումարումն որոշելու վրայ էր, « Աւստրիա, ըսին մեզ, տեսակ մը կատակախաղ կը խաղայ. Եթէ Պօսնան եւ Հերցէկը գրաւուի, երկար ժամանակէ ի վեր Ռուսիոյ հետ պայմանեալ կարգադրութեան մը համեմատ պիտի ըլլայ այդ։ » Աւստրիոյ մասին ակնածութիւն եւ համակրութիւն ունենալով՝ այս տեղեկութիւնները հրատարակել չուզեցինք եւ տարակուսական համարեցինք։ Դժբաղդաբար ստիպեալ ենք խոստովանելու թէ իրաց կացութիւնն այնպիսի դարձուածք մը կ'առնու, որ այս կարծեաց շատ հաւանականութիւն կուտայ։ « Ըստ երեւութին միթէ հաւատալի չէ՞ արդարեւ թէ Աւստրիոյ եւ Ռուսիոյ միջեւ տեսակ մը զօդողութիւն կայ, որոյ առարկայն է Տաճկաստան։ Այս ձեռնարկութիւնն յառաջ վարողն ըլլալու է Ռուսիա, Աւստրիա եւս շահուն մէկ մասն ինքն ստանալու պայմանաւ կը թողու որ գործէ նա, եւ այս բոլոր բաներն կը կատարուին Գերմանիոյ հովանաւորութեամբն եւ հաճութեամբն։ Այս երեք կայսերաց դաշնակցութիւնն՝ որոյ վրայ մեք քիչ մը երկբայած ենք միշտ, գոյութիւն եւ որոշ նպատակ մ'ունենալու է։ Նա մահապարտութեան դատակնիքը տուած ըլլալու է ընդդէմ Թուրքիոյ, եւ օսմանեան կայսերութեան բարձումն կամ գէթ առաջին բաժանումն վճռուած ըլլալու է։

« Եթէ այսպէս է, Տաճկաց տարած յեղակարծ եւ անակնկալ յաղթութեանց վրայ մէկ քանի հաշիւներու չփոթիլն խելք առնելու բան է։ Վիլհէլմ կայսրն Զարին անյաջողութեանցն համար վշտագնեալ է։ Իշլի մէջ երկու կայսերաց տեսակցութեան միջոցին, որուն ներկայ էր « երրորդն անտեսանելի », ինչպէս շատ լաւ ըսած է սպայ մը, անշուշտ Վիլհէլմ կայսրն Ֆրանց Եօզէֆ կայսեր առջեւ իրենց բարեկամին դատը պաշտպանած է։

« Միւս կողմանէ լրագիրք շարունակ խօսք կ'ընեն Զարին առ Աւստրիոյ կայսրն դիմելուն վրայ։ Վերջապէս Քօլօնիոյ Ցայթունկն (լրագիր) կը ծանուցանէ թէ Վիէննայի բարձր ակմբից մէջ սրտնեղութիւն եւ չփոթութիւն պատճառած են Տաճկաց յաղթութիւնքն։ Խելք առնելու բան է այս. Թուրքն յաղթական ըլլալուն պէս՝ այլ եւս բաժանման խնդիր չմնար։ Ի՞նչ ընելու է ուրեմն. միթէ կարելի՞ չէ գէթ անուղղակի կերպիւ օգնել Ռուսիոյ՝ Ռումէններն, Սերվիացիներն եւ մինչեւ անգամ Յոյներն դրդելով. Սերվիոյ պատերազմելու մասին այլ եւս Վիէննայի մէջ առարկութիւն ըլլալու չէ, միայն թէ Սերվիա Օսման փաշայի դէմ դառնայ եւ իւր զօրքն Պօսնա չմտնեն։ Աւստրիոյ կարելի էր նաեւ նախազգոյշ գտնուիլ՝ Պօսնայի տիրելով եւ գրաւն ի ձեռին ունենալով։»

Ասկէ յայտնի կը լինի թէ Անգղիոյ պէս Աւստրիա եւս փոյթ չէր տաներ եւրոպական տէրութեանց կարգէն օսմանեան կայսերութեան դուրս չմնալուն մասին։ Փլէվնայի ճակատամարտն կատարելապէս պարզեց զայս։ Եթէ Ռուսաց յաղթական եղած միջոցին այս երկու տէրութիւնք կը զինուէին, պատճառն այն էր որ Տաճ-

կաստանը բաժանելու վայրկեանը մօտա-
լուտ կը համարէին , եւ կ՚ուզէին իրենք
եւս մասնակից լինել . եթէ վերստին սպա-
սողական դիրք բռնեցին Ռուսաց յաղ-
թուելուն վրայ , պատճառն այն էր որ
այդ վայրկեանն աւելի կ՚ուշանար , եւ
թողին որ բաղդն որոշէ Տաճկաստանի
վիճակն ։ Այսքան մեծ կարեւորութիւն
ունեցող բան մը յայտնի լինելէն յետոյ ,
ռուսական կառավարութեան մինչեւ ցայն-
ժամ ունեցած հոգածութիւնները փարա-
տեցան կացութեան մասին . Նորա դիւա-
նագիտաց գործը դիւրացաւ , որք այնու-
հետեւ ստոյգ գիտէին՝ թէ արեւելեան
խնդրոյն կարգադրութեան մէջ ամենէն
աւելի շահ ունեցող տէրութիւնք ինչ ըն-
թացք պիտի բռնէին . Ռուսիոյ համար
անգին բարոյական երաշխաւորութիւն
մ՚էր այս թէ պատերազմին մինչեւ վերջն
իւր հակառակորդն առանձին պիտի մնար ։
Այս եղաւ Փլէվնայի ճակատամարտին
աշխարհավարական կարեւոր արդիւնքն ,

# Գլուխ Քսանեւինգերորդ

## ԱՐՇԱՒԱՆՔ ԱՌԱՋԱՊԱՀ ԳՆԴԻՆ ՅԱՅՍԿՈՅՍ ՊԱԼՔԱՆԱՑ

### ԸՆԴՀԱՐՈՒՄՆ ԵԷՆԻ-ԶԱՂԱՐԱՅԻ ՄՕՏ. — ՄԱՐՏ ՄԵՐՁ Ի ԶՕՂԱՆԼԸ

Շիփքայի կիճին գրաւմանէն յետոյ՝
Կուրքօ զօրավարն տասն օրի չափ հան-
գիստ տուեր էր իւր զօրաց , եւ այն միջո-
ցին փոյթ տարեր էր գրաւած անցքն ամ-
րացնելու , պաշար մթերելու եւ նոր ձեռ-
նարկութեանց պատրաստուելու ։ Նաեւ
կ՚ուզէր որ Պալքանաց միւս կողմն ռուսա-
կան գնդին երեւան գալէն ծագելիք բարո-
յական ազդեցութիւնն պուլղար հասարա-
կութեան մէջ տարածուելու միջոց տրուի ։
Կը մտածէր իւր զօրաց որքան սակաւաթիւ
եւ իւր կացութեան որքան վտանգաւոր
լինելն , բայց բնակչաց աջակցութեանը
վրայ կը վստահէր ապաքէն ։ Այս մասին
շատ գէշ խաբուեցաւ ։

Պուլղարաց լեգէոնին կազմաւորութիւ-
նըն ամենամեծ ակնկալութիւններ ծնու-
ցեր էր ։ Այն կորովի եւ հաստատամիտ
մարդոց Ռումանիայէն եւ Սերվիայէն
գալուստը տեսնուելով , որոց մէկ քանի
շաբաթ կրթութիւն ընելն բաւական ե-
ղաւ զինուորական արուեստին վարժուե-
լու համար , կարծուեր էր թէ այս սկզբ-
նատարերաց շուրջն ամբողջ պուլղարական
բանակ մը գումարելէ աւելի դիւրին բան
չկար ։ Այս հաշիւն սխալ եղաւ , վասն զի
ռուսական դրօշուն ներքեւ վազող կամա-
ւորք դաղթականներ էին , որոց բարո-
յականն բարձրացած էր Տաճկաստանէն
դուրս՝ ազատութեան վայելմամբ . բայց
Պուլղարիոյ մէջ մնացող Պուլղարներն
դանդաղ եւ ծառայագործութեամբ նը-
կուն եղած լինելով՝ անկարող երեւեցան
իրենցմէ պահանջուած գործը կատարե-
լու ։ Կարծուած էր թէ զանոնք ապըս-
տամբ զինուոր եւ տեղացնին ընել կա-
րելի էր . երբ Կուրքօ զօրավարն մէկ
քանի հազար հրացան բաժնել տուաւ իւր
շուրջը գտնուողներուն , զանոնք ընդու-
նող Պուլղարներն ապստամբեցան արդա-
րեւ ինչպէս որ կը կարծուէր , սակայն
ոչ ուրիշ բանի համար , այլ միայն մահ-
մետական հասարակութեան վրայ խու-
ժելու , անմեղ ժողովրդոց մէջ ջարդ ձը-

գելու եւ ըստ օրինակի պաշը-պօզուգներուն՝ այս պատերազմին գազանական վայրագութեան հանգամանք մը տալու համար, որոյ վրայ քստմնեցաւ բովանդակ Եւրոպա։ Այս Պուլղարաց ամենէն խելացիներն սա խօսքը կը զրուցէին իբրեւ ասած. «Սխալ է կարծել թէ Թուրքերն եւ Պուլղարն կարեն այսուհետեւ միմեանց քով ապրիլ. պէտք է որ մին զմիւսն բնաջինջ ընէ։»

Յուլիսի 29ին առաջապահ գունդն վերըստին սկսաւ արշաւել՝ զօրավիգ ունենալով հետեւակազօրաց 9րդ հատուածին 1ին սաւհն, զոր Սվեաթօփոլք Միրսքի իշխանն անոր քով ղրկեր էր։ Նպատակն էր ցիր ու ցան ընել այն անջատ գնդերն որ Րէուֆ փաշայի հրամանատարութեան ներքեւ կը գտնուէին Թունճայի հովտին մէջ՝ գլխաւորապէս Եէնի-Զաղրայի, եւ Էսկի-Զաղրայի մօտ, եւ ըստ կարի երկար ժամանակ արգելուլ Սիւլէյման փաշայի հետ Լտիրնէէն եկող զօրաց համախմբութիւնն։

Կուրքօ զօրավարն իւր զօրքն երեք խումբերու բաժնեց. ճախակողմեան խումբըն՝ որ կը բաղկանար 1ին սաւհին հետեւակազօրաց 5 վաշտերէն (Պօրէյխա զօրավարին հրամանատարութեան ներքեւ) 6 դաշտային թնդանօթներով հանդերձ, եւ գրեթէ 350 Խազախներէ, պիտի մեկնէր Խային-քէօյէն. միջին խումբն՝ որ նոյն իսկ Կուրքօ զօրավարին հրամանատարութեան ներքեւ էր եւ կը բաղկանար հրաձգաց սաւհէն եւ Խազախներու մէկ գումարտակէ՝ 16 թնդանօթներով հանդերձ, Գըզանլըգէն պիտի մեկնէր. վերջապէս աջակողմեան խումբն՝ որ պուլղարական լեգէոնին չորս վաշտերէն եւ հեծելազօրաց երեք գումարտակներէ կը բաղկանար՝ թնդանօթաց երկու չարերով հանդերձ եւ Լայխթէնպէրկի Եւգինէոս եւ Նիքօլա իշխանաց առաջնորդութեան ներքեւ էր, պիտի մեկնէր Էսկի-Զաղրայէն, ուր իբրեւ պահակագունդ կըսպասէր։

Միջին խումբն ճանապարհ ելաւ Յուլիսի 29ին առաւօտուն կանուխ եւ Գըշլա հասաւ կէս օրն մէկ ժամ անցնելով. անդանօր երեք ժամ հանգիստ ընելէ յետոյ՝ շարունակեց յառաջ խաղալ դէպ ի Պալապանլը, ուր հասաւ կէս գիշերը կէս ժամ անցնելով։ Զօրքն 17 ժամուաչափ գնացք ըրած էր հանգիստ առնելու միջոցներն չհաշուելով. եւ սակայն այս սարսափելի արշաւանքն մինչեւ վերջը շարունակելու անկարող գտնուողներուն համար միայն մէկ սայլակառք բաւեց։ Առաւօտեան ժամը չորս ու կէսին խումբըն վերստին յառաջ խաղալ սկսաւ չորս ժամ միայն հանգիստ ընելէ յետոյ, եւ եօթներորդ ժամուն Եէնի-Զաղրայի վերայ նայող բլրոց կատարն հասեր էր։ Պօրէյխա զօրավարին սաւհն արդէն զետեղեալ էր մօտն, եւ իւր թնդանօթաց կրակովն Տաճիկներն այն քաղաքէն ելնելու ստիպեց։ Տաճկաց ճախակողման վերայ սուիններով կռիւ մ'եղաւ երկաթուղւոյ կայարանին դիմացը. կէս աւուր մօտ՝ Ռուսաց հետեւակազօրն այն դիրքը գրաւեց եւ Տաճիկները նահանջեցին երկու թնդանօթ թողլով։ Հեծելազօրն այնչափ երկար ժամանակ ընթանալուն պատճառաւ ուժաթափ եղած էր. վասն որոյ չը կարաց Տաճկաց հետամուտ լինել։ Կուրքօ զօրավարն Եէնի-Զաղրա մտած ժամանակ՝ երկաթուղւոյ կայարանն քանդեալ եւ քաղաքը բոցերու մէջ տեսաւ։ Տաճիկները մեկնելու ժամանակ Պուլղարաց թաղը հրդեհեր էին, եւ սակայն Պուլղարք ալ Տաճկաց թաղը կրակի տուած էին. Ռուսս սակայն ստիպուեցան խարազանով հարուածել Պուլղարներն՝ թող չըտալու համար որ իրենց սկսած աւարառութիւնը շարունակեն։

Լուր հասնելով որ աջակողմեան խումբըն բազմաթիւ զօրաց հանդիպեր եւ Էսկի-Զաղրա քաշուելու ստիպուեր էր, միւս երկու խումբերն Կուրքօ զօրավարին հրամանատարութեան ներքեւ միանալով՝ խա-



ԷՍԿԻ-ԶԱՂԱՐԱՅԻ ՄԷՋ ԳՈՒԼՂԱՐ ԱՊՍՏԱՄԲԱՑ ԿԱԽՈՒԻԼՆ Ծ1

կոյն ճանապարհ ելան դէպ ի նոյն քաղաքը եւ երեկոյին Գարա-Փունար [1] հասան, ուր գիշերեցին ։ Ռուսք ճանապարհին երկու քովը եղած տեղերն բոլորովին աւերեալ տեսան. Տաճիկներն ետ քաշուելու ժամանակ գիւղերը կը հրդեհէին եւ բնակիչները կը ջարդէին. Ռուսաց յառաջխաղացութեան վերջին մասն կատարուեցաւ հորիզոնին վրայ ամեն կողմ գիւղերը ճարակող բոցերուն լուսովը ։

Րէուֆ փաշա գիշերային ժողովեր էր Եէնի-Զաղարայի մօտ յաղթուող զօրքն, եւ Էսկի-Զաղարայի խմբին յառաջխաղացութիւնն արգելող ջոկատին քով հասնելով՝ ճանապարհին մօտ ամուր դիրք վրայ զետեղուեր էր անտառի մը մէջ, մերձ ի Ջուղանլը՝ Էսկի-Զաղարայի տասն կամ տասնեւմէկ հազարամէթրի չափ մընալով ։

Կուրքօ զօրավարն յուլիսի 31ին առաւօտուն կանուխ մեկնեցաւ Գարա-Փունարէն. այն ինչ Տոլոպօվա գիւղն անցեր էր, ձախակողմն անտառին մէջ Րէուֆ փաշայի զետեղած թնդանօթներուն կրակին ներքեւ գտնուեցաւ իւր խումբն՝ եւ անտառին մէկ բաց տեղն՝ որ ճանապարհին մօտ կը գտնուէր՝ լցաւ տաճիկ հեծելազօրօք ։ Կազախաց երկու թնդանօթներն ճանապարհին լիր արկեալ մէկ մասին վրայ զետեղուեցան՝ Տաճկաց կրակին անդրադարձութիւն ընելու համար, եւ հետեւակազօրաց ջոկատ մը անտառին մէջ ղրկուեցաւ՝ անոնց յետոյկողմն անցնելու նպատակաւ ։

Այս շարժման վրայ՝ Տաճիկներն ստիպուեցան իրենց տեղերէն ետ քաշուելու, բայց շուտով վերադարձան, եւ Կազախաց թնդանօթներէն արձակուած ռմբարտակներուն պատճառաւ միայն բռնադատուեցան տեղի տալու. Անտառին մէջ անխախտ կացին, եւ այնքան առաւել թուով կը գտնուէին, որ կարկտի պէս խիտ առ խիտ կրակ կը թափուէր այն ամեն կէտերուն վրայ ուր Ռուսք կը ջանային ժողովիլ յարձակում ընելու համար. Տաճկաց թնդանօթաշարք կը ռմբակոծէին մեծ ուղին եւ փոքր անտառ մը, ուր ռուսական զօրքն զետեղուելու կը նկրտէր դէպ յաջակողմն ։ Անտառին վրայ եղած այս յարձակման միջոցին մեծ արիութիւն ցոյց տրուեցաւ ։ Գումարտակներէն միոյն հրամանատարն գնդակաց տեղատարափին ներքեւ իւր մարդոց վարանիլն տեսնելով, դրօշն յափշտակեց եւ յառաջ խոյացաւ գոչելով. « Տեսնենք ձեզ ով պիտի համարձակի ետ մնալու ։» Այն ժամանակ իւր մարդիկն եռանդագին աղաղակաւ դաւոյթ տուին նորա ետեւէն, եւ վանեցին Տաճիկներն, որք գումարուելու վրայ էին ։

Ռուսք արձակամարտից գալստեանը կըսպասէին, որք երկու օր սարսափելի գնացք ընելէ յետոյ՝ Էկլիանիի մէջ մնացած էին հանգիստ ընելու համար. եւ մեծ ուրախութիւն մը տիրեց երբ կէս օրին մօտ նոքա երեւան եկան՝ զօրանոցէն նոր ելածի պէս անյողդողդ ընթանալով իրենց քաջ հրամանատարին՝ Սվիցինսքի զօրավարին առաջնորդութեամբ ։

Սոքա կռուոյն ասպարէզն հասնելնուն պէս՝ անտառին մէջ նետուեցան եւ Տաճիկները վանեցին ոտն առ ոտն ։ Հրացաններուն կրակն հետզհետէ կը հեռանար արագաբար, օսմանեան հետեւակազօրն կըսկսէր նահանջել, երբ անակընկալ վտանգ մը Ռուսաց դէմ ելաւ. Չէրքէզ հեծելազօրաց բազմութիւն մը՝ որ գրեթէ 3,000 հոգւոյ չափ կար, անտառին ետեւէն դուրս ելաւ, ճանապարհին վրայէն անցաւ եւ աջակողմեան զառիվերներուն վրայէն պտոյտ մ'ընելով՝ ջանաց ռուսական բանակին յետոյկողմն հար-

[1] Եէնի-Զաղարայէն Էսկի-Զաղարա տանող ճանապարհին վրայ գտնուած այս գիւղն շփոթելու չէ նոյն անունը կրող ուրիշ տեղւոյ մը հետ, որ Եէնի-Զաղարայէն մինչեւ Հարմանլը ձգեալ երկաթուղւոյն վրայ է ։ Սիւլէյման փաշա այս վերջինն իրեն զօրանիստ ընտրած էր ։

ուածել եւ անոր նահանջելու ճանապարհը կտրել։ Այս յեղակարծ յարձակման վրայ խմբին մէջ շփոթութիւն մը կըսկսէր տիրել, երբ կռուատեղին վրայ Աժտէրխանի միլիշալազօրաց եւ Քիէվի հուսարաց հետ երեւեցաւ Լայխթէնպէրկի Նիքօլա իշխանն, որ Էսկի-Զաղարայէն վազելով կուգար՝ իրաց կացութեան վրայ տեղեկութիւն առած լինելով Ֆօն Ռոտխ զօրավարէն, որ նախորդ օրն իւր քով եկեր էր այս բանին համար։

Ժամանակ կորուսանելու չէր։ Հեծելազօրաց փոքրիկ գունդն — նուազեալ թուով երկու գումարտակներ — գրեթէ մտածման արագութեան չափ շուտութեամբ նետուեցաւ սեւ բրդէ գլխանոցներ դնող Չէրքէզներուն մէջ, որք այսր անդր կը տատանէին, քանի որ կորովի եւ քաջաձի միլիշալազօրք եւ նամ փառաւոր հուսարք անոնց բազմութեան մէջ իրենց անցք կը բանային։ Կռիւն երկար չտեւեց։ Այն բազմութեան կոհակներն խորտակուեցան եւ ցնդեցան։ Հուսարք եւ միլիշալազօրք ճանապարհը բացած էին, ընդհարման սաստկութենէն տակաւին կը դողդոջէին եւ պարտեալ թշնամին վռնելու համար ի մի վայր կը գումարուէին։

Հեծելազօրաց հետ հասած էր ձիոց վրայ բարձեալ թնդանօթից շար մը, որ արդէն կռուոյն մէջ գործ տեսնող թնդանօթաց տեղը բռնեց, վասն զի անոնց ռազմամթերքն բոլորովին սպառած էր։ Երկրորդ ժամուն Տաճկաց հրընկէց անօթներուն կրակը մարեցաւ, հետեւակազօրն գրեթէ մինչեւ Էսկի-Զաղարայի մօտ վանեց զայն։

Րէուֆ փաշայի նոր պարտութեան վրայ ճանապարհն բացուելով այսպէս, Կուրքօ զօրավարն իւր յառաջխաղացութիւնը շարունակեց եւ գրեթէ երեկոյեան երրորդ ժամուն այնպիսի տեղ մը հասաւ, ուրկէ Էսկի-Զաղարա քաղաքն կը նշմարուէր հեռուստ։ Անդանօր բանբեր մը հասաւ իւր քով, որ Տաճկաց գծերուն մէջէն անցնելու յաջողեր էր, եւ ծանոյց թէ աջակողմեան խումբն՝ որ Լայխթէնպէրկի Նիքօլա իշխանին մեկնելուն վրայ նուազեալ եւ հեծելազօրաց մէկ գումարտակէ եւ Պուլղարաց չորս վաշտէ միայն բաղկացեալ էր, քաղաքին մէջ պաշարուեր էր Սիւլէյման փաշայի 30,000ի չափ զօրաց կողմանէ։ Խիզախ զօրավարն պահ մը մտածեց իւր փոքրիկ խմբովն երթալ զայն ազատել, բայց իւր մարդիկն երեք օր ճանապարհ ըրած եւ առաւօտէն ի վեր կռուած լինելով՝ խոնջեալ էին։ Աններելի յիմարական գործ մը պիտի լինէր այս կերպիւ այնքան վտանգաւոր բան մը փորձելն։ Փլէվնայի մօտ Քրիւտնէրի գործած սխալման մէջ անկեալ էր առաջապահ գնդին հրամանատարն եւս, իւր դէմ գտնուած զօրաց որքանութիւնը հասկանալու կարող չէր եղած եւ իւր սակաւաթիւ զօրքն երկու ջոկատի բաժնած էր. հարկ եղաւ այս սխալման հետեւութեանց տեղի տալ եւ բոլոր բանակը չվտանգելու համար աջակողմեան խումբն իւր բախտին թողուլ։ Երբ Տաճկաց ստուար բազմութիւն մը կողմնակի յարձակումն ընելու ցոյց մ՚ըրաւ, Կուրքօ զօրավարն յուսահատական նայուածք մ՚արձակեց Էսկի-Զաղարայի վրայ, որ ծխաշունչ կ՚երեւէր հեռուստ եւ ուր Պուլղարաց լեգէօնն բնաջինջ լինելու մօտ էր, յետոյ իւր զօրքն ետ դարձուց։

Նահանջն վերջին ծայր դժուարին եղաւ. այս խմբին հետ գտնուող լրագրի թղթակիցք կը պատմեն թէ վիրաւորք ճանճի պէս կը մեռնէին սայլերուն տատանմանցն եւ յուլիս ամսոյ սաստիկ ջերմութեան պատճառաւ, մինչեւ անգամ քաջառողջ մարդիկ երեք օրէ ի վեր չարչարուելով՝ խոնջութեան պատճառաւ եւ կամ արեւէ զարնուելով կը զրաւէին։ Յուլիսի 29էն մինչեւ 31ն փոքրիկ խմբին կորուսած մարդոց ամբողջ թիւն 600էն աւելի եղաւ։



ՏԱՃԻԿՆԵՐՆ ՎԵՐՍՏԻՆ Կ'ԱՌՆՈՒՆ ԷՍԿԻ-ԶԱՂԱՐԱՆ

Ռուսք Էսկի-Զաղարա քաղաքն գրաւած էին՝ Շիփքայի կիրճն առնելէն մէկ քանի օր յետոյ, եւ Կուրքօ զօրավարն Պուլղարաց լեգէոնն զետեղեր էր անդ, այն կայանն ամենէն աւելի դէպ ի դուրս գտնուելուն, եւ մանաւանդ այնպիսի տեղ մը լինելուն համար, ուր լեգէոնն կարէր աւելի ուղղակի յարաբերութիւն ընել իւր հայրենակցաց հետ եւ լաւագոյն կերպիւ ապստամբական ոգի ներշնչել անոնց ։ Իրօք անոր ազդեցութեամբ մէկ քանի հրոսակներ կազմուեցան շրջակայ գաւառաց մէջ ոչ թէ կռուելու համար, այլ ինչպէս բացատրուեցաւ՝ կոտորած եւ աւարառութիւն ընելու ։

Ամսոյն 29ին՝ Կուրքօ զօրավարին հրահանգաւն համեմատ՝ Լայխթէնպէրկի իշխանն իւր հեծելազօրօք եւ Բայլթին փոխ-գնդապետն մեկնեցան դէպ յԷսկի-Զաղարա, բայց Գարա-փունարի մօտ Րէուֆ փաշայի զօրաց ստուար մասն զիրենք կասեցուց, եւ ամսոյն 30ին նոր կռիւ մ'ընելէ յետոյ՝ ստիպուեցան ետ քաշուիլ դէպ յԷսկի-Զաղարա ։ Ամսոյն 31ին՝ երբ հեծելազօրն ճանապարհ ելաւ Կուրքօ զօրավարին քով երթալու համար, Սիւլէյման փաշա հարաւային կողմէն յանկարծ հասաւ քաղաքին առջեւ ։ Իւր բանակին մէկ մասը Գարա-Փունարի ճանապարհին վրայ դրկեց, Կուրքօ զօրավարին խմբին դէմ ցոյց մ'ընելու համար եւ պատրաստուեցաւ քաղաքին վրայ յարձակելու 18 վաշտով եւ 18 թնդանօթներով, զորս հետեւեալ կերպիւ շարեց. ձախակողմն Վէյսէլ փաշայի սահը զետեղեց, միջավայրն Շահին փաշայի սահըն, եւ աջակողմն Րէճէպ փաշայինն, որոյ մասնաւոր պաշտօնն էր քաղաքին միւս կողմն անցնիլ եւ Գըզանլըգի ճանապարհը կտրել, ուրկէ Ռուսք կարէին նահանջել ։

Սիւլէյման փաշայի հետեւակազօրն Տէտէ-աղաճ ելնելէն ի վեր՝ գիշեր ցերեկ շտապաւ քայլեր էր, սակայն դրեթէ ուտելիք չունէր ։ Այսու ամենայնիւ մէկ քանի ժամ միայն հանգիստ տրուեցաւ այն պարտասեալ զինուորաց, յորոց բազումք բոկոտն էին ։ Յետոյ բանախօսութիւն մ'եղաւ նոցա առջեւ, եւ ըսուեցաւ իրենց «Թէ հարկ էր Փատիշահը փրկել, թէ այն գարշելի Ռուսք կ'ուզէին Ստամպօլը քանդել եւ Այա-Սօֆիան այրել եւ թէ կռուոյ մէջ ինկանող բոլոր Մուսլիման հաւատացեալք ուղղակի դրախտ պիտի երթային եւ յաւիտենական երջանկութիւն պիտի վայելէին անդ ։» — Այս չափը բաւական եղաւ, խոնջութիւնն եւ նուաղութիւնն մէկէն մոռցուեցան եւ զինուորք իրարու քով սեղմուեցան եւ շարուեցան թշնամւոյն պատնիշացը վրայ ընթանալու համար մոլեկան խանդով ։

Պուլղարք այս ընդհարման դէմ դրին դիւցազնաբար եւ առաջին յարձակումն յետս մղեցին. բայց երբ տեսան որ Րէճէպ փաշայի սահն զիրենք պիտի պատէ, պատրաստուեցան ետ քաշուելու ջանալ, ապա թէ ոչ ամենքն պիտի բռնուէին եւ ջարդուէին ։ Կը թուի թէ այս կռուոյն մէջ Ռուսք իրենց դաշնակցաց վրայ բնաւ հոգ չտարին եւ Լայխթէնպէրկի Եւգինէոս իշխանին ձեռաց ներքեւ մնացած վիշապազօրաց գումարտակն աւելի ինքզինքն ազատելու նայեցաւ քան թէ Պուլղարաց նահանջը պաշտպանելու ։ Սոցա մէկ մասն փրկուեցաւ սոյն այս ձախողութեան մէկ պարագային պատճառաւ. Էսկի-Զաղարայի մեծ փողոցն կրակի մէջ լինելով՝ Տաճկաց միջին խումբն չկարաց զանոնք մղել յետուստ, եւ Պուլղարք Րէճէպի սահին հետ միայն կռուեցան, որոյ վրայ յուսահատական յարձակում մ'ընելով կարգերը ճեղքեցին անցան ։ Այս կռուոյն մէջ գտնուող Պուլղարաց մէկ չորրորդն կորաւ ։ 3րդ վաշտը բաղկացնող 496 զինուորներէն 207 միայն մնացին, եւ 14 սպայից 5ն միայն ողջ առողջ ելան կռ-

ուէն ։ Սամարա քաղաքին կողմանէ ղըրկուած դրօշն այս վաշտին քովն էր . երեք սպայք հետզհետէ սպաննուեցան զայն բռնած ժամանակնին ։ Յայնժամ Բաթիլին քաջ փոխ-գնդապետն զայն բռնեց՝ իւր մարդիկը յառաջ վարելու համար . բայց ինքն եւս տապաստ անկաւ գնտակաւ մը գլխէն զարնուելով ։ Դրօշը բռնել ուզող անձանց չորրորդն եւ հինգերորդն եւս զարնուեցան . բայց վերջապէս երկրորդական սպայ մը Թովմաս Թիմօֆէյեվ ճակատատեղւոյն վրայէն առաւ տարաւ այն աղետաբեր դրօշը ։ Տաճիկներն եւս մեծ կորուստ ունեցան եւ խոստովանեցան թէ իրենցմէ 748 մարդ անկեալ էին , որոց 18ը սպայ էին ։

ԱՌԱՋԱՊԱՀ ԳՈՒՆԴՆ ՊԱԼՔԱՆՆԵՐՈՒՆ ՄԻՒՍ ԿՈՂՄՆ Կ'ԱՆՑՆԻ ·

Կուրքօ զօրավարն նահաջելու ժամանակն իմացաւ Փլէվնայի պարտութիւնն , եւ միանգամայն հրաման առաւ Պալքաններուն միւս կողմն անցնելու՝ իւր գրաւած կիրճից պահպանութիւնն ապահովելով ։ Վասն որոյ դէպ ի Խային-քէօյի կիրճը գնաց Եէնի-Զաղրայի մէջ ձըգած զօրացն հրաման ղրկելով՝ որ իւր քով հասնին այն տեղ ։ Այս քաղաքին մօտ կռիւ մ'եղաւ Ռուսաց վերջապահներուն եւ Սիւլէյման փաշայի յառաջապահ խմբին միջեւ որոյ հրամանատարն էր Րիֆաթ պէյ ։ Ռուսաց վերջապահները Տաճիկներէն ի մօտոյ հալածուելով ցիր եւ ցան եղան եւ իրենց զէնքը ձգեցին ։ Պիւքլիւմլի գիւղէն մէկ քանի քայլաչափ հեռի հալածող գնդուորաց մէկ քանիներն տեսան որ գետինը նոր փորուած լինելով հողը դարձեալ վրան դըրուեր էր , կարծելով թէ փախստական Պուլղարներն այն տեղ գանձ մը պահած են , փորեցին եւ երեւան հանեցին երկու թնդանօթ , զոր Ռուսք հետ տանելու կարող եղած չէին եւ թաղած էին որպէս զի թշնամւոյն ձեռքը չանցնի ։ Սիւլէյման փաշա իւր տեղեկութեանց մէջ այս կողոպուտներուն համար լսած է թէ Եէնի-Զաղրայի ճակատամարտին ժամանակ առնուեցաւ ։

Կուրքօ զօրավարն իւր խումբը Պալքաններուն միւս կողմն անցուց Խային-քէօյիւ կիրճէն , ուր էլեցի գումարտակն իբրեւ պահակ ձգուեցաւ . Լայխթէնպէրկի իշխանն եւս Գըզանլըգէն մեկնեցաւ, որոյ բնակիչներն ամբողջ իւր ետեւէն գաղթեցին Տաճկաց ձեռքէն ազատելու համար . եւ իւր խմբին մնացորդքն Շիփքայի կիրճին մէջ յապահովի կացուց զոր Ռուսք աճեղ ամրոց մը դարձուցած էին ։

Առաջապահ գունդն լուծուեցաւ . հեծելազօրն լեռնային երկրի մը մէջ քաշուած լինելով եւ այն տեղ այլ եւս չկարենալով գործ տեսնել, ղրկուեցաւ դարձեալ այն այլ եւ այլ գնդերուն քով , յորոց զատուած առնուած էր , եւ Կուրքօ զօրավարն Ռումանիա գնաց կայսերական անձնապահ գնդին հեծելազօրաց 2րդ հատուածին քով , որ գալու վրայ էր , եւ որոյ հրամանատարութիւնը պիտի ստանձնէր դարձեալ ։

Ռուսք թշնամութեանց ձեռնարկած էին Պուլղարներն ազատելու համար , եւ բաղդին անագորոյն մէկ հեգնութեամբն իրենց առաջին արշաւանաց ամենայայտ արդիւնքն եղաւ պուլղար հասարակութեան մէկ տասներորդ մասին ջնջումն ։ Սիւլէյման փաշա ապստամբ համարեց Էսկի-Զաղրայի առմանէն յետոյ ողջ մնացող արու բնակիչներն եւ իբր այն վարուեցաւ անոնց հետ , եւ այսպէս եղաւ նաեւ այն բոլոր տեղեաց մէջ ուր յանցապարտներ կային կամ գէթ համախոհութեան կասկածներ կը լինէին ։ Քաղաքներուն եւ ճամբաներուն մերձակայքըն կախաղաններով լցուեցան ։

# Գլուխ Քսանեւվեցերորդ

## ՍԻՒԼԷՅՄԱՆ ՓԱՇԱՅԻ ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ՇԻՓՔԱՅԻ ԱՆՑՔԻՆ ՎՐԱՅ

### ԱՆԴՈՐՐՈՒԹԻՒՆ ՏԱՍՆԵՒՀԻՆԳ ՕՐԻ ՉԱՓ. — ՄԷՀԷՄՄԷՏ ԱԼԻԻ ՅԱՏԱԿԱԳԻԾՆ

Փլէվնայի երկրորդ ճակատամարտէն եւ Ռուսաց Թունճայի հովտէն ետ քաշուելէն յետոյ՝ տասնեւհինգ օրի չափ համեմատաբար անդորրութիւն տիրեց։ Սքօպելեվ զօրավարին անգամ մը դէպ ի Թրոյան եւ անգամ մը դէպ ի Լօվչա ըրած զննութիւններէն եւ առաջապահ զօրաց մէջ եղած մէկ քանի մանր կռիւներէ զատ՝ որոց վրայ այլուր պիտի ճառեմք, ուրիշ ընդհարում մը չեղաւ այսչափ միջոցի մէջ, զոր երկու պատերազմող կողմանք՝ իրենց զօրաց խումբերը պարագայից փոփոխութեանց եւ իրենց նոր դիտաւորութեանց համեմատ տեղափոխելով եւ մանաւանդ զօրավիգ բերել տալով անցուցին, վասն զի երկուքն եւս օգնութեան պէտք ունէին։

Արեւմտեան կողմէն Օսման փաշա Փլէվնայի եւ Լօվչայի պատնէշներուն մէջ անշարժ մնաց՝ նորանոր ամրութիւններ յաւելլով միշտ հնոց քով, հեծելազօրու չգոյութեան եւ իւր զօրաց բնաւորութեան պատճառաւ ստիպեալ էր սոսկ պաշտպանողական դիրք մը բռնել։ Ռուսք անհաւատալի զանցառութեամբ՝ իրենց սքանչելի հեծելազօրը գործածելու չնայեցան նորա հաղորդակցութիւնները խափանելու համար։ Նիշի եւ Սօֆիայի ճանապարհներն բաց մնացին յետուստ, որով Օսման փաշա կարաց կրկին օգնական զօրք բերել տալ այն քաղաքներէն, եւ իւր բանակին թիւն այսպէս 70,000ի հասաւ. Հարաւային կողմէն Սիւլէյման, որոյ բանակն դեռ նոր կը կազմուէր՝ կռուոյ սկսած ժամանակն, կարաց իւր պակասները լրացնել։ Անսպառելի Ասիան զարձեալ հրաշիւք հետզհետէ նորանոր վաշտեր կը ղրկէր. այս դեռաբոյսի զօրքն Կոստանդնուպօլիս կը հասնէին, րէտիֆներն (պահեստի զօրք) եւ մուսթահֆըզներն՝ (երկրապահ զօրք) պատերազմի պաշտօնատան հրապարակին վրայ իրենց ոտունքն զինուորական քայլափոխի փոքր ի շատէ վարժեցնելով կը նորուէին, եւ մէկ քանի օրէն ճանապարհ կը հանուէին՝ 400 կամ 500 հոգիէ բաղկացեալ խմբեր կազմուելով։ Վաղեմի զօրաց հետ խառնուելով՝ մէկ ամսէն ըստ բաւականի լաւ զինուորներ կը լինէին մոլեռանդութեամբ վառեալ եւ նոր յաղթութեանց վրայ բորբոքեալ։ Սիւլէյմանի բանակին թիւն այսպէս 55,000ի հասաւ։

Արեւելեան կողմն Մէհէմմէտ Ալի քառանկեան բանակն գրեթէ անվթար գըտեր էր եւ տակաւին Շումնուի մօտ համախմբեալ. Մէկ քանի ջոկատներ Գարա-Լօմի դիծը կը պաշտպանէին, եւ հետզհետէ եղած անհեթեթ եւ աննպատակ շարժմանց վրայ բոլորովին վհատելով՝ կ՚ընկրկէին Ցարէվիչի բանակին առջեւ, քանի որ այս կը յառաջէր, զօրաց ստուար մասն ալ վհատեալ էր անգործ մնալով։ Մէհէմմէտ Ալի 10,000 մարդ ձգեց Ռուսճուգի մէջ, 15,000 Շումնուի մէջ, եւ փութաց մնացեալ մասը սփռելու՝ Բազկրատէն մինչեւ Էսկի-Ճումա ձգեալ ամուր գծին վրայ. Այս շարժումն կատարուեցաւ ճշդիւ օգոստոս ամսեան առաջին կիսոյն մէջ։ Եգիպտական զօրաց բաժինն (1)

(1) Եգիպտոսի փոխարքայն հպատակութեան կապերով Տաճկաստանի հետ միացած լինելով՝ պատերազմի ժամանակ պարտաւոր է զօրք տալու Սուլթա-

իւր քով կոչեց, որ Տրապյանու որմէն քով կը մաչէր՝ անօգուտ ցոյց մը միայն կարենալով ընել Ցիմմէրմանի գնդին դէմ, զոր Տօպրուճայի տենդն բաւական էր կասեցնելու, զօրավիգ եւս ընդունելով՝ կարաց գործող բանակ մը կազմել 60 կամ 70.000ի չափ զօրօք։ Կռիւ ընելու սկսելէ առաջ՝ իւր յառոյկողմն ապահովեց պաշտպանողական ճամբարներ շինել տալով ի Րազկրատ եւ յէսկի-Ճումա՝ նման այն ճամբային որոյ դէմ Քրիւտնէր անյաջողութեամբ ընդհարեցաւ ի Փլէվնա։

Ռուսք եւս ժամանակ շահելով մեծ օգուտ ունէին, իրենց գործելու խարիսխն՝ ռումանական գծերն եւս հաշուելով՝ Վիտի գետաբերանէն սկսեալ կը ձգուէին մինչեւ այն բլուրներն որ Քամաթին կղզւոյն դիմաց կը բարձրանան անդր քան Փիրկոս գիւղն՝ Ռուսճուգէն 10 հազարամէթր հեռի։ Բանակին եւ ռումանական գետեզրին միջեւ հաղորդակցութիւն կը լինէր երեք կամրջաց միջոցաւ, որոց մին Փիրկոսի մօտ նոր հաստատուած էր, եւ միւս երկուքն Զիշթօվի մօտ էին։ Աջակողմեան թեւին համար տակաւին կամուրջ շինուած չէր կամ զանցառութեամբ եւ կամ կազմածոց չգոյութեան պատճառաւ։ Թուռնու-Մակուրէլլի եւ Նիկոպոլսոյ միջեւ տափանաւեր կ՚երթեւեկէին՝ զօրս շոգւով բանող մակոյկք իրենց ետեւէն կը ձգէին։ Պաշարաց եւ ռազմամթերից փոխադրութիւնք ցամաքային ճանապարհաւ կը լինէին Պուքրէշէն, Ալէքսանտրիայէն եւ Ջիմնիցայէն։ Խոշոր կազմածք երկաթուղեաւ կը տարուէին մինչեւ Ճուրճէվօ եւ անտի ցամաքի վրայէն մինչեւ Փիրկոս եւ Ջիմնիցա։ Հիւանդք եւ վիրաւորք եւս այս ճանապարհէն կը փոխադրուէին հակառակ ուղղութեամբ։ Պաշարման թընդանօթներն եւ կազմածներն Ֆրաթէշթիի եւ Փարափանի մէջ էին, եւ Փիրկոսի կամրջէն պիտի անցնէին, երբ Ռուսճուգը պաշարելու գործողութիւնն ի գլուխ ելնէր։

Բանակին ձախակողմը կը գտնուէր 12րդ հատուածն, որոյ առաջապահք Ռուսճուգի ճանապարհը կը գրաւէին Քամաթին կղզւոյն դիմացի բլրոց վրայ լինելով։ Այս հատուածն Պասարպօվայի դիրքն եւս կը պահպանէր Լոմի աջակողմեան ափանց վրայ։ Այս երկու կէտերն Ռուսճուգէն հազիւ 10 հազարամէթր հեռի են։ Սոյն բերդաքաղաքին մօտ գտնուող առաջապահներն ամեն օր իբրեւ արձակամարտ կը կռուէին 12րդ հատուածին պարեկապանացն հետ, որոյ զօրանիստն էր Փիրկոս։

35րդ հատուածին զօրանիստն էր Նիսօվա Պէլլի-Լոմի քով։ Այս հատուածն Գատը-քէօյէն մինչեւ Փիզանցա եւ Թուրլագ ձգեալ գիծը կը գրաւէր։ Փիզանցա՝ Ռուսճուգէն Րազկրատ տանող ճանապարհին վրայ է եւ այս երկու քաղաքներէն հաւասար հեռաւորութիւն (26 հազարամէթր) ունի։ Տաճիկ զօրաց ջոկատ մը Վէթօվան կը գրաւէր, ուր է Վառնայի երկաթուղւոյն կայարաններէն մին, Ռուսաց առաջապահներէն վեց հազարամէթր հեռի։ 35րդ հատուածն իւրեն զօրանիստ ունէր Քօչէլէէվօ եւ կը գրաւէր Քօսթանցա, Օկարցին, Օփաքա եւ Փօլամօրցա գիւղերն։ Այս վերջին կէտին վրայ կցորդութիւն ունէր 1ին հատուածին հետ, որոյ զօրանիստն էր Օսիքովա։ 32րդ հատուածին 2րդ սահն 35րդ եւ 11րդ հատուածներուն մէջտեղ կը գտնուէր։ Փլէվնայի առջեւ յուլիսի 30ին եղած ճակատամարտէն յետոյ՝ այս երկրորդ սահին քովն եկաւ 1ին սահն եւս, որ Քրիւտնէրի օգնութեան գնացած էր։

11րդ հատուածն Քօզարէվիցայի մէջ էր՝

---

նին, որ կարէ 25,000 հոգի պահանջել. փոխարքայն ի սկզբան պատերազմին 6,000 հոգի դրկեց, և 11,000 եւս յունիս ամսոյ մէջ։ Այս բաժինն՝ Իսմայիլ փաշայի որդւոյն՝ Հասան փաշայի հրամանատարութեան ներքև էր, որ կանոնաւոր ուսմունք առած է Գերմանիոյ և Անգղիոյ մէջ, և հրամանատարութիւն մ՚ունեցած է Հապէշստանի պատերազմին մէջ ուր չարաչար յաղթուեցաւ։

Օսման-փաշայէն Թռնօվա տանող ճանապարհին վրայ, եւ այս վերջին քաղաքէն տասնեւօթն հազարամէթր հեռի։

Հարաւային կողմն 14րդ հատուածն Թռնօվան եւ Սէլվին կը դրաւէր, եւ Սէլվիէն մինչեւ Գէպրօվա սփռեալ 9րդ հատուածն Պալքանոց անցքը կը պահպանէր։

Արեւմտեան կողմն 30րդ հատուածն Փօրատինի մօտ էր, 16րդն Պուրկարէնիի, 5րդն Գարա-աղաճի եւ 31րդն Թրաթէնիքի։

Այս զօրախումբք Տաճկաց առաջին պատնէշներէն հազիւ տասնեւհինգ կամ քան հազարամէթր հեռի կը գտնուէին։ Բաց ի 16րդ հատուածէն, Ռումանական զօրաց չորրորդ հատուածն աջակողմեան ծայրն էր եւ նոր յառաջապահքն Պրէալիանիցայի եւ Ռիպնօյի մօտ էին։

Այս բանակին ամբողջ թիւն չատ նուազ էր Տաճկաց բանակին թուէն։ Պաշտօնական տեղեկագրի մ'ըսածին նայելով, յունիս 21էն մինչեւ օգոստոսի 8ն՝ 10,556 վիրաւոր եւ հիւանդ ղրկուեցաւ երկաթուղեաւ ի Ռուսիա։ Յայտնի է թէ ճանապարհորդութեան դիմանալու կարող վիրաւորներն եւ հիւանդներն էին միայն սոքա։ Զիմնիցայի, Պուքրէշի եւ Կալացի մէջ բազմաթիւ չարժունանկելանոցներ կային լցուած, եւ վերոյիշեալ թուանշանը կարելի է առանց չափազանցութեան եռապատկել պատերազմին սկզբնաւորութենէն ի վեր բանակին մէջէն պակսած մարդոց թիւը ճշգիւ գտնելու համար։

Ռուսիայէն անագան ուրեմն կոչուած զօրավիգներն յուսահատական յամրութեամբ կուգային. ամենէն առաջ ի գէն կոչուած 15րդ գունդն օգոստոսի առաջին կիսոյն վերջերն միայն անցան Դանուբէն, եւ միւս գունդերն տակաւին նոր կը հասնէին ռումանական սահմանագլխոց վրայ։ Արդ Փրութէն մինչեւ Դանուբ եւ տակաւին յայսկոյս հարկ էր հետիոտս գնալ. ռումանական երկաթուղիք հազիւ կը բաւէին կազմածոց փոխադրութեան. տակաւին պէտք էր սպասել քսան եւ հինգ կամ երեսուն օր եւ սեպտեմբերի մէջ միայն կարէր ժամանել։ Կայսերական անձնապահ գունդն դեռ նոր մեկնած էր Փէթրպուրկէն։ Ուրեմն Նիքօլա մեծ դուքսն իւր զօրաց սակաւաթիւ լինելուն նայելով մեծ շահ ունէր պաշտպանողական դիրք բռնելէ։ Մէն մի օր անցնելուն իւր ակընկալութիւնքն կ'առաւելուին. վասն զի հետզհետէ կը մօտենային իրեն այն զօրավիգներն, որոց կըսպասէր։ Վասնորոյ պատերազմին կերպարանքն ընդ հուպ փոխուեցաւ, տաճիկներն յարձակողական ընթացք բռնեցին եւ այս անգամ իրենք խուժեցին։

Մէհէմմէտ Ալիի յատակագիծն էր Սիւլէյման փաշայի ձեռօք ցոյց մ'ընել տալ Պալքաններուն մէջ Ռուսաց գրաւած կարեւոր դիրից դէմ, որպէս զի նոցա զօրութեանց մէկ մեծ մասն դէպ ի հարաւ տարուի, յետոյ նոցա թեւերուն առ ժամանակեայ տկարութենէն օգուտ քաղելով Սիւլէյման փաշայի գունդն գաղտնի եւ արագ կերպիւ լերանց միւս կողմն անցընել բաց մնացած կրճից մէջէն, նոյն գնդին մէկ մասն Օսման փաշայի քով ղրկել, որ թշնամւոյն աջակողմեան թեւին վրայ պիտի յարձակէր, եւ մէկ մասն իւր մօտը բերել տալ ձախակողմեան թեւին վրայ յարձակելու համար։ Այն ժամանակ երկու տաճկական բանակներն միահաղոյն գործելով Ռուսաց գծերը պիտի խզէին գերագոյն ճգամբ, եւ արշաւող բանակն Դանուբի միւս կողմն պիտի մղէին զօրավիգներուն հասնելէն առաջ։

Այս յատակագիծն արժանի էր այն ճարտարութեան համբաւոյն որ անոր հեղինակին ընծայեալ էր. բայց զայն գործադրելու համար Մէհէմմէտ Ալի իւր տեղակալներէն հպատակութիւն եւ յօժարութիւն առնելու էր։ Արդ ոչ միայն Սիւլէյման փաշա ընդհանուր հրամանատարէն հրաման ընդունել չէր կամեր, այլ նաեւ կ'ուզէր իւր բանակը վարել իւր իսկ խորհրդոյն համեմատ, եւ բոլորովին

անկախ կերպիւ գործել․ Նա իրեն յատուկ յատակագիծ ունէր, զոր համարձակեցաւ Մէհէմմէտ-Ալիի յատակագծին դէմ հանել։ Ըստ իւր կարծեաց, երեք բանակներն Թունօվայի մէջ իրարու քով պիտի տեսնէր, քանի որ ըստ սորա սեփհական յատակագծին՝ առանձինն գոյութիւն կ՚ունենար իւր բանակն, եւ աւելի դիւրութեամբ կարէր նշանաւոր հանդիսանալ։ Ինչպէս շատ անգամ կը պատա-



ԶՕՐԱՎԱՐ ՓԱՎԼՈՎ․ ԳԼՈՒԽ ՍՊԱՅԱԿՈՒՏԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԳՈՐԾՈՂ ՌՈՒՍԱԿԱՆ ԲԱՆԱԿԻՆ

դալու էին, եւ Մէհէմմէտ-Ալի եւ Օսման փաշա իրեն մօտենալով՝ Շիփքայի պահակագնդին նահանջն արգիլելու էին, մինչդեռ ինքն ճակատ առ ճակատ պիտի յարձակէր անոր դէմ։ Ընդհանուր հրամանատարին յատակագծին համեմատ՝ Սիւլէյման երկրորդական գործ մը միայն հի, մեծ երկրի մը բաղդն կը զոհուէր անձնասիրութեան խնդրոյ մը, մասնաւոր շահու մը։

Յայտնի է որ Սիւլէյմանի այսպէս վարուելուն պատճառն Կոստանդնուպօլսոյ մէջ իրեն պաշտպան ունենալն էր։ Տաճկաց հին կուսակցութիւնն մեծ ցաւով տեսած

էր որ կայսրութեան մը փրկութիւնն այլացեղ զօրավարի մը յանձնուեր էր։ Պաշտօնական մէկ քանի ակմբից մէջ եւ գլխաւորապէս Տամատ Մահմուտ փաշայի շուրջն տեսակ մը դժկամակութիւն յառաջ կուգար, որով Մէհէմմէտ-Ալիի բոլոր ջանքը կ՚ոչնչանար եւ նորա տեղակալներն ստամբակելու կը խրախուսուէին։ Երիտասարդ, եռանդուն եւ փառասէր Սիւլէյման փաշա, որ ի ծննդենէ Թուրք էր եւ օսմանեան զօրավարաց մէջ ամենէն աւելի աչքի զարնողն, բնականաբար այն կուսակցութեան ուզած մարդն եղաւ, որ ընդհանուր հրամանատարը արհամարհելու չափ զօրաւոր ազդեցութիւն ստանալ տուաւ իրեն Կոստանդնուպոլսոյ եւ կառավարութեան խորհրդոց մէջ։ Սիւլէյման երբէք չէր ներեր որ իւր քով կամ իրմէ վեր այնպիսի յաջողակ անձինք գտնուէին, որ զինքն աննշան ընելու կարող լինէին։ Մանաւորապէս Մէհէմմէտ-Ալի իւր աչքին վտանգաւոր հակառակորդ մ՚երեւեցաւ։ Այս հոգածութիւնը կ՚իշխէր միշտ իւր ռազմագիտական ընթացքին վրայ։ Չէն ի ձեռին Գարատաղի մէջէն անցնելով ստացած յաջողութեան պատճառաւ իւր յանձնապաստանութիւնն աւելցեալ էր, եւ իւր ապագայ բաղդին վրայ աւելի մեծ գաղափարներ ծնած էին մտացը մէջ, այնպէս որ վերջին աստիճան նախանձեցաւ, երբ Սուլթանին հրամանաւ Մէհէմմէտ-Ալի Դանուբեան բանակաց գլխաւոր հրամանատար լինելու կոչուեցաւ։

Այս ցաւալի հակառակութեանց պատճառաւ Ռուսք մեծ վտանգէ մը փրկուեցան։ Տաճիկ զօրավարաց իւրաքանչիւրն միւսներէն անջատ կերպիւ գործեց։ Մէհէմմէտ-Ալիի յարձակագիծն յաջողութիւն չունեցաւ, վասն զի Սիւլէյման իւր աջակցութիւնը զլացաւ. այս վերջնոյն յատակագիծն եւս ի դերեւ ելաւ, վասն զի Մէհէմմէտ-Ալի իրեն չօգնեց եւ Ադրիանուպոլսոյ բանակին իւր եռանդուն զօրավարին առաջնորդութեամբ անհնարին գործի մը ձեռնարկելով՝ ջախջախեցաւ Շիփքայի կրճին բարձանց ստորոտն։



## ԿԻՐՃ ՇԻՓՔԱՅԻ. — ՍԻՒԼԷՅՄԱՆ ՓԱՇԱՅԻ ՑՈՅՑՆ ՌՈՒՍԱՑ ՋԱԽԱԿՈՂՄԵԱՆ ԾԱՅՐԻ ԽՄԲԻՆ ԴԷՄ

Այն վայրն՝ որ պատերազմին պատճառաւ յանկարծ մեծ համբաւ մը ստացած է, իրօք արժանի է նկարագրուելու մէկ քանի տողով։ Շիփքայի կիրճն կիրճ մը չէ՝ ճշդիւ խօսելով։ Ոչ կապան կայ եւ ոչ նեղ անցք. անոր մէջ չկայ տեղ մը զոր 300 մարդիկ կարենան նոր Թերմոպիլէ մ՚ընել. չկան անդ անձուկ խորափիտներ, ինչպէս Խայպէրի կրճին մէջ, ուր բանակ մը կ՚ոչնչանայ թշնամւոյն հետ դուպարելէ առաջ։ Այն այսպէս կը յորջորջուի, վասն զի Պալքաններուն այն մասին մէջէն կ՚անցնի որ նոյն լերանց միջնոյն չափ բարձրութիւն չունի, եւ որոյ մակերեւոյթն՝ հիւսիսէն Եանթրայի հովտէն սկսեալ մինչեւ հարաւային կողմն Թունճայի հովիտն՝ թէեւ վերջին աստիճան խորտաբորտ եւ ալէձեւ է, սակայն հեշտագնաց ճանապարհ մը վրայէն անցնելու չափ միապաղաղ է։

Շիփքա գիւղին կողմերն լեռը գրեթէ ուղղորդ սեպացեալ է, եւ ժամէ մ՚աւելի քալել պէտք է կրճին վերին ծայրն հասնելու համար, որոյ ամենաբարձր կէտն ծովուն երեսէն 4,749 մէթր վեր է եւ Սվէթի-Նիքօլա լեռ անունը կը կրէ։ Այս կէտն անցնելէ յետոյ՝ ճանապարհն քիչ մը կը ցածնայ անձուկ հովտի մը մէջ, որ հազիւ 7 կամ 800 մէթր երկայնութիւն ունի. յետոյ Չէրվէնի-Պրէկի (Կարմիր լեռ) վրայ կ՚ելնէ եւ ապա բաւական ընկողմանեալ զառիթափէ մը կ՚իջնէ Բօզէրիցայի ձորակին աջակողման վրայ՝ մինչեւ Կազրօվայի երկու հազարամէթր մօտալու չափ։ Այս կողմն՝ ուղւոյն վրայ գրեթէ ամիս մը բանած էին պուլղար գիւղացիներու տարապարհակ վարեալ բազմաթիւ խումբեր,

որք ռուս. ռահվիրայից իմաստուն առաջնորդութեամբն զայն այնպիսի ճանապարհ մը դարձուցած էին՝ որ թէեւ զառ ի վեր, բայց լայն էր եւ վրան շատ լաւ կառք կարէր բանիլ։ Երբ Ռուսք կրճին տիրեցին, անոր մէջ կը տեսնուէին միայն քանի մը պարկէններ եւ հողակուտակներ, որոց ետեւն մէկ քանի Գռուփի պողպատիկ թնդանօթներ եւ մէկ փոքր լեռնային թնդանօթ կային, զորս Տաճիկներն շտապաւ խոյս տալու ժամանակ անվթար ձգած էին. կային նաեւ թնդանօթի սայլերու առաջակողմեան մասեր եւ ռազմամթերից բազմաթիւ սայլեր ամբարտակներով լցեալ։ Ռուսք այն նախագծերով ամրութեանց շինութիւնն յետոյ լրացուցած էին՝ եօթն հաստատուն ամրականներ կանգնելով, զորս հզօր թնդանօթներով զինեցին։ Հարաւային կողմն էր Սվէթի-Նիքօլա լերան մարտկոցն որ նոյն դիրից բանալին էր, եւ ուրկէ ամեն կողմ ամբաձգութիւն կարէր լինել բարձուստ. այն կողմն կային նաեւ երկու մարտկոցներ, որ տաճկական մարտկոց կ'ըսուէին, վասն զի այն պարկէնից վրայ կանգնեալ էին, զորս օսմանեան զինուորք շտապաւ կը շինէին, երբ Կուրքօ զօրավարն իրենց վրայ յարձակեցաւ հարաւային կողմէն։ Սվէթի-Նիքօլա լերան ամենէն աւելի մօտ գտնուող մարտկոցն ռուսական տեղեկագրաց մէջ պողպատիկ թնդանօթաց մարտկոց կ'ըսուի, վասն զի Տաճկաց ձեռքէն առնուած Գռուփի թնդանօթներով զինեալ էր։ Արեւելեան կողմն կը գտնուէր բոլորշի մարտկոցն. հիւսիսային կողմն՝ տաճկական կիսալուսին պատնէշն որ օսմանեան կերտուածի մը վրայ շինուած էր, եւ արեւմտեան կողմն՝ Պէտէք լերան ամրականն եւ կանաչ մարտկոցն։ Յետոյ, օգոստոսի 24 ին ութերորդ կերտուած մ'եւս շինուեցաւ միւսներուն հիւսիսային կողմն՝ ռազմամթերից ճամբարին մօտ՝ Սուլէյման փաշայի ընել ուզած շուրջանակի շարժումն արգիլելու համար։ Սոյն ամրութեանց գիծն կը շրջապատէր վերոյիշեալ փոքրիկ ձորն, որ այս կերպիւ պատնիշափակ ճամբար մը եղած էր։ Տաճկական կոնաձեւ ընդարձակ եւ ամուր վրաններու ներքեւ բանակեալ էր պահակազունդն. այս վրաններն Շիփքայի առման միջոցին կանգնեալ էին նոյն տեղեաց վրայ։ Ճանապարհին քով բարձրացեալ պահականոց (Գարագօլ) մը ռազմամթերից համբարանոց եղած էր, եւ նոյնպէս ճանապարհին քով գտնուած իջեւան (խան) մը հիւանդանոցի փոխուած էր։

Շիփքայի դիրքն կարծուածին չափ պաշտպանողական մեծ զօրութիւն չունի, վասն զի երկու հաւասարապէս ծանր անպատեհութիւններ կ'ընծայէ։ Առաջինն այն է որ աջ եւ ձախ կողմերն գտնուած լերինք՝ յորոց բաժնուած է խորափիտ ձորակներով, բարձրահայեաց են անոր վրայ. պահակազունդն այս երկու լեռները գրաւելու չափ զօրութիւն չունենալով՝ ամենադիւրին բան մ'եղաւ Տաճկաց համար թնդանօթներ հանել արեւելեան կողմն Պէրտէք լերան եւ արեւմտեան կողմն՝ Այգըրը-ճէպէլի վրայ եւ լաւագոյն դիրից մէջ մըցիլ ռուսական թնդանօթաց դէմ։ Երկրորդ անպատեհութիւնն է մերձակայ տեղեաց բազում ելեւէջներ ունենալն, թէ եւ այս բանն առաւելութիւն մը կը թուի նոյն տեղերն առաջին անգամ տեսնողին աչացն։ Որ եւ իցէ դիրից զօրութիւնն ուղղակի յարձակման մը դէմ դժուարամատոյց լինելէն կախումն չունի բոլորովին, այլ այն անպատսպար եւ բաց տեղերուն քիչ գտնուելէն՝ ուր կարելի է հուր տեղալ, եւ ծանրակշիռ կարեւորութիւն ունեցող կէտերու վրայ այլեւայլ կողմերէ միանգամայն ամբաձգութիւն ընելու հնարաւորութենէն։ Արդ, Շիփքայէն անկարելի է կրակ թափել կողմնակի հովիտներու եւ շրջակայ բարձանց խառն չեղջակուտին մէջ։ Հետեւակազօրաց սահ մը

կարէ ձորակի մը խորը խմբուիլ Ռուսաց առաջին դիրքէն հազիւ հարիւր մեթրի չափ հեռի՝ առանց թնդանօթաց կրակին ենթակայ լինելու ։

Առաջին օրերն՝ ռուսական զօրաց սակաւաձեռն խմբի մ՚ըրած աքանչելի պաշտպանութեան արժէքն կատարելապէս յայտնելու համար է որ այն անպատեհութեանց վրայ մեր խօսքն երկարեցինք։ Ենթադրելով թէ այն տկար կէտերն Սիւլէյմանի ծանօթ էին, ասոր համար յարձակումն ընելն խելքի մօտ կը թուի . բայց անիմանալի բան մը կայ . կրճին մէջ հազիւ 3,000 հոգիէ բաղկացեալ պահակագունդ մը գտնուած ժամանակ չյաջողելէն յետոյ՝ ինչպէս յիմարաբար յամառեցաւ եւ յարձակումն շարունակեց, երբ այն պահակագնդին թիւն տասնապատիկ առաւելեալ եւ ինքն յաջողութեան բոլոր հաւանականութիւններն կորուսած էր ։ Կը թուի թէ դիմադրութեան այնպիսի յուսահատական ձեռնարկութիւն մ՚ընելու կ՚ենէր, յորում զոհեալ մարդոց թիւն աչքի չերեւիր սլէտք եղած նպատակին հասնելու համար ։

Սիւլէյման՝ որ աւելի իր անձը կը մտածէր եւ կը ջանար կառավարութեան քով վայելած համակրութիւններն աւելցնել քան թէ պատերազմին վերջնական յաջողութեանը նպաստել՝ որոյ պարծանքն իր հակառակորդին պիտի ընծայուէր, հաւանականաբար գիտէր թէ Շիփքան ետ առնուլ փորձելով Տաճկաց ազգային գոռոզութիւնը կը պատուէր, որ այն տեղւոյն ձեռքէ ելնելուն վրայ մեծապէս նըկուն եղած էր ։ Կ՚ըսուի նաեւ թէ Ռուսաց ազդած սաստիկ երկիւղին պատճառաւ՝ ինչպէս նաեւ զինուորական անհըմտութեանը՝ Կոստանդնուպոլսոյ մէջ կը կարծուէր որ՝ մայրաքաղաքին ապահովութեան համար անհրաժեշտ հարկ էր թշնամին Շիփքայի կրճին մէջէն հանել ։ Այս պատճառաւ առ հասարակ աղէկ աչօք կը նայուէր Սիւլէյման փաշայի ձեռնարկութեան, եւ յետոյ ձախողութեան պատասխանատուութիւնն ոչ թէ անոր վրայ կը ձգուէր, որոյ յանդգնութենէն պատճառեալ էր, այլ խոհեմ ընդհանուր հրամանատարին վրայ՝ որ մերժեր էր աջակցիլ այն գործողութեան ։

Օգոստոսի 16ին՝ Գալքանաց պահպանութեան յատկացեալ հետեւակազօրաց 9րդ հատուածն հետեւեալ կերպիւ բաժնուած էր կրճից մէջ .

Էլէնայի եւ Պէպրօվայի կրճից մէջ պահպանութիւն կ՚ընէին Սէվսքի հետեւակազօրաց 34րդ գումարտակն՝ թնդանօթաձիգ զօրաց 14րդ սահին 5րդ չորսին հանդերձ, եւ զինուորական կարգին միլիպազօրաց 13րդ գումարտակն՝ ձիոց վրայ բարձեալ թնդանօթաց 20րդ չորէն երկու թնդանօթով՝ Գօրէյնա զօրավարին հրամանատարութեան ներքեւ .

Խային-քէօյի կրճին մէջ կը գտնուէին Էլէցի հետեւակազօրաց 33րդ գումարտակն, թնդանօթաձիգ զօրաց 9րդ սահին 6րդ չորսն, լեռնային թնդանօթաց 1ին չորսն եւ Խազախաց երկու հեծելադասք .

Շիփքայի կրճին մէջ էին Օրէլի հետեւակազօրաց 36րդ գումարտակն, թնդանօթաձիգ զօրաց 9րդ սահին 2րդ եւ 5րդ չորսերն, լեռնային թնդանօթաց 2րդ չորսին 6 թնդանօթներն, պուլղարական լեգէոնէն 5 վաշտեր եւ Խազախաց 5 հեծելադասք, Սթօլէթով զօրավարին հրամանատարութեան ներքեւ ։

Նոյն հատուածին միացեալ մասն՝ այսինքն Բրիանսքի 35րդ գումարտակն Սէլվիի մէջ էր, ուր էր նաեւ Սվիաթօփօլք-Միրսքի իշխանին զօրանիստն ։

Սիւլէյման փաշայի գործողութիւնքն այն օր սկսան ։ Մէկ քանի օրէ ի վեր անգղիական տաճկասէր լրագիրք կը ծանուցանէին թէ Ադրիանուպօլսոյ բանակին Մէհէմմէտ-Ալիի բանակին հետ պիտի միանար, եւ արդարեւ լոտեաք

խմաց կուտային Ռուսաց որ զօրաց մեծ համախմբութիւն կը լինէր Սլիւնոյի կողմն ։ Թուրք զօրավարն թշնամին բոլորովին պատրելու համար որոշեց ցոյց մ՚ընել Ռուսաց ձախակողմեան ծայրի խմբին դէմ՝ իբր թէ իւր դիտաւորութիւնն էր իրօք այն կողմէն Պալքաններն անցնիլ Դանուբեան Պուլղարիոյ մէջ մտնելու համար ։ Ամսոյն 10ին՝ հետեւակազօրաց վեց վաշտեր եւ չէրքէզ ձիաւորաց ստուար խումբ մը յարձակեցան յանկարծ Էլէցի գումարտակին վրայ՝ Խային-քէօյի կրճին մօտ, սակայն առանց պնդութիւն ցոյց տալու ։ Մէկ քանի ժամ հրացանաւ կռուելէ յետոյ՝ ետ քաշուեցան եւ այլ եւս չերեւեցան ։

Նոյն պահուն աւելի մեծ ջոկատ մը Տէմիր-գափուի կրճին մէջէն կ՚անցնէր, Պօրէյխա զօրավարին առաջապահ զօրացը մօտ կը հասնէր Սթարա-րիէքայի քով եւ ետ կը մղէր մինչեւ Պէպրօվա, թէ եւ հետզհետէ զօրավիգներ կը հասնէին անոնց օգնութեան, Պէպրօվայի առջեւ ամսոյն 17ին կրկին յաղթութիւն ձեռք կը բերէր, կը վանէր զանոնք այն քաղաքէն՝ որ պաշը-պօզուգներուն ձեռամբ կիսովին այրեցուցեր եղաւ, եւ մինչեւ Էլէնա կը քշէր ։ Ռատէցքի զօրավարն՝ որմէ Պօրէյխա անդադար զօրավիգ կը խնդրէր ստիպաւ, Սիւլէյման փաշայի կեղծ ցոյցն խաբուեցաւ եւ կարծեց թէ Տաճկաց բովանդակ բանակն իւր ձախակողմը պիտի անցնէր ։

Տաճիկներն երկու ճանապարհ ունէին Պէպրօվայէն Թռնովայի վրայ խաղալու համար, որոց մին հարաւային կողմէն կ՚անցնի Էլէնայէն եւ Փրիսօվայէն, եւ միւսն՝ հիւսիսային կողմէն՝ Ձլաթարիցայէն ։ Ռատէցքի զօրավարն մէկէն 14րդ հատուածին 2րդ սահն եւ երկու վաշտեր Ձլաթարիցա ղրկեց երկրորդ ճանապարհը պահպանելու համար, եւ ինքն որսորդ զօրաց 4րդ սահն հետ առնլով՝ ինչպէս նաեւ լեռնային երկու թնդանօթներ, Էլէնա գնաց ։ Հասկցաւ իւր սխալանքն՝ այն քաղաքին առջեւ հասնելուն պէս ։ Սիւլէյման փաշայի բանակը չէր որ Պօրէյխա զօրավարին դէմ ելած էր, այլ ստուար տեղագնին խումբ մը՝ կանոնաւոր զօրքէ եւ բազմաթիւ պաշը-պօզուգներէ բաղկացեալ ։ Այս վերջնոց դրդմամբն՝ Էլէնայի մէջ մեծամասնութիւն ունեցող տաճիկ հասարակութիւնն ոտք ելեր էր, եւ Ռուսաց պահակազունդն ըստիպուած էր քաղաքէն դուրս մօտերը դիրք մը բռնել ։ Տաճկաց զօրքն եւս ետ քաշուեցաւ որսորդ զօրաց գալուստը տեսնելով ։ Ռատէցքի զօրավարն Պօրէյխա զօրավարին հրահանգներ տալէ եւ 4րդ հատուածին 2րդ սահին՝ Ձլաթարիցայէն մեկնելով Թռնովայի մօտ իւր քով հասնելու հրաման ղրկելէ յետոյ, ամսոյն 20ին որսորդ զօրաց 4րդ սահն Փրիսօվա տարաւ, ուր Սթօլէթով եւ Տէրօժինսքի զօրավարաց մէկ տեղեկագիրը գտաւ, որմէ կատարելապէս խելամուտ կը լինէր Սիւլէյման փաշայի մարտագիտութեանն եւ նորա՝ յարձակման համար բուն իր կէտն ընտրած լինելուն ։

ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ՇԻՓՔԱՅԻ ԿՐՃԻՆ ՎՐԱՅ. — ՄԷԿԻ ԴԷՄ ՏԱՍՆ ՄԱՐԴՈՎ ԿՌԻՒ

Օգոստոսի 18ին առաւօտեան տասներորդ ժամուն, Շիփքայի պահակազունդն զօրաց արտաքոյ կարգի շարժում մը նշմարեց առաջին անգամ Գըզանլըգի կողմն ։ Վեց վաշտէ բաղկացեալ ջոկ մը քաղաքին առջեւը բարձանց վրայ երեւեցաւ, եւ ամպաձեւ մրրկեալ փոշիներն ցոյց կուտային թէ այն վաշտերուն ետեւէն ուրիշ զօրախումբք եւս կուգային ։ Կէս օրէն յետոյ տեսնուեցաւ որ Տաճկաց հեծելազօրն Սէնօվօ եւ Եանինա գիւղերը կը գրաւէր ։ Սթօլէթով զօրավարն մօտալուտ վտանգին մեծութիւնն առանց գիտելու՝ Ռատէցքի զօրավարին խմաց տուաւ տաճիկ զօրաց Գըզանլըգ գալն ։ Յայտ է թէ նոյն պա-

հուն 14րդ գնդին հրամանատարին կը կարծէր որ իրօք իւր ձախակողմէն կը լինի յարձակումն։ Սակայն Էլէնա գնալու համար ճանապարհ ելնելէ առաջ՝ Պրիանսքի գումարտակին հրաման ղրկեց Սէրվիէն մեկնելու եւ Շիփքայի անցից պահակագընդին օգնութեան երթալու ։

Ամսոյն 19ին՝ Ռուսք տեսան զօրաց թըլխակերպ եւ երկայնաձիգ խումբեր, որք անտառներէն դուրս կ'ելնէին եւ որոց հազարաւոր սուիններն նորանշոյլ արեգական ճառագայթներէն կը շողային. սոցա շուրջն անկանոն զօրաց բազմաթիւ ջոլիրներ կային։ Առաջապահներն Սէնօվայի մէջ զետեղեցան, մինչդեռ ստուար մասն աւելի ետեւ սփռեցաւ իւր մէկ կողմն ունենալով Գըզանլըգ քաղաքն ։ Ամսոյն 20 ին յայտնի եղաւ թէ Շիփքայի առջեւ կը գտնուէր Սիւլէյման փաշայի ամբողջ բանակն եւ կը պատրաստուէր ոչ թէ ցոյց մ'ընելու՝ այլ կիրճը գրաւել փորձելու։ Կէս օրէն գրեթէ չորս ժամ յետոյ այն բանակը տարածեցաւ, որով կարելի եղաւ դաշտին մէջ Շիփքա գիւղին հարաւային արեւելեան կողմն 40 վաշտ թուել, որոց աջակողմեան խումբն Եանինա գիւղին քովն էր ։ Տաճիկ ձիաւորաց եւ հետեւակազօրաց փոքր խմբեր յառաջեցին դէպ ի Շիփքա գիւղն . 9 հարիւրորդամէթր տրամագծով ռումբ արձակող թընդանօթներն մէկ քանի անգամ պարպուեցան սոցա դէմ՝ Սվէթի-Նիքօլա լերան մարտկոցին կրակը փորձելու համար ։

Ընդ հուպ հրացաններու ձայներ լըսուեցան լերան ստորոտն. Տաճկաց առաջապահներն կռուոյ բռնուած էին Պուլղարաց մէկ քանի դասակներու հետ, որոց յանձնուած էր գիւղին պահպանութիւնն։ Պուլղարք լերան վրայ քաշուեցան մէկ քանի ժամ դէմ դնելէ եւ Տաճկաց մեծ կորուստ պատճառելէ յետոյ ։ Տաճիկներն անմիջապէս այս գիւղն հրդեհեցին։ Ռուսք՝ մինչեւ լերանց գագաթներն մրրկելով բարձրացող ծխոյ եւ բոցոյ թանձր սիւները տեսնելով՝ հասկցան այն նկարագեղ եւ սիրուն գիւղին բնաջինջ լինելն, որոյ ետեւն Տաճիկներն զետեղեցան։ Սոքա իրենց ճամբարն հաստատեցին երեք ահագին հողակոյտից քով, որ հնոց գերեզմաններ էին եւ մեծ բոլորշի բլրոց ձեւ ունէին, այն տեղին վրայ՝ ուր Կուրքօ զօրավարին խումբքն բանակեալ էին ճիշդ ամիս մ'առաջ յուլիսի մէջ ։ Ամեն կերպիւ յայտնի եղաւ թէ հետեւեալ օրն յարձակումն պիտի լինէր, եւ Ռուսք ասոր սպասեցին՝ լաւ պաշտպանութիւն ընելով ։

Գիշերն՝ Սիւլէյման փաշայի դիտաւորութիւններն աւելի բացայայտ եղան ։ Շիփքայի կիրճին եւ գիւղին միջեւ՝ զառիթափին կիսոյն մօտ իբրեւ պահակ զետեղեալ Պուլղարաց չորրորդ վաշտն շարունակ հրացանաց գնտակներուն ենթակայ եղաւ եւ լուսնալէն առաջ պարտաւորեցաւ դէպ ի կիրճը քաշուիլ ։ Առաւօտ լինելուն պէս՝ այնպիսի մոլեգին եւ սրտայոյզ կռիւ մը սկսաւ զոր հազիւ մարդ կարէ երեւակայել ։

Սթօլէթով զօրավարն՝ պաշտպանողական գծին վրայ հետեւեալ կերպիւ իւր զօրախումբքը շարեց մէն մի անձի հրամանատարութեան ներքեւ .

Օրէլի գումարտակին 3րդ վաշտն եւ թնդանօթաձիգ զօրաց 9րդ սահին 2րդ շարն կը գրաւէին Սվէթի-Նիքօլա լեռն եւ « Գողովատիկ թնդանօթաց մարտկոցը . այս վերջինն եօթն տաճկական թընդանօթներով զինեալ էր ։ Օրէլի գումարտակին 1ին վաշտն աջակողմը պարիկէններու մէջ գտնուելով՝ կանաչ եւ բոլորշի մարտկոցներուն նպաստամատոյց կը լինէր, որոց իւրաքանչիւրին մէջ չորս չորս թնդանօթ կար . բոլորշի մարտկոցին մէջ կային նաեւ Տօնայի Խազախաց յատուկ եւ ձիոց վրայ բառնալի թնդանօթաց 10րդ շարէն երկու հատ գնդընկեց անօթ ։ Օրէլի գումարտակին 2րդ վաշտէն երկու դասակներ եւս Պլտէքին բարձրաւանդա-

կը կը գրաւէին Ռուսաց աջակողման առաջն ։ Ձախակողմն՝ որ Պէրտէք լերանց դիմացը կը գտնուէր, պարկէններով ամրացեալ էր եւ Պուլղարաց լեգէոնին 2րդ, 3րդ եւ 5րդ վաշտերով պաշտպանեալ ։

Օրէլի գումարտակէն 3 դասակներ եւ Պուլղարաց 1ին եւ 4րդ վաշտերն լեռնային 4 թնդանօթով ի պահեստի կըսպասէին այն տեղւոյն վրայ որ Պարանոց կ՚ըսուի , Սվէթի-Նիքօլա լերան մօտ գտնուող վրաններուն եւ նոյն լերան ըստորոտին միջեւ ։

Սվէթի-Նիքօլա լերան վրայ՝ որ ամենէն աւելի դէպ ի դուրս կարկառեալ դիրքն էր , հրամանատարութիւնն յանձնուեցաւ կայսեր համհարզներէն (եավէր) գնդապետ Թօլսթօյ կոմսին . ձախակողմեան պարկէնից մէջ հրամանատարութիւնն նոյնպէս կայսեր համհարզներէն գնդապետ Վիազէմսքի իշխանին տրուեցաւ . աջակողմեան խմբին եւ գործողութեանց խարսխին վրայ՝ որ յետոյ գլխաւոր դիրք կոչուեցաւ , հրամանատար անուանեցաւ Տէփրէրատովիչ գնդապետն , որ Պրիանսքի գումարտակին հասնելէն յետոյ՝ անոր գնդապետին՝ Պ. Լիփինսքիի յանձնեց այն հրամանատարութիւնն ։

Առաւօտեան եօթներորդ ժամուն՝ Տաճկաց կարմիր գլխանոցներն Պէրտէք լերան վրայ երեւցան ։ Կ՚երեւէր թէ այն օրն սաստիկ տաք պիտի լինէր. երկինքն պայծառ եւ ջինջ էր , շրջակայ անտառներէն քաղցր հոտեր կը բուրէին . կրճին խորերուն մէջ սաղարթուց ներքեւէն կը լըսուէր ջրոց խոխոջիւնն եւ թռչնոց դայլայլիկն , զոր տակաւին չլռուցած չէր ճակատամարտին շռինդն. մահն որոյ մանգաղն այնքան մարդոց կեանքը պիտի քաղէր, նուազ սոսկալի կ՚երեւէր այն զուարթ բնութեան առաջ , եւ Շիփքայի մէջ փակեալ 3,000 Ռուսք առանց գիտելու թէ պիտի հասնէին արդեօք այն զօրավիգներն որոց իրենք կըսպասէին , եւ առանց վայրկեան մը տկարանալու , պատրաստուեցան այն անհաւասար եւ ահեղ մարտին , զոր սակաւաձեռն խումբ մը պիտի մղէր բանակի մը դէմ ։ Տաճիկներն սկսան նախ մարտկոց մը շինել Պէրտէք լերան վրայ՝ պողովատիկ թնդանօթաց մարտկոցին դէմ ։ Ռուսք անմիջապէս կրակ ընել սկսան աշխատաւորաց վրայ , բայց չկարացին արգելուլ, եւ առաւօտեան տասներորդ ժամուն չորս թնդանօթներ արդէն զետեղեալ էին ։

Ճարտարագիտական զօրաց 7րդ վաշտէն Ռօմանով փոխ-հարիւրապետին յանձնուած էր առաւօտուն կանուխ ականներ բանալ գիւղէն մինչեւ կիրճը տանող մեծ ճանապարհին ներքեւ ։ Հազիւ թէ այն ականներն վառօդով լցուած էին , Սիւլէյման փաշայի 40 վաշտերն յարձակման համար բազուկ բազուկ ձեւացան եւ կատարեալ հաստատամտութեամբ յառաջեցին այն ճանապարհին վրայ որ գիւղին ելքէն կըսկսի ։ Զառիթափին երկու երրորդ մասին վրայ բաւական դիւրին եղաւ վերելքը ։ Տաճիկներն՝ զորս լերան վախուտ զառիկողն կը պատսպարէր , թնդանօթաց կրակէն ապահով էին եւ թշնամւոյն արձակամարտներն կը մղէին իրենց առջեւէն ։ Բայց այն փոքր սարահարթին վրայ հասնելնուն պէս՝ ուր շինութիւնն թերի մնացած իջեւան մը կար , ստիպուեցան բաց եւ անծառ տեղէ մը յառաջել ։ Այս կէտն երեք ամրականներու եւ բազմաթիւ պարկէններու կրակին ներքեւ էր. այն ամրութեանց մէջ գտնուած թնդանօթներուն շատերը Տաճկաց կողմանէ բարձի թողի եղածներն էին , եւ Ռուսք նոցա գալուստը բարեւեցին նոյն իսկ իրենց ռումբերովն ։ Տաճկաց առաջին շարքն այն երկաթներու տեղատարափին ներքեւ մանգաղաւ հնձուելու պէս փռուեցան ։ Միանգամայն ճանապարհին մէկ ծայրէն միւսն զարհուրելի ռումբիւններ լսելի եղան ։ Ականներն պայթեր էին, որոց ելեկտրականութեամբ կրակ տրուած էր ։ Թէեւ այս պայթումն տարաժամ էր, սակայն դար-

եղաւ։ Ռուսք անձկութեամբ տեսան տաճիկ հետեւակազօրաց ստուար եւ երկայնաձիգ ամբոխներու էջքն՝ երեք գըծի վրայ՝ մերձակայ անտառներէն մինչեւ այն բլրոյն ստորոտը տարածուած ձորակին մէջ որոյ գագաթը կը բարձրանար նոյն մարտկոցն ։ Սոքա բաց տեղերէ վազելով անցան եւ լերան զառիթափներէն վեր ելան բիւր անգամ Ալլահ աղաղակելով, մինչդեռ թմբուկներն կը զարնուէին յարձակման եղանակաւ։ Բայց արքան եւ արտաքոյ կարգի կորովութեամբ եւ պնդութեամբ յառաջ վարեցան, պաշարելոց մարդասպանն կրակն զիրենք ետ մղեց ։

Տասն անգամ իրարու վրայ՝ զօրաց ջոկերն վերակազմուեցան, եւ տասն անգամ միեւնոյն արիութեամբ այն յիմարական յարձակումը կրկնեցին ։ Սիւլէյման փաշա հետզհետէ անխնայ զօրք կը ղրկէր եւ յարձակումն կրկին կրկին սկսել կուտար ։ Օսմանեան արի զինուորք այն փոխուստ զառիթափէն դժուարաւ վեր կ'ելնէին . մէկ մէկ մէթր յառաջ երթալնուն՝ զօրաց կարգերն հետզհետէ աւելի ցանցառ կը լինէին, եւ լերան գագաթին մօտեցած ժամանակնին՝ այն ստուար ամբոխէն սակաւաձեռն խումբ մը միայն կը մնար . այն ժամանակ կենդանի մնացողներն տակաւին մեծ ճիգ թափելու հարկաւորութիւնը տեսնելով եւ վհատելով՝ կը թուլանային եւ կ'ընկրկէին սպայից խրախուսանացն հակառակ։ Լերան այն չարաղէտ կողին վրայ ծրչափ արիւն կը գետահետէր ։ Այս յիմարական կռուոյն մէջ Տաճկաց ունեցած կորուստն 3,000 հոգւոյ չափ կը համարուի՝ ամենէն չափաւոր հաշուոց նայելով ։ Մինչեւ իրեկոյ Ռուսք եւ Պուլղարք՝ որք սակաւաթիւ լինելով անդադար կը կռուէին, լսեցին թմբուկներու եւ շեփորներու յարձակման եղանակաւ զարնուիլն եւ դոյթ տուող զօրաց սոսկալի աղաղակներ հանելն ։

Երբ գիշերային մութը կոխեց , Տաճիկներն վեց թնդանօթ ունէին։ Այգըրը-ճէպէլի բարձունքը գրաւած էին , եւ Փօլիքարփով հարիւրապետին հրամանաց ներքեւ գտնուած կանաչ մարտկոցին ամրաձըգութեանն հակառակ՝ երկու թնդանօթ զետեղած էին այն բարձանց վրայ ։ Երեկոյեան ութերորդ ժամուն , Սիւլէյման փաշա կարծելով թէ Շիփքայի պահակագունդն այն տասն ժամ տեւող սարսափելի կռուէն նուաղեալ էր , վերջին յարձակում մ'ընել տուաւ ։ Ստուար խումբ մը լռելեայն մօտեցաւ ռուսական ամրութեանց, յարձակող զօրաց առաջինններն ամրականնին պարտակին կը հպէին արդէն՝ վեր ելնելու համար , յանկարծ գիշերապահք զանոնք նշմարեցին լուսնկի լուսոյն , ձայնատուր եղան , եւ հրացանի սաստիկ կռիւ մը լինելով գրեթէ անմիջապէս նոյն գրից մերձակայքը դատարկուեցան ։

Այս առաջին աւուր կռուոյն մէջ Շիփքայի քով պահակաց կորուստն հազիւ 200 հոգւոյ չափ եղած էր ։ Դէթ պաշտօնական թիւն այսպէս ցոյց կուտայ, եւ թէեւ մեծ տարբերութիւն կայ ասոր եւ Տաճկաց կորստեան մէջ, սակայն անհաւանական չէ, վասն զի մտածելու է թէ ամբողջ օրն դիրկընդխառն գուպարում մը չէ եղած՝ այլ միայն թնդանօթի եւ հրացանի կռիւ մը, յորում Ռուսք պատնիշաց ետեւ կը գտնուէին, ստուար խմբերու վրայ հրացան կ'արձակէին եւ իրենց մէկ գնտակը պարապ չէր ելներ ։

Սթօլէթով զօրավարին զինուորներն պարտասեալ էին , բայց չկարացին լաւ հանգիստ առնուլ՝ յաճախ վրդովեալ լինելով ։ Պատնէշներէն մէկ քանի քայլաչափ հեռի անկեալ գոյնուող եւ օգնութիւն խնդրող տաճիկ վիրաւորաց աղիողորմ գոչիւններէն զատ՝ հրացաններու ձայներն չդադրեցան գիշերն ի բուն, վասն զի Տաճիկները նոր մարտկոց մը շինեցին եւ պարկէններ փորեցին , որոց երկուքն հազիւ հարիւր քայլ հեռի կը գտնուէին

Ռուսաց կայաններէն ։ Շիփքայի հրամանատարն կարող չէր դուրս յարձակում մը ընել՝ աշխատաւորները ցրուելու համար, վասն զի շատ քիչ մարդ ունէր ։ Բաւական համարեց մարտկոցները եւ պարկէնները նորոգել, մինչդեռ պահեստի զօրքն պաշտպանութիւն կ'ընէր, եւ ամրութեանց զօրութիւնն ռաւելու՝ մանաւանդ պողովատիկ թնդանօթաց մարտկոցին մէջ, որոյ դնդընկէցներն եւ մարդիկն ամբողջ օրն բացը կը գտնուէին, եւ այս պատճառաւ մեծ կորուստ եղած էր անոնց մէջ։

Ամսոյն 22ին կռիւն նախորդ աւուր կռուոյն չափ տաժանելի չեղաւ ։ Գիշերն խոհեմ կ'ընէ զմարդ ․ Սիւլէյման փաշա յանձն կ'առնուր իւր զինուորներն յառաջ չվարել որ երթան պարապ տեղը ջախջախին ժայռերու եւ պատուարներու դէմ, եւ քիչ մը պատրաստութիւն տեսնել նոր յարձակում մ'ընելու համար։ 4 եւ 6 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող ութ հատ թնդանօթ՝ ինչպէս նաեւ երկու հատ դաշտային թնդանօթ զետեղեալ ունենալով՝ առաւօտեան վեցերորդ ժամուն սկսաւ կրակ ընել տալ, եւ այս ռմբաձգութիւնն անդադար շարունակեց ամբողջ օրն։ Ռուսական թնդանօթներն այն օր չկարացին Տաճկաց անդրադարձութիւն ընել մի եւ նոյն սաստկութեամբ, վասն զի յոյս չկար թէ ամսոյն 24 էն առաջ ռազմամթերք պիտի հասնէր Ռուսաց, որք 80 հարուած արձակելու բան միայն ունէին իրենց պողովատիկ թնդանօթաց (Տաճկաց ձեռքէն առնուածներուն) համար ։ Այսու ամենայնիւ Տաճկաց մէկ քանի թնդանօթներն հաստարաններուն վրայէն վար ձգեցին եւ ռազմամթերից արկղերուն երկուքը պայթեցուցին։ Սիւլէյման փաշա փոքրիկ պահակազունդը բոլորովին լքուցանելու համար՝ հրացանի կռիւն անընդհատ շարունակեց՝ ոչ միայն Ռուսաց հարաւային ճակատին դէմ, այլ նաեւ երկու կողմանց վրայ, եւ այլ եւ այլ կեղծ յարձակումներ ընել տուաւ՝ որով Ռուսք ստիպուեցան բնաւ զէնքը ձեռքէ չթողուլ ։ Միանգամայն Թուրք զօրավարն Գըզանլըգէն եւ մերձակայ գիւղերէն իւր քով կոչեց այն տեղերը ցրուած բոլոր զօրքն եւ հետեւեալ օրն յարձակում մ'ընելու համար՝ Շիփքա գիւղին մօտ գումարեց ամբողջ բանակն, այսինքն 50,000 էն աւելի մարդ եւ 80էն աւելի վաշտ ։

Երբ մութը կոխեց, Ռուսք նախորդ գիշերն իրենց սկսած գործն աւարտեցին։ Աշխատեցան մարտկոցներն եւ պարկէններն նորոգելու, պատսպարաններ շինեցին եւ երկու նոր պարկէններ բացին ։ Այս այլ եւ այլ աշխատութիւնք Տաճկաց անընդհատ կրակին ներքեւ կատարուեցան ։ Պողովատիկ թնդանօթաց մարտկոցին մէջ գտնուող Օրէլի գումարտակին դասակներուն տեղ՝ երեկոյին Պրիանսքի գումարտակին 1ին վաշտին չորս դասակներն անցան՝ նոյն վաշտին հրամանատար Սքօբոտինսքի հարիւրապետին հրամանաց ներքեւ ։ Անյողդողդ եւ շարունակ ծառայութիւն մատուցին խեղճ Պուլղարներն՝ զորս Ռուսք կռուոյն սկզբնաւորութենէն ի վեր ամենէն վտանգաւոր տեղերը կացուցած էին միշտ, որով առաջին աւուր կորուստներն գրեթէ բոլորովին իրենցմէ եղած էին ։

Գիշերը վերջ չտուաւ հրացանութեան ։ Տաճիկներն անդադար դժոխային կրակ մը տեղացին, իբրեւ թէ դառյթ տալու պատրաստ լինէին ։ Հանճարեղ հնարք, որոյ պատճառաւ Շիփքայի պահակազունդն չը կարաց աչքը փակել, թէեւ քառասուն եւ ութ ժամէ ի վեր՝ իրօք վայրկեան մը հանգիստ առած չէր ։

---

## ՕԳՈՍՏՈՍ 23 Ի ԿՌԻՒՆ ․ — ՏԱՃԻԿՆԵՐՆ ՇԻՓՔԱՅԻ ՄԻՒՍ ԿՈՂՄՆ ԱՆՑՆԻԼ ԿԸ ՓՈՐՁԵՆ

Սիւլէյման փաշա Ռուսաց կրակին եւս քան զեւս տկարանալէն հասկացած էր թէ պակսած էր նոցա ռազմամթերքն, եւ գիտէր նաեւ թէ տակաւին զօրավիգ հա-

հուն 14րդ գնդին հրամանատարն կը կարծէր որ իրօք իւր ձախակողմէն կը լինի յարձակումն։ Սակայն Ելէնա գնալու համար ճանապարհ ելնելէ առաջ Պրիանըքի գումարտակին հրաման զրկեց Սէրվիէն մեկնելու եւ Շիփքայի անցից պահակագընդին օգնութեան երթալու ։

Ամսոյն 19ին՝ Ռուսք տեսան զօրաց թըլոակերպ եւ երկայնաձիգ խումբեր, որք անտառներէն դուրս կ՚ելնէին եւ որոց հազարաւոր սուիններն նորանշոյլ արեգական ճառագայթներէն կը շողային. սոցա շուրջն անկանոն զօրաց բազմաթիւ ջոլիրներ կային։ Առաջապահներն Սէնօվայի մէջ զետեղեցան, մինչդեռ ստուար մասն աւելի ետեւ սփռեցաւ իւր մէկ կողմն ունենալով Դըվանլըգ քաղաքն ։ Ամսոյն 20 ին յայտնի եղաւ թէ Շիփքայի առջեւ կը գտնուէր Սիւլէյման փաշայի ամբողջ բանակն եւ կը պատրաստուէր ոչ թէ ցոյց մ՚ընելու՝ այլ կիրճը գրաւել փորձելու։ Կէս օրէն գրեթէ չորս ժամ յետոյ սոյն բանակը տարածեցաւ , որով կարելի եղաւ դաշտին մէջ Շիփքա գիւղին հարաւային արեւելեան կողմն 40 վաշտ թուել, որոց աջակողմեան խումբն Եանինա գիւղին քովն էր ։ Տաճիկ ձիաւորաց եւ հետեւակազօրաց փոքր խմբեր յառաջեցին դէպ ի Շիփքա գիւղն . 9 հարիւրորդամէթր տրամագծով ռումբ արձակող թընդանօթներն մէկ քանի անգամ պարպուեցան սոցա դէմ՝ Սվէթի-Նիքօլա լերան մարտկոցին կրակը փորձելու համար ։

Ընդ հուպ հրացաններու ձայներ լըսուեցան լերան ստորոտն. Տաճկաց առաջապահներն կռուոյ բռնուած էին Պուլղարաց մէկ քանի դասակներու հետ , որոց յանձնուած էր գիւղին պահպանութիւնն։ Պուլղարք լերան վրայ քաշուեցան մէկ քանի ժամ դէմ դնելէ եւ Տաճկաց մեծ կորուստ պատճառելէ յետոյ ։ Տաճիկներն անմիջապէս այս գիւղն հրդեհեցին։ Ռուսք՝ մինչեւ լերանց գագաթներն մրրկելով բարձրացող ծխոյ եւ բոցոյ թանձր սիւները տեսնելով՝ հասկցան այն նկարագեղ եւ սիրուն գիւղին բնաջինջ լինելն , որոյ ետեւն Տաճիկներն զետեղեցան։ Ասոքա իրենց ճամբարն հաստատեցին երեք ահագին հողակուտից քով, որ հնոց գերեզմաններ էին եւ մեծ բոլորշի բլրոց ձեւ ունէին , այն տեղին վրայ՝ ուր Կուրքօ զօրավարին խումբքն բանակեալ էին ճիշդ ամիս մ՚առաջ յուլիսի մէջ ։ Ամեն կերպիւ յայտնի եղաւ թէ հետեւեալ օրն յարձակումն պիտի լինէր , եւ Ռուսք ասոր սպասեցին՝ լաւ պահպանութիւն ընելով ։

Գիշերն՝ Սիւլէյման փաշայի դիտաւորութիւններն աւելի բացայայտ եղան ։ Շիփքայի կիրճին եւ գիւղին միջեւ՝ զառիթափին կիսոյն մօտ իբրեւ պահակ զետեղեալ Պուլղարաց չորրորդ վաշտն չարունակ հրացանաց գնտակներուն ենթակայ եղաւ եւ լուսնալէն առաջ պարտաւորեցաւ դէպ ի կիրճը քաշուիլ ։ Առաւօտ լինելուն պէս՝ այնպիսի մոլեգին եւ սրտոյոյզ կռիւ մը սկսաւ զոր հազիւ մարդ կարէ երեւակայել ։

Սթօլէթով զօրավարն՝ պաշտպանողական գծին վրայ հետեւեալ կերպիւ իւր զօրախումբքը շարեց մէն մի անձի հրամանատարութեան ներքեւ .

Օրէլի գումարտակին 3րդ վաշտն եւ թնդանօթաձիգ զօրաց 9րդ սահին 2րդ շարն կը գրաւէին Սվէթի-Նիքօլա լեռն եւ « Պողովատիկ թնդանօթաց մարտկոցը . այս վերջինն եօթն տաճկական թընդանօթներով զինեալ էր ։ Օրէլի գումարտակին 1ին վաշտն աջակողմը պարիկններու մէջ գտնուելով՝ կանաչ եւ բոլորշի մարտկոցներուն նպաստամատոյց կը լինէր , որոց իւրաքանչիւրին մէջ չորս չորս թնդանօթ կար . բոլորշի մարտկոցին մէջ կային նաեւ Տօնաքի Խազախաց յատուկ եւ ձիոց վրայ բառնալի թնդանօթաց 10րդ շարէն երկու հատ գնդընկեց անօթ։ Օրէլի գումարտակին 2րդ վաշտէն երկու դասակներ եւս Պէտէքին բարձրաւանդա-

կը կը գրաւէին Ռուսաց աջակողման առաջն ։ Ձախակողմն՝ որ Պէրտէք լերանց դիմացը կը գտնուէր, պարկէններով ամրացեալ էր եւ Պուլղարաց լեգէոնին 2րդ, 3րդ եւ 5րդ վաշտերով պաշտպանեալ ։

Օրէլի գումարտակէն 3 դասակներ եւ Պուլղարաց 1ին եւ 4րդ վաշտերն լեռնային 4 թնդանօթով ի պահեստի կը սպասէին այն տեղւոյն վրայ որ Պարանոց կ'ըսուի, Սվէթի-Նիքօլա լերան մօտ գտնուող վրաններուն եւ նոյն լերան ըստորոտին միջեւ ։

Սվէթի-Նիքօլա լերան վրայ՝ որ ամենէն աւելի դէպ ի դուրս կարկառեալ դիրքն էր, հրամանատարութիւնն յանձնուեցաւ կայսեր համհարզներէն (եավէր) գումարապետ Թօլսթօյ կոմսին ․ ձախակողմեան պարկէնից մէջ հրամանատարութիւնն նոյնպէս կայսեր համհարզներէն գումարապետ Վիազէմսքի իշխանին տրուեցաւ ․ աջակողմեան խմբին եւ գործողութեանց խորխին վրայ՝ որ յետոյ գլխաւոր դիրք կոչուեցաւ, հրամանատար անուանեցաւ Տէփիրէրատօվիչ գումարապետն, որ Պրիանսքի գումարտակին հանդերձ յետոյ՝ անոր գումարապետին՝ Պ. Լիփինսքիի յանձնեց այն հրամանատարութիւնն ։

Առաւօտեան եօթներորդ ժամուն՝ Տաճկաց կարմիր գլխանոցներն Պէրտէք լերան վրայ երեւցան ։ Կ'երեւէր թէ այն օրն սաստիկ տաք պիտի լինէր․ երկինքն պայծառ եւ ջինջ էր, շրջակայ անտառներէն քաղցր հոտեր կը բուրէին ․ կրճին խորերուն մէջ սաղարթուց ներքեւէն կը լըսուէր ջրոց խոխոջիւնն եւ թռչնոց դայլայլիկն, զոր տակաւին չրտուցած չէր ճակատամարտին շփոթն. մահն որոյ մանգաղն այնքան մարդոց կեանքը պիտի բառնար, նուազ սակայն կ'երեւէր այն զուարթ բնութեան առաջ, եւ Շիփքայի մէջ փակեալ 3,000 Ռուսք առանց գիտելու թէ պիտի հասնէին արդեօք այն զօրավիգներն որոց իրենք կըսպասէին, եւ առանց վայրկեան մը տկարանալու, պատրաստուեցան այն անհաւասար եւ ահեղ մարտին, զոր սակաւաձեռն խումբ մը պիտի մղէր բանակի մը դէմ ։ Տաճիկներն սկսան նախ մարտկոց մը շինել Պէրտէք լերան վրայ՝ պողպատիկ թնդանօթաց մարտկոցին դէմ ։ Ռուսք անմիջապէս կրակ ընել սկսան աշխատաւորաց վրայ, բայց չկարացին արգելուլ, եւ առաւօտեան տասներորդ ժամուն չորս թնդանօթներ արդէն զետեղեալ էին ։

Ճարտարագիտական զօրաց 7րդ վաշտէն Ռօմանով փոխ-հարիւրապետին յանձնուած էր առաւօտուն կանուխ ականներ բանալ գիւղէն մինչեւ կիրճը տանող մեծ ճանապարհին ներքեւ ։ Հազիւ թէ այն ականներն վառօդով լցուած էին, Սիւլէյման փաշայի 40 վաշտերն յարձակման համար բազուկ բազուկ ձեւացան եւ կատարեալ հաստատամտութեամբ յառաջեցին այն ճանապարհին վրայ որ գիւղին ելքէն կըսկսի ։ Զառիթափին երկու երրորդ մասին վրայ բաւական դիւրին եղաւ վերելքըն ։ Տաճիկներն՝ զորս լերան վախուտ զառիվողն կը պատսպարէր, թնդանօթաց կրակէն ապահով էին եւ թշնամեայն արձակամարտներն կը մղէին իրենց առջեւէն ։ Բայց այն փոքր սարահարթին վրայ հասնելնուն պէս՝ ուր շինութիւնն թերի մնացած իջեւան մը կար, ստիպուեցան բաց եւ անծառ տեղէ մը յառաջել ։ Այս կէտն երեք ամրականներու եւ բազմաթիւ պարկէններու կրակին ներքեւ էր․ այն ամրութեանց մէջ գտնուած թնդանօթներուն շատերը Տաճկաց կողմանէ բարձի թողի եղածներն էին, եւ Ռուսք նոցա գալուստը բարեւեցին նոյն իսկ իրենց ռմբերովն ։ Տաճկաց առաջին շարքն այն երկաթներու տեղատարափին ներքեւ մանգաղաւ հնձուելու պէս փռուեցան ։ Միանգամայն ճանապարհին մէկ ծայրէն միւսն զարհուրելի ռմբիւններ լսելի եղան ։ Ականներն պայթեր էին, որոց ելեկտրականութեամբ կրակ տրուած էր ։ Թէեւ այս պայթումն տարաժամ էր, սակայն դար-

ձեալ մեծ չարիք պատճառեց Տաճկաց եւ այնպէս ահերեց ճանապարհն, որ օրն ի բուն անկարելի եղաւ անոր վրայէն անցնիլ։

Տասներորդ ժամուն սկսան օրուան Պէրոյէք լերան վրայ զետեղեալ չորս թընդանօթներն, եւ Տաճկաց հետեւակազօրն ռուսական դրից հարաւային ճակատին դէմ տարածուելով՝ սկսաւ սարսափելի կրակ մը թափել հրացանաւ։ Բայց ինչ կարէին ընել գնտակներն պատնիչաց դէմ. Ռուսք լաւ պատսպարեալ լինելով՝ ուզածնուն պէս կը գործէին, իրենց ռազմամթերքը կը խնայէին եւ անվրէպ կ'արձակէին։ Նոյն միջոցին ստուար խումբ մը յարձակեցաւ հարաւային արեւելեան կողմէն տաճկական փոքր մարտկոցին դէմ ուր կը գտնուէր Օրէլի գումարտակին արձակամարտից 3րդ դասակն, հասաւ մինչեւ ամրականին ստորոտն, սակայն այլ եւս չկարաց յառաջել։ Անդադար նոր զօրք կը հանէր իրեն օգնութեան վերլըտին երկու անգամ ալ յարձակեցաւ կատաղութեամբ եւ երկու անգամուն ալ ետ մղուեցաւ Օրէլի գումարտակին վերաբերեալ նոյն դասակին ձեռօք, որում կ'աջակցէր պահեստի զօրքէն անջատեալ պուլղարական դասակ մը։ Տաճկաց խումբն վերջապէս նահանջեց հարիւրաւոր մեռեալներ թողլով այն ղաւիթափին վրայ, ուրկէ պարապ տեղն վեր ելնել փորձեր էր։

Սուլէյման փաշայի յատակագիծն՝ որ շատ պարզ էր, ռուսական դրից բոլոր կէտերը փորձել էր՝ առանց մէջտեղի զինուոր կորուսանելուն նայելու՝ հետզհետէ յարձակմունք ընելով, մինչեւ որ յայտնի լինէր այն տկար կէտն իւր լաւագոյն գումարտակներն յառաջ ղխել վարէր ամրութեանց տիրելու համար։ Հարաւային արեւելեան մարտկոցին առջեւէն ետ մղուելով Ռուսաց ճակատուն միւս ծայրն փորձ մ'եւս ըրաւ Սվէթի-Նիքօլա լերան արեւմտեան ղաւիկողին վրայ։ Դարատաղէն հետ բերած Նիզամի քաջ զօրքն թէ եւ սարսափելի կորուստ կը կրէին, յառաջ նետուեցան երկոյնաձիգ եւ հոծ ջոկ մը ձեւացնելով՝ որոյ մէջ լայն եւ արիւնռուշտ անցք կը բանային ի մօտոյ արձակեալ ամբարտակներուն։ Բայց այխութիւնն չզօրեց կատարել այնպիսի բան մը որ անհնարին էր։ Տաճիկք անհանդուրժելի կրակէ մը կ'ընկրկէին, մեռելոց եւ վիրաւորաց պատճառաւ, որոց անկանելովն զօրաց կարգերուն մէջ բաց տեղեր կը մնային եւ անցքն կը խափանուէր՝ ըստ կամի չկրնալով շարժիլ, կրկին ստիպուեցան նահանջել։ Նոյն պահուն (առաւօտեան ժամն տասն եւ մէկ ու կէս կամ կէս օրին կէս ժամ մնալով.) Շիփքայի պահակագունդն ուրախութեան աղաղակներ արձակեց՝ Պրիանսքի գումարտակին ժամանումը տեսնելով, որ բոլորչի մարտկոցին ետեւ զետեղուեցաւ ի պահեստի սպասելու համար։ Այս գումարտակն քառասուն երկու հազարամէթր ճանապարհ ըրած էր անընդհատ։

Սուլէյման առանց վհատելու եւ իւր աղէտաբեր յատակագծին գործադրութիւնը շարունակելով, որոյ համար շատ մարդ զոհելու ստիպեալ էր այսպիսի պարագայից մէջ գործածուած մարտավարական հնարք բանեցնելու տեղ, ուրիշ կէտ մը գտնելու նայեցաւ՝ յարձակելու համար։ Նախ ճակատեցուց արձակամարտից ստուար կարգեր, որք օրն ի բուն գնտակ տեղացին ոչ միայն ամրութեանց վրայ, այլ նաեւ անոնց ետեւի փոքր ձորոյն վրայ՝ ուր ըստ դիպաց արձակեալ գնտակներն մեծ կորուստ պատճառեցին պահեստի զօրաց, որք պատնէշներուն մէջ գտնուող զինուորներուն չափ պատսպարուած չէին ի հարկէ։ Յետոյ յարձակման համար զօրաց բազուկ մը ձեւացնելով՝ զայն յառաջ վարեց պողովատիկ թնդանօթաց մարտկոցին դէմ՝ Սվէթի-Նիքօլա լերան ձախակողմեան ղաւիթափին վրայէն։ Առաջին յարձակումն կէս օրին մօտ



ՌՈՒՍՔ ԱՌ Ի՛ՉԳՈՅԷ ՌԱԶՄԱՄԹԵՐԻՑ՝ ՔԱՐԵՐՈՎ ՅԵՏՍ ԿԸ ՄՂԵՆ ՏԱՃԻԿՆԵՐՆ.

եղաւ։ Ռուսք անձկութեամբ տեսան տաճիկ հետեւակազօրաց սոսեր եւ երկայնաձիգ ամբոխներու էջքն՝ երեք գըծի վրայ՝ մերձակայ անտառներէն մինչեւ այն բլրոյն ստորոտը տարածուած ձորակին մէջ որոյ գագաթը կը բարձրանար նոյն մարտկոցն։ Սոքա բաց տեղերէ վազելով անցան եւ լերան զառիթափներէն վեր ելան բիւր անգամ Ալլահ աղաղակելով, մինչդեռ թմբուկներն կը զարնուէին յարձակման եղանակաւ։ Բայց որքան եւ արտաքոյ կարգի կորովութեամբ եւ պնդութեամբ յառաջ վարեցան, պաշարելոց մարդախանձ կրակն զիրենք ետ մղեց։

Տասն անգամ իրարու վրայ՝ զօրաց շոկերն վերակազմուեցան, եւ տասն անգամ միեւնոյն արիութեամբ այն յիմարական յարձակումը կրկնեցին։ Սիւլէյման փաշա հետզհետէ անխնայ զօրք կը ղրկէր եւ յարձակումն կրկին կրկին սկսել կուտար։ Օսմանեան արի զինուորք այն փոխուտ զառիթափէն դժուարաւ վեր կ'ելնէին. մէկ մէկ մէթր յառաջ երթալնուն՝ զօրաց կարգերն հետզհետէ աւելի ցանցառ կը լինէին, եւ լերան գագաթին մօտեցած ժամանակնին՝ այն սոսեր ամբոխէն սակաւաձեռն խումբ մը միայն կը մնար. այն ժամանակ կենդանի մնացողներն տակաւին մեծ ճիգ թափելու հարկաւորութիւնը տեսնելով եւ վհատելով՝ կը թուլանային եւ կ'ընկրկէին ոպայից խրախուսանացն հակառակ։ Լերան այն չարաղէտ կողին վրայ ո՜րչափ արիւն կը գետահեղէր։ Այս յիմարական կռուոյն մէջ Տաճկաց ունեցած կորուստն 3,000 հոգւոյ չափ կը համարուի՝ ամենէն չափաւոր հաշուոց նայելով։ Մինչեւ երեկոյ Ռուսք եւ Պուլղարք՝ որք սակաւաթիւ լինելով անդադար կը կռուէին, լսեցին թմբուկներու եւ շեփորներու յարձակման եղանակաւ զարնուիլն եւ դռոյթ տուող զօրաց սոսկալի աղաղակներ հանելն։

Երբ գիշերային մութը կոխեց, Տաճիկներն վեց թնդանօթ ունէին։ Այգըրը-Տէպէլի բարձունքը գրաւած էին, եւ Փօլիքարփով հարիւրապետին հրամանաց ներքեւ գտնուած կանաչ մարտկոցին ամրաձըգութեանն հակառակ՝ երկու թնդանօթ զետեղած էին այն բարձանց վրայ։ Երեկոյեան ութերորդ ժամուն, Սիւլէյման փաշա կարծելով թէ Շիփքայի պահակագունդն այն տասն ժամ տեւող սարսափելի կռուէն նուաղեալ էր, վերջին յարձակում մ'ընել տուաւ։ Սոսեր խումբ մը լռելեայն մօտեցաւ ռուսական ամրութեանց, յարձակող զօրաց առաջիններն ամրականնին պարապակին կը հալէին արդէն՝ վեր ելնելու համար, յանկարծ գիշերապահք զանոնք նշմարեցին լուսնակի լուսովն, ձայնատուր եղան, եւ հրացանի սաստիկ կաւ մը լինելով գրեթէ անմիջապէս նոյն գրից մերձակայքը դատարկեցան։

Այս առաջին աւուր կռուոյն մէջ Շիփքայի քաջ պահակաց կորուստն հազիւ 200 հոգւոյ չափ եղած էր։ Դէթ պաշտօնական թիւն այսպէս ցոյց կուտայ, եւ թէեւ մեծ տարբերութիւն կայ ասոր եւ Տաճկաց կորստեան մէջ, սակայն անհաւանական չէ, վասն զի մտածելու է թէ ամբողջ օրն գիրկընդխառն գուպարում մը չէ եղած՝ այլ միայն թնդանօթի եւ հրացանի կռիւ մը, յորում Ռուսք պատնիշաց ետեւ կը գտնուէին, սոսեր խմբերու վրայ հրացան կ'արձակէին եւ իրենց մէկ գնտակը պարապ չէր ելներ։

Սթօլէթով զօրավարին զինուորներն պարտասեալ էին, բայց չկարացին լաւ հանգիստ առնուլ՝ յաճախ վրդովեալ լինելով։ Պատնէշներէն մէկ քանի քայլաչափ հեռի անկեալ գտնուող եւ օգնութիւն խնդրող տաճիկ վիրաւորաց աղիողորմ գոչիւններէն զատ՝ հրացաններու ձայներն չդադրեցան գիշերն ի բուն, վասն զի Տաճիկները նոր մարտկոց մը շինեցին եւ պարկէններ փորեցին, որոց երկուքն հազիւ հարիւր քայլ հեռի կը գտնուէին

Ռուսաց կայաններէն ։ Շիփքայի հրամանատարն կարող չէր դուրս յարձակում մը ընել՝ աշխատաւորները ցրուելու համար, վասն զի շատ քիչ մարդ ունէր։ Բաւական համարեց մարտկոցները եւ պարկէնները նորոգել, մինչդեռ պահեստի զօրքն պաշտպանութիւն կ'ընէր, եւ ամրութեանց զօրութիւնն աւելելու՝ մանաւանդ պողովատիկ թնդանօթաց մարտկոցին մէջ, որոյ գնդընկէցներն եւ մարդիկն ամբողջ օրն բացը կը գտնուէին, եւ այս պատճառաւ մեծ կորուստ եղած էր անոնց մէջ։

Ամսոյն 22ին կռիւն նախորդ աւուր կռուոյն չափ տաժանելի չեղաւ ։ Գիշերն խոհեմ կ'ընէ զմարդ . Սիւլէյման փաշա յանձն կ'առնուր իւր զինուորներն յառաջ չվարել որ երթան պարապ տեղը ջախջախին ժայռերու եւ պատուարներու դէմ, եւ քիչ մը պատրաստութիւն տեսնել նոր յարձակում մ'ընելու համար։ 4 եւ 6 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող ութ հատ թնդանօթ՝ ինչպէս նաեւ երկու հատ դաշտային թնդանօթ զետեղեալ ունենալով՝ առաւօտեան վեցերորդ ժամուն սկսաւ կրակ ընել տալ, եւ այս ռմբաձգութիւնն անդադար շարունակեց ամբողջ օրն։ Ռուսական թնդանօթներն այն օր չկարացին Տաճկաց անդրադարձութիւն ընել մի եւ նոյն սաստկութեամբ, վասն զի յոյս չկար թէ ամսոյն 24 էն առաջ ռազմամթերք պիտի հասնէր Ռուսաց, որք 80 հարուած արձակելու բան միայն ունէին իրենց պողովատիկ թնդանօթաց (Տաճկաց ձեռքէն առնուածներուն) համար ։ Այսու ամենայնիւ Տաճկաց մէկ քանի թնդանօթներն հաստարաններուն վրայէն վար ձգեցին եւ ռազմամթերից արկղերուն երկուքը պայթեցուցին։ Սիւլէյման փաշա փոքրիկ պահակազունդը բոլորովին լքուցանելու համար՝ հրացանի կռիւն անընդհատ շարունակեց՝ ոչ միայն Ռուսաց հարաւային ճակատին դէմ, այլ նաեւ երկու կողմանց վրայ, եւ այլ եւ այլ կեղծ յարձակումներ ընել տուաւ՝ որով Ռուսք ստիպուեցան բնաւ զէնքը ձեռքէ չթողուլ ։ Միանգամայն Թուրք զօրավարն Գըզանլըգէն եւ մերձակայ գիւղերէն իւր քով կոչեց այն տեղերը ցրուած բոլոր զօրքն եւ հետեւեալ օրն յարձակում մ'ընելու համար՝ Շիփքա գիւղին մօտ գումարեց ամբողջ բանակն, այսինքն 50,000 էն աւելի մարդ եւ 80էն աւելի վաշտ ։

Երբ մութը կոխեց, Ռուսք նախորդ գիշերն իրենց սկսած գործն աւարտեցին։ Աշխատեցան մարտկոցներն եւ պարկէններն նորոգելու, պատսպարաններ շինեցին եւ երկու նոր պարկէններ բացին ։ Այս այլ եւ այլ աշխատութիւնք Տաճկաց անընդհատ կրակին ներքեւ կատարուեցան ։ Պողովատիկ թնդանօթաց մարտկոցին մէջ գտնուող Օրէլի գումարտակին դասակներուն տեղ՝ երեկոյին Պրեանսքի գումարտակին 1ին վաշտին չորս դասակներն անցան՝ նոյն վաշտին հրամանատար Սքօբոտինսքի հարիւրապետին հրամանաց ներքեւ ։ Անյողդողդ եւ շարունակ ծառայութիւն մատուցին խեղճ Պուլղարներն՝ զորս Ռուսք կռուոյն սկզբնաւորութենէն ի վեր ամենէն վտանգաւոր տեղերը կացուցած էին միշտ, որով առաջին աւուր կորուստներն գրեթէ բոլորովին իրենցմէ եղած էին ։

Գիշերը վերջ չտուաւ հրացանութեան ։ Տաճիկներն անդադար գժոխային կրակ մը տեղացին, իբրեւ թէ դժոյթ տալու պատրաստ լինէին ։ Հանճարեղ հնարք, որոյ պատճառաւ Շիփքայի պահակազունդն չը կարաց աչքը փակել, թէեւ քառասուն եւ ութ ժամէ ի վեր՝ խօք վայրկեան մը հանգիստ առած չէր ։

ՕԳՈՍՏՈՍ 23 Ի ԿՌԻՒՆ . — ՏԱՃԻԿՆԵՐՆ ՇԻՓՔԱՅԻ ՄԻՒՍ ԿՈՂՄՆ ԱՆՑՆԻԼ ԿԸ ՓՈՐՁԵՆ

Սիւլէյման փաշա Ռուսաց կրակէն եւս քան զեւս տկարանալէն հասկցած էր թէ պակսած էր նոցա ռազմամթերքն, եւ գիտէր նաեւ թէ տակաւին զօրավիգ հա-

սած չէր նոցա։ Հետզհետէ յարձակումներ ընելով իր բանակն յօշոտելու տեղ՝ այս անգամ ամբողջ զօրօքն Ռուսաց դիրքը շրջապատել ուզեց, եւ ամեն կողմանէ միանգամայն դայմ տրուելով խեղդել գրեթէ ռուսական այն սակաւաթիւ պահակագունդն իր 50,000 մարդոց զօրութեան ներքեւ։ Յաջողութիւնն անվրէպ կ՚երեւէր, եւ այսպէս ամեն կողմանէ լինելիք ճնշմամբ Ռուսաց գծին մէկ կէտի մը վրայ չխզուիլն անհնարին կը թուէր, եւ արդարեւ, եթէ Ռատեցքի զօրավարին բերած զօրավիգներն կէս ժամ եւս ուշանային, Շիփքա պիտի առնուէր։

Խօսիմք սակաւիկ մի եւս այն սակաւաթիւ քաջաց խմբին կացութեան վրայ, որք ցոյց պիտի տային թէ մինչեւ ուր աստիճան դիւցազնութեան կարէ հասանիլ մարդկային արիութիւնն։ Երեք օրէ ի վեր քուն չունէին, հազիւ բան մը կ՚ուտէին, անընդհատ հրացանութիւնն ժամանակ չէր թողուր իրենց։ Ծարաւոյ պատճառաւ եւս կը չարչարուէին. Տաճկաց ձեռօք առաջին օրէն աղբերականց ջուրը կտրուած լինելով, եւ իրենց կռուած ժամանակին այնպիսի տապ մը կար որ քառասուն եւ հինգ աստիճանի կը հասնէր ստուերի մէջ։ Ժայռերուն վրայ արեգական ճառագայթից ցոլացմամբն մարտիկներուն աչքը կը շլանար, ծառոց տերեւները գրեթէ չորցած էին, եւ Տաճիկներն իրենցմէ տապաստ անկեալները կը թողուին որ հոտին այն մթնոլորտին մէջ՝ ռուսական դրից մօտ, եւ մինչեւ անգամ գնտակաց դէմ պատսպարուելու համար զանոնք կը գործածէին։ Ժանտահոտութիւնը կը տկարացնէր այն մարդոց սիրտն, որոց կորովութիւնն եւ հաստատամտութիւնն ոչ կարօտութենէ, ոչ չափազանց նեղութիւններէ եւ ոչ վտանգէ կը թուլանար։

Փիչերն ի բուն անընդհատ տեւող թնդանօթաձգութիւնն արեւը ծագելէն առաջ սաստկացաւ բուռն կատաղութեամբ։ Տաճիկներն այն ժամանակ 10 թնդանօթ Պէրտէք լերան եւ 4 հատ եւս Այգըրըճէալէի վրայ ունէին։ Կէս աւուր մօտ, թնդանօթաց թիւն 8ի հասաւ այս վերջին կէտին վրայ, միանգամայն օսմանեան բանակն խեցդեանոյ մը ճամբին ալս բացուեցաւ ռուսական դիրքն մէջ առնլու եւ նեղմելու համար։ Զօրաց խումբ մը Պէրտէք լերան երկայնութեանն յառաջեց Ռուսաց ձախակողմը պատելու համար, ջոկատ մը հարաւային ճակատին վրայ զետեղեցաւ, եւ բանակին մնացեալ մասն դէպի Սէնօվօ փոքրիկ գիւղը գնաց. անտի, այս ջոկն հազիւ նշմարելի եւ նեղ շաւղի մը հետեւելով, ուրկէ փախած էր Շիփքայի տաճկական նախկին պահակագունդն, Ռուսաց աջակողման դէմը գտնուող անտառապատ լերանց մէջ մտաւ՝ նոցա դիրքն այս կողմէն եւս պատելու, Պէրտէք լեռնէն գալիք զօրաց յետուստ միանալու եւ ամրականներուն եւ Կապրօվայի միջեւ եղած հաղորդակցութիւններն այս կերպիւ ընդհատելու համար։

Առաւօտեան գրեթէ եօթներորդ ժամուն՝ Ռուսաց ձախակողման դէմ յարձակեցան այն զօրախումբք որ երկու ծործորներէ վեր կ՚ելնէին Էթթէր գիւղէն գալով։ Այս յարձակողաց վրայ սաստիկ հրացանութիւն մ՚ըրին նոյն ծործորներուն դիմացի կողմը զետեղեալ պուլղարական 2րդ, 3րդ եւ 5րդ վաշտերն, որոց օգնութեան եկած էին դումայեա Թօլսթօյ կոմսին հրամանաւ՝ պուլղարական 1ին եւ 4րդ վաշտերէն երկու դասակներ։ Սոքա պողովատիկ թնդանօթաց մարտկոցէն ղրկուած էին դումայեա Վլատէմիքի իշխանին առաջնորդութեամբ։ Այն օր Տաճկաց վեց վաշտեր մէկ քանի անգամ յարձակեցան պուլղարական վաշտերուն գրաւած պարկենից վրայ եւ ամեն անգամուն ետ մղուեցան։ Երբ իրենց երկրին ազատութեան համար գինուորեալ այս քաջ Պուլղարներն՝ որոց կէսն արդէն Էսկի-Զաղրայի մէջ ջնջուած էր, երեւելին տեղա-

փոխութիւն ըրին, որպէս զի ուրիշներ գան զետեղուին անդ, իրենց երեք չորրորդն անկեալ էր ։

Հարաւային կողմէն. Տաճիկներն չորս անգամ յարձակում ըրին պողովատիկ թընդանօթաց մարտկոցին դէմ, եւ ամեն անգամուն եւս մեծ կորուստ կրելով ետ մղուեցան։ Այն տեղ Ռուսք եւս շատ մարդ կորուսին. իրենց դէմ հրացաններ կ'արձակուէին կողմնակի եւ յետուստ, որով ստիպուեցան անապարանօք մէկ քանի կարգ պարկէններ փորել պատսպարուելու համար ։ Պողովատիկ թնդանօթաց երեք հատն այն օր հաստարանոց վրայէն անկան, հրացեալներն ռազմամթերից սակաւութեան պատճառաւ անդրադարձութիւն չէին ըներ Տաճկաց կրակին դէմ, եւ միայն ծանրակշիռ պարագայից մէջ կ'արձակուէին, երբ յարձակող խումբերն կը մօտենային ։

Բայց հարաւային կողմէն Տաճկաց ըրած փորձերն բան մը չէին Ռուսաց երկու քովերուն վրայ յաճախ եղած յարձակման քով ։ Անդ հրամանատարութիւն կ'ընէր Լիփինսքի գումապետն, որ հետեւեալ կերպիւ շարած էր զօրքն սոյն գծից մէջ.

Բոլորշի մարտկոցին շուրջն եղած պարկէններն Պրիանսքի գումարտակին 2րդ վաշտին մէկ քանի դասակներուն պաշտպանութեան ներքեւ էին, եւ սոցա մօտ ի պահեստի կային 5րդ եւ 6րդ դասակներն ։ 3րդ վաշտին մէկ մասն Պէտէք լեռան վրայ զետեղեալ էր, եւ միւս դասակներն նոյն գծից աջակողման պարկէններուն մէջ էին՝ կանաչ մարտկոցին մօտ ։ Այս կողմի արտաքին պարկէններն 11րդ դասակին պահպանութեան ներքեւ էին, եւ շարժուն անկելանոցին մօտ եղած եւ Պարանոց ըսուած տեղն՝ Օրէլի գումարտակէն երեք դասակներու պահպանութեան տակ էր. սոցա՝ ինչպէս նաեւ Պրիանսքի գումարտակին մերձակայ դասակաց հրամանատարութիւն կ'ընէր Օրէլի գումարտակին Լինտսթրօմ փոխ-գումապետն։ Սոյն Օրէլի գումարտակին միւս չորս դասակներն՝ պէտք եղած ժամանակ ծր եւ իցէ կէտի մը վրայ օգնութեան հասնելու համար՝ մեկուսի կըսպասէին բոլորշի եւ կանաչ մարտկոցներուն միջեւը ։

Աջակողմն՝ Տաճիկք իրենց նպատակ ընտրած էին Պէտէք լեռն, եւ յուսահատական համառութեամբ եւ կատաղութեամբ կռուեցան անդ ։

Սոյն կայանին հրամանատար Շվալէ փոխ-գումապետն առաւօտեան հինգերորդ ժամուն տեսաւ որ Տաճկաց չորս սուար խումբեր կը յառաջէին ։ Զօրավիգ խնդրեց եւ մէկ ու կէս դասակ ղրկուեցաւ իրեն։ Վեցերորդ ժամուն Տաճիկներն կատաղութեամբ խուժեցին. Շվալէ գումապետն՝ որոյ բոլոր զօրքն արդէն կռիւ ըրած էր, երկրորդ անգամ օգնութիւն խնդրեց ։ Լիփինսքի գումապետն երկու դասակ ղրկեց Օրէլի գումարտակէն։ Տաճիկներն՝ որոց քով անխոնջ զօրք հասած էր, ժամ եօթն ու կէսին նոր յարձակում մ'ըրին. Ռուսաց զօրքն մեծ կորուստ կը կրէր։ «Տաճիկներն յախուռն կերպիւ կրակ կ'ընէին, կ'ըսէր անոնցմէ մին, եւ միայն ըստ դիպաց արձակեալ գնտակներէ կը զարնուէինք, բայց կապարներու այնպիսի տարափ մը կը տեղար եւ ըստ դիպաց արձակեալ այնքան գնտակներ կը թափուէին, որ մեր կարգերուն մէջ հետզհետէ բաց տեղերը կը շատնային սարսափելի արագութեամբ։» Շվալէ փոխ-գումապետն երրորդ անգամ օգնութիւն խնդրեց, եւ պահեստի զօրաց մէկ ջոկատն եւս ղրկուեցաւ իւր քով ։ Միանգամայն Սթօլէթով զօրավարն՝ Պրիանսքի գումարտակին արձակամարտից 2րդ դասակէն բոյլ մը ղըրկեց չորս թնդանօթով տաճկական կիսալուսին պատնէշը գրաւելու, որպէս զի Պէտէքի պահակագնդին նպաստամատոյց լինին եւ այս գծից դէմ յարձակող խմբերուն վրայ կողմնակի կրակ ընեն ։

Սակայն խեցգետնոյ ճանկը հետզհետէ

կ'ամփոփուէր։ Ձախ կողմէն Պէրտէք լերան երկայնութեանն յառաջող խումբերն յանկարծ դուրս ելան բոլորշի մարտկոցին եռեւի անտառներէն, եւ ճանապարհին վրայ խոյացան Պէտէք լերան եռեւի կողմն անցնելու համար։ Եթէ այս յանկարծական խաղացքն յաջողութեամբ կատարուէր, Շիփքա պիտի պաշարուէր եւ Ռուսք պիտի կորնչէին։ 3րդ դասակն եւ 6րդ դասակին այն բոլլն' որք բոլորշի մարտկոցին մէջ ի պահեստի կըսպասէին, հազիւ ժամանակ ունեցան շարուելու, եւ սաստիկ կրակ մը սկսաւ թափիլ իրենց վրայ հարիւր քայլաչափ հեռաւորութենէ։ Այս դասակն եւ բոլլն այն ժամանակ սուինով նետուեցան Տաճկաց վրայ' առանց հրացան պարպելու' եւ մէկէն ետ մղեցին զանոնք. յետոյ սաստիկ հրացանութիւն մը սկսաւ։ Ցարճակողք' որոց քով հետզհետէ անխոնջ զօրք կը հասնէր օգնութեան, մէկ քանի անգամ դարձ տուին, բայց ամեն անգամուն ընկրկեցան Ռուսաց կրակին պատճառաւ։

Պէտէք լեռն հետզհետէ ղրկուած ջոկատներն բնաջինջ կը լինէին. Տաճկաց գնտակներն այն կայանին շահատակներէն եւ ոչ մին կը թողուին ոտքի վրայ։ 10րդ ժամուն Շվայէ փոխ-գնդապետն վերստին զօրավիգ խնդրեց։ Առձեռն պատրաստ գտնուած վերջին դասակն եւս ղրկուեցաւ' հրաման լինելով միանգամայն որ դէմ դրուի մինչեւ անգամ եթէ մէկ մարդ միայն մնայ։ Լուր առնուած էր թէ Ռատէցքի զօրավարն Կազրօվոյէն մեկներ էր զօրաց մէկ մասով, եւ քաջ Սթօլէթով զօրավարն մտադրած էր անհնարին եղածն անգամ ընելու ջանալ, մինչեւ որ նա հասնէր։ Տակաւին չորս ժամ կըռիւն տեւեց այսպէս զարմանալի կատաղութեամբ, անցքը շրջապատող անտառներէն հազարաւոր Տաճիկներ դուրս կը փողէին. միշտ նորանոր խուժաններ յառաջ կուգային. բայց Ռուսք սարսափելի կրակի մը ներքեւ անհոգ կալով' բնաւ տեղի չտուին,

Կէս օրէն երկու ժամ յետոյ' Շվայէ փոխ-գնդապետին կողմանէ ղրկուած սպայ մը ծանոյց թէ Ռուսաց շատերն վիրաւորեալ լինելով եւ Տաճկաց զօրութիւնն հետզհետէ շատնալով, Պէտէք լերան ջոկատին համար անհնարին կը լինէր նոյն դիրքը պահպանել, եթէ վերստին բազմաթիւ զօրավիգներ չղրկուէին։ Բայց կէս բոլլ միայն մնացած էր ի պահեստի, որոյ քով էին դրօշներն։ Վասն որոյ հրաման տրուեցաւ այն ջոկատին որ անպատճառ դիմադրէ, եւ եթէ վերջին ատենն տագնապի, ետ քաշուի' Պէտէք լերան եռեւն եղած ականներէն զգուշանալով, եւ պարկէնները գրաւէ։ Ռոմանով փոխ-հարիւրապետն' որ ճարտարագիտական զօրաց 7րդ վաշտէն էր, հրաման առաւ ելեկտրական մարտկոցը պատրաստ բռնելու, որպէս զի այն դիրքն թողուլ հարկ եղած ժամանակ Տաճիկներն օդն հանէ։

Կռույն ամենէն տագնապալից վայրկեաններէն մին էր այս։ Հրացաններուն սարսափելի պարպատիւնը կը շարունակէր բոլորշի մարտկոցին շուրջն. Ջէրքէզներ կը յարձակէին տաճկական պատնէշին վրայ, եւ Պէտէքի մարտկոցը պարպուելու մօտ էր։ Պահեստի զօրք չէր մնացած, ամենքն կռույ մէջ մտած էին եւ տակաւին կը մարտնչէին։ Սակայն Տաճկաց յարձակումն մեղմեալ էր յոյժ հարաւային կողման վրայ, եւ Թօլսթօյ կոմսն կարաց դասակ մը ղրկել Լիփինաքի գումարտակին։ Ժամն երեքին եւ չորսին միջոցներն, տեսնելով որ Տաճիկներն իրենց բուն յարձակումն աջակողման ջոկատին դէմ կ'ուղղէին, դասակ մ'եւս ղրկեց անոր քով, եւ մնացեալ պահեստի զօրքն' այսինքն պուլղարական լեգէոնին 1ին վաշտին երկու դասակներն եւ 4րդ վաշտին մէկ դասակն յատկացուց անցքին խարխուլը պահպանելու տաճկական պատնէշին մօտերն։ Գրեթէ հինգերորդ ժամուն, Թօլսթօյ գումարտակն անձամբ աջակողմը դնաց Լիփինաքի քով' առժա-

մանակեայ կերպիւ՝ իւր հրամանատարութիւնն յանձնելով Պուլղարաց 4րդ վաշտին առաջնորդ Ռէտքին հազարապետին ։

Այս օգնութեանց հակառակ՝ Ռուսաց կացութիւնն դարձեալ խիստ երկիւղալի էր աջակողման վրայ ։ Ռուսք միահաղոյն կրակ ընելով՝ Տաճիկներն կասեցուցած էին անտառին մէջ, որոյ սպառուածին մօտ տեղս կը սփռուէին եւ անդադար հրացան կ'արձակէին ։ Բազմաթիւ վիրաւորներ Պէտէքէն խումբ խումբ կ'երթային մինչեւ առժամանակեայ դարմանատեղին ։ Լերան վրայ մնացած սակաւաթիւ զինուորք՝ որք արշալուսէն ի վեր կը մաքառէին թուով անհամեմատ առաւելութիւն ունեցող թշնամւոյ մը դէմ, կէս օրէն հինգ ժամ յետոյ սկսան խմբակներու բաժնուած ետ քաշուիլ՝ վերջին վիրաւորները բառնալով հանդերձ ։ Այս ջոկատին սպայից գրեթէ ամենքն սպանեալ կամ վիրաւորեալ էին, եւ դասակներն խառն ի խուռն խմբակներ դարձած էին ։ Պարկենից եւ պահեստի զօրաց մէջ եւս մեծ կորուստ եղած էր, վասն զի ամենուստ անդադար կրակ կը թափուէր այն դրից վրայ տասն երկու ժամէ ի վեր ։

Այն ժամանակ Ռուսաց համար ամենայն ինչ անդարմանելի կերպիւ վճարեալ կ'երեւէր ։ Պուլղարական լեգէոնին մարդոց երեք չորրորդն անկեալ էր, Պրիանսքի եւ Օրէլի գունդարտակներն կիսովին նուազեալ էին, կենդանի մնացողներն եւս վհատեալ էին այս սարսափելի կոտորածին պատճառաւ, եւ աւելի ցաւալին այն էր որ կը սկսէին ռազմամթերից պակասութիւն քաշել · Երեք օր ամենասաստիկ կրակ թափուելէ յետոյ՝ հրացանոցք (փառք տ'առիգլյերաի) կը դատարկանային, եւ մինչդեռ Տաճիկներն անդուլ իրենց յարձակմունքը կը կրկնէին, Ռուսք պարտաւորեալ էին վառօդի խնայութիւն եւ կարելի եղածին չափ քիչ կրակ ընելու ։ Տեղէ մը զօրավիգ հասած չէր եւ Աստուած գիտէր թէ երբ պիտի հասնէր ։ Տաճիկներն հուսկ ուրեմն յաղթական կը հանդիսանային՝ ամեն կողմանէ իրենց թշնամիները յետս մղելով եւ հետզհետէ նպաստաւոր դիրք բռնելով ։ Երբ կը տեսնէին Ռուսաց կրակին նուազիլը, աւելի սաստկութեամբ յարձակելու կը սկսէին. Սիւլէյման փաշա կարծեց թէ այլ եւս յաջողութիւնն իւր կողմն էր ։ Հինգերորդ ժամուն ռուսական հրացանոցին մէջ դատարկ սայլերէ զատ ուրիշ բան մնացած չէր. այլ եւս կրակ ընելու բան մը չունէին Ռուսք. սուիններնին միայն մնացած էր այն աւուր կռուին յաղթութեամբ աւարտելու համար ։ Մարտկոցներուն կրակը դադրեցաւ, եւ զինուորք սուին ի ձեռին խոյացան. իրենց անդիմադրելի թափոյն Տաճիկներն չկարացին տոկալ, եւ անգամ մ'եւս ընկրկեցան. բայց սոցա նահանջելէն յետոյ ռուսական մարտկոցներէն դարձեալ ամբաձգութիւն չեղաւ ։ Տաճիկք անշուշտ հասկացան այս լռութեան պատճառն եւ նոր յարձակում մ'ըրին կատաղաբար ։ Ռուս զինուորք երեք օր անդադար կռուելով պարտասեալ էին. սնունդ եւ հանգիստ չունենալով եւ առանց փամփշտի մնալով՝ չկարացին դիմադրել Տաճկաց ճգանցն ։ արտասուաթոր աչօք սկսան ետ երթալ՝ իրենց արեամբ ոռոգեալ տեղերէն հեռանալով ։

Տաճկական պատնէշին մէջ եւս ռազմամթերք չէր մնացած եւ այն տեղ նաեւ կրակը դադրեցաւ ։ Տաճիկներն այս լռութենէն քաջալերեալ՝ սաստիկ յոխորտանօք դուոյթ տուին ։ Արդէն լերան գագաթին մօտեցած էին, երբ յանկարծ Ռուսք իրենց պատնէշներէն դուրս ելնելով՝ անոնց վրայ կարկուտի պէս տեղացին խոշոր քարեր, ծառի կոճղեր, եւայլն, որ զանոնք դաւալեցուցին մինչեւ այն հեղեղատին ստորին կողմն ուրկէ վեր ելած էին ։ Մագլցելով սարահարթին վրայ հասնող մէկ քանի յանդուգն Թուրքեր սուինով շամփըրուեցան եւ գնացին իրենց ընկերաց քով անկան ։

Ռուսք ամբողջ մէկ ժամ պաշտպանեցին ինքզինքնին այս տարօրինակ ռմբերով, պահ մ'ալ՝ խոշոր քարերն երբ հատան՝ Տաճկաց վրայ տեղացին կոտրած հրացաններ, հողակոշտեր եւ փամփշտանոցներ զորս փոքրիկ քարերով լցած էին։ Սակայն եւ այնպէս՝ Տաճիկներն իրենց սպայներէն քաջալերուելով՝ որք կատարեալ արիութիւն ցոյց կուտային, ամրութեանց պիտի տիրէին, երբ ահագին հայթիւն մը լսուեցաւ որ Ռատէցքիի արձակամարտից առաջապահ խմբին գալուստը կը ծանուցանէր։

Շիփքայի պահակագունդը փրկուեր էր։

ՌՈՒՍԱԿԱՆ ԶՕՐԱՎԻԳՆԵՐՈՒՆ ԺԱՄԱՆՈՒՄՆ

Ռատէցքի զօրավարն՝ որ Պէպրօվայի կողմէն Սիւլէյման փաշայի բրած կեղծ ցոյցին պատճառաւ մինչեւ Զլաթարիցա հասեր էր, Սթօլէթով եւ Տէրօժինսքի զօրավարներէն գրութիւն մը ստացած էր, որով նոքա կը ծանուցանէին թէ Թուրք զօրավարին ամբողջ բանակն իրենց դէմ յարձակման կը պատրաստուէր։ Ռատէցքի իսկոյն խելամուտ եղաւ իր հակառակորդին խորամանկութեանն եւ վազեց Թըռնովա հասաւ ամսոյն 21ին. անդանօր ուրիշ գրութիւն մ'ալ ստացաւ, որով իմաց կը տրուէր թէ առաւօտեան եօթներորդ ժամէն ի վեր Տաճիկներն Շիփքայի կիրճին վրայ կը յարձակէին։ Ռատէցքի զօրավարին քով գտնուած զօրքն երեք օր ի զուր ընթանալով յոգնած էին, բայց վտանգն մօտալուտ էր եւ ժամանակ կորուսանելու չէր։ Ամսոյն 22ին արեւը ծագելու ժամանակ՝ ճանապարհ հանեց Փրիսօվայէն դէպ ի Կապրովա որսորդ կամ արձակամարտ զօրաց 4րդ. սահն՝ երկու լեռնային թընդանօթներով, եւ Շէրէմէթէն՝ հետեւակազօրաց 14րդ. հատուածին 2րդ. սահն՝ թնդանօթաձիգ զօրաց 14րդ. սահին 2րդ. եւ 3րդ. շարերով հանդերձ. սակայն այս սահէն անջատեց Փօտօլիոյ գումարտակին մէկ վաշտն եւ Թռնօվայի մէջ ձգեց, որ[illegible] պէտք էր այն տեղ գտնուած աղխերն, հի[illegible]ւանդանոցը, քաղաքն եւ մարտկոցներ[illegible] պահպանէ։ Նաեւ Մուրատալէյէն նոր հ[illegible]սած հետեւակազօրաց 2րդ. հատուա[illegible] (ընդ հրամանատարութեամբ Իմէրէթին[illegible]քի զօրավարին) հրաման ըրաւ դէպ[illegible] Սէլվի գնալ, եւ այն տեղ հասնելու[illegible] պէս՝ շուտով Կապրովա ղրկել 14րդ. հա[illegible]տուածին 1ին սահն՝ թնդանօթաձիգ զօ[illegible] 14րդ. սահին 4րդ. շարովն։

Ռատէցքի զօրավարն նոյն գիշերը Կա[illegible]րօվա հասաւ, եւ արձակամարտից [illegible] մը ժամ հանգիստ տալէ յետոյ՝ ան[illegible] հետ ճանապարհ ելաւ։

Սակայն Շիփքայի պաշտպաններն՝ [illegible] Պէպրօվայի կեղծ ցոյցին պատճառաւ՝ Տ[illegible]գնդին հրամանատարին տըրչափ ժամանա[illegible] կորուսանելը չգիտէին, կրնային կար[illegible] թէ իրենց օգնութիւն չպիտի հասնէր, [illegible] յոյս չունէին այլեւս երկար ժամանակ [illegible]մադրելու։ Սթօլէթով եւ Տէրօժինսքի [illegible]րավարք վերջին գրութիւն մ'ալ ղրկեց[illegible] յորում իրենց բրած ջանքն եւ կրած [illegible]ութիւննին նկարագրելէ յետոյ՝ կ'ըսէ[illegible] թէ պատրաստ էին իրենց արեան վեր[illegible] կաթիլն ալ թափել քան թէ անձնա[illegible] լինել։

Վեցերորդ ժամուն կռիւն փոքր [illegible] մեղմեցաւ, սակայն Ռուսք չկարացին [illegible]գուտ քաղել ասկէ, վասն զի այլ եւս [illegible] խոնջ զօրք չունէին։ Զինուորք արեւակէ[illegible] եղած էին, եւ խոնջութենէ, ծարաւէ [illegible] անօթութենէ ընկճեալ։ Երեք օրէ ի վ[illegible] կերակուր եփուած չէր, եւ ռուսակ[illegible] ամրութեանց մէջ ջուր չկար։ Ողորմել[illegible] զինուորներ շնչասպառ փռուած էին ապ[illegible] լերկ բլրոց վրայ՝ Տաճկաց ձեռօք գնդակ[illegible]ներու տարափ մը տեղալուն համար բն[illegible] հոգ չընելով. այլք կատաղաբար կը կռ[illegible]ուէին ժայռերուն վրայ, ընկրկելու ստիպ[illegible]ուելով, սակայն ինքզինքնին մոլեգին կեր[illegible]պիւ պաշտպանելով։ Արձագանգն ամենուստ կը կրկնէր՝ Տաճկաց յաղթական կերպիւ



ՏԷՐՕԺԻՆՍՔԻ ԶՕՐԱՎԱՐԻՆ ՄԱՀՆ

Ալլահ էլլա Ալլահ աղաղակելու ձայները ։

Երկու ռուս զօրավարք Պէտէքի բարձանց վրայ էին ։ Անհանդստութեամբ կը զննէին իրենց դիտակներով այն ճանապարհն որ մինչեւ Եանթրայի թխագոյն ժայռերով ծածկուած մացառախիտ հովիտը կը տանի։ Յանկարծ Սթօլէթով սաստիկ յուզմամբ ճիչ մը կ'արձակէ , եւ իր զինակցին թեւը կը բռնէ՝ մէկ ձեռքն դէպ ի կրճին խորը կարկառելով ։ Երկայնաձեւ եւ թխատեսակ խմբի մը ծայրը կը նշմարուէր , որ ճանապարհին վրայէն ոլորտապտոյտ շրջաններով յառաջ կը խաղար։ «Օրհնեալ է Աստուած ,» գոչեց Սթօլէթով վեհ կերպիւ։ Երկու զօրավարք իրենց գլխարկներն հանեցին։ Բոլոր զինուորք մէկ վայրկենի մէջ յոտին կացին եւ օգնութեան եկող զօրքը տեսան ։

Մացառներուն վրայ չեշտակի անկեալ արեւու ճառագայթէ մը շողացին սուինները հեռուստ ։ Յոյնժամ Ռուսք իրենց ուրախութենէն ահագին ճիչ մ'արձակեցին, որ լերանց կատարները դղրդեցուց , եւ Տաճկաց կայթիւններն բոլորովին անլսելի կը լինէին , երբ Ռուսք իրենց ազատարարները կ'ողջունէին կեցցէն գոչելով։ Ժամանակ մը այսպէս անցաւ։ Աղմուկին ծայրն քիչ քիչ մօտեցաւ իջեւանին, եւ ռազմամթերից ճամբարին առջեւ փոքր սարահարթին վրայ երեւեցաւ։ Բայց ձիաւորներ էին եկողներն ։ Ռատէցքիի ճարն հատեր էր ուրեմն, որ եկեր միայն հեծելազօր կը ղրկէր Պուլքանոց գահաւանդներուն մէջ Տաճկաց հետեւակազօրուն դէմ դնելու համար ։

Ինչ եւ իցէ՝ այս զօրախումբն կարէր օգտակար եւ նպաստամատոյց լինել ։ Ճամբարին աջակողմն յանկարծ դաշտային թնդանօթ մը կը գետեղուի՝ այն անտառապատ բլրոյն վրայ եղած տաճկական թնդանօթաց դէմ, որոյ գրաւումն ռուսական դրից աջակողմն պատելու կարող եղած էին Թուրքերն ։ Յանկարծ մէկ ակընթարթի մէջ ձիաւոր չմնաց ձիերուն վրայ։ Զօրքն բոլոր վար կ'իջնէ. ռուս հետեւակներու խումբ մը կ'երեւի Տաճկաց գնդակ հասնելու չափ մօտ, կը ցրուի եւ ժայռերուն, մացառներուն եւ ծառերուն ետեւ դարանակալ լինելով, սպիտակ ծխոյ գիսակներ կ'արձակէ ։ Ուրեմն եկողներն ձիաւորներ չէին։ Ո՛չ. արձակամարտից առաջապահներն են ։

Ահաւասիկ ինչ որ եղեր էր ։ Երբ Ռատէցքի Կապրօվայէն ելնելով լերանց մէջ պիտի մտնէր, նորա դէմ բամբեր մ'ելած էր , որ իր փրփրեալ ձին սանձարձակ վազցնելով պառիվայրէն վար կ'իջնէր ։ «Շուտ ըրէք, զօրավարս, գոչեց՝ Ռատէցքին տեսնելով , այլ եւս չեմք կարող դիմանալ. Տաճիկներն ճանապարհը կտրելու վրայ են։» Վայրկեան մը պէտք չէր կորուսանել. բայց Ռատէցքի զօրավարն այսպիսի բաներու համար չփութող մարդ չէր։ Իսկոյն մախաղները վար դնել տուաւ առաջապահ զօրաց, եւ զանոնք մօտը բանակեալ Կազակներու մէկ քանի հեծելադասուց ձիերուն վրայ հեծցուց, որոց վերելակներն կրճին մէջ գնացած էին արդէն։ Ձիոց պահպանութիւն ընելու համար Մնացող Կազակք ջոկատին առաջնորդութիւն ըրին։ Առաջապահ խումբն արշաւասոյր վեր ելան զառիթափներէն, զինուորք իրենց սուիններուն ծայրովը ձիերը կը խթէին աւելի շուտ վազցնելու համար։ Որքան յառաջ գնացին , այնքան շատցան հետզհետէ վիրաւորաց խումբերն, որք իրենց դէմ կ'ելնէին եւ դէպ ի Կապրօվա կ'իջնէին։ Հեռուստ թնդանօթներն զարհուրելի շառաչմամբ կը գոռային եւ արձագանգներն անոնց որոտմունքը կը կրկնէին ։ Մերթ ընդ մերթ՝ թնդանօթաց ձայնն երբ կը լռէր , հրացաններու սաստիկ պարպատիւն մը կը լսուէր . լերանց վրայէն կարելի էր նշմարել սպիտակ ծխոյ վէտ ի վէտ ծածանող լայնասփիւռ ցցունքն։

Ձիերն ոստնլով կ'ընթանան, իբր թէ կը գուշակէին որ գործը վայրկեան մը առաջ հասնիլն էր. մարդոց եռանդն անոնց եւս

կը հաղորդուի, հողմոյ արագութեամբ կը սլանան։ Վերջապէս կը հասնին մինչեւ ճակատատեղւոյն վրայ։ Ռուսաց զօրքն 205 հոգի էին միայն, բայց բանալի մը չափ կ'արժէին։ Անհուն էր այն բարոյական ազդեցութիւնն՝ որ նոցա ժամանելուն վրայ յառաջ եկաւ. Շիփքայի շահատակներն յայնժամ շռայլութեամբ կ'արձակեն իրենց վերջին փամփուշտերն որոց խնայութիւն կ'ընէին ժլատութեամբ մինչեւ այն ժամանակ. Տաճիկներն կը կարծեն թէ բազմաթիւ են հասնող զօրքն, կը զգան որ այն ատեն յաջողութիւնն իրենցմէ խոյս տուած է եւ կը տկարանան։

Ռատէցքի զօրավարն՝ որ անձամբ բերած էր արձակամարտ զօրքը եւ որոյ համար կարելի է ըսել թէ այն աւուր փրկութեան պատճառն ինքն եղած է, ճանապարհին վրայ յառաջ կը խաղայ իւր պայակուտին գլուխն անցնելով, եւ Տաճկաց արձակամարտներն արհամարհելով միւս երկու զօրավարաց քով կը հասնի բլրոյն վրայ՝ առաջին դրից մարտկոցներուն մօտ։ Իբրեւ երիցագոյն եւ աստիճանաւ բարձրագոյն՝ անմիջապէս հրամանատարութիւն ինքն կը ստանձնէ, եւ Սթօլէթով զօրավարին տեղը կ'անցնի՝ նորա ռազմագիտական լաւ կարգադրութեանցն եւ ըրած կորովի պաշտպանութեանն համար խնդակցութիւն յայտնելէն յետոյ։

Ձախակողմն՝ Շիփքայի պահակագունդն յաջողեր էր Սիւլէյման փաշայի յարձակող բանակը յետս մղելու, բայց աջակողման կացութիւնն խիստ վտանգաւոր էր։ Տաճիկ զօրաց ամբոխներ համախմբեալ էին սարի մը վրայ, որ Պէտէք լերան դիմացն է եւ 800 մէթրի չափ հեռի է այն լեռնէն, ուրկէ բաժնուած է խորափիտ եւ դժուարուտ հեղեղատով մը. անտի հանապազ կըսպառնային ռուսական դրից ետեւն անցնելու։

Հարկ էր այն տեղ կռուիլ անցքը բոլորովին վտանգէ ազատ ընելու համար։ Ռատէցքի զօրավարն անմիջապէս իւր ընկերքն հասկանալով՝ դէպ ի նոյն լեռը ղրկեց Ռուսաց զօրաց 16րդ վաշտին երեք գասակներն՝ որ նոր հասեր էին։ Պարկէններէն արձակուած կրակը տակաւին կէս ժամու չափ տեւեց, մինչեւ որ այն գասակներն լերան վրայ հասնելով՝ Տաճկաց դէմ կողմնակի խուժեցին, որք Ռուսաց զօրաց այս անվեհեր յարձակմանէն խառն ի խուռն լինելով շտապաւ նահանջեցին։ Յայնժամ անհնարին եղաւ առհասարակ զօրաց աշխոյժը զսպել. արտաքին պարկէններուն մէջ գտնուող զինուորք եւս յառաջ նետուեցան հ՛ուռռա գոչելով։ Հազիւ հազ կարելի կը լինէր զիրենք կասեցնել այն առաջին լերան վրայ, ինչպէս եւ հարկ էր, վասն զի իրենց այս աշխոյժն անօգուտ էր, քանի որ գիշերը կը մօտենար եւ Տաճիկներն նահանջեր էին երկրորդ բարձրաւանդակին վրայ։

Երեկոյեան ութերորդ ժամուն կատարեալ անդորրութիւն տիրեց, եւ երեք օրէ ի վեր առաջին անգամ՝ հրացանից եւ թընդանօթաց կրակը բոլորովին դադրեցաւ։

Այս արիւնառուշտ կռուին աղէտաբեր եղած էր Սիւլէյման փաշայի բանակին համար որ 7 կամ 8,000 մարդ կորոյս։ Ռուսաց կողմանէ եւս 2,000 ի չափ մարդ անկաւ, այսինքն իրենց կիսոյն չափ։ Պէտէք լերան պաշտպանութեանն համար հետըզհետէ ղրկուած զօրքէն 150 հոգի միայն մնաց անվէրք։

## ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻՆ ՎԵՐՋԻՆ ԵՐԵՔ ՕՐԵՐՆ

Ռուսաց զօրաց սահն գիշերային հասաւ, եւ հետեւեալ օրն առաւօտուն կանուխ, ռազմամթերից եւ պարենից առաքումն սկսաւ եւ այնուհետեւ շարունակեց անդադար։ Թռնօվայէն մինչեւ Կապրօվա տարածուած երկիրն խեղճ անոփլ ունեցող ճամբարի մը կը նմանէր, եւ ճանապարհը խափանեալ էր Գըզանլըգէն եւ Պալքանաց հարաւային կողմէն փախչող ընտանեաց անընդհատ շարիւք։ Ռուսին

վերստին սկսաւ օգոստոսի 24ին ։

Այն օր ճախակողման եւ հարաւային ճակատուն վրայ եղած կռիւներն երկրորդական կարեւորութիւն միայն ունէին ։ Կէս աւուր մօտ Սիւլէյման փաշա յարձակելու սկսաւ Սվէթի-Նիքօլա լերան դիմացէն, սակայն անբաւական զօրօք եւ առանց յաջողութեան. փոքրիկ մարտկոցին ժայռերը ընտրեց իրեն յարձակման նպատակ ։ Թօլթօյ կոման ճանապարհին երկայնութեանն եղած պարկէններուն մէջ դրկեց իսկոյն Պրիանսքի գումարտակին դասակն, եւ ժայռերուն վրայ դրկեց Օրէլի գումարտակին 4րդ դասակն, երկու ուրիշ դասակներ եւս իրենց օգնական տալով ։ Տաճկաց ամբողջ մէկ վաշտն՝ որոյ կ՚օգնէին երկու ուրիշ վաշտեր եւս, դաշտուաւ ժայռերուն վրայ, եւ սաստիկ կըրակի մը ներքեւէն հասաւ մինչեւ անոնց գագաթն, ուր Ռուսք սուինով ընդունելութիւն ըրին իրենց կորովաբար . այս վաշտն մեծաւ մասամբ ջնջուեցաւ եւ մնացորդներն նահանջեցին սաստիկ կրակի մը ներքեւ ։ Նոյն պահուն որսորդ զօրաց 13րդ վաշտն Տաճկաց աջակողմն գտնուող պատնէշներուն վրայ կը յարձակէր, ուրկէ Թուրքերն Ռուսաց ճախակողմը կը վտանգէին, եւ կը վանէր զանոնք բուռն զօրութեամբ ։

Սոյն աւուր կռուոյն հետաքրքրական տեղն աջակողմն էր ։ Տաճիկներն Սայգըրըճէպէլի երեք բարձրաւանդակները կը գրաւէին եւ Ռուսաց կողմնական խումբը սաստիկ կը նեղէին ։ Այն բարձրաւանդակներէն մին՝ որ Պէտէք լերան դիմացն էր, եթէ Տաճկաց ձեռքը մնար, հանապազ վտանգ կար Ռուսաց Կապրօվայի հետ ունեցած հաղորդակցութեանցն . որսորդ զօրաց 16րդ վաշտէն, Պըրիանսքի գումարտակին 11րդ դասակէն եւ արձակամարտ զօրաց 14րդ վաշտին երկու դասակներէն բաղկացեալ ջոկատ մը յանձնուեցաւ Տաճիկները վանել անտի, եւ կռիւն առաւօտուն կանուխ սկսաւ նոյն դիրք շուրջն եղած անտառներուն մէջ ։ Իններորդ ժամուն՝ Տրակօմիրով զօրավարն հասաւ Ժիթօմիրի գումարտակաւն, որ երկու օրէ ի վեր ճանապարհ կ՚ընէր ։ Փօտօլիոյ գումարտակն եւս՝ որ միեւնոյն առհին կը վերաբերէր, հասաւ փոքր ինչ յետոյ ։ Տրակօմիրով ջոկատ մը կացոյց Իջեվանին մօտ ի պահեստի, եւ յառաջեց դէպ ի տաճկական պատնէշն ։ Տաճկաց գնտակներն ճանապարհին այս կողմերն կը կոծէին եւ Ժիթօմիրի գումարտակն մեծ կորուստ կրեց անդ ։ Բարձրաւանդակին վրայ պատսպարուելու տեղ անգամ չգտաւ, եւ պատնէշին պարկէններուն մէջ ընկողմանելու պարտաւորեցաւ՝ սպասելով պէտք եղած ժամանակ կանչուելու ։

Ռատէցքի զօրավարն բլրոյն գագաթանին վրայ կը գտնուէր իւր սպայակոյտին հետ, եւ ճակատամարտին յեղափոխ արկածները կը դիտէր ։ Տրակօմիրով անոր քով գնաց ։ Երկու զօրավարք միաբանութեամբ որոշեցին իրենց ընելիքն, եւ Ժիթօմիրի երկրորդ վաշտն եւս կռուոյն մասնակցելու դրկուեցաւ, վասն զի Տաճիկները բազմաթիւ կ՚երեւէին եւ դէմ կը դնէին իրենց վրայ յարձակող ջոկատին ։ Նոյն միջոցին Տրակօմիրով զօրավարն՝ որ դիրքը զննելու երթալէ յետոյ՝ դարձեր եւ ձիէն վար իջեր էր ծնկէն վեր, վիրաւորեցաւ՝ ինչպէս նաեւ իր քով գտնուող Մալցով հարիւրապետն միեւնոյն գնտակաւ ։

Կռուոյն ներկայ գտնուիլ չկարենալուն վրայ Տրակօմիրով զօրավարին զգացած դառնութիւնն ամոքեցաւ՝ քիչ ժամանակէն փոխ-զօրապետի աստիճանն ընդունելով ։

Ժիթօմիրի վաշտն անտառին մէջ դաշտուաւ ։ Տաճիկներն ընկրկեցան եւ իրենց խնդանօթներն առաջին բարձրաւանդակէն ետ քաշեցին ։ Այն ժամանակ Ռատէցքի զօրավարն անձամբ առաջնորդեց երեք դասակներուն եւ Ռուսք բարձրաւանդակին տիրեցին՝ սուինով սաստկա-

կռիւ մ'ընելէ յետոյ։ Տաճիկներն ի զուր ջանացին նոյն դիրքը վերստին գրաւել, եւ այն աւուր մարտն վերջացաւ Փոտոլիոյ գումարտակին մէկ անօգուտ յարձակմամբն ընդդէմ միւս դրից, զորս Տաճիկներն ունէին Այգըրը-Ճէպէլի վրայ։

Գիշերն Մինսքի եւ Վօլհինիոյ գումարտակներն եւս հասան, որով Շիփքայի կրճին պահակաց թիւն 20,000 հոգիէ աւելի եղաւ։ Հինգ օրէ ի վեր կռուող պուլղարական լեգէոնին մնացորդքն այն ժամանակ Կապրօվօ իջնելու թոյլտուութիւն առացան իրենց կրած նեղութենէն եւ խոնջութենէն թեթեւանալու եւ կազդուրուելու համար։

Յայնժամ ամենէն սխալողական բանն եղած էր, այն է կացութիւնն վտանգէ զերծ ընել. սակայն տակաւին անցքն ազատ չէր բոլորովին։ Այսպէս յաջողութեամբ աւարտել կռուոյն առաջին երեք օրերուն մէջ պահակագունդն իւր դիրքը պաշտպանելու զբաղեալ էր, եւ իւր կրակին հասած տեղերէն դուրս՝ Տաճկաց շարժմունքն արգիլելու չափ բազմաթիւ չէր։ Տաճիկներն այսու կարող եղած էին Ռուսաց աջակողմն անցնիլ, Պալքանաց Կապրօվայի կողմի զառիթափէն վար իջեր էին, եւ ռուսական տեղեկագրաց մէջ Անտառապատ լեռ ըսուած բարձրաւանդակի մը վրայ եւ ճանապարհին աջ կողմն երեք կարգ պարիկէններ շինած եւ մարտկոց մը կանգնած էին։ Երեւակայելու է խորափիտ հեղեղատ մը. աջակողմեան զառիթափին վրայ ճանապարհն ոլորապտոյտ կ'ընթանայ, եւ ձախակողմեան զառիթափին վրայ՝ 1,400 կամ 1,500 մէթրի չափ հեռի կը բարձրանան Տաճկաց ամրութիւնքն, յորոց՝ ճանապարհին մէկ քանի մասերն Տաճկաց համար կարելի էր երկայնութեանն ռմբակոծել, եւ այսու չափազանց վտանգաւոր կը լինէր այն Ռուսաց համար։ Սոքա սակաւաթիւ լինելով՝ թողած էին որ Տաճիկք այս բանն ընեն։ Մինչեւ որ նոյն ամրութիւններն չքանդուէին, հարկ էր Տաճկաց կրակին ներքեւէն անցնիլ՝ Շիփքան պարենաւորելու եւ այլ եւ այլ շարժումներ ընելու համար, որով մեծ կորուստ պիտի կրէին Ռուսք։ Ամսոյն 23 ին առաւօտուն յայտնի եղաւ այս բանն. գնտակներն ճանապարհին երկու կողմն եղած ժայռերուն դէմ բախելով կը տափանային։ Զինուորք ասդ անդ կ'անկանէին պաշարաբարձ կարաւաններուն մէջ, եւ շատ անգամ գնտակն արձակող հրազինուց ձայնն անգամ չէր լսուեր հեռուստ։ Քօլ Տէրօժինսքի զօրավարն նոյնպէս զարնուեցաւ ոտէն գնտակու մը եւ իբրեւ չանթահար տապաստ անկաւ բառ մ'անգամ չկարենալով արտասանել։

Ռատէցքի զօրավարն Շիփքա հասնելուն պէս խելամուտ եղեր էր՝ թէ հարկ էր անպատճառ Տաճիկներն Անտառապատ լեռնէն վանել, եւ ամսոյն 24ին պատրաստութիւններ տեսաւ կռուոյ համար։ Ժիթօմիրի Յրդ վաշտն Տաճկաց ձախակողմն անցնելու համար յառաջ վարեցաւ. իջաւ մինչեւ Կապրօվայի մօտ, կրկին լեռնէն վեր ելաւ դժուարամատոյց ճանապարհէ մը, եւ ամսոյն 25ին առաւօտուն Տաճկաց պատնէշներուն քով հասաւ։ Սակաւ իկ մի յետոյ հրացաններու սարսափելի շառաչիւն մը յայտնի ըրաւ՝ թէ զինուորք կռուոյ բռնուած էին եւ յարձակումն լիօք սկսեալ էր։ Ամբողջ մէկ քանի ժամ լերանց արձագանգներն հրացաններուն պարպատիւնն եւ թնդանօթաց որոտմունքը կրկնեցին։

Ռուսք կը յառաջէին ըստ եղանակի Հնդկաց՝ ծառոց ետեւ պահուելով, սակայն անրաւական կերպիւ դարանեալ էին, վասն զի իրենց արձակած հրացաններէն յայտնի կը լինէր ներկայութիւննին։ Քիչ ժամանակէն առաջին կերտուածին յիսուն մէթր մնալու չափ մօտեցան, բայց առժամայն անյաղթելի արգելներու հանդիպեցան այն տեղ։ Տաճիկներն՝ ամրականին շուրջն կտրուած ծառերու շեղջակոյտներ բարձրացուցած էին, որոցմէ անկարելի էր անցնիլ։ Ռուսք անտառին ծառոց ետեւ

խմբուելով՝ յանկարծ չեղջակուտին վրայ նետուեցան, բայց սարսափելի կորուստ կրելով յետս մղուեցան. զինուորք խառն ի խուռն շաղապատեալ ճիւղերուն մէջ արգիլուած էին, մինչդեռ Տաճիկներն ի մօտոյ անոնց վրայ կրակ կ'ընէին եւ խոտի պէս կը փռէին։ Միայն քիչ մարդիկ ետ դարձան ամրականին վրայ եղած այս առաջին յարձակմէն. այն տեղ դասակ մը բնաջինջ եղաւ։

Ռատէցքի՝ Ժիթօմիրի վաշտին արձակած հրացաններուն ձայնը լսելուն պէս՝ Լիփինսքի գումապետին հրաման ըրաւ կողմնական խմբին առաջապահներուն ամրականին վրայ յարձակելու, զօրավիգ ունենալով Փօտօլիոյ գումարտակին մէկ վաշտն եւ Պրիանսքի գումարտակին երեք դասակները։

Լիփինսքի գումապետն իւր զօրաց հետեւեալ հրամանները տուաւ յարձակման համար. արձակամարտ զօրաց 14րդ վաշտին երկու դասակներուն պատուիրեց ուղիղ գծով ճանապարհին վրայէն յառաջել եւ ծառոց չեղջակոյտներուն առաջ կանգ առնուլ՝ միահաղոյն հրացանները պարպելու համար, որպէս զի աջակողմէն եւ ձախակողմէն յարձակող խումբերն կրակ ընելու համար իրենց մօտենան։ Ժիթօմիրի գումարտակին վերաբերեալ վաշտին հրաման ըրաւ որսորդ զօրաց աջակողմէն ընթանալ, եւ Փօտօլիոյ գումարտակին վերաբերեալ վաշտին՝ ձախակողմէն խաղալ։ Այս երկու վաշտերն իրենց առաջն արձակամարտներու ստուար շարք մը սփռեցին։

Գլխաւոր հրամանատարն իսկ ձի հեծաւ եւ դէպ ի կռուատեղը գնաց իւր սպայակոյտին մէկ մասին հետ։ Սպայակոյտի գլուխ Տմիթրիեվսքի զօրավարն վաշտ մը գլուխն անցաւ՝ յարձակման միջոցին զօրքը վարելու համար։ Յանկարծ երկաթի գունտ մը իւր ետեւն անկաւ, հողով ծածկեց զինքն, եւ գետին ձգեց մարած։

Ժամէ մը յետոյ՝ զօրքն Անտառապատ լերան ստորոտը հասաւ եւ անդ հանգիստ ընելու համար կանգ առաւ՝ ինչպէս որ որոշուած էր յառաջագոյն։ Վաշտերուն արձակամարտից շղթաներն արդէն լերան զառիթափներէն վեր կ'ելնէին։ Երեք խումբերն մէկ քանի վայրկեան հանգչելէ յետոյ՝ միահաղոյն յարձակեցան։ Այն դիրքը պաշտպանող Վէյսէլ փաշայի սաւն նախ սաստիկ կրակ ըրաւ միայն միջին խմբին վրայ, որ ճանապարհին կը հետեւէր, բայց երբ աջ եւ ձախ կողմերէն յառաջող արձակամարտները տեսաւ, սփռուելով ամեն կողմ հրացան արձակել սկսաւ եւ միջնակէտին վրայ ճանապարհին դէմ կրակը նուազեցուց։ Այն ժամանակ միջին խումբն արշաւակի գնաց մինչեւ ամրութիւններն։

Տաճիկներն առաջին յարձակողաց սակաւաթիւ լինելը տեսնելով՝ դէպ յառաջ խոյացան. բայց երբ Ռուսաց միջին խումբն յառաջուստ եւ Ժիթօմիրի եւ Փօտօլիոյ գումարտակաց երկու վաշտերն աջէն եւ ձախէն սուինով իրենց վրայ արշաւակի խուժեցին, իրենք եւս ի փախուստ դարձան բազմաթիւ մեռեալներ թողլով կռուոյն ասպարէզին վրայ։ Ռուսք այնքան սաստիկ թափով ըրին այս յարձակումն՝ որ Տաճկաց պահեստի զօրքն ինքզինքնին պաշտպանելու անգամ չնայեցան երկրորդ ամրութեան մէջ, որ առաջնոյն ետեւն էր, եւ շտապաւ նահանջեցին հրացաններն ըստ գլխոց ուսերնուն վրայէն պարպելով։

Ռուսք՝ իրենց այս յաջողութենէն յափշտակուելով, փոխանակ կանգ առնլու եւ իրենց կարգերը վերակազմելու՝ Տաճկաց հետամնաց եղան եւ Անտառապատ լերան վրայ սոցա ձեռօք շինուած երրորդ ամրութեանց առջեւ հասան։ Անդ՝ իրենց դէմ անխնայ զօրք գտնելով եւ կասելու ստիպուելով՝ սաստիկ կռիւ մ'ընելու սկսան հրացանով։ Ռատէցքի զօրավարն վերջին բարձրաւանդակը գրաւելու հա-

մար յառաջխաղացութիւնը շարունակելու միջոց չունենալով՝ Վօլհինիոյ գումարտակին 2րդ վաշտը ղրկեց կռուողներուն օգնութեան, եւ միանգամայն հրաման ըրաւ Լիփինսքի գումապետին որ զօրքը քիչ մը ետ քաշէ ։ Տաճկաց ձեռքէն առնուած առաջին կերտուածին մէջ կացոյց Վօլհինիոյ գումարտակին 3րդ վաշտն՝ կայսեր համհարզներէն գումապետ Ատլէրպէրկ կոմսին հրամանատարութեան ներքեւ . միւս զօրաց եւս հրաման եղաւ իրենց տեղերը թողլու ։

Տաճիկներն թոյլ տուին Ռուսաց հանդարտ կերպիւ նահանջելու , յետոյ բազմաթիւ օգնական զօրք հասնելով իրենց քով, յարձակելու սկսան եւ իրենցմէ առնուած պատնէշները վերստին գրաւելու համար սաստիկ կռուոյ մը բռնուեցան ։ Վօլհինիոյ գումարտակին 3րդ վաշտն՝ զօրավիգ ունենալով Պրիանսքի գումարտակէն երկու դասակներ , գիշերն ի բուն դէմ դրաւ անոնց յարձակմանց, բայց գումապետ Ատլէրպէրկ կոմսն՝ իւր քով ունեցած զօրօքն Անտառապատ լերան վրայ տակաւին երկար ժամանակ դիմանալու յոյս չունենալով, զօրավիգ խնդրեց։

Ռատէցքի զօրավարն յարմար չդատեց կողմնակի ջոկատն ստուարացնել, վասն զի Մինսքի գումարտակն միայն մնացած էր ի պահեստի, եւ հարկ էր անխոնջ զօրք անցընել կռուոյ մէջ մտած խմբերէն մէկ քանիներուն տեղ, որք երեք օրէ ի վեր առանց տաք կերակրոյ եւ գրեթէ առանց ջրոյ մնացած էին, վասն որոյ գումապետ Ատլէրպէրկ կոմսին հրամայեց նահանջելու, եւ նա այս հրամանը կատարեց ամսոյն 26ին առաւօտուն՝ տակաւին երկու անգամ Տաճիկներուն յարձակմանցը դէմ դնելէն յետոյ։ Սոքա ահագին կորուստ կրած լինելով՝ հետամուտ չեղան Ռուսաց, եւ Անտառապատ լերան բոլոր ամրութեանց կրկին տիրելով բաւականացան ։

## ԿՌՈՒՈՑՆ ԴԱԴԱՐՈՒՄՆ . — ՇԻՓՔԱՅԻ ՎԻՃԱԿՆ ՕԳՈՍՏՈՍԻ 27ԷՆ ՄԻՆՉԵՒ ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 13Ն

Ամսոյն 27ին եւս Սիւլէյման փաշա առաւօտէն մինչեւ երեկոյ Ռուսաց դիրքն ռմբակոծեց. բայց 28 ին բեռնաբարձ կարաւաններու երկայն շարք մը տեսնուեցաւ, որք զօրաց ստուար խմբերու ուղեկցութեամբ դէպ ի Գըզանլըգ կ'երթային ։ Տաճկաց յանդուգն զօրավարն այլ եւս կռուիլ չուզելով՝ իւր բանակին մնացորդներն ետ կը քաշէր ։ Այնքան արիւնհեղութեամբ գրաւած դիրքը պաշտպանելու համար՝ իւր քով ունեցած արար զօրաց մէկ քանի խումբերն անոնց մէջ թողլով շատացաւ ։ Ռուսաց զօրանատին մէջ մեծ անհանգըստութիւն կը տիրէր . « Շիփքայի անցքին մէջ գործը շատ գէշ է» կ'ըսուէր։ Նիքօլա մեծ դքսին սպայակուտի գլուխ Նէփօքօյչիցքի զօրապետը գործոց վիճակը քննելու համար այն տեղ ղրկուելով՝ հասաւ անդ Տաճկաց նահանջելու պահուն, եւ ապահով լինելով ետ դարձաւ։ Երկու կողմանք իրենց դիրքը պահեցին, եւ օսմանեան ճարտարագէտք Պէրտէք լեռն, Այգըրըր-Ճէպէլն եւ Անտառապատ լեռն ամրացուցին։ Ռուսք այս վերջին դրից՝ իրենց ձեռքը չգտնուելէն ծագած դժուարութեանց առաջքն առին կողմնակի ճանապարհներ շինելով, ուր ցորեկ ժամանակ Տաճկաց կրակէն զերծ մնալու կարող կը լինէին. գիշերն կարէին անվտանգ անցնիլ ճանապարհէն ։

Ռատէցքի զօրավարն՝ երբ զՍիւլէյման վհատեալ տեսաւ, ետ դարձուց այն աւելորդ զօրավիգներն որք կուգային Շիփքայէն Թռնօվա տանող ճանապարհը պահպանելու համար , եթէ անցքն Տաճկաց ձեռքն անցնէր ։ Ետ ղրկեց նաեւ հետեւակազօրաց 2րդ հատուածն եւ 11րդին մէկ ջոկատն , իւր քով պահեց 14րդ հատուածն , 9րդին մէկ մասն , արձակամարտներն, Պուլղարներն եւ հետեւակ Խազախաց ջոկատ մը՝ թնդանօթաձիգ զօրաց մէկ ստուար բաժնիւ հանդերձ , անցքը

պաշտպանելու համար Տաճկաց դէմ ։

Սիւլէյման փաշա, ընդդէմ բացորոշ հրամանաց, այսպէս անմիտ յամառութեամբ ըրած յարձակմունքէն ինչ արդիւնք քաղեր էր. ոչինչ։ Ռուսք անցքը պաշտպանեցին, եւ եթէ Ռատէցքիի զօրավիգ ղրկուելու համար՝ առժամանակ մի իրենց թեւերը տկար մնացին, ոչ Օսման փաշա եւ ոչ Մէհէմմէտ-Ալի օգուտ քաղեցին անկէ, վասն զի առջա հազիւ մէկ քանի օրէն յետոյ յարձակում ըրին, երբ արդէն այն զօրավիգներն իրենց առաջին տեղերը դարձած էին։ Սակայն Սիւլէյման 20,000 մարդ զոհեր էր, եւ գուցէ աւելի ։ Վասն որոյ ստիպուեցաւ խնդրելու որ 20,000 ի չափ զօրք եւս ղրկուի իրեն օգնութեան ։ Այս զօրաւիգներուն մեծ մասն կազմուեցաւ ասիական վաշտերէ, եւ պակասը լըրացնելու համար՝ օսմանեան կառավարութիւնն Կոստանդնուպոլսոյ պահականոցին զինուորական կայաններէն՝ ինչպէս նաեւ ոստիկանութեան կայաններէն՝ ժողովել տուաւ անհրաժեշտ պէտք չեղած մարդիկն, եւ այս նորեկներով չորս վաշտ կազմուեցաւ ։

Օգոստոսի 26էն մինչեւ սեպտեմբերի 13ն՝ յարձակում ընելու դիտաւորութիւն մը ցոյց չտուին Տաճիկներն ։ Կուրքօ զօրավարին ձեռամբ յուլիս ամսոյ մէջ գրաւեալ Էլէնայի, Խային-Բէօյիւ, Թրիաւնայի եւ Շիփքայի անցից տէր մնացին Ռուսք։ Տաճիկներն՝ Կազրօվայի ճանապարհին եւ ռուսական գծից վրայ թնդանօթով եւ հրացանաւ կրակ կ'ընէին միայն ։ Այս կրակն որ նախ աննշան բան մ'էր, սեպտեմբերի 9էն սկսեալ սաստկացաւ ։ Ռուսաց թնդանօթաձիգներն՝ անդրադարձը կը հատուցանէին, բայց հրացանակիրք գործ չէին տեսներ, վասն զի Տաճիկներն անտառներուն մէջ պահուած էին եւ հեռի կը գտնուէին ։

Ռազմամթերից եւ պարէնից փոխադրութիւնն գիշեր ժամանակ միայն կը լինէր. նոյնպէս գիշերային ճարտարագիտական աշխատութիւններ կը լինէին վթարեալ պարկէններն եւ մարտկոցներն նորոգելու համար։ Մէկ օրն 240 հողակուտակներ կը բարձրանային։ Գողուղիներ կը բացուէին Ռէզվի փոխ-գումապետին վերակացութեամբ, որ ճարտարագիտական զօրաց երկու դասակով հասեր էր Շիփքայի կրճին մէջ ։ Առանցմէ զատ ճարտարագիտական զօրաց ուրիշ դասակ մ'եւս Սկիչչէվսքի գումապետին վերակացութեամբ աշխատեցաւ պարկէններ շինելու Թրիաւնայի կրճին եւ Պէտէք լերան մէջ, եւ Կազրօվայի մօտ ամուր կերտուածներ եւ մարտկոցներ կանգնելու ։

Ռուսք Շիփքայի դիրքն օր ըստ օրէ կ'ամրացնէին այսպէս, որով կարելի եղածին չափ զերծ կը մնային Տաճկաց ըստ դիպաց արձակեալ գնտակներէն ։

Օգոստոսի 27էն մինչեւ սեպտեմբերի 13ն՝ Ռուսք Տաճկաց հետ լոկ երկու մանր կռիւներ ունեցան եւ օրը հինգ կամ տասն մարդ միայն կը կորուսանէին։ Տաճիկներն այլ եւս այս կողմն կարեւոր յարձակում մ'ընելու կամք ցոյց չէին տար ։

# Գլուխ Քսանեւեօթներորդ

## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ ՎԻՏԻ ԳԾԻՆ ՎՐԱՅ ՌՈՒՍԱՑ ՓԼԷՎՆԱՅԻ ԴԷՄ ԵՐԿՐՈՐԴ ՅԱՐՁԱԿՄԱՆԷՆ ՄԻՆՉԵՒ ԵՐՐՈՐԴՆ

### ՌՈՒՍԻՈՅ ԵՒ ՌՈՒՄԱՆԻՈՅ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՎԵՐՋՆԱԿԱՆ ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆՆ

*Ըսուած է արդէն թէ ինչպէս Ռումանիա ստիպուեցաւ Ռուսիոյ հետ դաշնակցելու եւ հետեւաբար զինքն Թուրքիոյ հետ միացընող վերջին կապերը խզելու, թէ ինչպէս իւր անկախութիւնն յայտարարեց եւ Ռուսիոյ հետ մարտակից լինելով՝ այս մեծ արարքն նուիրագործելու համար ճիգ թափելու պարտաւորեցաւ ընդ հուպ։ Եւրոպական լրագիրներէն շատեր խծբծեցին նորատի ռումէն ժողովրդեան այս վարմունքն, որ յարմար առիթ մը գտնել կը ջանար՝ ազատութիւն ստանալու եւ ինքզինքն արժանաւոր երեւցնելու համար, իւր արիութիւնն ապացուցանելով եւ արիւն թափելով պատերազմի ասպարիզին վրայ։*

*Կարոլոս իշխանն գործունէութեան կուսակից գտնուողներուն գլուխն անցնելով՝ Ռումէններուն մեծամասնութեան բաղձանացն համեմատ վարուեր էր։ Գործողութեանց բանակն երկու գնդերու բաժնուած էր՝ իւրաքանչիւրն երկու հաստուածէ բաղկացեալ, որք 20,000 մարդոյ համագումար մը կը կազմէին. ասոնցմէ զատ՝ երկրապահ զօրաց բանակէն 20,000 հոգի գումարուեցաւ երկրին պահպանութեան համար, եւ բովանդակ Ռումանիոյ մէջ ինքնին մասնաժողովներ կազմուեցան այս բաժնին պէտք եղած զէնքն եւ հանդերձանքը գնելու համար։*

*Ռումանիացիք որքան եռանդագին փափաք ցոյց կուտային Ռուսաց աջակցելու, այնքան եւս սոքա անյօժար կ'երեւէին յանձնառու լինելու։ Հիւսիսի հսկայական տէրութիւնն նուաստութիւն կը համարէր փոքրիկ իշխանութեան դաշնակցութեանը կարօտիլն, եւ ռումանական բանակին պատերազմի գործակցելու մասին պատուաւոր կարգադրութիւն մ'ընելու համար՝ Կարոլոս իշխանին երկար ժամանակ թափած ճգունքն ի գերեւ ելան ռուսական սպայակոյտին արհամարհոտ դժկամակութեանը դէմ։ Իշխանն կ'ուզէր որ իւր զօրքն ուրոյն գործէ, որպէս զի կարենայ փառք ստանալ. ժպիրհ պատասխան մը տրուեցաւ իրեն՝ ըսուելով թէ անկարելի է իւր զօրաց վրայ վստահիլ, եւ առաջարկուեցաւ ռումէն զինուորներն Ռուսաց կարգերուն մէջ մուծանել, պարզապէս՝ սահեր կազմելով։ Երբ Կարոլոս իշխանն բողոքեց, հարցուեցաւ իրեն թէ արդեօք աւելի կ'ընտրէ իւր զինուորաց իբրեւ բերդապահ եւ համբարապահ զօրք գործածուիլն։*

*Ռուսաց պարտութիւնն Ռումանիացւոց նպաստաւոր եղաւ անոնց հպարտութիւնը ցածուցանելով։ Փլէվնայի առաջին պարտութեններէն յետոյ՝ Ռուսք սկսան հասկանալ թէ որչափ մեծ սխալանք ունեցած էին՝ օսմանեան զօրութեանց գնահատութեանը մէջ, եւ Ռուսիայէն կանչուած զօրավիգներուն գալստեանն սպասել հարկ լինելով՝ շատ բարեբաղդ գտնուեցան որ իրենց ձեռաց ներքեւ ռումանական հաստուած մ'ունէին Նիկոպօլսոյ պահպանութեանն համար։ Բայց իրենց դժկամակութիւնն աւելցաւ, երբ հարկ եղաւ ընել այն բանն զոր մինչեւ ցայնժամ նուաստութիւն մը կը համարէին. Նիքօլա մեծ դուքսն առաջուանէն աւելի տհաճութիւն*

ցոյց տուաւ Կարոլոս իշխանին զօրաց ուրոյն գործելու մասին, եւ պահանջեց որ ռուս սպայից ուղղակի հրամանատարութեան ներքեւ լինին :

Արդէն պատմած եմք թէ ինչպէս Ռուսք իրենց գլխաւորին անպատեհ յամառութեան պատիժը կրեցին։ Նիկոպոլիսը պահպանող ռումանական հատուածն չուզեց յառաջ խաղալ Փլէվնայի դէմ եղած երկրորդ յարձակման ժամանակ, երբ գուցէ յաջողութեան պատճառ կարէր լինել։ Ռուսական բանակին թուոյն անբաւականութիւնն այնքան յայտնի ընող սոյն կռուէն յետոյ՝ որոյ վրայ պակասները լրացընելու պէտքն զգալի եղաւ, Կարոլոս իշխանն այլ եւս խնդրոյն կարգադրութեան յարմար ժամանակն հասած կարծեց եւ ընդհանուր զօրանիստը գընաց պայմանադրութեան մը վրայ բանակցելու համար. բայց տեսաւ որ մտաց մէջ առաջուանէ աւելի դրդուութիւն կար, եւ մեծ դուքսն աւելի դժկամակ էր, պարտաւորեցաւ ետ դառնալ առանց բան մ'ընելու։ Մեծ սխալ մը գործուած լինելն եւ պատերազմը շարունակելու համար բաւական զինուոր չգտնուիլն Եւրոպայի առաջ խոստովանիլ ըսել էր Ռումանիոյ օժանդակութիւնն ընդունիլն. ռուսական սպայակոյտն իւր սխալն առաւել ծանրացուց Կարոլոս իշխանին ուզածը մերժելով՝ փոխանակ հրապարակաւ այնպիսի նախատանաց ենթարկուելու :

Մեծերուն հակառակութիւնն զինուորաց մէջ եւս տարածուեցաւ, եւ ռումանական զօրաց հատուածն՝ որ արդէն Դանուբն անցած եւ Ռուսաց հետ խառնուած էր, նախատակիծ եղաւ անոնց կողմանէ։ Իշխանն՝ որ արդէն տժգոհ էր պայմանադրութեան չյաջողելուն եւ Ռուսաց անակնածաբար վարուելուն համար, պահ մ'ուզեց ծայրայեղ որոշում մ'ընել։ Ծանոյց որ եթէ վերջնական եւ անմիջական կերպիւ չհաստատուին այն պայմաններն որովք կարէր օժանդակութիւն ընծայել, հրաման պիտի տար իւր զօրաց ետ դառնալով Դանուբն անցնելու, եւ այնուհետեւ ամենախիստ չէզոքութիւն մը պահելու,

Այս բաները կը լինէին ճիշդ այն պահուն յորում Սիւլէյման փաշա իւր առաջին յարձակմունքը կ'ընէր Շիփքայի վրայ. Մէհէմէտ Ալի յարձակողական շարժում մը ցոյց կուտար, եւ մէկ քանի նշաններէ յայտնի կը լինէր թէ Օսման փաշա եւս պիտի յարձակէր. այլ եւ այլ կէտերու վրայ բազմաթիւ զօրք համախմբել պէտք լինելով, ռուսական գծերն զինուորաց անօսր շարիւք միայն ձեւացած էին եւ երկիւղ կար որ կերպասի պէս ամեն կողմանէ կը խզուէին եւ կը բացուէին. Ռուսաց համար երբէք այնչափ զօրաց պէտք տեսնուած չէր եւ զօրավիգներն տակաւին նոր կը հասնէին։ Ռուսական գոռոզութիւնն զիջաւ. Կարոլոս իշխանին ուզածն եղաւ ; ռումանական բանակն իրեն յատուկ զօրախաւորներ պիտի ունենար եւ կատարելապէս անկախ կերպիւ պիտի շարժէր, միայն թէ այդ շարժմունքն ռուսական բանակին հետ համաձայնութեամբ պիտի ընէր :

Ռումանիոյ մէջ պատրաստ 30,000 մարդոց հրաման տրուեցաւ իսկոյն որ պատրաստուին Դանուբն անցնելու։ Այս գործողութեան համար ընտրուած կէտն էր Քորապիա, որ Նիկոպոլսէն 20 հազարամէթր հեռի է դէպ ի վեր։ Օգոստոսի 24ին Գէորգ Անկէլէսքու զօրավարին հրամանատարութեան ներքեւ երրորդ հատուածին 1 ին սահին զինուորներն նաւակներու մէջ մտան : Սոյն հատուածին հրամանատարն՝ իւր հետ ունենալով զինուորական օժանդակ (եավէր) Ռուստէմանու հարիւրապետն եւ սպայակոյտի գլուխ Մարքուլէսքու փոխ-գնդապետն, ամենէն առաջ անցան հին գետն եւ օսմանեան երկրին վրայ ոտք դրաւ : Զինուորք նաւակներուն մէջ մտնելու ժամանակ՝ հօ՛ռաաա, կեցցէ՛ Ռումանիա կը գոչէին :

Թէեւ շրջակայից մէջ Տաճիկ մը չէր

երեւեր, սակայն եւ այնպէս միջոցներ ձեռք առնուեցան իսկոյն՝ գետէն նոր անցնող զօրաց պաշտպանութեան համար։ Կէս֊գիշերոյն մօտ՝ վաթսնի չափ պաշը-պօզուքներ տեսնուեցան մօտերն լուսնոյ լուսով։ Մինչ. նոյն պահուն յառաջակաց պահակներուն քով կը գտնուէր Ռուտչանու հարիւրապետն որ զննութեան էր ելած ։ Քսան եւ մէկ ձիաւորներ հետ առնլով՝ Տաճկաց վրայ կը յարձակի եւ կռիւ մը կըսկսի ։ Հարիւրապետին ձին վիրաւորուելով եւ անկանելով՝ ինքն ատրճանակի հարուածով սպաննած մէկ պաշը-պօզուքին ձիուն վրայ կ'ոստնու եւ կռիւը կը շարունակէ։ Քիչ ժամանակէն պաշը-պօզուքներն սկսան ընկրկիլ եւ վերջապէս փախուստ տալ ։

Ամսոյն 25 ին՝ ռումանական բանակին ճարտարագիտական զօրքն կամուրջ մը շինել սկսան։ Այս մասին իրենց համար օգտակար եղան այն երկու կղզեակներն կամ աւազակոյտքն որ գետին մէջ կը գտնուին Սէլիսթօրի եւ Քօրապիայի միջեւ։ Ռումանական գիւղին մօտ եղած կղզեկին եւ գետափին միջեւ յենարաններու կամ փայտատանց վրայ կամուրջ մը հաստատուեցաւ։ Դանուբի այն երկու մեծ ճիւղերուն վրայ եւս, որոց մին՝ առաջին եւ երկրորդ կղզեկաց եւ միւսն՝ այս վերջնոյն եւ պուլղարական գիւղին մէջ տեղէն կ'անցնի, շինուեցան կամուրջներ 120 նաւակներով։ Սէլիսթօրէն մինչեւ Մակուրա ձգեալ գծին ամբողջ երկայնութիւնն 1,400 մէթր էր, եւ նաւակներու վրայ շինուած երկու մեծ կամրջաց երկայնութիւնն 800 մէթր ։

Այս աշխատութեանց միջոցին Տաճիկներն բնաւ Ռումանիացւոց անհանգստութիւն չպատճառեցին ։ Օսման փաշա Վիտինէն մինչեւ Փլէվնա խաղացած ժամանակ՝ Արապ-Փալանգայի, Լոմ-Փալանգայի, Ծիպրո-Փալանգայի եւ Րահօվայի մէջ ցրուեալ պահակ զօրքն առեր էր, այնպէս որ սահմանապահ զօրքէն զատ՝ Դանուբի վրայ զինուոր չէր մնացած Ռումանիացւոց անցքը խափանելու համար ։

Կամրջին շինութիւնն լրացաւ ամսոյն 27-28 լուսնալու գիշերն, եւ Կարոլոս իշխանն իւր շքեղ սպայակոյտին հետ առաւօտուն հասաւ զօրաց անցքը վերադիտելու համար։ Երբ առաջին զօրախումբք մօտեցան, Պ. Պրաթիանօ յառաջ գնաց անոնց քով, եւ յանպատրաստից ճառասացութիւն մ'ընելու չափ ռումաներէն խօսելու անկարող գտնուող վեհապետին փոխանորդելով եռանդագին բանախօսութիւն մ'ըրաւ, որոյ ի պատասխանի՝ ահագին աղաղակ մը լսելի եղաւ, Տրայէսգա Ռօմանիա, կեցցէ Ռումանիա, եւ Տաճկաց երկիրը մտաւ ռումանական բանակն ։

Ամսոյն 30 ին՝ ամբողջ անցած էր այս բանակն, եւ իւր չորս հատուածներն Փլէվնայի դէմ գործող ռուսական բանակին աջակողմը գնացին։ Երկու բանակաց իրարու քով գալուն վրայ՝ անհետ եղան այն մէկ քանի անհիմն կարծիքն զոր միմեանց վրայ ունէին։ Ռուս սպայից զարմանք պատճառեցին ռումանական գումարտակաց գեղեցիկ պնդակազմութիւնն եւ մանաւանդ Տօրօբանցներուն զուարթութիւնն ։

## ՓԼԷՎՆԱՑԻ ՇՈՒՐՋՆ

Ռումանիացւոց գործակցութեան մասին եղած վերջնական կարգադրութիւնն՝ Շիփքայի դէմ Սիւլէյման փաշայի ըրած յարձակման հետեւութիւնն լինելով, տաճիկ զօրավարին ընդունայն ջանից վրայ խօսելէ անմիջապէս յետոյ՝ այն կարգադրութեան մասին եւս մէկ քանի խօսք ընել հարկ եղաւ. այժմ վերստին ձեռք առնլու է Փլէվնայի շուրջն եղած գործողութեանց պատմութիւնն՝ սկսելով մինչ. այն կէտէն ուր ընդհատեցինք ։

Ըսուեցաւ որ յուլիս 30ի ահեղ ճակատամարտէն յետոյ՝ Տաճիկներն հետամուտ եղած չէին խառն ի խուռն նահանջող Ռուսաց, որոց անբաւական թուով պահեստի զօրքն հազիւ նահանջը պաշտպա-

նելու կարող էր ։ Տաճիկներն եթէ յառաջէին, ռուսական բանակին կազմածոց մեծագոյն մասը պիտի գրաւէին, եւ յառաջակաց դրից նոր գծի մը պիտի ստիպէին։ Սակայն չըրին այս բանն. ոմանք ասոր պատճառը խոհեմութեան կ'ընծայեն, եւ ոմք՝ անհմտութեան։ Մէկ քանի օրէն յետոյ՝ 4րդ գնդին հրամանատար Զօթով զօրավարն հետեւակազօրաց 16րդ հատուածին հետ հասաւ, եւ Շախովսքոյ իւր սահն հետ առնլով՝ դարձաւ Բօզարէվլոց գնաց՝ Օսման-Փազարի առջեւ իւր նախկին դրից մէջ ։ Ուրեմն՝ Փլէվնայի առջեւ ռուսական երկու բանակագունդ կար, այսինքն 4րդն՝ որոյ կարգերն ամբողջ էին . եւ 9րդն՝ որոյ քով իբրեւ զօրավիգ հասան 8,000 հոգի պակասները լրացնելու համար ։ Այս երկու գունդք միանալով բանակ մը կազմեցին, որ Արեւմտեան բանակ կոչուեցաւ եւ հրամանատարութիւնն յանձնուեցաւ Զօթով զօրավարին, որ ռուս զօրավարաց շատերուն պէս՝ արքունեաց սպայ մ'էր, բայց իրեն եղած պատուոյն արժանաւոր ցոյց տուաւ ինքզինքը։ Աչքէ ելած Քրիւտնէրն 9րդ գնդին հրամանատարութիւնն ստանձնեց վերստին, եւ Քռիլով զօրավարն 4րդին գլուխ անուանեցաւ Զօթովին տեղ։ 9րդ գունդն աջակողմն էր, եւ իւր զօրանիստն էր Պօրադամ-Պուլկարսքի ։ Ռումանիական 4րդ հատուածն՝ որ Վիտ գետին քովէն յառաջեր էր, ծայրի ձախակողմեան խումբը կը կազմէր, եւ իւր զօրանիստն էր Պրէսլիանիցա, բայց մինչեւ որ Կարօլոս իշխանին եւ Նիքօլա մեծ դքսին միջեւ եղած անհամաձայնութիւնը չվերջացաւ, անհնար եղաւ զայն իբրեւ գործակից համարել. 4րդ գունդն՝ որոյ դիրքը մինչեւ Պօկօթ կը տարածուէր, ձախակողմը կը գտնուէր եւ իւր զօրանիստն էր Փօրատին։ Հեծելազօրաց երկու հատուածներ, այսինքն 9րդն եւ 14րդն ռուսական այս բանակը կ'ամբողջացնէին ։

Երկու հակառակորդք ամսոյ մը չափ իրենց տեղերը մնացին դէմ առ դէմ։ Ռուսք՝ այսչափ ժամանակի մէջ ընդարձակ պատնիշափակ ճամբար մը հաստատելու աշխատեցան ընդդէմ այն ճամբարին զոր Օսման փաշա փառաւոր կերպիւ պաշտպանած էր։ Ամրականի առջեւ ամրական կանգնեցին եւ պարիսպի դէմ պարիսպ բացին՝ գործողութեանց ամուր խարիսխ մը ունենալու եւ վերստին ենթակայ չըլլալու համար այն ձախողութեան որ անվրէպ պիտի պատահէր յուլիսի 30 ին, եթէ Տաճիկք իրենց հետամուտ լինէին ։ Փլէվնայի երկու փորձերէն առաջ, ռուսական բանակին մէջ խիստ բազմաթիւ խումբ մը կը գտնուէր, որ պարիսպներ շինելու դրութիւնը կը պարսաւէր բոլորովին։ «Վատերուն համար միայն, կ'ըսէին սպայք, լաւ են անոնք։» Սակայն այս կարծիքը շուտով փոխուեցաւ, երբ Տաճիկներն ոգանչելի կերպիւ օգուտ քաղեցին անոնց շինութենէն, եւ Ռուսք եւս փոյթ ունեցան Փլէվնայի շուրջն խիտ առ խիտ պարիսպներ բանալու ։ Տաճիկներն այս ամրութիւնները զննելու քան թէ քանդելու համար մէկ քանի անգամ Փլէվնայէն դուրս աննշան յարձակումներ ըրին յետոյ՝ ուրիշ նեղութիւն չտուին անոնց շինութեան ժամանակ ։

Սքօպէլեվ զօրավարն՝ իւր Չէրքէզներու հռչակաւոր սահէն եւ ուրիշ ամեն տեսակ զօրքէ բաղկացեալ խմբիւ մը՝ որք այլ եւ այլ գնդերէ անջատեալ էին, Փօրատինի եւ Սէրվիի մէջ տեղ էր՝ հաղորդակցութիւններն հաստատ պահելու համար Զօթովի եւ Սվիաթօփոլք-Միրսքի զօրավարին միջեւ, որոյ զօրանիստն էր Սէրվի քաղաքն։ Սքօպէլեվ զօրավարին պաշտօնն էր Արեւմտեան բանակին ձախակողմը լրտեսել, եւ մանաւորապէս Լօվչայի կողմը եղած բաները զննել։ Կարելի է յիշել թէ յուլիս 30ի ճակատամարտին ժամանակ՝ Շախովսքոյ իշխանին ամենէն աւելի երկիւղ ազդող բաներէն մէկն այս էր որ նոյն քաղաքին մէջ իբրեւ պահակ սպասող Տաճիկներն իւր վրայ չյարձակէին յետուստ ․

Փլէվնայի դէմ անհնար էր ապահովու-
թեամբ գործելու փորձ մ'ընել, քանի որ
Տաճիկներն այն տեղը միայն, ուրկէ կա-

համար՝ օգոստոսի 4ին ճանապարհ ելաւ
իր սահմանէն, հետեւակազօրաց հինգ վաշ-
տերով եւ հաստարանի վրայ ագուցեալ



ՄԵԾ ԴՈՒՔՍՆ ՆԻՔՕԼԱ ՆԻՔՕԼԱՅԷՎԻՉ, ՈՐԴԻ ԸՆԴՀ. ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻՆ

րող էին յարձակողաց վրայ խուժել յե-
տուստ։

Սքօպէլեվ այն բերդաքաղաքը զննելու

թնդանօթաց երկու չորսերով՝ Ամսոյն 5ին
մօտեցաւ Լօվչայի, եւ իր զօրքը սփռեց
Փլէվնայի ճանապարհէն մինչեւ Սէլվիի ճա-

նապարհն՝ ընդարձակ կիսաբոլոր մը ձեւացընելով, որ կ՚անցնէր Փրէչիքէյա, Սամոցան, Փավլիքան եւ Ջօմէր-քէօյի բռնած գիծերէն։ Թնդանօթաձիգներն կեդրոնը շարուեցան, եւ օգոստոսի 6ին արեւը ծագելու ժամանակ՝ Լօվացէն հազիւ մէկ հազարամէթր հեռի եղած բարձրաւանդակաց վրայէն տասն եւ վեց թնդանօթներով կրակ ընել սկսան։

Սքօպէլեվ զօրավարն թնդանօթաշարից մօտը զետեղուեցաւ դիտելու համար, ուրկէ դիտակով մը կարող էր զննել Տաճկաց բովանդակ դիրքն միահաղոյն։ Քաղաքին եւ շրջակայից մէջ բանակեալ էին 12 կամ 15,000 մարդիկ. մօտի բլուրք պարկէններով ամրացած էին.

Սքօպէլեվ կարաց մինչեւ տասն երկու թնդանօթ հաշուել, որք տաճկական դրից յառաջակողմն զետեղեալ էին։ Ճշդիւ խօսելով՝ Ռուսք սոյն զննութեան նպատակին հասած էին քանի որ այս բաներն դիտած էին. Տաճկաց զօրքը տեսած՝ վաշտերն համրած՝ ամրականները նշմարած՝ թնդանօթաց թիւը ճշդած եւ պարկէնից ուղղութիւնն որոշած էին։ Կը մնար հասկնալ թէ Տաճիկներն որքան պատրաստութիւն ունէին կռուոյ համար։

Մէկ քանի անգամ թնդանօթ արձակուելէն յետոյ՝ արդէն եւս անդրադարձութիւն ըրին եւ յայտնի եղաւ որ Տաճկաց թնդանօթաձիգներն խիստ լաւ նշան կ՚առնուին. բայց տեղեաց հանգամանքն՝ ուր ռումբք խորամուխ կը լինէին, արգելք էր ռմբարձակաց՝ եթէ ոչ պայթելուն, դէթ ծանր վնաս պատճառելուն։ Թնդանօթներուն առջեւ շարուած ռուս հետեւակազօրք յառաջեցին ճիշդ այն պահուն յորում առաջին անգամ թնդանօթներն արձակուեցան։ Այն բարձրաւանդակաց վրայէն սկսեալ ուր զետեղեալ էին Ռուսաց գնդընկէց անօթներն, ճանապարհն նեղ խոռոչի մը մէջէ կ՚իջնէր, որոյ երկու կողմերն ծառեր եւ մացառներ կային, եւ ուղիղ գծով կ՚երթար դէպ ի Սէրվիի ճանապարհին մօտ եղած սեպացեալ բլուրն, որ Տաճկաց պարկէններովն ամրացեալ էր։ Երբ Տաճիկներն տեսան ռուս հետեւակազօրաց այն ճանապարհէն յառաջելն, սաստիկ կրակ մ՚ընել սկսան։ Սակաւիկ մի յետոյ մեծ գոռում մը լսուեցաւ. ռուս հետեւակազօրք բլրոյն մօտ հասած էին։ Սոքա զառիթափէն վեր ելնել սկսան՝ երկու երեք հոգիէ բաղկացեալ խմբակներու բաժնուած, կարելի եղածին չափ մացառներուն ետեւ եւ տեղեաց ելեւէջներուն մէջ պահուելով։ Գործը ճշմարիտ յարձակման մը կերպարանքն առնուլ կըսկսէր. Թուրքերուն ըրած կրակէն դիւրին էր հասկնալ թէ եռապատիկ առաւել թուով էին, եւ զայթ տուողներուն դէմ դնելու պատրաստ. այսպիսի պարագայից մէջ յիմարութիւն էր իրօք յարձակում ընել։ Սքօպէլեվ առանց հոգ ընելու որ տաճիկ արձակամարտք կարէին իր սպիտակ համազգեստն լաւ կերպիւ նշաւակ մ՚ընել իրենց, յառաջ նետուեցաւ իր զինուորներն կազմելու համար եւ ի նշան նահանջելու փող զարնել տուաւ։ Սոյն տեղազննութեան մէջ ինչ որ կարելի էր հասկնալ՝ գիտէին զայն Ռուսք, եւ բոլորովին անօգուտ էր մարդ կորուսանել այնպիսի յարձակում մ՚ընելով որ չը պիտի յաջողէր։ Ռուս հետեւակներն այն գծին վրայէն ուրկէ յառաջ գնացած էին, ակամայ ետ քաշուեցան Տաճկաց կրակին ներքեւ, որ շատ վնասակար եւս չէր, վասն զի հազիւ հինգ մարդ տապաստ անկաւ եւ քսան հոգի վիրաւորեցաւ։

Ռուս զօրավարն չէր ուզեր դիմագրաւութեամբ Տաճկաց ամուր դրից վրայ գնալ. սակայն եթէ պարագայներն յաջողութեան հաւանականութիւն մ՚ընծայէին, անոնց հետ ոգորելու չպիտի վարանէր։ Վասն որոյ երեկոյին գնաց բանակեցաւ վտանգաւոր դրից մէջ, որպէս զի Տաճիկներն կամենան իր վրայ յարձակիլ։ Ռուս զօրաց այն թեւն՝ որ հեծելազօրէ բաղկացեալ էր, Սէրվիի ճանապարհին ձախա-

կողմը կը գտնուէր՝ Լօվացէն գրեթէ չորս մղոն հեռի։ Բան մը կար որ Տաճկաց համար հրապուրիչ կ'ընէր այն դիրքին գրաւումն. Լօվացէն սկսեալ երեք ճանապարհներ Սէրվիի ճանապարհին հետ կը կցուէին Ռուսաց ետեւ եւ անոնցմէ գրեթէ երեք մղոն հեռի, այնպէս որ խիստ բնական բան մ'էր Տաճկաց համար ելնել անոնց Սէրվիի հետ ունեցած հաղորդակցութիւնն ընդհատել աջակողմէն կամ ձախակողմէն՝ կամ միանգամայն երկու կողմանէ անոնց ետեւէն անցնելով։ Ամսոյն 7 ին առաւօտուն՝ խօսք այնպէս կը թուէր թէ Թուրքերն կը պատրաստուէին ձեռնարկութիւն մ'ընելու։ Լրտեսք ծանուցին որ Տաճկաց ստուար ջոկատ մը Փլէվնայի ճանապարհին վրայ կը յառաջէր։ Ընդհուպ ցոյց մ'եղաւ Ռուսաց աջ թեւին դէմ, եւ Թուրքերուն դէմ ղրկուեցաւ Օռլով գնդապետն՝ Խաղախաց մէկ հեծելադասով եւ միջակազօրաց երկու հեծելադասերով։ Օռլով գնդապետն երկու ժամէն յետոյ իմաց տուաւ թէ Թուրք հետեւակազօրաց եւ ձիաւորաց ստուար խումբ մը զինքն ի մօտոյ կը նեղէր։ Յայտնի կը լինէր թէ Տաճիկներն դիտաւորութիւն ունէին Սքօպէլեվի փոքրիկ գունդը շրջապատել։ Զօրավարն յարմար չդատեց կռիւ ընել եւ նահանջելու նշան տուաւ։ Հետեւեալ օրն Էօմէր-քէօյիւ կը հասնէր, ուր լաւ դիրքի մէջ կ'ամրանար։

Մէկ քանի օր յետոյ արշաւանք մ'ըրաւ մինչեւ Թրօյան, ուրկէ մեկնած էին Պուլղարներն Տաճկաց պէս։ Ի դարձին կանգ առաւ Գազրինի մէջ՝ Լօվացէն Սէրվի տանող ճանապարհին վրայ, եւ Փլէվնայի կռուէն յետոյ մեծապէս յանդգնող պաշըպօզուգներն այն տեղերէն վանելու նայեցաւ։ Կ'ըսուի թէ թոյլտուութիւն խնդրեց Լօվացի վրայ յարձակելու, բայց մերժուեցաւ։ Ռուսք Փլէվնայի առջեւ իրենց գծերը պաշտպանելու համար ճիշդ պէտք եղածին չափ թուով զօրք ունէին եւ ոչ աւելի, անհնար էր իրենց ջոկատ մը ղրկել դէպ ի Լօվաց, եւ յարձակել առաջ զօրավիգներուն գալստեանը սպասելու խոհական որոշում մ'ըրած էին։ Երբ ռուս զօրաց 9րդ հատուածն, 3րդին 1ին սահն եւ որսորդ. զօրաց 3րդ սահն՝ որք Ռատէցքիի օգնութեան վազած էին դէպ ի Կապրօվա, գործելու ազատ մնացին Սիւլէյման փաշայի նահանջելէն յետոյ, այն ժամանակ միայն Նիքօլա մեծ դուքսն թոյլտուութիւն ըրաւ Լօվացի վրայ յարձակելու. բայց այն յարձակմանէն առաջ նոր ճակատամարտ մը մղուեցաւ Փլէվնայի առջեւ՝ Օսման փաշայի դուրս յարձակելուն վրայ։

---

## ՕՍՄԱՆ ՓԱՇԱ ՕԳՈՍՏՈՍԻ 31ԻՆ ԴՈՒՐՍ ՅԱՐՁԱԿՈՒՄ ՄԸ ԿԸՆԷ. — ՃԱԿԱՏԱՄԱՐՏ ՓԷԼԻՇԱՏԻ

Այս տաճկառուսական տարօրինակ պատերազմին մէջ իւր հաշիւներն հաւանականութեանց վրայ հիմնող անձն շատ սըխալանաց ենթակայ կը լինի. զինուորական արուեստին սկզբնական կանոնաց իսկ հակառակ եղած է այս կռիւն, եւ ընդունելի համարուած բոլոր գիտելեաց անհամաձայն գոլով՝ անոնցմէ կը շեղի։ Եթէ Օսման փաշա յարձակողական շարժում մ'ընել կը մտածէր, ամենէն աւելի հաւաստի երեւցող հաւանականութեանց կարգէն չէ՞ արդեօք՝ կարծել թէ այդ շարժումը պիտի ընէր, երբ այնքան ստիպողական եւ դիւրին բան մ'էր Ռուսաց մէկ մեծ մասն իւր դէմ զբաղեցնելն ի նպաստ Շիփքայի վրայ յարձակողաց։ Ենթադրելով թէ միեւնոյն աւուր մէջ երկու զօրաւոր յարձակումներ լինէին՝ մին Փլէվնայի առաջ եւ միւսն Թագաժառանգ մեծ դքսին զօրաց դէմ, յանդգնութիւն չէ կարծել թէ ընդհանուր զօրանստին մէջ մեծ դժուարութիւններ պիտի ծագէին Ռուսաց դէմ՝ Պալքանաց անցիցը մէջ զօրավիգ ղրկուելու մասին, որով այն անցքն իրենց ձեռքը պահել կարացին տաժանելի մըրձմամբ։ Այնքան ճշմարիտ է այս որ մեծ

ճապայակուտին յարեւալ զօրավարք եւ բարձրաստիճան սպայք այն ժամանակներն իրենց խօսակցութեանց մէջ իբրեւ յուժ հաւանական կը համարէին կրճին պարպուելուն պատահականութիւնն, որոյ գրեթէ անվրէպ հետեւանքը պիտի լինէր Կապրովայի եւ Թանօվայի եւս պարպուիլն ։

Դրական հաշիւներ ընող անձն կը խաբուի ուրեմն այս պարագային մէջ ։ Ըսուած է թէ Շիփքայի առջեւ ինքնակամ գործող Սիւլէյման փաշա ինչպէս անօգնական թողուեցաւ Տաճկաց միւս երկու զօրավարներուն կողմանէ, որ նորա յարձակում ընելուն հաճութիւն չունէին ։ Եթէ հաշուագէտն՝ Օսման փաշայի նախկին ընթացից նայելով՝ նորա տրամադրութիւնքըն իմաստասիրէր, դարձեալ պիտի խաբուէր ։ Օսման փաշա թոյլ տուեր էր Ռուսաց որ ուզածնուն պէս պարիկններ բանան, պատնէշներ կանգնեն եւ ամրականներ շինեն. վասն որոյ կարի հաւանական կը թուէր թէ այն ամրութիւններն շինուելու միջոցին իսկ քանդելու համար բան մը չըրնելէն յետոյ՝ այլ եւս անոնց դէմ ընդհարելու չպիտի ելնէր, քանի որ շինութիւնն աւարտեալ էր եւ անոնք իրենց կատարեալ պաշտպանողական արժէքն ունէին, սակայն եւ այնպէս ընդհարեցաւ ։

Օգոստոսի 31ին՝ Օսման փաշա դուրս յարձակում մ՚ըրաւ, բայց չյաջողեցաւ. ըսաւ թէ Լօվչայը ետ առնելու համար դուրս ելած եւ մեկնած էր 22 վաշտով. բայց ճանապարհին կէսն հասնելուն՝ կը մտածէ թէ թշնամւոյն Լօվչայի վրայ ըրած յարձակումը ցոյց մ՚էր զինքն խաբելու եւ Փլէվնայէն դուրս հանել տալու համար, եւ թէ ռուսական զօրաց ստուար մասն Փլէվնայի վրայ պիտի յարձակի, մինչ ինքն անկէ հեռի գտնուի ։ « Վասն որոյ անյապաղ ետ դարձայ, կ՚ըսէ այս առթիւ ղրկած հեռագրին մէջ. եւ Փլէվնա մտայ, որոյ վրայ արդարեւ յարձակում մ՚եղաւ ընդ հուպ ։ Բայց բնաւ հոգ ընելու չէ . մեր դիրքն այնքան լաւ ամրացեալ է որ կարէ դէմ դնել ամեն յարձակմանց . իմ բանակիս վրայ եւս կարելի է վստահիլ ։ » Սակայն Օսման փաշայի յարձակմանէն երեք օր յետոյ միայն դրաւեցաւ Լօվչայ Ռուսաց ձեռօք ։

Օսման փաշա այն սխալանաց մէջ ինկաւ զոր գործեցին եւ Ռուսք, որոց նախկին բոլոր ձախողութեանց պատճառ եղած էր. իւր յարձակող խմբին քով օգնական զօրք չկացոյց եւ խիստ քիչ մարդ ճակատեցուց ։ Ըրած յարձակումն այնքան սաստիկ եւ անակնկալ էր, որ Փլէվնայի ամենէն աւելի մօտ գտնուող ռուսական ամրութիւնն գրեթէ յեղակարծում առնուեցաւ. բայց այս գրից առումն իրեն համար մեծ կարեւորութիւն մը չպիտի ունենար եթէ Փօրատինի ետեւն եղած գրից վրայ եւս չյարձակէր, զորս Զօթով զօրավարն ամրացուցած էր իբր երկրորդ գիծ ամրութեանց, սակայն այն վայրկենական առաւելութենէն օգուտ քաղելու համար բաւական զօրք յառաջ վարած չէր ։ Փոխանակ 20,000 ի 50,000 հոգւով խուժելու էր, եւ կռուոյ մէջ մնած խմբերուն անբաւականութիւնն պատճառ եղաւ որ յարձակումն ձախող կերպիւ վերջացաւ ։

Ռուսական բանակին մէջ ոչ ոք մտքէն կ՚անցընէր թէ Տաճիկներն իրենց վրայ դարձեալ պիտի տային, երբ յանկարծ օգոստոսի 31 ին առաւօտեան ժամն վեց եւ կէսին լուր առնուեցաւ յառաջապահ խմբերէն՝ թէ յայնկոյս Ռատիշէվօյի կանգնեալ պատնէշներէն ստուար զօրք դուրս կ՚ելնէր մեծ բազմութեամբ ։ Այն կողմէ ռուսական գրից գիծն լաւ չէր՝ պաշտպանութեան մասին ։ Թնդանօթաշարից առջեւ ընդարձակ ասպարէզ չկար ռումբ արձակելու համար, վասն զի անոնց դիմացն եւ Փլէվնայի կողմն բլրոց շարք մը կը ձգուէր մէկ հազարամէթրի չափ տեղւոյ վրայ, որոց ետեւ անտեսանելի կը լինէին Տաճկաց խաղացքը եւ կարէին ուքա ռուսական գրից մօտենալ՝ 1,000 կամ 1,200

մէթր մեալու չափ՝ տանից նշմարուելով կրակի բանուելու։ Ջախակողմի՝ փէյիշտա գիւղին ետեւ դետինը կը բարձրանայ եւ հեղեղատով մը բաժնուած ։ Ջախակողմեան բլրոյն վրայ՝ ուր էր ռուսական դրից մէջնակէտն, 8 թնդանօթներու շար մը կար



ՑԱՐԷՎԻՉ ԱՂԷՔՍԱՆԴՐ ԱՂԷՔՍԱՆԴՐՈՎԻՉ

սարահարթ մը կը ձեւացնէ, որոց վերին կողմն փոքր ինչ որամէտ է ։ Աջակողմն երկու սեպացեալ բլուրներ կը գտնուին խոր հողէ եւ խճէ շինուած բանկալներու (Սէնկէր) ետեւ ։ Ասոնց առջեւ պարկնից շարք մը կար, որոյ հողակոյտքն տերեւներով ծած-

կուած էին, որպէս զի Տաճիկները չտեսնեն։ Հեղեղատին միւս կողմը կը բարձրանայ Չկալէվիցէ գիւղն, որմէ վեր կը գըտնուէին թնդանօթաշար մը եւ երկու պատնէշներ ուղղակողմեան բարձրաւանդակին վրայ կանգնեալ։ Փէլիշատի առջեւի վերոյիշեալ բլրոց շարքին վրայ կիսալուսնի ձեւով փոքր պատնէշ մը շինուած էր, որ Ռուսաց ամենէն աւելի դէպ ի դուրս կարկառեալ դիրքն էր եւ յորում երկու դասակներ կային երկու թնդանօթով։

Չորրորդ դնդին զօրախումբք՝ որոյ վրայ կը թուէր թէ յարձակիլ կ'ուզէին Տաճիկներն, հետեւեալ կերպիւ շարուած էին. կիսալուսին պատնէշէն մէկ հազարամէթրի չափ հեռի դէպ յետկոյս բանակեալ էին Փէլիշատի առջեւ Ուկլիշի եւ Սուզտալի գումարտակներն. Շույայի գումարտակէն երկու վաշտեր՝ ձախակողմեան բլուրը կը գրաւէին Չկալէվիցէի մօտ, եւ Կալիւի գումարտակն աջակողմեան բլուրը կը գրաւէր։ Այսպէս ամրութեանց պաշտպանութեան համար պէտք եղած թուով զօրք միայն կը գտնուէր։

Ռուսաց միջին խմբին վրայ լինելիք յարձակման մը յաջողութիւնն այնքան ստուգելի կը թուէր որ Զօթով զօրավարըն չուզեց հաւատալ թէ Տաճիկներն իրօք այնպիսի դիտաւորութիւն մ'ունէին, եւ կարծեց թէ Օսման փաշա ցոյց մ'ընելով զինքն այստի զբաղեցնէր, մինչդեռ իւր զօրաց ստուար մասամբ ռումենական բանակին դէմ պիտի երթար, որ դեռ եւս Դանուբն անցած էր եւ Իօքէր եւ Վիտ գետակաց մէջ տեղ ուրոյն կը գտնուէր։ Վասն որոյ որոշեց իւր զօրաց վերոյիշեալ շարքը փոխել, մինչեւ որ Տաճկաց դիտաւորութիւնքն յայտնի լինին, եւ իւր պահեստի զօրքն առձեռն պատրաստ բռնել պէտք եղած տեղը ղրկելու համար։ Այս վարմունքն պատճառ եղաւ որ ամրութեանց մէջ գտնուող զօրքն միայն պարտաւորեցաւ առաջին ընդհարման դէմ դնելու։

Սակայն Տաճիկներն յամրաբար կը շարունակէին յառաջ խաղալ։ Իրենց հեծելազօրն՝ որ գրեթէ 2,300 հոգիէ բաղկացեալ էր եւ որում կ'օգնէին թնդանօթաձիգք եւ հետեւակք, անշուշտ չպիտի արգիլուէր ռուս նիզակաւորաց եւ հիւսարաց ձեռօք որք առաջապահ էին։ Սոքա այսպիսի թուոյ անհաւասարութիւն մը տեսնելով՝ չուզեցին կռուիլ, այլ միայն Տաճիկները դիտելով՝ սկսան կատարեալ բարեկարգութեամբ եւ յամր կերպիւ ետ քաշուիլ՝ հիւսարներն Չկալէվիցէի դէպ աջակողմն եւ նիզակաւորք դէպ ի Փէլիշատ։

Տաճկաց հեծելազօրն՝ որ երկու գնդերու բաժնուելով արձակամարտից թանձրախումբ շարք երեւան հաներ էր իւր կեդրոնին վրայ, ութերորդ ժամուն խաղաց բազմութեամբ Ռուսաց երկու թեւերուն դէմ՝ սպառնալով 4րդ գնդին ետեւն անձնիլ երկու կողմանէ։ Միանգամայն սարսափելի հրացանութիւն մը սկսաւ կիսալուսին պատնէշին առաջ. տաճիկ հետեւակազօրաց ստուար խումբեր երեւեցան սարահարթին վերին կողմն եւ յառաջ նետուեցան Ալլահ էլլ' Ալլահ գոչելով, մինչդեռ իրենց թնդանօթներն գագաթին վրայ կը զետեղուէին։ Պատնէշին մէջ եղած երկու դասակներն առաջին յարձակման դէմ դրին, սակայն շուտով ստիպուեցան ետ քաշուիլ, թէ եւ իրենց օգնութեան հասեր էին Սուզտալի գումարտակէն հինգ դասակներ։ Նոր զօրավիգներ հասան, որոց կը նպաստէր թնդանօթաձիգ զօրաց 16րդ սահին երեք թնդանօթաշարից ռմբաձգութիւնն, որով կարելի եղաւ Ռուսաց յարձակիլ Տաճկաց դէմ. Սուզտալի գումարտակն ուժգնութեամբ դարձ տուաւ Տաճկաց վրայ, պատնէշէն վանեց զանոնք եւ հալածեց մինչեւ մէկ հազարամէթրէն աւելի տեղ։ Տաճիկներն ետ քաշուելու ժամանակ ջանացին իրենց հետ տանիլ պատնէշին մէջ մնացած երկու թնդանօթներէն մին, բայց սայլին անիւներէն մէկուն եր-

կաթի գունտ մը գալով կոտրեց, որով ստիպուեցան նոքա թողուլ զայն հարիւր մեթրի չափ տեղ տանելէն յետոյ։

Այս միջանկեալ դէպքէն յետոյ քիչ մը ժամանակ հանդարտութիւն տիրեց, եւ ապա՝ յարձակումն դարձեալ սկսաւ նոր կորովով։ Տաճկաց ամբոխն անդադար ստուարացաւ հետզհետէ եւ իրենց աջակողմեան թեւն Փէլիշատի դիրից ձախակողմն անցաւ։ Տասն եւ վեցերորդ հատուածին հրամանատար Փոմէրանցեւ զօրավարն՝ որ այն կողմը պաշտպանող զօրաց կ'առաջնորդէր, հեռացաւ այն գիւղէն, ուր մտան պաշըպօզուղներն եւ հրդեհեցին։ Ստուար խումբ մը յարձակեցաւ դարձեալ կիսալուսին պատնէշին վրայ, մինչդեռ ուրիշ ջոկատ մը կը ջանար յառաջամուխ լինել նոյն ամուր կերտուածին եւ Զկալէվիցէի դիրից միջեւ, որոյ վրայ թնդանօթաց շարքեր զետեղեց։ Այն ժամանակ Զկալէվիցէի ռուսական թնդանօթաշարք՝ որք նախ բաւական յամր կերպիւ կրակ կ'ընէին տակաւին հեռակոյ խմբից վրայ, արագ արագ հուր տեղալ սկսան։

Իններորդ գնդին եւ ռումանական հատուածին առաջապահք իրենց գտնուած կողմերը Թուրք նշմարած լինելու լուր մը չտալով, եւ 4րդ գնդին դիմաց միայն մեծ զօրութիւն տեսնուելով, թէ այս բանէն եւ թէ Տաճկաց գործողութեանց հանգամանքէն եւ ուղղութենէն յայտնի կը լինէր որ նոցա նպատակն էր Արեւմտեան բանակին ձախակողման վրայ յարձակիլ, այսինքն 4րդ գնդին դրուած դիրից։ Վասն որոյ Զօթով զօրավարն տասներորդ ժամուն միջոցներն հրաման ըրաւ.

1°. 9րդ գնդին 5րդ հատուածին մէկ սահին՝ ուղղակի երթալ դէպ ի Կրիվիցայի արահետն եւ անոր ձախ կողմը սփռիլ Տաճկաց վրայ կողմնակի յարձակելու համար։

2°. 9րդ գնդին ընդհանուր պահեստի զօրքէն երեք գումարտակներու՝ Փորատին-Տէրէսիի աջակողմեան եզերաց վրայ ի պահեստի կալ.

3°. Ռումանական հատուածին՝ համախմբիլ անմիջապէս դէպ ի Զալը-Սուվատ.

4°. Վլատիմիրի հետեւակազօրաց 61րդ գումարտակին՝ որ Զիմնիցայէն մեկնելով 4րդ գնդին քով կ'երթար եւ Գարադաճի մօտենալու վրայ էր՝ սոյն գիւղին մէջ թողուլ իւր աղխերն եւ մախաղներն եւ շտապաւ խաղալ դէպ ի Փորատին։

Կէս օր էր արդէն։ Տաճիկ հետեւակազօրաց հոծ ամբոխքն Զկալէվիցէի եւ Փէլիշատի մէջ տեղ եղած բովանդակ անջրպետը կը ծածկէին, եւ իրենց 40 կամ 50ի չափ թնդանօթներն անդադար կրակ կ'ընէին ռուսական գծին վրայ ծայրէ ի ծայր, ուրկէ թնդանօթաշարք եւ արձակամարտք հաւասար սաստկութեամբ անդրադարձութիւն կ'ընէին։

Կէս օրէն մէկ ժամ յետոյ՝ 20-25,000ի չափ Տաճիկներ սարահարթին վրայ շարուած էին եւ յուսահատական յարձակում մը սկսան ընել՝ միահաղոյն ռուսական կայաններուն դէմ Փէլիշատի պատնէշէն սկսեալ մինչեւ Զկալէվիցէի աջակողմն։ Բլրէն վար իջան արագաքայլ ոչ թէ համախումբ կամ կարգ կարգ, այլ խառն ի խուռն եւ ցիր եւ ցան խմբակներու բաժնուած, որոց վրայ ռուսական թնդանօթներն այլ եւ այլ կողմերէ միահաղոյն կրակ ընելով սարսափելի կոտորած կը պատճառէին։

Տաճիկներն երբ պատնէշին վրայ յարձակեցան, ռուսական հինգ թնդանօթաշարք սկսան լաւ ուղղութեամբ ռմբաձգութիւն ընել եւ Նիզակաւորաց 4րդ գումարտակն եւ Հիւսորաց հեծելագունդ, զորս Քռիլով զօրավարն Տաճկաց աջակողմեան ծայրը ղրկեր էր, դռոյթ տալով վանեցին զայնս. յայնժամ սոքա սկսան յամր կերպիւ նահանջել՝ յետկոյս ձգելով իրենց աջակողման զօրքն, որոց դէմ կը սպառնային Նիզակաւորք եւ Հիւսարք։

Զկալէվիցէի դիրից ձախակողման դէմ եղած յարձակումն միեւնոյն անյաջողութեամբ վերջացաւ. Ռուսք փառաւոր կեր-

ալիւ եւ մղեցին Տաճիկներն՝ չորս Թնդանօթաց ամբաձգութեամբն՝ Նախկին փոխ-հարիւրապետին հրամանատարութեան ներքեւ, որ իւր սրունից մին կորուս, եւ երեք վաշտից կազմեալ՝ զօրս Փօրատինէն Զօթով զօրավարն յառաջ դրկից Թնդանօթաձիգ զօրաց մէկ չորրիւ ; որպէս զի Զիւղէմիցէն պաշտպանող զօրաց օգնէն։

Զիւղէմիցէի դրից միջնակէտին դէմ կորովաբար եղած երրորդ յարձակումն քիչ մնաց որ ալիքի յաջողէր ։ Տաճիկներն վերալիչեալ մնացաւալօղ պարկենից վրայ դասյթ տուին առանց կրակ ընելու եւ մինչեւ պատնիշաց մէջ մտան։ Գուպարումն սարսափելի եղաւ . մէկ վայրկենի մէջ Թնդանօթի մը բոլոր մարդիկն անկան՝ ինչպէս եւ նոցա նպաստելու յառաջացեալ բայլն, երկու հատ մեծաձի Թնդանօթներու կենդանիններն սատակած եղան , հատարան մը եւ անիւ մը խորտակուեցաւ . եւ Տաճիկներն յաղթանակաւ Թնդանօթը տանելու վրայ էին , երբ վերջապէս եւս մղուեցան չորս վաշտից ձեռօք, որք արիաբար նոցա դէմ խուժեցին եւ որոց աքանչելի կերպիւ կը նպաստէին երկու Թնդանօթաչարք . սոքա Տաճկաց ատուար ամբոխները գրեթէ երկաթի կատորներով ծածկեցին ։

Զիւղէմիցէի դրից աջակողմէն շրջան մը ընելու համար Տաճկաց ատուար հեծելախումբ մը Թիւղ կերպիւ փորձ մը փորձեց. սոյն հեծելազօրն այն կողմի բարձունքը ծածկող կաղնեաց անտառակէ մը ելնելու միջոցին՝ Անտրիքոյեվ փոխ-գումապետին հրամանատարութեան ներքեւ գտնուած Մարիուփոլի հետեւորաց երկու հեծելադասուց կողմանէ ժամանակին տեսնուելով՝ երկաթի կատորներով լի ամբարտակաց տարափի մը ներքեւ ծածկուեցաւ եւ խառն ի խուռն ընկրկեցաւ ։

Տաճիկներն իրենց այս անյաջողութեանց եւ մեծ կորուստ կրելնուն չնայելով՝ յետս չկացին յարձակում ընելէ եւ կէս օրէն գրեթէ երեք ժամ յետոյ՝ վերստին կազմեցին իրենց կարգերն եւ խուժեցին մի եւ նոյն կէտերուն վրայ ։ Այլ այս անգամ եւս ետ մղուեցան. ռուսական զօրքն ձեռք բերուած յաջողութենէն եւ իրենց գըլխաւորաց օրինակէն Թելադրեալ՝ ուժգին յարձակողական շարժում մ'ընելու ելան . սակայն կասեցան տաճկական անխոնջ եւ մեծաթիւ զօրախմբից կողմանէ երրորդ անգամ յարձակում մը կրելով , որում կը նպաստէին հեռաձիգ Թնդանօթներ։ Վասն որոյ վերջին անգամ կատարած մը սկսաւ, բայց վայրկեան մը միայն տեւեց. եւ Տաճիկներն նահանջեցին դէպ ի Փլէվնա՝ ժամն չորս եւ կէսին։

Տաճկաց յարձակումն բոլորովին ձախող եղած էր , բայց Ռուսաց յաջողութիւնն կատարելագոյն պիտի լինէր, եթէ հետեւակազօրաց 5րդ հատուածին 1ին սահին հրամանատար զօրավարն անմտութիւն մը չգործէր։ Զօթով զօրավարն Կրիվիցայի արտահետին վրայ դրկեր էր զայն՝ ինչպէս վերը տեսնուեցաւ, Տաճկաց ետեւն անցնելու պաշտօնով, այս բանն կարելի էր երրորդ եւ չորրորդ ժամուն միջոցներն. բայց սահին հրամանատարն անզգուշութեամբ զօրաց մախաղնին հետ առնուլ տուաւ. սաստիկ տաք լինելէն՝ զինուորներն յամր քայլեցին ուժաթափ գալով, պարտաւորեցան երկար ժամանակ դադար առնուլ ճանապարհին վրայ եւ շատ ուշ հասան ճակատամարտին ։

Վասն որոյ արդէն կռուոյ մէջ մտած զօրքըն Տաճկաց հետամուտ լինելու պարտաւորեցաւ։ Բոկլով զօրավարն տեսնելով այս նահանջն՝ իսկոյն անոնց ետեւէն դրկեց երկու գումարտակ եւ երկու վաշտ իրենց Թնդանօթներովն՝ եւ հեծելազօրու այն երկու գումարտակներն զօրս միայն ուժեղ պարտաս ունէր , այսինքն՝ հուսարներն եւ նիզակաւորներն ։ Հետեւակազօրն Տաճիկներն ուժգնութեամբ հալածեց մինչեւ հինգ հազարամէթրի չափ տեղ, մինչդեռ հեծելազօրն ի մօտոյ նեղեց զանոնք՝ մինչեւ Փլէվնայի ամրու-

Թեանց կղզիին ներքեւ եւ մինչեւ գիշեր։

Այս աւուր ճակատամարտին մէջ Տաճկաց կորուստն 3,000 էն աւելի եղաւ. Ռուսք եւս 30 սպայ եւ 945 զինուոր կորուսին։

## ԿՐԿԻՆ ԱՌՈՒՄՆ ԼՕՎԱՑԻ ՑԱՐՁԱԿՄԱՄԲ

Փլեւնայի առջեւ յուլիսի 30ին Ռուսաց կրած նոր ձախողութենէն յետոյ՝ առ հասարակ կարծիք մը կար թէ նոքա այլ եւս յիմարական յարձակումներ չընելով ճակատ առ ճակատ՝ այնպիսի պատնէշներու դէմ որոց ներքեւ երկու անգամ խորտակուեր էին, եւ կրկին ձեռք առնլով դերմանական մարտագիտութիւնն որում հետեւիլ կը ցանկային, Օսման փաշան պիտի պաշարէին, անոր հաղորդակցութիւնները պիտի ընդհատէին եւ զինքն պիտի ընկճէին սովով եւ ռազմամթերից չգոյութեամբ։

Կը թուէր թէ Փլեւնայի առաջ Ռուսք շուտով յաջողութիւն ձեռք պիտի բերէին, մանաւանդ որ այն քաղաքին շուրջն հաստատեալ պատնիշափակ ճամբարն գրեթէ ի քթթելական շինուած էր եւ քաղաքին մէջ ոչ պաշար կը գտնուէր եւ ոչ պահեստի ռազմամթերք, որով այն տեղ ամբարանոցք հաւաքուած բաներն եւս շուտով պիտի սպառէին։ Ռուսաց Լօվչայի դէմ ըրած յարձակումն սոյն համոզման հաստատութիւն տուաւ եւ նոր յառաջագծին գործադրութեան առաջին արդիւնքն համարուեցաւ։ Սոյն քաղաքին առումն ամենահարկաւոր էր՝ Օրխանիէէն Փլեւնա տանող ճանապարհը կտրելու համար, որով Օսման փաշա յարաբերութիւն կ՚ընէր կայսերութեան մնացեալ մասանց հետ. Տաճկաց զօրավարն իրեն նպաստաւոր եղող այն կարեւոր դիրքը կորսնցնելէն յետոյ՝ այլ եւս ապահովութիւն չպիտի ունենար յետուստ եւ այլ եւս աներկեւան չպիտի կարէր հաղորդակցութիւն եւ նահանջ ընել, վասն զի վերոյիշեալ ճանապարհն ուրիշ եւ ոչ մէկ ամրութեամբ պաշտպանեալ էր։

Ըսուեցաւ թէ Նիքոլա մեծ դուքսն զօրավիգներուն հասնելէն յետոյ միայն Լօվչայի վրայ յարձակում մ՚ընելու հաճեցաւ։ Օգոստոս ամսոյն վերջերն Սէրվիի մէջ կը գտնուէին հետեւակազօրաց 2րդ հատուածն, 3րդ հատուածին 2րդ ասհն եւ որսորդ զօրաց 3րդ ասհն, որք Ռուտէցքի զօրավարին օգնութեան դիմեր էին, բայց այլ եւս պէտք մը չտեսնուելով՝ իրենց՝ ետ ղրկուեր էին։

Այս զօրաց յանձնուեցաւ Լօվչայի վրայ յարձակում ընելու գործն՝ առաջնորդութեամբ հատուածապետ Իմէրիթինսքի իշխանին։ Օգոստոս 30 թուականաւ բանակին սպայակուտի գլխուն հրաման մը հանելով՝ յարձակող գունդը լրացուց Սքօպէլէվի ջոկատն եւս անոր հետ միացնելով, որ տակաւին Բօքրինի մէջ կը գտնուէր թնդանօթաց երկու շարք։ Իմէրէթինսքի իշխանն իր ձեռաց ներքեւ այսպէս գրեթէ 25,000 մարդ ունեցաւ. Լօվչայի մէջ գտնուող օսմանեան պահակադունդն 10—12,000ի չափ մարդէ բաղկացեալ էր. այսու ամենայնիւ լաւ դիմադրութիւն մը ըրաւ, ինչպէս պիտի տեսնուի յետոյ, եւ առանց թնդանօթ մը կորսնցնելու նահանջեց՝ երկու կողմանց թուոյն անհաւասարութեանն հակառակ։

Լօվչա կառուցեալ է շրջատեսարանի մը մէջ տեղն։ Օսմա գետակն կը հոսի այս շրջատեսարանին մէջէն, որոյ կողերն ցրենի եւ եգիպտահատի արտերով ծածկուած էին Ռուսաց յարձակման միջոցին, եւ աստ անդ ծառոց խիտ պուրակներ կային, ուր՝ զատ մէկ քանի հեղեղատներ եւս գտնուելով՝ հովտին խորքն եղող եւ յարձակող զօրքն կարէր լաւ պատսպարուիլ։ Օսմայի աջակողմն շրջատեսարանը ձեւացընող լեռներն չորս գլխաւոր սարեր ունին, զորս Ռուսք տեղական յորջորջմանց անգէտ լինելով՝ իրենց տեղեկագրաց մէջ կը նշանակեն 1, 2, 3 եւ 4 թուանշաննե-

ցով՝ Հարաւէն սկսեալ դէպ ի Հիւսիս. 1 թիւն Կարմիր Լեռ եւս կը կոչեն նոքա. այս առաջին շղթային ետեւ կը գտնուին ուրիշ երկու սարեր, որոց մէջ տեղէն կ'անցնի Սէրվիէն Լօվաց տանող ճանապարհն, Ռուսք ասոնց մին Ա. լեռ կը կոչեն եւ միւսն՝ Բ։ Սոյն երկու լերանց միջեւ ճանապարհին մօտ աղբիւրակ մը կայ։ Առաջին չորս սարերուն եւ Ա. լերան վրայ Տաճիկներն մեծ խնամով ամրութիւններ շինած էին։ Օսմայի ձախակողմն պատնէշ կանգնած չէին շրջապատարանին սարերուն վրայ, բայց ահեղ ամրական մը կառուցած էին զատ լերան մը վրայ որ հովտին խորը Լօվացի ետեւ կը բարձրանայ՝ սոյն քաղաքէն Փլէվնա տանող ճանապարհին մօտ։ Այս ամրութիւններէն զատ ամեն կողմ պարկէններ եւ արձակամարտից համար խրամներ փորած էին։

Օգոստոսի 31ին գլխաւոր հրամանատարն հրաման ղրկեց որ Սքոպէլեվ զօրավարին խմբին հեծելազօրն Սէրվիէն Լօվաց տանող ճանապարհին վրայ երթայ եւ աղբիւրակն անցնի։ Կովկասեան Խազախաց սահն դէպ ի Իկլօվ խողոց՝ Փլէվնայէն մինչեւ Լօվաց ձգեալ ճանապարհը զննելու համար, եւ Տօնքի Խազախաց երկու հեծելազասերու յանձնուեցաւ Թրոյանէն Սէրվի տանող ճանապարհաց եւ լեռներուն անցից վրայ հսկել։

Միանգամայն Իմէրէթինքի իշխանն որ՝ լիկ մէկ ճանապարհ ունէր իւր առջեւ, միջոցներ ձեռք կ'առնուր որպէս զի Լօվացի առաջ բերուին Սէրվի գտնուող բոլոր զօրքն սեպտեմբերի 1 ին եւ 2 րդ օրերն, եւ միւս օրն՝ այն է ամսոյն 3 ին լինելիք յարձակման կարենան մասնակցիլ։

Սքոպէլեվ հրաման առած էր քաղաքին առջեւ եղած բարձանց տիրել՝ անոնց վրայ մարտկոցներ կանգնելու համար, նախապատրաստական բոլոր աշխատութիւնները կատարել, դիրից զննութիւնն ընել, հեռաւորութիւնները չափել, Տաճկաց կոյանները նախ ումբակոծելու համար որոշել թէ որքան թնդանօթ կարելի էր զետեղել, եւ հողակուտակներ՝ ինչպէս նաեւ արձակամարտից համար խրամներ շինել, եթէ հնար էր։ Ինչպէս յայտ է, Սքոպէլեվ զօրավարին ցանկալի եղած էր Լօվացի առումն, որոյ վրայ կը խորհէր ժամանակէ մը ի վեր. արդէն անգամ մը այն տեղը զններ էր, եւ իւր նոր պաշտօնն այնպիսի յաջողութեամբ կատարեց որ Իմէրէթինքի իշխանն զայն մեծապէս կը գովէ իւր տեղեկագրին մէջ։

Սեպտեմբերի 1ին կէս օրէն երկու ժամ յետոյ՝ ռուսական խումբն աղբիւրակին մօտ հասաւ. Սքոպէլեվ առանց կանգ առնելու՝ զննեց Ա. եւ Բ. լեռներն։ Տաճիկներն Ա. լեռը գրաւած էին ինչպէս արդէն ըսուած է։ Ռուսական երկու թնդանօթներ ճանապարհին վրայ զետեղուեցան՝ այն լեռն ումբակոծելու համար, որուն տիրելու հրաման եղաւ Քազանի գումարտակին 1ին վաշտին։ Ռուսք բուռն յարձակմամբ գրաւեցին զայն, որոյ՝ ի վերջոյ լինելիք կռուոյն համար մեծ կարեւորութիւն ունենալուն պատճառաւ՝ 1ին վաշտն գիշերայն զետեղուեցաւ այն տեղ, մինչդեռ Քազանի գումարտակին 2րդ վաշտն եւ Շույայի գումարտակին 1ինն լերան ստորոտը ի պահեստի խմբուեցան՝ գիշերն իրենց օգնական առնլով, Քազանի գումարտակին արձակամարտներն պարկէններ բացին, եւ Բ լերան վրայ մարտկոցներ շինուեցան 24 թնդանօթի համար, որոց առջեւ արձակամարտից համար խրամներ եւս բացին Ռուսք։ Նոյն գիշերն՝ հետեւակ զինուորներ թնդանօթներու չոր մը հանեցին բողկացի նոյն լերան գագաթին վրայ։ Սքոպէլեվ իւր զօրաց ոյժ տալու համար, ինքն իսկ չուաններէն կը բռնէր կը քաշէր խմբակներուն մէջ մտնելով։

Առաւօտուն կանուխ այս թնդանօթաչարն սկսաւ ումբակոծել այն հաստատաւոյց կերտուածն, զոր Տաճիկները կանգնած էին Ա. լերան կողին վրայ. սոքա ստիպուեցան հեռանալ անկէ։ Քազանի

գումարտակին խմբոյն գրաւեց զայն եւ չորս Թնդանօթաշար զետեղուեցաւ անդ. Ամբողջ օրն այս աշխատութեամբ անցաւ։

Սեպտեմբերի 2էն 3 լուսնալու գիշերն տարօրինակ գործունէութիւն մը ցոյց կը տրուէր։ Իմէրէթինսքի զօրավարին բոլոր զօրքն իրեն որոշեալ կայաններն հասած էին։ Մէկ քանի զօրախումբք երկու աւուր մէջ 80 հազարամէթրի չափ տեղ ճանապարհ առած էին, սակայն եւ այնպէս սոքա եւս նոյն գիշերն աշխատեցան մարտկոցներուն շինութեան։ Իշխանն իւր զօրքն երեք ջոկատներու բաժնած էր, այսինքն աջակողմեան խումբ մը՝ որսորդ զօրաց 3րդ սահին հրամանատար Տօպրօվոլսքի զօրավարին առաջնորդութեան ներքեւ, ձախակողմեան խումբ մը՝ Սքօպելեվի առաջնորդութեան ներքեւ, եւ երեք գումարտակէ բաղկացեալ պահեստի զօրաց սաուար խումբ մը՝ 2րդ հետեւակին 2րդ սահին գլուխ Էնկման զօրավարին հրամանատարութեան ներքեւ։ «Կը յուսամ թէ, կ՚ըսէր գլխաւոր հրամանատարն, Զօթով պիտի արգելու Օսման փաշան Լովչաց զօրք ղրկելէ. բայց ես պահեստի մեծ խումբ մը ունենալու եմ նախազգոյշ գտնուելու համար, եթէ նա չարգելու։» Ճշդիւ խօսելով՝ միջին խումբ չկար տեղեաց հանգամանաց պատճառաւ։ Նոյն 2ին երեկոյին՝ Տօպրօվոլսքի գնաց զննեց Փրէչիէքայի բարձունքն, եւ գիշերն ի բուն իւր զինուորները փոխանակաւ աշխատեցան նոյն գիւղն ամրացնելու համար։ Նիկոպոլսոյ մէջ Տաճիկներէն առնուած Քռուփի զօրաւոր Թնդանօթներու չար մը, եւ Թնդանօթաձիգ զօրաց չար մը առաւօտեան հինգերորդ ժամուն զետեղեալ էին արդէն. Սքօպելեվ եւս նախորդ գիշերէն աւելի ժրութեամբ աշխատեցաւ, Ա. լերան վրայ գնդընկէց անօթներու չորս չար զետեղեց եւ երկու նոր չար եւս Բ լերան վրայ։

Կարմիր լեռն Լովչայի շրջակայ լերանց ամենէն բարձրն լինելով, որոշուեցաւ բուն յարձակումն անոր վրայ ընել, եւ այս գործն Սքօպելեվ զօրավարին յանձնուեցաւ։ Տօպրօվոլսքի զօրավարին հրամանատարութեան ներքեւ եղած աջակողմեան խումբն՝ լերան մերձակայ պատնիշաց գրաւմանէն յետոյ կռուոյ մէջ պիտի մտնէր։

Նոյն 3ին առաւօտեան հինգերորդ ժամուն՝ ձախակողմեան խումբն ճակատեցաւ կատարեալ բարեկարգութեամբ՝ տեղեաց դժուարութեանցն հակառակ։ Սքօպելեվ զօրավարն իւր զօրաց առջեւ օրական պատուէր մը կարդալ տուած էր որ հետաքրքրական է եւ արժանի յառաջ բերուելու.

«Այժմ լինելիք կռուոյն առաջին մասին մէջ ամենամեծ գործ մը պիտի տեսնեն Թնդանօթաձիգներն։ Յարձակման հրամանն պիտի հաղորդուի մարտկոցներուն հրամանատարացն, որոց պատուէր եղած է Թնդանօթներուն կրակն աստ անդ ցիր եւ ցան չընել։ Երբ հետեւակազօրն յարձակման համար յառաջ խաղայ, Թնդանօթաձիգներն անոր պիտի նպաստեն իրենց բոլոր ջանիւք։ Հարկ է ուշի ուշով հսկել, արագ արագ ռումբ արձակելու է, եթէ թշնամին պահեստի զօրք երեւան հանէ, եւ վերջին ծայր սաստկութեամբ կրակ ընելու է, եթէ յարձակող խումբ մը անակնկալ արգելքի հանդիպի։

«Թշնամւոյն զօրաց եւ պարկենից վրայ երկաթի կտորներով լի ռմբարտակներ արձակելու է, երբ այս բանն կարելի լինելու չափ միայն անվրիպելի գտնուի։ Հետեւակազօրն կռուոյ ժամանակ խառն ի խուռն լինելէ զգուշանալու է, եւ յառաջխաղացութիւնն եւ յարձակման պարբերութիւնն ճշդիւ հասկանալու է։ Պէտք չէ մոռնալ անպատճառ իւր ընկերին օգնելու նուիրական պարտականութիւնն։

«Փամփուշտները վատնելու չէ։ Պէտք է յիշել թէ տեղեաց հանգամանքն դըժուարին կ՚ընեն ռազմամթերք պաշարել։ Կռուոյ ժամանակ լռութեան եւ բարե-

կարգութեան կարեւորութիւնն կրկին կը յիշեցնեմ հետեւակազօրաց ։

«Թշնամին մօտ գտնուելու եւ անոր վրայ սուինով յարձակումն ընելու ժամանակ միայն հո՛ււռա գոչելու է ։

«Բոլոր զինուորաց ուշադրութիւնը կը հրաւիրեմ սա բանին վրայ որ * անվեհեր յարձակման մը ժամանակ նուազ կորուստ կը լինի, եւ նահանջն, մանաւանդ խառն ի խուռն նահանջն մեծ կորուստ եւ նախատինք յառաջ կը բերէ ։»

Աքսալթեքի յառաջագոյն գրաւած երկու սարերուն վրայ զետեղեալ 56 թընդանօթներն՝ առաւօտեան վեցերորդ ժամուն ռումբ արձակել սկսան, եւ գրեթէ կէս ժամ յետոյ միայն Տաճիկներն անդրադարձութիւն ըրին Կարմիր լեռնէն եւ Թրօյանի ճանապարհին վրայ կանգնեալ մարտկոցէ մը ։ Իրենց ռմբարձակները լաւ ուղղութեամբ կ'արձակուէին եւ կը հասնէին Սէրվիի ճանապարհին ամենէն աւելի մօտ եղած սարին վրայ ։ Այս սարին գագաթն բոլորշի էր՝ սպիտակ ժայռերով ծածկուած, եւ տրամագիծն 50 սաժէնէն աւելի չէր. հովանաւոր վայր մը եւ պատսպարուելու տեղ մը չկար բնաւ, եւ արեւը շատ նեղեց այն բարձրաւանդակին վրայ գտնուողներն՝ Լօվչցի ճակատամարտին այն սոսկալի տապակէզ աւուր մէջ ։ Տաճկաց պատուազինութեան գերազանցութիւնն՝ որ քանիցս ապացուցեալ էր այս պատերազմին սկզբնաւորութենէն ի վեր, այս անգամ եւս յայտնի եղաւ. այն Քռուփի թնդանօթներն որովք զինեալ էին Լօվչցի ամրութիւններն, աւելի հեռի ռումբ կ'արձակէին, եւ այնպիսի լաւ ուղղութեամբ անդրադարձութիւն կ'ընէին որ անկարելի եղաւ՝ Տաճկաց մէկ քանի թնդանօթաշարից կրակը խափանել, թէեւ յարձակողաց թնդանօթներն թուով շատ աւել էին ։ Այսու ամենայնիւ՝ ռուսական հրազինութեան արդիւնքն սարսափելի էր Կարմիր լերան եւ թիւ 2րդ, 3րդ եւ 4րդ բարձրաւանդակներուն պարկէնից մէջ զետեղեալ հետեւակազօրուն վրայ ։ Սոքա ութ ժամ անընդհատ զարհուրելի ռմբաձգութեան մը ենթարկեալ եւ երկաթի կոտորներու տարափի մը ներքեւ մեծ կորուստ կրած լինելով՝ արդէն վհատեալ էին Ռուսաց դարյթ տալու ժամանակ, եւ լաւ չտոկացին ընդհարման ։ Ընդհակառակն Ռուսք անխռով եւ առոյգ էին յարձակումն ընելու միջոցին, իրենց ամրութեանց ետեւ՝ նոյն վայրկենին պատսպար էին առանց վտանգի ։ Աքսալթեքի խնամքովն իւրաքանչիւր ոք կսկուծ հաց եւ կէս լիպրա միս առեր էր. զօրաց կարգերուն մէջ ջուր կը տանէր մասնաւոր ջոկատ մը որ այս գործոյն յատկացեալ էր. վասն որոյ զինուորներն կատարեալ լաւ էին կռուոյն միջոցին ։

Յարձակում ընելու յատկացեալ խումբերն կէս օրէն երկու ժամ յետոյ պիտի սկսէին յառաջել. նախ Աքսալթեք պիտի յարձակէր եւ ապա Տօպրօվօլսքի պիտի աջակցէր նմա ։ Բայց եղելութիւնք Իմէրէթինսքի զօրավարին յատակագիծը խանգարեցին, եւ կէս օրէն առաջ աջակողմեան խումբն ստիպուեցաւ կռուելու ։ Աքսալթեքի թնդանօթաձիգներն երբ կրակ ընելու սկսան, Տաճիկներն անդրադարձութիւն ըրին արդարեւ՝ բարձրաւանդակաց վրայ շինուած բոլոր մարտկոցներէն ռմբաձգութիւն ընելով՝ թէ ձախակողմեան խմբին դէմ որ իրենց ձօյնատուր եղած էր, եւ թէ աջակողմեան խմբին դէմ որ ընկերոյն կըսպասէր ։

Տօպրօվօլսքիի զօրքն ընդ հուպ սկսաւ մեծապէս վնասիլ առանց իւր կողմանէ հրացան մը պարպելու. այսպէս կորան որսորդ զօրաց 11րդ վաշտին հրամանատար Կիրտան գումապետն, 7 սպայք եւ 150 որսորդ զօրք ։ Յետոյ Տաճիկներն չգիտելով թէ ուր կը գտնուէր Աքսալթեքի հրամանատարութեան ներքեւ խմբեալ ռուս զօրաց ստուար մասն, սկսան յարձակիլ անոր գտնուած կէտին վրայ եւ 200 քայլ

Մեալու չափ մօտեցան, բայց ուսորդ զօ-րաց մէկ վաշտն եւ մէկ դասակն զի-րենք ետ մղեց։ Յայնժամ Ջերմութիւնն

թեան նայելով, Տօպրօվոլսքի զօրավարն՝ ձախակողմեան խմբին յարձակման ար-դիւնքը տեսնուելէն յետոյ յառաջ սլխտ



ՏՕՔԹՕՐ ՔՕԶԼՈՎ, ԲԺՇԿԱՊԵՏ ԴԱՆՈՒԲԵԱՆ ԲԱՆԱԿԻՆ ՌՈՒՍԱՑ

այնքան սաստիկ էր որ մէկ քանի մար-դիկ մեծապէս նեղուելով՝ ստիպուեցան զօրաց կարգէն դուրս ելնելու։ Ճակատ յարդարելու համար եղած կարգադրու-

խաղար, բայց իւր առջեւ բարձրացեալ թիւ-4րդ լերան վրայ անմիջապէս դայթ տալ որոշեց, վասն զի հարկ էր թշնամին յետս մղել, որպէս զի իւր հրամանոց ներքեւ

եղած զօրախումբն շատ կորուստ չկրէ։

Առաւօտեան ութերորդ ժամուն՝ արձակամարտից շղթայ մը յառաջ խաղաց բոլոր սայրից առաջնորդութեամբ, եւ առաջին պատնէշներուն տիրեց, բայց աւելի առաջ գնալով՝ նորանոր արգելներու հանդիպեցաւ. յայնժամ Տօպրօվօլսքի զօրավարն հրամայեց ընդհանուր յարձակում մ'ընել ամրութեանց վրայ։ Կայսերական չքադիր խմբին խառն կէս-դասակին որսորդ զօրաց 3րդ սահին հետ միացաւ։

Կայսերական անձնապահ խմբին զինուորներն եւ որսորդ զօրքն յարձակմամբ պատնէշներուն տիրեցին մեծամեծ դժուարութեանց հակառակ, եւ Տաճիկներն Օսմա գետակին միւս կողմն անցուցին։ Ռուսք այսպէս շրջանակարանին հիւսիսային բաժինը գրաւեցին, եւ անդ աճապարանօք թնդանօթաշար մը զետեղեցին որ Սքօպէլեվի գնդընկէց անօթներուն հետ սկըսաւ Կարմիր լեռը ռմբակոծել, որ գետակին աջակողմեան ափանց բանալին էր եւ ուր Տաճիկներն պատնէշներ բարդեր էին։

Կէս օրէն երկու ժամ յետոյ՝ Իմէրէթինսքի իշխանն վերջապէս ձախակողմեան խմբին հրաման ըրաւ յարձակելու. Ռազկիլտէյեվ զօրավարին յանձնուեցաւ թէ 2րդ եւ 3րդ բարձրաւանդակները գրաւել 2րդ հաստուածին 1ին սահովն. Սքօպէլեվ միացեալ զօրօք Կարմիր լերան վրայ յարձակելու պանծալի այլ վտանգաւոր գործն իրեն վերապահեց։ Սոյն դիրքը գրաւեց Բոզանի գումարտակն, որ զինուորական կրթութիւն մ'ընելու պէս ըրաւ յարձակումն՝ նուագածուաց եղանակներով եւ դրօշակներ պարզելով. Հրամանատար Թէոլիոքին հաստուածայեան յառաջընթաց վաշտին հետ գտնուելով՝ կռուոյն մինչեւ վերջն իւր զինուորաց օրինակ տուաւ։

Ռուսք Կարմիր լերան տիրելնուն պէս՝ թնդանօթաձիգ զօրաց 3րդ սահին մէկ շարն անոր գագաթը հանեցին. այս թնդանօթաշարն սկսաւ կրակ ընել յանկոյս Լօվչցի կառուցեալ մեծ ամրականին վրայ, որ Տաճկաց դիմադրութեան վերջին կեդրոնն էր։ Մինչդեռ Բոզանի գումարտակին 1ին վաշտըն սոյն բարձրաւանդակն կը գրաւէր, նոյն գումարտակին 2րդ եւ 3րդ վաշտերն Փսքովի գումարտակին երկու վաշտերու աջակցութեամբ Լօվչցի վրայ խաղացին մեծ ճանապարհէն՝ ունենալով նաեւ իրենց հետ պահեստի խմբէն առնուած երկու թնդանօթաշար. Օսմա գետակին կամուրջն որ Վենետիկոյ Ռիալթօ կամրջին պէս շինուած էր՝ երկու քովերը խանութներով՝ չէր քանդուած, եւ Ռուսք անկէ անցնելով սաստիկ աշխուժութեամբ տիրեցին քաղաքին։

Ռուս զինուորք տեսնելով որ փողոցի կռիւ ընելու մասին մեծ ճարտարութիւն ունեցող տաճիկ զօրքն յոյժ սակաւաթիւ էր քաղաքին մէջ, եւ օգուտ քաղելով անկէ, շտապաւ անցան անոր մէջէն եւ միւս ծայրն զետեղուելով՝ լաւ կրակ մը ընել սկսան՝ նահանջող Տաճկաց խմբերուն վրայ, որք Փլեւնայի ճանապարհին քով բարձրացեալ մեծ ամրականին ներքեւ պատսպարուելու կ'երթային. Նոյն պահուն Ռազկիլտէյեվ իւր սահն յառաջ կը վարէր՝ թիւ 2րդ եւ 3րդ բարձրաւանդակաց վրայ դրոյթ տալու համար, որոց Ռուսք արիաբար տիրեցին սուինով։ Ռազկիլտէյեվ իւր խմբին առաջնորդած ժամանակ վիրաւորեցաւ։ Տակաւին մէկ ժամ չէր եղած եւ ահա Օսմայի ամբողջ աջակողմեան ափունքն Ռուսաց ձեռքն անցան՝ ինչպէս նաեւ Լօվչայ քաղաքն։

## ԿՈՏՈՐԱԾ ՄԵԾ ԱՄՐԱԿԱՆԻՆ ՄԷՋ

Ճակատամարտին առաջին մասն աւարտեալ էր, բայց տակաւին Տաճկաց ձեռքն էր իրենց ամրութեանց ամենէն նշանաւորն եւ զօրաւորն, այն է մեծ ամրականըն. Ռուսաց մինչեւ ցայնժամ ձեռք բերած յաջողութիւնն բան մը չէր, քանի որ այն դիրքն Տաճկաց կը մնար։ Վասն որոյ Իմէրէթինսքի իշխանն անմիջապէս պատ-

րաստութիւններ առնել տուաւ անոր վրայ յարձակելու համար, որդէն շարուած թնդանօթներէն զատ՝ Սքօպելեվ երկու նոր չոր եւս զետեղել տուաւ Սէրվիի ճանապարհին վրայ, եւ այն ժամանակ հարիւրի չափ ռուսական թնդանօթներն սկսան ամրականին դէմ գոռալ զարհուրելի շառաչմամբ, որ կը սասանապատկուէր շրջատեսարանին ժայռերուն պատճառաւ, յորում արձագանգն որոտընդոստ լսելի կը լինէր։ Տաճկաց թնդանօթներն անդրադարձութիւն չըրին. ընդհակառակն՝ ամրականին ետեւի բարձրաւանդակներուն վրայ տարածուեցան, այնպէս թէ Տաճկաց հրամանատարն անոր Ռուսաց ձեռքն անցնիլն անհրաժեշտ կը կարծէր. անտի այլ եւս անհնար եղաւ գործածել զանոնք, բայց միայն այն ժամանակ երբ Ռուսք մօտեցան։

Նոյն պահուն քաղաքին մէջէն անցնելով Քազանի գումարտակին քով հասան Փլոքովի գումարտակն, Շույայի գումարտակին 1ին վաշտն Ուֆայի եւ Եսթոնիոյ գումարտակներն, այսինքն ընդամենն 13 վաշտ։ Այս զօրաց պատուէր եղաւ ամրականին մօտենալ կեդրոնէն եւ ձախակողմէն։ Աջակողմէն լինելիք ամենակարեւոր յարձակումն Ռազկիլտէյեվի սահն պիտի ընէր, որ Օսմայի աջակողման ափանց վրայ Լօվչայի արուարձաններուն տանց ետեւէն դէպ ի հիւսիս յառաջելով՝ Տօպրօվօլաքի որսորդ զօրաց քով հասեր էր։

Արեւը մարը մանելէն գրեթէ կէս ժամ առաջ՝ Իմէրէթինսքի իշխանն զօրաց հրաման ըրաւ դուրս տալու, համարելով թէ յարձակման համար բաւական պատրաստութիւն տեսնուած էր, մանաւանդ որ հետեւակազօրն պէտք եղածին չափ հանգիստ ըրած էր։ Աջակողմեան խումբն շրջատեսարանին ստորոտն էր հասած. անկէ մինչեւ այն բլրոյն տակն՝ որոյ վրայ կառուցեալ էր ամրականն, դաշտ մը կայ գրեթէ 800 մէթր լայնութեամբ, եւ հովտին յատակը կը ձեւացնէ։ Զօրքն ստիպուած էին այս դաշտին մէջէն անցնելու՝ տաճկի հետեւակազօրուն կրակին ներքեւէն, որ պորտակներու ետեւ պատսպարեալ էր։

Ռուսք իրենց պատսպարուած տեղերնէն դուրս ելնելնուն պէս՝ 100 էն մինչեւ 400 մէթր լայնութիւն ունեցող մարգագետնի մը վրայ կը գտնուէին. անոր մէջէն անցնելնէն յետոյ՝ իրենց առջեւ կ'ելնէր Օսմա գետակն, որ 20 մէթրի չափ լայնութիւն եւ մէկ ոտնաչափ խորութիւն ունի։ Գետակին մօտէն կ'անցնի Փլէվնայի ճանապարհն. անոր քովերն այն ժամանակ յարկածածուկ տեղեր (թամ) կային ուր յարդ լցուած էր, եւ որոց ետեւ յարձակող զօրքն կրնային վայրկեան մը պատըսպարուելու յոյս ունենալ. այն բլրոյն ստորոտէն՝ որոյ վրայ կառուցեալ էր ամրականն, մինչեւ ճանապարհն տարածեալ տեղւոյն մէջ կայ հին տաճկական գերեզմանատուն մը 400 մէթր լայնութեամբ։

Նոյն բլուրն մէկ քանի հարիւր մէթր բարձրութեամբ սրակ մ'էր եւ ռուսական խմբին դիմաց կը գտնուէր. Տաճիկներն զարմանալի անզգուշութեամբ պարկէններ բացած չէին անոր վրայ թշնամւոյն դէմ կրակ ընելու համար։ Վասն որոյ Ռուսք այն ամրութեան առաջ հասնելնուն պէս՝ ռմբաձգութենէ զերծ պիտի լինէին։ Օսմա գետակին ձախակողմեան ափանց վրայ ճանապարհին քովն մէկ քանի տեղ ելեւէջներ կային մարդ մը պատսպարուելու չափ, եւ այս պատսպարաններն աչքի կը զարնէին, եթէ դադար առնուլ պէտք լինէր դէպ ի բարձրաւանդակն արշաւելու ժամանակ։

Ռազկիլտէյեվի սահն ռուսական բանակին մէջ հանրածանօթ է բռուսխական սահ կոչուելով, վասն զի՝ եւրոպական այլ եւ այլ ազգութեանց յատուկ սովորութեան մը համեմատ՝ Քալուկայի գումարտակն Գերմանիոյ կայսեր գումարտակ կը յորջորջուի, եւ Լիպաւինն՝ Բրուսիոյ Կարոլոս իշխանին գումարտակ կ'անուանի։ Քալու-

կային մանաւանդ զինուորական տարեգրութեանց մէջ նշանաւոր քաջագործութիւններ ըրած էր որդին, եւ բովանդակ Ռուսական բանակին մէջ առաջիններէն մին կը համարուէր։

Այս երկու գումարտակներն այնպիսի կերպիւ շարուած էին, որ Բալուկային՝ Տաճկաց ձախակողմեան վերջին ծայրին դէմ յարձակում պիտի տար եւ Օսմա գետակին մէջ ձեւացեալ կղզին մը պիտի անցնէր, իրեն նշաւակ պիտի ընտրէր ոչ թէ այնքան ամրականն՝ այլ բարձրաւանդակին հիւսիսային կողմն եղած տաճկական արտաքին դիրքն. ընդհակառակն՝ Լիպուսի գումարտակն ամրականին ձախակողմէն պիտի յարձակէր ճակատ առ ճակատ։

Ռուսական թնդանօթաձիգներն բազմաթիւ ռմբարտակներ եւ շրափնէլ ըսուած գնտակալից ռումբեր կ'արձակէին՝ Տաճկաց ուշադրութիւնն իրենց վրայ հրաւիրելու եւ հետեւակազօրաց ներսէն ընելու համար՝ եթէ հնար էր՝ առանց տեսնուելու Օսմայի կղզիէն անցնիլ, որ բոլորովին Տաճկաց կրակին ներքեւ կը գտնուէր. բայց այս նպատակին չհասան. Հազիւ առաջին հետեւակներն Օսմայի ափանց վրայ հասած էին, եւ ահա Տաճիկներն միահաղոյն կրակ ընել սկսան անոնց վրայ։ Վայրկեան մը անձկութիւն եւ ծայրայեղ գրգռութիւն տիրեց։ Թնդանօթներն անդադար կ'արձակուէին, բայց ոչ ոք կը լսէր հրացանաց որոտումն. ամենուն ուշադրութիւնն դարձած էր այն քաջ դասակին վրայ, որ մահն արհամարհելով՝ ամենէն առաջ կը դիմէր ամրականին վրայ եւ կը խուժէր դէպ ի գետակն։

Նոյն պահուն Տաճկաց կրակն անզուգական սաստկութեան մը հասաւ։ Կը թուէր թէ յարձակողներն ամբից տարափի մը ներքեւ ծածկել կ'ուզէին. սակայն աւելի աղմուկ պատճառեցին քան թէ չարիք։ Արդարեւ անընդհատ էր գնտակներու տեղատարափն, սակայն զարմանալի էր տեսնել թէ որքան աննշան էր մարդահանդիպած գնտակներուն թիւն։ Մերթ ընդ մերթ առանձին զինուոր մը վազելով կ'անցնէր անպատսպար տեղերէն. որովհետեւ երաշտութեան պատճառաւ մէն մի գնտակ գետնին զարկած ժամանակ փոշւոյ մրրիկ մը կը յարուցանէր, ուստի կարելի էր տեսնել անոր ուր անկանիլն, եւ սակայն ընդհանրապէս զինուորներն կ'անցնէին առանց զարնուելու։ Վայրկեան կը լինէր որ եւ ոչ մէկ Ռուս կրակի ներքեւ կը գտնուէր, այլ Տաճիկներն անդադար հրացան կը պարպէին։ Ասոր պատճառն կը մեկնուի սա բանով՝ որ Թուրք զօրքն պարկէնից մէջ ընկողմանեալ էին եւ պարտակներուն վրայէն գնտակ կ'արձակէին առանց նշան առնելու եւ մինչեւ անգամ առանց կանգնելու՝ որպէս զի թշնամւոյն ուրկէ գալը տեսնէին. Ռուսք կ'ըսեն թէ մինչեւ վերջին գլուխ նշմարած չունէին պատնիշաց վրայ։ Մարտնչելու այս եղանակին՝ Տաճկաց սովորական լինելն իմանալէն յետոյ՝ այնքան զարմանալի չպիտի թուի նոցա վիրաւորեալաց խիստ շատին ձեռքէ զարնուած գտնուիլն. մարմնոյն միացեալ մասին պարկենին մէջ պատսպարեալ լինելով՝ նոցա ձեռքն միայն վիրաւորելի էր գրեթէ։

Սակայն գնտակներն այնքան բազմաթիւ էին որ այն տեղերն շուտով մեռեալներով եւ վիրաւորներով ծածկուեցան, թէեւ Տաճիկներն կրակ ընելու մասին այնպէս անյաջողակ էին. այլ Բալուկայի քաջ զինուորներն անկասելի էին։ Մէկ վայրկենի մէջ Օսմայէն անցան գնտակներու եւ ռմբարտակներու տարափի մը ներքեւէն. բայց պահ մը վերջին ծայր յուզմունք տիրեց։ Ցանկարծ գումարտակին հրամանատար Իլժանովսքի գումարտեան գետակին մէջ սուզեցաւ իւր ձիովն, որ գնտակէ մը սպաննուած էր. կարծուեցաւ թէ ինքն եւս կորսուած էր, սակայն քաջ սպայն միրճելէն յետոյ՝ երեւան ելաւ, լողալով հասաւ Տաճկաց կողմի գետափին

վրայ, ջրաթաթախ համազգեստը թօթուեց, յետոյ իւր գինուորները շարեց սաստիկ կրակի մը ներքեւ եւ անոնց գլուխն անցաւ ։

Կղզեկին ղարափանց տիրելէն յետոյ՝ Ռուսք արշաւակի դիմեցին դէպ ի յարդով լի յարկերն, որոց ետեւ կը յուսային պատսպարուիլ։ Նոքա հնձուելու պէս տապալսո անկանելու վրայ էին. այն տեղերն արիւնհեղութեամբ միայն պիտի գրաւէին, եւ բազմիցս կարծուեցաւ թէ յարձակողաց եւ ոչ մին պիտի հասնէր նպատակին։ Բայց սոքա արիաբար կը շարունակէին յառաջել՝ առանց կրած կորուստներնուն նայելու. վերջապէս կենդանի մնացողներն յարկերուն քով հասան, ուր կարելի եղաւ նոցա փոքր ինչ դադար առնուլ, վասն զի խոնջեալ էին արշաւելէ, եւ Տաճկաց գնդակներէն պատսպարուիլ ։ Յետոյ մի առ մի հասան բարձրաւանդակին ստորոտն, ուր՝ ինչպէս արդէն ըսուեցաւ, Տաճկաց համար անկարելի էր կրակ թափել, եւ գրեթէ վեցերորդ ժամուն մեծաթիւ զօրք խմբուեցաւ այն տեղ։ Նոյն ժամուն՝ միջին եւ ձախակողմեան խումբերն եւս իրենց տեղերն հասան ։ Փաքովի եւ Էսթոնիոյ երեք վաշտերն եւ Կազանի գունդարտակն սարսափելի կրակի մը ներքեւէն յառաջեցին դէպ ի Տաճկաց գրաւած առապար բարձունքն։ Այս վաշտերն մեծ կորուստ կրելով ցանցառ եղած էին, սակայն եւ այնպէս իւրաքանչիւրն դասակ դասակ բաժնուելով եւ երկու գծի վրայ շարուելով՝ արիաբար յառաջ կը խաղային, մինչ թմբուկները կը զարնուէին եւ դրօշակները կը ծածանէին։ Փաքովի գունդարտակին 1ին վաշտին մէջ միայն պահ մը շփոթութիւն տիրեց, երբ նոյն գունդարտակին հրամանատարն անկաւ, այն է Կուռով գնդապետն. բայց սոքայք շուտով բարեկարգութիւնը վերահաստատեցին, եւ այս վաշտն եւս միւսներէն ետ չմնաց ։

Թութօլմին գնդապետն իւր Խազախներուն հետ մտեցաւ Լօվչայի, եւ գնաց զետեղեցաւ Փլէվնայի ճանապարհին վրայ՝ Տաճկաց նահանջելու գիծը կտրելու համար։ Ռուսական զօրախումբք այն ժամանակ կիսաբոլոր մը կը ձեւացնեն երեք կողմանէ ամրականը պատելով, սակայն մի յետոյ նոր յառաջխաղացութիւն մը կ'ընեն, թէեւ մեծաքանակ ռազմամթերք ունեցող Տաճիկներն կը շարունակեն կրակ թափել կատաղութեամբ։ Ռուսք կը տիրեն մէկ քանի պարկէններու, որք գլխաւոր կեդրոնածին խրամէն հարիւր մեթր հեռաւորութիւն չունէին. վճռական վայրկեանը կը մօտենայ ։

Ձախակողմեան եւ միջին խումբերն հրացան պարպելու կը ձեռնարկեն ծառոց եւ բլրակաց ետեւ պատսպարուելով, որով Տաճիկներն աւելի այս կողմը կրակ ընել կըսկսին ։ Սակայն յանկարծ Կալուժկոյի գունդարտակէն յիսնի չափ գինուորներ ամրականին արեւելեան կողմէն խոյանալով՝ խրամին յիսուն մեթր մնալու չափ կը մօտենան ։ Անշուշտ այս մարդիկն պահ մը անխորհրդաբար բորբոքուելնուն համար յառաջ նետուեցան, վասն զի եւ ոչ մէկ սպայ այնպիսի ամրութեան մը դէմ այնքան զօրք միայն կը ղրկէ ։ Յայնժամ Տաճկաց կրակն սարսափելի էր. այսպէս յիմարաբար դիմադրաւող արի գինուորներն պահ մը կանգ առին, հրացաններնին պարպեցին, եւ առանց կորուստ մ'ունենալու ետ քաշուեցան. զարմանալի բան, որոյ պատճառ՝ միայն Տաճկաց կրակ ընելու եղանակն կարելի է ցոյց տալ ։

Ռուսք կը շարունակեն անկանոն կերպիւ հրացան պարպել քսան վայրկենի չափ, յետոյ սարսափելի հ՛—— մը կը լսուի, եւ բուն յարձակումը կը լինի ամրականին արեւելեան ճակատին դէմ ։ Լիպաւի եւ Կալուժկոյի գունդարտակներն դաշթ կուսան՝ իրարմէ բաց կարգեր ձեւացնելով եւ առաջապահ խմբին ետեւէն զօրավիգներու անընդհատ հասանք մը յառաջ ածելով։ Ռմբարտակներու հեղեղ մը կը թափի ամրականին վրայ եւ գինուորք

*բարձրաւանդակին կողերէն վեր կ'ելնեն արշաւակի, մինչդեռ Տաճիկներն կը շարունակեն անդուլ հրացան պարպել: Եթէ լաւ ուղղութեամբ կրակ ընէին, կ'ըսէ ականատես մը, բոլոր Ռուսք պիտի սպաննուէին ինչեւիցէ. յարձակողներէն շատեր կորան անդ, եւ լերան ապալերկ կողին վրայ տարածուած մնացին:*

*Վերջապէս ռուսական խումբերն Տաճկաց այնքան կը մօտենան, որ իրենց թընդանօթներն այլ եւս կրակ չեն ըներ ռուս զինուորներն չվիրաւորելու համար: Սոքա խրամին մէջ կ'ոստանուն, եւ պարապէն վեր կ'ելնեն, մինչդեռ ուրիշ խումբ մը հարաւային ճակատին դէմ կը յարձակի արտաքին պարիսպներուն տիրելու համար: Քանի որ յարձակողներն պարտակին վրայ կ'ելնեն, Տաճիկներն եւս արեւմտեան կողմը կը վազեն եւ անձնատուր լինել չուզելով՝ կը շարունակեն թէ կրակ ընել եւ թէ փախչիլ: Պարիսպներուն մէջ գտնուողներն եւս արեւմտեան կողմը խոյս կուտան՝ վազած ժամանակնին հրացան պարպելով եւ Ռուսաց կրակին ներքեւ անկանելով:*

*Ամրականին մէջի պահակ զօրքն արեւմտեան կողմն եղած ելքէն դուրս փախչելու համար դէպ յայն կողմն դիմեց, բայց խոտորնակ պարկէն մը կար այն ելից առջեւ. Տաճիկներն փակեալ մնացին պարկերնին եւ արեւմտեան պարտակին միջեւ եւ ամենքն ալ սպաննուեցան:*

*Մնացեալ Տաճիկներն խառն ի խուռն փախան դէպ ի Միքրէ որ իրենց ժողովուելու յատկացեալ կէտն էր. Կովկասեան սահն՝ որոյ հրամանատար Թուխօլին գումարտեան այն տեղերը մէկ քանի անգամ զինած լինելով՝ խիստ լաւ կը ճանաչէր, եւ Թէրէքի Ղազախաց հեծելազօրն ուժգին ընթացիւք հետամուտ եղան նոցա: Վլատիքավքազի Ղազախաց գումարտակին հրամանատար Լէվիս գումարտեան յառաջ վազից իւր զօրօքն՝ փախստականաց ճանապարհը կտրելու համար, հետեւակազօրաց վրայ դարձ տուաւ եւ կարող եղաւ երկու վաշտ անջատելու, որք սրակոտոր եղան: Իմէրէթինսքի իշխանն իւր տեղեկագրին մէջ կը հաստատէ թէ այս հալածանաց միջոցին՝ հեծելազօրաց աշխուժութեան եւ Տօնի 8րդ թնդանօթաշարին ուղիղ ումբաձգութեան պատճառաւ՝ Տաճիկներն 3,000 էն աւելի մարդ կորուսին: Սոցա ամբողջ կորուստն այս թուէն շատ աւելի է:*

*Ըսուեցաւ թէ Տաճկաց հրամանատարն Ռուսաց յարձակմանէն առաջ՝ իւր թնդանօթներն ետ քաշել տուեր էր նախազգուշութեամբ մը, զոր տարածելու էր մինչեւ իւր խեղճ զինուորաց վրայ՝ քանի որ դիմադրութիւնն անօգուտ կը համարէր եւ նոքա պիտի զոհուէին կռուելով. հետեւաբար Ռուսք չկարացին թնդանօթ մը ձեռք անցընել, այլ միայն երկու դրօշակ, մէկ միլիոն փամփուշտ, ռազմամթերից բազմաթիւ սայլեր եւ մեծաքանակ զէնք:*

*Ռուսաց կորուստն եղաւ 6 սպայ եւ 343 զինուոր տապաստ անկեալ, 33 սպայ եւ 1,112 զինուոր վիրաւորեալ եւ 52 հոգի անհետացեալ: Առ հասարակ կը կարծուի թէ Ռուսաց յատակագիծն լաւ պատրաստեալ էր՝ ըստ կարի շատ եւ շուտով առաւելութիւններ ձեռք բերելու նպատակաւ՝ կարելի եղածին չափ նուազ կորուստ ունենալով: Այն յատակագիծն մեծ պատիւ բերաւ Իմէրէթինսքի իշխանին՝ որ տակաւին երիտասարդ զօրավար մ'էր, եւ այնուհետեւ Սքօպէլեվի եւ Կուրքօյի պէս ռուսական բանակին յուսադիրներէն մին եղաւ: Մինչեւ ցայնժամ ճարտար սպայք այնքան հազուագիւտ էին որ յաջողութիւն մը ձեռք բերողներուն վրայ կը դառնար ամենուն աչքն: Գիշերն վրայ հասնելու մօտ լինելով՝ մէկ մասն գրաւեալ ամրութեանց մէջ զետեղուեցաւ, եւ մէկ մասն քաղաքին մօտ բացօթեայ եղաւ: Կէս գիշերուն մօտ՝ 4րդ գնդին սպայակոյտէն լուր եկաւ թէ բազ-*

մաթիւ տաճիկ զօրք դուրս ելած էին Փլեւնայէն եւ դէպ ի Լօվաց կը խաղային։

Տաճիկներն աղջամղջին պատճառաւ չը կարացին անմիջապէս յարձակում մ՚ընել. բայց Սքօպելեվ զօրավարին հրամանատարութեան ներքեւ գտնուած առաջապահ զօրքն՝ որ Փլեւնայի ճանապարհին վրայ յառաջացած էր, ամսոյն 4ին առաւօտուն կանուխ կռուի բռնուեցաւ Տաճկաց հետ, որք ծախակողմէն շրջան մ՚ընելու վրայ էին։ Իմէրէթինսքի զօրավարին հրամանաց ներքեւ եղած ամբողջ գունդն ընդ հուպ պարտաւորեցաւ կռուոյ պատրաստուելու՝ պատնէշները գրաւելով եւ իւր ճակատը հետզհետէ դարձնելով, քանի որ Տաճիկներն դէպ ի հարաւ կը յառաջէին եւ ռուսական գրից ետեւն անցնելու վրայ էին։ Կռուոյն կիսոյն մօտ զօրաց ատուար խումբըն եւս թնդանօթով մասնակցիլ սկսաւ, բայց սոյն առաջամարտն վճռական գործողութեան մ՚աստիճանին չհասաւ. երեկոյին Տաճիկներն նահանջեցին դէպ ի Միքրէ։ Նոքա Լօվացը պաշտպանող զօրաց օգնելու եկած էին միայն, եւ տեսնելով որ Ռուսք քաղաքին տիրած են՝ չէին մտածեր զայն կրկին ետ առնուլ փորձելու։

Իմէրէթինսքի իշխանն զօրաց վերջին ծայր խոնջութիւնը տեսնելով եւ նկատելով թէ հարկ էր ժամանակին Փլեւնա հասնիլ ուր կանչուած էր, չուզեց Տաճկաց հետամուտ լինել դէպ ի Միքրէ, եւ ամսոյն 5ին Լօվացի մէջ բաւական թուով պահակ զօրք թողլով՝ ճանապարհ ելաւ դէպ ի Պօկօթ, եւ երեկոյին այն տեղ հասաւ։ Հետեւեալ օրն Փլեւնայի առաջ Ռատիշէվօյէն վար՝ իւր երեք սահերօքն զետեղուեցաւ այն տեղւոյն վրայ, ուր իրեն յատկացեալ էր լինելիք նոր յարձակման մը միջոցին։ Եւ Սքօպելեվ՝ որոյ գունդն ստուարացած եւ գրեթէ 12,000 հոգւոյ հասած էր, գնաց բռնեց այն դիրքն զոր կը գրաւէր յուլիսի 20ին Ռատիշէվօյի եւ Գրիվիցայի մէջ տեղ։

# Գլուխ Քառասնեւութերորդ

## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ ԼՕՄԻ ԱՓԱՆՑ ՎՐԱՅ

( Յուլիսի սկիզբէն մինչեւ սեպտեմբերի 15ն )

### ԱՆԳՈՐԾՈՒԹԻՒՆ ՏԱՃԿԱՑ

Սոյն պատերազմին առաջին շրջանին մէջ արեւելեան կողմը կատարուած եղելութիւններն շատ կարեւորութիւն չունէին. վասն որոյ մինչեւ ցայժմ զանց եղաւ անոնց վրայ խօսիլ։ Նաեւ կը թուի թէ ոչ Ռուսք եւ ոչ Տաճիկք ընդհանուր յատակագծի մը կը հետեւէին, որով անհնար է իրարու հետ կապակցութիւն չունեցող գործողութիւններն խումբ խումբ պարառել կարգաւորեալ կերպիւ, եւ նոյն իսկ իրողութեանց պատճառաւ՝ հարկ է մի առ մի պատմել գործողութիւններն հետզհետէ՝ ըստ ժամանակին։

Երբ Յիմմէրման զօրավարն Տօպրուճա մտաւ եւ Նիքօլա մեծ դուքսն Զիմնիցայէն Դանուբն անցաւ 1877ին յունիս ամսոյ կիսուն մօտ, ըստ ամենամեծ հաւանականութեանց կարծուեցաւ թէ Ռուսաց նպատակն էր Սիլիսթրէ, Ռուսճուք, Շումնու եւ Վառնա բերդաքաղաքներէն ձեւացեալ համբաւաւոր քառանկեան դէմ գործել եւ թէ երկու կողմանէ յարձա-

կուռն սխալ ընէին։ Մէկ քանի օր յետոյ՝ երբ տեսնուեցաւ թէ Ցիմմէրման անշարժ կը մնար Տրայանոս պատուարին քով, եւ յայտնոյս Գալքանաց կուրքօ զօրավարին յանդուգն արշաւանքն իմացուեցաւ, յայտնի եղաւ. թէ Ռուսաց յառաջագիծն էր երկու թեւոց վրայ ուղղելու քառանկեան եւ Վիտի տաճկական բանակներն եւ խիզախել յառաջ դէպ յԱդրիանուպօլիս։ Ցարէվիչն քառանկեան բանակին սխալ դիմադրէր եւ Գրիւտնէր զօրավարն՝ Վիտինի բանակին. առաջինն՝ Ռուսաց գործելու խարիսխն մինչեւ Ռուսճուգ ընդլայնեց առանց արգելքի հանդիպելու, եւ յայտնի է թէ երկրորդն յաջողութեամբ Նիկոպօլսոյ տիրելէն յետոյ՝ Փլէւնայի անպատրաստից շինուած ամրութեանց դէմ խորտակուեցաւ։ Այնուհետեւ Ռուսաց յառաջագիծն նորէն կը փոխուի, արեւելեան եւ հարաւային կողմերէն՝ յարձակողական շարժումն կը դադրի, եւ օգոստոս ամսէն ի վեր ամենայն ինչ կը կոչուի Փլէւնայի տիրելու հարկաւորութեան։ Վասն որոյ Դանուբի անցքէն սկսեալ մինչեւ սեպտեմբերի 15ն՝ պատերազմին խռովութիւններն համառօտիւ բովանդակելու համար՝ չորս որոշ շրջան կը հաշուեմք. 1°. Քառանկեան դէմ յարձակում մ'ընելու դիտմամբ պատրաստուած կը թուին առաջին գործողութիւնք. 2°. կուրքօ զօրավարին յաջողութեանց վրայ Նիքօլա մեծ դուքսն կ'որոշէ Ադրիանուպօլիսն իւր գործողութեանց նպատակ ընել. 3°. Փլէւնայի ձախողութեան վրայ՝ Ռուսք կը ստիպուին պաշտպանողական դիրք բռնել հարաւային եւ արեւելեան կողմերն, եւ իրենց յարձակողական զօրութիւնքն Փլէւնայի դէմ կեդրոնացնել. 4°. Տաճիկներն յարձակումն ընել կըսկսին հարաւային եւ արեւելեան կողմերէն։ Առաջին երեք շրջանաց պատմութիւնն արդէն եղած է, եւ Շիփքայի դէմ Սիւլէյման փաշայի ըրած յարձակման վրայ եւս խօսուած է. կը մնայ միայն՝ Լոմի հովտին մէջ Ցարէվիչի բանակին արշաւանքն համառօտ ստորագրելէ յետոյ՝ բացատրել թէ ինչպիսի ճարտար գործողութեամբ Մէհէմմէտ-Ալի հարող եղաւ զայն վանել անտի։

Ցարէվիչի բանակն՝ որոյ կազմութիւնն որոշուեցաւ Դանուբի անցքէն անմիջապէս յետոյ, նախ կը բաղկանար երկու գնդերէ, որք էին՝ 12րդն եւ 13րդն։ Քօզարէվիցայի մօտ Շախօվսքօյի հրամանաց ներքեւ զետեղեալ 11րդ գունդն իւր շարժմունքը սխալ զուգակցէր նոյն բանակին հետ, բայց անոր ամբողջարար մասն չէր։ 12րդ գունդն՝ որուն հրամանատար կարգեալ էր Ցարէվիչին եղբայրն՝ Վլատիմիր մեծ դուքսն՝ Ռուսճուգի բանակին սպայակուտի գլուխ անուանեալ Վանօվսքի զօրավարին տեղ. պաշտօն ունէր սոյն բերդաքաղաքն շրջապատել եւ պաշարել, մինչդեռ Դանուբի միւս ափանց վրայ՝ Ճուրճէվօյի եւ Սլօպօծիայի մօտ զետեղեալ խոշոր թնդանօթներն իրեն սխալ նպաստէին. 13րդ գնդին պաշտօնն էր Շումնուի բանակին դէմ հսկել եւ Ռուսճուգը պաշարող գունդը պաշտպանել։

Բացատրուեցաւ թէ ինչպիսի տարօրինակ ապիկարութեամբ Պիէլա եւ Թռնօվա Տաճկաց կողմանէ անպաշտպան ձգուեցան. Պիէլայի առմանէն անմիջապէս յետոյ՝ գահաժառանգ մեծ դքսին հրամանատարութեան ներքեւ կարգեալ 12րդ եւ 8րդ գնդաց հեծելազօրքն Լոմի հովտաց մէջ ասպատակեցին առանց Տաճկաց հանդիպելու։ Զօրս գետակներ՝ որք ի մի ճիւղ կը խառնուին՝ Դանուբի մէջ թափուելէ առաջ, սոյն Լոմ անունը կը կրեն եւ են՝ յարեւմտից սկսեալ՝ Պանիցքա-Լոմ, Գարա-Լոմ, Սվօյէննիք-Լոմ եւ Աք-Լոմ։ Այս կողմերը պաշտպանել դիւրին էր. այն բազում ելեւէջներ ունեցող եւ ըստ մասին անտառապատ գեղեցիկ երկրէն տաճիկ զօրքն մեկնած ժամանակ՝ աւերած էին այն տեղերն, որպէս զի Ռուսք ուտելիք չգտնեն։

Տասն օրի չափ հեծելազօրն միայն՝

Եանթրա եւ Լօմ գետակաց մէջ տեղ գործեց. հետեւակազօրն Փավլօյի եւ Պիէլայի մէջ մնաց ի մեծ տժգոհութիւն սպայից՝ որք նշանաւոր հանդիսանալու կը բաղձային։ Ռուսական սպայակոյտն Կուրքօ զօրավարին յառաջխաղացութիւնը պաշտպանելու համար՝ Ցարէվիչի բանակն՝ անգործութեան կը դատապարտէր. կը կարծուէր թէ տաճկական բանակն Րազկրատի եւ Օսման-Փազարի մէջ տեղ էր շարուած, եւ Ռուսք զօրաց ահեղ բազմութիւն մը երեսուն եւ ըստ ոմանց մինչեւ քառասուն հազար մարդէ բաղկացեալ բանակաւ մը դէպ ի Ռուսճուգ յառաջացած եւ իրեն զօրանիստ ըրած էր Գատըր-քէօյ՝ Լօմի ափանց վրայ, որ Եանթրայի գծին պաշտպանութիւնը զանց ընելով՝ սպասեց առանց փամփուշտ մը վառելու։ Տասն օր մնաց այն տեղ, եւ յանկարծ զգաց որ Ռուսք Լօմի ափանց վրայ տարածուելով՝ իւր նահանջելու ճանապարհը պիտի կըտրէին, եւ զինքն պիտի մղէին դէպ ի Ռուս-



ԱԶԻԶ ՓԱՇԱՅԻ ՄԱՀԸ

Տաճկաց դէմ կացուցանելով՝ կ՚ուզէին արգելուլ զանոնք դէպ ի Պալքաններն երթալէ՝ այն լեռներն անցնելու վրայ գտնուող ռուսական գնդին հաղորդակցութիւնն ընդհատելու համար։

Յուլիսի 15ին՝ հետեւակազօրաց գործելու թոյլտուութիւն եղաւ, եւ երկու գունդերն արագաբար գրաւեցին Գարա-Լօմի ափունքն, ուր հեծելազօրն արդէն զետեղեալ էր. Ռուսք այս խաղացքն ընելու ժամանակ՝ իրենց ճանապարհին վրայ տաճիկ զինուոր մը չտեսան։ Դանուբի անցքն Շումնուի զօրանոցին մէջ իմացուելուն պէս, Ահմէտ-Էյուպ փաշա՝ ըստ ոմանց ճուգ, իսկոյն մեկնեցաւ եւ շտապաւ Րազկրատի կողմը գնալով՝ Թուրլագի մէջ միայն կանգ առաւ, բայց այն տեղ եւս ապահով չտեսնելով ինքզինքն եւ հեռանալով՝ Րազկրատ հասաւ յուլիսի 20ին։

Ցարէվիչն վերջին ծայր խոհեմութեամբ կը գործէր. զննութեան համար բնաւ զօրք չղրկուելով դէպ ի Րազկրատ՝ չիմացաւ Ահմէտ-Էյուպի կացութիւնն, իւր զօրքն սփռեց Գարա-Լօմի ափանց վրայ, առաջապահները վարեց մինչեւ Սվօյէննիք-Լօմ, ուրկէ այլ եւս յառաջ չգնաց հետեւակազօրն, եւ միայն Ռուսճուգը պաշարելու հոգ տարաւ, որ իւր գործողութեանց

նպատակն էր։ Խազախներ Գոտը-քէօյն մեկնելով եւ Գուզինէն անցնելով՝ Ռուսճուգէն մինչեւ Վառնա ձգեալ երկաթուղւոյն վրայ Կիւվէնլի-Եէնիճէնի կայարանը քանդելու գնացին, կամուրջն ալ հանեցին, եւ Աճմէտ-Էյուպ փաշայի նահանջելովն անտէրունջ թողուած Ռուսճուգ բերդաքաղաքին հաղորդակցութիւնքն այս կերպիւ ընդհատեցին։ Երկաթուղւոյն աճնիկ սպասարարք եւ կառավարութեան գործակալն Թէվֆիկ պէյ Չերվէնավօտա գնացին Ռուսճուգի մօտ։

Պաշարման յատկացեալ խոշոր թնդանօթներն երկաթուղեաւ Ճուրճէվօ պիտի բերուէին, ուրկէ զանոնք պուլղարական ափանց վրայ փոխադրելու համար կառաբարձ շոգենաւ մը Փարափանի եւ Փիրկօսի միջեւ կ'երթեւեկէր՝ Ռուսճուգէն հազիւ մէկ քանի հազարամէթր հեռի դէպ ի վեր։ Բայց յորմէ հետէ թագաժառանգ մեծ դքսին բանակն Լօմի մօտեցաւ՝ մինչեւ նորա նահանջելու օրն՝ լուրջ փորձ մը չեղաւ երբէք Ռուսճուգ բերդաքաղաքը շրջապատելու եւ պաշարելու համար. խոշոր թնդանօթաց փոխադրութիւնն երկար ժամանակ պահանջեց, եւ երբ օգոստոսի վերջերն հուսկ ուրեմն հասան, Ռուսճուգի շրջակայքը չղրկուեցան՝ այն դիրից մէջ զոր ռուսական բանակն թերի կերպիւ դրուած էր, այլ անապարանօք դէպ ի Փլեւնա տարուեցան ուր մեծ պէտք կար անոնց։

Ռուսճուգի կոչեցեալ պաշարումն ուրիշ բան չէր ուրեմն, բայց եթէ մերթ ընդ մերթ գնդաձգութիւն մը՝ Ռուսաց ձեռօք Ճուրճէվօյի եւ Սլօպօծիայի մօտ զետեղեալ թնդանօթաց եւ տաճկական հրապինուց միջեւ։ Ճուրճէվօյի հրամանատարն էր Շմիտ զօրավարն, եւ Դանուբի կուսակալութեան գլխաւոր տեղւոյն՝ Ռուսճուգի հրամանատարն էր ութսուն եւ մէկ տարեկան քաջ ծերունի մը, Դոյալըրլը Աճմէտ փաշա, որ 1876ին մարդասպան Չէրքէզ Հասանը ձերբակալելով բոլոր նախարարաց սպանութիւնն արգիլեց։ Սա՝ Աճմէտ Էյուպ փաշայի նահանջելուն վրայ առանձինն մնալով՝ պաշտպանութեան պատրաստութիւններ տեսաւ հազուագիւտ աշխուժութեամբ, եւ իր ձեռաց ներքեւ գտնուած միջոցներէն կարելի եղածին չափ օգուտ քաղեց։ Անկանոնները գումարտակեց, եւ անոնց վրայ գլխաւորներ կացոյց. հետեւակ պաշը-պօզուքներն դասակներու եւ վաշտերու բաժնուեցան, Չէրքէզներն եւս՝ հեծելազօրներու, եւ բերդաքաղաքէն դուրս այս զօրքն յարձակում ըրած ժամանակ՝ այլ եւս առաջուան պէս անկարգութեամբ չգործեց, այլ կանոնաւոր կերպիւ։ Դոյալըրլը Աճմէտ փաշա մասնաւորապէս հոգ տարաւ չէրքէզ ձիաւորաց վրայ, անոնց գլխաւոր անուանեց իւրեանց հայրենակիցներէն մին՝ Տէլամէր փաշան, որ Սիլիսթրէի առաջ գտնուած Ջրասուզակ նաւերուն հրամանատարն էր. սա եւս ստիպուած էր իւր նաւը թողուլ՝ ցամաքէն Ռուսճուգ փախչելու եւ ապաստանելու համար։ Չէրքէզ ծովակալն ցամաքին վրայ աւելի բարեբաղդ լինելով քան թէ ծովուն վրայ, տարօրինակ կորով եւ արիութիւն ցոյց տուաւ քաղաքին շուրջն եղած այլեւայլ կռիւներուն մէջ։

Ճուրճէվօյէն Ռուսճուգի դէմ եւ փոխադարձաբար Ռուսճուգէն Ճուրճէվօյի վրայ ռմբաձգութիւնն գրեթէ ամենօրեայ եղաւ, միայն թէ մերթ ընդ մերթ նուազ սաստկութեամբ։ Այսպէս օգոստոսի 14ն կը թուէր թէ յունիսի ռմբակոծութեան սակայն օրերուն կը նմանէր. Ռուսք կ'ուզէին քանդել այն շոգեւոր բանող աղօրիներն որ ալիւր կը հանէին պահակագնդին համար. սաստիկ գնդակոծութեամբ այն աղօրիներէն ութ հատն հրդեհեցին. Ռուսճուգի բնակչաց մէկ քանիներն որք իւրեանց տեղերը դարձեր էին՝ պարիկէններու եւ նկուղներու մէջ պահուեցան։ Հետեւեալ օրն՝ Տաճիկներն անդրադարձն հատուցին ռմբարտակներու

ներքեւ ծածկելով ծուրճէվօն, եւ այս անգամ Ռումէնք զարհուրեալ փախան այգիներն ։ Երկու քաղաքներն՝ որք արդէն յունիս ամսոյ մէջ կիսաւեր եղած էին, առաջին վնաս կրեցին այս հանապազօրեայ ռմբակոծութենէն ։ Սեպտեմբեր ամսոյ մէջ՝ երբ Ցարէվիչն նահանջեց, Տաճիկներն պահ մը նորոգեցին երկաթուղին։

## ՄԵՀԷՄՄԷՏ-ԱԼԻԻ ԺԱՄԱՆՈՒՄՆ

Տաճիկ զօրավարք անգէտ էին միթէ զինուորական նախագիտելեաց ։ Չէին համարձակեր արդեօք ճակատամարտ ընելու ։ Ցառաջագոյն իրենց պարտութիւնը կը զգային միթէ եւ դիմադրութիւնն անօգուտ կը համարէին ։ Կռուոյն այս առաջին մասն հանելուկ մ'է, որ երբէք չպիտի լուծուի ։ Տաճիկներն Եանթրայի գիծը չեն ամրացներ, Պիէլան Թափուր կը թողուն, Թռնօվան կը պարպեն ։ Գանիցքա-Լօմի քով դիւրաւ պաշտպանելի բարձրաւանդակներ կան, յորս Ռուսք Մէհէմմէտ Ալին յետոյ պիտի արգելուն, Տաճիկներն չեն մտածեր անոնց վրայ ամրանալու ։ Գարա-Լօմի գիծն եւս կը թողուն, Գատըքէօյէն կը մեկնին եւ այնչափ ուշ որ՝ եթէ Ցարէվիչն աճապարէր, կարէր Ահմէտ Էյուպի հաղորդակցութիւնքն ընդհատել ։ Բալկրան՝ Շումնու տանող ամենէն լաւ ճանապարհին վրայ կը գտնուի, զայն եւս չեն ամրացներ ։ Էսկի-Ճումայն՝ Թռնօվայէն մինչեւ Շումնու ձգեալ ուրիշ ճանապարհի մը քովն է, անոր վրայ եւս հոգ չեն տանիր ։ կատարեալ լքում մ'է այս եւ մատնութիւն մը՝ անփութութեամբ ։ Ի՞նչ կ'ընէր ծերունի Ապտ-իւլ-Քէրիմ՝ իւր Շումնուայի ճամբարին մէջ ։ Արդէն ըսած ենք, կը ծխէր, նարտ կը խաղար, եւ երկինք նայելով կը խոկար ։ Սակայն զինուորներն անպակաս էին ։ Եթէ իւր շուրջը խմբեալ բանակին ըստ բաւականին կազմակերպութիւն տանէր, Լօմի հովիտն պաշտպանող 50,000 Ռուսաց դէմ մղելու ընդունակ զօրութիւն մը պիտի ընծայէր ։ Ապտ-իւլ-Քէրիմ ունէր նաեւ իւր հրամանոց ներքեւ տաճկական բանակին ամենէն ընտիր զօրավարներէն մէկ քանիներն, այսինքն՝ Նայշթատի զինուորական Ակադեմիային աշակերտներէն Ազիզ փաշան, որոյ վրայ մեծ յոյս կը տածուէր, Չէրքէզ Ֆուատ փաշան՝ որ հեծելազօրաց լաւ սպայ մ'էր, եւ Նէճիպ փաշան՝ որ իւր հաստատուն բանակին մէջ ամենէն լաւն ըրած էր ։ Ինչ ունենալ պէտք էր՝ այս բոլոր տարերքն ի գործ վարելու համար. ազդու կամք մը եւ գործօն միտք մը ։ Ապտ-իւլ-Քէրիմ ծերունւոյ մը յամառութիւնը միայն ունէր, նա իւրեն սեպհական յատակագիծ մ'ընտրած էր, եւ չէր ուզեր ի բաց թողուլ այն ամեն ազդարարութեանց, հրամանաց եւ պատուէրաց հակառակ, զորս Կոստանդնուպոլսէն առ ինքն կ'ուղղէին Սուլթանն եւ նախարարք՝ Ռուսաց դիւրաւ յառաջ գալուն վրայ զարհուրելով ։ Ինքն որոշած էր Շումնուէն չհեռանալ եւ այն քաղաքին մէջ միայն պաշտպանութիւն ընել, միացեալ բանակին համար հոգ չէր ըներ, եւ ի հարկին Բարձրագոյն Դրան հեռագիր մ'եւս կ'ուղղէր թէ դիտմամբ ընելով՝ թոյլ կ'ուտար Ռուսաց յառաջ խաղալու ։ Կ'ըսուի թէ ամեն օր կը կարդար 1828—29 ի պատերազմին վրայ Պ. Ֆօն Մօլթքէի գրած գիրքը, եւ ուշի ուշով կ'որոնէր անոր մէջ նմանութեան կէտեր եւ հետեւելու օրինակներ ։

1828ին՝ Հիւսէին փաշա Շումնուէն բնաւ չէր հեռացեր՝ շարունակ կրաւորական դիրք մը բռնելով, որով Ռուսք չկարացին Պալքանները անցնիլ առաջին տարին ։ 1829ին՝ Մէհէմմէտ-Րէշիտ մեծ եպարքոսն ուզեց յարձակողական դիրք բռնել, դուրս ելաւ իւր պատնէշներէն, սակայն շատ չհեռացաւ, հազիւ չորս կամ հինգ փարսախ յառաջացած էր, եւ տակաւին Շէյթանճըգը չէր անցեր՝ ուր այսօր երկաթուղւոյ կայարան մը կայ. անդ այնպիսի պարտութիւն մը կրեց, որոյ վրայ

Տիֆլիզ մինչեւ Ադրիանուպոլիս խաղաց մէկէն ։ Ապտ-իւլ-Քէրիմ լաւագոյն կը համարէր Հիւսէինի օրինակին հետեւիլ, որ աւելի յարմար կու գար իր կազմուածքին, փամփուշտի հիւանդութեամբ վտանգեալ առողջութեանն, եւ ութսնամեայ ծերութեանն. իր ապարանից մէջ փակուելով՝ թոյլ կուտար որ ուրիշներն ուզածնին ընեն, եւ զօրքն կը վհատէր ։

Բարեբաղդաբար Ապտ-իւլ-Քէրիմ պաշտօնէ անկաւ ։ Իր տեղ ընդհանուր հրամանատար անուանեալ Մէհէմմէտ-Ալի յուլիսի 19ին Շումնու հասաւ երկաթուղեաւ, եւ այնուհետեւ գործերն բոլորովին կերպարանափոխ եղան ։ Ապտ-իւլ-Քէրիմ իւր հրամանաց ներքեւ ունեցած բանակը չէր գործածեր, բայց գոնէ անվթար յանձնեց զայն իւր յաջորդին, եւ Մէհէմմէտ-Ալի անխոնջ եռանդեամբ հոգ տարաւ անոր վերակազմութեանը ։

Սորա առաջին արժանիքն եղաւ որ Րազկրատի եւ Էսկի-Ճումայի կարեւորութիւնն հասկացած էր ։ Նախ Րազկրատ բերել տուաւ Ֆուատ փաշայի հեծելազօրն, զոր Ահմէտ-Էյուպ Թուրլագի մէջ ձգեր էր, ուր՝ կարելի էր Քօսթանցան դրաւող Ռուսաց յանկարծական արշաւանօք վտանգել զայն ։ Ազիզ փաշայի յանձնուեցաւ Տաճկաց այս նահանջը պաշտպանել, որոյ համար հետեւակազօրօք եւ ալ գնաց նաեւ Էսէրճիքի մօտ զետեղեցաւ ։ Իր պաշտօնն կատարեց յոյժ լաւ կերպիւ ։ Ֆուատ փաշայի հատուածն ամենէն վտանգաւոր կէտերն անցեր էր եւ յուլիսի 26ին արդէն զերծ կը գտնուէր տագնապէ, երբ յանկարծ Ազիզ փաշա լուր առաւ թէ ռուսական ստուար խումբեր Էսէրճիքի վրայ կը խաղային ։ Նա կարող էր կամ մանաւանդ պարտաւոր էր ետ քաշուելու, բայց քաջ զօրավարն կ՚ուզէր գլխաւոր հրամանատարին ճիշդ տեղեկութիւններ կարենալ հաղորդել թշնամւոյն զօրութեան եւ դիրաւորութեանց վրայ ։ Վասն որոյ Ռուսաց դէմ գնաց սահապետ Ֆէյզուլլահ փաշայի հրամանատարութեան ներքեւ գտնուած չորս վաշտերով ։ Ճանապարհին մօտ անտառակ մը կար, զոր հարկ համարեց գրաւել. Տաճիկներն իրբեւ արձակամարտ ցրուած՝ այն անտառակին մօտեցան, ուրկէ Ռուսքլաւ ուղղութեամբ սաստիկ կրակ մ՚ընել սկսան իրենց դէմ ։ Թուրք զօրավարն չէր կարծեր որ թշնամին մեծ զօրութիւն ունէր, եւ իւր չորս վաշտերն անտառը գրաւող Ռուսաց դէմ վարեց ։ Զինուորներն գնտակներու տարափի մը ներքեւ ծածկուեցան, գնտակ մը եւս Ազիզ փաշայի զարնուելով սպաննեց զայն, եւ Ֆէյզուլլահ փաշա եօթն տեղէ վիրաւորեցաւ ։ Քիչ ժամանակի մէջ վեց հարիւրէն աւելի Տաճիկներ տապաստ կամ վիրաւոր անկան կռուատեղին վրայ ։ Այսու ամենայնիւ Թուրքերն կարող եղան Ռուսաց զօրքը վանելու, բայց անտառակին միւս կողմն այնքան ստուար զօրախումբեր տեսան որ պարտաւորեցան ետ քաշուիլ. այն անհշան կռուոյն մէջ գրաւեցաւ այսպէս ի կենաց Թուրքիոյ լաւագոյն զօրավարներէն մին ։

. Մէհէմմէտ-Ալի փոյթ ունեցաւ այնուհետեւ Շումնուէն հանելու՝ դատարկութեամբ թուլցեալ զօրքն, եւ սփռեց զայնս իւր ընտրած տեղեաց վրայ ճակատ կազմելով ։ Նախ Նէճիպ փաշայի հատուածն մեկնեցաւ, եւ բաց ի տասն հազարի չափ զօրքէ՝ բանակին միացեալ մասն եւս ճանապարհ ելաւ, կէսն՝ դէպ ի Րազկրատ եւ կէսն դէպ յԷսկի-Ճումա ։ Անդանօր զօրաց վաշտերը գործածուեցան հողոյ հետ աշխատելու, պարկէններ փորելու, եւ ի քթթել ական մարտկոցներ կանգնեցան Րազկրատի եւ Էսկի-Ճումայի առջեւն եղած երկու բարձրաւանդակներուն վրայ, եւ այս քաղաքներն շուտով ամրացան ։ Նոր հրամանատարն անխոնջ կ՚երթեւեկէր մէկ կայանէն միւսն՝ ամենայն ինչ ինքնին աչքէ անցընելով ։ Օր մը այսպիսի զննութիւն մ՚ըրած միջոցին՝ պահպայող Խաղախներու խումբ մը քիչ

մնաց զինքը պիտի ձերբակալէր : Մասնաւորապէս հոգ տարաւ Բազկրատի, ոչ թէ միայն անոր համար՝ որ այս կէտն ամենակարեւորն էր, եւ ամենէն աւելի Ռուսք անոր դէմ կըսպառնային, այլ վասն զի վստահութիւն եւս չունէր Ահմէտ-Էյուպ փաշայի վրայ, որ հրամանատար էր անդ։ Կ'ուզէր անոր տեղ ուրիշ մը դնել, բայց Ահմէտ-Էյուպ ազդեցութիւն ունէր Տաճկաց հին կուսակցութեան մէջ, եւ Մէհէմմէտ-Ալի որ բանակին հաճոյ չէր երեւեր՝ չկարենալով իւր օտարացեղ եւ հաւատափոխ լինելը մոռցնել, Սուլթանին բարի կամեցողութիւններէն զատ ուրիշ նեցուկ մը չունէր, եւ յանդգնութենէ եւ հաստատամտութենէ զուրկ էր. վասն որոյ չհամարձակեցաւ իւր այն ապիկար տեղակալն հեռացնել։

Ջանաց պաշը-պօզուգներն մարտագիտութեան համեմատ կրթել. կ'ըսուի թէ օր մը՝ քիչ մնաց իրենց սպայները սրակոտոր պիտի ընէին սոսկ սխալ շարժման մ'առթիւ։ Հարկ եղաւ թողուլ որ ըստ իւրեանց եղանակին կռուին սոքա, բայց դէթ յօգուտ վարեց զանոնք՝ խազախաց Չոլըներուն դէմ, որ ամենուստ իւր բանակին ճակատէն յառաջ կ'անցնէին եւ թշնամւոյն շարժումները բոլորովին կը ծածկէին։ Պահոյոց զօրաց խումբեր կազմեց, որք ամեն ուրեք յածելով՝ երկրին մէջ քիչ մը ապահովութիւն մուծին. այս տնօրէնութեան արդիւնքն եղաւ Աք-Լօմի հովտին մաքրուիլն եւ ժողովրդեան մէջ յառաջ եկած սարսափին վերջանալն։

Մէհէմմէտ-Ալի օգոստոս ամսոյն մեծ մասն անցուց այսպէս բանակին վերակազմութեան մեծ գործոյն. Ռուսք եւս պարապոյ ժամանակ թողին իրեն։ Յուլիսի 31ին Փլէվնայի առաջ իրենց կրած պարտութեան եւ Կուրքօ զօրավարին նահանջելուն վրայ՝ իրենց բանակին թուոյն անբաւականութեանն խելամուտ լինելով, յանկարծ շատ խոհեմ եղած էին եւ ոչ ուրեք կռուելու կը համարձակէին՝ Օսման փաշան վանելէ առաջ, որ իրենց աջ թեւը կը ճնշէր այնքան կորովով, վասն որոյ Ցարէվիչն Թամուր թողուած կայաններն գրաւելով բաւականացաւ, եւ այն շրջանին մէջ թշնամութիւնք անոնցմէ առաջամարտներէ զատ ուրիշ բան չէին։

Նոյն միջոցներն Մէհէմմէտ-Ալիի քով հասան այն զօրավիգներուն մէկ մասն որք Անդրագար գաւառներէն Կոստանդնուպօլիս կուգային, եւ յետոյ կը ղրկուէին բոլոր բանակաց քով։ Զէյպէքներու խումբեր եւս հասան, որ Փոքր-Ասիոյ խորերէն կը վազէին իմամներուն քարոզութեամբքն սաստիկ ջեռեալք։ Վառնայէն բերել տուած էր նաեւ եգիպտական զօրաց բաժինն, որ մինչեւ այն ժամանակ կըսպասէր անդ՝ դէմ դնելու համար Ռուսաց, եթէ Ցիմմէրման յարձակում մ'ընէր։ Այս զօրքն շատ նեղութիւն պատճառեցին գլխաւոր հրամանատարին, եւ յետոյ նորա պաշտօնէն անկանելուն մասամբ իւրք առիթ եղան։

Սոքա բանակատեղն հասած ժամանակնին լաւ զգեցեալ, լաւ զինեալ էին, եւ լաւ ամսական կ'առնուին. արհամարհանօք նայեցան անօթի թուրք զօրականաց վրայ, որք ըստ մեծի մասին իրենց ոտքի ամաններն Պուլղարիոյ ցեխերուն մէջ թողած էին եւ իրենց համազգեստին ծուէններն ճանապարհաց մացառներուն վրայ։ Երբ հարկ եղաւ աշխատիլ հողոյ հետ, եգիպտական զօրքն գերազանց հանդիսացան, եւ Թուրքերը ծաղրեցին որք իրենց չափ ժիր եւ թեթեւաշարժ չէին. բայց երբ պէտք եղաւ ճակատատեղւոյն վրայ երեւան գալ, նոյն շքեղ խումբն յուսացուածէն ստորին ցոյց տուաւ ինքզինքն։

Քօչէլեէվօյի մօտ Խոփլին վաշտերն վարանեցան, աշխոյժ չունեցան եւ այն ժամանակ միայն կռուեցան՝ երբ տաճկական վաշտերն իրենց օրինակ տուին. Ցէրքօվնայի կռուոյն ժամանակ՝ եգիպտական թնդանօթաձիգներն յամեցին, ժամանակին չհասան եւ գործ մը տեսնելու առիթն անցուցին, անկարելի եղաւ հետե-

ւականզօրն կառոյ մէջ մտածանել, եւ մինչդեռ տաճկական փաշաներն մեծ կորուստ կը կրէին Ռուսաց կրակին ներքեւ, եգիպտական զօրքն հազիւ երեք կամ չորս սպանուող տալով անկեալ եւ տասն երկու հոգի վիրաւոր ունէր : Զինուորաց այս անարիութենէն զատ՝ իրենց գլխաւորին՝ Հասան իշխանին պահանջմունքն չարաչար դժուարութեանց առիթ եղան Մէհէմմէտ-Ալիի համար, որ այս գործոյն մէջ՝ ինչպէս նաեւ Ահմէտ-Էյուպ փաշայի մասին պէտք եղած իշխանութիւնը չունէր ստիպողական միջոց մը ձեռք առնելու համար :

Զօրավիգներն հին զօրաց կորգերուն մէջ մտածուելէն եւ եգիպտական զօրաց բաժինն հասնելէն յետոյ՝ Մէհէմմէտ-Ալի իր ձեռաց ներքեւ ունեցաւ 68 փաշա, 12 հեծելագունդ, եւ 11 թնդանօթաշար. այսինքն՝ ընդ ամենն 80,000 հոգի : Բերդաքաղաքաց պաշտպանութեան յատկացեալ զօրքն ի բաց առնլով՝ 60,000 հոգիէ բաղկացեալ գործող բանակ մը կը մնար Մէհէմմէտ-Ալիի : Այս զօրաց հրամանատարներուն մէջ երկու եւրոպացիներ կային, Պէյքըր փաշա որ անգղիացի էր՝ եւ Րաշիտ փաշա (զօրավար Շթրէքքէր) նախկին հրամանատար Վառնայի :

## ԱՌԱՋԱՄԱՐՏՔ ԵՒ ԶՆՆՈՒԹԻՒՆՔ ԼՕՄԻ ԱՓԱՆՑ ՎՐԱՅ

Ըսուեցաւ թէ առաջամարտներ եւ զննութիւններ եղան օգոստոս ամսոյ մէջ Լօմի ափանց վրայ : Ասոնք նախընթացներն էին աւելի ծանրակշիռ գործողութեանց, որոց մօտալուտ ըլլալն ամեն ոք կը գուշակէր : Այն կռուոց կարեւորագոյններն էին Եսիտինայի, Գառա-քէօյի Այազլարի, Պոշիլլէրի, Սատինայի եւ Սիփահիլէրի մօտ եղածներն :

Տաճկական տեղապահին խումբ մը՝ որ 700 ձիաւորներէ բաղկացեալ էր հանդերձ թնդանօթածիգ եւ հետեւակ զօրօք, օգոստոսի 13ին՝ Րազլրատէն հազիւ տասն երկու հազարամէթր հեռու Եսիտինայի մօտ ընդհարեցաւ Լուսինօյի հեծելազօրաց մէկ հեծելագունդին : Ռուս հետեւակազօրաց վաշտ մը երկու թնդանօթով կռուատեղին վրայ հասնելով, Տաճկաց տեղապահին խումբն նահանջեց :

Գոյսէրիէլի Ահմէտ փաշա՝ ամսոյն 16 ին Ռուսճուգի շուրջը ռուսական առաջապահ խմբերուն ընդհանուր զննութիւնն ըներ տուաւ : Տաճիկներն Տօլայի եւ Պասարալօվայի խումբերն ետ մղեցին, յետոյ իրենք ալ ետ մղուեցան առաջապահներուն օգնութեան հասնող բազմաթիւ զօրաց կողմանէ, եւ ռուսական հեծելազօրքէն հալածուեցան մինչեւ Ջէրմէնավօտա :

Այազլարի կռիւն աւելի ծանրակշիռ էր, թէեւ նախապատրաստ անուանն ալ արժանի չէր : Էսկի-Ճումայի շուրջն Մէհէմմէտ-Ալիի ամրացուցած դիրքերուն մէջ՝ Եէնի-քէօյ նոյն կողմի դիրից բանալին համարուած էր : Ռուսք յուլիս ամսոյ մէջ այս գիւղը գրաւած էին, բայց յետոյ կամաւ մեկներ էին անկէ՝ Փլեւնայի պարտութենէն յետոյ վարանեալ գտնուած ժամանակնին : Այն նահանջն տարօրինակ սխալ մ'էր, վասն զի եթէ նոյն կէտն իրենց ձեռքը գտնուէր, Մէհէմմէտ-Ալիի համար անհնար պիտի ըլլար Էսկի-Ճումայի մէջ մնալ, եւ Ռուսաց 13րդ գունդն պիտի կարէր Րազլրատի եռեւն անցնիլ, երբ Ցարէվիչն ուզէր այն քաղաքին վրայ յարձակիլ : 13րդ գնդին հրամանատար Հաւըն զօրավարն իրեն զօրանիստ ըրած էր Փօփ-քէօյ, որ Եանթրայի եւ Լօմի հովտաց ամենէն մեծ գիւղաքաղաքն է Պիէլայէն յետոյ, եւ Շումնու, Ռուսճուգ եւ Պիէլա տանող երեք ճանապարհաց իրարու կցուած տեղը շինուած է՝ հեշտազուարճ բլրոյ մը արեւելեան զառիթափին վրայ : Այս պաշտպանողական դիրքն՝ որոյ կեդրոնն է Փօփ-քէօյ՝ առաւելութիւնն ունի, որ նոյն գիւղն եւ գծին վրայ գտնուած բոլոր միւս գիւղերն՝ բաց ի Գարա-Հասան-քէօյէն, ցածն են՝ իրենց

մօտ աւելի բարձր դիրք գտնուելով։

Զօրավար Հայն Եէնի-քէօյի բարձանց վրայ Տաճկաց ժրութեամբ աշխատիլը տեսնելով՝ հասկացաւ իւր գործած սխալը, եւ ուզեց դարման մ՚ընել նոյն դիրքը վերստին գրաւելով։ Ամսոյն 21ին՝ 12 կամ 15 վաշտի չափ հաշուեալ ռուս զօրք՝ որք Այազլարէն մեկնած էին, շրջան մ՚ընել սկսան՝ խաղալով դէպ ի Գըզըլլար գիւղն, որ Այազլարի եւ Բասիմ-փաշա-քէօյին մէջ տեղն է։ Տաճիկներն զանց ըրեր էին ամրացնել զայն. նախ յարձակումն յաջող գնաց Ռուսաց համար, երկու բանակաց առաջապահ խմբերուն մէջ տեղի անջրպետին վրայ գտնուող պաշը-պօզուքներն յետս մղուեցան, եւ Գըզըլլար առնուեցաւ. բայց Եէտի-Ալրանի բարձանց վրայ Տաճիկներն իրենց բուն դիրքն տարօրինակ կատաղութեամբ պաշտպանեցին, մինչեւ որ Էսկի-Ձումայէն զօրք հասաւ եւ Ռուսաց ընդհարման դիմադրելով՝ յարձակողականի սկսաւ։ Սարսափելի էր ջերմութիւնն. մէկ քանի ժամ արագաքայլ ընթանալէն վերջին աստիճան խոնջեալ վաշտերն անմիջապէս թշնամւոյն դէմ վարեցան եւ պարտաւորեցան լեռնէն վեր ելնելու սաստիկ կրակի մը ներքեւ։ Ռուսք տաճկական թնդանօթաց բուռն ռմբաձգութենէն կըստիպուէին տեղի տալ. Թուրքերն կը հալածեն զանոնք մինչեւ Գըզըլլար, եւ այս գիւղը կը գրաւեն։ Բոլոր Ռուսք երեկոյեան ութերորդ ժամուն՝ Լօմի ձախակողմեան ափանց վրայ անցեր էին։

Նոյն միջոցներն Էսկի-Ձումայի մէջ գտնուող Սալիհ փաշա՝ առժամանակեայ կերպիւ Տաճկաց ձախակողմեան թեւին հրամանատարութիւն կ՚ընէր մինչեւ Հասան Իշխանին գալուստ։ Սա դիտելով թէ Բէնչալիսի տագնապ մ՚անցուցած էր Եէնի-քէօյի դիրք համար, հասկացաւ թէ միշտ վտանգաւոր էր այն տեղի գրաւումն, քանի որ Ռուսք Այազլարի տէր էին. վասն որոյ ամսոյն 22ին առաւօտուն կանուխ յարձակում մ՚ընել տուաւ նոյն գիւղին վրայ. Տաճկաց ստուար խումբ մը Լօմէն անցնելով՝ դիւրաւ վանեց գիւղը պաշտպանող երկու վաշտերն։ Հայն զօրավարն անպատճառ Այազլարն վերստին գրաւելու հրաման ըրկեց 1ին հասուածին հրամանատար Փռօխօռով զօրավարին, որոյ ըրած գէշ կարգադրութեանց պատճառաւ՝ մինչեւ ծանր կերպիւ վտանգեալ էր 13րդ գնդին կացութիւնն։ Սօֆիայի գումարտակն երեկոյեան տասներորդ ժամուն յարձակումն ըրաւ, եւ սուինով դուպարելէ յետոյ՝ կարող եղաւ Տաճիկները վանելու այն տեղերէն որոց տիրած էին առաւօտուն. հրացաններու կրակն բոլոր գիշերը տեւեց, Տաճիկներն Լօմի միւս կողմն չանցան եւ ամսոյն 23ին վերստին ջանացին Այազլարը գրաւելու։ Ռուսաց առաջին հասուածն ամբողջ այն կէտին վրայ համախմբեալ էր գիշերային մթութենէն օգուտ քաղելով, եւ Սօֆիայի, Նէվայի եւ Պօլխովի գումարտակներն արիաբար դէմ դրին երեք անգամ յարձակող Տաճկաց. բայց երբ Սալիհ փաշա իւր բոլոր զօրախմբերն հասաւ, Ռուսք չկարացին առնել չորրորդ յարձակման. կրկին Այազլարէն հեռացան եւ երեք հազարամէթր հեռի Սուլթան-քէօյի մօտ քաշուեցան Փօփ-քէօյն պաշտպանելու համար։

Ռուսք իրենց տեղեկագրաց մէջ կ՚ըսեն թէ 1 սպայ եւ 60 զինուոր միայն տապաստ անկան իրենցմէ, եւ 11 սպայ եւ 274 զինուորք վիրաւորեցան. բայց հաւաստի է թէ նոցա կորուստն այս թուէն աւելի եղաւ միայն ամսոյն 23 ին։

Այազլարի յաղթութեան վրայ Րազկըրատ բոլորովին վտանգէ զերծաւ, ռուսական բանակին ձախակողմեան թեւն յետկոյս գնաց. Մէհէմմէտ-Ալի պատուական տեղեկութիւններ առաւ ռուս զօրաց տեղափոխութեան մասին եւ Թուրք զինուորք կատարելապէս խրախուսուեցան։

Տաճիկներն օգոստոսի վերջին շաբաթուն մէջ երեք անգամ եւս զննութիւն-

ներ ըրին Ռուսաց ճակատուն դէմ. առաջինն ամսոյն 25ին՝ Սատրնայի կողմն. երկրորդն 26 ին՝ Սիփահլէրի կողմն, եւ երրորդն 27ին՝ դէպ ի Գառը-քէօյ. առաջին երկու զննութիւնք՝ ամսոյն 30 ին Գարա-Հասան-քէօյի մօտ մղեալ ճակատամարտին նախընթաց պատրաստութիւնքն էին։ Սիփահլէրի կողմն զննութիւն ընելու ժամանակ՝ Տաճիկներն ռուսական տեղազնին խմբի մը հանդիպեցան, որ Փօփ-քէօյէն մեկնած էր։ Այս բանն առիթ տուաւ քաջագործութեան մը. Պուքրէշի Օրէան լրագրին՝ մանրամասն տեղեկութիւններ կուտայ այս մասին գրեթէ հետեւեալ կերպիւ.

Ամսոյն 25ին արշալուսոյն՝ հետեւակ զօրաց փաշտ մը իւր բռնած տեղէն մեկնեցաւ՝ առջեւէն 60 Խազախներ ունենալով, եւ Հայտար-քէօյէն վար Գարա-Լօմէն անցնելէն յետոյ հիւսիս շեղեցաւ՝ պաշտօն ունենալով զննութիւն մ'ընել մինչեւ այն ուղին՝ որ Էսկի-Ճումայէն Րազկրատ կը տանի։ Տասներորդ ժամուն միջոցներն՝ երբ Գաչիլլէրի մօտ հասաւ, Խազախներն 800 մէթրի չափ բացէն յառաջընթաց կը լինէին. տաճիկ զօրաց փաշտ մը երեւեցաւ ճանապարհին վրայ։ Ռուսք առանց խորհրդակցելու կրակ ընել սկսան, հրացաններն գոգցես իրենք իրենցմէ կը պարպուէին. կռուին սկզբանէ յոյժ սաստիկ էր։

Բայց Տաճիկներն աւելի բազմաթիւ էին քան զՌուսս, որք քառորդ մը կռուելէ յետոյ՝ 2,000էն աւելի Թուրքերու մէջ մնացին եւ պաշարուեցան։ Բաց դաշտի վրայ ոչ ոք անձնատուր կը լինի. սակայն եւ այնպէս Տաճիկներն իրենց թշնամիներէն պահանջեցին որ կրակը դադրեցնեն՝ ըսելով թէ անօգուտ է դիմադրութիւն ընել։ Ռուսք այս պահանջման պատասխանեցին կրակը սաստկացնելով։ Սակայն պէտք չէր խաբուիլ. իրենց համար անհնար էր յաջողութիւն ունենալ, եւ կռիւը շարունակելով՝ անշուշտ ամենքն պիտի սպաննուէին։ Ջոկատին միրուորեալ հրամանատարն փաղփաղակի իւր սպայները գումարեց. «Իմ կարծիքս, ըսաւ, այս է որ լաւագոյն է մեռնիլ քան թէ Տաճկաց գերի ըլլալ. սակայն այս մասին որոշում մ'ընելէ առաջ՝ կ'ուզեմ ձեր կարծիքն իմանալ։» Սպայք եւս անոր համակարծիք եղան։ Զինուորք իբրեւ արձակամարտ ցրուած էին. մօտն եղած արգելներուն ետեւ պատսպարուելով, պառկելով եւ սողալով կրակ կ'ընէին։ Իրենցմէ արդէն 100 հոգւոյ չափ ինկեալ էր, սակայն տակաւին 700ի չափ կային եւ կարէին երկար ժամանակ դէմ դնել այն 2,000 Տաճկաց։ Կռիւն կատաղութեամբ, անգթութեամբ եւ յուսահատութեամբ շարունակուեցաւ։ Տաճիկներն 60 Խազախաց վրայ յարձակում ըրած չէին. անոնց անցնիլը տեսած էին իրենց դարաններէն, բայց կարծելով թէ նոքա հետեւակազօրաց ջոկատի մը կ'առաջնորդէին, չէին դպեր նոցա, որպէս զի ետեւէն եկող զօրաց ձայնատուր չլինին։

Վասն որոյ Խազախներն հանդարտութեամբ շարունակեր էին յառաջել, երբ յանկարծ իրենց ետեւէն հրացաններու սաստիկ պարպատիւն մը լսելով կանգ առին։ Ջոկատին հրամանատարն հասկացաւ որ ռուսական հետեւակազօրուն վրայ Տաճիկներն յարձակած էին, ետ դարձաւ փութով սոցա զօրքը զննելու համար, եւ տեսաւ որ բազմաթիւ էին եւ անկարելի էր ճակատ առ ճակատ յարձակիլ անոնց դէմ։

Այն ժամանակ խորամանկութիւն բանեցուց։ Տաճիկներն, ըսաւ ինքնիրեն, անշուշտ իմ անցնիլս տեսած են, վասն որոյ կը կարծեն թէ հրացաններու ձայնը լսելով ես առաջ երթալու վրայ եմ, եւ կամ լսած լինելով ետ կը դառնամ։ Այս կերպ ընելու չէ։ Եւ հրաման ըրաւ իւր հեծելոց որ ձիերն սանձարձակ փախցնելով՝ իրեն հետեւին, մեծ շրջան մ'ըրաւ՝ միշտ արշաւակի ընթացիւք, Գաչիլլէրի ետեւէն

անցնելով՝ կրկին Գարս-Լօմի քով հասաւ, այն գետակին աջակողմեան ափանց վրայէն դէպ ի վեր գնաց մինչեւ Հայտարքէօյ, եւ առաւօտուն անցած ճանապարհին վրայ կռուատեղին մօտեցան հուսկ ուրեմն։ Հրամանատարն իր մարդիկն համրեց. մէկ մարդ միայն բացակայ կը գտնուէր, վասն զի ձին ճանապարհին վրայ անկեալ էր։



ԶՕՐԱՎԱՐ ՏԷՐՕԺԻՆՍՔԻ

ելաւ նորէն։ Այս շարժումն երեք ժամու մէջ եղած էր. այն 60 Խազախներն երեք ժամու մէջ գրեթէ 53 հազարամէթրի չափ տեղ ճանապարհ ըրած էին։

Այն 39 քաջերն կէս օրէն մէկ ժամ յետոյ կռուոյն ասպարէզն հասան։ Տաճիկները՝ որք չէին մտածեր թէ այն կողմէն հեծելազօրք պիտի գար, կարծեցին թէ

զօրավիգ մ՚ է. եւ իրենց այնպէս թուեցաւ նաեւ թէ այն ձիաւորներն մեծ խմբի մը առաջապահներն էին։ Իրենք խոնջեալ էին նաեւ ռուս հետեւակազօրաց յամառ դիմադրութեան պատճառաւ, եւ շատ մարդ կորուսած էին։ Վերջապէս փող զարնուեցաւ ի նշան գումարման զօրաց, եւ Տաճիկք նահանջեցին։ Սակայն ոչ ամենքն, վասն զի 237 հոգի գերի բռնուեցաւ իրենցմէ։

## ՅԱՐՁԱԿՈՂԱԿԱՆ ԴԻՐՔ ՏԱՃԿԱՑ. — ԿՌԻՒ ԳԱՐԱ-ՀԱՍԱՆՔԷՕՅԻ

Պատերազմական արուեստն իր այլ եւ այլ գործողութեանց մէջ կը պահանջէ շարունակ յանպատրաստից ձեռնարկութիւններ, եւ ասոր համար հաստատամտութիւն ունենալ պէտք է. այլ Մէհէմմէտ-Ալի արագ որոշում ընելու կարող չէր՝ պէտք եղած վայրկենին բաղդին բերումն իբրեւ նպաստաւոր հաւանականութիւն ի հաշիւ առնլու համար իբրեւ զօրավար. նա չէր գիտեր գուշակել. Լօմի ափանց վրայ լինելիք գործողութեանց մասին լաւ յատակագիծ մը յօրինած էր, եւ գործադրութիւնն ի սկզբան յաջող գնաց, բայց չշարունակուեցաւ կորովով՝ ընդհանուր հրամանատարն անհնազանդ Սիւլէյման փաշայի կողմանէ լքեալ եւ առանձինն մնալով, թէեւ իր զօրքն Ցարէվիչին ունեցածէն աւելի էր, սակայն եւ այնպէս առ խարխափս գործեց, չկարաց իր առաջին յաջողութիւններէն օգուտ քաղել, չհամարձակեցաւ վճռական հարուած մը տալու, եւ վերջապէս կորոյս իր ընտիր կարգադրութեանց բովանդակ արդիւնքն։

Նորա յատակագիծն էր այս. Ռուսաց արեւելեան ճակատն Ռուսճուգէն սկսեալ մինչեւ Թռնովա կը տարածուէր՝ կոր գիծ մը ձեւացնելով, որ Բազկրատի եւ Էսկի-Ջումայի դիմաց դէպ ի դուրս ուռեցիկ էր։ Ռուսճուգի դէմ գտնուող 12րդ գունդըն ձախակողմեան թեւը կը կազմէր. Էսկի-Ջումայի դէմ ճակատեալ 13րդ գունդն կեդրոնը կը ձեւացնէր. եւ Քօզարէվիցայի մօտ զետեղեալ 11րդ գունդն՝ աջակողմեան թեւը։ Այն չափազանց երկարաձիգ գծին անպատեհութիւնն այս էր որ երեք գնդերուն իրարու հետ ունեցած կցորդութիւնքն յոյժ անբաւական էին։ 12րդ եւ 13րդ գնդերուն մէջ տեղ՝ ճիշդ Բազկրատի դիմաց, որոյ մօտ կը գտնուէր տաճկական բանակին ստուար մասն, բաց տեղ մը կար 12 կամ 15 հազարամէթրի չափ, զոր տկար կերպիւ կը պաշտպանէին Սօլէնիքի, Բօչէլեէվօյի եւ Քօսթանցայի մէջ զետեղեալ արձակ ջոկատներն։ 12րդ եւ 11րդ գընդերուն մէջ տեղ՝ Օսման-Բազարի դիմաց՝ աւելի ընդարձակ տեղ մը կար պարապ, վասն զի Շախովսքոյի զօրքն կըրող չէր եղած մինչեւ Տէմիրքէօյ անգամ յառաջելու՝ Օսման-Բազարի ճանապարհին վրայ. Մէհէմմէտ-Ալի այս կացութենէն օգուտ քաղել կ՚ուզէր եւ Սիւլէյման փաշան 35 կամ 40,000 մարդով Օսման-Բազարէն յառաջ վարել՝ 11րդ եւ 13րդ գընդերուն միջեւ եղած պարապ տեղին վրայ, եւ ինքն իր ամբողջ բանակաւն այն անջըրպետին վրայ նետուիլ, որ 12րդ եւ 13րդ գնդերուն մէջ տեղն էր, այս վերջին գունդը խորտակել Սիւլէյմանի եւ իր զօրաց միջեւ, եւ Պիէլա հանիլ 12րդ գնդէն առաջ։ Օգոստոսի վերջերն յոյժ յարմար ժամանակ էր այս հոյակապ յատակագիծը գործադրելու համար. Ռուսք իբրեւ առձեռն պատրաստ զօրավիգ մէկ զինուոր անգամ չունէին. որդուրեւ 4րդ եւ 9րդ գունդերն Փլէվնայի առջեւ էին, 8րդ գունդն Շիփքայի մէջ պինդ արգիլուէր, նթէ Սիւլէյման փաշա յայսկոյս Պալքանաց մէկ քանի հազար մարդ թողլով՝ անոնց ցոյց մ՚ընել տար. եւ ռուսական բանակին միւս երեք գունդերն, այսինքն՝ 11րդն, 12րդն եւ 13րդն իրարու հետ հաղորդակցութիւն չունենալով եւ

60,000էն աւելի հոգիէ բաղկացեալ չլինելով՝ 100,000 Տաճկաց դէմ պիտի կըռուէին։ Ս. յազլարի հանգամանաց մէջ եթէ ձախողութիւն մը պատահէր, ինչ սոսկալի հետեւութիւններ պիտի ունենար. Ենթադրելով թէ Ռուսք Պլեւնայի մօտ եւ Չիչթօվի կամրջէն հազիւ մի քանի հազարամէթր հեռի ճակատամարտէին եւ յաղթուէին, բնաւ չափազանցութիւն չէ կարծել թէ 1870ի գերմանօ-գաղղիական պատերազմին մեծ աղէտից կրկնումն մը պիտի պատահէր։ Բայց Մէհէմմէտ-Ալի բան մ'ընելու չհամարձակեցաւ. Սիւլէյմանի կողմանէ լքեալ լինելով եւ իւր սեպհական բանակէն զատ ուրիշ օգնութիւն մը չունենալով հանդերձ՝ կարող էր նա նպաստաւոր կերպիւ բաղդը փորձել, 12րդ եւ 13րդ գնդերուն հետզհետէ յաղթելու ջանալ։ Լաւ եւս համարեց ռուսական գծին վրայ ներգործել մանաւոր գործողութիւններով, յորս հանճարեղ կարգադրութեանց թուական մեծ առաւելութիւն մը ձեռք կը բերէր միշտ, եւ յորս ցոյց տուաւ գէթ թէ ինչպիսի ռազմագիտական ձիրք ունէր։ Առանց խիզախելու, առանց մեծ հարուածներ տալու՝ Ցարէվիչի բանակը մնաց մինչեւ այն բարձանց վրայ՝ որ Պանիցքա-Լօմի եւ Եանթրայի ջրոց բաժանման գիծը (խաթթը թաքսիմի միեահ) կը ձեւացնեն, զգուշանալով Ռուսաց նահանջելու ժամանակ նոցա նեղութիւն պատճառել, իբրեւ թէ իւր առաջադրած միակ նպատակն էր այդ նահանջն, եւ վերջապէս կանգ առաւ, երբ իւր թշնամիքն հետզհետէ աւելի անցուկ վայրաց մէջ փակուելով՝ ըստ բաւականի համախմբուեցան վճռական ճակատամարտ մը տալու համար՝ յորմէ ինքն մինչեւ այն ժամանակ խնամով զգուշացած էր։

Կ'երեւի թէ Տաճկաց ընդհանուր հրամանատարն Ս. յազլարի կռուէն յետոյ որոշեց յարձակողական դիրք բռնել. այս մասին կատարելապէս պատրաստութիւն ունէր, վասն զի եգիպտական զօրաց բաժնին վերջին վաշտերն հասած էին։ Իւր զօրութեանց բուն վիճակն կարելի եղածին չափ երկար ժամանակ գաղտնի պահելու համար՝ լրագրաց մէջ հրատարակել տուած էր թէ Ցիմմէրմանի գունդն Տօպրուճայէն վանելու եւ Ռումանիոյ երկաթուղւոյն վրայ փորձ մ'ընելու գործն Հասան իշխանին էր յանձնուած, եւ այս կերպիւ կարող եղած էր ռուսական սպայակոյտը խաբելու. այն տարաձայնութիւնք սաստկացուցին Ռուսաց անձկութիւններն որ արդէն շատ էին այն ժամանակ. այս կերպիւ յայտնի չեղաւ եգիպտական զօրաց Վառնայէն մեկնիլն՝ որ վերջերն միայն իմացուեցաւ։ Օգոստոսի 28ին՝ Մէհէմմէտ-Ալի Շումնուի բանակատեղը վերադարձած էր՝ զօրաց զննութեան համար շրջագայութիւն մ'ընելէ յետոյ՝ Րազկրատի եւ Էսկի-Ճումայի կողմերն, ուր կը գտնուէր Ս. յազլարի կռուոյն նախորդ օրն։ Բանակատեղէն հրամաններ ղրկեց իւր մտադրած յարձակման համար. Ռուսաց 12րդ եւ 13րդ գունդերն իրարմէ անջատելու դիտմամբ՝ անոնց մէջ տեղ նետուիլ որոշած էր, ինչպէս արդէն բացատրած եմք. Էսկի-Ճումայի գնդին հրաման ըրաւ Սարը-Նասուհլարի եւ Եէնիքէօյի մէջ տեղ հաստատուած ճամբարին մէջ համախմբուելու, եւ Նէճիպ փաշայի հատուածին պատուէր ղրկեց Րազկրատէն դէպ ի Պաշիշլէր գնալու. այս վերջին զօրախմբից յառաջխաղացութիւնն ամսոյն 29ին տեղի տուաւ մի քանի առաջամարտներու՝ Սատինայի եւ Սիփահիլէրի մօտ, ուր Ռուսք յաղթութիւնն իրենց սեպհականեցին՝ չգիտելով թէ ինչ պատճառի համար Տաճիկներն խիզախել չուզեցին։

Նոյն օրն Մէհէմմէտ-Ալի անձամբ Սարը-Նասուհլար գնաց եւ հետեւեալ աւուր համար կարգադրութիւններ ըրաւ։ Զրոյց եղած էր թէ գործողութեանց վարչութիւնն Ահմէտ-Էյուպ փաշայի յանձնուած էր, սակայն ճշմարիտ չէր այդ

զօրացն․ ընդհանուր հրամանատարին այսպիսի բան մ'ընելու չափ վստահութիւն չունէր անոր վրայ։

Մէհէմմէտ-Ալի իր զօրքն հետեւեալ կերպիւ շարեց․ Փոփքէօյի գիծոց մասն մը զետեղեալ էր՝ Սալիմ փաշայի հրամանատարութեան ներքեւ՝ թշնամին անհանգիստ ընելու եւ թոյլ չտալու համար որ բուն կռուոյն ասպարիզին վրայ զօրավիգ զրկուի դէպ ի Հիւսիսակողմն։ Սալիթ փաշա Հայտարքէօյի գիծոց աջակողմեան թեւը կազմող զօրքն Գարա-Հասանի դէմ պահելով՝ կը պատէր. սա դեռահասակ, գործունեայ եւ ձեռներէց սպայ մ'էր եւ երկրորդ անգամ մը կ'առաջնորդէր։ Վերջէն ընդհանուր հրամանատարըն իբրեւ զօրավիգ զրկեց սորա քով վեց վաշտ Պէյքըր փաշայի եւ Ալի փաշայի հրամանատարութեան ներքեւ։ Յետոյ կուգար Նէճիպ փաշայի հասուածին մէկ մասն որ յարձակող զօրաց գլխաւոր մասն էր, եւ Սիթլիքէօյի աջ եւ ձախ կողմն զետեղեալ էր։ Ասաֆ փաշա պահեստի զօրաց գլուխն անցնելով՝ աջ կողմը կը պատէր՝ որ յառաջ խաղալու նշան սպասէր իրեն։ Նէճիպ իր առաջին ճակատ առ ճակատ պիտի յարձակէր եւ որոշեալ վայրկենին Գարա-Հասանի առջեւ պիտի միանար Սալիթի անձին հետ։

Խաղաղ մը առաւօտեան ութերորդ ժամուն՝ հեծելազօրաց 8րդ հասուածին 2րդ ասպին հրամանատար՝ Լէոնով զօրավարին քով հասաւ ձին սանձարձակ վազցընելով, եւ իմաց տուաւ թէ բազմաթիւ Չէրքէզներ անտառներուն մէջէն դէպ ի Սատինա կուգային։ Զօրավարն համանալով որ յարձակումն պիտի լինէր, անմիջապէս հեծելազօրաց հրամայեց որ երկու կողմէն յառաջ խաղան։ Խաղալով թնդանօթաշարքն երկու թնդանօթ անտառներուն մէջէն դէպ ի ձախակողմը տարուեցան ցորենի արտի մը մէջ։ Երկու մեծաչափ թնդանօթներ եւս մօտակայ լերան գագաթին վրայ զետեղուեցան, որ մացառներու եւ թփերու պրակով մը ծածկուած էր։ Ուրիշ երկու թնդանօթներ եւս աջակողմն մարակոյի մը մէջ զետեղեալ էին Գարա-Հասանի առաւել մօտ։

Թնդանօթի մէկ քանի հարուածներ Չէրքէզները կը փախցնեն, այլ Նէճիպ փաշա Սատինայի վրայ կը յարձակի, եւ Ռուսաց զօրքը կը վանէ. գիւղն ընդհուպ հրոյ ճարակ կը լինի եւ հորիզոնն սեւ ծխով կը ծածկուի։ Ճակատամարտին այս նախընթաց պարագայից միջոցին ընդհանուր ամբաձգութիւն մը կը լսուի․ Լէոնովի տասն թնդանօթներէն եւ Հայտարքէօյու ետեւը զետեղեալ մարտկոցէ մը անդադար հուր կը տեղայ Նէճիպի եւ Սալիթ փաշայի զօրաց վրայ, որ Լօմի առաւել մօտ նպաստաւոր դիրք մը բռնելու կը ջանան Հայտարքէօյի եւ Գարա-Հասանի մէջ տեղ։ Տաճկաց թնդանօթաձիգներն ըստ կարի կը ջանան մօտ եղած թնդանօթաշարից կրակը խափանելու, եւ մէկ ժամէն մասամբ իսկ կը յաջողին։ Սալիթ չէրքէզ ձիաւորներ զրկած էր իբրեւ առաջապահ. Ռուսաց թնդանօթաձիգներն զանոնք տեսնելով ամբոտակ մը կ'արձակեն. ոչ ոք կը վիրաւորի, բայց այս բանն բաւական կը լինի խառն ի խուռն փախցնելու համար այն պատերազմի լու չ'եկող Չէրքէզները, եւ մինչեւ անգամ Տաճկաց ընդհանուր հրամանատարն քրքիջ մը կը բառնայ։ Այս խուճապական փախուստն բնաւ ներգործութիւն մը չըներ հետեւակազօրաց կացութեան վրայ. Սալիթի ձախակողմեան խումբն կանգ կ'առնու Հայտարքէօյի գիծոց բլրակի մը ետեւ՝ ուր թըշնամւոյն կրակն չկրնար իրեն վնասել, եւ կը սպասէ որ իր գլխաւորին հրաման տայ իրեն գետակէն անցնելու։ Աջակողմեան խումբն իբրեւ արձակամարտ ցրուած կը յառաջէ դէպ ի Գարա-Հասան. բայց յարձակելու ժամանակն չէ հասած տակաւին, վասն զի Ռուսաց զօրքէն քիչ հեռի կանգ կ'առնու, որք իրենք եւս իբրեւ արձակամարտ շարուած էին։ Յարձակող բանակին

ոյժակողմեան թեւն՝ որ Նէճիպ փաշայի հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր, նոյն կերպ չգործեր. Սատինեան գրաւելէ յետոյ՝ անյողդողդ կը յառաջանար այն առաջին ամրութեանց վրայ որ Գարա-Հասանքէօյի արեւելեան կողմն էին։

Մարդաչափ բարձր եգիպտահատի ծղօտներուն մէջ պատերազմողներն ծածկուած էին բոլորովին, եւ զարմանահրաշ բան մը էր ճակատամարտի մ'աղմուկը լսել այն զաւիթաններուն վրայ ուր ոչ ոք կը տեսնուէր. սակայն այն ծխոյ գունդերնէն՝ որք հրացանի արձակող զօրաց շարքին գտնուած տեղերը ցոյց կուտային, եւ ծխոյն բացատներուն մէջ տեսնուող զինուց շողիւններէն կարելի էր կռուոյն յեղափոխ արկածներն հասկնալ։ Նախ Տաճիկներն յառաջ գնացին. ռուս զինուորք եգիպտահատի արտերէն մի առ մի դուրս կ'ելնէին՝ սաստիկ տօթէն խոնջեալ ոտն առ ոտն ետ երթալով, մինչ քրտանց պատճառաւ գոլորշի կ'ելնէր իրենց վրայէն։

Ամբողջ բանակի մը դէմ կռուող այն 3,000 ռուս զինուորաց քով իբրեւ զօրավիգ հասան Մորշանսքի գնդապետին 300 հոգի, զորս 13րդ գնդին հրամանատարը կը ղրկէր։ Թէեւ այս զօրավիգն չնչին բան մ'էր, սակայն բաւական եղաւ Նէճիպ փաշայի առաջին անգամ յարձակող զօրքն ետ մղելու։ Պահ մը հանդարտութիւն տիրեց մինչեւ չորրորդ ժամն. Սալիթ օգուտ կը քաղէ սակէ՝ իր խումբը Գարա-Հասանի մօտեցնելու համար, եւ Նէճիպ փաշա եւս նոյն միջոցին իր զօրքը կը ժողովէ եւ նորէն յարձակելու կը պատրաստուի. բայց տարօրինակ մոռացմամբ՝ որոյ պատճառն նորա այս ծերունի զինուորականի մը համար որոյ յարգմունքն համարել դժուար է, Ասաֆ փաշայի հրամանատարութեան ներքեւ գտնուած պահեստի սահը օգնութեան չկոչեր տակաւին, զոզցես առանձինն առնուլ կ'ուզէր Գարա-Հասանքէօյն յաղթութեամբ, որ անկարելի բան էր, ինչպէս որ ընդ հուպ ըլլալ ապացուցանի։ Սալիթ կարող եղաւ ոյժակողմեան առջին քով հասնիլ, եւ սորա օգնութեամբ Նէճիպ կրկին յարձակումն բրաւ եւ իր զինուորներն շտապաւ վարեց ռուսական դրից գծէն. Ամբողջ հատուած մ'էր որ կը խուժէր այս անգամ. տաճիկ հետեւակազօրք յարձակողական գնացիւք կը յառաջանային՝ կիսաբոլոր մը ձեւացնելով, որոյ կեդրոնն էր գիւղին առօրեան. Ռուսք եւ Տաճիկք իրարու շատ մօտեցան. հրացանի կռիւ մը սկսաւ գծին մէկ ծայրէն միւսն։ Մէհէմէտ-Ալի՝ որ Աւքարթէփէ ըսուած կեդրոնական բարձրաւանդակին վրայ զետեղեալ էր, մինչեւ այն ժամանակ շատ զուարթ էր, բայց հետզհետէ անյոյս կերպարանք մը կ'առնու մինչ իր դիտակաւն կռուոյն յեղափոխ արկածները կը զննէր։ «Մեր զօրքն լաւ կը դիմադրէ, գոչեց ...։ Բայց ռուսական հեծելազօրը դաշտ կուտայ ահա ... մեր մարդիկը կ'ընկրկին. ետ կը մղուին։» Երկրորդ անգամն էր այս։ Սակայն վհատելու տեղի չկար տակաւին. անշուշտ այդպիսի դիմադրութիւն մը պիտի լինէր, եւ Գարա-Հասանքէօյի մէջ դիրք մը չէր գրաւուիր առանց կորստեան։ Այն ձախողութեան վրայ եղած խօսակցութեանց միջոցին սա հարցումն եւս կը լինի թէ ինչու Նէճիպ տակաւին կռուոյ մէջ չմուծաներ այն մէկ սահն որոյ նպատակն իրեն համար թանկագին էր։

Զօրավիգներն յառաջ վարելու ժամանակը կը հասնի. Մէհէմէտ-Ալի յարձակող զօրաց ձախ թեւին նպաստելու համար վեց վաշտ կը ղրկէ, որոց մէկ մասն Պէյքըր փաշայի հրամանատարութեան ներքեւ կը գտնուի. այս զօրքն շտապաւ կը յառաջէ դէպ ի Գարա-Հասան։ Հայտարքէօյի ռուսական թնդանօթաշարն վերըստին կրակ կ'ընէ եւ կը յաջողի այնպիսի կերպիւ ռումբ մ'արձակելու, որմէ մէկ քանի մարդիկ կը վիրաւորին եւ որոյ մէկ բեկորն Պէյքըր զօրավարին ձին կը սպաննէ։ Բայց Գարաթէփէի տաճկական թնդա-

նօթներն եւս կ՚արձակուին, եւ այնպիսի լու կերպիւ, որ քան վայրկեան չանցած՝ գնդընկէց մը հաստատութեան վրայէն կը ձգեն եւ ռուսական թնդանօթաշարը կը լռէ։ Զօրավիգներն այն ժամանակ դաշտին մէջէն անցնելով Սապլիթի սահին քով կը հասնին ։

Ժամը հինգ ու կէսին սկսաւ երրորդ յարձակումը Գարս-Հասանի դէմ. երեք ու կէս սահ միահաղոյն դաւյթ տուին. Ասիմ փաշա կողմնակի նետուեցաւ ռուսական դիրք դէմ հիւսիսակողմէն սարահարթին վրայ. Նէճիպ եւ Սապլիթ կրկին յարձակեցան յառաջուստ, եւ Ասաֆ այս անդամ խիզախելով աջակողմեան ծայրի խմբին դէմ խոյացաւ ։ Տաճիկ զօրաց յառաջելու պահուն՝ հեռաւոր Պիէլայի ճանապարհին վրայ ռուսական սահ մ՚երեւեցաւ, որ Լէյոնով զօրավարին օգնութեան կուգար. Պէյքըր փաշա իսկոյն անոր դէմ գնաց եւ լուկ այս շարժմամբ կասեցուց զայն, այնպէս որ Գարս-Հասանի փոքրիկ ափի պահակագունդն անօգնական մնաց մինչեւ վերջն, սակայն տակաւին մէկ ժամ եւ մէկ քառորդ դէմ դրաւ. յետոյ ռուս զինուորք իրարու սա խօսքը կ՚ըսէին թէ՝ «Տաճիկներն խիստ շատ են» եւ սար վրայ նահանջել սկսան ։ Թնդանօթաձիգներն շտապաւ լծեցին ձիերն սայլերու եւ փախան դէպ ի Փօփքէօյ. սակայն Տաճիկներն յաջողեցան անոնցմէ հատ մը ձեռք անցընելու։ Երեկոյեան եօթներորդ ժամուն Նէճիպի, Սապլիթի եւ Ասաֆի զօրախումբքն Գարս-Հասանը կը գրաւէին, եգիպտական երկու փաշաներ Լօմ գետակէն անցնելով Հոյատարքէօյի ռուս արձակամարտները կը վանէին եւ այն գիւղը կը գրաւէին ։

Այս կերպիւ 13րդ գնդին ձախակողմն անցան Տաճիկներն, եւ Մէհէմմէտ-Ալիի յառաջագծին համեմատ՝ 12րդ եւ 13րդ գնդերուն մէջ տեղ մնաց։ Գարս-Հասանքէօյի բարձրաւանդակին գրաւման պատճառաւ Ռուսաց անկարելի կը լինէր տակալ իրենց Օվաքայի եւ Կախովօյի դիրք մէջ։ Ցարեվիչն՝ որոյ զօրանիստն էր այն ժամանակ Հաճքիքէօյն, վազեց հասաւ ճակատամարտին երրորդ օրն, եւ մէկէն վերահասու լինելով գործոց վիճակին՝ 35րդ հասուածին հրաման ըրաւ որ դէպ ի Փօլամարցա քաշուի։ Այս եղաւ ճակատամարտին անմիջական արդիւնքն ռազմագիտական տեսութեամբ։ Տաճիկներն իբրեւ կողոպուտ ձեռք անցուցած էին մէկ թնդանօթ, չորս արկղ ռազմամթերք, 2,000 հրացան, 2,000 տառատոկ (քափօթ), եւ Զաբոյաքի գումարտակին բոլոր կապամածներն եւ հանդերձներն, որ չկարաց նահանջելու ժամանակ ճամբայէն անցնիլ եւ պարտաւորեցաւ զանոնք թողլու, անոնցմէ պատ պաքցամատով բեռնաւորեալ սայլեր։ Տաճիկներն 500ի չափ մարդ կորուսած էին. վիրաւորաց մէջ կը գտնուէր լեհ կամաւորաց լեգէոնին մէկ անդամն՝ 71 տարեկան, այն է Եակնին Հազարապետն, որ Գարս-Հասանի մօտ այս քսան եւ ութերորդ անգամն էր որ կը կռուէր իր ազգին վաղեմի թշնամույն՝ Մոսքովին դէմ։ Ռուսաց կորուստն գրեթէ հաւասար էր Տաճկաց ունեցած կորստեան ։

## ՔՕՉԷԼԵՔԼՕՅԻ ԵՒ ԱՊԼՕՎԼՕՅԻ ԿՌՒՒՆԵՐՆ

Տաճկաց ձախ թեւին գործողութիւնքն կատարելապէս յաջողեցան այս կերպիւ Գարս-Հասանի մօտ, եւ Մէհէմմէտ-Ալի որոշեց յամրիկ հանել զայնս՝ իւր զօրաց Բասկըրաւի մօտ գտնուող աջ թեւն դէպ յարեւմուտս յառաջ վարելով եւ ուղիղ գիծ մը ձեւացնելով Գարս-Լօմի վրայ ուր էր իւր բանակին առժամանակեայ ճակատն։ Գարս-Հասանի յաղթութիւնն 13րդ գընդին ձախ թեւն ստիպած էր ետ քաշուելու, եւ ռուսական երկու գնդաց անջատում պատճառած էր, որ էր Տաճկաց ընդհանուր հրամանատարին նպատակներէն մին. այն յաղթութիւնը կատարեալ ընելու համար՝ Մէհէմմէտ-Ալի պարտաւոր էր

պաժմ 12րդ գնդին աջ թեւն յետս մղելու, որ Քօշէլեէվօյի եւ Ալլօվօյի (ըստ Տաճկաց՝ Տուլ-ապլա-օվասը) մօտ էր եւ կը բաղկանար հետեւակազօրաց 33րդ հառուածէն՝ Թիմօֆէյեվ հառուածապետին հրամանատարութեան ներքեւ, եւ հեծելազօրաց 12րդ հառուածին 1ին սահէն՝ Առնօլտի հառուածապետին առաջնորդութեամբ. գլխաւոր հրամանատարն էր փոխզօրապետ Ֆօն Տրիգէն սեպուհն, որ հեծելազօրաց 12րդ հառուածին կ'առաջնորդէր ։

Մէհէմմէտ-Ալի սովորութիւն ունէր անալ ըստ դիպաց գործ մը չտեսնելու, եւ այն ժամանակ միայն ճակատամարտելու երբ թուական առաւելութիւնն իւր կողմն լինէր. վասն որոյ Գարա-Հասանի կռուոյն համար աջակողմեան թեւէն անջատեալ զօրքը դարձեալ իւր տեղը ղրկեց, եւ Րէշիտ փաշայի եգիպտական զօրաց սահն եւս ձախ թեւէն զատելով անոնց հետ միացուց. Նաեւ Ռուսճուգի դէմ ճակատեալ ռուս հետեւակազօրաց 12րդ հառուածն տեղէն չերերցնելու համար՝ Գայսէրիյէլի-Ահմէտ փաշայի յարձակումն ընել տուաւ անոր վրայ Գատըքէօյի մօտ։ Սոյն բերդաքաղաքին օսմանեան պահականդին դուրս ըրած յարձակումներուն ամենէն ծանրակշիռն այս էր, եւ նոցա դիմադրող Օտէսայի եւ Տնիէփրի գումարտակներն 2 սպայ եւ 210 զինուոր կորուսին ։

Րազկրատի (ըստ Տաճկաց՝ Հէզարկրատ) գունդն սեպտեմբերի 2ին սկսաւ շարժում ընել. Նոյն օրն առաւօտուն կանուխ՝ Ֆուատ փաշա 15 վաշտով խաղաց դէպ ի Լօմ։ Այս զօրքն Տաճկաց ջոկին գլուխն էր եւ սոքա պիտի ընէին յարձակումն. Բանակին մնացեալ մասն՝ Նէճիպի եւ Ահմէտ-էյուպի առաջնորդութեամբ, փոքր ինչ հեռուստ կը հետեւէր սոցա եւ ի պահեստի պիտի սպասէր պէտք եղած ժամանակ յարձակելու համար։ Սակայն այս մասն մեծ արահետէն գնաց Սօլէնիք հասնելու համար, ուր յառաջագոյն որոշուած էր համախմբութիւն ընել։ Ամսոյն 2ին երեկոյին՝ Ֆուատ Խաէրճիքի մօտ բանակեցաւ. հետեւեալ օրն յառաջ գնաց մինչեւ Զէրովցա՝ յուսալով գրեթէ ուղիղ գծի վրայ երթալ մինչեւ Սօլէնիք։ Բայց անտառախիտ եւ դժուարադնաց վայր մը գտաւ իւր առջեւ եւ ստիպուեցաւ ելնել մինչեւ Քօսթանցա եւ Գարա-Լօմի օժանդակ Սվօյէնիք-Լօմի ձորոյն մէջէն գնալ։ Ամսոյն 3ին երեկոյին Սօլէնիք հասաւ, ուր Ահմէտ-էյուպ եւ Նէճիպ քիչ ժամանակէն իւր քով ժամանեցին ։

Ամսոյն 4ին՝ Տաճկաց բանակն սկսաւ տարածուիլ. Պիլկօրօտի նիզակաւորք որ առաջապահ էին՝ բռնադատուեցան ռուսական գլխաւոր դրից վրայ քաշուիլ, մինչ Չէրքէզներու ջոկերներ զիրենք կը նեղէին. Մէհէմմէտ-Ալիի զօրքն հետզհետէ գրաւեց Օկարչին, Պէքիրլին-Ենիքէօյ, Փէրովցա եւ Մօցելեւօ գիւղերն որ Քօշէլեէվօյի եւ Ալլօվօյի դիմաց են, եւ կիսաբոլոր մը կը ձեւացնէին։ Կէս օրէն յետոյ՝ Ռուսք երբ տեսան Տաճկաց Օկարչինի մօտ մարտկոցներ շինելն, այլ եւս տարակոյս չունեցան թէ իրենց վրայ յարձակումն պիտի լինէր. մէկ քանի անգամ աշխատութեանց վրայ թնդանօթ պարպելով նեղեցին զանոնք, սակայն չկարացին արգելուլ։ Այն ժամանակ Ֆօն Տրիգէն սեպուհն օգնութիւն խնդրեց ընդհանուր զօրանոցէն. Նէվայի գումարտակն որ 13րդ գնդէն անջատուեցաւ, եւ Քօփօրիէի գումարտակն՝ որ Ռուսիայէն նոր կը հասնէր, նորա քով ղրկուեցան ։ Սոյն զօրաց մէկ մասն հետեւեալ օրն բաւական կանուխ հասնելով կարաց Ալլօվօյի կռուոյն մէջ մտնել։

Գարա-Լօմի աջակողմեան ափին վրայ շինուած Քօշէլեւօ գիւղին դիրքը պատուպարեալ էր բաւական ընդարձակ ամրութեամբք, որ երեք պաշտպանողական գիծ կը ձեւացնէին. Թնդանօթներու մէկ շար, Պէնտէրի հեծելազօրաց գումարտա-

կէն երեք գառ եւ վիշտապաշօրաց 12 րդ գումարտակէն երեք հեծելադաս կը գտնուէին այն դիրքի վրայ որ կարեւորութիւն ունէր. վասն զի Լօմի հովտէն մինչեւ Սոնթրիցա եւ Շիրօքօ տանող ճանապարհը կը պաշտպանէր. եւ Տաճկաց համար՝ գետակէն անցնելու արգելք մ'էր: վասն որոյ Յոն Տրիլէն սեպուհն այն տեղը պաշտպանող զօրաց թիւն աւելցնելուն ուզելով՝ ամսոյն 4 ին հետեւեալ դրկեց մէկ թնդանօթաշար եւս, Խերսոնի գումարտակէն երկու վաշտ, Խաղախաց երեք հեծելադաս, եւ ամսոյն 5ին առաւօտեան կախէն սկսած ժամանակ եւս՝ Խէրսոնի գումարտակէն նոր վաշտ մը: Ապլօվայի մօտ էր ռուսական զօրութեանց ստուար մասն, այսինքն 7 վաշտ, 33 թնդանօթ հաստատանի վրայ ագուցեալ, 6 թնդանօթ ձիոց վրայ բարձեալ եւ չորս գնդացան:

Ամսոյն 4էն 5 լուսնալու գիշերն՝ Առնօլտի զօրավարն պաշտպանութեան համար կարգադրութիւններ րրաւ: Մէհէմմէտ-Ալիի ընդհանուր յարձակողական յառաջագիծն Գարա-Հասանի յառաջագծին կը նմանէր. միայն մէկ բանով կը տարբերէր անկէ: Սակայն փոքր Գարա-Հասանի բարձրաւանդակներէն հեռանալով եւ մէկ տանով Օկարչինի վրայ խաղալով՝ թշնամւոյն աջ կողին դէմ կ'ուղղուէր. Ֆուատ փաշա իր տասն եւ հինգ վաշտերը չորեք էր Ռուսաց ճակատուն դիմաց մէկ քանի բարձրաւանդակներու վրայ՝ որք գրեթէ ռուսական գնդին գրաւած տեղերուն չափ բարձրութիւն ունէին. Ահմէտ-Էյուպ եւ Նէճիպ՝ Ֆուատ փաշայի ետեւն էին. Նաեւ Տաճկաց գլխաւոր հրամանատարն արեւմտեան կողմէն Իէչիտ փաշայի առջին շրջան մ'ընել տալու լաւ խորհուրդն ունեցած էր. Իէչիտ գիշերայն մեկնելով՝ յարձակումն ամէնէն աւելի սաստկացած ժամանակ պիտի հասնէր, թշնամւոյն ձախէն կողմնակի պիտի նետուէր նորա վրայ, եւ Ռուսաց Սթրօքայի ճանապարհաւ նահանջելու գիծը պիտի կտրէր: Դժբաղդաբար՝ այս գործողութիւնն լաւ հասկցող եւ լաւ կատարող չեղաւ. զարմանալի բան, այս մասին Ֆուատ փաշայի տեղեկութիւն տրուելու զանց եղած էր, եւ Իէչիտ չէր գիտեր թէ որ ժամուն պիտի լինէր յարձակումն. արդիւնքն աս եղաւ որ շրջան ընելու յառաջացեալ ասհն Ռուսաց մեկնելէն յետոյ միայն ժամանեց: Ինչպէս Գարա-Հասանի մօտ՝ նոյնպէս եւ աստ լոկ աջ թեւն պիտի կռուէր Բօչէլեէվօն առնլու համար. բանակին միացեալ մասն ռուսական այն խումբերը պիտի արգելուր որք կարէին յարձակում կրող զօրաց օգնութեան երթալ:

Առաւօտեան վեցերորդ ժամուն՝ տաճիկ զօրաց խումբեր սկսան երեւան գալ Բօչէլեէվօյի մարտկոցին դիմացէն. կէս ժամ յետոյ՝ Առնօլտի զօրավարին օգնութեան հասան Խէրսոնի գումարտակէն երկու վաշտեր, որք ի պահեստի պահեցին, մին աջ կողմն եւ միւսն ձախ կողմն: Եօթներորդ ժամուն՝ Տաճկաց թնդանօթաձիգներն կրակ ըրին Ռուսաց մարտկոցին դէմ՝ որում մեծ վնաս հասուցին. բազմաթիւ մարդիկ եւ ձիեր անկան, եւ մարտկոցին հրամանատարն մահացու վէրք մը առաւ: Տաճկաց թնդանօթաշարք՝ որ նախ հազիւ տասն թնդանօթէ բաղկացեալ էին եւ վերջերն մինչեւ 50 հասան՝ Բօչէլեէվօյի եւ Ապլօվայի դիմաց, երկար ժամանակ ռմբաձգութիւն ըրին. յետոյ Ֆուատ փաշայի խումբերն սկսան խաղալ՝ իրենց առջին ունենալով արձակամարտից թանձրախուռն շարք՝ երեք կարգի բաժնուած:

Առնօլտի զօրավարն առաջին անգամ ետ քաշել տուաւ 4 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող թնդանօթները շարն, եւ աւելի հեռի զետեղեց բարձրաւանդակին կողին վրայ՝ 9 հարիւրորդամէթր չափով թնդանօթները ուրիշ շարք մը քով, զոր իր զինուորական օժանդակն Սալօմիրսքի այն տեղ բերած էր ժամ տասն ու կէսին:

Տաճկաց հետեւակազօրն՝ որ Գարա-Հասանի մօտ յաջողութիւն ձեռք բերող ձախակողմեան թեւին զօրաց հաւաքուելու ըղձանօք վառեալ էր. արիաբար յարձակեցաւ Ռուսաց առաջին գծին վրայ, եւ ժամանակ մը կռուելէ եւ մեծ կորուստ կրելէ յետոյ տիրեց այն գծին։ Ռուս հրամանատարն տեսնելով որ քառապատիկ առաւել թուով թշնամիք զինքն երկու կողմանէ կը նեղէին, որոշեց ետ քաշել իւր զօրքն՝ ջանալով ըստ կարի երկրորդ գծին վրայ զանոնք բռնել. որպէս զի հնար լինի վիրաւորները վերցնել եւ թնդանօթներն հեռացնել։ Մինչդեռ Ռուսք երկրորդ գծին վրայ կը քաշուէին, Տաճկաց հեծելազօրն անոնց ձախ կողմէն շրջան մ'ըրաւ, բայց Խազախք եւ վիշապազօրք դառնալով կասեցուցին զանոնք. Խազախներն գուպարեցան՝ գլխաւորապէս Նիզակաւ կռուելով, եւ Տաճիկներն խոյս տուին իրենց առջեւ գտնուող սպայից վիրաւորուելուն վրայ։ Խազախներն անոնց հետամուտ լինելու ժամանակ հետեւակ զօրաց ընդհարեցան, որք իրենց բաւական մեծ վնաս տուին եւ ստիպեցին փախչելու։

Ռուս հետեւակազօրն երկրորդ գծին վրայ խրամներուն եւ պատնէշներուն մէջ ընկողմնելով եւ կրակ ընելով՝ նախ 4 հարիւրորդամեթր չափով ուղիղ արձակող թնդանօթներու շարն հեռացնել կարելի եղաւ եւ ապա 9 հարիւրորդամեթր չափով թնդանօթներու շարն։ Ասոնք Օսթրիցայի ուղղոյն մօտ տարուեցան, եւ 9 չափով թնդանօթաշարին հրամանատարն պատուէր ընդունեցաւ այն ճանապարհին վրայ այնպիսի դիրք մ'ընտրելու՝ ուրկէ կարելի լինէր դիմադրել թշնամւոյն յետին ճգանց։

Ամենէն յետոյ իւր տեղը մնացող խումբն էր Խէրսոնի գումարտակին այն վաշտն որոյ կ'առաջնորդէր հազարապետ Կոփոնով. սա հրաման առած էր մինչեւ վերջին դիմադրելու։ Գրեթէ երկրորդ ժամուն՝ ամբողջ Ջոկատն Բօշէլեէվօյէն հեռացաւ հիւսիս ապա, վեց ժամ բազմապատիկ առաւել զօրաց դէմ կռուելէ եւ թշնամւոյն մարտկոցներուն ստրատիկի եւ անընդհատ կրակին շարունակ ենթակայ լինելէ յետոյ։ Կափօնով հազարապետի զօրքն վերջին անգամ յարձակող Տաճիկներն ետ մղեցին սուինով, եւ կատարեալ բարեկարգութեամբ նահանջեցին։ Պէնտէրի գումարտակին մէկ մասն հետ առնլով, դէպ յՕսթրիցա երթալու հրաման ըրաւ հազարապետին Առնօլտի զօրավարն. մինչդեռ ինքն եւս Խէրսոնի եւ Պէնտէրի գումարտակներուն մնացեալ զօրաց դէպ ի Գարա-Վէրպակա նահանջն պաշտպանեց վիշապազօրաց գումարտակաւն, վասն զի անոնք բազմաթիւ վիրաւորներ ունէին իրենց հետ։ Իէչիտ փաշա ուշ հասնելով չկարաց անոնց ճանապարհը կտրել, եւ միայն մէկ քանի սայլակառք եւ հիւանդանոցի մեծ կառք ձեռք անցուց։ Աջ կողմն Պէնտէրի գումարտակին 3րդ վաշտն մօտաւոր Տաճկաց կողմանէ հալածուելով՝ Ապլօվօ քաշուեցաւ, վասն զի միւս կողմէն նահանջելու գիծը կորուած էր. Տօնայի Խազախաց 31րդ գումարտակէն երեք հեծելադասք եւս դէպ յԱպլօվօ նահանջեցին, որոյ մօտ եղած կռուոյն՝ մասնակցելու համար պատեհ ժամանակի մէջ հասան։

Զօրավար Ֆօն Տրիգէն տեսնելէն որ չէր համարձակեր Ապլօվոյի զօրքը քշելու՝ վախնալով որ այն տեղ յարձակումն կը լինի, կէս օրէն փոքր ինչ առաջ խնդրեր էր Ֆօլփորիէյի եւ Նէվայի գումարտակներուն պահեստի զօրաց ապաստելու տեղը հասնիլն, եւ այն ժամանակ մտածեր էր թէ այլ եւս կարելի է առանց վտանգի օգնական զօրք ղրկել Առնօլտի զօրավարին։ Այն գործն յանձնեց Թիմօֆէյեվ զօրավարին, որ ճանապարհ հանեց Թիրասփոլի գումարտակն եւ թնդանօթներու շար մը։ Այս խումբն Վլատիմիրօ գումարտակին առաջնորդութեամբ արագաբար դուրս ելաւ այգիներէն, խրամներէն եւ պատնէշներէն,

վար իջնալ բարձրաւանդակներէն, Գարաքէօսէ հանէն անցաւ եւ դէպի Քօշէլէվօյի բարձունքը գնաց, մինչ 4րդ եւ 5րդ թնդանօթաչարք իրեն կը նպաստէին՝ Տաճկաց բազմաթիւ կոյսերուն վրայ Շռափնէլ գնդակալից ռումբեր արձակելով ։ Նոյն միջոցին ռուս զօրքն արդէն մեկնած էր Քօշէլէվօյէն, բայց Թիֆլիսի գումարտակին ինչպէս նաեւ 130 րդ գումարտակէն վաշտ մը յառաջխաղացութեան վրայ՝ Տաճիկներն ստիպուեցան յետս կալ Առնօյտի զօրաց հետամուտ լինելէ ։

Երկրորդ ժամուն ամեն ոք կռիւն աւարտեալ կը համարէր ։ Ճակատամարտն Գարս-Հասանի մօտ եղածին չափ ընդարձակ տարածութիւն մը չունէր, սակայն առաւել մարդախանձ եղած էր ։ Ֆուատ փաշա 1,100էն աւելի կորուստ էր ունեցած, բայց Մէհէմմէտ-Ալի իր առաջադրած նպատակին հասած էր, Սապիթ փաշան եւ Ահմէտ-էյուպն կռուոյ մէջ մտցնելու պէտք չմնալով՝ ինքն Քօշէլէվօն գրաւած եւ Ռուսաց վերջին զօրքն Լօմի աջակողմեան եզերքէն վանած էր ։ Տաճիկներն արդէն կը պատրաստուէին բանակելու, երբ Սապիթ փաշայի սպայից մին՝ Իպրահիմ փաշա ճակատամարտին մասնակից լինելու եռանդեան չհամբերելով, յանկարծ յառաջ նետուեցաւ եւ մէկ քանի վաշտով Լօմի մէջէն անցնելով՝ ձեռնարկեց Ապլօվօյի ռուսական դիրքն առանձինն առնելու ։ Այս դիրքը գրաւող զօրքն թէեւ կռուոյ մէջ մտած չէր, սակայն Թուրքերուն առաւօտէն ի վեր ըրած ռմբաձգութենէն վնասեալ էր. լաւ մէկ մարտկոցի մէջ երկու սպայք, 11 սպառիկք եւ 18 ձի անկեալ էին ։ Տաճկաց սպայակոյտին մէջ կարծուածին չափ՝ յիմարական չէր ուրեմն այս յարձակումն ։

Իպրահիմ փաշա եւ իր վաշտերն բլրէն վեր ելան՝ այգիներուն մէջ զետեղեալ ռուս արձակամարտից կողմանէ թափուած սաստիկ կրակին հակառակ, ռուսաց զօրքը վանեցին եւ գիւղը գրաւեցին։ Ուրիշ ըլուրներ կը բարձրանային անդր քան Ապլօվօ. այս բլրոց կողերն այգիներով ծածկուած էին, յորս Պեսարապիոյ գումարտակն զետեղեալ էր. եւ գագաթանց վրայ ռուսական երեք թնդանօթաչարք կային։ Իպրահիմ փաշա շարունակեց իր յառաջխաղացութիւնն՝ յուսալով թէ իր ձեռք բերած յաջողութեան նպաստելով՝ զօրավիգ պիտի ղրկուէր առ ինքն ։ Բայց Մէհէմմէտ-Ալի կը կարծէր թէ ռուսական երկու հատուածներ կային Ապլօվօյի մօտ եւ թէ նոյն աւուր յաջողութիւնն պիտի վտանգուէր, եթէ այնպիսի զօրաւոր դրից մէջ Ռուսաց վրայ յարձակումն լինէր ։ Գուցէ կը սխալէր եւ չափազանց էր իր այդքան խոհեմութիւնն. Իպրահիմ առանձինն պահ մը յաղթութիւնն իր կողմը ձգեց, եւ Պեսարապիոյ գումարտակը բռնադատեց նահանջելու ։

«Զօրաց ալ թեւին քովէն ետ դարձած ժամանակս, կ'ըսէ Ֆօն Տրիգէն սեպուհն իր տեղեկագրին մէջ, տեսայ այն զինուորաց նահանջելն եւ ըսի իրենց. «Ռուսիոյ կայսեր ճշմարիտ զաւակներն չեն ընկրկիր. յանուն կայսեր, յանուն ռուսական զինուց փառաց եւ պատուոյն, ձեր, յառաջ, որդեակք իմ ։ Թմբկահարք, զարկէք յարձակման եղանակն ։ Ետեւէս եկէք, քաջերս ։» Ի քթթել ական՝ զինուորներն ետ դարձան ։ Իրենց առաջնորդեցի մինչեւ միջին մարտկոցն եւ այն ժամանակ Թիմօֆէյեվ զօրավարին յանձնեցի, որ Քօրէյվօ զօրավարին հետ՝ անոնց գլուխն անցաւ, եւ մինչեւ որ Տաճիկներն ետ քաշուեցան, անքա առաջնորդեցին զօրաց ։

«Քօփօրիէի գումարտակն Պեսարապիոյ գումարտակին հետ միացաւ եւ հուռա գոչելով խոյացաւ՝ սուիններն դէպ յառաջ կարկառեալ ։ Թշնամւոյն թնդանօթաձիգ զօրքն եւ հետեւակներն՝ որք այգիներուն մէջ ամրացեալ էին, թէեւ դժոխային կրակ մը կը թափէին, սակայն եւ այնպէս մեր զօրքն Տաճիկները սուինով մղեց նախ մինչեւ Լօմ եւ ապա մինչեւ այն լեռ-

ներն որ սոյն գետակին միւս կողմն են։ Այս շարժման նպաստեցին 4րդ թնդանօթաչարն եւ 131րդ գումարտակին զօրաց մէկ մասն՝ իրենց ռմբերովն եւ սուիններովն Տաճիկները հալածելով։ »

Տաճիկներն 150 հոգի կորուսին Իպրահիմի այս անհեթեթ գործովը, որով իրենց ամբողջ կորուստ գրեթէ 1,300 ի հասաւ, Ռուսաց կողմանէ եւս տասն սպայք եւ 288 զինուորք սպաննուած անկան, 40 սպայք եւ 976 զինուորք վիրաւորեցան. որով սեպտեմբեր 5ի կռւոյն Լոմի ափանց վրայ պատահածներուն ամենէն աւելի մարդախանձն եղաւ։ Այս կռւոյն մէջ վիպասանական արկած մը դիպեցաւ, որոյ նման գրեթէ ամեն պատերազմաց մէջ կը պատմուի։ Կ'ըսուի թէ Նորատի ռուս սպայ մը Նշանաւոր կը հանդիսանար իւր դիւցազնական արիութեամբն. երեք անգամ զինուորներն մարտկոցներէն հեռանալով զինքն առանձին թողուին մահուան դիմագրաւելու, վերջապէս գնդակ մը անոր սրտին զարկաւ եւ սպայն անկանելով չկանգնեցաւ այլ եւս։ Այս քաջը Նշմարած էին Տաճիկ սպայք, եւ ռուսական դրից տիրելէ յետոյ՝ հրաման ըրին նորա դիակը որոնելու, որ շուտով գտնուեցաւ. եւ տեսան որ այն սպայն քսան տարեկան գեղեցիկ մանկամարդ կին մ'էր։ Զինուորական պատիւ ընծայուեցաւ անոր, եւ այս պատերազմին մէջ առաջին անգամ Տաճկաց ձեռօք թշնամւոյ մը գերեզմանին վրայ խաչ մը անկուեցաւ։



### ԿՌԻՒ ՓՕՓՔԷՕՅԻ. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԱՀԱՆՋ ՌՈՒՍԱՑ. ԿՌԻՒ ՍԻՆԱՆՔԷՕՅԻ

Մինչդեռ Տաճկաց բանակին աջ թեւն Քօշլէէվօյի դէմ կը յարձակէր, ձախ թեւըն եւս դէպ ի Փօփքէօյ պիտի յառաջէր։ 13րդ գնդին առաջին հատուածն՝ որ սոյն կէտին վրայ կը գտնուէր սովորականէն աւելի թնդանօթներով՝ զորս Ռուսք բերած էին հաւանականաբար Էսկի-Ճումայի դէմ յարձակում մը պատահական համարելով, երկու գիծ ունէր նահանջելու համար, այսինքն՝ նախ Փօփքէօյէն Թանօվա տանող ճանապարհն, եւ երկրորդ Փօփքէօյէն մինչեւ Պիէլա ձգեալ ճամապարհ մը՝ որ Օփաքայէն Պրէփէցէն, Էօրէնճիքէն եւ Սինանքէօյէն կ'անցնի։ Տաճկաց ձախ թեւին յարձակումն Ռուսաց՝ այս վերջին ճանապարհին նահանջն անհնար ընելու նպատակաւ էր, ինչպէս նաեւ թոյլ չտալ որ 12րդ գնդին քով ժամանեն, բայց Հասան իշխանին պատճառաւ ամենայն ինչ ձախող գնաց։ Խտիվին որդին Սուլթանին հաճոյ էր եւ Մէհէմէտ-Ալի չէր փափաքած անոր հրամանատարութիւն մը յանձնելու, յուսալով թէ այն քսան երեք տարեկան երիտասարդն՝ որոյ զինուորական անցեալն Հաբէշստանի մէջ կրած շարաշար պարտութեամբ մը կը յիշատակուէր, ձախ թեւին առաջնորդութիւնն խոհեմութեամբ Սալիհ փաշայի պիտի յանձնէր որ ընտիր զօրավար մ'էր. բայց Նորին Բարձրութիւնը այս բանը չըրաւ եւ բանակին գործողութիւններն պարապ տեղն վտանգեց այն պաշտօն յորում բնաւ վստահուելու չէին։

Սալիհի յառաջագիծն շատ պարզ էր, նա կ'ուզէր Ռուսաց զօրքը Փօփքէօյէն վանել, մինչդեռ Պէքիրլին-Եէնիքէօյի եւ Փարա-Հասանքէօյի մէջ տեղ եղած բարձրաւանդակները գրաւող Սալիհ փաշայի աջին մէկ մասն՝ անոնց դէպ ի Պիէլա նահանջն պիտի արգելուր եւ զանոնք Թանօվայի ճանապարհին վրայ պիտի մղէր։ Սեպտեմբերի 6ին կէս օրէն մէկ ժամ յառաջ՝ Սալիհ փաշա խիստ ուժգին յարձակում մ'ըրաւ Փօփքէօյի դէմ. իւր թընդանօթաչարք գիւղը կը ռմբակոծէին բարձուստ. Ռուսաց հետեւակազօրն տաճկական ամբարտակներուն կրակին ներքեւ էր, եւ Տաճկաց հետեւակ զօրքն՝ զորս կը պաշտպանէին իրենց թնդանօթներն միանգամայն նպաստամատոյց լինելով, բարեկարգութեամբ կը յառաջէր դէպ ի Փօփ-

քէօյ աջ եւ ձախ կողմերէն, եւ թշնամին կըստիպուէր գիւղին ետեւ քաշուելու։ Ինչպէս Գարա-Հասանի կողմն նոյնպէս եւ Փօխքէօյի մօտը կը նահանջէր նա, բայց յանկարծ յարձակումն կը դադրի. կ'երեւի թէ Հասան փաշա յարմար կը դատէր այլ եւս կանգ առնուլ։

Հետեւեալ օրն՝ այն է սեպտեմբերի 7ին առաւօտուն՝ Ռուսք կըսկսին Փօխքէօյէն եւ շրջակայներէն մեկնիլ դէպ ի Գիւլլա։ Սալիհ փաշա ամեն պէտք եղածն ունէր նոցա հետամուտ լինելու եւ մեծ վնաս հասուցանելու համար։ Իսկոյն պատրաստութիւն կը տեսնուէր յարձակման, վաշտերն կազմ էին յառաջ խաղալու համար, եւ թնդանօթներն կըսկսէին շարժիլ։ Սալիհ փաշա լաւ զինուորական մ'էր, ինչպէս եւ ապացոյցը տուած էր. Թըշնամւոյն կորուստ պատճառելու առիթ մը կը տեսնէր, ինչպէս նախորդ օրն կարէր լինել։ Բայց Հասան իշխանն տակաւին կը վարանէր. կ'ըսէր թէ Սարը-Նասուհլարի դիրքն լաւ էր եւ մեղք էր անկէ հեռանալն. վերջապէս իր տհաճութիւնը յայտնեց լինելիք գործողութեանց մասին, եւ Ռուսք հանդարտօրէն դէպ ի Գիւլլա խուսեցին զինուք եւ աղխիւք։ Ասկէց բանակատեղին մէջ գաղտնի զայրոյթ եւ զինուորաց մէջ տժգոհութիւն յառաջ եկաւ, որք իրենց ռամկական ողջամտութեամբն կը հարցնէին թէ ինչու թոյլ չէր տրուեր հետամուտ լինելու թշնամւոյն, երբ նա կը փախչէր։

Սալիհ փաշա զայրանալով իսկոյն տեղեկութիւն հաղորդեց Մէհէմմէտ-Ալիի՝ որ հետեւեալ օրն ժամանեց։ Ընդհանուր հրամանատարն ինչ որ իր ձեռօք կ'ընէր կը յաջողէր, բայց իր տեղակալքն այս յաջողութիւններն ի դերեւ կը հանէին։ Սիւլէյման փաշա՝ որ յիմարաբար Շիփքայի դէմ գործեր էր յամառութեամբ սարսափելի կորուստ կրել յետոյ՝ այլ եւս անկարող էր իրեն նպաստելու. Հասան իշխանին ապիկարութիւնն ձախ թեւին գործողութեանց կը վնասէր. ամեն ուրեք ընդհանուր հրամանատարն իր պատուէրները կատարել տալու անզօր կը գտնուէր։ Շումնու հասած ժամանակ կարծեր էր թէ ընդարձակ իշխանութիւն ունէր. սակայն խաբուած էր։

Ինչ կարէր ընել Մէհէմմէտ-Ալի, քանի որ այնպիսի խարդաւանութիւններ կը լինէին իր շուրջն, եւ իր տաղանդէն զատ ուրիշ բան մը չունէր հաճոյանալու համար։ Վհատելով չնայեցաւ այլ եւս օգուտ քաղելու Գարա-Հասանքէօյի եւ Քօչէլեէվօյի յաջողութիւններէն, իր յառաջագիծն ի բաց թողուց եւ թոյլ տուաւ որ Ռուսք հանդարտօրէն նահանջեն եւ լաւագոյն դիրից մէջ հաստատուին ըստ հաճոյս։ Հինգ օր անշարժ սպասեց Սարը-Նասուհլարի մէջ ամսոյն 8էն մինչեւ 13ն. ետ քաշուելու վրայ եղող թշնամեաց երկու գնդերուն մէջ տեղ մնալու չհամարձակեցաւ, գիտէր որ Սիւլէյման իրեն չը պիտի օգնէր եւ Հասան իշխանն զինքը գուցէ պիտի վտանգէր՝ տագնապալից պահուն. ինքն այլ եւս վստահութիւն չունէր մէկուն վրայ։

Սոյն ամսոյն 13ին որոշեց իր զօրքն յառաջ վարել դէպ ի Գիւլլա համակեդրոն խաղացիւք՝ առաւել թշնամւոյն պարպած տեղերը գրաւելու քան թէ անոր հետամուտ լինելու համար։ Աջ թեւն Ահմէտ-Էյուպի առաջնորդութեամբ 12րդ գնդին ետեւէն պիտի երթար դէպ ի Թրսթէնիք, միջին խումբն Ասաֆ փաշայի հրամանատարութեան ներքեւ դէպ ի Սինանքէօյ պիտի խաղար, եւ ինքն Հասան իշխանին վրայ հսկելու համար ձախ թեւին քով պիտի գտնուէր եւ դէպ ի Գիւլլա պիտի յառաջէր։

Ցարէվիչն, Գարա-Հասանքէօյի երկու կռիւներէն յետոյ, մեծ կորովամտութեամբ վերահասու եղաւ այն անպատեհութեանց որք կը ծագէին՝ իր երկու գնդերուն 75 հազարամէթր տարածութեամբ գծի մը վրայ ցրուած լինելէն Ռուսճուգէն մինչեւ Ալյաղլար. պահ մը չվարանեցաւ նաեւ,

հրաման ըրաւ զօրաց դէպ յետոյս համախմբուելու, վասն զի իւր բանակն միայն պաշտպանողական դիրք մը բռնելու պատրաստուած էր՝ Ռուսիոյ բոլոր յարձակողական զօրութիւնն Փլէվնայի գործածուելէն ի վեր ։ Սեպտեմբերի 6 ին Գարա-Լօմի գծէն բոլորովին հեռանալու եւ Եանթրայի գծին վրայ ընդհանուր նահանջ մ՚ընելու հրաման ըրաւ, թէեւ Ալլօվայի կռուոյն արդիւնքն իրեն համար յաջողութիւն մը համարել կարելի էր ։ Փիրկօսի կառաբարձ շոգենաւն (1) եւս տարուեցաւ մինչեւ Դանուբի այն կամուրջն որ Փէթրօշանիի եւ Պոլինի մէջ տեղ էր, հրազինաց մթերքն յետոյս բերուեցան, եւ բանակն անվթար նահանջեց՝ Մէհէմմէտ-Ալիի ջանքն արգելող խոչընդոտներուն շնորհիւ ։ Բնաւ խուճապական փախուստ մը չէր սա, այլ ռազմագիտական պարզ շարժում մը, որ այնքան դիւրութեամբ կատարուեցաւ, որչափ կը լինի զինուորական կրթութեանց ասպարիզին վրայ ։

Երբ Տաճիկներն յառաջեցին, Ռուսք արդէն իրենց նոր կայանները գրաւած էին ։ Ընդհարումն եղաւ միայն Սինանքէօյի մօտ՝ ուր Ռուսաց կեդրոնի ջոկն Ասաֆ փաշայի կողմանէ ի մօտոյ նեղուելով՝ ջանաց մերձակայքն ապահովել Տաճիկներն եւս մղելով ։ Հետեւակազօրաց երկու ու կէս հատուած, հեծելազօրաց երեք գումարտակ թնդանօթներու ութ շարիք հանդերձ՝ այն ցոյցն ըրին, որ նախորդ կռիւներուն պէս՝ չէր այնչափ կարեւոր որչափ կը կարծուէր ։ Սեպտեմբերի 14ին Ռուսաց զօրքն երեւեցաւ Գանիցքա-Լօմի ձախակողմեան ափանց այն բարձրաւանդակներուն վրայ՝ որ Գանիցքայի եւ Կէօլ-Փունարի մօտ են, եւ սկսաւ իջնել դէպ ի Սինանքէօյ ։ Տաճիկներն եթէ այս կէտը ձեռքէ հանէին, արդիւնքն կը լինէր իրենց միջին խմբին նահանջն, եւ Հասան փաշայի հրամանատարութեան ներքեւ գտնուած իրենց ձախ թեւն անջատ պիտի մնար եւ պիտի վտանգուէր ։ Բայց Ասաֆ՝ որ Ռուսաց դէմ գնելու համար 12 վաշտ եւ 5 թնդանօթաշար միայն ունէր նախ, խիստ ամուր դիրք մը կը գրաւէր ։ Սինանքէօյի հարաւային կողմն կէս փարսախի չափ հեռի փոքր սարահարթ մը կը բարձրանայ գրեթէ հաւնկինի ձեւով, Գանիցքայէն Ռուսք ջանացին այն բարձրաւանդակը գրաւել որ տաճկական դիրից բանալին էր ։ Բայց իրենց յարձակմունքն ի դերեւ ելան, եւ ժամ մը կռիւ լինելէ յետոյ՝ երբ Ասալիթ փաշա զօրաց հատուածով մը վազեց հասաւ, եւ 6 վաշտ թշնամւոյն ճակատին դէմ եւ մնացեալ մասն կողմնակի վարեց դէպ ի Կէօլ-Փունար՝ Ռուսաց նահանջելու ճանապարհը խափանել ջանալով, Ռուսք ետ քաշուեցան ։

Երկու կողմանէ մէկ քանի հարիւր մարդիկ անկան ։ Թէեւ Ռուսք իրօք յաղթուած էին, սակայն իրենց ուզած արդիւնքն եւս ձեռք բերած էին ։ Մէհէմմէտ-Ալի նոյն միջին խումբն անդորր ձգեց՝ իւր զօրքն ետ տանելով եւ համախմբելով դէպ ի ձախ թեւն ։ Սինանքէօյի շրջակայքն այնպէս թափուր մնացին որ զօրավար Տէլլինկսհաւզէն սեպուհին հրամանատարութեամբ Ռուսիոյէն նոր հասած հետեւակազօրու 26րդ հատուածին մէկ մասն կարող երթալ զննութիւն ընելով մինչեւ Փօլամարցա՝ առանց դիմադրութիւն տեսնելու ։

Սինանքէօյի կռուով աւարտեցաւ Մէհէմմէտ-Ալիի յաջող գործողութեանց շրջանն ։ Յայտնեցինք թէ ինչպիսի ձախող պարագայից պատճառաւ ընդհանուր հրամանատարին յաջողութիւնքն յառաջացուածին պէս փառաւոր արդիւնք չէին ունեցած ։ Ծանօթ է որ սեպտեմբերի 13 ին Ցարէվիչի բանակին կացութիւնն երեք

(1) Ռուսք կամուրջ ձգած չէին Փիրկօսի մօտ, ինչպէս ըսուած է ի Դյուխ քսանվեցերորդ, երես 407, այլ կառաբարձ շոգենաւ մը կ՚երթեւեկէր ։ Այս մասին գաղիոր՚ն բնագրին սխալը կրկնուած է անդ անմտադրութեամբ ։

շարաթ առաջ եղածէն աւելի լաւ էր, վասն զի առաջ 75 հազարամէթր տարածութեամբ տեղւոյ վրայ ճակատեալ էր եւ իր զօրաց մէջ բաց տեղ մը եւս կը գտնուէր, ուրկէ Տաճիկներն կարէին յերկուս բաժանել զայն ։ Այժմ հզօր կերպիւ ամրացեալ էր Պանիցքա-Լօմի եւ Եանթրայի մէջ տեղ եղած սարահարթին վրայ ։

Այս համախմբութեամբ եւ նոր հասնող զօրավիգներով Ցարէվիչի բանակն Մէհէմէտ-Ալիի բանակին կը հաւասարէր։ Պիէլայէն առ առաւելն 25 հազարամէթր եւ Զիշթօվէն 60 հազարամէթր հեռի տեղւոյ մը վրայ մեծ ճակատամարտ մը եթէ տրուէր, արդարեւ շատ ծանր պատահականութիւն մը պիտի լինէր, բայց գէթ պարտութեան հաւանականութիւնք այժմ շատ նուազ էին եւ կարելի էր նահանջ ընել բարեկարգութեամբ ։

# Գլուխ Քսանեւիններորդ

## ԵՐՐՈՐԴ ԿՌԻՒ ՓԼԷՎՆԱՅԻ

### ՌՈՒՄԱՆԻՈՅ ԿԱՐՈԼՈՍ ԻՇԽԱՆՆ ԱՐԵՒՄՏԵԱՆ ԲԱՆԱԿԻՆ ԳԼԽԱՒՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ Կ'ԱՆՈՒԱՆԻ

Ըսուած է թէ Ռուսական սպայակոյտըն ժամանակ մը մեծ դժկամակութիւն ցոյց տալէն յետոյ՝ վերջապէս հաճեցաւ ռումանական բանակին գործակցութեանն, որ իրեն յատուկ գլխաւորներ պիտի ունենար, եւ իր սեպհական կազմակերպութիւնը պահելով հանդերձ՝ ռուսական բանակին հետ զուգընթացութեամբ շարժմունք պիտի ընէր ։ Այս զուգընթացութիւնն զոր տեսականապէս երեւակայել դիւրին է, բաւական մեծ դժուարութիւններ կ'ընծայէր գործադրութեան մէջ, յորում ազգային զգացումն կարէր յարաժամ ազդեցութիւն ունենալ երկու կողմանէ, գործոյն արգելք լինել եւ վերջապէս անմիաբանութեան առիթ ։ Մէկ կողմանէ դժուար էր ստորակայ վիճակի մը մէջ դնել Կարոլոս իշխանն որ ազգի մը վեհապետ է, եւ միւս կողմանէ ոչ նուազ դժուարութիւն կար ռուս սպայներն այնպիսի օտարականաց հրամանատարութեան ներքեւ կացուցանել, որոց վրայ ոչքա մեծ համարում մը չունէին զինուորական տեսութեամբ ։

Այս դժուարութեան առաջքն առնուեցաւ բաւական յաջողութեամբ՝ Կօրնի-Սթուտէնի մէջ օգոստոսի 24ին պատերազմական խորհուրդ մը գումարուելով. որոշուեցաւ որ արեւմտեան բանակին ընդհանուր հրամանատարութիւնն Ռումանիոյ Կարոլոս իշխանին յանձնուի սա պայմանաւ որ ռուս զօրավար մ'իբրեւ սպայակոյտի գլուխ ընդունի ։ Կարոլոս իշխանն հաճելով՝ Զօթով զօրավարն ընդհանուր սպայակոյտի գլուխ անուանեցաւ ։

Կարոլոս իշխանին զօրքն երկու բանակագունդ կը կազմէին՝ իւրաքանչիւրն երկու հատուածէ բաղկացեալ ։ 1ին բանակագունդն՝ որոյ հրամանատարն էր սահայեա Լուփու զօրավարն, 1ին եւ 2րդ հատուածներէն ձեւացած էր, եւ 2րդ բանակագունդն՝ սահայեա Ռատօվիցի զօրավարին հրամանատարութեամբ՝ 3րդ եւ 4րդ հատուածներէն ։

Չրդ, Յրդ եւ Ֆրդ հատուածներն Փլէվնայի հիւսիսային արեւելեան կողմը գետեղուեցան՝ լինելիք յարձակման միջոցին իրենք եւս գործակցելու համար, եւ Կարոլոս իշխանն իւր զօրաց հետեւեալ յայտարարութիւնն ուղղեց, յորում իբրեւ պարծանաց մեծ առիթ մը ցոյց կուտար ռումանական ազգին համար՝ եղած այս պատիւն.

Մեծ զօրանիստ

ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՊԱՏՈՒԷՐ ՕՐԱԿԱՆ

*Զօրականք.*

*«Տարի մը կայ որ յայնկոյս Դանուբի Տաճկաց եւ քրիստոնէից մէջ եղած կռիւն մեր սահմանագլուխները կը վտանգէ։*

*Զանոնք պաշտպանելու համար՝ հայրենիք ձեզ հրաւէր կարդաց։ Իւր ձայնին անսալով դուք ձեր տներէն հեռացաք՝ աշխոյժ ցոյց տալով իբր այնպիսի մարդիկ՝ որ գիտեն թէ ռումանական պետութեան գոյութիւնն իրենց անձնուիրութենէն կախումն ունի։*

*Մինչդեռ բանակներն մեզ հեռի կը գործէին եւ ատրպատուեալ հրասայլներուն յարձակմանց վախը միայն կար, կարելի էր մեզ բաւականանալ երկրին ափունքը միայն պաշտպանելով։ Բայց այժմ պատերազմը մեր սահմանագլխոց մօտ է. կարեմք հաւաստեաւ կարծել որ եթէ Տաճիկներն յաղթական ըլլան, հայրենեաց վրայ պիտի խուժեն կոտորելով, յափշտակելով եւ աւերելով։*

*Սոյն կացութիւնը տեսնելով, հայրենիքն այնպիսի ատրպատուեալ վայրագութենէն զերծ պահելու համար՝ մեր պարտքն է երթալ կռուիլ նոցա հետ իրենց երկրին վրայ։*

*Ռումէն զինուորք. գիտէք դուք թէ ձեր հայրենիքն երկու հարիւր տարիէ ի վեր ինչ կրած է, երբ ճակատատեղեաց վրայ իւր իրաւունքը պաշտպանելու միջոցներն ձեր ձեռքէն յափշտակուած էին։*

*Այսօր առիթ ունիք նորէն ձեր արիութիւնը ցոյց տալու։ Համայն Եւրոպա ականատես կը նայի ձեզ։*

*Օ՛ն, յառաջ, ճշմարիտ ռումանական (1) արիւ։ Թող աշխարհ մեր գործոց համեմատ դատէ զմեզ։*

*Մեր նախնեաց փառաւոր կռիւներուն կը ձեռնարկենք այսօր վերստին՝ աշխարհիս ամենամեծ տէրութեանց միոյն արի բանակին ընթերակայ լինելով։ Ռումանական բանակն թէեւ փոքրիկ է, սակայն հաւատացեալ եմ, նշանաւոր պիտի հանդիսանայ իւր քաջութեամբն եւ կարգապահութեամբն։ Նա պիտի տայ վերստին Ռումանիոյ՝ այն աստիճանն որ նմա կը վերաբերի եւրոպական ազգաց մէջ, զոր եւ ունէր ժամանակաւ։*

*Այս է նաեւ ամենայն Ռուսաց վեհափառ կայսեր համոզումն։*

*Ամէն իրի՝ ոչ միայն Ռումանիացիք առընթեր Ռուսաց պիտի կռուին ճակատամարտեղւոյն վրայ միեւնոյն նպատակաւ, այլ եւ Փլէվնայի երկու բանակաց գերագոյն հրամանատարութիւնն ինձ յանձնուած է, ինձ առանձինն։*

*Գործանք մ'է այս որոյ փայլն կ'անդրադառնայ հայրենեաց եւ ձեր վրայ։*

*Կրկին պարզեցէք արեան փառօք ռումանական դրօշն ճակատամարտեղւոյն վրայ յորում ձեր նախնիք դարերով պաշտպան կացին հաւատոյ եւ ազատութեան։*

*Օ՛ն, յառաջ, ռումանիացի զինուորք, յառաջ, եւ ընդ հուպ պիտի դառնանք ձեր ընտանեաց քով, ձեր ձեռօք ազատեալ հայրենեաց մէջ, մինչ համայն ազգն պիտի ծափահարէ։*

ԿԱՐՈԼՈՍ»

*Կարոլոս իշխանն միանգամայն (2) ուրիշ յայտարարութիւն մ'ուղղեց ռումանական ժողովրդեան։ Սոյն գրութեան մէջ՝ որ*

(1) Ռումաներէն լեզուի մէջ հռովմայեցի և ռումանական ըսելու համար միեւնոյն բառը կը գործածուի։ Այս խօսքն կը մեկնուի նաև ճշմարիտ Հռովմայեցւոց որդիք։

(2) Երկու յայտարարութիւնք ևս Փօրատինի զօրանըստին մէջ գրուած են սեպտեմբեր 8 Թուականաւ։

քան զառաջինն երկար էր, կը նշմարուին․ փառաց խղձեր որովք կը յուզուէր նորատի ազգն, եւ գաղտնի անձկութիւններ զորս ունէր պատերազմին արդեանց գործակցելով՝ մեծ դիմագրաւութիւն մ՚ըրած պահուն։

թիւնք Ասիոյ անկիրթ հրոսակներուն անգըթութեանցն ենթակայ են. բոլոր քրիստոնեայ անուանը կրողներուն դէմ պատերազմ հրատարակուած է զանոնք բնաջինջ ընելու դիտմամբ։ Պատճառ մը չկայ կարծելու թէ՝ անձնասիրութեամբ կրաւորա-



ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ՊՈՒԼՂԱՐ ԼԵԳԷՈՆԱԿԱՆԱՑ

Ահաւասիկ այն յայտարարութեան մէկ կտորն, յորում իշխանն պերճախօսութեամբ կը բացատրէ ազգին այն զգացմունքն թէ նոր կեանք մը ստացած լինելով՝ իր ազատութիւնն ամրապնդելու պէտք կայ եւ ոյժն ունի։

«Պուլղարիա յաւեր եւ յապականութիւն մատնեալ է. քրիստոնեայ հասարակութեան գիրք մը պահելովն լաւագոյն վիճակ մը սահմանեալ է Ռումանիոյ, եթէ տաճկական բանակներն շարունակ յաջողութիւններ ձեռք բերելով՝ կարող լինին մեր երկիրը մտնելու։

«Բանի որ Ստա-Գոլէսիէն սկսեալ մինչեւ Մաչին տաճկական ամրոցներն կանգուն եւ հաստատ մնան, ոչ թէ օտարա-

բաղձեաց բանակներուն անցքն խափանելու եւ թշնամեաց ամրոցներուն դէմ գործելու համար, այլ միայն մեր անպատերազմ քաղաքներն ռմբակոծելու եւ մեր մեծ գետին վրայ միջազգային եւ տեղական առեւտուրն ջնջելու, քանի որ մարդասէր եւ օրինաւոր վարչութիւն մը չը հաստատուի Պուլղարիոյ մէջ, քանի որ մարդկային իրաւունքն եւ արժանապատուութիւնն ապահովեալ չլինին Պուլղարիոյ քրիստոնէից համար եւս, Ռումանիա ինքզինքն խաղաղութեան վիճակի մէջ համարիլ եւ ներկայ եւ ապագայ աղէտներէն զերծ կարծել չկարէ եւ իրաւունք չունի ։

«Ուրեմն Ռումանիա եւս պարտականութիւն ունի իւր միջոցներուն եւ զօրութեան համեմատ աշխատելու. որ իրեն դէմ սպառնացող չարիք անհետանան եւ մեր Պուլղարիոյ դրացեաց մէջ իրաց վիճակ մը հաստատուի արդի քաղաքակրթութեան եւ արդարութեան պահանջմանցն համեմատ։ Այսպէս ընելու կը պարտաւորեն զՌումանիա թէ իւր փառաւոր անցեալն, թէ ներկային ամենէն նուիրական շահերն եւ թէ ապագային; ապահովութիւնն ․

«Նաեւ մեք Ռումանիացիքս միթէ քրիստոնեայ չեմք, եւ Արեւելից շահերն մեզ եւս վերաբերեալ չեն։ Արեւելեան քրիստոնէից ձերբազատութեան մեծ խնդրոյն մէջ՝ միթէ մեք եւս իրաւունք եւ պարտականութիւն չունիմք խօսելու, մեր աջակցութիւնն ընծայելու եւ փրկարար լուծման օգնելու ։ Ի՞նչ, գձուձ անձնասիրութիւնն եւ կոյր կրաւորականութիւնն լինելու է արդեօք մեր ազգին քաղաքականութիւնն։ Բայց եթէ կռուոյն չխառնուիմք, եթէ մարդասիրական եւ արդար դատի մը համար ինքզինքնին զոհողներուն չօգնեմք, միթէ Ռումանիա այս կերպիւ չպիտի կորուսանէ վտանգի ժամանակ այլոց օգնութիւնն խնդրելու իրաւունքն։ Արդեօք միշտ ուրիշին ապաւինելու եմք, եւ չպիտի վստահ լինիմք երբէք մեր իսկ զօրութեան, մեր իսկ կենսական ուժին վրայ ։

«Ռումանիացիք,

«Երեք սերնդոց թափած ջանքէն յետոյ, մեր հարց կրած տառապանքէն յետոյ, եւրոպական մեծ տէրութեանց վեհանձն պաշտպանութեան շնորհիւ կազմուեցաւ ռումանական Պետութիւնն։ Ժամանակ է որ այս Պետութիւնն եւս ապացուցանէ Եւրոպայի իւր զաւակաց բազուկներովն՝ թէ Ռումանիա կենսական հիւթ ունի, ինքեան սեպհական զօրութիւն ունի, թէ ինքն՝ Դանուբի բերանաց վրայ իրեն յատուկ պաշտօնին գիտակցութիւնն եւ զայն կատարելու արիութիւնն ունի ։

«Եւրոպական քրիստոնեայ տէրութիւնք յաճախ առիթ ունեցած են ճանաչելու թէ՝ Ռումանիացիք իրենց իղձերն քաղաքական խոհեմութեան սահմանաց մէջ ամփոփել գիտեն ։

«Այսօր մեր բանակին մարտակցութեամբն, արիութեամբն եւ կարգապահութեամբն ապացուցանելու ժամանակ է թէ Ռումանիա՝ Արեւելից մէջ բարեկարգութիւն եւ կայուն վիճակ մը հաստատելու նպաստող հանճարեղ եւ ամուր տարր մ'է նաեւ եւ կարէ լինել ։

«Մեծ արժէք ունեցող բոլոր այս նկատողութիւնք պարտականութիւններ են մեր ազգին համար, որք կը միանան եւ կը ստիպեն զմեզ ի կռիւ կոչուելու, ճակատ յարդարելու, եւ այլոց աջակցելու, որպէս զի դադրի այն պատերազմն որ որքան աւելի տեւէ այնքան սխոր սպառէ մեր բարոյական եւ նիւթական զօրութիւնքն ։

«Ուրեմն ցանկալի խաղաղութեան ընդհուպ իրականացմանն համար, մեր ազատ եւ անկախ ազգի իրաւանց ամրապէս հաստատութեանն համար, օտար ազգաց մեր վրայ ունեցած համարման եւ վստահութեան անխախտ մնալուն համար, մեք անցանք Դանուբն՝ կարդալով ձեր

մեծ քաղաքն Իշխանաց անուանքն, նոյն՝ որք երբեմն Արեւելից մէջ քրիստոնէութեան կռուի ախոյեաններն էին, օրինակ առնլով ձեր նախնի բանակներէն որք փառաւոր ժամանակաց մէջ ռումանական դրօշակներն Սեւ ծովէն մինչեւ Պալթիկ շրջեցուցին յաղթանակաւ ։

«Յօգնութիւն կարդալով զԱստուած, որոյ ձեռաց մէջն է ճակատամարտից բաղդըն, ծերունի եւ դեռահասակ զօրականք Ռումանիոյ, գիտեմք թէ ինչ կը յուսայ ազգն մեր բաղուկներէն։ Իշխան, սոյնք եւ զօրականք, մեք ամենեքին պիտի կատարեմք մեր պարտքն ։»

Ինչպէս կ՚երեւի՝ Կարոլոս իշխանն պարզ զգացմանց վրայ միայն կը պատճառաբանէր ծանուցանելու համար թէ Ռումանիա մարտակցութիւն ընելով՝ «իր ազատ եւ անկախ ազգի իրաւանց ամրապէս հաստատութեանն համար» կը կռուէր, բայց չէր զրուցեր թէ ինչ բանով եւ որոյ կողմանէ երաշխաւորեալ էր այդ իրաւանց հաստատութիւնն։ Հաւաստի կը թուի թէ Ռուսիա այս մասին դաշնադրութեամբ մը կապուած չէր. ուր Ռումանիոյ պետական անձինք երկու բաներու վրայ միայն կը պնդէին իրենց յոյսն, որք արդարեւ շատ հաստատուն էին, այսինքն՝ այն բարոյական ազդեցութեան՝ զոր կատարուած իրողութիւնն պիտի ունենար՝ պատերազմէն յետոյ արեւելեան գործոց կարգադրութեան պաշտօնն ունեցող դիւանագիտաց վրայ, եւ Գերմանիոյ պաշտպանութեան՝ որ արդէն իսկ ապահովեալ էր Հօհէնցօլլէռնի գերդաստանէն անձի մը համար ։



## ՅԱՏԱԿԱԳԻԾ ՅԱՐՁԱԿՄԱՆ. — ՅՈՒԼԻՍ 30Ի ՍԽԱԼԱՆԱՑ ԿՐԿՆՈՒՄՆ

Կարոլոս իշխանն սեպտեմբերի 2ին Փօրատին հասաւ եւ 3 ին հրամանատարութիւնն ստանձնեց իր առաջնորդութեան ներքեւ կարգեալ զօրքն աչքէ անցընելով։ Փօրատինէն մինչեւ Փէլվնա գրեթէ քսան եւ հինգ վաշտի առջեւէն անցաւ, եւ գընդերուն առաջնորդաց իւրաքանչիւրին շնորհաւորութեան մէկ քանի խօսք ուղղեց որոց արժանի եւս էին, վասն զի զօրքն իր ձախողութեանց հակառակ տակաւին աննազիւտ ոգի կը կրէր ։

Եթէ իշխանն իր հրամանատարութեան իրական լինելու մասին խաբուած էր, շուտով անոր ինչ լինելն հասկացաւ։ Ամսոյն 5ին Նիքոլա մեծ դուքսն իրեն զօրանիստ ըրաւ Ռատէնիցա գիւղն որ Փօրատինի ետեւն էր եւ անոր մօտն. հետեւեալ օրն Կարոլոս իշխանն գնաց մեծ դքսին հետ բանակցելու՝ Փլէվնայի դէմ մտադրեալ յարձակման մասին լինելիք կարգադրութեանց վրայ։ Նոյն օրն՝ կայսրն եւս Կօրնի-Սթուտինէն մեկնեցաւ, եւ չկարենալով զսպել իր սաստիկ անհամբերութիւնն, գնաց անձամբ հսկելու եղած պատրաստութեանց վրայ, այնպէս որ եթէ ռուսա-ռումանական բանակն յաղթական չհանդիսացաւ, պատճառն բաւական թուով հրամանատարներ չգտնուիլն չէր. գուցէ շատէն աւելի թուով կային ։

Որոշուած էր օգոստոսի 11ին յարձակում ընել Փլէվնայի դէմ, եւ ասոր համար այնքան ծանրակշիռ պատճառ մը կար, որքան կար Օսման փաշայի համար, երբ օգոստոս 31ի թուականն ընտրեց եւ դուրս յարձակում մ՚ըրաւ։ Կայսեր տօնախմբութիւնն էր եւ կ՚ուզուէր որ այն օր նա Փլէվնան իր ոտից ներքեւ տեսնէ ։ Կ՚ըսուի թէ այն պատերազմական խորհրդոյ մէջ յորում թուականի մասին վիճաբանութիւն եղաւ, սպայակուտի գլուխ Նէփօքօյչիցքի ի զուր ջանաց ետ ձգել յարձակումն ։

Ստուգիւ անհաւատալի բան է Ռուսաց օգուտ չքաղելն այն երկու պարտութեանց փորձառութենէն, զորս կրած էին ճակատեղւոյն վրայ ուր վերստին բաղդը փորձել կ՚ուզէին։ Առաջիններէն շատ աւելի արիւնալից պարտութիւն մը պէտք էր ռուս զօրավարներն համոզելու հա-

մար՝ թէ զէմերնին գտնուող զինուոր-ներն իրենց զօրաց չափ կ'արժէին, եւ թէ անագորոյն եւ յիմարական գործ մ'էր իրենց մարդիկը զրկել որ ջարդուին՝ հզօր կերպիւ ամրացեալ եւ բազմագոյն հակառակորդաց դէմ, մինչեւ անգամ եթէ այդ հակառակորդներն Թուրք լինէին ։

Հաշիւ եղաւ թէ Օսման փաշայի բանակին 60,000 ի չափ հոգիէ բաղկացեալ էր յուլիսի 31ին ։ Ամենէն արժանահաւատ տեղեկութեանց նայելով՝ այս թիւն գործեալ գրեթէ միեւնոյնն մնացած էր. առանց Ռուսաց կողմանէ նեղուելու Օսման փաշայի քով հասնող զօրավիգներն՝ առաջին երկու ճակատամարտներուն պատճառաւ յառաջ եկած պակասները լրացուցած էին ։ Բայց եթէ այդ բանակին զօրութիւնն անփոփոխ մնացած էր, սակայն դրուած դիրքն նոյնը մնացած չէին, եւ Օսման փաշա զօրացուցած էր զանոնք անդադար ։ Նա Ռուսաց հետամուտ չեղաւ եւ վերջերն եւս չնեղեց անգամ, այլ լաւագոյն համարեց իր բոլոր ջանքը թափել այն պատնէշները կատարելագործելու որոց շնորհիւ երկու անգամ յաղթութիւն տարած էր ։ Զինքը տեսնող անձինք կ'ըսեն թէ իրեն յատկացեալ պաշտօնին մեծութեան վերահասու եղած էր, եւ Փլէվնան իբրեւ Թուրքիոյ պատուարը կը նկատէր ։ Համոզուած էր նա թէ քանի որ ինքն այն տեղը մնար իբրեւ դաշոյն Ռուսաց կողին մէջ մխեալ, արշաւող բանակին այլ եւս չպիտի կրնէր յառաջ խաղալ, եւ յիրաւի հինգ ամսէն աւելի միջոցի մէջ՝ իրողութիւնք ցոյց տուին թէ ինքն ուղիղ դատողութիւն ըրած էր. վասն որոյ փոյթ տարաւ Փլէվնայի զինուորական միջոցներն վերջին աստիճան բազմապատկելու ։

Այն առաջին գծին ետեւ՝ որոյ դէմ Քրիւտնէր եւ Շախօվսքոյ զարնուելով յաղթուած էին ։ ամրութեանց երկրորդ շարք մը հաստատեց, ապա երրորդ մը, Փլէվնան այս կերպիւ եռապատիկ զըրահով պատելով ։ Սեպտեմբեր ամսոյ սկիզբներն այս քաղաքին շուրջը բարձրաւանդակ մը, բլրակ մը, պաշտպանողական կէտ մը չկար որ ամրացեալ չէինէր ։ Այս կերպիւ առաւել կամ նուազ կարեւոր հողակերտ ամրականներ կամ Ռէտուտներ բարձրացած էին քսանի՝ չափ ։ Սոյն կերտուածք բնականաբար երկու մասանց կը բաժնուէին հիւսիսային եւ հարաւային, որոց մէջ տեղէն կ'անցնէր Փըլէվնայէն սկսեալ եւ Կրվիցայի վրայէն Պուլկարէնի տանող ճանապարհն ։ Հիւսիսային ամրութիւնք Կրվիցայի վտակին զուգահեռական բլրոց շղթայի մը կատարներուն վրայ շինուած էին ։ Շղթային արեւելեան ծայրն էր այն համբաւաւոր մեծ ամրականն՝ որոյ առջեւն գրեթէ բնաջինջ եղաւ Փէնզայի գումարտակն, եւ ուրուք Քրիւտնէր ի զուր ջանաց տիրելու ։ Ցոյնժամ Փլէվնայի դրից բանալին էր այն։ Օսման փաշա զգալով որ Ռուսք իրենց բոլոր ճիգն այն կէտին վրայ պիտի թափէին մօտալուտ յարձակման միջոցին, ճարտար կարգադրութիւններ ըրաւ, որպէս զի եթէ Ռուսք զայն գրաւեն եւ իր դէմ գործածեն, արդիւնքը բոլորովին ոչինչ լինի. այս նպատակաւ՝ անկէ երկու հարիւր մեթր հեռի դէպ յետոյ՝ երկրորդ ամրական մը եւս շինել տուաւ, որ թըշնամւոյն աչքէն ծածկուած էր տեղւոյ ելեւէջին պատճառաւ, թէ եւ առաջինէն աւելի բարձր վայրի մը վրայ էր. այնպէս որ երբ ռումանական բանակին սարսափելի կորուստ կրելէն յետոյ 1 թիւ կերտուածին տիրեց՝ առաւել յառաջադէմ վիճակ մը չունեցաւ, եւ ուրիշ առաւելութիւն մը չստացաւ բայց եթէ այնպիսի տեղւոյ մը գրաւումն ուրկէ կ'անցնէին թիւ 2րդ կերտուածին տաճկական ռումբերն։

Հիւսիսային ամրականաց պաշտպանութեան գործն Ատիլ փաշայի յանձնուած էր։ Ատիլ եօթանասուն տարեկան ծերունի մ'էր երկայնահասակ եւ նիհար, ձիւնագոյն մազերով եւ մօրուօք. վասն որոյ

զինուորներն զայն ֆաղը դադա՝ այսինքն հայր կը կոչէին ։ Ատիլ՝ որ արդէն Գրըմի պատերազմին ժամանակ ծանր վէրք մը առած էր, Փլէվնայի առաջին կռուոյ միջոցին սուր ի ձեռին Ռուսաց մէջ խոյանալով անոնցմէ շատեր իւր ձեռօք տապալած էր ։

Հարաւային ամրութիւնք երկու կարգ բարձրաւանդակներու վրայ շինուած էին ։ Փլէվնայի հարաւային կողմն վէտվէտ ելեւէջներով ընդարձակ սարահարթ մը կայ, որոյ դէպ ի Չկալէվիցէ եւ Ռատիշէվօ նայող բոլոր փեղկերուն վրայ մէկ մէկ ամրական շինուած էր. սարահարթին վրայ եւս երկու պատնիշափակ ճամբարներ հաստատուած էին ։ Փլէվնայի ուղղակի հարաւային կողմն բլրոց շարքի մը վրայ, որոց ուղղութիւնն անկիւն մը կը ձեւացնէր վերոյիշեալ սարահարթին հետ եւ Վիտ գետակին զուգահեռական էր, ուրիշ չորս ամրականներ կային յուլիսի 30ին շինուած ։ Այս կերպիւ տաճկական ամրութեանց գիծն բաւական ճշդութեամբ մանգաղի մը ձեւը կ'ընծայէր՝ որոյ կոթն Փլէվնայի հարաւային կողմն էր, կորութիւնն Կրիվիցայի մօտ եւ ծայրն՝ ի Պուքօվա ,

Ռուսք ո՛րքան զօրութեամբ այս ահագին պատնիշափակ ճամբարին տիրել պիտի ջանային ։ Ռումանական երեք հատուածներ, այսինքն՝ 2րդն, 3րդն եւ 4րդն հիւսիսային կողմէն ճակատու գծին ըսկզբնական մասը կը ձեւացնէին . մէկ հատուածն 10,000 մարդ հաշուելով՝ աքա ընդամենն կը լինէր 30,000 հոգի . յետոյ կուգար 9րդ գունդն՝ Քրիւտնէր զօրավարին հրամանատարութեան ներքեւ, կամ 18,000 հոգի՝ պակասները լրացնելու համար ղրկուած զօրավիգներն ի միասին հաշուելով . ապա 4րդ գունդն՝ Քըռիլով զօրավարին հրամանաց ներքեւ, կամ 20,000 մարդ . ասկէ յետոյ՝ զօրավար Իմէրէթինսքի իշխանին հրամանատարութեան ներքեւ գտնուած 2րդ հատուածն կամ 12,000 մարդ, եւ հուսկ ապա սոսորդ զօրաց 4րդ մասն՝ Տօլլօվօլսքի զօրավարին առաջնորդութեամբ կամ 3,000 հոգի. այսինքն 80,000ի չափ հետեւակազօր ։ Հեծելազօրն եւս հետեւեալ ստորաբաժանմունքն ունէր. 4րդ հատուած՝ 2,000 հոգի. 9րդ հատուած՝ 2,000 մարդ . 11րդ հատուածին մէկ մասն՝ 1,000 հոգի . չէրքէզ խազախաց մէկ մասն՝ 1,000 հոգի . կովկասեան անձնապահ զօրաց խմբին մէկ մասն՝ 200 հոգի, եւ ռումանական հեծելազօրաց 1ին հատուածն՝ 2,000 մարդ ։ Համագումար հեծելազօրու՝ գրեթէ 10,000 ։ Ընդամենն՝ 90,000 հոգի ։ Հետեւակազօրաց երեք մասեր Ռումանիա հասած էին, եւ մէկ քանի օրէն ճակատատեղւոյն վրայ կարէին ժամանել. բայց կայսեր տօնախմբութեան օրն յաղթութիւն տանել կ'ուզուէր եւ սպասող չեղաւ ։ Ռուսաց թնդանօթներն 250ի չափ կային, ասոնցմէ զատ կը գտնուէին նաեւ 16 հարիւրորդամէթր տրամագծով 20ի չափ խոշոր թնդանօթներ նախ Ռուսճուգը պաշարելու դիտաւորութեամբ բերուած եւ ապա օգտակար վերջերն դէպ ի Փլէվնա ղրկուած . Ռումանիացւոց թնդանօթներն 106 հատ էին ։ Յայտնի է որ ռուսօ-ռումանական բանակին զօրութիւնքն բաւական էին՝ եթէ ոչ ընդհանուր եւ ճակատ առ ճակատ յարձակում մը՝ գէթ փորձ մ'ընելու համար ։ Սակայն Ռուսք զինուորական արուեստի մասին տղայութեան մէջ էին տակաւին, որով կ'ուզէին ուղղակի յարձակմամբ տիրել տեղւոյ մը. Նախնական գրութեան կը հետեւէին զոր կարելի է դիւցազնական ապշութիւն անուանել համարձակաբար՝ այժմու կատարելագործեալ զինուց նայելով ։ Վիրաւորեալ Ռուս մը՝ զոր [illegible] մինչեւ մէկ թղթակցին հարցափորձեր էր Իպրայիլէն անցած ժամանակ, միամտաբար եւ յանդգնաբար կը պարծէր իւր գլխաւորաց ապիկարութիւնն՝ ըսելով. «Ես մէկ անգամ հրացան կը պարպէի, երբ Տաճիկն հե-

տըղշնաւէ տասն անգամ կը պարպէր. մեծ քանակութեամբ փամփուշտ ունին Թուրքերն, տարատներնուն եւ շապիկներնուն մէջ կը լնուն եւ մինչեւ գլխանոցներնուն մէջ կը դնեն։ Իրենց հրացաններն եւս մերիններէն աւելի հեռի կրակ կ'ընեն. կարկուտ պէս կը թափուէին մեր վրայ գնտակներն եւ զմեզ կը կոտորեցնէին։»

Ռուսական բանակն սեպտեմբեր 6ին սկսաւ մղել եւ ամբողջ շաբաթ մը շարունակել դարուս ամենէն մորդախանձ ճակատամարտներէն մին։ Ամիս մը հանդարտութիւն տիրելէն յետոյ, Փլէվնայի եւ շրջատեսարան ձեւացնող իւր մարտկոցներուն դէմ՝ որք անտառաց մէջ եւ բլրոց վրայ կարգ կարգ շարուած էին, յարձակումն կը լինէր իբրեւ միջնաբերդի մը դէմ եւ միանգամայն պաշարումն. 100,000 մարդիկ կասելու սախսլուած էին Օսման փաշայի դէմ, զոր իւր Թշնամին Եւրոպայի ամենէն ընդարձակ պետութեան զօրութեամբն կարող չէր եղած շրջապատելու եւ պաշարելու այն անպարիսպ գիւղաքաղաքին մէջ. միեւնոյն ամրականներն՝ զորս եօթն անգամ Ռուսք եւ վեց անգամ Տաճիկներն արիւնաշաղախ ըրած էին, երեկոյին առաջնոց ձեռօք կ'առնուէին եւ հետեւեալ օրն դարձեալ միւսներուն ձեռքը կ'անցնէին. մերթ յաղթութեան լուր կ'ընդունուէր եւ մերթ պարտութեան. եւ այս յեղափոխ տրկածներուն մէջ Օսման փաշա միշտ կանգուն եւ գրեթէ անպարտելի կ'արձանանայ իւր գինուորաց ջոկերներուն՝ որք հազիւ հագուստ ունէին, հազիւ կը կերակրուէին եւ որոց վէրքն հազիւ կը դարմանուէր, բայց իրենք հաւատոյ ներշնչութեամբ ոգեւորեալ եւ կրօնական հայրենեաց սիրով վառուած էին. ահաւասիկ այսպիսի թատերգական տեսարանի մը ականատես եղաւ Եւրոպա. ահաւասիկ այսպիսի փոփոխական տեսիլներու յաջորդութեան լուրերն առնլով ութ օր հետզհետէ՝ հասարակութիւնն կը զարմանար եւ կ'ապշէր։

ՌՄԲԱԿՈԾՈՒԹԻՒՆ ՏԱՃԿԱԿԱՆ ԴՐԻՑ

Ռուսաց սպայակոյտն համոզեալ էր թէ՝ Գրիւտնէրի եւ Շախօվսքոյի ձախողութեանց պատճառն այն էր որ տաճկական դրից վրայ յարձակում ընելու համար՝ ըստ բաւականի ռմբակոծութեամբ պատրաստութիւն չէր տեսնուած։ Վասն որոյ առաջադրած էր միեւնոյն սխալն այլ եւս չգործել եւ որոշած էր որ ամսոյն 11 ին լինելիք յարձակմանէն առաջ՝ չորս օր Փլէվնայի ամրութիւնք ռմբակոծուին։ Այս նպատակաւ՝ ստուգիւ սարսափելի թուով թնդանօթ հաւաքած էր, եւ կռուոյն ներկայ գտնուող ծերունի ռուս սպայք կը հաւաստէին թէ այնպիսի ժխոր լսած չունէին Սէվաստոփոլի կռուէն ի վեր։ Այնքան ահեղ կ'երեւէին այս զօրութիւնք, որ Ռուսաց միակ մտածութիւնն էր թէ մի գուցէ Օսման փաշա առանց կռուելու նահանջէ. մինչեւ անգամ Փլէվնայի պարպուելուն մասին երկու օր տարաձայնութիւն ելաւ եւ այնքան պնդուեցաւ որ պատիւ չբերեր այն լրտես զօրաց խմբին որք Տաճկաց յետակողման ճանապարհներուն վրայ գործելու համար անշուշտ կազմուած էին, եւ Լօշխարեվ զօրավարն հեծելազօրաց գնդաւ մը ղրկուեցաւ Սօֆիայի ճանապարհին վրայ, որպէս զի՝ եթէ Տաճկաց բանակն նահանջէ, ինքն արգելու զայն։

Սեպտեմբերի 6ին կէս օրէն յետոյ՝ ռուսա-ռումանական բանակն ընդհանուր համակեզրոն շարժում մ'ըրաւ դէպ ի Տաճկաց պատնէշներն, ռումէն զօրաց 3րդ եւ 4րդ հատուածներն Վրպիցայէն գէպ ի Կրվիցա մօտեցան, 9րդ գունդն Գարաղաճ-Պուլկարաքիէն մեկնելով՝ գնաց նոյն գիւղին հարաւային կողմը զետեղուելու, 4րդ գունդն Փօրատինէն եւ Փէլիշատէն հեռանալով՝ յառաջեց դէպ ի Ռատիշէվօ, եւ Պօկօթի մօտ գտնուող Իմէրէթինաքիի եւ Սքօպէլեվի գունդերն եւս յառաջխաղացութիւն մ'ըրին դէպ ի Փլէվնա Լօվացի ճանապարհէն։

Երեկոյեան ութերորդ ժամուն՝ տարապարհակ վարեալ աշխատաւորաց խումբերն յառաջագոյն որոշեալ տեղերն հասան, որպէս զի Տաճկաց ամրականներն ռմբակոծելու սահմանեալ թնդանօթաշարից համար մարտկոցներ շինեն։ Սոցա աշխատելու միջոցին՝ արձակամարտից բազմաթիւ շարք գնացին դէպ յառաջ զետեղուեցան, որպէս զի զանոնք պաշտպանեն երբ Տաճիկներն դուրս յարձակում մ'ընեն ։ Այն գիշեր լուսնակոյ չլինելուն պատճառաւ սաստիկ մութ էր եւ Փլէվնայի հակառակ ուղղութեամբ հով մը կը փչէր, վասն որոյ Տաճիկներն ձայները չը լսեցին եւ չկարացին աշխատաւորները նեղել։ Արշալուսոյն արդէն աւարտեալ էր այնպիսի աշխատութիւն մը, որ՝ երբ տակաւին չէր կատարուած, անհնարին կը թուէր. հողակուտակներով պատսպարեալ 120 թնդանօթներ զետեղուած էին՝ պատրաստ որոտալու ։

Քսան հատ 16 հարիւրորդամէթր տրամաչափով ռումբ արձակող վերոյիշեալ խոշոր թնդանօթներն լինելով՝ սահմանուած էին Կրիվիցայի համբաւաւոր ամրականն ռմբակոծելու, զոր Ռուսք իրենց գլխաւոր նշաւակ էին ընտրած՝ կարծելով թէ այն ամրութեան գրաւմանէն յետոյ Փլէվնա այլեւս չկարէ տոկալ։ Ասոնց տասներկուքն Կրիվիցայի հարաւային արեւելեան կողմն շար մը կը կազմէին, եւ այն տեղ ծայր ի ծայր կցուած եւ բազմաթիւ չուաններով գետնին կապուած չորս բարձր սանդուղքէ բաղկացեալ դիտարան մը հաստատուած լինելով՝ Կայմի մարտկոց կամ շար կը կոչուէր այն թնդանօթներու շարն։ Այս կայմին վերի ծայրն՝ վերջին ձողակին վրայ հեծեալ կըսպասէր թնդանօթաձիգ զօրաց սպայ մը ձեռքը դիտակ մ'ունենալով՝ որով տաճկական ամրութեանց վրայ թնդանօթներուն յառաջ բերած արդիւնքը կը դիտէր ։ Կայմի կամ Դիտարանի թնդանօթաշարն հաստաբեստ պարտակներով պատսպարեալ էր եւ յարկածածուկ ներքնախորշեր կամ գաղտնափորներ ունէր. պաշարող բանակին դիրից կեդրոնը կը ձեւացնէր եւ սոյն տեղէն միայն կարելի էր լաւագոյն կերպիւ մէկ ակնարկով զննել ամբողջ ճակատատեղին։ Ասոր ետեւ հետեւեալ օրերն ընդարձակ դարմանոց մը հաստատուեցաւ, եւ փոքր ինչ հեռի դէպ ի հիւսիսակողմն դիտարան մը կար կայսեր համար, որ, ինչպէս ըսուած է արդէն, չկարենալով իւր սաստիկ անհամբերութիւնը զսպել՝ գնաց ականատես լինելու գործողութեանց ։ 16 հարիւրորդամէթր տրամաչափով մնացեալ ութ թնդանօթներն երկրորդ շար մը կը կազմէին առաջնոյն հիւսիսային կողմն՝ ռումանական գծերուն մօտ ։

Սեպտեմբերի 7ին Աղէքսանդր կայսեր թագադրութեան տարեդարձն էր. արեւը ծագած ժամանակ՝ մարտկոցներու հրամանատարներն զինուորներուն ցոյց տուած եռանդեանն եւ անձնուիրութեանն համար շնորհակալութիւն յայտնեցին յանուն կայսեր, եւ առաւօտեան վեցերորդ ժամուն՝ 16 հարիւրորդամէթր չափով քսան թնդանօթներն միահաղոյն արձակուելով՝ ծանուցուեցաւ բանակին թէ Փլէվնայի ռմբակոծութիւնն սկսեալ էր, եւ Տաճիկներն իմացան գիշերոյն եղած աշխատութիւններն ։ Սոքա պահ մ'ապշած մնալէն յետոյ՝ ուժգնութեամբ անդրադարձութիւն ըրին եւ ռուսա-ռումանական գծերուն աջակողմեան մասին վրայ կատաղի ռմբաձգութիւն մը սկսաւ։ Զետեղեալ թնդանօթաշարից գրեթէ ամենուն կրակն Քէրիմ-Թապեասիի վրայ կը թափուէր. այսպէս կը կոչէին Տաճիկներն այն կերտուածը զոր Ռուսք Կրիվիցայի ամրական կ'անուանէին։

Այն առաջին աւուր մէջ ռուսական բանակին դէպ ի ձախակողմն նուազ սաստիկ եղաւ ռմբաձգութիւնն, վասն զի թնդանօթաշարք դեռ իրենց վերջնական դիրից վրայ զետեղուած չէին եւ տակաւին շատ

հեռի կը գտնուէին Տաճկաց ամրականներէն։ Սոքա Ռատիշէվօ գիւղէն մեկներ էին առանց կռուելու, կէս օրէն յետոյ մէկ քանի ամբարտակներ անկան անդ, Ռատիշէվօ հրդեհեցաւ չունենալով Կրվիցա գիւղին բաղդն, որոյ բնակիչք անդորր կերպիւ կարացին շարունակել իրենց սովորական կենցաղն երկաթի ռմբերու նրր մրրկայոյզ տարափի մը ներքեւ։

Երեկոյին բանակին մէջ խրախանցում մ'եղաւ կայսեր գալստեան վրայ։ Նիքօլա մեծ դուքսն եւ Ռումանիոյ Կարոլոս իշխանն եւս եկան այցելութիւն ընելու բանակին եւ ամբաձգութեան արդիւնքը գիտելու։

Ամսոյն 8էն 9 լուսնալու գիշերն կրակը դադրեցաւ. բայց, երկու հակառակորդք պարապ չկացին։ Ծերունի Աոխլ փաշան Քէրիմ-Թապեապի պարտակներուն խրամատեալ տեղերը նորոգել տուաւ, որք հետեւեալ օրն կատարեալ լաւ երեւցան, իբրեւ թէ ճարտարապէտն նոր ելած ըլլար մէջէն։ Ռուսք իրենց հին թնդանօթաշարերն մօտեցուցին Տաճկաց, եւ նոր շարեր զետեղեցին. Ռումանիացիք եւս իրենց մարտկոցներուն թիւն տասներկուքի հասուցին։ Աջակողման եւ կեդրոնին վրայ՝ դաշտային թնդանօթներն Տաճկաց ամրականներուն 1,500 եւ մինչեւ անգամ 1,400 մէթր հեռու չափ մօտեցան. ձախակողմն՝ 4րդ գնդին հրամանատար Բոխլով զօրավարն Ռատիշէվօյի առջեւ բարձրացեալ բլլրոց շարքին վրայ հանեց իւր թնդանօթներն, ուր կատարուած էր յուլիս 30ին Շախօվսքօյի մղած ճակատամարտին առաջին մասն. ձախակողմն դէպ ի ծայրն՝ Սքօպելեֆի եւ Իմէրէթինսքիի գունդերն եւս յառաջխաղացութիւն մ'ըրին։

Ամսոյն 8ին առաւօտուն կանուխ՝ դարձեալ Գրիւարանի մարտկոցէն ամբաձգութեան նշան տրուեցաւ թնդանօթներն միահաղոյն արձակուելով, եւ նախորդ օրէն աւելի կատաղութեամբ սկսաւ կրակն, որ այս անգամ թէ ձախակողմն եւ թէ աջակողմն հաւասար սաստկութիւն ունէր։ Վեհ էր տեսարանն. քսան եւ հինգ հազարամէթր երկայնութեամբ գծի մը վրայ կ'որոտային թնդանօթք. բլրոց կատարներն հրաբուխներու խառնարանաց կը նմանէին որք բոց եւ ծուխ կ'արձակեն. գնտակոլիր ռումբերն օդին մէջ կը պայթէին, ամբարտակներն պարտակներուն հողը իբրեւ փոշի կը ցնդեցնէին, Տաճկաց պատնէշներուն մէկ քանի կէտերուն վրայ հըրդեհ կը ծագէին. եւ այս պատերազմական զարհուրելի տեսարանն իբրեւ հակապատկեր ձեւացնելով՝ պուլղար գիւղացիք Կրվիցա գիւղին մէջ ամբարտակներուն ներքեւ հանդարտօրէն կըպքաղէին իրենց գարին նախնական եղանակաւ կամնելու (հարման էթմէք) պնդացեալ կաւէ պատրաստուած կալի մը վրայ. կանայք որայներն ձիերուն ոտից ներքեւ թնդել կուտային բոլորաձեւ եւ անվերջանալի պըտոյտներով, եւ որք յարդը կը հաւէին հողմով։

Ռուսաց թնդանօթներուն ամբաձգութիւնն Տաճկաց ամբաձգութենէն ստուգիւ լաւագոյն էր, սակայն սոցա թնդանօթներն եւս վայրկեան մը չէին դադրեր անդրադարձութիւն ընելէ։ Ռումանիացւոց թնդանօթներն կրակ կը թափէին Քէրիմ-Թապեապի եւ միանգամայն փոքր կերտուածի մը վրայ, որ այն մեծ ամրականին առջեւը կը բարձրանար՝ Վրպիցայէն Փլէվնա տանող ճանապարհին. ձախակողմն։ Սոցա ուղիղ ամբաձգութեան պատճառաւ՝ փոքր կերտուածին թնդանօթներուն կրակը մարեցաւ, եւ երեկոյին Տաճիկներն խումբ խումբ փախան՝ եւ անկէ 200 մէթր դէպ յետոյս բացուած պարկէններուն մէջ ապաստանեցան։ Այս Տաճկաց վրայ գնտակալից ռումբեր արձակուելով՝ մեծ կորուստ պատճառեցին, եւ Անկէլէսքօ գումապետն՝ տօրօպանցներու 13րդ գումարտակին եւ ռումանական ճակատամարտին զօրաց 5րդ գումարտակէն մէկ վաշտ ղրկեց թափուր ձգուած դիրքը

գրաւելու համար։ Սոքա խոկոյն այն ամրութիւնքը նորոգել սկսան Տաճկաց դէմ կրակ ընելու համար։ Թուրքերն գիշերայն փորձ մ՚ըրին Ռումանիացիները վանելու. բայց այն քաջ գիւղացիներն՝ որոց այս առաջին անգամն էր պատերազմի կրակ

Երբ Ռումանիացիք Տաճկաց փոքր կերտուածին կը տիրէին, այսինքն կէս օրէն գրեթէ հինգ ժամ յետոյ՝ բաւական կատարեալ կռիւ մը կը լինէր ձախ կողմն դէպ ի ծայրն՝ Լօվաչէն Փլէվնա տանող ճանապարհին վրայ։ Ըսինք թէ այս կողմն



ՍՔՕՊԷԼԷՎ ՍՈՒՐ Ի ՁԵՌԻՆ ԿԱՌԱՋՆՈՐԴԷ ԻՒՐ ԶՕՐԱՑ

տեսնելն, արիաբար դէմ դրին եւ 31 մարդ կորուսանելէ յետոյ՝ Տաճիկները վանեցին։ Այս առթիւ կայսրն 40 հատ Սուրբ Գէորգայ կարգին խաչանշաններէն բաշխեց տուօպանցներուն։ Ռումանիոյ Կարոլոս իշխանն եւս անոնց դրօշակը զարդարեց ռումանական աստեղաւ։

Ռուսք այնքան մօտ չէին գտնուեր տաճկական դրից, որքան կեդրոնին եւ ձախակողման զօրքն կը գտնուէր։ Սքօպէլէվ եւ Իմէրէթինսքի նոյն օրն յառաջխաղացութիւն մ՚ըրին՝ Թնդանօթներն այնպիսի վայրոց վրայ զետեղելու համար որ կարելի լինէր գործ տեսնել։ Այս կողմն

այն բլուրներն՝ որոց վրայ օսմանեան պատնէշները հաստատուած էին, անկիւն մը կը ձեւացնեն որոյ գագաթն Փլէվնայի կողմը կը գտնուի. սոյն անկեան ձախակողմեան ճիւղին վրայ էր այն մեծ ամրականն որում Շախովսքօյ կարող չէր եղած առնելու. երկու ճիւղերուն մէջտեղ դէպ ի խորխորն բաւական բարձր կոնաձեւ լեռ մը կար բազմաթիւ ծառերով ծածկուած, սակայն այս ծառերն այնքան խիտ չէին որ կարելի լինէր ըսել թէ անտառ մը կը ձեւացնէին. Լօվչայի ճանապարհն այս բարձրաւանդակին կողին վրայէն կ՚անցնի Փլէվնա հասնելէ առաջ։ Երկու ռուս զօրավարք սոյն լեռան ընտրած էին՝ իրենց թնդանօթներն անոր վրայ զետեղելու համար։ Յառաջադրեալ զօրքն կէսօրէն յետոյ մօտեցան անոր. յայտնի է թէ Տաճկաց ստորայակային (?) անհանգստութեամբ եւ հոգածութեամբ կը գիտէր այս կէտին վրայ եղած բաներն. իւր հակառակորդներն այնքան ճարտար համարելով որքան չէին նոքա, կարծեր էր անշուշտ թէ այն կողմէն յարձակում մը պիտի լինէր՝ իւր աջակողմն անցնելու եւ Սօֆիայի ճանապարհը խափանելու համար. իրեն այնպէս կը թուէր հաւանականաբար թէ ռուս զօրաց յառաջխաղացութիւնն այս յառաջագծին գործողութեան սկիզբն էր, վասն զի առաջազօրաց արգելուլ զայն։

Ռուսք հեծելազօրաց առաջնորդութեամբ դէպ ի նոյն լեռը կ՚երթային։ Վիշապազօրաց երկու հեծելագունդք Լօվչայի ճանապարհին վրայէն գնալով զննութիւն կ՚ընէին։ Լեռան գագաթն արդէն անցեր էին նոքա գրեթէ մէկ հազարամէթրի չափ յառաջ, յանկարծ իբրեւ արձակամարտ ցրուեցան եւ կրակ ըրին յամրաքայլ նահանջելով։ Յետոյ երկու կողմանէ արձակամարտից մինչեւ սաստիկ մրցում մ՚եղաւ հրացաններով, եւ Տաճիկներն սկսան ամբարտակներ արձակել այն կէտին վրայ ուր վիշապազօրք խմբեալ էին ծառոց ներքեւ, որով նոքա տակաւ տակաւ տեղիքնին փոխեցին։ Քանի վայրկեան այսպէս անցաւ։ Այս ժամանեցին հետեւակազօրք եւ յարձակեցան։ Տաճիկներն լերան ստորոտն ծառոց մինչեւ զետեղուած էին՝ ամրականէն մէկ հազարամէթրի չափ դէպ յառաջ, եւ թշնամեաց կրակին անդրադարձութիւն կ՚ընէին ուժգնութեամբ։ Ռուսք հետզհետէ կը յառաջէին լերան կողին վրայ ծառոց մէջտեղերէն՝ Տաճիկներն յետս մղելով, եւ հասան լերան ստորոտին մօտ։ Այն ժամանակ Թուրքերն նահանջեցին դէպ ի կերտուածն ուրկէ թշնամեաց վրայ սաստիկ կրակ թափել սկսաւ։ Հազիւ այս Ռուսք ժամանեցին մինչեւ լերան ստորոտն, եւ Տաճկաց կրակն սարսափելի եղաւ անդէն։ Այսպէս անցաւ քանի վայրկեան։ Յետոյ ռուս արձակամարտք նահանջեցին եւ Թուրքերն կըրկին դուրս ելան ամրականէն ինչպէս նաեւ Փլէվնայէն, այնպէս որ իրենց յարձակումն գրեթէ ընդհանուր եղաւ։ Սակայն թըշնամիք նոյնպէս կարգադրութիւններ ըրած էին որ անկարելի էր զիրենք յանկարծակի բերել. գիշեր ցերեկ ըստուար խումբեր Փլէվնան ամրապնդող թնդանօթներուն եւս կըսպասէին եգիպտահատի (?) որսերու, ծառոց պրակներու եւ տեղեաց ճեղքերու մէջ տեղ՝ պատրաստ լինելով յարձակող զօրքն ետ մղելու։ Ի քթթել ական Սքօպէլեֆի եւ Իմէրէթինսքիի զնդերուն ամենայն զօրքն, այսինքն 30րդ եւ 16րդ հաստատածներն եւ մինչեւ անգամ 3րդին մէկ մասն կոչուեցան ի կռիւ կազմուելու։ Դաշտային թընդանօթներն եւս հասան ձիոց արշաւակի ընթացիւք եւ բլրոց կատարներուն վրայ զետեղուեցան յարձակող Տաճիկները կասեցնելու համար։ Ռուսական սովորութեան համեմատ մարդիկ աղօթելով պատրաստուեցան կռուելու։ Սոյնք եւ զինուորք գլուխնին բացին. յունադաւանք ձախ ձեռօք խաչ կը հանէին, եւ հռովմէադաւան կաթոլիկներն՝ ըստ մեծի մասին լեհ՝ անձայնաբանօք մէկ քանի տող բան

կը կարդային իրենց աղօթագրոց մէջ։ Հետաքրքրական բան. Իսմէրէթինեքի իշխանին հրամանատարութեան ներքեւ գտնուող եւ կռուոյ մէջ մտնող 2րդ հատուածին զինուորաց 100ին 25էն աւելին միւսլիւման են՝ Քազանի եւ Աժտէրխանի Թաթարաց սերնդէն. սակայն եւ այնպէս ռուսական բանակին լաւագոյն տարրերէն մին կը համարուին։

Ռուսք յարձակումն ընելու համար պատրաստութիւն մը չունէին եւ օրն ես տարաժամեալ էր, վասն որոյ 30րդ, 16րդ եւ 3րդ հատուածներն պաշտպանողական դիրք բռնեցին, եւ Իսմէրէթինեքիի զօրքն բաւական եղաւ Տաճկաց նոր յարձակման դիմադրելու։ Սքօպէլեվ իւր սաստիկ աշխուժութեան պատճառաւ ինքզինք չկարենալով բռնել, մինչեւ անգամ ջանաց Տաճիկներն ընդութեամբ վանել եւ անոնց ամրականին մէջ մտնել. բայց անկարելի էր այսպիսի փորձի մը յաջողիլը։ Սոյն կեդրուածն՝ Փլէվնայի ամրութեանց մէջ Քէրիմ-Թապեասիէն յետոյ ամենէն նշանաւորն էր եւ որուն մը (չէվ սահրա) ունէր, որոյ 400 մէթրի չափ տարածութեամբ զառիվողն սեպացեալ չէր, եւ բնաւ պատսպարուելու տեղ մը չկար վրան։ Ամին իրի՝ Սքօպէլեվ ստիպուեցաւ իւր զօրքն ետ քաշելու։ Ռուսք Տաճկաց յարձակմանէն առաջ իրենց գրաւած լերան ալ էր մնացին, որոյ գագաթին կ'աւարտէր ամրականին հազիւ կէս հազարամէթր մնալու չափ մօտ. իրենց դիրից մէջ այս լեռնէն միայն կարելի էր նշմարել Փլէվնա քաղաքն, որ բարձրաւանդակներու շրջանակաւ մը պատեալ էր, վասն որոյ ուրիշ եւ ոչ տեղէ մը կ'երեւէր պաշարողաց աչքին։ Այն ձորակին մէջէն ուրկէ կ'անցնի Լօվչայի ճանապարհն՝ եւ վերոյիշեալ անկեան գագաթէն Փլէվնայի մինարէներուն նրբաւարտ ծայրերը կ'երեւէին ծառոց թանձրախիտ սաղարթներէն վեր՝ առաւելն չորս հազարամէթր հեռի։

Ռուսք գիշերն անապարանոք պարկէններ փորեցին իրենց գրաւած տեղւոյն վրայ եւ նոր մարտկոցներ կանգնեցին՝ Փլէվնայի մօտ եղած մեծ ամրականը եւ հարաւային արեւմտեան բարձրաւանդակներուն վրայ շինուած չորս կեդրուածները միանգամայն ռմբակոծելու համար։ Կռուոյն մէջ 300 մարդ կորուսած էին, բայց շատ չէր այս չափին քանի որ այնպիսի դիրք մը գրաւեալ էր։ Ռմբաձգութենէն պատճառեալ կորուստն աննշան էր. երկու աւուր մէջ միայն 50 մարդիկ անկեալ էին, որոց մէջ կային 9 սպայք։

Ամսոյն 8էն 9 լուսնալու գիշերն՝ ռմբաձգութիւնն անընդհատ տեւեց, վասն զի Ռուսաց դիտաւորութիւնն էր Տաճկաց թնդանօթաձիգներն անդորր չձգել։ Նախորդ գիշերներուն պէս այն գիշերն ես նոր մարտկոցներ կանգնեցին մթոյն մէջ, եւ վերջապէս 220 թնդանօթ շարուած ունեցան. Ռումանիացւոց թնդանօթաձիգներն՝ որք Փլէվնայի այս ռմբակոծութեան միջոցին մեծ պատիւ ստացան իրենց ցոյց տուած յաջողութեամբքն, Կրիվիցայի ամրականին առաւել մօտեցան։ Թնդանօթներու շար մը ճիշդ ամրականին դէմ բերուելով բաց դաշտի վրայ զետեղուեցաւ, թէեւ Թուրքերն ամեն կողմանէ կրակ կ'ընէին դէպ ի նոյն կէտն։ Ամսոյն 9ին առաւօտուն՝ Ռատիշէվոյի կողմն նոր յարձակում մ'ըրին Տաճիկներն, որք Ռուսաց ձախակողմեան խմբերուն ձեռնարկութեանց վրայ միայն անհանգստութիւն ցոյց կուտային. բայց մեծ կորուստ կրելով ետ մղուեցան 16րդ հատուածին կողմանէ։

Նոյն օրն մինչեւ երեկոյ ռմբաձգութիւնն անընդհատ տեւեց՝ մերթ միլեգին սաստկութեամբ եւ մերթ մեղմութեամբ։ Սքօպէլեվի եւ Իսմէրէթինեքիի թնդանօթներն հարաւային արեւմտեան ամրականներուն եւ հարաւային մեծ ամրականին վրայ կրակ կ'ընէին. 4րդ գունդն կը ռմբակոծէր նոյն մեծ ամրա-

կանն, եւ այն կերտուածներն որոց Շա-խովսքոյ յուլիսի 30ին տիրած էր, բայց ապա ստիպուած էր մեկնելու. Ըրդ ընդհին թնդանօթներուն մէկ մասն եւս այն ամ-րութեանց վրայ ռումբ կ'արձակէր, եւ միւս մասն Քէրիմ-Թապեասի վրայ հուր կը տեղար՝ 16 հարիւրորդամէթր չափով խոշոր թնդանօթներուն եւ ռումանական չարերուն ալ ։ Այս վերջիններուն մէկ քանիներն Տաճկաց կերտուածին հա-զիւ 800 մէթր հեռու չափ յառաջեր էին։ Տարօրինակ բան էր վիրաւոր չտեսնող հա-կառակորդաց այն սարսափելի միջոցին, որք դէմ առ դէմ ռումբ կ'արձակէին. Ռուսք եգիպտահացի ծղօտներուն եւ տեղեաց ելեւէջներուն մէջ պահուած էին, մինչդեռ տաճկական ամրութեանց մէջ երթեւեկող զինուոր մը չէր տեսնուեր ։

Ռմբաձգութեան արդիւնքն զգալի ե-ղաւ մանաւանդ Քէրիմ-Թապեասի վրայ ։ Պարտակներն կը փխրուէին եւ կը փլէին ամեն կողմանէ . թնդանօթներն հաստա-րաններուն վրայէն անկանելով կը լռէին առ ժամանակ մի, եւ պահ մը կարելի էր կարծել թէ ամրականին թնդանօթներուն կրակը բոլորովին մարած էր. բայց Թուրք թնդանօթաձիգներն անդուլ կորովով կրկին կը զետեղէին իրենց գնդընկէցներն, եւ դարձեալ կը սկսէին ռումբ արձակել ։ Նէս օրէն յետոյ ժամանակ մը լռութիւն տիրեց երկարագոյն տեւողութեամբ. Ռու-մանիացիք իրօք կարծեցին թէ Տաճիկներն մեկնած էին, եւ զննութեան համար խումբ մը ղրկեցին դէպ ի կերտուածն՝ յուսալով թէ զայն պարապ կը գտնեն, ինչպէս գտած էին այն փոքր պատնէշն զոր նախորդ օրն գրաւեցին։ Տաճիկներն թոյլ տուին նոցա այնչափ մօտենալու որ փոքր ինչ հեռաւորութիւն միայն մնացած էր, եւ յանկարծ սաստիկ կրակ մ'ըրին հրացաններով, որով տապալեցին զանոնք շատերու նահանջելու ։ Գիշերը մօտ էր երբ ամրականին մէջ հրդեհ ծագեցաւ մէկ քանի անգամ ։ *

Զօթով զօրավարն համարելով թէ դաշ-տային թնդանօթներուն կրակն բաւական էր այնուհետեւ Տաճկաց թոյլ չտալու որ իրենց պատնէշները նորոգեն այն կողմերն, ամսոյն 9ին երեկոյին մեծ մորտիկոց մը կանգնել տուաւ Ռատիշէվօյէն վեր, եւ գիշերոյն այն տեղ փոխադրել տուաւ պաշարման խոշոր թնդանօթներէն ութ հատ՝ ձախակողմէն եւս յարձակման պատ-րաստութիւններ տեսնելու համար, ինչ-պէս աջակողմն եղած էր։ Ամսոյն 9էն 10 լուսնալու գիշերն ռմբաձգութիւնն անընդ-հատ տեւեց ուժգնութեամբ։ Տաճիկներն անհաւասար մրցում մ'ընել չուզելով՝ իրենց թնդանօթներուն մէկ մասն Քէրիմ-Թա-պեասէն դուրս հանեցին՝ զայն պահպա-նող նիզակի եւ պահեստի զօրաց կորո-վութեան վստահելով՝ ամրականին պաշտ-պանութեան մասին։ Սակայն գիշերն մէկ քանի թնդանօթներ բերին հաստարանաց վրայէն անկեալներուն տեղ, եւ նոյն ամ-րականն կարաց անդրադարձութիւն ընել տակաւին հետեւեալ օրն տկար կերպիւ սարսափելի ռմբաձգութեան մը դէմ։

Ամսոյն 10 ին առաւօտեան հինգերորդ ժամուն ռմբակոծութիւնն սկսաւ դարձեալ կատաղութեամբ. Ռատիշէվօյի մօտ զե-տեղեալ պաշարման թնդանօթները նոր մորտիկոցէն Տաճկաց ճամբարին վրայ միա-հաղոյն կրակ կը թափէր։ Օսման փաշա-յի զօրաց կորուստն այն օր մեծ եղած է անշուշտ. Ռուսաց կորուստն նախորդ օրե-րէն շատ աւելի եղաւ։ Հարաւային կող-ման դաշտային թնդանօթներն անդր քան Ռատիշէվօ բարձրացեալ բլրոց կողերուն միջավայրոց մօտ տարուեր էին, վասն զի մինչեւ այն ժամանակ դագաթանց վրայ կը գտնուէին, եւ այնուհետեւ տաճկական ամրութիւններէն հեռի չէին ։ Ռազմամթե-րից փոխադրութեան միջոցին բազմաթիւ ձիեր կորան ։

Երեկոյին անվեհերն Սքօպելեվ դէպ ի հարաւային արեւմուտք նոր բարձրաւան-դակ մը գրաւեց, որով առաւել մօտեցաւ

այն կողմի ամրականներուն. եւ կարելի եղաւ իրեն Փլեւնա քաղաքին վրայ նայիլ բարձուստ ։ Ձախ կողմն դէպ ի ծայրն՝ Լօչխարեվլի հեծելազօրն Սօֆիայի ճանապարհին վրայէն վանեց այն Չէրքէզներն, զորս Օսման փաշա այն կողմերը ղրկեր էր որպէս զի զննեն այն գիծն ուրկէ պիտի նահանջէր Փլեւնան պարպել հարկ եղած ժամանակ ։



## ՍԵՊՏԵՄԲԵՐ 11Ի ՃԱԿԱՏԱՄԱՐՏՆ. — ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ՁԱԽԱԿՈՂՄԷՆ

Սեպտեմբերի 10րդ օրն շատ տխուր եղած էր, օդն ամպամած եւ անձրեւայոյզ էր եւ քիչ մը մէգ կար ։ Նոյն ամսոյն 11րդ օրն աւելի տխուր պիտի լինէր, ինչպէս առաւօտէն յայտնի էր ։

Թանձր միգին պատճառաւ անկարելի էր զօրաց բան մը տեսնել եւ թնդանօթներուն ձայնն եւս հազիւ կը լսուէր, վասն որոյ անհնար կը լինէր ազդու ռմբաձգութիւն մ՚ընել. մինչեւ անգամ դաշտային թնդանօթներու մարտկոցներէն՝ զորս Ռուսք Տաճկաց ամրութիւններուն 7 կամ 800 մէթր հեռու չափ մօտ զետեղած էին արդարեւ, անկարելի էր տեսնել այն տեղն ուր ռումբ պիտի պայթէր ։ Խոնաւութիւնն կը պահանջէր որ յարձակումն ուրիշ լաւագոյն օրի մը ձգուի. սակայն կայսեր տօնախմբութիւնն էր այն օր, այս առթիւ վօտկա կամ ռուսական օղի բաժնուած էր զօրաց, որք ի պատիւ իրենց վեհապետին երեք անգամ հուռա գոչեցին եւ ճակատամարտն սկսեցաւ ։

Մառախուղն մինչեւ երեկոյ տեւեց. միայն կէս աւուր եւ երկրորդ ժամուն միջոցներն օդը բացուեցաւ. երկուք ու կէսին մառախուղը վերստին թանձրանալով ընդհուպ նորէն եւ խիտ անձրեւի մը վերածուեցաւ, որ զինուորաց մինչեւ ոսկերքը կը սառեցնէր ։

Յարձակման համար հետեւեալ կարգադրութիւններն եղան. առաւօտեան իններորդ ժամէն մինչեւ մետասաներորդ ժամն բոլոր մարտկոցներէն անդադար ռմբաձգութիւն պիտի լինէր. մետասաներորդ ժամէն սկսեալ մինչեւ կէս օրէն մէկ ժամ յետոյ կատարեալ անդորրութիւն պիտի տիրէր ժամ մէկէն մինչեւ ժամըն երեք ռմբաձգութիւնն կրկին պիտի սկսէր միեւնոյն սաստկութեամբ. երրորդ ժամուն ընդհանուր յարձակում մը պիտի լինէր գծին մէկ ծայրէն միւսն. ձախակողմէն Իմէրէթինսքի հարաւային արեւմըտեան ամրականներուն դէմ պիտի նետուէր, կեդրոնէն Քռիլով՝ հարաւային ամրականներուն դէմ եւ աջ կողմէն Քրիւտներ 9րդ գնդաւ, եւ Ցէանոթ զօրավարն ռումէն զօրօք՝ Կրիվիցայի ամրականին դէմ ։

Ճիշդ իններորդ ժամուն ռմբակոծութիւնն սկսաւ եւ երկու ժամ չորս հարիւր յիսուն թնդանօթներ իրենց ամբարտակներուն թմբերուն եւ իրենց պարպատիւններէն պատճառեալ հողմամբ մառախուղը կը հերձէին ։ Այնպէս սոսկալի կերպիւ պատռեալ շոգեկեց քօղն դէպ ի վեր կը բարձրանար երբեմն եւ բոլոր թնդանօթներէն միանգամայն ժայթքեալ բոցը կը տեսնուէր. Դիտարանի մեծ մարտակոցին մնացած վեց թնդանօթներէն տեսակ մը կատաղութեամբ՝ գնտակալից ռմբարտակներ կ՚արձակուէին այն պարկէններուն վրայ եւ տեղեաց այն ելեւէջներուն մէջ, ուր տաճիկ հետեւակազօրաց սուսեր խումբեր զետեղուած էին առաւօտուն՝ Ռուսաց յարձակումն դուշակուած լինելով ։

Աջակողմեան բարձրաւանդակներուն վրայ՝ Կրիվիցայի առջեւն, տեւեն եւ այն գիւղէն վեր՝ դաշտային նոր թնդանօթներ զետեղուած էին մեծ յանդգնութեամբ, եւ, Կրիվիցայի վրայ նայող օսմանեան ամրականը կը ռմբակոծէին ։ Թուրքերն անդրադարձութիւն կ՚ընէին ամենամեծ կորովով. իրենցմէ ոմանք երբեմն կ՚ուգային պարապետներուն վրայ ելնելով, որք հետզհետէ կը փլէին ամբարտակաց հար-

ուածներէն , եւ անոր ցոյց կուտային իրենց մարդոց այն տեղերն որոց դէմ թնդանօթները պէտք էր ուղղել։ Երբ այս Տաճկաց մին սպաննուելով կամ վիրաւորուելով խրամին մէջ թաւալգլոր անկանէր, անմիջապէս տեղը ուրիշ մը կ'ելնէր ։ Կը հիանային Ռուսք որք թշնամւոյն արիութիւնը գնահատել գիտեն. «Հարիւրապետ, կ'ըսէր թնդանօթաձիգ մը իւր սպային.- յուսալի է թէ երբ մեր կայսրն Փլեւնան առնու, այս մարդոց պիտի բաշխէ Սուրբ Գէորգայ խաչանշաններէն ։» Սակայն Փլեւնա տակաւին շատ ժամանակ չպիտի առնուէր ։

Յարձակումն ընելու Տաճիկներն սկսան, ռուսաց ձախակողմեան խմբին դէմ խուժեցին դարձեալ եւ ճակատամարտն սկսաւ որոշեալ ժամէն շատ առաջ ։ Ստուգիւ անհաւատալի բան է որ այս կողմն Օսման փաշայի՝ նեղը մնալ չուզելով կատաղաբար կռուելէն՝ ոչ Նիքօլա մեծ դուքսն , ոչ Կարոլոս իշխանն եւ ոչ Զօթով զօրավարն վերահասու եղած լինին այն դրից ամենամեծ կարեւորութեան որոց դէմ պիտի յարձակէր Իմէրէթինսքի ։ Էական կէտն էր. երբ անգամ մը հարաւային արեւմտեան բարձրաւանդակները գրաւէին Ռուսք, Օսման փաշա պիտի պարտաւորէր Փլեւնայէն մեկնելու. Թէեւ սոյն կէտին դէմ Ռուսաց կողմանէ սպառնալիք լինելուն պէս՝ Տաճիկներն վերջին աստիճան անձկութիւն ցոյց կուտային, այս բանն ոչ ոք զգաց ։

Սքօպելեւ Լօվչացի առաջ ինչ կացութեան մէջ որ կը գտնուէր, նոյն վիճակին մէջ էր նաեւ Փլեւնայի մօտ. Իմէրէթինսքիի հրամանաց ներքեւ էր, բայց յարձակող զօրաց առաջնորդութիւնն իրեն յանձնուած էր ։ Սեպտեմբեր 11ի ճակատամարտին ժամանակ՝ իւր հրամանատարութեան ներքեւ ունէր 16րդ հատուածին 1ին սահն, որ Սուզտալի եւ Վլատիմիրի գումարտակներէն բաղկացեալ էր՝ Թէպլիաքին զօրավարին գլխաւորութեամբ, 2րդ հատուածին 1ին սահն՝ Լիպաւի եւ Քալուկայի գումարտակներէն բաղկացեալ, 2րդ հատուածին 2րդ սահն՝ Րէվըլի եւ Եսթոնիոյ գումարտակներէն ձեւացեալ, եւ որսորդ զօրաց 4րդ սահն՝ Տօպրօվօլսքի զօրավարին հրամանատարութեամբ ։

Առաւօտեան չորրորդ ժամուն ինքն քսան եւ չորս թնդանօթ զետեղել տուած էր նախորդ օրը գրաւեալ բարձրաւանդակին վրայ որ ամենէն աւելի մօտ էր Փլեւնայի ։ Իններորդ ժամուն ամբաձգութիւնն սկսուելէն յետոյ, երկու սպայ եւ վեց Խազախ հետ առնլով գնաց զննելու Տաճկաց դիրքն, եւ այնքան մօտեցաւ որ իւր սպիտակ վեղոյրովն, սպիտակ գրաստովն (թիւնիք, աչթրի) եւ ճերմակ ձիովն նշանաւորուեցաւ Նիզամի զօրաց մէկ դասակէն՝ Թէեւ մառախուղ էր, եւ սոքա միահաղոյն կրակ ըրին իրեն վրայ ։ Երկու սպայք եւ չորս Խազախներն տապաստ անկան ձիոց վրայէն, միւս երկուքն թեթեւ կերպիւ վիրաւորեցան . Սքօպելեւ միայն՝ որոյ դէմ ուղղեալ էին բոլոր գնդակներն անվէր մնաց։ Զննութեան եղող տաճիկ զօրաց սուար խումբ մը գրեթէ անմիջապէս իրեն մօտեցաւ. Սքօպելեւ զօրաց առաջին շարքն իւր քով կոչելով՝ Թուրքերուն վրայ խոյացաւ եւ ետ մղեց զանոնք ուժգնութեամբ։ Սակայն երիտասարդ եւ եռանդուն զօրավարն չափազանց յափշտակուելէն՝ այնչափ յառաջ գնաց եւ այնպիսի ցած տեղ մը կանգ առաւ որոյ վրայ բարձրահայեաց էր Տաճկաց դիրքն։ Բոլոր զօրքն իրեն հետեւած էր, եւ կարելի չէր մինչեւ երրորդ ժամն ընդհանուր յարձակման նշանին սպասել Տաճկաց դէպ ի վայր ամբաձգութեան ներքեւ՝ առանց անդրադարձութիւն ընելու ։ Վասն որոյ այն առածին համեմատ՝ թէ պատերազմի ժամանակ լաւագոյն է գործողութիւնը կանուխ սկսիլ քան թէ ուշ , Սքօպելեւ իւր զօրաց յարձակման հրաման տալ յանձն առաւ ։

Հարաւային արեւմտեան ամրական-

ներն իւր առջեւ կը գտնուէին. Ճիշդ իւր դիմացը կար փոքր կերտուած մը՝ որ երկու թնդանօթ միայն ունէր. ձախ կողմը կար շատ աւելի կարեւո[illegible]տական մը. աջ կողմն պա[illegible]ողական ճամբար մը, դարձեալ աջ [illegible]ղմն [illegible]յրս Փէշէլնոյի մօտ ուրիշ [illegible]ական մը կը գտնուէր ինչպէս նաեւ հարաւային մեծ կերտուածն անդ էր։ Բոլոր այս խրամը կցուած էին պարիսպներով։ Ամրութեանց առաջուան երած անտառներուն մէջէն Տաճկաց արձակամարտները վանելէ յետոյ՝ որոշուեցաւ որ Տօպրօվօլսքի նախ պիտի յարձակէր փոքր ամրականին դէմ եւ զայն պիտի գրաւէր, եւ այնուհետեւ զօրքն պէտք եղածին պէս պատսպարել կարելի լինելով թնդանօթաձիգներն առանձին ռմբաձգութեամբ յարձակման պատրաստութիւններ ըլլար տեսնէին ընդդէմ ձախակողմեան ամրականին որոյ վրայ դայթ տուող զօրաց առաւար խմբին Սքօպէլեվ պէտք առաջնորդէր։

Ռուսք կէս օրին փոքր ամրականին դէմ խուժեցին, զայն պաշտպանող զօրքը կոտորեցին եւ անոնց մէջ գտնուող թնդանօթներուն տիրեցին։ Այս քաջագործութիւնն ընող որսորդ զօրաց երկու վաշտերուն կորուստն սարսափելի եղաւ, եւ քաջ Տօպրօվօլսքի եւս անդ տապալած անկաւ։

Պատնէշին գրաւմանէն յետոյ՝ Սքօպէլեվի թնդանօթաձիգներն անընդհատ երեք ժամ ռմբարձակներու եւ երկաթի կտորներու տարափ մը տեղացին Տաճկաց այն ամրականին դէմ, որոյ վրայ յարձակում ընելու կը պատրաստուէր ռուս զօրավարն։ Երբ այս երիտասարդ հրամանատարն Տաճկաց կրակին վերջապէս նուաղիլը տեսաւ, կարծեց թէ յարմար ժամանակն էր։ Յարձակումն ընելու համար խումբ մը կազմեց Սուզտալի եւ Վլատիմիրի գումարտակներէն եւ յառաջ վարեց զանոնք իւր թնդանօթներուն կրակը դադրեցնելով։ Զինուորք հրացաններն ուսերնին զարկած խոյացան ի ձայն նուագարանաց եւ դրօշակ պարզելով, եւ ի քթթել ական աներեւոյթ եղան մառախուղին եւ ծխոյն մէջ։ Երբ ամրականին մօտ հասան, այն ժամանակ միայն աչքի երեւեցան։ Նոյն պահուն քիչ մը ժամանակ վարանումն տիրեց իրենց մէջ։ Սքօպէլեվ իսկոյն Քալուկայի գումարտակն շտապաւ յառաջ վարեց եւ այս նպատակին ինչ արդիւնք ունենալն սպասեց տեսնելու։ Սոյն զօրավիգն գրգիռ եղաւ առաջին ջոկին իւր հետ յառաջ խաղալու. այլ Տաճկաց բոցաշունչ եւ ծուխ արձակող ամրականն երկաթի գնտերու այնպիսի տարափ մը կը ժայթքէր, որ յարձակողք կրկին տկարացան։

Սքօպէլեվ այս գնտակներու տարափին ներքեւ կը գտնուէր, որոց եւ ոչ մին իրեն դպաւ, մինչդեռ իրեն ընկերացողներուն ամենքն կամ սպաննուեցան կամ վիրաւորեցան։ Իւր զօրաց առաջին շարքն կրկին կանգ առնելուն պէս՝ ուռկին վրայէն յառաջ վարեց 4րդ գումարտակն, այն է Լիպաւինն, որ միայն մնացած էր իւր ձեռաց ներքեւ։ Այս զօրաց նոր հասանքն միւսներն իւր ետեւէն ձգեց մինչեւ խրամին դարաւին, բայց երկաթի գնտերն աւելի թանձրախիտ թօթափեցան իրենց վրայ՝ հարիւրաւոր զինուորներ վիրաւորելով, բայց կռուոյն արդիւնքն յայտնի չէր լինէր։ Յարձակողք վարանեցան երրորդ անգամ։ Վայրկեան մը պարապ անցընելու չէր գար ամրականին տիրելու համար։

Սքօպէլէվ որսորդ զօրաց երկու վաշտ միայն ունէր անխառն, որ նոյն տեսակին ընտրելագոյն մասն էր. սոցա գլուխն անցնելով յառաջ նետուեցաւ անձամբ, կացմեացները իւր քով ժողովեց, վարանելոց քով հասաւ եւ իւր արիութիւնն անոնց եւս ներշնչեց։ Ամբողջ խումբն հաւաքելով յառաջ վարեց զայն առ ի ձեռին։ Վլատիմիրի եւ Սուզտալի գումարտակներուն կ՚ըսէր աղաղակելով. «Զօրականք, գումարտակն ընկրկելու վրայ է.

ինձ հետեւեցէք։ Նուագածուք, յառաջ։»

Զինուորներն յափշտակելու զօրութիւն ունեցող երիտասարդ զօրավարին այս խօսից վրայ, մարդիկն իբրեւ մրրիկ կը սրանան եւ ամրականին պարսպներէն վեր ելնել կ՚ըսկսին մեծագին աշխուժութեամբ։ Այս յարձակման միջոցին՝ Սքօպէլէվ զօրավարին բացադրելու կը գտնուէր, գնտակ մը իր փեղոյրն առած տարած ըլլալով, եւ դէմքն վառօդէն թխացեալ էր։ «Յառաջ» գոչելէն ձայնը մարած եւ Ս. Գէորգայ խաչանշանն կիտօլին խլեալ էր եւ իր սպիտակ գրաստն՝ գնտակներէն պատառոտեալ եւ ողմաթաթաւ։ Այս քաջ սոյն ամրականին մէջ մնած ժամանակ՝ ձին տապալ անկաւ իր ներքեւ, եւ ինքն եւս անոր հետ խրամին մէջ գլորեցաւ, ոտք ելաւ իսկոյն, եւ զինուորաց առաջնորդելով նոյն դրից առումն ապահովեց։

Ինչպէս փոքր կերտուածին կամ կիսալուսին պատնէշին մէջ՝ նոյնպէս եւ ամրականին մէջ նմանօրինակ կատարած մ՚եղաւ. Տաճիկներն կարգէ դուրս կոտորութեամբ գլխատրեցին, մինչեւ որ իրենց մէ ոչ ոք մնաց՝ ամենքն սուինով զարնուելով։ Ռուսք եւս սարսափելի կորուստ կրեցին, եւ այնքան մարդասպան կռուի մը ներքեւ այս մարդոց՝ յարձակումն շարունակել կարենալն յայտնի կը լինի թէ Սքօպէլէվի արիութիւնն ինչ անդիմադրելի զօրութիւն ունէր իր զինուորաց վրայ։ Որսորդ զօրաց 4րդ սահին 3,000 զինուորներէն գրեթէ 1,600ն կորան։ Վլատիմիրի գումարտակին 3,000 զինուորներէն 1,700ն անկան՝ ինչպէս նաեւ 40 սպայ, միւս գումարտակներն եւս մեծ կորուստ կրեցին։ Ամրականին որոկն փոքր ինչ ընկղմանեալ զառիթափ մ՚ունէր դէպ ի Ռուսաց կողմն, որք կէս հազարամէթրի չափ տեղ դժուարին կռուի մը ներքեւէն ողոտի քալէին Տաճկաց քով հասնելու համար։ Պատնիշաց եւս զետեղեալ նէջեան զօրաց թիթեղէ արկղիկներ տրուած լին, որոց իւրաքանչիւրին մէջ 200 փամփուշտ կար եւ զորս նոքա իրենց ձեռաց մօտ ունէին։ Հրաման տրուած էր ռազմամթերից չը խնայել. վասն որոյ նոքա անդադար կրակ կ՚ընէին տեսակ մը [illegible]ութեամբ որ հետզհետէ [illegible] էր [illegible]ին իսկ իրենց հրացաններուն շախնդէն եւ վառօդին հոտէն։

ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ԿԵԴՐՈՆԷՆ. — ՔՌԻԼՈՎ ՑԵՏՍ ԿԸ ՄՂՈՒԻ

Սքօպէլէվի յարձակումն յաջողակութեամբ եղած էր. երիտասարդ զօրավարն դա[illegible]թ տուող խմբին անդադար զօրավիգ հասուցած էր. 4րդ գնդին հրամանատար Քռիլովի կեդրոնէն ըրած յարձակումն այնքան ճարտարութեամբ եւ հետեւաբար այնքան յաջողակութեամբ չէր եղած։ Սոյն զօրավարն իւր հրամանատարութեան ներքեւ ունէր 16րդ հատուածին 2րդ սահն, ամբողջ 30րդ հատուածն, եւ 31րդ հատուածին 2րդ սահն, որ երկու օր առաջ իրեն քով ղրկուած էր 16րդ հատուածին այն սահին տեղ որ Իմէրէթինսքի իշխանին տրամադրութեան ներքեւ էր դրուած։

Ռուսաց ձախակողմեան խմբին այէս նաեւ միջին խումբն որոշեալ ժամէն շատ առաջ կռուելու ստիպուեցաւ։ Երբ Սքօպէլէվ իւր զօրքն յառաջ վարեց, սոյն շարժումն մօտը գտնուող զինուորաց հաղորդուեցաւ, եւ Քռիլով յարձակում ընելու համար իր զօրքը շարեց. ահա այս ցաւալի անապարանքն եղած է մեծաւ մասամբ պատճառ ռուսական բանակին կրած սարսափելի կորստեան։ Տաճիկներն՝ ռմբակոծութիւնն սկսուելէն ի վեր իրենց ցոյց տուած համբերական գործունէութեամբն գիշերայն ըստ կարի նորոգեր էին պատնէշներն, եւ Ռուսաց պաշարակատին կողմանէ որոշեալ նախապատրաստական ռմբակոծութիւնն թերի մնացած լինելով՝ յարձակող զօրաց առջեւ արդարեւ մասամբ իւրք խաթարեալ սակայն տակա-



ԿՐՎԻՑԱՑԻ ԱՄՐԱԿԱՆԻՆ ՄԷՋ 63

Թվիքիա հազարապետը կրակ ընելու պատրաստուող թուրք թնդանօթաձիգ մը կըսպաննէ

ւին իրենց հակառակորդաց համար այնչափ եղածէն աւելի պատսպարուելու տեղեր ունեցող ամրականներ գտնուեցան. Թէ ռմբակոծութիւնն ապարդիւն ընող մէգին եւ Թէ անբաւական կերպիւ հուր արձակուելուն պատճառաւ՝ Տաճկաց Թնդանօթներուն կրակը չէր մարած, որք ամբարտակներ եւ երկաթի բեկորներ տեղացին՝ ամրականներուն բնական եւ երկայնաձիգ որոկներէն վեր ելնելու ջանացող հետեւակ զօրաց բազմութեան վրայ :

Ցարձակող զօրաց առաջին կարգը բաղկացեալ էր երկու գումարտակներէ, որոց մին 30րդ հատուածին 1ին սահէն էր եւ միւսն 10րդ հատուածին 2րդ սահէն. 31րդ հատուածին 2րդ սահն երկրորդ կարգը կը ձեւացնէր, բայց շատ ուշ ղըրկուեցաւ դէպ յառաջ, եւ առաջնոյն չկարաց օգնել, որոյ մնացորդաց հետ ստիպուեցաւ ետ դառնալու : Քուիլոֆի զօրաց միւս մասն ի պահեստի կըսպասէր :

Ժամ մէկին տասն վայրկեան մնացած էր, երբ յարձակող զօրաց նախընթաց կարգն ղռոյթ տուաւ այն ամրականին դէմ որ Տաճկաց առաջին գծին կերտուածներուն մէջ ամենէն աւելի Թոաֆչէվօյի մօտ կը գտնուէր. բայց չկարաց մինչեւ անգամ պարիսպներուն քով հասնիլ : Տաճիկներն խմբին առաջնորդող արձակամարտներուն Թոյլ տուին իրենց մօտենալու՝ մինչեւ 50 մէթր մնալու չափ. յետոյ սարսափելի կրակ մ'ընել սկսան յանկարծ, մինչ երկաթի բեկորներ միահաղոյն կը Թափուէին չորս կերտուածներէ՝ այն բաց տեղեաց վրայ ուրկէ կը յառաջէին Ռուսք : Սոցա առաջին երկու շարքն բնաջինջ եղան. բոլոր սպայք կամ սպաննուեցան կամ վիրաւորեցան, եւ կէս ժամ չանցած՝ այն երկու վաշտաբաղդ գումարտակներն գրեթէ յօշատուեցան. վեց շաբաթ առաջ այնքան ռուսական արիւն ծծող այն տեղերն կրկին ոռոգուեցան ցյագ :

31րդ հատուածին 2րդ սահն՝ ինչպէս արդէն ըսուած է, շատ ուշ ժամանեց : Ցարձակման սկսող երկու գումարտակներն արդէն նահանջեր էին, երբ նոյն սահն երեւան եկաւ իրենց օգնելու համար։

Այն պահուն յորում Սքօպէլեֆ մեծ ամրականին դէմ յարձակելու կը պատրաստուէր անոր տիրելու համար, եւ Քրիւտեներ՝ ինչպէս նաեւ Ռումանիացիք Կրիվիցայի ամրականին վրայ խուժելու կ'ելնէին, Քուիլոֆ զօրավարն եւս պարտաւորեցաւ պատրաստուելու որպէսզի ընդհանուր յարձակման աջակողմ՝ երկրորդ փորձ մ'ընելով այն կերտուածին դէմ որոյ առջեւ անգամ մը ձախողութիւն կրեր էր : Երեք ժամ ռմբակոծութիւն լինելէ յետոյ՝ 16րդ եւ 30րդ հատուածներէն տասներկու վաշտեր սքանչելի արիութեամբ յառաջեցին իրենց ընկերներուն դիակներովը ծածկուած այն տեղեաց վրայ, եւ կատարեալ անխռովութեամբ հասան այս անգամ մինչեւ ամրականն եւ երեք կողմանէ յարձակեցան : Հետեւակին սանդուղք ունէին, եւ խրամներուն մէջ պահուած արձակամարտները կոտորելով վանելէն յետոյ, հողէ պատուարներուն յենլով զանոնք՝ սքանչելի աշխուժութեամբ ղռոյթ տուին եւ վեր ելնել սկսան : Չորրորդ ժամն երեք քառորդ անցած էր, երբ պահ մը մէկ քանի զինուորք ամրականին մէջ մտան. բայց Տաճկաց յոգնահար տորհանակներուն ահագին արդեանցն եւ ոչ մէկ մարդու քաջութիւն կարէր դիմանալ. քանի որ զինուորք երեւան կուգային, այն անշիջանելի կրակէն զարնուելով կը Թօթափէին։ Ինչպէս նախորդ յարձակման միջոցին՝ նոյնպէս եւ այս անգամ ռուսական խումբին զօրավիգ չղրկուեցաւ, եւ կենդանի մնացողք՝ որք կռուոյ մէջ մանող զօրաց հազիւ կէսն էին, պարտաւորեցան՝ Թէեւ սրտերնին կատաղութեամբ լի՝ հեռանալ այն պատուարներէն որոց պահ մը տիրելու յոյս էին ունեցած :

Քուիլոֆի առաջին յարձակումն տեւեց

կէս ժամ եւ երկրորդն մէկ ժամ։ Այսչափ քիչ ժամանակի մէջ Ռուսաց կորուստն՝ կռուոյ մէջ մտնող զօրաց թուոյն երկու հինգերորդին չափ եղաւ. յայտնաբարբառ դատապարտութիւն այն անզգոյշ եւ [illegible] եղանակին՝ որով անպատսպար զինուորներ ընդդէմ բազմագոյն զօրաց կը մղուէին, մինչ սոքա ահեղ ամրութեանց ետեւ էին պատսպարուած։

ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ԱՋԱԿՈՂՄԷՆ. — ԿՐՎԻՑԱՑԻ ԱՄՐԱԿԱՆԻՆ ԱՌՈՒՄՆ։

Ռուսական բանակին աջակողմն մանաւանդ զգալի եղաւ միգին ազդեցութիւնն սեպտեմբեր 11ի ճակատամարտին ժամանակ։ Այս կողմէն երեք ջոկեր Կրվիցայի համբաւաւոր ամրականին դէմ պիտի յարձակէին. առաջին ջոկը կը ձեւացնէին 3րդ հատուածին առաջին մասն՝ Ռոտիոնով զօրավարին հրամանատարութեան ներքեւ՝ Արխանկէլկօրօտի եւ Օրանժի գումարտակներէն բաղկացեալ, որք արդէն Փլէվնայի առաջին երկու կռիւներուն մէջ գտնուած էին, Տօրօհօյի եւ Պօթօշանի երկու վաշտերն, տոռոպանցներու 16րդ գումարտակն եւ ռումանիացի ճակատամարտիկ զօրաց 8րդ գումարտակին մէկ վաշտն։ Միւս երկու ջոկերն սոսկ ռումանական զօրքէ բաղկացեալ էին. Ռումանիոյ պատերազմի նախարար Ցէռնաթ զօրավարն անձամբ կ'առաջնորդէր իշխանապետութեան զօրաց։ Սոցա 3րդ հատուածին մէկ քանի խմբերէն ձեւացեալ չորրորդ ջոկ մը Տաճկաց մէկ մասն իւր դէմ պիտի զբաղեցնէր դէպ ի Պուգօվա-Թապեայը։ Այս ջոկն արիաբար շատ յառաջամուխ լինելով մեծ կորուստ կրեց։

Գէրիվ-Թապեասի դէմն գործելու սահմանեալ երեք ջոկերն շատ խեղճ կերպիւ առաջնորդուեցան. մին՝ որ Կրամօն գումապետին հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր, մառախուղին պատճառաւ մոլորելով օգուտ մը չունեցաւ. առաջին՝ այսինքն Ռոտիոնով զօրավարին ջոկն ամրականին առաջն հասաւ որոշեալ վայրկեանէն երկուք եւ կէս ժամ յետոյ, միւսն միայն կարաց ժամանել երրորդ ժամուն՝ յառաջագոյն եղած կարգադրութեան համեմատ։

Սոյն ջոկն բաղկացեալ էր ճակատամարտիկ զօրաց 5րդ գումարտակին երկու վաշտերէն, որսորդ զօրաց 3րդ վաշտէն եւ տոռոպանցներու 14րդ գումարտակէն։ Այս զօրախումբք մոլտաւիացի կարճնեղ լեռնականներէն միայն կազմուած էին գրեթէ, որք Վալաքիոյ դաշտին բնակիչներէն շատ աւելի պատերազմի յարմարութիւն ունին։ Սոքա զետեղեալ էին այն սարահարթին ծայրն որոյ վրայ ռումանական բանակն հաստատուած էր, եւ բաւական խորափիտ ձորով մը միայն բաժնուած էին Կրվիցայի ամրականէն։ Նախ ճակատամարտիկ զօրաց վաշտերն բարձրաւանդակէն վար իջան դիմացի զառիթափէն վեր ելնելու համար։ Արդէն ձորոյն յատակն հասած եւ պուրակներու մէջ ծածկուած էին սոքա, յանկարծ ձախակողմէն սաստիկ կրակ մը թափիլ սկսաւ։ Ցէռնաթ զօրավարն առաջին անգամ կարծեց թէ սխալմունք մ'եղած էր. բայց Կարոլոս իշխանին կողմանէ ոնդադեսպան մը հասաւ եւ լուր բերաւ թէ Տաճիկներն իրենց լրտեսներուն միջոցաւ իմացած լինելով առաջադրեալ յարձակումն, իրենք խուժելու սկսած էին եւ Ռատիշէվօյի կողմն ռուս զօրաց վրայ դիմած։ Տօռօպանցներն արշաւակի իջան բլրէն եւ պուրակներու մէջ աներեւոյթ եղան, մինչդեռ արձակամարտք այն բարձրաւանդակին գլուխն հասնելու մօտ էին, որոյ վրայ սարաւանդեալ էր Տաճկաց ամրականն։

Պահ մը վճռական լռութիւն տիրեց։ Տաճիկներն հաւանականաբար կարծելով թէ իրենց մարտագիտական եղանակին ներգործութիւն մը սկսի ունենայ նորահաս զօրաց վրայ, թոյլ տուին յարձակողնե-

րուն որ մօտեննան դոյզն հեռաւորութիւն մը միալու չափ. յետոյ մորդախանձ կրակ մը թափել սկսան անոնց վրայ՝ ոչ միայն ամրականէն, այլ նաեւ անոր առջեւ բացուած պարկենի մը մէջէն, որոյ գոյութիւնն Ռումանիացիք չէին գիտեր եւ ուրկէ Թուրքերն առիշեղ կը հարուածէին զիրենք: Տագնապալից էր այն վայրկեանն: Նախ հարկ էր Տաճիկներն պարկենին մէջէն վանել եւ ապա ամրականին վրայ յարձակելու ելնել. բայց ռումանիացի ոտայք այս գործոյն մէջ ակնոք եղած արժանիքն ունեցան եւ ցոյց տուին թէ անձնուիրութիւնն եւ մահուանէ չվախնալն Ռուսաց միայն յատուկ չէն, որք այնքան արհամարհած էին զիրենք: Պուքրէշի մէջ քաջածանօթ Շօնց հրամանատարեան ամենէն առաջ պարկենին մէջ նետուեցաւ, «յառա՛ջ, զաւակներս, յառա՛ջ» գոչելով, եւ փոսին մէջ սպաննուեցաւ: Տաճկաց բոլոր հարուածներն անվրէպ կ'ելլէին. թէ ամրականին պարապէն եւ թէ պարկենին մէջէն կրակ կ'ընէին սոքա: Թնդանօթներն եւս սկսան գործ տեսնել եւ Ռումանիացւոց վրայ ահռելի տարափ մը տեղացին: Մէկ քանի վայրկենի մէջ առաջին վաշտին մէկ չորրորդն տապաստ անկեալ էր, եւ մնացեալ մասն պատսպարուելու տեղւոյ խնդրելով կը նահանջէր, բայց Տաճկաց ռմբաձիգներն զօրաց կարգերը կը տապալէին շարունակ:

Նոյն պահուն՝ վրայ հասան քաջ տօռօպանցներն, որք՝ առաջին անգամ հրացան պարպելուն պէս փախուստ տալու՝ ինչպէս ռումանական բանակն անուանարկող անձինք գուշակութիւն ըրած էին, խանդիխուն ցրուեալ հետեւակազօրն ժողովեցին, եւ անոնց հետ յարձակեցան պարկենին վրայ զոր գրաւեցին, սակայն չորս անգամ յուսահատաբար գրոհ տալէ յետոյ:

Բայց ժամանակ կորուսանելու չէր. պարկենին տիրելէ յետոյ՝ հարկ էր ամրականին վրայ խուժել: Արի ռումէն գիւղացիք՝ որք իրենց ոտից օփինչաներով կամ տրեխներովն, իրենց երկայն եւ ոլխաւոր բաղկոնովն եւ հնդկահաւի փետուրաւ զարդարեալ եւ մուշտակյա դրուագեալ գլխանոցովն՝ այնքան տարօրինակ գնացք ունին, կրկին յառաջ խաղացին: Այլ ինչ եղաւ իրենց զարմանքն, երբ հասնելով այն բլրոյն գագաթն որոյ վրայ կը կարծէին թէ ամրականը կը գտնուէր, տեսան որ տակաւին անկէ հեռի էին եւ առջեւնին հինգ վեց հարիւր մէթր լայնութեամբ հեղեղատ մը կար: Անօրինակ դոյզն ելեւէջներ ունեցող տեղեաց այս խաբուսիկ էր, եւ այսպիսի տհաճոյ վրիպանքէ մ'աւելի վհատեցուցիչ բան չկրնար մինչեւ անգամ ամենէն արի զօրաց համար: Ոչ 4րդ հատուածին հրամանատարն, ոչ Ցէանօյի զօրավարն եւ ոչ բանակին սպայակոյտ կասկած մ'ունեցեր էին այն տեղատարբեր ծմակին վրայ:

Սակայն Ռումանիացիք անյողդողդ ցոյց տուին ինքզինքնին: Նշան տրուելուն պէս մարդիկն յառաջ նետուեցան. իրենց դէմ հրացաններու տարափելի կրակ մը թափուիլ սկսաւ, բայց վաշտերն դարձեալ կը յառաջէին, թէ եւ մեծ կորուստ կը կրէին. գետինը լպիրծ էր զինուորաց ոտից ներքեւ անձրեւին պատճառաւ՝ որ տակաւին կը տեղար եւ իրենց զգեստներէն կը թափանցէր. բայց նոքա հեղեղատին զառիթափէն վեր ելնելու համար սուիններնուն վրայ կը յենուին. այն տեղ շատ ոտայք կորան Թուրք հրացանաձիգներուն կրակէն՝ որք նոցա համազգեստներէն կը ճանաչէին զիրենք. մէկ քանի վայրկենէն Ռումանիացիք ամրականին պարապը ժամանեցին հասկ ուրեմն: Պարապին վրայ ամենէն առաջ հասնողն եղաւ հետեւակազօրաց հարիւրապետ Վալթէր Մարուցլինեանս որ սպաննուեցաւ՝ ներս ոլին մը կամ ձղերու կապոց մը ձգած ժամանակ, մինչ իւր զինուորաց կը գոչէր. «յառաջ, զաւակներս:» Թէեւ յարձակող զօրքն հիանալի կերպիւ ճիգ թափեց, սա-

կայն հուսկ ապա պարտաւորեցաւ Նահանջել. Կրամոնի ջոկն ճանապարհը կորուսած էր եւ Ռոտիոնով հեռի կը գտնուէր անձկնելի յապաղմամբ. այն քաջարանց ջոկն առանձինն շատ տկար էր։ Նահանջն անվտանգ չեղաւ. Նիզակ զօրաց երկու վաշտեր ամրականէն դուրս ելնելով երկու կողմանէ՝ տոռօպանցներուն մէկ վաշտը գրեթէ շրջապատեցին։ Սոյն վաշտին դրօշն Տաճկաց ձեռքն անցնելու մօտ էր, տոռօպանցներն զայն պաշտպանելով ծուէններն մէջերնին բաժնեցին, զորս ճակատամարտէն յետոյ գումարտակին բերին յանձնեցին։ Հարիւրապետներէն մին՝ Պ. Փրունքօ՝ որ Գալլիոյ մէջ օտարազգի զօրաց լեգէոնին սպայից մին էր ժամանակաւ, եւ կրծից վրայ Գրըմի եւ Իտալիոյ պատերազմաց շքանշանները կը կրէր, իւր զինուորաց բազկացի առնել տուաւ թնդանօթ մը որ հատարանն խորտակեալ էր եւ զոր Տաճիկք ձեռք պիտի անցընէին. իւր դասակը բաղկացեալ 194 զինուորներէն միայն 20 հոգի ոտքի վրայ մնացած էին կռուէն յետոյ։

Կայսրն իւր դիտանոցէն այս յարձակման ժամանակ պատահած յեղափոխ արկածներն կը դիտէր որքան կարելի կ՚ըլլէր մթնոլորտն։ Ռումանիացւոց անյաջողութեան վրայ տխրելով՝ գնաց դէպ ի Ռատիշէվօ ուր ճիշդ ժամանակին հասաւ Քռիլովի երկրորդ ձախորդութեան ականատես լինելու։ Կ՚ըսուի թէ իւր աչքէն արտասուք կը հոսէր, երբ տեսաւ երկաթի բեկորներուն ներքեւ մեծ կորուստկրող արի զօրաց վարանելով կանգ առնուլն, յետոյ կրկին Նահանջելն Փլէվնայի պաշտպաններուն թափած կրակին պատճառաւ, եւ հուսկ ապա խառնիխուռն առատ անդ փախուստ տալն։ Սպայք պարտաւորեցան բռնի թոյլ չտալ լիւեն որ այն ցաւալի տեսարանը տեսնէ. վերջապէս հազիւ կարող եղան զինքն հեռացնել այն անիծեալ տեղերէն եւ տխուր վիճակի մէջ ճանապարհ հանել դէպ ի Փօրատինի մեծ զօրանիստն։ Հե-

տեւեալ օրն արեւը ծագելու ժամանակներն միայն՝ իւր համհարզներէն մին, այն է Ճինկիզ-խան անուն Թաթար սպայն խմաց տուաւ իրեն՝ թէ Կրվիցայի ամրականն գրաւեալ էր այն ձախող յարձակմանէն երկու ժամ յետոյ որում ականատես գտնուեր էր։ Ահաւասիկ եղածն այս էր.

«Ռօտիոնովի սահն երկար ժամանակ միգին մէջ աստ անդ հրացան արձակելէ յետոյ՝ վերջապէս ամրականին մօտեցեր էր, ուրկէ հարիւր յիսուն մէթր հեռի առաջին ջոկին ռումանիացի զօրացն հանդիպեր էր։ Որոշուեցաւ որ Ռուսք աջակողմի յառաջակորկառ անկեան դէմ պիտի յարձակէին, եւ իրենց դաշնակիցներն՝ ձախ կողմի դուրս ցցուած անկեան վրայ. ժամն հինգ եւ կէսին գրոյթ տուին։ «Օ՛ն, զաւակներս, ըսաւ՝ Արխանկէլի գումարտակին հրամանատար Շլիթթէր գումարպետն, մեք ասկէ աւելի բարձր ամրականներ գրաւած եմք Կովկասու մէջ. ծն, յառա՛ջ։» Հազիւ մէկ քանի քայլ առած էր, գնտակ մ՚եկաւ նորա գանկին վերին մասը ծակեց մէկ կողմէն միւսն, եւ տապալեց զինքն կործեվէր։ Զինուորք հ———— գոչեցին կատաղաբար, եւ ի քըթթել ական՝ սանդղոց եւ ոջիններու միջոցաւ խրամներն անցան, եւ ամրականին մէջ մտան թնդանօթի համար ձգուած ծերպերէն եւ պարտակներուն վրայէն։ Ամենէն առաջ ամրականին վրայ ելնողներուն մէջ էր Բվիթքա հազարապետն որ դրօշակ մ՚ունէր ի ձեռին. սա թնդանօթի մը վրայ ոստնլով եւ հեծնելով՝ կրակ ընելու պատրաստուող թնդանօթաձիգն սուսերահար ըրաւ, յետոյ Զէրքէզներու մէկ մեծին վրայ վազելով՝ յոգնահար ատրճանակի հարուածով մը զայն գետին փռեց, անոր թուրն յափշտակեց եւ նոյն պահուն ինքն եւս անթին տակէն վիրաւորուելով անկաւ։ Նոյնհետայն Պօթօշանիի քաջ տոռօպանցներն ամրականին մէջ կը մտնեն հակառակ կողմէն, եւ արիաբար իրենց արծուէնշանը կը կանգնեն պարտա-

կին վրայ։» Ռումանիացի զինուոր մը՝ որոյ փեղոյրն եօթն անգամ գնտակէ զարնուելով ծակեր էր, մարտկոցի կանաչ գունով եւ ոսկեթել ծոպերով դրօշ մը ձեռք անցուց, որոյ վրայ ոսկեթել բանուած էր կիսալուսին մը՝ ինչպէս նաեւ Սուլթանին փակագիրն։ Այս մարդն մէկ քանի օր յետոյ Պուքրէշի մէջ յաղթանակաւ ընդունուեցաւ, եւ ահա հետեւեալ կերպիւ ըրած է նոյնինքն՝ այն դրօշը ձեռք անցընելուն պատմութիւնը.

«Ամենէն առաջ կը գտնուէի ես. սուինովս Թուրք մը սպաննել կ'ուզէի։ Յանկարծ հարիւր մեթրի չափ հեռի տեսայ յաղթահասակ կայտառ մէկն որ կը փախչէր դրօշակ ի ձեռին, իրեն նշան առի եւ ահա գետին անկաւ, վրան վազելով՝ հասայ ճիշդ այն պահուն յորում կը ջանար իւր յոգնահար ատրճանակն առնլու։ Սուինս անոր կուրծքը մխեցի եւ դրօշն ըմբռնեցի. կենազրաւ եղած էր, սակայն տակաւին պինդ էր բռնած. Ջանացի այն նուիրական առարկայն խզելու, բայց նոյն պահուն տեսայ երկու Տաճիկներ որ իմ վրաս կուգային։ Սկսայ ինքզինքս պաշտպանել, գիտելով սակայն թէ ինչ ծանր կացութեան մէջ կը գտնուէի։ Բարեբաղդաբար յիսնապետս եւ տասնապետս նշմարեցին վտանգի մէջ լինելս եւ իմ քովս վազեցին։ Տաճկաց մին ես սպաննեցի, նոքա միւսն սպաննեցին եւ ահա դրօշն գրաւեցի.»

Թուրքերն թէեւ երկու կրակի մէջ կը գտնուէին, սակայն եւ այնպէս յուսահատաբար դիմադրութիւն ըրին։ Սոսկալի տեսարաններ պատկերացան ամրականին պարկէններուն մէջ, ուր կռիւն երկու ժամու չափ տեւեց։ Ռօտիօնով զօրավարըն առջէն վիրաւորեցաւ, Վօլօխտայի գումարտակին գլխաւորն Ռէքաչով գումապետին գլուխն եւս ծանրապէս ճմլուեցաւ, սակայն եւ այնպէս ինքն նոյն առհին հրամանատարութիւնն ստանձնելով շարունակեց առաջնորդել։ Այս կատարածն սոսաւել սարսափելի ընող բան մը կար. Նոյն կերտուածէն 200 կամ 250 մեթր հեռի դէպ յետկոյս շինուած ամրականին Տաճիկներն բարեկամաց եւ թշնամեաց վրայ կրակ կ'ընէին անխտրաբար՝ գիշերային մութը կոխած լինելով. Քէրիմ-Թապեասիի պաշտպաններէն շատեր այս կերպիւ իրենց մարդոց ձեռօք սպաննուեցան։ Վերջապէս եօթներորդ ժամն քառորդ անցած էր, երբ ռուսա-ռումանական բանակն ամրականին տիրեց, յորում Տաճկաց վիրաւորներն միայն մնացած էին, որք սոսկալի կերպիւ կը խորդային կերտուածին այլեւայլ անկիւններն։ Երկու դրօշ եւ հինգ թնդանօթ յաղթականաց ձեռքն անցան, որք արդարութեամբ մէջերնին բաժնեցին զայնս. երեք թնդանօթ եւ մէկ դրօշ անկան Ռումանիացւոց բաժնին, որ ամրականին դէմ եղած յարձակման միջոցին առաւել թուով զօրք յառաջ վարած էին եւ աւելի կորուստ կրած։

Քէրիմ-Թապեասիի դէմ առաջին յարձակման միջոցին Ռումանիացւոց կորուստն հազարի չափ եղած էր, եւ երկրորդին՝ առ նուազն ասոր կրկնապատիկն։ Ամրականին մէջ վիրաւորուելով անկանելու դժբաղդութիւնն ունեցող զինուորք հազիւ երեսուն եւ վեց ժամ յետոյ խնամուեցան։

---

### ՍԵՊՏԵՄԲԵՐ 12Ի ՄԱՐՏՆ. — ԵՐԵՒՈՒՄՆ ԵՐԿՐՈՐԴ ԱՄՐԱԿԱՆԻՆ ԿՐՎԻՑԱՑԻ. — ՏԱՃԻԿՆԵՐՆ ՍՔՕՊԷԼԵՎԻ ԳՐԱՒԱԾ ԵՐԿՈՒ ԱՄՐԱԿԱՆՆԵՐՆ ԵՏ Կ'ԱՌՆՈՒՆ.

Սեպտեմբեր 11էն 12 լուսնալու գիշերն չարաղէտ եւ զարհուրելի եղաւ Փլէվնայի պատուարներուն ներքեւ։ Բարակ եւ ցրտին անձրեւ մը կ'իջնէր վիրաւորաց վրայ, որք տաճկական եւ ռուսական գծերուն մէջ տեղ ամեն ուրեք կը հծէին գիշերային աղջամղջին մէջ։ Պաշարողք գրեթէ բնաւին քուն չունեցան. ամենքն չէին գիտեր Կրվիցայի ամրականին առումըն, բայց գիտէին թէ ինչ ահագին կո-

թուստ կար. գումարտակներն փոքրկացած եւ վաշտերու չափ մնացած էին, վաշտերն դասակներու չափ. ամբողջ դասակներ ջնջուած էին. չկար մէկն որ մէկ քանի ընկերաց վրայ չլար. ամենուն դէմքն թախծեալ եւ վհատական էր. այնքան արիւն, այնքան կոտորած, եւ դեռ ինչ արդիւնք։ Մերթ ընդ մերթ Տաճկաց թնդանօթներուն հեռուստ որոտալու ձայնն գոգցես կը հեգնէր այն ողորմելի բանակն որ ի զուր այնքան մարդ եւ արիութիւն էր զոհած։ Ցած ձայնով կը զրուցուէր անդ թէ ռուսական բանակէն 12 կամ 13,000 մարդ անկեալ էր եւ ռումանական զօրքէն 3,000, այսինքն 16,000 մարդ մէկ աւուր մէջ Փլեւնայի պատուարներուն դէմ ջախջախեալ։ Տխրութեան հետ միանգամայն վհատութիւն մուտ կը գտնէր ամենէն արի սրտերուն մէջ. բնական ազդմամբ իւրաքանչիւր ոք միտեալ էր բանակին հրամանատարութիւնը մեղադրելու, եւ ասկիմամբ կը հարցուէր թէ գլխաւորներն պիտի չփոխուէին արդեօք։

Ամսոյն 12ին արշալոյսն սոսկալի երեւոյթ մ'ունէր ցոյց տալու Կրվիցայի ամրականին տիրապետող արի զինուորաց։ Այն գիշեր Տաճիկներն մէկ քանի անգամ սոցա մօտեցեր էին «Ալլահ» գոչելով, իբր թէ դաւոյթ պիտի տային եւ Քէրիմ-Թապեասին ետ առնուլ պիտի փորձէին. բայց չը յարձակեցան եւ ամրականին դէմ շարունակ թնդանօթ եւ հրացան պարպելով բաւականացան. կը կարծուէր թէ նոքա մօտ դիրք մը բռնած էին, ուրկէ դիւրին պիտի լինէր զիրենք վանել լուսնալէն յետոյ։ Ամէն ոք հաստատ համոզում ունէր թէ գրաւեալ ամրականն Փլէվնայի վրայ բարձրահայեաց դիրք մ'էր, եւ թէ նոյն քաղաքին առումն այլ եւս ժամանակի գործ էր։ Այս կարծիքն կը մեղմէր եւ մինչեւ անգամ կը փարատէր այն ցաւն զոր եղած սարսափելի կորուստն կը պատճառէր։ Որքան գժնդակ եղաւ այս ակնկալութեան ի դերեւ ելնելն Ռուսաց եւ Ռումանիացւոց համար, երբ իրենց դէմ կանգնեալ տեսան նորանշոյլ այգուն լուսով այն երկրորդ ամրականն զոր շինել տուած էր խոհեմն Օսման փաշա։ Քէրիմ-Թապեասիէն գրեթէ 250 մէթր հեռի երկրորդ կերտուած մը՝ որ առաջնոյն չափ ընդարձակ եւ հզօր էր եւ աւելի կերպիւ զինեալ, կը բարձրանար բլրակի մը վրայ որոյ գոյութիւնն անկարելի էր գուշակել ռուսա-ռումանական բանակին մէջէն, եւ սակայն բարձրահայեաց էր այն՝ բոլոր մօտակայ դրից վրայ եւ մինչեւ անգամ միւս ամրականին։ Հարկ էր կրկին յարձակման սկսիլ, եւ Քէրիմ-Թապեասին՝ պաշարող զօրաց ձեռքն արժէք մը չունէր, քանի որ այս երկրորդ ամրականին եւս տէր չէին նոքա։

Ամսոյն 11ին եղած ճակատամարտին պատճառաւ բանակն անկարգ վիճակի մէջ գտնուելով, որոշուած էր որ հետեւեալ օրն նոր յարձակում չպիտի լինէր, վասն որոյ ամրականին պաշտպաններն պարտաւորեցան պատնիշաց մէջ փակուիլ՝ կարելի եղածին չափ վտանգէ զգուշանալով թնդանօթներու եւ հրացաններու անընդհատ կրակի մը ներքեւ։

Սեպտեմբերի 12րդ օրն Ռուսաց համար շատ աղետաբեր պիտի լինէր իրօք։ Կրվիցայի երկրորդ ամրականը նշմարելով՝ այս չարագուշակ երեւութին վրայ տուշած մնալէ յետոյ՝ դժբաղդութիւն մ'եւս ունեցան, եւ կարելի է ըսել թէ սխալ մը գործեցին թոյլ տալով՝ որ Տաճիկներն Սքօպէլեվի ձեռօք գրաւեալ երկու ամրականներն ետ առնուն։ Կարոլոս իշխանն եւ Նիքօլա մեծ դուքսն ուշադրութիւննին միայն Կրվիցայի առջեւ եղած բաներուն վրայ դարձուցած էին, եւ այս գիւղին մօտ առանց վրանի գիշերն անցուցած էին ցրտագին անձրեւին ներքեւ՝ իրենց տառատոլներուն մէջ միայն փաթթուելով։ Միւս կէտերուն վրայ եղած բաներուն շատ հոգ չէին ըներ, եւ Սքօպէլեվ գրեթէ անօգնական ձգուեցաւ։ Սա շատ յառա-

ջանուխ եղած էր Տաճկաց գծերուն մէջ եւ միանգամայն երեք կողմանէ ամրակոծութեան ենթակայ էր։ Իւր դիրուած մեծ ամրականն ամուր քարաժայռի մը վրայ էր հաստատուած, եւ ռուսական գծերուն դէմ միայն՝ պարտակներ շինուած էին մօտակայ տեղեաց հողովը, այնպէս որ նոյն կերտուածին մէջ պահնիչաց եւս ամբանալ անկարելի էր Ռուսաց որք կ՚ուզէին Տաճկաց դէմ գործել անկէ. շատ դժուարին էր ուրեմն այն դիրքն, բայց գըրաւումն եւս այնքան կարեւոր էր որ Սքօպէլեւ որոշեց պաշտպանել զայն ամեն զոհողութիւն աչք առնլով։ Նախ մէկը ղրկեց խնդրելու որ իրեն աջակցութիւն լինի Փլէվնայի ամրութեան միւս կէտերուն վրայ յարձակումն կամ գէթ ցոյց ընելով։ Ցետոյ երբ ազդ եղաւ իրեն թէ անկարելի էր այս, խնդրեց որ գէթ զօրավիգ ղրկուի։ Եթէ գումարտակ մը միայն ղրկել կարելի լինէր, պիտի բաւականանար ի հարկին. զօրքն՝ թէ եւ նախորդ օրն սարսափելի կորուստ էր կրած, սակայն մնաց բարոյական վիճակն այնքան գոհացուցիչ էր որ Սքօպէլեւ կը յուսար իւր դիրքը պահել այսպիսի դոյզն նպաստիւ։ Բայց իւր քանիցս կրկնեալ խնդիրքն անպտուղ մնացին. սպայակուտի երկրորդական գլուխ Լէվիցքի զօրավարն՝ առ որ կը մատուցուէին այն խնդիրներն, Սքօպէլեւի կացութիւնն նուազ տագնապալից համարելուն եւ կամ առձեռն պատրաստ զօրք չունենալուն պատճառաւ, որ շատ հաւանական չը թուիր՝ քանի որ բանակին կէսն նախորդ օրը կռուած չէր, չուզեց բնաւ զօրավիգ ղրկել անոր։ Օրն տարաժամեալ էր, երբ Քռիլով զօրավարն Սքօպէլեւի ըրած յուսահատական ջանից վրայ խանդաղատելով՝ յանձնառու եղաւ հազարի չափ մարդիկ տալ անոր, որ նախորդ օրն յարձակում ընող գումարտակէ մը մնացած էին եւ շատ ուշ հասան։ Նորատի զօրավարն առանձինն մնաց ուրեմն, եւ ամբողջ օր մը դիմդրաւ. ամբողջ օր մը կռիւ եղաւ Ռուսաց ճախակողմն, եւ անմեկնելի զանցառութեամբ սպայակուտէն ոչ ոք եկաւ այս կռուոյն որքան կարեւոր լինելն հասկանալու։ Սքօպէլեւի վրայ այն ժամանակ միայն փոյթ ունենալու հաճութիւն ցոյց տրուեցաւ, երբ ուրիշ բան չէր մնար ընել, բայց եթէ ցաւիլ աւելի կանուխ հոգ չտարուելուն համար, այսինքն երբ երեկոյին նորա պարտութիւնն իմացուեցաւ։

Տաճիկներն առաւօտեան հնգերորդ ժամէն սկսեալ յարձակելու ելան, եւ հինգ անգամ դռոյթ տուին երկու ամրականներուն վրայ։ Սքօպէլեւի զօրքն որք զինքն կը պաշտէին, երդուած էին իրեն՝ կռուիլ մէկ մարդ չմնալու չափ, քան թէ ընկրկիլ, եւ դիւցազնական պաշտպանութիւն մ՚ըրին. իրենց կորուստն 5,000 մարդէ աւելի եղաւ, եւ սակայն չտկարացան։ Զետեղեալ 40 թնդանօթներէն 34 հատն հաստարաններուն վրայէն անկան, եւ այս բանս գաղափար մը կուտայ թէ ամրատակներու ինչպիսի սարսափելի տեղատարափի մը դէմ դրին Ռուսք։ Սպայակուտի անդամ եղող եւ Թուրքաստանի մէջ Սքօպէլեւի մարտակից գտնուող Քուրոփաթքին հազարապետն՝ որ Փլէվնայի առջեւ զօրավարին օժանդակ տրուած էր, մեծ ամրականին մարտկոցներէն միոյն մէջ կը հրամանատարէր կրակ ընելու մասին. տաճկական ռմբակ մը եկաւ իւր մօտն ռազմամթերից արկղիկ մը պայթեցուց, որմէ սպաննուեցան Թէպիաքին զօրավարն, մարտկոցին հրամանատարն եւ իւր քով գտնուող բոլոր մարդիկն։ Քուրոփաթքին հազարապետն ցնցուեցաւ միայն, եւ իւր դէմքն այրեցաւ. այս պայթման սարսափելի արդիւնքէն առանց յուզուելու՝ հրաման տուաւ դարձեալ անմիջապէս գոչելով. «Առաջին թնդանօթէն — կրա՛կ։» Սքօպէլեւ եւս նոյն միջոցին ինքզինքին պէս մէկ քանի մարդու գործ կը տեսնէր։ Այն օր երեք կամ չորս անգամ ամրականներն այցելեց իւր ձեռօք թնդանօթներն յառաջ վարելով, զինուորները խրա-

խուսելով եւ խոստանալով որ զօրավիգ պիտի հասնի. զինուորք միեւնոյն եռանդագին ուռաղակները կ'արձակէին ի պատասխանի եւ նորէն կըսկսէին կատաղաբար կռուելու,

Բայց զօրավիգներն՝ չէին հասներ եւ Սքօպելեվի գունդն սարսափելի արագութեամբ կը նուազէր այն՝ գերմարդկա-



ՍՔՕՊԷԼԵՎ ԲԱՑԱԳԼՈՒԽ ՁԱԽԱԿՈՂՄԵԱՆ ԱՄՐԱԿԱՆԻՆ ԴԷՄ ԿԸ ՅԱՐՁԱԿԻ

յին կռուոյն մէջ։ Որսորդ զօրաց մէկ գումարտակէն 160 հոգի էր մնացած. ամբողջ դասակներ բնաջինջ եղած էին. զօրաց կարգերն ըստ դիպաց կը կազմուէին. խառն ի խուռն կը կռուէին, վասն զի այլ եւս սպայ չկար։ Թէպլիսքին հատուածապետն, Վալինկրէ գումարտակետն եւ Սուզդալի դումարտակին հրամանատարն սպաննուեցան։ Բօհլ եւ Փիանքօ գումարտակետներն ծանրապէս վիրաւորեցան. Նօժաքովսքի, Կօլօվին, Գօրօտին եւ Քուրսէլ գումարտակետներուն միսն ճմլուեցաւ։ Երկրորդական սպայք եւս միւսներէն վար չէին մնար. ամենքն առաջ կ'անցնէին եւ կըսպանուէին։

Հուսկ ապա՝ երեկոյին Տաճիկներն Սքօպելեվի դէմ բազմամբոխ զօրք կուտեցին տեսնելով որ Ռուսք անշարժ են կեդրոնին վրայ եւ Կրիվիցայի կողմն եւ համոզուելով թէ այն կողմերէն երկիւղ չունէին։ Զօրքն Փլէվնայէն դուրս ելաւ Սօֆիայի ճանապարհը բռնելով, ամրականաց առաջ տարածուած թանձրախիտ անտառներէն անցաւ, եւ Ռուսաց կողմանէ գրաւեալ մեծ կերտուածին վրայ դայթ տուաւ՝ իւր գլուխն ունենալով նուագածուներ, ա-

ռաջնորդութեամբ կանոնաւոր հեծելազօրաց մէկ քանի գումարտակներու՝ ինչպէս նաեւ Փլէվնայի եւ շրջակայից մահմետական բնակիչներէն բազմաթիւ անձանց, որք ասպատակաւորաց խումբեր կը կազմէին: Ճիշդ մրջիմնակոյտ մը կը նմանէին. դաշտերն եւ բլուրներն թխացեալ էին. որքան մարդ սպաննուէր, այնքան եռեւէն կը հասնէր: Տաճկաց առաջին շարքն գրեթէ բնաջինջ եղան: Ռուսք առիւծաբար կը կռուէին եւ կըսպաննուէին առանց ներբանի չափ տեղ եւս երթալու: Քիչ ժամանակէն մեծ ամրականին մէջ դիականց լեռնանման շեղջեր դիզուեցան զորս կենդանի մնացողք իբրեւ պատնէշ կը գործածէին:

Վլատիմիրի գումարտակէն Կորթազով հազարապետն՝ զոր Սքոպէլեվ այն ամրականին հրամանատար անուանած էր, Տաճկաց անձնատուր չլինելու խօսք էր տուած զօրավարին. ու իւր խոստումը պահեց, վասն զի երբ Թուրքերն վերջին անգամ ամրականին վրայ խուժելով կարացին ներս մտնել, Կորթազով հազարապետն մինչեւ վերջը մնաց այն տեղ, եւ յարձակողք սուինի ծայրով ի բաց տարին զինքն: Այն դիւցազին նախորդ ուսուր պանծալի ընթացքին համար իրեն զրկուած Սուրբ Գէորգայ խաչանշանն երբ հասաւ, նա այլ եւս կենդանի անձանց կարգը չէր: Կերտուածին մէջ Ռուսաց ձեռօք բերուած երեք թնդանօթներն հարկ եղած էր թողուլ անդ:

Սուզտալի գումարտակէն Մօսթսկվոյ փոխ-գումարտակն փոքր ամրականին հրամանատար եղած էր. վեց անգամ Թուրքերուն յարձակմանցը դիմադրեց եւ յետս մղեց զանոնք, ամեն կողմանէ շրջապատեալ լինելով հանդերձ՝ շարունակեց դարձեալ իւր դիրքը պաշտպանել, երբ բանակն ծայրէ ի ծայր կը նահանջէր, եւ սուինով իւր զօրաց ճանապարհ բանալ տուաւ դուրս ելած ժամանակ:

Սքոպէլեվ մէկ ժամ առաջ մեծ ամրականէն ելնելով իւր վրանին մէջ առանձնացեր էր, որ դէպ յետոյս բարձրաւանդակին վրայ կը գտնուէր: Ցանկարծ ազդ եղաւ իրեն թէ Տաճիկներն նորէն իւր գնդին աջակողման դէմ կը յարձակէին Լօվչայի ճանապարհաւ՝ ճիշդ Փլէվնայի վերի կողմէն: Այս լրոյն ստուգութիւնն հասկնալու համար՝ յառաջ գնաց եւ բանբերի մը հանդիպեցաւ որ իրեն ծանոյց թէ Թուրքերն վեցերորդ անգամ յարձակելու կուգային ամրականին դէմ. զօրավարը ժամանակին հասնելու յուսով ձին սրարշաւ վազցուց, բայց հազիւ թէ քիչ մը առաջ գնացած էր, եւ ահա փախստական զօրաց ամբոխ մը իւր դէմ ելաւ, որք քառասուն եւ ութ ժամ կռուելով ուժաթափ, պարտասեալ եւ անօթութենէ եւ ծարաւէ նուաղեալ էին:

Այն սուր կռուոյն մէջ մահուանց՝ Սքոպէլեվ կարէր անվիրաւորելի համարուիլ յաչս իւր զինուորաց. միշտ կրակին ամենավտանգաւոր եղած տեղը գտնուելով՝ մարդկան զօրութեամբ պաշտպանեալ կը թուէր եւ փոքր վէրք մ'անգամ չէր առած: Իւր շուրջն ամենայն ինչ կը տապալէր: Սպայակոյտին հինգ անդամներէն չորսն սպաննեալ կամ վիրաւորեալ էին: Իւր հաւատարիմ Թիւրքմէն ձիաւորն զոր Խօքանտէն հետ բերած էր՝ մեռած ինկաւ:

Երեկոյեան վեցերորդ ժամուն Սքոպէլեվ կարող եղաւ հուսկ յետոյ՝ ժողովել գնդին մնացորդներն Բրիչինայի մօտ նախակին դիրքը վրայ. եւ Տաճիկներն չհամարձակեցան իրեն հետամուտ լինել: Իւր զօրաց երկու երրորդը կորուսած էր եւ Ռուսիոյ մղած պատերազմներուն մէջ գուցէ այսպիսի կոտորած մը չէր եղած: Բոլոր զօրքն երեք կամ չորս անգամ կըռուոյ մէջ մտած էին, եւ անտեղի չէ ըսել թէ իւր զինուորաց վրայ զարմանալի ազդեցութիւն մ'ունեցած լինելու է, որ կարելի եղաւ կարգերը վերակազմել եւ դիմադրութիւնը շարունակել այնքան սարսափելի կրակի մը ներքեւ եւ այնչափ

զարհուրելի կոտորած մ'եղած ժամանակ ։

### ԱՐԴԻՒՆՔ ԿՌՈՒՈՅՆ

Ամսոյն 13ին երկու կողմանէ թշնամութիւնք դադրեցան ընդհանուր համախոհութեամբ. իւրաքանչիւրն անդորրութեան պէտք ունէին։ Ռուսաց կողմանէ թափուած անհուն ջանից արդիւնքն եղած էր ձախողութիւն մը. 20,000 մարդ կորուսանելով Կրվիցայի ամրականը միայն գրաւած էին որ օգուտ մը չունէր ։ Ահաւասիկ այս եղաւ ի պատիւ վեհապետին կատարուած գեղեցիկ տօնախմբութիւնն։ Վասն որոյ Ռուսաց բանակին մէջ ամենքն տխուր, վհատեալ, տաղտկացեալ եւ գրեթէ ապուշ եղած էին, այն անընդհատ, զարհուրելի, մարդախանձ եւ ապարդիւն կռուոյն վրայ որ եօթն օրէ ի վեր կը շարունակուէր ։

Սեպտեմբերի 11ին կայսրն եւ մեծ դուքսն վիրաւորաց այցելութիւն ըրած եւ Սուրբ Գէորգայ կարգին խաչանշաններէն բաշխած էին նոցա՝ ինչպէս նաեւ դրամ. բայց սեպտեմբերի 12ին աղետաբեր կռուէն յետոյ՝ կայսրն այլ եւս չերեւեցաւ ։

Այն օր մեծ զօրանոցին մէջ ճաշի ժամանակ ծանր դէպք մը պատահեցաւ ։ Նիքոլա մեծ դուքսն Կրվիցայէն դեռ եւս էր հասեր, ուր գնացած էր նոր կայանները զննելու, զօրաց շնորհակալ լինելու եւ պարգեւ բաշխելու համար ։ Բանակին ձախէն՝ այսինքն Զլաթինայի եւ Պօկօթի կողմէն սաստիկ ռմբակոծութեան ձայն մը կը լսուէր ։ Սեղան կը նստին եւ մեծ դուքսն դժգոհունակութեամբ կը ծանուցանէ թէ «Իւր Սքօպէլեֆն Տաճկաց հետ կը զրօսնու ։» Յանկարծ բանբեր մը հեռագրութիւն մը կը բերէ զոր մեծ դուքսն կարդալով ընդոստ ոտք կ'ելնէ ։ «Զօրավար Լէվիցքի, կարդացէք սա գիրը, կ'ըսէ սպայակուտի գլխոյն օգնականին ։ Կարդացէք բարձրաձայն, կը հրամայեմ ձեզ։» Լէվիցքի զօրավարն կարդաց հեռագրութիւնն որ Սքօպէլեվ զօրավարին կողմանէ քաշուած էր, եւ Փլեվնայի այն հարաւային ամրականներուն ձեռքէ ելնելը կը ծանուցանէր որք նախորդ օրն անհուն զօրութեամբ գրաւեալ էին։ Հեռագրութիւնն սա խօսքով աւարտեալ էր. «Լէվիցքի զօրավարն որմէ երկու անգամ զօրավիգ խնդրեցի, մէկ մարդ չղրկեց ինձ ։ Այն կարեւոր դրից ձեռքէ ելնելուն եւ այս անօգուտ արիւնհեղութեան պատասխանատուութիւնն թող այն Լեհին գլխոյն վրայ ծանրանայ ։» Սպայակուտի գլուխ Նէփօքօյչիցքի զօրավարն որ Լեհ է՝ սեղանէն ելնելով իւր սենեակը քաշուեցաւ ասոր վրայ ։

Զօրաց աչքին առջեւն եղած սարսափելի տեսարանը վհատեցուցիչ էր նոցա համար։ Սեպտեմբերի 7էն մինչեւ 4ն՝ 9,000ի չափ վիրաւորեալ զինուորք եւ 239 սպայք հիւանդանոց տարուեցան։ Տապաստ անկեալ զօրաց թիւն երբէք պաշտօնապէս չէ յայտնուած, սակայն կարելի է գաղափար մ'ունենալ այս մասին ռումանական կառավարութեան կողմանէ իւր զօրաց կորուստեան վրայ հրատարակուած տեղեկութիւններէն իմանալով. 1 բարձրագոյն սպայ, 40 երկրորդական սպայք եւ 1,176 զինուորք վիրաւորեալ էին, 1 բարձրագոյն սպայ, 14 երկրորդական սպայք եւ 1,335 զինուորք սպանեալ էին. այսինքն ճակատեղեաց վրայ սովորաբար եղածին հակառակ՝ մեռելոց թիւն վիրաւորաց թիւէն աւելի, էր մինչ առ հասարակ իբրեւ 1 առ 6 կամ 7 կը լինի ։

### ՌՈՒՄԱՆԻԱՑԻՔ ԿՐՎԻՑԱՅԻ ԵՐԿՐՈՐԴ ԱՄՐԱԿԱՆԻՆ ԴԷՄ ԿԸ ՑԱՐՁԱԿԻՆ

Ռուսա-ռումանական բանակն ամսոյն 12ին կռուէն յետոյ գրաւած դիրքը պահեց. թնդանօթաշարք եւս չդադրեցան եւ Տաճկաց ամրականներէն փոքր ինչ հեռի այնպէս մնացին. փոյթ տարուեցաւ զանոնք լաւ պարտակելու, ամեն կողմ խրամ-

ներ բացուեցան որձակամարտից համար, հզօր ամրական մը շինուեցաւ Ռատիշէվօյէն վեր, եւ ամրակնութիւնն առաւել կատարելութեամբ շարունակեց։ Պաշարողաց կողմն 320 թնդանօթ կար շարուած. Տաճիկներն անզօր կերպիւ անդրադարձութիւն կ'ընէին, Օսման փաշա՝ որ սարսափելի քանակութեամբ ռազմամթերք ստացած էր, կընայէր անհանգիստ ընել ռուսական հեծելազօրուն գործողութեանցը վրայ, եւ հրաման ըրած էր մնացած նիւթոց խնայութիւն ընելու, չգիտելով թէ նորէն պիտի զրկուէ՞ր արդեօք քիչ ժամանակէն։ Սակայն ամսոյն 14ին երեկոյեան վեցերորդ ժամուն՝ Կրիվիցայի ամրականին դէմ յանկարծ սաստիկ ռմբակոծութիւն մը սկսաւ, եւ երեք ժամ յետոյ գիշերային մթութեան մէջ մէկ քանի վաշտեր դուրս ելան երկրորդ ամրականէն, եւ փորձեցին այն ռումէններն յանկարծակի բերելու որք առաջին ամրականը կը պահպանէին. բայց ասոնք արիաբար դէմ դրին եւ ժամանակ տուին Ռուսաց պահեստի խմբերուն իրենց օգնութեան հասնելու. ասոնք ալ Տաճիկներն վերջնապէս ետ մղեցին։

Ամսոյն 15ին, 16ին եւ 17ին ռմբակոծութիւնն շարունակեց. Թնդանօթներն մէկ քանի անգամ հրդեհ պատճառեցին Փլէվնայի մէջ եւ շատ վնաս հասուցին Կրիվիցայի երկրորդ ամրականին ուրկէ որձակամարտներն միայն կրակ կ'ընէին հրացանով։ Ռումէնիացիք նախորդ յարձակմանէն յետոյ փորձառու լինելով թէ կերտուածոյ կրակին ներքեւ գրոխում մը անպատսպար յառաջելով մեծ կորուստ կունենոյ, սկսան երկրորդ ամրականին դէմ զուգահեռական խրամներ փորել սքանչելի խանդով։ Ամսոյն 18ին՝ այս կերտուածին վրայ կենդանութեան նշան մը չէր երեւեր. վասն որոյ Կարոլոս իշխանն ռումէն զօրաց հրամայեց յարձակողական գննութիւն մը ընելու անոր մէջ՝ Տաճկաց կողմանէ որքան զօրք համախմբեալ լինելն ստուգելու նպատակաւ՝ ինչպէս նաեւ դայթ տալու, եթէ շատ զօրք չգտնուէր։

Կէս օրէն մէկ ու կէս ժամ յետոյ՝ ճակատամարտիկ հետեւակազօրաց 1ին գումարտակէն մէկ վաշտ իբրեւ որձակամարտ ցրուած ամրականին վրայ խաղաց՝ հետն ունենալով տոռօպանցներու 13րդ եւ 9րդ գումարտակներէն մէկ մէկ վաշտ որք յարձակողական ջոկ կազմած էին, եւ հետեւակազօրաց 7րդ գումարտակէն վաշտ մը կըսպասէր ի պահեստի. բայց Տաճիկներն լաւ պաշտպանութիւն կ'ընէին եւ բազմաթիւ էին, թէեւ շաբաթէ մը ի վեր լռութիւն պահելու համբերութիւնն ունեցած էին։ Նախ ասոնք կրակ ընել սկսան Ռումէնիացւոց վրայ. երբ բաւական բաղուկ ձեւացեալ յարձակող ջոկերն մօտեցան, Տաճիկք ես թնդանօթներն երեւան հանեցին, որք սկսան որոտալ, մինչ ամրականին եւ խրամներուն մէջ պատսպարեալ հետեւակազօրն սաստիկ կրակ մը կ'ընէր։ Յարձակող ջոկին երկու վաշտերն երկու անգամ դայթ տուին՝ յուսալով թէ Տաճկաց բազմութեան կը յաղթեն իրենց արիութեամբն եւ աշխուժութեամբն, հասան մինչեւ ամրականին խրամներն՝ պատրաստ լինելով կողմերն եւ սանդուղներն գետեղելու՝ որ պարապներէն վեր ելնեն. այն ժամանակ գրկընդխառն կռիւ մը սկսաւ եւ մէկ քանի վայրկեան տեւեց։ Յարձակող ջոկն չկարաց իրմէ շատ աւելի բազմաթիւ Տաճկաց տոկալ։ Կարոլոս իշխանն չուզելով նոր զօրք յառաջ վարել եւ վտանգել, հրաման ըրաւ որ ետ մնայ երրորդ յարձակումն որ պիտի լինէր պահեստի զօրաց վաշտովն. երեկոյեան հինգերորդ ժամուն կռիւն բոլորովին դադրեցաւ եւ Ռումէնիացիք իրենց պատնիշաց մէջ մտան։

Այն յարձակման միջոցին հինգ սպայք եւ 123 զինուորք տապաստ անկան եւ 274 զինուորք վիրաւորեցան։ Առիթ մը եղաւ այս Ռումէնիացւոց համար վերստին ապացուցանելու արիութիւննին եւ անընկ-

ճելի կորուստին։ Իրենց վրայ եղած կանխակալ կարծիքն այնուհետեւ ջնջուեցաւ եւ Ռուսք պարտաւորեցան քաջութեան մասին իրենց հաւասար ճանաչելու զանոնք։

Նոյն անյաջող փորձէն յետոյ՝ յարձակմունք դադրեցան Փլէվնայի դէմ։ Սպայակոյտն իր առած սարսափելի դասուն հուսկ ապա խելամուտ եղեր էր. համոզեալ էր այնուհետեւ որ արիութիւնն անզօր է՝ լաւ պատսպարեալ մարդոց ձեռքն եղած արագաձիգ հրացաններուն դէմ։ Պարենից եւ ռազմամթերից սպառմամբ Օսման փաշան ձերբակալելու գաղափարն՝ որ այնքան պարզ էր եւ Ռուսաց ուշադրութիւնն հրաւիրելու էր Տաճկաց բանակին յետակողման վրայ, թափանցեց այնուհետեւ ամենուն ուղեղին մէջ իբրեւ անհրաժեշտ հարկաւորութիւն մը, եւ պաշարման համար առաջին գործողութեանց ձեռնարկուեցաւ։

# Գլուխ Երեսներորդ

## ՍԻՒԼԷՅՄԱՆ ՓԱՇԱ ԵՐԿՐՈՐԴ ԱՆԳԱՄ ԿԸ ՅԱՐՁԱԿԻ ՇԻՓՔԱՅԻ ԿՐՃԻՆ ՎՐԱՅ

### ՍԵՊՏԵՄԲԵՐ 17Ի ՅԱՐՁԱԿՈՒՄՆ

Փլէվնայի նոր յաղթութեան վրայ բոլոր մահմետականք անհուն ուրախութեամբ լցան եւ իրենց զօրութեան վրայ անսահման վստահութիւն զգացին։ Կոստանդնուպոլսոյ պատերազմական խորհրդոյ մէջ կարծուեցաւ թէ վճռական հարուած մը տալու ժամանակն եկած էր, եւ արդարեւ օսմանեան բանակին վիճակն երբէք աւելի պանծալի եղած չէր եւ ամենէն խոհական մարդիկն ապագային վրայ խաբելու այնքան յարմար չէր երբէք։ Ասիոյ մէջ Մուխթար փաշա Ալէքսանդրօփոլէն մէկ քանի հազարամէթր հեռի կը գտնուէր, եւ քիւրտ Իսմայիլ Հաքքը փաշա Ռուսաց երկրին վրայ բանակեալ էր եւ Երեւանոյ դէմ կըսպառնար։ Եւրոպայի կողմն Փլէվնայի շուրջն համախմբեալ ռուսական բանակին չորրորդ մասն Օսման փաշայի ձեռամբ ջնջուեր էր. Ցարէվիչի բանակն Լօմի ափանց վրայէն հալածուելով Պիէլայի շրջակայքը մղուեր էր, եւ Մէհէմմէտ-Ալի այս քաղաքին 25 հազարամէթր մնալու չափ մօտեցեր էր։ Պատերազմի տեսարանէն տակաւին մէկ քանի աւուր ճանապարհ հեռի կը գտնուէր ռուսական զօրավիգներուն ըստուար մասն. վասն որոյ կը թուէր թէ բուն յարմար ժամանակն էր գերագոյն ճիգ մը ընելու, որպէս զի թշնամին յայնկոյս Դանուբի մղուի, եւ պատերազմի նախարարութիւնն Սիւլէյման փաշայի եւ Մէհէմմէտ-Ալիի հրաման ղրկեց իրենց դէմ գտնուող ռուսական բանակաց վրայ անմիջապէս յարձակելու։ Առաջինն՝ որ օգոստոս ամսոյ մէջ կրած արիւնաուշտ պարտութիւնները ներելի ընելու պէտք ունէր, ուրախութեամբ հնազանդեցաւ. սակայն ընդհանուր հրամանատարն իր գործողութիւնքն ի դերեւ ելած կը նկատէր, եւ այնքան դիմադրաւեց նա որքան հարկ էր իր յօժարամտութիւնը ցոյց տալու համար։

Սիւլէյման փաշա այս անգամ հարկ համարեց յարձակում ընելէ առաջ երկարատեւ ռմբակոծութեամբ մը նախապատրաստութիւն տեսնել։ Օսմանեան կառավարութիւնն տասն եւ հինգ օրէ ի վեր բուռն ջանք թափած էր Պալքանաց բա-

նակին պակասները լրացնելու համար, առ որ զօրավիգ կը հասնէր ամեն օր Ռումէլիի եւ Ալպանիոյ այլ եւ այլ կէտերէն․ Ցուանդուն զօրավարն՝ որոյ բանակն այս կերպիւ վերակազմեալ էր, առաջին յարձակման միջոցին զանց ըրած նախազգուշական տնօրէնութիւնները ձեռք առնլով՝ կ'ուզէր որ յաջողութեան հաւանականութիւնք բոլորովին իւր կողմը լինին։ Զօրաց կայքն կիսաբոլոր մը կը ձեւացընէին Սվէթի-Նիքօլա լերան շուրջն, որոյ դէմ պիտի լինէր յարձակումն այս անգամ. ամսոյն 13ին կրճին արեւմտեան կողմն լերան հարաւային զառիթափին մէկ մասը գրաւելով՝ չորս ահագին ռմբկիններու չափ մը զետեղել տուաւ, որք անընդհատ թշնամւոյն պատնէշները պիտի ռմբակոծէին։ Ռմբկիններն չորս օր եւ չորս գիշեր անդադար հրագունդ (պօմպ) արձակեցին եւ բաւական զգալի կորուստ պատճառեցին Ռուսաց․ — ամեն օր գրեթէ քառասուն մարդ կը զարնուէր։

Որոշուեցաւ որ յարձակումն սեպտեմբեր 16էն 17 լուսնալու գիշերը լինի։ Նախապատրաստական ռմբակոծութիւն մը լինելէն յետոյ՝ այս ձեռնարկութիւնն յոյժ վտանգաւոր կը թուէր դարձեալ։ Սվէթի-Նիքօլա լերան կողերն վերջին աստիճան սեպ են. հարաւային կողմէն լեռն գրեթէ ուղղաձիգ կը բարձրանայ առ նուազն մինչեւ 150 կամ 200 ոտնաչափ․ Հարաւային արեւմտեան եւ հարաւային արեւելեան կողմերն այնչափ բարձրութիւն չունին. Հիւսիսային արեւմտեան կողմէն ապառաժուտ զառիթափն անզգալի կերպիւ կը տափանայ, թէեւ դարձեալ յոյժ դժուար է․ Նաեւ այս ի բնէ ամուր լեռն Ռուսաց ձեռքն ներքնաբերդ մը եղած էր՝ վրան մարտկոցներ, հողակուտակներ եւ պարկէններ շինուած լինելով։ Սուլէյման փաշա յարձակման համար հետեւեալ կարգադրութիւններն ըրաւ։ Նախ 3,500 կամաւորներու գունդ մը պիտի ջանար յանկարծակի գրաւել ռուս պահանորդաց խումբերն եւ բաղկացեալ էր ըստ մեծի մասին Նիզամի զօրքէ, մէկ քանի հարիւր Արնաւուտներէ եւ 50 անկանոն պաշը-պօզուգներէ եւ Չէրքէզներէ։ Բոլոր ասոնք ինքնակամ ներկայացած էին յառաջ խաղալու համար, եւ ձախ թեւերնուն վրայ սպիտակ ծղոտ մը կը կրէին, որպէս զի գիշերային զիրար ճանաչեն։ Սոյն կամաւորք երեք ջոկ կազմեցին, որք կէս գիշերէն երեք ու կէս ժամ յետոյ պիտի ջանային Սվէթի-Նիքօլայի ստորոտից վրայէն վեր ելնել աննշմարելի կերպիւ եւ համանգամայն երեք կողմանէ։ Առաջին ջոկն դէպ ի հարաւային արեւելեան կողմն պիտի երթար եւ պիտի ջանար պարեխներէն վեր ելնել՝ ռուսական մարտկոցին եւ հարաւային արեւելեան զառիվեր անկեան մէջ տեղէն. Երկրորդ ջոկն հարաւային արեւմտեան զառիվեր անկիւնէն վեր պիտի ելնէր, եւ երրորդն դարձեալ հարաւային արեւմտեան կողմէն աւելի հեռուստ պիտի ջանար լերան գագաթն հասնիլ՝ ստորոտից մէջ փոքր ինչ խոռոչացեալ տեղէ մը վեր ելնելով։ Երբ այս երեք յառաջընթաց ջոկերն բարձրաւանդակին վրայ ժամանէին՝ անոնց օժանդակութիւն պիտի լինէր ռուսական դրից դէմ ընդհանուր յարձակմամբ։ Ռէճէպ փաշայի յանձնուած էր արեւելեան եւ հարաւային կողմերէն յարձակիլ. Սալիհ փաշա հարաւէն եւ արեւմտեան հարաւային կողմէն պիտի յառաջէր, եւ Վէյսէլ փաշա՝ արեւմտեան եւ հիւսիսային արեւմտեան կողմերէն։ Իւրաքանչիւր զօրավար իւր հրամանատարութեան ներքեւ վեց վաշտ ունէր։ Գլխաւոր ճամբարին մէջ ուրիշ չորս վաշտեր ի պահեստի կալով՝ պատրաստ էին ամեն պատահականութեանց առաջքն առնլու։ Այս յառաջագիծն լաւ մտածեալ էր․ բայց պահեստի զօրքն գլխաւոր ճամբարին մէջ եւ ճակատատեղէն երկու փարսախ հեռի ձգելն գէշ էր։ Սակայն եւ այնպէս քիչ մնաց յաջողութիւն ձեռք պիտի բերուէր․ Երբ Ռէճէպ

փաշա ազնուաբար գործ չունենէր, Շիփքա առնուած էր ։

Կէս գիշերուն մէկ ժամ անցած՝ կամաւորք մեկնեցան գլխաւոր ճամբարէն, որ դարձեալ հին գերեզմանոց եղեր էր Շիփքայի եւ Սէնէվօյի մէջ տեղ ։ Երկու ժամ գնալ հարկ էր լերան մէջ տաճկական կայաններն հասնելու համար ։ Կէս գիշերէն երեք ու կէս ժամ յետոյ ջոկերն հեռացան այս տեղերէն իրենց յառաջացեալ կողմերն երթալու համար ։ Առաջին ջոկն Րէճէպ փաշայի ճամբարէն դուրս ելաւ. սորա ճանապարհն ամենէն կարճն էր. երկրորդ ջոկին մէջ կը գտնուէր իրբեւ կամաւոր՝ անգղիացի հարիւրապետ Սըր Պէլմըէլ, որ այն ժամանակ Տաճկաց մէջ հազարապետ էր. երրորդ ջոկն՝ որոյ ճանապարհն ամենէն աւելի երկար էր, դումապետ Համոնի հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր ։

Զօրաց ճանապարհ ելնելու պահուն լուսինն արդէն հորիզոնէն վար իջեր էր, եւ աստեղաց լուսոյն հազիւ հազ կը նշմարուէր Սվէթի-Նիքօլայի եռանկիւնի եւ սեպ ձեւն ։

Առաջին ջոկն դեռ ճանապարհին կէսն հասած չէր բուն սարին ստորոտն, երբ Փօտօլիոյ գումարտակին 2րդ եւ 3րդ դասակներն՝ որ այն կողմն պահպանութիւն կ'ընէին, նշմարեցին զայն եւ սկսան սաստիկ կրակ ընել ։ Այս գնդակներու տարափէն յարձակողք չվրդովեցան եւ իրենց յանդուգն խաղացքը շարունակեցին յամր կերպիւ, բայց առանց կանգ առնելու ։ Սոյն զինուորք փորձ էին լեռնային կռիւներու, վասն զի արդէն Գարատաղի, Պօսնիոյ եւ Սերվիոյ մէջ այնպիսի կռիւներ ըրած էին, վասն որոյ շատ լաւ գիտէին տեղւոյ ելեւէջներուն մէջ գործել. իրենցմէ շատերն եւս կատուի պէս կը մագլցէին ։ Տաճիկներն անդրադարձութիւն չըրին մէկէն, բայց ժայռէ ժայռ կ'ոստնուին հրացաններն իրենց գլուխներէն վեր բարձրացնելով, կամ սարերուն մէջէն կը սողոսկէին սարին վրայ հասնելու համար ։ Ռուսք անոնց վրայ կը խոյանային եւ այն գիրկընդխառն կռիւներէն մին կըսկսէր որ քիչ անգամ կը պատահին արդի պատերազմաց մէջ եւ շատ մորդախանձ կը լինին ։ Տաճիկներն ոտքով եւ ձեռքով կը փակչէին պարսպին խութաքարերուն, մինչդեռ Ռուսք հրացանաքնով, սուինով կամ սրով զանոնք կը հարուածէին. յարձակողներէն շատեր ժայռերուն վրայէն կը թաւալէին եւ ստորոտն հասնելով կը ջախջախուէին, բայց իրենց ընկերներն հոգ չէին ըներ անոնց աներեւոյթ լինելուն վրայ ։ Մահմետական զինուորն իւր կենաց չխնայեր եւ անսովոր ընդդիմութեամբ կը կը կռուի ։ Թուրքեր կային որ Ռուսաց հրացաններն սուինէն վար կ'ըմբռնէին, եւ այս կերպիւ լերան գագաթն կ'ելնէին՝ այն տեղերը պաշտպանող մարդոց ձեռօք ։ Երբ իրենցմէ մին լաւ անկայ գտնէր, ընկերներէն երեքն չորսն իւր ուսերուն վրայ կ'ելնէին մինչեւ կատարն հասնելու համար՝ իրարու ուս տալով ։ Թշնամիք միմեանց մազերէ կը բռնէին, ձեռքով եւ ոտքով հարուածներ կուտային, եւ մինչեւ անգամ ակռաներով զիրար կը պատառէին ։ Կարեվէր խոցեալ բազմաթիւ Տաճիկներ իրենց կարկամեալ բազկաց մէջ ռուս մը բռնելով՝ անոր հետ պարսպէն կը թաւալէին ։

Փօտօլիոյ երկու դասակներն չորս սպայ եւ բազմաթիւ զինուոր կորուսանելով՝ պարտաւորեցան ետ քաշուելու. հետեւակ զօրաց 14րդ հասուածին հրամանատար Փէթրուշէվսքի հասուածապետն այս յարձակման լուրն առնլով՝ Տուխնին գումապետէն, որ Սվէթի-Նիքօլա լեռը պաշտպանող զօրաց հրամանատար էր, այն լեռնէն վեր հանել տուաւ Ժիթօմիրի գումարտակէն երկու դասակներ, որք գիշերային պահպանութեան համար ի պահեստի կըսպասէին Սվէթի-Նիքօլայի ստորոտն ։ Տուխնին գումապետն դասակներէն մին ըրկեց Փօտօլիոյ գումարտակին

որձակոմարտներուն օգնելու համար։ Նոյն պահուն՝ 8րդ գնդին հրամանատար Ռուսէցքի զօրավարն՝ որ Տիփքոյի պաշտպանութեան մասին հսկելու համար կրճին մէջ կը գտնուէր, անձամբ կռուատեղին հասնելով, Միթօմիրի գումարտակին հրամանատար Թիաժէլնիքով գումապետին հրաման ըրաւ Սվէթի-Նիքօլա լեռան վրայ ղրկելու նոյն գումարտակին 2րդ եւ 3րդ վաշտերուն միացեալ չորս դասակներն։

Այլ ճակատամարտն յոյժ սաստկացած էր, վասն որոյ զօրագլուխն Վօլհինիոյ գումարտակէն առձեռնպատրաստ գըտնուած երկու դասակներ նոյն ժամայն լեռան վրայ ղրկեց՝ Թիաժէլնիքովի ժամանելուն սպասելով։ Սվէթի-Նիքօլա լեռան պաշտպաններն եւ իր քով հասած զօրավիգներն այն ժամանակ կրակ ըրին համանգամայն Տաճկաց առաջին ջոկին դէմ, եւ մեծ կորուստ պատճառեցին. բայց սոքա զարմանալի արիութեամբ եւ յամառութեամբ շարունակեցին լեռնէն վեր ելնել. առափայից մէկ մասին տիրեցին եւ սկսան անոնց վրայ պատնէշներ կանգնել իրենց հետ բերած կողովներով եւ ոջիններով։ Փօտօլիոյ գումարտակէն երկու դասակներ Միթօմիրի գումարտակէն մէկ դասակին օժանդակութեամբ՝ սոցա վրայ խոյացին առափայից մէջէն վանելու համար զանոնք. երկու գահավանդներու մէջտեղ եղած նեղ պարանոցէ մը անցնելու ստիպեալ էին այս դասակներն, վասն որոյ շատ կորուստ կրեցին, եւ մեծ արիութեամբ երեք անգամ դուրս տալով երիցս ետ մղուեցան։

Սակայն մինչեւ այն ժամանակ առանձինն յարձակում ընող ջոկն յայտնապէս անկարող էր տոկալու։ Ռուսաց թիւն հետզհետէ կը բազմանար, եւ կողմնակի կրակ ընելով Տաճկաց վրայ զանոնք գընդակներու տարափի մը ներքեւ կ՚ընկճէին։ Տասնի չափ Թուրքեր հասան մինչեւ լեռան գլուխն, բայց Ռուսք մի առ մի վար նետեցին զանոնք։ Նոյն պահուն տեսնուեցաւ որ յարձակողաց ոյժն սպառած էր. որդէն երկար ժամանակէ ի վեր Արաբներն, պաշը-պօզուղներն եւ Չէրքէզներն մաշուած էին։ Միայն կանոնաւոր զօրքն էր մնացած, որոց թիւն եւս նուազեալ էր։

Յանկարծ Սվէթի-Նիքօլա լեռան հարաւային արեւմտեան կողմէն ահագին կերպիւ «Ալլահ իլ՝ Ալլահ» գոչելու ձայն մը կը լսուի եւ հրացաններու սաստիկ պարպումն մը։ Ռուսք յանկարծակիի գալով՝ այս նորեկ հակառակորդաց դէմ կը դառնան եւ Տաճկաց առաջին ջոկն վերակազմուելով՝ ժամանակ կը գտնէ լեռան հարաւային արեւելեան արտեւանին վրայ ելնելու։

Երկրորդ ջոկն՝ որոյ՝ լեռան հարաւային արեւմտեան կողմէն վեր ելնելու պաշտօն ունենալն գրեթէ անհաւատալի բան մը կը թուի, մինչեւ գագաթն հասեր էր առանց ռուս զինուորներէն նշմարուելու։ Սոքա չէին կարծեր թէ այս կողմէն յարձակում մը կը լինի, վասն զի նոյն ղաւիթափէն վեր ելնելն անհնարին բան կը նկատուէր։

Նոյն պահուն արեգակն հորիզոնէն վեր կը բարձրանար ճաճանչագեղ։ Տաճիկներն չորս կողմերնին նայուածք մը կը ձգեն. երրորդ ջոկն տակաւին հասած չէր։ Բայց աշխատանօք այն եւս երեւան կուգայ եւ մեծ կորուստ կրելով լեռան գագաթը կ՚ելնէ՝ երկրորդ ջոկէն կէս ժամ յետոյ։ Համտի պէյի հրամանատարութեան ներքեւ գտնուած նոյն երրորդ խումբն որոյ ճանապարհն ամենէն աւելի դիւրին էր՝ շուտով նշմարուեր էր ռուս զինուորներէն եւ մարդախանձ կրակի մը ենթակայ եղեր։ Ռուսք լեռան գլխէն երիցս անոր վրայ նետուեր էին. բայց յարձակողք լաւ նշան առնելով եւ կրակ ընելով՝ ստիպած էին զանոնք իրենց առաջին տեղերը դառնալու։ Համտի պէյ անկաւ, բայց իր մարդիկն նպատակին հասան։



ՍԻՒԼԷՅՄԱՆ ՓԱՇԱ ԵՒ ԻՒՐ ՍՊԱՅԱԿՈՅՏՆ ԿԸ ԴԻՏԵՆ ԿԱՄԱՒՈՐԱՑ ՅԱՐՁԱԿՈՒՄՆ ՍՎԷԹԻ-ՆԻՔՕԼԱ ԼԵՐԱՆ ՎՐԱՅ

Այս կերպիւ, արեւը ծագելէն կէս ժամ յետոյ՝ յարձակող զօրաց երեք ջոկերն Սվէթի-Նիքօլա լերան գագաթին հասած էին եւ վրան կարմիր կիսալուսնով սպիտակ դրօշ մը տնկած՝ որ Տաճկաստանի վիրաւորելոց օժանդակ ընկերութեան ընտրած նշանն էր։ Պատերազմական հեռագրի միջոցաւ լուր մը հասաւ Տաճկաց զօրանոցին՝ թէ «Շիփքա մերն է։» Այլ եւս ոչ ոք կը տարակուսէր այն յանդուգն ձեռնարկութեան յաջողած ըլլալուն վրայ։ Սուլէյման փաշա ամբողջ գիշերն անձկութեամբ դիտեր էր կամաւորներուն խաղացքն այն լերան վրայ որ հրացաններու եւ թնդանօթներու կրակովն աշխարհին հրախաղական տօնակատարութեան մը կը նմանէր։ Այն հեռագիրն առնլուն պէս՝ այլ եւս ուրախութենէն չկրցաւ ինքզինքն զսպել. ճամբային մէջ գնաց եկաւ աւետիս տալով բոլոր սպայից, եւ շատ մը հեռագիր զրկել տուաւ ի Կոստանդնուպոլիս ուրկէ բոլոր Եւրոպայի մէջ տարածուեցաւ այն լուրն։ «Վերջապէս, կ՚ըսէր ինքնիրեն Թուրք զօրավարն, միթէ իմ յամառութիւնս չարդարանար այս յաջողութեամբ, պէտք ի կայսրութեան սիրտը տանող ճանապարհն որ բաց էր Ռուսաց առջեւ՝ ահաւասիկ մեր ձեռքն է։» Բայց տակաւին ձեռք անցուցած չէր զայն։

Ինչպէս որ յառաջագոյն խօսք եղած էր, Սալիհ փաշա եւ Վէյսէլ փաշա կամաւորներն Սվէթի-Նիքօլա լերան վրայ տեսնելնուն պէս՝ յարձակեցան Ռուսական դիրք դէմ, առաջինն հարաւէն եւ երկրորդն արեւմտեան կողմէն։ Սալիհ փաշա իւր վեց վաշտերովն յառաջ գնաց Շիփքայի արահետին վրայէն եւ պողպատիկ թնդանօթաց մարտկոցին դէմ յարձակումն ըրաւ։ Փօտօլիոյ գումարտակին մէկ դասակ, Ժիթօմիրի գումարտակէն երկու դասակներ եւ Վօլհինիոյ գումարտակէն դասակ մը մէկէն նորա դէմ ըլլկուեցան։ Այն չորս դասակներն միահաղոյն ձիգ թափելով եւ օգնութիւն եւս գտնելով թնդանօթաձիգ զօրքէն որ ոտնձայն եղանակաւ գործ կը տեսնէին, Տաճիկները վանեցին։ Թնդանօթաձիգ զօրաց 14րդ սահին 1ին չարքն՝ որոյ հրամանատարն՝ այն է կայսեր համհարզներէն զօրապետ Մէշչէրսքի իշխանն սպաննուեցաւ ի սկզբան կռուոյն, մեծ կորուստ պատճառեց նոցա՝ երկաթի բեկորներ արձակելով։ Իւր սպայից մին՝ այն է Սիտօրին փոխհարիւրապետն տեսնելով որ պատուարին ետեւէն անկարելի էր կրակ ընել յարձակողաց վրայ, թնդանօթներն ի բացի զետեղել տուաւ՝ գնտակներու տարափի մը ներքեւ, եւ մէկ քանի անգամ լաւ ուղղութեամբ երկաթի բեկորներ արձակելով՝ Տաճկաց ջոկերը ցրուեց, որք իրենց յարձակմունքը կը կրկնէին բարեկարգութեամբ եւ բուռն թափով։ Սիտօրին փոխհարիւրապետն նոյն պահուն երկու տեղէ վիրաւորուեցաւ եւ հարկ եղաւ զինքն հեռացնել։

Արեւմտեան կողմն Վէյսէլ փաշա ըսելեալն իւր զօրքն ջոկ ջոկ բաժնեց անտառին մէջ, եւ սոքա արշալուսոյն յառաջելին դէպ ի Վօլհինիոյ գումարտակին եօթն դասակներն, որք Կանաչ լերան պարիկները կը գրաւէին։ Ակնաէյցքի փոխ-գումապետն պահանորդաց կողմանէ իմանալով թէ անտառին մէջէն ձայներ կը լսուէին, պատրաստուեցաւ Տաճկաց դէմ դնելու։ Արձակամարտից 1ին դասակին հրամանատար Օսթափով հարիւրապետն թոյլ տուաւ նոցա որ յիսուն քայլ միայն չափ մօտենան եւ հրացաններն միահաղոյն արձակել տուաւ, որով Թուրքերն ընկրկեցան։ Փօտօլիոյ գումարտակին մէկ դասակն՝ որ Սվէթի-Նիքօլա լերան վրայ զետեղեալ էր, եւ թնդանօթաձիգ զօրաց 14րդ սահին 4րդ չարքն այն ժամանակ կրակ թափեցին Վէյսէլի զօրաց վրայ։ Տաճիկներն երեք անգամ զայթ տուին եւ երեք անգամ ետ մղուեցան այն գնտակներէն զորս հետեւակազօրն այլ եւ այլ կողմանէ իրենց վրայ կը թափէր, եւ մանաւանդ 4րդ թնդանօ-

թաշարէն արձակուած եւ երկաթի բեկորներով լի ռմբարտակներէն. այս հետեւակազօրն եւ թնդանօթաշարն Հօֆման գումապետին հրամանատարութեան ներքեւ կը գտնուէին :

Առաւօտեան ութերորդ ժամուն՝ Տաճիկներն ամեն ուրեք յետս մղուած էին, բայց միայն Սվէթի-Նիքօլա լերան վրայ տակաւին կը դիմանային։ Մինչդեռ Շիփքայի հարաւային եւ արեւմտեան կողմերն զօրքն կատաղաբար կը կռուէր, ինչ էր ըրած Ռէճէպ փաշա որ պիտի յարձակէր վեց վաշտով՝ ամենէն ուժը դիւրամատոյց գտնուող հարաւային արեւելեան ռուսական դրից դէմ։ Գիշերն ընդունկէց անօթներն քիչ գործ տեսած էին, բայց երբ թնդանօթաձիգներն կարող եղան Տաճիկները նշմարելու եւ նշան առնելու, ռուսական մարտկոցներէն դժոխային կրակ մը թափիլ սկսաւ : Հարաւային արեւելեան թնդանօթներէն մանաւանդ կատաղաբար եւ անընդհատ ռումբ կ'արձակուէր, եւ առոնք շատ նպաստեցին Սալիհ փաշայի յարձակող զօրքն յետս մղելու։ Կամաւորք՝ որ Սվէթի-Նիքօլա լերան վրայէն ճակատատեղին իրենց ոտից ներքեւ կը տեսնէին իբրեւ համատեսարան, մէկ ակնարկով վերահասու եղան գործոց եւ իրենք իրենց ըսին թէ յաջողութիւն ձեռք պիտի բերէին, եթէ կարող լինէին այն թընդանօթները լռեցնել եւ Ռէճէպի յարձակումը դիւրացնել. այլ նոյն բարձունքէն ինչպէս իջնելու էր մինչեւ այն դիրքն ուր ռուսական թնդանօթաշարք զետեղեալ էին։ Այս բանն ընելու չափ բազմաթիւ չէին. բայց կարէին ռուս թնդանօթաձիգներն իրենց գնդընկէց անօթներուն վրայ տապալել եւ Ռէճէպ փաշայի ջոկերուն ժամանակ տալ հասնելու։ Վասն որոյ կամաւորք կատաղաբար հրացան արձակեցին ռուս թնդանօթաձիգներուն վրայ եւ այնչափ ըրին որ մէկ ժամ յետոյ՝ բաց ի մէկէն՝ բոլոր թնդանօթաշարից կրակը դադրած էր։ Գործ տեսնելու բուն ժամանակն էր, որ եթէ անցնէր, այլ եւս բան մը չկարէր լինել։ Եթէ Ռէճէպ փաշա հասնէր, անտարակուսելի էր յաջողութիւնն։ Բայց Ռէճէպ չէր ժամաներ եւ կամաւորք հուսկ ապա կը հասկնան որ քօշ փաշան հանդարտ կը սպասէ իւր ճամբարին մէջ, Վէյսէլ եւ Սալիհ յետս մղուած են եւ ոչ ոք կուգայ իրենց օգնելու :

Սակայն առաւօտեան իններորդ ժամուն անվեհեր կամաւորք՝ թէ եւ անօգնական ձգուած, կը գրուէին տակաւին այն քարածայռն որում ափրած էին՝ պատրաստուելով դիմադրելու ամբողջ ռուսական բանակին որ այլ եւս կարող էր բոլորովին ազատ շարժում ընելու, վասն զի ոչ Վէյսէլ փաշա եւ ոչ Սալիհ փաշա երկրին յարձակում կ'ընէին, եւ Ռէճէպ միշտ անշարժ կըսպասէր։ Կամաւորաց դէմ գըտնուող դասակներն սարսափելի կորուստ կրած էին եւ զիրենք վանելու համար ոյժ տք եղած զօրութիւնը չունէին։ Տուխոնին գումապետն՝ Ժիթօմիրի գումարտակին վերաբերեալ երկու դասակներէ զատ պահեստի զօրք չունէր, եւ չէր համարձակեր զանոնք կռուոյ մէջ մուծանել, երբ զօրավիգ չէր հասած. Ռատեցքի զօրավարն այն ժամանակ Սվէթի-Նիքօլա լեռը ղրկեց Թիաժէլնիքով գումապետն Ժիթօմիրի գումարտակէն մէկ վաշտով։ Անդէն յարձակում ընելու համար խումբ մը կազմուեցաւ Ժիթօմիրի գումարտակին երկու դասակներէն եւ Վօլհինիոյ գումարտակին մէկ դասակէն. նախ Թիաժէլնիքով գումապետն կ'առաջնորդէր դայթ տուող զօրաց, եւ յետոյ երբ այս սպայն վիրաւորեցաւ, գումապետ Խիլքով իշխանն առաջնորդեց, եւ սքանչելի կերպիւ յարձակում մ'եղաւ. Տաճիկներն յուսահատական դիմադրութիւն մ'ընելէ յետոյ՝ քարածայռէն վար մղուեցան. շատեր տապաստ ինկան այն տեղ եւ բազմաթիւ վիրաւորք փախչելու ժամանակ գնդակէ զարնուելով կորան. լերան բովանդակ զառիթափն դիակներով ծածկուեցաւ :

Սիւլէյման փաշայի զօրաց այս նոր յարձակումն առաջիններուն պէս անյաջող եղաւ ուրեմն։ Հարկ է ըսել՝ որ այս անգամ Թուրք զօրավարն իւր համբաւոյն արժանի ցոյց չտուաւ ինքզինքն։ Փոխանակ անձամբ առաջնորդելու յարձակող զօրաց՝ ինչպէս սովորութիւն ունէր ընելու, կ'երեւի թէ թոյլ տուաւ փաշաներուն որ ըստ կամի գործեն, երբ յարձակման համար լինելիք կարգադրութիւնք որոշուեցան։ Արդիւնքն եղաւ որ խիստ գէշ մարտ մղուելով, սքանչելի Թուրք զօրաց պանծալի քաջութեանն հակառակ՝ ձախողութիւն եկաւ յառաջ։ Թէեւ բազմաթիւ վաշտեր բանակեալ էին Շիփքայի դիմաց, սակայն եւ ոչ մին ջանաց կամաւորաց օգնութեան երթալու, որ վեց ժամ դէմ դրին իրենցմէ շատ աւելի բազմաթիւ զօրաց։ Կամաւորաց մէջէն ոմանք բնաւ չուզեցին տեղի տալ եւ հրացանաւ կռուեցան Ռուսաց հետ մինչեւ կէս օրէն յետոյ չորրորդ ժամն. — կռիւն սկսած էր առաւօտեան չորրորդ ժամուն կամ կէս գիշերէն չորս ժամ յետոյ։ Ռուսք ստիպուեցան ճնճղկան պէս զարնելու զանոնք այն պարսպներուն վրայ ուր ելած էին, կամ սուինով յետս մղելու, եթէ շատ մօտ գնային նոքա։

Կէս օրէն չորս ժամ յետոյ՝ ամբողջ կռուատեղն ուր այնքան արիւնհեղութիւն եղած էր, կրկին Ռուսաց ձեռքը կը գտնուէր։ Կամաւորք իրենց երեք մասէն մին կորուսած էին՝ տապաստ անկեալներն եւ վիրաւորներն ի միասին հաշուելով, եւ տաճիկ զօրաց ամբողջ կորուստն 3,000 մարդէ աւելի էր։ Ռուսաց կորուստն եւս զգալի եղած էր, մանաւանդ Սվէթի-Նիքօլա լերան վերստին տիրելու համար ճիգ թափուած ժամանակ։ 31 սպայք եւ հազարէն աւելի զինուորք անկեալ էին։

Օսմանեան կառավարութիւնն՝ որ Սիւլէյման փաշայի կողմանէ տրուած առաջին տեղեկութեանց հաւատալով բովանդակ Եւրոպայի հեռագրաւ ծանուցեր էր Շիփքայի կիճին առումն, պարտաւորեցաւ ձախողութիւնն եւս զեկուցանելու հետեւեալ հեռագրաւ, զոր արտաքին գործոց նախարարն ուղղեց օտար ազգաց քով Թուրքիոյ ունեցած դեսպանաց.

«Կոստանդնուպոլիս, 19 սեպտեմբեր, ժ. 5, ր. 10.

«Շիփքայի կիճին մէջ Սվէթի-Նիքօլայի ամրոցն՝ որոյ մեր զօրաց ձեռօք գրաւումն ծանուցի երէկ, դարձեալ թշնամւոյն ձեռքըն անցած է։ Մեր զօրաց ջոկերէն այն որ յառաջուստ նոյն կերտուածին մօտեցեր էր. աջէն եւ ձախէն, գործող ուրիշ երկու ջոկերու կողմանէ ձեռնտուութիւն եւ նպաստ պիտի գտնէր։ Դժբաղդաբար ռազմագիտական խոչընդոտներ սոցա խաղացքն յապաղեցին։

«Ռուսք օգնութիւն ստանալով եւ նայելով որ թուական առաւելութիւնն իրենց կողմն էր, յարձակողական դարձ մը ըրին որոյ առաջ մեր անօգնական զօրքն ստիպուեցաւ նահանջելու եւ իւր նախկին դիրքը բռնելու՝ թշնամեաց մեծ կորուստ պատճառելէ յետոյ։ Սիւլէյման փաշա չը տարակուսիր թէ քիչ ժամանակէն Սվէթի-Նիքօլան կրկին պիտի առնու եւ կիճին պիտի տիրէ բոլորովին։»

Այս ձախողութեան վրայ՝ որոյ պատճառն սպայից ապիկարութիւնն էր միայն, Պալքանաց խոնջեալ եւ վհատեալ բանակն տխրութեամբ եւ դժնդակ կասկածով լցաւ։ Ինչպէս մէն մի պարտութենէ յետոյ կը լինէր, այս անգամ եւս մատնութեան զրոյցներ եղան. սակայն Րէճէպ փաշա պատերազմական խորհրդոյ մ'ատեանը չելու պատասխանատու լինելու իւր զարմանալի անշարժութեանն համար։ Ամսոյն 17ին երեկոյին՝ Տաճկաց ճամբարին մէջ տարաձայնութիւն մը կար թէ Ռուսաց քով զօրավիգ հասած էր եւ թէ այս անգամ նոքա յարձակում մը պիտի ընէին։ Այս պատճառաւ հետեւեալ օրն բաւական սաստիկ սարսափ մը տիրեց Տաճկաց մէջ։

Սակայն Ռուսք ջանք չըրին Թուրքերը վանելու այն տեղերէն զոր գրաւած էին նոքա իրենց շուրջն, այլ առժամայն անցքն պահպանելու միայն նայեցան ։ Վասն որոյ երկու կողմանք իրարու դէմ կացին այնպէս՝ ինչպէս որ էին առաջ. Տաճիկներն կիրճը կը պաշարէին, — եւ այն խիստ թոյլ կերպիւ, — եւ Ռուսք կը պաշտպանէին զայն։ Սեւլէյման փաշա ամսոյն 20ին նոր ռմբկէններ զետեղել տուաւ եւ ռմբակոծութիւնն կրկին սկսաւ՝ մանաւանդ Սվէթի-Նիքօլա լերան դէմ։ Ամսոյն 21էն մինչեւ 27ն՝ բազմաթիւ հրագունդք արձակուեցան ափափայից վրայ ուրկէ վար կը գլորէին՝ իրենց առջեւ գտնուողներն սպաննելով եւ վիրաւորելով ։ Առաջին օրերն տասնեւհինգ մարդիկ անկան այսպէս, բայց զինուորք շուտով սովորեցան այս նոր տեսակ ռմբակոծութեան դէմ ինքզինքնին պահպանելու, եւ Տաճիկներն մէկ գիշերի մէջ մինչեւ 200 հրագունդ արձակեցին առանց վնաս պատճառելու, մինչդեռ ռուսական մարտկոցներուն վեց բթաչափ տրամագծով ռմբակէններն Տաճկաց բանակին զգալի կորուստ տուին, եւ ամսոյն 27ին անոնց վառօդանոցներէն մին պայթեցուցին ։

Տաճիկներն նայելով որ այս ռմբակոծութիւնն ապարդիւն էր եւ ձանձրանալով՝ նոր զբաղմունք գտան իրենց՝ Թըշնամւոյն կացութիւնը դժուարին ընելու համար։ Սկսան ցերեկ ժամանակ ռմբակոծել այն ճանապարհն ուրկէ կրճին պահնակաց պաշար բերող սայլերն կ'անցնէին։ Երբ սայլերէն մէկուն ռումբ մը դիպելով՝ Ռատէցքի զօրավարն վտանգն իմացաւ, հրամայեց որ պաշարներն գիշերային բերուին ։ Այն ժամանակ Տաճիկներն իրենց թնդանօթները կատարեալ ճշդութեամբ ուղղեցին դէպ ի ճանապարհին այն շըրջանն որ ամենէն աւելի մօտ էր իրենց դրից, եւ երբ սայլի ձայն կը լսէին, բոլոր թնդանօթներով կրակ կ'ընէին մթութեան մէջ. բայց այս ռմբաձգութիւնն մեծ վնաս մը չպատճառելուն համար՝ քիչ ժամանակէն զանց ըրին եւ զայն ։

Հոկտեմբերին ցուրտն եւս սկսաւ. տաճիկ զինուորներն՝ որք հազիւ հագուստ մը ունէին եւ բանակելու համար պէտք եղած կազմածներէն զուրկ կը գտնուէին, պարտաւորեցան իրենց գրաւած բարձանց վրայէն մեկնելու եւ աւելի ցած տեղեր իջնելու, ուր ցուրտն այնչափ սաստիկ չէր ։ Սակայն դարձեալ իրենց հակառակորդներն անհանգիստ ընելէ չըդադրեցան, բայց օդին գէշութեան պատճառաւ գործողութիւնք ի հարկէ այնչափ յարատեւութեամբ եւ ժրութեամբ չէին կատարուեր ։ Իսկ ռուսական պահակագունդն Շիփքայի կրճին մէջ զետեղուեցաւ՝ ձմեռն անցընելու համար պէտք եղած զգուշութեամբք եւ կարելի եղածին չափ անձնդիւրութեամբք, եւ Հոկտեմբեր ամսոյ մէջ ցուրտն առաւել սաստկանալուն պէս՝ 20,000 մուշտակ ղրկուեցաւ եւ 15,000 զոյգ մոյկ (ճիզմէ) ։

# Գլուխ Երեսունեւմէկերորդ

## ՃԱԿԱՏԱՄԱՐՏ ՑԷՐՔՕՎՆԱՅԻ . — ՆԱՀԱՆՋ ԵՒ ԱՆԿՈՒՄՆ ՄԷՀԷՄՄԷՏ-ԱԼԻԻ

### ՃԱԿԱՏԱՄԱՐՏ ՑԷՐՔՕՎՆԱՅԻ

Մէհէմմէտ-Ալի թէ եւ առաջին անգամ Ալաջայի կողմն յաղթական հանդիսանալով եւ չորս կռիւներու մէջ յաջողութիւն ձեռք բերելով մինչեւ Սաւրինա հասեր էր, սակայն քիչ ժամանակէն Սիւլէյման փաշայի անհնազանդութեան պատճառաւ վհատելով, այլ եւս յաջողութիւն ստանալն հնարաւոր չէր կարծեր, եւ անմտութիւն կը համարէր Պիէլայի առջեւ լաւ ամրացեալ Ցարէվիչի բանակին դէմ յարձակիլ, քանի որ իւր զօրացթիւն հազիւ թշնամեաց թուոյն կը հաւասարէր եւ ինքն անոնց չափ թնդանօթ չունէր։ Վասն որոյ Լօմի հովտին մէջ մնալով եւ տատանելով կը գտնուէր իբրեւ զօրավար մը որ ապահով չէ իւր մտաց թելադրութեանն համեմատ գործելու։ Եթէ իրեն մնար, պիտի քաշուէր իւր նախկին դիրքն վրայ, բայց չէր համարձակեր, վասն զի հաւատացեր էր որ պատերազմական խորհուրդն կամ Տօբը-Տօբան հաճութիւն չունէր, չէր իշխեր նաեւ յառաջել, վասն զի գիտէր որ պիտի յաղթուէր. այսպէս տատանմանց միջոցին՝ բուռն հրաման մը հասաւ Տօբը-Տօբայէ կողմանէ թէ՝ «Յարձակեցէք Պիէլայի վրայ,» եւ վերջ տուաւ իւր երկմտութեանց։

Այս հրամանին հնազանդելով՝ որոշեց Ռուսաց գիծը խզելու ջանալ՝ Զայըրքէօյի կողմանէ, եւ յաջողած ժամանակ՝ Տրակօնօվօյէն անցք բանալ մինչեւ Եանթրայի ձորն, եւ Պիէլայի դիրք ետեւն անցնիլ աջակողմէն շրջան մ'ընելով։ Այս կողմէն յառաջելով կարելի էր նաեւ Թռնովայի դէմ սպառնալ, եւ ձեռնտու լինել Սիւլէյման փաշայի, եթէ յաջողէր ան հուսկ յետոյ Պալքաններն անցնելու։ Զայըրքէօյ ճիշդ այն կէտն էր ուր 11րդ գունդն Ցարէվիչի բանակին էր կցուած. անդ կը գտնուէին ի միասին զօրաց այլ եւ այլ խումբեր, ընդամենն հետեւակազօրաց երեք ու կէս սահ եւ հեծելազօրաց մէկ սահ։ Նոյն ջոկատին կ'առաջնորդէր հեծելազօրաց 11րդ հատուածին հրամանատար փոխ-զօրապետ Թաթիշեվ։

Մէհէմմէտ-Ալիի համոզեալ չլինելուն եւ վարանման նշաններն կը նշմարուէին նաեւ իւր յատակագծին մէջ։ Նա առաջին անգամ չկարաց թուական առաւելութիւն ունենալ իւր կողմն, եւ յոռի կերպիւ յարդարեալ ճակատամարտն աւելի յոռի կերպիւ մղուեցաւ։ Յարձակող զօրաց աջակցութիւն ընող չեղաւ, պահեստի զօրքն անշարժ սպասեց. երկու անգամ յաղթութիւնն Տաճկաց կողմը կ'երեւէր եւ երկու անգամուն եւս խոյս տուաւ, վասն զի յարձակող զօրքն անօգնական ձգուած էր թշնամեաց դէմ որոց քով անդադար զօրավիգ կը հասնէր։ Ցիրաւի այնպէս կը թուէր թէ զօրաղլուխն երկիւղ կըզգար յաղթելէ։

Զայըրքէօյէն մինչեւ Վէրպօվքա ձգեալ տեղեաց վրայ անկիւն ձեւացնող ռուսական դիրք առջեւ երկու գիւղակներ կային, այսինքն Գայանըգ եւ Նօրասան՝ որ Ցէրքօֆնայի փոքր եւս կը կոչուի։ Ռուսք յառաջագոյն ամրացեալ էին անդ, արձակմանց համար փոսեր եւ թնդանօթաձգաց համար պարկեններ բանալով։ Այն տեղն հասնելէ առաջ յոյժ դժուարին զա-

ռիթափէ մը վեր ելնել հարկ էր, եւ նոյն դիրքը շատ կէտերն՝ մանաւանդ դէպ ի կեդրոնն եւ ձախակողմն անտառներով եւ մացառներով պարտակեալ էին։ Ցէրքօվնայի դէմ Պէկ-Վէրպօվքա գիւղն այն գծին բանալին կը համարուէր։ Անդ էին Կօրչքով զօրավարին հատուածին այլ եւ այլ խումբերն, յորս կը գտնուէին նաեւ Փլէվնայի առջեւ արդէն նշանաւոր հանդիսացող Քուրսքի եւ Օրիլքի գումարտակներն։ Ռուսաց զօրքն 14 կամ 15,000ի չափ կար. Մէհէմմէտ-Ալի 12,000էն աւելի զինուոր չունէր։

Տաճկաց զօրքն՝ որ Մէհէմմէտ-Ալիի բանակին ձախ թեւը կը ձեւացնէին, Ցէրքօվնայի կողմն խմբեալ էին եւ անտառին մէջ ափեալ՝ Վէրպօվքայի, Պօճափունար-Եիւրիւքլէրի եւ Զայըրքէօյի դէմ։ Պահեստի զօրքն Օսէլքօվօյի կողմն էր։ Անձրեւոտ օդ մը պատճառ եղաւ յարձակման մէկ քանի օր եւս մնալուն. բայց սեպտեմբերի 21ին՝ արեգակն ճաճանչափել ծագելով ճանապարհներն իւր ջերմ ճառագայթներով ցամաքեցուց շուտ մը, եւ Մէհէմմէտ-Ալի կանուխ պատրաստութիւններ տեսաւ, այնպէս որ զօրքն, շարժուն անկելանոցներն եւ պահեստի ռազմամթերքն իրենց յատկացեալ տեղերը կը գտնուէին մետասաներորդ ժամէն առաջ։ Եգիպտոսի Հասան իշխանին գնդէն տասն վաշտեր կռուոյն մէջ գտնուեցան։ Հասան փաշայի սահն ի պահեստ սպասեց։ Սալիմ փաշայի հրամանատարութեամբ երեք վաշտեր յառաջ խաղացին թշնամւոյն աջ թեւին վրայ յարձակելու համար. Րիֆաթ փաշայի առաջնորդութեամբ չորս վաշտեր միջին խմբին դէմ գնացին, եւ Ալի-Րիզա փաշայի գլխաւորութեամբ երեք վաշտեր Ռուսաց ձախ թեւին դէմ պիտի գործէին. բայց չկարացին այս կողմն յաջողութիւն ստանալ, վասն զի թշնամիք բազմադոյն էին անդ, եւ օգնութեան ղրկուած եգիպտական ինն վաշտերն ճանապարհաց վիճակին պատճառաւ յամելով չհասուեցան։ Մէհէմմէտ-Ալի թշնամեաց դէմ ծայրէ ի ծայր յարձակում ընել տալով՝ կ'ուզէր փորձել թէ որն էր տկար կողմն եւ որոշեալ վայրկենին այն կողմը ղրկել պահեստի զօրքն որ դէպ յետոյս կը սպասէր։ Բայց իւր ըրած գէշ կարգադրութեանց պատճառաւ այս զօրքն օգնութիւն չկարաց ընել։

Ռուսք մէկ քանի օրէ ի վեր Ցէրքօվնայի մօտ Տաճկաց ըրած շարժմունքը տեսնելով՝ ամեն ժամ պատրաստ կը սպասէին եւ այն գիւղին դէմ 16 թնդանօթ զետեղած էին յարձակում եղած ժամանակ անդրադարձութիւն ընելու համար։

Մետասաներորդ ժամուն կամ կէս օրէն մէկ ժամ առաջ՝ կռիւն սկսաւ. Ցէրքօվնայի տաճկական հինգ մարտկոցներէն միահաղոյն կրակ թափելով, որք մինչեւ կէս օրէն մէկ ժամ յետոյ ռումբ արձակեցին, գլխաւորապէս Ռուսաց ձախակողմեան մարտկոցներուն դէմ՝ կարծել տալու համար թէ յարձակումն այն կողմէն պիտի լինէր. բայց Թաթիշեվ զօրավարն այս հնարքէն չխաբուեցաւ եւ հարկ չհամարեց ճամբարին մէջ մնացեալ զօրաց շարժում ընել տալ, երբ տակաւին Տաճկաց դիտաւորութիւնն յայտնի եղած չէր։ Նոյն միջոցին թուրք զօրաց ջոկերն խմբուեցան Ցէրքօվնայի մօտ՝ Ռուսաց 32 րդ սահրին 1ին թնդանօթաչարին ռմբաձգութեան ներքեւ, որ բաւական մեծ կորուստ պատճառեց իւր ճշդութեամբն։

Առաջին յարձակումն աջակողմէն եղաւ։ Ժամ մէկին՝ Սալիմ փաշայի արձակամարտներն երկայն գծի մը վրայ սփռուած լինելով՝ փոքր ինչ հեռի գտնուող զօրաց ստուար մասին աջակցութեամբն սկսան դուրս ելնել Եիւրիւքլէրի մօտակայ անտառներէն, եւ այս գիւղին միւս կողմն անցնելով հիւսիսէն ինչպէս նաեւ հարաւէն, վիշապազօրաց 2 րդ հեծելազօրն յետս մղեց եւ Փէրմի գումարտակին առաջին դասակին վրայ յարձակեցաւ, որոյ

արձակամարտք մէկէն քաշուեցան դէպ յայն կողմն ուր կը գտնուէր իրենց պահեստի զօրքն։ Հարիւրապետ Չէլօքայեվ իշխանն՝ թէեւ ռուսական միւս խմբերէն բոլորովին անջատ կը գտնուէր այսպէս, սակայն չմեկնեցաւ իր կայանէն. արձակամարտներն ետ քաշելէն յետոյ՝ Տաճկաց վրայ կրակ ընել տուաւ, բայց սոքա չարունակեցին վեր ելնել այն բլրէն զոր կը գրաւէր դասակն եւ անոր աջակողմէն շրջան մ՚ըրին։

Նոյն պահուն Տաճկաց դիտաւորութիւնքն այլ եւս յայտնեալ համարուեցան Թաթիշեվ զօրավարին համար. սորա ձախակողմն գտնուող Թուրքերն տակաւին անշարժ կըսպասէին. կեդրոնի Տաճկաց խումբն ցոյց մը միայն կ՚ընէր՝ Ցէրքօվնայի դիմաց համախմբեալ ռուս զօրքն զբաղեցնելու համար։ Վասն որոյ կը թուէր թէ բուն յարձակումն աջակողման դէմ էր. զօրավարն այն կողմ գնաց եւ Սալիմ փաշայի շուրջանակի շարժումը տեսնելով՝ շուտով կարգադրութիւններ ըրաւ։

Միխայլով փոխ-հարիւրապետն՝ որ 4րդ թնդանօթաչարին 2րդ հատուածին հրամանատարն էր, Եիւրիւքչէրի ճանապարհին վրայ յառաջ վարեց իր թնդանօթներն ձիոց ընդոստ արշաւմամբ, եւ փէրմի գումարտակին 1ին դասակին արձակամարտից գծէն առաջ անցնելով՝ իր դիմաց 150 քայլաչափ հեռի գտնուող Տաճկաց արձակամարտներուն չղթայն տեսաւ։ Ռուսական հատուածն ասոնց հոգ ընելու՝ թնդանօթներուն լծեալ ձիերն արձակեց եւ սկսաւ երկաթի բեկորներ տեղալ անոնց վրայ, որք պահ մը վարանեցան, բայց սակաւիկ մի յետոյ թնդանօթներուն վրայ խոյացան արիաբար։ Նոյն պահուն Տօմպրօվսքի հազարապետն վազեց Քուրուքի գումարտակին 3րդ վաշտովն, որ առանց հրացան պարպելու՝ անոնց վրայ նետուեցաւ հօ՛-ռռռ գոչելով եւ զանոնք փախստական վարեց։

Նոյն միջոցին Վիք գումարտակն եւ վիշապազօրք երեք հազարամէթրի չափ տեղէ կ՚անցնէին ձիավազ, եւ փոխանակ Սալիմ փաշայի զօրաց վրայ կողմնակի յարձակելու՝ ինչպէս հրաման եղած էր իրենց, ուրիշ արձակամարտներու դէմ գտնուեցան որք Ռուսաց աջակողմեան ծայրի խմբին ետեւն անցնելու նպատակաւ թանձրախիտ անտառէ մը դուրս կ՚ելնէին։ Մարդախանձ կրակ մը թափուեցաւ վիշապազօրաց վրայ. 3րդ եւ 4րդ հեծելադասուց մարդիկն ձիերէն վար իջան, եւ սոցա պաշտպանութեամբն՝ հեծելազօրու 18րդ թնդանօթաչարին մէկ հատուածն Անտրիանով երկրորդական հարիւրապետին հրամանատարութեան ներքեւ՝ զետեղուեցաւ արիաբար Տաճկաց պահեստի զօրքին մէկ քովն, որոց վրայ երկաթի բեկորներով լի ռմբարտակներ տեղաց, եւ զանոնք պահ մը տկարացուց. բայց Տաճիկներն կրկին յառաջ խաղացին, երբ իրենց քով զօրավիգ հասաւ, եւ վիշապազօրքն յետս մղեցին դէպ ի Զայըրքէօյ։

Թաթիշեվ զօրավարն Վիք գումարտակէն տեղեկութիւն առնելով այս եղածներուն վրայ, անմիջապէս իբրեւ զօրավիգ ղրկեց այն ալային՝ Քուրուքի գումարտակին 2րդ վաշտն, եւ տեսնելով որ Սալիմի զօրաց ստուար մասն Եիւրիւքչէրի կը մօտենայ, այն կողմն եւս երկու անխոնջ վաշտ ղրկեց մէկ թնդանօթաչարիւ, որոց առաջնորդեց անձամբ Կօրչքով զօրավարն կռուոյն մէջ, մինչդեռ զօրագլուխն ձախակողմեան խումբին քով կ՚երթար, որոյ վրայ Այի-Րիզա դեռ նոր յարձակում կ՚ընէր։ Եիւրիւքչէրի կողմն առանձինն կռուոյն ծանրութեան տանող Ռիլոքի 3րդ վաշտին կացութիւնն շատ դժուարին եղած էր՝ մինչեւ զօրավիգներն հասած ժամանակն։ Սալիմ փաշա անդադար նոր խումբեր կը ղրկէր դայթ տուող զօրաց նպաստելու համար, եւ ռուսական վաշտն բոլորովին շրջապատուելու վրայ էր։ Կօրչքով զօրավարին

ժամանելուն վրայ հաւասարակշռութիւնն վերահաստատուեցաւ, եւ կատաղի կռիւ մը սկսաւ Նիւրիւքլէրի գիւղին բարձրաւանդակի մը վրայ, զոր մերթ Ռուսք, մերթ Տաճիկք գրաւեցին։ Եթէ Մէհէմմէտ-Ալի Հասան փաշայի սահին մէկ մասն Սալիմի օգնութեան ղրկած լինէր, Ռուսաց աջ թեւն անտարակոյս ետ մղուի

մէջ։ Պահեստի զօրքն ուղղակի իր ձեռաց ներքեւ ունենալով եւ ամեն մէկ վայրկեան ճակատամարտին յեղափոխ արկածները գիտելով՝ որոյ ասպարէզն եւս բաւական անձուկ էր, իր զօրաց օգնութիւն հասուց հարկ եղած ժամանակ։ Տեսնելով որ Կօրչքով բաւական զօրք չունէր Տաճիկներն ետ մղելու համար, Փէր-



ՉԷՐՔԷԶ ԱՊՏԻ ՓԱՇԱ

մղուէր. բայց ինչպէս արդէն ըսուած է, կը թուի թէ նոյն օրն Նիրհեալ ձգած էր այն բոլոր զինուորական յատկութիւններն զոր մինչեւ այն ժամանակ ցոյց տուած էր։ Վստահութիւն չունէր ինքն, եւ իր մտաց մէջ ճակատամարտն արդէն անյաջող նկարեալ էր, թէեւ տակաւին ճակատատեղւոյն վրայ ձախող չէր։

Ընդհակառակն Թօթլիչեւ զօրավարն մեծ ճարտարութիւն ցոյց տուաւ այս կռւոյն

մի գումարտակէն վաշտ մը եւս ղրկեց անոր։ Երբ այս նոր զօրավիգն հասաւ, ռուս հետեւակազօրք՝ որոց կը նպաստէր տասներկու թնդանօթաց ամրաձգութիւնըն, այնպիսի կատաղութեամբ դէպ յառաջ խոյացան հ՛ուռա գոչելով որ Տաճիկներն խառնիխուռն փախան Նիւրիւքլէրի կողմն. մինչեւ անգամ այն գիւղին մէջ չկարացին տոկալ եւ այլ եւս դիմադրելու ջանք չընելով՝ նահանջեցին Զայըր-

քէօյի արեւելեան կողմն դէպ ի Թաշաըլճու, մինչ Ռուսք ամենասաստիկ կրակ մը կ՚ընէին իրենց ետեւէն ։ Նոյն պահուն Կօրչքօվ զօրավարին քով հասաւ Վիք գնդապետն որ իւր դէմ գտնուող զօրքն վերջապէս մղեր էր դէպ ի Գըըընճլար ։ Զինուորք կը խնդրէին Տաճկաց հետամուտ լինել, բայց Կօրչքօվ զօրավարն հարկ համարեց զիրենք արգելուլ ձախ կողմն եղած կռուոյն արդեանցն սպասելու համար ։

Կէս օրէն յետոյ երկրորդ ժամուն միջոցներն՝ երբ Ռուսաց ուշադրութիւնն իրենց աջակողմեան խմբին վրայ դարձած էր Սալիմի յարձակման պատճառաւ, Մէհէմմէտ-Ալի պատրաստութիւն տեսաւ Թշնամւոյն ձախակողմեան եւ միջին խըմբերուն դէմ դայթ տալու համար։ Ձախ կողմն՝ Ռուսաց ձեռքն եղած բարձրաւանդակներէն մինչեւ գետակն աստիճանաւոր դարատափներ կային, որոց ստորատ ջրերըն հեղեղատներ բացած էին ։ Զառիթափներուն մեծ մասին վրայ կը գըտնուէին այգիներ, յորս Զուհօյեզի նիզակաւորաց մէկ հեծելազաւն զետեղեալ էր Վէրպօվքայի առաջ։ Երրորդ ժամուն միջոցներն՝ Ալի-Րիզայի վաշտերէն երկուքն անտառէն դուրս ելան Ռուսաց ձախակողմեան ծայրի խմբին դիմացէն եւ հովտին մէջէն անցան։ Սոքա դիպուածով ռուսական գծին ամենէն անզօր կէտին հանդիպած էին, վասն զի տասն վայրկենի մէջ իրենց հակառակորդաց ձախակողմեան խմբին հաղորդակցութիւնն ընդհատեցին՝ հեծելազօրը բոլորովին անջատելով այն հետեւակազօրէն որ իւր քովն զետեղեալ էր բարձրաւանդակի մը վրայ։ Տաճիկներն բազմաթիւ հեղեղատներու մէջ պատսպարեալ լինելով՝ արագ արագ յառաջ խաղացին այն այգիներուն ետեւէն զորս նիզակաւորք կը գրաւէին, եւ ջանացին զանոնք շրջապատել։ Նիզակաւորաց երկրորդ կարգին մարդիկն ձիերէն վար իջան, եւ իրենց ցրկիններով լաւ գործ տեսան, մինչդեռ առաջին կարգն դարատափի մը վրայ կը քաշուէր, ուր երկրորդն ընդհուպ իւր քովն եկաւ՝ յարձակող Տաճիկներն ետ մղելէն յետոյ ։ Այս գործողութիւնն կրկնուեցաւ մէկ դարատափէն միւսն, մինչեւ որ հասան հետեւակազօրք, որոց աջակցութեամբը կը փրկուէին անձկութեամբ նիզակաւորներն ։

Մէհէմմէտ-Ալի Ռուսաց ձախակողմեան խմբին տկարութիւնը տեսնելով՝ խելամուտ եղաւ որ Ալի-Րիզա յաջողութիւն ձեռք պիտի բերէր, եթէ կարենար իւր յարձակումն յառաջ տանիլ ուժգնութեամբ կ՚ըսուի թէ իրարու ետեւէ վեց լրատար ղրկեց ի պահեստի սպասող ինն վաշտերուն քով՝ պատուիրելու համար որ համախումբ յարձակին Թշնամւոյն ձախակողմեան թեւին դէմ Ալի-Րիզայի ետեւէն ։ Բայց վաշտերն ճակատատեղիէն շատ հեռի էին. թէեւ այն օր օդը գեղեցիկ էր, ճանապարհներն դժուարակոխ էին դարձեալ եւ այն վաշտերն չկարացին հասնիլ ։ Մէհէմմէտ-Ալիի ծանր սխալումն այս տեղ եղաւ, սխալում մը զոր դըժուարին է մեկնել՝ մինչեւ այն ժամանակ ործանեօք վայելած խոհեմութեան համբաւոյն նայելով. ճակատամարտն այնչափ գէշ յօրդարած էր որ չկարաց իւր պահեստի զօրքն յօգուտ վարել ։

Նիզակաւորք մէկ ժամէ ի վեր դիմադրութիւն կ՚ընէին. բայց հետզհետէ կը տկարանային եւ ռազմամթերք սպառելու մօտ էին ։ 1ին սահին 1ին Թնդանօթաչարն որ իրենց կը նպաստէր՝ այլեւս չկարէր երկար ժամանակ այն տեղ մնալ. այն Թնդանօթաչարին հրամանատար Լաժքին փոխ-գնդապետին մարմնոյն մէկ մասն ճմլուեր էր, եւ այն չարքին սեպհականեալ երկու սպայք Խվօսթշինսքի փոխ-հարիւրապետն եւ Շէնպէք դրօշակիրն վիրաւորեալ էին. երկու Թնդանօթներ անկեալ էին հաստարաններուն վրայէն, եւ դարձեալ նոյն չարքին մարդոց եւ ձիոց մէջ զգալի կորուստ պատճառուած

էր ։ Բայց Թաթիշեւ զօրավարն նոյն սահուն ձախակողմեան թեւին քով հասաւ․ այն վնասեալ Թնդանօթաշարին տեղ ուրիշ նոր մը զետեղել տուաւ եւ Նէվայի գումարտակէն վաշտ մը յառաջ վարեց յօգնութիւն Նիզակաւորաց ։

Ցամաքութեամբ մարտ մղուեցաւ․ սակայն Ռուսաց բարեբաղդութենէն՝ ձախակողմեան թեւն կարաց իւր դիրքը պահպանել, վասն զի եթէ յարձակող Տաճիկներն զայն գրաւէին, ճամբարներուն եւ հիւանդանոցներուն յետին կողմանքն իրենց առջեւ բաց պիտի լինէին, եւ Ռուսաց համար կրկին փոխանակ յաջողութեամբ աւարտելու, գուցէ ձախողարդիւնք մը պիտի ունենար ։ Նիզակաւորաց մէկ հեծելադասան եւեթ փրկեր էր այն ջոկատն իւր դիւցազնական դիմադրութեամբ ։

Տաճիկներն պարտուեցան յետսընդդէմ իջնել ձորին մէջ․ բայց Ալի-Րիզա իւր վերջին վաշտն յառաջ վարելով՝ անոնց կրկին յարձակում ընել տուաւ, եւ այն դիւցազանց խումբն յանդգնաբար մտաւ մինչեւ Վէրպօվքա գիւղն ։ Սակայն Թաթիշեւ զօրավարին բարեբաղդութենէն՝ նոր հասած էր այն միջոցին Վիաթքայի գումարտակն՝ որոյ գալստեան կըսպասէր առաւօտէն ի վեր, եւ կարաց ընդխառնեալ զօրաց մէջ յառաջ վարել երկու անխոնջ վաշտեր որ կռուոյն բաղդն որոշեցին այն տեղ ։ Տաճիկներն՝ իրենցմէ շատ աւելի բազմաթիւ զօրաց դէմ ընկճեալ, անօգնական եւ խոնջեալ լինելով եւ ի պահեստի զօրք չունենալով, ստիպուեցան ընկրկելու ։ Կ՚ըսուի թէ Մէհէմմէտ-Ալի իւր պահեստի զօրաց բացակայութեան պատճառաւ անզօր գտնուելուն համար յուսահատեալ՝ չորս անգամ հրաման ղրկած էր զօրաց նահանջելու, սակայն զինուորք չէին ուզած հնազանդիլ ։ Հատուածին հրամանատար Սալիհ փաշա պարտաւորեցաւ անձամբ զօրաց քով երթալ զանոնք ետ քաշելու համար ։

Ռուս արձակամարտք Տաճկաց հետամուտ լինելով՝ անցան նոցա դիրց առաջին գծերէն եւ զետեղուեցան Ցէրքօվնայի մօտ՝ ինչպէս նաեւ հեղեղատին մէջ, մինչեւ որ հրաման եղաւ իրենց կրկին գետակէն անցնելու եւ միայն հեռուստ հրացանաւ կռուելու Տաճկաց հետ։

Մինչդեռ այս որոտայոյզ խրողութիւնք կը կատարուէին Ռուսաց ձախակողմն, Րիֆա՛թ փաշա իւր վաշտերն բազուկ բազուկ կը ձեւացնէր եւ միջին խմբին դէմ յարձակիլ կը կեղծէր, սակայն առանց յառաջամուխ լինելու, ինչպէս եւ ի սկզբան կռուոյն ։ Թաթիշեւ զօրավարն իւր տեղեկագրին մէջ կըսէ․ «Թնդանօթաձիգներն միայն կրակ ըրին նոյն ջոկերուն վրայ. իսկ այն հետեւակազօրաց դասակներն որք միջին պատնէշները կը գրաւէին, Ռիլսքի գումարտակին գլուխ Սարանչեւ գումապետին հրամանաւն բնաւ վառօդ չայրեցին, եւ այսու Տաճկաց վրայ այնպիսի տպաւորութիւն մը յառաջ եկաւ որ մեր պարիկններէն առաւել քան 400 քայլաչափ հեռի գտնուած ժամանակնին սարսափ զգացին եւ ընկրկեցան։»

Ցէրքօվնայի կամ Զայըրքէօյի ճակատամարտն, ինչպէս Ռուսաց կամ Տաճկաց կողմանէ նկատուելով յորջորջուած է այս կռիւն, երեկոյեան եօթներորդ ժամուն աւարտեալ էր։ Պլեւնայի միւս կողմն անցնելու եւ մինչեւ Եանթրա գետակն Ռուսաց մէջէն անցք բանալու համար Մէհէմմէտ-Ալիի ըրած ջանքն անյաջող եղած էր։ Այսպէս երկու բանակներն գիշերեցին այն տեղեաց վրայ զոր առաւօտուն կը գրաւէին ։

Հետեւեալ օրն Տաճկաց կողմանէ պատգամաւոր մը եկաւ թոյլտուութիւն խնդրելու որ իրենց մեռեալներն բառնան ։ Այս թոյլտուութիւնն անյապաղ շնորհուեցաւ ։ Ռուսք արդէն 300 Թուրք թաղած էին. իրենց գծերուն մէջ մնացած 100 դիակներ տաճիկ մեռելաթաղից յանձնուեցան, որք իրենց կողմն արդէն 400էն

ուելի թաղած էին երկու բանակաց գծերուն մէջ տեղ գտնելով զանոնք, այս կերպիւ մեռելոց թիւն ընդամենն 800 էն աւելի կը լինի եւ հաւանականաբար 1,500 կամ 2,000 վիրաւոր կը գտնուէր։ Ռուսաց կողմանէ 4 սպայք կային տարապատ անկեալ եւ 21 վիրաւորեալք, 84 երկրորդական սպայք եւ զինուորք սպանեալ էին, եւ 391 վիրաւորեալ, մէկ մարդ աներեւութացեալ էր, եւ 42 ձի տարապատ անկեալ կամ վիրաւորեալ կար։

Ռուսք եւ Տաճիկք երեք օր դէմ առ դէմ կացին առանց զիրար անհանգիստ ընելու։ Թաթիշեվ զօրավարն կարծելով որ նոր յարձակում մ'եւս պիտի լինի, զօրավիգ խնդրեց Շախօվսքոյ իշխանէն որ Օխօթաքի գումարտակն ղրկեց անոր քով։

## ՄԱՐԷՆԻ ԿՌԻՒՆ

Մէհէմմէտ-Ալի Զալըրքէօյի դէմ յարձակման միջոցին յաջողութիւն ձեռքբերելու համար՝ իւր սպայներէն մէկուն, այն է Սէատէթ-Բէյրայի փաշային պատուիրեր էր ցոյց մ'ընել Էլէնայի (Իլէնա՝ ըստ Տաճկաց) դէմ, որպէս զի 11րդ գնդին զօրաց մէկ մասն այն կողմերն արգիլուի, վասն զի Շախօվսքոյ կարէր նոյն գունդը Ցարէվիչին քով հասուցանել յօգնութիւն։ Այս ցոյցն պատճառ տուաւ բաւական սաստիկ առաջամարտի մը, որ հետեւեալ կերպիւ պատմուած է 11րդ գնդին հրամանատարին՝ այն է Շախօվսքոյի տեղեկագրին մէջ.

« Էլէնայի ջոկատին հրամանատար Տօմպրօվսքի հաղորդագրեան ծանոյց ինձ թէ՝ սեպտեմբերի 24 ին առաւօտեան ժամն եօթն ու կէսին՝ իւր զօրաց առաջապահ խմբին դէմ՝ որ Մարէն գիւղին մօտ զետեղեալ է, յարձակում մ'ըրեր են Չէրքէզներու եւ պաշը-պօզուգներու ձիավորներ՝ գրեթէ 1,500 հոգիէ բաղկացեալ, որք երկու կողմանէ այն դրից առնելու ջանացեր են։

« Միանգամայն հազարի չափ Թուրքեր ջոկատին աջ թեւին առջեւ երեւեր են՝ Պոյնօվէց գիւղին մէջ։

« Թշնամին վանելու համար՝ երեք դասակներ յառաջ մղուեր են Մարէն գիւղէն եւ առջեւի բարձրաւանդակները գրաւելու համար։

« Ջոկատին ձախ թեւին առաջն հետեւակազօրաց դասակ մը եւ հեծելազօրու 20րդ թնդանօթաշարին մէկ բաժինն կը գտնուէր. աջ թեւին առաջն եւս հետեւակազօրաց դասակ մը, թնդանօթաձիգ զօրաց 14րդ սահին 5րդ շարին մէկ բաժինն եւ միշտապազօրաց հեծելադաս մը։ Իբրեւ պահեստի զօրք երկու դասակներ կային, որ Էլէնայի մօտ զետեղեալ ընդհանուր պահեստի զօրքէն անջատուելով՝ ամեն օր դէպ յառաջ կը ղրկուի Մարէնի դրից ճանապարհին մինչեւ կէսն։

« Նոյն դրից կեդրոնին դէմ յարձակող Չէրքէզներն ուժգնութեամբ յետս մղուեր են միշտապազօրաց կողմանէ, որք թշնամւոյն մէկ դրօշն եւ բազմաթիւ ձիեր ձեռք անցուցած են։ Չէրքէզներն սաստիկ թափով յարձակեր եւ բազմաթիւ մեռեալ եւ վիրաւոր ունեցեր են։

« Այս միջոցին, աջ կողմն՝ Սիէվսքի գումարտակին մէկ դասակն եւ հետեւակամարտ միշտապազօրաց բոյլ մը փառաւոր կերպիւ ետ մղեր են թշնամին եւ նահանջելու ստիպեր են զայն, որ յաջողած էր գրաւելու Պուլղարաց ձեռօք իրենց գիւղերը պաշտպանելու համար շինուած պատնէշները։

« Ջոկատին ձախակողմեան զօրաց դէմ յարձակողներն ոչ նուազ յաջողութեամբ ետ մղուած են հետեւակազօրաց դասակի մը ձեռօք եւ հեծելազօրաց 20րդ թնդանօթաշարին մէկ բաժնին ուղիղ ռմբաձգութեամբն։

« Հինգ ժամ կռիւ լինելէ յետոյ՝ թշնամին նահանջած է ամբողջ գծին վրայէն, մինչ մեր թնդանօթաձիգներն ետեւէն կրակ կ'ընէին։ Տեղեաց հանգամանքն մեր

հեծելազօրուն չէն ներած թշնամւոյն հետամուտ լինելու ։

« Վիշապազօրաց մէջէն երեք մարդ եւ Սիէմվըքի գումարտակէն մէկ զինուոր սպաննուած է մեր կողմանէ . սպայ մը (Սիէմվըքի գումարտակին 12րդ դասակին հրամանատար Թօմքէվիչ երկրորդական հարիւրապետն ) , վիշապազօրաց մէջէն եօթն հոգի եւ Սիէմվըքի գումարտակէն տասն զինուոր վիրաւորեալ են . ութ ձի կայ վիրաւորուած ։ »

Տաճիկներն իրենց տեղեկագրաց մէջ պարծենալով կ'ըսեն թէ ամրական մը գրաւած եւ քանդած էին եւ չորս գիւղ հրդեհած ։ Սէատէթ-Բէրայի փաշա՝ որ ամսոյն 21ին Տաճկաց կրած ձախողութենէն յետոյ՝ այլ եւս ցոյց ընելու պատճառ մը չունէր , յարձակումը չկրկնեց եւ իւր զօրքն Օսման-Փազար տարաւ ։



ՆԱՀԱՆՋ ՏԱՃԿԱԿԱՆ ԲԱՆԱԿԻՆ

Ցէրքօվնայի կռուոյն վրայ՝ Մէհէմմէտ-Ալի բոլորովին բաղձանք զգաց յետկոյս գնալու մինչեւ Գարա-Լօմի մօտ իւր նախկին դիրքն ։ Այս մասին իւր միտումն առաւել սաստիկ եղաւ մանաւանդ երբ իմացաւ թէ Օսման փաշա՝ որ ընդհանուր հրամանատարին յառաջխաղացութեամբն կարէր զերծանիլ եւ արձակ շարժում ընել, պարէն ստացեր էր ( սեպտեմբերի 22ին), որով այնչափ պէտք չէր ունենար ձեռնտուութեան ։ Մէհէմմէտ-Ալիի կրած ձախողութիւնն իրեն բաւական թուեցաւ բանակին նահանջն արդարացնելու յաչս այն անձանց՝ որք Կոստանդնուպօլսէն կըստիպէին զինքն յառաջ խաղալու ։ Արդարեւ այս ձախողութիւնն վճռական բան մը չէր , վասն զի Տաճիկներն իրենց դիրքը պահած էին եւ Ռուսք հետամուտ չէին եղած. բայց ինչպէս արդէն ըսուած է , ընդհանուր հրամանատարն պատրուակ մը միայն կը խնդրէր Պիէլայէն հեռանալու համար ։ Իւր բոլոր զօրքն թշնամւոյն դէմ գումարեալ երեւեցուցանելու արուեստն մէկ քանի անգամ բանեցուցեր էր . ցոյց ընելու համար բլրոց զառիթափներուն վրայ իւր վրանները կանգնել եւ զօրաց շարժմունք ընել կուտար ռուսական դրից դէմ, այնպէս որ հակառակորդաց կարծել տուեր էր. թէ բազմաթիւ զօրք ունի . բայց իրօք իւր զինուորաց թիւն տաճկերէն լրագրաց թուումներուն մէջ տեսնուածէն շատ նուազ էր ։ Ցէրքօվնայի ճակատամարտէն յետոյ երեսուն հազարի չափ մարդ միայն ունէր , եւ լուր էր առած որ կայսերական անձնապահ զօրքն կռուոյն ասպարէզն հասեր էր ։ Վասն որոյ հաշիւ կ'ընէր որ իւր զօրաց նուազութեան եւ յոռութեան պատճառաւ, որոց մէկ երրորդ մասն եգիպտական զինուորներէ բաղկացեալ էր , ինչպէս նաեւ սակաւաթիւ թնդանօթ ունենալուն համար՝ պարտութիւնն անխուսափելի էր , եթէ ընդհարում լինէր ։ Գիտէր նաեւ թէ աշնանային անձրեւաց սկսելէն ի վեր՝ իւր ետեւի կողման ճանապարհներն աներեւոյթ եղեր էին , որով պարտութենէ մը յետոյ զօրաց նահանջն՝ այնպիսի խաթարեալ տեղեաց մէջ չարաղէտ եւ խառնիխուռն փախստեան մը պիտի փոխուէր գրեթէ անվրէպ ։

Բովանդակ բանակին հրաման եղաւ նահանջելու սեպտեմբերի 25ին . Ռուսճուգի պահակագունդն որ գործողութեանց մասնակցեր էր ,Գատըքէօյէն մեկնելով քաղաքին մօտ քաշուեցաւ , եւ Մէհէմմէտ-Ալի յամր կերպիւ յետկոյս ձգեց իւր զօրքն ծայրէ ի ծայր Բօշէլէվէօյէն մինչեւ Փօմքէօյ եւ Այազլար ։ Վերջապահք քայլ առ քայլ ետ կ'երթային բանակին նահանջն պաշտպանելով . սոցա հրամանատարն էր Պէյքըր գումարպետն ։ Քանի որ Տաճկաց զօրքն մէկ քանի օր առաջ այնքան արիւնհեղութեամբ գրաւած տեղերէն կը հեռանար, սարսափ կը տիրէր այն գիւղերուն մէջ ուր մահմետական հասարակութիւնք կրկին հաստատուեր

էին ։ Բոլոր այն խեղճերն երրորդ անգամ կը մեկնէին իրենց կիսայրեաց տուներէն, անապարանոք մէկ քանի եզներ կամ գոմէշներ կը լծէին եւ հեռաւոր գէշ աղէկ կը հետեւէին նահանջող փաշաներուն ։

Ջերմէնավօտայի կայարանին առջեւ կրկին երեւցան այն տեսարաններն որ արդէն յունիս ամսոյ մէջ տխուր կերպարանք մ'ընծայեր էին անոր ։ Բազմաթիւ բնակիչք՝ Վառնայէն մինչեւ Ռուսճուգ ձգեալ երկաթուղւոյն կրկին բանելու սկսած ժամանակ՝ այս վերջին քաղաքը դարձեր էին, յուսալով թէ յաւէտ զերծ մնան պիտի Ռուսաց ներկայութենէն ։ Երբ լուր առին թէ Մէհէմմէտ-Ալի կը նահանջէր եւ բերդաքաղաքին համար վերստին պաշարուելու վախ կար հանապազ, այն թշուառներն դէպ ի կայարանը դիմեցին փախչելու համար, մինչդեռ շոգեկառքն տակաւին կ'ընթանար ։ Տղայք եւ կանայք՝ ինչպէս նաեւ կապոցներ խառնիխուռն դիզուեցան ի Ջերմէնավօտա ։

Ցարէվիչին անշարժ մնալովը՝ տաճիկ զօրաց նահանջն յաջողութեամբ կատարուեցաւ ։ Ռուսք իրենց գծերուն այլ եւ այլ կէտերուն վրայ Մէհէմմէտ-Ալիի երեւան գալն եւ աներեւութանալը տեսնելով այնքան վարժուած էին այս բանին որ հազիւ մէկ քանի օրէն յետոյ նշմարեցին Տաճկաց ամբողջ բանակին մեկնած ըլլալը ։ Այս նահանջին տեղեկանալնուն պէս՝ յառաջ խաղացին եւ Հոկտեմբերի 1ին իրենց առաջապահներն կրկին Փօլամօրցայի, Օփաքայի, Ասլօվէյի, Օսթրիցայի եւ Սթրօքօյի մէջ կը գտնուէին՝ Լօմի արեւմըտեան ափանց մօտ, ամիս մ'առաջ իրենց գրաւած դիրից վրայ գոգցես զետեղուելով դարձեալ ։

Հոկտեմբերի 4ին, որովհետեւ տակաւին յայտնի չէր Մէհէմմէտ-Ալիի բանակին ուր ըլլալը, հեծելազօրու 8րդ հատուածին հրամանատար Մանուէլով իշխանին յանձնուեցաւ բազմաթիւ զօրօք զննութիւն մը ընել դէպ ի Քօչէլէվօ, ուր կը կարծուէր թէ Թուրքերը կը գտնուէին ։

Այս զննութեամբ յայտնուեցաւ թէ Տաճկաց բոլոր զօրքն Ռուսճուգէն մինչեւ Ռազկրատ եղած երկաթուղւոյ գծին վրայ քաշուեր էին եւ այլ եւ այլ կէտերու վրայ մեծ համախմբութիւններ եղած էին, մանաւանդ Գատըքէօյ, եւ ամիս մ'առաջ իրենց գրաւած դրից վրայ զետեղուեր էին դարձեալ ։

## ՍՈՒԼԷՅՄԱՆ ՓԱՇԱ ՄԷՀԷՄՄԷՏ-ԱԼԻԻ ԿԸ ՅԱՋՈՐԴԷ

Բան մ'եղած էր որում չտեղեկացան Ռուսք այս զննութեամբ, բայց լրագիրք մէկ քանի օրէ յետոյ իրենց ծանուցին. Մէհէմմէտ-Ալի այլ եւս հրամանատար չէր այն բանակին որոյ հետքը գտեր էին Գատըքէօյի եւ Քօչէլէվօյի մէջ տեղ ։ Սա Հոկտեմբերի 2ին Գարա-Լօմի քով եղած զօրքը զննելէն յետոյ իւր տեղը դարձած ժամանակ, պաշտօնական գրութիւն մը բերուեցաւ ։ Զարմանալի բան . զօրավարներէն շատերն մէկ քանի օրէ ի վեր գիտէին թէ ընդհանուր հրամանատարն պաշտօնէ պիտի անկանէր . ինքն բազմատեսակ զբաղմամբք պարապեալ՝ տակաւին բան մը չէր գիտեր ։ Թուղթը բանալով իմացաւ թէ իւր պաշտօնն առնուած էր, Սուլէյման փաշա իրեն յաջորդեր էր եւ ինքն եւս Կոստանդնուպօլիս կը կանչուէր ։

Սուլէյման փաշա՝ զոր Աբտ-իւլ-Համիտ կայսրութեան զինուորական ամենաբարձր աստիճանին կը կոչէր, բաղդատմամբ շատ երիտասարդ մէկն էր ։ Մէհէմմէտ-Ալիի վրայ նախանձ ունենալէն զատ՝ Եւրոպացիներն եւս կ'ատէր, եւ բանակին հասնելուն պէս իւր առաջին գործն եղաւ ճանապարհ տալ այն բոլոր օտարազգի սպայից զորս Մէհէմմէտ-Ալի կոչած էր ։ Սուլէյման փաշա հին Թուրքաց կուսակցութեան կը վերաբերէր ։ Սոցա նախամեծար համարուած զօրավարն էր, եւ նոյն կուսակցութեան շնորհիւ այնքան բարձր

աստիճան մը ստացաւ՝ փոխանակ իրեն արժանի եղած պատժոյն։

Թուրքիոյ մէջ պաշտօնէ անկեալ զօրավար մը մեկէն գործերը ձգելու եւ մեկնելու է. անօգուտ գրութիւններ եւ օրինական ձեւեր չկան. եւ այնպիսի պարագայից մէջ ամեն բան շուտ կը տեսնուի։ Մէհէմմէտ-Ալի տեսակցութիւն չունեցաւ իր յաջորդին հետ գործերն անոր յանձնելու համար եւ անմիջապէս մեկնեցաւ դէպ ի Կոստանդնուպոլիս։ Սիւլէյման փաշա իր պաշտօնին գլուխն անցնելուն պէս՝ պարտաւորեցաւ ամեն բան իր աչօք քննելու եւ անձամբ հետազօտութիւն ընելով տեղեկանալու զինուորական կացութեան եւ հաւաքեալ ռազմամթերից եւ պարենից վիճակին։ Այնժամանակ կրցաւ հասկանալ թէ որքան անիրաւ վարմունք ցոյց տրուած էր Մէհէմմէտ-Ալիի եւ թէ դոյզն միջոցներ միայն ունենալով սա՝ անկարող եղած էր գործ տեսնելու։ Կոստանդնուպոլսոյ մէջ այն անձինք որ Սիւլէյմանի յորդեռանդն աշխուժութեանն ապաւիններ եւ յուսացեր էին թէ փութով վճռական գործ մը կը տեսնէ. շատ խաբուեցան. երբ նոր զօրագլուխն Ռազկրատ հասաւ, յայտնի չէր լիներ թէ հրամանատարութիւնն ուրիշի ձեռք էր անցած։ Իր քաջութիւնն անզօր էր միջոցներուն նուազութեան տեղը բռնելու, եւ Սիւլէյման Մէհէմմէտ-Ալին ակամայ արդարացուց, անոր պէս ակամայ ժամավաճառ լինելով։

Տաճկաց բանակին գլխաւորին փոփոխութիւնն սկիզբն եղաւ հրամանատարաց մէջ այլ եւ այլ կարեւոր փոփոխութեանց։ Շումնուի ջոկատին հրամանատար Րէուֆ փաշա՝ որ ի դիմաց Սուլթանին Մէհէմմէտ-Ալին կը լրտեսէր, Պալքանաց բանակին գլխաւոր անուանեցաւ, եւ իր տեղն անցաւ աննշան զօրավար մը՝ Թահիր փաշա անուամբ։ Ահմէտ-Էյուպ փաշային՝ զոր Մէհէմմէտ-Ալի չէր համարձակած պաշտօնէ ձգելու, յաջորդեց Ֆազըլ փաշա, որ Սօխում-գալէի դէմ այն անօգուտ արշաւանքն ընող զօրաց հրամանատարն էր։ Փանիկալթիի դպրոցին աշակերտներէն էր սա Սիւլէյմանի պէս, եւ անոր նման՝ յանդուգն լինելու չափ քաջ, դիմագրաւ եւ ձեռներէց կը համարուէր։

Մէհէմմէտ-Ալի Կոստանդնուպոլսոյ մէջ այնպիսի ընդունելութիւն մը գտաւ որով քիչ մը մխիթարուեցաւ իր անկման վրայ։ Անդէն բացատրեց ինքն թէ ինչպիսի ձախող պարագայից մէջ գործելու ստիպուած էր. գանգատ ըրաւ մանաւանդ Ահմէտ-Էյուպի եւ եգիպտական զօրաց համար։ Կ'ըսուէր թէ այս վերջնոց մէջէն հինգ հարիւրէն աւելի մարդիկ Վառնայի հիւանդանոցին մէջ կը խնամուէին՝ զինուորական ծառայութենէ զերծ մնալու համար ինքզինքնին խեղած լինելով (սագաթլամագ)։ Կը թուի թէ Սուլթանն ցաւ զգաց նորա տեղ ուրիշ մը դրուելուն վրայ եւ Հէրսէկի մէջ նոր պաշտօն մը յանձնուեցաւ անոր, զոր ընդհուպ փոխանակելով՝ Փլէվնան պաշարմանէ ազատելու սահմանեալ բանակին կարեւորագոյն հրամանատարութիւնն առաւ։

## ՎԵՐՋ ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐՈՅ

# ՑԱՆԿ

## ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐՈՅ



### ՊԱՏԵՐԱԶՄՆ ԱՐԵՒԵԼԵԱՆ

